# ԱՄԲՈՂՋԱԿԱՆ ԵՐԿԵՐ
# ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿԻ



Հրատարակութիւն

ՀԱՅ ԿՐԹԱԿԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԵԱՆ

ԿՈՉՆԱԿ ՏՊԱՐԱՆ
ՆԻՒ ԵՈՐՔ
1929

«Ո՛վ Հին Տարի, անցո՛ւթ տարի,
Աչքդ կուրնա՛յ, լուսդ մարի՛·
Դուն ցուցուցիր մեզի այնքա՛ն,
Առիր տարիր մեր ՀԱՅՐԻԿ ՃԱՆ։»

ԿՐՊՏ· ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ

1908



ՎԵՀ. Տ. Տ. ՄԿՐՏԻՉ Ա.
ԿԱԹՈՂԻԿՈՍ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ
Ապրիլ 4, 1821 — Նոյ. 11 (Հոկտ. 29) 1907

Ա Մ Բ Ո Ղ Ջ Ա Կ Ա Ն   Ե Ր Կ Ե Ր

# ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿԻ

Ի Լոյս Ընծայեալ
Բարերար Ձեռնտուութեամբ

ՊԱՏՐԻԿ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆԻ



Հրատարակութիւն

ՀԱՅ ԿՐԹԱԿԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԵԱՆ

Կոչնակ Տպարան
ՆԻՒ ԵՈՐՔ
1929

# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

———«o»———

*Մերազնէից ազգային՝ բարոյական եւ հոգեւոր բարձր ձգտումներուն որպէս ներշնչարան մը, անմոռաց եւ գեղեցիկ, ի լոյս կ'ընծայուի ներկայ հաւաքածոյս, ուր ամփոփուած են Հայոց Հայրիկի առանձնապէս հրատարակուած՝ բայց այժմ սպառած՝ ամբողջ երկերը։*

*Ասոնցմէ դուրս կը մնան հարկաւ* Արծուի Վասպուրական՝ Արծուիկ Տարօնոյ *եւ Էջմիածնայ* Արարատ *հանդէսներուն, եւ* 1849-*ի* Բազմավէպին *մէջ, Ս. Հեղինակի հրատարակած ուրիշ շատ մը գրութիւնները, ինչպէս նաեւ՝ Պատրիարքական եւ Հայրապետական կոնդակները, որոնք առանձինն հատորի մը ատաղձ կը կազմեն ինքնին։*

*Սակայն այսքանն ալ վստահաբար սիրով պիտի ողջունուի համօրէն ազգիս կողմէ, եւ անոր ընթերցումով «Մէկը անոր (Հայրիկի) վրայ պիտի ճանչնայ իր երազին մտատիպարին առջեւ ունայնացած Տէրվիչը, միւսը՝ Աստուածաշունչի ներգործութեամբ աւլցուն եւ տեսիլքէ տեսիլք յափշտակուող Մարգարէն, ոմանք՝ պատուական Ուսուցիչը, ուրիշներ՝ հայրենանուէր Գործիչը եւ անառիկ Գաղափարի մը անկեղծ Առաքեալը, ու ամէնքը՝ գութի՝ սիրոյ՝ բարութեան եւ խանդաղատանքի մարմնացեալ Անհատականութիւնը, որ միակ անուն մը ունեցաւ, Ազգին ծոցէն, ժողովուրդին սրտէն փրթած բառ մը — ՀԱՅՐԻԿ։»(*)*

*ՀԱՅ ԿՐԹԱԿԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԻՒՆ*

---

(*) ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ — Թորգոմ Եպս. Գուշակեան։

# ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿԻ ԵՐԿԵՐՆ ԻՐԵՆՑ ԹՈՒԱԿԱՆՆԵՐՈՎ

---

*ՈՒՂԵՐՁ ԱՌ Հ. ԱՐՍԷՆ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ.* *Ոտանաւոր գրաբար.* 1849*ի* Բազմավէպ*ին մէջ տպուած* (*էջ* 308) :

*ՀՐԱՒԻՐԱԿ ԱՐԱՐԱՏԵԱՆ.* 1850, *Կ. Պոլիս. Տպագր. Յովհ. Միւհէնտիսեան. գրաբար. հայկական չափ*ու*: Բ. տիպ.* 1876, *Պոլիս. Ե. Մ. Տնտեսեան տպագր.: Այս տպագրութիւնը նախորդին վրայ աւելի ունի* Հինգերորդ Նուագը, *Տարօնոյ աշխարհին վրայ: Ա. տպագրութենէն վերջը Հայրիկ Առաջնորդ եղաւ Տարօնոյ, եւ այդ միջոցին ունեցաւ այդ «Նուագ»ին ներշնչումը:*

*ՀՐԱՒԻՐԱԿ ԵՐԿՐԻՆ ԱՒԵՏԵԱՑ.* 1851, *Կ. Պոլիս, տպագր. Յովհ. Միւհէնտիսեան. գրաբար. հայկական չափ*ու*: Բ. տիպ.* 1892, *Երուսաղէմ, տպագր. Ս. Յակոբեանց:*

*ՄԱՐԳԱՐԻՏ ԱՐՔԱՅՈՒԹԵԱՆ ԵՐԿՆԻՑ.* 1866, *Կ. Պոլիս, տըպագր. Արամեան: Բ. տիպ.* 1876, *հաւանաբար Կ. Պոլիս: Գ. տիպ.* 1887, *Կ. Պոլիս. տպագր. Զարդարեան: Դ. տիպ.* 1864, *Էջմիածին. տպագր. Մայր Աթոռոյ:*

*ԽԱՉԻ ՃԱՌ.* 1876, *Կ. Պոլիս. տպագր. Յարութիւն Պարոնեան: Բ. տիպ.* 1887, *Կ. Պոլիս. տպագր. Գ. Զարդարեան: Գ. տիպ.* 1894, *Վաղարշապատ. տպագր. Մայր Աթոռոյ:*

*ԺԱՄԱՆԱԿ ԵՒ ԽՈՐՀՈՒՐԴ ԻՒՐ.* 1876, *Կ. Պոլիս. տպագր. Ե. Մ. Տնտեսեան: Բ. տիպ.* 1895, *Թիֆլիս. տպագր. Մ. Շարաձէ: Գ. տիպ.* 1909, *Կ. Պոլիս. տպագր. Պալենց – Արզումեան:*

*ՎԱՆԳՈՅԺ.* 1877, *Կ. Պոլիս. տպագր. Արամեան: Բ. տիպ.* 1908, *Կ. Պոլիս. Յ. Ասատուրեան:*

*ՀԱՑԳՈՅԺ.* 1877, *Կ. Պոլիս. տպագր. Ե. Մ. Տնտեսեան: Բ. տիպ.* 1908, *Կ. Պոլիս. Յ. Ասատուրեան:*

*ԴՐԱԽՏԻ ԸՆՏԱՆԻՔ*. 1876, *Կ. Պոլիս. տպագր. Զարդարեան*: *Բ. տիպ*. 1878, *Կ. Պոլիս*: *տպագր. Զարդարեան*: *Գ. տիպ. Թիֆլիս. տպագր. Ռօտինեանց*: *Դ. տիպ*. 1893, *Թիֆլիս. Հայ Հրատ. Ընկ.*:

*ՍԻՐԱՔ ԵՒ ՍԱՄՈՒԷԼ*. 1878, *Կ. Պոլիս. տպագր. Ս. Ղ. Պարտիզպանեան եւ Ընկ. Բ. տիպ* 1887, *Կ. Պոլիս. Նշան Կ. Պէրպէրեան*: *Գ. տիպ*. 1892. *Թիֆլիս. տպագր. Մ. Ռօտինեանց*: *Դ. Տիպ*. 1893, *Թիֆլիս. Հայ Հրատ. Ընկ.*:

*ՊԱՊԻԿ ԵՒ ԹՈՌՆԻԿ*. 1894, *Էջմիածին. տպագր. Մայր Աթոռոյ*:

*ԹԱԳԱՒՈՐԱՑ ԺՈՂՈՎ*. 1900, *Լոնտոն. Հրատ. Տօնապետեանի. Անգլիերէն թարգմանութեամբ միասին*:

*ՎԵՐՋԱԼՈՅՍԻ ՁԱՅՆԵՐ*. 1901, *Գահիրէ. տպագր. Ե. Թորոսեան. Հրատ. Մառի Պէյլէրեանի*: (*Կը պարունակէ Հայրապետութեան միջոցին եւ աւելի կանուխ գրած կարգ մը քերթուածներ*):

*ՈՂԲԱՑՈՂ ԽՈՐԵՆԱՑԻՆ*. 1902, *Վաղարշապատ. տպարան Մ. Աթոռոյ Ս. Էջմիածնի*:

*ԲԱՐԵՆՈՐՈՅՄԱՆՑ ԾՐԱԳԻՐ*. *Որ գրած է Տարօնոյ Առաջնորդութեան միջոցին*, 1909-*ին կը հրատարակուի Կ. Պոլիս*:

---

# ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ՈՒՐՈՒԱԳԻԾ ՀԱՅՐԻԿԻ ԿԵԱՆՔԻՆ(*)

1821 *Ապրիլ 4, Ծնունդ Վան։*
1847 *Ուսուցիչ ի Կ. Պոլիս։*
1849 *Նամակ առ Բագրատունի։*
1850 *Հրաւիրակ Արարատեանը կը հրատարակուի։*
1850 *Ուխտաւոր յԵրուսաղէմ։*
1851 *Հրաւիրակ Երկրին Աւետեացը կը հրատարակուի։*
1852 *Կ'այցելէ Կիլիկիա։*
1853 *Կը վերադառնայ Վան։*
1854 *Վարդապետ կը ձեռնադրուի Աղթամարի մէջ։*
1855 *Դարձեալ Կ. Պոլիս կ'անցնի։*
1855 *Կը հրատարակէ Կ. Պոլսոյ մէջ Արծուի Վասպուրականը։*
1856 *Վան կը դառնայ, իբր վանահայր Վարագայ։*
1858 *Վարագայ մէջ կը հրատարակէ Արծուի Վասպուրականը։*
1860 *Կ'այցելէ Կովկաս։*
1862 *Առաջնորդ կ'ընտրուի Տարօնոյ։*
1863 *Մշոյ մէջ կը հրատարակէ Արծուիկ Տարօնոյ։*
1866 *Կը ճամբորդէ Կ. Պոլիս եւ նոյն տարին կը դառնայ Մուշ։*
1867 *Կը հրատարակուի Մարգարիտ Արքայութեան Երկնիցը։*
1868 *Գէորգ Դ.է կը ձեռնադրուի եպիսկոպոս։*
1869 *Կ'ընտրուի պատրիարք Կ. Պոլսոյ։*
1873 *Պատրիարքութենէ կը հրաժարի։*
1874 *Քարոզիչ Գուգկունճուքի։*
1875 *Բ. տպագրութիւն Հրաւիրակ Արարատեանի։*
1876 *Գրի կ'առնէ Բարենորոգմանց ծրագիրը, կը հրատարակէ Խաչի Ճառը եւ Ժամանակ եւ Խորհուրդ Իւրը։*
1877 *Կը հրատարակէ Վանգոյժը եւ Հայգոյժը։*

---

(*) Քաղուած Թորգոմ Եպս. Գուշակեանի ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ գրքէն։

1878 Կը հրատարակէ Դրախտի Ընտանիքը․ նոյն տարին Պեր-լինի Վեհաժողովին կ'երթայ։

1879 Կը հրատարակէ Սիրաք եւ Սամուէլը։

1879 Կ'ընտրուի առաջնորդ Վանի, ուր կ'երթայ։

1885 Կը վերադառնայ Կ․ Պոլիս։

1886—88 Ատենապետ Կրօն․ Ժողովոյ։

1890 Երուսաղէմ կ'աքսորուի։

1892 Մայիս 5 Ամենայն Հայոց Կաթողիկոս կ'ընտրուի։

1893 Սեպտ․ 26 Կ'օծուի։

1894 Կը հրատարակէ Պապիկ եւ Թոռնիկը։

1895 Բեթրսպուրկ կ'երթայ։

1898 Կ'այցելէ Պաքու։

1900 Կը հրատարակէ Թագաւորաց Ժողովը։

1901 Կը հրատարակուի Վերջալոյսի Ձայները։

1903 Կը հրամայէ չը գործադրել եկեղեցական կալուածներուն գրաւման մասին ձարական հրովարտակը եւ կը մերժէ յանձնել Էջմիածնի վանքին գանձարանն ու դրամարկղը։

1904 Պատուիրակութեան մը պաշտօն կը յանձնէ դիմել Եւ-րոպայի եւ Միացեալ Նահանգներու արքունիքներուն։

1907 Պատուիրակութիւն մը կը ղրկէ Լա Հէյի Խաղաղութեան Ժողովին եւ նամակ մը կ'ուղղէ Անգլիոյ Թագաւորին։

1907 Նոյեմբեր 11 (Հոկտ․ 29) կը վախճանի։

1909 Կը հրատարակուի Բարենորոգմանց Ծրագիրը։

---

Ի ՅԻՇԱՏԱԿ

Վաղամեռիկ Սիրելի Թոռնիկին




ԿԱՆԳՆԷ ՅՈՒՇԱՐՁԱՆՍ

Իւր վշտացեալ Մեծ Հայրիկը

***ՊԱՏՐԻԿ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ***



ՊՕՂՈՍԻԿ Ն. ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ՝
Սեպտ. 1913—Դեկտ. 9, 1927

Անցեալի Մխիթարանքս եւ Ապագայի Յոյսս
ՄԵԾ ՀԱՅՐԻԿԴ



ԱՄԵՆ· Տ· ԵՂԻՇԷ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ԴՈՒՐԵԱՆ
Պատրիարք Առաք· Ս· Աթոռոյն Երուսաղիմայ



Մեծայարգ
Տիար Տ. Ա. Տիքիճեան
Քարտուղար Հայ Կրթական
Հիմնարկութեան,
Նիւ Եորք

Ձեր Ազնուութեան մասնաւոր մէկ նամակէն տեղեկանալով որ Ամերիկեան Հայ Կրթական Հիմնարկութիւնը մտադրած է «ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ»ի ամբողջ գործերը հրատարակել հոյակապ հատորի մը մէջ, մեծ եղաւ մեր ուրախութիւնը:

Այդ հաւաքածոն, ինչպէս կը գրէք, պիտի նուիրուի Կիւլպէնկեան վաղամեռիկ Պօղոսիկի յիշատակին, որուն տարաժամ կորուստը կ'ողբան որչափ իր պատուական հայրը նոյնչափ եւ իր պատկառելի մեծ Հայրիկը:

Հ. Կ. Հիմնարկութեան այդ կարեւոր ձեռնարկով զոր ամէն գնահատումէ վեր կը համարինք՝ կը հաւատանք թէ «ՀԱՅՈՑ ՀԱՅՐԻԿ»ին ցիր ու ցան հատորներով լոյս տեսած գործերը միութեան մը վերածելով՝ Հայ հանճարի մը ճառագայթումը մշտնջենաւորելու նուիրական պարտականութիւնը կը կատարուի, անկորուստ պահպանելու այդ գրական թանկագին նշխարները, եւ անոնցմով վերապրեցնելու համար մեծ Հովիւը իր ժողովուրդին մէջ:

Թուցէ ոմանք տակաւին կանուխ նկատեն «ԽՐԻՄԵԱՆ»ը վերապրեցնելու պէտքը, քանի որ անոր հսկայակազմ հիմայք դեռ չէ ջնջուած այն կուրծքերէն՝ որ անոր շունչովը բաբախեցին. ու դեռ ապրող սերունդ մը կայ մեր մէջ, որ անոր կեանքն ու գործերը կը պատուէ կենդանի պաշտումով մը. դեռ վաբագաթեւ Արծիւին թռիչքը կը յածի մեր մթնոլորտին մէջ, իր լուսաւոր ստուերը դեռ բաժնուած չէ մեր արեւէն, դեռ իր ձայնն ու հառաչքները, իր երգերն ու պատգամները չեն մարած, չե՛ն մոռցուած:

Սակայն ժամանակը՝ Ամերիկահայ գաղութին մէջ մանաւանդ՝ գուցէ օր մը աւելի առաջ անտեսել տայ մեր իրականութիւնը կենագործող ամենէն արդիւնալից կեանքերն անգամ ճան այլուր, ցորչափ ընկլուզիչ քաղաքակրթութեան մը պահանջները հետզհետէ բռնանան Հայ ճակատագրին, Ցեղին ու Լեզուին, Պատմութեան ու Հաւատքին վրայ։ Այս լուռ սպառնալիքին դէմ ի՜նչ աւելի զօրեղ, ի՜նչ աւելի փրկարար դեր մը կրնայ ստանձնել Հ․ Կ․ Հիմնարկութիւնը՝ ճան այն նուիրումը՝ որով իր շուրջը շնչող նոր սերունդին եւ յետնորդներուն համար բարոյապէս կը գոտեպնդուի, որպէսզի անոնք չմոռնան իրենց մայրենի լեզուն, չմոռնալու համար Սահակէն մինչեւ Խրիմեան, Վարդանէն մինչեւ Անդրանիկ խորաքանդակ դրոշմուած տոհմային պատմութեան կարկառուն էջերը։ Այս չքնաղ նախահոգութեան տենչանքը, որով զգածուած է Հ․ Կ․ Հիմնարկութիւնը, մեր համոզումին ու հաւանութեան բոլոր ուժովը կը դրուատենք, ու կը հրաւիրենք ամէն Հայ անհատ՝ որ իրաւունք կը համարի ազգին մեծ մարդերովը պարծելու, կը հրաւիրենք, այո՛, որ կարդայ մեր կեանքի տեսաբանութեան նոր Սամուէլը, մեր իմաստութեան Սիրաքը, մեր ողբերուն Երեմիան, մեր ընտանեկան դրախտին աւետարանիչը, մեր հայ թռնիկներուն մեծահաւատ Պապիկը, ազդուելու համար անոր հրահանգիչ եւ հայրենանուէր խօսքերէն։

Հայրիկի գրուածները՝ թէեւ գրական արուեստի հրապոյրը չունին, սակայն չեն կրնար ուրանալ թէ անոնք իրենց պարզ բայց խորունկ արտայայտութիւններուն մէջ կը պահեն բնական ու սրտառուչ գեղեցկութիւն մը։ Մանաւանդ որ մեր ամօթխած եւ հայրենաբաղձ բարքերուն նկարագիրը զոր հայրական ջերմ զգացումներով ու կիրթ փորձառութեամբ կ՚ւանդէ մեզի, դասեր են որոնք չեն կրնար իբրեւ ղօղանջիւն բախել մեր ականջները, ա՜յնքան հնչուն է եւ թրթռուն Հայրիկի Սրտին վրդովեցուցիչ զանգակին պղինձը։ Մեր կեանքին գիրքը պիտի կարդանք իրմով, իր մէջ ծրարուած անցեալ մը վերյիշելու համար ի պատիւ մեր ցեղին։

Կա՞յ արդեօք Նոր Աշխարհի մէջ մարդ մը որ արհամարհանքով նայի Հին Աշխարհի այն Նախապետներուն՝ որոնց ա՛յնքան զուրգուրանքով կը պատմէ Ս․ Գիրքը հաւատքն ու յարացոյցը․ Բարձրագոյն քաղաքակրթութիւնը ե՞րբ հրաժարած է երբեք զմայլելէ այդ անուշակ կենցաղի դրուագներուն վրայ․ դէպի հինը դարձը՝ շա՜տ անգամ բարոյական դիւցազնութիւնն է եղած մեծ հոգիներուն։ Բրուտի մը զաւակն էր Ագաթոկլէս՝

որ ամբողջ Սիկիլիոյ տիրեց · բայց ան իր սեղանին վրայ ոսկի բաժակներով պատուել յետոյ իր հրաւիրեալները, ամօթ չէր համարեր նոյն սեղանին տակէն դուրս բերելու այն կաւէ ամանները՝ որոնք իր խոնարհ ծագումը կը յիշեցնէին : Ահա այդ հիազօր ոգին է որ պիտի պահել տայ մեզի ինչ որ մերն է, եւ պիտի չթողու որ մոռնանք մերինը՝ ուր որ ալ ըլլանք : Ազաթոկլէսներ չեն պակսիր մեր մէջ, որոնք կարօտով պիտի խմեն իրենց հայրենի տան կենդանութեան գինին՝ կաւեղէն փարչերու անուշութեան մէջէն.— Զմայլեցուցիչ պիտի մնայ մեզի համար «ՀԱՅՈՑ ՀԱՅՐԻԿ»ին հրամցուցած հին գինին՝ ո՛րքան ալ նոր ըլլան մեր տիկերը :

Հ. Կ. Հիմնարկութիւնը այդ գերազանց պատուէրը պիտի տայ գործադրել Ամերիկահայ Գաղութի նոր ու հետագայ սերունդներուն առհասարակ, ու այդ է որ կը բռնադատէ զիս խանդավառ յուզումով մը շնորհաւորելու իր վեհ նպատակը՝ որ սուրբ է միանգամայն :

Խրիմեանի անմահացումին նուիրուած այդ գրական մեծաքանքով, որուն յօժարակամ կը բերէ իր մասնակցութիւնը Ազգային Բարերարներէն Տիար Պատրիկ Կիւլպէնկեան, կ'ուզուի որ Հայոց Հայրիկն ու Պօղոսիկը իրարու մօտ ըլլան հոգիներու աշխարհին մէջ ալ : Պօղոսիկ պիտի ճանչնայ զայն իբրեւ իրենց Գերդաստանին հին բարեկամը, որ շատ անգամներով լացած է իրենց երբեմնի կորուստներուն վրայ, սփոփելով հանդերձ սգաւոր սիրտերը, եւ Հայրիկը հառաչանքով մը պիտի համբուրէ զայն : Իսկ մենք պիտի դիտենք հոս կանգնուած Յիշատակարանի հայելիին մէջ՝ հսկայ հասկը, որ իր գլուխը կը խոնարհեցնէ իրեն մօտ ծլած գողտրիկ այդ ծաղիկին, սիւքի մը հովքին ու սուգի մը խռովքին տակ :

Ընդունեցէք իմ սիրալիր ողջոյններն ու հայրական ջերմագին Օրհնութիւններս եւ ի բոլոր սրտէ մաղթանքներս վասն յաջողութեան յամենայն իրս բարիս :

*Աղօթարար*

ՊԱՏՐԻԱՐՔ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ



Ի ՅԱՒԵՐԺԱԿԱՆ ՅԻՇԱՏԱԿ

ՍԻՐԵՑԵԼՈՅ ՈՐԴԻՈՅՆ ՎԱՂԱՄԵՌԻԿ

# ԳԱՐԵԳԻՆ ՄԱՆԿԱՆ

ԿԱՆԳՆԷ

ՁԱՅՍ ՄԱՀԱՐՁԱՆ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՂԱ ԿԵՍԱՐԱՑԻ

ԱՅՎԱՏԵԱՆՑ

# ՀՐԱՒԻՐԱԿ
# ԱՐԱՐԱՏԵԱՆ

ՅՕՐԻՆԵԱԼ Ի ՉԱՓՍ ՀԱՅԿԱԿԱՆՍ

**Ի ՄԿՐՏԻՉԷ ԽՐԸՄԵԱՆ ՎԱՆԵՑՒՈՅ**

Ի ԽՆԴՐՈՅ ԵՒ ՅԱՐԴԵԱՆՑ

*ՄԵԾԱՐՈՒ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՂԱՅԻ*
*ԿԱՐԱՊԵՏ ԱՅՎԱՏԵԱՆՑ*

Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ Տ. Տ. ՆԵՐՍԻՍԻ ԱՍՏՈՒԱԾԸՆՏԻՐ ԵՒ
ՍՐԲԱԶԱՆ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

ԵՒ Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ ՍՐԲՈՑ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ Տ. ՅՈՎՀԱՆՆՈՒ
ԱՌԱՔԵԼԱՇՆՈՐՀ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ՀՐԱՄԱՆԱՒ Տ. ՅԱԿՈԲԱՅ ԱՐԺԱՆԸՆՏԻՐ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԵՒ
ԱԶԳԱՍԷՐ ՊԱՏՐԻԱՐՔԻ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍՈՅ

*Ի ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼԻՍ*
Ի ՏՊԱՐԱՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԻՒՀԷՆՏԻՍԵԱՆ
1850 — ՌՄՂԹ

Ա. Ռ.

# ՄԵԾԱՐԳՈՅ ԵՒ ԱԶՆՈՒԱԿԱՆ

## ՀԱՅՐԵՆԱՍԷՐ ԲԱՐԵՐԱՐՆ

ՅՈԳԻ վեհ Բագրատունեայն վառեալ այդպէս, ո՛վ Մեկենաս,
Նա զդիւցազանցըն Հայոց հայցեալ 'ի Մովսիսէն.
Դու 'ի տրուպ աշակերտէս երգել զվայրացըն հայրենի:
Սիրասուն զորդւոցըդ քո եւ զԹորգոմեան հանուր մանկտւոյն
Կալար ըզձեռանէ միոյ՝ նոցին սիրողապէս
Զմիւսն ետուր ինձ եւ այնպէս ելեր ընդիս 'ի յԱյրարատ.
Ի Մասեաց եւ 'ի դրախտին վայրս ըզնոսին նեմեցուցեալ
Ետուր քաղել իմ ձեռօք անդ ըզծաղկունս հայրենահոտ
Նազելի զորդւոյդ շիրմաւ զայս անթառամ հիւսել պըսակ.
Որ անշուշտ քան զմահարձանս եւ զհոյակապ կըռեայ տաճարս
Կանգնեցեր զըլխով նորին անմահական յիշատակ:
Ինձ այսպէս բախտ մեծ եհաս քեւ անդրանիկ զերկոյս պըտուղ
Ի ծառոյս անեալ 'ի ջուր եւ հող երկրին վասպուրական
Նըւիրել մանկտւոյն Հայոց առ այս ճաշակ ախորժողացն:
Այսպէս եւ դու երջանիկ եղեր անանց յիշատակաւս
Կենդանի եւ 'ի մահուն մընալ ոգւով երգոյս անմահ:

ՀԵՂԻՆԱԿԱՆ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ի դժուարին գործս՝ որ միայն հանճարաւորացն եւ ճարտարագունիցն պահի, արդարեւ յանդգնութիւն է յոյժ տկարագունին 'ի բանս եւ անվարժելոյն յարուեստս, որ չճանաչելով զոյժ եւ զկար իւրում մտաց եւ առ ոտն զարուեստին օրէնս տապացեալ՝ ձեռնամուխ լինի:

Բայց սակայն զօրութիւն սիրոյ առաւելագունի՝ բազում անգամ գեղեցիկ յանդգնութիւն ուսուցանէ այնպիսի տկարեցելոյն, որ չէ անծանօթ զանձնէն, եւ քաջալերս տայ նմա լինել անվեհեր միջամուխ 'ի յայնս: Եւ եթէ ընդ այս յորդոր սիրոյն եւ ձեռն վերին սատարեսցէ՝ առաւել եւս զօրութիւն զգենու յայնժամ տկարացելոյն ոյժ եւ հաստատի յուսով: Այո՛ վկայեն առ այս, որ ըստ հոգւոյն խօսին. զի տկար եւ անիմաստ ոգւոյն հնար է առնել գործ ինչ փոքր համեմատ ինքեան, եթէ չլինիցի յանձնապաստան 'ի զօրութիւն մտաց իւրոց յուսացեալ. եւ թէ առնիցէ ինչ, որչափ օժանդակեաց նմա վերին զօրութիւն՝ չպարծիցի նա յայնժամ իբրեւ անձին զօրութեամբ արարող նմին, այս է զառեալն յայլմէ զօրութենէ զլանալով՝ իւրում հանճարոյ գիւտ համարիցի զոչ գործեցեալսն յիւրմէ. հապա սրտիւ եւ բերանով խոստովան լինիցի ըստ առաքելոյն զգնալն կաղին վերնային զօրութեան տալ եւ ոչ իւրում անձին: Եւ այս խոստովանութիւն ոչ նմա եւ եթ պարտ է այլ եւ ամենայն մարդոյ, եւս եւ զօրաւորագունին 'ի բանս: Է՞ր վասն: Զի մարդկային զօրութիւն մուրացիկ է եւ ապիկար եւ կարօտ յամենայնի արարողին զօրութեան, եւ ըստ իմաստնոյն 'ի ձեռին նորա եմք եւ մեք եւ բանք մեր եւ ամենայն հանճար եւ գործոց խելամտութիւն:

Ընդ այս ձեռնտուութիւն՝ երեք ինչ շարժառիթք եղեն մեզ առ այս. Սէր հայրենեաց, յորդոր եւ երախտիք Բարերարին, եւ օրինակ Մեծահանճար Քերթողին Բագրատունի:

Զօրութիւն սիրոյ հայրենեաց այնչափ բռնացաւ յիմ վերայ, մինչեւ հան եւ յափշտակեաց յինէն 'ի պանդխտելոյս զոգիս իմ եւ սիրտ եւ տարաւ այսպիսեօք 'ի հայրենին, եւ անդ 'ի ցանկալի վայրս նորին ճեմեցուցեալ՝ գիս չատ լացոյց. եւ 'ի տեղիսն, յորում արտասուեցին իմ աչք եւ քոյդ արտասուելոց են, ո՛վ ընթերցող, եթէ եւ դու իբրեւ զիս ըմբռնեցիս նոյն կապանօք սիրոյ հայրենեացն եւ քո սիրտ եւ ոգին 'ի քէն ելցեն եւ ընդ իմոյն գնայցեն անդր: Բայց ես աղաչեցի զսէրն այն զիս միայնակ չվարել. այլ եւ ընդ իս զհամօրէն մանկունս Արարատեան աշխարհին, որ զատեալք 'ի մայրենի ծոցոյն՝ ցան եւ ցիր կան ընդ քառանկիւն կողմունս տիեզերաց եւ կա—

րոտ են իբրեւ զիս եւ նոքին դիմաց հայրենւոյն: Առ որս, ինձ այնպէս թուի թէ անդուստ զիս հրաւիրակ առաքեաց հայրենեացն անուշակ սէր ձայն տալ եւ ժողովել այսպէս եւ լինել նոցա Սուրէն1) իմն, ոչ հանգո՞յն նմին զորդւոց զձեռանէ եւ եթ, այլ եւ զհամօրէն հայկեան մանկտւոյն զմտաց եւ սրտին զձեռանէ կալեալ շրջեցուցանել ընդ բնակութիւնս նախնեաց մերոց եւ ցուցանել զաւերակս մեծամեծ քաղաքացն, որ շէնք էին երբեմն եւ մարդաշատք. զտեղիսն ասպարիսաց, յորում անկան վեհ քաջազունքն մեր վասն մախանաց եւ ոմանց անմիտ շահախնդրութեան եւ արտասուախառն հեծեծանօք պատմել նոցա զվրիպանսն, որոց վասն անկաւ ազգն մեր յայնժամ 'ի ծառայութեանն թշուառութիւն: Իցէ՞, զի եւ նոքին առցեն այսու զանձկութիւն սրտից իւրեանց եւ կամ իբրեւ աչօք 'ի մօտոյ դիտեալ զողորմելի պատկեր հայրենեաց՝ ճմլեսցին սրտիւք եւ լայցեն ընդ իս եւ գուցէ շարժիցի նոցին 'ի սիրտ այցել այնպիսում տառապելոյ: Չկամիմ շատաբանել զուժգին սիրոյն, որով վարեցաք մեք 'ի սմին եւ զի զգաս դու զայն յանձինդ, եթէ սիրով եւ ոգւով իմ ընթեռնուցուս զայս:

Իսկ երախտիք եւ յորդոր Բարերարին իմոյ՝ այն եղեւ մեզ. զի ժողովեաց զօտարս առ շքով իւրում թեւոց եւ այնչափ սիրեաց եւ դիւրութիւն ետ, մինչեւ մոռանալ պանդխտելոյս զնժդեհութեանն թշուառութիւն եւ բանալ զիւր վշտօք լռեցեալ լեզուն 'ի յերգ եւ երգել զայս զօրէն թռչնոյ նստեալ 'ի վերայ հանգուցիչ նորին ոստոյ: Այսպիսում բարերարի եւ պաշտպանողի, զի՞նչ փոխարէն վայել էր հատուցանել, ասացէք, որ ճանաչել փութայք զերախտագիտութիւն, եթէ ոչ զայս միայն, 'ի պսակել եւ հիւսել զնորին անուն ընդ այլ Մեկենասացն դաս եւ ցուցանել զնորա ոգւոյն հայրենասիրութեան չափ, որ ինեւ ոչ միայն զորդեակն դաստիարակել կամեցաւ. այլ եւ այսու զբոլոր մանկտիս Թորգոմեան 'ի հայրենասիրութիւն վառել: Ասել կայ արդ առաջի մեր եւ զօրինակէն Բագրատունւոյ քերթողաբան Հօրն:

Որպէս ցուցաք վերագոյն թէ հայրենեացն սէր վարեաց զմեզ ընդ մանկտւոյն յինքն. սակայն պիտոյ եղեւ մեզ անդանօր այնպիսի քնար իմն առ 'ի հարկանել զայն ընդ ճեմելն մեր 'ի հայրենեացն վայրս, որոյ ձայն քաղցր եւ անոյշ լսէր անդ հանգուցեալ ականջաց քերթողահարցն մերոց Սահակայ, Մեսրովպայ եւ Մովսիսի:

Եւ առ այս, նախաշաւիղ ընթացող եղեւ առաջի մեր նոյն Հայկական տաղաչափութեան հմուտ եւ սիրող ոգին, եւ ու—

1) Էր սա ոմն հայազգի իշխան առ ժամանակօք մարզպանացն Պարսից բնակեալ 'ի Հայաստան. առ որ գրեաց զայսպիսի թուղթ իմն նորին բարեկամ Բագարատ անուն յԱթենայ կալնուլ զձեռանէ որդւոց եւ շրջեցուցանել ընդ բնակութիւնս նախնեացն. զի այնու 'ի հայրենասիրութիւն եւ յարիութիւն կրթեսցին:

սոյց զայս քնար ընտրել եւ առնուլ ընդ մեզ․ զոր արդարեւ ընդ հնչեցուցանելն անդ՝ անոյշ թուեցաւ նոցին ականջաց՝ ճանաչելով զընտանի եւ զհամբոյր ձայն լռեցեալ երգոցն իւրեանց եւ ցնծագին իսկ ոգւով 'ի յերկինս եւ պսակս հիւսեալ առաքել անդուստ նոր պնդողին զաղխ թուլացելոյ նոցին նուագարանացն: Եւ մեք, որ ոգւով չափ սիրող գտաք աննախանձաբար նորին իրաւացի ընտրողութեան՝ կամեցաք ընդ նմին օժանդակել առ 'ի պնդել զայն հաստատուն եւ տկար մատամբ մերով ընդ զօրաւորագունին․ զի մի այլ եւս թուլասցի մինչեւ 'ի յաւիտեան․ եւ ոչ միայն բանիւ վկայ լինել առ այս, այլ եւ դուզնաքեայ այսու արդեամբք ծանուցանել ամենայն Հայասէր բանասիրաց զյարգ եւ զազնուականութիւն հնադունի տաղաչափութեանն ե մանկտւոյն քմաց մատուցանել փոքրիկ ճաշակաւ զքաղցրութիւն եւ զանուշութիւն նորա ընդ առաջնոյ մատուցանողին մեծագոյն եւ լի ճաշակաւն:

Մնայ մեզ արդ պատասխանել այնոցիկ, որ գուցէ յանկատարէս զկատարելագոյնն պահանջել կամիցին եւ բերանով իսկ խոստովանել զթերութիւն անարուեստ յօրինուածոյս․ զի թերեւս ազատ կացուսցեն զմեզ ներողամտութեամբ կաճառք հմտագոյն քննաբանից: Անշուշտ խորագոյն փափագ հայրենասիրին ստիպէն զնա ասել ցմեզ, թէ բարւոք եւ լաւագոյն եւս լինէր, եթէ ընդ ամենայն աշխարհ Հայաստանեայց յայն բոլոր տեղիս շրջէիր այսպիսեօք․ որ արժանի էին երգոց եւ մանաւանդ զսիրտ եւ զյօժարութիւն մանկտւոյն 'ի հայրենասիրութիւն զարթուցանելոյ:

Առ այդ, զի՞նչ քեզ պատասխան տացից սիրաբար, ո՛վ հայրենափափագ ոգի, եւ միթէ դու զպորձ Մովսիսին յինէն 'ի տկարէ՞ս պահանջել կամիս․ քանզի նորա սրաթռիչ մտաց էր միայն եւ թեւոց այդպիսեաւ ըստ հայցուածոց քում հատանել անցանել ընդ մեր լայնածաւալ աշխարհն, որ քերթողն էր եւ ամենիմաստ արուեստին եւ կատարելագոյն յարմարութեամբ պերճացեալ, որ հայրենի տեղեացն եւ վայրեացն դիտող էր ճշգրիտ եւ քաջ տեղեկագոյն․ եւ յընդարձակ միտս իւր մթերեալ ունէր զայն ամենայն նիւթս, որ միանգամ պիտոյ լինէր 'ի յօրինել զայդ․ զոր հայցես դու յինէն:

Ուստի եւ քաջ ճանաչելով զչափ հարստութեան մեր աղքատիկ մտաց՝ յայսչափ տեղիս միայն կարողացաք ճեմել, որ մեզ եւ մանկտւոյն ընտանի եւ ծանօթագոյն էին․ եւ այն՝ ոչ այնչափ, որչափ արժան էր եւ օրէն, այլ հարեւանցիկ տեսութեամբ միայն: Բայց թէ կամ իցէ ուշմագունից՝ կարէ եւ սակաւուքս 'ի մնացեալսն ճեմել, այսինքն աւերակօք Անի քաղաքին եւ զայլ աւերակեալ քաղաքս դիտել․ քանզի նոյն ողբք նորին յարմարի եւ 'ի դիմաց ամենայն աւերակելոցն:

Այլ երանի էր մեզ, եթէ այսու անկատարութեան յանցանօք պրծեալ լինէաք յատենէ քննողաց եւ չյաւելուլ ընդ այս զայլ իմն եւս, որ է անցանել թէ ոչ բազմօք՝ գուցէ եւիք եւիք

գծանր օրինօք արուեստին քերթողական:

Բայց մինչ անարուեստս բանից թերութիւն իբրեւ քերթողի՞ դատիցի. եւ կամ ընդ յօրինելն զայսոսիկ՝ հանճար մտա՞ց եղեւ ինձ առաջնորդ, եթէ սիրտն եւ սէր. զայս դու ինքնին կարես որոշել 'ի վերծանելդ քո: Եւ ընդէ՞ր այս: Քանզի յիս ցամաք եւ անջուր գոլով ակն աղբեր մտաց բանածնունդ. եւ յորդագոյն յոյժ սիրոյն եւ սրտին. վասն այնորիկ եւ 'ի նոցունց ականէ կամեցայ յաւէտ բղխեցուցանել զայս: Ուստի եւ ուժգնութիւն բռնագունիցս այսոցիկ 'ի բաց վտարեաց յինէն զմտաց առաջնորդութիւն եւ վարեալ զիս թափով յընթացս սորին՝ ետ հարկաւ անցանել զարուեստին օրինօք. եւ զի բուռըն է սիրոյ եւ սրտին զօրութիւն եւ չկամի բազում անգամ հպատակել օրինաց մտաց:

Այլ թէպէտ յայսոցիկ կատարելութեանց թերացեալ գտանիմք յերկասիրութեանս այսմիկ, սակայն ոչ 'ի լի հայրենասիրութենէ. զոր գրեթէ իբր զկենդանի պատկեր տպաւորեալ եմք 'ի սմին ընդ որ հայել ուրուք եւ յանձին չզգալ ինչ, յիրաւի չէ նա 'ի կարգի հայրենասիրացն:

Ընդ այս եւ զհայկական ոգւոյն համեստութիւն եւ զգեղեցիկ դպրութեան շնորհ ոչ երբէք մոռացեալ եմք. զոր թողուլ եւ մոռանալ՝ արդարեւ արտաքոյ մնամք յաշակերտութենէ նախնեացն եւ դատապարտիմք իրաւամբք յայնցանէ, որ նախանձաւորքն են:

Եւ առաւել քան զսոսին զուն գործեցաք, ոչ այնչափ 'ի հայրենեացն սէր, որչափ 'ի կրօնասիրութիւն եւ յառաքինի վարս վառել զմանկտիս. զի առանց այսոցիկ չկարէ ոք լինել ճշմարիտ հայրենասէր: Վասն որոյ առ 'ի ոչ ստուերօք, այլ ճշգրիտ կերպարանօք բանից զնոսին 'ի հայրենասիրութիւն յորդորելոյ՝ մտադիր յօժարութեամբ խառնել ջանացի միշտ յանմահութիւն սորին զանուշաբեր եւ զհամեմիչ աղն. զի մի խոտան ճաշակելեաց կրօնասէր ոգւոցն թուեցի եւ զգուեցին յայսմանէ եւ մեք նրեւեսցուք յայնժամ շաղփաղփ եւ շաղակրատ:

Եւ թէպէտ 'ի բազում ուրեք դեգերեալ եմք զնիւթովք զուարճալի, զայն 'ի սիրոյ մանկտւոյն ստիպեցաք առնել խաղալով ընդ նոսին եւ կամ իբրեւ զփափկիկ կերակուր ջամբեալ. զի ըստ մանկական քնքուշ բարուց ախորժիցեն տակաւ տակաւ եւ զմերձ եղեալ հաստատուն կերակուր խրատու եւ համեստութեան ճաշակել: Եւ այնպիսի սեղան իմն յամենայն սրտէ վաստակեցայ կազմել զայս, յորում երկու հասակացն եւս, այսինքն զուարճասիրացն եւ համեստ բանից փափագողացն՝ խորտիկ անուշահամ ըստ քմաց գտանիցի. առ որս ախորժանօք բերիցեն եւ վայելեսցեն սրտիւ շնորհակալու եւ գոհ լիցին ոչ յինէն 'ի յանարժան սպասաւորէս այսմ սեղանոյ, այլ 'ի պարգեւողէն կերակրոցն, որոյ է ամենայն ինչ՝ կերակուրն եւ սպասաւորն:

# ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

## Ի ՎԵՐԱՅ ՆՈՐՈԳԵԱԼ ՏԱՂԱՋԱՓՈՒԹԵԱՆ

## ՆԱԽՆԵԱՑՆ

ՈՐ հանդիպեալ իցեն Վիրգիլեայ Մշակականաց Թարգմանութեանն՝ բարուք եւ լիովին հմտացեալ են իսկ 'ի յառաջաբանի նորուն այսմ հնագունի տաղաչափութեան նախնեացն· յորում հանճարեղ Թարգմանիչն զօրաւոր եւ արդարացի բանիւք ընդ երկար ցուցանէ զհնոյն վայելչութեան շնորհ ընդ նորոյն համեմատեալ: Ոչ միայն բանիւք, այլ եւ արդեամբք իսկ յիւրում ճշգրիտ եւ ճարտարահիւս Թարգմանութեան· առ որս չկարէ ոք յիմաստախոհ եւ յուղղադատ քննողաց երկբայել եւ կամ դիմադրութիւն ինչ նոցին ընդդէմ բերել:

Այլ երանի՛ թէ ամենայն բանասէրք մերազնէից պատահեալ լինէին այնմ եւ չտային մեզ կրկին աստանօր 'ի գուր աշխատիլ: Ուստի եւ մեք թէպէտ յօժարեցաք աստ հակիրճ եւ պարզ կերպիւ գրել ինչ զհին չափական տաղիցն· սակայն ոչ իբրեւ 'ի մէնջ աւելի այլ ինչ խօսելով զնմանէ, որ 'ի վեր է քան զմեր կար եւ նմա միայնոյ անկ, որ բազմահմուտն է եւ լեզուագէտ եւ քաջ գիտէ կշռել զտաղս անցնիւր ազգաց ընդ միմեանս բաղդատեալ եւ ճանաչել զնոցին շնորհս եւ ընտրողութիւնս առնել ճշգրիտ հաստողութեամբ մտաց· այլ իբրեւ 'ի յառաջաբանէ նորին քաղեալ եւ հանեալ, զի թերեւս փութաջան բանասէրն, որ չեւ դիպեալ իցէ աղբեր ականն՝ դիպեսցի այսմ վտակիս եւ ըղձակերտ լեալ յօժարեսցի յաղբիւրն դիմել, որ յորդագոյն է եւ յստակ:

Երեք ինչ ունիմք միայն ծանուցանել զհնագոյն տաղիցն· նախ զսկզբնաւորութենէն եւ զդադարմանէն, երկրորդ՝ զկազմութենէն, եւ երրորդ՝ զանհամեմատ սքանչելի գեղեցկութենէն առ նորովն:

Զսկզբնաւորութիւն սորին քաջ ծանուցանէ մեզ Շարական, ըստ որում ինքն է միայն բովանդակիչ հնագոյն տաղիցն եւ 'ի նմա տեսանեմք իսկ ակներեւ զայս հրաշահիւս չափաբանութիւն անդուստ 'ի Սահակայ Պարթեւէն մերոյ սկսեալ եւ իջեալ մինչեւ 'ի Շնորհալին: Իսկ թէ ո՛րպէս դադարեցաւ առ յետինսն եւ տիրեաց 'ի տեղի նորա վանկաչափ ոտանաւորն· հաւանական կարծիք է ոմանց թէ յարշաւելն հագարացւոցն 'ի Հայաստան՝ եմուտ յայնժամ տակաւ եւ նոցին դպրութիւն 'ի Հայս· եւ ըստ որում հայր ճանաչին տաճիկք կամ արաբացիք ձայնայանգ ոտանաւորաց, թերեւս իբրեւ նոր ինչ զուարճալի եւ հեշտալուր ականջաց նմանաձայնութեամբն՝ ընկալան 'ի նոցունց եւ երգաբանքն մեր եղեալ յայնմ ժամանակի: Զկնի ապա Շնորհալին չափ եւ կշիռ եղեալ՝ ծաղկեցուցիչ զտաւ

այնմ եւ սահմանեաց զիւրաքանչիւր տողս նոյնաթիւ վանգօք եւ ձայնական յանգիւ աւարտել, որպէս երեւի այս ՚ի Յիսուս որդի կոչեցեալ մատեանն եւ յայլ բազում նորին եկեղեցական երգս: Եւ ապա յայնմհետէ տիրեաց առ հասարակ ՚ի քերթողս մեր այն ազգ ոտանաւորաց եւ անհետացան հետզհետէ բնաւին հրաշալի եւ չքնաղ կերպարանք առաջնոյն եւ հանել զնա յերեւան ոչ գտաւ ոք մինչեւ յայսմ դարու: Ասասցուք արդ եւ զկազմութենէ հնագունին: Ամենայն ուշիմ ընթերցող կարէ ինքնին հասկանալ եւ որոշել եթէ այս ազգ մեծաչափ ոտանաւորաց, որ դիւցազնական եւս կոչի, իւրաքանչիւր տողքն՝ ոչ ճիշդ նոյնաթիւ վանգօք եւ նմանաձայն վերջաւորութեամբ յօրինեալ են. այլ յարդարուն եւ համեմատ անդամովք եւ մէն մի տողքն՝ քառեակ անդամովք եղերին: Բայց զարմանալին այս է, զի անդամբքն անցնիւր տողիցն չունին յինքեանս զմխաչափ վանգս նոյն թուով. սակայն այնչափ զուգայարմար վայելուչ չարակցութեամբ գան ՚ի մի միաբանութիւն դաշնակցութեան ընդ միմեանս, մինչեւ պակասութիւն ինչ վանգից չերեւի բնաւ ՚ի նոսին եւ կամ արգելիչ լինի ուղիղ ընթերցանութեան: Եւ այսմ փորձ կարէ առնել, որ զառոգանութեան օրէնս քաջ գիտէ ամենայն չափական բանից: Իսկ օրէնք քառեակ անդամոցն ՚ի տողս, որ երեւին ՚ի մեծաչափ տաղս նախնեացն՝ այսոքիկ են:

Առաջին անդամ տողին ազատ է ունիլ ՚ի միոյ մինչեւ ՚ի չորս վանկս. երկրորդ անդամն քառավանկ, բայց եռավանկ եւս ունի եթէ առաջին անդամ չիցէ միավանկ. վասն զի մին ընդ յաջորդ եռավանկ անդամոյն իբրեւ քառավանկ կարծեցեալ ընթերցողին եւ ՚ի մի խառնեալ՝ կորնչի քառանդամութիւն տողին, զոր միշտ պահելի է. ապա թէ ոչ՝ խանգարին պայմանք չափոց այս ազգ դիւցազնական տաղից: Երրորդ եւ չորրորդ անդամքն յաճախ եւ սովորաբար քառավանկ ունին, առ ՚ի լինել ծանր եւ մեծավայելուչ յանգումն տողից, եւ մանաւանդ իբրեւ կէտ եւ սահման կատարեալ չափոցն եւ բնական առոգանութեան ձայնի եւ ոտիցն՝ անարգել դադարումն: Սակայն ազատ է տաղաչափին երբեմն ՚ի սակաւ տեղիս զչորրորդ անդամն եռավանկ ունել, միայն թէ երկրորդն եւս չիցէ եռավանկ կամ առաջինն միավանկ. զի այնպիսի տողք՝ կամ ոչ դաշնակաւոր ձայնակցին ընդ այլ տողսն եւ կամ յերկուս հաւասարս հատեալ՝ մի տողն իբրեւ երկու իմանի յընթեռնուլն. ըստ որում նախնիքն եւս ՚ի դուն ուրեք եղեալ են զչորրորդն եռավանկ: Վասն որոյ զթիւ վանգիցն ՚ի տողս իւրաքանչիւր չէ պարտ պակաս ունել քան զերեքտասան եւ ոչ աւելի քան զվեշտասան:

Ահա ընդ այդ պարզ օրինօք նկատին տասն կերպ յեղանակք կամ փոփոխութիւնք այս ազգ տաղից՝ յաճախ վարժեալք խառն ընդ միմեանս ՚ի նախնեացն, այսինքն յառաջին հոգէնուագ երգահանացն մերոց Սահակայ եւ Խորենացւոյն եւ

*յայլ աշակերտաց նոցին. որք ծնող եւ հիմունք համարին բարբառոյ մերում եւ քաջ հմուտ դաշնակութեան չափական բանից ազգային, մանաւանդ բարուք ճանաչողք եւ դիւրազգացք 'ի յոգիս՝ բնաւորութեան եւ ախորժակաց բնիկ հայկական ոգւոյն: Վասն այս իսկ յընտրելագոյն երգս իւրեանց եկեղեցական՝ այսու եղանակօք յաւէտ վարեալ են: Եւ Շնորհալին եւս, որ կրտսերն է նախնեաց օրինօք վարեալ է. զոր թէ ընդ այլ բազում ձայնայանդ ոտանաւորս նորին համեմատեսցես՝ կարես դու ինքնին մտօքդ չափել եւ կշռել զծանրութիւն առաւելութեան հնովն յօրինեալ տաղիցն. որք իբրեւ զակն ինչ պատուական երեւին 'ի մէջ ոսկւոցն. եւ արձակեն յինքեանց ցոլմունս նշուլից պայծառ վսեմաբանութեան. զոր 'ի սորեւ ունիս տեսանել 'ի Նորահրաշն օրհնութիւն Վարդանանց եւ յայլ տաղս երգեալք 'ի նորին շնորհալից ոգւոյ: Ոսկի ասացի զայլ վանկաչափ ոտանաւորացն Շնորհալւոյն սակս մաքուր պարզութեան եւ քաղցրութեան եւ բուն հայկական ոճով յօրինուածոյն: Մանաւանդ եկեղեցական երգք նորուն, յորս ընդ քաղցրութիւն բանիցն՝ եւ վսեմութեան փայլի շնորհ. որով համարին նոքին գերազանց յոյժ քան զարդի տաղաչափիցն յօրինուածս եւ ոչ այնչափ ստորին քան զանդամաչափսն:*

*Դնեմք աստանօր զայդ տասն փոփոխութեանց կանոնս օրինակօք հանդերձ. յորում երեւին յայտնի թիւք վանկից 'ի քառեակ անդամսն 'ի մէջ տողին:*

Գլուխ սուրբ հաւատոյ եւ փայտ կենաց մարդկան յայտնեալ:
Վարդան քաջ նահատակ որ վանեցեր ըզթշնամին:
Ահաւոր ես թագաւոր քրովբէական ձայնիւ օրհնեալ:
Որ յանէից գոյացուցեր զքո զարարածս իսկըզբանէ:
Որ արարեր զօրութեամբ զիմանալեաց աշխարհ վերին:
Մեծահրաշ այս խորհուրդ աւանդութեամբ առ մեզ հասեալ:
Ի գիւտ մոլորեալ եւ կորուսեալ անառակին:
Որ զտիրականըդ կերպարան ըզգեցուցեր ծառային:
Առաքի հրեշտակապետն առ սերովբէն հողեղէն:
Ի գեղ ըսքանչելի աստուածատուր կուսանացն:

*Արտաքոյ յայդ տասն յեղանակաց, թէպէտ գոն եւ այլ ազատութիւնք գործածութեանց 'ի նախնեացն տաղս. սակայն 'ի նոցունց զդոսին միայն ընկալեալ է ընտրութիւն նախանձաւոր նորոգչին. ոյք յաւէտ վայելուչք են եւ դաշնակաւոր եւ անթերի լընուն զչափս երկայն դիւցազնական քառանդամ տաղից, եւ այդոքիւք վարեալ է իսկ 'ի թարգմանութեանն իւրում. ուստի եւ մեք հաւանող եւ հետեւող լեալ նմին՝ զովին կանոնօք վարեցաք 'ի գիրս այս: Բայց չէ հարկ, զի յամենայն քերթուածս, մանաւանդ 'ի մանունս հարկաւ զտա–*

նիցին 'ի միասին այդ տասն զանազանութիւնք փոփոխութեանց. քանզի տեսանեմք իսկ 'ի Շարականին, որ չերեւին դոքա բոլոր 'ի մի յերգ. թէպէտ յերկայն քերթուածի մարթ է գտանիլ եւ թէ պակասիցին եւս ոմանք 'ի դոցանէ 'ի Նմին՝ չէ քերթուածին ինչ թերութիւն: Եւ քանզի այդոքիկ թէպէտ բոլորն եւս միապէս բարեյարմար դաշնակութեամբ նուագաւոր են. սակայն են 'ի դոցունց, որ յաճախ սովորական են, եւ են՝ որ թէպէտ չեն սովորական եւ 'ի դուն ուրեք վարելի, բայց թէ ըստ տեղւոյն 'ի կիր արկցին՝ յոյժ վսեմ եւ ազդողագոյն կազմեն զտողն: Դժուարութիւն տաղաչափութեանս այսմիկ յայդոսիկ է միայն եւ այդոքիւք երեւի հանճար եւ ճարտարութիւն տաղաչափին. զի գիտիցէ քաջ ըստ իմաստիցն պահանջման եւ յարմարութեան վայելչօրէն պատշաճեցուցանել զայդոսիկ: Եւ առ այս ինձ այնպէս թուի թէ ոչ այնքան միտք պիտին, որքան եռանդուն աշխուժութիւնք սրտի. եւ մանաւանդ եթէ եղանակաւոր առոգանութեամբ ստէպ կարդասցէ յօրինողն 'ի յօրինելն՝ զօրաւոր քան զհանճար խանդավառ առոգանութիւն քաջ ուսուցանէ նմա տալ իւրաքանչիւր իմաստից եւ կրից բանին զտասնեսին զայդ զանազանութիւնսդ: Մնայ արդ ցուցանել սակաւուք զառաւելութիւն դերազանցութեան այս հնագոյն տաղից 'ի վերայ նորոյն:

Ոչ միայն տաղաչափն, այլ եւ արձակաբան մատենագիրն ամենայն զօրութեամբ ճիգն թափէ խորշիլ ըստ կարի յամենայն ձանձրութեանց. եւ զի՞նչ են ձանձրութիւնք 'ի գիրս, եթէ ոչ կրկնութիւնք իմաստից եւ նմանաձայն բառից առաւել քան զչափն, որ տաղտուկ բերեն ախորժակաց եւ բախեն միշտ նոյն հնչմամբ զականջս ընթերցողին: Եւ այս յաւէտ 'ի չափեալ բանս պատահին քան յարձակ. որոց խնամոտ փութով դարման տարեալ նախնի քաջ երգահանացն մերոց՝ ազատ կացուցեալ են յայսմանէ եւ յանտանելի ձանձրութենէ զորին զտաղս իւրեանց: Եւ այսու ազատութեամբ թէ քանի՞ դիւրութիւն տուեալ են տաղաչափիցն մերոց. որ միանգամ քաջ հասու լինել այսմ կամի՝ պարտի ընդ փորձ մտանել յերկոսին եւս, յօրինելով ինչ հնովս եւ նորովն. կարէ բարւոք ճանաչել յայնժամ զանվաստակ աշխատութիւն միոյն՝ ազատութեամբն եւ զանտանելի տագնապեցուցիչ կապ միւսոյն՝ ծառայութեամբն: Տեսանէ, զի հինս առանց ստիպելոյ ազատութիւն տայ ինքեան փոփոխել զկերպարանս տողին որպէս եւ կամիցի եւ ընտրել զբառն, որ գրկէ եւ համբուրէ զիմաստ բանիցն եւ ճշգրիտ կերպարանօք երեւեցուցանէ զընականոր պատկեր առաջի եղեալ նիւթոյն եւ զգրեալն 'ի տողին՝ ոչ այնչափ հարկ առնէ ջնջել վերստին զննութեամբն: Իսկ նորն անհնարին տագնապաւ խուճապէ զմիտս իւր. որով չուարեալ բազում անգամ թողու զգրիչն 'ի ձեռաց եւ սկսանի յածեցուցանել զմիտս իւր 'ի մէջ անթիւ բառից եւ թէ դէպ լինիցի ըմբռնել զմին, որ սիրելին է նմանաձայնութեամբն՝ վաշ կարդալով

կապէ զնա 'ի վերջ տողին. չհայի զառաջինն ընդ ճշգրիտ նըշանակութիւն եւ յարմարութիւն նորին առ իմաստն. չատ է նմա, զի միայն զուգավանկ եւ ձայնայանդ լինիցի. եւ յորժամ միւս անգամ վերագնէ զեղեալ բառն՝ տրտմութեամբ անդրէն լուծանէ զկապեալն 'ի տեղւոջէն եւ այլում լինի խնդիր: Եւ թէպէտ ըստ Որատեայ խրատուն բառքն ինքնակամ գան զհետ իրին նիւթելոյ, սակայն ցաւալին այս է, զի զինքնակամ եկեալսն՝ հինն սիրով ընդունի. իսկ նորն ընդ աննմանութիւն ձայնին նայեցեալ մերժէ: Ոչ միայն ընդունի. այլ եւ 'ի չարս տողին յայն տեղ ուսուցանէ դնելզբառն, զոր սիրէ ինքն վասն սեպհական գոլոյն, ուր նորն ընդ հակառակն 'ի բուն տեղւոջէն հանեալ կարօտելով ձայնին նմանութեանն՝ յանվայելուչ տեղին կացուցանէ. որով խանգարի ոճ լեզուին մերոյ եւ տգեղանայ պարզ եւ գեղեցիկ կերպարան նորին: Եւ այսու իսկ առաւել եւս գովելի է հնագունին ազնուականութիւն, զի զվայելուչ յօրինուած չարահիւսութեան անդամոց կամ բառից ընդ միմեանս եւ զեղանակ ասացուածոց, որ սեպհական է բարբառոյ մերում՝ անարատ եւ ամբողջ պահէ: Բայց այսմ, ոչ այնքան ինքն կայ պատկառ, որքան ազատ կամք յօրինողին. որ եթէ կամիցի՝ կարէ եւ հնովս աղաւաղել զոճն, եւ ոչ միայն 'ի չափեալ բանս, այլ առաւել եւս յարձակ:

Գովելի է նա եւ հնագունին ուիշտ խնայութիւն, որ չըթողու զանգիւտ ժամանակն տարապարտ աշխատութեամբ վատնել. քանզի զբազմամեայ գործ նորոյն՝ ինքն 'ի սուղ ժամանակի կարէ լրացուցանել: Ի՞ւ եւ ո՛րպէս: Այնպէս կարծեմ եթէ հինս այս հարազատ զաւակ է եւ ծնունդ հայկական ոգւոյն եւ նախծին անդրանիկ նախամեծար քան զմիւսն. վասն այն յոյժ սիրեալ զսա զճոխագոյն հարստութեան գանձարան դպրութեան իւրում՝ բանայ աննախանձաբար ընդ առաջ անդրանկին. որով հարստացեալ եւ առատապարգեւ լեալ 'ի նմանէ՝ 'ի փոքու ժամանակի գլխաւորէ զգործն: Իսկ առ նորն իբրեւ առ խորթ եւ եկամուտ՝ ուիշտ է յոյժ եւ փակէ ընդ դէմ նորա զդուռն գանձարանին. վասն զի ընդունայն վատնէ զնոսին եւ ոչ այնպէս 'ի գործ արկանէ որպէս ինքն կամի: Ուստի աղքատօրէն վաստակեալ նորոյն 'ի յօրինելն ինչ՝ հեռանայ յիւրմէն եւ երկայնաձգի լրումն գործոյն:

Են եւ այլ բազում կատարելութիւնք բուն վաղեմի տաղաչափութեանս այսմիկ, որ յանդիմանեն բազմօք զնորոյն թերութիւնս. այլ ես երկնչիմ անաչառութեամբ խօսել 'ի մէջ երկուցն. քանզի զոր բանիւ գովեցի զհնոյս պատուականութիւն աստանօր, զնոյն չկարացի արդեամբք ցուցանել անդ 'ի տեղւոջն. որով ճշմարիտ եւ հաստատուն եւս լինէր ասացելոցս ջատագովութիւն:

Արձակ էր 'ի ծառայութեան կապանաց նորոյն փոփոխել զկերպարան բանիցն եւ զանցառնել զկրկնութեամբքն. բայց յաւելի զայնս բազմօք 'ի բազում տեղիս եւ առաւել քան զպայ-

մանն, եւ թէ ճշմարտութեամբ խոստովանեցայց՝ անցի այսու մասամբ քան զնոսին. որ ծառայեցուցիչ կապանօք օրինացն՝ ազատ կացեալ են յայսմանէ: Եւ այս յանցանք, եթէ որո՞յ իցէ առաւել, նիւթոյն եւ հարկի՞ն, եթէ տկարութեանն եւ կամ վառեալ սրտին, որ զյաւէտ սիրեալ բան իւր յեղյեղել կամի, ոչ գիտեմ ես եւ ներողամիտ քննողաց թողում զայն: Այլ զոր գիտեմ ասացից անաչառ, այս է զի յամենայնի յանդիմանի տկարութիւնն: Վասն որոյ մի ոք կարծես ’ի ներքս արկանիցէ, եթէ մեք այսոքիւք կամեցաք ստգիւտ ինչ ածել նորովն վարեցեալ քերթողաց մերոց, ոյց քերթուածք ամենայն հանճարով եւ ճարտարութեամբ չափեալ են եւ կապն ծառայութեան ոչ կարացեալ է այնչափ կաշկանդել զնոսին. եւ զի յաղթող է յամենայնի գրիչն ճարտար: Սակայն խոստովանելի է եթէ ճարտարքն այնոքիկ հնովս վարէին՝ չվաստակէին այնչափ երկայնաւուրբք եւ անշուշտ առաւել եւս վայելչանային նոցին մատեանք:

Զկամիմք նա եւ իսպառ զձայնական յանգս մերժել ’ի հայկական դպրութենէս մերմէ. քանզի ոչ սակաւ տեսանեմք զնոսին եւ ’ի նախնեացն տաղս՝ խառն վարեալք յաւարտ տողին եւ ’ի մէջն: Եւ աստի կարծեն ոմանք լինել սկիզբն վանկաչափ ձայնայանգից, որ հաւանական եւս թուի քան զկարծիսն, զոր վերագոյն ցուցաք. վասն այն եւ մեք ’ի բազում տեղիս պատահման այնպէս յօրինեցաք:

Ի վերայ այսր ամենայնի եթէ հինն եւ եթէ նորն՝ անարուեստ երեւին եւ ոչ բնաւ քաղցրանուն լսելեաց եթէ չիցէ մերձ աշխոյժ եւ ուղիղ առոգանութեան լեզուն. զի ըստ որում անդամք եւ տողք չափից նման են նուագարանաց պնդեալ եւ յարմարեալ լարից, զոր թէ անարուեստ ոք ’ի ձեռս առնուցու, զնուագաւոր ձայնակցութիւն նոցին որ ընդ միմեանս՝ խառնէ եւ խանգարէ. որով իսպառ կորուսանին դաշնակութիւնք չափոցն եւ փոխին յարձակ բան: Ուստի չէ ինչ ամօթ այնոցիկ, որ ոչ գիտեն զճարտար ընթերցումն չափական բանից՝ ուսանիլ ’ի քաջ ընթերցողացն եւ այնպէս ընթեռնուլ. ապա թէ ոչ՝ չզգան ինչ զզօրութիւն եւ զանուշութիւն տաղիցն եւ ոչ հեշտանան ականջաց իւրեանց նոցին քաղցրալուր նուագք:

Կարեւոր համարիմք հատակոտոր կարգել աստանօր ըզտողս. ինչ կամ զամբողջ տունս յամենայն օրինակաց Շարականին եւ ’ի տաղից Նարեկացւոյն եւ Շնորհալւոյն ’ի դիւրութիւն ընթերցասիրացն, կամ իբր ճաշակ ինչ առհաւատչեայ այնոցիկ. ոյք թերեւս չունին պատրաստի ’ի ձեռս իւրեանց զՇարական. եւ կամ թէ ունիցին՝ ոչ այնպէս ընթեռնուն, որպէս կարգեմք աստ. ըստ որում ’ի Շարականին ոչ ’ի մի տող շարեալ են քառեակ անդամքն կարգաւ. այլ իբրեւ զարձակ բան միահետ գրեալ:

——o——

# ՇԱՐԱԿԱՆՔ

Որ յանէից գոյացուցեր զքո զարարածս խկըզբանէ․
Ի պատկեր աստուածութեանըդ քո ստեղծեր մարդ 'ի հողոյ…
Իսկ պատրանօք բանսարկուին 'ի դրախտէն արտաքս անկեալ․
Ի յաւէժ կենդանութեանըն մահաուիթ պըտղով մեռեալ:…
Ահաւոր ես Թագաւոր քրովբէական ձայնիւ օրհնեալ
Ի յերկինս 'ի յերկրի եւ յամենայն ժամանակի:—
Ի գիշերին յորում մատնէր փրրկիչըն մեր 'ի մահ խաչի:
Իսկ անօրէն աշակերտին թողեալ ըզգութ սիրոյ նորա:
Ժողովեալ հըրէիցըն կըշռեցին արծաթ բազում
Առեալ տարան առ Պիղատոս ասեն 'ի խաչ հան 'ի խաչ:

Սուրբ Սահակ Պարթեւ

Որ զօրինակ Մարիամու, հոգիդ, ցուցեր մարգարէին․
Այսօր զաւակ Յովակիմայ ետուր ըզլեառըն վիմածին:—
Այսօր ցրնծան երկնայինքն եւ պար առեալ 'ի բարձունս
Երգեն զերգս հոգեւորս յաւուր ծննդեան Սրրբուհւոյն:—
Նահապետացն Աբրահամու, Իսահակայ եւ Յակովբայ
Պարգեւեցար 'ի յԱստուծոյ, կոյս Մարիամ, դուստըր նոցին:—
Ուրախացիր Աստուածածին վերօրհնեալդ 'ի սրովբէից:
Ծագելով 'ի քէն մեզ լոյս՝ մայր եղեր վերաձգողին:—
Որ անտես եւ անքըննին քառակերպիցըն վեհագոյն,
Ի փրրկել ըզմեզ եկեալ անմահից Թագաւորըն:—
Խորհուրդ մեծ եւ սքանչելի, որ յայսմ աւուր յայտնեցաւ․
Հովիւքն երգեն ընդ հրեշտակս, տան աւետիս աշխարհի:

Խորենացի:

Անձինք նուիրեալըք սիրոյն Քրիստոսի,
Երկնաւոր նահատակք եւ կուսանք իմաստունք․
Ի պարծա'նըս ձեր բարձրացեալ տօնէ․
Մայր սիոն դըստերօքըն իւրովք:
Բարբառք երկնաւորըք լըցին զերկիր,
Քանզի հոտ անուշից բուրեցայք 'ի Քրիստոս․
Ողջակէզք բանաւորք եւ զոհք փըրկութեան,
Եւ ողջք անարատք ընծայեալք Աստուծոյ:
Գեղեցկութիւնըք մարմնաւոր պայծառութեան ձերոյ
Յիմարեցոյց ըզթագաւորն եւ պակեան հեթանոսք․
Ի զեղ ըսքանչելի աստուածատուր կուսանացն
Տարփացեալ զըւարթունք ընդ մարդկան տօնեցին:
Հռիփսիմէ մեծ խորհուրդ եւ անուն ցանկալի,
Ընտրեալ 'ի յերկրի եւ դասեալ ընդ հրեշտակս․
Եղեր օրինակ սըրբութեան կուսանայ,
Վարդապե'տութիւն արանց արդարոց:

Տէր Կոմիտաս:

*Անըսկիզբըն բանն Աստուած որ վասն մեր համբեր մահու,*
*Բառնալով ըզդատակնիք անիծիցն առ 'ի մէնջ.*
*Գերապանծ մաքրութեամբ ըզմարդիկ վերագրեաց,*
*Խաչակից իւր եւ վըկայք կամաւոր մահուամբ իւրեանց:*
*Դիմամարտ գոլով սըրբոցն ընդ կռապարիշտ պաշտամունսն,*
*Երջանիկ ճակատամարտ յայտնեցան անպարտելիք.*
*Զի զԱստուած բոլորից տիրաբար սիրեցին,*
*Եակցին հօր հետեւեալ ստացան ըզԹագըն պարծանաց:*
*Լըլկանօօք եւ քերանօք զարեան վըտակըս հոսեցին,*
*Խորհըրդոցն ոչ խոտորումն եւ ոչ փոխա'դրութիւն բարուց.*
*Ծաղիկքըն նիւթեղէնք յաննիւթ ծաղիկըն յօդեցան,*
*Կատարեալըք քաջութեամբ գչարին մուրհակըս կապտեցին:*
*Հրով հոգւոյն գինու վառեալ ըզհալածիչըս վանեցին,*
*Ջօնեցին զենմա՛մբ սրոյ 'ի բանաւոր ողջակիզումն.*
*Ղամբարմամբ լուսոյ կենաց զխաւար մեղաց հալածեցին,*
*Ճոխաբար հետեւեցան լուսաշաւիղ ընդ պողոտայն:*

Յօհան Մանդակունին · կամ Օձնեցին :

*Ի ստունգանելն Ադամայ 'ի կենագործ 'ի դրախտին*
*Խաբմամբ պատրանօք փայտին ծառոյն գիտութեան.*
*Օձաջամբ պատրանօքըն ճաշակեալ 'ի պըտղոյն,*
*Ապաւինե'ցաք 'ի խաչ քո արարիչ յաւիտենից,*
*Որ ետուր մեզ պահապան յաղթող ընդ դէմ Թըշնամւոյն.*
*Աղաչեմք սովաւ փըրկիչ պահպանեա զանձինըս մեր:—*
*Յաղթող եւ զնոր օրհնութիւն միշտ 'ի բարձունս երգեսցուք*
*Թագաւորին Քրիստոսի, հաւատացեալ ժողովուրդք:*

Սուրբ Իսահակ Ձորափորեցին :

*Ես ասացի տէր ողորմեա հոգւոյ իմոյ բազմամեղի,*
*Որ բնակեալդ ես 'ի յերկինս եւ յանմարմնոց փառաբանիս:—*
*Հայեցայ 'ի բարձունս առ քեզ կարող յամենայնի.*
*Ընկալ զիս 'յարկս արդարոց ամրածածուկ աջովըդ քո:—*
*Գայ զօրութեանց Թագաւորն 'ի նորոգել զարարածս*
*Ի ձայն ահեղ բարբառոյ զարթուցանէ զննջեցեալսն:—*
*Արարիչ եւ մարդասէր անոխակալ եւ բարեգութ,*
*Որ զովխոդ 'ի սրովբէից, տէր դատաւոր արդարութեան...*

Պետրոս Գետադարձ :

*Մեծահրաշ այս խորհուրդ աւանդութեամբ առ մեզ հասեալ,*
*Զոր հոգւոց լուսատուն 'ի պաշտպանէն իւրմէ լըւեալ,*
*Եթէ տօն մեծ է այսօր իմոյ դասուն որ 'ի յերկինս:—*
*Այսօր ցընծայ եկեղեցի երկրաւորաց եւ երկնայնոց,*
*Քանզի մեկնեալն 'ի միմեանց ըստ նախահօրըն յանցանաց*
*Միաւորի վերըստին արարչական խոնարհութեամբըն:*
*Որ 'ի լըումըն բոլորի տնօրինական մեծ խորհըրդոյն*
*Առեցելովն առ 'ի մէնջ փառօք առ հայր վերհամբարձաւ:*
*Զոր տեսեալ ամովսածնին 'ի հիացման ըզվերինսն,*

Բարբառելով առ միմեանս, եթէ այս ո՛վ եկեալ յերկրէ,
Կարմրացեալ հանդերձիւ ՚ի տիգախոց բըղխեալ կողէն։
Ուստի լըւեալ ՚ի նմանէ զարժանահաս պատասխանին,
Եթէ զգերեալ ազգ մարդկան ՚ի գերողէն արեամբ գնեցի·
Յորմէ օրհնո՛ւթիւնք նըմա ՚ի փըրկելոցս արեամբ նորա։
Որ զտիրականըդ կերպարան ըզգեցուցեր ծառային։
Որ ճաշակմամբ պտըղոյն մահու յանմահից կենաց մեռաք,
Իսկ զալստեամբ քո վերըստին փակեալ դրախտին դուռըն
[բացաւ։
Որ արարեր զօրութեամբ զիմանալեաց աշխարհ վերին,
Եւ ՚ի նմա հաստատեցեր տընտես ըզպետըս հրեղինաց։—
Աղբիւր կենաց բաշխող շնորհաց հոգիդ իջեալ ՚ի բարձանց,
Զանապական պարգեւըս քո բաժանեցեր յառաքեալսն։—
Այսօր աղբիւր գիտութեան բըղխեալ ՚ի սուրբ վերնատունն,
Յորմէ լըցան տիեզերք գնացիւք գետոց ոռոգմամբ։
Այսօր իջեալ ՚ի յերկիր Հօր աւետիքն ՚ի բարձանց,
Տալ աւետիս Ադամայ դառնալ յեդեմ վերըստին։—
Այսօր որ էն ՚ի յերկինս բան եւ ծընունդ Հօր միածին
Ըզծածկեալսն ՚ի յէից խորհուրդ յայտնեաց աշակերտաց,
Ծառայի զկերպարանըն ծածկելով աստուածութեամբըն։—
Այսօր ցուցեր ՚ի Թափոր զանտանելի լուսոյդ փայլումն·
Ծագեցար աշխարհի արդարութեան արեգակն
Յայտնելով աշակերտացն ըզպարագրեալ աստուածութիւնդ։—
Յաղթող եւ սուրբ Հայրապետ նըման մեծին Մովսիսի·
Բարձող խաչին պարծանաց ընդդիմամարտ հանդիսիւ...
Այլ մեք ձայնիւ ցընծութեամբ տօնեմք զքո սուրբ զյիշատակս։
Պատուեալ վըկայ Քրիստոսի սուրբ Հայրապետըդ Յակոբ։
Նորահրաշ պըսակաւոր եւ զօրագլուխ առաքինեաց,
Վառեցար զինու հոգւոյն արիաբար ընդ դէմ մահու·
Վարդան քաջ նահատակ, որ վանեցեր ըզթըշնամին,
Վարդագոյն արեամբըդ քո պըսակեցեր զեկեղեցի։
Երկնաւոր Թագաւորին զինու յաղթեալ պատերազմին,
Խոհական իմաստութեամբ խոհեմացեալ անճառապէս·
Խորէն խորհըրդական եւ ծանուցեալ անուն բարի,
Խաչելոյն վըկայ եղեալ հեղմամբ արեան պըսակեցաւ։
Րենական լուսով լըցեալ արիացեալըն քաջն Արտակ,
Թաթաւեալ ՚ի կարմրութիւն բոսորային բըղխեալ աղբերն·
Զփըրկականն ըմպեալ զբաժակ եւ մըկըրտեալ արեամբն իւրով։
Դասակցեալ ընդ անմարմնոցն Երրորդութեանն երգել ըզփառս։
Սըրբափայլ զգեստուք պըճնեալ ՚ի յերկնաւոր հանդիսադրէն,
Երրորդութեամբըն զօրացեալ վանեալ զամուրըս բանսարկուին·
Հըմայեակ Հօր ընծայեալ որդւոյ գոլով չարչարակից,
Հոգւովն յաղթեալ պատերազմին եւ չարասէր Թագաւորին։
Էական բարւոյն դիտմամբ ընդ դէմ մեղացըն վառեցաւ,
Տարագնաց ելիւք յերկինըս պարակցեալ ընդ անմարմնոցն·
Տաճատ զարմանալի տաճար եղեալ Երրորդութեանն,

Տէրունեան սուրբ խորհրդոյն տուն եւ տեղի արժանացեալ:
Ստացեալ ըզհաւատոյ վահան յուսոյն զրահիւք ծածկեալ,
Զփըրկականըն սաղաւարտ 'ի գլուխ եդեալ զնշան խաչին·
Վահան վէհ երեւեալն որ մանկութեամբ նահատակեալ,
Խաչելոյն վըկայ եղեալ պըսակեցաւ արեամբըն իւրով:
Ի հօտ անոյշ ողջակիզեալ մատուցանէր զինքըն նուէր
Արշէնըն ցանկալի արդարութեամբըն ճոխացեալ,
Իմաստութեամբ պայծառացեալ յօթնափեան շնորհաց հոգւոյն:
Երկոքումբք հարազատովք ընտրելագոյն նահատակօք
Յառաջեալ յամենեցունց գլուխ եւ աւարտ մարտիրոսաց·
Նախաշաւիղ գոլով բարեաց յառաջադէմըն Գարեգին
Ընկալեալ ըզբըրաբիոնըն յաղթանակ նահատակացն:
Բամկական խումբ հազարաց եւ երեսնից թիւ ընդ վեցից,
Որք ընդ նոսին նահատակեալ արիաբար պատերազմաւ·
Եւ հեղին զարիւնս իւրեանց 'ի նորոգումն եկեղեցւոյ
Ընդ նոսին պըսակելով 'ի յերկնաւոր հանդիսադրէն:
Գոհութեամբ փառատրութիւն երրորդութեանըդ նըւագեմք
Բազմութեամբ պըսակելոցս ըզմեօք մածեալ առաքինեացս·
Եկեղեցիք Հայաստանեայց պայծառապէս զարդարեցան
Ունելով միշտ բարեխօս ըզճըգնութիւն մարտի սոցա:

Շնորհալին:

Վարդագոյն վառեալ ծաղիկ 'ի նորատունկ բուրաստանի
Լուսազարդեալ երեւեցար, ո՛վ երանեալ սուրբ Կիրակոս:
Աղաւնի քաղցրաբարբառ հեզաբանեալ ըզտէր Յիսուս·
Վըտակահոս արեամբ ներկեալ ոսկեբողբոջ դեռաբուսիկ:
Բաբունոյ վարդապետին համեղ ողկոյզ արեամբ ճըմլեալ
Պըսակեցար 'ի Քրիստոսէ ընդ երջանիկ մարտիրոսացն:
Դու պարծանք սուրբ հաւատոյ լուսոյ պըսակ եկեղեցւոյ·
Մայր որդւով բերկրեալ այսօր, ո՛վ երանեալ սուրբ Յուղիտա·
Ըզյիշատակ վըկայիցն սըրբոյն մեծին Մինասայ
Երմոգինեայ, Գրաբոսի յուսով եկայք տօնեսցուք:
Ո՛վ սուրբ վըկայ Քրիստոսի քաղցրաբարբառըդ Մինաս·
Արագահոս օգնական յուսով ըզքեզ խընդրողացս:

* * *

---

## ՏԱՂՔ

Սեաւ եմ գեղեցիկ դուստր Եւայի Երուսաղէմ·
Ահա նա հարսն իմ ցանկալի սիրով կապեալ ընդ փեսային:
Նման է եղբօրորդին իմ այծեմանց որթուց եղանց·
Ահա նա ձայն եղբօրորդւոյն խանդաղատեալ սիրով լըցեալ:
Աչք իւր աղաւնւոյ, թեւ լայն կարմիր մանեակ ոսկւոյ·
Ահա նա լեառըն կընդըրկի, հոտ նարդոսի եւ զըմըռսի:

*Գեղ էր զովելի մանուկ անհաս անժամանակ.*
*Ահա նա լեառըն դիտարան շուշան հովտաց ծաղիկ դաշտաց։*
*Աւետիս մեծ խորհըրդոյ, խորհուրդ ծածկեալ մեզ յայտնե-*
*[ցաւ.*
*Աւետիս, լոյս հօր ծագեալ 'ի ծոցածին յէութենէ.*
*Աւետիս, յայտնեալ Աստուած 'ի հողեղէն գոյացութիւնս։*
*Աւետիս առաքեցաւ հրեշտակապետըն Գաբրիէլ,*
*Աւետիս տայր սըրբուհւոյն դըստեր Դաւթի թագաւորին։*
*Աւետիս քեզ տիրամայր բերկրեալդ ուրախ լեր, տէր ընդ քեզ։*

Նարեկացին։

*Նոր թագաւորին անժամանակ Հօր Միածնին*
*Եկայք երկիրպագցուք, եւ ընդ մոգուցն ընծայեսցուք։*
*Րամեալ զհոգի զմարմին զմիտըս տացուք երրեակ անձին։*
*Սիրով մեռեալըն վասըն մեր յարոյց ընդ իւր զանկեալ բնութիւն*
*Ի սիրտըս գըգուեսցուք որպէս 'ի գիրկըս Սիմէօն*
*Ստասցուք տիպ օրինակ զանարատ կոյսն ըզՄարիամ։*
*Շնորհօք սըրբոյ հոգւոյն լըցեալ եղեն սուրբ մարգարէքն,*
*Շարժեալ 'ի նմին ժամու մեծ գոհութիւն մատուցանեն.*
*Որ ընդ հօր ես յէութեան եւ 'ի յաթոռ փառաց նըստիս,*
*Որ իջեր զմեզ փըրկեցեր արարչական քո գըթութեամբ.*
*Զիշխէին հայել 'ի քեզ հոյլք երամիցըն սրովբէից,*
*Զարաչար նախատանօք լըցեալ եղեր 'ի յատենի։*
*Նոր ծաղիկ պայծառ ցուցաւ այսօր ի' նոր գերեզմանէն.*
*Երփնազարդ հոգւոցըն տունկք կանաչացան կենդանութեամբ.*
*Րենական լուսոյ սաղարթք 'ի հոգեւոր գարնան փըթթեալք։*
*Սիրով մեռեալըկ վասըն մեր յարոյց ընդ իւր զանկեալ բնութիւն*
*Երեւեալ լոյս յարութեան 'ի խաւարի ստուերաց մահու։*
*Բանիւ աւետաւոր բարառնաբար բարբառեսցուք*
*Առ քեզ եկեղեցի դուստըր վերինըն սիոնի։*
*Աստեղս անթիւ ծընար գերապայծառ եւ երկնաճեմս,*
*Զագս աղա'ւնակերպս բերեալ թաթաւելով արեամբն իւրեանց։*
*Սիրով անճառ կապիս 'ի սէր անմահ քո փեսային,*
*Եւ զորդիս քո ընդգըրկես խանդակաթ սուրբ համբուրիւք։*
*Նորոգ նորափետուր լուսապայծառ յորժամ ծագիս,*
*Արե'գական նըման յարքայութեան ըստ հրամանին,*
*Ի մի յարմարութիւն զոգիս ընտրեալ քոց անդրանկաց*
*Ժողովեալ բարեխօսեա' ընդ կենդանեացըս փըրկութեան։*
*Նոյնաբար որպէս ծընար լուսազարդեալ աւազանաւն,*
*Վերըստին զմեզ նորոգել 'ի հնութենէ մեղաց մերոց։*
*Առաքեալք Աստուածորդւոյն 'ի ծոցոյ Հօր առաքելոյն,*
*Բանաւոր հօտից հովիւք բանաւորաց պայծառ քարոզք։*
*Գեղեցիկ ոտք ընթացեալ աւետաւորք խաղաղութեան.*
*Դատաւորք Իսրայէլի աթոռակիցք Հօր անդրանկին։*
*Խորհըրդոցն աստուածայնոց առատաբաշխ հազարապետք*
*Ծընողք սըրբոյ աւազանաւն զորդիս մարդկան յորդիս լուսոյ։*
*Կըրկնաստեամբ կաթն արբուցէք տղայացելոցն առ 'ի Քրիստոս.*

*Հացիւ կենաց յերկնից իջեալ կերակրեցէք ըզկարօտեալս։
Զայնեցէք առ յիմարեալսըն բարձրագոչ ձայնիւ մեծաւ,
Ղամբարմամբ լուսոյ բանին գալ 'ի յարբումն իմաստութեան։
Ճշմարիտ որթոյն ստեղունք եւ բարունակք ողկուզաբերք,
Մըշակին երկնաւորի յօտմամբ խնամոց պըտղաբերեալք։
Յորդահոս գետոց գնացիւք քառավըտակ 'ի յԱդինայ
Նորակերտ քաղաքըն սուրբ առոգելով ուրախանայ։
Աստուածային խորոցն անճառ խորհըրդակից սբ· մարգարէք·
Բանին պատմողք յառաջագոյն ապագայիցն եղելութեան·
Գաղտնի գործոց Աստուածորդւոյն տնօրինական սբ·
[խորհըրդոցն
Դաւանողք ամենեքեան բազմապատիկ օրինակօք։—
Երեւեալ 'ի ջրոյն Մովսէս, զաւազանաւ զջուրսըն հերձող
Ըզծնունդ ետես ըզկուսական 'ի մորենին անկիզական։
6 կէլ — Հայրիկ
Խաչածին արքայ Դաւիթ հայր ըստ մարմնոյ Հօր միածնին,
Ըզցօղ հոսեալ վերայ գեղման տըպաւորեալ որդւոյ իջման։
Ցանկալին Գաբրիէլի հրաշից տեսողըն Դանիէլ·
Իւսեալ նորին վարուց մանկունք, յորոց եւ հուրըն պատ–
[կառեաց·
Անմարմնոցըն հրեղինաց մարմնով հաղորդ սբ· Յովհաննէս·
Բանին Հօր բանիւ քարոզ մեծի լուսոյն նախատեսող·
Գարնան գուշակ երկրի մերում քաղցրախօսիկ ձայն տատրակի։
Դրախտին հոգւոց աստուածատունկ առոգանող ջուր մաք–
[ րութեան·
Երկնաւորին ճանապարհի յառաջընթաց աւետաւոր
Զօրական Թագաւորին նախամարտիկ յասպարիսին։
Երեւմամբ Գաբրիէլի Զաքարիաս 'ի տաճարին
Ընկալաւ ծնունդ աւետեաց անուանագրեալ 'ի տախտակի։
Թափեցելոյն յանճառ փառաց պարագրելոյն յարգանդ Կուսին
Ժամանեցեր յողջոյն կենաց յամուլ ծերոյն յորովայնէ։
Երջանիկ հոգեհրաշ կոյսըն մաքուր սուրբ Հռիփսիմէ
Լոյս ծագեցաւ 'ի Լատինէ Հայոց մեծաց յարեւմըտէ։
Կուսական փողըն գոչէր, տայր աւետիս սուրբ Գրիգորի·
Փութա ել 'ի վիրապէդ լուսաւորիչ Հայաստանի։
Ծովային շուշան ծաղիկ բուսեալ 'ի տանըս Թորգոմի,
Առողեալ արեամբ սըրբոցըն Պետրոսի եւ Պօղոսի։
Արիք ելէք 'ի Հռոմ քաղաք տուք աւետիս առաքելոցն·
Հարսանիք են ինձ այսօր եկայք տեսէք գիս հարսնացեալ։
Փող հարէք, յօրինեցէք, կարմիր արեամբ պըսակեցէք·
Ի յառագաստ սուրբ հարսանեացն գիս տանելով յուղարկեցէք։*
Շնորհալին։

*Այդչափ եւ այդպիսի են, ո՛վ ուշիմ ընթերցող, հնագունից ազնուականութեան շնորհ, զոր ընթերցեալ ծանեար իսկ թէ իբրե՞ւ զի չքնաղ եւ բոլոր մասամբք վայելչացեալ գտանին·*

զիա՛րդ գեղայարմար եւ եւ զուգախառն համբուրիւ անդամքն զմիմեանս գրկեալ են. եւ քանի՛ դաշնակաւոր եւ քաղցրանուագ լսին նոցին ձայնակցութիւնքն. եւ ո՛րքան պայծառ փայլի յայդոսիկ հայկական ոճոյն վսեմութեան լոյսն. զոր որչափ իցէ ոք ճարտարագոյն չկարէ այդչափ փայլեցուցանել նորովն: Ա՛ղէ բեր դու այժմ մերձ առ դոսին եւ զվանկաչափ յօրինուածրս՝ համեմատեա դիտողութեամբ քոյին եւ թէ չգտանիցես զմեծ զանազանութիւնս 'ի մէջ երկուցն՝ չունիս ուրեմն ճաշակառու քիմս այդպիսի ախորժակաց եւ ոչ նա եւ քաջ առողջանութիւն, զոր 'ի քէն պահանջեն այդ մեծավայելուչ եւ ծանրաքայլ ճեմք չափոցն ոտից: Լեր ուրեմն ոչ միայն սիրող եւ հաւանող, այլ մանաւանդ հետեւող եւս դոյնպիսի պերճ եւ սքանչելի չափոց նախնական տաղից. եւ եթէ ըղձալի են քեզ վաղեմի իմաստուն հարցն ոսկեղէն դարուն արձակ շարագիրք՝ առաւել եւս այդոքիկ լիցին. որ իբրեւ զայնս հարազատ եւ անդրանիկ ծնունդք են նոցին ազնուական ոգւոց եւ գիտք ամենահարուստ եւ հանճարաւոր մտաց:



# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

## *ԱՌԱՋԻՆ ՆՈՒԱԳԻՆ*

---

ՅԱՌԱՋԻՆ մասին այսմիկ՝ հրաւիրէ զմանկտիսն նախ 'ի դրախտն եւ անդուստ հանեալ շրջեցուցանէ զվայրօք պանդըխտութեան նախաստեղծիցն եւ որդւոց նոցին Կայենի եւ Աբէլի. ածէ ապա յԱյրարատ եւ առ եզեր Երասխայ գետոյն նեմեցուցեալ սակաւ ինչ՝ դարձուցանէ 'ի դաշտս եւ յանմշակ արտորայս եւ 'ի դաշտախիլ այգիս եւ բուրաստանս ծաղկոցաց. հանէ ապա 'ի լերինս Այրարատու. եւ տանի յետոյ 'ի Մասեաց ոտս. յորում եւ նկարագրութիւն շարժմամբ կործանելոյ Ակոռոյ գեղջն եւ դրուատ ոսկեղէն դարուն Նոյի:

# ՆՈՒԱԳ

## ԱՌԱՋԻՆ

---

Առ քեզ արեւելեան առ պերճ աշխարհըդ Հայաստան
Հրաւիրեմ ըզքոյդ մանկտիս որ արդ 'ի քէն կան հեռացեալ.
Ոյց, գիտեմ, յոյժ կարօտիս որպէս ըզմայր որդեկորոյս
Նազելի դիմաց նոցին մնացեալ կարօտ քո ընդ երկար:
Առաւել եւ քան ըզմայրդ քեզ կարօտին եւ քո մանկունք.
Ոյք ահա թէ ոչ ոտիւք գէթ անձկայրեաց սըրտին սիրով
Գալ ճեմել 'ի հայրենւոյդ վայր տարփատենչ եւ վայելուչ
Իբր 'ի վարձու գիս գրաւեցին լինել նոցա ինձ առաջնորդ:
Այլ զիա՛րդ 'ի հեռուստ ես կարացից դիտել ըզքեզ,
Որ յիմոյս աւասիկ ծածկիս աչացս անտեսութեամբ.
Կամ զի՛ հնար է ճեմել ինձ 'ի ցանկալի վայրըդ համայն
Մինչ եւ ես իբրու զնոսին 'ի քո ծոցոյդ զատեալ կամ այժմ:
Հընչեցէք ապա հողմունք որպէս Նոյեան անդ 'ի դարուն,
Զիս 'ի թեւս առեալ տարայք 'ի յԱյրարատ իմ հայրենին.
Եւ ընդ իս թեւօք սըրտից թռուցեալ եկայք, հայկեան մանկունք,
Եկայք դուք տան Թորգոմայ, ո՛վ տարագոյն զարմք եւ զա— [ւակք,
Որ ընդ ոլորտս աշխարհի կայք տարածեալ դըժբախտաբար:
Ահա ըզձեզ հրաւիրեալ տանիմ այսու ի հայրենին.
Ուր ըզձեր ըզձեռանէ կալեալ սիրով ճեմեցուցից
Ի հեռուստ իբր 'ի մօտոյ դիտել զաշխարհըն հայրենի,
1 Ում սըրտիւ կարօտագոյն տարփայք յաւէտ դուք 'ի [բացուստ:

Կամիմ ըզձեզ, նախ, մանկունք, ածել 'ի վայրըն հրաշաբեր
Ի դրախտն ադենական զոր տընկեցին արարչին ձեռք
Մարդոյն առաջնաստեղծ շնորհեալ վիճակ ամենագուարճ:
Դուք արդ մըտէք համարձակ դրախտիս ընդ դուռն անպա— [հապան
Ճեմեցէք նախարքային 'ի յարքունիս արարչակերտ,
Ուր 'ի գահ գերամբարձ 'ի բազմէր Ադամ շըքեղակերպ,
Ուր ճեմէր ճոխ փառաւոր ընդ դըշխոյին ամենազեղ:
Զի՞նչ հըրճուանս կրէին, 'ի սիրտ մինչ նոր չըքնաղ էր վայր [սորին
Երկոքին սիրահարուստ աստուածազոյգ պըսակաւորք.

Ընդ ծառովք տէրատունկ եւ աղբերօք հեզահոսան.
Նազելի կերպիւ ճեմեալ զուարճանային փոփոխ սիրով:
Դարձընթաց առ նորօք հոյլք անասնոց միշտ անփախուստ.
Եւ գազանք ամեհիք համբուրասէր էին բնութեամբ
Եւ հուպ եկեալ քըծնէին ընտանեբար նոցին զոտիւք:
Ոչ եղջերուն սըրընթաց խընդրէր տեղի դըարձուսն լերանց.
Ոչ երկչոտըն նապաստակ գընայր թաքչէր 'ի սորս վիմաց.
Ոչ 'ի թռիչս խուճապէին եւ օդապար երամք հաւուց:
Ե՞րբ էր այս, յայնժամ, մանկունք, մինչ ըզմեհին պատուի—
[րանօք

Ձեւ էին անցեալ նոքին մերձեալ 'ի ծառըն մահածու.
Իսկ յորժամ անցին օծին, անցին անդէն եւ անասունքն,
Որ իբրեւ զգառն էին հեզ, եղեն անսաստ եւ անողոք:
Եւ ընդ նոցին մերկանալն 'ի լուսանիւթ պատմուճանէն
Մերկացաւ ընդ նոսին չոյտ եւ դըրախտ նոցուն այս հրաշա—
[տունկ.

Զի ոյց վասն էր զարդարեալ նոքին յիւրմէն վըտարեցան:
Սակայն ո՛չ կորոյս իսպառ զիւր առաջին վայելչութիւնսն.
Այսր են այժմ քառավըտակ մըշտահոսան գետք յորդաբուխ
Եփրատ, Տիգրիս, Փիսոն, Գեհոն, որ գնան 'ի մէջ Հայաս—
[տանեայց.

Աստ բըխին բիւրակնեան այն բարեհամ եւ սառն աղբիւրք,
Ընդ մարմանդ մարգագետինս խաղան գընան մանուածաւալ.
Աստ եւ ծաղկունք բիւրազան բանին գեղով գունակ գունակ,
Զհոտ բուրեալ անմահութեան տան ըզմայլիլ ճեմողին այսր:
Զմայլեցարուք եւ դուք եւս որ աստ ճեմիք սըրտին ոտիւք,
Եւ քաղեալ փունջ կապեցէք 'ի զուարթ ծաղկանցս անուշահոտ.
Երբ դառնայք 'ի ձեր աշխարհ ընծայ տարջիք դըրախտիս
[պարգեւ:

Նա ցըրտին եւ քաղցրահոս յաղբերակացդ առեալ ըզջուր
Ըմպեցէք փափագանօք ձեր զովացի սըրտից պասուք.
Ծըծեցէք սիք անուշակ զոր ձեզ չընչէն հայոց լերինք.
Ցերակունըս խաղայցեն թեթեւ օդոցըն քաղցրութիւնք.
2 Որով գէթ 'ի սիրտըս ձեր դիւր ըզգայցէք զհայրենույն
[սէր:

Ցաղեննեան դարաստանէս ելէք, մանկունք, եւ արտաքոյ
Առ դըրախտիւըս ճեմեսցուք 'ի վայր պանդուխտ նախա—
[ստեղծիցն.

Ուր յանմահ կենաց վարեալ վըտարեցան սրով բոցեղէն,
Ընդ տեղւոյն Երանալի զմիճակ կալան թըշուառութեան:
Որպիսի՛ ողորմ կերպիւ այսըր նորեկ պըսակաւորքն
Ձեռըն միոյն 'ի ծնօտին միւսոյն 'ի ծոց ողորմագին
Աւընթեր նըստեալք միմեանց հանդէպ դըրախտիս փակեալ
[դըրան

Լայրն հառաչելով զտեղւոյն կորուստ երջանկաւէտ։
Ի յաչաց, որ ոչ երբէք լացեալ էին յանտըրտում վայրն,
Հոսանք աղի արտասուաց իջանէին հողոյս վերայ·
Ա՛հ, անդրանիկ արտասուք առհաւատչեայ արտասուելոցս
Սկիզբն առին յաչաց նոցուն ցօղել յերկիր անիծաբեր։
Եւ երկիր, որ ի յամպոց ըմպէր անձրեւ զուարթացուցիչ
Եւ չգիտէր յինքն ընդունել զդառըն վիժանս աչաց աղբեր
Ուսանէր այնուհետեւ եւ զայն ըմպել իբրեւ ըզջուր։
Զոր ըզկնի եւ տըրտմածին զաւակք նոցունց Թըշուառական
Թափելոց էին աստէն պէս պէս վըշտօք տաժանացեալ։
Այս երկիր է, ո՛վ մանկունք, զոր մըշակեալ պանդըխտելոցն
Ըզպարէն հայթայթէին վաստակաբեկ աշխատանօք։
Ոչ զոյր աստ արօր եւ խոփ երկրագործին դիւրութեան պէտ·
Վասն այն լալով ձեռօք, ո՛հ, բրէին զերկիր տատասկաբեր
Խառնելով ըզքրտունս ընդ արտասուս որ առ յանցմանն։
Այսըր երկունքն անիծից ըմբըռնեցին ըզնախամայրն,
Եւ ծընաւ նա զանդրանիկն 'ի մահ կըրսեր հարազատին
Նախանձաբեկն ըզԿայէն նախկին լացողն 'ի խանձարուրս։
Աստ են նորին արինոտ այն անդաստանք յորս վաստակէր·
Եւ լերինք, ուր ըզխաշինս իւր արածէր հովիւն Աբէլ։
Մին յերկրին իւրոյ պըտղոց հանէր նըւէր տեառն Աստուծոյ,
Այլ անհաճոյ գըտանէր զի ոչ ուղիղ բաժանէր մասն·
Միւսն արդար պատարագիչն անարատ զոհ նըւիրելով
Հաճոյանայր ընդունողին եւ ատելի լինէր եղբօրն։
Եւ այնու 'ի մախանաց նենգախոշոշ հարազատին
Ըսպանեալ 'ի դաշտի աստ անպարտ արիւն հեղոյր յերկիր·
Արիւն՝ որ զգետնոյն հող քըստըմնեցոյց անդ զառաջինն։
Քանի՛ յայնժամ կոծ եւ կըսկիծ նոր յաւելոյր ծնողացն 'ի սիրտ
Ընդ լինել դիահան սիրեցելոյ որդւոյն անմեղ·
Որ անկեալ կայր անշըշունջ արիւնըռուշտ մըշակին յանդ,
Եւ խաշինքըն հովուասէր, ա՛հ, անտերունջ մնացեալ այնպէս
Զայլէին բառաչելով ըզբոլորիւք հովուին իւրեանց
Ողբակից լեալ Ադամայ եւ Եւային եղերամայր։
Ա՛յ անիրաւ երկրագործ, զպաստուք երկրիդ ծարաւելոյ
Ցանմեղուկ եղբօրդ արիւն դու չիջուցեր ոռոգելով·
Քեզ միթէ ո՞չ էր շատ այս յորդագոյն դըրախտիս վըտակք,
Շատ էր երկրիդ, այլ ոչ ոք զնախանձ սըրտիդ չիջուցանել։
Ի միտ առէք աստ, մանկունք, թէ զի՞ բուռն է նախանձուն [կիրք·
Կայենին 'ի սիրտ մըտեալ չետ խընայել 'ի համարիւնն·
Երկերուք երկերուք դուք 'ի նմանէ իբրեւ յօձէ·
Եւ զգուշացէք փակել միշտ ընդդէմ նորին զդուռըն սըրտից·
Եւ պահպան դիք դուք նըմին զակըն սիրոյն աննիրհելի
Ընդ եղբօրն եւ ըզհոգին 'ի ներքս անդէն ըսպանեալ։

Պատրաստեալ ելէք յուղի արդ ելանեմք 'ի յԱյրարատ

Եւ 'ի վիճակ սեպհական Արշակունեան վեհ արքայից:
Դէտ ակն 'ի վեր ամբարձէք հա՛ երեւի Մասեաց գագաթ,
Եւ գմբէթ կաթուղիկէ եկեղեցւոյն երկնահանդէտ:
Միոյն 'ի գլուխ հանգչի տապանն ապրեցուցիչ արդար զարմին,
Իսկ միւսոյն տէրունեան խաչն եւ 'ի վերայ խաչեալն Աստուած·
Մին եհան 'ի գլուխ լերին անդրէն էած յաշխարհ թըշուառ,
Միւսն 'ի սուրբ լեառըն երկնից յարքայութիւն երանաւէտ·
Ըզմիով չընչէին օդոց փըշմունք սաստիկ սառեցուցիչք,
Ըզմիւսովըն հրացուցիչ հողմունք հոգւոյն քաղցրահոսան:
Ինձ ստանոր չէ 'ի դէպ զտապանն եւ զվեհ կաթուղիկէն
Այսպէսեաւ համեմատեան գերագունին յաւելուլ փառս:
3 Յայրարատ հասիք ահա մի՛ մնայք մանունք հրաւիրողիս,
Դուք ձեզէն ճեմեցարուք 'ի վայր սորին չընաշխարհիկ,
Որ պարծի քան զայլ գաւառս զոլ գեղեցիկ 'ի Հայաստան,
Դիւր դաշտօք լայնատարած լերամբք պատեալ գեղեցկանիստ
Որպէս այգի վայելուչ ցանկափակեալ շուրջանակի:
Ի լերանց աղբիւրաբուխ յորդ վըտակունք յամէն կողմանց
Իջանեն յիւր դաշտորայս արբուցանեն ըզդալարիս·
Թողում ըզգետըն Երասխ որ գնայ ընդ մէջ ծովածաւալ
Մեծամեծ բաշխեալ զառուս ջրասուն առնէ մըշակեալ վայրս
Զայգիս եւ զբուրաստանս անդս եւ ածուս բըրընձաբեր,
Որ սիրէ զաճումն 'ի ջուրս խըրու զեղէգըն ճահճասէր:
Նա եւ շատ բամբակենիս որ զովելին է յերկրին բերս·
Ոչ միայն հայոց մանկտւոյն բաւեալ 'ի զգեստըս փափկանիւթ,
Այլ եւ այլում աշխարհաց զոր բառնալով ուղտերամօք
4 Ի վաճառ տանէին զձոխ բեր երկրիս Արարատեան:
Զայսպիսի քաջաբերուն եւ արգաւանդ զերկիր թողուլ
Հառաչէր ցաւագին եւ լայր Արշակն յորժամ մեկնէր,
Եւ թողոյր այլում եւ գնայր ըղընիկ ժառանգ իւրում
[Նախնեաց:

Առ եզերօք Երասխայ ճեմեալ մանկունք յուշիկ յուշիկ
Տեսէք պէսպէս ձըկունս համեղութեամբք զանազանեալ,
Որ կայտառ ածեալ խաղան ոչ ըմբռնէ զնոսին ուռկան·
Զի ցանցորդք ուռկանաւորք, ո՛հ, սուգ առին եւ յԱյրարատ
Որպիսեօք 'ի Հրէաստան ըստ նախաձայն գուշակողին:
Տեսէք եւ ջրասուզակ մամռախընդիր ըզմեծ թըռչունս
Ըզկարապն անուշաձայն, սագ եւ ըզթանձըրն պարարուն
Եւ պէս պէս եւ զայլ հաւուց հոյլըս շնորհեալ մարդկան 'ի կեր,
Որ 'ի լուղ խաղան 'ի ջուրս, ա՛հ, որսականք պակասեցան:
Ո՛վ դուք թըռչունք, 'ի խաղ գետոյս 'ի մէջ խուռն եղեգանց
Ածէիք ըզձուս բազում հանել ըզձագս եւ բազմանալ·
Գեղջուկ մայրըն մանկասէր գայր ժողովէր տանէր ըզձուս,
Եւ ձըւաղեղ դիւրեփիկ շոյտ պատրաստէր մանրիկ մանկտեաց:
Այլ այժմիկ ածէք ածէք եւ համարձակ հանէք ըզձագս·
Աւանիկ ոչ գեղանք ոչ շինականք են շուրջ ըզձեօք

Եւ ոչ մայր մանկան 'ի տած արդ ելանէ խնդրել ըզձուս։
Զի նոքին առ հասարակ սրով թըշնամւոյն ըսպառեցան,
Փոխանակ զի ոչ գնային ըստ հրամանի տեառն Աստուծոյ,
Որով արդ իբրեւ ըզձեզ որ բազմանայք ձագըս հանեալ
Եւ նոքա մանկունս ծընեալ բազմանային տեառն օրհնութեամբ։

Ցափանց գետոյս, ո՛վ մանկունք, դարձէք այժմիկ 'ի
[դաշտորայս,
Ի մէջ խոտոց ուռճագարդ ճէմ առէք դուք զուարճանալով.
Տեսէք զի՞ դեղ դալարօք եւ այլ բուսովք ամենազան
Զարդարեալ են գեղեցիկ երեսք դաշտաց Այրարատայ։
Աստանօր բուսանին արմատք բուսոց եղեգնասէր,
Ցոյց ազնիւ կարմիր Որդան ծնանին որդունք մանրատեսակ,
Միայնում զաւառիս այս ձեր սեպհական արարչատուր՝
Պարգեւեալ մանկտւոյն հայոց զարդ ըզգեստուց կարմրա—
[տեսիլ։
Տեսանէ՞ք եւ ըզբանջարս մատաղագոյն եւ մեղրահամ,
Զոր եկեալ երամ գեղջուկ կուսանքըն դաշտասէր
Ժողովեալ կեր կազմէին չուտամարսիկ ու առողջարար.
Սիրելի հիւանդին եւ ժուժկալող ոգւոյն 'ի պահս։
Անդէորդ երամակօք ցընծայր 'ի մարգս այս խոտաբուղխ.
Խուռնախիտ ըզդալարիս ճեղքեալ ճեմէր պաճարաց խումբ,
Արածէր լիաբերան պըտկունս կախեալ առատ կաթամբ
Ցերեկուն ծանրաքայլիկ բառաչելով դառնայր 'ի տուն,
Եւ զեղոյր փըրփըրադէզ ըզտանտիկնոջ ագահ կըթոց.
Սեր մածուն թող ուտէր յայնժամ որչափ կամէր մանկտին։
Այսօրքիկ, աւա՛ղ, մանկունք, զարդիս եւ ոչ մի տեսանին,
Ոչ աղջկունք բանջարաքաղ ոչ անդէորդք եւ երամակք.
Այդ բոլոր դաշտք 'ի սոցունց կան աւասիկ թափուրացեալ.
Կարօտին ժողովլի այդ քաղցրահամ դալար բանջարք,
Եւ պաճարաց բերանոյ պարարտարօտ մարգագետինքդ։
Դարձարուք 'ի դաշտաց եւ յարտորայս Այրարատու
Ցորս յաւէտ բերկրէր 'ի սիրտ յարդիւնս արդար հողավաս—
[տակն։
Ցայդ անդեայս բեղմնաբեր մինչ արկանէր մըշակն ըզսերմն
Ցուսալից էր ընդ միոյն զհարիւրաւորըն ժողովել.
Ափսո՛ս, այդպէս այժմիկ խոպանացեալ կան բընաւին,
Հասկաթուռ ընդ ցորենոյն փուշք մոլախոտք են արդ բուսեալ
Ցայս երկիր պարարտահող ոչ եզնամոլք ձըգեն զարօր.
Ոչ 'ի հերկ սերմանահան զբուըն լընու յուսով 'ի ցան.
Ոչ հընձողն ըզգերանդին առեալ ուրախ գայ յանդաստան,
Եւ ոչ սայլքըն որայիւք բարձեալ գընան ճըռընչելով.
Կամ օրանք 'ի կալատեղս դէզ հարկանին բըլրատեսակ.
Կամ ատոք ցորենոյն թեզ չեղջակուտի լեռնահանդէտ.
Եւ լըցեալ 'ի շտեմարան ցընծայ մըշակն 'ի ձմերայնի։

Եւ զի հունձք եւ հողագործք յերկրէս յուռթի պակասեցան․
Որ չունէր թիզ մի տեղի բընաւ երբեմն անմըշակեալ,
Այսօր համայն իւր գետին կայ կորդացեալ եւ անարօր․
Զի կորոյս հայոց աշխարհ զմեծ Արտաշէսըն մըշակող։
Զայս թողեալ լացից եւ արդ ըզպարտիզաց պըտղապարզեւ
Եւ զայգեացըն գինէբուխ, զբուրաստանացն եւ ծաղկաբեր,
Որ հուպ չինիցըս մնացելոց եւ ընդ հողով ծածկելոց այժմ
Քաղաքաց եւ աւանաց եւ չէն գիւղից, գերդաստանաց
Խիտ ընդ խիտ առ միմեանս տընկեալ էին դրախտանըման,
Եւ սօսիք հասակաբարձ ըզբոլորիւք նոցին 'ի պար։
Անկարօտ էին բընաւք ջուրց ոռոգման զուարթացուցիչ
Զի չատ ընդ մէջ գալարուն վըտականիք գետոյն Երասխ
Ընթացեալ յամարայնի ջուր բաշխէին նոցին առատ․
Որով բազմաբեղուն պըտուղ տային ճոխ դարաստանքն
Եւ այգիքն անոյշ գինեօքըն լընուին ըզկարասունս,
Զոր յաւէժ 'ի խրախճանի արբեալ հըրճուէր մանկտին Հայոց։
Ո՛ւր սոքին, աւերեցան, արդ ոչ պարտէզք ոչ ծաղկանոցք։
Զօրացեալ ազազեցան, ա՛հ, ըստ երգոյն Եղիչէի․
Դաշտախիլ եղեն խպառ եւ որթք այգեացըն գինէբեր,
Եւ տեղիքն աղարտեալ այնչափ մինչ ոչ երեւին հետք։
Առ հովտիւք ծաղկաբոյս եւ ընդ մարմանդըս հովաչունչ
Ճեմ առեալ ելէք մանկունք արդ 'ի լերինս Այրարատոյ․
Յորս հովուացն երջանիկ քաղցր էր ճեմել երբեմն հօտիւք
Ի վերայ նորաբացիկ պէսպէս ծաղկանցդ անուշաբոյր,
Որ 'ի վերուստ գիչերի ցօղ ընդունին 'ի գլուխս իւրեանց․
Եւ ընդ այդ մինչ արեւուն ցայտի զդոքօք շառագոյն շող
Ի թերթիցըն չաղանիստ փայլք հարկանին ոսկեճաճանչ։
Վա՛չ, յայնժամ քանի՛ ախորժ արօտ հօտին դալարասէր,
Զոր ճարակէր շաղախառն եւ որոճայր կակուղ կակուղ․
Եւ հովուին խաչնասէր որչա՞փ հեշտանք կրէին 'ի սիրտ,
Մինչ ըզհօտին տեսանէր խայտալ խաղալ 'ի դալարիս․
Ինքն անդէն առնոյր յայնժամ ըզհովուական փողն 'ի ձեռին
Եւ նըստեալ առ աղբերօք ընդ թաւաթուփս ինչ հովանեաւ
մեղմաձայն հընչէր անոյշ եւ տայր հրաման հօտին իւրոյ
Արածել ուր եւ կամին 'ի մէջ հովտաց դալարաբոյս։
5 Եւ պահ կըթոյն երբ լինէր առեալ բերէր 'ի պէրատեղն։
Կուժ 'ի յուս գնային յայնժամ գեղաստանեայց կանայքըն ժիր
Եւ կըթէր մէն մի զիւր հօտ լըցեալ զամանս մաքեաց կաթամբ,
Տարեալ 'ի տուն խընդալից եւ 'ի պանիր մակարդելով
Տային առն ածել վաճառ 'ի ճոխ քաղաքըս հայկազանց․
Եւ այնու զինչ պէտ լինէր անդուստ գընել բերել 'ի գեղ։
Տեսէք եւ այժմ, ո՛վ մանկունք, զի՞ կան դատարկ լերինք եւ
[բլուրք,
Զորս խաչանց հօտք բիւրաւոր իբրու զմարախ ծածկէին,
Եւ նոցին անոյշ բըչխուն ըզխորաձորս լընոյր լերանց․
Ո՛հ, աւասիկ լըռեցին ընդ հօտին ձայն եւ փողք հովուացն։

Այս դալարիք ծաղկախառն քընքուշ գառանց փափկիկ արօտ
Այսպէս ոչ ճարակեալ՝ վայր թօթափին թառամելով.
Այս աղբիւրք ականակիտ արդ ոչ ըմպին 'ի խաշանց.
Այս լերանց մարմանդավայրք ու ամարային մակաղատեղք
Ի հօտից դատարկացեալ լեալ են տեղիք էրէվայրից։
Ոչ եւս հովիւն՝ կենսաւէտ յայդ վըտակունս յըստակաջուր
Լըւանայ զհօտն ասրաբեր փայլիլ գեղման ձիւնակերպիկ.
Կամ խաշին տէրն 'ի կըտուրս գայ 'ի խուզել ըզգեղմնաբարձս;
Եւ կանանց ոստանագործ նիւթ ընծայել ասրեղինաց.
Ույց մատանց ճարտարութիւնք ցարդ տեսանին 'ի Հայաստան
Նարօտ նարօտ հիւսուածք 'ի գորգս եւ 'ի պէս պէս գործըս
[մատանց։

Այլ զի՞ քեզ, ա՛յ ողբերգու, զդոցունց ողբալ թողեալ ըզմեծն։
Ըզլերինս հայոց թափուր յորսականաց տեսանես դու,
Այն չէ քեզ ցաւ եւ կըսկիծ ըզմէ՞ ոչ լաս զայն առաւել,
Ո՛ւր են արդ մանր այն մանկունք նախարարացն եւ ազատացն
Բազէիւ ելեալք 'ի յորս որսալ այնու զմանրիկ թըռչունս։
Ո՛վ սիրողք 'ի ձմերանի առապարացն արեգջեր
Կարկչաձայն կարմրակըտուց մանրաքայլիկ, ա՛յլ կաքաւունք.
Եւ դուք եւս մացառաղող եւ թըփամուտ պարարտ աքարք,
Ելէք 'ի դուրս աներկիւղ եւ ճեմեցէք կարկաչելով.
Այլ ոչ եւս պընդին զհետ ձեր այն որսատենչ նոր պատանիք։
Իջէք եւ դուք 'ի բարձանց, ո՛վ լեռնասուն երէվայրիք,
Ի մէջ լերանցս անմարդի արձակ արձակ շըրջեցարուք.
Արդ ոչ այն կորովաձիգ սուսերաւոր երիտասարդք
Զիախըռխտ յարձակմամբ հարեալ գլորեն ըզձեզ 'ի վայր։
Արի օ՛ն, որպէս յայնժամ 'ի մէջ քարուստ լերանց Մոկաց
Շըրջէիր, եւ անդ առ այս ճառագրէիր արտասուալից։
Եկ եւ շըրջեաց այսր ընդ իս ես ողբակից լինիմ քեզ արդ,
Եւ նըստեալ առցուք 'ի յողբ զողջ ըզլերինս Այրարատոյ.
Զի սպառեցան որսականքն արբուներամ եւ ամճասէր,
Եւ խըցեալ կուրացան եւ արշաւանքըն որսորդաց։

Ժամ է արդէն անցանել զփոքրիկ լերամբք երիտասարդ.
Ելանել 'ի մեծապարծ հըռչակելին աւագ Մասիս.
Ույր 'ի գլուխ վեհաւէտ նըստի նոյեան մեծ լաստափայտն
Ակնարկութեամբըն վեհին, որ զկըրկնակի մարդկան աճումն
Կամեցաւ եւ յերկրորդումս լինել 'ի մէջ Հայաստանեայց։
Զի՞նչ այսու, յայտնել մարդկան զտեղի դրախտին կորուսելոյ,
Եթէ չէ յաշխարհի աստ յանկիւն ուրեք վայր անծանօթ,
Այլ 'ի բարձր եւ լայնածիր վայելչավայր Հայոց աշխարհ.
Զոր իբրեւ գեղեցիկ մասն 'ի մէջ հանուր տիեզերաց
Ընտրեաց եւ ետ ժառանգ զոյգ նազելեացըն նորաստեղծ։

Դաղարեցէք աստ, մանկունք, հասաք ահա յոտըն Մասեաց,
Ցորում Նոյ գերդաստանօքն 'ի տապանէն մինչ ել 'ի դուրս

Էջ այսր ողջոյն երկրիս ետ զառաջինն ուրախութեամբ:
Եւ սեղան չինեալ աստ հան պատարագ հաճոյական
Երկնաւոր Նաւապետին տեառն Աստուծոյ ամենախնամ,
Որ ըզնա դոյզըն լաստիւ 'ի ցասմանէ ջուրցն ազատեաց:
Յողջակիզէ արդարոյն հոտ անուշից բուրեալ 'ի վեր
Հոտոտէր Տէրն 'ի բարձանց եւ խոնարհէր 'ի գլուխ լերինս
Ըզնոր պատգամ սիրաբուն խօսէր անդուստ առ սիրելին:
Եւ արփին ընդ երեկուն մինչ յարեւմուտս մօտէր 'ի մայրն
Եւ նըշոյլս 'ի յարեւելս չողէր 'ի յամպս անձրեւածին,
Երեւէր նորասքանչ եօթնագունեան աղեղն 'ի յօդս
Ի վերայ Այրարատու կամար ածեալ կարակնաձեւ
Նըշան ուխտին հաշտութեան տեառըն ցուցեալ ցանկալի հօրն:
Աստանօր նոր անդրանիկ հողոյն տըւեալ զանձն 'ի վաստակ
Արդարաշահ այգեպանն յերկիր արկեալ որթոյն զուռիկ,
Ոչ յամով յեօթներորդումն, այլ շոյտ աճեալ բերէր գխաղող·
Եւ 'ի յուժեղ նոր գինւոյն արբեալ նընջէր մերկ 'ի մարմին:
Աստ Քանան, որ զմերկութեամբ հօրըն իւրոյ քըրքիջ էած,
Յօրհնութենէն մերկացեալ զգեցաւ զանձամբ իւրով անէծս:
Իսկ եղբայրքըն երկոքին Սէմ եւ Յաբեթ առաքինիք
Զմերկութիւն մարմնոյն պարկեշտ, որ միշտ պահէր ըզկու–
[սութիւն,
Ծածկեցին շութափելով տըւեալ պատիւ պատկառելոյն·
Այսու նոքին զօրհնութիւն հօրն ըզգեցան իբրու զհանդերձ
Ժառանգեալ զերկիր բարի բնակեալ սիրով ընդ առ միմեանս:
Այլ անպատկառ ազատ Քամ ծառայ եկաց հարազատիցն,
Եւ յաւիտեան անիծից կըրեաց զանուն յիւր նախատինս:
Ուսարուք աստի, մանկտիք, ձեզ օրինակ լիցին սոքա·
Տեառն ըզպատուէր յուշ բերեալ միշտ պատուեցէք ըզհարըս
[ձեր:
Մի զուցէ ըստ Քանանուն լիջիք անմասն յօրհնութենէն,
Այլ ըստ որդւոյն օրհնելոյ դուք զօրհնութիւն ժառանգիցէք:
Սակայն յինէն աստանօր հարցէք, մանկունք, եթէ ո՛ւր է
Ակոռի հին գերդաստան որ կայր չինեալ յոտըն լերինս,
Յոր կային վանք եւ տաճար հայրապետին սքանչելագործ
Եւ առ ընթեր բարեհամ աղբիւր բըղխեալ շնորհիւ նորին:
Քանզի որ իսկ աչօք 'ի տեսանել զփայտ փրկութեանն
Ի Մըծբին մեծ քաղաքէն դիմեաց եւ ել 'ի յԱյրարատ·
Եւ խոնջեալ Երանելւոյն ընդ զառ 'ի վեր դըժուարին ելս
Վայրիկ մի առ այս գիւղիւ նըստաւ դիւրել զվաստակ ոտիցն·
Եւ ըզգլուխն առ շըքով եդեալ վիմի զերդ ուղեւոր·
Եւ այն ինչ անոյշ Թըմբիր առնոյն ծըծեալ զպարզ օդ Մասեաց
Զաչօք պատէր քուն քաղցրիկ կաղդուրէին խոնջեալ անդամքն:
Եւ տեսեալ Տէրըն սիրով զփափագ սըրտի վաստակելոյն
Ի ձեռըն հրեշտակին շնորհէր ըզմասն 'ի տապանէն·
Զոր առեալ խընդալից դառնայր անդէն 'ի միջադէտս
6 Անհաւատիցըն ցուցեալ յանդիմանէր զնոցին կարծիս:

Այլ զաչըս ձեր դարձուցեալ՝ շուրջ ըղձեօք այժմ նայեցարուք
Ձեզ ցուցից զԱկոռի թէ եւ չժուժայք 'ի տեսանել:
Ահա մերձ, որ երեւի ահագին վիհ եւ փլատակեալ
Այն է խկ, ո՛չ,, ես ցաւիմ պատմել ըզդէպ նորին անցից:
Զի զբաժակ սրտմտութեան տեառըն՝ լըցեալ լի ծըծըմբով,
Զոր նախ երբեմն արբ Սոդոմ տանջեալ բոցովն երկնատեղաց,
Զնոյն եւ Ակոռի յաւուրըս մեր լի դառնութեամբ.
Ոչ յերկնուստ այլ 'ի յերկրէ անօրինակ պատուհասիւք:
Եւ զի մինչ ինքն 'ի յորդիս իւր բնակաւոր խընդայր յաւէտ
Ահագին որոտագոչ ձայնիւ գոռաց ներքուստ Մասիս,
Թընդացին բոլոր լերինք դըղըրդեցան վէմքն 'ի տեղեացն:
Եւ զի՛նչ անդէն լայնավիհ բաց ըզբերան իբրու զվիշապ,
Ուստ 'ի վեր 'ի յանդընդոց ժայթքեաց անբաւ նիւթ հրաբոր-
[բոք.
Ուխօրէն եւ մըրրախառն վերուստ 'ի վայր շառաչելով
Զանարդիլ վէմըս լերին թաւալգըլոր վայրաբերեալ
Եւ բախեալ սաստիկ թափով զԱկոռի գիւղըդ տապալեաց.
Եւ հրային ջրով ներսուզեալ անյայտացոյց համայն շինուածս:
Որ 'ի բարձր այդ հովասուն մարմանդ տեղւոջ բնակէր երբեմն,
Այսպիսեաւ դառն աղիտիւք եղեւ յանկարծ անդընդաբնակ:
Զեղեն իւր զաւակաց մարմինք չիրմաց արժանաւոր,
Ոչ անուանքն 'ի մահարձանս անմահացան յիշատակօք.
Այլ մէն մի ընդ իւր յարկաւ հեղձամըղձուկ տըղմաթաւալ
7 Ողորմ կերպիւ վախճանեալ եւ թաղեցան անարգաբար:
Զայս 'ի խրատ մեզ, մանկունք, տէրունեան բան յուշ առնէ
[խկ
Առ կրելոյ նոցին զայս դառն անցս անպայման եւ դըժընդակ
Այսըմ պատժոյ պարտաւոր ոչ համարել զնոսին միայն:
Տէրն այսու խրատէ եւ զմեզ փութալ սըրտիւ յապաշխարանս.
Եթէ ոչ, ասէ, դուք եւս անշուշտ ըզնոյն կորընչիցիք:

Ի տեղւոյս փոխեցուք, եւ ըզբոլոր ստիւք Մասեաց
Շըրջեսցուք պարառաբար հօրըն Նոյի ըզվիճակօք.
Ցոյց ոչ երբէք զատեաւ նա մնացեալ զարմօք իւր նազելի:
Ոչ սիրեաց յարեւելից գնալ յարեւմուտս ընդ խաղացեալսն,
Եւ կամ հաղորդ եւ հաւան գըտաւ շինման ամբարտակին:
Սիրեաց ըզՄասիս եւ 'ի սմանէ եկաց անբաժ,
Ըզկողիւք սորին մարմանդ հար ըզվըրան եւ բնակեցաւ
Եւ եղեւ սըմա յաւէժ բուն բնակաւոր ժողովուրդ:
Սիրեաց ողկուզաւէտ զորթ նորատունկ այգւոյն իւրոյ,
Ի սեղան քաղցր ըզգինին անոյշ անոյշ արբեալ զըւարթ
Հին աւուրց մարմին զառամ նոր մանկութեամբ մատաղանայր:
Սիրեաց զամոլս եզանց եւ մաճակալ եղեւ յօժար,
Մըշակեաց զայդ երկիր արդիւնարար ու արգասաւոր,
Ի սմանէ կերակրեցաւ մինչեւ 'ի կէտ կենաց իւրոց:
Ոչ թաքեաւ յաչացս երբէք ալեւորեալ գլուխ Մասիսն

*Մինչեւ ալիք իւր ծերութեան հանգոյն նըմին սպիտակափառ
Ձիւնացաւ, եւ ծաղկեցաւ ինքըն գործովք արդարութեան։
Սիրեցին որպէս ըզնա եւ իւր թոռունքըն հաւասէր
Այնոքիկ, որ ՚ի նմանէ եւ ՚ի ծոցոյ հայրենական
Ոչ կամեցան բաժանիլ զմայրենի գիրկ մոռանալով·
Ցոր սընան ամենեքին եւ աճեցան կաթնապարար։
  Ինձ առ այս, ազնիւ մանկունք, յոյժ սիրելի է նըւագել
Զոր վարէր յայնժամ աստէն Նոյ ընդ թոռին իւր Թորգոմայ։
Աստանօր խաղաղիկ եւ զոսկեղէն դարըն Նոյեան,
Վա՛շ, քանի՞ քաղցր էր նոցին կենցաղ երկրիս Այրարատու.
Յորժամ ոչ էր բըռնաւոր եւ հարկահան անագորոյն,
Ոչ կըռփումն անաւագին եւ աղաղակ զըրկեցելոյն,
Ոչ իշխան ոչ իշխեցեալ կամ թագաւոր եւ ժողովուրդ,
Ոչ զօր ոչ պատերազմ եւ խազմարար աշխարհաւեր։
Ոչ ՚ի սուր ձուլէր երկաթ այլ ՚ի մանգաղ եւ գերանդի
Լոկ ՚ի պէտս երկրագործին եւ ոչ մարդոյն մարդախոշոշ։
Զէր սահման լարաբաժնին ոչ այգեստանք ցանկապատեալ·
Ոչ պաճարաց կամ խաչանց վերայ դրոշմէր նըշան տաղին·
Զի բարբառ դըժոխալուր չեւ էր լըսեալ աստ՝ իմ եւ քոյ։
Ոչ ըզքըրտանց վաստակ ուրումն յափըշտակէր ումն անիրաւ,
Կամ զըրկէր ոք զիւր ընկեր եւ կամ խըլէր դըժնեայ բարուք,
Կամ ՚ի գործ իւր առանձին վարէր բըռնի տարապարհակ։
Այլ համայնք համակարիք աշխատակից էին ՚ի գործս,
Եւ մէն մի յիւր ճակատուն թափեալ քըրտանցն ուտէր ըզհաց։
Ոչ ՚ի դահոյս բազմէր ումն ՚ի յապարանս փաղփինափայլ,
Ումն ՚ի դաշտ արեւակէզ մինչ ցերեկուն խարշէր քըրտամբք։
Զայգիս եւ զարտորայս ՚ի դէպ էր առըն մըշակել,
Եւ նոցին տոհմականօք լընուլ ըզտուն իւր լիուլի
Զյոլով ամս զերդաստանին ՚ի վայելումն առատ առատ։
Այլ կընոջն ըզմերկութեանց լեալ հոգատար իւր զաւակաց
Ճարտարէր ՚ի հիւս մատին զգեստ ասրեղէն մերկիկ մարմնոցն,
Եւ առ տնին իւր վիճակեալ եւ զայլ պաշտօն տանէր ՚ի ժիր։
Այսպէս սիրով լըծակցեալ զոյգ մըտերմացըն ժըրագլուխ
Հաւասար ընթանալով ըստ սարասու եգնամոլից
Հոգային զմարմնոյն կարիս եւ անտըրտունջ էին զմիմեանց։
Բաց կային դըրունք հանապազ մուտ համարձակ անցաւորաց,
Սիրով զուարթառատ հրաւիրէին զամենեսին
Ի սեղան պարզ անպաճոյճ, այլ ըստ սիրոյն բազմախորտիկ։
Որ փոխ տայր կարօտելոյն անդրէն չառնոյր նա ըզկըշիռն,
Զի միոյն պակասութիւն լընոյր սիրով միւսըն փարթամ·
Ի միջի էր ամենայն իբր ըստացուած հասարակաց,
Ում պիտոյ լինէր առնոյր ոչ դըժուարէր որ վաստակեացն։
Անինչ անփառասէր սակաւապէտ միշտ ՚ի վայելս,
Ոչ լըւեալ զտէրուննեան բան անհոգացող էին զկենաց·
Ոչ ՚ի հոգ խուճապէին թէ ի՞ւ գըտցեն զվաղուեան պարէն·
Զի երկիր այս աննախանձ ազգի ազգի տոհմական բերս*

*Ցիւր ծոցոյն առատաբուղխ շնորհէր պարէն դիւրապատրաստ·*
*Ոչ գոյր ատ յայնժամ ոսկի կամ ընդ երկրաւ գանձ թաղեցեալ·*
*Զի դեռ մարդոյն ՚ի սրտի չեւ էր բունեալ ագահութիւն։*
*Ինքնագիւտ էր գանձ նոցին եւ անըսպառ ՚ի յաւիտեան*
*Այրարատու աշխարհիս արդիւնաշատ հողոյն պարգեւ,*
*Ականձուն կարմըրահատ լեռնակուտակ ցորենոյն թեզ,*
*Այգեաց եւ պարտիզաց համեղ գինիք եւ անոյշ միրգք։*
*Գանձ էին նոցա դարձեալ ամոլք եզանց վաստակաւոր,*
*Հերկեալ զերկիր այնոքիւք եւ ցորենոյն թաղեալ ըզգանձ*
*Ընդ ոսկւոյն անբուսաբեր հընձէին հասկ ոսկեբողբոջ·*
*Որոց ոչ բազմատար համբարանոց բաւէր տեղի։*
*Միթէ գանձ չէ՞ին նոցա ու աճուն պարգեւք նախապատրաստ·*
*Բազմահօյլ կովուց նախիրք եւ բիւրաւոր հօտք ոչխարաց*
8 *Զոյս բարւոք դարմանելով՝ դաշտըս խնամեալ ըստ*
*[խըրատուն*
*Իւղասուն կաթնապարար գիրանայր տունըն Թորգոմայ։*
*Թողում աստանօր զերէվայրխըն լեռնասուն,*
*Զոր որսացեալ ՚ի լերանց փափկանայն նոցուն ամճովք։*
*Այսպէս ահա, ո՛վ մանկունք, դիւր եւ թեթեւ կեանս*
*[վարէին·*
*Զի վայելք զեխութեանց չեւ տակաւին տիրէին աստ։*
*Ի սեղան ոչ գիտէին հանել խորտիկըս համեմեալ*
*Կամ մարմնոյն ՚ի պատըսպար պաճուճալի զարդըս խընդրել։*
*Ոչ շըռայլեալ ցանկութեամբ չէն հոյակապ յօրինէին*
*Վայելել ուրախանալ ՚ի փափկութիւն անցաւորխս,*
*Թէ եւ լի էին յուսով կենաց իւրեանց երկարագոյն։*
*Կէսք թէպէտ շինէին տունս այլ յոյժ անշուք զերդ քարանձաւ,*
*Կէսք ընտրեալ կեանս հովասուն վրանաբընակ աստանդէին*
*Ի հովիտըս հովանուտ եւ խոտաբուխ դաշտագետինս*
*Առ գըլխով յորդավըտակ ցուրտ աղբերաց հարեալ զխորան*
*Ուր առ ՚ի պէտս անդեայց խաշանց առատ էին ջուր եւ ճարակ։*
*Աւա՛ղ որ, այս երջանիկ քաղցըր կենցաղ նորոյ ծնընդոցն*
*Տեղի ետ տակաւ տակաւ յորժամ աճեալ բազմացան յոյժ·*
*Եւ երբ մեռաւ կենդանի քարոզն միոյ վեհ արարչին,*
*Օր աւուր նորագիւտ չարեօք ՚ի մեղս յաճախելով*
*Կռապարիշտ եղեն ողջոյն մոռանալով զԱստուած Նոյի։*

*Ըղձալի է ձեզ, մանկտիք, եւ յայլ լերինս գեղեցկանուն*
*Յարագած եւ ՚ի Նըպատ հանել այսպէս եւ շուրջ ածել·*
*Նա եւ ինձ հրաւիրողիս քանի՛ բերկրանք լինէր սըրտի*
*Թէ զայդ փափագ ձեր աղնիւ ես ածէի այդպէս ՚ի լրումն։*
*Սակայն, ո՛հ, սիրոյ թեւոյս ոչ սատարէ եւ թեւ մըտացս,*
*Զի քաջ թեւեալ երկոքումբք վերանայի սարէ ՚ի սար,*
*Եւ ընդխս տարեալ ըզձեզ ՚ի գլուխս նոցին ամպածածուկ*
*Առ հովանեօք ցօղադին ամպոց նըստեալ նըւագէի։*
*Վասն որոյ շատ լիցի այս Այրարատու զլերանց դաշտաց,*

*Օ՛ն առեալ եւ ՚ի նորին ՚ի պերճ քաղաքս աւերակեալ*
*Եթէ ոչ յամենեսին, գէթ ՚ի սակաւըս ճեմեսցուք*
*Ցայնըս միայն յորս փայլէր պանծալի Թագըն վեհագանց ։*



# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

## *ԵՐԿՐՈՐ ԴՆՈՒԱԳԻՆ*

———o———

ՅԵՐԿՐՈՐԴ մասինս այս՝ հրաւիրէ 'ի քաղաքն Վաղարշապատ. ուր եւ բանք ինչ հրաւիրակին առ մանկտիսն թէ վասն է՞ր անշքացաւ այն մայրաքաղաքն Այրարատայ. եւ հանեալ անտի ածէ յԱնի քաղաքն. Անդ ողբերգակն տայ քաղաքին պատմել ոճով զիւր առաջին բարեվայելչութիւն եւ զվերջին անշքութիւն երկար ողբովք. յուսադրական քաջալերութիւնք մանկտւոյն առ քաղաքն. պատասխանիք քաղաքին առ նոցին բանս եւ վերջ:

# ՆՈՒԱԳ

## ԵՐԿՐՈՐԴ



ՄԻՆՉԵՒ ցարդ 'ի տեսարանս դաշտաց լերանց եւ աղբերաց
Շուրջ եկեալ զուարճացայք Թէպէտ եւ մերթ տըրտմեցարուք։
Բայց արդ եւս ածեմ ըզձեզ 'ի տեսարանս ամենատխուր,
Ուր յաւէտ տըրտմեսջիք եւ ճըմլեսցին սիրտք ձեր քընքուշ,
Եւ զաչըս ձեր զրաւեսցեն դառն արտասուք աղիողորմ։

Յայժըմ ճեմլեալ դուք այսչափ զվայրօք չեղէք շըրջահայ–
[եաց,
Ոչ հարցէք յինէն, մանկունք, Թէ ո՛ւր են արդ մեր պերճ
[քաղաքք
Արտաշատ, Վաղարշապատ, Անի քաղաք բազմամարդով։
Եւ ո՛ւր, որ ըզնորօք ազատազդեաց այն մեծ զաւառք
Գաբեղեանք եւ Աբեղեանք, Արշարունիք եւ Հաւնունիք,
Գառնի եւ Բագրեւանդ, Ծաղկոտն, Ոստան, Շիրակ, Վանանդ.
Եւ 'ի մէջ նոցին անԹիւ գեղանք աւանք եւ դաստակերտք
Հուպ առ միմեանըս շինեալք 'ի ծոց երկրիս մեծատարած.
Ոյք լըցեալ էին բոլոր աղատանեօք, սոսկականօք։
Գուշակն անդուստ տայր պատուէր Արարատեան արքայու–
[Թեանց
Եւ գընդին Ասքանազեան 'ի խումբ կազմիլ դրօշու դրօշու
Ելանել 'ի Բաբիլօն եւ նետակալս կանգնել զնովաւ
Սըրտմըտելոյն եւ ըզվրէժ խընդրել նետիւք առ 'ի Նմանէ։
Ո՞ւր, է հրաւիրակ, ո՛ւր են այս փառք Արարատեան։

Այդօքիկ այո՛, մանկունք, երեւէին երբեմն 'ի սմա,
Այլ յայնժամ մինչ Պարթեւաց 'ի գլուխ փայլէր պանծալի
[Թագն.
Որ իբրեւ զակն արեւ ու գլոյս իւր սըփռէր զԱյրարատու
Առ այս լուսով երեւէր այդ ճոխուԹիւն շիջեալ փառաց։
Իսկ յորժամ 'ի մայրըն մուտ ճառագայԹեալ Թագին արեւն
Ընդ նըմին եւ այդօքիկ նըսեմացան տակաւ տակաւ։
Աւասիկ տանիմ ըզձեզ անդր ուր էր այն քաջարի Թագն
Ի վեհ արքունաշէն 'ի պանծալին Վաղարշապատ
Արքայից Արշակունեան 'ի գահըն պերճ կայսերափառ։
Այլ, աւա՜ղ, ոչ տեսանէք ըստ առաջնոյն նորին ըզկերպ
Հոյակապ եւ փառաւոր կանգնեալ հանդէպ լերին Մասեաց։

Հապա գեղջիկ իմն անչուք, յոր չերեւին ինչ նըշմարանք,
Թէ երբեմն իցէ լեալ այս մայրաքաղաք Հայաստանեայց․
Ուր 'ի գահոյս Գերակայ փայլէր Տըրդատ կայսերակերպն
Զիւրեւ շուրջ աւագանիս ըզնախարարս եւ զօստանիկս
Զչորեքհարիւր պետս աշխարհաց եւ կուսակալս պար ունելով
Ինքն 'ի մէջ ըզվեհային գլուխն ամբարձեալ հանդոյն Մասեաց
Առ ոտիւք հազարաւոր լերինք եւ բլուրք խոնարհագոյն․
Կամ զերդ լուսին լըրացեալ 'ի կամարին աստեղազարդ,
Որ զիւրեւ բակ բոլորէ զբոյլս աստեղաց ճաճանչաւոր։
Յայնժամ էր տեսանել աստ մեծ ատեան հիապատում․
Նախարարքն արքայաշուք երբ զարդարեալ կարգ ըստ կարգի՝
Կապելով ըզպատուաւորսն եւ զոսկեղէն խոյրն 'ի վերայ
Եւ ածեալ ընդ մէջ կամար ոսկիակուռ ականակապ
Ըզթիկամք արկեալ սամոյրս եւ զումարտակս 'ի պարանոցս
Այնպէս փառօք եւ շըքով մըտանէին 'ի յայս քաղաք
Ի սպասու կալ հրամանին պերճացելոյն իշխանաստ։
Հարցանէ՞ք, որ 'ի գընին կայք աստանօր, ուշեղ մանկունք,
Թէ առ ի՞նչ երբեմըն սա էր պանծալի բոլոր մասամբք,
Աւասիկ մերկացեալ կայ 'ի համայն վայելչութեանցն։
Սիրով տամ ձեզ պատասխան, որ զայդ յինէն հարցանէք այժմ,
Անաչառ եւ ճըշմարիտ եւ ոչ բանիւ սուտակասպաս։
Յորժամ Վէս վաղարշապատ զոճիր ահեղ մըտաբերեաց,
Տիրանենդ եւ դաւաճան գըտաւ յարքայն իւր Տըրդատէս,
Զջահըն չիջոյց գերալոյս մահու ըզդեղ մատըռուակեալ․
Յայնժամ եւ զիւրեւ այս օրինակ պատեաց խաւար։
Ոչ գիտաց ուշակորոյսն թէ իւր փառաց շուք համօրէն
Ընդ լուսով նորին փայլէր իբրու զաշխարհ առ արեւով․
Եւ թեւոյն պարթեւական, որ պարփակեալ պաշտպանէր զինքն,
Լարեալ զաղեղ նենգութեան՝ նետ դիպեցոյց եւ խոցոտեաց․
Զհովանին գըլխոյն իւրում արհամարհեաց ողորմելին
Այսպէս խարշեալ 'ի տապոյ թօթափեցան փառաց ծաղիկզ,
Այլ ընդ այս ես չատ լացից երբ ըզշիրիմ սըրբոյն գըրկեմ։
Ոչ առ սա եւ եթ գըտաւ ապախտաւոր Վաղարշապատ,
Նա եւ 'ի սուրբն Աստուծոյ դոյն օրինակ յանդըգնեցաւ։
Արդարոյն անիրաւեաց յոյր օրհնութիւն բարձրանայր ինքն,
Արժանի օրհնից նորուն չեղեւ գործովք իւր անարժան․
Այլ անիծից որ այսպէս խոնարհեցաւ 'ի բարձրութեանցն։
Եւ զի տէրն առ այս ոճիր արագ զարթեաւ յերկնուստ 'ի վրէժ,
Զայրարատ իւր քաղաքօք մատնեաց 'ի ձեռըս թըշնամեաց․
Որ բիւրովք հրոսակօք ելին դիմել 'ի Հայաստան․
Զայն ետուն, այլ ոչ զարթեաւ քաջ մարդադիրն եւ ախոյեանն,
Ոչ մըռընչեաց ահեղ ձայնիւ առիւծազօր Արշակունին․
Ո՞հ, 'ի Թորդան ընդ շիրմաւ նա զքուն մահու նընջէր յայնժամ,
Ոչ 'ի գլուխ Նըպատ լերին թեւատարած կայր եւ Ներսէսն,
Հայոց գընդին զօրավիգ կալ աղօթիւքըն սըրտագոչ։
Յոյժ տըրտում եւ տըխուր ոգիք սոցուն ելին յերկինս,

Ոչ եւ անդուստ կամեցան քաղցըր հայել 'նդ հայոց աշխարհ,
Կամ միջնորդ ու աղերսարկու եղեն անդէն առ վրէժխընդիրն
Լինել վերակացու ըստ քաղաքին Երուսաղէմ,
Եւ այգւոյն Այրարատայ չքանդել զցանկըն նորաշէն
Ի կոխումն անցաւորաց ու անտառասուն խոզերամիցն:
Իբրեւ յերկնուստ եւ յերկրէ թողաւ լըքաւ անօգնական
Գունդագունդ գումարտակեալ զօրք թըշնամեաց զօրէն ամպոց
Ելին յայնժամ եւ խաղացին ահագնագոչ որոտալով
Զպայծառ եւ պարզ օդ սորին լըցին հողմով մըրըրկալից·
Եւ շանթիւս թօթափելով 'ի ծառատունկըս Թորգոմեան
Լեխեցին վերուստ 'ի վայր ըզգեղուղէշ ոստըս նոցին·
Եւ ըզկարկուտ ազգի ազգի վրիժառութեան թափեալ սաստիկ
Տապալեալ աւերեցին զամուր աշխարհըս մեր համայն:
Ոչ միայն արտաքին սուր թըշնամեաց եւ արհաւիրք
Եկին յայնժամ եւ այսպէս հասին վերայ Հայոց երկրիս·
Այլ եւ մարտք 'ի ներքուստ գըրգըռեցան 'ի նախարարսն,
Կատաղաբար մոլեգնեալ տոհմ ընդ տոհմի հարան 'ի մարտ,
Եւ իսպառ ջընջեալ զիրեարս թափուր կացին 'ի սերընդոց:
Այսպէս 'ի ներքուստ ընտանի սուր մըխեալ ոխով
Անդրադոյն քան զարտաքինն գտաւ սատակիչ տանս Արամեան:
Անդ ոչ էր 'ի միջի վեհ իմաստունըն Տըրդատէս,
Որ 'ի հրաման ահացուցիչ եւ կամ բանիւն ամենիմաստ
Դաշնադիր սիրոյն առնէր ըզգըժտութիւն նախարարեանն:
Զիմացան ոգիք պանդոյր ըզյարդ յօդին շաղկապողի
Որ ըզնոսին զամս վաթսուն կապեաց 'ի սէր անխըզելի:
Ո՛հ, 'ի բաց ջանացին կըտրել զայն կապ միացուցիչ,
Որով անդէն 'ի միմեանց քակտեալ ւինքեանք բաժանեցան,
Եւ փոխան սիրոյն քաղցրիկ սուր 'ի միմեանց կողմս մըխեցին:
Զայս ըզփոխարէնս առ ընկալան վաղվաղակի
Ընդ մահարբոյց բաժակացն որ արդարոցըն մատուցին:
Եղկելիք ոչ իմացան եթէ կենաց իւրեանց առիթ
Իբրեւ հոգիք էին նոքա բնակեալ սիրով յանձինս իւրեանց·
Կարծեցին եթէ կարեն շարժիլ գընալ առանց հոգւոյ,
Ըզնոսին 'ի յանձանց վասն այն 'ի բաց վըտարեցին:
Իսկ յորժամ ըզփորձ առին ծանեան անդէն նոցին ըզյարգ,
Եւ ընտրել յօժարեցան զպատիւ որդւոցն անարատից·
Բայց, աւա՛ղ, այլ ոչ դարձան, որ 'ի նոցունց ելին ցաւով:
Այս ոգիք կենդանատու Տըրդատ, Ներսէս էին նոցա,
Զորս արտալած արարին զաղտնածածուկ խարդաւանօք·
Թողում զԱրիստակէս, Յուսիկ եւ զծերըն Դանիէլ,
Զոյս յայտնի սրոյն ոխութեան զոհ արարին յանդիմանեալքն:
 Ցուցի ահեղ ձեզ, մանկունք, եւ քաջ հասու եղէք ուշով,
Եթէ յի՞նչ այս մեծ քաղաք փոքըրկացեալ գեղջիկ դարձաւ:
Այլ մի դուք այնպէս կարծէք թէ արդ իսպառ Վաղարշապատ
Թափեալ յիւր փառաց եւ է բնաւին անփառունակ·
Աւադիկ առ ինքն ունի զանկողոպուտ շուքն եւ պարծանք

Զվեհագոյն երկնանըման Կաթուղիկէ Եկեղեցին,
Որ անխախտ եդին հիմունս ձեռք Տըրդատայ եւ Գրիգորին
Յաւիտեան անդըրդուելի կալ 'ի հողմոցըն սաստկաշունչ
Յոր ըզկնի եկեսցուք ճեմել եւ անդր 'ի հոգեւորսն:

Արդ ըզլար իմ քնարիս եւըս պընդեալ 'ի ձայն ողբոց
Վերառեալ ըզձեզ սատի տարեալ դընեմ յԱնի քաղաք·
Ուր նըստիմ ես 'ի վերայ աւերակացըն հողաբլուր,
Անդէն գինեւ ողբանուէր ձեռն 'ի ծնօտի եդեալ եւ դուք·
Անձանձրոյթ իբր աղաւնի ըզկիզըն առնում հանել մըրմունջ
Զլալ հարկանիմ դառնապէս եւ դուք ընդ իս չարժեալ 'ի լաց
Թափեսցուք արտասուս 'ի նըշխարեալ յԱնի քաղաքն:
Ինձ սակայն դըժուար է այս քոյդ առաջին ըզպերճ փառացդ
Եւ զվերջին դըժբաղդութեանցդ երգել յինէն ճահողապէս·
Քեզ, քաղաքդ անչուք, թողում պատմել ըզքէն կարդաւ,
Դու՝ որ նախ աըբեր ղքաղըըր բաժակըն բերկրալից,
Ի վերջնում այդպէս ապա դդառըն մըրուր այդ կործանման,
Գիտես ինքնըդ լաւագոյն զհամ կըրկնակի քոյդ բաժակաց·
Ասա մեզ արդ լալագին մեք լուռ կացեալ լուիցուք սատ,
Եւ լացցուք ըզքեզ յաւէտ զքեզ որ այդչափ անչըքացար:

Ո՞վ յոդի հայրենասէր վառեաց ըզքեզ, ա՛յ ողբերգու,
Զի այդպէս 'ի վաղուստ մեկնեալ զմանկտիդ իմ սիրասուն
Ածեր այսրէն 'ի հեռուստ յայցելութիւն տառապեալ մօրս,
Եւ լալ գիս 'ի մեծ լալիւն գլացեալըս միշտ 'ի բիւր աչաց·
Ահա քեզ եւ մանկտւոյդ զիմ առաջին չնաշխարհիկ չուք
Եւ զվերջին անչըքութեանցս ողբով պատմեմ մեծահառաչ:

Ես քաղաք հրաշակերտ 'ի Շիրակայ ճոխ գաւառիս
Առ Ախուրեան գետոյդ եզերբք եւ հուպ ձորոյդ ծաղկոցաց
Յարդաւանդ եւ բարեբուղխ դաշտի չինեալ վայելչապէս:
Լայնանիստ յարմարադիր զարմանալի յօրինուածովք,
Դրամբք աշխարհամուտ եւ մեծամեծ ապարանօք,
Պարըսպօք ընտիր ընտիր աշտարակօք բարձրադիտակ,
Ես 'ի մէջ աներկեղուտ ոչ սարսէի յիմ թըշնամեաց·
Եւ քանի՛ բիւրաւոր եւ բնաշխարհիկ ժողովըրդօք
Լըցեալ հարըստացեալ քան զհամօրէն հայոց քաղաքս:
Արքունիք արքայաճեմ չինեալ էին յիս փառաւոր,
Ի նոյին Բագրատունեան զահըն կազմեալ չըքեղաճոխ,
Յոր բազմէին ծիրանեօք Աշոտ, Սըմբատ եւ Շահընշահ:
Նախարարք, աւագանիք եւ իմ իշխանք ազատատոհմ
Ի հրապարակս այդ խըցեալ նըստեալք 'ի կառըս քառաձի
Ելումուտ առնէին միշտ յիմ արքունիս փառազարդեալ:
Պըսակաւորն իմ ընդ այգւոյն մինչ ելանէր դըրանէս 'ի դուրս
Պաղպաջուն ըզեստուք պճնեալ եւ թագ 'ի գլուխ մարգար—
[տախուռն

Զօրէն նոր փեսայի որ ելանէ յառագաստէն.
Առաջի ընթանային կարգ ըստ կարգի ազատագունդք,
Եւ նժոյգք ոսկեսարեան թեթեւ թաթուլ ճոխճեմելով.
Խուռն ժողով քաղաքիս խռնէր յայնժամ 'ի հրապարակս
Տեսանել ըզհանդէս Բագրատունի թագաւորացն.
Հանգոյն արեգական յառաւօտուն ճաճանչելոյ,
Որ ծիրանի լուսոյն 'ի գեղ գրաւէ հանուր ըզտիեզերս,
Զաչըս ողջոյն եւ նոքին 'ի տես պայծառ դիմաց իւրեանց:
Զի՛նչ ասացից եւ զարկ զօրականացըս բիւրախումբ
Զըսպայից ահեղաղօր զքաջամարտիկ նահատակացս.
Ոյք 'ի զէն վառեալ 'ի կուռ գունդ գունդ մէն մի ընդ իւր դրօշու
Ի դրանէս ելանէին փողով մարտի խրախուսելով.
Ոյք չեւ մըտեալ յասպարէզ ահն ընթանայր ընդ առաջոյ.
Զանարի գունդ թըշնամեաց ահաբեկեալ լըքուցանէր.
Եւ զահանդեալ զէնընկէց ըշտապէին առ 'ի փախուստ
Յերեսաց անդիմահար իմոյս քաջաց չահատակող:
Որ 'ի հոգի միասիրտ յօժար 'ի մարտ ընթանային,
Սիրելի գոլով միասիրտ զմահ գեղեցիկ առ հայրենեաց
Մեռանել, զի գէթ յաւէրժ ես մընայի փառօք անմահ.
Իսկ ըզբոլոր ժողովըրդոցս որո՞վ ողբով պատմեցից արդ,
Որ կենօք երկրաւորին փարթամ էին եւ ընչաւէտ,
Կալուածովք եւ անդովք, այգեստանեօք, բուրաստանօք,
Ցորենոյ եւ գինւոյ լըցեալ պըտղովք լիապատար,
Եւ հօտիւք խաշանց անթիւ եւ պաճարաց երամակօք:
Որովք ըզկեանս անկարօտ քան զամենայն հայաստանեայս
Վարէին բնակիչք իմ գերաբաստիկ եւ երջանիկ
Գըրգեալք ամենեքին ճոխ վայելիւք մարմնապարար:
Եւ մանկունք իմ նորատիք եւ կուսագեղ գիրգ օրիորդք
Զգեստուք պըճնեալ ըզհասակս նոճիանման դեղաշիտակ
Առ 'ի զբօս ելանէին առ Ախուրեան Գետոյդ ափամբք.
Ուր չատ այգիք եւ պարտէզք տընկեալ էին դրախտանման,
Որոց բեր բաւ էր բիւրուց մանրիկ մանկտւոյս մըրգասէր:
Զի՛ եւ ընդէ՞ր մոռանամ ասել զանթիւ գեղօրէից,
Որ զինեւ չուրջ մօտ 'ի մօտ 'ի ջրաւէտ վայրս շինեալ էին
Շինականք չահաւոր զարդք վայելուչ դաշտաց լերանց,
Այց վաստակ արդիւնաբեր լընոյր զամբարըս Շիրակայ
Բաւ եւ առատ առ 'ի պէտս իմ քաղաքիս բազմամարդիկ:
Այսչափ եւ այսպիսի զեղուն բարեօք առաւելեալ
Ուտէին եւ ըմպէին յառատութեանցըն յափրացեալ:
Յիս հընչէր անդադար ձայն գուսանաց եւ երգեցին,
Զայն հարսին եւ փեսային եւ կաքաւող պարաւորաց,
Եւ սեղանոյն խրախճանաց 'ի զուարթ խընճոյս պարապելոց:

Թողեալ անցից զայսոքիւք որ ըստ մարմնոյն էին բարիք
Յաննախանձ պարգեւատուէն շնորհեալ նոցին առատապէս.
Արդ հեծելով յոգւոց հանից եւ ըզփառաց իմ հոգեւոր

*Հազար եւ մի զեկեղեցեաց, որ յիս երբեմըն վայելուչ*
*Կառուցան կամարաշէն յիմ իշխանաց բարեբարիշտ*
*Ի նոցունց, որ ըղփոյթ զաստուածայնոցըն տանէին:*
*Ոյք լըցեալ էին բազում քահանայիւք վարդապետօք,*
*Զարդարեալք վայելչօրէն իբրեւ զտաճարն այն որ իր հնումն.*
*Զահիւք, աշտանակօք եւ կանթեղօք արծաթակուռ,*
*Եւ այլովք զարմանազան հանդերձանօք սըրբանըւէր:*
*Սպասաւորք եւ պաշտօնեայք եկեղեցեացըս համբօրէն*
*Մինչ ըզգեստուք սըրբափայլ զարդարէին կարգ ըստ կարգի,*
*Եւ մանկունք քաղցրանըւագ զերգս օրհնութեան եղանակեալ*
*Զտէրունեան հանդէս տօնից պայծառապէս զարդարէին.*
*Որ 'ի զընին՝ հիանայր հանդիսականըն տօնասէր:*
*Զիս այսպէս երբեմըն տէր որպէս ըզհարսն 'ի յառագաստ*
*Զարդարեաց քօղազարդ պըսակազգեաց վայելչութեամբ:*
*Որով եղէ ցանկալի գեղով երկնից սուրբ փեսային,*
*Որ սիրով հաճեցաւ բնակիլ ընդիս 'ի յաւիտեան:*
*Այլ ինձ վա՛յ, զի վաղ յինէն զատեաւ փեսայն սըրբասէր*
*Յորժամ ոչ ըզպատմուճան ես կարացի պահել մաքուր:*
*Լըռեցին ձայնք ցընծութեան յառագաստէ հարսնարանիս*
*Զի'նդ փեսային հեռանալն ու երգող մանկունքս ելեալ գնացին.*
*Ես մենացեալ մնացի, ո՛հ, լըքեալ թողեալ զերդ զայրի կին,*
*Դառնացեալ անձամբ այսպէս լամ եւ ողբամ ըզմենացեալս:*
*Այլ թէ հի՞մ զատեաւ այսպէս փեսայն եւ է՞ր դիպաց ինձ այս*
*[աղէտ,*
*Ազնիւ մանկտւոյդ իմոյ զայս արդ խօսեցայց իրաւապէս:*

*Քանզի ես ըստ Եսայեայ այգի եղէ սիրելեցւոյն*
*Այրարատու յերկրիս մեծ տընկեալ տեղւոջ պարարտութեան.*
*Ցանգով ամրափակեալ եւ զարդարեալ հողաբարձ,*
*Աշտարակ, գուբ եւ հընձան շինեալ փորեալ յիս գեղեցիկ,*
*Եւ բոլոր պիտոյիւք առ 'ի տեառնէ խնամակալեալ:*
*Իսկ յորժամ որթըքըն սորեկ ընդ խաղողոյն բերին ըշփուշ*
*Դըժուարացաւ տէրըն ընդ այս, որ խաղողոյն մընայր յուսով,*
*Խրամատեաց ըզցանկ այգւոյս ես անխընամ եղէ խապառ*
*Եւ յիս մըտեալ թըշնամեաց, ո՛հ, արարարին զիս ճըռաքաղ:*
*Զեզ, ո՛վ իմ մանկունք, ասեմ բանիւ ըստուգութեան,*
*Թէ այգւոյս որթ ժողովուրդ խաղող բերէր մըշակողին,*
*Դարմանէր ապաքէն դեռ 'ի նմանէ ցանկապատեալ,*
*Ի հօրէն ուռքըն սըրբեալ եւս առաւել տայր ըզպըտուղ.*
*Եւ ոչ այսպէս անխընամ կոխան եղեալ անցաւորաց*
*Դաշտանայր տեղի այգւոյս, յիս արածէր երէվայրի:*
*Արե՛կ աստ, Երեմիաս, եւ ողբակից լեր դու մանկտւոյս,*
*Լաց եւ զիս որպէս յայնժամ զայրիացեալն Երուսաղէմ.*
*Զի եւ ես արբի զբաժակըն դառնութեան եւ կործանման,*
*Եւ այսպէս նըման նըմին զատեալ նըստայ միայնացեալ,*
*Ես քաղաք բազմորդի այրիացայ լի տըրտմութեամբ:*

Ձեզ ասեմ ձեզ ասեմ, ո՛վ անցաւորք ճանապարհաց·
Ցիս դարձեալ նայեցարուք տեսէք զանբաւ ցաւս աղէտից
Ոյք հասին խուճապաւ 'ի վերայ իմ պերճացելոյս։
Վասն այն եւ ես աւասիկ յողբ եւ 'ի լաց մատուցեալ եմ·
Ոչ ըզտիւ եւ զիշեր դադար եւ դուլ տամ արտասուացս·
Ես որ, ո՛հ, երբեմն էի մինչեւ յերկինըս բարձրացեալ
Արդ խոնարհեալ մինչ յերկիր եղէ գետնոյն հարթ հաւասար·
Եւ ընդ հողով իմ ամենայն փառք թաղեցան որպէս մեռեալ։
Այս եղեւ, զի տէրն խեթիւ յիս հայեցաւ տիգօք աչաց,
Եւ դարձոյց յինէն զերեսս այլ ոչ հայել քաղցր իւր ակամբ։
Տեսին զայս թըշնամիք թեթեւացան իբրեւ զարծուիս,
Ի լերանց բարձանց ճախրեալ չոյտ եկին զիս պաշարեցին։
9 Ցայնժամ մեռեալ էր վանողն եւ մարտադիր քաջըն
[Վահրամ,
10 Եւ Գագիկ հըզօր առիւծն 'ի գառագիղն 'ի Յունաստան.
Մըռընչէր վասն իմ ցաւօք, ա՜հ, տիրադրուժքն արարին զայն։
Եւ պարիսպք ահաւոր չեղեն պաշտպան պաշարելոյս,
Ոչ եւ դրունք մայրադերան երկաթապատ բեւեռապինդ
Կարացին ընդդէմ ունել զօռ եւ խըրոխտ բըռնաւորաց։
Զի զաջըն ամրածածուկ, որ պահպանէր զիս 'ի նոցունց
Տէրն 'ի վերուստ ամփոփեաց ես մընացի անպատըսպար·
Զի՞ յայնժամ դրունք եւ պարիսպք մարդոյ հընարք խորտա–
[կելիք
Կարէին պաշտպանել զիս 'ի ձեռաց պաշարողաց։
Եւ 'ի նանիր տըքնեցան իմ պահապանքն եւ ընդունայն
Յորժամ ինձ պահպանիչ չեկաց յերկնից արթուն պահպան։
Հեռի եղեն եւ յինէն իմ արդարոց սուրբ օրհնութիւնք,
Փոխանակ զի ես քըրքիջ միշտ ածէի զնոցին խրատովք
Որով զիս յուղիղ շաւիղ յորդորէին զընալ սիրով։
Եւ մինչ այսպէս յամենուստ լըքայ թողայ անզօրավիգ,
Զի՛նչ այնուհետեւ արձակ արձակ յիս թըշնամիք
Մըտին զազանաբար՝ զինէզինեալ իբրեւ ըզփիղս
Եւ առաթուր ճըմլեցին ըզմեծ այգիս ողկուզալի·
Յորմէ գետ յորդեալ արեան լըցեալ զընայր 'ի հրապարակս
Մինչ ըզմանկունս դիեցիկ, որ մարցն 'ի գիրկըս խողխողեալ,
Թաւալգլոր առեալ տանէր թափէր ի վտակն Ախուրանին։
Ո՜վ անագորոյն գազանացեալ որդւոյն անգութ,
Այսչափ արիւն մարդոյ առ որ սոսկայ սիրտ մարդկային
Ոչ կարաց նորա սըրտին շիջուցանել ըզբոց վրիժուն·
Մինչեւ եւըս դըժընդակ զայլ իմն ըզվըէժ մըտաբերեաց,
Զոր թէ պատմեմ՝ սարսըռեալ քըսմնին ոսկերք ձեր, ո՛վ
[մանկունք,
Այլ պատմեմ, զի գիտեցէք եւ զիս լայցէք դուք առաւել։
Ցիս այն մարդախանձին եւ ծարաւին մարդոյ արեան
Աւազան, այլ ոչ թէ ջրոյ անդէն գործել ետ ծառայիցն
Ջենուլ անդ զիրդ եւ գեղեցիկ զերիտասարդս իմ ջերմարիւն

Եւ լընել զայն ապաժոյժ կարմիր ջըրով ցըմարդաչափ
Առ ի՞նչ այս... մըտանել անդր իբրեւ 'ի մէջ լոգարանի
11 Լըւանիլ, զի գէթ սըրտին սաստիկ գայրոյթ զովանայցէ:
Զայս լըւեալ, ո՛ մանկունք, լացէք լացէք կականալիր,
Թէ քանի՛ այսպիսում արիւնախանձ լափլէզ ընձուց
Մանկտւոյս իմոյ արիւն անոյշ թուեցաւ լափեալ այսպէս:
Եւ քանի՞ցս իմ յանդաստան ազգ Նետողաց գերանդազէն
Մըտեալ այսպէս հընձեցին զհասկահասուն Հայոց մանկտիս.
Բարդ 'ի բարդ 'ի մէջ արտոյս տապաստ արկին իբրու զորայս:
Գեղեցիկ էին եւ իմ ցուրտ դիակունք արիւնազանց
Ի փողոցս անկեալ 'ի սրոյ մի ըզմիով մածեալ արեամբ.
Որոց չէր ոք դիաթաղ, թըռչնոյ երկնից կուր եղեն, ա՛հ:
Այս դըժնեայ զաւազանօք ըզվրէժ լուծի սըրտմըտելոյն
Զորս առ 'ի ձեռն արտաքուստ նորօք տանջեաց զապերասանս,
Սակայն ոչ եւ այսու զիջաւ նորին սըրտմըտութիւն:
Եւ զի ոչ ժողովուրդք իմ խրատեալ այսչափ սրով թըշնամոյն
Տակաւին դարձան սըրտիւք հեղլով զանձինս իբրեւ ըզջուր
Առաջի տեառն Աստուծոյ զոր 'ի ցասումըն շարժեցին
Անհաճոյ վարուք իւրեանց զորոց ասել չկարեմ մի մի:
Վասն որոյ Նոր պատուհաս ինձ պատրաստեաց արդարավրէժն
Ի ներքուստ հողմով շարժման տատանելով զիս խոր հիմամբքս
12 Դըղըրդեալ վըրդովեցոյց ամուր շինուածըս վեր 'ի վայր:
Անկեալ կործանեցան յանժամ պարիսպք ու աշտարակեայք,
Յամօթ եղեն յուսացեալքն, որ ոչ զանձինս պարըսպեցին
Գործովք առաքինի, զոր կործանել չկարեն հողմունք:
Տապալեալ աւերեցան եւ ապարանք արքայաբնակ,
Մերկացան 'ի ծիրանեաց պայծառ գահոյք Բագրատունեան:
Իջին յատակեցան այն պաղպաջուն բարձր շինուածք:
Փոխանակ զի ոչ երկնից ըզշինուածոյն անձեռագործ
Առնէին ինչ ուշ երբեք շինել գործովք արդարութեան
Բընակիչք իմ երկրապիշք անխորհեցողք միշտ ըզվերնոյն:
Խըցեալ կուրացան լայնափողոցք եւ հրապարակք,
Յորս նըստէին ծերքն ալեւոյթ գոլ զանցելոց միշտ հնապատում
Ընդ առաջ նոցին 'ի զբօս խաղուց՝ մանկտիք զուարճանային.
Այլ ոչ ողբամ ես այնչափ զկորուստ փառացըս մարմնաւոր,
Այլ ողբամ զհոգեւորաց հազար եւ մի զեկեղեցեաց,
Այլ ողբամ զերկնանման խորանաշէն վեց տաճարացն.
Զորս եւ նոյն շարժն ահագին փլուզեալ 'ի վայր խոնարհեցոյց:
Սիրոյն մանկունք մօտ եկայք ձեզ ցուցանեմ ես արդ մատամբ,
Ահա որ անդ երեւի յաւերակս իմ դեռ 'ի կանգուն,
Այն է մայր Կաթուղիկէ եկեղեցին զարմանակերտ.
Զոր հիմնեեաց արքայն Սըմբատ մինչ թագ 'ի գլուխ փայլէր
['ի գահ,
Եւ լրումն հան կատարեաց Կատրամիդէ մեծ թագուհին:
Եւ այժմ, ողբերգակ, ելէք մանկունք եւ մօտ գնացէք,
Եւ քաջիկ դիտեցէք զհիացուցիչ կերտուած նորին

Յոր տեսանի դեռ ճշգրիտ հրաշարուեստին ճարտարութիւն
13 Տրդատայ առն անուանի, որ էր դորին ճարտարապետ․
Որ այնչափ ըսքանչելի եւ գեղազան հրեշակերտաց։
Մինչ միակ փայլէր 'ի մէջ հազարաւոր եկեղեցեաց։
Եւ զարդիւնք վայելչութեան դեր անցանէր զամենեքումք․
Ըզգեստովք անկուածոյ ծաղկէնըկար եւ ոսկեհուռն,
Անօթիւք արծաթեղէն եւ կանթեղօք մեծապայծառ։
Թողում ըզբիւրեղէն ջահն եւ ըզմեծ խաչն արծաթի․
Գործ անգիւտ եւ չնաշխարհիկ գրտեալ միայն յԱնի քաղաք։
Այսոքիւք նըման երկնից լայն կամարին արփաճաճանչ
Ջահանայր այդ վեհ տաճար հիանալին տեսանողաց։
Ի դա զաչըս դարձուցեալ հայեցարուք մանկտիք եւ այժմ,
Տեսէք զի՞ այլակերպեալ տեսիլ դորին աղարտեցաւ։
Այդ խորանք կամարակապ փլուզեալ 'ի վայր խոնարհեցան,
Եւ կըճեայ սիւնքդ 'ի կանգուն կացին այդպէս անվերնայարկ։
Այդ սեղան սըրբութեան եւ զենարան անմահ զառինն
Քանդեալ եւ Թանձրախուռն հողով ծածկեալ անյայտացաւ։
Այդ զաւիթ մակաղատեղ, ուր փարախէր բանաւոր հօտն,
Փուշովք լըցեալ կուրացաւ, կազազ եղեւ արդ գազանաց։
Զի հովիւըն երկնաւոր անփոյթ արար զհօտէն իւրոյ,
Երբ հօտ նորուն քաղցըր ձայնին ոչ լսելով Թափառեցաւ։
Դոյնպէս եւ միւս հազար եկեղեցիք յաւեր դարձան․
Լըռեցին երգոց մըրմունջք որ 'ի նոսին լըսէր անոյշ,
Լըռեցին փողք բարձրազոչ զուշակողացն ըզՔրիստոսէն,
Լըռեցին նորոյ կտակին եւ աւետեաց հեշտալուր ձայնք։
Սուգ առին ճանապարհք Եկեղեցեաց, վանօրէից,
Ո՛հ, ոչ զոյր երԹ եւ եկ բնաւ հանդէս տօնից տարեկանաց,
Եւ ոչ իսկ 'ի նոսին տօնակատար ըսպասաւոր։
Մանկտիքս օրհներգու զենեալ եղեն առ սեղանովք,
Յարեանց նոցին հեղմանէ լըցան հիմունք սուրբ տաճարաց։
Քահանայք եւ պաշտօնեայք գերի գնացին կտակարանօք,
Եւ տարեալ՝ առ գետեզերբ 'ի յայլ ուռեացըն կախեցին։
Եւ ոչ որպէս Իսրայէլ դարձան առ իս այցելուԹեամբ,
Այլ անդէն դարեալ մնացին մոռանալով զիս եղկելիս․
Եւ զնուագ օրհնուԹեան հընչեն այժմիկ յերկիր օտար,
Զոր հընչել ոչ կամէր մինչ ըստիպէր անդ Իսրայէլ։
Մինչեւ յե՛րբ մոռանաս տէր զիս իսպառ 'ի յաւիտեան,
Մինչեւ յե՛րբ ըսպասեցից այսպէս քոյոյ այցելուԹեան․
Աւասիկ ոչ եԹէ եօԹանասուն ամք 'ի վերայ,
Այլ ամաց հարիւրաւոր զինեւ անցին արդ շըրջանակք,
Այսպէս տակաւին ես մընացի անայցելու։
Տէր ինձ ե՞րբ դու առաքես Զօրաբաբէլ նորոգիչ,
Եւ ե՛րբ ժողովուրդք իմ դառնան առիս զան ցընծալից․
Որ յինէն զատեալ յայնժամ լալով գնացին 'ի տարաշխարհս
Յերեսաց սըրտմըտելոյն ահիւ սաստիկ խուճապելով․
ԳէԹ այնու անցանիցէ օր բարկուԹեան արագահաս,

Որ զգետին բաժակ պատժոյն արբոյց շարժմամբն ահագնադը—
[ղորդ·

Ըստիպիմ ասա 'ի ցաւոյս ձեզ, ո՛վ մանկունք ողբանուէր,
Ցաւալի բանիւ պատմել զգաղթականաց զերաշխարհումն·
Զոր առնէին աստանօր մինչ հայրենի զերկիր թողեալ
Ողորմելի լալոտ աչօք ելեալ յինէն բաժանեցան:
Յայնժամ էր այսր տեսանել զնոցին լալիւն աշխարհահեծ,
Եւ ըզկերպ անձընիւր թըշուառագոյն ուղեւորացն:
Ծերքն 'ի ձեռըս գաւազան առեալ ելին դողդոջաքայլ,
Որ բազմէին 'ի յաթոռս դոտէպաշտեալ 'ի ծառայից:
Իշխանքըն փառաւոր, որ յերիվարս պալարակապ
Նըստէին շըքեղապէս եւ շըրջէին 'ի հրապարակս,
Այնպէս գնային հետիոտս քղանցք ըզգեստուցըն փոշոտեալ:
Տընաշէն կանայքն ըզտունս եւ ըզմառանս թողեալ 'ի լի
Ելին ըզգլխասունս 'ի գիրկս առեալ միով ձեռամբ
Եւ միւսովն ըզձեռանէ մանկանց կալեալ յուշիկաքայլ
Բռնանի գնացին լալով ընդ ճանապարհս տաժանալից·
Ո՛հ, քընքուշ ոտըս մանկանց պատառոտէր դըժուար գետին:
Ելին յառագաստից հարսունքն անքօղ փեսայազուրկ
Զի փեսայքըն նոցին զենան 'ի սուր զերչացն անգութ:
Ելին եւ նորապսակ փեսայք զըրկեալ 'ի նոր հարսանցն·
Զի հարսունք պըսակաւէր գերի գնացին 'ի խուժաստան:
Ելին այն պատկառոտ կոյս օրիորդք հըքնազաղեղ
Հերարձակ հոլանի գնացին 'ի մէջ կարաւանին:
Ելին հովիւքն 'ի դաշտացն Շիրակայ մնացեալ հօտիւք,
Նորածին զառինք ըզկնի մարց երթային բառաչելով:
Ընդ հովիւսն եւ հողագործքն յակօս հերկին թողեալ զարօր
Եւ զեզինս առեալ ելին ուր ոչ գոյր արտ յօտար երկիր:
Այգաւանիկ զաւըլն կոծով ելին յինէն իմ ժողովուրդք·
Թողին զամենապտուղ պարտէզս ու այգիսըն գինէբուխ·
Թողին ըզգաշտորայս եւ զանդաստանս ցորենաբեր,
Եւ բազմասար մեծ ամբարս լի ցորենով ատոքաճեմ:
Ընդ սոսին գինքս եւ ըզգանձըս մեծութեան թողեալ 'ի յիս
Անինչ եւ հացազուրկ 'ի վայր օտար պանդըխտեցան·
Ուր կարօտ բերեալ հացի տառապէին թըշուառապէս:
Ոչ գոյր նոցա բնաւին անդ ափ մի հողիկ սերմանելոյ,
Ոյց արտոց չէր սահման 'ի Շիրակայ դաշտ լայնատարր·
Ոչ այգի եւ գինէբեր, ոչ դարաստան եւ մըրգաւէտ,
Ոչ բիւրաւոր խաշանց հօտ կամ պաճարաց խուռն երամակք·
Որով անդ եւ այնոքիւք փափկանային 'ի ճոխ վայելս:
Վասն այն յուշ բերեալ նոցա զլի բարութիւն երկրիս իմոյ
Դառնապէս հառաչէին զօր ամենայն արտասուելով:
Բա՞րէ զի՛նչ ձայն ողորմուկ ածեալ մանկան կարօտելոյ
Առ ծընողսն աղքատիկ, լայր եւ ասէր հեկեկալով·
Ո՛ւր են մեր ոչխարք եւ իմ սիրուն քընքուշ գառինք,

Որոց անոյշ կաթամբ դուք բուծանէիք զիս անդանօր:
Ո՛ւր կովուց իւղ զուարթարար որ զիս առնէր փափուկ կայտառ:
Ո՛ւր այն Շիրակայ գարնանագեղ մարգագետինք
Ուր 'ի վերայ դալարեաց ես խայտայի ընդ գառնուկս:
Ո՛ւր հովիտք եւ խաղացք յորդասահ ջուրցըն խոխոջիւն,
Առ որովք յամարան կեանս վարէաք մեք հովասուն:
Ո՛ւր է ձորն այն ծաղկոցաց ուր ընդ ընկերս իմ դըռնայի,
Ժողովեալ յագնիւ ծաղկանց եւ փունջ կապեալ բերէի ձեզ:
Ո՛ւր, աւա՜ղ, պարտիզիկն իմ, որ Ախուրեան գետոյն յեզերս,
Զոր հայրիկդ իմ տընկեաց ձեռօք, ես ջուր ետու մատաղ [տընկոցն:
Եւ ո՛ւր այգեաց բարունակք յորոց ողկոյզքըն կախէին.
Եւ կըթեալ ես ուտէի, ա՜հ, մեծապտուղ սեւ սեւ ողկոյզք:
Ո՛վ հայր իմ եւ դու մայրիկ ես մեռանիմ 'ի կարօտոյ
Հայրենւոյն, թէ ոչ աստի զիս տարջիք դուք 'ի հայրենին:
Այսպէս կարօտէին եւ ընդ մանկան ծնողքն անճարակ,
Որպիսեօք Ադամ, Եւայ յորժամ ելին յԵդեմ դրախտէն
Մինչ 'ի մըտի անմոռաց ըզփափկութեան վայրն ունելով:
Քանզի դրախտ էի եւ ես ամենագիւտ եւ չահեկան,
Ըզնոսին յիս որ տէրն եդ պարարէի առատ բարեօք:
Բայց յորժամ ստունգանեցին նոքա բանիցն աստուածայնոյ
Ոչ կացեալ յուխտի նորա եւ ոչ գնացեալ ըստ կրաւանցն,
Տէրն եհան 'ի փափկութեանցս եւ վըտարեաց յօտարութիւն,
Եւ զնոսա յինէն խըպառ եւ 'ի նոցունց զիս բաժանեաց,
Զետ անգամ նոցա տեղի զոն է բնակիլ դրախտիս 'ի մօտ.
Որով ոչ ես 'ի նոսա եւ նոքա յիս մնայաք կարօտ:

Այլ ես արդ ձայն արկանեմ առ ձեզ որդիք իմ անջատեալ
Ի դըրկաց տածողիս ըզձեզ երբեմըն մայրաբար,
Մի մոռանայք դուք խըպառ զողորմելի Անի քաղաքս:
Փութացէք փութացէք յայց նըշխարաց այդ մնացելոց.
Որ ահա տակաւ տակաւ վայր իջանեն բարձրակամարքդ,
Եւ ընդ երկրաւ գերդ մեռեալ ծածկին բնաւին անյայտանան.
Ո՛հ, եկեալ յայնժամ առիս ոչ գըտանէք նըշխարիկ մի:
Ո՛վ երկին, անձրեւահար եւ ձիւնածեծ զիս մի առներ,
Եւ հողմունք սասանիչ յիս մի բախէք 'ի հիւսիսոյ.
Մի նոր նոր այլ զիս քանդէք եւ դուք, ո՛վ ձեռք աւերածող.
Թող մնասցեն անկորուստ իմ այս նըշխարք առ 'ի նըշան
Առաջին իմոյս փառաց, որ յինէն խոյս ետ եւ փախեաւ:
Եւ ոգին աշխարհադէտ որ շուրջ յածի զտիեզերօք,
Ցիս եկեալ ինեւ զՀայոց պարծանս նա քաջ նըշմարեսցէ.
Եւ դոյզն ինչ մնացուածովքս ի միտ ածցէ զանցելոց շուքն:
Նա յաւէտ, որ այժմ եկեալ էք դուք մանկունք իմ հարազատ,
Նայեցա՞յք աւադ աչօք յիմ այս տեսիլ աշխարհելի,
Իցէ՛ թէ զութ շարժիցի մանկտւոյդ 'ի սիրտ դիւրագորով
Մնացելոյս այս խնայել եւ նորոգել զիս վերըստին.

Եւ 'ի ծոց այրւոյս կըրկին ձեզ բընակիլ ուրախագուարճ,
Վա՛չ յայնժամ տառապեալս լինի ոգւով ուրախամիտ
Ուստերովք եւ դըստերովք բերկրեալ իբրու զմայր եօթնածին.
Եւ փառօք ըստ առաջնոյն բարգաւաճեալ ամենայնիւ:

Այդպէս եղիցի քեզ, դու ո՛վ քաղաք անզաւակեալ.
Տուր այժմիկ դուլ եւ դադար ողբոյդ այդմիկ դառնահառաչ,
Ժամ է արդէն եւ որդւոցս առ քեզ ըղձայն յուսադրական
Արձակել ուրախալիր ծանրաթախծիդ լինել սփոփիչ.
Եւ նոր 'ի քեզ աւետիս հընչել ձայնիւ գուշակաւոր:
Զի ահա եկեալ եհաս դար ոսկեղէն բարենըշան,
Որ ըզքեզ ըստ առաջին նոր նորոգէ դարձեալ 'ի փառս:
Հաշտութեան նըշան ուխտըն արդ երեւի զքեւ 'ի կամար,
Քաղցրութեան յամպոյն անձրեւ ցօղի մանրիկ 'ի քո վերայ:
Եւ ընդ քեզ, ո՛վ տառապեալ, սըրտմըտելոյն հաշտեցաւ սիրտ,
Եւ երդնու նա յաւիտեան այլ ոչ ըզքեզ մերժել այդպէս:
Որ ըզքեզ այրութեամբ տառապեցոյց այդչափ երկար,
Նոյն եւ արդէն ողորմել հանդերձեալ է սիրովն անչափ
Ոչ մերժեալ յաւիտեան, թէպէտ եհար այլ բըժըշկէ.
Յետ այդքան երկար ձմերանդ նա քեզ բերէ նորեկ գարուն:
Որ այժմիկ հողաբըլուր թանձըր ձիւնովք թաղեալ հեծես,
Դու զօրէն գարնայնոյ զգեղ վայելուչ զարդարիցիս:
Հընչեսցի հարաւն 'ի քեզ եւ հալեսցին ձիւնքըդ դիզեալ,
Եւ 'ի հողոյդ քաջաբոյս ծըլլին ծաղկունք նորափըթիթ.
Բուրեսցին անոյշ հոտով եւ զմայլիցիս դու 'ի նոսին:
Առաւօտ նոր արեւով ծագեսցի քեզ լուսանորոգ,
Մերժեսցէ զգիշերդ 'ի քէն եւ զուարճասցիս դու առ լուսով.
Ի խաւար երկրէդ ելեալ 'նդ երկնից արփւով երեւեսցիս,
Եւ յայդչափ խոնարհելոյդ 'ի վեր կըրկին բարձրանայցես:
Շինեսցին քո աւերակք եւ կանգնեսցին վայելչապանծ,
Ընդարձակ ըստ առաջնոյն յօրինեսցին եւ հրապարակքդ,
Հարկեւոր եւ պատուական ծերք 'ի յաթոռս բազմեսցին անդ,
Խուռներամ գնասցեն մարդիկ եւ խաղայցեն 'ի նմա մանկունք.
Զարմասցին որ գայս տեսցեն ըզնորոգումըն լըքելոյդ:
Մահարձանքըդ կիսաթաղ յոտըս կացցեն հըսկայաբարձ,
Որ 'ի նմա հողածածուկ քաջաց անուանքըն կարդասցին:
Համբարուք յուշկապարիկք մերժեալ 'ի քէն հեռանայցեն,
Ոգնիք աղուէսք մի այլ եւս եկեալ 'ի քեզ դընիցեն բոյն:
Եւ զգայլոց վոհմակն 'ի քէն հալածեսցէ հովիւըն քաջ.
Եւ ըզհօտ իւր սիրեցեալ անդրէն 'ի քեզ արածեսցէ:
Այդ փըլեալ եկեղեցիքդ կանգնին դարձեալ վայելչագոյն,
Եւ խորանքըդ խոնարհեալ վեր բարձրասցին կամարազարդ.
Ընդ հողով ծածկեալ սեղանքդ անդրէն սըրբեալ յարդարեսցին.
15 Եւ 'ի հրոյն թաքուցելոյ, զոր եւ 'ի քեզ ցարդ պահէ տէրն,
Լուցցին նոր վառ 'ի վառ ճրագունքդ եւ ջահքըդ խաւարեալ.
Յայնժամ երկին արփաւոր 'ի մէջ երկրի երեւեսցիս:

Դու յորժամ այսգունակ զարդարիցիս հարսին 'ի դեղ,
Դարձ առնու փեսայն անդրէն, որ ելն 'ի քէն մեկուսացաւ,
Ցառագաստ քոյին առ հարսնըդ քօղազարդ նորապըճնեալ.
Որ խանդակաթ ես 'ի սէր քո անձկալւոյդ հեռացելոյ:
Եւ ապա զհարսնարանին երգ ցընծալից նործին մանկունքդ
Հընչեսցեն եւ դու հարսն ընդ փեսայիդ քո հըրճուեսցիս:
Այսպէս ուրախամիտ որպէս ըզմայր որդւովք բերկրեալ
Լինիցիս, դու՝ որ այժմիկ յայրւոյդ վերայ սուգ ըզգենուս:
Այլ եւ քո յանդս անմըշակ ելցեն յայնժամ հողավաստակք,
Հասկաթուռ ցորենով խարտիշասցին ողջ արտորայքդ.
Եւ այգիք քո դաշտախիլ սորեկ որթով նոր տընկեսցին,
Եւ նոցին տոհմականօք լընանիցիս դու պատարուն.
Սիրելիքն 'ի խընձոյից սեղան ակումբ առցեն զըւարճ,
Լըսիցին եւ նոր 'ի քեզ ձայն գուսանաց եւ երգեցկին:
Քո լերինք եւ դաշտորայք լըցեալ հօտիւք ու երամակօք,
Այն անոյշ նոցին բըչիւն անդ 'ի նոսա հընչեսցի քաղցր.
Եւ զըստինս ուռուցիկ բարձեալ բերցեն 'ի տուն կաթամբ,
Մանկունքըդ քո նորածին վայելեսցեն ուրախ ուրախ:
Օ՛չ քեզ յայնժամ ասասցեն, զի այդ բաժակ լի դառնութեան
Փոխարկեալ 'ի քաղցրութիւն անուշանայ քո բերանոյդ.
Եւ արբցես ախորժօրէն եւ հեշտասցիս յաւէտ 'ի նոյն,
Զօրէն զաւակածին կընոջն որ ճիչ բառնայ յերկունս,
Եւ յորժամ ծնանի ողջամբ չոյտ մոռանայ զերկանցն ըզցաւ:
Եւ որ ա՛յդքան վըշտօք 'ի քեզ կրեցեր զերկունս ցաւոց,
Գայ ժամ եւ հասեալ է զի մոռասցիս զայն ամենայն,
16 Հերիք ապա լաս այդպէս, այլ ցընծասջիր յուսապատար:

Որպէ՛ս զի քաղցր են այդ բանք դառնացելոյ անձինս դիւրիչ.
Ո՞վ զձեզ աւետատու տըրտմեցելոյս յըղեաց, մանկունք,
Զի այդչափ յուսալից բանիւ եղէք ինձ մըխիթար
Եւ սփոփիչ վըշտագին մօրըս ձերոյ երկար երկանցս:
Երանի՛ թ՝այդոցիկ լըումըն բանից գայր հասանէր,
Զայցելու ձեռն 'ի վերուստ յիս կարկառեալ տեսանէի,
Որ 'ի դեղն առաջին զիս նորոգէր վայելչօրէն.
Վա՛չ, յայնժամ ըղձայն ողբոյս փոխարկէի յուրախութեանն,
Եւ խըցեալ զակն աղբեր աչացս այլ ոչ տայի բըխել ջուր դառն:
Եւ զորդեակսըդ մայրասէր դըգուեալ 'ի գիրկըս փափկասուն
Տածէի որպէս յայնժամ 'ի կաթնաբուխ ստեանց Շիրակայ.
Սիրով անձուկ եւ ըղձեօք խանդաղատեալ փայփայէի:
Այլ խիթամ, զի մի գուցէ ըստ առաջնոյն նոր ժողովուրդքս
Ապաշնորհ օրինազանց առ այցելուն դըտանիցին.
Նըման Իսրայէլի սիրեալ ազգին ուխտադըրուժ.
Որ զայնչափ բարութիւնս 'ի ձեռանէ տեառն ընկալան
Ի յերկիր բարի բնակեալ 'ի կաթն եւ մեղըր պարարեալ
Մոռացան տակաւին զպարգեւատուն եւ զբարերարն:
Որով նա զուխտին պայման 'ի գլուխ ածեալ վաղվաղակի

Ըզնոսին սրով ըսպառէր, եւ 'ի բարի յերկրէն հանեալ
Զերուսաղէմ եւ ըզտաճար մատնէր 'ի ձեռըս թըշնամեաց·
Ոյք աստէն քակեցէք զդա մինչ 'ի հիմըն հաստուցեալ։
Մի՛ եւ զայս ընդ իս արասցէ տէրն իրաւադատ,
Կըրկնակի տացէ ըմպել սըրտմըտութեան իւրոյ ըզբաժակ,
Մինչ 'ի նոյն խոտոր չաւիղ ընթանայցեն իմ ժողովուրդք·
Եղո՛ւկ ինձ եւ վայ յայնժամ, զի դառնագոյն եւս է վերջինն։
Գնացէք ապա օ՛ն առ այժմ, մանկունք, ինձ մօրըս մըխիթարք·
Արասցէ թող եւ որպէս տէրըն կամի նախատեսող։
Դու եւս արդ, ողբերկու, փոխես ըզձայն քնարիդ ողբոց,
Շատ եղեւ մանկտւոյդ իմոյ կալ տըրտմառիթ յայս տեսարան·
Ու 'ի սեւաթոյր քօղ պատեալ մօրս ըզգըլխով անկանելով
Ի սիրուն յաչաց այդչափ աղի վըտակըս կայլակել
Յայդ նըշխարաց 'ի վերայ եւ թաւալեալ մահարձանացդ։
Ոչ կարեմ այլ հանդուրժել եւ չունիմ յիս տեղ արտասուաց·
Զի լըցաւ ծոցըս ողջոյն 'ի գերարտօսր աչաց գետոց·
Ո՞հ, ո՛վ տէր, զիս արտասուաց ամա՞ն եդեր Հայոց մանկտ–
[ւոյն։
Առ յինէն, ողբերգակ, զի դիւրեցայց գէթ 'ի ցաւոցս
Եւ դոքին 'ի հոսմանէ դառնավիժան լալեաց աղբեր·
Առ եւ տար այժմ ըզդոսին 'ի տեսարան ինչ հոգեզուարճ,
Որ սփոփէ ըզսուգ սըրտի եւ սըրբէ զաչս արտասուեցեալ։



# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

## ԵՐՐՈՐԴ ՆՈՒԱԳԻՆ



Ի յերրորդ մասին այսմիկ՝ հրաւիրէ ՚ի սուրբ եւ մայր կաթուղիկէ եկեղեցին Էջմիածնի եւ ՚ի տաճարն վկայուհւոյն Հռիփսիմեայ· անտի յԱրտաշատ ՚ի խոր վիրապն, ուր արկաւ Լուսատուն մեր Գրիգորիոս· բերէ անտի յԵփրատ եւ անդուստ հանէ ՚ի լեառն Սեպուհ· յորում տայ հրաւիրակն զմանկտիսն Պլուզ Յովհաննէս վարդապետին Երզնկացւոյ շրջեցուցանել ըզնոսին անդր· եւ իջուցեալ ածէ յՕշական գիւղն ՚ի տապան սրբոյն Մեսրովպայ· աւետիս հրաւիրակին առ նա· խըրատք Երանելոյն առ մանկտիսն· եւ տանի ապա յԱւարայրի դաշտն, ուր թախանձանօք հրաւիրակին իջանէ Եղիշէ վարդապետն եւ նեմեցուցանէ զմանկտիսն ՚ի տեղի նահատակութեան քաջին Վարդանայ եւ նորին նիզակակցացն· խրատք նորա առ մանկտիսն· բանք հրաւիրակին եւ վերջ:

# ՆՈՒԱԳ

## ԵՐՐՈՐԴ

———o———

ԱՀԱ զոր անդ խոստացայ աստ կատարեմ սիրողապէս,
Առեալ ըղձեց, ո՛վ մանկտիք, տանիմ անդրէն՝ վաղարշապատ
Ի տաճարն աստուածակերտ 'ի մայրըն մեր ամենածին
Ի վեհ եւ գերապանծ աթոռ Հայոց Լուսաւորչին:
Աստանօր ցուցաւ ահա տեսիլն այն մեծ զարմանասքանչ
Հըսկողին գիշերաժամ առ փըրկութեան գերեալն ոգւոյս,
Բացումն խորանաշէն երկնից յարկին հաստատութեանն,
Իջանել լուսաւոր առն ուռն 'ի ձեռին ոսկիաձոյլ.
Որ բախեալ գյատակ երկրիս հընչեաց Թընդիւն 'ի խոր ան–
[դունդս
Ջտաճարիս վեհական՝ գհիմըն կառոյց անխախտելի
Այն վերին ճարտարապետն առ 'ի հօրէն միածին բանն:
Աղբիւր վերնահոսան ջրոյն կենդանի շնորհաց հոգւոյն
Բըղխեցաւ եւ աստանօր որպէս երբեմն յԵրուսաղէմ,
Ծաւալեալ 'ի յԱյրարատ լեալ աւազան մըկըրտութեան.
Կապուտակ եւ երկնագոյն 'ի ծով դարձան երեսք դաշտաց.
Յոր իջեալ հօտ սեւաթոյր ազգըն Հայոց խաւարազգած
Մըկըրտեալ սպիտակացան փայլեալք 'ի գեղմըն լուսակիզն.
Եւ այնպէս մաքրազարդեալք արժանացան վերին կենաց:
Մըտէք, մանկունք, երկիւղիւ երկիրպագցուք տեղւոյն իջ–
[ման,
Ուր ներբանք աստուածային կացին որպէս 'ի Սինայ լեառն.
Անդ հրաշիւք տըպաւորէր տիպ աղխսոյ շաղփիւղափայլ,
Զոր Մովսէս, Յեսու եւ ծերք նըշմարէին զարմանալեօք.
Սակայն աստ ոչ իջելոյն ոտից նըշմարք մնացին եւ եթ,
Հապա նոյն հայրածին բան եկաց 'ի սմին ողջամբ յաւէժ:
Զի սա է լեառն ընդ որում Տեառըն հաճեալ յերկնուստ անտի
Էջ բոլոր աստուածութեամբըն եւ բնակեցաւ 'ի սմա իսպառ
Խոստացաւ այլ եւս աստէն ոչ բաժանիլ 'ի յաւիտեան:
Այս տուն վեհինաճեմ պայծառապարծ եւ մեծահրաշ
Ոչ իբրեւ Սողոմոնեան ըստ տաճարին այն գերաշուք
Կերտեցաւ 'ի նիւթոյ քարանց լերանց կոփեալ մըրճօք.
Այլ 'ի վիմաց մարմնեղէն կոփեալ 'ի մուրճ խաչին 'ի վիշտս
Յայն ընտիր ընտիր քարանց հիմնազարդեալ յօրինեցաւ:

Ջտաճարաւս կան պարաւոր եւ կուսանաց վըկայարանք,

Եւ հրնձանք արեան գինւոյն ուր ճըմլեցան խաչին ողկոյզք
Հռիփսիմէ, Գայիանէ սուրբ ընկերօք ընտրելագոյն:
Որ 'ի ծայրից արեւմըտեան դիմեալ հասին խունկապելով
Յարեւելս'ի յԱյրարատ փեսաւէրին լինել սատար,
Ընդ արեան Գրիգորին եւ կուսական հեղուլ զարիւն.
Զի այնու զհեռացեալ հարսն Եկեղեցին Հայաստանեայց
Փեսային երկնաւորի մուծանիցեն 'ի յառագաստ:
Իմաստուն սուրբ կուսանք եւ հրաւիրեալքն 'ի հարսանիսն
Զագնիւ հանդերձ հարսանեաց կարմիր նիւթով կազմեցին ստա,
Ըզգեցեալ զարդարացան արիւնազգեստ վայելչութեամբ.
Եւ լուցեալ ըզլապտերս իւղով պարկեշտ մաքուր վարուց
Փութացան ջահազգեստեալ 'ի մուտ երկնից հարսնարանին:
Սեղան խաչին կանգնեցաւ ստա հաճոյական պատարագաց,
Յոյր վերայ ելին 'ի զոհ ողջակիզաց ամբիծ որոջք,
Յորոց անոյշ հոտ բուրեալ հոտոտեցաւ հայրն 'ի վերուստ.
Ընդ խախտեալ եւ տառապեալ Եկեղեցւոյն Հայաստանեայց
Հաշտեցաւ սիրովն անչափ 'ի հաշտարար ընծայ սոցին:
Աւասիկ 'ի կարկեհան եւ չափիւղայ ագնիւ քարանց
Հայաստան եկեղեցւոյն ետ ըզհիմունս անդըրդուելի:
Մըտէք օ՛ն եւ 'ի տաճար օրիորդին Հըռիփսիմեայ
Նորին այնքան քրիստոսակիր մաքուր մասանց տալ ըզհամբոյր.
Որ փախեաւ յառագաստէն եւ պըսակէն եղծանելի,
Որ սիրեաց ոչ երկրաւոր Թագաւորին լինել տիկին
Տարփացեալ երկնաւորին եւ անթառամ սուրբ պըսակին:
Ընդ այս քարինս նիւթական բարձրակամար մեծ խորանիս
Հայեցեալ զարմացարուք ընդ ույժ սաստիկ անպարտելւոյն,
Զնորին ասեմ որ եղեւ առ 'ի մանուկ կուսէն պարտեալ.
Որ ինքնին 'ի Մասեաց ուժ մեծամեծ զայս յաղթ արձանս
Բարձ 'ի յուս հուժկու բազկաւն ած 'ի տաճար վըկայուհւոյս:
Որ յայնժամ ըզմարմնեղէն չինուած քակեաց հրաշագեղոյն,
Նա ընդ այն զփոխարէնն հատոյց յետոյ ջերմըն սիրով
Բարձրագոյն զայս գեղեցիկ տաճար կանգնեալ նորին յանուն
Առ 'ի լինել սրբասնունդ խաչաչարչար մարմնոյն հանգիստ:

Հանեալ ըզձեզ արդ, մանկունք, հարսնացելոյն 'ի սենեկէս
Յարտաշատ փեսաւորին 'ի խոր սենեակըն մուծանեմ
Ի վիրապն անդընդային դատապարտիցըն պատժարան.
Ուր արկաւ մեղապարտ յազգէն Գրիգորն անդատապարտ
Կապեալ ոտիւք եւ ձեռօք 'ի մէջ օձիցըն դառնաչունչ.
Որպիսեօք Երեմիասն այն որ յազգէն իւր ապաշնորհ
Ընկեցաւ 'ի գուբըն անջուր 'ի մէջ տըղմին դանդաղամած:
Սըրտիւ 'ի վայր խոնարհեալ իջէք մինչեւ յատակ խորոյս
Եւ յերկիր եդեալ զերեսըս մածուսցուք զտեղեօքըն սուրբ,
Որ պատուանդան եւ կայան եղեւ ոտից Երանելոյն.
Եւ ուր զամս հընգետասան տոկաց ոգւով համբերատար
Աղօթիւք մըշտամըռունչ հըսկեալ ըզտիւ եւ ըզգիշեր.

Զայն մինչեւ հընչեաց վերուստ, արի՛ որ կաս 'ի գբիդ ներք—
[նում
Ե՛կ 'ի դուրս, Գրիգորիէ, եկ լուսատու խաւարելոց,
Իմ ծառայիդ շատ եղեւ յայդ վայր ժուժել խաւարաբնակ:
Զինչ յայնժամ աստուստ 'ի վեր ծագեալ արփւոյն գերա—
[պայծառ
Զմութըն մերժէր նըշողիւքն 'ի մեծ տանէս Թորգոմական·
Դիւազգեաց մոլեգնելոց լինէր անդէն զգաստացուցիչ,
Եւ զարքայն վարազակերպ փոխէր 'ի տիպ նոր եւ չքնաղ:
Որպէս ոչ Դանիէլին քաղց առիւծունքըն գէշագէշ·
Քանզի տէրն իւր ըղձառայն չէթող երբէք 'ի ձեռանէ,
Այլ ընդ նըմա էջ 'ի որպէս 'ի գուբ վաճառելոյն,
17 Եւ պաշտպան յըղեաց նըմա 'ի հրեշտակաց չորրորդ
[դասէն·
Որ եւ զայս 'ի պաշտպանէն տեղեկանայր մարմնով հրեշտակն
Ի տօնի համբառնալոյն խաչադըրոշ յաղթանակին
Յեղովմայ 'ի յերկրէս դիմեալ յերկինս արիւնաձորձ:
Յո՛ւշ այսր, ո՛ մանկունք, յուշ լիցին ձեզ մեծ երախտիք
Գրիգորի չարչարելոյն յորդիս լուսոյ զմեզ ծընողին·
Որ յետ այնչափ կըտտանաց էջ եւ յայս գուբ դըժոխըմբեր,
Եւ ըզմեզ, որ կենդանւոյն իջեալ էաք 'ի բանտն անել,
Զարչարանօքըն մարմնոյն ազատելով եհան 'ի վեր·
Եւ երկնից արքայութեան նոր ժողովուրդ կազմեալ մաքուր
Խօսեցաւ Քրիստոսին զմեզ իբրու զկոյս մի անարատ·
Եւ տարեալ յանդիման կացոյց յերկնից հարսնարանին:

Հրաւիրէ անդուստ ըզմեզ, մանկունք, Եփրատ դըղըրչալով
Յորդանան ադինաբուխ, որ զգնայ ընդ մէջ Հայաստանեայց,
Երթալ եւ անդ նըւագել զմըկըրտութիւն նորածնելոցն
Թորգոմեան ազին ողջոյն յաւազանին իւր նորասքանչ
Ի յանուն հօր եւ որդւոյ եւ վերածնող հոգւոյն սըրբոյ:
Հիացումն եւ նոր տեսարան աշխարհախումբ էր աստանօր,
Նորընծայ սուրբ հայրապետ Նոր Յովհաննէս Գրիգորիոս
Պըճնեալ պայծառազգեստ պատմուճանաւն Ահարօնեան
Իջանէր 'ի մէջ գետոյս հաւատացեալ թագաւորաւն·
Որ հեզանայր զերդ ըզգառն եւ ըզգլուխ իւր ընդ առ աջովն
Խոնարհէր, եւ 'ի նմանէ զմըկըրտութիւն հայցէր սիրով:
Բազմաբիւր ընդ արքային եւ զօրք նորուն նորահաւատ
Մերկացեալ մըտանէին յարգանդ ծնողին նոր ընդունակ:
Նըշան հրաշալուր որպէս անդէն 'ի Յորդանան
Երեւէր եւ աստանօր յերկնուստ, յերկրէ զարմանալեօք·
Զի զտեղի առեալ Եփրատ բանայր ըղձոցն եւ ծովանայր,
Ընդ բոլոր դաշտիս երեւս հարթածաւալ տարածանէր,
Այնպէս առինքն ընդունէր զազգըն ողջոյն Հայաստանեայց:
Եւ ալիքն յադինակոյս վէտ վէտ յակունըս դառնային
Ընթանալ պատգամաւոր լինել դըրախտին տըրտմեցելոյ

*Նոր աւետիս ցընծութեան մատուցանել խոխոջելովն·*
*Դու խընդա՛ զուարճացեալ, ո՛վ դարաստան Նախամարդոյն,*
*Մի այլ եւս այսուհետեւ ողբար զնորին զըրկումն ՚ի քէն·*
*Ահա ծնունդք որ ՚ի նմանէ բնակեալ յաւէժ ըզբոլորիւքդ,*
*Առիս եկեալ մըկըրտին եւ զօրանան զինու հոգւոյն*
*Ի ջարդել եւ ջախջախել զգլուխ վիշապին սողեալ ՚ի քեզ։*
*Եւ փայլին փառօք որպէս յայնժամ Ադամ քոյդ Թագաւորն,*
*Ելանեն վերաճեմեալ երկնից ՚ի դրախտըն լուսազուարճ,*
*Նոքա ոչ այլ կարօտին երկրաւորիդ եւ եղծելոյդ։*
*Զի՞ ապա զարմանաց նըշան յայտնէր եւ ՚ի յերկնուստ,*
*Երկին ցելոյր ՚ի վերոյ զուարթունք յերկիր իջանէին,*
*Ընդ նոսին լուսոյ ցընցուղ հոսէր զգեստովս ծիրանափայլ,*
*Երեւէր եւ տէրունեան նըշան խաչին լուսաճաճանչ*
*Ի վերայ օդոյն կացեալ վըկայ լինէր խաչեցելոյն,*
*Եւ ՚ի ջուր մըկըրտելոյն ՚ի պահապան եւ զօրավիգ։*
*Հայրապետըն խաչակիր մինչ արկանէր զիւղն օծութեան*
*Զանձամբ երախայից եւ ՚ի Քրիստոս տղայացելոց,*
*Կաթ իւղոյն ծաւալանայր ընդ բովանդակ ջրոյն ՚ի յերես*
*Ի կապոյտ ՚ի ծիրանի եւ զոյն կանաչ ծածանելով·*
*Եւ շըրջան առեալ խաղայր զմէն մի մարմնովք մերկեալ ան– [ճանցն*

*Զնոսին այնպէս իւրովի նոր քրիստոնեայս կընքէր ողջոյն։*
*Եւ զուարթունքն, որ ըզխաչիւն յօդոյն վերայ սաւառնէին,*
*Առ նոսա հընչէին զձայն աւետեաց ուրախաւէտ·*
*Դուք, ո՛վ մըկըրտեալք, այսօր զգեցայք դուք ըզՔրիստոս,*
*Հարազատ որդիք եղէք եւ երկնաւոր հօրըն ձերոյ,*
*Եւ եղբարք Յիսուսի եւ իսկ նորուն ժառանգակիցք։*
*Այսպէս ելին ՚ի լոյս ազգըն Հայոց խաւարասնունդ·*
*Նորահրաչ եղանակաւս մըկըրտելով ՚ի Գրիգորէն*
*Զգոյն այծից սեւութեան ՚ի մաքրութիւն ձեան փոխարկեալ*
*Լուսազգեաց եղեն ողջոյն հոգւոյն ծնընդեամբըն կըրկնակի։*

*Սիրելի է ձեզ, մանկունք, անդըր որ հուպ է Եփրատիս,*
*Ի Սեպուհ ամենազով լեառըն հանել Դարանաղեաց·*
*Որ տենչալի դադար եղեւ փախուցելոյն ՚ի յաշխարհէ,*
*Եւ քըրտնաջան մըշակին հանգըստարան ՚ի վաստակոցն։*
*Այլ աստ իմ տըկարաձայն Թող լըռեսցէ այժմիկ քընար,*
*Հընչեսցէ Պլուզ Յովհաննուն· որ քաղցրաձայն է եւ անոյշ։*
*Ե՛կ ապա, հասիր ուրեմն եւ զքոյդ հար դու ճարտար մատամբդ*
*Սքանչելի Սեպուհ լերինըս գովասան ճահողապէս·*
*Ե՛կ, ժըտեմ, ես դիւր առից, դու զձեռանէ կալ ըզմանկտւոյս,*
*Ի տեղին, յոր Գրիգորին կոխեցին ոտքըն երկնաճեմ,*
*Շուրջ ածեալ պատմեա զոցա զխորին խորհուրդ բարձու լե– [րինս։*

Տարփացեալ այդչափ, մանկունք, լուսատուին հօր ոգւոց
[ձեռում:
Մինչեւ 'ի սէր նորին այժմ բարձրանոլով 'ի գլուխ լերինս
Ցանկալւոյն 'ի տուն սիրեալ եւ ճեմարան ճեմել կամիք.
Ես յօժար եւ անձանձրոյթ ածեալ ըղձեզ շուրջ արդ 'ի սմին
Զբարձրագոյն խորհուրդ սորա խուն ինչ բանիւ արկից 'ի ճառ
Երանելւոյն 'ի պարծանս եւ ձեր նորին որդեացդ 'ի սէր:

Բարձր է սա քան ըզՄասիս գերազանցիկ փառօք Սեպուհ,
Զ՚ 'ի նմա հանգեաւ տապանն 'ի փայտեղէն կազմեալ նիւթոց,
Որ փրկիչ ութից անձանցն եւ եթ գըտաւ 'ի հեղձմանէն:
Այլ 'ի սմա Գրիգորիոս նոր հրաշակերտ տապան հոգւոյն,
Որ զհանուր Հայաստանեայս զերծ 'ի ծովէն կռապաշտութեան,
Նաւարկեալ յերկրէ յերկինս հան 'ի վերին նաւահանգիստն:
Երեւի սա գերագոյն եւ քան ըզլեառն Ամօրհացւոց,
Յոր ի զոհ ըզսիրելին սիրոյն հանէր աստուածակոչն,
Եւ փոխան նըմին ըզխոյն անդ ընդունէր 'ի Սաբեկայն:
Իսկ 'ի սա Գրիգորիոս գերաբուն անձն աստուածազգեաց
Զբանեղէն ոգւոյն ծընունդս եւ զաղօթից անոյշ բուրմունս
Ըզմասունս ընտիր վարուց եւ զճըգնութիւնս մարմնոյն
[ժուժկալ
Ընծայէր տեառն Աստուծոյ նըւէր հաճոյ քան զպատարագս.
Եւ փոխան սոցին առնոյր զազգ մի ողջոյն հաւատացեալ:
Սիրով քաղցր է եւ Սեպուհ քան զԿարմելոսըն խըստագոյն,
Ուր ելեալ աղօթէր նախանձաւորն աստուածային
Առ 'ի ոչ տեղալ ամպոց յայգի անբեր Իսրայէլեան.
Եւ զխնդրողս ինքեան մատնէր հրոյն 'ի լուցկիս երկնատեղաց:
Բայց 'ի սա հայրըն խնամոտ ճըշգրիտ պատկեր սիրաբուն հօրն
Աղօթեալ զանձրեւ շնորհաց իջուցանէր յորդ 'ի վերուստ
Ի վերայ նորատունկ այգւոյն իւրում Արարատեան.
Զոր տընկեաց չարչարանօքն եւ աճեցոյց սուրբ աղօթիւքն:
Անդանօր Եղիսէ տիպարն իւրոյ վարդապետին
Տեսանէր առ ինքն իջեալ ըզհոգեղէն զօրաց բանակս.
Եւ պատանւոյն անտեսող բանայր անդէն զաչս աղօթիւք,
Որ զլեառն ետես լըցեալ հրեղէն կառօք եւ հեծելօք:
Աստանօր ըզԳրիգորիւ եւ սէրարփի վեհ Սրոբէին
Իջեալ կային 'ի յերկնուստ հոյլք սրովբէից պարառաբար
Կալ 'ի դէտ հանդիսի ժուժկալատար ճըգնաւորին.
Եւ զարմացմամբ սաւառնեալ պատգամաւոր գոլ 'ի յերկինս
Զօրս վերին 'ի տեսարան զարմանալւոյն՝ փութացեալ:
Թողում եւ 'նդ այլ լերանց վեհագունից համեմատել
Յաւէտ ըզփառս եւ պարծանս առաւելուլ իմոյ լերինս,
Զոր սիրեալ՝ ես յայլ նըւագ ներբողեցի բազմապատիկ:
18 Խաչեցելոյն ըզխորհուրդ, որ երեւի հրաշիւ 'ի սմա,
Յօժարիմ արդ պատմել, զի լըսելով զարմանայցէք:
Ոչ ժուժեալ ընդ անբարի գնացըս իւրոց նախարարացն՝

Զթագն ընկէց արքայական նախանձաւորըն Տրդատէս,
Զոգաւ եւ ընթացաւ կամաւն ըղհետ երկնաւորին
Եւ ընդ խուրում լուսատուին սիրեաց լինել լեռնակեցիկ։
Աստ յայնժամ արտասուեալ զապըստամբիցըն զանգատէր
Հեռադէտ հովուին 'ի լուր որ կանխապէս գիտէր հոգւովն.
Եւ սըրբոյն բազում ինչ աստ խօսեալ նըմա զապագայիցն
Առնոյր զարքայական ըզգէն նորին կայսերաձիր,
Եւ օծեալ խաչանըշման հրաշիւք տընկէր յողոյն վերայ։
Այսպէս խաչին փոխանակ ձօնեալ գործի զայն ըսպանման.
Որ եւ իմ աչացս երբեմն երեւեցաւ յայտնատեսիլ
Ի լեռան այս հրաշանուն զոր 'ի զովել յորդորեցայ։
19 Տանիմ այժմ ըզձեզ, մանկունք, 'ի մենարան Մանի [կուսին,
Որ զայլ իմն ընտրեալ ըզվարս այլով խաչիւ հանդիսանայր։
Ոչ արեամբ իբրեւ զընկերս նըւէր ձօնէր զինքն անձկալւոյն,
Այլ անարիւն համապազ հոգւովն 'ի սիրտ ողջակիզեալ
Պատարագ բոլորանուէր ընծայէր զանձըն փեսային.
Եւ այսու վեհ եւս կրօնիւք նա փայլեցաւ 'ի խաչակիրսն։
Ի լեռան այս աղօթէր մինչ եւ զուարթուն Գրիգորիոս
Պատահէր յաւուր միում Մանի կուսին 'ի յայրիս այս.
Եւ կուսին տեսեալ աստուստ աղերս ածէր առ նա ձայնիւ,
Մի առ իս եկեսջիր, ասէր, այժմիկ զի մերկ եմ, հայր,
Պատկառիմ ես աղախինս պատկառելի քոյդ յերեսաց,
Երթ եւ յետ երից աւուրց ապա ել դու յայց աղախնոյս։
Եւ սուրբ հօրն ըսպասելով եկըն դարձեալ ըստ պայմանին
Զհարսըն եգիտ հրաւիրեալ յայրէս երկնից 'ի հարսնարան
Առ ցանկալին իւր Յիսուս որում եղեւ մայր կուսութեամբ։
Եւ զնորա մարմին մաքուր ամփոփելով յիւր ճըգնարան
Փեսաւէրն այնուհետեւ զհարսին սենեակըն ժառանգէր.
Մինչեւ հաս եւ նորա յայրէս այսմիկ փոխիլ յերկինս,
Ընդ հարսին նախահրաւէր 'ի լուսաճեմ առագաստին
Յաւէրժ պարել զուարճանալ առ տարփալին փեսայն Յիսուս։
Այլ հըսկող հովուին մարմնոյ հովիւք եղեն ըսպասաւոր,
Զի վայել էր իսկ նոցին՝ ասէ պատմիչըն Խորենեան,
Որ փըրկչին մերոյ ծնընդեան եղեն անդէն խորհըրդածուք,
Աչակերտին յուղարկման լինել ատէն եւ ըսպասաւոր։
Հուպ այրիս առ նըշխարօք նորին բըղխի լուսոյ աղբիւրն,
Ոյր շնորհիւ ընդ լըւանալ կուրին՝ բացան աչքըն հրաշիւք։
Կայ եւ մի այլ աղբիւր ջուր բարեհամ վերաձայնեալ,
Որ անդուստ իսկըզբանէ դառն էր իբրու զջուր Մեռային.
Իսկ խաչակնիք նըշանաւ դրոշմեալ յաջոյն իմ Գրիգորի,
Յաղտաղտուկ 'ի բնութենէն յանուշակ ջուր փոխարկեցաւ։
Իջուցից արդ ըզձեզ եւ 'ի ծործորս Դարանաղեաց,
Ուրանօր զնոցին ազնիւ սեպհական ձիր զարմանալի
Պատմեցից, որ չէ այլում լերանց շնորհեալ այն մեծ պարգեւ։
Գարնայնի ջերին օդովք մինչ զօրանայ տապ արեւուն

Ձիւնք այդ լերանց բարձրաբերձ եւ պընդութիւնք սառնաման–
[եաց
Լուծանին, եւ կաթելով դիզեալ լընուն 'ի քարանձաւս,
Եւ պաղեալ ոչ գիտեմ զի՞` դառնան սառոյց բիւրեղափայլ:
Ձմերանի եւ երբ սառին ջուրցըն բնութիւնք լուծական,
Ըսկուսնուն այն սառոյցք հալիլ ծորիլ յայնժամ յանձաւս·
Յոյց եկեալ տանէին միշտ երբեմն 'ի պէտս մեր արքայից,
Զոր արբեալ զօրանային 'ստ առողջային ջրոյն զօրութեանց:
Նա եւ լերանցս 'ի խոր ձորս 'ի ծոպ հողոյն ընդ առ երկրաւ
Դարանեալ կան բազմազոյն աղբիւրք աղի սպիտակ ազնիւ,
Զոր արեւուն ջերմութիւն հանէ 'ի վեր 'ի խորութեանցն,
Եւ ծըծեալ հրոյն զօրութեամբ գխառնեալ մասունս խոնաւու–
[թեան,
Յըստակեալ պարզի յայնժամ պատուական աղն անուշարար·
Յայսմանէ առեալ զանուն` կոչին լերինք Դարանաղեաց:
Այսոքիկ են ահա իմանալի եւ ըզգալի
Սըխրալի Սեպուհ լերինս փառք սեպհական եւ տիրաձիր·
Զորոց ոչ ես համօրէն այլ համառօտըս պատմեցի·
Պերճազունին թէ ցանկայք 'ի նուագ նախկին ըզձեզ ա–
[ռաքեմ,
Ուր յաւէտ անդանօր դրուատեցի առ սէր սըրբոյն:
Առ հապա, ո՛ Հրաւիրակ, առ ըզմանկտիս տար, ուր կամին·
Զքոյդ հայցուած հեշտալուր ահա սիրով կատարեցի:

Ո՛ւր տարայց, ոչ գիտեմ, առեալ ըզձեզ այժմիկ աստուստ,
Ի Թորդա՞ն թէ յՕշական գիւղն առ շիրիմ երանելոյն
Մեսրովպայ լուսաւորչին խաւար մըտաց Հայկեան ման–
[կտւոյդ:
Անդ այո՛, գիտեմ կամիք երթալ անդէն հատուցանել
Զարդանին ըզպարտըս մեր այնպիսում հօր երախտամեծ
Վարժողին ' դըպրութիւն զմեզ 'ի տառին իւր հրաշագիւտ,
Ու 'ի տաճարն իմաստութեան զդասըս մանկտւոյդ մուծանո–
[ղին:
Հասաք, ըզտապանաւ սըրբոյն ակումբ բոլորեցէք,
Ես նորին խոռվեալ ոսկերց նոր աւետեաց հընչեցից լուր·
Որ անդէն սիրեցելոյ աշակերտին յողբերգութիւն
Հեծեցին ցաւօք ներքուստ ընդ անպատուելն իմաստութեանն,
Թող այսօր ընդ մեծ պատիւ նորուն դարձեալ ուրախասցին:
Ա՜խ, մանկունք, այսըր երբեմն եկեալ նըստէր երգող լեզուն,
Որ յուսայր երազելովն առազաստին զերդ նուագել
Այսրէն հասեալ փոխէր, ո՛հ, սըրտին զայն յոյս 'ի խոր սեւ
[սուգ:
Լայր եւ ձայն ածէր առ փեսաւէրսն երկնահրաւէր·
Որք մանկտւոյն չեւ հարսանեաց զերդ յօրինեալ պարազըւարճ
Փութացան զայն 'ի զուարթնոց երկնից լըսել Սահակ, Մես–
[րովպ:

Վասն որոյ հեղձամըղձուկ լեալ Մովսիսի յանձուկ սըրտին
Հեղոյր լալիս յայս տապան եւ ձայն ուժգին հընչէր յերկինս·
Ո՞վ, ասէր, այսուհետեւ զմերս յարդեսցէ զուսումն ազնիւ,
Եւ ո՞վ ուրախասցի ընդ աշակերտս յառաջադէմ:
Ոչ լըսէր զայս Այրարատ, լըսէր սակայն Մեսրովպ յերկնից,
Այլ ո՞ նըմա տայր անդուստ այսր իջանել կըրկին յայնժամ·
Յանկա՛րծ այն բազմատըխուր սըրտին բերել զուրախութիւն,
Յանկա՛րծ այն աչաց կարօտ զդէմս իւր ծագել ժըպիտ զըւարթ·
Ոյր ՚ի տես փութայր անձկով ՚ի քաղաքէն Բիւզանդիոյ:
  Այլ ես տրուպ քո աշակերտ ու աշակերտիդ քերթողահօր,
Եւ նըման նըմին այսպէս առ քո շիրմաւ նըստեալ այսօր
Ոչ նորին զկանչիւն ողբոց, այլ զաւետեաց քեզ արդ հընչեմ,
Ո՛վ դըպիր շնորհադրուատ, ո՛վ հոգեհրաշ րաբուն Մեսրովպ:
Ահա քո այն ոսկեղար կըրկին դարձաւ ՚ի Հայաստան,
Որ քեզ եւ քոյն Մովսիսի նոր զովեստից հիւսէ պըսակ
Եւ չատ ընդ իւր առեալ բերէ Արամանման հայրենասէրս,
Եւ չատ եւս քոյդ դըպրութեան նոր աշակերտս անձնանըւէր:
Քոյինաչէն այն դըպրոցք, որ ըզկնի քո դարձան յաւեր,
Նոյնք նորոգ ըստ առաջնոյն կառուցանին վայելչօրէն·
Որոց ՚ի ծոց փութալով դիմեն մանկտիք վարժիլ յուսումն:
Նոր յայնժամ քերթողդ Մովսէս եւ Ղազարիկըդ ճարտասան,
Եղնիկ, Յովհան, Կորիւն, Մամբէ, Դաւիթ անյաղթ ՚ի Հելլե– [նաց,
Երեւեսցին յԱյրարատ եւ ոսկեգիր ելցեն մատեանք:
Հապա դու ցընծասջիր յերկինս ոգւով ՚նդ այս աւետիս,
Եւ ոսկերքդ ՚ի ծոց հողոյս թող շունչ առցեն կենդանութեան:
Մի լըսեր մի լըսեր զՄովսիսիդ ձայն դառնաբողոք:
Որ զուցէ եկեալ եւ այդր ըզնոյն կըրկնէ քեզ ՚ի մօտուստ:
Յանտըրտում յայդ վայր երկնից քեզ տըրտմութեան լինել ա– [ռիթ:
Չի ոչ այլ եւս մեք ըզդա թողումք այնպէս թափառական
Պարկաբարձ անընդունակ շըրջիլ ՚ի մէջ Հայաստանեայց·
Լուռումուռ անմըխիթար զալ եւ թաքչիլ յանկիւն գեղջիս
Անծանօթ մնալ այնպէս յանսիրողաց իմաստութեան·
Առ տապանաւ եւ սըրբոյդ ողբալ կոծով զՀայոց աշխարհ:
Ծանուցաւ մեզ աւասիկ դա եւ դորին իմաստութիւն,
Եւ եկեալ են արդ մանկտիք յանչուք գեղջէս հանել փառօք,
Տանել ըզդա եւ ՚ի գահն Արշակունեան նըստուցանել,
Եւ ՚ի գլուխ իմաստութեան դընել ըզթագըն դիւցազանցն,
Եւ կառավար սանձարկու կացուցանել ըզնա միայն:
Հա՛յր, այդ խոնարհ քո Մովսէս վեր բարձրացաւ քան ըզՄա– [սիս,
Եւ չկարէ այսուհետեւ ծածկիլ երբէք յաչաց մերոց·
Ի պատուել ըզդա մեք տուն եւ օթանոց պատրաստեալ եմք,
Առաքեա դու այժմ յերկնից ընդառաջեմք ՚ի յողջունել,
Եւ սիրով ապընջական լինել ծերոյդ ծանրաթախիծ·

Ոչ 'ի տուն այլ 'ի յոգի եւ սիրտ ըգգա հանգուցանել
21 Թող դիւր առցէ եւ մի եւս բառնայցէ զմէնջ տըրտուն–
[ջըն զայն:
Վասն որոյ դու՛նդ պատուհան երկնից յերկիր կարկառիր արդ,
Եւ աջովդ հայրականաւ օրհնեալ զողջոյն մանկտիս Հայոց.
Առ որըս քոյդ յորդոր սէր գիս հրաւիրակ յԱյրարատայ
Առաքեաց 'ի հրաւիրել ձայնիւ քնարիդ քո լըռեցեալ.
Ոյք 'ի լըսել զայն հեռուստ ելին այսպէս եկին սիրով,
Եւ ճեմեալ 'ի հայրենին հասին 'ի դիր սուրբ նըշխարացդ
Ընդ օրհնութեանդ չնորհաբեր առնուլ եւ խրատ հայրենատուր:
Բարբառեա ուրեմն այտի քո յորդորիչ լեզուաւդ անոյշ,
Որպիսեօք յերկրի գնոսին չըրջեալ յայնժամ յորդորէիր:

Այդպէս փութադոյն, ո՛վ հարազատ իմ աչակերտք,
Ի ծագաց երկրի լըւեալ հրաւիրակիդ այդ սիրակոչ
Եւ ի սէր հայրենւոյն յորդեալ՝ դիմեալ ելէք առ նա,
Եւ սըրտիւ հայրակարօտ սիրեցիք եւ յիմ տապան
Տըրտմեցելոյս 'ի յերկինս ուրախութիւն լինել յերկրէ:
Զի յօրէ, յորմէ զլալոյն լըւայ ձայն ես որբ Մովսիսին
Ի վերայ Այրարատայ սուգ առնէի մինչեւ ցայսօր.
Որ չեղեւ նաւահանգիստ այն չահաբեր նաւուն իւրոյ
Բարձելոյ 'ի յԱթենայ գվաճառ անգին իմաստութեան
Զաղքատիկ նորա մանկտիս առնել փարթամ ընչիւք անհատ:
Իսկ այսօր, զայդ աւետիս, որում կայի յուսով յերկնուստ,
Ի ձէնջ լըւայ երբ յանկարծ, վա՛չ, բերկրեցաւ հոգիս իմ յոյժ,
Եւ հատաւ մըչտականչիւն ողբալի ձայն աչակերտիս
Զի բերկրեցաւ եւ նորա ոգին ընդ իմ նոր աւետեօքս:
Զի՞նչ 'ի ձեզ այդ նոր փափագ առ գիտութիւն, ազնիւ ման–
[կունք,
Զմարգարիտն անգին ու անգիւտ, զոր 'ի գընել չէլին յայնժամ,
Այժըմ դուք յօժար փութայք վաճառելով զամենայն ինչ
Ի գընել ըգնա միայն որ պատուական է քան զոսկի:
Գիտելով անթիւ բարիս գալ ընդ նըմին ըստ իմաստնոյն:
Գան այո՛, եւ ես առ այդ յերկնից լինիմ երաշխաւոր,
Թէ զդովաւ չուրջ փակելով գիրկս արկանէք սըրտի մըտօք,
Դա ըզձեզ առնէ անչուտ կենօք յապայ գերաբաստիկ:
Այլ իմ խրատ հայրապատուէր այս է զոր ձեզ սիրով տամ
[արդ,
Դուք որդեակք հօրըս խրատու մատուցէք ունկըն մըտադիւր:
Մի լիցի ձեզ միայնոյ լոկ գիտութեան լինել սիրող,
Ըզգործոց առաքինի եւ զանարատ վարուց անփոյթ :
Ոչ կարէ յերկրէ թըռչուն վերաթեւել միով թեւով,
Սապէս ոչ եւ գիտութիւն առանց թեւոյն ընտիր վարուց:
Առաքինւոյն չէն պիտոյ լինել սատար երկուքն ինքեան,

Զի կարէ նաեւ միովն վերասլանալ գեր 'ի վերոյ.
Ձեզ առ այս օրինակ լիցին Անտօն ու Արիստոտէլ:
Պատուիրեմ եւ զայս յաւէտ որում անսալ սիրով՝ ժրտեմ,
Հայրենի կրօնից չաւղաց եւ աւանդից փոյթ լիցի ձեզ
Հետեւեալ նախնի սուրբ հարց ուղիղ հետոց լուսաչաւիղ.
Զոր նոքին ձեր ընդ առաջ հորդեալ բացին խրատու հոգւոյն
Ընթանալ անխոտոր ընդ այն շաւիղ ձեզ 'ի յերկինս,
Առաւել եւ ընդ սոսին յետին պատուէր՝ այս է իմ ձեզ,
Քա՛ւ, եւ մի երբէք լիցի զտաղ իմ թողուլ տիրապարգեւ,
Եւ ըզպերճ Հայկեան բարբառ նախամեծարն եւ անդրանիկն,
Եւ ձերում լեալ անհըմուտ ախորժիցէք այլում լեզուի:
Յուշ լիցին ձեզ անմոռաց այնչափ ճըգունք իմ եւ վաստակք,
Զոր 'ի սակըս ձեր յայնժամ սիրով կրեցի առ գիւտ տառիդ.
Բացէք զայդ իմ տապան հանդիստ մարմնոյս վաստակաւոր,
Վըկայ լիցին թող առ այս մասունք ոսկերցըդ մաշեցեալ:
Այսչափ են խրատու բանք իմ ձեզ 'ի սիրող հօրէս բաշխեալ,
Ոյց յօժար թէ լըւիջիք եւ կամակար կատարիցէք
Օրհնեալ յերկնաւոր հօր աջոյն լիջիք դուք շնորհաբաշխ:
Պաշտպան ձեզ 'ի երկինս լինիմ եւ ես պաղատելով
Առ այն որ զցօղ շնորհաց անձրեւեսցէ 'ի վերայ ձեր
Բողբոջիլ եւ նոր ծաղկիլ եւ քաղցրունակ բերել պըտուղ,
Իմ քաղցեալըդ Այրարատայ բաց բերանոյ ճաշակ անոյշ:

Լըւարուք ահա, մանկտիք, ցանկալի զհօր բարի պատգամս,
Զոր եթէ պահեսջիք երանելիս առնէ ըզձեզ
Ի երկրի աստ եւ յերկինս 'ի մէջ մարդկան եւ հրեշտակաց:
Մեկնեալ արդ գնամք աստէն, այլ կարօտով սուրբ նըշխարացդ.
Առցուք սակայն զայս գոնէ մէն մի մասանց տըւեալ համբոյր:
Նախ գըլխոյդ աստուածազարդ խոնարհելոյ առ մեր յաղօթս,
Եւ աչացըդ նըւաղեալ կալովն անքուն եւ զտիւ եւ զիշեր.
Բերանոյդ շնորհաբուղխ դադարելոյ յընթերցմանէն,
Եւ լեզուիդ քաղցրախօսակ լըռեցելոյ յորդորմանէն.
Մատանցըդ հրաշարուեստ թարգման տառիցն աստուածայնոյ,
Եւ ոտիցըդ մաշեցեալ 'ի շըրջելոյ զրոյն առ 'ի գիւտ:
Բոլորում այդ նըշխարաց ոգւով սըրտիւ տուք ըզհամբոյր,
Որ վասըն մեր վաստակեցան զի մի մնասցուք մեք անիմաստ:

Վա՛շ, լըցաւ ցանկութիւն եւ խոր փափագ սըրտից մերոց
Երջանիկ Վարդապետին սուրբ ոսկերօքդ անմահահոտ:
Ելէք 'ի վեր երթիցուք, այլ ո՛ւր եւ յո՛ր վայր, ո՛վ մանկունք,
Ի յԱրտազ յԱւարայրին, ուր Աղաւնեակ դորին մընչեաց
Ի վերայ վարդագոյն եւ ճապաղեալ արեան քաջացն:
Ուր ես դարձեալ սիրաբար ձայն արկանեմ առ նա յերկինս
Իջանել անդըր կըրկին մընչել իւրով աղու ձայնիւն.
Եւ շուրջ ածել ըզձեզ 'ի մէջ դաշտին ծաղկեալ կարմիր
Ոռոգեալ 'ի յարենէ աստուածավառ նահատակացն:

*Էջ այտի, դու որ այժմ ծառոյն կենաց վերայ հանգչիս,
Ո՛վ ծիծառնըդ քաղցրախօս եւ հեզ ոգիդ վըկայասէր:
Դըժար է, գիտեմ, թողուլ ըզդաշտ երկնից լուսասահման,
Եւ զոգին քոյն Վարդանայ զորով փարիս աղապատեալ,
Իջանել յայս դաշտ կըրկին ներկեալ նորուն հեղեալ արեամբ,
Եւ դիտել որպէս յայնժամ ըզդիւակոյտս Հայոց քաջացն:
Մի դառն այս յիշատակաւ քընքուշ ոգիդ քըստըմնեսցի,
Զի դաշտն արդ Աւարայրի պայծառացեալ է ծաղկալից,
Ոչ յամպոց անձրեւաբեր, այլ 'ի ցօղոյ արեան քաջացն.
Եւ այն մարմինք արիւնթաթախ ոչ տարածին աչացդ առաջ,
Քանզի նոյնքն իբրեւ ցորեան ծածկեալ եղեն 'ի ծոց երկրին,
Որ 'ի գեղ պըճնեալ բուսոր բողբոջեսցին 'ի գալըստեանն:
Էջ հապա, մի տար այսքան սպասել մանկտւոյս քեզ աստանօր:*

*Այդ քո ձայն սիրահրաւէր գիս բաժանէ 'ի սիրելոյն,
Զոր յայնժամ յԱւարայրիդ, ո՛հ, ես լալով որոնէի.
Եւ ելեալ գըտի յերկինս 'ի Գրիգորին գիրկ հանգուցեալ,
Կալայ զնա եւ չէ հընար այլ եւս թողուլ զիմ սէրն 'ի բաց:
Սակայն ոչ եւ անձանձիր ձայնիդ ժուժեմ, ո՛վ հրաւիրակ,
Իջից օ՛ն, թէպէտ վայրիկ մ'ի նմանէ կացից 'ի բաց.
Եւ զայդ սիրոյ քո հայցուած կատարեցից յօժարաբար:*

*Դուք 'ի սէր Վարդանայ վառեալք այդպէս, ազնիւ մանկունք,*
22 *Ելիք 'ի Շաւարշան, յորում Հայոց քաջ նահատակք
Առ հաւատոյն ճըշմարիտ եւ հայրենի կրօնին ազատ
Կամակար նահատակեալ կատարեցան սիրով փըրկչին:
Ճեմեցէք արդ ընդ իս առ արիւնոտ Տըղմուտ գետովս,
Ցոր զինուորըն մանկազոյն չահատակէր հարազատովքն
Զոմն 'ի գետ զոմն 'ի յեզերս 'ի թըշնամեացըն թօթափեալ.
Ցոյց նորախոց 'ի վիրաց վըտակ վըտակ վիժեալ արեան
Ցորդելով գընայր Տըղմուտ արիւնախառն 'ի մէջ չամբիցդ.
Եւ նոցին ըզդիւակոյտս գլորեալ տանէր թաղէր 'ի տիղմս:
Այսր անկաւ նոյն չահատակ յառաջադէմըն Գարեգին
Երկոքումք հարազատովք նախամարդիկ դիմագրաւեալ,
Երեքին սիրուն եղբարք նախընծայեալք Երրորդութեան:
Որ անդէն յառաջ անցեալ ոգւովն արի քան զնախարարսն
Աներկիւղ 'ի յատենին յանդիմանել եւ զանթառամն առնուլ պը-
[սակ:*

*Երթալ եւ չոյտ 'ի յերկինս մեծ աւետիս տալ Գրիգորին,*
23 *Թէ զառինքըն կոտորեալ յարձակմանէ 'ի թուխ զայլոցն
Թեւաբոյս թըռչին ահա զան 'ի յերկինըս վիրաւորք
Վաստակեալ յարիւն քըրտանց 'ի մէջ դաշտին Աւարայրի.
Ընդառաջեա գըրկաբաց հանգուցանել զնոսին 'ի զոգդ:
Այսպէս նա մանուկ տիօք նախաչաւիղ եղեւ ծերոցն
Մանկացելոյն Ցիսուսի ընծայելով զիւր մանկութիւն:*

Անցէք աստի յասպարէզ, յորում անկաւ մեծն ախոյեան
Մամգունի քաջ չառաւիղն ընտրելագոյն նիզակակցօքն:
Եղո՛ւկ զիս, 'ի գիշերին մինչ միայնակ 'ի մէջ դաշտիս
Երբ լըսէր դառըն մընչիւն եւ մըռընչիւն վիրաւորացն
Եւ ձայն լալոյ ծերունւոյս, ես անձկալւոյն էի խընդիր
Սիրողին զիս Վարդանայ, ա՛հ, որ թող զիս չոգաւ յերկին:
Եւ գըտի զնոյն ինք սէր ոչ, այլ ըզմարմինըն մահաքուն
Թաթաւեալ 'ի կարմրութիւն 'ի մէջ արեան իւր վարդագոյն.
Նորահրաշ փառօք փայլէր գեղ երեսացըն երկնադէմ
Մինչ ոգին ըզյաղթութեանն առնոյր պըսակ 'ի Քրիստոսէն:
Ոչ երբէք տեսեալ էր իմ զդէմըս նորին ծաղկեալ այնպէս
Երբ դառնայր յաղթանակաւ եւ պըսակէր յերկրաւորէն:
Որպէ՛ս ես նորին սէր զմարմնով անկեալ իմ սիրելոյն
Ի վերայ Վէհ ճակատուն եւ այն բացեալ լայնալանջացն
Թափէի արտասուս եւ ստէպ ըստէպ տայի համբոյր
Պատուական գըլխոյն այնմիկ պատուեալ յաւէտ 'ի Կայսերաց,
Եւ աչացըն սիրային, յորմէ կաթէր սէր հայրենեաց.
Շըրթանցըն կափուցեալ որ տայր խրախոյս Հայոց քաջացն.
Եւ բազկացըն կորովի յաղթող ազանց հիւսիսայնոց:
Ա՛հ, մանկտիք, չըրթունք սիրոյս յարիւն մածնոյր ընդ համ-
[բուրելն,
Եւ սիրտ իմ 'ի ներքուստ աղէխարշեալ ճըմլէր ցաւօք,
Մինչ տեսի զմնացեալ նըշոյլն Արարատեան չիջեալ այնպէս:

Զաչս 'ի վեր առի դիտել եւ ըզնորուն նիզակակիցս,
Տեսի զոմն հըսկայակերպ հուպ Վարդանայ գետնատարած,
Եւ առ ոտիւք թօթափեալ զքաջս 'ի յԱրեաց դընդէն մատեան.
Գնացեալ մօտ նըշմարեցի զդէմըս քաջին երկնահայեաց,
Ծանեայ զի էր կորովի հայկազն Խորէն Խորխոռունեան:

Կից նըմին կային երկու այլ նորատիք երիտասարդք,
Ի մահուն քան թէ յիւրեանց կենդանութեան փայլեալք զը-
[ւարթ.
Անկեալք՝ այլ ոչ 'ի բաց թողեալ բընաւ զքաջութեան զէնս,
Միոյն 'ի ձեռին էր վահան, միւսոյն նիզակ խաչադրօշեալ,
Պալունին արին Արտակ զարմանալին եւ Տաճատ:

Ոչ հեռի կայր 'ի սոցունց ոմըն տիօք սօսասարաս,
Գոգ թէ նոր տապարահատ յերկիր անկեալ ճըղակոտոր,
Քայքայեալ այն գեղանի շինուած մարմնոյն վայելչատիպ,
Առ 'ի նոր չըքնաղ շինիլ 'ի Քրիստոսի գալըստեանն,
Ներսեհըն հրաշակերտ, որ 'ի տոհմէն Քաջբերունեաց:

Առ գըլխով սորուն հանգչէր գետնոյն վերայ իբր 'ի հան-
[գիստ,
Մեղոյշ աչկունք ընդ աշխարհ նոր կափուցեալ մահուն մըթով,

Ի դիմաց զուարթագին արդարութիւն փայլէր պայծառ,
Վըկայ լինել անարատ վարուց նորին անդ 'ի մահուն,
Ցանկալի արդարն Արսէն տեառն ընծայեալ 'ի յԸնծայնոց։

Ի հեռուստ լոյս մի առիս ճառագայթեաց արեւանման,
Գիտացի թէ անդուստ էր որ զլոյս սիրէր իմաստութեան.
Քայլ առի երթալ առնա եւ համբուրել ըզտարփալին,
Տեսի զի նա զերդ ոչխար մի լուսակիզն 'ի մէջ այծիցն
Թաւալեալ ուլն 'ի ձիգ գեղմն ըսպիտակ ներկեալ յարիւն
Բաց աչօք հայէր 'ի վեր ընդ երկնից դուռն բացեալ ընդ դէմ,
Ինձ թըւէր թէ նա զհանդէս դիտել կամէր հանդիսադրին,
Ժըպտէր երեսն երբ 'ի գեղ ոգւոյն յառէր աստղապըսակ.
Իմաստունըն Հըմայեակ ազնիւ բողբոջըն Դիմաքսեան։

Հապա ո՞վ էր այն որ անդ բացէ անկեալ ծաղկանց վերայ.
Ոյր արեան չիկորակ չիթք ցայտեալ էին զցօղուտ ծաղկամբք,
Կարմրաթուշ այտիցն ընդ մէջ նետ մի տիգեալ սուրասըլաք,
Վիրօքն այնու զբելիար վիրաւորեաց մինչեւ 'ի մահ.
Մանուկ էր դեռ հասակաւ եւ կայր 'ի քուն նա քաղցրանինջ,
Ողջ երեսք ծաղկեալ էին կարմիր քըրտան սուրբ կայլակօք
Իբրու զկոկոն փըթթեալ վարդից չաղն 'ի վերայ յառաւօտուն.
Մօտեցայ զարթուցանել զայն, որ զարթնու 'ի ձայն փողոյն.
Ցանոյշ 'ի քնոյն ոչ զարթեաւ, ա՛հ, մանկագոյն Գնունին
[Վահան։

Սոյնպիսի տեսարան ցոյց ինձ գիշերն այն սըգալի,
Գլուխըս լըռնոյր տարափով եւ թաթաւէր ոտք իմ յարիւն,
Ի լալոյն խաւարելոյս լուսին լինէր ինձ լուսատու,
Եւ նորին լուսով շըրջեալ համարէի զՀայոց մանկտիս
Նընջեալք աստէն քաղցր 'ի քուն խրատու վարեալք Սողո—
[մոնեան.
Ոյց զոգիս երկինք քան զիս նախ համարեալ ետ ըզպըսակն.

Այսգունակ, ո՛վ մանկունք, ջրով 'ի հոգւոյն նախ մը—
[կըրտեալքն
Ցաւագան բոսորային մըկըրտեցան կըրկին արեամբ
Զնորահրաշ մըկըրտութիւն փըրկչին մարմնով 'ի մահ խաչին։
Բով սիրոյ հուրարկողին բորբոքեցաւ աստ 'ի հոգւոյն.
'Նդ մէջ անցեալ որպէս զոսկի հրով փորձեցան հոգիք սըրբոցն,
Ի ժանգոյ մեղաց սըրբեալք եղեն մաքուրք եւ լուսափայլք.
Մեռեալք՝ բայց կենդանի մըտին յերկինս առ Աստուած,
Թէ եւ յաչացս անըզգամացն աւաղեցան իբրեւ մեռեալ։
Զդուռն եթերին ' ի վերուստ բացին աստէն զուարթունք
[երկնից,
Մարմնեղէն զուարթնոց հոգիք մըտին ընդ այն աղաւնացեալ,
Առաջի հանդիսադրին կացին փառաց յաղթանակաւ,

Եւ ըղձադըն գեղեցիկ 'ի ձեռանէ տեառն ընկալան:
Աստ եւ հրեշտակքըն չարին բացին ըղդըունըս դըժոխաց:
Անդ իջին ազատացեալ հոգիք գընդին ուրացողացն.
Որ փափագեալք երկրայնոյն, առ 'ի նմանէ եւ պըսակէն
Զըրկեցան եւ եղեն ժառանգաւորք տատարոսին:
24 Ի դաշտիս Աւարայրի՝ արին Վարդան աւարառուն
Արար եւ կատարեաց զոր խօսեցաւ յատեան Պարսից.
Խրախուսեալ զընկերըս իւր դիմել 'ի մահ յօժարութեամբ,
Զոգիս նոցին աւարեալ յուրացողացըն յերամէն
Վերածեալ տարաւ յերկինս ընծայեցոյց հօր Աստուծոյ:
Եւ այսպէս յաւիտեան անուան իւրում փառաց պարծանս
Ի յերկրի եւ 'ի յերկինս յաւէրժացոյց նա քաջութեամբըն:

Դուք ըղհող դաշտիս, մանկունք, անկեալ զգետնով համ–
[բուրեցէք,
Ուր կաթիլք արեան քաջին եւ երջանիկ նորա գընդին
Ցօղեցան եւ չիջուցին զբորբոքեալ հուրըն հրապաշտից.
Որով նորոգեցան եկեղեցիք Հայաստանեայց,
Եւ յարիւն նոցին ամբիծ պայծառացան վայելչապէս:

Ահա զձեզ Թախանձանօք հրաւիրակիդ ձեր սիրավառ
Իջի այսր 'ի յերկնուստ եւ 'ի դաշտիս ճեմեցուցի
Յանդիման ձեր կըրկնակի նըկարելով զպատկեր քաջացն:
Նըմանողք լերուք եւ դուք այնպիսում վեհ առաքինեացն
Ի նոյն սէր աստուածային եւ հայրենի ջեռեալք ոգւով.
Եւ զինու վառեալք այլ իմն՝ իմաստութեան եւ հանճարոյ
Գունդ կազմեալ մատաղերամ ելէք յԱրտազ 'ի յասպարէս,
Ոչ 'ի վանել սեաւ ըզգունդն այլ ըզխաւար տըգիտութեան
Զի ճաճանչ արփւոյն անմուտ ծաւալեսցի յերկիր Հայոց.
Եւ 'ի լոյս նորա գնասջիք դուք անվաստակք 'ի դիւր շաւիղ:

Այլ ես, որ յիմ անձկալւոյն զատեալ այսչափ եղէ ընդ ձեզ,
Թռանիմ արդ սիրասլաց երթամ յերկինս առ տենչալին,
Աւետիս խընդութեան տամ Վարդանայ եւ Վահանայ
Նորազուարճ լինել յոգի ընդ նոր ձեր այդ սէր հայրենեաց:

Քաղցր էր ինձ եւ ձեզ, մանկունք, ողջոյն երկրիս Այրա–
[րատայ
Եւ 'ի յայլ տեղիս, յորում քաջքըն Հայոց հանդիսացան,
Երթալ ճեմել եւ այսպէս անդ նըւագել զհանդէս նոցին:
Այլ անդուստ բըռնադոյն սէրն ըստիպէ ընիկ հայրենւոյս,
Զիս վարեալ յԱյրարատու 'ի մայրածնունդն ածէ յերկիր.
Ուրանօր զիրկք մայրենի զիս զըգուեցին քաղցրասընոյց,
25 Եւ այն կակուղ մանրիկ մաղեալ հողն աճեցոյց զիմ
[մանկութիւն,

*Որ քաղցրիկ իմն է մարմնոյ նախ 'ի նմանէ գոլով ծընեալ։*
*Վասն որոյ անդըր փութամ ես այն հողոյն մնացեալ կարօտ,*
*Եւ զձեզ, մանկտիք նազելի, բարձեալ յոտից լերին Մասեաց*
*Տանիմ արդ կացուցանեմ անդ առ ոտիւք լերին Վարագ։*



ՀՐԱԻԻՐԱԿ

# ԱՐԱՐԱՏԵԱՆ



ՆՈՒԱԳ

*ՉՈՐՐՈՐԴ*

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

## *ՉՈՐՐՈՐԴ ՆՈՒԱԳԻՆ*



Ի չորրորդ մասինս այս՝ հրաւիրէ նախ 'ի քաղաքն Վան, եւ շուրջ ածեալ 'ի հրապարակս առ ուռենովք՝ ածէ ապա յայգեստանս. եւ երգեալ զպէսպէս պտուղս նոցին նա եւ զորթատունկս՝ հանէ 'ի լեառն Վարագ եւ ճեմեցուցեալ 'ի մենաստանս որ զնովաւ՝ դարձուցանէ 'ի հարաւ կոյս 'ի Խաչին եւ Կոռնկավանս, անտի յԱրտամետ 'ի Հայոց ձոր եւ յՈստան. ուստի հանեալ տանի 'ի Հոգւոց վանք 'ի տապան սըրբոյն Տրդատայ. ողբք հրաւիրակին եւ աղաչանք առ սուրբն. պատասխանիք նորին նախ առ նա եւ ապա առ մանկտիսն խըրբատովք հանդերձ. դարձուցեալ անտի բերէ 'ի Նարեկայ վանս եւ անդուստ յԱղթամար. ուր պատմագիրն Թովմայ Արծրունին ցուցանէ զդրօշուածս մեծագոյն տաճարին. հուսկ յետոյ ածէ 'ի Լիմ եւ 'ի Կտուց անապատս. Ներբող 'ի Գէորգ ճըգնաւորն. եւ հանեալ 'ի նոցունց յեզր ծովոյն Քաջբերունեաց՝ աղերս ածէ յինքն դարձուցեալ զդէմս բանիցն՝ կնքէ:

# ՆՈՒԱԳ

## ՉՈՐՐՈՐԴ



ԵԿԵԱԼ հասի այժմ առ քեզ, ո՛վ դու տեղի ծննդեան իմոյ,
Գաւառ Վասպուրրական եւ հռչակեալ քաղաքդ Վան:
Ըզքեզ արդ առնում 'ի յերգ եւ գեղգեղեմ երկար նուագօք,
Գամ այսպէս, ոտիւք ոգւոյս ճեմիմ 'ի վայրդ գեղեցիկ.
Գոնէ սակաւ ինչ այսու առից 'ի քէն զանձուկ սրտիս:
Յոտից լերինդ, ո՛վ մանկունք, շուրջ հայեցէք ըզքաղաքաւ,
Բա՞րէ, զի՛նչ տեսարան ձեզ երեւի գեղազուարճ
Լացելոյ 'ի յԱյրարատ աչացըդ ձեր զուարթացուցիչ:
Ի կուսէ արեւմըտեան ծով ծածանի զեփիւռ հողմով:
Յարեւելից՝ կան այգեստանք ուռիք, բարտիք դիտակաբարձ,
Հարաւոյ՝ Շամիրամայ ու Արտամիտու ճոխ բուրաստանք,
26 Ի հիւսիսոյ՝ Աւանուց խիտ ծառաստունկք ծովեզերեայ:
Այսպէս ըզբոլորիւք պար են առեալ այս տեսարանք,
Ի միջի յարմարապէս հրաշակերտեալ Վան վաղաշէն:
Այս է տեղին վայելուչ, ուր անուշակ շընչեն սըղոխք,
Զոր ծըծեալ հեշտացաւ մեծ Թագուհին այն Շամիրամ.
Եւ անդէն բիւրաւոր արուեստագէտ գործաւորաց
Հրամայէր առ ծովակիս կառուցանել զայս՝ փառաւոր:
Եւ երագ ընդ հրամանին գործն ահաւոր փութայր 'ի գլուխ.
Առ որ բազում արքայից անկարանայր ոյժ միաբերան
Զօրեցին ձեռք մեծագործ եւ առնասիրտ կընոջն այնմիկ:
Ի ճահ էր ըզձեզ, մանկտիք, նախ մուծանել 'նդ մէջ քաղա–
[քիս,
Եւ հանել անտի ապա լեռնասարաս յանառիկ բերդն,
Անդ մի առ մի ցուցանել զարմանալիս մեծագործին.
Սակայն ոչ 'ի նոսա գոն առաջին շուք շինուածոց
Գոլ երգոց արժանաւոր եւ զըննողացդ առ 'ի զարմանս:
27 Թողեալ վասն այն ըզնոսին՝ հանեմ ըզձեզ 'ի յայգես–
[տանս,
Ուր յաւէտ քաղցր է ճեմել քան 'ի քաղաքն անծառաստունկ:

Մըտէք արդ լայնափողոց 'ի հրապարակըս հովանուտ,
Յորըս շատ յըստակաջուր գնան վըտակունք դըդըշալով,
Առուակ առուակ բաժանեալ ոռոգանեն զողջ այգեստանս:
Ի զուարթ ափունս առուաց ուռենի ծառք ուղիչափիւ
Շար'իշար տընկեալ են խիտ եւ ամբարձեալ սաղարթաճոխ,
Եւ աստի ու անտի շինեալ տանց եւ շինից ածեն ըզշուք:
28 Նըստարուք այսըր, մանկտիք, առ Հին եւ Նոր աղբեր
[ակամբս,
Վայրիկ մի զով առցուք մեք ընդ հովանեօքս այս ուռենեաց:

Վա՛շ, իբրեւ զի՞ զբօսուցիկ է եւ զուարթարար գլուխ այս աղ-
[բեր,
29 Որպէ՞ս ջուրք 'ի յականէն գլգլալով բղխին 'ի դուրս·
Եւ ընդ այդ առուաց ափունս պըճնեալ մանրիկ կանաչ բուսովք,
Ուռճազուարճ մըշտափըթիթ ընդ ջըրասէր ջըրոյ կարոսս,
Եւ 'ի գնացըս պարզ վտակիդ, յոր խաղ առնուն մանր աւա-
[զունք,

Նայեցեալ զմայլեցարուք, զի՞ հեշտալի են հայելեաց:
Այսըր, ո՛հ, նըստեալ երբեմն աշակերտիս աշխատութեան,
Քաղցրախօս քնարին Հայկեան ըզհարկանելն ուսանէի·
Եւ հարեալ զայն լի յուսով եւ անձանձիր զտիւ եւ զիշեր
Ուսայ ես իւրովի մատամբ հոգւոյն ամենարուեստ,
Ում զխս անդուստ միայնում ընծայեցի սըրտիւ բոլոր:
Աւա՛ղ որ, անդ յոր ուսայ չեղեւ ինձ ժամ զայս աւաչել,
Գէթ ըմպեալ զայն անոյշ ջուր եւ շունչ առեալ 'ի ջինջ օդոյն
Երգողիս իմ ձայն պարզէր եւ քաղցրանայր Հայոց մանկտւոյն:
Մի յինէն զայսու բերեալ՝ 'ի բաց թողցի բանիցըս կարգ·
Երգեցից արդ զուռենիսդ, որ 'ի վերայ ոստոց իւրեանց
Ձերգեցիկ եւ դաշնաւոր թըռչունս երկնից հանգուցանեն
Լեալ նոցին ասպընջական եւ օթանոց խնամօք վերնոյն:
Ո՛վ, ո՞րքան զմայլի սիրտ որ ցընծայ ղարարածովք,
Մինչ նոքին 'ի դաշտաց երամ երամ գան յերեկուն,
Ի ճօճան ճիւղոց վերայ թառին հանգչին 'ի գիշերի:
Եւ մերձ յայգն երբ արուսեակ բարձըր սարէն 'ի Վարագայ
Ելանէ, եւ աւետիս տայ գծագմանէ մեծարփենւոյն·
Երագեն քան զայլսն անդէն, որ ենն արթունք եւ երգասէր,
Ծընճըղուկք ճըռուողականք, սարեկ, ծիծռունք շատախօսիկք,
Ծըռուըռան ձայն տան միմեանց եւ յառաջեն քան զբանաւորս·
Յարարչէն ուսեալ երգովք տան օրհնութիւնս հօրըն վերին
Թըռչնոց անհոգացող կուտ, կերակուր պարգեւողին:
30 'Նդ երգ նոցուն խառնի յայն պահ եւ կոչնակին ձայն
[փողոյն տխպ
Սահմանեալ խկըզբանէ 'ի ջերմեռանդ սիրոյ սուրբ հարցն·
Եւ զարթնու զուարթուն ոգին, որ յառաջէ նա քան զարեւ,
Երգակից լինի թըռչնոյ, օրհնէ ըզտէրըն սաղմոսիւք,
Եւ երթայ յեկեղեցին կալ 'ի պաշտօն գիշերաժամ:

Տատ այսչափ 'ի հրապարակս ընդ ուռենովք եւ առ աղբերս·
Մըտէք արդ 'ի մէջ այգեաց եւ պարտիզացըս պըտղաբեր,
Ես 'ի նուագ առից անդէն ազգի ազգի զնոցին պարգեւս·
Զոր կըրկին յեղանակի շնորհեն նոքին առատ 'ի պէտս:
Յամարան շոյտ գայ 'ի բեր ազնիւ ծիրան վաղահասիկ,
Զարմացայ, որ զաչըս իւր ծառոյն 'ի դեղ յառեալ դիտէ,
Որ ծիրանի եւ դեղնաթոյր գունով պըձնին ճիւղքըն բոլոր:
Մինչ մեղմով շըրնչէ հողմ ինչ եւ կամ ելեալ շարժեն մանկտիք
Խուռնօրէն 'ի վայր թափին անդէն բոլոր հասունացեալքն·

*Ժողովեն հանեն պարգեն 'ի տանեստանս դէմ արեւուն․*
*Ույր ըգչիրն 'ի կերակուրս արկեալ՝ լինի յոյժ համեմիչ։*
31 *Յետ սրմին հասունանայ չատապըտուղ եւ ալուչայն,*
*Դիւրաբեկ յոստոց ծառոյն կախին 'ի վայր ողկուզօրէն։*
*Զի՞նչ պէս պէս եւ ընդ սոսա ղամարայինսըն ոգեցից,*
32 *Զչուտահասն եւ ըզմեղրուկն ըզդեղին տանձըն քաղցրա–*
*[գոյն․*
33 *Ըզթըթուն, որ չատ ուտի եւ ըտըղտըղեկըն դիւրագիւտ,*
34 *Ըզխընծորըն չիկագոյն ծաղկաբերան հեչտատեսիլ․*
*Եւ զյոլով տեսակս այլոցն, ոյց ոչ կարեմ թըւել զանուանս։*
*Իսկ յաչուն, մինչ մերկանան ամարային ծառքն 'ի պըտղոց,*
35 *Ծոխանայ յոյժ մեծացեալ մալաղի տանձըն բըռնալիր։*
*Գան 'ի վերջն աչնան 'ի բեր եւ ձմեռնային միրգն ողջոյն*
36 *Մալաչին պընդագոյն եւ նըռնենին նարընջաձեւ,*
37 *Եւ խընծորն երկարատուկ զոր տան առ ատ պատուաս–*
*[տեալ տունկք։*
*Ոչ գան յուչ իմ ասաէն, ո՛հ, եւ զայն պըտղոցըս նըւագել,*
*Զորս անբաւ առ աչնայնով չնորհեն պարտէզք Վասպուրական․*
*Զի տարաւ յուչոյս իմոյ թըչուառաբեր պանդըխտութիւն։*
38 *Այլ յինէն ոչ մոռանին այն գինաւէտ նորեկ այգիք․*
*Բե՛ր եւ 'ի կարգ մըրգաբերացս առից 'ի յերգ եւ ըզնոսին։*
*Որ 'ի դիւր եւ վայր սպարարտ կարգաւ տընկեալ են մօտ առ*
*[մօտ,*
*Եւ որ ոչ ընդ ամուսնեաւ նըչդարենեօքըն պատատին,*
*Այլ 'ի թումբս ակօսաձեւ ուռք տարածին գեղեցկաչար․*
*Եւ զողկոյզս 'ի մայրենի հողոյն 'ի ծոց տան 'ի սընունդ։*
*Յամարան տօթաժամու մինչ հարկանի չողն ըզնորօք*
*Զեռանի մայրն 'ի ներքոյ ջեռուցանէ զիւր ըզմանկունս․*
*Եւ սպիտակ նոցին մարմինք դառնան բնաւին 'ի թոյրաթուխ։*
*Տէր այգւոյն հրաւէր կարդայ բարեկամացն 'ի յայգեկութ,*
*Ինձ վաղ դուք արդ յօգնութիւն, եկայք ասէ, ո՛վ սիրելիք․*
*Զի ահա փափկիկ մանկունք այն սեւացեալ հասուն ողկոյզք*
*Պատառին անօսրացեալ ծորի քաղցուն հողոյն 'ի ծոց։*
*Արագ է մըչակն անդէն կողովն 'ի յուս երթայ յայգին,*
*Կըթեն լընուն այգեկութք տանի թափէ նա 'ի հընձան․*
*Եւ ողկոյզք միմեանց վերայ դիզեալք ճըմլին ծանրանալով,*
*Նայիս անդէն 'ի ներքուստ 'ի դուրս բըղխեն իբրեւ զաղբիւրս*
*Շատ սիրուն կարմիր վըտակս որ վազս առնուն բարակ բարակ․*
*Եւ անցեալ ընդ խողովակ փոյթ փոյթ կաթեն 'ի յաւազան։*
*Այլ ոչ ըզզուր հընձանին կարեն լընուլ կաթուածք ըոխշտ,*
*Մինչեւ ոչ մերկէ ըզսրունս հընձանահարն եւ մըտանէ*
*Բոկանի մէջ խաղողոյն կոխէ ճըմլէ զփըխրեալ ողկոյզս․*
*Տես յայնժամ որպէ՛ս խաղան գինւոյն աղբիւրք 'ի հընձանին,*
*Եւ զօրէն ջուրց խոխոջիւն ընդ ջըրորդան թափին 'ի զուռն․*
*Բարձրանան փըրփըրադէզ մինչեւ 'ի վեր բերան դըըոյն։*
*Անդ ածեալ փութով նոր տիկ առեալ ըզնոր գինին 'ի մէջ,*
*Ցարեալ 'ի զով ներքնատուն լընուն ըզկարասըս լայնափոր,*

Յամարան եղանակի խորեն 'նդ հողով ցրրտապահիկ·
Այնուհետեւ 'ի խրախճանս յար դուարճանան Վասպուրականքն:

Հերիք է այսքան, մանկունք, ըզմըրգաբերս եւ զօրթատունկս
Արդ 'ի միջոյ այգեստանեայց ելէք 'ի վեր ընդ առապարդ,
Ինձ երգել, ձեզ 'ի նոսին ճեմել այդպէս զըւարճացած:
Աւասիկ հանեմ աստէն ըզձեզ 'ի լեառըն Վարագայ,
39 Ուր 'ի վերին Վարագ նըստեալ 'ի գլուխ աղբերըն սառ-
[նային
Ա՜հ, սըրտիւ կարօտալից երգեմ զայն լեառն ըսքանչելի:
Որ ընդ այգւոյն այգւոյն զըւարթ չընչէր կենաց իմ աճման օդ,
Որ եւ արդ եւս 'ի հեռուստ շընչէ եւ տայ չընչել երգով,
Եւ մանկտոյն հեռացելոյ զօդ հաղորդել հայրենասէր:

Մինչ երթայ ձըմեռն, եւ գայ գարուն բնութեանցըն
[զարդարիչ,
Եւ չընչեն քաղցրաշունչ հողմք եւ մերձենան ջերոտ աւուրք,
Ձիւնքըն հալին թանրախուռն ու արգանդ փակեալ բանի հո-
[ղոյն·
Ո՜վ, քանի՛ գեղ ըզգենու յայնժամ այս լեառն ամենաբոյս:
Աղբերաց ակունք բանին ջուրքըն ելեալ չըրջին ընդ մարգս,
Ճեմ առնուն կարկաջահոս եւ տան համբոյր նոր ծիլ բուսոց:
Առ եղեր ձեանց նախ ծաղկի վաղաթառամ ձիւնածաղիկ
Լեալ այլոցըն կարապետ որ ըզկնի նոր բանին զըւարթ:
40 Եւ ծաղիկն անուշահոտ ըզքենէրփիւկն ասեմ սիրուն,
Որ սիրէ կալ յարագուարճ վարձէ զվըտակ զուարթացուցիչ·
Խիտորէն 'ի ճախճախուտ տեղիս ծաղկի կապուտափայլ,
41 Ուր առ արմովք իւր յաւէժ ջուրք ծաւալին զըղզըղալով:
Իսկ չուշանըն երփնափայլ ոչ սիրելով զլեռնային վայրս
Իջանէ եւ 'ի ցածուն ձորոց հովտաց 'ի մէջ փըթթի:
Մանիշակ մանրաթերթիկ տխպարն անձին խոնարհասէր
Ձիւր կարճիկ հասակն 'ի մէջ բարձըր բուսոց թաքուցանէ·
Սակայն ըզհոտ իւր անոյշ բուրէ անդուստ 'ի վեր նոցին:
Եւ յառապարս անջըրդի ծաղկի կանաչ կարմըրաթոյր,
Գեղեցիկ տեսլեամբ եւ եթ եւ 'ի հոտոյն անմասն եւ զուրկ·
Բանաւոր մարդոյն 'ի տիպ, որ զարդարեալ է արտաքուստ,
Եւ չունի զհոտ գիտութեան առ 'ի ներքուստ բուրեալ յոգւոյն:
Առ նովաւ իբըր դըրացի բանի ծաղիկն եւ անթառամ,
Զոր ոչ հողմըն տապարախառն եւ ոչ արեւ թօշնեալ խամրէ·
Օրինակ հաստատուն եւ ժուժկալող ոգւոյն 'ի վիշտս:
Այլ մի թէ հնար է աստէն ըզբիւրազան եւ զայլ ծաղկունս
Երգել այսպէս մի առ մի, որ զարնայնի զունակ զունակ
Ոմն ըսպիտակ ոմըն կարմիր ոմըն կապոյտ ոմըն դեղին
Գունովք իւրեանց դեղաղէշ զարդարեն զայս լեառն Վարագ:
Երջանիկ հովիւն հօտիւք խայտայ 'ի մէջ հովտաց լերինս,
Ըզճակատն արեւակէզ պըճնէ յաւէժ ծաղկապըսակ:
Պարք մեղուացն երկասէր դիմեն յայս լեառն երամովին,

Ընդ աչալոյս երբ ծաղկունք շաղով շողին մարգարտափայլ
Ի վերայ նըստեալ նոցին զնիւթ ժողովեն քաղցըր մեղեր:
Իսկ զմանկտեայց հայրենւոյս ես որպիսեօ՞ք նըւագեցից·
Որ այն ինչ գայ Համբարձումն եւ նոր գեղով զարդարի լեառնս,
Եւ ճանապարհ ձիւնախից արձակ բանի Գալիլեային,
Սիրով ընկերացեալ յուխտ ելանեն նըմա յայնժամ·
Եւ 'ի վայրըս ծաղկաբեր եւ աւազուտ 'ի յառապարս
Մի զմիով վազեալ քաղեն ըղխաւարծիլ եւ ըզծաղկունս·
Երախան երախան աղբերակաց 'ի գլուխ նըստեալ
Գոյն առ գոյն յարմարելով փընջեալ չարեն ջրոյն 'ի յեզերս:
Եւ ապա սեղան կազմեալ ակումբ առնուն գեղաբոլոր,
Ըզբաժակ լընուն գինեաւ սառուցելոյ 'ի ցուրտ աղբեր,
Եւ սըրտիւ զուարթառատ յօժար միմեանց մատըռուակեալ
42 Զայս լեառըն ցանկալի երգեն տաղիւ գեղգեղաձայն:
Ո՞վ աստէն զիս, ո՛վ մանկունք, առեալ տարցի յակումբ նոցին,
Այն սիրալիր սեղանոյն զիս արասցէ ուրախակից:
43 Ըզքեզ, ո՛ քաջըդ Վիրգիլ սէր անուշակ ընդ Պառնաս—
[եանն·
Այլ զիս ո՛ւր թէ ոչ 'ի լեառըն Վարագայ յափըշտակէ·
Որ չէ տեղի դից Մուսայիցն այլ երկնաւոր սուրբ հրեշտակացն:
Զայսոսիկ թողում ես արդ զաղբիւրս ծաղկունս երկրաւոր
[ձիրս
Որ չեն իսկ պարծանք յաւէժ բնութեամբ իւրեանց դիւրա—
[թառամ·
Զայն առնում երգել այժմիկ, որ սմա փառք են յաւէրժական,
44 Զգալիլեայն, յորմէ փայտին կենաց նըշան պարգեւեցաւ:
Արիք հապա, ո՛վ մանկունք, ելցուք 'ի գլուխ նորին սիրով,
Տենչանօք տացուք համբոյր այն խաչակիր սըրբոյ վիմին,
Եւ տեղւոյն ասպընջական խաչին բեռամբ աշխատելոցն
Թագազարմից կուսանացն, որ 'ի թագէն թարշամելի
Փախուցեալ եկին այսրէն ղողեալ 'ի գլուխ Գալիլեայիս:
Եւ կենսատուր փայտին մասն, որ ձօն տըւեալ էր Հռիփսիմեայ,
Աստ վերին ակնարկութեամբըն պահեցաւ իբրեւ յաւանդ·
Այս պարգեւ 'ի տեառնէ գոլ պահապան երկրիս Հայոց·
Այսու իսկ հանդունատիպ լեառն այս գըտաւ Գողգոթային
Զօրհնեալ փայտըն տէրունեան կըրեալ 'ի գլուխ պսակօրէն:
45 Իջեալ աստի մըտցուք արդ եւ յանձուկ այր Թադիկ
[սուրբ հօրն,
Ուր անհատ աղօթիւք յայտնեցաւ փայտըն փըրկական
Երեւեալ 'ի գլուխ լերինս խաչանըշան լուսով պայծառ·
Ուստ 'ի վայր ցոլանալով անմահ զօրացըն նուրբ թեւօք
Եկեալ եմուտ 'ի տաճարն, յոր աղօթէր հայրըն հըսկող:
Բա՞բէ, քանի՛ բազմահոյզ հանդէս լինէր այսըր յայնժամ·
Իշխանք եւ ժողովուրդք 'ի քաղաքէն խուռն ընթացեալ
Ի տես հրաշից զարմացեալ սքանչանային ամենեքեան·
Եւ զուարճախառն երկիւղիւ յերկիր անկեալ համբուրէին
Ըզմայլեալք փըրկչին հոտովն, որ 'ի նմանէ բուրէր անոյշ·

Եւ լընոյր գլեառըն ողջոյն որպէս երբեմն Գողգոթա,
Ընդ յայտնել փայտին բոլոր պատանեկին նոր յարութեամբն։
Առ այս պարգեւ գերագոյն խընդաց ողջոյն Հայոց աշխարհ,
Ցընծացին յաւէտ նոքա որ զայս տեսին աչօք իւրեանց.
Եւ անդէն 'ի տեղիս այս, յոր հանգեաւ խաչն աստուածաբարձ
Նոր տաճար կառուցին խորանազարդ կամարաբերձ,
Եւ ընդ՝ւաւ մենաստան, որ կոչեցաւ վերին Վարագ։
Դուք սակայն արդ, ո՛ւր տաճարն, ո՛ւր մենաստան, հարցէք,
[մանկունք։
Կան ահա, ո՞չ, տեսանէք, միթէ չժուժա՞յք հայել 'ի կերպն,
Կան ահա, ոչ 'ի կամարն, այլ 'ի յերկրի քարինք սըփռեալ
Ինձ 'ի յողբ եւ ձեզ վերայ կոտորելոցըդ հառաչել։
Զայս գիտէ՞ք թէ ո՛ արար, յաջորդող դարն աշխարհաւէր,
Յորում ողջ լերինք Հայոց, ո՛հ, մերկացան 'ի միանձանցն.
46 Յայնժամ եւ ոմն անըզգամ տեսեալ բնաւին ամայացեալ
Առ 'ի պէտս իւր շինուածոյն քակեաց ըզսա ոչ երկուցեալ
Ի խաչէն, որ չոյտ նըմա ետ ըզպատիժն արժանահաս։
Ընդ երկայն եւ ղառ 'ի վայր ճեմեալ 'ի ձորըդ ծաղկաբոյս
47 Իջեալ գնասցուք, ո՛վ մանկտիք, եւ 'ի ստորին Վարա—
[գըն մեծ,
Որ փառաւորն է եւ պայծառ 'ի մէջ բոլոր մենաստանաց.
Եւ պարծի զոլ հաւասար իջման տեղւոյն Այրարատայ
Լուսով աստուածեղէն պատուեալ յերկնուստ որպէս ըզնա։
Քանզի այս է տէրունի տեղին յորում երկոտասան
Լուսոյ սիւնքըն չողաձեւ երեւեցան յայտնատեսիլ.
Իսկ եւ իսկ այսըր հասեալ պաշտօնասէր իշխանաց խումբ
Հիմնեցին եւ նոր աստէն տաճարըս եօթն հրաշանորոգ
Ի յաւէժ յիշատակ մեծամեծացն աստուածայնոյ
Անդուստ իսկըզբանէ միշտ երեւեալ 'ի Հայաստան։
Ի մէջ միում այս խորանաց շինեալ յանուն սուրբ Գէորգեայ,
Հանգուցեալ կան գետազարձ Հայրապետին մերոյ Ներշխարք.
Որ Ներշանաւըն հրաշաւոր արդեւ ըզդեսըն յորդաղէմ։
48 Հուպ նըմին հանգչին ոսկերք եւ արքային Սենեքերիմ
Նորուն, որ զայս մենաստան նոր նորոգեաց վայելչապէս.
Եւ ելից բազմերամ պայծառ դասուք կրօնաւորաց։
Որ աւա՜ղ, գլխ՛րդ զարդիս նուազունք մնացին 'ի հարիւրոցն,
Այդպէս, ո՛հ, սուգ ըզգենուն սենեակք նոցին փակեալ դըրօք.
Եւ 'ի ներքուստ աղօթից այլ ոչ լըսին քաղցըր մըրմունջք։
Խնայիչ եւ կարի ժլատ եղեր այդչափ, ո՛վ Հայաստան,
Յանձնասէր զարոյս յետին Թողեր Թափուր ըզմենաստանս։
Այդպէս չէիր դու երբեմն. այլ յոյժ առատ եւ զուարթամիտ,
Որաչեալ զըն՞տիրան 'ի քե՛ն պարգեւէիր նոցին յօժար.
Թողում այժմ ըզպարգեւեալդ եւ 'ի նոցունց քարշեալ հանես
Եւ զխիտ նոցին առ 'ի քեզ յանգուցանես հակեալ յաշխարհ։

Ելէք արդ 'ի Վարագայ, զըստորատով լերինս քերեալ

49 Առ Շուշանիւ Կարմըրորաւ անցեալ գնասցուք 'ի Ձո–
[ռովանք
Հիմնարկեալ 'ի Գրիգորէն 'ի մէջ հովտին շուշանաբեր,
Մինչ չըրջեալ ինքնին անձամբ կանգնէր տաճարս ամենուրեք:
Եւ սըրբոյն՝ սիրելի երեւելով ցանկալի վայրս
Ոչ սակաւ եւ ինքն այսրէն մընայր վարուք ճըգնողական.
Որ եւ կայ աւասիկ իւր մենարան 'ի վեր վանիցս.
Մերձ նըմին նորուն շնորհիւն աղբիւր բըխեալ յոյժ բարեհամ:
Տեսէք թէ զի՞ վայելուչ է վայր փոքրիկ մենաստանիս,
Ի յերկուց կողմանց լերինք հովանանան բարձրագագաթ,
Իսկ ընդ հարաւ եւ ընդ հիւսիս ծործոր է յոյժ երկայնաձիգ.
Եւ աստի անտի ջրաբուխ լերանց կողից վիժեալ վըտակդ
Ի խոխոմըս միացեալ խուռն ընթանան կարկաջասահ,
Եւ չըփեալ թափ ընդ քարինս պարզեալ զըտին թեթեւանան:
Տեսէ՛ք եւ զընկուզիս եւ զայլ բազում վարսաւոր տունկս,
Ինքնաբոյս անտառապէս ըզբոլորիւք վանից բուսեալք,
Եւ ընդ լերանց բարձրագոյն եւ հովանիք լեալ են նոքին:
Նա քանի՛ զուարթաբեր է այդ ճախրահոս վըտակ ձորոյդ,
Սառնասոյր եւ սառնորակ 'ի ձիւնեղէն լերանց իջեալ.
Ընդ ձայնից սահանաց ջուրց եւ սօսափիւն ծառոց խառնեալ
Զի՞ հեշտանս բերեն ունկան եւ զուարճութիւն սըրտի, ման–
[կունք,
Երանի՛ ուխտաւորացն որ 'ի տօնի սուրբ Գրիգորին
Ի քաղաքէն եւ գիւղից ջերմըն սիրով դիմեալ գան յուխտ.
Եւ բազմին դաս առ դաս առ հովանեօքըս հեշտալի:
Ըզպատիւ սըրբոյն եւ զուխտս ոչ մոռանան համեստագոյնքն,
Անհամեստքըն մոռացեալ մարմնով եւ եթ հեշտանան աստ:

Ահա 'ի լեառըն Վարագայ եւ 'ի նորին 'ի մենաստանս
Շըրջեցայք, ո՛վ մանկունք, եւ զուարճալից եղէք սըտիւ:
Ժամ է դառնալ այժմ աստէն 'ի հարաւոյ կոյս քաղաքիս
50 Ի խաչին վանս, ուր անդ եւս դադարեցան սուրբ
[Հռիփսիմեանքն,
Ուր շնորհիւ բըժըշկութեան աղբիւր բըղխեալ կայ անտանօր.
Եւ 'ի ջուր նորին՝ ջերմոտ թէ լըւասցի ջերմ հաւատով՝
Իսկ եւ իսկ թողու զնա ջերմն եւ դիւր լինի տագնապելոյն:
51 Գեղեցիկ եւ Կոռնկավանքն է որ հանդէպ Ջըրըստանայ
Բարձրադահ բըլրոյն 'ի գլուխ 'ի կրօնասէր հարցըն շինեալ.
Թէ զինւոյն սուրբ հրաշալուր պատմեն զթըռչնոյ ընկերասէր,
Թէ զինւոյն սուրբ խորհըրդեանն 'ի պակասիլ յաւուր միում՝
Շըւարեալ մընայր անդէն նըւիրական պատարագիչն:
Այլ որ 'ի ձեռն ագռաւոյն հաց առաքէր Եղիային,
Զգիտեմ նոյն խորդոյն 'ի կտուց ուստի՞ տըւեալ զողկոյզ մի
[սուրբ՝
Շոյտ յըղէր շըւարելոյն սպասաւորել իւր խորհըրդեանն:
Զեւ ըղձեղ յայլ վանորայս տարեալ աստուստ՝ ինձ կամ է
[Նախ

52 Տանել 'ի յԱրտամետ յԱրտաշիսէն շինեալ աւան·
Որ ահա մօտ է մեզ եւ երեւին ծովուն յեզեր
Բուրաստանք իւր բերունակ պէս պէս տընկովք ուռճազարդ-
[եալ,
Եւ մըրգովք մեղրահամ դրախտին բերէ զնմանութիւն·
Այլ ոռոգին յաղբերէն ակնավըճիտ եւ յորդաբուխ,
53 Զոր բերան սըրբոյն երբեմն անպատկառիցն առ 'ի պա-
[տիժ
Անիծեալ ցամաքեցոյց, թէպէտ յետոյ ցոյց եւ ըղձութն:
Ի մէջ պըտղոց սորին բոլոր է պատուական եւ զբօսուցիկ
Ծոխածիր առատութեամբն եւ սեպհական ազնիւ ծըրիւքն
Բոլորչի բուրազըւարթ ուանուշահամ կարմիր խընձորն:
Որ յորժամ գայ Վարդավառն եւ արեւուն սաստկանայ շողն՝
Շիկնին հասունացեալ դառնան բնաւին յարիւներանգ,
Եւ ճղալից լեալ ըղծառոյն կարմիր կարմիր կախին 'ի վայր·
Զանձրանայ պարտիզպան 'ի թօթափել եւ ժողովել,
Գան խըռնին նաւքն 'ի ծովու եւ կարաւանքն 'ի ցամաքի,
Պատարուն բեռնաւորեալ ածեն վաճառ հեռաւորացն:
Ահա բերք քՀայոց երկրին արդար ազատ 'ի դըժրանաց,
Այսպէս ամի ամի երկրագործին շնորհեալ 'ի պէտս:

Ելէք, մանկտիք, յԱրտամիտու ելէք հասաք 'ի Հայոց ձոր
Յասպարէզ յաղթողական մեծ դիւցազին մերում Հայկայ
Գոռ ոգւոյն ամբարտաւան լեալ արգելիչ արշաւանացն:
Եւ տեղին յոր վառեալ սիրտ կորովոյն քաջազանգուր՝
Խաղացոյց ընդ երակունս արիւն ջերմիկ 'ի քաջ բազուկն·
Որ գլայնալիճըն լի քարշեալ գնետըն սլացոյց 'ի սիրտըն սէգ·
'Նդ ամբարտակին կործանեալ կործանեցոյց եւ ըզգըտիչն·
Եւ յաղթական իւր բազկին յաւերժանալ փառաց պարծանք
Գերդաստան նոր գեղեցիկ ատէն կանգնէր յաղթողըն Հայկ:
Դուք նորին սիրուն սերունդք նախնոյն ըզտիպ բերէք յանձինս,
Ոչ նոյնպէս յաղթել Բէլայ այլ գործակցին Բելիարայ·
Եւ անժոյժ կրից եւ կամաց, որ բըռնագոյն են քան ըզԲէլ:
Թէ յաղթող լիջիք սոցին ոչ 'ի յերկրի ձեզ գերդաստանք,
Այլ 'ի յերկինս կանգնին անեղծ յաղթականաց 'հանդիսադրէն:
Տեսանէ՞ք թէ որպիսի՛ ջրաւէտ տեղի է Հայոց ձոր,
54 Անկըղայ գետ քաղցրաջուր եւ մեծ առուն Շամիրամայ
Լըցեալ գան դարիւ դարիւ յարբումն իւրոց դաշտորէից:
Գարնայնի մինչ գայ Մայիս եւ ջուր գետոյս առատանայ
55 Ի ծովէն ձըկունքն 'ի մէջ խուռըն խաղան երամօրէն,
Իբրեւ 'ի զբօս ինչ ելեալ կայտիռ ածեն յանուշակ ջուր:
Եւ 'ի կողմս, որ 'ի կակուղ ուռեաց հիւսեն ուռկանաւորքն,
Անկանին ըսպըրդելով եւ լի ձըկամբք հանեն 'ի դուրս·
Պարգեւ առատ Մայիսին բաւեալ մինչեւ 'ի գլուխ տարւոյն:
Այս գետովս յայսկոյս յայնկոյս 'ի դաշտավայրս պարարտահող
Երբեմըն շատ մօտ 'ի մօտ շինեալ էին գեղաստանեայք·
Այլ համակ փարթամ էին եղնամոլօք եւ մըշակօք·

Դուք յայնժամ տեսանէիք զայս ջրբաբբի արտոց բուսակս
Հասկագեղ եւ բարձրաոճ մինչեւ 'ի չափ մարդահասակ:
Վա՛յ կարդայր մըշակն անձին, քաղցր էր վիժանք դառըն
[քըրտանց,
Բաջաձիգ մերկաբազուկ ըզգերանդին յաջ եւ յահեակ
Հարկանէր, եւ բարդ 'ի բարդ միմեանց վերայ դիզէր զորայս:
Զի՞ եղան, ո՛հ, 'ի հազարաց հազիւ կան արդ քանի մի գիւղք,
Եւ այն յոյժ աղքատին տարակուսեալ անպիտոյիւք.
Կարօտ են զոյգ մի եզանց հերկել գիւրեանց կորդ արտորայս,
Կարօտ են նա եւ սերման թէ եւ բահիւ բրիցեն դոյգն ինչ:
Զովային ծիծաղծաւալ առ ծովափամբըդ ճեմելով
Երթիցուք յազատ Ոստան մայրաքաղաքն Ռըըշտունեաց
Յարքայէն Արծրունեան շինեալ 'ի վայր բարձրադիտակ.
Ընդ որ քաղցր օդոց փըչմունք շընչէն յաւէժ յամէն կողմանց:
Լեառն Արտոս ձիւնապաճոյճ կայ 'ի կուսէ հարաւայնոյ,
Որ զղալարիս եւ զծաղկունս 'ի դարնայնէ մինչեւ յաշուն
Նոր 'ի նորոյ բուսուցեալ շնորհէր մերում Թագաւորաց:
Ի կողից իւր առ ձիւնովք 'ի դուրս բըղխին առուակք հազար,
Իջանեն սահանահոս 'ի հրապարակըս Ոստանայ.
Յոռոգումն անդոց այգեաց նորին երբեմն ոչ բաւէին,
Ի զուր, ափսո՜ս, այժմ այդ ջուրք անցեալ գընան թափին 'ի
[ծովն:
Զաչս 'ի յՈստան դարձուցեալ՝ քաջիկ ըզդա նըշմարեցէք,
Մի թէ ա՛յդ իցէ, մանկունք, այն մեծ քաղաք արքայաճոխ.
Ոստան, որ չա՛տ զոստանիկս ծընեալ 'ի ծոց իւր սնուցանէր,
Ոստան, որ է՛ր բնակաւոր տեղի սպայից ազատազունդ,
Ոստան, որ գունդըս խըմբեալ յազատ տանէ յըղէր 'ի մարտ.
Արդ 'ի սոցունց մերկացեալ եղեւ տեղի սոսկականաց,
Ապաշուք դարձան բոլոր եւ հոյակապ շինուածքըն իւր:
Ո՛ւր են այժմ այն մեծաշէն բարձր ապարանք ճոխապաճոյճ,
Ո՛ւր որ անդ 'ի գագաթան իւր ամրոցին ծովահայեաց
Այն տաճար եւ ճեմարան ույր հրաշագան էր յօրինուածն.
Որմունք համայն ոսկեզարդ եւ պաճուճեալ պերճ նըկարովք,
Դրունքն էին բարձրակամար հրաւէր տային օդոց 'ի ներքս
Զով շընչել արքային, որ անդ ճեմէր նախարարօքն:
Լուսանցոյց շողախաղաց յարմար բացեալք 'ի ծովըն կոյս,
Ընդ այգւոյն եւ ընդ երեկ յելս եւ 'ի մուտ արեգական
Ծիրանի նըշոյլք լուսոյն ծովուն վերայ մինչ ծաղէին,
Եւ անդուստ 'ի լուսամտից շող տաճարին 'ի սիրտ շողեալ
Զի՞, մանկունք, այն գեղերփնեալ նըկարք որմոց գունակ
[գունակ
Փայլ 'ի փայլ շողշողելով շըրջշըրջէին ակնախըտիղ:
Այլ ո՛ւր են այժմ այսոքիկ, ո՛ւր են քո շուք, Ոստան քաղաք,
Անցին գնացին. ողբերգու, զի՞ դու յինէն հարցանես զայդ:
Ես որպէս ծաղիկ ծաղկեալ 'ի գարնայնի վայրիկ մի ժամ,
Ի գաւառիս Ռըըշտունեաց երեւեցայ պայծառաշէն.
Եկըն աշուն, զի այսպէս թառամելով թօթափեցայ:

*Անթարշամ էին փառօք երբ թեւ արծուոյն հովանանայր*
*Ի վերայ իմ, եւ պահէր զիս 'ի հողմոցըն տապախարշ:*
*Իսկ յորժամ յերկնից արեւն եւ 'ի յերկրէ թըշնամեաց նետք*
*Զթեւս արծուոյն բարձրապարու, որ մինչ ճախրէր հոլա–*
*[թեւեալ,*
*Հարին եւ թեւաթափ վայր ընկեցին 'ի բարձրութեանցն.*
*Եղո՛ւկ զիս, յայնժամ եւ ես մնացի բնաւին անպատըսպար,*
*Շընչեցին հողմունք հինից բախեալ սաստիկ բունոյ արծուոյն*
*Անդուստ արկին 'ի վայր զեղեալս յաւէտ 'ի բարձրութիւնս.*
*Զի չկարէ կալ հաստատուն, որ բարձրանայ յանիրաւի:*
*Այսպէս ահա, ողբերգակ, ծաղիկ փառացն իմ թափեցաւ,*
*Փոխանակ ապարանիցն եւ գեղաշուք տաճարին այն*
56 *Այդ ցածուն խըրթին խըրճիթք յիս մընացին չինա–*
*[կանաց:*

*Արի՛ք մի յամէք յՈստան, օ՛ն ըշտապով ելէք, մանկունք,*
*Զի մի եւ սա ընդ երկար հեծեալ զթառանչ հանցէ ցաւոց,*
*Կըրըին աստ ողբանըւէր նըստջիք 'ի լաց իբրու յԱնին:*
*Վասն որոյ ելէք մի մնայք եւ 'նդ Առնոսայ անցեալ ընդ սարն*
*Իջցուք 'ի Հոգւոց Վանք վաղակառոյց հին մենաստան*
*Հիմնեցեալ 'ի նախուստ յառաքելոյն Բարթողիմէ*
*Խորագոյն 'ի ծործորին եւ առ Տիգրիս դրախտին գետովն:*
*Եւ ի նմա հանդուցաւ կուսին պատկեր կենդանագիր*
*Կուսանացն առաքինի լեալ կուսաստան այնուհետեւ:*
*Մըտէք նախ, մանկունք, 'ի մէջ սուրբ տաճարիս մօրն Յիսուսի,*
*Պատկերին աստուածահուպ տենչիւ համբոյր նըւիրեցէք:*
*Ելեալ ապա երթիցուք 'ի ցած մատուռն, որ երեւի,*
57 *Մեկուսի եւ 'ի բացէ չինեալ յայնկոյս առ գիտակաւն.*
*Ինքըն փոքր, այլ զօրըն մեծ առ ընդ իւրեւ հանգուցանէ,*
*Ինքն անշուք, սակայն գըլխոյն ամենաշուք՝ հովանանայ:*
*Այսըր յայդ իսկ եկեալ եմք թողլով անդէն ըզմերձակայսն,*
*Այլ ո՞ւր, ո՛ մանկունք, զայդ իւրովի դուք իմասջիք:*
*Խոնարհեալ ըզգլուխըս ձեր մըտէք 'ի ներքըս սուրբ մատրանդ,*
*Ո՞յր է հարցէք աւասիկ, ո՛յր է չիրիմդ հըսկայաշուք,*
*Եւ ո՞վ 'ի դմա եդեալն 'ի դիւցազանցն Այրարատայ:*
*Մեռեալ է, դեռ հասակին շուքն 'ի վերայ չիրմին փայլի,*
*Գլուխն եդեալ 'ի մատրան սրունքըն ձըգեալ դրանէն 'ի դուրս,*
*Զի մարմնոյն տիք սօսատիպ ոչ պարագրի յանձուկ տեղւոջ,*
58 *Գոգցես հասակն է պերճ վեհ արքային մեր Տըրդատայ:*
*Հա՛, մանկունք, նորին է իսկ, շուրջ ըզդովաւ նըստարուք*
*[յողբ,*
*Սըրտիւ ես աղէկտոր կոչեմ լալով ըզլըռեցեալդ,*
*Մինչեւ դըմա տաց խօսել եւ զարթուցից 'ի քնարանէդ*
*Զայն տալ ինձ ողբերգակիս թէ լըռեցո զքնարիդ քո ձայն:*
*Իսկ դուք 'ի հող տապանիդ պինդ մածուցէք զերեսըս ձեր,*
*Յօղեցէք կաթիլս յաչաց վեհին յոսկերադ աճիւնացեալ,*
*Գէթ սիրով այսու զնոցին մեք հատուցցուք այժմ ըզպարտիս*

Գոլ որդիք այնոցիկ, որ գտան առ դա ապախտաւոր:
Մահ որո՞ւմ, բարերարին, ո՛հ, նիւթեցին տիրադրուժքն,
Ո՞ւմ դարան, սիրելոյն, բա՞րէ, Թագոյց տուն Սիսակեան,
Եւ ուստի՞ դառըն բաժակ, ա՛հ, յընտանի դաւաճանաց:
Զոյժ մարմնոյս այս վիմեղէն, զոր լուծանել չկարաց Պարսիկ,
Հայն՝ իւր համազգին դիւրաւ ելոյծ այսպէս 'ի հող:
Այն բազուկն անպարտելի զոռ Թըշնամեացն ահացուցիչ
Ի դրուժան տոհմից իւրոց, աւա՛ղ, փուլթով դարձաւ նըկուն:
Մոռացաւ Այրարատ ըզբացեալ գիրկ սիրոյ սորին.
Որով զինքն եւ զիւր մանկտիս դըգուէր գըլթով հայրանըման.
Եւ զերդ զմայր որ 'ի գիրկ զորդեակ տածէ գորովապէս,
Նոյնպիսեօք եւ յանձանձէր ըզտուն Հայկեան մեծ Տըրդատէս:
Որսացան դարանակալքն առիւծ հըզօր զԱրշակունիս,
Որ ըզօրջն առ Մասիսիւ եղեալ մռընչէր ահեղագոչ,
Ի ձայնէն գազանք երկրի խուճապէին առ 'ի փախուստ
Յայրարատայ սահմանէն ցորչափ լըսէր ձայն առիւծոյս:
Ի ձեռն աւին դաւողք հատու զտապարըն նենգութեան
Հարին եւ հատին զծառըս բարձրացեալ 'ի Հայաստան,
Ոյր 'ի ստեղունս ամրոստեան, ո՛հ, Թառէին Հայոց մանկտիք:
Վասն այս դուք լացէք լացէք սաստ, ո՛վ մանկունք, մեծա— [մըռունչ
Զայն ոգիսն ապաշնորհ, որ այսպիսում բարերարի
Զայս փոխարէն հատուցին, ո՞վ հատուցմանս անօրինակ:
Ո՞ սարսափելի դառն յիշատակ միշտ անմոռաց,
Մինչեւ յե՞րբ դարուց 'ի դարըս հոլովեալ զհետ մեր դայցես,
Մինչեւ յե՞րբ Հայոց ունկան բողոք ածես քստըմնելի.
Կաց անդէն, մի դար յառաջ ծածկեալ 'ի ծոց ժամանակաց,
Կաց, ժըտեմ, մի յաւելուր բասրանս բերել մեզ յաւիտեան:

Այլ ինձ դու ձա՛յն տուր այժմիկ ինձ որ վերայ չիրմիդ անկ— [եալ
Թալկանամ ուշաղնաց մինչ յուշ ածեմ զվախճան վեհիդ.
Զայն տուր ինձ արեւդ Հայոց, որ սըրտառուչ մըտեր 'ի մայր,
Զչառաւիղըս քո բոլոր ամփոփեցեր յԱյրարատայ,
Ճրագի մի չափ եւ նըշոյլ չԹողեր 'ի լոյս տան Թորգոմեան:
Զարթիր որ ծանըր քընով դու նինջ առնուս 'ի քնարանիս,
Ըզհասակդ հըսկայակերպ 'ի նեղ մատրանս կըծկեալ այդպէս.
Ա՞յդչափ 'ի քէն սիրեալ քո Այրարատ սիրեաց ըզքեզ,
Զայս խոնարհ եւ նըւաստիկ մատո՞ւռ չափեաց չիրմիդ բաժին,
Զափողիդ նըմա զանբաւ տեղիս տիգաւըդ քաջութեան
Բիւրաւոր ժողովրդոց նորին լինել 'ի բնակութիւն:
Վայելէ՛ր նըմա յաւէտ 'ի լայնածիր ծոցին իւրում
Արժանւոյդ՝ հոյակապ եւ փառաւոր կանգնել տաճար
Քանդակեալ 'ի ճակատին զանմահ անունըդ Մասիսին:
Այլ Թէ հարքըն մեր մեղան ըզսիրելիդ անկուշելով
Յագեալ եւ պարարեալ 'ի ձեռըն մեծ բարերարիդ.
Մեք՝ որդիք նոցին այսօր առ քո տապան դիմեալ

Ի դիմաց հարցըն մերոց ըղձողութիւն ժըտեմք լալով.
Լեր ներող նոցին եւ մեզ քոյին ոգւովըդ վեհանձման:
Եւ դու, ո՛վ քրիստոսասէր հոգի մարմնոյս խաչազգեստեալ,
Տուն Թէպէտ եղբօր մարմնոյդ անձուկ է յոյժ ու անխառունակ,
Քոյդ սակայն որ յերկինս անեղաշէն է եւ պայծառ.
Հաշտ այտի հայեաց առ մեզ լեր բարեխօս առ այցելուն,
Մի մոռանար մի մոռանար ըղձիրելիդ քո զԱյրարատ:
Դարձիր որ յերկնից լեառն ոչ 'ի Սեպուհ փախեար 'ի մէնջ,
Յայդըր մի եւ այժմիկ դու զանդատիր Գրիգորին յունկն.
Փոխեցաք մեք յանբարի բնութեանց մերոց միշտ բարձրայօն
Յանուշակ բնութիւն սիրոյ որ տայ սիրել զաէրըդ սըրտիւ:
Ոչ այսուհետեւ խառնեմք ըղձոյն քեզ մահառիթ.
Գիտացաք, մահուամբ գըլխոյդ մահ սըփռեցաւ ընդ ողջ մարմինն,
Գիտացաք, զի 'նդ քոյդ կենաց կարճել եւ կեանք մեր կար-ճեցաւ:
Զայն ուրեմն այտի յերկնուստ արդ լըսեցո զներողութեանդ,
Եւ զըղջութիւնդ Թախծալից լոյծ աւասիկ հարուստ ամաց,
Յայրարատ դարձո զերեսդ, յորմէ ծածկեալ ելեր յայնժամ:

Զի՞ ձայնիւըդ յորդորիւն զոչես յերկրէ, ա՛յ ողբերգակ,
Զի՞ չԹողուս եղբօրդ իմոյ նընջել հանգիստ 'ի տապանիդ,
Եւ զի՞ զիմ, որ յերկնից զահն ընդ Քրիստոսի Թագաւորեմ,
Ըզվախճան յուշ ածեալ դու Թալկանաս ուշամոռաց:
Ես յոյժ ուրախ եմ ընդ այն, որ զիս հանիք յԱյրարատայ,
Տէրն ետ ինձ փոխան նորին զգաւառն երկնից ամենատենչ,
Ուրանօր անտըրտում Թագաւորեմ յաւէրժաբար:
Անդ ոչ դոյ դաւաճան ոչ տիրադրուժ երախտամոռ,
Ոչ եւ բաժակ մահադոյժ եւ կամ աԹոռ ժանտ եւ դըժրող.
Այլ զըւարճ անվիշտ վիճակ յաւէրժակից ընդ հրեշտակացն,
Այլ անմահ երանալից փառք անպատում տիրապատրաստ:
Զի՞ եւ քեզ կըսկիծ է յոյժ առ ապաշուք չիրմիդ եղբօրս,
Շատ է այդ բաժին յերկրի մարմնոյդ իմոյ հողապատեան,
Թող առայժմ հանգիցէ դա 'ի մայրենի հողոյն 'ի ծոց:
Գայ գարուն զամ ես յայնժամ եւ զեղբայրիկդ իմ բողբոջեալ
Առնում յանձուկ 'ի տանէդ հանեմ յերկինս լայնատարած
Ի տուն հօրըն Քրիստոսի ուր օԹեւանք բազում են յոյժ.
Արձակ արձակ 'ի նոսին Թող ճեմ առցեն սրունքըդ կըծեալ:
Ոչ պիտին տաճար դըմա որ երկնայնոյս է ցանկացող,
Այդ եւ եԹ այնոցիկ, որ 'ի սմանէ վրիպեալ են յոյժ,
Եւ ըզյոյս իւրեանց միայն լընուլ կամին երկրաւորօքդ:
  Իսկ որ արդ վասն իմ հոգւոյս ուրախ լինել՝ ես ասացի
Ընդ հանել նոցին փուԹով 'ի հայրենիս այս անտըրտում.
Այլ երբ հայիմ եւ յերկնուստ յիմդ Այրարատ՝ չարժիմ 'ի լաց,
Տեսանեմ խպառ Թափուր 'ի բիւրաւոր ժողովըրդոց,
Տեսանեմ խպառ մերկեալ յիւր ճոխ փառաց նախանձարկու:
Հեծեծեմ 'ի վերայ վանորէից, աւերակաց,

*Զորս լուսատուին Հօր ճրգունք եւ իմ կանգնեալ զարդարեցին,*
*Հառաչեալ յոգւոց հանեմ եւ 'ի վերայ ճոխ գաւառացն,*
*Ոյց կառավար էին իշխանք չորեքհարիւր արքայաշուք:*
*Լամ եւ հոգիս մորմոքի զմէն մի զարմից Նախարարացն,*
*Առաւել եւ յոյժ կարի զտոհմին իմոյ Արշակունեան,*
*Որոց ճետք եւ շառաւիղք համայնաջինջ ըսպառեցան,*
*Եւ զանուանս աշխարհալուր, ո՛հ, մոռացաւ մանկտին անգամ:*
*Ես վասն այն սուգ ըզգենում եւ յողբ նըստիմ՝ Թէպէտ յերկինս,*
*Ինձ այս տեղիք ուրախաբեր դառնան տըխուր տեսարանք·*
*Եւ ցօղեմ յամպոց սիրոյս շաղ 'ի վերայ երկրիդ Հայոց՝*
*Հեղեալ արտօսր 'ի յերկինս առ աթոռով պետականին·*
*Նոր գուցէ զուարթացուցին ըզթառամեալդ իմ Հայաստան:*
*Բըղխեսցին եւ յիւր լերանցդ 'ի վեր աղբիւրք հայրենասէր,*
*Վըտակունքն եկեալ 'ի մի յորդոր գնասցեն գետահետեալ,*
*Ընթասցին իբրեւ զԵփրատ, Երասխ 'ի մէջ խոնարհ դաշտացդ,*
*Եւ երկրիդ ծարաւելոյ տացեն ըզջուր առատ առատ,*
*Ծըծեալ փըխրին եւ բերուն հողոյդ 'ի դուրս բողբոջեսցէ*
*Ի ծորոյն իւրոյ զցորեան սովեցելոյ մանկտւոյդ 'ի հաց·*
*Կերիցեն կըշտապինդ եւ յաւիտեան մի քաղցիցին:*

*Ընդ ձեզ արդ ժամ է խօսիլ, Հայկեան բողբողջք 'ի հող օտար,*
*Որ ըզճրագ լուսոյն մըտաց լուցեալ ելեալ էք 'ի խընդիր*
*Գանձուն կորուսելոյ յԱրամեան տուն գիշերացեալ:*
*Մի կասիք մի կասիք 'ի ստէպ ըստէպ յորոնելոյդ*
*Կարծելով թէ ոչ 'ի տան կայ թաքուցեալ գանձ հայրենեաց:*
*Ո՛չ, 'ի դմա խորեալ է այժմ հողով խաւար տըգիտութեան.*
*Թէ միայն զիւղ 'ի ճրագիդ յաւելուցուք ըզալէրն ասեմ,*
*Շոյտ ըզնա հարուստ լուսով դորին կարէք դուք գըտանել:*
*Այլ միթէ ընդ այս գանձուն եւ զի՞ս խընդրէք լեառն 'ի Սե–*
*[պուհ*
*Ողոքեալ նոր այդ սիրով ընդ փոխիլ ձեր բնութիւն յանոյշ·*
*Բայց ոչ այլ իմ լուսատուն թողու զիս՝ պինդ գըրկեալ 'ի*
*[գիրկն,*
*Ինձ 'ի դէմըս բերելով զհարուած նետին եւ ըզբաժակն:*
*Ջէ պիտոյ եւ ձեզ այլ զօրեղ բազուկս դէմ թըշնամեաց,*
*Բարձան այժմ 'ի յերկրէ Շապուհ պարսիկ եւ Գեթռեհոն·*
*Ընդ հողմոցըն բըռնաշունչ արդ չընչեն օդք խաղաղասիք·*
*Յորում տէրըն երեւի Մասեաց 'ի գլուխ զըթով իւրով*
*Ի Սեպուհ լեռնէն երկնից իջեալ կըրկին յայցելութիւն:*
*Եւ ոչ եւս պիտոյանան զէն եւ զըրեհ, վահան եւ տէգ,*
*Այլ հանճար, իմաստութիւն, որ տան ըզփառըս ժառանգել:*
*Եւ ընդ իմ ձեզ կառավար տէրն է երկնից զԻսրայէլ:*
*Որ առանց Սաւուղայ հովուէր երբեմըն զԻսրայէլ:*
*Այս՝ Այրարատայ արժան ետես նախատեսուչն,*
*Որ թիւրէր զընթացըս իւր մինչ վեր առնոյր 'ի բարձրութիւն·*
*Ուսցի զէթ խոնարհելովդ յանըստերիւր զընալ շաւիղ:*
*Տուր արդ լըռել, ողբերգու, քնարիդ լեզուի աշխարանուագ,*

Ել եւ առ ըղլալական մանկտիսըդ քո հրաւիրեալ այդր,
Առ 'ի բաց գնա 'ի չիրմէդ մի տար ինձ չատ խօսել յերկնուստ,
Եւ ոսկերցդ իմ 'ի ներքոյ մահարձանիդ հեծել ողորմ
Ծըծեալ ըմպեալ դառնապէս գիջեալ կայլակս արտասուելոցդ:

Մայրամած զերեսըդ ձեր 'ի վեր առէք արդ, ո՛վ մանկունք,
Եւ յետին համբոյր տըւեալ սուրբ տապանիդ՝ ելէք յուղի.
Դարձուցեալ անդրէն ըզձեզ տանիմ կըրկին յՇուրչտունիս
59 Նարեկեան 'ի մենաստան չինեալ հանդէպ Առտէր կըղ–
[գոյն
Երկոքումք խորանայարկ սուրբ տաճարօք վայելչօրէն.
Մին յանուն Աստուածածնի եւ միւս նախկին վըկայուհւոյն
Սանդըխտոյ պարկեշտ կուսին հետեւելոյն Թադէոսի,
Ուր եւ իսկ յիւր տաճարին կան հանգուցեալ մաքուր նըշխարքն:
Իսկ յետուստ խորանին 'ի սուրբ մատրանըն նուաստակերտ
Աւանդեալ են այն մատունք, որ գհրաշահիւս գրեցին մատեանն
Զօնեալ ողջոյն միանձանցն աչակերտեալ 'ի կրօնաստանս:
Այլ չնորհաց հոգւոյն, մանկունք, որ եմք նիազ եւ փափա–
[գող,
Ի տապան դիմեալ սըրբոյն առ այս կալցուք ըզնա օճան.
Եւ պատմեցից անդանօր զմին 'ի հրաշից երանելոյն
Առ 'ի փառս ներգործողին որ ըզծառայն պատուէ այնպէս:
Դըժնեայ ոմըն բարբարոս բնակեալ երբեմն 'ի գիւղս Նարեկ
Ետ ըզհաւ մի դընել Թուխս կուսան կընոջն որ էր տընտես.
60 Եւ այն ինչ հաւըն Նորեկ ճետովք ճեմէր 'ի բակ վանից
Խուճապեալ 'ի մըրըրկէ պատըսպարէր զձագս ընդ Թեւօք
Ապաւէն խընդրեալ ինքեան զերկանաքարն յեցելոյ յորմ:
Ե՛ւ, չդիտեմ, չարի՞ն հնարիւք Թէ իսկ վերին ակնարկու–
[Թեամբըն
Անկանէր քարն ապաւէն զհաւըն ճըմլէր ճետովք հանդերձ:
Զայս տեսեալ տընտեսին տարակուսէր մեծ երկիւղիւ,
Այլ յուչ ածեալ ըզԳրիգորն, ում ծառայէր սըրտի մըտօք,
Եւ ըզնա, որ զաղաւնիսըն տապակեալ Թըռոյց հրաշիւք.
Ծոյտ անդէն լընոյր 'ի մաղ զնոսին տանէր 'ի դիր սըրբոյն:
Բա՜բէ, յետ պահու միոյ կենդանանայր հաւըն մեռեալ
Ելանէր եւ զըրգալով գայր առ տընտեսն առեալ ըզձագսն:
Կամի՞ք զի զձեզ, ո՛վ մանկունք, հանից 'ի լեառն եւ քա–
[րանձաւն,
Անդ ուր իբրեւ յառագաստ հարսըն հըսկէր աղօԹանուէր
Փեսային իւր անձկուԹեամբ մաչեալ ողւովըն խանդակաԹ,
Եւ 'ի սեղան սիրոյ սըրտին յիչատակաւըն ճենճերեալ.
Տես մինչեւ ըղանձչալին առ 'ի սէր իւր իջեալ յերկնից:
Փանդի մինչ երանելին 'նդ այդւոյն բանիւ նոր գուսրԹաբեր
Նըւիրէր իւր փեսային զխորոց սըրտին սիրոյն նըւէր,
Այն ինչ զաչս 'ի ծովըն կոյս դարձուցանէր յԱռ տէր կըղզին,
Տեսանէր ըզնա ողջոյն լըցեալ լուսով ծիրանափայլ,
Եւ 'ի մէջ լուսոյն երկու արեգակունք հրաշաճաճանչ.

Ուստի ձայն քաղցրիկ լըսէր, ե՛կ Գրիգորէ, էջ 'ի լեռնէդ,
Մատիր եւ առ ըզքո տէր ըզտենչալին ում ցանկայիր:
Ո՜վ, զի՛նչ տարփաւոր հարսին յակճիռս կացեալ ընդ այս,
Աչքն անքըթիթ 'ի կըղզին սիրոյն 'ի սէր յափըշտակեալ
Զաչքըն ծով ծիծաղախիտ գեղգեղելով իջանէր վայր․
Եւ ծովուն վերայ ճեմեալ իբրու զՊետրոսն առ սիրելին
Մօտենայր եւ անկանէր 'նդ կուսին զըւարճախառն․
Զմանկիկ Յիսուս մօրն 'ի գըրկէն առնոյր ըղձիւ եւ համբուրէր,
Տայր անդրէն եւ դու, ասէր, առ ըզքո տէրըդ կուսածին․
Վա՛չ, լըցաւ սըրտիս փափագ, գոհ եմ ըզքէն, մայր անարատ:
Այսպէս երանելին տեսոյն եւ եթ չեղեւ արժան:
Այլ եւ շըրթամբք համբուրեաց զոտիս լուսաղեղ Աստուած–
[որդւոյն․
Այսպէս այրին եւս հովուաց լեալ զուգակիր փոքրիկ կըղզեակդ
Երեւեալ 'ի դմա հրաշիւք կուսին որդւովըն մանկացեալ:

Են եւ այլ շատ վանորայք 'ի գաւառիս Ռըշտունեաց,
Այլ գեղով զարմանալին զիս գրաւելով քարշեալ տանի
Մենաստան Աղթամարայ հրաշագըներն 'ի Հայաստան:
Այն է որ նդ 'ի ծովուն զգլուխն ամբարձեալ վըսեմաբերձ
Զեռն 'ի նըշմար հրաւիրէ, օ՛ն երթիցուք անդըր, մանկտիք:
Բայց, եղո՛ւկ ինձ, եւ աստէն զիս ըմբըռնեն ցաւք 'ի ներ–
[քուստ,
Կըրկնակի տան 'ի սըրտէս 'ի վեր հանել ըզհառաչումն:
Արե՛կ այժմ որ իսկ աչօք հիաչըքնաղ գչինուած սորին
Նըկատեր եւ քոյդ 'ի վէպ նըկարեցեր ճըշգըրտապէս․
Թէ զբաղում չէնըս նախնեաց՝ շըրջեալ տեսի յաշխարհս
[Հայոց,
Սակայն զիս ապշեցոյց յոյժ սըխրասարասըն Աղթամար:
Եկ եւ շըրջեաց դու այժմիկ տես զի՛նչ կան արդ յայնցն չին–
[ուածոց,
Եւ զի՛նչ անցեալ գնացին ընդ չինողին փառացըն ճոխ:
Ո՛ւր պարիսպն ահեղակերպ հիմունքն 'ի խորս ծովուն եդեալ
Զարդարեալ աշտարակօք եւ գեղեցիկ բոլոր բըրգօք,
Ոյց 'ի գլուխ գահոյք էին խորանանման եւ տախտաձեւ․
Անդ 'ի զբօս նըստէր Գագիկ աղատակոյտ զօրքն ըղնովաւ,
Եւ կապուտակ ծովուն դաշտ շուրջանակի կայր տեսարան,
Մեղմաշարժ ալիքն ընդդէմ ծիծաղէին ծաւալ ծաւալ:
Ո՛ւր քաղաքն ապաստանի պարըսպաւոր ամրականոյց,
Եւ 'ի նմա փարթամադոյն ազատ իշխանք Ռըշտունեաց․
Կամ պալատն, ոյր ըզտեղին նոյն ինքն արքայն չափեաց լարիւ
Որոշեալ 'ի նմա փողոցս եւ բուրաստանըս ծաղկոցաց․
Զոյս անթառամ պահէր միշտ վըտակ աղբերն անհատահոս:
Եւ ո՛ւր տաճարըն վեհ չինեալ 'ի պէտս ըզբօսանաց,
Նըկարովք գեղապաճոյճ գերազանցեալ քան զՍտաճին․
Յորս երեւէր բազմեալ 'ի գահ արքայն կերպիւ նազելադոյն,
Զիւրեւ պար իբր 'ի սպասու դասք պատանեաց լուսատեսիկ,

Յանդիման ՚ի մարտ ելեալք հոյլք ըմբըշաց սուսերամերկ·
Անդ եւ ահեղ առիւծունք եւ այլ պէս պէս գազանաց խումբք,
Սոսկալի տեսարան մարտից նոցուն երեւէին։
Հապա զի՞նչ եւ զերամոց հաւուցն ասեմ գունակ գունակ՝
Գեղով իւրեանց բնակաւոր ընդ երկնագոյն յորմ նըկարեալք·
Գիտես թէ ՚նդ օդ ճախրէին թեւապարեալ կենդանապէս։
Ո՛ւր սոքին, ասա, ՚պատմիչ, էրո՞ւմ եւ մի ոչ երեւին,
Մի միայն նոցին տեղիք արդ նըշմարին աւերակեալ։

Այդոքիկ, ողբերգու, երկրաւորին էին վայելք,
Եւ մարմնոյ ունայնասէր բաժինք տըւեալ անտեւական·
Եւ դիւրեղծ աւազափուլ խախուտ չինուածք հիմունք ՚ի հող,
Ծոյտ վասն այն ՚ի չընչմանէ հողմոց փլուզեալ տապալեցան։
Ի դոցունց միայնակ զարմանագործ Կաթուղիկէն,
Որ բաժին գոլով հոգւոյն, հիմունք յերկինըս կանդաղեալ,
Մինչեւ ցայսօր հաստատուն եկաց անշարժ միշտ ՚ի հողմոց։
Այլ մի դու չերեւելեօք մեծագործին յաւելուր փառս,
Շատ է այն պարծանք նըմին եւ յիշատակ յաւէրժական։
Առ ուրեմն այտի զմանկունս տար տաճարին այն յանդիման,
Ես ցուցից անդանօր զհանճար ոգւոյն մեծագործին,
61 Եւ մատին Մանուէլի զճարտարութիւն ամենարուեստ։
Տեսէք ահա զարտաքուստ յորմոց վերայ նորին դրօշուածս
Զվէպ հընոյն եւ ըզնորոյս ճըշգրիտ ՚ի վէմըս քանդակեալ·
Գուշիր թէ նոր յանդիման բերեն աչաց զանցելոց գործ։
Նախաստեղծք տերեւապատ առ թըզենեաւ պատըսպարին,
Արարիչն ՚ի վերոյ ծառոյն կացեալ ձայնէ զուրեան·
Ի վերայ ելեալ Կայէն ըսպանանէ զԱբէլն անմեղ·
Մասեաց ՚ի գլուխ կայ ՚ի նիստ նաւըն Նոյեան անառագաստ,
Աղաւնին չըղաբեր ընդ պատուհան մըտանէ ներքս·
Աբրահամ սուր ՚ի ձեռին զենու զորդեակն իւր սիրելի,
Առ նովաւ խոյն յեղջերաց ՚ի Սաբեկայ ծառոյն կախեալ·
Իսահակ օրհնէ զՅակոբ զաջն ՚ի վերայ գըլխոյն եդեալ·
Փախուցեալն ՚ի յեղբօրէն գքարն ՚ի սընարս եդեալ նըննջէ,
Եւ Սանդուխքն առընթեր, որով մարդիկ յերկրէ յերկինս·
Յովսէփ՝ արեւ, լուսին եւ մետասան աստեղք ՚ի յոտսն·
Մովսէս՝ եւ առ անթովք տախտակ քարանցն աստուածագրոշմ·
Ահարոն թագն ՚ի գլուխ եւ ՚ի ձեռին բուրվառ խընկոցս,
Քահանայքն ըզտապանակն ՚ի յուս բարձեալ ընդ Յորդանան·
Դաւիթ պարսաքարիւ Գողիաթուն կայ ՚ի ճակատ·
Ապըստամբն Աբիսողոմ զվարսիցն ՚ի կախ որով պարծէր·
Սողոմոն առիւծադրոշ ՚ի գահ բազմեալ չըքեղակերպ,
Առաջի նորին ՚ի դատ երկու կանայքն եւ նոր մանկիկն·
Եղիա կառօքն յերկինս եւ Եղիսէ հայի ընդ ելն·
Եսայի, այր ՚ի չըրթունս մատուցանի հուրն ունելեօք·
Դանիէլ, եւ հին աւուր ծերն ՚ի յաթոռ նըստեալ փառաց·
Հիազարհուրն Ամբակում իբր ՚ի վիմին կացեալ պահօք,
Ընդ նոր գործ խաչեցելոյն անդուստ հայի զարմանալեօք·

Ի կիտէն կլլեալ Յօնան առ Դըդմենւոյն շըքով նըստի:
Այսպէս եւ այլ մարգարէք եւ նահապետք Իսրայէլեան
Ի մի չար չուրջանակի կան պարաւոր զեկեղեցեաւ:
Թողեալ արդ զայդոսիկ տեսէք եւ նոր կտակին ըզվէպս·
Աւետիս տայ Գաբրիէլ հաւան կուսին խօսեցելոյ·
Սքանչելի ծնունդն 'ի յայրին, հրեշտակք, հովիւք, խօսնայր
[Յովսէփ,
Անդ եւ մոգք աստղահրաւէր զընծայս ձօնեն արքայ ծնելոյն·
Ընծայումն 'ի տաճարին Յիսուս 'ի գիրկըն ծերունւոյն·
Յովհաննէս ջուր ածէ գլխոնարհ գըլխով մըկըրտելոյն·
Տէրն իշով յԵրուսաղէմ, մանկտիք 'ի ձեռս արմաւենիս·
Փրկիչն 'ի վերնատունն յընթրիս բազմեալ ընտրեալ դասուքն·
Ի ներքոյ իբր 'ի պարտէզն 'ի ծունըր կայ խաչապատրաստն·
Հրեշտակն վերուստ կարկառէ զմահուն բաժակ յօժար ոգւոյն·
Մատնիչըն նենգաւոր հըպեալ 'ի հեզըն համբուրիւ·
Ձեռակապ առեալ տանին զինուորքըն չար զտէրն 'ի յատեան·
Զփայտ մահուն անպարտակիրն առեալ դիմէ 'ի Գողգոթա·
Զխաչիւ որդւոյն փարեալ Մայրն, անդ սիրելին եւ Յովհաննէս·
Թաղումըն կենդանւոյն, պատէ Յովսէփ զանպարագիրն·
Յարուցեալն 'ի կոյս վիմէն եւ յաղթական դրօշն 'ի ձեռին·
Համբառնալն 'ի վեր բանին ու աշակերտացըն կալ յակճիռս:
Առաքեալք եւ ընտրեալ սուրբ հայրապետք եկեղեցւոյ
Մէն մի իւրեանց նըշանիւք, որ առ նոսա յայտնեն ըզշնորհսն·
Մատթէոս, Մարկոս, Ղուկաս, եւ Յովհաննէս արծուաթըռիչն
Խորհըրդեամբքըն կենդանեաց 'ի չորս կողմունըս քանդակեալ:
Տեսանէ՛ք եւ արքայից Արշակունի եւ Արծրունեան
Զկերպարանս ահեղատես եւ ըզհասակս հըսկայաձեւ:
Նա յաւէտ ընդ փառացի պատկեր Գագկայ նայեցարուք·
Զբոլորակ տիպ տաճարին 'ի ձեւ փոքրիկ ճըշգըրտահան
Ընծայէ ձեռօք փըրկչին որ յանդիման իւր յօրինեալ:
Ի թիկունս եկեղեցւոյդ անցեալ այտի տեսէք եւ անդ
Զորթ եւ զուռս ողկուզազարդ այգեգործովք ի' միասին,
Զիթենիս մանրապըտուղ եւ այլ պէս պէս ծառըս մըրգաց,
62 Զի՞ մանրամասին կերպացեալ են ճիւղովք պըտղովք:

Զարտաքին գեղեցկութիւն տեսիք ահա եւ սքանչացայք·
Արդ եւ ' ներքըս մըտեալ սըրբասահման վեհ տաճարիդ՝
Դիտեցէք եւ ըզներքին շըքեղութիւն փառաց դորա·
Թէ ողջիկ կան տակաւին ոչ կողոպտեալ 'ի թըշնամեացն:
Եղո՛ւկ եւ զիս, ողբերգու, եւ եւս ընդ քեզ ըզլալ առնում·
Քանզի ոչ որպէս յայնժամ այդ տեսանեմ ըզշուք ներքին:
Դրունքըն իւր մայրատախտակ քերեալ գերփեալ են համայնիւ,
Որ պատեալ էին համբուն զուտ արծաթեայ փայլուն թիթ–
[ղամբք:
Զերեւին 'ի յորմունս այն ծաղկաձեւ ոսկեքանդակք·
Ի պատկերս տնօրէնութեանց եւ ոչ ոսկւով յեռեալ ակունքն:
Հայիմ, ո՛հ, եւ 'ի սեղան եւ տեսանեմ մերկ 'ի զարդուցն,

Ոչ աշտանակ ոսկեձոյլ շուշանագործ բազմաճիւղեան,
Կամ սրահակ մետաքսահիւս գունեան Թելօք նարօտ նարօտ,
Կամ Ծածկոյթ բազմոցին մարգարտաշար համատակեալ:
Զայսոսիկ, աւա՛ղ, ողջոյն յաւար տարան հինից հրոսակք
Այդպէս մերկ Թողին ըզդա յիւր ՚ իներքին հանդերձանաց·
Զգեցուցանել վերըստին ձեզ ըսպասէ, Հայկեան մանկունք:
Բայց ահա դիտեալ տեսիք ՚ի հոյակապ այս մենաստան
Զհրաշարուեստ ճարտարութիւն եւ ըղհանճար մատին Հայոց·
Այլ յորժամ ոյժ զօրավիգ տային բազուկքըն քաջազօր,
Եւ արիւն յամէն սըրտէ խաղայր ցամաք մատին ՚ի ջիլս
Զայսպիսի զարմանալիս մատըն ողջիկ այն քանդակէր:
Իցէ՞, զի եւ դարձեալ խաղաղ առցէ յամէն սըրտից,
Եւ մատանց մեռելութեան տացէ շարժումըն կենդանի,
Յարիցեն եւ այսպիսեան զհանճար Հայոց հանցեն ՚ի լոյս:
Ի նուագ վերջին, ո՛վ մանկունք, տանիմ ըզձեզ ՚ի միւս կըղ—
[գիս
Ի Լիմ եւ Կըտուց սուրբ կրօնաստանըս միանձանց:
Թըռիք հապաթեւածեալ գծովուն հատեալ լայն ասպարէզ
Տոյտ հասցուք անդ ուր կամիմ դիւր տալ ոտից իմ վաստակեալ
Եւ քնարիս Թուլադաշնակ՝ հանգիստ վայրիկ մի լըռութեամբ:
Եկայք, վա՛շ, յիմ սիրեալ տեղ եւ խաղաղիկ նաւահանգիստն,
Ուր փութան նաւքըն խռովեալ՝ զերծեալք յալեաց կենցաղոյս
[այս
Զխաչին բացեալ զառագաստ հողմով սիրոյ փըրկչին վարեալք·
Եւ ՚ի տապան իմն մըտաք անձեռագործ եւ հողանիւթ
Ի փոքրիկ ծովակիս կազմեալ վերին ճարտարութեամբ·
Ուր պահին մաքուր երամ սուրբ աղաւնեաց մըշտամընչիւն,
Որ փախուցեալք ՚ի բազէից ՚ի ծոց սորին Թաքչին անքոյթ:
Ասպարէզ է աստանոր խըմբից այլ իմըն մենամարտ
Դրօշու խաչին խրախուսեալք ընդդէմ չարին աներեւոյթ,
Եւ ոչ ՚ի զէն այլ յաղօթս վառեալ մարմնովքըն մերկանդամ
Մարտուցեալ ընդ բելիար զգետնեն ըզնա շնորհիւ խաչին:
Աղքատին յանձուկ խըցկունս մըտեալ, մանկունք· արդ շըր—
[ջեսցուք,
Որ ՚ի սոսին շինեալք են անձուկ հետոց հետեւողացն:
Զի՞, տեսէք, մութ եւ անշուք գեղատըխուր են բընաւին,
Պատեալ որմովք դուզնաքեայ, ցած եւ խոնարհ են առաս—
[տաղքն,
Մի եւ կամ երկու լուսանցս ունին միայն ՚ի յարեգդէմ,
Յոյց շողիկ կաթեն եւ լոյս առնեն անձանցն արդելական:
Իսկ յատակք են անպաճոյճ լոկ խըճարիկ մի արկեալ եւ եթ,
Զարմանամ, ի՞բր ՚ի խոնաւ գետնոյն մարմինք ոչ խօթանան,
Այլ միշտ առողջ մնան եւ ժիր թէ եւ լինին հարիւրամեայ:
Սակայն ոչ ընդ այս յաւէտ այլ ընդ նոցին վարս հիանամ,
Որ այնչափ տաժանութեանց տանին ոգւով ժուժկալասէր·
Մարմնով մեկնահանդերձ կըռուին սաստիկ ցըրտոյն ընդ դէմ,
Բազմօրեայ պահօք յաղթեն անոյժ մարմնոյն ախորժակաց·

Եւ արթուն հըսկողութեամբ աչաց քընոյն ծանրացուցիչ:
Են ոմանք որ երկնաւոր վարդապետին բերեն ըզտիպ
Անձանձրոյթ անյագ ձայնիւ զգիշերն 'ի գլուխ հանեալ յաղօթս:
Կէսք թէպէտ կըծկեալ մարմնով զաղաբողոն առեալ վերայ
Նընջեն այնպէս անմահին գոտին առանց լուծանելոյ.
Բայց անդէն վաղայարոյց լինին յերկրորդ պահ գիշերոյն
Մինչ ըստուեր պատէ զերկրաւ բնութիւնք լըռեն տիեզերաց,
Եւ մարդիկ աշխարհի նիրհեն փափուկ 'ի յանկողնոջ.
Նոյն արթունք եւ զըւարթունք 'ի սուրբ աղօթըս կանխելով
Պաշտեն ըզտէր անդադար զուարթնոց երկնից նըմանելով:
Այլ յորժամ ձայն զանգակին կոչէ զոգիսըն տըքնասէր,
Եւ գնոսին, որ գոգ թէ նոր զաչըս տըւեալ են քնոյ անօսր.
Որպէ՞ս արագ եւ նոքին գքուն թօթափեն յարտեւանաց,
Ելանեն լուրջ եւ զըւարթ փոյթ ժողովեն յեկեղեցին:
Անդ ըսկիզըն առնուն հընչել զԴաւթեան քընար սաղմոսեր—
[գուքն,
Ոմանք լուռ կացեալ նոցա նըւիրեն ունկըն մըտադիւր.
Այլք յոտից վերայ անշարժ 'նդ երկիր հայլին միշտ ակընկոր
Քաղցր 'ի ձայն երգոյն զմայլեալք հրեշտակային սուրբ օրհ—
[թեանցն,
Կէսք ըստէպ ծունըր կըրկնեալ եւ մածուցեալ զգետնով զերեսս
Ի հանդէս ժուժկալութեան ջերմ արտասուօք հայցեն ըզշնորհ.
Եւ ըզձեռս, որ չէ լըցեալ արեամբ մեղաց աշխարհիս այս,
Տարածեալ միշտ պաղատին վասն աշխարհի խաղաղութեան:
Իսկ յորժամ աւարտեն զերկար պաշտօն ճաշոյ ժամուն
Ելեալ 'ի տանէն աղօթից երթան յառաջ 'ի ճաշատուն.
Ոմն անդէն 'ի յամբիոն ելեալ կարդայ զՎարըս հարանց,
Լուռ մընջիկ այլքն 'ի սեղան ընդ ճաշակելն 'ի միտ առնուն:
Զի՞նչ է սակայն զոր ճաշեն, այսըր տեսէք զօրէն պահոց,
Լոկ հացիկ ընդ բանջարոյ զոր համեմեն աղին համով,
Կամ ապուր ընդեղէն ծերոցն 'ի պէտս եփեալ ջերմիկ:
Այսր ոչ գոն խոհակեր եւ ամճաբեր կամ ծաղարար,
Ոչ գառինք խորովեալ կամ համադամ պէս պէս խորտիկք,
Ոչ գինի եւ կամ այլ քաղցր ինչ ըմպելիք օշարակաց.
Քանզի ազատ են սեղանք նոցին փափուկ յայս վայելից:
Ցանպաճոյճ սեղանոյն ելեալ ապա զուարթ անտըրտունջ
Գոհանան զպարգեւողէն, դառնայ մէն մի յիւր մենանոց.
Վերծանեն այնուհետեւ անյագ ոգւով զհոգեմատեանս,
Որ քաղցեալ ոգւոց նոցին ճաշ է քաղցրիկ հոգեպարար:
Սիրեմ ես, բազմահամբեր ճըգնաւորին վախճանելոյ
Զեզ, մանկտիք, դոյգն ինչ տողիւք զհանդէս վարուցն երգել
[աստէն:
63 Որ ըզվարս Խոստովանող աշակերտին բերէր ճըշգրիտ,
Զողջ գիշեր իբրու զկանթեղ նա կայր անշէջ արթուն աչօք
Աղօթիւք անհատական ընդ Աստուծոյ խօսեալ 'ի սիրտ:
Բացօթեայ ճըգնէր յաւէտ 'ի մէջ կըղզւոյն ուր եւ կամէր,
Եւ ղօղեալ յոլով անգամ 'ի դարափորն իւր խորագոյն

Անճաշակ անկերակուր պահէր անդէն գեօթնեակ աւուրս։
Արդար, այլ արտասուէր իբրեւ ըզյոյժ մեղուցեալ ոք,
Եւ կըրկնէր չըրթամբք անլուռ գխոնարհ մեղայն մաքսաւորին,
Յամենայն 'ի չարաթոյ խոստովանէր զոչ գործեցեալսն,
Եւ ըզհացն իջեալ յերկնից միշտ ճաշակէր, ոչ յագենայր։
Ոչ միայն էր ընչատեաց, այլ եւ չխնդրէր ըզկարեւորսն,
Զըրկէր զանձն 'ի պիտոյից տայր ընկերին կարօտելոյ,
Կենդանւոյն առ աշխարհ մեռեալ էր նա բոլորովին,
Սոսկացեալ 'ի յերկրէս եւ ըզգեցեալ զերկինս հոգւովն
Ըզմարմինն 'ի խաչ հանեալ անտար վըշտօք ժուժկալութեան
Կարօտեալ կամովին նեղեալ մարմնով եւ չարչարեալ։
Այսպէս երանելին իբրեւ զարեւ 'ի բոյլս աստեղց
Փայլեցաւ 'ի մէջ եղբարց պայծառ լուսով ճըգնողական.
Եղաւ անհամելոց աղ համեմիչ վարուքըն խիստ,
64 Եւ խըլթան խաչակրօնից հեղգացելոց 'ի նոյն հանդէս։

Հաս ժամ ահա, զի ելցուք եւ առ ծովուս Քաջբերունեաց
Ըզվերջին քնար ողջունի, ո՛հ, ես հարից սըրտաճըմլեալ
Յուղարկաւոր լեալ ձեզ անդ մէն մի անդըրէն յոտար աշխարհս։
Դուք՝ մանկունք, որ իսկըզբան մըտանելով ըդրախտին ընդ
[դուռն
Ճեմեցայք 'ի Հայաստան, աստէն եկեալ ելիք արտաքս։
Այլ աստ վայրիկ մի դուլ տուէք ձերում ոտից մի գնայք յառաջ,
Լըւարուք թէ զի՛նչ լալով ժըտէ 'ի ձէնջ ողբալի մայրն։

Ո՛վ իմ որդեակք մայրասէր, զձեզ որ առ սէր իմ հայրենւոյս
Ողբերգուդ հրաւիրեալ՝ եբեր 'ի յիս եւ ճեմեցոյց։
Արդ երթայք, այլ քա՛ւ թէ զիս դուք մոռանայք մինչեւ իսպառ։
Յուշ լիցի ձեզ Այրարատ եւ Մայրըն ձեր ամենածին.
Աւազանըն Եփրատայ ծնողին արդանդ յորդիս լուսոյ.
Խոր Վիրապ եւ սիրեցեալ տուն Գրիգորին լեառն Սեպուհ.
Եւ շիրիմք երանելի հարցըն տածիչ հոգեւորաւն։
Յուշ լիցի ձեզ եւ Մասիս, ալեւոր ծերն եւ Արագած.
Տենչալի տուն Թորգոմայ, յորմէ ելեալ տարագրեցայք.
Թեկն առ թեկըն չարեցեալ այն ապագոյն թօնուտ լերինք.
Ծոխաբոյս հովիտք եւ ձորք հովային մարմանդավայրքն.
Քաղցրահոս աղբերակունքն, այն խոխոջիւն յորդոր առուաց.
Այն սիրուն բազմաբուրեան ծաղկունք, որոց առիք ըզհոտ.
Դիւր լայն պարարտ դաշտորայքն եւ այն կանաչ մարգագե-
[տինքն.
Բերրի եւ կորդ արտորայքն, որ ըսպասեն արօրադըրաց։
Յուշ, նա իմ աւերակաց տեսիլ եւ կերպն աշխարելի.
Այն հիմանց խախտեալ քարինք եւ այն նըշխարք մանրակոտոր.
Մարմարեայ սիւնք մամռապատ եւ թաւալեալ այն մահար-
[ձանք.
Այն փըլեալ եկեղեցիք եւ տաճարաց մնացեալ կամարքն.
Այն ամայի վանորայքն եւ մոռացեալ ուխտատեղիքն։

Դուք մի՛ թէ զայսոսիկ մոռանայցէ՞ք 'ի յաւիտեան,
Կամ խպառ ո՞չ յիշիցէք զքաղցր այն տեղիս բնակասնունդ·
Կամ թողուցո՞ւք զիս այրի եւ զիմ երկիրդ անմարդաձայն:
Ցի՛ս, ո՛վ իմ մանկունք, յիս դարձ առէք նախնոյն նըման·
Ոչ ասեմ տամբք եւ զարմօք, չատ է միայն սըրտիւ սիրով·
Զհամասեռ Հայկեան սերունդս, յոր վայր իցեն թէ սիրեսջիք,
Անդ եմ ես հայրենիս եւ զայն անշուշտ ինձ վարկանիմ:
Զէ այն ոք հայրենասէր, որ կայ առիս, այլ ոչ սիրէ,
Հուպ կացեալ, բայց ոչ հայի յողորմ տեսիլ մերձաւորիս
Զաչըս յինէն ամփոփեալ զիւրեւ միայն դարձուցանէ:
Հեռացելոյ սիրողին լերինք բարձունք չեն խոչընդակն,
Քաջ կարէ նա եւ անդուստ ըզհեռացեալըս նըշմարել·
Եւ զերդ արեւն 'ի բացուստ չող արձակել մըխթագնելոյս:
Գնասջիք բարեաւ արդ, մանկունք, եւ զիս այնպէս դուք սի–
[րեցէք:
Խոնարհեալ զհող հայրենւոյն համբուրեցէք փըղձկեալ սըր–
[տիւ,
Ասացէք եւ դուք նըմա մնասջիր ողջամբ, ո՛վ Հայաստան,
Ա՛հ, մեկնեալ այժմ 'ի նմանէ երթայք տըրտում ըզճանապարհ,
Ոմն 'ի հիւսիս ոմն 'ի հարաւ ոմն յարեւմուտս 'ի տարաշխարհս:
Զքաղցր արեւըն հայրենեաց եւ զպարզութիւն թողեալ, աւա՛ղ,
'Նդ այլ արեւով ջերմային եւ խառն օդով երթեալ սնանիք·
Եւ 'ի ձեր ծածկի աչաց Մասիս եւ լեառըն Վարագայ,
Եւ ոչ եւս այլ զօդ նոցին ծըծէք որ իմ երգով շընչէր:

Այլ որ 'ի քէն ելեալ դու սըրտիւ գնացեր 'ի հայրենիդ·
Անդ ճեմեր, աւա՛ղ, աստէն 'Բիւզանդիոն հարեր ըզքնարս,
Անդ ամպեալ ցօղեր արտօսր կաթիլքն իջին յերկիր պանդուխտ·
Անդ լացեր կականալի ձայնիկըդ ել յարեւմըտից·
Սակայն ո՛ւր ես դու, գիտե՞ս, հէք ողբերգակ Արարատեան,
Քեզ թըւի թէ հայրենւոյդ յանուշակ ծոց հանգուցանիս,
Զի այդպէս քոյդ հրաւիրեալ մանկանց լինիս յուղարկաւոր
Զաչըդ քո բաց, եկ 'ի միտս, ո՛հ, եւ դու կաս յօտար աշխարհ:

ՎԱԽՃԱՆ



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

———o———

1· Պատշաճ համարիմ զայս ծանուցանել նախ բանասիրացդ առ 'ի ուղիղ որոշել զփոփոխումն դարձուածոց բանից յընթացս գրոյս· զի ըստ որում մեծ մասն երգոցս՝ երկրորդ դիմօք յարմարեալ են· որպէս թէ իմ Հրաւիրակիս կացեալ 'ի հայրենին անդ՝ մատամբ ցուցանեմ Հրաւիրեալ մանկլտւոյն զտեղիսն, յոր տանիմ զնոսին: Ուստի որ ընթեռնուն՝ պարտին լինել անդ, ուր եսն եմ· թէպէտ եւ երբեմն զիս 'ի պանդխտութեան տեսեալ՝ փոխեմ զնոյն դէմսն· զոր դիւրաւ կարեն որոշել ուշմադոյնքն:

2· Վայել էր ճոխագոյն նուագել զտեղի դրախտին եւ զբիւրակնեան լերինս եւ զաղբիւրս, որ զուարճալի նիւթ եւս ընծայեն: Սակայն ոչ համարձակեցաք եւ ոչ միայն 'ի դրախտն, այլ եւ յամենայն տեղիս՝ փոքրիկ մակուկաւ մերով 'ի խորս ծովուն նաւել· ուստի միայն հարեւանցիկ առ ափամբք քերեալ անցաք· եւ զի փութամք եւս 'ի նպատակն մեր հասանել:

3· Զգեղեցկութիւն Արարատեան գաւառին եւ զարդաւանդութիւն հողոյն եւ զբազմապիսի բարեաց լիութիւն՝ վայելուչ իմն ըստ ամենայն մասանցն ստորագրէ Ղազար Փարպեցին· զոր թէ քեզ ախորժելի է ընթեռնուլ, կարես գտանել 'ի սկիզբն գրոց նորին:

4· Զայս Եզեկիէլ մարգարէն եւս յայտ առնէ բանիւս: ««Եւ 'ի տանէ Թորգոմայ ձիով եւ հեծելովք եւ ջորւովք լցին զվաճառս քո»:

5· Գիւղականքն Վասպուրական գաւառին՝ պէրատեղ անուանեն ըղտեղին, ուր 'ի ցերեկի 'ի ժամ կթոյն առեալ բերնէ հովիւն զխաշինս· եւ Թերեւս աղաւաղն իցէ այս՝ բառիս փարախատեղ· որ նշանակէ զգոմն եւ զմակաղատեղն· յորում փարախեն 'ի գիշերի զհօտն: Բաց 'ի սմանէ եւ յայլ ուրեք եւս 'ի կիր արկեալ եմք ռամկական կամ գաւառական բառս· սակայն չկամիմք այսու օրինակ լինել այլոցն եւ զգուշացուցանենք եւս զմանկտիդ չառնուլ զնոսին 'ի կիր անխտիր առանց պահանջման հարկին· մի գուցէ եւ դուք ընդ իս դատիցիք 'ի նախանձաւորացն լեզուիս մերում բազմահարուստ:

6· Քանզի եղեն անհաւատ աղանդաւորք ոմանք առ ժամանակօք որբոյն Յակովբայ 'ի Միջագետս որ ուրանային զջրհեղեղն· զորս այսու յայտնի եւ ճշմարիտ վկայութեամբն յանդիմանեաց սքանչելագործ հայրապետն Մծբնայ:

7· Այս յանկարծ եւ սաստիկ շարժ Ակոռոյ գեղջն՝ եղեւ 'ի 1840 Թուականին· յորմէ ըստ վկայելոյ ականատեսիցն՝ չապրեցաւ ոք բաց 'ի հովուէ միոջէ:

8· Այս խրատ Սողոմոնին է, որ ասէ 'ի դիրս առակացն: «Խնամ կալ բանջարոյ 'ի դաշտի եւ հնձեսցես զխոտ· · · զի եղիցին քեզ ոչխարք ձորձաբերք· դարմանեա զդաշտս, զի եղիցին քեզ գառինք»:

9· Վահրամ որդի էր Գրիգորիսի Պահլաւունւոյ 'ի զարմէ լուսաւորչին

՚ի ժամանակս Գագկայ վերջնոյ արքային Բագրատունեան. որ քաջութեամբ արութեան եւ մանաւանդ պայծառափայլ աստուածպաշտութեամբ՝ գերազանցեալ գտաւ քան զյոքունս եւ երկիցս եւ ընդ դէմ թշնամեացն ՚ի պաշարման Անի քաղաքին յաստիկ հարուածովք հար զնոսա. եւ յուսթսունամեայ ծերութեան իւրում մարտուցեալ ընդդէմ Ապուսվարայ Պալասի՝ նահատակեցաւ ինքն եւ որդին իւր. զորոյ զհամօրէն առաքինութեանց վարս, զոր դրուատէ Մագիստրոս՝ կարես գտանել ՚ի պատմութիւն Հայոց յերկրորդ հատոր ՚ի կարգի Բագրատունեան թագաւորացն:

10. Գագիկ էր վերջին թագաւոր ցեղին Բագրատունի հզօր երեւեալ ՚ի քաջարութիւնս. այլ աւա՛ղ, քանզի չարութեամբն նմանեալ Վասակայ Սիւնոյ՝ Վեստ արգիս նենգաւոր դաւաճանութեամբ մատնեաց զայնպիսի տէր ՚ի ձեռս կայսեր Յունաց. որով առիւծն այն հզօր, որ իբրեւ զվեհն Տրդատ սիգայր ՚ի վերայ լերան Հայոց՝ ՚ի մէջ աշխարհին Հոռոմոց զամս երեսուն փակեալ ՚ի դառադիղ՝ ցաւագինս մռնչէր վասն հայրենի աշխարհին եւ բարձման թագաւորութեան ՚ի տոհմէն իւրմէ:

11. Զայս ոճիր սոսկալի եւ գազանային վրէժխնդրութիւն՝ գործեաց Ալփասլան արքայն Պարսից ըստ պատմելոյ Վարդանայ յորժամ էառ նա զԱնի քաղաքն:

12. Վերջին կործանումն եւ ամայանալն Անի քաղաքին՝ չէ յայտ ՚ի պատմագրացն թէ ե՞րբ արդեօք եղեւ. բայց այժմ պատճառ՝ Ղազար Ջահկեցին Յովհաննու Երզնկացւոյն՝ յորմէ երկուցեալ բնակչացն ելին եւ ցրուեցան ՚ի հեռաւոր աշխարհս. եւ միայն ասէ՝ որ ՚ի Լեհաստան փախեան 40 հազար տուն էին թողլով զայլսն:

13. Տրդատ էր հռչակեալ ոմն ճարտարապետ ազգաւ Հայ, որոյ ձեռամբ իսկ շինեաց Բ. Սմբատ արքայն Բագրատունի զհրաշակերտ կաթուղիկէ եկեղեցին Անւոյ. եւ պատմեն եւս զմանէ եթէ ՚ի վտանգիլ շարժմամբ՝ գմբէթին մեծ եկեղեցւոյն Սոփիայ, որ ՚ի Կոստանդնուպօլիս, սոյն Տրդատ անդ գտանելով՝ եցոյց զհնարս դիւրաւ նորոգելոյ զայն:

14. Զայս ջահ բիւրեղէն, զոր ՚ի Հնդկաց տուեալ էր բերել Սմբատայ տիեզերակալի, եւ զարծաթի խաչն, որ մարդաչափ ունէր զմեծութիւն կանգնեալ ՚ի գլուխ կաթուղիկէ եկեղեցւոյն Անւոյ, ընկէց ոմն ՚ի զինուորաց եւ խորտակեաց, ընդ որ ցաւեաց յոյժ եւ նոյն ինքն Ալփասլան արքայն Պարսից ՚ի տեսանելն զայն:

15. Ի ժամանակի յորժամ գերեցան հրէայքն ՚ի Բաբիլոն, էառ Երեմիայ մարգարէն զհուր ողջակիզաց սեղանոյն, որ վառ պահէր միշտ, եւ թաքոյց զայն ՚ի ջրհոր մի ցամաք. եւ ՚ի դառնալն վերստին ՚ի գերութենէն առաջնորդութեամբն Զօրաբաբէլի եւ շինելոյ զտաճարն՝ ՚ի խնդիր ելեալ գտին զայն, բայց ոչ զհուր, այլ զջուր թանձր, զոր իբրեւ հեղին ՚ի վերայ ողջակիզացն եւ ընդ ծագելն արեւուն ՚ի վերայ՝ իսկոյն բորբոքեալ այրեցաւ ողջակէզն տեառն զօրութեամբ:

16. Այս յուսադրական բանիւք, որ ՚ի դիմաց մանկտւոյն՝ ոչ եթէ հրաշագէտ եւ ըղձապատում լինել կամիմք. այլ միայն ի լի յուսոյն եւ ՚ի ցաւալի բանիցն որ ՚ի դիմաց քաղաքին, ստիպեցաք գրել զայնս. եւ առ այս երաշխաւորէ մեզ այս մի տող ՚ի բերանոյ քաղաքին: «Արասցէ թող եւ որպէս տէրըն կամի նախատեսող»:

17. Զայս ծանուցանէ Շարական ՚ի Մեծահրաշ օրհնութիւնն երկրորդ ծաղկազարդին ՚ի տանս այս:

*Իսկ 'ի չորրորդըն դասէ պաշտպան եղեալ լուսաւորչին:*
*Ի դասուն իւր փութացեալ ուրախութեամբ տօնակատարութիւն.*
*Զոր հարցեալ 'ի նմանէ տեղեկանայր մարմնով հրեշտակն։*

·8· *Առ այս ակնարկէ 'ի Շարական Երզնկացին յայս տուն, որ 'ի լերինքն: Խորհուրդ խաչելոյն գեղահրաշ տեղւոյն Գողգոթայ ծածկապէս 'ի սմին լերին տեսանի. զէնն արքայական սպանմանն գործի կենաց արքային 'ի կենաց գործիս նուիրեալ. եւ այլն:*

19· *Մանի կոյս էր ընկեր սրբոց Հռիփսիմեանց. որ զատեալ 'ի նոցունց առանձնացաւ 'ի լեառն Սեպուհ. եւ քարայրն՝ յորում բնակեցաւ կոյսն՝ կոչեցաւ Մանեայ այրք:*

20· *Արդարեւ պերճագոյն է եւ գերազանց՝ գովեստ սոյն Պլուզ Յովհաննէս վարդապետին առ Լուսաւորիչն եւ 'ի յորդիս նորին եւ Թոռունս. յորում 'ի մէջ առեալ դրուատէ եւ զլեառն Սեպուհ բազմապիսի համեմատութեամբք. եւ համարձակիմ ասել. եթէ մասամբ իւիք գլէ զնարեկեան ճաճովք. զոր դիտ յաւարտ Յաճախապատում մատենին յօրինեալ 'ի Լուսաւորչէն մերոյ եւ ընթերցեալ քննեա զայն մտօքդ. տեսանես յայնժամ թէ քանի՞ խորագոյն բաղձանօք հանճարեղ Պլուզն բոցավառեալ 'ի սէր ցանկալւոյն 'ի սրովբէից՝ վայելչագոյն բանիւք ներբողէ զերանելին զԳրիգոր եւ զեղեալ յառատութենէ սիրոյ ոգւոյն զառաւելեալ սէրն իւր թափէ 'ի Սեպուհ։*

21· *Զայս ցաւագին տրտունջ եւ բողոք բառնայ Խորենացին 'ի պատմելըն անդ զմահ սրբոյն Տրդատայ՝ այսպիսի բանիւ: Ո՞ ոք 'ի ձէնջ թոշակս յաղագս մեր, ո՞վ որ յերթալս մեր բեռնաբարձս, ո՞վ ոք 'ի գալն մերում՝ հանգիստ, ո՞վ ոք տուն կամ օթանոց մեզ պատրաստեաց:*

22· *Շաւարշան է առաջին անուն Արտազ գաւառին, առ որ հուպ է Աւարայրի դաշտն ուր եղեւ նահատակութիւն սրբոց Վարդանանցն:*

23· *Քանզի յառաջագոյն ցուցաւ տեսլեամբ սրբոյ հօրն մերոյ Գրիգորի, եթէ 'ի հօտէ գառանց անտի լինելոց են ոմանք գայլք եւ յարձակելոց են 'ի վերայ գառանցն կոտորել զնոսին եւ հանել արեան ճապաղիս. որ կատարեցաւ իսկ ճշգրիտ 'ի մեծ եւ հոգեւոր պատերազմիս այսմիկ:*

24· *Նախարարքն Հայոց իբրեւ արտաքուստ մատուցին երկրպագութիւն հրոյ եւ արեգական՝ սկսան իւրաքանչիւր նոքին սուտակամայս բանիւ շնորհակալութիւնս մատուցանել Յազկերտ արքային անդ 'ի յատեան Պարսից. եւ սուրբն Վարդան եւս իբրեւ յազդմանէ հոգւոյն խօսեցաւ անդանօր. եւ յետ 'ի մէջ բերելոյ զմիամիտ եւ տիրասէր ծառայութիւն իւր՝ յարէ զկնի: Բայց արդ յայսմհետէ այսպէս կամք են, ջանամ, զի եթէ ցայժմ գործեալ ինչ իցէ (իմ) եւ ոչ արժանի անուան կամ գովութեան յայսմհետէ հնարիմ ամենայն զօրութեամբ եւ ուժով՝ օգնականութեամբն Աստուծոյ գործել գործ այնպիսի, զոր ոչ միայն առաջի ձեր արեաց, այլ եւ 'ի կայսեր դրանն եւ յայլ ազգս պատմեսցի համբաւն այն մինչեւ յաւիտեան: Եւ զայսպիսի բանս իբրեւ լուաւ Թագաւորն եւ ամենայն աւագանին Պարսից գովեցին զՎարդան եւ ոչ ծանեան զզօրութիւն բանիցն ասացելոց, որպէս պատմէ Ղազար Փարպեցին. զոր ընթերցիր 'ի գիրս նորա։*

25· *Վասն զի սովորութիւն է Հայաստանեայց, ցորչափ նորածին տըղայն 'ի յորորոցի ննջէ՝ 'ի ներքոյ նորին զչորացեալ մանր հող 'ի վերայ չորի տարածեալ դնեն։*

26· *Աւանց, կամ ուղղագոյն եւս աւանս կամ աւանք՝ է նաւահանգիստ*

*քաղաքին Վանայ միով ժամու հեռի 'ի նմանէ յարեւմուտս հիւսիսակող-մանː*

27· *Այգեստանք կամ արուարձանք քաղաքիս՝ մեծատարած են յոյժ 'ի դիւրավայր դաշտի· յորում առաւել բնակիչք գոն մերազնէից քան 'ի քաղաքնː Այնչափ զուարճալի եւ գեղեցիկ են այս այգեստանք, պտղատու եւ անպտուղ ծառովք զարդարեալ եւ մանաւանդ յորդագնաց առուօք· որ յամենայն հրապարակս գնան առ ծառովք ուռենեաց· մինչեւ կարեմ ասել· եթէ չնաշխարհիկ են 'ի մէջ հանուր աշխարհիսː*

28· *Հին եւ Նոր, ըստ տաճկացն (էսկի էէնի) է յորդառատ աղբեր միոյ անուն· որոյ ակն է յընդարձակ հրապարակին, որ ուղղակի ելանէ ի քաղաքէն մինչեւ 'ի գիւղն Սղկայː Եզերք վտակի սորին եւ այլ աղբերաց՝ զարդարեալ են կանաչազեղ եւ մանաւանդ լախուր կամ կարոս անուանեալ բուսովք, զոր տեղացիքն՝ Ջրի կարոս կոչեն եւ է տարբեր 'ի միւս երկուց տեսակացն եւս, զորս 'ի կերակուրս արկանենː*

29· *Գլգլունք կամ գլգլումն ասի ձայն ջուրց, որ 'ի նեղաբերան յամանոյ ինչ եւ կայ յականէ աղբիւրոյ 'ի դուրս հոսի սաստկապէս՝ ճնշելով յօդոյնː*

50· *Քաղցր է եւ հոգեւոր իմն անուշութիւն եւ ազդեցութիւն ունի ձայն փայտիս այսմիկ կոչնակ անուանեալ· զոր առեալ 'ի չորրորդ պահու գիշերոյն ժամահարն՝ ելանէ 'ի հրապարակս եւ փողոցէ 'ի փողոց հարեալ հրջի· յորոյ ձայնէն զարթուցեալ դնան յեկեղեցինː Եւ այս սովորութիւն ոչ պուրական գաւառին· իսկ յայլ տեղիս Հայաստանեայց, եթէ գո՞յ այս սովորութիւն, ոչ գիտեմː*

31· *Ալուչայ· յայս անուն եւս կոչեն Վասպուրականքն զսալորնː*

32· *Տուտահաս կոչի այն ազդ տանձից, որ ընդ ծիրանոյն հասունանայː*

*Մեղրուկ կամ մեղրիկ տանձ· յայտ է վասն մեղրահամ լինելոյն առեալ է զանունսː*

*Դեղին տանձ· մեծագոյն է սա քան զայլ ամարային տանձս եւ կարի քաղցր, զոր մասն մասն արարեալ չորացուցանեն ընդ արեւով եւ գչիրն պահեն 'ի ձմերանիː*

33· *Թթու տանձ· յայսմանէ եթէ ուտիցէ ոք յխուն հատ՝ չատ ոչ ասէ որովայն սակս թթուահամ եւ ջրալից լինելոյն· իսկ եթէ Տարային իցէ որկորն՝ զհազարն միանգամայն չ[illegible]աէ չատː*

*Տըղտըղեկ տանձ· փոքր է սա եւ բոլորչի· եւ դիւրագիւտ ասացաք՝ որովհետեւ յաճախ գտանի յամենայն այգիսː*

34· *Ծաղկաբերան խնձոր· քանզի 'ի հասունանալն եւս զծաղիկն 'ի բերան պահէ նման վարունկիː*

35· *Մալաղի տանձ· հաւանական է թէ այս ազդ տանձից իցէ եւ այն, զոր Վիրգիլիոս 'ի միջակականոն բռնալիր կոչէ· ըստ որում մեծութեամբն լնու զբուռն մարդոյː*

36· *Մալաչի տանձ· յարգի է սա քան զայլ ձմեռնային տանձս· զոր ըզգուշութեամբ առեալ 'ի ծառոյն եւ կախուան արարեալ 'ի ներքնատունս կամ 'ի ջերմին սենեակս կախեն յառաստաղաց· որով դիմանայ 'ի ձմերանː*

*Նռնենի կամ Նարընջաձեւ տանձ· յաղագս նմանելոյ ձեւոցն առեալ զայս անուն· եւ առաւել եւս տոկուն է սա քան զայլ ձմեռնային տանձանː*

37· *Երկարատուկ խնձոր· 'ի մէջ ամենայն ձմեռնային մրգացն մի միայն պատուականագոյն համարեալ է սա· զորս մի մի քաղեալ 'ի ծառոյն·*

*այլ եւ այլ հնարիւք պահեն, որ դիմանայ զբաղում ժամանակս․ եւ զանուն սորին բնակիչքն՝ Կըլաթ խնծոր կոչեն։*

38․ *Գեղեցիկ է յոյժ կերպ անգործութեան այգեացս այսոցիկ, քանզի ոչ 'ի հարթ գետնի տնկեալ են ըստ այլ գաւառաց սովորութեան, այլ 'ի մէջ խորագոյն առուաց եւ արմատք որթոցն յաջ եւ յահեակ թեւս բաշխեալ խաչանման՝ հանեալք են 'ի վերայ բարձր թմբոցն, որ լայնանիստ եւ ուղղաձիգ շինեալ են առ իւրաքանչիւր առուօք․ եւ ուռքն արձակեալ գան խառնին ընդ միմեանս եւ զբոլոր թմբով ծածկեալ տարածանին ակօսաձեւ․ վասն այն ողկոյզքն ոչ այնչափ յուռոցն կախին, որչափ 'ի վերայ հողոյ թմբերին անկեալ հասունանան․ որ քաղցրագոյն եւս լինին եւ կոչին արեւահաս։*

39․ *Սառնային կամ ռամկօրէն պաղ աղբիւր․ բղխի սա առ ընթեր վերին Վարագայ հուպ խոնարհեալ տաճարին․ որոյ ջուրցն արդարեւ չկարեն դիմանալ ատամունք մարդոյ։*

40․ *Ազնիւ եւ անուշահոտ է ծաղիկս այս քան զայլ ամենայն ծաղկունս լերին Վարագայ․ զորմէ ասեն ոմանք թէ չգտանի յայլ ուրեք, սակայն մարթ է գտանել 'ի բիւրակնեան լերինս կամ յայլ ջրաբուխ մարմանդավայրս։*

41․ *Զհեզասահ մեղմիկ խոխոջիւն ջուրց, որ խաղան մանուածաւալ առ արմատովքծաղկանց՝ զըղզըղալ կամ զըղզըղումն կոչեն Վասպուրականքն․ եւ թուի թէ 'ի բառէս սողոսկումն կամ սողոսկուտ՝ աղաւաղեալ իցէ այս, վասն զի նմանագոյն է ձայնիցն հնչման։*

42․ *Բազում սքանչելի եղանակաւոր տաղըս յօրինեալ կան 'ի վերայ լերին Վարագայ․ յորոց․ աւա՛ղ, չունիմ առիթ եւ ոչ զմի եւս դնել աստանօր 'ի զուարճութիւն բանասիրացդ եւ 'ի ցոյց տենչանաց սրտավառ երգողին։*

43․ *Պառնասոս կոչէր լերինն բանաստեղծութեան յորում կային ինն Մուսայք, ոյք համարէին դստերք Արամազդայ չաստուծոյն․ եւ առ ստորոտով լերինն այնմիկ՝ կայր աղբիւր մի նուիրեալ Մուսայից, որոյ ջուրքըն քերթողս առնէին զնա, որ ըմպէր։*

44․ *Գալիլեայ կոչի այն մասն գագաթան լերինս այսմիկ՝ որ փոքր ինչ ստորին է քան զյոյժ բարձրագոյն մասն աստղաբերդ կոչեցեալ 'ի բնակչացն․ եւ անդ իսկ թաղուցաւ 'ի Հռիփսիմեայ մասն կենաց փայտին․ որով առ զանուն Գալիլեային, որ յԵրուսաղէմ։*

45․ *Խոնարհեալ եկեղեցւոյն փոքր մի հեռի է Թողիկ ճգնաւորին այր, գետնափոր եւ անձուկ յոյժ որ կայ մինչեւ ցայսօր։*

46․ *Էր սա* Ճամուշչի օղլու Հալիլ աղան *մի 'ի բռնագունիցն Վանայ եղելոյ յայնմ ժամանակի, որ յանդգնեցաւ քակել զգմբէթ ամայացեալ եկեղեցւոյն առ 'ի պէտս բաղանեաց շինութեան տան իւրում․ եւ յորժամ վար առ զպատիժն ծակոտեալ մարմնով՝ զղջացաւ ակամայ շինել զայն միւս անգամ։*

47․ *Թէպէտ ըստ պատմելոյ յայսմաւուրաց՝ երկոտասան սիւնք երեւեցան աստանօր, այլ ըստ աւանդութեան բնակչացն եօթն միայն երեւեալք են, վասն այն ըստ թուոց լուսեղէն սեանցն՝ եօթն եկեղեցիք կառուցան այսր․ իսկ մնացեալքն 'ի վերայ վերին Վարագայ եւ Ցայնկոյս ձորոյ կոչեցեալ սուրբ Աստուածածին եկեղեցւոյն երեւեալ են, որ է յարեւելս հիւսիսակողմանն է այգեստանեայց Վանայ։*

48․ *Սենեքերիմ արքայն Արծրունի թէպէտ 'ի Սեբաստիա վախճանեցաւ․*

բայց յետոյ ըզմարմին նորա եւ զոփկնոջն Խոշոշ կոչեցեալ՝ փոխադրեցին որդիքն իւր 'ի Վարագ. որպէս պատուիրեալ էր ինքն։

49. Շուշան կամ շուշանց. է անուն գեղջն, որ մերձ է Կարմրաւոր կոչեցեալ Վանից. եւ կայ 'ի նմին փոքրիկ եկեղեցի մի, զոր Շուշանից սուրբ Գէորգ կոչեն։

Այս մենաստան յայն սակս կոչի Կարմրաւոր սուրբ Աստուածածին. քանզի անդ երեւեալ է Աստուածածին ծիրանի եւ կարմրատեսիլ հանդերձիւք. որով առեալ է զայս անունս։

Զորովանք 'ի յետին ժամանակս կոչեցաւ Սալնապատու վանք եւ ունի զերիս տաճարս կից միմեանց՝ շինեալք յանուն Աստուածածնի, Յովհաննու Մկրտչին եւ սրբոյ Լուսաւորչին։

50. Կառուցեալ է սա 'ի վերոյ գեղջն Գուռուպաշ. որ է յարեւելս հարաւակողմանն Վանայ։

51. Զուուստան. գիւղ է սակաւ ինչ հեռու յԱրտամիտու եւ մօտ Կոընկավանից։

52. Զգեղեցկութիւն դրից Արտամիտու եւ զառաջին շինութիւնս, որովք վայելչացոյց զնա Բ Արտաշէս՝ քաջ նկարագրէ Թովմայ Արծրունին, զոր թէ քեզ փափագելի է ընթեռնուլ, թէ ոչ 'ի գիրս նորա՝ կարես գտանել զայնս 'ի ստորագրութիւն Հին Հայաստանեայց Ինճիճեան Հայր Ղուկաս հայրենասէր վարդապետին. յերես 188։

53. Ցանցանելն սրբոյն Յակովբայ առ այս աղբերաւ՝ աղջկունք գեղջն նստեալք լուանային զձորձս եւ ոչ պատկառեցան 'ի սրբոյն եւ ծաղր եւս արարին զնա. վասն որոյ անէծ զաղբիւրն եւ առ ժամայն ցամաքեցաւ. եւ զսեաւ հերս աղջկանցն սպիտակացոյց. զայս տեսեալ բնակչացն գիւղին՝ ընթացան աղաչանօք զկնի սրբոյն եւ նորա գթացեալ կրկին բղխեցոյց զաղբիւրն. իսկ զհերս աղջկանցն եթող այնպէս 'ի յերկիւղ անպատկառից։

54. Անկղ. է անուն միոյ գեղջ 'ի Հայոց ձոր առ գետովս. որոյ յանուն կոչի 'ի բնակչացն Անկղայ գետ. իսկ մեծ առուն Շամիրամայ՝ է գետոյն յայսկոյս 'ի հիւսիսակողմն. եւ այնչափ յորդագոյն է ջուր սորին, մինչեւ բաւական լինի քառասուն ջրաղացաց, որ շինեալ են կարգաւ առ իւրեւ։

55. Զարմանայ արդարեւ ամենայն ոք վասն բազմութեան ձկանցն, որ 'ի Մայխսին խաղան յայս գետ եւ 'ի միւսն, որ անկանի 'ի հիւսիսակողմն Վանայ առ գիւղիւ Մարմետ։ Եւ այնչափ լինի որսորդութիւն ձկանց յերկոսին եւս, մինչեւ բաւել ոչ միայն քաղաքին եւ շրջակայ գեղօրէից. այլ եւ հեռաւորաց, որ զան կարաւան կարաւան եւ ցամաքեցուցեալ աղիւ բարձեալ տանին։

56. Բարձր եւ զուարճալի զդիրս Ոստանայ եւ շքեղութիւն ծովահայեաց տաճարին, զոր շինեաց արքայն Գագիկ իբր ճեմարանոց զբօսանաց՝ ճոխագոյն ստորագրէ նոյն պատմագիրն, զոր գիտ 'ի ստրա «Հին Հայաս» յերես 107։

57. Գետակս այս անցանի առ Հիմամբք վանից եւ երթեալ խառնի 'ի Տիգրիս գետն։

58. Պատուական մարմին արքային մերում Տրդատայ թէպէտ նախ 'ի Թորդան թաղեցաւ. բայց զկնի ժամանակաց կամ ամբողջ մարմին կամ մասն ինչ նորա՝ բերեալ եղեւ 'ի Հոգւոց Վանք։

59. Նարեկ գիւղ հեռի է 'ի ծովակէն Վանայ միով ժամաւ 'ի հարաւակողմ նորին. առ որ մերձ է մենաստանս այս. որում վանահայր եղեւ

հրեշտակակրօն վարդապետն Գրիգոր Նարեկացին։ Հուպ այս գիւղիս 'ի յարեւմուտս հիւսիսակողման նորին՝ գոյ լեառն մի ապառաժուտ յորում են վեց քարայրք, երեքն 'ի վերոյ եւ երեքն 'ի ստորեւ. եւ 'ի մէջ միումն շինեալ կայ սեղան. որ էր տեղի աղօթից Նարեկացւոյն եւ անդուստ իսկ 'ի ծովն հայելով ետես զկոյսն եւ զՑիսուս 'ի գրկին։

60. Ջնորեկ ձագս հաւոյն՝ ճետ եւս կոչեն 'ի Հայաստան, որ 'ի գիրս արու զաւակ նշանակէ։

61. Ջանուն ճարտարապետին եկեղեցւոյն Աղթամարայ՝ յիշատակէ Թովմայ Արծրունին այսպէս։ «Եւ քանզի ճարտարապետ արուեստին՝ էր Մանուէլ... այր լի իմաստութեամբ եւ զօրաւոր 'ի գործս իւր. հրաշակերտէ զեկեղեցին զարմանագործ արուեստիւ. եւ այլն»։

62. Մի այնպէս կարծեսցէ ուշիմ ընթերցողն, եթէ ճիշդ այսպիսի իցեն ամենայն քանդակեալ դրօշուածք յարտաքին կողմունս տաճարիս այս, թեեւս առաւել ինչ իցեն կամ պակաս 'ի նոսին, ըստ որում չեմք ականատես. եւ թէպէտ Թովմայ Արծրունին պատմէ զնոցանէ, այլ ըստ մասին եւ եթ։ Վասն որոյ եւ մեք էր ինչ, զի ըստ պատմելոյ նորին ճիշդ նկարագրեցաք եւ էր ինչ, զի ազատութեամբ յաւելաք 'ի մէնջ։ Տես զայսմանէ եւս 'ի ստորա «Հին Հայաս» յերես 173։

63. Խոստավանող աշակերտն՝ նոյն ինքն է Աբրահամ ընկեր Խորենայ վախճանելոյ յԱսորեստան եւ աշակերտ սրբոյ Ղեւոնդեանցն, որոյ դերեզման կայ այժմ 'ի Հայոց ձոր եւ է ուխտատեղի. որովհետեւ յետ տասն ա-
[illegible]
Եղիշէին որ ներբողէ զնորին սքանչելի վարս։

64. Սա ինքն էր Գէորգ Վարդապետն եւ խստակրօն ճգնաւորն հռչակեալն առ հեռաւորս վարուքն անզուգական. որ կրօնաւորեալ էր 'ի Լիմ անապատն. եւ վախճանեալ յառաջ քան զվեց ամ՝ թաղեցաւ առ հովանեաւ սուրբ տաճարին Գէորգայ։ Արժան էր բազում դրուատիս յօրինել զառաքինի վարուց նորին, բայց անտեղեակ գոլով համօրէն ճգնողական հանդիսից, միանգամայն եւ ծննդեան եւ կրօնաւորելոյն յայս անապատ. վասն այնորիկ այսչափ միայն պատուեցաք զերանելոյն առաքինութիւն։

65. Քաջբերունի կոչի գաւառն Արճիշոյ, որ է հանդէպ Լիմ կղզոյն յարեւմուտս հիւսիսակողմանն. վասն այն եւ մեք զայն ծովուն Վանայ՝ Քաջբերունեաց ծով կոչեցաք։



# ՄԱՐԳԱՐԻՏ
# ԱՐՔԱՅՈՒԹԵԱՆ
# ԵՐԿՆԻՑ

խուճ վաստակ երկոց

ՄԿՐՏԻՉ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԽՐԻՄԵԱՆ

Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ Կ. ՊՈԼՍՈՅ

ՏԵԱՌՆ ՊՕՂՈՍԻ

*ԱՌԱՔԵԼԱՊԱՇՏՕՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ*

Նման է ԱՐՔԱՅՈՒԹԻՒՆ ԵՐԿՆԻՑ առն վաճառականի, որ խնդրիցէ մարգարիտս գեղեցիկս: Եւ գտեալ մի պատուական մարգարիտ, երթեալ վաճառեաց զամենայն զոր ինչ ունէր, եւ գնեաց զայն մարգարիտ:

*Աւետ. Մատթ. Գլ. ԺԳ. Համ.* 45

ԱՌ

ԲԱՐԴԱՒԱՃԵԱԼ ՇԱՌԱՒԻՂՍ

# ՕՏԵԱՆ ԳԵՐԴԱՍՏԱՆԻ

ՈՒՂԵՐՁ

---

Ընդունեցէք սրտի հանութեամբ սոյն դրօշուած տառիս մահարձան․ Մարմարինեայ ծանր քար չէ սա, միայն հողապատ գերեզմանին վրայ անշարժ կեցած տխուր եւ լռին փառք․ այլ խօսուն Աւետարան է, որ ընդհանուր աշխարհի ծագ իւր ձայն կը հնչէ։ Այն տիրասէր կնոջ աշխարհաքարոզ յիշատակին հետ, որ ազնիւ իւղով օծեց Քրիստոսի գլուխ, թո՛ղ յիշուի նաեւ Ձեր առաքինի հանգուցեալ Հօր Պօղոս Աղայի Օտեան պանծալի անուն, զոր երախտապարտ սրտով այս վերտառութեամբ կը պսակէ ի գլուխ Մատենիս նժդեհ վարդապետ Հայաստանցի։



# ՆԱԽԱՇԱՒԻՂ



Ո՞րն է այն մատեան, որ առաւել մարդոյ սրտին հետ կը խօսի քան թէ մտաց․ ո՛վ է այն մատենին արագագիր դպիր, որուն լեզուէն ու շրթունքներէն շնորհք եւ սէր կը բղխին, իր խօսքեր բոլոր աշխարհ կը գրաւեն, եւ մարդոյ հոգին վարելով ի գերագոյն սէր՝ երկրէս երկինք կը հանէ․ ի՛նչ է այն մեղմախօս բարբառ, որ Հրէաստանի խորէն տիեզերաց չորս կողմ հասաւ․ ի՞նչ զօրաւոր լեզու էր այն, որ ընտրեալ յիմարներուն բերնով՝ աշխարհիս իմաստնոց միտքեր յաղթահարեց ու նուաճեց։ Աւետարանն է այս յաւիտենական կենաց բան․ զոր Յիսուս քարոզեց կտակ թողուց աշխարհի ու գնաց․ Սուրբ Հոգին յիշեցոյց, Աւետարանիչներն գրեցին։

Աւետարան Յիսուսի շունչն է, որով չէ թէ միայն Բաբելոնի դաշտի մէջ ցրուած Հրէական ազգին չորցած ոսկորներ կենդանացոյց․ այլ համատարած աշխարհիս երես սփռուած կենդանւոյն մեռած ընդհանուր մարդկութեան հոգիներն ի նոր կեանս վերանորոգեց։

Ինչ որ Աւետարան գործեց, կարող չեղան գործել հին եւ արդի աշխարհին մէջ՝ ոչ իշխանութեանց զէնք, ոչ իմաստասիրաց գիտք։ Աւետարանին փառք բարձրացաւ տիրեց աշխարհիս վրայ քանի մի տկար ձկնորսներու ձեռքով․ Աւետարանին փառաւոր գահ՝ Բեթլեհէմի մսուր եւ աղքատներու խրճիթ եղաւ։

Չիկայ բնաւ գիրք մի կամ մարդկային հանճար եւ իմաստութիւն, որ կարողանայ մարդոց ստահակ հոգին ուղղել, դաստիարակել եւ բարւոքել, միշտ ի չարն արձանացած 'ի բարին վերածել, բայց միայն՝ Աւետարանն։ Այս փոքրիկ հրաշագիր մատեան աշխարհ կարդաց ու հասկցաւ․ այս մանրիկ մանանեխի սերմէն ծառ մի բուսաւ, որուն ապաստանաբար ճիւղերուն վրայ աշխարհիս վաստակեալ մարդիկ թռչունի պէս նստան ու հանգիստ առին։

Յիսուս իւր Աւետարանին պատուական մարգարիտ Հրէաստանի հրապարակին մէջ ի վաճառ հանեց, աղքատն եւ հարուստն վազեցին ի գնել․ մարգարտին տէր ձրի կը բաշխէր, ոչ ինչ չէր պահանջէր, այլ միայն հաւատք․ ով որ կը հաւատար, նա միայն կստանար մարգարիտն։

Աւետարանին մարգարիտ յիմարներու սրտին մէջ հաւատք է, իմաստնոց մտքին մէջ անհերքելի ճշմարտութիւն. մէկն առանց քննելոյ կը հաւատայ, միւսն Տէքարթի պէս քըննել ուզելով՝ կ'ապշի եւ կը սքանչանայ:

Աւետարանին կերակուր անմահարար է, կաթէն աւելի սնուցիչ, մեղրէն աւելի քաղցր է. Դաւիթ ճաշակեց պայն հոգւով եւ անուշութենէն զմայլելով կասէր «Որչա՜փ զի քաղցր են ի քիմս իմ բանք քո, քան զմեղր բերանոյ իմոյ:»

Այս ամենահամ սիրոյ ճաշակ Յիսուս բերաւ երկինքէն Գողգոթայի խաչին փեթակին մէջ նորաճաշակ մանանայ մի կազմեց, Աւետարանին Սուրբ օրէնքներն, կարմիր արիւնով դրոշմեց. զոր չի կարացին եղծել եւ ոչ նշանախեց մի աշխարհիս բռնաւորութեանց ձեռք: Ի՞նչ կարողացան չինել Պըղատոն, Արիստոտել, Սոկրատ իրենց իմաստասիրութեան փեթակին մէջ: Յիսուս միայն շինեց կրօնի Սուրբ մեղր. որով քաղցրացաւ հանուր մարդկութեան բերան, որ դառնացած էր Ադամայ ճաշակած պտղով:

Աւետարան Աստուածորդւոյն երեսաց արտափայլող լոյսն է. եկեղեցին մութ է, եթէ սորա լուսով չի լուսաւորի. եկեղեցին կը խաւարի, եթէ սորա լոյս չառաջնորդէ, եկեղեցին հաստատ չէ, եթէ սորա Սուրբ քարերով չը հիմնուի:

Հայաստանեայց եկեղեցւոյ մեր երանելի նախնիք որչա՞փ երկիւղածութեամբ պաշտեր են Աւետարան, յորոց ոմանք մեկնութեանց պարապելով՝ Աւետարանին գիտութիւն ժողովրդոց ընտելացուցեր են: Եթէ ապացոյց կուզես՝ գնա շրջիր Հայաստանի վանորէից, քաղաքաց եւ գիւղերու մէջ, ուր կը տեսնաս բիւրաւոր գրչագիր Աւետարաններ եւ նոցա մեկնութիւնք մագաղաթներու վրայ վայելուչ ծաղկենկարներով գրուած: Եւ այսօր խսկ եկեղեցւոյն մէջ ամէն ընթերցուածներէն առաւել Աւետարան կը պաշտուի. վասն զի ժողովրդոց խնկելի գիրք Աւետարանն է, զոր կը համբուրէ յաճախ ամենայն ջերմեռանդութեամբ. թէ հիւանդանայ Աւետարանին կը դիմէ, թէ գլուխ ցաւի նորա տակ կը դնէ, թէ հաւատայ կատարելապէս իւր ցաւեր կը փարատին: Աւետարանին հրաշալիք մեծ է, միայն մարմնոյ ախտեր չի բժշկեր, այլ առաւել եւս հոգւոյն ախտեր կապաքինէ:

Ես տրտում, որ իբրեւ վարդապետ եւ մատակարար պաշտօնեայ կոչուած եմ Աւետարանի սեղանոյն, աւանիկ նոյն ամենալի անսպառ սեղանէն դոյզն մի ճաշակ պատրաստեցի Սիօ-

նի որդւոց համար: Մատթէոսի Աւետարանին հինգերորդ, վեցերորդ եւ եօթներորդ գլխոց վրայ մեր մտաց չափաւորութեամբ խորհրդածելով դիւրաձեռն յօրինեցի այս փոքր Մատենիկ: Այն նպատակաւ որոշեցի միայն այս երեք գլուխ վասն, զի սոցա մէջ կը պարունակին գրեթէ մեծ մասամբ Աւետարանի ճշմարտութեան բարոյական եւ փրկաւէտ օրէնքներն, ուր Մովսիսին օրինաց թերութիւններն Յիսուս կատարեալ գերահրաշ կատարելութեամբ:

Աւետարանին երեք գլխոց իսկական բնագիրն խորհրդով նախակարգեցի մեր խորհրդածութեանց սկիզբն, որով թերեւս լուսոյն շնորհիւ՝ լուսաւորի մեր ստուերագիր խորհրդածութեանց պատկերն: Փոքրաջան աշխատութիւնս ուրիշ նպատակ մի չունի, ուշիմ ընթերցող, բայց միայն Աւետարանի Սուրբ օրինաց գիրեր դրոշմել մեր սրտին մէջ. եւ միանգամայն համեմատել մեր արդի ատելութեան վարք Յիսուսի քարոզած սիրոյ պատուիրանին հետ, ու ճանչնալ փորձով թէ ստոյգ Աւետարանին հարազատ որդիներ կոչուելու արժանի եմք, եթէ իբրեւ խորթ եւ օտար մերժուած եմք մեր երկնաւոր հօր որդեգրութենէն. որում արժանի կացոյց զմեզ Սուրբ հոգւոյն վերածնութեան շնորհք:

Առէք ընդունեցէք ուրեմն, ո՛վ եկեղեցւոյ մօր հոգեծին մանկունք, Յիսուսէն աւանդեալ արքայութեան սոյն մարգարիտ, զոր իբրեւ փոքրիկ մանեակ մի յօրինելով ձեզ կը նուիրեմ:

Սողոմոնի ձայն կը յորդորէ զձեզ, որ այս մանեակ ձեր պարանոցէն կախէք. որպէս իմաստուն վաճառական ամէն բան վաճառելով, միայն Յիսուսի մարգարիտն ստացէք, որուն հետ բնաւ հաւասարութիւն չունին բոլոր աշխարհիս թագաւորութեան գանձեր: Ի՞նչ գին կը խնդրէ հապա այս մարգարտին տէր, ուրիշ ոչինչ, սի՛րտ միայն: Տո՛ւր ուրեմն, քո սիրտ, որդեակ, ինչպէս կը խրատէ Իմաստունն, եւ ահա կստանաս մարգարիտն:

# ՄԱՐԳԱՐԻՏ
# ԱՐՔԱՅՈՒԹԵԱՆ
# ԵՐԿՆԻՑ

———o———

Յիսուսի վարդապետութիւն ի վերայ լերինն Գալիլեացւոց. յորում բովանդակին Աւետարանին շնորհաց եւ ճշմարտութեան օրէնք. Մատթէոսի Աւետարանչին ի հինգերորդ գլխէն սկսեալ մինչեւ զեօթներորդ գլխոյն վերջ:

———o———

## ԳԼՈՒԽ Ե.

*Եւ տեսեալ (Յիսուսի) զժողովուրդն՝ ել ի լեառն. եւ իբրեւ նստաւ անդ՝ մատեան առ նա աշակերտքն նորա. եւ բացեալ զբերան իւր ուսուցանէր զնոսա, եւ ասէր.*

*Երանի աղքատաց հոգւով, զի նոցա է արքայութիւն երկնից:*

*Երանի սգաւորաց, զի նոքա մխիթարեսցին:*

*Երանի հեզոց, զի նոքա ժառանգեսցեն զերկիր:*

*Երանի որ քաղցեալ եւ ծարաւի իցեն արդարութեան, զի նոքա յագեսցին:*

*Երանի ողորմածոց, զի նոքա ողորմութիւն գտցեն:*

*Երանի այնոցիկ՝ որ սուրբ են սրտիւք, զի նոքա զԱստուած տեսցեն:*

*Երանի խաղաղարարաց, զի նոքա որդիք Աստուծոյ կոչեսցին:*

*Երանի որ հալածեալ իցեն վասն արդարութեան, զի նոցա է արքայութիւն երկնից:*

*Երանի է ձեզ՝ յորժամ նախատիցեն զձեզ եւ հալածեսցեն, եւ ասիցեն զամենայն բան չար զձէնջ սուտ՝ վասն իմ. ցնծացէք եւ ուրախ լերուք, զի վարձք ձեր բազում են յերկինս. զի այսպէս հալածեցին զմարգարէսն որ յառաջ քան զձեզ էին:*

*Դուք էք աղ երկրի. ապա թէ աղն անհամի՝ իւ յաղիցի. ոչ իւիք ազդիցէ այնուհետեւ, բայց եթէ ընկենուլ արտաքս՝ եւ կոխան լինել ի մարդկանէ:*

*Դուք էք լոյս աշխարհի. ոչ կարէ քաղաք թաքչել՝ որ ի վե-*

*րայ լերին կայցէ· եւ ոչ լուցանեն ճրագ՝ եւ դնեն ընդ գրուանաւ, այլ ի վերայ աշտանակի· եւ լոյս տայ ամենեցուն՝ որ ի տանն իցեն· այնպէս լուսաւորեսցէ լոյս ձեր առաջի մարդկան, որպէս զի տեսցեն զգործս ձեր բարիս, եւ փառաւորեսցեն զՀայր ձեր որ յերկինս է:*

*Մի՛ համարիք եթէ եկի լուծանել զօրէնս կամ զմարգարէս· ոչ եկի լուծանել՝ այլ լնուլ:*

*Ամէն ասեմ ձեզ՝ մինչեւ անցցեն երկինք եւ երկիր· յովտ մի՝ որ նշանախեց մի է, ոչ անցցէ յօրինացն եւ ի մարգարէից՝ մինչեւ ամենայն եղիցի:*

*Որ ոք լուծցէ մի ինչ պատուիրանացս յայսցանէ ի փոքունց, եւ ուսուսցէ այնպէս զմարդիկ, փոքր կոչեսցի յարքայութեան երկնից:*

*Իսկ որ արասցէ եւ ուսուսցէ, նա մեծ կոչեսցի յարքայութեան երկնից:*

*Բայց ասեմ ձեզ, զի եթէ ոչ առաւելուցու արդարութիւն ձեր աւելի քան զդպրացն եւ զփարիսեցւոց, ոչ մտանիցէք յարքայութիւն երկնից:*

*Լուարուք զի ասացաւ առաջնոցն, թէ մի՛ սպանաներ· զի որ սպանանիցէ՝ պարտական լիցի դատաստանի:*

*Այլ ես ասեմ ձեզ, եթէ ամենայն որ բարկանայ եղբօր իւրում տարապարտուց՝ պարտաւոր լիցի դատաստանի· եւ որ ասիցէ ցեղբայր իւր յիմար՝ պարտաւոր լիցի ատենի· եւ որ ասիցէ ցեղբայր իւր մորոս, պարտաւոր լիցի ի գեհեն հրոյն:*

*Եթէ մատուցանիցես զպատարագ քո ի վերայ սեղանոյ, եւ անդ յիշեսցես՝ եթէ եղբայր քո ունիցի ինչ խէթ դքէն, թող զպատարագն քո առաջի սեղանոյն, եւ երթ նախ հաշտեաց ընդ եղբօր քում, եւ ապա եկեալ մատուսջիր զպատարագն քո:*

*Լեր իրաւախոհ ընդ ոսոխի քում վաղվաղոյն մինչդեռ իցես ընդ նմա ի ճանապարհի· գուցէ մատնիցէ զքեզ ոսոխն դատաւորին, եւ դատաւորն դահճի· եւ արկանիցիս ի բանտ:*

*Ամէն ասեմ քեզ, ոչ ելանիցես անտի՝ մինչեւ հատուցանիցես զյետին նաքարակիտն:*

*Լուարուք զի ասացաւ՝ մի՛ շնար· բայց ես ասեմ ձեզ, թէ ամենայն որ հայի ի կին մարդ առ ի ցանկանալոյ նմա, անդէն շնացաւ ընդ նմա ի սրտի իւրում:*

*Եթէ ակն քո աջ գայթակղեցուցանէ զքեզ, խլեա զնա եւ ընկեա ի քէն· զի լաւ է քեզ եթէ մի յանդամոց քո կորիցէ, եւ մի՛ ամենայն մարմինդ քո անկանիցի ի գեհեն:*

Եւ եթէ աջ ձեռն քո գայթակղեցուցանէ զքեզ, հատ զնա եւ ընկեա ի քէն. զի լաւ է քեզ եթէ մի յանդամոց քոց կորիցէ, եւ մի՛ ամենայն մարմինդ քո արկանիցի ի գեհեն:

Ապաքէն ասացաւ, թէ որ արձակիցէ զկին իւր՝ տացէ նմա զարձակմանն:

Բայց ես ասեմ ձեզ, եթէ ամենայն որ արձակէ զկին իւր առանց բանի պոռնկութեան, նա տայ նմա շնալ, եւ որ զարձակեալն առնէ՝ շնայ:

Դարձեալ լուարուք զի ասացաւ առաջնոցն, մի՛ երդնուցուս սուտ, բայց հատուսցես Տեառն զերդմունս քո:

Այլ ես ասեմ ձեզ՝ ամենեւին մի՛ երդնուլ, մի՛ յերկինս՝ զի աթոռ է Աստուծոյ, եւ մի՛ յերկիր՝ զի պատուանդան է ոտից նորա, եւ մի՛ յԵրուսաղէմ՝ զի քաղաք է մեծի արքայի. եւ մի՛ ի գլուխ քո երդնուցուս, զի ոչ կարես մազ մի սպիտակ առնել կամ թուխ:

Այլ եղիցի ձեր բան, այոն՝ այո, եւ ոչն՝ ոչ. զի աւելին քան զայն ի չարէն է:

Լուարուք զի ասացաւ, ակն ընդ ական, եւ ատամն ընդ ատաման:

Այլ ես ասեմ ձեզ, մի՛ կալ հակառակ չարի:

Այլ եթէ ոք ածիցէ ապտակ յաջ ծնօտ քո՝ դարձո նմա եւ զմիւսն:

Եւ որ կամիցի ոք դատել եւ առնուլ զշապիկս քո, թող ի նա եւ զբաճկոն քո:

Եւ որ տարապարհակ վարիցէ զքեզ մղոն մի, երթ ընդ նմա եւ երկուս. որում խնդրէ ի քէն՝ տուր, եւ որ կամի փոխ առնուլ ի քէն՝ մի՛ դարձուցաներ զերեսս:

Լուարուք ապաքէն զի ասացաւ, սիրեսցես զընկեր քո, եւ ատեսցես զթշնամին քո:

Այլ ես ասեմ ձեզ, սիրեցէք զթշնամիս ձեր, օրհնեցէք զանիծիչս ձեր, բարի արարէք ատելեաց ձերոց, եւ աղօթս ի վերայ այնոցիկ՝ որ լլկենն զձեզ եւ հալածեն. զի եղիջիք որդիք Հօր ձերոյ որ յերկինսն է. զի արեգակն իւր ծագէ ի վերայ չարաց եւ բարեաց, եւ ածէ անձրեւ ի վերայ արդարոց եւ մեղաւորաց:

Զի եթէ սիրիցէք զայնոսիկ որ սիրենն զձեզ՝ զի՞նչ վարձք իցեն. ո՞չ ապաքէն եւ մաքսաւորք զնոյն գործեն. եւ եթէ տայցէք միայն ողջոյն բարեկամաց ձերոց՝ զի՞նչ աւելի առնէք. ո՞չ ապաքէն մաքսաւորք եւ մեղաւորք զնոյն գործեն:

Արդ եղերուք դուք կատարեալք. որպէս եւ Հայրն ձեր երկնաւոր կատարեալ է:

---

## ԳԼՈՒԽ Զ.

Զգոյշ լերուք ողորմութեան ձերում՝ մի՛ առնել առաջի մարդկան, որպէս թէ ի ցոյց ինչ նոցա. գուցէ եւ վարձս ոչ ընդունիցիք ի Հօրէն ձերմէ՝ որ յերկինսն է:

Այլ յորժամ առնիցես ողորմութիւն, մի՛ հարկաներ փող առաջի քո, որպէս կեղծաւորքն առնեն ի ժողովուրդս եւ ի հրապարակս, որպէս զի փառաւորեսցին ի մարդկանէ:

Ամէն ասեմ ձեզ՝ այն իսկ են վարձք նոցա:

Այլ դու յորժամ ողորմութիւն առնիցես. մի՛ գիտասցէ ձախ քո զինչ գործէ աջ քո. որպէս զի եղիցի ողորմութիւնն քո ի ծածուկ, եւ Հայրն քո որ տեսանէ ի ծածուկ՝ հատուսցէ քեզ յայտնապէս:

Եւ յորժամ յաղօթս կայցես, մի՛ լինիցիս որպէս կեղծաւորքն. զի սիրեն ի ժողովուրդս եւ յանկիւնս հրապարակաց կալ յաղօթս, որպէս զի երեւեսցին մարդկան:

Ամէն ասեմ ձեզ՝ այն իսկ են վարձք նոցա:

Այլ դու յորժամ կայցես յաղօթս, մուտ ի սենեակ քո՝ եւ փակեա զդուրս քո, եւ կաց յաղօթս առ Հայր քո ի ծածուկ. եւ Հայրն քո որ տեսանէ ի ծածուկ, հատուսցէ քեզ յայտնապէս:

Եւ յորժամ կայցէք յաղօթս, մի՛ շատախօսք լինիք իբրեւ զհեթանոսն. զի համարին թէ ի բազում խօսից իւրեանց լսելի լինիցին. արդ մի՛ նմանիցէք նոցա. զի գիտէ Հայրն ձեր զինչ պիտոյ է ձեզ, մինչեւ ձեր խնդրեալ ինչ իցէ ի նմանէ:

Եւ արդ այսպէս կացէք դուք յաղօթս. Հայր մեր որ յերկինս, սուրբ եղիցի անուն քո. եկեսցէ արքայութիւն ք. եղիցին կամք քո որպէս յերկինս եւ յերկրի. զհաց մեր հանապազորդ՝ տուր մեզ այսօր, եւ թող մեզ զպարտիս մեր, որպէս եւ մեք թողումք մերոց պարտապանաց, եւ մի՛ տանիր զմեզ ի փորձութիւն, այլ փրկեա զմեզ ի չարէն, զի քո է արքայութիւն եւ զօրութիւն եւ փառք յաւիտեանս ամէն:

Զի եթէ թողուցուք մարդկան զյանցանս նոցա, թողցէ եւ ձեզ Հայրն ձեր երկնաւոր:

*Ապա թէ ոչ թողուցուք մարդկան զյանցանս նոցա, և ոչ հայրն ձեր թողցէ զյանցանս ձեր:*

*Եւ յորժամ պահիցէք՝ մի՛ լինիք իբրեւ զկեղծաւորսն տրտմեալք, որ ապականեն զերեսս իւրեանց, որպէս զի երեւեսցին մարդկան թէ պահիցեն:*

*Ամէն ասեմ ձեզ, այն իսկ վարձք նոցա:*

*Այլ դու, յորժամ պահիցես, օծ զգլուխ քո եւ լուա զերեսս քո, զի մի՛ երեւեսցիս մարդկան իբրեւ զպահող, այլ հօրն քում ի ծածուկ. եւ հայրն քո որ տեսանէ ի ծածուկ, հատուսցէ քեզ:*

*Մի՛ գանձէք ձեզ գանձս յերկրի, ուր ցեց եւ ուտիճ ապականեն, եւ ուր գողք ական հատանեն եւ գողանան:*

*Այլ գանձեցէք ձեզ գանձս յերկինս, ուր ոչ ցեց եւ ոչ ուտիճ ապականեն, եւ ոչ գողք ական հատանեն եւ գողանան. զի ուր գանձք ձեր են, անդ եւ սիրտք ձեր եղիցին:*

*Ճրագ մարմնոյ ակն է. եթէ ակն քո առատ է, ամենայն մարմինդ լուսաւոր եղիցի. ապա թէ ակն քո չար է՝ ամենայն մարմինդ խաւարին եղիցի:*

*Իսկ արդ՝ եթէ լոյսդ որ ի քեզ է՝ խաւար է, խաւարն ո՞րչափ եւս:*

*Ոչ ոք կարէ երկուց տերանց ծառայել. կամ զմին ատիցէ եւ զմիւսն սիրիցէ, կամ զմին մեծարիցէ եւ զմիւսն արհամարհիցէ. ոչ կարէք Աստուծոյ ծառայել եւ Մամոնայի:*

*Վասն այդորիկ ասեմ ձեզ. մի՛ հոգայք վասն ոգւոց ձերոց՝ զինչ ուտիցէք կամ զինչ ըմպիցէք, եւ մի՛ վասն մարմնոց ձերոց՝ թէ զինչ ագանիցիք. ո՞չ ապաքէն ոգի առաւել է քան զկերակուր՝ եւ մարմին քան զհանդերձ:*

*Հայեցարուք ի թռչունս երկնից՝ զի ոչ վարեն եւ ոչ հնձեն, եւ ոչ ժողովեն ի շտեմարանս, եւ հայրն ձեր երկնաւոր կերակրէ զնոսա. ո՞չ ապաքէն դուք առաւել էք քան զնոսա:*

*Իսկ արդ ո՞ ի ձէնջ առ հոգալ իւրում՝ յաւելուլ կարիցէ ի հասակ իւր կանգուն մի:*

*Եւ վասն հանդերձի զի՞ հոգայք. հայեցարուք ի շուշանն վայրենի՝ որպէս աճէ. ոչ ջանայ եւ ոչ նիւթէ. ասեմ ձեզ՝ զի եւ ոչ Սողոմովն յամենայն ի փառսն իւրում զգեցաւ իբրեւ զմի ի նոցանէ:*

*Իսկ եթէ զխոտն ի վայրի, որ այսօր է եւ վաղիւ ի հնոց արկանի, Աստուած այնպէս զգեցուցանէ, ո՞րչափ առաւել զձեզ, թերահաւատք:*

Մի՛ այսուհետեւ հոգայցէք եւ ասիցէք. զինչ կերիցուք կամ զինչ արբցուք կամ զինչ զգեցցուք. զի զայդ ամենայն հեթանոսք խնդրեն. քանզի գիտէ Հայրն ձեր երկնաւոր՝ թէ պիտոյ է ձեզ այդ ամենայն:

Խնդրեցէք նախ զարքայութիւն Աստուծոյ եւ զարդարութիւն նորա, եւ այդ ամենայն յաւելցի ձեզ:

Մի՛ այսուհետեւ հոգայցէք վասն վաղուի՝ զի վաղին վասն իւր հոգասցի. շատ է աւուրն չար իւր:

———o———

## ԳԼՈՒԽ Է.

Մի՛ դատիք՝ զի մի՛ դատիցիք. զի որով դատաստանաւ դատիք՝ դատելոց էք, եւ որով չափով չափէք՝ չափեսցի ձեզ:

Զի՞ տեսանես զշիւղ յական եղբօր քոյ, եւ ի քում ական զգերանդ ոչ տեսանես. կամ զիա՞րդ ասես ցեղբայր քո, թող հանից զշիւղդ յականէ քումմէ. եւ ահաւասիկ ի քում ականդ գերան կայ:

Կեղծաւոր, հան նախ զգերանդ յականէ քումմէ, եւ ապա հայեսցիս հանել զշիւղն յականէ եղբօր քոյ:

Մի՛ տայք զսրբութիւն շանց, եւ մի՛ արկանէք զմարգարիտ ձեր առաջի խոզաց, զի մի՛ առ ոտն կոխիցեն զնոսա, եւ դարձեալ երգիծուցանիցեն զձեզ:

Խնդրեցէք՝ եւ տացի ձեզ, հայցեցէք՝ եւ գտջիք, բախեցէք՝ եւ բացցի նեղ, զի ամենայն որ խնդրէ՝ առնու, ե որ հայցէ՝ գտանէ, եւ որ բախէ՝ բացցի նմա:

Ո՞ իցէ ի ձէնջ մարդ՝ ցոր խնդրիցէ որդի իւր հաց, միթէ քա՞ր տայցէ նմա. եւ կամ խնդրիցէ ձուկն, միթէ օձ՞ տայցէ նմա:

Արդ եթէ դուք որ չարքդ էք՝ գիտէք պարգեւս բարիս տալ որդւոց ձերոց, ո՛րչափ եւս առաւել Հայրն ձեր որ յերկինս է՝ տացէ բարիս այնոցիկ որ խնդրեն զնա:

Զամենայն զոր միանգամ կամիջիք՝ թէ արասցեն ձեզ մարդիկ՝ այնպէս եւ դուք արարէք նոցա. զի այս իսկ են օրէնքն եւ մարգարէք:

Մտէք ընդ նեղ դուռն. քանի՛ ընդարձակ է դուռնն եւ համարձակ ճանապարհն՝ որ տանի ի կորուստ, եւ բազումք են որ մտանեն ընդ նա. քանի՛ անձուկ է դուռնն եւ նեղ ճանապարհն՝ որ տանի ի կեանս, եւ սակաւք են որ գտանեն զնա:

*Զգոյշ լերուք ի սուտ մարգարէից՝ որ գան առ ձեզ հանդերձիւք ոչխարաց, եւ ի ներքոյ են գայլք յափշտակողք· ի պտղոյ նոցա ծանիջիք զնոսա:*

*Միթէ քաղիցե՞ն ի փշոց խաղող կամ ի տատասկէ թո՞ւզ:*

*Այսպէս ամենայն ծառ բարի՛ պտուղ բարի առնէ, եւ ծառ չար՝ պտուղ չար առնէ:*

*Ո՛չ կարէ ծառ բարի պտուղ չար առնել, եւ ոչ ծառ չար՝ պտուղ բարի առնել:*

*Ամենայն ծառ՝ որ ոչ առնէ պտուղ բարի, հատանի եւ ի հուր արկանի:*

*Ապա ի պտղոյ նոցա ծանիջիք զնոսա:*

*Ոչ ամենայն որ ասէ ցիս՝ Տէր Տէր· մտցէ յարքայութիւն երկնից· ·այլ որ առնէ զկամս հօր իմոյ որ յերկինսն է:*

*Բազումք ասիցեն ցիս յաւուրն յայնմիկ· Տէր Տէր՝ ո՞չ յանուն քո մարգարէացաք, եւ յանուն քո դեւս հանաք, եւ յանուն քո զօրութիւնս բազումս արարաք· եւ յայնժամ ասացից ցնոսա՝ եթէ ոչ երբէք գիտէի զձեզ· ի բաց կացէք յինէն ամենեքեան՝ ոյք գործէիք զանօրէնութիւն:*

*Ամենայն որ լսէ զբանս իմ զայսոսիկ եւ առնէ զնոսա, նմանեսցէ առն իմաստնոյ՝ որ շինեաց զտուն իւր ի վերայ վիմի· իջին անձրեւք՝ եւ խաղացին գետք, շնչեցին հողմք եւ բախեցին տունն, եւ ոչ կործանեցաւ, քանզի ի վերայ վիմի հաստատեալ էր:*

*Եւ ամենայն որ լսէ զբանս իմ զայսոսիկ՝ եւ ոչ առնէ զնոսա, նմանեսցէ առն յիմարի, որ շինեաց զտուն իւր ի վերայ աւազոյ· իջին անձրեւք, յարեան գետք, շնչեսցին հողմք՝ հարին զտունն եւ անկաւ, եւ էր կործանումն նորա մեծ յոյժ:*

*Եւ եղեւ իբրեւ կատարեաց Յիսուս զամենայն զբանս զայսոսիկ, զարմանային ժողովուրդքն ընդ վարդապետութիւն նորա· զի իբրեւ իշխանութեամբ ուսուցանէր, եւ ոչ որպէս դպիրքն:*

———o———

## ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ

## Ե. ԳԼԽՈՅՆ ՎՐԱՅ

———o———

ՄՈՎՍԷՍ Քորէբ լեռնէն յԵգիպտոս կիջնայ, Յիսուս երկինքէն յաշխարհ. մէկին ձեռք պատուհասի գաւազան կայ, միւսին ձեռք Խաչ եւ Աւետարան: Մովսէս՝ որ մարդ էր, իբրեւ Աստուած Փարաւոնին առաջ ահարկութեամբ կը խօսի. Յիսուս՝ որ Աստուած էր, Պիղատոսին եւ Հերովդէսին ատեան իբրեւ խուլ կը լռէ: Մովսիսին հրովարտակ պատուհասի արիւնով դրոշմուած ողջ Եգիպտոսի անդրանիկներն կը ջարդէ. Յիսուսի Աւետարանին հրովարտակ հանուր աշխարհին ներողութիւն կը բերէ: Ի՞նչ համեմատութիւն կայ, մէկին մէջ մահ, միւսին մէջ կեանք: Մովսէս չօշափելի խաւար բերելով Եգիպտացիք ահատեսիլ գիշերի մէջ անկապ կը կաշկանդէ. Յիսուս ճշմարիտ լուսով բովանդակ աշխարհ կը լուսաւորէ եւ խաւարին կապերէն կարձակէ մարդիկ: Մովսէս կարմիր ծով պատառելով միայն Իսրայէլի ժողովուրդ յազատութիւն կը հանէ. Յիսուս ոչ Հրէայն կը խտրէ, ոչ հեթանոս, այլ բոլոր մարդիկ խաւարին իշխանութեան գերութենէն կը փրկէ: Մովսէս կառաջնորդէ դէպ ի Սինայի անջուր անապատ. Յիսուս դէպ ի երկինք. մէկին հովուութեան մէջ քաղց, ծարաւ, միշտ տրտունջ յուսահատութիւն, պատժախառն բարերարութիւն, ապերախտութիւն, բարկութիւն Աստուծոյ, բանակին կոտորումն, եւ այլ բազմադիմի յանցաւորութիւն ժողովրդեան եւ պատիժ յԱստուծոյ. միւսին մէջ կենաց հաց եւ ջուր, հաւատք, լի յոյս, սէր, խաղաղութիւն, շնորհք, ներողութիւն: Մովսէս տասնաբանեայ օրինաց տախտակներն բարկութեամբ կը խորտակէ. Յիսուս կը շինէ զայն Աւետարանին հեզութեան արուեստով: Մովսէս աններող է, հայթայթանաց կրկուտ ժողովող խեղճ պառաւ իսկոյն կը քարկոծէ. Յիսուս շնացեալ կիներն ներողութեամբ կարձակէ: Մովսէս ապերախտ ժողովրդոց համար ապառաժ քարէն ջուր հանելու կը գլանայ. Յիսուս առատ է, կը կանչէ, որ ծարաւին է եկեսցէ առ իս: Մովսէս Բէսէլիէլին ճարտարապետութեամբ Աստուծոյ խորան կը կանգնէ, Ահարոնեան քահանայից ձեռքով անբան զոհեր կը

*մատուցանէ միշտ յանցաւորաց քաւութեան համար․ Յիսուս այս խորան Գողգոթային գլուխ կը շինէ, անուն եկեղեցի կը դնէ․ Նոյն ինքն է զոհ եւ քահանայ մշտնջենաւոր․ ուր միանգամ կը զենանի Խաչին վրայ եւ հանուր աշխարհի փրկութիւն կը գործէ։ Մովսէս ժողովրդոց ոսկորներն անապատին մէջ կը թողու, ինքն եւս Նաբաւ լեռան գլուխ Աւետեան երկրին կարօտ մնալով կը մեռանի․ Յիսուս յաղթող Յեսուն է, որ ոչ միայն Երիքով կը տապալէ՝ այլ խաւարին իշխանի ամրացած բռնութիւններ կը խորտակէ, Մովսէս միայն Հրէական ժողովուրդ Սինային ահաւոր անապատին մէջ երկիւղի եւ պատժական օրինօք կը դաստիարակէր․ Յիսուս նոյն ժողովուրդ Երուսաղէմի քաղաքէն, Սողոմոնի տաճարէն, դպրաց ու փարիսեցւոց նախանձոտ չարութենէն որոշելով դէպ ի Գալիլեայի լճին ու խաղաղ անապատ կը քաշէ։ Փարիսեցւոց աթոռն՝ Մովսիսի բարձր աթոռն էր, Յիսուսին նստարան ապառաժ քար էր, տաճարին տեղ՝ դաշտավայրն էր։*

*Նոյն օրէնսդիրն Աստուած Սինայի ահաւոր բարձրութենէն կիջնայ մինչեւ Պաղեստինոյ խոնարհ դաշտագետին, ամպին մէջէն մառախուղով եւ ահաւոր ձայնով, որոտացող անմատչելին Աստուած իբրեւ ցօղ մեղմաբար կիջնայ, գետնոյն վրայ խոնարհելով կը նստի․ այս տեղ ընտանեբար կը մերձենան իւր մօտ․ ժողովուրդք, աշակերտք, հրեայ, հեթանոս,․ իսկ անդ ով որ մերձենար քարկոծ կը լինէր մարդ եւ անասուն։ Երբէք նմանութիւն մի չիկայ Սինային եւ այս դաշտին մէջ․ Սինայի լեռ կը ցածնայ իւր ստուերական Մովսիսի օրինօք, դաշտ կը բարձրանայ մինչեւ երկինք Յիսուսի նորահրաշ Աւետարանով։ Մովսիսին երես քօղապատ էր, ժողովուրդն ահով կը մերձենար եւ կը զարհուրէր նշմարել երեսին լոյս․ Յիսուսին երես բաց է․ իւր ճառագայթ մեղմագոյն է․ արեւուն պէս չի խայթեր, իւր մօտ կանչէ եւ կը շրջապատին ամէն մարդիկ որ աշխատած են, որ բեռնաւոր են, որ քաղցած են, որ ծարաւի են։ Լռէ ուրեմն ով Մովսէս․ թող խօսի Յիսուս․ Գալիլեայի դաշտին մէջ թող բացուի վիմին ակն․ յորմէ կենդանութեան ջուր յորդելով ոռոգանէ այն ծարաւցած ու թալկացած մարդկային անապատ․ որուն համար Եսայիաս աւետիս կուտար «Ուրախ լեր անապատ ծարաւի։» Մովսիսական աղբիւր կը ցամաքի, Յիսուսին կառատանայ։*

*Երկնախօս վարդապետն կը բանայ նոր Աւետարանի փրր–*

կութեան մատեան, կսկսի մի առ մի աւանդել ինն Երանութեանց դասն: Երանի կուտայ նախ հոգւով աղքատներուն. որոց համար եկեր էր օծեալն Աստուծոյ. «Հոգի Տեառն ի վերայ իմ. վասն որոյ եւ է օծ իսկ զիս. Աւետարանել աղքատաց առաքեաց զիս. եւայլն:» Ով են հոգւով աղքատներն. նոքա են որ զօրհանապազ կը մարտնչին սատանայի ամբարտաւանութեան դէմ. որոց սրտին բաւականութիւն միայն Աստուած է. աշխարհիս բովանդակ մեծութիւն հոգւով աղքատին սիրտ կարող չէ լեցնել. զի նորա սիրտ ընչից փարթամութենէն խոպառ զատուած է: Ի՞նչ նմանութիւն կայ Յիսուսի եւ աշխարհի տուած երանութեանց մէջ. աշխարհ երանի կուտայ բոլոր փարթամներուն. որ զօրութեամբ պերճանալով կիշխեն հասարակ ամբոխից ու բազմութեան վրայ. Յիսուսի երանին տարօրինակ է, նա երանի կուտայ նոցա միայն, որք աշխարհիս փարթամութեան տակ ճնշուած կը հեծեն եւ կը հարստահարին բազմադիմի զրկանքներով: Յիսուս թող կուտայ աշխարհս փարթամներուն բաժին, հոգւով աղքատներուն աւետիս կուտայ. թէ ձեր ժառանգութիւն երկնից արքայութիւնն է: Աւետարանի երանութիւն փարթամներ չի զրկեր, այլ նոյն արքայութիւն կը խոստանայ եթէ արտաքին փարթամութեան մէջ հոգւով աղքատ լինին: Աբրահամ մեծահարուստ ստացուածոց մէջ հոգւով աղքատ էր. Յակոբ բազմավաստակ ընչից, բարգաւաճեալ որդոց եւ թոռանց մէջ՝ հոգւով աղքատ էր, Յովսէփ Եգիպտոսի փառաւոր իշխանութեան մէջ՝ հոգւով աղքատ էր. Մովսէս Աստուածատուր բարձր իշխանութեան մէջ՝ հոգւով աղքատ էր. Դաւիթ թագաւորական աթոռին վրայ հոգւով աղքատ էր. եւ կը խոստովանէր «Աղքատ եւ ցաւած եմ ես, Աստուած, փրկութիւն քո ընկալցի զիս»: Հոգւով աղքատութիւն աշխարհիս աչքին առաջ արհամարհ կը թուի, այլ երկնից եւ Աստուծոյ առաջ մեծարոյ եւ պատուական է:

Յիսուս երանի կուտայ աշխարհիս սգաւորաց. ո՛վ էին սգաւորներն, անաստուածութեան ստուերին տակ նստող աղքատներն էին. խաւարին իշխանութեան տակ կապուած գերիներն էին. աշխարհիս հրապարակին մէջ անարգուած խեղճերն էին. չաստուածոց տաճարներուն առաջ անմռունչ կռոց կենդանի զաւակներ զոհող դժբախտ մայրերն էին: Յիսուսի փրկութիւն միայն սրբեց նոցա արտասուք ու մխիթարեց զիրենք. Եսային տեսաւ ու գուշակեց «Տալ սգաւորաց Սիօնի փառս,

*փոխանակ մոխրոյն օծումն ուրախութեան։» Ոչ միայն Երուսաղէմին կամ մոխրոյն վրայ նստող Սիօնին որդիք այս երանութեան հաղորդ եղան. այլ իսկապէս ժառանգեց այս երանութիւն հեթանոսական տաճարներուն մէջ զոհագործող մոխրաշունչ ժողովուրդ։ Սիրտ առէք, մի վհատիք, ով դուք, որ երկնից առաջ երջանիկ էք, որ կը սգայք իւրաքանչիւր ձեր արդի մեծամեծ աղէտներու մէջ. համբերեցէք մինչեւ իսպառ. սուգ չի տիրեր յաւիտեան, կանցնի մի վայրկենի մէջ. ձեր տրտմութիւն յաւէրժ ուրախութեան կը փոխուի։*

*Յիսուս երանի կուտայ հեզոց, ո՛վ են այս հեզերն. զորս Աստուած ի մարտ կը հանէ աշխարհիս բարկութեան դէմ. ջրհեղեղի դարուն ամբարտաւան հսկայից դէմ՝ Նոյ արդար նահապետ. անաստուած ազգաց դէմ՝ աստուածապաշտն Աբրահամ. սպառնացող Եսաւին դէմ՝ Յակովբ հեզ. նախանձոտ եղբարց դէմ՝ փոքրիկն Յովսէփ. Փարաւոնին դէմ՝ Մովսէս. Սաւուղին դէմ՝ Դաւիթ. աշխարհիս իշխանին դէմ իւր միածին Յիսուս. բարբարոս բռնաւորութեանց դէմ՝ Յիսուսի աշակերտներն։*

*Հեզութիւն Աւետարանի որդւոց զէնքն է. նովաւ տիրեցին աշխարհիս, հեզութիւն երկինք եւ երկիր միանգամայն ժառանգեց. բարկութեան որդիքներն իբրեւ հուր չիջան հեզութեան ջուրին առաջ. Քրիստոնէական վարուց հեզութիւն յաղթանակեց աշխարհիս բոլոր դիմադրող բարկութեանց ամէն խստութիւն նորա առաջ իւր բնութիւն փոխեց. առիւծն զգօնացաւ եղին հետ սէր կապեց, գայլն գառն դարձաւ հօտին հետ ճարակեց։։ Այսպէս Թագաւորեցին Աւետարանի հեզ որդիք զոր Դաւիթ նկատեց հոգւով «Այլ որ հեզքն են, նոքա ժառանգեսցեն զերկիր»։*

*Յիսուս երանի կուտայ նոցա, որ արդարութեան դէմ քաղցած ու ծարաւի են. ո՛վ են սոքա, Աբրահամու հարազատ որդիք, ակնկալող ժողովուրդ հեթանոսաց։ Ադամէն մինչեւ ի Փրկիչ վեց հազար տարուան միջոց. նոյն Ադամայ ապերջանիկ սերունդ անաստուածութեան մէջ սովալլուկ եղած երկնից արդարութեան կ՚սպասէին։ Արդարութիւն երկնից յանկարծ իջաւ Հրէաստանի դաշտին մէջ այս խօսք աւետարանեց. «Ես եմ հացն կենդանի իջեալ յերկնից». Դաւիթ եւ Եսայի միաձայն Աւետիս տալով քաղցեալ ժողովրդոց կը հրաւիրեն զիրենք ի նոյն արդարութեան սեղան, «Ճաշակեցէք եւ տեսէք*

զի քաղցր է տէր, երանեալ է այր, որ յուսայ ի նա․ Որ ծարաւի իցէք երթայք ի ջուրն այն․ կամ կշտապինդ վայելեցէք զգալստենէ դորա»:

Խաչին հանդէս Յիսուսի արդարութեան լրումն է․ ուր տեղ եզն զենեց, գինին խառնեց, հրաւիրակներն ղրկեց անզգամներն կանչեց․ եկէք, ով ազգ մարդկան, կերէք այս հաց, խմեցէք ուրախութեամբ այս գինին, զոր պատրաստեցի ձեզ․ այսուհետեւ ի բաց թողէք կռամոլութեան անզգամութիւն, զիս խնդրեցէք, որ Աստուծոյ իմաստութիւն եւ արդարութիւն եմ․ զիս ճաշակեցէք, որ այլ եւս չանօթնաք, զիս խմեցէք, որ այլ եւս չի ծարաւիք:

Յիսուս երանի կուտայ ողորմածաց ու կը վճռէ թէ միայն ողորմածներն կարժանանան փոխադարձ ողորմութիւն գտնելու: Երկնից հօր մեծագործ որդին գթութեան օրէնք կը հաստատէ իւր եղբարց մէջ, անգթութիւն կը բառնայ աշխարհիս մեծատանց սրտէն․ կը կարճէ զրկանք եւ յափշտակութիւն մաքսաւորի ձեռքէն․ աշխարհիս փշրանաց կարօտ Ղազարոսներն նոյն սեղանին վրայ բազմելով մեծատանց հետ հաւասարապէս կը ճաշակեն․ փողոցի մուրացիկ աղքատներն Աշոտ ողորմածին պալատ հրաւիրելով նորա հետ սեղանակից կը բազմին, հոգւո՛վ աղքատն՝ մարմնով աղքատներուն հետ ուրախութեան բաժակներ կը խմէ․ աշխարհիս հպարտներն կը մեղադրեն զինքն, հոգ չէ․ Աշոտին անուն մատենագիրք ողորմած կը դրոշմեն:

Աւետարանին գթութեան ձեռք գերիներուն շղթաներն կը քակէ, պարտատեարց մուրհակներն կը պատառէ, մերկերուն հանդերձ կուտայ, օտարներ ի տուն կը ժողովէ, կարօտելոց հաց կը կարկառէ, ծարաւելոց ջուր․ մէկ խօսքով ամէն խնդրողին կուտայ, ամէն լացողին արտասուք կը սրբէ․ այս գթութեան օրէնք սիրոյ աղբիւրին վտակն է, որ կը բղխի Աւետարանի ակնէն:

Այս երանին ձեզ համար չէ ուրեմն, ո՛վ աշխարհիս անգութ եւ քարասիրտ փարթամներ․ դուք որ միայն Քրիստոնեայ անուն կը կրէք․ դուք որ Մամոնայն եւ փառք առաւել կը պաշտէք․ բաւական էր թէ միայն չողորմէիք տնանկին․ այլ եւ անխնայ կը կոփէք զանաւագն, ու կը հարստահարէք զտնանկն․ երկնից արդարութիւն զձեզ յաւուր չարի չպիտի փրկէ, որովհետեւ դուք ձեր մեծութեան կը յուսայք եւ աղքատին համար

*ընաւ չէք խորհիր։ Ո՛վ, աշխարհիս հրապարակներու մէջ մեծատանց դռներուն առաջ դեգերող աղքատներ, տրտունջ մի հանէք, համբերեցէք սիրով, ձեր տեղն մի հանէք, համբերեցէք սիրով, ձեր տեղն Աբրահամու գոգն է· իսկ անողորմիցն ի դժոխս։ Դուք ի նոցանէ այսօր հաց կը խնդրէք· օր մի պիտի գայ· յորում նոքա սաստիկ ծարաւէն պապակելով ձեզմէ կաթ մի ջուր պիտի խնդրեն· այն ինչ դուք դրախտին գետերով կը զովանաք զուարթ զուարթ։*

*Յիսուս երանի կուտայ նոցա, որ սրտով սուրբ են· նոքա միայն կարող են Աստուած տեսնալ։ Աւետարանի ճշմարտութիւն սրտի կրօն է, մարմնոյ կրօն չէ· սրտի սրբութիւն առաւել կը պահանջէ իւր հաւատացեալ որդիքներէն· ի բաց կը մերժէ փարիսեցական մաքրութիւններն, երբ սիրտ զառածեալ է անմաքրութեամբ· այսինքն երբ Աստուծոյ եւ ընկերին սէր չունի սրտին մէջ, երբ սիրոյ տեղ հեռ եւ նախանձ կը կրէ· երբ պարզութեան տեղ՝ նենգութիւն եւ միամտութեան տեղ՝ խորամանկութիւն· երբ բարութեան տեղ՝ միշտ չարութեան խորհուրդ կը յղանայ։ Այսպիսի նենգոտ սիրտեր երբէք ընդունարան չեն Աւետարանի սուրբ կրօնին· ո՞ւր պիտի օթեւանին Յիսուս եւ իւր Հայր, եթէ սիրտն սրբութեամբ պատրաստուած չէ։ Մարդոյն սիրտն է միայն չարութեան եւ բարութեան անօթ· զոր պէտք է սրբենք չարաչար կրից ժանգոտութենէն։ Մարդ կարող չէ իւր սիրտ թագուցանել· վասն զի սիրտն աղբիւրին ներքին ակն է· յորմէ դառն կամ քաղցր միշտ կը բղխին դէպ ի դուրս։ Թէ փափագիս ուրեմն զԱստուած տեսնալ, ով Քրիստոնեայ, սրտիդ բժժոտ աչք սրբէ եւ Դաւթին բերանով պաղատէ առ Աստուած «Սիրտ սուրբ հաստատեա յիս Աստուած եւ հոգի ուղիղ նորոգեա ի փորի իմում։*

*Յիսուս երանի կուտայ խաղաղարար մարդոց, որք Աստուծոյ որդիք պիտի կոչուին։ Աւետարանն է միայն խռովեալ աշխարհիս խաղաղութեան դաշնագիր· զոր խաչին եւ նոր ուխտին արիւնով կը կնքէ Յիսուս ու կը քարոզէ հանուր տիեզերաց։ Մինչդեռ աշխարհիս տիրապետող բռնութիւններն անդադար մարտ կը մղէին, երկնից թագաւորութիւն յԵրուսաղէմէն սկսեալ հաշտութիւն կը քարոզէ։ Յիսուս եւ իւր Աւետարանն են միայն հօր Աստուծոյ կողմէն խաղաղութեան պատգամաւորք։ Մովսէս երկու Եբրայեցի եղբարց մէջ մտնալով ի*

*հաշտութիւն կը համոզէ զիրենք· «Արք եղբարք էք, ընդէ՞ր զրկէք զմիմեանս»· Յիսուս Գողգոթայի գլուխ խաչի բարձր բեմի վրայ կեցած ընդհանուր աշխարհիս բոլոր այլակրօն ազգաց խաղաղութիւն կաւետարանէ։ Խաղաղութիւն Հրէին եւ Հեթանոսին մէջ, խաղաղութիւն Յոյնին եւ Հայուն մէջ, խաղաղութիւն խուժադուժ ազգերու մէջ· խաղաղութիւն եզին եւ առիւծին, գառին եւ գայլուն մէջ· խաղաղութիւն երկնից եւ երկրին մէջ, հրեշտակաց ու մարդոց մէջ։ Այս խաղաղութիւն աշխարհս կարող չէր տալ· ոչ Աղէքսանդր, ոչ Կեսար, ոչ Օգոստոս, ոչ Կիւրոս, Քրիստոս միայն· ուստի հօր Աստուծոյ արդարութեան առաջ ինքն է միայն ճշմարիտ որդիութեան ու երանութեան ժառանգորդ։ Ո՛վ եկեղեցւոյ ճարահատ որդիք, մեր անդրանիկ եղբօր Յիսուսի խաղաղարար օրինակին հետեւելով՝ նախ նորա եւ իւր խաչի սիրոյն կը յորդորէ սուրբն Պօղոս, եւ ապա իբրեւ խաղաղարար միջնորդ խռովեալ եւ անջատեալ եղբարք կապենք իրարու հետ· այս առաքինութեամբ միայն կարող եմք հօր Աստուծոյ արժանաւոր որդիք կոչուիլ։ Խաղաղարարն Աստուծոյ որդի է, ո՞ւմ որդի է այն, որ կը խռովեցուցանէ, որ կը գրգռէ, որ եղբարց մէջ փոխանակ սիրոյ ատելութիւն կը սերմանէ, որ ընտանիքներ կը բաժանէ, որ մարդկային միութեան կապեր կը քակէ, որ Քրիստոսի եկեղեցւոյ յօդակապ մարմին մասն մասն կը կտրատէ· յայտ իսկ է թէ այսպիսի խաւարագործ մշակ լուսոյ հօր որդի չէ· այլ խաւարին հօր։*

*Յիսուս երանի կուտայ նոցա, որ արդարութեան համար կը հալածուին։ Արդարութիւն նոյն ինքն, որ յերկնից երեւեցաւ· արդարութիւն լոյս էր, խաւար տեսաւ զինքն եւ սկսեց հալածել· Հերովդէս հալածեց մինչեւ յԵգիպտոս, դպիրք ու փարիսեցիք հալածեցին մինչեւ ի Գողգոթայի գլուխ։ Խաչին վերայ մեռնող Աստուծոյ արդարութեան համար հալածուեցան Աւետարանի ճշմարտութեան բոլոր քարոզիչներն· եւ այն ինչ հալածանք կարող չէր կարճել նոցա ազատ լեզուն՝ մահուամբ երկրէս բառնալ կուզէին արդարութեան կենդանի վըկաներն։ Անթիւ որդիք եկեղեցւոյ տիրոջ նման անմռունչ ոչխարի պէս աշխարհիս անզգամներէն ի սպանդ վարեցան։ Այս՛ եկեղեցւոյ կեանք՝ հալածանք է· իւր որդւոց երջանկութիւն՝ չարչարանք։ Խաչակիր սուրբն Պօղոս ալ այսպէս կուսուցանէ· «Որ կամիցին աստուածապաշտութեամբ կեալ ի Քրիստոս Յիսուս՝ ի հալածանս կայցեն։»*

Յիսուս իններորդ Երանին կ՚ուղղէ առ իւր աշակերտ. որք հանդերձեալ էին նախնի մարգարէից նման, մանաւանդ Յիսուս վարդապետին պէս դէպ ի Գողգոթայի ճանապարհ երթալ. որոց համար նոյն խաչին ծանրագոյն վիշտ պատրաստ կար. կամակար սիրով տանել այն ամէն նախատանաց, զոր թէ ընտանի Իսրայէլի ազգէն եւ թէ կռապարիշտ հեթանոսներէն անձնուիրաբար կրել յանձնառու էին: Ոչ աղաղակել, ոչ վիճել, ոչ եւս տրտունջ բառնալ տիրոջ հեզութեան նմանելով, թող սպանեն զձեզ, թող թափի ձեր արիւն գետին, ձեր արեան երաշխաւորն ես եմ, կըսէ Յիսուս, կաթիլ մի չի կորսուիր: Արդար Աբէլի օրէն մինչեւ Զաքարիա Աստուծոյ սիրելեաց ճանապարհ արիւնով բացուած է: Ձեզմէ յառաջ մարգարէներն նոյն շաւղով գնացին. ահաւասիկ եւ ես կերթամ, օ՛ն եւ դուք աշակերտք իմ, ետեւէս եկէք:

«Դուք էք աղ երկրի»: Մարդկային կեանք Ադամէն տինչեւ ի Քրիստոս փտեր էր բոլորովին հնութեան եւ ապականութեան մէջ. հոգին անկրօնութեամբ վարակեր էր, մարմին հիւծական ախտով. ամէն անդամներով գլխէն մինչեւ ոտք չարաչար վէրքերով լեցուած անխնամ թողուած էր աշխարհիս աղբիւսին վրայ, ոչ տէր ունէր, ոչ օգնական, ոչ բժիշկ ոչ այցելու: Վասն այսորիկ Դաւիթ բոլոր մարդկութեան բերնէն աղաղակ կը բառնար իւր անձին ցաւոց համար. «Նեխեցան եւ փտեցան վէրք իմ յերեսաց անզգամութեան իմոյ»: Քրիստոս իբրեւ իմաստուն բժիշկ այս կեանք վերանորոգելու համար եկաւ. որ ահա իւր աշակերտներն իբրեւ աղ կը ցանէ բոլոր աշխարհիս ապականեալ մարդկութեան վրայ. որոց կը պատուիրէ ճանչնալ իրենց կոչումն առաքելական պաշտօնին մէջ. միշտ առնելով ուսուցանել քան թէ սոսկ բանիւ. անհամ չի դառնալ կամ հեղգութեան մէջ կամ տգիտութեան մէջ կամ անբարոյ ընթացից մէջ: Եթէ անհամ լինիք ասէ. այնուհետեւ դուք պիտանի չէք եկեղեցւոյն. դուք յանժամ ինքնին անարգուելով կոխան կը լինիք ոտից եւ իսպառ կը կորսուի ձեր աղին ազդեցութիւն:

«Դուք էք լոյս աշխարհի». Յիսուս իւր սեպհական անուն կը կնքէ իւր աշակերերտաց վրայ. զի ինքն իսկ էր լոյս աշխարհի.

«Ես լոյս յաշխարհեկի»: Այս լուսաբեր արեւ Հրէաստանի հորիզոնէն ծագելով իւր առաքեալք իբրեւ իւր լուսոյ ճառա–

դայթներ կը սփռէ հանուր աշխարհին վրայ։ Գնացէք կըսէ, փարատեցէք հեթանոսութեան խաւարն. դուք երբ աշխարհի լոյսն էք, երբէք կարելի չէ որ ծածկուիք. բարձր լեռան վըրայ շինուած քաղաք չի թաքչիր։ Ես զձեզ իբրեւ ճրագ վառելով կը դնեմ Աւետարանի քարոզութեան բարձրագոյն աշտանակին վրայ, դուք պիտի լուսաւորէք բոլոր աշխարհիս տուն։ Զգոյշ եղիք, որ կեղծաւոր դպրաց ու փարիսեցւոց պէս ձեր ճրագի լոյս կուրութեան գրուանին տակ չի թաղուցանէք։ Առանց զձեզ նախ լուսաւորելու՝ դուք կարող չէք ուրիշներ լուսաւորել։ Ձեր առաջնորդութիւն Մովսիսի առաջնորդութենէն մեծ է. նա միայն Հրէական ազգին էր, դուք բոլոր Հեթանոսաց, նորա բանակին առաջ լուսեղէն ամպ կընթանար, իսկ ձեր լոյս ձեր անձէն պիտի արտափայլի։ Ի՞նչ է այս լոյս, վարուց ուղղութիւն, անարատ կեանքն, սէր՝ ատելութեան դէմ, համբերութիւն՝ հալածանաց դէմ, ներողութիւն՝ յանցաւորաց դէմ, ճշմարտութիւն՝ ստութեան դէմ, հեզութիւն՝ բարկութեան դէմ, խոնարհութիւն՝ ամբարտաւանութեան դէմ, գրկանք՝ անիրաւութեան դէմ, խաղաղութիւն՝ հակառակութեան դէմ. ի վերջոյ բոլորովին լոյս՝ խաւարին դէմ, պարանոց՝ սուրին դէմ, մարմին՝ կտտանաց դէմ, կեանք՝ մահուան դէմ։

Այս է ահա ձեր առաքելութեան լուսաւոր վարք. զոր պէտք է տեսնայ աշխարհ ու փառաւորէ ձեր հայր, որ երկինքն է։

Ողբալ պէտք է այս տեղ, ո՛վ պաշտօնակից եղբարք, Քրիստոս զմեզ լոյս կանուանէ, մեք տգիտութեամբ խաւար դարձանք. իբրեւ լոյս եւ ճրագ Տէր որոշեց զմեզ ուրիշներ լուսաւորելու— մեր աղօտ լուսով նոյն իսկ մեր անձն լուսաւորելու բաւական չեմք։ Քրիստոս զմեզ աղ կը կոչէ, մեք մեր ընդաբոյս եւ եկամուտ անհամութեամբ անպիտան համարուեցանք. չունիմք իրաւունք բողոքել թէ ժողովուրդն յանդգնութեամբ ոտից կոխան առնելով՝ կ՚անպատուէ զմեզ հրապարակներու մէջ. այլ պէտք է ուշաբերելով մտաբերենք եւ մեզէն ինքնադատ լինելով վճռենք այս դատաստան, թէ մեր անպատուութիւն՝ մեր տգիտութեան երեսէն է։

Յիսուս իւր աշակերտաց առաքելութեան դասերն աւարտելէն զկնի՝ սկսի Նոր պատուիրանաց դաս. որով հին օրինաց թերութիւն կը լեցնէ։ Թերեւս կարծիք ունէին Հրեայք եւ օրինաց դպիրք, թէ Քրիստոս եկեր է հին օրինաց կապեր իսպառ քակելու։ Ուստի կըսէ, «Մի համարիք եթէ եկի լուծանել

*զօրէնս եւ զմարգարէս եւայլն։» Նոյն օրէնսդիրն Աստուած մինչ երբեմն Մովսիսին ձեռքով օրէնքներ կուտար, ինքնին յաշխարհ գալով՝ հին օրինաց արմատին վրայ՝ նոր Աւետարանին ազատ օրինաց ճիւղեր կը պատուաստէ։ Արմատ չի խլեր, այլ առաւել եւս կամրապնդէ Աստուածադիր օրինաց ցանկ. զոր մարդոյն ձեռք երբէք կարող չէ խրամատել զայն. մինչեւ անցնին երկինք եւ երկիր օրինաց կամ մարգարէից տառերէն նշանախեց մի չպիտի եղծուի։ Ո՛վ որ համարձակի այս պատուիրաններէն փոքրիկ կարծուած պատուէր մի լուծել զանցառութեամբ եւ այնպէս ուսուցանել, այնպիսին երկնից արքայութեան մէջ փոքր եւ աննշան կը համարուի. նա իւր տիրոջ առաջ ազնիւ ծառայ չէ, այլ անհաւատարիմ հեղգամիտ մշակ. որ աւանդեալ օրինաց տաղանդ ամբողջապէս չի գործածեր։ Այո՛, մեծ կը գրեմ ձեր անուն երկնից արքայութեան մէջ, եթէ Աւետարանիս պատուէրներն կատարելապէս ուսուցանէք։ Եւ ահաւասիկ այս տեղ այժմէն իսկ ձեր բացախօսութեամբ կ՚իմացնեմ. եթէ ձեր արդարութիւն դպրաց ու փարիսեցւոց կեղծեալ արդարութենէն չի գերազանցի ճշմարտութեամբ՝ դուք կարող չէք երկնից արքայութիւն մտնալ։ Նոքա Աստուծոյ անխառն սուրբ օրինաց հետ՝ ծերոց աւանդութիւն խառնելով կ՚ուսուցանեն. դուք պարտիք զայն ամենայն ճշմարտութեամբ հաւատարմապէս ուսուցանել, ոչ յաւելուլ ոչ հատանել։*

*Յիսուս իւր Աւետարանի տապարով չարութիւն արմատէն կը կտրէ. Մովսէս կը պատուիրէ չսպանանել. Յիսուս գեհենի կրակին պարտաւոր կը դատի զայն, որ ի զուր տեղ իւր եղբօր վրայ կը բարկանայ. ձեռք յայնժամ կսպանանէ երբ մարդոյն սիրտ կը գայրանայ լի ցասմամբ։ Այս նոր պատուիրան կսպանանայ չի բարկանալ. որպէս զի ձեռք կարճի սպանութենէն եւ սուր պատենէն չի հանէ։*

*Յիսուս այնչափ կը մեծարէ սիրոյ եւ հաշտութեան օրէնք. մինչեւ թողուլ կը պատուիրէ սեղանին պատարագ եւ նուէր, երթալ նախ հաշտութիւն եւ սէր կապել այն եղբօր հետ. որ խէթ ինչ կամ կասկած ունի իւր մտքին մէջ թէ իրաւ թէ անիրաւ, կարծելով թէ եղբայր զրկեր է զինքն կամ ուեւիցէ պատճառով մի վիրաւորեր է նորա սիրտ։ Ուստի Աւետարանին սիրոյ օրէնքըպարտաւոր կը կացուցանէ զմեզ, եթէ զըրկեր ենք եղբայր՝ վճարենք նորա փոխադարձ. իսկ եթէ ոչ՝ փարատենք իւր կասկած խօսելով համոզելով դարձեալ շինել ու կցել զին—*

քըն ի սէր եղբայրութեան։ Եթէ այսպէս, զուր կաշխատիս ուրեմն սեղանին առաջ երթալ եւ զԱստուած ի հաշտութիւն ողոքել պատարագով, եթէ չի հոգաս նախ խռոված եղբօրդ հետ հաշտուիլ։

Առանց այս պայմանին ոչ խունկ, ոչ մոմ, ոչ նուէրք, ոչ պատարագ, ոչ աղօթք, ընդունելի են Աստուծոյ առաջ։

Յիսուս, որ հանդերձեալ աշխարհին ահեղ դատաւորն է, որչա՜փ խնամով կ՚ուսուցանէ, մինչդեռ կենցաղոյս ճանապարհին վրայ կամք՝ մեր ոսոխ ընկերին հետ իրաւախոհ լինիմք։ Ներողութեան օրէնդիրն չուզեր երբէք, որ երկու եղբարց անհաշտ մնալով՝ դատ արդարութեան ատենին մնայ. վասն զի երկուքէն որ մէկ դատապարտուի՝ նորա համար կաղէկիզի երկնաւոր հօր սիրտ. քանզի իւր որդին է եւ Յիսուսին եղբայր։ Ահ, մեծ է անկանիլ է ձեռս Աստուծոյ կըսէ սուրբն Պօղոս. հանդերձեալ դատաւորին ատեան՝ արդարութեան սուր մի է, Սողոմոնի դատաստանին պէս իսկոյն մէջ տեղէն կը կտրէ երախայն. մարդկային ատեան կ՚ողոքի կաշառով, երկնից ատեան ոչ երբէք. վասն զի Արդար է Տէր, եւ զարդարութիւն սիրէ եւ զուղղութիւն տեսանեն երեսք նորա՛։

Մովսիսեան օրէնք շնութիւն կը համարի յայնժամ միայն՝ երբ մարդ իրօք կը շնանայ. Յիսուսին գերազանց օրէնք նոյն շնութեան արմատ սրտէն կը կտրէ. ուստի կըսէ, Ո՛վ որ ցանկանալու համար ի կին մարդ հայի, նա իւր սրտին մէջ կը շընանայ չարութեան խորհրդով։ Այո՛, ո՜րչափ մեծ է Աւետարանին այս զգուշութեան պատուէր։ Աչք սրտին կարապետն է, որ կզբօսնու միշտ աշխարհիս առարկայից վրայ, բնական հակամիտութեամբ եւ մարդոյս զգայարանաց մէջ ամէնէն դիւրազգացն է։ Սրտի ցանկութիւն միշտ մոխրին տակ թաղուած զաղտնի հուր մի է. աչաց հայեցուածքն է, որ զայն կը վառէ եւ կը բորբոքէ ի վատթարն։ Ճշմարիտ է այս, Սուրբ Գիրք բազմադիմի օրինակներ կը հանէ մեր առաջ։ Դրախտի ծառն, որ գեղեցիկ էր եւ հաճոյ աչաց հայելոյ՝ մեր նախամայր հրապուրեց ի պատուիրանազանցութիւն. Սեթայ ցեղի Աստուծոյ որդիքներն՝ Կայենի դստերք տեսնալով չժուժեցին. այլ ի նոցանէ իրենց ամուսին ընտրելով՝ Աստուծոյ որդիքներն մոլորեցան որդւոց մարդկան հետ, մինչեւ համաշխարհական ջըրհեղեղ ողողեց զիրենք առ հասարակ ի կորուստ։ Դաւիթ մինչդեռ իւր պալատի տանիքին վրայ կը ճեմէր՝ աչքին զբօսանք

*դարձաւ ի Բերսաբէն. յորմէ հետեւեցաւ կատարեալ չնութիւն եւ անտի ձեռն արկեց այն ահեղ ոճրագործութեան, որուն համար զօրհանապազ լալով իւր մահիճ կը թրջէր: Կը թողում յիշել տեղս Յակովբին դուստր Դինա, Յովսէփ գեղեցիկ, Յուդիթ եւ Շուշան. որք առ հասարակ աչքին թակարդով բռնուեցան, ու ըմբռնեցին: Ո՛վ կարող է աչքի գայթակղութենէն ազատ մնալ. նա միայն, որ Աստուծոյ երկիւղ, Յիսուսի սէր, խաչին երախտիք յաճախ կրելով սրտին մէջ՝ միշտ յաղօթս կապաստանի. «Դիր տէր պահապան բերանոյ իմոյ եւ դուռն ամուր շրթանց իմոց. զի մի խոտորեսցի սիրտ իմ բանիւ չարութեան. Տէր զբօսանս աչաց մի տար ինձ եւ զցանկութիւն դարձո՛ յինէն»:*

*Յիսուս այնչափ մեծ ու կարեւոր կը դատի մեր սրտէն արմատովի խլել ցանկութեան կիրք, մինչեւ բացարձակ հրաման կընէ ի բաց կտրել մեր մարմնոյ այն պիտանի անդամներն, որ մեր սրտին ու հոգւոյն գայթակղութեան առիթ կը լինին. այսինքն հանել լուսատու աչք ու կտրել գործակատար ձեռք. բարի ու լաւ է անաչք եւ անձեռն մնալ, քան թէ ամբողջ մարմնով գեհենի կրկին մատնուիլ: Հոգւոյն կեանք ու բարեմասնութիւններն ամբողջ պահելու համար՝ մարմնոյ հեշտութեան զգայարանքներն զոհել կուսուցանէ Աւետարան. զի հոգի առաւել է քան զմարմին: Թող այս եթէ աչքիդ չափ պիտանի բան մի ունիս, որուն հակամիտեալ ես մոլեկան կիրքերուդ բուռն յօժարութեամբ. թող զայն, կտրէ հեռացուր քեզմէ երբ գայթակղութեան առիթ է քեզ: Աշխարհիս ճանապարհի մէջ այս դարանակալ օձի որոգայթէն փախչիլ մեծ արիութիւն է: Յովսէփ մինչդեռ մօտ էր եւ բռնուած, թող տուաւ իւր հանդերձ. փախաւ ազատեցաւ, մարմին մատնեց բանտին եւ շղթային, հոգին ազատ մնաց վաւաշ կնոջ հրապուրանաց կապանքէն: Դաւիթ այս որոգայթէն բացակայ էր բաւական. բայց խոյս չի տալով բռնուեցաւ արագ. Ուրիա Քետացւոյ պարտիզի որսորդն զինքն իբրեւ թռչուն մի նետահար պալատի պատշգամէն վար ձգեց: Ուրեմն եթէ մօտ ես՝ խոյս տուր, եթէ հեռու ես՝ մի մօտենար. աչքէդ միշտ զգուշացիր, որ սրտիդ մէջ վատ կիրքերու տեղի չի տաս:*

*Մովսէս Հրէից խստասրտութեան համար ամուսնաց միութեան կապ յակամայից կտրելու սահման կը դնէ. այսինքն ատելի կամ արհամարհեալ կին՝ իւր այրէն բաժանելով, ապա-*

հարցանի այն է արձակման թուղթ մի տալ ձեռք: Յիսուս այս նուիրական կապ անլուծանելի կերպով կամրապնդէ, Աստուածական վճռով մի կնքելով զայն «Զոր Աստուած զուգեաց. Մարդ մի մեկնեսցէ»: Աստուած այս պսակ դրախտին մէջ կապեց. Ադամն ընդունեց զայն. ճանչցաւ այս մեծ խորհրդոյն գերազանցութիւն եւ զուրցեց այս նշանաւոր խօսք. «Թողցէ այր զ հայր եւ զմայր իւր եւ երթիցէ զհետ կնոջ իւրոյ եւայլն»: Վասն զի Ադամ իբրեւ մարգարէ մի գուշակեց թէ նորաստեղծ կին՝ իւր մարմնոյ ոսկորներէն առնուած կողմի է՝ ճիշդ նման է ինքեան. որով ինքն եւ իւր կին մի մարմին կը կազմեն նոյն եւ համատիպ. չիկայ բնաւ մարդկային օրինաց սուր մի, որ կարենայ սոյն միացած մարմին ընդ մէջ բաժանել: Եկեղեցին Աւետարանի այս խօսքը «Առանց բանի պոռնկութեան» հիմն բռնելով՝ դուն ուրեք ներողաբէս կարձակէ այն կին, որ անհաւատարիմ է սուրբ ամուսնութեան պայմանին մէջ եւ յայտնապէս պոռնիկ: Աստուծոյ այս գերագոյն օրէնք անխախտ պահելով՝ ոչ ոք կարող է Եկեղեցւոյ հրամանէն դուրս ինքնահաճոյ տնօրէնութիւն մի առնել: Խստաբարոյ Հրէայք շատ անգամ թեթեւ պատճառներու համար կատէին իրենց կիներ ու արհամարհանօք դուրս կը հանէին տնէն. Աւետարանին արդարութիւն կանանց իրաւունք պաշտպանելով՝ պոռնկութեան պատճառէն ի զատ ուրիշ պատճառ մի իրաւացի չի համարիր ամուսնական կապին պինդ հանգոյց քակել: Սուրբն Պօղոս, որ Քրիստոսի հոգին կը կրէր մեծ պատկառանօք կը յարգէ տիրոջ օրէնք. «Այլ կանամբեացն պատուիրեմ ոչ ես, այլ Տէր, կնոջ յառնէ մի մեկնիլ, ապա թէ մեկնեսցի, անայր մնասցէ, կամ անդրէն ընդ առն իւրում հաշտեսցի եւ առն զկին իւր մի թողուլ:»

Հին օրինաց մատեան միայն սուտ երդումն կարգիլէ. իսկ նոր Աւետարան երդման խօսքերն իսպառ կը մերժէ եւ կը հրամայէ ամենեւին չերդնուլ՝ ոչ սուտ, ոչ ճշմարիտ, ոչ երկինք որ Աստուծոյ Աթոռն է, ոչ երկիր որ նորա ոտից պատուանդան է, ոչ Երուսաղէմ, որ նորա սուրբ քաղաքն է եւ ոչ եւս ի գլուխ մարդոյ, որ կարող չէ մազմի ստեղծել թուխ կամ սպիտակ: Այլ ձեր խօսքերուն ճշմարտութեան պայման այս միայն բաւական է. այոն՝ այո՛ ասել եւ ոչն՝ ոչ. քան զայս աւելին սրտի խարդախութենէն է: Քրիստոնէական եղբայրութեան մէջ երբէք հարկ չիկայ երդման երբ ընկերական սիրոյ եւ հա-

ւատարմութեան պայմաններն պահուին· որ է խօսքին պարզ կերպարանք չպատրուակել ընկեր խաբելու նպատակաւ· Հապա ամէն բանի մէջ անկեղծ խօսիլ ուղիղ եւ ճշմարիտ դատել: Ստախօսութիւն հին չարագիւտ հնարքն է, որ օձին բանսարկութեամբ մարդոյն ականջն ապականեց· ով որ սուտ կը խօսի, նա որդի չէ Աւետարանի ճշմարտութեան· այլ դրախտի օձին հետեւող արբանեակն է: Ո՛րչափ թեթեւ է այնպիսեաց առաջ Աւետարանին այս ահաւոր պատուէր· որք աշխարհիս շահավաճառութեան մէջ, դատաւորական ատեաններու մէջ· սովորական խօսակցութեանց մէջ· ոչ եթէ երկինք, գետին, Երուսաղէմ, գլուխ· այլ Ամենակալ Աստուծոյ մեծ անուն միշտ երդմամբ յեղյեղելով կը խօսին եւ կը խաբեն: Եթէ արարուած բաներուն պատիւ կը պահանջէ Աստուած, ո՛րչափ իւր վեհ անուան, որ նոցա արարչապետն է: Կամ փախչիլ կամ զգուշանալ պէտք է ժամանակիս պատրող ու խաբուսիկ կեղծաւորներէն· մէկ կերդնու, միւս կը հաւատայ· ճարտար լեզուն կը կեղծէ, պարզամիտ կը խաբուի· սուտ եւ կեղծաւոր քաղաքավարութիւն մեր ընկերական կեանք իսպառ խանգարեր է: Այսպիսի սուտակասպաս մարդոցմէն ազատ կենալու համար՝ Դաւթի խնդրուածներով առ Աստուած դիմենք· «Ապրեցո՛ զիս, Տէր, զի նուաղեաց սուրբ· նուաղեցան ճշմարտութիւնք յորդւոց ի մարդկանէ· Ի նանիր խօսեցաւ այր ընդ ընկերի իւրում շրթմամբք նենգաւորօք սրտէ ի սիրտ խօսեցաւ»: Համբերենք ուրեմն միշտ այս աղօթելով· Տէր վրէժխնդիր է, օր մի կը բառնայ երկրէս այն անձն· որ իւր ընկերին հետ նենգաւոր շրթունքներով կը խօսի:

Մովսիսի օրինաց դատավճիռ ատեան աններող խստութեամբ պատուհաս կը վճռէ· Ակն ընդ ական, ատամ ընդ ատաման· այսինքն է վնասին տեղ դարձեալ վնաս փոխարինել: Ի՞նչ էր այս օրինաց զօրութիւն· աչքին տեղ աչք, ատամին տեղ ատամ միշտ վճարելով՝ մարդկային ընկերութիւն կոյր եւ ատամնաթափ կը կացուցանէր: Օրինաց խստութիւն այսպէս մարմին պատժելով՝ հետզհետէ խեղանդամ կընէր ողջ մարդիկ· պատուհասի երկիւղ թէպէտեւ չարութիւն կարճել կուզէր մարդկային ընկերութենէն· այլ վրէժխնդրութեան հոգին իսպառ կարող չէր հանել մարդոց ոխակալ սրտէն:

Յիսուս Մովսիսին տէր՝ իւր ծառայէն աւելի հեզ է, այս վրէժառու բարկութեան կրակ կը շիջուցանէ նոր պատուիրա-

նադրութեամբ «Այլ ես ասեմ ձեզ մի կալ հակառակ չարին»: Ով որ աջ երեսիդ ապտակ կը զարնէ՝ ձախն եւս դարձուր· ով որ շապիկդ կը հանէ, բաճկոնդ ալ թող տուր, ով որ զքեզ մղոն մի տեղ բռնաբար կը վարէ, դուն երկու մղոն գնայ· ով որ քեզմէ կը խնդրէ տուր, ով որ փոխ առնուլ կուզէ դժկամակութեամբ երեսդ մի դարձուներ: Այս է ահա Աւետարանի մշտնջենաւոր հաշտութեան սքանչելի օրէնք, սիրոյ եւ խաղաղութեան աստուածանշան աղեղն· զոր Քրիստոս միայն բերաւ յաշխարհ· այն ինչ ինքն իբրեւ արդար Նոյին զոհ գողգոթային գլուխ զենուեցաւ՝ իւր կարմիր արեան կաթիլներու ցոլերէն նոր հաշտութեան աղեղն կամարաձեւ յօրինեց խաչին վրայ· Նոյ միայն չը տեսաւ զայն· այլ բովանդակ աշխարհ:

Չարին դէմ հակառակելով՝ կը զայրանայ չարն· չարին դէմ հեզանալով՝ կը գիջանի չարն: Մովսիսին օրէնք հուր էր, որ միշտ բարկութիւն նիւթելով՝ մարդիկ իրարու դէմ, ի վրէժխնդրութիւն կը վառէր· Յիսուսի օրէնք ջուր է, որ մարդոց սրտի բարկութեան հրդեհ իսպառ կը շիջուցանէ: Ո՛վ են այս երկու գերագոյն օրէնսդիրք, մէկին ձեռք սուր՝ երեսէն բարկութեան բոց կը փայլատակի· ներել բնաւ չի գիտեր, թշնամին եւ ատելին առ հասարակ կը սպանանէ· միւսին ձեռք խաչ եւ Աւետարան իւր ատելին իբրեւ բարեկամ կը սիրէ եւ ի սրտէ կը ներէ իւր չարանենդ թշնամւոյն: Մովսէս եւ Յիսուս են սոքա· մէկն նեղսիրտ, մարդ է· միւսն երկայնամիտ՝ Աստուած· չափէ այս տեղ մարդոյն և Աստուծոյն գութ, մէկին վճիռ մահ է, միւսին կեանք· Մովսէս մարդկային ընդարձակ սիրոյն պայման կամփոփէ միայն Հրէական ազգին վրայ· ուստի կը պատուիրէ օտարազգի թշնամին մահու չափ ատել եւ ընտանի ազգակից սիրել: Այսպէս չէ Յիսուսին պատուէր, այլ բարձր եւ գերագոյն· Յիսուս մարդկային ընկերութեան անպայման սիրոյն չափ չի դներ այս կամ այն ազգի վրայ ամփոփելով· հապա սէր կ՚ընդարձակէ համատարած մարդկութեան վրայ· եւ կը հրամայէ առանց խտրութեան սիրել այն ամենայն, որ մարդ է եւ ընկեր, չբաժանել իրարմէ բնաւ Հրէայն եւ Հեթանոս: Աւետարանի ուսման մէջ ամէն դասերէն բարձրագոյն դասն է այս, զոր աշխարհի որդիք կարող չեն սորվիլ· միայն Աւետարանի հաւատարիմ աշակերտները կը սորվին: Աւա՛ղ, նոյն իսկ Աւետարանի աշակերտաց մէջ խիստ փոքրիկ մասն են այս դասին համար մրցանակ առնողներն: Մինչդեռ աշխարհ թշնամին կ՚ատէ, ո՛վ կարէ ընդունել· աշ-

*խարհ ըլլողաց եւ չարչարողաց համար նզովք կը կարդայ, ո՛վ կարէ հալածիչներ օրհնել կամ ատելեաց համար բարիս մաղթել։ Այո՛ Յակոբ, Յովսէփ եւ Դաւիթ առանց Աւետարանի աշակերտութեան ուսան այս դաս. իսկ Մարգարէք, Առաքեալք Մարտիրոսք, Հայրապետք, այս դասին մէջ քաջավարժ հանդիսացան։ Ո՜րչափ բարձր ու վսեմ է սոյն առաքինութեան նըպատակ, անկատար մարդ՝ Աստուծոյ կատարելութեան կը վերածէ, աշխարհիս որդիներ՝ երկնաւոր հօր որդիներ կը դըրէ. որ իւր արեւ եւ անձրեւ բարեաց եւ չարաց, արդարոց եւ մեղաւորաց վրայ հաւասար կը բաշխէ։*

*Աշխարհ իւր սիրելին կը սիրէ, աշխարհ իւր բարեկամաց միայն ողջոյն կուտայ. Աւետարան իւր ընտիր զաւակներ կ՚ոռոչէ եւ կը զատէ աշխարհիս սովորական ճանապարհէն ու կեղծաւոր վարմունքէն եւ կ՚առաջնորդէ դէպ ի եւս կատարելագոյն ճանապարհ. երկնաւոր Հօր կատարելութեան նմանութիւն՝ հարազատ որդիներէն կը պահանջէ։ Այո՛, մարդ մահկանացու եւ ապիկար իւր փոքրիկ անձին չափաւորութեամբ միայն կարող է առաքինանալ. Թող չի ձգտի յանդգնութեամբ Հօր Աստուծոյ անհասանելի կատարելութեան հաւասարիլ. Ի՞նչ հաւասարութիւն ունի կաթիլ մը ջուր՝ անսահման ովկիանոսին հետ, նշոյլ մի լոյս՝ արեւուն հետ, նուաստ արարած մի՝ իւր Արարչին հետ։ Մարդոյն կատարելութիւն միայն իւր ուժին եւ դրուած պատուիրաններուն չափով է. երանի՜ թէ նոյն չափով բաղձայինք առաքինանալ, բաւ եւ չատ էր։*



## ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ

## Ջ. ԳԼԽՈՅՆ ՎՐԱՅ

*«ՁԳՈՅԾ լերուք ողորմութեան ձերում՝ մի առնել առաջի մարդկան. որպէս թէ ի ցոյց ինչ նոցա» եւայլն։*

*Յիսուս Մովսիսի օրինաց թերի մնացած դասերն՝ իւր Աւետարանի բարձրագոյն դասերով լրացոյց. այս վեցերորդ գըլխոյն մէջ կսկսի զգուշութեան նոր դասեր աւանդել. որով կը դատափարակէ իւր նորընծայ աշակերտք ու միանգամայն բոլոր հաւատացեալներն. որպէս զի չի նմանին դպրաց ու փարիսեցւոց. որոց ամէն գործքեր արտաքին կեղծաւորութեամբ*

խառնուած էին. ողորմութիւն, պահք եւ աղօթք իրենց համար միայն խաբէութեան միջոց մի էր: Երուսաղէմի հրապարակին մէջ, բազմախուռն ժողովրդոց առաջ փող հարկանելով, աղքատներ հրաւիրելով ի տես աշխարհի ողորմութեան նուէրք կը բաշխէին: Ի՞նչ էր նոցա մտաց գաղտնի նպատակ, ուրիշ բան չէր, այլ թէ մարդիկ տեսնան եւ գովութեամբ հռչակելով փառաւորեն զիրենք: Այս մոլորամիտ կեղծաւորներն երկնաւոր Հօրէն վարձք մի չէին յուսար. բաւական կը համարէին մարդոց տուած գովութիւն եւ փառք: Դուք, կ'ասէ Յիսուս հեռացէք փարիսեցւոց կեղծաւոր կերպերէն. այնչափ զգուշութեամբ ու ծածուկ տուէք ձեր ողորմութիւն կարօտեալ անձին, մինչեւ աջ ձեռքին տուած՝ ձախ ձեռք չիմանայ. վըստահ եղերուք, մի՛ կասկածիք, Աստուած հաւատարիմ է. նա երբ ծածուկ կը տեսնայ ձեր տրոց նուէրք՝ յայտնապէս ի տես աշխարհի կը վճարէ վարձք. ուստի հարկ չէ, որ տեսնող մարդիկ իբրեւ վկայ կացուցանէք ձեր առաքինութեան:

Յիսուս աղօթեց պատշաճագոյն դասն՝ նոյնպէս ամենայն զգուշութեամբ կ'աւանդէ, որ կեղծաւորաց նման հրապարակներու անկիւններ չչնչիւն ձայնով չաղօթենք մարդկանց առաջ իբրեւ ջերմեռանդ աստուածապաշտ երեւնալով: Փարիսեցիք ի՞նչ նկատումն ունէին այս կերպ աղօթքէն. դարձեալ նոյն փառք եւ գովութիւն որսալ մարդոցմէ. եթէ իրենք հասարակ մարդոցմէն որոշուած՝ աւելի արդար, կրօնապաշտ եւ պատուիրանապահ երկիւղած մարդիկ են: Այսպէ՛ս էին այո՛ արտաքին երեւոյթով. այլ իրենց սիրտ եւ երիկամունք բոլորովին զուրկ էր սուրբ կրօնի զգացումէն: Խաբէութեան դասերու մէջ խիստ վարժ լինելով՝ քաջ գիտէին արտաքին կերպարանքով բարեպաշտ ձեւանալ:

Յիսուս վարդապետ իւր նորավարժ աշակերտներ կը հանէ փարիսեցւոց կեղծաւորութեան դպրոցէն եւ կը մուծանէ Աւետարանին պարզութեան դպրոց. որուն դասն այս է, չաղօթել փողոցներու անկիւն ի լուր մարդկանց. այլ մտանել առանձին իւր սենեկին մէջ, կամ լաւ եւս իւր սրտի խորութեան մէջ եւ այնպէս աղօթել առ երկնաւոր Հայրն. քանզի սրտին անձայն մրմունջ ու հառաչանք շուտ կը հասնեն երկինք՝ Հօր ականջ, քան թէ շրթունքներուն բարձր աղաղակ: Դանիէլ Բաբելոնէն երես դէպ ի Երուսաղէմի տաճար դարձուցած կաղօթէր՝ տաճարին Տէր կը լսէր. երից մանկանց օրհնութեան ձայն հնոցի չառաչող բոցոյն մէջէն մինչեւ երկինք կը հասնէր. Յովնանու

*ձայն ծովու խոր անդունդէն, կէտ ձկան փորէն ալիքներ պատառելով դէպի վեր կելլէր: Սրտի ձայն արագընթաց է եւ միշտ հաճելի Աստուծոյ առաջ:*

*Յիսուս ոչ միայն կը խօսէ փարիսեցական աղօթից ձեւ․ այլ նոր դաս մի եւս կ՚աւանդէ․ որ հեթանոսներուն պէս աղօթելոյ ժամ շատախօս չլինիմք: Այս պատուէր ուղիղ հասկցիր, ո՛վ Աւետարանի հետեւող աշակերտ, մի կարծեր բնաւ թէ Տէր կը մերժէ երկարատեւ աղօթք կամ անձանձրոյթ խնդրուածք․ քա՛ւ ոչ երբէք, եթէ այսպէս, ապա ուրեմն ինքն իւր վարդապետութեան դէմ հակառակ կը գործէր․ որ շատ անգամ առանձնանալով ի Ձիթենեաց լեռ, ողջ գիշեր կաղօթէր եւ նոյն ինքն կը պատուիրէր յամենայն ժամ աղօթել ու չձանձրանալ: Ուրեմն հեթանոսաց շատախօսութիւն միայն երկարաժամ աղօթից վրայ չէր․ հապա աւելի անպատշաճ բազմադիմի խնդրուածներ կը պարունակէր իրենց աղօթագրեանց մէջ, ինչ որ աշխարհիս ունայն մեծութեան կը վերաբերէր․ զորօրինակ թագաւորութիւն, իշխանութիւն, ճոխութիւն, հարստութիւն, բախտի յաջողութիւն, մէկ խօսքով աշխարհիս, մարմնոյն եւ այլ պէս պէս ունայնասիրութեան վայելչութիւններ․ որոց կը յօժարամտէր հեթանոսական մարմնապաշտութիւն:*

*Աւետարանին սուրբ գիտութիւն երբ աշխարհիս խաւարեալ որդիք լուսաւորեց, բացաւ նոցա առաջ հանդերձեալ աշխարհին դուռն, սորվեցուց իրենց թէ դուք որդիք մարդկան, այսուհետեւ երկնաւոր հօր ընտանեկան զաւակներն էք, ձեր մեծախնամ գորովալից հայր գիտէ թէ ինչ պէտք է ձեզ․ նա աշխարհիս մահկանացու հայրերուն պէս տխմար եւ ապուշ չէ: Ահա ձեր աղօթից նոր համառօտ դասն․ սորվեցէք ամենայն ուշադրութեամբ: «Հայր մեր, որ յերկինս ես»: Դրախտի հայրենի տունէն տարագրուած որդիք՝ բազմուաստուած հեթանոսութեան մէջ մոլորուելով՝ մոռցան այն ճշմարիտ Հօր Աստուծոյ ամենակալ անուն, որ երկնից բարձրութեան մէջ կը բնակի: Յիսուս նորա միածին որդին յայտնեց մեզ Հօր անուն եւ պատուիրեց որ խնդրենք այսուհետեւ նոյն սուրբ անուն յիշուի իւր հաւատացեալ որդւոց վրայ․ թող եղծուին ու կորսուին աշխարհիս խաւարի իշխանին դրած Արամազդայ, Անահիտայ եւ Բահաղի պիղծ անուններն․ թող գայ տիրէ մեր վրայ երկնից մշտնջենաւոր ազատ թագաւորութիւն․ նորա ոտից պատուանդանի տակ փշրին Նաբուգոդոնոսորի բարձրագոյն արձան եւ հին աշխարհի բռնակալութեանց գահերն: Բարձրելոյն իշ-*

*խանութեան դէմ բոլոր տիեզերք լեցուց եւ իւր տակ ճմլեց ամէն բարձրացած հպարտութիւններն: Աստուած երբ տիրեց արդարութեամբ, այլ եւս տիրապետող աշխարհիս կամք չի մնաց: Աւետարանի որդիք շուտ մոռցան աշխարհ եւ աշխարհիս բազմանուն հայրեր, վաղ ու վարժ արտասանեցին Յիսուսին այս դասն «Եղիցին կամք քո որպէս յերկինս եւ յերկրի»· այսինքն ո՛վ Տէր մեր եւ Հայր, ինչ որ երկնից աստուածպետական ատենիդ մէջ կը կամիս եւ կը տնօրինես հաւատացեալ որդւոցդ համար՝ բարի են: Գիտեմք քո կամք, որ մարդոյն յաւիտենական կեանք է, ամօթապարտ դէմքով կը խոստովանիմք ստոյգ թէ աշխարհիս բռնաւոր հայրեր ի զուր զմեզ չարչարեցին ու խաբեցին· ոչ ոք ի նոցանէ յաւիտենական կեանք խոստացաւ մեզ· իրենք իրենց սնոտի յոյսերով մէկ տեղ գերեզմանին մէջ կորսուեցան:*

*Յիսուս մեր հոգւոյն համար կենաց հաց կը մատակարարէ, բայց մեր մարմնոյ աճման առօրեայ պարէնն եւս չի մոռնար· այլ կ՚ուսուցանէ նոյն իսկ կորստական հացին համար եւս թախանձել զՀայր· «Զհաց մեր հանապազորդ տուր մեզ այսօր»:Այո՛, ամէն քաղցեալներ հացի կ՚սպասեն, մարդ, անասուն, թռչուն· Հօր Աստուծոյ ձեռքն է որ կը բանայ եւ կը կերակրէ զայսոսիկ: Նա չքոտի ճճին անգամ մը կը տեսնայ ու կը խնամէ, չի մոռնար· եթէ խռովելով իւր երես դարձունէ, եթէ արեւն եւ անձրեւ արգիլէ· մեր մարմնոյ կեանք եւ ուժ պակսելով՝ մեք իսկոյն ի հող կը դառնամք: Շնորհալի սուրբ Հայրապետ այս կէտ քաջ կը բացատրէ· «Հաց մարմին կը բուծանէ, բան հոգին կը կեցուցանէ»: Այս երկու կարեւոր պարէն՝ որ մեր իսկական կենդանութիւն է, կարօտ ենք հանապազ խնդրել մեր երկնաւոր Հօրէն:*

*Յիսուս, որ իբրեւ պարտական երաշխաւոր եղեւ մարդկային անվճարելի պարտուց՝ կ՚ուսուցանէ այս խօսքով միշտ աղերս մատուցանենք իւր գթած Հօր առաջ· «Թող մեզ զպարտիս մեր· որպէս եւ մեք թողումք մերոց պարտապանաց»: Ի՞նչ են մեր պարտիքներ, յանցանք, որով Աստուծոյ սուրբ օրինաց դէմ կամակարութեամբ մեղանչելով՝ պարտապան գտնուած եմք: Այս խնդրուածոց մէջ անհրաժեշտ պայման մի կայ· Թող, կը խնդրենք Հայր, եւ մեր պարտուց մուրհակներ պատռէ· այլ ի զուր է այս խնդրուածք, ոչ կը թողու եւ ոչ կը պատռէ մուրհակներն· եթէ մեք նախ մեր ընկերոջ պարտքեր չի թողումք:*

*Այս տեղ հաշիւ մի տեսնալ հարկ է, ո՞րչափ է մեր պարտուց որքանութիւն առ Աստուած եւ ո՞րչափ մեր ընկերին առ մեզ։ Մեր խղճին գիտակցութիւն գիտէ այս եւ կը վկայէ, թէ մեր պարտք առաւել բազմապատիկ է քան մեր ընկերին։ Աւա՛ղ մեզ, մոռնալով իրաւունք եւ դատաստան, առ Աստուած եղած պարտքեր ժխտելով չենք վճարեր, խստութեամբ վարուելով մեր ընկերին հետ, բանտի շղթաներուն մատնելով զինքն կը խեղդեմք չարաչար. մինչեւ չվճարէ մեր պարտուց փոքրիկ պահանջը, ազատութիւն չունի։ Երբ մեք այս դատաստանաւ կը դատեմք մեր ընկեր, մեր յոյս եւ ակնկալութիւն ի դերեւ է. ի՞նչ համարձակութեամբ կարող եմք մեր երկնաւոր Հօրէն ներողութիւն գտնել, երբ յանցաւոր որդիք չթողումք նախ ներելով մեր յանցաւոր եղբարց. վասն զի Աստուած յայնժամ կը ներէ, երբ մարդ մարդոյն ներէ։*

*Յիսուս Աստուած ինքնին յաշխարհ եկաւ ու մարդկանց մէջ բնակելով փորձով իսկ տեսաւ թէ անզօր եւ ապիկար մարդիկ կարող չեն աշխարհիս բազմադիմի փորձանաց ալիքներուն դէմ դնել, ուստի կուսուցանէ ամէն ժամու մէջ երկնաւոր Հօր կազդուրիչ օժանդակութիւն զօրավիգ կանչել ու խնդրել միշտ չտալ զմեզ այն փորձանքներուն ձեռք, որուն կարող չեմք հանդուրժել կամ անսասան մնալ Յովբայ մեծ նահատակին պէս։ Տէր, Հայր մեր, դու գիտես իսկ քու թշուառ զաւակներուդ անհաստատ տկարութիւն, որ իբրեւ խռիւ եւ փոշի կը տարուբերին թեթեւ հողմերէն անգամ, պատսպարէ անօգնական զաւակներդ. ձեռն տուր երկինքէն ու ամէն վերահաս չարիքներէն. չիկայ աշխարհիս վրայ մարդկային ձեռք մը, որ կարենայ զիրենք փրկել. Տէր դու միայն ձեռն տուր ինչպէս Պետրոսին, մարդիկներէն յոյս չի կայ. վասն զի քո է արքայութիւն, քո է զօրութիւն, քո են երկինք, քո է երկիր, քո է երկիր, քո է մարդն, որ զքեզ կ'օրհնէ ու կը փառաւորէ յաւիտեանս յաւիտենից։*

*Որչա՞փ կարեւոր կը դատի ներողութեան դասն. զոր ՀԱՅՐ ՄԵՐԷՆ յետոյ դարձեալ կը կրկնէ Յիսուս եւ իբրեւ անհրաժեշտ պայման մի դնելով կը վերջացնէ այս մեծ պատուէր։ Ի՞նչ է այս անդրժելի պայման. զոր Աստուած վճռեց ու կընքեց. ահաւասիկ. «Եթէ թողուցուք մարդկան զյանցանս նոցա, թողցէ եւ հայրն երկնաւոր զյանցանս ձեր եւ այլն»։ Այսինքն*

եթէ դուք ի սրտէ թողուք ձեր եղբօր, ես ալ կը թողում ձեզ· իսկ եթէ աններող խստասրտութեամբ ձեր համակարիք եղբարց չէք թողուր, ստոյգ եւ ճշմարիտ այժմէն կըսեմ ձեզ· բնաւ մի ակնկալէք, մի յուսաք, թէ ձեր երկնաւոր հօրէն ներողութիւն կը գտնէք· առանց ներելոյ՝ ներողութիւն չիկայ։

Յիսուս աղօթից դասին հետ նոյն զգուշութեամբ կ՚աւանդէ եւ պահեցողութեան դասն, բոլորովին տարբեր դպրաց ու փարիսեցւոց մարդահաճոյ կերպերէն· որք միայն վերին երեսով կը կեղծաւորէին մարդկանց առաջ իբրեւ խիստ պահեցող, սրբակաց, ժուժկալասէր եւ պարկեշտ։

Աստուած, որ արտաքին պահեցողութեան հետ, հոգւոյ եւ սրտի սրբութիւնն ալ ի միասին կը պահանջէ· երբեմն Եսայի մարգարէին բերնով այսպէս կը կշտամբէր Յակովբայ ազգի կեղծաւորութեան տնօրէնութիւն, մինչդեռ Իսրայէլի ազգն ինքնին կը տրտմէր թէ ինչո՞ւ համար իւր պահքն Աստուած չի տեսնար·· «Զի՞ է, զի պահեցաք մեք եւ դու ոչ տեսեր· խոնարհեցուցաք զանձինս մեր եւ դու ոչ գիտացեր»։ Այո՛, բնաւ չուզեր Աստուած տեսնալ այնպիսի պահք, երբ մարդիկներ կը տեսնան· Աստուած չի նկատեր արտաքին խոնարհութեան կեղծաւոր ձեւեր, երբ ներքուստ սիրտն ամբարտաւանութեամբ լցուած է· երբ սրտին գաղտնի պահած անիրաւութեանց կնճիռն չի քակեր· երբ վաճառաշահութեան մէջ խարդախութիւն կը գործէ ի վնաս ընկերին· երբ կը կոփէ զանաւագն եւ կը հարստահարէ· երբ աղքատին ողորմաղէմ ժտանաց ձայն չի լսեր· երբ մատնուած ճարահատ տնանկն մեղաւորին ձեռքէն չի փրկեր· երբ այրին եւ որբ դատաստանի ատենէն մերժելով՝ իւր իրաւունքէն կը զրկէ· երբ իբրեւ փարիսեցի Աստուծոյ տաճարին մէջ պարծենալով կը մեծամտի իւր պահեցողութեան վրայ· երբ աղօթելոյն ժամ իւր ընկեր մաքսաւոր՝ մեղաւոր կը դատի։ Այս կերպն էր ահա փարիսեցւոց կրօնապաշտութեան հանդէս· զոր խօտելով կը կշտամբէ Յիսուս՝ կեղծաւոր, կոյր եւ յիմար կոչելով զիրենք· որք բռեալ գերեզմանի նման միայն արտաքուստ սուրբ կերեւային մարդոց առաջ· իսկ իրենց ներքին սիրտ ու հոգին ապականուած էր մեռելոտի ոսկորներով որ է հնացեալ չարութեամբ։

Ո՞ր է ապա Աստուծոյ հաճելի եւ ընդունակ պահքն· այս դարձեալ նոյն մարգարէն կուսուցանէ· «Թող եւ արձակէ ներեալներն, անիրաւութեան մուրհակներ պատռէ· քաղցեալնե-

րուն առատութեամբ բրդէ ու բաշխէ քո հացդ· անյարկ աղքատներ պատսպարէ տունիդ մէջ· մերկանդամ ընկերդ հանդերձով ծածկէ ։» Ճշմարիտ պահոց եղանակին մէջ՝ Յիսուս կը պատուիրէ, քուրձ եւ մոխիր պէտք չեն Իսրայելի որդւոց պէս· հապա օծել գլուխ, լուանալ երես, մարդկանց առաջ չմթացնել դէմք սեւ տխրութեամբ· այլ պայծառ ու զուարթամիտ երեւալ սիրոյ ժպիտներով· աներեւոյթ սրտիդ սուգ եւ տրտմութիւն թող միայն Տէր տեսնայ ի ծածուկ· ու տայ քեզ յայտնապէս ինչ որ քո զգուշաւոր առաքինութեանդ վարձքն է ։

Այս պարզ եւ անկեղծաւոր շաւղէն հեռի էր բնաւ փարիսեցւոց ճանապարհ· որք խոժոռ դէմքով, տխուր ու ծանր կերպարանքով իբրեւ խստադոյն պահեցող կը ձեւանային միամիտ ժողովրդոց առաջ· իրենց այս չինծու կերպին մէջ իսկ չէր նշմարուէր սրտի կատարեալ զղջումն· ոչ Աւետարանին ուսուցած հոգւոյ հեզութիւն եւ ոչ եւս եղբայրսիրութեան քաղցր ներողութիւն· վասն զի փարիսեցիքն առաւել դատող էին քան թէ ներող ։

Յիսուս, որ երկնից մեծութեան տէր եւ միանգամայն գանձապետն էր՝ իւր Աւետարանի աշակերտաց նորալուր դաս մի կ'աւանդէ, որ բացէ ի բաց հակառակ է աշխարհիս փարթամներուն· «Մի գանձէք ձեզ գանձս յերկրի»· այսինքն անապահով եւ միշտ կասկածելի երկրին վրայ գանձ չի պահել· ուր թէ ոսկի է՝ բռնակալներ կը յափշտակեն· թէ գեղեցիկ կալուած է՝ Աքաաբի եւ Յեզաբելի պէս ամբարիշտ անիրաւներն· թէ հանդերձ է կուտեն եւ կը մաշեն ցեցերն· թէ թագ է՝ կը գլորի, թէ գահ է՝ կը կործանի, թէ վայելչութիւն է՝ կանցանի· թէ կին եւ որդիք են՝ կը մեռանին ։ Եթէ մեր դիզած գանձերուն աշխարհս հաւատարիմ աւանդապահ չէ· հապա ո՞ւր տեղ կայ անկասկած ապահովութիւն, որ անկորուստ կը մնայ ։ Սահուն երկրիս վրայ տեղ մի որոներ· երկինքն է միայն այդ քո փնտռած ապահով տեղ· Յիսուս պատրաստեց զայն իբրեւ գանձարան իւր սիրելեաց համար· որոց յոյս Աստուած եւ երկինքն է· ուր ոչ աշխարհիս բռնակալներուն ձեռք կը հասնի եւ ոչ եւս ական հատանող գողին հնարք կը զօրէ ։ Մինչեւ Քրիստոս աշխարհիս բոլորեալ որդիքներն կը կարծէին թէ իրենց դիզած գանձ, մեծութիւն եւ կեանք ապահով է երկրիս վրայ, որ իբրեւ գողադարան տեղ մի է ։ Այս անկայուն եւ տաժանելի ծովուն մէջ չարաչար աշխատեցան· բոլոր իրենց վաս–

տակ եւ ճոխութիւն այն ինչ նաւերու բեռնաւորելով ապահով նաւահանգիստ մի հանել կուզէին. բայց ընդունայն էր միշտ իրենց ջանք եւ վաստակ, սկսեցին Պետրոսին պէս գանգատել. «Տէր զամենայն գիշեր աշխատեցաք եւ ոչ ինչ կալաք. Տէր ձեռն տուր մեզ ու փրկէ այս ամեհի ալիքներէն. մեր գանձին հետ, ահաւասիկ մեր անձն եւս կը կորնչի:

Արդ, խաւարին հեթանոսութեան ծովուն մէջ բան մի չի կարողացան ըմբռնել Ադամայ ողորմելի՝ որդիք չարավաստակ աշխատելով. կեանքի նաւարկութեան մէջ մինչեւ եկաւ Հօր Աստուծոյ իմաստուն որսորդն՝ սորվեցոյց մեր աշխատութեան ուռկան յաջակողմ ձգել այսինքն թող տալ աշխարհ եւ իւր ամէն երազայոյս անկայուն բարիքներ, վերին երկնից համար խորհել ինչպէս կը յորդորէ երկնաքաղաքացին Պօղոս: Ի զուր կ՚աշխատիմք, աշխարհիս ձախակողմն ունայն է, բան մի կարող չեմք ըմբռնել, ընդ վայր կը տառապիմք ուրեմն մեր կեանք մաշեցաւ, մեր մարմնոյ ուռկաններուն հիւսուած կը քայքայուի օր ըստ օրէ ծերութեամբ, բաւական է, թող տանք այս նանրավաստակ աշխատութիւն. Յիսուսի հրամանին հնազանդելով՝ այսուհետեւ մեր ուռկան միշտ յաջակողմ ձգենք. եւ ինչ որ կարող եմք ըմբռնել՝ զայն վաղվաղակի փոխադրենք երկնից գանձարանին մէջ: Չվհատինք բնաւ թէ երկինք մեր ստոր վիճակէն անհուն հեռաւորութեամբ բարձր է, ո՞վ կարող է իւր գանձ դիւրութեամբ փոխադրել անդ:

Այլ մի վարանիք, ո՛վ դուք, որ ձեր գանձ երկինք հանել կ՚ուզէք. ահա պատրաստ կան բեռնատար աղքատներ, ահա պատրաստ նստեր կսպասեն աշխարհիս մեծատանց դուռներուն առաջ. ամէն հրապարակներու մէջ լի են անհամար վըշտակիր Ղազարոսներ: Մի կասկածիք, Աստուծոյ հաւատարիմ մշակներն են նոքա. տուէք ձեր գանձերու բեռներն, թող տանին երկինք. ուր անկորուստ ապահով կը յանձնեն ձեզ այն օր, յորում Տէրն՝ ձեր ողորմութեան նուէր ձեզ յուշ բերելով կը յիշատակէ մեծ գոհունակութեամբ. «Որովհետեւ արարիք միում ի փոքրկանցս յայսցանէ, ինձ արարիք»:

Նախասացեալ Աւետարանի պատուիրանաց ուղիղ ճանապարհի մէջ անխոտոր քալելու համար աչք եւ լոյս պէտք է. այս լոյս արեւուն լոյս չէ. այլ Աւետարանին, որ կը լուսաւորէ այն ամէն մարդիկ, որ յաշխարհ պիտի գան. ուստի կը խօսի Յիսուս. «Ճրագ մարմնոյ ակն է, եթէ ակն քո առատ է,

ամենայն մարմինդ լուսաւոր եղիցի եւայլն»: Այնչափ ճշմարիտ է այս օրինակն, մարդ կարող չէ ժխտել. դուրսէն կամ հեռաւոր առարկաներէն չի բերեր. այլ նոյն իսկ մարդոյ անձէն կը ցուցնէ. ռամիկն եւ իմաստուն գիտեն փորձով թէ աչք մարմնոյ ճրագն է. երբ լոյսն առատ է՝ բոլոր մարմին լուսաւոր կը դառնայ— իսկ երբ վատատես է, թշուառ է մարդ իւր բոլոր կեանքի մէջ, խարխափելով կը շրջի եւ կը գործէ կոյր գկուրայն առանց ընտրութեան. որով կը զրկուի կատարեալ կեանքէն, զոր կը վարեն առողջակն մարդիկ: Եթէ աշխարհիս մահկանացու կեանքին համար այսքան պիտանի է մարմնոյ աչք. հապա հոգւոյ յաւիտենական կեանքին համար ո՛րչափ կարեւոր է բանին մտաւորական աչք. որ մոլեկրօնութեան խաւարին մէջ խպառ կուրացեր էր, երկինք չէր տեսնար, երկրիս վրայ մոլորեալ կը շրջէր: Տեսաւ Յիսուս ու հարցուց, ի՞նչ կը խնդրես, թշուառ կոյր: Տէ՛ր, ուրիշ ոչինչ չեմ խնդրեր, միայն լոյս կը խնդրեմ. հրաման արա թող աչքս բացուի. տեսնամ երկինք ու աշխարհ եւ պաշտեմ նոցա Արարչագործն: Յիսուս ինչպէս մարմնոյ աչք՝ նոյնպէս մեր հոգւոյ կուրութիւն նոր լուսաւորեց իւր Աւետարանին լուսով: Քրիստոսի բան ճրագ է. Դաւիթ այս ճրագին լուսով կը քալէր ու կըսէր. «Ճրագ են բանք քո ոտից իմոց եւ լոյս տան շաւղաց իմոց»: Ով որ այս լոյս չունի՝ մահուան խաւարին մէջ կը ննջէ: Այս լոյս սքանչելի է, աշխարհիս արեւուն պէս միայն տիեզերք չի լուսաւորեր. այլ թափանցելով մեր ներքին մարդն՝ հոգին սիրտ եւ խիղճ առ հասարակ կը լուսաւորէ: Աստուած այս արեւ նոր արարչագործեց հոգւոյ աշխարհին համար. հաստատեց զայն եկեղեցւոյ կամարին վրայ, որուն լուսով կը շրջին ճշմարտութեան որդիքը:

Յիսուս իւր Աւետարանին հետեւող ազատագիր աշակերտաց կուսուցանէ երկու տէրանց չը ծառայել. այսինքն Աստուծոյ եւ մամոնային: Տէր աշխարհիս համայն փարթամութիւն, եւ սուտ կրօնի պաշտօն՝ մէկ բառով՝ մամոնայ կը կոչէ. որոց ծառայեցին մարդիկ իւրեանց մոլորամտութեամբ մինչեւ իջաւ երկնից Քորեբէն յաշխարհս Նոր Մովսէս եւ Նոր փրկիչ. որ հին Մովսիսին պէս չէ թէ միայն փոքր ժողովուրդ մի ազատեց Փարաւոնի գերութեան մէջ տանջող կաւագործութենէն. այլ բովանդակ աշխարհ փրկեց հեթանոսութեան սուտ կրօնին ծառայեցուցիչ բռնութենէն. ինքնին առաջնորդեց տարաւ զիրենք մինչեւ երկինք: Յիսուսի այս փրկութիւն Մովսի–

սէն գերագանց է. ուստի խնամով կը պատուիրէ իւր ազատեալ նոր ժողովրդոց այլ եւս չի ծառայել հեթանոսական սուտ կրօնին, կամ աշխարհիս փարթամութեան մամոնային: Երկնից Հայրն է միայն ձեր Աստուած եւ Տէր, թող տուէք ձեռագործներն, որ մարդկային մոլորամտութեան չարարուեստ գիւտն է. ճանչցէք ու պաշտեցէք միայն երկնից Աստուած, որ ձեր բարերար եւ ճշմարիտ Հայրն է: Ձեր սիրտն Աստուծոյ տուէք, մի նուիրէք անիրաւ մամօնային. թողէք, բաւական է, մինչեւ ցարդ անմտութեամբ ծառայեցիք ընդունայնութեան, աշխարհի մեծութեան, աշխարհի փառաց, աշխարհի ոսկւոյն. թողէք այսուհետեւ այդ նիւթապաշտութեան կրօն: Դուք մարդ էք, դուք Աստուծոյ պատկերն էք, ձեր տիրական հոգին վեհ է, մի նուաստացնէք ոչնչութիւն պաշտելով: Այդպիսի կեանք մարմնոյ ցանկութեան ունայնասէր հաճոյքներն են. դուք հոգի էք, հոգւոյ կեանք վայելեցէք. թող տուէք այսուհետեւ մարմնոյ կեանք հեթանոսներուն համար է միայն, թող պաշտեն ու ծառայեն մամոնային, ու մարմնոյն ցանկութեան:

Յիսուս այնինչ կը տեսնայ Հօր Աստուծոյ խեղճ զաւակներն, որ աշխարհիս մէջ հացի եւ հանդերձի համար չարաչար զբաղմանց եւ սրտամաշ հոծագութեան մէջ կը տառապին տիւ եւ գիշեր. կ'ուսուցանէ որ այսուհետեւ անյոյս թերահաւատութեամբ չի հոգան, ոչ հացի համար ոչ հանդերձի համար, ոչ տունի եւ ոչ շտեմարանի համար. այդ ամէն երկնաւոր Հօր սիրոյ պարտքն է կը պատրաստէ ձեզ համար: Նա կը լըսէ առիւծի կորեան մռնչիւն խոր անտառի մէջէն. Նա ձկներ կը կերակրէ ծովու խորութեան մէջ, նա թռչուններ կը խնամէ իրենց բունին մէջ: Մի կարծէք թէ որսորդն, որ կը զարնէ ճընճղուկ եւ իւր ձագեր վար կը ձգէ զանխուլ է. ո՛չ, առանց Հօր Աստուծոյ գիտութեան թռչուն մի գետին չիյնար: Ո՛վ ապուշ մարդիկ, զարմացէք ձեր Հօր նախախնամութեան վրայ. եթէ ճնճղկան ձագերու հնգին արժէք երկու դանկ է՝ Աստուած զայն չի մոռնար. միթէ զձեզ կը մոռնա՞յ, ո՛վ պակասամիտ թերահաւատներ. դուք, որ թռչնոց անասնոց վրայ տիրապետող իշխան էք. Գողգոթայի նոր խորանին առաջ անարատ զոհին արեան մէջ թաթաւելով յազատութիւն թռչող նուիրական հաւն էք: Տեսէք դաշտի ինքնաբոյս ծաղիկներն. ո՛վ է, որ կը դարմանէ զայնս, ո՞ր ձեռքն է որ կարմիր, կապոյտ, ծիրանի եւ դեղին գոյներով կը զարդարէ զանոնք. ո՛վ կը յօրինէ նոցա վայելչագեղ թերթերն եւ ձեւերն:

*Առաւել զարմացէք շուշանին վրայ, որուն դիւրաթառամ փառքն՝ անհամեմատ է։ Թողում աշխարհի այլ եւ այլ թագաւորաց պերճութիւններն եւ ոչ իսկ Սողոմոն իւր արքայական փառաւորութեան մէջ՝ կարողացաւ նախանձելի շուշան ծաղկի մի չափ փառք վայելել։ Ի՞նչ է շուշան, դաշտի մէջ բացուած վայրենի խոտ մի, որ այսօր զուարթ է․ վաղ կը թառամի․ կը ժողովեն մարդիկ ու հնոցին մէջ կը վառեն։ Եթէ այս չնչին խոտին բոյս Հայր Աստուած մեծ խնամով կը դարմանէ․ միթէ զձեզ կը մոռանա՞յ, ո՛վ թերահաւատ որդիք, դուք, որ Աստուծոյ նմանութեան պատկեր կը կրէք․ դուք անեղծ եւ անմահ հոգի ունիք․ դուք եկեղեցւոյ նոր դերդաստանին ընտիր եւ ընտանի զաւակներն էք։ Դուք հոգի էք, մարմնոյ համար մի հոգաք․ ես իսկ եմ ձեր նորաճաշակ կերակուր, կենդանի հաց երկինքէն իջած։ Աստուծով յագեցէք, հոգւով Աստուած զգեցէք, կերակուր կը չքանայ, հանդերձ կը մաշի․ ես յաւիտեան կը մնամ։ Ուրեմն հաւատացէք ինձ, բնաւ մարմնոյ պիտոյքներու համար չարաչար հոգածութեամբ մի տատամսիք․ թող տուէք այդպիսի հոգերու ծանրաբեռն զբաղմունք մարմնապաշտ հեթանոսներուն է միայն․ որոց յոյսն աստի աշխարհն է, որոց կեանք մարմին է․ որոց որովայն Աստուած է․ երկնից մէջ Հայր չունին, երկրիս վրայ մարմին աշխարհ փառք եւ Մամոնան կը պաշտեն։*

*Այլ ձեզ երանի՛, դուք երկնաւոր Հայր մի ունիք, որուն անուն ես ծանուցի ձեզ, նա գիտէ թէ ինչ պէտք է ձեր սակաւօրեայ կեանքին համար։ Ամէն բանէն աւելի եւ ամէն բանէն յառաջ խնդրեցէք, որ Աստուծոյ արքայութիւն եւ նորա արդարութիւն տիրէ ձեր վրայ․ մարմնոյ կենաց այն ամէն պիտոյքներն չափէն աւելի կը տրուին ձեզ մինչեւ ցյագ կերէք ու վայելեցէք կշտապինդ։ Վաղուան պարէնի համար հոգալ աւելորդ է․ հապա միշտ եւ առաւել հոգացէք այն անկարծելի չարիքներուն համար, զոր իւրաքանչիւր աւուր արեւ ծագելով իւր հետ կը բերէ։ Ո՛վ կարէ վշտաբեր օրերուն պատահարներ թուել․ որուն տակ յարաժամ կը հեծեն աշխարհիս թշուառ որդիք։ Ահա սոյնպիսի դժուարակիր փորձանքներէն ազատ մնալու համար անդադար հոգալ եւ աղօթել պէտք է։*

*Աշխարհիս անյագ ցանկութենէն գինովցած խելացնոր ագահներ միշտ ապագայ օրերուն բարեբախտութեան կը յուսան, միշտ երջանկութիւն կերազեն․ այն անմիտ մեծատան պէս հին շտեմարաններ քակելով՝ նոր մեծամեծներ շինելու*

պատրաստութիւն կը տեսնան չյիշելով բնաւ թէ Աստուած է իրենց հոգիներուն եւ անձանց տէր․ յանկարծ գիշերուան պահու մէջ․ իւր աւանդ կը պահանջէ եւ իւր ձեռաց ահաւոր մանգաղով կը քաղէ նոցա հոգիներ։ Այս անմիտներուն պատրաստած մեծութիւններն ուրո՞ց կը մնան․ իրենցմէ առաւել անմիտ են իւրեանց ժառանգներ եթէ կը կարծեն իրենց հօրերուն ագահութեան կղկղանքներ իրենց կը մնայ։ Ո՛չ բնաւ, աշխարհին՝ յաշխարհ կը մնայ․ մարդ կարող չէ աշխարհի ամուր ձեռքէն բան մի խլել իւր հետ տանել․ ով որ այս կը խորհի՝ անիրաւ է․ մեծութիւն եւ Մամոնայն աշխարհի բաժին է․ իսկ մեր բաժին Աստուած եւ երկինքն է․ «Բաժին իմ ես դու Տէր, կը վկայէ Դաւիթ, առաւել եւս Յիսուս․ «Դուք չէք յաշխարհէ աստի»։ Եթէ աշխարհէն չեմք՝ ուրեմն՝ աշխարհին՝ մեր չէ․ աշխարհին՝ յաշխարհ կը մնայ, Աստուծոյն՝ առ Աստուած կերթայ։ Աւետարանին իրաւունք եւ հրաման այս է․ կայսերին՝ կայսերին տալ, եւ Աստուծոյն՝ Աստուծոյ։

Ապա ուրեմն զուր ջան եւ ընդունայն վաստակ են մեր ամէն հոգածութիւններ, որ մարմնոյ կեանքին համար է․ առաւել եւս պէտք է հոգւոյն համար հոգանք․ «Հոգին է կենդանարար․ մարմին ինչ ոչ օգնէ» ինչ որ Յիսուս կը խօսի, այն է մեր հոգւոյն կեանք եւ անմահութիւն։



## ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ

## Է· ԳԼԽՈՅՆ ՎՐԱՅ

ԱՍՏՈՒԱԾ Յիսուս դատաւոր արդար, հզօր ու երկայնամիտ մարմնով աշխարհիս մէջ Խաչի ներողութեան աթոռին վրայ նստած այս դաս կաւանդէ․ «Մի դատիք, զի մի դատիցիք» եւայլն։ Ինքն, որ միայն իրաւարար եւ անարատ էր երկնից եւ երկրիս առաջ եւ զոր Հայր սրբեց ու ղրկեց յաշխարհ, երբեք բուռն կամ պատժող դատաւոր չի հանդիսացաւ իբրեւ աշխարհիս աններող ատենակալներն։ Իւր կեանք՝ բոլորովին ներողութիւն էր, իւր խօսք՝ թողութիւն, իւր ոտք՝ այցելութիւն, իւր ձեռք՝ բժշկութիւն, իւր ուսումն՝ հեզութիւն։ Նա շնացող կինն արձակեց մինչդեռ յատեան քաշելով դատապարտել կ՚ուզէին Փարիսեցի դատաւորներն․ Նա մեղաւոր կնոջ թո-

*ղուց՝ երբ ի միտս դատելով կը դայթակղէր Սիմոն․ Նա մաքսաւորին ներեց․ Նա խաչահանու հայհոյիչներուն համար իւր Հօրէն թողութիւն խնդրեց։ Աւետարանին անվախճան թագաւորութեան Աթոռ եկեղեցւոյ ատենին մէջ՝ ոչ բանտ ունի, ոչ գնդան, ոչ գան, ոչ զանազան տանջանաց գործիքներն, այլ իւր վճիռ՝ ներողութիւն է․ իւր բանտն՝ ազատութիւն․ իւր կապանք՝ արձակումն, իւր պատիժ՝ բարի հատուցումն։ Այս ատեան՝ աշխարհի ատեանէն տարօրինակ է․ բարկութիւն, պատիժ, վրէժխնդրութիւն, առ ի մահ դատապարտութիւն, սուր, արիւն չիկայ երբէք․ իւր ամէն վճիռներ ներողամիտ գթութեամբ կ՚արձանագրուին․ բաւական է յանցաւորի սրտի զղջումն ու խոստովանութիւն․ վասն զի այս ատենին օրէնդիր ներող Յիսուսն է․ Սողոն չէ։*

*Ներողութեան գերագոյն վարժապետ սոսկ խօսքով չի աւանդեր այս դաս, այլ իւր հայելի օրինակով․ ով որ տեսնալ կ՚ուզէ թող ի Գողգոթա երթայ, Խաչին հանդէս դիտէ։ Տիեզերաց մեծ դաթաւորն այժմէն կ՚սպառնայ մեզ․ եթէ խստութեամբ դատենք մեր եղբայր, եթէ առանց քննութեան դատապարտութիւն վճռենք, եթէ իբրեւ Փարիսեցի գերանակիր աչքով մեր եղբօր աչքին փոքրիկ շիւղ նկատենք, եթէ մեր համշիրակ ընկերին յանցանք չարաչար չափենք․ մենք ինքնին զմեզ Աստուծոյ արդարութեան ատենին կը մատնենք․ ուր տեղ պիտի երեւայ այն ահաւոր մատն Աստուծոյ տաճարին անօթներ պղծող բռնաւորին չափով պիտի չափէ մեր դատաստան, նոյն չափով, նոյն կշռով, նոյն խստութեամբ․ Վասն զի երկնից ատեան՝ աշխարհիս ատեան չէ․ ուր ոսկին եւ կաշառ կ՚ողոքեն անիրաւ դատաւորին երես, ուր անմեղին համար է զրկանք, կապանք, բանտ եւ մահ․ իսկ յանցաւորին՝ ազատութիւն եւ կեանք։*

*Մարդ՝ երբ յանցաւոր է չքմեղս լինելով ինքնին դատաւոր կը հանդիսանայ իւր ընկերին վրայ, ոչ միայն Յիսուսի ձայն․ այլ նոյն իսկ իւր խղճի ձայն ներքուստ կը յանդիմանէ զինքն․ «Դու ո՛վ խաւարամիտ կոյր դատող, վա՜յ Սրատես աչքիդ․ ինչպէ՞ս տեսլութեան դիտակով մանր կը նշմարես եղբօրդ աչքին մէջ ինկած աննշակ շղիկ․ զոր ես անտեսելով կը ներեմ․ իսկ քո աչքիդ ահագին գերան, որ է ամենամեծ յանցանք թող տալով՝ իբրեւ կարեկից կեղծաւորաբար կը մատչիս եղբօրդ աչքին շիւղ չօշափել։ Այդպէս չէ, ո՛վ կեղծաւոր փարիսեցի, ուղիղ դատաստան տես․ դու նախ մտախոհ եղիր ներքին խղ-*

ճիդ հետ աչքիդ մեծ գերան ի բաց հանել— եւ ապա այնուհետեւ համարձակութեամբ ձեռնարկէ եղբօրն :»

Աւետարանին այս յանդիմանութեան խրատ ընդհանուր Քրիստոնէից ընկերութեան համար է․․ որք առ հասարակ մէկ տիրոջ տան մէջ հաւասար ծառայակից եղբայրներ են․ ծառայն մի միայն իւր տիրոջ պատասխանատու է․ թէ որ գթէ կամ անկանի՝ իւր տէր կը տեսնայ եւ գիտէ, կարող է միւս անգամ ձեռքէն բռնելով՝ վեր հանել զայն։ Եթէ այսպէս, դատաստան միայն տիրոջ իրաւունքն է․ թող չի համարձակի մեղապարտ ծառայն իւր ընկերակից ծառայն դատել։

Աւետարանին ներողութեան օրէնք միայն մեր չարաչար դատաստան կարգիլէ․ այլ մարդկային ընկերութեան մէջ բարին ու չար որոշելու իրաւացի դատաստան երբէք չի մերժեր․ որ մարդոյն ազատ մտաց անբռնադատ իրաւունքն է։ Ո՛վ կարող է որոշել չարն ու բարին․ երբ մարդոյն թիւրատես աչքն շատ անգամ ուղիղն իբրեւ թիւր կը նշմարէ։ Յիսուս նշան մի ցոյց կուտայ․ այն նշանով պէտք է ճանչնանք ու որոշենք․ «Ի պտղո՛յ նոցա, ծանիջիք զնոսա։»

Յիսուս մասնաւորապէս պատուէր կաւանդէ իւր հրաւիրակ աշակերտաց․ որք պատրաստուած էին Աւետարանի սեղանոյն սպասաւոր լինել եւ աշխարհիս քաղցելոց՝ կենաց բանին հաց մատակարարել։ Որոց կուսուցանէ զգուշաւոր տնտեսութեամբ բաշխել․ Աւետարանին սրբութեան հաց անխտրապէս չտալ շուներուն եւ ոչ ես երկնային մարգարիտ խոզերուն առաջ ձգել։

Գիտէ՞ք, շուներն եւ խոզերն ո՛վ են․ Աւետարանին ճշմարտութեան դէմ զինող, Աւետարանին փրկութիւն արհամարհող, Աւետարանին սրբութիւն անարգող աշխարհիս ամբարիշտ անզգամներն են։ Որք կապակոտոր շուներուն պէս պիտի յարձակին վազեն ձեր վրայ, հրապարակաց եւ ատեաններու մէջ մռմռան գայրանան ձեր քարոզութեան դէմ․ կամ աղտեղասէր խոզերու նման իմ պատուական մարգարիտ առ ոտն կոխելով անարգութեան տիղմերու մէջ ու դարձեալ որպէս կատաղի գազան վրանիդ յարձակելով՝ պատառեն զձեզ։

Այսպիսի խստասիրտ անզգամաց երեսէն խոյս տուէք․ ծածկեցէք ու պահեցէք Աւետարանին սրբութիւն․ ձեր ոտքի փոշիներ թօթափելով մի կենաք, շուտով ելէք նոցա քաղաքէն։ Երբէք պատճառ կամ տեղի մի տաք ձեր առաքելական պաշտօ—

*նին մէջ· որ իմ ու Աւետարանիս անուն արհամարհանք եւ հայհոյութիւն կրէ։*

*Այս տիրական պատուէր նոյն ընդհանուր Քրիստոնէից ընկերութեան եւս կը պատկանի· որպէս զի խոհական իմաստութեամբ քաղաքավարելով արտաքին հեթանոսաց հետ, առիթ չի տանք հայհոյելու սուրբ կրօնք եւ հաւատք։*

*Յիսուս՝ իւր Աւետարանին ճշմարտութիւն բնաւ չի հրամայեր բռնադատ կապերով ընդունիլ տալ· քանզի Աւետարան լոյս է· լոյսն ինքնին համատարած է կը ծաւալի եւ կը թափանցէ ընդունողներուն սիրտ· զոր կը պատրաստէ սուրբ հոգւոյն շնորհք։ Որչա՞փ տարբեր էր այս կերպէն կրօնքով տիրապետող աշխարհիս հին բռնակալներուն իշխանական կերպն· որոց կրօնքին հաստատութիւն, սուր, զէնք, արշաւանք, պատերազմ, կոտորած, քաղաքաց կործանումն եւ այլ այսպիսի բոլոր մարդկութեան թշուառաբեր աղէտներ էին։ Հին կրօնք մահաշունչ էր· կենաց տեղ՝ մահ կը բուրէր, Աւետարանին ուրախութեան տեղ՝ սուգ կը բերէր· լուսոյն տեղ՝ խաւար կածէր, երկնից տեղ գերեզման կը բանար· արքայութեան տեղ՝ դժոխք կը տանէր· մէկ խօսքով Աստուած չիկար հին կրօնքին մէջ· ուր Աստուած չիկար, այն տեղ մահ կը թագաւորէր, մարդոյն համար ամենայն ինչ մահ էր։*

*Յիսուս հեզ էր, բռնակալ չէր· իւր սուրբ եւ ճշմարիտ կրօն քանի մի Գալիլեացի անթոշակ զինուորներու ձեռքով տարածեց· որոց պատուէր կուտար ոչ եթէ զէնք այլ եւ ցուպ անգամ չառնել ճանապարհի համար։ Այսպէս աննշան ձկնորսներու ձեռքով տիրեց Աւետարան· խեցեղէն ամաններու զօրութիւն՝ խորտակեց զէնքեր ու զրահներն։ Աշխարհ զարմացաւ դեռ կը զարմանայ երբ Աւետարան տկարներով յաղթանակեց։*

*Յիսուս աղքատ էր, աշխարհիս բաներէն բան մի չունէր· այլ իբրեւ մեծահարուստ վաճառական, խանութ մի բացաւ աշխարհիս հրապարակին մէջ, ուր տեղ ի վաճառ հանեց իւր չընաշխարհիկ պատուական մորգարիտ· այս միայն էր նորա երկինքէն բերած անգին վաճառ։ Աւետարանի բարձր քարոզութեամբ հրաւիրեց աշխարհիս չորս կողմի մարդիկ· իւր սակարկութեան պայմանն այս էր, ոսկի, արծաթ, ճոխութիւն, իշխանութիւն, զանազան· թագ եւ ոչ իսկ աշխարհիս բովանդակ մեծութիւն գին չէր ուզեր այս մարգարիտին· զի մարգարիտն անգին էր։ Ի՞նչ կը պահանջէր ապա մարգարտին տէր· կատարեալ հաւատք, սէր եւ սիրտ, ամէն բան վաճառել աշխարհ*

*եւ ինչ որ աշխարհին է․ անձն եւս ուրանալ․ ահա այս է մարգարտին արժանաւոր գնահատութիւն։ Դժուարի՛նս կը խնդրէ մարգարիտին Տէր․ աշխարհիս սակաւաւոր մարդիկն են միայն այս վաճառ գնողներն։ Այլ մի խուսափիր Աւետարանի ձայնէն․ թող անհնարին չթուի քեզ, դիւրաւ կստանաս մարգարիտն․ միայն հաւատա՛, խնդրէ, հայցէ, բաղխէ․ վասն զի, ո՛վ որ խնդրէ այս մարգարիտ, նա միայն կառնէ՛․ ո՛վ որ հայցէ՝ նա միայն կը գտնէ․ ով որ բաղխէ երկնից ճանապարհին դուռն, Յիսուս պատրաստ է, բանալին իւր ձեռքն է․ ահաւասիկ բաց է մտիր ներս․ քանզի ինքն է դուռն, ինքն է ճանապարհ, ինքն է ճշմարտութիւն եւ ինքն է միայն նորոգատուր կեանք։*

*Յիսուս կը սրտացուցանէ Աւետարանի զաւակներ, չերկմըտին բնաւ, հաւատով խնդրեն ինչ որ կը խնդրեն երկնաւոր Հօրէն, հաւատով ժտեն եւ ինչ որ կարեւոր եւ պատշաճն է զայն խնդրեն։ Հացին տեղ՝ քար մի խնդրէք․ եւ ոչ եւս ձուկին տեղ՝ թունաւոր օձ այսինքն աշխարհիս փարթամութեան գոյքերն եւ մամոնայն․ որք ձեր ատամունքներ կը փշրեն եթէ ծամէք եւ ձեր կեանք կը թունաւորեն եթէ ուտէք։ Դուք ո՛վ ապիկար չար եւ ապուշ հայրեր․ դուք, որ խորագէտ չէք բարւոյն եւ չարին ընտրութեան մէջ․ բայց ձեր բնական գթով կուզէք բարի բաներ տալ ձեր որդւոց․ ոչ հացին տեղ քար՝ եւ ոչ ձուկին տեղ օձ․ թէ եւ մանուկն իւր տղայամտութեամբ խնդրէ լալով․ որչա՞փ եւս առաւել ձեր երկնաւոր հայրն կատարեալ պարգեւներ առատ կը բաշխէ իւր որդւոց․ որք իմաստութեամբ կը խնդրեն եւ առանց թերահաւատելոյ կսպասեն։*

*Յիսուս Աստուած այն միայն հակիրճ եւ բնական օրէնք․ զոր Ադամայ եւ հանուր մարդկութեան հոգւոյն եւ սրտին տախտակներու վրայ ժանտակելով անջնջելի դրոշմեր է․ նոյն օրէնք կը կրկնէ իւր Աւետարանին մէջ եւ դարձեալ կը դրոշմէ մարդոց սրտին վրայ զոր եղծեր էր անաստուածութեան ամբարիշտ ձեռք․ «Զամենայն, զոր միանգամ կամիջիք թէ արասցեն ձեզ․ մարդիկ, այնպէս արարէք եւ դուք նոցա։»։*

*Ահաւասիկ այս է միայն օրինաց բուն արմատն, որուն վըրայ հաստատուած են ընդհանուր պատուիրանաց բոլոր ճիւղերն․ այս է օրինակ բուն աղբիւրին ակն, յորմէ կը բղխին աստուածադիր պատուիրանաց զանազան վտակներն։ Սոյն օրինաց սքանչելի հակիրճ բան մէկ լեզուով գրուած չէ․ ամէն ազգ եւ ազինք կարող են կարդալ զայն հաւատացեալ եւ հեթանոս, Եթովպացին, Արաբացին, Ասիացին, Եւրոպացին․ նաեւ*

*խուժդուժ Սկիւթացին: Այս օրէնք թուղթի վրայ չէ, այլ սըրտին եւ հոգւոյն մէջն է. ամէն հասակի մարդիկ գիտեն զայն, թագաւոր, իշխան, տէր, ծառայ, այր, կին, գեղացին, քաղաքացին, ռամիկ, իմաստուն, վարժապետ, աշակերտ: Մայր է այս օրէնք, որ կը ծնանի պարտք եւ իրաւունք. որով միայն կամրապնդի մարդկային ընկերութեան կապն: Այս կապն է որ կը կապէ թագաւորն՝ հպատակներու հետ, իշխան՝ ժողովուրդին հետ, տէր՝ ծառային հետ, ամուսին՝ ամուսնոյն հետ, ծընողք՝ զաւակաց հետ, հարուստն՝ աղքատին հետ, տկարն՝ զօրաւորին հետ, իմաստուն՝ ռամկին հետ, գեղացին քաղաքացւոյն հետ, ազգ՝ ազգի հետ, աշխարհ՝ աշխարհի հետ: Սրբապիղծ է այն ձեռք, որ այս կապ կը խզէ. սուրբ է այն ձեռք՝ որ զայն կամրապնդէ:*

*Մարդկային ընկերութեան պարտք եւ իրաւունք փոխադարձ առաքինութիւն է. ինչ չափով որ կուտայ, նոյն չափով կը պահանջէ Աւետարանին արդարութեան կշիռ: Ուրեմն, ո՛վ դու, ի՞նչ կը կամիս, որ ընկերդ քեզ ընէ. եթէ սէր՝ սիրէ դու եւս. եթէ պատիւ՝ պատուէ դու եւս. ընկերէն սէր եւ պատիւ պահանջել քո իրաւունքն է. այլ սիրել ընկեր ու պատուել քո պարտքն է. առանց այս փոխարինութեան մեծ անիրաւութիւն է ընկերէն յարգանք պահանջել: Ո՛վ է այն մարդ, որ սիրել չգիտէ՝ սիրուիլ կուզէ. որ բարերարել չգիտէ, երախտագիտութիւն կը պահանջէ, որ անողորմ է, ողորմութիւն կը խնդրէ: Այդ անփոխադարձ իրաւունք, որ միշտ առնել գիտէ առանց տալու, այդ աշխարհիս բռնակալաց ու զօրաւորաց իրաւունքն է. որք առ ոտն կոխելով Աստուծոյ եւ նոյն իսկ բնութեան օրէնք. «Եւ օրէնսդրութիւն բռնութիւն մեր եղիցի» ըսելով, առ հասարակ կը հարստահարեն աղքատն ու անզօր: Այո՛ բազէն ճնճղուկներ կը վանէ. նկուն թռչնիկներ միշտ իւր որսիկն են. նմանապէս ծովու մանրիկ ձուկեր՝ ղըբին ձկան: Նախախնամութիւն սոցա համար այսպէս է սահմաներ. բայց մարդկային ընկերութեան համար արդարութիւն է դրեր. արդարութիւն բնաւ իւր ընկերին վընաս չի կամիր. արդարութիւն հաց՝ իւր ճակտին քրտինքով կուտէ. արդարութիւն ինչ որ պարտք ունի կը վճարէ ընկերին. արդարութիւն ինչքան իրաւունք ունի՝ այնքան կը պահանջէ. արդարութիւն իւր եւ ընկերին իրաւունք հաւասար կը կշռէ անիրաւ գրկանաց կողմն երբէք չի հակամիտեր: Մէկ խօսքով արդարութիւն պարտուց եւ իրաւանց դատաւորն է. ամբարիշտ*

*անիրաւներուն պէս ոչ Թիւր խորհուրդներ կընդունի, ոչ ժանտ աԹոռներու վրայ կը նստի. իւր կամք միշտ Աստուծոյ օրէնքն է. իւր վճիռ իւր խղճին ձայն է: Նա չի մոռնար, այլ կը կարդայ ամէն պահու մէջ. «Զամենայն զոր ինչ կամիցիք, Թէ արասցեն ձեզ մարդիկ. այնպէս արարէք եւ դուք նոցա»: Ա՛հ, մարդիկ, եԹէ չեղծէք այս օրէնք. եԹէ չխեղդէք ձեր խղճին այս մշտաբարբառ ձայն, բաւ եւ շատ է Աւետարանին այս միմիայն պատուէր բոլոր մարդկային ազգ երջանիկ կեանքի մէջ պահել. ամէն զրկանք եւ ԹշուառուԹիւն բառնալ աշխարհիս երեսէն:*

*Այս է ահա Յիսուսին քարոզած բնական օրէնքին զօրուԹիւն. որուն լայնածաւալ իմաստից տառերէն փոքրիկ նշանախեց մի հազիւ նշանակեցի տեղս:*

*Յիսուս, որ երկնից արդարուԹիւն էր, երկրիս մէջ երեւցաւ, Աստուած մարդոց մէջ մտաւ՝ մինչդեռ մարդիկ մոլորուած կը Թափառէին աշխարհիս բազմաստուածուԹեան ճանապարհին վրայ ցիր ու ցան եղած անհովիւ ոչխարներու պէս. փոխանակ երկնից հայրենիք դիմելու՝ սատանայի աքսորանաց աշխարհ կ՚երԹային, Յիսուս միայն դարձուց այդ մարդիկ դէպ ի երկնից ճանապարհ. որուն համար կը պաղատէր ԴաւիԹ «Յոյց ինձ ճանապարհ յոր եւ գնացից»: Այս նոր ճանապարհին ուղեցոյց առաջնորդ Յիսուսն էր. ուստի կը քարոզէ. «Նեղ է դուռն եւ անձուկ ճանապարհ, որ տանի ի կեանս. որպէս զի մարդիկ չխուսափին այս դժուարին բանէն նախ ինքն մտաւ աշխարհիս անձուկ ճանապարհին դուռն: Ո՞ւր տեղէն, ԲեԹլեհէմի այրէն, յանբանից մսրէն մինչեւ ԳողգոԹային գլուխ մինչեւ գերեզմանին դուռն, երեք տարուան միջոց տաժանելի խաչակրուԹեամբ հորդեց բացաւ այս ուղին երկրէս մինչեւ երկինք, խոր դժոխքէն մինչեւ վերին արքայուԹիւն: Ինքն ի՛նչ որ կրեց այս ճանապարհին մէջ. հալածանք, վիշտ, աղքատուԹիւն, քաղց, ծարաւ, ապերախտուԹիւն, մատնուԹիւն, կապանք, բանտ, նախատինք, ձաղանք, Թուք, ապտակ, հարուած ի վերջոյ խաչ եւ մահ:*

*Յիսուսին համար այս էր ահա նեղ դուռն եւ անձուկ ճանապարհ: Հապա մեր՝ ո՞րն է. մեք ո՞վ ենք, նոյն Խաչակիր զօրապետին դրօշակին տակ գինուորող բանակն ենք. այս բանակին անուն Քրիստոնեայ կը կոչուի որ Քրիստոսի հետեւող կը նշանակէ: Սուրբն Պօղոս խրախոյս կուտայ եկեղեցւոյ զինուորներուն. «Հայեցարուք ի զօրագլուխ հաւատոյ... որ փո-*

*խանակ մխիթարութեան, որ նման առաջի կայր՝ յանձն էառ զխաչ, արհամարհեաց զամօթ»: Ամէն զինուոր իւր զօրապետին հրամանակատարն է. եթէ մեր Զօրագլուխն՝ խաչի և Գողգոթայի ճանապարհէն երկինք գնաց, իւր զինուորներն եւս ուխտադիր են նոյն խաչակրութեան ճանապարհէն երթալ: Աստուած անպարտ՝ մարդոյն սիրով վառեալ կամակար ոգւով կրեց խաչին անարգանք. ո՛վ է մարդ, մեղապարտ ծառայ, հող ու մոխիր, եւ որդն չնչին. միթէ իրաւո՞ւնք ունի, ամօթ կամ անարգանք համարել իւր նուաստ անձին՝ կրել աշխարհիս մէջ այն ամէն խաչեր, ինչ որ իւր Տէր կրեց: Բնաւ թող չի յուսայ մարդ, մոլորաշաւիղ աշխարհիս վրայ չկայ ուրիշ ճանապարհ մի երկինք գնալու բաց Յիսուսի բացած ճանապարհէն:*

*Այո՛, այս անձուկ անցքէն ի զատ կայ ուրիշ ընդարձակ պողոտայ մի աշխարհիս դէպի ձախակողմ կոյս, զոր ի սկզբանէ անտի խաւարասէր իշխան բացեր է դէպ ի կորստեան անդունդ: Աւա՜ղ, որչա՞փ բազմապատիկ են այս համարձակ ճամբուն վրայ ուղեւորներն. ահա բանակներով կը դիմեն փառասէր բռնակալներ. աղքատին վրայ տիրապետող ամբարիշտ իշխաններ. տկարին եւ անզօրին իրաւունք յափշտակող հարըստահարիչ զրկողներ. բազմախորտիկ սեղանին վրայ միշտ յղփացող, կարօտ Ղազարոսին փշրանք զլացող քարասիրտ մեծատուններ. ոսկին իբրեւ Աստուած պաշտող աշխարհիս ընչաքաղց ագահներ. փոքրիկ կարծուած Աստուծոյ սիրելեաց վըրայ հպարտացող գոռոզներ. ընկերոջ համբաւոյն ու մեծութեան դէմ մախացող, հին եղբայրասպան Կայենին նախանձոտ եղբայրներ. ջրհեղեղի դարուն մարդկանց պէս ուտող եւ ըմպող եւ անառակ շուայտութեամբ կեանք վարող քաղաքացիներ: Մէկ խօսքով, աշխարհիս բոլոր օրինազանց անզգամներ, որք կամ խպառ ուրացան անհաւատութեամբ թէ Աստուած չիկայ. կամ ճանչցան Աստուած, ու հաւատացին նորա միածին որդւոյն, մկրտութեան սուրբ կնքով քրիստոնեայ դրոշմեցին իրենց անուն. տէր տէր կանչեցին, բայց տիրոջ սուրբ պատուիրաններն չի պահեցին: Քրիստոնէութեան անարատ կրօնքին մէջ՝ դարձեալ նոյն հեթանոսութեան զեղծ ու անառակ կեանք վարելով՝ մինչեւ ցվախճան մնացին անզիղջ առ երեսս Քրիստոնեայ անուն առին, գործքով հեթանոս մեռան:*

*Սոյնպիսի յիմար եւ ապերախտ որդիքներ խաչին փրկութիւն եւ Աւետարանին սիրոյ օրէնք մերժելով՝ աշխարհիս վը-*

րայ ընտրեցին ու գնացին այն ճանապարհ, որուն երջանկութիւն կարծուած երկրաւոր կեանք մինչեւ գերեզմանին դուռն էր։ Անհաւատութիւն ու մեծութեան պատրանք պաշարեց նոցա խելացնոր միտք, չի կրցան ուղիղ տեսութեամբ համեմատել այս երկու ճանապարհաց վախճան։ Այն ինչ մէկին մէջ խաչակիր ուղեւորն, որ թէպէտ ծանրութեան տակ չունչ բերան հասած պարտասելով կը հեծէր. բայց իւր վշտատար քայլեր մինչեւ գերեզմանն իջեւան կանգ կ'առնէին. այնուհետեւ մահուան մէջ նոր կեանք գտնելով՝ երկնից մշտնջենաւոր հանգիստ կը ժամանէր հոգին։ Իսկ միւսին մէջ անխաչաբարձ ուղեւորն, որուն բեռն միայն աշխարհի մեծութիւն էր. մինչդեռ կառքին մէջ նստած կարշաւէր կանցնէր ընդարձակ պողոտաներէն. կը խորհէր ինչ որ իւր մարմնոյ հաճոյքն էր. չտեմարան կը պատրաստէր՝ կարծելով թէ ինքն յաւիտենական աշխարհաքաղաքացի է. եւ ահա կէս գիշերուան պահուն կառքին անիւ կը գլորուէր մահուան գուբ. այն տեղ կը բացուէր կուրցած հոգւոյն աչք, ամենայն ինչ ունայնութիւն կը տեսնար, ոչ պալատ, ոչ փառք, ոչ մեծամեծ չտեմարան, ոչ բազմապատիկ տոհմականք. անցան գնացին այս ամէն վայելքներ. նոցա տեղ թշուառագոյն վիճակ յաջորդեց գեհենին կրակ. եւ մահուան մէջ՝ դարձեալ նոր մահ մի գտաւ։

Յիսուս այս կորստեան դուռն կը փակէ եւ Աւետարանին որդւոց դէմ կը խցէ լայն ճանապարհին անցք. այլ իրմէն յառաջ եւ յետոյ շատ անգամ սուտ մարգարէներ կը յառնէին ժողովրդոց մէջ, որոց գործն էր խորամանկութեամբ իբրեւ Աստուծոյ մարգարէ ձեւանալով՝ ճշմարտութիւն միշտ խեղաթիւրել. ինչ որ Աստուծոյ կողմէն ճշմարիտ մարգարէներ կը քարոզէին, նոքա ժողովրդոց միտք յուղղութենէն հանելով՝ ընդհակառակն կը համոզէին։ Փարիսեցւոց պէս խիստ վարժ էին կեղծաւորութեան մէջ, քաջ գիտէին ոչխարի մորթով արտաքուստ պատել զիրենք. իսկ ներքուստ սուր ժանիքներով ժողովուրդ պատառել։ Եկեղեցւոյ պարզամիտ գառներ այսպիսի դարանամուտ գազաններէն ազատ պահելու համար՝ քաջ հովիւ Յիսուս նախատեսելով ազդ կ'առնէ. «Զգոյշ լերուք ի սուտ մարգարէից. որք գան առ ձեզ հանդերձիւք ոչխարաց»։ Այսպիսի գառնազգեստ գայլեր ճանչնալու համար՝ ահաւասիկ ձեզ այժմէն նշան կուտամ։ Այդ ինքնակոչ մշակներ, եկեղեցւոյ դրախտին չարարմատ ծառեր, զոր ես չեմ տնկեր. այլ սրտախօս բանսարկուն, որ իրենց հայրն է. դոքա թէպէտ ամէն

*Հնարքով կուզեն իրենց ստութիւն՝ ճշմարտութեան կեղեւներով պատրուակել. բայց անհնար է. «Զիք ինչ ծածուկ, որ ոչ յայտնեսցի եւ գաղտնի, որ ոչ ծանիցի»: Գիտցէք, դուք, իմ ժրագոյն մշակներ, Աւետարանի լուսոյն առաջ ամէն խաւարին խորհուրդ եւ գործ մերկապարանոց կը խայտառակին: Նոքա ի բնէ անտի չարարմատոյ շառաւիղ են. երբէք կարող չեն իրենց դառնահամ պտուղ ծածկել ձեզմէ: Նոցա վաղուց անուղիղ ընթացքէն, նոցա օտար–ուսումն քարոզութենէն, նոցա մարդահաճոյ խօսքերէն անշուշտ պիտի ճանչնաք եւ յիշէք իմ բան, թէ չար ծառ՝ բարի պտուղ չի բերեր: Զխաբուիք ուրեմն երբ նոքա տիրոջ անունով գործել կուզեն. ու ծառայական խոնարհ ձայնով զիս Տէր Տէր կը կանչեն: Մի հաւատաք, դոցա ձայն միայն երկու շրթանց մէջէն կը հնչի. սրտի կամ սիրոյ մտերմական ձայն չէ: Օր մի պիտի գայ եւ այն օր՝ վերջին հանդերձեալ օրն է. ուր ահաւոր հրապարակին մէջ, երբ իրենց գաղտնիքներ կը յայտնուին՝ ես կը խօսիմ նոցա հետ. իրենք պատասխան պիտի տան ամօթապարտ դէմքով: «Տէր, քո անունով մարգարէացանք, քո անունով Աւետարանդ քարոզեցինք, քո անունով բազմապատիկ զօրութիւն ու հրաշքներ գործեցինք երկրի վրայ. մարդիկ զմեզ քո Աւետարանին հաւատարիմ պաշտօնեայ ճանչցան: Այն ինչ մեք ակնկալութիւն ունիմք վարձուց, զոր դու պատրաստեր ես քո սիրելեաց համար. եղո՛ւկ մեզ. սուրբերուդ հաղորդակցութենէն զրկելով՝ քո ատելեաց հետ կը դատապարտե՞ս զմեզ»: Այլ ես պիտի կըշտամբեմ այդ ինքնընտիր սուտ առաքեալներ: «Ի բաց գնացէք, ո՛վ դուք անիրաւութեան մշակներ, դուք՝ որ իմ Աւետարանս իբրեւ շահավաճառութիւն քարոզեցիք. դուք՝ որ խորամանկ հին օձի պէս եկեղեցւոյ դրախտին մէջ մտնելով՝ Աստուծոյ հրեշտակ ձեւացաք, եկեղեցւոյ միութիւն երկպառակեցիք. դուք ճշմարտութեան աղբիւր պղտորեցիք ժանտահոտ ջուրերով: Ինչ որ գործեցիք դուք, Աստուծոյ փառք չէր ձեր նպատակ. այլ ձեր շահ եւ անձնական օգուտ: Ուստի ի բաց գնացէք, դուք արժանի չէք ընդունել այն պսակ, զոր ես միայն հաւատարիմ ծառայից գլուխ կը դնեմ»:*

*Յիսուս այն ինչ յաւիտենական կենաց խօսքեր կ՚աւարտէ՝ իբրեւ վերջաբան իւր սքանչելի ճառին, կը յայտնէ նմանագոյն օրինակով մի. թէ ով որ իմ այս պատուէրներս կը լսէ ու կը պահէ, նա կը նմանի այն խոհական մարդոյն, որ նախատես իմաստութեամբ իւր տան հիմն հաստատուն վիմին վրայ կը դնէ*

եւ նորա վրայ կը բարձրացնէ չէնք, զոր ոչ աշխարհիս տեղատարափ անձրեւ, և ոչ հեղեղաբեր գետեր և ոչ եւս փոթորկալից հողմեր կարող են կործանել զայն։ Իսկ նա, որ իմ խօսքերս միայն կը լսէ ու չի աներ, կը նմանի այն յիմար մարդոյն, որ իւր տան հիմն սահուն աւազի վրայ կը դնէ. երբ կ'իջնան յորդահոս անձրեւներ, կը զայրանան գետերու ջրեր եւ միանգամայն կը փչեն սաստկաշունչ հողմեր. իսկոյն զարնելով տան՝ վեր ի վայր կը քանդեն. որուն կործանումն մեծ կը լինի. տեսնողներ կը զարմանան, չարախնդաց մարդիկ վաշ վաշ կը կարդան։

Այս ճշգրիտ նմանութեան օրինակ ով որ Աւետարան կը կարդայ թող բարւոք ի միտ առնէ. միայն լսելով ու հաւատալով՝ Քրիստոնէութեան չէնք կատարեալ չէ. այլ պէտք է Աւետարանի սուրբ խօսքեր լսելէն եւ հաւատալէն յետոյ՝ զայնս արդիւնաւորել նոյն պատուիրանաց համեմատ գործքերով. ահա նա է մարդ արդար, օրինապահ եւ կատարեալ։ Վասն զի Քրիստոսի Առաքեալ բացարձակ կը խօսի. Թէ Օրէնք լսող կամ գիտցող չի արդարանար. այլ առնող։ Առնելն է միայն, որ հաւատոյ չէնքին հիմն" հաստատուն, անշարժ եւ անդրդուելի կը պահէ աշխարհի գայթակղութեան դէմ, հալածանաց հեղեղներու դէմ, բռնակալաց բարկութեան դէմ, մռնչող շըրջող մեր ոսոխ առիւծին դէմ, աշխարհի փառասիրութեան դէմ, մարմնոյ հրապուրիչ ցանկութեան դէմ, բազմապատիկ ախտերու կրից դէմ, աշխարհի տուած ամէն չարիքներուն դէմ։ Մարդ կարող չէ մեռեալ հաւատքով դիմադրաւ լինել աշխարհի զօրութեան դէմ։ Թէ կռուիլ ու յաղթել կուզես՝ զրահաւորէ զքեզ կենդանի հաւատքով, այսինքն արդիւնարար գործքով. դու յայնժամ կը յաղթես թէ եւ լիաճոխ մեծութենէն ու սիրելի զաւակներէն զրկուած՝ մենամարտ Յովբ նահատակին պէս անարգ աղբիւսի վրայ ձգուած՝ վշտահար ցաւոցդ մէջ անօգնական մնաս։ Այսքան եւ այսչափ են Յիսուսի քարոզած սիրոյ եւ բնական օրինաց սքանչելի վարդապետութեան դասեր, զորս Գալիլեայի լեռան վրայ աւանդեց ժողովրդոց. որուն վրայ՝ կը զարմանային շատ. վասն զի Յիսուս իշխանութեամբ կ'ուսուցանէր եւ ոչ թէ դպրաց կամ փարիսեցւոց նման մարդահաճոյ կեղծաւորութեամբ մարդկանց առաջ միշտ բարեմարդիկ երեւելով՝ փառք եւ գովութիւն որսալ։

Աստուած օրէնսդիր ինքնին աշխարհի մէջ իբրեւ մարդ մարդոց հետ ընտանեբար մարդոց լեզուով խօսեցաւ. իւր

դասերու մէջ բնաւ երկրաչափական խնդիրներ չկան· բայց միանգամայն խոր են եւ դիւրին· առ որ կը զարմանար Դաւիթ· «Որպէ՜ս զի մեծ են գործք քո, Տէր, եւ յոյժ խոր են խորհուրդք քո»։ Միայն աշխարհիս անզգամներ ու անմիտներն են, որ փոխանակ հաւատալու՝ Աստուծոյ անհաս խորհուրդներ խելքով չափել կուզեն։ Աստուծոյ մանուկ մեծագործութիւն մի գործեց տիեզերաց մէջ· աշխարհ զարմացաւ եւ դեռ կը զարմանայ։ Յիսուսի բովանդակ վարդապետութեան նպատակըն ուրիշ բան չէր· այլ միայն մարդկային ամբարհաւաճ եւ բիրտ հոգին դաստիարակել եւ նոցա թիւր գնացք ուղղել դէպի երկինք աշխարհիս խոտորեալ ճանապարհէն։ Առանց Աւետարանին առաջնորդութեան՝ ուղիղ ճանապարհ չկայ եւ ոչ եւս առանց Քրիստոսին՝ այն առաւել եւ կատարեալ կեանք, զոր ինքն միայն շնորհեց· «Ես եկի, զի զկեանս ունիցիք եւ առաւել եւս ունիցիք»։



# ՎԵՐՋԱԲԱՆ

# ԱՌ ԸՆԹԵՐՑՈՂՍ

---

*ՅԻՍՈՒՍԻ եւ իւր սիրոյ օրինաց անեղծական տառեր մեր սրտին եւ հոգւոյն մէջ խորագոյն արձանագրելու համար՝ դարձեալ խորհրդածութեան ճառիս վերջ՝ համառօտապէս նոյն դասեր քեզ համար կը կրկնեմ, չեմ դանդաղիր։ Սուրբ Պօղոս իւր մշտախօս քարոզութեան խօսքեր կը կրկնէր, որպէս զի Քրիստոս հաւատացելոց սրտին մէջ նկարելով՝ կենդանի պահէր նորա խաչին փրկութիւն։ Այսպէս եւս Աւետարանին Աստուածադրոշմ տառեր մեր սրտին մէջ անեղծ տպաւորելու համար՝ պէտք է բիւր անգամ կրկնենք մեր երկնաւոր Վարդապետին ճշմարտութեան դասեր։*

*Ուրեմն, ով դու մտադիր ընթերցող, եթէ քեզ ըղձալի են, եթէ ժառանգել կուզես Աւետարանին ինն Երանութեանց մեծութիւն, կամակար յօժարամտութեամբ կատարէ այս պատուէրներն, որոց բովանդակութիւն այս է։*

*Հոգւով աղքատ, հեզ, արդարութեան ծարաւի, սուրբ սիրտ եւ խաղաղարար լինել· համբերել տանել ամեն հալածանաց ու նախատանաց՝ Յիսուսի անուան համար։ Իբրեւ աղ՝ համ տալ անհամ ժողովրդոց, իբրեւ լոյս՝ լոյս տալ նոցա, որք անաստուածգիտութեան խաւարին մէջ կը նստին, առաւել բարի գործքով օրինակ լինել մարդկանց, քան թէ լոկ քարոզութեամբ։ Տարապարտուց տեղ եղբօր վրայ չի բարկանալ եւ մորոս չանուանել· առանց եղբօր հետ հաշտուելու՝ սեղանին վրայ պատարագ չի հանել· դեռ դատաւորին դիմաց չելած՝ ոսոխին հետ իրաւախոհ լինել։ Առանց խնայելոյ հանել աչք, կտրել ձեռք· երբ դէպ ի չարն եւ ի գայթակղութիւն կը տանին։ Ամենեւին չերդնուլ ոչ երկինք եւ ոչ երկիր· սրտի ուղղութեամբ այոն՝ այո՛ ասել եւ ոչն՝ ոչ։ Զարին հակառակ չի կենալ· չապիկ հանողին՝ բաճկոնն ալ թողուլ ով որ կը խնդրէ տալ, թշնամին սիրել, ատելւոյն բարի առնել· սրտի մտօք աղօթել նոցա համար, որք կը լլկեն եւ կը հալածեն։ Միայն սիրելին չի սիրել, միայն բարեկամին ողջոյն չի տալ· այլ անխտիր մարդասիրութեամբ տալ ամենուն։ Ողորմութիւն, աղօթք, պահք արտաքին ձեւերով առանց սրտի սրբութեան չի*

մատուցանել՝ մարդիկներէն փառաւորուելու համար․ աղօթքի մէջ շատախօս չլինել, միայն Աստուծոյ արքայութիւն եւ նորա սուրբ կամք խնդրել եւ մեր պարտեաց թողութիւն․ եղբօր կամ ընկերոջ յանցանքներուն ներել ի սրտէ ։ Երկուց տերանց, այսինքն Աստուծոյ եւ մամոնայի չի ծառայել․ կերակուրի եւ հանդերձի համար երբէք չի հոգալ․ երկնից թռչուններն եւ դաշտի շուշան ծաղիկն օրինակ առնելով․ հեթանոսներուն թողուլ չափազանց հոգ, վաղուան համար իսկ չի հոգալ ։ Եղբայր չի դատել չարաչար, իւր աչքին մեծ գերան թողլով՝ եղբօր աչքին շիւղ չի հանել․ այսինքն սրբել զինքն եւ ապա զեղբայրն ։ Աւետարանին սրբութիւն շանց պէս անզգամներուն չտալ եւ ոչ եւս Աստուծոյ անգին մարգարիտ խոզերուն առաջ ձգել ։ Աներկբայ հաւատով խնդրել, հայցել եւ բաղխել, անշուշտ կը բացուի դուռն եւ կը տրուի նոցա թէ հաց եւ թէ ձուկ․ ինչպէս որ կը կամին ։ Նեղ դռնէն մտնել, որ երկինք կը տանի, աշխարհիս լայն ճանապարհէն փախչիլ, որ ի կորուստ կ՚առաջնորդէ ։ Սիրոյ եւ ընկերական օրէնք հաստատ պահել․ ամենեւին չառնել ընկերին ինչ որ իւր անձին չար կը համարի ։ Սուտ մարգարէներէ և կեղծաւոր քարոզիչներէն զգուշանալ միշտ, առանց ճշմարիտ արդարագործութեան լոկ բերնով Տէր Տէր չի կանչել․ աշխարհիս յիմարներուն պէս խախուտ աւազին վրայ շէնք չի շինել․ իբրեւ խոհական իմաստուն՝, ճշմարիտ կրօնի բարոյական հիմն՝ հաստատուն վիմի վրայ դնել, այսինքն լսելով հաւատալ՝ Աստուծոյ Որդւոյն եւ հաւատալով գործել արդարութիւն ։

Տէր, ո՛վ կարող է առանց քո ձեռնտու օժանդակութեան՝ քո պատուիրած արդարութիւններ անթերի կատարել ։ Տէր, դու ինքնին եկար տեսար իսկ մարդկային ապիկարութեան վիճակ ու խօսեցար․ «Առանց իմ ոչ ինչ կարող էք առնել» ։ Ուրեմն Դաւթին պէս ժտելով՝ քո լոյս եւ օգնութիւն կը խնդրենք․

Իմաստուն արա զիս, Տէր․․․ եւ Առաջնորդ եղիր ինձ քո պատուիրանաց անխոտոր շաւիղներու մէջ․ որոց միայն հաճեցաւ միտքս ու հոգիս ։ Տէր, քո սիրովդ աչքերս դարձուր դէպ ի երկինք, որպէս զի չի տեսնամ աշխարհիս հրապուրիչ նանրութիւններ․ որ կը հանեն զիս քո սուրբ ճանապարհէն ։ Ահա ցանկացայ, սիրեցի ու գրեցի Աւետարանիդ պատուիրանաց խօսքեր․ Ես որ տրուպ պաշտօնեայ եմ Աւետարանիդ քարոզութեան․ այս դուզնաքեայ վաստակ իբրեւ ի քէն նուէր եւ շնորհ՝ եկեղեցւոյդ որդւոց կընծայեմ ։

ՅԻՍՈՒՍԻ

# ՎԵՐՋԻՆ ՇԱԲԱԹ

ԵՒ

# ԽԱՉԻ ՃԱՌ

ՀՈԳԵԳՐԵՑ

ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ



## ՅԻՇԱՏԱԿ

## ԵՂԲՕՐՈՐԴԻՈՅՆ

### ԱՌ ՀՕՐԵՂԲԱՅՐ ԻՒՐ

# ԽԱՉԱՏՈՒՐ ԽՐԻՄԵԱՆ

### ՈՐ Ի ՏԷՐ ՆՆՋԵՐ Է

---

ԽԱՉԻ ՃԱՌ քո յիշատակին կը նուիրեմ, ո՛վ հանգուցեալ Հոգի, զի պարտական եմ ես քեզ· յիսուն տարի կը լինի որ մեր աշխարհէն՝ յաւիտենական աշխարհ գնացեր ես· այլ քո անուն եւ յիշատակ մանուկ Մկրտչի հոգւոյն ու սրտին մէջ անեղծ պահեր եմ:

Չեմ մոռնար, այլ կը յիշեմ մանկութեանս գարնան քաղցր օրերը, երբ միմիայն մանուկ Մկրտիչ քո սիրոյ ծաղիկն էր: Սորա համար ես մոռցած էի ծնողք եւ բոլոր Խրիմեան գերդաստանի մերձաւորներ· զի դու էիր ինձ համար, հայր, մայր, դաստիարակ, վարժապետ, խնամածու եւ այլն: Ամուրի կեանք ընտրեցիր ու սիրեցիր· որպէս զի քո սիրեցեալ Եղբօրորդին որդեգրես քեզ:

Դու մեռար, դեռ ողջ էին ծնողքս եւ երիցագոյն եղբայրս· բայց ես յայնժամ զգացի թէ՝ սիրոյ եւ դաստիարակութեան զրկէն որբացած եմ: Ոչինչ մեծ ժառանգութիւն աշխարհիս հարստութենէն չթողիր քո հոգեհատոր մանուկ Մկրտչին· ոչ ոսկի, ոչ արծաթ· այլ մի Աստուածաշունչ եւ մեր Սուրբ Նախնեաց մի քանի մատեաններ· զորս յաճախ կարդալ տալով՝ ընտանի լեզուով կը բացատրէիր ինձ:

Այլ քան զամէն աւելի գործնական օրինակովդ Աւետարանի գթասիրութեան հոգին թողիր ինձ ժառանգութիւն: Երանի՛ թէ տիրապէս ժառանգէի զայն· բարեգորով մի սիրտ ունէիր եւ անխտրապէս կը գթայիր ամէն տառապեալ թշուառին վերայ: Երբ աղքատ դուռը դփէր, կը կանչէիր, Մկրտի՛չ, հաց տուր, եւ երբ մերկ լինէր աղաչաւոր թշուառ հրաման կ՚անէիր որ մի քանի կանգուն կտաւ տամ:

*Արթուն աչքով կը հսկէիր, եւ ոչ փոքրիկ պակասութեանս կը ներէիր դու: Կը յիշեմ որ մի օր ժամու պատկերի առջեւէն մի փոքրիկ մոմ առնելով բերի տունը. հարցուցիր եւ ես առանց ժխտելու խոստովանեցայ. հետեւեալ օր զիս տարիր եկեղեցին եւ նոյն մոմ խաչի պատկերի առաջ վառել տուիր, եւ քաղցրութեամբ խրատեցիր որ այլ եւս սեղանակապուտ չըլլնիմ:*

*Ծանր հիւանդացայ մի նուագ, քառասուն օր ամբողջ գըլխուս վերայ կեցար, ամէն ճար եւ դարման կը հայթայթէիր, եւ մերթ եւս կ'երթայիր եկեղեցին, լալով կը պաղատէիր Աստուծոյ որ ապրի մանուկ Մկրտիչ:*

*Ապրեցայ քո հաւատով, եւ դեռ կ'ապրիմ Աստուծոյ նախախնամութեամբ, վաթսուն եւ վեցերրորդ տարին լրացուցի: Եւ դու եւս, եթէ ճիշդ կը յիշեմ, այնչափ տարի ապրեցար ու մեռար:*

*Ես քո խօսուն զաւնուկն էի. բայց դու մի անխօսուն զաւնուկ եւս ունէիր, զոր ամբողջ եօթն տարի պահեցիր. ուր երթայիր քո ետեւէն կուգար, երբէք չէր բաժանուեր: Ո՛հ, մահուանդ օր այդ զաւնուկ մորթեցին եւ հոգւոյդ համար ճաշ տուին աղքատներուն:*

*Այժմ մանուկ Մկրտիչ ծերացած ՀԱՅՐԻԿ եղեր է, ես էլ պիտի գամ հասնիմ քեզ. սակայն դու հոգւովդ մօտ ես կենաց աղբիւրին, աղօթէ որդեգրիդ համար, դեռ անվճար պարտք ունիմ առ Աւետարան, առ Ազգն եւ Եկեղեցին, պարտքերս վըճարեմ եւ ապա մեռնիմ:*



# ՅՈՐԴՈՐ

## ԱՌ

## ԻՄ ՊԱՇՏՕՆԱԿԻՑ ԵՂԲԱՐՍ

## ԵՒ

## ԽԱՉԱԿԻՐ ՈՒԽՏՆ ԵԿԵՂԵՑԻՈՅ

---

*ՅԻՍՈՒՍԻ ԽԱՉԻՆ ՃԱՌԸ Ձեզ համար գրեցի եւ Ձեզ կը նուիրեմ, ո՛վ Խաչին զինուորներ, Աւետարանի պաշտօնեաներ, կենաց բան քարոզողներ եւ Քրիստոսի հօտին հովիւներ. դուք եթէ սիրով կը գրկէք Յիսուսի խաչը եւ ախորժանօք կ՚ընթեռնուք իմ Խաչին ճառը. օ՛ն ուրեմն, հոգւով հետ ինձ եկէք, երթանք ելնենք Սիօնի վերնատուն. ուր Աւետարանին ուսուցիչ երկնից Վարդապետն կը խոնարհի մինչեւ աշակերտաց ոտքը, կենդանի եւ գործնական օրինակ կ՚աւանդէ մեզ եւ կ՚ասէ. «Օրինակ մի ետու ձեզ. զի եւ դուք զնոյն առնիջիք»:*

*Ո՛հ, քանի՜ մեղապարտ եմք այս օրինակին առաջ երբ կը բարձրամտիմք, երբ փառասիրութեան ախտով կ՚ախտանամք. թողումք Յիսուսին չափ խոնարհիլ եւ ընկերին ոտքը լուանալ՝ մեք զմեր ընկեր կ՚ոտնահարեմք եւ կը ջանամք տիրելով ստըրկացուցանել Աւետարանի ազատ պաշտօնեաները:*

*Մտիկ արէք, ո՛վ դուք, սէր քարոզող վարդապետներ, Սէրն, զսէր կ՚աւանդէ, երկնախօս վարժապետ սիրոյ դասեր կ՚ուսուցանէ. եւ քանի՜ խնամով կը կրկնէ. «Այս է պատուէրն իմ զի սիրեսջիք զմիմեանս»:*

*Աւա՜ղ մեզ, ուշամոռաց եղանք. հազար ութ հարիւր տարի է այս դասերն Աւետարանը մեզ կ՚աւանդէ. եւ մեք կը կարդամք ժողովուրդին. տակաւին ոչ մեք սորվեցանք՝ ոչ ժողովուրդ հասկցաւ. սիրոյ դասը թողինք՝ յատելութիւն կրթեցինք զմեզ, սիրոյ կտակը տուինք՝ բանսարկուին նախանձն առինք, սէրը կորուսինք՝ եւ գրգռիչ թշնամութիւնը գտանք: Այլ եւս ի մէնջ ո՛վ կը համարձակի սէր քարոզել ժողովուրդին. երբ սիրոյ ճառախօս վարդապետներս՝ սիրել չը գիտեմք, հետ միմեանց ատելութեամբ կը վարիմք. եւ ի՞նչ մնաց, որ Խաչն ու Աւետարանը մեր գրկէն թողումք, եւ սուր առնելով՝ միմեանց կողը մխեմք:*

Միտ դրէք, Յիսուս խաղաղութիւն կուտայ, որ արդէն երանի տուած էր խաղաղարար ոգիներուն· մեք եւս եկեղեցւոյ բեմէն, պատարագի սեղանէն այդ խաղաղութիւնն յաճախ կուտամք ժողովուրդին՝ աջով եւ խաչով տեառնագրելով հանդերձ։ Այլ ի՞նչ է ապա, որ մեր խաղաղութեան ողջոյն՝ խռովութիւն կը դառնայ։ Դորա պատճառն ո՛վ չգիտեր· զի խաղաղութեան պաշտօնեաներն իրարու դէմ խռոված են· միթէ կարելի՞ է, որ խռովեալ ոգիները՝ խռովելոց խաղաղարար լինին։ Եւ մեք ինչո՞ւ համար կը խռովիմք, այդ եւս ինքնին յայտնի է· կը խռովիմք փառասիրութեան համար, պաշտօնասիրութեան համար· կը խռովիմք Մովսիսի աթոռ նստելու եւ նախաթոռ լինելու համար։ Աւետարանի եւ եկեղեցւոյ խոնարհ ոգին չճանչնալով՝ այնպէս կը կարծեմք, որ մեք եւս այս աշխարհիս թագն ու գաւազան ունիմք· պաշտօն եւ պաշտիլ կը պահանջեմք, չը յիշելով մեր հեզ վարդապետին խօսքը· «Որդի մարդոյ եկն ոչ պաշտօն առնուլ· այլ պաշտել եւ տալ զանձն փոխանակ բազմաց։»

Երանի՛ թէ մեք միայն զմեզ խռովէինք եւ ժողովուրդն անխռով մնար· ո՛չ՝ մեք կը խռովիմք եւ շատ անգամ եւս անարգ միջոցներն ի գործ դնելով կը խռովեցուցանեմք· եւ մերթ եւս քանի՞ ամօթ մեզ, երբ ժողովուրդը՝ խաղաղարար կը լինի մեր մէջ, Աւետարանը մեր ձեռքէն առնելով՝ մեր պաշտօնն ի դերեւ կը հանէ։

Հապա, պաշտօնակից եղբարք իմ, սիրեմք, որ խաղաղ մընամք· առնումք մեք նախ Քրիստոսի սէրն ու խաղաղութիւն, եւ ապա ժողովուրդին տամք։

Սիօնի վերնատունէն իջնամք Գեթսեմանի ձորը· տեսէք Աստուածորդւոյն տագնապին ժամ· տեսէք թէ ի՞նչպէս քիրտն ի յարիւն կ՚աղօթէ· ամենայօժար ոգւով կ՚ընդունի մահուան դառնալի բաժակն, եւ կը խմէ զայն մեղապարտ մարդոյն փրկութեան համար։ Եւ մեք, որ Յիսուսի հետեւող խաչակիրներ եմք՝ արդեօք այս բաժակէն մեզ բաժին չի կա՞յ։ Այո՛ ամէն խաչակիր պաշտօնեայ իւր բաժին ունի· մեք եւս գէթ մի մի կաթիլ խմեմք մեր ժողովուրդին փրկութեան համար։

Ելէք աստի, երթանք հետ Քրիստոսին դատաւորաց ատեանը, տեսէք քանի՜ հեզ է մեր վարդապետ· դատաւորներ կ՚որոտան, կայծակներ կը թափեն· նա անխռով կեցած է· վասն զի անմեղն միշտ անխռով է· ժպիրհ ծառան ապտակ մի կը հանէ ահաւոր եւ լոյս երեսին· ընդ որ Մովսէս ծառան մի-

*այն քարի ծերպէն կը դիտէր։ Հեզութիւն չի ցասնոյր, այլ մեղմով կը պատասխանէ. «Եթէ չար ինչ խօսեցայ՝ վկայէ վասն չարին. իսկ մեք ոչ եթէ ապտակ, այլ միայն մի սուկ բան լսելով անհնարին կը ցասնումք եւ կը գայրանամք. եւ մերթ եւս պատուախնդիր լինելով՝ մեր ոսոխը կը վարեմք յատենէ յատեան, որոյ օրինադիրքն Աւետարան չէ։*

*Ո՛վ խաչակիր զինուորք, առէք իւրաքանչիւր Ձեր խաչերը հետ Քրիստոսին երթանք ի Գողգոթա։ Ո՜հ, մեր խաչերը շատ թեթեւ են և մեք յետս կը կասիմք. Յիսուս գնաց հասաւ Բեթե-լայ սարին գլուխ եւ մեք կէս ճամբուն վերայ մնացինք։ Սիմոն Կիւրենացւոյն պէս միայն պահ մի կրեցինք խաչը մեր ուխտին օրը, եւ դարձեալ գամէն խաչերը դրինք Յիսուսին յուս, եւ մեք յետս դարձանք գնացինք աշխարհին մաճ բռնել. Թողինք միանգամայն հետ խաչին՝ նաեւ կենաց բան եւ Աւետարանը։*

*Առէք ձեր խաչեր, մի՛ փախչիք, առէք, ո՛վ խաչաբարձ ուխտ, եթէ կը պարծիմք որ մեք Քրիստոսի զինուորեալ եկե-ղեցւոյն յառաջամարտ ու նահատակ զինուորներն եմք. առէք բարձրացուցէք խաչին դրօշ՝ երթամք ժողովուրդին յառաջ։ Ես գիտեմ տրտունջ ունիմք եւ յառաջ կը բերէք Պօղոսին բան. «Ո՜ ոք զինուորիցի իւրով թոշակաւ»։ Այլ մեր զօրագլուխ Յի-սուսը զինուորեցաւ. իւր թոշակը՝ միայն Աւետարանն էր եւ Տիբերական ծովուն ձրիատուր ձկներն։ Պօղոս եւս նոյն օրի-նակ զինուորեցաւ. Նա արուեստիւ վրանակար էր, եւ պարծե-նալով կ՚ասէր ես ձեռարուեստովս պաշտեցի իմ առաքելակից ընկերս։ Թէ ամօթ է վրան կարել. ուրեմն թուղթ գրենք, գիրք շինենք, ուսման պարապինք եւ մեր թոշակով զինուո-րիմք։*

*Յիսուս խաչով ելաւ Գողգոթային գլուխ. մեք առանց խա-չի ու վշտի երթամք ինչպէս դասալիք աշակերտներն, երթանք գոնէ միայն աչքով հանդիսատես լինիմք. զի մեր փրկութեան զոհարան է հոն։ Տեսէք որչա՞փ անմռունչ է, ինչպէս որոջն իւր կտրչին առաջ. իւր փրկող բազուկները՝ փայտին վերայ ինքնայօժար կը տարածէ, եւ կ՚ասէ, Բարձրացուցէք զիս, որ զաշխարհ բովանդակ առ իս ձգեմ։*

*Այսպէս ահա ի մարդ կերպարանեալ Սէրն Աստուծոյ՝ իւր անհուն եւ մեծ սիրով զանձն իր հաւատացեալ բարեկամնե-րուն վրայ կը դնէ, եւ կը մեռնի խաչին վերայ եւ ի մեղս մե-ռելոց՝ կեանք կուտայ։*

*Յիսուս իւր խաչով եւ սիրով հեռացեալ մարդիկ առ*

ինքն կը ժողվէ եւ մեք առանց սիրոյ եւ խաչի կը ցրուեմք զայն· եւ մեզ համա՞ր խօսեցաւ նա կանխաւ· թէ «Որ ոչ ժողովէ ընդ իս՝ ցրուէ։» Ո՛վ կարող է առանց խաչի եւ սիրոյ Յիսուսի հետ ժողովել· զի նորա ժողովելու հեծանոցն խաչն էր միայն· ինչպէս ասաց եւ վկայեց իւր Մկրտիչն։

Արդ եթէ այնպէս կը հաւատամք ինչպէս կը բարձրախօսէ Պօղոս, թէ Խաչին ճառը՝ կորուսեալ անհաւատից համար յիմարութիւն է· այլ մեզ համար որ հաւատով փրկուած եմք՝ Աստուծոյ զօրութիւնն է։

Զօրանամք ուրեմն խաչի. ճառի զօրութեամբ եւ զօրացուցանեմք տկարամիտներն· որոց դէմ այժմ ի կռիւ ելած են աշխարհ, մամոնայն եւ նիւթապաշտ փիլիսոփայութիւն։ Մեք Պօղոսին պէս մեր խաչով պարծինք, որով աշխարհ մեզ համար ի խաչ ելած է եւ մեք աշխարհին, եւ երանի՜ թէ տիրապէս այսպէս լինէր եւ կարենայիք պարծել։

Խաչակրաց խմբէն բանիս դէմ առ ձեզ կը դարձնեմ եւ կ'աւարտեմ յորդորս, ո՛վ հաւատացեալ ժողովուրդ, դուք որ խաչին կը հաւատայք եւ աշխարհի խաչակրութեան մէջ կը տառապիք, այնպէս մի կարծէք թէ խաչին պարտիքը՝ միայն կղերական դասուն բեռն է, եւ ժողովուրդն ազատ է։ Ո՛չ, ո՛չ, խաչն՝ Քրիստոնեայ անուն կրողաց ու զինուորաց առ հասարակ անխուսափելի եւ նուիրական պարտքն է։ Դուք եւս ձեր խաչերն ունիք, զոր աշխարհիս բռնութիւնն միշտ կը պատրաստէ ձեզ համար· եւ դուք կարող չէք ձեր թիկանց վերայէն խաչին բեռն իսպառ թօթափել, զի Քրիստոս ասաց· «Յաշխարհի աստ նեղութիւն ունիցիք»։ Թէպէտ աշխարհիս քաղաքակրթութիւն զօրհանապազ կը տքնի եւ կը ճգնի խաչն բառնալ ձեր թիկունքէն, որուն տակ կը հեծէք աղիողորմ։

Սակայն ո՛վ կը հաւատայ, որ վերցուին բռնութիւններ եւ խաչն աշխարհէս բարձուի, ժողովուրդն ազատ ու երջանիկ ապրի· հաւասարութիւն տիրէ, աղքատին խրճիթն՝ հարուստին ապարանից բարձրութեան հետ հաւասարի, փողոցի աղքատ Ղազարոս՝ բեհեզ ու ծիրանի հագնի եւ մեծատան սեղանակից նստի։

Չեմք ժխտեր սակայն եթէ ճշմարիտ քաղաքակրթութիւնն Աւետարանի ընկերսիրութեան եւ սկզբանց վերայ յառաջ կը վարէ իւր մեծամեծ ձեռնարկութիւնները· ժողովուրդին խաչն միայն կը թեթեւնայ, բայց ոչ իսպառ կը բարձուի։

Առէք ուրեմն, ո՛վ ժողովուրդ Հայոց, առէք ձեր խաչեր,

կարդացէք Խաչին ճառը, սիրով ու հաւատով տարէք ձեր ծանրակիր խաչեր, խաչով ելէք Գողգոթային գլուխ, խաչով մըտէք ի գերեզման, խաչով ելէք յերկինս առ Յիսուս որ կը կոչէ առ ինքն իր ամէն կտրիճ խաչակիրներն․ «Եկա՛յք առ իս ամենայն աշխատեալք եւ բեռնաւորք, եւ ես հանգուցից զձեզ:»



# ՍԻՕՆԻ ՎԵՐՆԱՏՈՒՆ

## ԵՒ

## ԶԱՏԿԱԿԱՆ ԳԱՌՆ

---

*ԱՆՑԱՆԷՐ Ծաղկազարդ եւ քո փառաց վերջին օր, ո՛վ Յիսուս, գալով դայր եւ հասանէր քո աշխարհի կենաց վերջի փրկութեան շաբաթ, վերջի երեկոն, վերջի ընթրիք, եւ վերջի զատկական Գառն. զոր ի վաղուց եւ յաւիտենից կը ցանկայիր ուտել քո բարեկամ աշակերտաց հետ, սեղանակից նստելով դրախտի Մարդոյն առ ընթեր, որ ցանկութեամբ ուտել կ'ուզէր կենաց ծառիդ պտուղ եւ անմահանալ:*

*Եւ չգիտեմք ո՛վ Տէր, ո՞ր օրէն էր քո այս անհուն տենչանք. արդեօք յայն օրէ՞ն երբ Մովսէս Իսրայէլի փրկիչ ազատութեան վերջի զատիկ տօնեց յԵգիպտոս. չէ այն օրէն երբ դու անյայտ Աստուած իբրեւ որդի մարդոյ յայտնեցար աշխարհի. Յովհաննէս քո Մկրտիչ զքեզ Գառն Աստուծոյ կոչեց եւ դու Յորդանու մկրտութենէն սկսեցիր զԱւետարանդ քարոզել. «Ես լոյս, յաշխարհ եկի»: Եւ թէ Իսրայէլի տան կորսուած ոչխարները գտնելու եկայ:*

*Ապիրատ Երուսաղէմ զքեզ չծանեաւ, դու Յակոբայ տունը եւ առ իւրսն քո միայն հիւր եկար. նա փութացաւ մի երեկուն եւ եթ քեզ զարդարուած վերնատուն մի պատրաստել, որ չուտով ուտես զզատիկն երթաս ի խաչ: Աբրահամու ապաշնորհ որդիք, արդարոյդ յիշատակ բառնան աշխարհէս, զի դու դժպհի եղեր նոցա:*

*Բազմեցար, ո՛վ Յիսուս, եւ քո շուրջ ակումբ բոլորեցին այն քո վաստակաւոր քաղցած մշակները, որոց հետ երեք տարի ամբողջ Հրէաստանի քարացեալ, խստացեալ երկիրը քայլերովդ ակօս ակօս վարեցիր. դու մաճակալ ու սերմանահան էիր, եւ նոքա քո ժրաջան մշակներ, կենաց բանիդ սերմն լիաբուռն ցանեցիր. դու ճշմարիտ որթ Գողգոթայի գլուխ այգի տնկեցիր, եւ ահա բաժակ մի ի բերոյ որթոյ. եւ հաց մի Աւետեաց երկրէն ի ձեռս առեալ, օրհնես գոհանաս, բեկես եւ ասես, «Առէ՛ք կերէ՛ք, հաւատացէք, այդ հաց երեւոյթով հաց է միայն. այլ խսկապէս եւ ճշմարիտ մարմին իմ է, կեանք է դա,*

*անապատի մանանան չէ. զոր ձեր Թերահաւատ հարք կերան ու մեռան։ Իսկ դուք նոցա հաւատացեալ որդիք աներկմիտ հաւատով կերէք այս կենաց հաց եւ յաւիտեան կ'ապրիք։ Արբէք նաեւ այս բաժակ լի հոգեզուարճ բերկրութեամբ. այդ իսկ իմ արիւն է, զոր հանդերձեալ եմ Թափել խաչին վերայ՝ բեկելով մարմնոյս բաժակը։*

*Երեք տարի մշտախօս քարոզեցիր. «Ես եմ կենդանի հաց իջեալ յերկնից», Յակովբայ յամառ որդիքները չուզեցին հասկնալ քո այս խորհրդական խօսքը եւ մերԹ եւս վարանամիտ եղած սրտմտելով կը քրԹմնջէին «Թէ զիա՞րդ կարէ սա տալ մեզ զմարմին իւր յուտել»։ Եւ այսօր ահա բացերեւ կը յայտնես Հաղորդութեան ծածկեալ խորհուրդը սոսկ հաց եւ գինին օրհնելով կը սրբագործես եւ ձեռքովդ բաշխելով կ'ասես. «Ահաւասիկ, այս է մարմին իմ եւ արիւն։»*

*Կը հաւատամք, Տէր, կեանքդ մեր կեանքին հետը, հացին օրինակով կը հաղորդես. անմահդ մահկանացուին հետը՝ խորհրդաբար կը խառնիս, որպէս զի մարդոյն կեանքը քո կեանքով անմահանայ։ Վասն այն իսկ միշտ խօսելով կը կրկնէիր դու «Ամէն ամէն ասեմ ձեզ եԹէ ոչ կերիջիք զմարմին որդւոյ մարդոյ եւ արբջիք զարիւն նորա, ոչ ունիք կեանս յանձինս»։ Այո՛, Տէր, քո մարմինդ ճշմարիտ կերակուր է. եւ արիւնդ ճշմարիտ ըմպելի է։ Երանի՜, որ հաւատով ճաշակէն։*

*ԸնԹրեաց սեղանոյդ նուագերգուք եւ հոգեխօս երգահանք ԴաւիԹ եւ Սողոմոն են, որոց դերեզմանին մօտ կազմեցիր քո Զատկական պասեքն։ ԴաւիԹ գիտես Թէ հոտ առնելով իւր հազարամեայ հողի քնարանէն ձայն կուտար Սիոնի քաղցեալ որդիներուն. «Ճաշակեցէք եւ տեսէք, զի քաղցր է տէր. երանեալ է այր, որ յուսայ ի նա»։ Իսկ Սողոմոն իբրեւ քո հրաւիրակ բարձր քարոզութեամբ առ հասարակ կը հրաւիրէ բոլոր աշխարհիս անզգամները. որ հաւատան Աւետարանիդ եւ գան նստին քո սեղան. ուստի ասէ. «Եկայք կերայք ի հացէ իմմէ. եւ արբէք զգինի իմ զոր խառնեցի ձեզ. Թողէք զանզգամութիւն եւ կեցջիք, խնդրեցէք զիմաստուԹիւն, զի ապրեսջիք»։*

*Աւարտէ՛, Յիսուս, աւարտէ՛, քո սուրբ ընԹրիս՝ աշխարհիս խնճոյից եւ գինարբուաց սեղան չէ. չուտ կայէ սփածանելին, ջուր արկ ի կոնք, նստիր ի ծունկ, չորս հազար տարուան պարտք ունիս վճարէ այժմիկ, խոնարհիր քո չինական աշակերտաց փոշոտեալ բրտացեալ ոտքերը լուա. դուքա Աբրա–*

համու հարազատ զաւակներն են. որոց հայրը՝ քո այցելու ոտքերը վաղ լուաց. մինչ դու երկու հրեշտակներով Մամբրէի կաղնւոյն եւ նահապետի վրանին մօտ հիւրաբար նստար:

Տէր, ի՞նչ է քո այս անօրինակ եւ անչափ խորնարհութեանդ ցոյց: Ես չեմ արժանի քո Ընթրեաց սեղանոյն հուպ մատչիլ. այլ իբրեւ ամօթապարտ ծառայ վերնատան դրան յետուստ կացեալ կը հայիմ սարսափելով եւ կ՚ապշիմ քո անհաս հեզութեան վերայ. ոչ կը զգուիս, ոչ կը վիսաս, խոպան մարդոյն տաժանացեալ դարշապարը ձեռքդ առնելով կը շօշափես, կը լուանաս, եւ ղենջակաւ սրբելով կը բուժես Ադամորդւոյն այն վիրալից ոտքը, որ քո անխծած այս երկրի փուշերը կոխելով ծակոտուած էր. եւ աշխարհիս խաւարին իշխանութիւնն զայն շղթայակապ առնելով կը վարէր եւ կը տանէր ու կը բերէր առ կուռս անմռունչս:

Ո՛վ հզօր ազատարար ձեռք, դու զայն հին շղթայն փշրելով յաւիտենից կապեալ որդիներս արձակեցիր թողիր, որ այնուհետեւ կոխեն համարձակ զօձ եւ կարիճ. ամբարհաւաճ իշխանութեան հպարտացեալ գլուխ:

Այսպէս կ՚աւարտես անկշիռ խոնարհութեանդ խորհուրդ. կը յառնես եւ դարձեալ կը բազմիս տիրաբար. եւ կը հարցնես անգիտակ եւ ապշեալ աշակերտներուդ. «Գիտէ՛ք զի՞նչ արարի ձեզ»:

Մենք գիտենք, ո՛վ Տէր, այս աշխարհիս բռնակալութեան կարգ եւ օրէնքն է, որ ստրկացեալ ծառաները իրենց տիրոջ ոտքը լուանան, ոչ երբէք տեսանք ու լսեցինք ի յաւիտենից թէ՝ տէր եւ գլուխ յանձն կ՚առնու այսչափ խոնարհիլ, թող որ Աստուածորդի ես—

Ուսարո՛ւք, ո՛վ իմ աշակերտք, ուսարուք, յիշեցէ՛ք, ինչ որ կանխաւ խօսեցայ. զի ես հեզ եմ եւ խոնարհ սրտիւ: Ես օրինակ մի ետու ձեզ. եթէ ես ձեր վարդապետ, ուսուցիչ եւ տէրն եմ, այսպէս խոնարհելով պաշտեցի զձեզ, քանի՞ առաւել ձեզ պէտք է նոյն օրինակ վարուիլ: Ամէն ամէն ասեմ ձեզ, ոչ ծառան՝ իւր տեառնէն՝ ոչ առաքեալը՝ իւր առաքողէն մեծ է: Երանելի՜ էք եթէ գիտնաք, եթէ պահէք, եթէ իսկապէս գործով եւ զանձն օրինակ տալով կատարէք զայս իմ խոնարհութեան խորհուրդը. որ թերեւս աշխարհիս ամբարտաւանութեան առաջ ծաղր եւ կատակ համարուի:

Այո՛, Տէր, աշխարհ, աշխարհակալք, որք իրենց զօրութեան եւ պերճութեան վերայ հպարտացած են. նոքա կը զար—

մանան եւ կը թերահաւատին քո անչափ եւ անպայման խոնարհութեան վերայ· երբ դու նուաստ իշով մի նոցա փառասիրութեան, տիրապետութեան գահեր եւ կառքեր կը խորտակես եւ երկնից բարձրութենէն մինչեւ մարդոյն ոտքը իջնելով՝ քեզ հաւատացող հեզ ու խոնարհ աղքատները մինչեւ երկինք կը հանես, եւ այն գոռոզացեալ հպարտ հոգիները մինչեւ յանդունդս կը գլորես· զի քո վճիռն է· «Որ բարձրացուցանէ զանձըն՝ խոնարհեսցի»։

Տէր, խոնարհութեանդ դաս՝ այս աշխարհիս մարդիկ դըժուարաւ կը հասկանան· ապուշ մարդիկ՝ որ կը ծնին եւ կը մեռնին, դեռ չգիտեն թէ գերեզմանի հող են, դեռ կ'ամբարտաւանին եւ ընկեր զընկերը կը կոխոտէ· մարդիկ որ քո մեծագործ ձեռքին մէջ հողակերտ անօթ մի են, մարդիկ՝ քո ոտքին տակ սողացող որդ մի են, մարդիկ՝ քո տիրական շունչին առաջ փոշի մի են, զոր թէ ձեռքդ ձգես՝ կը փշրի· թէ կոխես ընդ հող կը ճմլի, եւ թէ փչես՝ հողմատար կը կորնչի։ Ուստի քո ծառան Դաւիթ, մարդոյն ոչնչութեան վերայ ձայնարկելով կը խօսէր· «Տէր ո՞վ է մարդ, զի յիշես դու զնա» եւ թէ՝ «Ես ասացի ի զարմանալ իմում թէ ամենայն մարդ սուտ է։»

Ընթրիք լրացաւ, քաղցեալ աշակերտներդ կենաց հացով, Զատկական խորոված գառով կշտապինդ կերակրեցիր, անապակ գինովդ արբուցիր· սկսիր արդ՝ սէր իմ Յիսուս, վերջին սիրոյ ճառդ եւ կտակդ։ Զի՞նչ է այն, զոր ստէպ ստէպ կը կրնես· «Այս է պատուէրն իմ, զի սիրեսջիք զմիմեանս· եւ թէ՝ Այսու ծանիցեն զձեզ մարդիկ թէ իմ աշակերտք էք, եթէ սիրիցէք զմիմեանս»։

Անսահման եւ անծիր, դու սիրոյ Ովկիանոսն ես, Տէր, ո՛վ կարող է լայնութիւնդ, բարձրութիւնդ եւ խորութիւնդ չափել· Սիօնի վերնատան յարկէն գետօրէն բացիր սիրոյ ակդ, զաշխարհ բովանդակ սիրոյ հեղեղովդ ողողեցիր· որ իբրեւ ջուր յորդահոս կը վազէր Աստուծոյ քաղաքին հրապարակը եւ կամոլութեամբ չորցած անջրդի անապատները կ'ոռոգէր, որոց կանխաւ աւետիս կուտար Եսայի· «Ուրախ լեր, անապատ ծարաւի»։

Զիմանամք, Տէր, զի՞նչ է այս, որ հին եւ յաւիտենական սէրդ իբրեւ նոր պատուիրան եւ օրէնք կ'աւանդես· միթէ Մովսէս քո հաւատարիմ ծառան՝ Սինայի անապատին մէջ յետ Աստուծոյ բարձր սիրոյն՝ ընկերին սէր չաւանդե՞ց· արդեօք հին սիրոյդ աստուածատուր աւանդը ինքնին հնացա՞ւ, թէ մար-

*դիկ զայն հնացուցին եւ դու եկար հնացեալ սէր վերանորոգել եւ իբրեւ նոր պատուիրան աւանդել քո հաւատացեալ որդւոց։*

*Տեսաք, Տէր, նոր սիրոյդ հրաշալի հուր․ զոր բերիր ձգեցիր երկիրը․ զաշխարհ համայն բոցավառեց եւ զքեզ իսկ ողջակիզեց խաչի սեղանոյն վերայ։ Ո՞վ է Մովսէս, որ քո սիրոյն հաւասարի։ Մովսէս միայն սիրոյ պատգամ կուտար Իսրայէլի ժողովուրդին․ այլ ինքն սիրոյ զոհ չեղաւ․ նա կենդանիներ միայն զոհեց զԱստուած ողոքելու համար․ իսկ դու ինքնանուէր մատեար ի զոհ եւ յայնժամ երկինք եւ երկիր զիրեար համբուրեցին։*

*Ո՞ կարէ չափել քո անհուն անհամեմատ սէր, ո՛վ Տէր, զոր դու քառակուսի փայտով մի չափելով՝ բարձրութիւնն մինչեւ երկինք հասաւ, խորութիւնն մինչեւ յանդունդս․ իսկ լայնութիւն եւ երկայնութիւն ընդ ծագս չորս կոյս աշխարհի։ Եւ յայս բան բովանդակեցեր սիրոյդ մեծութիւն եւ չափ․«Մեծ քան զայս սէր ոչ գոյ, եթէ ոք զանձն դիցէ ի վերայ բարեկամին»։*

*Այլ ո՞վ էին քո բարեկամք այս աշխարհիս վերայ․ մարդիկ՝ որ զքեզ տարապարտուց կ՚ատէին․ Յակովբայ որդիք, որ կերան քո հաց ու յափրացան եւ զսիրելիդ անկուշեցին․ Աբրահամու խորթ զաւակներ, որ թերահաւատեցան ի քէն․ այն ապիրատ եւ դառնացող ա՞զգ, որ վերջապէս զքեզ հալածելով՝ տարաւ հասոյց մինչեւ Գողգոթային գլուխ, կեանքդ զփայտէն կախեց եւ նշաւակ կացոյց աշխարհին առաջ։*

*Հապա ո՞վ էին քո ճշմարիտ բարեկամ, ասա՛ ո՛վ Տէր․ մըտերիմ աշակերտնե՞րդ, որոց հետ ընթրիս նստած ախորժանօք կ՚ուտես Զատկական զառն․ ի դոցանէ մին սատանայ է, զոր կը տեսնաս ու չես սրտմտիր որ քո հաց կ՚ուտէ, քո գանձապետն է․ որ ահաւասիկ այդ կորստեան որդին ելաւ գնաց զքեզ մատնել ու դրժել սիրոյ վարդապետիդ դէմը, եւ դու գիտես, կը տեսնաս ու չես սրտմտիր։*

*Բարէ՛ անոխակալ եւ անյիշաչար սիրոյդ, սէրդ այս աշխարհիս կեղծաւոր մարդկանց սէր է, որ միայն սիրելիներ կը սիրեն, միայն բարեկամաց ողջոյն կուտան եւ միայն ազգակիցները կը պաշտպանեն։ Եւ ի՞նչ է մահկանացուին խաբուսիկ սէր, որ վասն իւր շահուն կը սիրէ ու շատ անգամ եւս յատելութիւն կը փոխի եւ վերջապէս կ՚սպառի ու կը ծածկուի մարդոյն սէր իւր հետը գերեզմանի հողին տակ։*

*Սիրոյ ճառիդ հետը կցելով՝ խաղաղութեան կտակ կ՚ա-*

ւանդես, Յիսուս, «Զխաղաղութիւն զիմ տամ ձեզ զխաղաղութիւն իմ թողում ձեզ. ոչ որպէս աշխարհ տայ՝ տամ ես»: Զի՞նչ է այս վերջին խաղաղութեան նշանակը. եւ միթէ քո նախասացեալ բանին հակառա՞կ կը վարդապետես. «Ոչ եկի խաղաղութիւն տալ երկրի, այլ բաժին»: Աստի թերեւս կարծեն թիւրատես մարդիկ թէ դու սուր եւ կռիւ բերիր այս աշխարհ, որպէս զի մարդկային ընկերութեան յօդակապը կտրելով՝ զիրենք իրարմէ բաժնես:

Քա՛ւ քեզ, ո՛վ Տէր, որ չկամեցար իսկ մի ընտանեաց համար բաժանարար լինել, այն որ ստիպաւ կ՚աղաչէր զքեզ երթալ բաժնել հայրենի ժառանգութիւնը: Աւետարանիդ ողջմըտութիւնը ես կը հասկնամ. զի դու եկար միայն հաւատացեալ որդիները բաժնել այս աշխարհէն. սորա համար աշխարհ թշնամացաւ քեզ եւ կռիւ բացաւ քո որդւոց դէմ, եւ քո քաջազօտի զինուորներդ Զօրագլխիդ քաջալերութեամբ յաղթահարեցին. աշխարհ նկուն դարձաւ եւ ցասեաւ քո դէմ. կարծեց թէ դու ես այս աշխարհամարտ կռուին գրգռիչ:

Գիտեմ, ով դու երկնից Հօր եւ Նոր ուխտին խաղաղարար Հրեշտակ. այս վերջին խաղաղութիւնը՝ դու միայն քո հաւատացելոց կ՚աւանդես. որ եկեղեցւոյդ արի որդիքը թողուն հին ոխութիւնը, ջախջախեն թշնամի օձին գլուխը, խաղաղութեամբ միանան, ընկերսիրութեամբ թագաւորեն եւ հեզ քաղաքավարութեամբ ժառանգեն երկիրը:

Ո՛վ երկնատուր չնաշխարհիկ անգէն խաղաղութիւնը, զոր միայն Յիսուս բերաւ այս աշխարհ եւ մարդոցմէ ոչ ոք կարողացաւ տալ: Ոչ Մովսէս, որ պատժով եւ պատուհասով կ՚ածէր միայն խաղաղութիւն խստասիրտ ժողովուրդին. ոչ Սողոմոն, որ թէպէտ Յիսուսի խաղաղութեան նախատիպար եւ նշանակ էր, այլ իւր սակաւօրեայ խաղաղութիւնն, մինչեւ ի գերեզման տեւեց եւ վերջացաւ իւր կեանքին հետ:

Եւ դուք, ո՛վ աշխարհիս աշխարհակալ տիրապետներ, դուք զԱւետարանին խաղաղութիւն ի բաց դնելով՝ դեռ սոսկալի թնդանօթները կը ձուլէք. նոր նոր հրացէնները կը ճարտարապետէք, պատերազմով, արիւնով եւ մահուամբ միայն խաղաղութիւն պահել կ՚ուզէք, եւ դուք մինչեւ ցարդ անխորհուրդ մնացիք, տակաւին չիմացայք փորձով թէ պատերազմ՝ զպատերազմ կը յարուցանէ եւ սուր՝ զսուր. վասն զի խօսեցաւ Յիսուս. թէ «Որ սուր առնուցու՝ սրով անկանի»:

Իսկ դու, ո՛վ երկնից եւ երկրի Աստուծոյ եւ մարդկան մէջ

*ճշմարիտ խաղաղութեան միջնորդ Հրեշտակ. դու միայն կը քարոզես որ մարդիկ սուրն ի պատեան դնեն. քո սէր եւ խաղաղութիւն ընդունին. մարդիկ ողջունելով զիրար համբուրեն. քանզի եղբայր են, համարւին ազգակից են, պարտք եւ իրաւունք հաւասարապէս ունին. Թող այս՝ քո հաւատացեալ որդիքն են եւ դու այնպէս կը կամիս, որ քո հարազատ որդիները եւ եկեղեցւոյդ ընտանիք սիրով եւ խաղաղութեամբ ապրին:*

*Սիրոյ եւ խաղաղութեան պատուէրդ աւարտելով՝ Նորանշան առակ եւ օրինակ մի յառաջ կը բերես «Ես եմ որթն ճըշմարիտ, եւ Հայր իմ մշակ է». զի՞նչ է այս, ո՛վ Տէր, քանի՞ պէս պէս եւ սքանչելի անուն ունիս երկրիս վերայ, մերթ սերմանահան կը կոչիս, մերթ այգեպան, մերթ լոյս աշխարհի, մերթ դուռն Աստուծոյ, մերթ հովիւ, մերթ ճանապարհ եւ ճշմարտութիւն. եւ շատ ստէպ եւս որդի մարդոյ. իսկ այժմիկ ճշմարիտ որթ կ'անուանես զքեզ, եւ քո հայր՝ մշակ. որ զքեզ Գողգոթայի բլրին վերայ տնկեց, խաչն՝ քեզ խեչակ արաց, եւ անդ չինեց պատրաստեց քո մահուն հնձան, եւ ինքն որթդ հրնձանահար եղար, սրունքներդ բացիր, գլխաղողդ ճմլեցիր, բոսորային գեղով կարմրացար: Մարդ չգիտեր թէ դու եւ քո հայր ի՛նչ կը գործէք. ձեր գործը՝ անքննին խորախորհուրդ է:*

*Որթի ուռ կը կոչես աշակերտներդ եւ կարի բնական օրինակով դաս կ'աւանդես Գալիլեացի մանուկներուն, զորս քո ընտրող ձեռք Իսրայէլի անբեր այգիէն հանելով՝ պատուաստեր էր ամենաբեր որթատունկիդ վերայ:*

*Ո՛վ, քանի՞ խանդաղատելի է քո սիրախօս այս բան, «Կացէ՛ք յիս եւ ես ի ձեզ» ասես թէ ուռն ինքնին կարող չէ պտուղ բերել եթէ հաստատուած չլինի որթի արմատին վերայ:*

*Հաւատամ, Տէր, զի դու ես ես զօրութիւն եւ արմատ անմահութեան, առանց քո մշակութեան Լիբանանու մայրեր չեն բարձրանար, եւ ոչ եւս Մամբրէի կաղնին հազարաւոր տարի կ'ապրի, առանց քեզ ոչ գարուն կայ, ոչ ծաղիկ, ոչ պտղաբերութիւն: Այսպէս եւս Տիբերական ծովու, անճարակ ձկնորսները զի՞նչ կարէին առնել առանց քեզ, որ տրտունջ բառնալով կ'ըսէին. «Տէր, զամենայն գիշեր աշխատեցաք եւ ոչ ինչ կալաք». եւ դու հրամայեցեր զուռկանն յաջակողմն եւս արկանել: Քո հրաման միայն Պետրոս չլսեց, ծովու ձկներն եւս արագ լսեցին. կայտռելով լեցուեցան Պետրոսին ուռկան եւ այնչափ մինչեւ պարպատէր:*

Տէր, դու երբ աշխարհի մէջ իբրեւ մարդ կը շրջէիր, մարդիկ զքեզ Տէր եւ Վարդապետ կը կոչէին, եւ դուցէ կը կարծէին թէ աշակերտներդ քո ստրուկ մշակ եւ ծառաներ են, եւ ոչ ազատ որդիքները։ Ուստի վերջին երեկուն, կը յայտնես քո տիրական ազատ իրաւունք եւ մտերիմ սէր, «Ոչ եւս կոչեմ զձեզ ծառայ... այլ բարեկամ»։ Յաւել, Տէր, Առաքեալ, հազարապետ, խորհրդական, տնտես, հովիւ տեսուչ եւ դատաւոր եւս։ Դու որ եկար մարդկային ստրկութիւն բառնալ, հաւասար եղբայրութիւն հաստատել, եւ միթէ հնա՞ր էր, որ քեզ հաւատացող երկնից արքայութեան որդիքները՝ ծառայ կոչէիր, որոց տուիր քո Աւետարանն, որ քարոզեն նոքա, «Դուք ամենեքին եղբայր էք»։

Փրկիչ իմ Յիսուս, Քեզ բարեկամ չիկար այս աշխարհիս վերայ Աբրահամու զաւակներէն, որ ծովու աւազի նման բազմաթիւ էին, միայն եօթսուն երկու պարզամիտ հոգիները հազիւ հազ գտար, եւ ընտրեցիր, որոշեցիր աշխարհէն, եւ աշխարհն ինչպէս զքեզ, զանոնք եւս ատեց, եւ սորա պատճառն ի՞նչ էր։

Ասես թէ նոքա այս աշխարհէն չէին ինչպէս դու չէիր, վասն այն իսկ աշխարհ զիս եւ զնոսա ի միասին ատեց։ Գիտեմք, ո՛վ Տէր, դու այս աշխարհէն չէիր, միայն Հօր կամք եւ մարդոյն սէր վարեց զքեզ յայս աշխարհ եւ մեք յանկարծ լսեցինք թէ Բեթլէհէմի մէջ մանուկ ծներ ես, թողել ես երկինքը՝ յերկիր իջեր ես. սակայն ո՛վ են այդ չինական անտոհմիկ մարդոց երկրածին որդիները, որոց համար կ՚ասես թէ աշխարհէն չեն։

Այո՛, Տէր, քո այս խօսք բարձրախորհուրդ է, նոքա՝ որ քեզ հաւատացին, նոքա՝ որ քո յայտնութիւնը սիրեցին, նոքա՝ որ Աւետարանիդ բանը պահեցին, նոքա՝ որ ծանրալուծ խաչդ յօժարաբար կրեցին, վերջապէս զքեզ պաշտելով եւ խոստովանելով քո անուանդ համար մեռան, եւ քեզ նման զոհուեցան դընելով իրենց անձը եկեղեցւոյ որդւոց ազատութեան վերայ։ Սոքա՞ են արդեօք նոր Սէթիդ օրհնեալ զաւակները, որ աշխարհիս Կայենազարմ մարդկանց որդիքներէն չեն։

Քանի՞ սրտառուչ եւ տրտմագին է քո յետին ողջոյն, որով հրաժեշտ կուտաս այս աշխարհէն եւ ընտրեալ ձեռնասուն խըմբէդ. «Որդեակք իմ, փոքր ինչ ժամանակ ընդ ձեզ եմ... եւ թէ երթամ առ Առաքիչն իմ եւ ոչ ոք ի ձէնջ հարցանէ թէ յո՞ երթաս»։ Երթամ առ Հայր, ինչպէս ի Հօրէն ելի եւ եկի յաշ-

*խարհ․ երթամ, այլ զձեզ չթողում որբ․ երթամ ձեզ տեղ պատրաստել եւ դարձեալ պիտի գամ առնում զձեզ․ զի ուր ձեր Վարդապետ եւ Տէրն է, արժանի է որ իմ հաւատարիմ պաշտօնեաներդ Ինձ հետ լինիք: Քաջալերուեցէք, որդեակք իմ, մի վհատիք, ես զձեզ որբ չեմ թողուր:*

*Ընթրեաց սեղանէն, սիրական աշակերտներէդ զաչերդ եւ բանիցդ դէմը յանկարծ դէպ ի երկինք կը դարձնես եւ կը գոչես ուժգին ձայնով․ «Հա՛յր, հասեալ է ժամ՝ փառաւորեա զորդի քո զի եւ որդի քո փառաւորեսցէ զքեզ:» Ասացէք ո՛վ Տէր, չգիտեմք ու չեմք հասկնար ի՞նչ է քո փառաւորութիւն եւ ի՞նչ է Հօրդ փառաւորութիւն․ արդեօք երկուքն եւս մի եւ նոյն չեն, չարչարանաց բաժակ, գինուորաց կապանք, անարժանից ատեան, թուք, ապտակ, ծաղր ու ծանակ, անպարտ խաչակրութիւն․ Գողգոթայի աշխարհակոծ տեսարան, ուր կեանքդ խաչէն պիտի կախուի, ապիրատ որդիները քեզ յանդիման կենալով վա՛չ վա՛չ պիտի կարդան: Քո անօրինակ փառքն ա՞յս էր․ եւ քո Հայր այսպէ՞ս փառաւորեց զքեզ:*

*Տէր, ի՞նչ է այս քո օտար եւ նորանշան գործ․ մարդիկ խաչէն խոյս կուտան, դու դէպ ի յայն կ՚երթաս, մարդիկ խաչին մահն անարգութիւն կը համարին եւ դու, փառաց Տէր, խաչը քեզ փա՞ռք կը համարիս․ մարդիկ մահուան հոտէն եւ փուշէն կը սարսափին եւ կը քստմնին, իսկ դու զայն կը քաղես եւ կը հոտոտաս իբրեւ անուշահոտ վարդ:*

*Օ՛ն ուրեմն, Յիսուս, դու խաչին խանդակաթ ես, գիտեմ, անհուն սիրովդ արբեալ մարդոյն փրկութեան համար դէպ ի մահ կ՚երթաս․ կ՚երթաս Սաբեկայ ծառէն կախուիլ, որպէս զի քո Հայր իւր վրէժխնդրութեան սուրն ի բաց դնէ․ զոր վերացուցեր էր զաշխարհ հարկանել․ այդ սուրը ահաւասիկ Գեթսեմանի ձորին վերայ կը շողայ: Փութա, ով Տէր, թո՛ղ Սիոնի վերնատունը՝ երթանք ձիթաստանեայց պարտէզ․ հասիր շոյտ տուր քո անձն այդ սրոյն դէմը, ուր ոչ միայն Դաւթի ժողովուրդ, այլ եւ զաշխարհ բովանդակ պիտի կոտորէ երկնից պատուհասիչ հրեշտակ:*



## ՅԻՍՈՒՍ Ի ԳԵԹՍԵՄԱՆԻ ՁՈՐ

*Ծո՛ւնր դիր, ո՛վ Տէր, ծո՛ւնր դիր, երեսդ ի հող մած․ թող աչքէդ կայլակող կենդանատու կաթիլները հողին ու թափին*

*այս մեռեալ եւ անիծեալ երկրին վերայ։ Հին մարդն ի հողէն էր՝ իբրեւ անօթ փշրեցաւ․ դու զայն վերստեղծէ՛ Տէր։ Քո Հայր դրախտի գետէն եւ ջրէն կաւ շինեց ու ստեղծեց մեր նախահայր․ իսկ դու աչքիդ ցօղով գետին կը թրջես եւ նոր կաւ կազմելով անդրէն նորահրաշ կը շինես հին բեկեալ ու մանրեալ անօթն։*

*Շինէ՛, ո՛վ նորոգիչ ձեռք, շինէ՛ եւ խնամով նոր ճարտարապետութեամբ շինէ, այնպէս որ կրկին չփշրէ եւ չաղարտէ զայն սեւ օձին պատրանք։ Գլուխ խոնարհ շինէ, որ այլ եւս չամբարտաւանի՝ Աստուած լինել։ Պարանոցը կոր շինէ, որ Ատերանիդ նոր պատուիրանին քաղցր լուծը սիրով տանի։ Աչքերը երկիւղածութեանդ վարագուրով պատէ եւ փակէ մարդոյն ցանկութեան դուռը։ Ամփոփէ ժպիրհ մարդոյն լայն ու բաց բերանը, որ այլ եւս չհամարձակի երկնից դէմ բան խօսիլ։ Սիրտն եւ հոգին թիւրեալ է, ուղղէ դէպ առ քեզ, որպէս զի ճանչնայ, հաւատայ, եւ սիրէ բարերար Փրկիչդ։ Իսկ ձեռքերը որչափ հնար է կարճ շինէ, Տէր իմ, որ չհասնի արգիլեալ ծառին ճիւղը եւ չքաղէ մահացու պտուղը։ Ոտքերը զօրաւոր պողպատէ շինէ, որ ջախջախէ իւր թշնամւոյն գլուխ եւ կոխէ անցնի երկրիս տատասկ փուշերուն վերայ։*

*Ո՛վ դու մարդոյն հնացեալ բնութեան կենարար եւ կարկատիչ ձեռք․ քո արտասուք եւ ճակատէդ հոսեալ քրտունք բաւական չեն մեռեալ մարդոյն նոր կեանք տալ․ այլ պէտք է անպարտ զոհի մի արիւն․ Քո Հօր անդարձ վճիռն է, այդ զոհին արիւնալի դառնագոյն բաժակ ըմպել, զոր ահա խաչիդ զուժաբեր հրեշտակը քեզ կը մատուցանէ։ Առ որ հոգիդ յօժար է․ միայն մարմինդ զգածեալ խոյս կուտայ մահէն․ բայց ի՞նչ է մարմին, որ կարենայ անհուն սէրդ եւ հոգիդ նուաճել։*

*Դու Աստուած եւ Աստուածորդի, որպէս ապիկար մարդ կը վշտակրիս, յանձուկ տագնապիդ մէջ զօրավիգ կը խնդրես, մտադիւր կ՚աղօթես եւ կը պաղատիս առ հայրդ, որ թէ հնար է անցնի քեզմէ այդ մահուան բաժակ։ Բայց եւ դարձեալ իբրեւ կամակատար հնազանդ որդի կ՚ընկրկես քո կամքը եւ Հօրդ կամաց կը թողուս, որ վայրիկ մի գիտես թէ կը մոռանայ եւ կը թողու իւր սիրելի միակ Որդեակն իւր թշնամեաց ձեռք։ Վասն այսորիկ դու բարձրագոչ կ՚աղաղակես Դաւիթին ձայնով «Նայեա՛ առ իս եւ ողորմեա ինձ, զի միամօր եւ աղքատ եմ ես։ Նեղութիւնք սրտի իմոյ բազում եղեն յոյժ, ի վշտաց իմոց հան զիս, (Հայր)։»*

Ահա քեզ զօրավիգ հրեշտակ մի կ՚առաքեմ, հզօր Որդեակ իմ, զօրացի՛ր յոտին կաց, կազդուրէ զքեզ, ա՛ռ ըմպէ մահուդ բաժակ, գնա՛ յօժար ի խաչ, լիովին կատարէ մարդեղութեանդ խորհուրդը· Բեթլէհէմի մսրէն մինչեւ ի գերեզմանն է քո խաչին վախճանը, եւ հոն ամէն վիշտերդ կ՚աւարտին։ Մարդիկ թող այնպէս կարծեն թէ դու եւս ի կարգս մեռելոց կը համարիս։ Քաւ թէ զքեզ ի դժոխս թողում· քաւ թէ սուրբդ իմ ապականութիւն տեսնայ· եւ դու ինքն չգիտե՞ս եւ չասացի՞ր թէ՝ քակեցէք մարմնոյս տաճարը եւ ես երեք օրէն յետոյ կը շինեմ։

«Ես ուխտ ունիմ ընդ քեզ, Որդեակ իմ· ի յաւիտենից մահուանդ վճռագիրը ձեռագրած եմ· բոլոր մարգարէք իրենց գուշակութեամբ վկայ կը կոչեմ այս դաշնագրին· քո մահն՝ անեղծ վճիռ է։ Ե՛լ մարտադիր մանուկդ իմ, ել գնա բարձրացիր ի խաչ· թող ընկճի խաչիդ ոտքին տակ աշխարհի իշխան։ Խաչէն ի գերեզման իջիր, յաղթահարէ մահ եւ խորտակէ դժոխքին խայթոցը։ Վա՛շ, այն օր ես կը ցնծամ եւ երկնից մէջ կը տօնեմ յաղթանակիդ հանդէս· զքեզ ի մեռելոց կը հանեմ, ազատ Որդեակ իմ, եւ դու նորահրաշ յարութեամբ կը փառաւորիս յոյժ։»

Մօտեցաւ քո մատնութեան ժամն Յիսուս, խաւարին իշխանութեան զինուորները զքեզ ըմբռնել կուգան· եւ ո՛վ է նոցա առաջնորդ, քո գանձապետ Յուդան· որ ահա կը մերձի համբուրել զքեզ մատնտու կեղծաւորն· եւ դու անհատ հեզութեամբ, ոչ ցասնուս, ոչ կը սրտմտիս· միայն հոգւոյ հեծութեամբ կը պատասխանես· «Յուդա՛, համբուրելո՞վ մատնես զորդի մարդոյ։»

Թո՛յլ տուր, ո՛վ դու անըմբռնելի լոյս, թոյլ տուր որ կապեն զքեզ· դու կամաւ եկիր յայս ժամ· միթէ եւ այժմ ընդ մէջ անցեալ գնա՞ս ինչպէս Գալիլեայի յարտեւան լերին։ Ահաւոր անուանէդ զգետնի հարան զինուորները, ձեռն տուր ի վեր հան, կազդուրէ թող կապեն զքեզ։ Կայիափա եւ Պիղատոս ատեան կազմեր են եւ կ՚սպասեն Արդարոյդ դատաստանը համառօտել ի մահ։

Ո՞ւր ես, անձնադիր Պետրէ, քնաթաթախ ծանրացեալ աչքով կ՚աճապարես Վարդապետին պաշտպան հանդիսանալ եւ դու հին արուեստիդ ձկնորսական գուլ դանակովդ Մաղքոսին ականջը կը հատանես։ Ի բա՛ց կաց, ի բաց, սուրդ ի պատեան դիր· երբ դու այնչափ Վարդապետիդ սիրով վառեալ ես, գընա՝ հետ մինչեւ ի խաչ եւ գերեզման։ Փրկչին ազատաքայլ ոտից խոչնդոտն մի՛ լինիր· ինչպէս Թափօրական լեռան տակ,

ուր ստանային թելադիր ոգւով խաչին խորհուրդ խափանել կ՚ուզէիր։

Սիրական հովիւն իւր սիրելի Հօրէն զարնուեցաւ, ոչխարները ցրուեցան· որք պահ մի յառաջ Սիօնի վերնատան մէջ Հովուին շուրջ բոլորած խնճոյք կը կազմէին· բա՛րէ, խաչակիր զինուորները դասալիք եղան Գեթսեմանի ճակատամարտին մէջ, զօրագլուխ միայնակ թողին։ Ո՞ւր ես արդեօք, Յիսուս վարդապետին սիրահար հոգի Յովհաննէս, որ գլանջօք նորա փարելով կը հարցանէիր մտերմօրէն· «Տէ՛ր, ո՞վ է, որ մատնելոց է զքեզ·» տեսա՞ր աւասիկ թէ ով մատնեց զինքն, եւ դու այժմ յուշիկ յուշիկ վարդապետիդ ետեւէն վարանելով կ՚երթաս մինչեւ ի գաւիթ Քահանայապետին եւ մինչեւ Գողգոթային գլուխ· բայց առանց խաչի։

Իսկ դու եւս անգիտաբար կը հարցանէիր, «Տէ՛ր, ոչ գիտեմք յո՛ երթաս, եւ զիա՞րդ զճանապարհն կարասցուք գիտել։» Մի՛ ապշիր Թովմաս, տես աւասիկ Յիսուս կապուած կ՚երթայ խաչին ճանապարհ, կ՚երթայ ձեռքեր ոտքեր եւ մի կող ծակել տալ· որպէս զի դու յետ յարութեան շօշափես նորա վէրքեր եւ չթերահաւատիս։ Յիշէ՛ Թովմաս, զի՞նչ խրախոյս կուտայիր յայնժամ ընկերներուդ, մինչ Յիսուս անդրէն դառնալ կ՚ուզէր յԵրուսաղէմ իւր Ղազարոս բարեկամն գերեզմանէն կանչել· եւ առ այս մինչ կը դժկամակէին աշակերտները, դու իբրեւ անձնանուէր նահատակ հրաւէր կը կարդայիր· «Ո՛ն եկա՛յք եւ մեք, զի ընդ նմա մեռցուք։»



## ՅԻՍՈՒ ԱՌԱՋԻ ԴԱՏԱՒՈՐԱՑ

Միայնակ մնացիր Յիսուս, անձնանուէրներդ ամէն քեզմէ չոգան ի բաց, միայնակ ելար յատեան Քահանայապետին, որ իբրեւ անգէտ եւ չքմեղս կը հարցնէր, եւ միթէ գիտնա՞լ կ՚ուզէր նենգամիտն թէ՝ ի՞նչ է քո վարդապետութիւն եւ ի՞նչ է աշակերտներուդ ուսումն։ Գալիլեայի բարձրութենէն սկսեալ մինչեւ յԵրուսաղէմ, բովանդակ Հրէաստանի գաւառները, Սիօնի Աւետարանչիդ ձայն տանեաց վերայ բարձրաբարբառ քարոզեցաւ։ Միայն պարզամիտ ժողովուրդ լսեց քո ձայն· քահանայապետք, դպիրք, փարիսեցիք, եւ օրինաց վարդապետք խուլ դարձան։

Դու հեզաբար կը պատասխանես, այլ կատաղի ծառան քահանայապետին զքեզ կ՚ապտակէ։ Համբերէ գառնուկդ հեզ,

համբերէ, դարձուր եւ զմիւս երեսդ· դու այսպէս վարդապետեցիր եւ արդ օրինակով ցոյց տուր մեզ քո անսահման հեզութեան դասը· մի՛ ջանար այդ անիրաւ ատենէն իրաւունք պահանջել: Թող Ահարոնեան դասը զքեզ դատափետէ, Մովսէսի հաւատարիմ ժողովուրդը քեզ համար վկայ է· դու ոչ երբէք չար խօսեցար, եւ ոչ նենգութիւն գտաւ ի բերանդ:

Պատառէ՛ պատմուճանդ ո՛վ Կայիափայ, պատառէ այլ եւս պէտք չեն Ահարոնեան այդ հնոտի հանդերձ· չեն պէտք ոչ ձեր զոհ, ոչ պատարագ, ոչ քաւութիւնք· մի՛ անմեղ մեղապարտին դատաստանը· տարէք հանէք այդ կարմիր անմռունչ երինջ խաչի սեղանին վրայ· այսուհետեւ Յիսուս ինքն է միայն փրկութեան զոհ եւ պատարագ հանուր աշխարհի համար:

Անցաւ երրորդ պահ գիշերոյն· դու ո՞ւր կաս եւ զի՞նչ առնես, պարծողդ Պետրէ, ջերմ ոգիդ ի սիրոյ վարդապետին սառուցեր ես, եւ այժմ վառուած խարոյկին մօտ նստած մարմընո՞վ կը ջեռնուս: Աւարտէ երրակի ուրացութիւնդ, աւարտէ, ահա հաւիկն թեւ ի թափ կը խօսի· սթափի՛ր դու, հաւուն ձայն զքեզ ի լաց կը կոչէ· դարձի՛ր դէպ 'ի Տէր, Պետրոս· դարձիր· Յիսուսն եւս, ո՛հ, ձեռակապ կացեալ յատենին, զաչերն առ քեզ ածելով զքեզ ի դարձ կը հրաւիրէ, ե՛լ մի՛ կենար· ե՛լ այս գաղութէն, գնա մտիր Գեթսամանի ձոր, ուր թողիր քո սուր· եւ անդ լաց դառնապէս, ուր Տէրն աղօթեց· հոսէ արտասուք մինչեւ գետ լինի, հեղեղ դառնայ, անցնի Կեդրոնի ձորէն:

Յատենէ յատեան տարին զքեզ, Տէ՛ր, այլ եւս քո դատաւորն Կայիափայն չէ եւ ոչ Մովսիսին օրինագիրք· այլ Պոնտացի Պիղատոս, որ Հռովմայ կայսրութենէն դատաւոր կարգուած էր, ոչ Մովսէս կը ճանչնար ոչ նորա օրէնք: Նա հեթանոս էր· բայց խղճի գիտակցութեամբ ծանեաւ զքեզ թէ անմեղ ես, անպարտ ես· ոչ կայսեր, ոչ· աշխարհին վնաս մի չունիս գիտցաւ քաջ թէ հրէաները առ նախանձու մատներ են զքեզ: Սակայն ի վերջոյ կեղծաւորեցաւ, արիական արդարութեամբ չպաշտպանեց քո դատը· ձեռք լուաց ժողովուրդին առաջ, խաբեց ու կարծեց թէ քաւեցաւ արդարոյդ արենէն:

Ո՛վ խորախօս Իմաստութիւն, հանդերձելոյն դատաւոր, եւ Աւետարանիդ ճշմարտութեան փաստաբան դպիր, մարդ կը զարմանայ քու վրադ թէ՝ ինչպէս վարուեցար դու այդ աչառող դատաւորաց առաջ· մերթ կը խօսէիր, մերթ հարցմանց պատասխան կուտայիր, եւ մերթ եւս անխօսուն էակ մի դար-

ճած այնչափ լռութիւն կը պահէիր, իբրեւ մարդ մի որ չի լսեր, չի խօսիր, եւ բերան ու լեզու չունի: Գիտեմ դու առ վըշտին եւս բերանդ չբացիր. մարդիկ քեզ պէս չեն. վշտին մէջ առաւել կ'աղաղակեն: Այո՛, Տէր իմ հեզ, ոչ ձայն կը հանես, ոչ կը վիճիս, ոչ կ'աղաղակես, զի մի՛ ձայնիդ եւ շնչոյդ ուժգնութենէն, ջախջախեալ եղէգն փշրի, եւ առկայծեալ պատրոյգն շիջանի: Արդեօք այսչափ խոնարհութեա՞նդ համար դատաստանդ շուտ բարձաւ ու վերջացաւ ինչպէս գուշակեց Եսայիաս:

Անհանդուրժ վիշտերուդ գիշերուան երկրորդ պահն էր. մինչ մարդահաճոյն այն՝ որ ինքն էր դատաւոր եւ իշխան. ո՜հ, զքեզ նոյն իսկ քո մատնչաց ձեռք մատնեց, իւր առենէն ի բաց մերժելով ասաց. «Ահա այրդ ձեզ:» Զի՞նչ այնուհետեւ վայրագ զինուորներ ու Հրէից վրիժահան խուժանն զքեզ մեկուսի առնելով՝ դառնագոյն նախատանաց թատերդութիւն մի կատարեցին քու վրադ. զքեզ յաթոռ նստուցին իբրեւ քո հօր Դաւթի աթոռը. գերագոյն գլխոյդ փուշ պսակ բոլորեցին, զոր դպրաց ու փարիսեցւոց տատասկաբեր անդաստանէն քաղեր էին. մի եղեգնէ գաւազան եւս քո աջ ձեռք տուին, եւ դէմդ անցած ծունր դնելով կը կատակէին զքեզ: Մի՛ դժարիր, Տէր, զի դու երկաթէ գաւազանով Մովսիսին ձեռքով ինչպէս բրտի անօթ ջախջախեցիր զիրենք, չիմացան պանդոյր ոգիները թէ դու եկեր էիր Աւետարանիդ անփուշ ու դալար քաղցր գաւազանովդ հովուել: Քո թագաւորութիւն այս աշխարհէն չէր, այլ իբրեւ արքայական ծիրանի կարմիր քղամիթ հագուցին քեզ. գլուխդ՝ զոր տիեզերք չկարէ ծածկել, ձորձով կը ծածկէին եւ կռուփս հանելով կը հարցնէին. «Մարգարեա՛ց, ով էր որ եհարն զքեզ»: Դաւիթ քո այս անըմբերելի նախատանաց նախատեսողն էր. Սիօնի բարձր պալատէն քո ճաղանքները կը դիտէր եւ կը կշտամբէր իւր անմիտ ժողովուրդը. «Իմացարո՛ւք, իմացարո՛ւք, անզգամք ժողովրդոց եւ անմիտք, մինչեւ յե՞րբ ոչ առնուք ի միտ: Որպէս զի թէ որ տնկեաց զունկն՝ ինքն ո՞չ լուիցէ, կամ որ ստեղծ զակն՝ ինքն ո՞չ տեսանիցէ:»

Տէր, գիշերուան վերջին պահուն մինչ արշալոյս կը մօտէր, քո այպանաց թատերդութիւնը կը լրանար. ամէն ճաղանք, հարուած ու կատակ անխնայ կատարեցին քո վրադ. կ'անցնէր վշտիդ երկար գիշեր եւ առաւօտ քեզ նոր վիշտ կը բերէր: Գարուն էր, ծառեր եւ ծաղիկները երկնից ցօղով զուարթացած կը ծիծաղէին. իսկ դու ծառոց ու ծաղկանց զար-

*դարէ, թոռմած ու խամրած էիր, երեսդ այլագունած էր։ Ե-
սային քո տժգոյն կերպարանաց ճիշդ պատկերահանն է. «Մեք,
ասէ, տեսաք զնա, զի ոչ գոյր նորա տեսիլ եւ ոչ գեղեցկու-
թիւն. այլ տեսիլ նորա անարգ նուազեալ քան զամենայն որդ-
ւոց մանկան»։*

*Բոլոր անձամբ ուժաթափ եղած կը թալկանայիր, ո՛վ Տէր,
դու Երիքովի ճամբուն գթած Սամարացին էիր, այլ ոչ ոք գը-
թացաւ ու խնայեց քեզ։ Ահաւասիկ խաչին ծանր հեծան եւս
պատրաստեցաւ։ Առաւօտ է, արեւն առագաստէն ելաւ, եւ դու
լոյսդ եւ արեւդ փառաց, դու եւս իբրեւ փեսայ չարչարանաց
առագաստէն ելիր։ Ո՛հ, Թափօրի լուսափայլ երեսդ քանի՜
տժգունացեալ է եւ ծով ծով աչերդ նուաղեալ։ Արեւն զքեզ տե-
սաւ, Տէր, իւր ճառագայթները շառագունեց Սիօնի լեռան վե-
րայ եւ ցոյց կուտայ այժմէն թէ՝ ես պիտի խաւարիմ երբ հաս-
նիմ կէսաւուր միջակէտին եւ երկնից կամարէն չեչտակի հա-
յիմ Գողգոթայի գլուխ իմ խաչեալ Արարչին գագաթան վե-
րայ. եւ ի՞նչպէս կարեմ լոյս տալ ապիրատ մարդոյն, երբ ան-
ստուեր Լոյսն՝ մահուան ստուերին տակ կը մթանայ։*

———o———

## ՅԻՍՈՒՍ Ի ՃԱՆԱՊԱՐՀՍ ԽԱՉԱԿՐՈՒԹԵԱՆ

*Խաչդ ի յուսդ ա՛ռ, ո՛վ Յիսուս, երթանք ի Բեթելայ սար,
դու նոր Իսահակն ես, շալկածդ քո ողջակիզին փայտն է. մի՛
հարցներ թէ՝ ո՞ւր է ոչխար ողջակէզ. դու ես միայն ճշմարիտ
ողջակէզ, զոր Աբրահամ գուշակեց եւ Հայրդ պատրաստեց.
միայն թէ քո զոհագործն Աբրահամ չէ, այլ նորա ժպիրհ եւ
անզգամ որդիքներ։*

*Մինչ դու վաստակաբեկ եղած, հատկլեալ շնչով կը տա-
նէիր քո մահուդ փայտը, եւ ծունկերդ կթուցեալ այլ եւս չկա-
րէիր ոտն յոտին փոխել ու յառաջ երթալ. դու որ զօրավիգ էիր
անկեալ մարդկութեան, եւ Մարգարէին ձայնով խրախոյս կը
կարդայիր. «Զօրացարո՛ւք, ձեռք լքեալք, եւ ծունկք կթուց-
եալք»։ Քո չարամիտ խաչահանուք կարծեցին թէ՝ մի գուցէ
առանց խաչի անարգութեան եւ աչխարհատես խայտառակու-
թեան մեռնիս դու կիսաճամբուն վերայ. ուստի քեզ համար պա-
հակ կալան Կիւրենացի Սիմոն, որ պահ մի քո խաչ կրեց մինչեւ
չունչ առիր եւ դարձեալ ինքնին բարձիր քո խաչափայտն։ Զի
քեզ սիրելի էր քո զօրութեան զէն յուսիդ վերայ տանել պար-
ծանօք, ինչպէս մի քաջազօտի զինուոր պատերազմին։ Եւ քո*

զէն պողովատիկ սուր չէր, այլ անտաշ անարուեստ փայտ մի, որով զինավառեալ էիր աշխարհի իշխանին զօրութիւնը խորտակել:

Ելէ՛ք եւ տեսէ՛ք, դստերք Երուսաղէմի, ելէ՛ք եւ տեսէք մեր նոր Սողոմոն արքային նորօրինակ հարսանեաց պսակը. որով յաւուր փեսայութեան իւրո՛յ կը պսակէ զինքն մայրն իւր Սիօն: Կուլաք, կ՚աշխարէք եւ սրտակոծ կը լինիք, տեսնալով որ փեսայն մահապարտ մի խաչակիր է: Ասեն թէ անմահ Աստուածորդի է, եւ այսօր ի մահ կ՚երթայ. ասեն թէ թագաւոր է, այլ գլխոյն թագ փուշ պսակ է. ասեն թէ Սողոմոնի երգած անձկալի եղբօրորդին եւ փեսան է, իւր հարսնեւորք՝ սուսերակիր զինուորներն են. պսակադիրք՝ օրինաց վարդապետներ եւ դպիրներն են. պարահանդէս ուրախութիւնն՝ Երուսաղէմի դստերաց ողբ, կոծ ու լացն է: Եւ այսպէս կը կատարի Նախագուշակին խօսք թէ. «Յաւուր յայնմիկ սաստկասցի կոծ յԵրուսաղէմ, իբրեւ կոծ նռնենեաց կոտորելոց ի դաշտի:»

———

## ՅԻՍՈՒՍ Ի ԲԵԹԵՂԱՅ ՍԱՐ

Զոհիդ ժամ հասաւ. եւ դու հասար Բեթեղայ սարին գլուխ, Յիսուս, խաչդ ի գետին դիր, ո՛վ դու խաչի մշակ, արեւակէզ ճակատիդ քիրտն սրբէ, զաչերդ ի վեր ա՛ռ տե՛ս ահա կուգայ անառակ որդին, մարդկութեան թշուառ զաւակ. վեց հազար տարի է երկրիս վերայ կը թափառի, եւ այժմ խսպառ չքաւորեալ անօթի քաղցած կը վերադառնայ հայրենի տունը. զքեզ Գողգոթային գլուխը գտաւ, եւ դու երկինքէն մինչեւ Բեթլէհէմի մսուր եւ անտի մինչեւ այսր՝ զայն կորոնէիր եւ ահա գտեր: Գիրկս արկ, համբուրէ, զի դու երկնից Հօր գոռովոյն բազուկներն ես. զքեզ երկնքէն մինչեւ յերկիր պարզեց որ զրկես անառակ որդին, յուսիդ վերայ բառնաս մոլորեալ ոչխարը: Տե՛ս, Տէր, կորսուած դրամն եւս ոտքիդ տակն է, ժանգոտած եղծուած բոլորովին. կը ճանաչե՞ս արդեօք, ա՞յդ է քո տիրական պատկերն ու կնիքը:

Տէր, դու այս անգին գիւտերուդ համար զի՞նչ գին կը վճարես. արդէն գիտես Հօրդ կամք, դու նորա ի յաւիտենից պահեալ պարարակ եզն ես. Նա կը հրամայէ որ անառակ որդւոյն դարձին համար զենուն զքեզ, խնճոյից սեղան կազմուի, հրեշտակներ ու մարդիկ առհասարակ հրաւիրուին, եր–

*կինք եւ երկիր զիրեար դրկախառնեն, հաշտութեան աղեղն Գողգոթայի գլխէն ձգէ դէպ երկինք, եւ հանի Աստուածպետական աթոռին առաջ. խռոված Հայրն հաշտուի աշխարհին հետ։*

*Փրկութեան աւուր երրորդ ժամն եհաս. տարածիր, Յիսուս, պարզէ ամենազօր բազուկներդ քառաթեւ սեղանին վերայ, թոյլ տուր, որ զենուն զքեզ, լուռումունջ կաց, բերանդ մի բանար, դու անխօս որոջ մի ես քո կտրիչներուն առաջ. ճիշդ այնպէս կաց ինչպէս դուշակեց Եսային։*

*Զմռսեալ պինի կուտան քեզ, չգիտեմ քեզ կը կարեկցի՞ն, որպէս զի թմրիս եւ սաստկագոյն ցաւ չզգաս. թէ վասն այն կարբուցանեն քեզ, որ անագան մեռնիս, ընդ երկար ողջ մընաս խաչին վերայ. թշնամիներդ վա՜շ վա՜շ կարդան քո դէմդ եւ զքեզ աւելի եւս գիծեցուցանեն։ Այսպէս վարեցան ընդ քեզ կատաղի ոխերիմներդ, չգիտնալով թէ դու մարդոյն սիրով արբեալ՝ կամաւդ անզգայեալ ես։*

*Առէ՛ք սուր, կտրեցէք, ո՛վ սպանդարանի արեան ու մահուան պաշտօնեայներ. զոհն հեզ է, իւր վիզը կամակար կը ձգէ. բեւեռները հարէք, դժոխադէմ դահիճք, խաչակիր Նահատակն իւր թեւերը կը տարածէ. պինդ հեղուսէք զԱստուածն ի փայտ. իւր խաչով հանդերձ վերացուցէք ու կանգնեցուցէք Բեթելայ սարին գագաթ, թող աշխարհ եւ երկինք տեսնայ։*

*Ո՛վ դուք, Մովսիսի անհաւան եւ ստահակ որդիները, տեսէ՛ք, ահաւասիկ կեանք ձեր կախեցաւ զփայտէն։ Դա անապատին մէջ բարձրացած պղնձէ օձ չէ, որ միայն Իսրայէլի օձահար որդիները բուժէ. այլ բոլոր բովանդակ հեթանոսները մահաշունչ վիշապին խայթուածէն պիտի բժշկէ, եւ առ այս նշան կուտայ մարգարէն. «Եւ բժշկութիւն ի թեւս նորա»։*

*Դուք արդ՝ յանդիման կեցած կը նայիք նորա վէրքերուն եւ խոցերուն, ո՛վ ազգ չար եւ դառնացող. որ երբէք քո սիրտ եւ հաւատարմութիւն չուղղեցիր առ Աստուած, եւ միշտ նորա սուրբ մարգարէները սրահան եւ սղոցով զրաւեցիր։ Եւ այդ նոյն իսկ մարգարէից Տէր եւ Աստուծոյ Միածին որդին կը խաչես, եւ չես ամաչեր։ Յիսուս ձեր չար ու խորամանկ միտքը բացատրեց ճիշդ իւր առակով. դուք վասն այն արտաքոյ այգւոյն հանելով կը քարկոծէք Հօր սեփհական ժառանգը. որ բոլորովին զրաւէք Յակովբայ տունը եւ այգին, ժառանգութեան տէր լինիք, արդիւնքն ուտէք եւ բուն այգետէրը հանէք իւր արդար ժառանգութենէն։*

Ահա բարձրացար, Տէ՛ր, եւ դու կասէիր թէ երբ բարձրանամ ես, զաշխարհ բոլոր առ իս կը ձգեմ: Կը զարմանամ, Տէ՛ր, այդ անլուր, անհնար հրաշքիդ· չգիտեմ ինչպէ՞ս պիտի ձգես· Թեւերդ կապուած են, ոտներդ բեւեռուած եւ սակաւիկ մի եւս դու կը մեռնիս եւ կը մնաս անշարժ, եւ մարդիկ զքեզ ի գերեզման կը տանին, կարծելով թէ դու եւս մեր աշխարհի մեռեալներէն ես: Եւ միթէ հնա՞ր է խաչէդ եւ գերեզմանէդ զաշխարհ առ քեզ ձգել:

Այլ գիտեմ եւ կը հասկնամ, Յիսուս, քո միտք պարզ է եւ խոր, քո ամենահաս, ամենազօր ձեռքդ նոյն իսկ մահուդ մէջ կենդանի եւ զօրաւոր է· եւ դու զմարդիկ առ քեզ սրոյ բռնութեամբ չես ձգեր ինչպէս աշխարհիս տիրապետ աշխարհակալները· այլ անհուն սիրովդ կը ձգես, խաչիդ անձնանուէր զոհովդ կը ձգես, անպարտ արիւնովդ կը ձգես· քաղցր լծովդ կը ձգես· անսահման ներողամտութեամբ կը ձգես· Աւետարանիդ ազատ քարոզութեամբ կը ձգես· այս աշխարհէն՝ կենդանի հաւատացեալները կը ձգես, ի գերեզման կ՚իջնաս՝ հողէն մեռեալները կը ձգես· ի ներքին բանտն երթալով՝ կապեալ հոգիները կը ձգես· կռամոլութեան տաճարներէն՝ մոլորեալ հեթանոսները կը ձգես· եւ կը բերես կարծես եկեղեցւոյդ նորագաւիթը, զամէն մի հօտ կազմելով քաջ հովուիդ գաւազանին տակը կը ժողովես:

Այսպէս, ո՛վ Տէր, աշխարհի հաւատացելոց միայն քո սէր կը յայտնես, իսկ սանդարամետական իշխանին՝ քո բուռն եւ ահաւոր զօրութիւնը: Կը վերանաս, կը բարձրանաս, ո՛վ սրաթռիչ բազէ, ինչպէս ամպէն կը խօսէիր առ քո նահատակն Յովբ:

Այո՛, Տէր, բազէն քո հրամանով կը վերանայ, իսկ դու Հօրդ հրամանով կը վերանաս ի խաչ, թեւերդ ի թռիչ կը տարածես, զաչերդ յանդունդս կը սեւեռես, խաչի բարձրադիտակ գագաթէն որսական բազէի նման չեչտակի սաւառնե՛լ կուզես ի սանդարամետ, որպէս զի որսերդ կորզես ու որսաստան բռնաւորին ճիրանէն եւ վեր բերես կրկին ի դրախտն· ուր մարդն որս եղեւ խաբուսիկ բանսարկուին եւ մահն այս աշխարհը մտաւ:

Յօղէ, ո՛վ կենաց աղբիւր, յօղէ սուրբ արիւնդ, թող ի խաչէդ իջնան թափին մեր նախահօր գագաթան վերայ· զոր մահուն ոստիկան, ո՛հ, ոտնհարելով գլորեց գերեզմանին գուբը· մարդն անմահ էր, լոյս էր, Աստուծոյ անեղծ ձեռա-

գործն էր· աւա՛ղ անմահն մահացաւ, ու եղծաւ տիրական պատկերն։

Ո՛վ յառաջատես Իմաստութիւն, թող թերահաւատները դիպուած կարծեն· այլ ես կը հաւատամ, որ դու քո յաղթական խաչը՝ մեղուցեալ նախամարդոյն գագաթան վերայ կանգնեցիր, որպէս զի արեանդ կենսատու ցօղով՝ մեր հանդուցեալ նախահօր կեանք տաս, նոր վերստեղծես հողէն· եւ ամբողջ ադամային հաւատացեալ սերունդը կրկին ի կենդանութիւն արարչագործես։

Տէր, դու երբեմն մինչ կենաց բան կ՚աւետարանէիր· Յակովբայ ջրհորին գլուխ նստար ինչպէս վաստակեալ ու ծարաւած ուղեւոր մի· Սամարացի կնոջէն ջուր կը խնդրէիր· եւ այժըմ ի խաչէդ անագորոյն դահիճներէն ջո՞ւր կը խնդրես։ Չըգիտեմ, յիրաւի ծարաւի՛ ես, թէ սիրտդ ի սիրոյ կը տոչորի, կ՚ասես թէ ծարաւի եմ, միթէ Ովկիանոսը կը բաւէ՞ քո ծարաւ եւ սրտիդ հուրը շիջուցանել։

Միայն կը ծարաւիս խաչեալդ իմ Յիսուս, քաղցեալ չե՞ս եւ հաց չե՞ս ուզեր· եւ ի՞նչ պէտք են այլ եւս քեզ համար ապերախտ ժողովուրդին հաց եւ ջուր· պահ մի ժուժկալէ եւ կը մեռնիս, կանցնի քո ծարաւ։ Բա՛ւ է, ո՛վ կը հաւատայ· միթէ դու այն կենդանի ջրոյ ակն չե՞ս· որ բղխեցար Երուսաղէմի մէջ եւ կաղաղակէիր· «Որ ծարաւին իցէ եկեսցէ առ իս»։

Տէր, դու չե՞ս եւ չէի՞ր այն հրաշաբուղխ հոգեւոր վէմն, որ մշտահոս անհատ կը վազէիր Իսրայէլեան բանակին ետեւէն եւ կ՚արբուցանէիր տրտնջող թերահաւատ ժողովուրդը։ Արդ կը ցամաքի՞ս, հոգիդ աւանդէ, թող հեթանոս հարիւրապետը տիգաւ խոցէ վիմիդ կողը· տես ինչպէ՞ս կենդանի կողէդ կենսացնցուղ աղբիւր կը բղխի, ջուր եւ արիւն ի միասին։ Անհաւան ազգ տեսաւ ու չը հաւատաց, այլ ես հարիւրապետին հետը կը հաւատամ եւ կը դաւանիմ թէ, «Իքէն է, Տէր, աղբիւր կենաց եւ լուսով երեւաց քոց տեսանեմք զլոյս։»

Յիսուս, որդի Կուսին, մահուան ժամդ կը մօտենայ· պահ մի զաչերդ՝ առ Մայր քո դարձուր, որ խաչիդ պատուանդանին տակ ուշագնաց անկեալ՝ ծնողական գորովով կաղէկիզի։ Սէր՝ որ քան զմահ հզօրագոյն է, զքեզ եւ զմայրդ նոյնավիշտ կը տանջէ· Սիմէոնին սուրը՝ Կուսին ի սիրտ կը մխի· եւ քո վտակահոս կողը՝ Ղունկիանոսին գեղարդ։ Քո անտար ցաւերդ

տօրեայ են, մահով կապուին, եւ դու կը ննջես ի հանգիստ. այլ սգալի մօրդ տակաւ տակաւ կռուելուն:

Եւ կարի՜ յոյժ. երբ անմահդ մահացեալ տեսնայ, երբ իբրեւ մեռեալ զքեզ պատանէ եւ միամօր որդիդ դնէ 'ի գերեզմանի. երբ Գաբրիէլին աւետիս յուշ ածէ եւ անվախճան Թագիդ ու աթոռիդ տեղը՝ փուշ պսակ, եւ մահապարտից խաչը տեսնայ: Այո՛, պիտի մորմոքի, զի մա՛յր է. այլ եւս չկայ աշխարհիս վերայ բնաւ սփոփանք մի մայրական սրտին մինչեւ տեսնայ քո փառաւոր յարութիւն:

Տէր, որ տիեզերաց խնամակալ Աստուած ես, յանձնարարէ եւ տուր քո հրաժեշտ, ո՛վ այսուհետեւ պիտի խնամէ քո անորդի մայրիկդ: Հայրադիրդ Յովսէփ վաղ մեռաւ, մերձաւոր մտերիմներդ ու բարեկամներդ հեռացան քեզմէ ու չկան ի միջի. միայն քո սիրելի աշակերտ Յովհաննէս կայ, այն որ զքեզ ողջագուրեց եւ ասաց. «Տէր, ո՛վ է, որ մատնելոց է զքեզ»:

Եւ դու ծնողասէր եւ հնազանդ Որդեակ, ի հոգեհանիդ ժամուն երկու բան միայն կը բարբառիս. «Ով կին, ահա՛ որդի քո. եւ թէ՝ Ահա մայր քո»: Եւ ցոյց կուտաս այսու, մարդասէր եւ ամենախնամ Տէր, թէ խաչիդ փրկագործութեան ծանրավիշտ հոգերուդ մէջ՝ դու ամէն բան կը մոռնաս բաց ի խաչէդ, եւ սորա ցամար քեզ հետեւող խմբին աշխարհուրաց անձնաւորութիւնը կը քարոզէր. «Որ սիրէ զհայր կամ զմայր առաւել քան զիս, չէ ինձ արժանի»: Այլ քա՛ւ թէ կարծեմ, որ դու Աւետարանիդ այս վճռով որդիական սիրոյ պարտիքը կուրանաս, հակառակ բնական եւ Հօրդ օրինաց, որ կը պատուիրէ զհայր եւ զմայր պատուել:



ՅԻՍՈՒՍ ԱՆՕԳՆԱԿԱՆ ԹՈՂԵԱԼ

Եւ դու զմայրդ կը թողուս, Յիսո՛ւս, որ քո սիրովդ սիրտն ի խարոյկ կը տոչորի, մեծաձայն կաղաղակես առ հայրդ. «Աստուած իմ, Աստուած իմ, ընդէ՞ր թողեր զիս»: Ի՞նչ կը խօսիս, ինքնազօր Տէր, իբրեւ անօգնական մա՞րդ կը պաղատիս. Աստուած ես, Աստուածորդի ես, զԱստուած քեզ օգնակա՞ն կը կանչես: Ընթրեաց երեկուն կասէիր, «Ես չեմ միայն, զի Հայր ընդ իս է». եւ այժմ զքեզ թողո՞ւց: Մարդ կը վարանի եւ կը գայթակղի երբ խաչիդ ճառը մտքով եւ եթ ըմբռնել ուղէ:

Ի՞նչ է այս քո խորին խորհուրդ, որ մեծութեան եւ նուաստութեան մէջ, զօրութեան եւ տկարութեան մէջ կը տարուբերիս: Մերթ մինչեւ Սինային գլուխ բարձրանալով՝ իբրեւ մրրկալից ամպ կայծակունս կը փայլատակես. եւ խարազան ձեռքդ առնելով տաճարին գողերը կը հարուածես. մերթ եւս այնչափ կը խոնարհիս, այնչափ կը նուաստանաս, մինչեւ մարդոյն մեծամիտ ոգին այլ եւս չի հաւատար, թէ Աստուած կը խոնարհի մինչեւ մահապարտից կառափնատեղ:

Ո՛վ ես դու, որ ելեր ես բարձր վիմին վերայ, հոգւոյդ աչքով կը նայիս դէպ ի խաչին տեսարան: Ի՞նչ կը տեսնաս, Ամբակում, ի Բեթլեհէմի մսուր, եղին եւ իշոյն մէջ յայտնեալ Բանն՝ այժմ կերեւի քեզ երկու չարագործ աւազակաց մէջ մահապարտից փայտէն մերկ կախուած, փառաւորեալն Աստուած մատնեալ ի խաչ եւ յանարգութիւն, ո՛վ, կը հիանաս եւ կաղաղակես. «Տէր, զլուր քո լուայ եւ երկեայ, նայեցայ ի գործըս քո եւ զարհուրեցայ:»

Դու հազար տարի յառաջ խաչին ստուերագիծ միայն տեսնալով կը զարհուրի՞ս, Մարգարէ, մարդացեալ Աստուածորդւոյն հիանալի մեծագործութիւնը այդ չէ միայն, դեռ խաչէն իջնալով ի գերեզման պիտի երթայ: Դու եւս շատ մի կենար ի վիմիդ, շուտ իջիր ի վայր, թո՛ղ խաչին տեսարանը, գնա՛ ճաշդ տար ի Բաբիլոն. քան զայդ աւելի մի ջանար խորհրդազգաց լինել, զի ճառ խաչին եւ խորհուրդը՝ մեր գիտութենէն ծածկեալ է:

Արեւն ի միջօրէի կէտը հասաւ, ո՛վ դու լոյսդ եւ արեւդ փառաց, ասա քո վերջին բան. «Ամենայն ինչ կատարեալ է», եւ աւանդէ հոգիդ. եւ ահաւասիկ արեգակն խաւարեցաւ, խոր գիշերով պատեց բովանդակ աշխարհը, ապիրատ Սաղիմ իւր երեսը դարձուց, որ չտեսնայ խաչին վերայ իւր Արարիչը՝ ի մահ դատապարտեալ:

Խաչեալդ իմ Տէր, մինչողջ էիր դու, զարմանազան սքանչելեօքդ Իսրայէլի աշխարհը լցիր եւ արդ ի մահուդ եւս սքանչելի՞ս կը գործես: Դեռ ի գերեզման չգնացիր, հազարաւոր ամաց մեռեալները գերեզմաններէն յարութիւն կառնեն: Տաճարին վարագոյր վերուստ ի վայր կը ցելու, Հոգին ի տաճարէն կ'երթայ, Ահարոնեան քահանայութիւնը կը դադրի, մեծ Քահանայապետիդ խաչին վերայ միանգամ մատուցեալ զոհ կը մշտնջենաւորէ. եւ զայս ամէն գործելով ցոյց կուտաս ու-

*րեմն, թէ ի մահուդ՝ կենդանի Աստուած ես եւ քո մահ՝ մեռելոց համար անմահութիւն է:*

*Զվէմդ անարգեցին շինողք, սորա համար ահա Սիօնի լեռան ապառաժ վէմերը մեծ ճայթումով կը պատառին. անպարտ մահուդ համար քարերն անգամ չհանդուրժելով աղաղակեցին. խուլ եւ համր Յակովբայ որդիները համրացան ու չլսեցին: Կեղծաւոր ու նախանձաւոր դպիրք եւ փարիսեցիք, որ հին Տաճարին իբրեւ շինողք կը համարուէին եւ որ Մովսիսի յաթոռ կը բազմէին, նոքա զքեզ անարգելով անարգեցին. երբէք չիմացան խելակորոյս ոգիները, թէ դու ես միակ հին ու նոր Սիօնին ընտրելագոյն եւ միացուցիչ վէմն անկեան:*

*Սաբեկայ խաչի ծառէն կախուած, ո՛վ ճշմարիտ զոհ, քանի՞ անուշահոտ է ծուխդ որ կը ծաւալի եւ կը ծառանայ դէպ երկինքը. աշխարհ բովանդակ զոհիդ փրկութեան հոտով լըցաւ: Եւ ահա քո Հայր Աստուած Երկինքէն իջեր է Գողգոթային գլուխը, հրեշտակներ ու մարդիկ խաչիդ սանդուղէն ելեւէջ կառնեն, հաշտութեան նշան ուխտին կամար կապեր է մէկ ծայրն յԱստուած, միւսն ի մարդիկ, երկինք եւ երկիրը ի հաշտութիւն կը կապէ: Եւ այսպէս կը լրանայ եւ կաւարտի, Տէ՛ր, փրկաւէտ զոհիդ մեծահրաշ խորհուրդ:*



## ՅԻՍՈՒՍ Ի ԳԵՐԵԶՄԱՆ ՄԱՀՈՒ

*Աստուածորդիդ իմ անմահ, ահա մարդիկ քո կեանք երկրէս բարձին: Եւ ո՞ պիտի պատմէ այսուհետեւ քո ազգատոհմ: Միթէ դու այս աշխարհիս վերայ անազգ անտոհմի՞կ ես, որ խաչին վերայ մեռած այնպէս մնացիր. միայն Մայրդ կայ առ խաչիդ ողբով ու կոծով նուաղեալ, եւ մի քանի եղբայր ու քոյր մտերիմներդ, որ խպառ զքեզ սիրեցին եւ մինչեւ ի մահդ չըմեկնին քեզմէ:*

*Ո՞ւր է քո վերջին հանգիստ, անթաղ անգերեզմա՞ն պիտի մնաս Տէր: Հայրենի ժառանգութիւն կալուած չունիս, անտուն անստացուած կեանք վարեցիր աշխարհիս վերայ: Յակովբայ տան պարզեւ տուիր Աւետեաց երկիրը. տեսցուք, թէ նա քո գերեզմանին համար մի կանգուն տեղ կուտա՞յ:*

*Արեմաթացի իշխան Յովսէփ, որ ի ծածուկ քեզ կը հաւատար ու կը պաշտէր, եւ այն որ դպրաց ու փարիսեցւոց ահէն չհամարձակեցաւ երթալ Պիղատոսի առեանը եւ քո դատը*

*պաշտպանել, աւաղիկ նա քո մահուանէն յետոյ կը սրտապնդէ գէթ ի մահուդ՝ Թաղմանդ սպասաւորել: Նա մոռացաւ ճշմարիտ բարեկամութեան սէրն ու պարտիքը, մտաբերեց ընդհանուր մարդասիրութեան պարտիքը վճարելով՝ քաւէ իւր յանցանքը: Ուստի գնաց առ Պիղատոս եւ ասաց: Տէր դատաւոր, մի պարգեւ կը խնդրեմ ի քէն, որ աշխարհիս փառք կամ պատուանշան չէ, այլ միայն մեռած մարմին մի Նազովրեցի Յիսուսին, որ տակաւին անԹաղ մնացեր է Գողգոթային գլուխ: Նա աշխարհիս հրապարակին վերայ ինկած՝ անտերունչ մեռեալ մի է. բարեկամ ու պաշտպան չունի: Միայն մայրիկ մի ունի, որ խաչի պատուանդանին տակ Թալկացած է իւր միակ որդւոյն սիրով: Տէր, կաղաչեմ հրաման տուր, երթամ Թաղեմ Յիսուսը, գէթ սփոփեմ սուգն ու լացը՝ նորա վշտագին մօրն:*

*Եւ գիտե՞ս դու, ո՛վ իշխան, մեր անհաւան Հրէից ազգը առ Նախանձու մատնեցին քեզ այն անմեղ եւ արդար անձն. եւ դուք ինքնին զգացիք իսկ նորա անմեղութիւնն. Թերեւս սորա համար ձեռքդ ժողովուրդին առաջ լուանալով՝ անպարտ արիւնէն զձեզ քաւել ուզեցիք: Եւ ես իսկ, որ նոյն Հրէից ժողովուրդէն եմ, բնաւ հաղորդ ու մասնակից չեմ Յիսուսի մատնութեան կամ նորա տարաբախտ մահուն:*

*Տէր իմ, այնպէս կը Թուիս Թէ անտերունչ ես, այլ դու բարեբաստիկ կը համարուիս քան զաղքատն Ղազարոս: Եւ դու տեսե՞ր զայն արդեօք. որ մեծատան դրան առաջ փողոցին մէջ մեռաւ, ոչ բարեկամ ունէր, ոչ ազգական. իւր պահապան եւ կարեկից փողոցի շուներն էին, որ լիզելով կը կազդուրէին նորա ցաւալից վէրքերը: Եւ դու միԹէ կը մոռանա՞ս եւ չես յիշեր առակիդ մէջ, Թէ ո՛վ եղաւ յուղարկաւոր եւ Թաղեց այդ փողոցի աղքատը:*

*Ո՛վ տիեզերաց Տէր եւ մեծատուն, որ աշխարհիս հրապարակներու վերայ ինկած Թշուառ Ղազարոսներու համար աղքատացար ու մեռար իսկ, մի՛ հոգար Թէ մարմինդ Ղազարոսի նման անԹաղ կը մնայ. ահաւասիկ Հրէից երկու պատուական իշխանները քեզ յուղարկաւոր կուգան: Նիկոդիմոսն եւս կ'ընկերանայ ԱրեմաԹացւոյն հետը. այն որ արեւէն վախնալով գլոյդ՝ գիշերուան մէջ տեսնալ կ'ուզէր եւ որ կը հարցնէր կրկին ծննդեան խորհուրդը եւ կ'ուսանէր քո լուսաւոր վարդապետութենէն:*

*Երեկոյ է եւ արեւն ի մուտս կը խոնարհի. ճեպեցէ՛ք, ո՛վ Յիսուսի Թաղման սպասարկուք. ճեպեցէք մեր աշխարհի ա-*

րեւուն հետը՝ կենաց լոյսն եւ արեւն ի հող դնել: Եւ ո՞ւր, ո՜հ, աշխարհին Տէր գերեզման չունի: Յովսէ՛փ իշխան, ասեն թէ պարտիզիդ մէջ վիմափոր գերեզման մի ունիս պատրաստ՝ ի նախնեաց քեզ ժառանգ մնացեր է, դու զա՛յն Յիսուսին ընծայէ: Պաշտօղ կանայք՝ թող պատան պատրաստեն. Նիկոդիմոս իշխան զմուռս եւ հալուէ բերէ. պատուել ու պատանել պէտք է այն խաչեալ մարմինը, որ իւր անուշ հոտով զաշխարհ լցոյց. մարդկային նեխեալ ու փտեալ մարմինը անապականութեամբ զմռսեց. որոյ վասն կ'ողբար Դաւիթ, «Նեխեցան եւ փտեցան վէրք իմ յերեսաց անզգամութեան իմոյ:»

Ելէ՛ք Գողգոթայի գլուխ, երկիւղած իշխանք, ելէ՛ք եւ երգեցէք ՍՈՒՐԲ ԶԱՍՏՈՒԱԾՆ. խաչէն ի վայր առէք Յուդայի Առիւծակորիւնն, որ ելաւ բազմեցաւ խաչի դիտակին վերայ: Արդ իջեցուցէք թող հանգչի գերեզմանին մէջ, թող պահ մի կափուցանէ իւր ամենատես աչքը, զի սիրտն արթուն է: Այսպէս մեռաւ ու ննջեց քո խաղաղութեան այրն, Դաւիթ. միթէ ո՞չ յաւելուցու յառնել՝ որուն լի յուսով կը հաւատայիր:

Յիսուսի թաղման երգահան ողբերգուն դո՛ւ ես, մեծդ Սահակ. քնարդ ա՛ռ, ե՛կ այսր. Յովսեփայ պարտիզին մէջ հով ծառի տակ նստիր. մինչեւ Իւղաբեր կանայք պատանեն զՅիսուս՝ դու երգէ «զՊԱՐԳԵՒԱՏՈՒՆ»: Երգէ՛ թէ անմահն Աստուած մեռա՛ւ եւ Պիղատոսէն իբրեւ պարգեւ խնդրեց զայն Յովսէփ: Երգէ՛, որ լոյս էր եւ կը հագնէր զայն իբրեւ հանդերձ. ո՛վ, կը հաւանի եւ չի դժուարիր, կը թողու որ մահկանացու ձեռք զինքն պատանէ: Երգէ՛, յաւիտենից կենդանին՝ կը մեռնի, արթուն բնութիւնն՝ կը ննջի, արդարութեան Արեգակն՝ գերեզմանի ստուերով կը ծածկի, Հօր փառաց Ճառագայթ՝ կը նսեմանայ, կեանքը՝ կենազրաւ կը լինի, արարածոց Ցնծութիւնն՝ կ'արտասուի իւր սգաւոր մտերիմներէն:

Երգէ՛ զՆրբորդ ձայնդ, էնն Աստուած, գիրն անփակ՝ կը փակի եւ մեծ Քահանայապետն՝ կը կնքի քահանայից մատանով. կափարիչ ծանր վիմին տակ կը դրուի այն աշխարհալիր վէմն. որպէս զի անշարժ մնայ, չը խլրտի ու փշրէ աշխարհիս ամբարտաւանութեան պատկերները:

Կենարար Տէ՛ր, դեռ երէկ Ղազարոս բարեկամդ գերեզմանէն կանչեցիր, հրաման տուիր որ նորա երիզապինդ պատան քակեն եւ կապանքէն լուծելով թողուն որ երթայ. բա՛յց, դու այսօր մեռելի նման անշշունչ ես: Մարիամ այն թաղմանդ իւղն պահեր էր մինչեւ քո պատանաց օրը. մեղապարտ կինե-

*րը որ երէկ ողջ գլուխդ եւ ոտքդ ազնիւ իւղով օծեցին, այսօր ողջ մեռած մարմինդ կ'օծեն· դու որ ի հոգւոյն Աստուծոյ ճըշմարիտ Օծեալն էիր, եւ եկար միայն աշխարհիս աղքատներուն աւետարանել:*

*Շուտ արէք, ո՛վ եղերամարք, շո՛ւտ արէք· Յիսուս յաւիտենական մեռեալ չէ· շատ խնամով մի՛ կարէք նորա պատանը, մի չօշափէք նորա խոցեր ու վէրքերը· առէք գլխէն փուշ պսակը, հանէ՛ք կողէն տիգին սայրասուր ծայր, ժողովեցէք արիւնոտ բեւեռները, զամէնն եւս պահեցէք իբրեւ յիշատակ· միամօր որդեակն ի գերեզման դրէք, առէք ցաւալի Մայրն ու գնացէք· բաւ է այսչափ ձեր կոծն ու լաց:*

*Հանգի՛ր Տէր իմ, հանգի՛ր· Թող դիւրանան խոնջեալ ոտքերդ, թող անցնի ցաւն վիշտերուդ ու վէրքերուդ· կ'ասէիր թէ որդի մարդոյ գլուխ դնելու տեղ չունի, արդ գերեզմանին մէջ դիր· ապիրատ Երուսաղէմ այդպէս կամեցաւ քեզ: Պաղեստինոյ քարուտ երկրին մէջ շատ վաստակեցար, ո՛վ փըրկութեան մշակ· գերեզման քո վերջի քրտանց գրաւն է, այլ եւս խաչակրութեան քայլափոխ չունիս, խաչիդ եւ տնօրէնութեանդ ասպարէզն այսչափ էր:*

*Ո՛վ մարմնացեալ ճշմարտութիւն, Բէթլէհէմի երկրէն ու մսրէն բուսար, երեք տարի միայն զքեզ յայտնելով՝ Աւետարանիդ կենաց բանը քարոզեցիր· եւ արդ գերեզմանին մէջ կը թառամիս, ո՛վ ծաղիկդ ու գաւազանդ Յեսեայ: Ամփոփէ ձեռքըդ, Յիսուս, որով ապերախտ ժողովուրդին որդիները յարուցիր: Թող լսէ այժմ քո դառն հառաչանաց ձայն՝ որ սըրտառուչ հոգւով կը կանչէիր· «Երուսաղէ՛մ Երուսաղէ՛մ... Եթէ գիտէիր դու գոնէ՛ յաւուրս այսօրիկ զխաղաղութիւն քո, բայց արդ վերացաւ ի քէն:»*

*Աւա՜ղ, Աբրահամու որդիք համրացան ու չը լսեցին քեզ: Դու Յակովբայ տան մշտնջենաւոր խաղաղութիւնն էիր· գո՛նէ այցելութեանդ ժամանակը զքեզ չճանչնաս, եւ այժմ դու եւս խռովելով կը վերանաս իրմէն եւ կը ծածկուիս: Իսրայէլի ժողովուրդին փառք էիր, նա զքեզ ոտնահարեց· որպէսզի քեզ հաւատացող հեթանոսաց իբրեւ լոյս յայտնուիս եւ Սիմէոնի գուշակութիւնն ստուգապէս կատարուի:*

*Յիսո՛ւս, դու Յովսէփ գեղեցի՞կն էիր, որ եղբայրներդ առ անխանձու քեզ դաւ գործեցին: Այլ քո դէպք նոյնօրինակ չէ, նա ինքն ողջ մնաց, միայն ծաղկենկար պատմուճանն ու լի արեան մէջ թաթխելով՝ համբաւեցին թէ գազաններ զՅովսէփ*

*կերան. իսկ դու կուսական մարմնոյդ անձեռագործ պատմուճանովդ հանդերձ գենեցար, եւ զքեզ ողջամբ թաթաւեցին արեան մէջ. թող այս՝ եւ արդ մահուան ու գերեզմանին դուռն իջեցուցին։ Յակոբ նահապետ Յովսեփայ արիւնաներկ պատմուճանին վերայ անմխիթար կուլար։ Իսկ քո Հայր երկնքէն ապաժոյժ խաչիդ վերայ հայեցաւ, եւ այժմ եւս գերեզմանիդ վերայ կը հայի։ Գիտես թէ անկարեկից է, կզբօսնու եւ կը զուարճանայ. վասն այն դու գերեզմանիդ խորէն սրտագոչ բարբառ մի կը հանես երկինքը, «Յի՛ս հաստատեցաւ սրտմըտութիւն քո (Հայր) զամենայն զբօսանս քո ածեր ի վերայ իմ»։*

*Ո՜վ, քանի՞ դժուարին է հասկնալ քո Հօր եւ քո անհաս խորհուրդները, ո՛վ Աստուածորդիդ մեռեալ։ Ինչ որ քեզ համար խաչ, անարգութիւն, եւ մահ է, Հօրդ համար հաճոյական պաշտօն եւ զոհ է։*

*Միթէ քո Հայր, մեր փրկութեան համար խա՞ղ արար ըզքեզ, խաչի տեսարան թողուց եւ արդ գերեզմանիդ վերայ կ՚զբօսնու. ոչ ինչ փայթ չունի, կը թողու, որ անմահդ՝ ի կարգս մեռելոց թաղեն. լոյսդ՝ հողին հետ խառնել կուտայ, կեանքդ՝ մահուն կը մատնէ, անբաժան սէրդ՝ մինչ ի դժոխս կը մերժէ։ Վասն որոյ դու ոչ միայն աշխարհի մարդոցմէ այլ նոյն իսկ քո Հօրէն թողուած իբրեւ անծանօթ մարդ մի եղար աշխարհիս վերայ։ Եւ արդ թողիր գնացիր մեռելոց աշխարհը. տեսցուք այդ մոռացեալ երկրին մէջ ո՞վ պիտի ճանաչէ զքեզ։*

*Կը ննջե՞ս, կը լռե՞ս եւ գերեզմանիդ խորէն չե՞ս մռնչեր, հզօր Առիւծ. ես զքեզ տեսայ, դու երբ ի Բեթանիա՝ Ղազարէ՛ կը կանչէիր, ձայնդ մինչեւ ի սանդարամետ հասաւ։ Տեսցուք, ո՛վ պիտի կոչէ զքեզ, զի անձնանուէր խաչակրութեանդ մէջ մարդ մի եղար առանց օգնականի, եւ կասեն քեզ համար թէ մեռելոց մէջ ազատ ես։ Զգիտեմք, ի՞նչ է այս, մահուան ստուերին տակ եւ մեռելոց աշխարհին մէջ ազատութիւն կա՞յ։*



## ՅԻՍՈՒՍ Ի ՆԵՐՔԻՆ ԲԱՆՏՆ ՍԱՆԴԱՐԱՄԵՏԻՆ

*Ո՛վ դու արեւդ անստուեր, որ մեր աշխարհին՝ կենաց լոյսըն էիր, գնացիր մտեր մեռելոց աշխարհը։ Զգիտեմ, ո՛վ բա-*

ցաւ քո դէմդ այն յաւիտենական աղխեալ դուռն, որ երկաթի սողնակով եւ նիգերով ամրացեալ էր։

Այլ քո զօրութեան ո՞ ընդդէմ դառնայցէ ինչպէս կը խօսի Ցովբ, զի դու դարձար ի բարկութենէ եւ իջէն սարսեցան կէտք, որք ի ներքոյ երկնից։

Դանիէլի տեսլեան փոքրիկ ու հրաշալի վէմ Ցիսուս, Բէթլէհէմի լեռնէն հատար. երեք տարի Սաղիմայ աշխարհին մէջ գլորելով գլորելով հասար մինչեւ գերեզմանին վիհը։ Եւ արդ գերեզմանէն կը գլորիս մինչեւ Սանդարամետին աշխարհ, մինչեւ ի ներքին արգելական բանտն, մինչեւ գերեալ հոգիներուն երկաթէ գնդան. եւ մինչեւ անդ հասար դու՝ մեծացար լեռնացար, ինչպէս հիւսիս ձիւնակոյտ, ուժգնակի թափով զարկիր քանդեցիր հին Երիքովի դռները ու պարիսպները։ Խաւարին իշխանը սարսափեցաւ թէ ո՛վ է այս ահաւոր գունդը, որ վեց հազար տարուան շինածս, յաւիտենական ամրութիւններս քանդեց, աւերակ դարձուց։

Գեղեհոնի դարեղէն փոքրիկ նկանակն ես. Տէր, դու գայն, դիտեմ մարդեղութեամբդ կազմեցիր բանդ ի մարմին փոխելով ու չարչարուելով ելար Գողգոթային գլուխ. եւ ահաւասիկ անտի աշխարհադղորդ չարժմամբ հոլովելով կը յարձակիս Մատիանացւոց բանակին վերայ. ՍՈՒՐ ՏԵԱՌՆ ԵՒ ԳԵԴԵՀՈՆԻ, գոչելով՝ կը զարնես եւ բովանդակ խաւարազունդըն Մատիամու կը փշրէն կը ջախջախէն զօրաւոր նկանակիդ առաջ։

Ինչպէս առակով ցոյց տուիր, Ցիսուս, արդ գնացիր մըտար հզօրին տունը, արդ կապէ նախ այդ ապստամբ հզօրն. խաչիդ կռանով փշրէ դժոխոց դարբնին կուռ շղթաները, թող արձակուին ի լոյս գան, մահուան ծանր ստուերին տակ փակուած կալանաւոր հոգիները։

Ի լոյս ելէք ի լոյս, յազատութիւն ելէք, ո՛վ յաւիտենական կոճեղով ոտնակապեալ գերիներ. ձեր Փրկիչն եւ գերեդարձ հասաւ եւ դուք կը ճանաչէ՞ք զինքն։ Նշան կուտամ ձեզ, սրունքներ դեռ կարմիր են, խաչի հնձանը նոր կոխեց եւ եկաւ, մի կողին վերայ վիրաբաց նշան ունի, ձեռքեր եւ ոտքերը համակ ծակոտուած են բեւեռներէն. իւր յաղթական դրօշակը՝ խաչանշան փայտին վերայ պարզած յարեւն թաթաւեր է։ Սորա համար Մկրտիչն ասաց՝ թէ Աստուծոյ գառն է, այժմիկ քաղցած առիւծ դարձեր է եւ կը մռնչէ որսերը գըտնալու, Հօր բարկութեան կայծակն է, որ երկնքէն չեչտակի

*մինչեւ ի ներքին դժոխս կ՚իջնայ, որ պիտի զարնէ սատան թշնամւոյն գոռոզ գագաթէն եւ զայն տուչորէ եւ այրէ անշէջ կրակով։*

*Հուր էիր, Տէր, այլ Յովհաննու պէս մտար մեծ կիտին փորը՝ Դանիէլի ճարտարած խմորէ գունդն էիր, զոր քո Հայր ձգեց Բաբիլոնի մեծ վիշապին բերանը. տեսցուք, թէ կարո՞ղ է զԱստուածդ կլանել, ինչպէս մեղապարտ Ադամ։*

*Կէս գիշեր է, Տէր իմ, հերիք է որ Լոյսդ խաւար աշխարհին մէջ մնայ, չո՛ւտ արա աւարներդ ժողովէ. եւ պինդ կապէ մահուան բռնաւոր ոստիկան, որ այլ եւս մեր աշխարհը չաւարէ։ Եւ դու չտապաւ դուրս ել ի սանդարամետէն, արի՛ դարձեալ Յովսեփայ պարտէզը եւ քո գերեզմանդ եւս կենագործէ, խաչին վերայ մեռած ու թաղուած մարմինդ ա՛ռ, զոր քո հայր անապական պահեց եւ չի կրցաւ դժոխածին որդը կրծել զայն իր երկաթի ժանիքներով։*

*Արդ հագի՛ր վերստին անտխեղծ մարմնոյդ հանդերձ, որ Նոր փեսայութեանդ գեղեցիկ պատմուճանն է. ահաւասիկ լուսափայլ հրեշտակը՝ չիրմիդ կափարիչ վէմը ի բաց գլորեր է, նստեր է վրան. պահապան զինուորները զարհուրագին փռուեր են գետինը։ Վերջին փառաւորութեանդ ժամ հասաւ, Յիսուս, դու հնացեալ մարդոյն վերանորոգիչ ճարտարապետն ես, շինէ դարձեալ քակուած մարմնոյդ կենդանի տաճարը. երեք տիւ եւ երեք գիշերն անցաւ եւ լրացաւ քո պայմանին օրը։*



## ՅԻՍՈՒՍԻ ՅԱՐՈՒԹԻՒՆ ԵՒ ՅԱՂԹԱՆԱԿ ԽԱՉԻՆ

*Հրեշտակ դու, որ Բեթլէհէմի մսրէն Աստուածորդւոյն ծննդեան աւետիս տուիր, եւ արդ Յովսեփայ պարտիզի գերեզմանէն աւետիս տուր բոլոր աշխարհին. ՔՐԻՍՏՈՍ ՅԱՐԵԱ՛Ի Ի ՄԵՌԵԼՈՑ։*

*Հետ հրեշտակին դուք եւս տատրակ եւ սոխակ, որ Սողոմոնի փակեալ պարտիզին ծառաստանեայց վերայ կը ճխայք ու ճռուողէք՝ երգեցէք նորա սիրաբարբառ երգը. «Արի՛ եկ, գեղեցի՛կ իմ, աղաւնի՛ իմ, կատարեա՛լ իմ, քանզի ձմեռն է անց, անձրեւք անցին եւ գնացեալ մեկնեցան»։ Այո՛, անցաւ չարչարանաց ձմեռը, եկաւ հասաւ գարուն, թզենին ընձիւղեց բողբոջը, այգիները ծաղկեհոտը բուրեցին. զի ՔՐԻՍՏՈՍ ՅԱՐԵԱ՛Ի Ի ՄԵՌԵԼՈՑ։*

*Որչա՞փ հրաշալի ցորենահատ մի ես, ով կենդանի հաց Յիսուս. դու երեկ էր, որ Քո Հայր մշակ խաչիդ ակօսով վարեց Գողգոթային գլուխը եւ զքեզ ցանեց Յովսեփայ քարակոփ արտին մէջ, ուր ոչ ջուր կար, ոչ հող, ոչ նիւթ: Ջուր քո կողի կրկնակի աղբիւրն էր, նիւթ եւ պարարտ սերմն$ քո չարչարուած մարմին: Եւ դու ո՞րպէս վաղվաղակի բուսար բազմաճիւղ հասկերով, վեց հազար տարուան փտած մեռելոց հատիկները հետ քեզ բուսուցիր:*

*Մարդիկ թերահաւատ են, ո՛վ մեծագործ Տէր, միայն կը հաւատան թէ ցորենի հատիկները կը բուսնին. բայց մեռելոց մարմիններ չեն բուսնիր: Եւ ինչո՞ւ, չգիտեմ, անշունչ մարմինը կը բուսնի եւ շնչաւորը չի բուսնիր:*

*Այլ քո ճշմարիտ հաւատացեալներն այնպէս կը հաւատան ինչպէս կը քարոզէ Սուրբն Պօղոս. «Սերմանի մարմին շնչաւոր եւ յառնէ մարմին հոգեւոր:»*

*Յիշէ՛, Յի՛սուս, ընթրեաց իրիկունը, կը գոչէիր առ Հայրըդ. «Հա՛յր, փառաւորեա՛ զորդի քո. զի եւ որդի քո փառաւորեսցէ զքեզ»: Հնազանդ Մանուկ Հօր, դու քան զՀայրդ կանխեցիր, եւ խաչիդ յաղթանակով նախ դու փառաւորեցիր զՀայրդ. եւ ահաւասիկ Հայրդ առաւել եւս փառաւորեց զքեզ: Պահ մի զորդեակդ մատնեց մահուան ձեռք, այլ չթողուց քո անձն ի դժոխս. որ դու եւս մեղապարտ մարդոյն պէս ապականութիւն տեսնաս. զի դու սուրբ, անարատ եւ անմեղ էիր: Հոգիդ աւանդած ժամուն, աշխարհի իշխանն եկաւ խուզարկեց զքեզ եւ ոչինչ գտաւ: Եւ ո՛վ կարող եղաւ յանդիմանել ըզքեզ վասն մեղաց:*

*Սորա համար մեռելոց աշխարհին մէջ դու միայն ազատ ես. մահուան բուռն զօրութիւն ընկճեցաւ քո հզօր արդարութեան առաջ: Դու մտար 'ի գերեզման եւ ելար, գերեզման՝ անմահութիւն դարձաւ, հողին կեանք տուիր, ստուերն ի լոյս փոխեցաւ, գերեզմանի ապականիչ որդերը մեռան եւ քո պղպատէ ոտքը ջախջախեց դժոխքին խայթոցը. եւ դու մահուան սրտին վերայ կոխելով կը կանչես ուժգին. «Ո՞ւր է մահ, զօրութիւն քո, եւ ո՞ւր, դժոխք, խայթոց քո»:*

*Դաւիթ, զքնարդ ա՛ռ, լարերը՝ ներդաշնակ պնդէ, նուագէ քո տասնաղի երգը. դու ցնծա՛, ես էլ հետ քեզ կը ցնծամ. «Որպէս այն որ գտանէ աւար բազում:» Մեր հզօր աւարառուն գերողէն իւր աւարները դարձուց, իւր յաղթական կամարը՝*

գերեզմանին դուռն է․ եւ ահա դուրս կուգայ անտի, հսկայապէս կ՚ընթանայ․ ուստի հնչէ՛ յաղթողական փողդ․ «Զի յարեաւ Աստուած եւ ցրուեցան ամենայն թշնամիք նորա:»

Հող կերէք, դպիրք եւ փարիսեցիք, օձի եւ իժերու ժանտ ծնունդներ, ձեր կերակուրն այն է: Դուք կապեցիք զարդարըն, որ ձեզ դժպհի կը թուէր, որ ձեր գործոց հակառակ կը լինէր, ձեր կեղծաւորութիւնը կը յանդիմանէր, եւ դուք փորձ փորձեցիք զարդարն սպաննել եւ նորա յիշատակը երկրէն բառնալ․ տեսնալ այնուհետեւ թէ արդեօք երկնից այցելութիւնը պիտի պաշտպանէ՞ զայն․ որովհետեւ կը զայրանայիք երբ ոգին անարատ՝ զԱստուած իրեն Հայր կը կոչէր․ եւ այնպէս կը կարծէիք դուք թէ՝ հեզ եւ խոնարհ ոգին կը հպարտանայ, ինչպէս դուք անձնապանծ փարիսեցիքդ:

Փորձեցիք, տեսաք աւասիկ, եւ դարձեալ անհաւատ մընացիք, չարութիւնը զձեզ կուրացոյց: Անդիտութեա՞մբ արդեօք զփառաց Տէրն ի խաչ հանիք, խաչէն ի գերեզման դրիք, ձեր մատնութեան մատին մատանով կնքեցիք: Երկնից Հօր այցելութիւնն իւր Արդարոյն դատը պաշտպանեց, եւ չթողուց, որ Սուրբն՝ ապականութիւնը տեսնայ․ դուք երէկ թաղեցիք Նազովրեցին Յիսուս, եւ այսօր Աստուած՝ յաւիտենից կենդանի կոչեց եւ հանեց մահու գգերեզմանէն: Յուդայի աուիւծն արթնցաւ, եւ դուք նորա մռնչիւնէն ո՞ւր պիտի փախչիք:

Գերեզմանէն լոյս տեսնալով՝ շլացութեամբ կ՚ամօթահարիք դուք, մտածելով թէ մի գուցէ յետինն չար լինի քան զառաջինն: Ուստի բազում արծաթ գաղտ կը խթէք զօրականներուն ձեռք, եւ խրատ կուտաք որ սուտ կարկատելով համբաւ հանեն թէ․ «Աշակերտք նորա եկեալ ի գիշերի գողացան զնա, մինչ մեք ի քուն էաք»:

Այդ անճարակ Գալիլիացի ձկնորսնե՞ր գողացան, որ ձեր ահէն ամէնք փախեր մտեր էին Գեթսեմանի ձիթաստանեայց ծառերուն, ձորերուն, ծերպերուն մէջ եւ ղօղեր էին ինչպէս երկչոտ նապաստակը, որ անգութ որսականներէն հալածուելով կ՚երթայ բարձր լերանց քարերուն կ՚ապաստանի: Եւ դուք, չարահնար մատնիչներ, Վարդապետը խաչեցիք՝ այժմ խեղճ աշակերտները զրպարտե՞լ կ՚ուզէք եւ չէ՞ք ամաչեր:

Ցարուցեալ Տէր, մտերիմներդ անձկութեամբ եւ կարօտով քեզ կը մնան․ կը յիշեն ինչ որ ընթրեաց իրիկուն խօսեցար, «Փոքր մի, եւ ոչ եւս տեսանիցէք զիս, եւ ապա սակա-

ւիկ մի եւ տեսանիցէք զիս»։ Ցոյց տուր ուրեմն, քո սակաւիկըն միայն քառասուն օր. ցոյց տուր, որ սգաւորներդ մխիթարուին. ցոյց տուր, որ աչքով իսկ տեսնան քո ճշմարտապէս յարութիւնը. ցոյց տուր, որ սրտապնդւին եւ հաւատան քեզ. եւ դու գիտես, սրտագէտ Տէր, թէ որչա՞փ կը տատանի նոցա միտքը։

Կէս գիշեր էր, Տէր, գերեզմանէն ելար, չգիտեմ թէ՝ ո՞ւր կը շրջիս, արդեօք աւարնե՞րդ կը տեղաւորես, չէ քո ցիրուցան եղած փոքրիկ հօտը կ’որոնես։ Մերթ պարտիզին մէջ Մագդաղենացւոյն կ’երեւիս, եւ չես թողուր որ անձկաւէտ կինը ոտքդ համբուրէ։ Մերթ ի Գալիլիա կ’երթաս ժամադրեալ տեղին, ուր եղբայրներդ զքեզ տեսնալով՝ ուրախութեամբ եւ յուսով կը լեցուին։ Այլ երկբայեցան քու վրադ, մինչ տեսին փառաւորեալ մարմնոյդ կերպարանք, որ լոյս կ’արտափայլէր. այնպէս կարծեցին թէ՝ դու չես նմանիր այն հեզ եւ խոնարհ Յիսուսին, որ ղենջակ սփածանելով՝ անցեալ իրիկունը նստար եւ նոցա ոտքը լուացիր։ Իսկ Պետրոս, Յովհաննէս եւ Յակոբոս, որ ճառագայթող լոյսդ առ հաւատչեայ տեսեր էին Թափօրին գլուխը՝ նոքա չերկուացան. այլ գիտացին թէ դու նոյն հրաշափայլող լոյսն ես. հաւատացին քեզ ու հաստատեցին երկմիտ եղբայրները։

Մինչ դու քանիցս անգամ երեւցար աշակերտներուդ, տակաւին թերահաւատն Թովմաս զՔեզ չէր տեսեր. եղբայրներէն անջատուած՝ ո՛վ գիտէ թէ ո՞ւր կը դեգերէր առանձին։ Չգիտեմ Հրէից երկիւ՞ղէն էր, թէ զՔեզ գտնելու համար. եւ միթէ կ’երկնչէ՞ր, որ խրախոյս կը կարդար լքեալ ընկերներուն. Օ՛ն եկայք, որ մեք եւս մեր Վարդապետին հետը մեռնինք։

Մի նուագ՝ երբ նա եւս խմբին հետը փակուած էին ամէնքը առանձին տան մի մէջ, մտախոհ կը լինէին եւ կը պատմէին իրարու քո նորասքանչ յարութիւնը. դու յանկարծ փակուած դռնէն ներս մտար ու կացիր նոցա մէջ։ Հրաշքիդ կը հաւատամ, Տէր, դու որ կնքեալ գերեզմանէն եւ մահուան ստուերին ճնշող ծանրութենէն դուրս ելար, եւ որ լեռները կը հարթես, միթէ կարո՞ղ էր տան պատն եւ դուռն քո Թափանցիկ լուսախառն մարմնոյդ դէմ դնել։ Առ որ բնախօսն կը վարանի եւ կ’ուզէ քո մեծամեծ հրաշքները բնական օրէնքով լուծել, մինչ դու ’ի վեր քան զբնականն կը գործես. եւ կը սրտմտին մարդիկ թէ՝ ինչո՞ւ իրենց պէս չես գործեր։

Անուշ եւ աղուական ձայնովդ կանչեցիր. Թովմա՛ս, բե՛ր ձեռքիդ մատունքները, մխէ իմ խոցեալ կողը, տես աչքովդ ոտքիս ու ձեռքիս ծակոտուած բեւեռատեղերը, ու լաւ շօշափէ բոլոր վէրքերս եւ հաւատա, թէ ես ձեր խաչեալ վարդապետն եմ: Պարծեցար, Թովմաս, որ ինձ հետը մեռնէիր, չմեռար եւ գոնէ մինչեւ ի խաչ գայիր, ես միայն ինքնին մեռայ, ինքնին գնացի ի մահու տապան, ինքնին իջայ ներքին բանտըն, ինքնին գրաւեցի աւարներս, ինքնի ելայ գերեզմանէս եւ արդ կ'երեւիմ ձեզ, իսկապէս նոյն վարդապետն եմ, որ երեք տարի ամբողջ ձեզ հետ շրջելով՝ Կենաց բանը աւետարանեցի. կը հաւատա՞ս, Թովմաս, թէ ես նոյնն եմ. սոսկ աննիւթ ոգի մի չեմ, զի ոգին ոսկր եւ թանձր մարմին չունի:

Այժմիկ կը հաւատամ, Տէր, զՔեզ ձեռքովս շօշափեցի եւ քանի՞ նոր եւ թարմ են դեռ կարմրանիչ վէրքերդ, գիտես թէ նոր խաչուած՝ արիւն կը հոսեն: Մատներս կարմիր ներկեցաւ, վա՛չ, թող այս յիշատակ ձեռքիս վերայ մնայ, Տէր, քանի տեսնամ, յիշեմ թերահաւատութիւնս, աներկբայ հաւատամ Քեզ, երթամ մինչեւ ի Հնդիկ, քարոզեմ քո Աւետարան, պատմեմ քո սքանչելի գործերը, քո խաչ, քո մահ, քո փրկութիւն եւ փառաւորեալ յարութիւնդ:

Մինչ թերահաւատ Թովմաս տեսնալով եւ վէրքերդ մատնամուխ շօշափելով քեզ հաւատաց, Տէր, դու առաւել երանի՛ տուիր այն ամեն հաւատացեալ որդիներուդ, որք առանց զՔեզ տեսնալու լսելով միայն Աւետարանիդ ձայնին կը հաւատան:

Տակաւին Քեզ չհաւատացողներ կան, Յիսուս, որ քո մարդեղութեան եւ չարչարանաց վէրքերդ իրենց գիտութեան մատերով շօշափել եւ խորապէս զննել կ'ուզեն. կը տարակուսին ու կ'ասեն թէ՝ ինչպէ՞ս կարելի է հաւատալ, որ Աստուածորդի մի՝ մահկանացուի ձեռքէն վէրք ընդունի. եթէ ինքն անմահ է, լոյս է, անըմբռնելի է:

Այո՛, Տէր, դու թերահաւատէն միայն կը փախչիս, ճըշմարիտ հաւատացեալը՝ զքեզ շուտ կ'ըմբռնէ. եւ մենք կը հատամք քեզ ինչպէս Եսային կը քարոզէ. «Թէ նա վիրաւորեցաւ վասն մեղաց մերոց եւ պատժեցաւ վասն մերոյ անօրէնութեանց, խրատ խաղաղութեան մերոյ ի նմա եւ նորա վիրօքն բժշկեցաք:»

Զգիտեմ, Տէր, Պետրո՞սն եւս Թովմասին նման մերթ կը թերահաւատէր. եւ դեռ ուրացութենէն բժշկուած չէ՞ր արդ-

եօք· երբէկ տեսաւ քո նորահրաշ յարութիւնը, մոռացաւ առաքելութեան պաշտօնը՝ գնաց ձուկ որսալ, կարծեց թէ առանց քեզ ձկներն իրեն կը հնազանդին· գողջոյն գիշեր տքնեցաւ եւ ոչինչ կալաւ։ Եւ դու յանկարծ Տիբերական ծովուն եզերքը իջար, Պետրոսին եւ որսակիցներուն ուռկանը մեծամեծ ձկներով լցուցիր։ Իբր յանդէտս կը հարցնէիր, մանկունք, ունի՞ք ինչ ուտելու։ Քո որսական մանուկները ծովէն ելան, տեսան աւազափին վերայ հրաշավառ կրակը եւ ձկները վրան խորոված պատրաստ։

Նստար ու ճաշեցիր մանուկներու հետը, եւ խիստ ախորժանօք կերար այս վերջին ճաշը, որ յարուցեալ փեսայիդ հարսանեաց ճաշն էր· ձկնասէր մանուկները լուռ ու պատկառանօք կերան քեզ հետ այս ճաշն, եւ հաւատացին թէ դու Տէրն ես, որ ընթրեաց երեկուն հետ իրենց Զատկական Գառն կերար։

Յետ ճաշին՝ մտերմաբար կը հարցնէիր դու· Պե՛տրէ, կը սիրե՞ս զիս· եւ նա կը պատասխանէր թէ՝ կը սիրեմ· եւ մինչ դու երեք անգամ կրկնեցիր սիրաբան հարցումներդ, Պետրոսին դժուար եկաւ· Տէ՛ր, ասաց· դու ամեն բան գիտես ու սրտագէտ ես։ Այո՛, առաւել կը սիրեմ զքեզ։ Ուրեմն, Պետրէ, կրկնեցիր նոյն բան, Արածէ՛ իմ հաւատացեալ գառները։

Ո՛վ սքանչելի սէր եւ սիրոյ բժիշկ· Պետրոսի երեք ուրացութեանց վէրքը՝ սիրոյդ ամենադեղ քաղցր սպեղանիով բժշկեցիր, եւ որ ուրացութեամբ զրկուած էր Առաքելական պաշտօնէն, սէրը՝ երաշխաւոր առիր, եւ ներելովդ՝ կրկին յանձնեցիր նմա Աւետարանին տնտեսութեան պաշտօնը։ Այլ Պետրոսի պանծացող գահակալները, այնպէս կարծեցին թէ՝ դու միայն Պետրոսի ձեռքը անսահման իշխանութեան գաւազան մի տուիր, որ նա ի Հռոմ նստի իբրեւ աշխարհակալ մի, տիրապետէ քո ազատ հօտին, եւ իւր հաւասար եղբայրները ճնշէ ու զրկէ։ Քա՛ւ թէ դու այնպէս կամեցար, քաւ թէ Պետրոսն այնպէս հասկցաւ եւ կամ իւր առաքելութեան պաշտօնին մէջ այնպէս վարուեցաւ։ Այս տիրապետութեան հոգին աշխարհինն է, եւ քո հեզ հոգին չէ, Յիսուս։

## ՅԻՍՈՒՍ Ի ԼԵԱՌՆ ՁԻԹԵՆԵԱՑ

Փրկագործ տնօրէնութեանդ խորհուրդներն աւարտեցան, Յիսուս Փրկիչ· ինչ որ Հօր կամքն էր՝ զայն լիովին կատարեց հնազանդ որդիդ։ Այլ եւս ի՞նչ մնաց քեզ· բանն էիր՝ մարմին

եղար, երեք տարի մարդկանց հետը իբրեւ որդի մարդոյ շըր-ջեցար, Աւետարանիդ կենաց բանը քարոզեցիր, սէր շնչեցիր, խաղաղութիւն տուիր, խաչին զոհ կատարեցիր, անպարտ մե-ռար, պարտաւորները ազատեցիր, մահուան աշխարհը մտար, մահը մեռուցիր, յաղթութիւն տարիր, ուստի կը գոչես. «Քա-ջալերացարո՛ւք, զի ես յաղթեցի աշխարհի»:

Այլ եւս տակաւին մնա՞ց քեզ գործ, Տէր, դարձեալ հին Սիոնի լեռան վերայ եկեղեցւոյդ հիմը դրիր: Աշխարհամատ-րան զաւիթն աւելի եւս ընդարձակեցիր, որպէս զի ոչ միայն Իսրայէլի տան կորուսած ոչխարները, այլ եւ հանուր աշխար-հէն հաւատացեալ հօտերը ժողովելով՝ հոն մակաղես, եւ մի հովուիդ համար մի հօտ կազմես. եւ այնպէս կը կամիս դու, որ մարդիկ միակրօն լինին, մի տաճարի մէջ հոգւով եւ ճշմար-տութեամբ զԱստուած պաշտեն:

Այսպէս աւարտեցիր Աստուծոյ իմանալի քաղաքն, ո՛վ ի-մաստուն ճարտարապետ, հիմն երկրիս վերայ դրիր, գմբէթը մինչեւ երկինքը բարձրացուցիր. եւ դու միայն միջնորմն ե-ղար. երկիրը՝ երկնից հետը, մարդիկը՝ Աստուծոյ հետը, մահկանացուք՝ անմահութեան հետզ՝ սերտ եւ պինդ կապե-ցիր, եւ դու միայն հատեր մահուն երկաթէ կապանքը, որ վեց հազար տարի զմարդիկ եւ զհոգիները դժոխոց աշխարհին հե-տը կապեց:

Ամենայն ինչ վճարեցաւ, Տէ՛ր, այլ եւս աշխարհիս մէջ մարմնոյդ գործակցութեամբ բան չունիս: Ուստի ա՛ռ ձեռնա-սուններդ, Ձիթենեաց լեռը ելիր, խաչատարած ձեռներդ համ-բա՛րձ, օրհնէ՛ փոքրիկ հօտդ, տեառնագրէ զեկեղեցին եւ բո-վանդակ աշխարհ. խօսի՛ր կրկին՝ ինչ որ պատուէր ունիս, տուր վերջին հրաժեշտը:

Եւ ի՞նչ են քո տիրախօս պատուէրները՝ Աւետարանիչ ծառաներուդ. երթալ յաշխարհ ամենայն, քարոզել քո կենաց բանը. ուսուցանել՝ ինչ որ պատուիրեցիր հրաւիրակ Առաք-եալներուդ. պահել քո Աւետարան, որ ստրկացեալ հոգինե-րուն ազատութիւն է. պահել քո հաւատ, որ եկեղեցւոյ որդի-ներուն փրկութիւն է. պահել քո սիրոյդ զօդ, որով անջատ-եալ եւ թշնամացեալ մարդիկ իրարու հետ կապելով ասացիր. «ԴՈՒՔ ԵՂԲԱՅՐ ԷՔ»:

Ո՛վ սքանչելի յեղաշրջող սիրոյդ. առիւծն անտառէն լսեց քո սիրոյ ձայն՝ եզան հետը խոտ կերաւ. գայլը լսեց եւ գառին հետ ճարակեց: Այո՛ միայն քո սէր եւ խաղաղութիւնը՝

*մեր բարբարոս աշխարհ ոսկեդար դարձուց:*

*Մեկնելուդ ժամն եհաս, վերացի՛ր, Յիսուս: Ո՛վ, քանի՞ թեթեւ դէպ ի վեր կը սլանաս. երկրածին չես դու, մեղք չունիս, որ կապարի նման ծանրանայ, զքեզ վայրաքարշ առնէ: Ո՛վ անըմբռնելի Բան, դու ի Նազարէթ իբրեւ թեթեւ մեղմացօղ գեղման վերայ իջար, եւ արդ ըմբռնելի թանձր մարմնով յերկինս կը վերանաս. մէկ ուսիդ վերայ մոլորեալ ոչխարը դրեր ես, միւսին վերայ՝ յաղթական դրօշակդ. ձեռքիդ մէջ պինդ խփեր ես կորուսեալ դրամն. ոտքէդ կախուեր են աւարեալ հոգիները. եւ ո՞ւր կը տանիս այդ ամէն չնաշխարհիկ պարգեւները. այս աշխարհէն կը տանիս եւ Հօ՞րդ կ՚ընծայես:*

*Ո՞ւր ես, Դաւիթ, հովուական փողդ ա՛ռ անցի՛ր Յաղթականին առաջը, հնչէ՛ անոյշ, թող ազատեալ հոգիները հըրճուին. հնչէ՛ զօրութեամբ, թող բարապան հրեշտակները՝ Երկնից դռներուն փեղկերը լայն բանան, որ փառաց Թագաւորը իւր աւարներով հանդերձ համարձակ ներս մտնէ:*

*Իբրեւ անծանօթ եւ նորանշան մարդ կը տեսնաք եւ որպէս անգիտակ զարմանալով կը հարցնէք իրարմէ. ո՛վ է սա, որ աշխարհի մարդ կը նմանի եւ դէպ յերկինս կուգայ. ձորձերն ամբողջ բոսորագեղ կարմրացած են. կը թուի թէ պատերազմի դաշտէն ելած է. բուռն զօրութեամբ կուգայ. գիտես թէ երկնից տէրն է եւ արդարութեամբ բարձրացեալ իրաւունք ունի, միայնակ չէ, բազում աւարները առեր է հետ. ուստի՛ աւարեր է եւ ո՞ւր կը տանի, չգիտեմք:*

*Հրեշտակները միթէ քո մարդկութեան խորհրդոյն խորհրդազգած չէի՞ն, որ իբրեւ անգէտ կը հարցնեն եւ դու պատասխան կուտաս եւ կը ճառես: Ես երկնից Արդարութիւնն եմ, որ գնացի աշխարհի իշխանին հետ դատաստան տեսայ: Ես յաւիտենական Բանն եմ, որ մարմին զգեցայ, որպէս զի մարդիկները հետ Աստուծոյ միացնեմ: Ես Հօր փառաց ու երեւաց լոյսն եմ, որ գնացի աշխարհը լուսաւորել եւ մահուան ստուերէն ազատել խաւարակալ հոգիները: Ես Հօր յաւէտածին մանուկն եմ, գնացի աշխարհին աւետարանել. միայն մանուկները ընդունեցին եւ սիրեցին զիս: Ես Գողգոթայի խաչին հնձանահարն եմ, սրտմտեցայ և մարդեղութեանս ոտքով ելայ սատան իշխանին վերայ, կոխեցի ճմլեցի եւ իջուցի զինքն մինչեւ յանդունդս: Ես Աստուծոյ հեզ գառն եմ, որ զոհուեցայ Գողգոթայի սեղանին վերայ, արիւնովս քաւեցի աշխար-*

հին մեղք եւ արդ իբրեւ մի միայն Նոր ուխտին Քահանայապետ, պէտք է երթամ մտնեմ ի ներքին կողմն վարագուրին․

Մտար ի ներքին կողմն վարագուրին, Յիսուս, եւ կը խօսիս առ Հայրդ, պատարագներդ կը մատուցանես։ Հայր իմ, ահաւասիկ քո կամք կատարեցի, խաչին բաժակը յօժարակամ խմեցի, հրամանիդ՝ մահու չափ հնազանդեցայ, երեք տարի քո կամք եւ ճշմարտութիւն քարոզեցի։ Դու կամեցար որ Աւետարանը՝ տղայոց տամ, այնպէս արարի, երկրին մէջ թափառեցայ մեր մոլորած ոչխարը գտնելու համար, վա՜չ, Բեթելայ սարին գլուխ գտի զայն, որ նա եւս բառաչելով իւր հովիւը կը խնդրէր, հոն գտի նաեւ հողերուն մէջ կորսուած դըրամն, բայց քանի՜ ժանգոտած էր եւ տիրական կնիքն բոլորովին եղծուած։ Ես զայն զոհիս արիւնով սրբեցի, քո տիրական կնիքն վերստին փայլեցուցի։ Ահաւասիկ Քեզ կը մատուցանեմ, ա՛ռ եւ դիր արքայութեանդ գանձարանը։ Ձեռքդ տուր թող համբուրէ քո մոլորեալ ոչխարը՝ անառակ որդին, գրկէ համբուրէ զինքն, հրաման տուր թող տան իւր որդիական իրաւանց մատանին, թող հագուցանեն զպատմուճանն եւ զկօշիկս։ Այսչափ էր, Հայր, քո կամք եւ կատարեցի։

Նիստ ընդ աջմէ իմմէ, սիրելի Որդեակ իմ։ Ո՜հ, քանի՜ խոնջած ես, աշխարհին հետ կռուեցա՞ր, խաչի դաշտէ՞ն կուգաս։ Ապիրատ Յակովբ իմ հացը կերաւ, զքեզ անկուչեց եւ խաչեց իսկ։ Բե՛ր համբուրեմ վէրքերդ, հզօր որդեակ իմ, տամ քո մրցանակ․ Անուն մի, որ ի վեր է քան զամէն անուն, բոլոր թշնամիներդ ոտքիդ պատուանդան պիտի դնեմ, խաչիդ ու գերեզմանիդ փոխարէն մեծամեծ չարիքները պիտի բերեմ ապերախտ Երուսաղէմին վերայ․ որ զքեզ մերժեց ու չը ճանչցաւ քո այցելութեան ժամանակը։ Դու գնացիր, որ իմ տնկած ու դարմանած այգիէն պտուղ պահանջէիր, անիրաւ մշակները զքեզ սպանին, որպէս զի քո հօրենական ժառանգութիւնը յափշտակեն։ Տե՛ս դու, ես այդ չարերը՝ չարերով պիտի կորուսանեմ եւ կատարեմ քո առակին բանն։ Սիօնի վերնատուն քո անձկութեան եւ տագնապին օրը կը գոչէիր ուժգին․ «Հայր, փառաւորեա զորդի քո»– Ես զքեզ փառաւորեցի, հեզ Որդեակ իմ, մինչ դու Յովնանու պէս մահուդ ծովէն մինչեւ յանդունդըս իջար․ ես չթողի որ դժոխք եւ մեծ կէտն զքեզ կլանէ․ դու բնաւ ապականութիւն չտեսար եւ ես յարուցի զքեզ ու փառաւորեցի քո խաչ եւ քո մահը։ Եւ այժմ կը փառաւորեմ զքեզ նոյն փառօք, որ աշխարհիս լինելութենէն յառաջ ընդ իս փառա-

ւորուած էիր. զի դու բովանդակ արարածոց Անդրանիկն ես. ու ես քեզմով բովանդակեցի զաշխարհ։

Իսկ դուք, դեռ պշուցեալ դէպ ի վեր կը հայիք, որբացեա՛լ աշակերտները. ամպն եկաւ ձեր աչքէն տարաւ զՅիսուս Վարդապետն. նա գնաց մտաւ յերկինս, անցաւ ի ներքին կողմն անձեռագործ խորանին։

Այլ մի՛ վարանիք, նա զձեզ որբ չի թողուր ինչպէս խոստեցաւ։ Ահա լուսազգեաց հրեշտակ մի ձեզ աւետիս կուտայ. «Արք Գալիլեացիք, զի՞ կայք հայեցեալ ընդ յերկինս։ Այս Յիսուս որ վերացաւ ի ձէնջ սոյնպէս եկեսցէ, զոր օրինակ տեսիք զնա երթալ յերկինս։»

Դարձէք ձիթաստանեայց լեռնէն, դարձէք գնացէք Սիոնի վերնատունը. նստէք հոգացէք, խաչերը պատրաստեցէք, Աւետարանի դասերը սերտեցէք եւ պահ մի եւս սպասեցէք անդ մինչ հոգին զգենուք, հոգւով զինուորիք, ձեր ծանրախօս լեզուները բացուին, դուք իւրաքանչիւր անցուպ, անմախաղ, մերկամարմին ոտքով աշխարհիս տատաստափշեր, օձեր եւ կարիճներ պիտի կոխէք եւ անցնիք։ Դուք Աւետարանի անմահ մշակներն էք, ձեր վարձքը երկնից մէջն է, իսկ այս աշխարհիս վերայ, ձեր բաժինն է միայն խաչակրութիւն եւ մահ։

Ահաւասիկ, փառաւորեալդ իմ Յիսուս, Քո Վերջի շաբաթ, Խաչիդ ճառ եւ Յաղթական Յարութիւնդ աւարտեցի։ Սիոնի վերնատունէն սկսեալ տարի հասուցի մինչեւ երկնից անմատոյց խորանն ի վերին Սիոն ուր ամէն խաչակրաց ազատավայրն է, եւ ուր չը կարեն հասնիլ երկրիս հալածչաց ձեռք։

Այլ եւս կմնայ ինձ, Տէր, գրել ու համառօտել՝ անկրօն կորուսելոց համար, որոց առաջը քո Խաչի ճառը՝ յիմարութիւն կը համարուի, հաւատք՝ խաղ, կրօն՝ աւելորդ, եւ եկեղեցին՝ խուժանաց ժողովը։ Սոքա հետեւող զաւակներ են այն հին հեթանոսութեան դարուն կարծեցեալ իմաստնոց, որոց համար կը ճառէ քո ծառայն Պօղոս թէ՝ «Զանձինս առ իմաստունս ունէին՝ յիմարացան։»

Տէր, դու աշխարհիս յաղթեցիր ու թողիր գնացիր աշխարհէն, այլ աշխարհը տակաւին քո դէմը կը մարտնչի, եւ երբ ձեռնհաս չէ զքեզ ըմբռնել եւ վերստին խաչել՝ զԱւետարանդ կը հալածէ եւ քո հաւատարիմ ծառաները կը ծաղրէ։ Այս կռիւ եւ գայթակղութիւն պիտի տեւէ մինչեւ ի կատարած աշխարհի. զի քո անյեղլի վճիռն է «Ոչ է մարթ չգալ գայթակղութեան։»

Ուստի աշխարհամարտ հանդէս մի կը բացուի, կռիւն ու պայքարը կը շարունակի: Աշխարհ քո դէմը կը զինի, մամոնան՝ Աստուծոյ եւ նորա Նախախնամութեան դէմը: Թող կռուին, թող զինին, թող զարնուին, Տէր իմ, դու անշարժ վէմ ես՝ զամէն կը փշրես:

---

# ՀԱՆԴԷՍ ԱՇԽԱՐՀԱՄԱՐՏ

---

## ԱՇԽԱՐՀ ՅԻՍՈՒՍԻՆ ԴԷՄ

ԵՐԿՆԻՑ Հօր մանուկ Յիսուս, աշխարհ այն օրէն քո դէմ մարտ հրատարակեց, երբ քո պայծառ աստղ յարեւելս փայլեցաւ. դու Իսրայէլի տան արքայ ծնար, Հերովդէս լսեց ոխացաւ: Բեթլէհէմի նորածին մանուկները քո. զինուորներն էին նոքա կաթն ի բերան մարց գրկերու մէջ կոտորեցան բռնաւորին սրոյն դէմ. չգիտեմ ինչպէ՞ս ժուժեցիր, ո՛վ դու Սինայի ահաւոր եւ գթած Աստուած, ուր կը պատուիրէիր չզենուլ զգառն ի կաթն մօր: Այո՛, իրաւունք էր, թող քեզ համար զոհուէին մատաղերամ գառները, եւ ի՞նչ տրիտուր էր այս՝ Աստուծոյ անմեղ գառինդ, որ հանդերձեալ էիր, աշխարհի մեղք բառնալ:

Ես չգիտեմ, դու ո՛վ անյայտ յոյս, մարմնոյն թանձրութեան մէջ ծածկուած, երեսուն տարի ամբողջ Նազարէթի հայրենեաց մէջ իբրեւ հիւսան որդի կարծուելով՝ կ'աճէիր ու կը զարգանայիր, գեղացի մանուկներու հետ կը խաղայիր. արդեօք նոքա եւ իրենց հայրերուն պէս քեզ հետ կռուեցա՞ն: Ո՛չ, դու աննենգ մանուկները՝ քո մանկութենէն ճանչցար ու միշտ սիրեցիր զիրենք. պարզամիտ մանուկները քո դէմ դատ ու բողոք չբարձին. եւ ոչ քո խաչի մատնութեան օրը՝ մատնտու եղան: Այլ քո դէմը՝ տաճարի վարդապետները նախանձելով կը վիճէին մինչ դու տասներկու տարուան պատանի էիր, անուս, անդպրոց, անվարժապետ կը յաղթահարէիր օրինաց վարդապետները:

Որ սիրահար էիր մարդոյն փրկութեան, Յիսուս Տէր, արդեօք ծա՞նր թէ թեթե՛ւ անցաւ երեսուն տարուան կենացդ շրջան եւ այն ինչ կ'սպասէիր, դու Գալիլեայի բարձունքէն կը դիտէիր, եւ երբ տեսար քո յառաջընթաց ծառան Յովհաննէս յանապատէն Յորդանան կ'իջնար՝ եռեւէն հասար. քեզ կ'սպա-

սէր Յորդանանու յորձանաց մէջ բունեալ հին վիշապն, որ փըրշալով զքեզ կլանել կ'ուզէր․ դու խոնարհ ոտիւքդ ջախջախեցիր նորա գլուխը եւ Յորդանանը գրաւելով՝ տիրեցիր Ովկիանոսին։

Հին սատան Թշնամին փորձութեան լեռան գլուխ զքեզ գըտաւ, տեսաւ թէ ի պահոց ուժաթափ եղեր ես, ասաց, թէ կարեմ յաղթել՝ կարծելով թէ դրախտի տկար Ադամն ես։ Անդ սուտ խօսելով խաբեց թէ Աստուած կը լինիք, սուտ կը խոստանար աշխարհ իւր փառքով զքեզ շնորհ տալ, միայն թէ խոնարհիս նորա հպարտութեան առաջ երկրպագանել։ Դու անդէն սաստեցիր անբարտաւան ոգւոյն, որ յետս երթայ կորնչի․ ուր յառաջ քան զԳողգոթայի խաչն՝ առաջին յաղթանակը՝ փորձութեան լեռան վերայ կանգնեցիր։

Հզօր մարտադիր Յիսուս, Բեթլեհէմի մսրէն, Յորդանանու եզերքէն, փորձութեան լեռնէն աշխարհի իշխան իւր ճակատամարտն՝ քո դէմն սկսեց Սատան․ Հերովդէս, իշխանք Հրէից դպիրք, փարիսեցիք, օրինաց վարդապետք, քահանայապետք․ այս ամէն համախումբ բանակ կազմեցին, դու միայնակ էիր․ երեք տարի շարունակ կռուելով հալածելով՝ վարեցին տարին հասուցին զքեզ մինչեւ Բեթելին գլուխ․ ուր քո կեանքը բարձին անարգանաց խաչով, մահուան գերեզմանին մէջ դրին, ծանր քարով ծածկեցին գլոյդ անծածկոյթ․ որպէս զի քո ճշմարտութիւնը քարին տակը ճնշեն։ Այլ դու իբրեւ հըզօր երեք օրէն յետոյ Թափեցիր մահուանդ գինին ու բաժակը․ տեսաւ զքեզ Մահն ու սարսափեցաւ եւ Թաւալեցաւ ոտքիդ տակ։

Յիսուս փրկիչ աշխարհի, դու լոյս յաշխարհ եկիր․ աշխարհ եւ խաւար քո դէմ պատերազմ ելաւ․ դու կեանք բերիր, աշխարհ մահ դրկեց ու զինեցաւ քո դէմ․ դու սուրբ հոգի շընչեցիր, մարդիկ մարմին դարձան ու նուաճեցին իշխանական ոգին․ դու Աւետարան եւ ազատութիւն քարոզեցիր, աշխարհ եւ իւր բռնակալները ոխացան քո դէմ եւ դեռ կը ոխան․ դու սէր, ընկերսիրութիւն ուսուցիր, աշխարհ իւր զրկիչներով քո աղքատ որդիները կը հարստահարէ․ դու երկնից արքայութիւն խոստացար, աշխարհ իւր որդիները կը համոզէ․ թէ ձեր արքայութիւն, ձեր կեանք, ձեր վայելք եւ երջանկութիւնն ես եմ․ այս աշխարհէն զատ ձեզ համար ուրիշ աշխարհ մի չկայ։

Տէր, դու երկնքէն իջար, քո մեծ խորհուրդ եւ Հօր կամ-

քըն այն էր, որ մարդիկ երկինք տանիս, քո Աւետարան հրաւէր կը կարդայ իւր մտերիմ որդիներուն․ թէ «Դուք այս աշխարհէն չէք։» Իսկ աշխարհասէր ոգիները, քեզ չեն հաւատար․ կարծելով թէ՝ քան զայս այլ գերագոյն աշխարհ մի չունիս, եւ քո բան այպանելով կ՚արհամարհեն եւ կը խօսին այսպէս․ «Ո՛չ, մեք այս աշխարհէն ենք, ու մեր կեանքը աշխարհն է․ երկնից արքայութիւն, հոգւոյ անմահութիւն, յաւերժական փառք, մեզ համար զառանցանք է․ մենք շնչաւոր հող ենք ինչպէս ամէն կենդանիք․ պէտք է մեռնինք ինչպէս կը մեռնին անասունք․ մեր վերջին դադար հողն է․ մարդ երկրէն ելած է, յերկիր պիտի դառնայ անդրէն․ զի այս է միայն մարդոյն վախճանը եւ ուրիշ ոչինչ․ Թող որչափ կ՚ուզէ աղաղակէ Պօղոս թէ՝ «Մեր քաղաքականութիւն յերկինս է»։

Այո՛, ձեր ընդունայն յոյս ու հաւատք այդ է, թող այնպէս լինի ձեզ հետ թէ այդ իսկ է երկրաքարշ մարդոց վախճանը․ դուք աշխարհը կը սիրէք, աշխարհ զձեզ կը սիրէ․ մեք գիտենք ի սկզբանէ անտի, որ աշխարհը հաւատացեալները կը մերժէ եւ զձեզ կը դրկէ։ Գնացէք ի հող, ձեր կեանք, ձեր յոյս մինչեւ հոն է․ դուք ոչ երկինք եւ ոչ Աստուծոյ ընտրեալներուն հետ բաժին ունիք․ ձեր վերջի բաժին հողն ու գերեզմանն է․ ուր միայն պէտք է կարդացուին ձեր անուանք, երկնից ու կենաց դպրութեան մէջ՝ ձեր յիշատակ ջնջուած է։

Տէր իմ, դու երանի տուիր, որ մարդիկ չգայթակղին, տեսնալով աշխարհի մէջ քո անօրինակ կեանք։ Դու գիտես իսկ, թէ աշխարհի զինակալաց պէս մեռցնելով չյաղթեցիր, այլ մեռնելով․ քո զէնքն էր՝ անարգանաց խաչ, արիւն ու մահ․ սորա համար իսկ չհաւատալով կը խօսին․ «Եթէ Յիսուս ճշմարիտ Աստուած էր․ ուրեմն նա հզօր էր եւ անմահ, ո՛վ կարող է հաւատալ՝ թէ հզօրն այսչափ նկուն կը դառնայ․ երկինքէն մինչեւ ի գետին կը խոնարհի․ տիեզերաց սանձ կրող զօրութիւնն, խաչի ծանրութեան տակ կ՚հեծէ, եւ կամ ապաշնորհ մարդոյն համար կը մեռնի՞ արարիչ Աստուած։»

Վա՜յ ձեր ամօթահա՛ր իմաստութեան, յայտ իսկ է ահա, որ Խաչի ճառի անհաս խորհրդոյն վերայ դուք կորուսեալքդ՝ կը յիմարանայք եւ յիմարները՝ կ՚իմաստնանան հաւատով․ դուք խաչին ճառը ծաղր եւ անարգութիւն կը համարիք․ Պօղոս զայն Աստուծոյ իմաստութիւն եւ զօրութիւն կը կոչէ եւ ինքն եւս Խաչի ճառին համար հիանալով կ՚աղաղակէ․ «Ով խորք մեծութեան Աստուծոյ, որպէ՜սզի անքննելի են գործք

*նորա»։ Դաւիթն եւս թերեւս ձեզ համար խօսեցաւ, թէ «Այր անզգամ գայս ոչ ծանիցէ եւ անմիտն գայս ոչ առնու ի միտ»։*

*Իջէ՛ք ձեր հպարտութենէն ո՛վ դուք աշխարհիս մեծամիտներ, ձեր գիտութեան մէջ անմիտ խորհուրդ մի՛ լինիք· տարէ՛ք ձեր հանճար, ձեր փիլիսոփայութիւնը դրէք խաչին տակ ու հաւատացէք թէ Աստուծոյ մեծ խորհուրդը հեռի է ձեր թիւր եւ անձուկ խորհուրդէն ինչպէս երկինք երկրէն· գիտցէ՛ք Աստուած՝ մարդոյն խելքով ու խորհրդով չի գործեր, եւ դուք ո՞ւր էիք մինչ նա երկրիս հիմունք կը դնէր· դուք գայն ձեզ խորհրդակի՞ց կը կարծէք, դուք նոր Պղատոններ, զԱստուած ձեր գիտութեանց ճեմարանին կաճառո՞րդ կը համարիք։*

*Ես գիտութիւն չեմ մերժեր· եւ կը մերժեմ երբ մարդիկ առանց Աստուծոյ, առանց երկիւղի իմաստասիրել կ՚ուզեն, ու կը պարծին յանձինս։ Ո՞վ են այդ պանծացող գիտունք, խորին փիլիսոփայք· որ Կաթուղիկէ եկեղեցւոյ գմբէթին բարձրութիւն, Մկրտարան աւազանին խորհուրդ եւ խորութիւն, նոր Սիոնի տիեզերական տաճարին լայնութիւն եւ երկայնութիւն՝ չգիտեն ու չկամին չափել, կաթիլ մի ջրով դուզնաքեայ գիտութեան, մոլորեալք զմոլորակս կը հետազօտեն· երանի՛ թէ միայն զԱստուած գտնէին տեսնելով նորա մատանց հրաշարուեստ գործքերը։*

*Առէք միանգամ դուք հաւատոյ կարկին ձեր ձեռք· գնացէք յԵրուսաղէմ, կացէք Սիոնի լեռան վերայ· դուք համայն աշխարհագունդ չափեցիք, ծովն ու ցամաք չափեցիք· չափեցէք նաեւ մարդացեալ Աստուածորդւոյն սիրոյն եւ խոնարհութեան Բեթլեհէմի այրին մսուրը· չափեցէք անտի մինչեւ Գողգոթայի գլուխ· պարզ եւ ուղիղ մտօք չափեցէք եւ կը գտնէք յայնժամ խաչի ճառին եւ Յիսուսի փրկութեան անսահման ասպարէզը· որ այն ինքն է ճանապարհ, ճշմարտութիւն եւ կեանք։*

*Ես չգիտեմ, թէ Յիսուսէն, խաչէն եւ խաչի ճառէն՝ ինչո՞ւ համար կը խուսափիք· միթէ կը կարծէ՞ք թէ խաչին ճառը՝ չարչարանք եւ թշուառութիւնը բերաւ այս աշխարհը։ Ո՛չ, ո՛չ, մի՛ զրպարտէք, Մովսէս իւր օրէնքով, Յիսուս իւր Աւետարանով թշուառութիւնը չբերին աշխարհ· այլ նոքա կեանք եւ երջանկութիւն բերին։ Յիշեցէք դուք, ապուշ մի՛ լինիք· յիշեցէ՞ք, մի՛ մոռնայք ձեր նախնի կռամոլութեան վիճակը։ Դուք ի՞նչ էիք հազար ութ հարիւր տարի առաջ· կարդացէք ձեր հեթանոսական պատմութիւնը եւ ամաչեցէք· համեմատե-*

ցէք անցեալ կեանք այժմոյս հետը, եւ պիտի տեսնաք թէ քրիստոնէութիւն եւ Խաչին ճառը միայն այս աշխարհ յեղաշրջեց ի լաւագոյն կեանս: Ապա թէ ոչ՝ Հնդիկք եւ Չինացիք քան զձեզ երջանիկ են, եւ դուք այսօր Թշուառ կը համարիք զիրենք:

Անհաւան, ապերախտ մի լինիք, դուք այսօր ի շնորհս խաչին երջանկութիւն կը վայելէք եւ Յակովբայ ապաշնորհ որդւոց պէս գիրանալով՝ կ'անգուշէ՞ք սիրելի Խաչեալը· դուք տակաւին կամակորելով կը Թերահաւատիք եւ գիտութեամբ կը մեղանչէք, ու ճանչնալ չէք ուզեր Աւետարանին եւ խաչին մեծագործութիւնը: Աւետարան, սէր եւ հոգի շնչեց, մեռած աշխարհ կենդանացաւ· Աւետարան, ազատութիւն աւետեց, բռնակալաց բազուկներ Թուլցան, ստրկացած ոգիները՝ գերութեան շղթան Թօթափեցին: Ո՛վ ասաց ձեզ թէ Թշուառութիւն բերաւ աշխարհ· Թշուառութիւնը՝ Խաչի ծառի պտուղ չէ, երկնիք արգասիք չէ· զի երկինք բարութեան անձրեւ եւ արեւ կը ծագէ· Թշուառութիւն՝ չար մարդոց սրտին արգասիքն է· ինչպէս բարին՝ բարի մարդոց սրտին· ասաց Քրիստոս:

Լռեցէք, այլ եւս մի՛ խօսիք, խաչին խորհուրդը անհաս է, մտքով մի՛ չօչափէք, խաչն՝ Թշուառացեալ մարդկութեան երջանկութիւն բերաւ, խաչն եւ Տէր՝ աշխարհի յաղթեցին, դուք ի՞նչ կ'ընէք, դեռ տաժանելով կ'աշխատիք, խաչին ճառը ձեր գիտութեանց սրահներուն մէ՞ջ սորվիլ կ'ուզէք:

Ո՛չ, խաչի ճառին անշուք ճեմարանը՝ այդ հոյակապ շէնքեր, Թանգարաններ չեն, այլ Պաղեստինու դաշտ, Սիօնի վերնատուն, Գողգոթայի բարձրագագաթ, Աստուծոյ քաղաք, Եկեղեցին, տանիքներու վրայ, աշխարհի հրապարակն է: Դասախօս վարժապետները Պղատոն, Արիստոտէլ չեն, հապա Յիսուս է· եւ նորա պաշտօնեայք՝ հոգեխօս Առաքեալներն են, որոց բարբառ եւ խօսք հասաւ մինչեւ Ովկիանու ծայր:

Խաչին բարձրախօս ճառը լսեց բովանդակ աշխարհ, դուք ձեր յամառութեամբ կը համրանայք եւ խո՞ւլ կը լինիք· խաչին զօրութեան գաւազանը մարդոց ամեհի սիրտերը անբռնադատ նուաճեց· դուք դեռ չէ՛ք հաւատար, չէ՛ք զարմանար: Յիսուս՝ աշխարհակալ բռնաւորաց պէս երկաթի ջախջախիչ զէնքով չտիրեց եւ չճնշեց ազատ ժողովուրդը: Նա յետ խաչին եւ մահուան՝ առաւել եւս մեծագործեց, մինչդեռ հին Աղեքսանդր եւ նոր Նաբօլէօն մեռնելէն յետոյ իրենց ամէն խոր-

հուրդ եւ յաղթական զէնքերը հետ իրենց ի գերեզման տարին։

Այլ Յիսուս մեռաւ եւ յարեաւ. կարճեցէք ձեր ձեռք, նորա գերեզման մի՛ կրկտէք. Յիսուս կենդանի է եւ կը գործէ։ Նա երեք տարի իւր յայտնութեան մէջ գործեց, գերեզմանէն գործեց եւ երկնքէն Հօր աջ կողմ նստած դեռ կը գործէ. միայն քանի մի անզէն անթօշակ զինուորներով աշխարհի կայսրութիւնները խոնարհեցոյց. խուժադուժ ազգ եւ ազինք Աւետարանի քաղցր լծոյն տակ դրին իրենց բռնաւորուած պարանոց. Աթէնքի բարձունքէն յերկիր կործանեցան Արամազդայ եւ Աթենասայ տաճարները. անդ էր Պօղոս սերմնաքաղ մշակ, որ խլեց քանդեց կռամոլութեան խոր արմատը, հիմնեց եկեղեցին ու բարձրացուց Աստուծոյ սուրբ քաղաքը։ Դուք ի՞նչ կը կամիք, վերականգնե՞լ կ՚ուզէք անդրէն հին ամբարշտութեան տաճարներ եւ եկեղեցին յատակե՞լ։

Ի բաց կացէք, ձեռն մի՛ մխէք, ի զուր մի՛ ձգտիք. եկեղեցւոյ հիմն երկինքն է, անվանելի վէմն Յիսուս է. խիստ է, մի՛ զարնուիք. վէմն զձեզ ջախջախելով կը փշրէ ինչպէս փշրեց Ներոն, Յուլիանոս եւ եկեղեցւոյ բոլոր ոխերիմ հալածիչները։ Ես գիտեմ ձեր հալածանքը այլօրինակ է. դուք եկեղեցւոյ գառները սրով չէք մորթեր, դրշով կը խողխողէք. դուք Աստուծոյ արքայութեան փոքրիկ մանուկներուն դայթակղութիւն կուտաք եւ զանոնք յիմար կ՚անուանէք։

Պարծեցէք ձեր յիմարութեան վրայ, ո՛վ աղաւնաման միամիտ հաւատացեալներ, պարծեցէք դուք, մի՛ վշտանայք, թող զձեզ կատակէ ու ծաղրէ գիտութեան կաճառն։ Դուք միայն ուշ դիք հոգեճառ խրատուն, թէ՝ «Ամենայն պարզամիտ անձն օրհնեալ է ի տեառնէ»։ Պարծեցէ՛ք, դուք հաւատով իմաստուն էք, դուք իսկ հոգւով աղքատներն էք, ձեր հարստութեան ժառանգութիւն եւ ձեր քաղաքականութիւնը երկինքն է։ Սուրբ Պօղոս կ՚երաշխաւորէ ձեր վարձուց եւ անճառ փառաց հատուցման համար։ Ականկալեցէք փրկչին, պահեցէք հաւատք, հայեցէք ի վեր, Յիսուս, զօրագլուխն հաւատոյ՝ ձեզ խրախոյս կը կարդայ, զօրացէք եւ յաղթեցէք աշխարհի, նա խոստացեր է տալ ձեզ թագուցեալ մանանայէն, նոր արքայութիւն, նոր կեանք, նոր գինի, նոր խրախճան եւ անճառ խնդութիւն։

Տէ՛ր, անոխակալ, քո սիրտ մարդոց սիրտ չէ, դու երբ ապաշնորհ ծառաներն էլ սիրես, ո՛վ դատախազ կը լինի քեզ ամենիշխան ատենիդ առաջ։ Տէր, դու մարդասէր ես, ստահակ եւ ստամբակ որդիներն եւս քոյդ են, եկեղեցին կ՚աղօթէ միշտ

առ քեզ. շնորհ տուր նոցա, որ քո սէր, քո մարդեղութիւն, քո խոնարհութեան ճանապարհ, քո Խաչի ճառի մեծ խորհուրդը, քո լուսով ճանչնան, ընդունին եւ հաւատան քեզ, Տէր:



## ՄԱՄՈՆԱՆ ԱՍՏՈՒԾՈՅ ԴԷՄ

Աստուածորդի Յիսուս, քո տիրախօս վճիռն է այս, որով կ՚սպառնաս դու քեզ հաւատացող հպատակներուն. «Ոչ կարէք Աստուծոյ ծառայել եւ մամոնայի»: Յիրաւունս քո արդար ես, Տէր, քանի որ աշխարհիս տիրողները թէեւ անիրաւ լինին, այդ ծառայութեան հաւատարմութիւն կը պահանջեն իրենց հպատակներէն. .եւ ոչ ոք կարող է երկու դրօշակի տալ միանգամայն զինուորիլ. եւ եթէ նենգէ նա՝ պարտաւոր կը մնայ քաղաքային օրինաց եւ դատաստանի առաջ:

Բայց ինչպէ՞ս վարի խեղճ վարանած մարդ, որ պաշարուած կը մնայ երկու սպառնացող սուրերուն մէջ. եթէ թողու զմամոնան, մոռնայ զաշխարհ, երկնից հպատակի, զԱստուած պաշտէ, անդուլ աշխարհ, անկարեկից մարդիկ զինքըն սովատանջ կը չարչարեն, իսկ եթէ կորանալով դրկէ աշխարհ, պաշտէ զմամոնան, մոռնայ քո սէր, քո փրկութիւն, քո խաչին մահ, քո արեան ուխտին յիշատակը եւ քո անհուն բարերութեանց շնորհքը, դու զայն կը զրկես հանդերձեալ արքայութենէդ. եւ կը դատապարտես իբրեւ ապստամբ եւ ապաշնորհ ծառայ:

Սակայն 'վ Տէր, մարդիկ պէտք է որ քո խօսք ուղղութեամբ հասկնան. դու չես բռնադատէր, որ նոքա աշխարհիս վերայ անաշխատ կեանք վարեն. անվաստակ, անհաց, անհանդերձ, անտուն հրեշտակաց պէս անկերակուր ապրին և կամ անասնաբար կենցաղավարին ընկերական ու բանաւոր մարդիկ: Ո՛չ, դու այս աշխարհը իբրեւ ագարակ մարդոց տուիր, որ մշակեն ու արդիւնաբերելով վայելեն քո բարիքը եւ օրհնեն քո բարերար անունը: Մարդիկ աշխարհիս մշակ եւ տնտեսն են. ուստի կ՚ուսուցանես որ քո հաւատացեալք հաւատարմութեամբ ծառայեն քեզ, արդարապէս տնտեսեն, ինչ որ Աստուծոյն կը պատկանի՝ Աստուծոյ տան. ինչ որ կայսերն՝ կայսերին, եւ ինչ որ իրենց այս կեանքին պարէնն էր, զայն եւս վճարեն արդար չափով, առանց յափշտակելոյ յաւիտենական թօշակէն:

Ահաւասիկ, Տէր, մարդիկ այս չափին մէջ կ՚անիրաւին.

մարդիկ ապշութեամբ կը մոռնան հոգեկան ու մշտնջենաւոր բարւոյն շահը. դաշխարհ ամէն շահելով՝ զանձն բովանդակ կը տուժեն. մամոնան՝ մամոնային տալէն յետոյ, սիրտ եւ ազնիւ ոգին երկնից ցանկութենէն հանելով, կը թողուն որ բոլորովին առ այն հակամիտի. եւ անիրաւ մամոնան բռնանալով կը նուաճէ կրօն, հաւատք եւ մարդոյն առ քեզ եղած պարտիքները՝ իւր բաժին առնելէն զկնի, քո բաժին եւս կը յափշտակէ:

Եւ գիտե՞ս, Տէր, թէ մարդիկ ինչու համար երկիւղ չունին քո ահաւոր տէրութենէն, եւ կը զլանան քո արդար բաժին քեզ տալու. այս յայտնի է, զի քո հզօր տէրութիւնը՝ հայրական սէր է. աշխարհի իշխանութիւնը ոստիկանութեան սրով իւր բաժինն կ'առնէ. իսկ դու ո՞րչափ երկայնամիտ եւ ազատ ես, ոչ ոստիկան ունիս, ոչ սուր, եւ ոչ բանտ. քո ոստիկան մարդոյն սրտի խիղճն է. քո ազատ օրինագիրքը՝ Աւետարանն է. քո բանտ եւ շղթայն՝ եկեղեցւոյ դաւթին ազատավայրն է. ո՛վ, ո՛րչափ ընդարձակ է, լի եւ զեղուն են իւր մէջ քաղցրութիւն, գթութիւն եւ անչափ ներողութիւն:

Բայց, Տէր, դու ի՞նչ կը խնդրես քո հպատակ ծառաներէն. քո խնդրած տուրք կամ հարկ՝ աշխարհին պահանջած ոսկի արծաթն չէ, ստրկական կեանք չէ, այլ ազատ կամաց գիտակցութիւնը. զոր քո Հօր ձեռք դէպ առ քեռ կը ձգէ եւ քո լոյս կառաջնորդէ. եւ ո՞ւր, Տէր, ճանաչել զքեզ, հաւատալ քեզ, յամենայն սրտէ սիրել զքեզ, սիրել զընկերն իբրեւ զանձըն, պահել Աւետարանիդ սուրբ աւանդ, պահել այն ամէնը, ինչ որ դու պատուիրեցիր. եւ ակնկալել քո հանդերձեալ փառաց:

Ահաւասիկ, Տէր, այսչափ են միայն քո քաղցր լուծեր եւ փոքրոգի բեռներ. աւա՜ղ, խստապարանոց մարդիկ, դէր ցուլերուն պէս գոռոզ եղջիւրներով զայն թօթափել կուզեն, եւ կամովին կը կրեն աշխարհին ու մամոնային ծանր ու տաժանակիր լուծըն, որ կը ջախջախէ իրենց պարանոց, եւ որուն տակ ստրկացած կը հեծեն զօրհանապազ եւ չեն զգար: Մարդիկ՝ մամոնային ագահութեամբ կը ծծեն զարիւն իբրեւ անյագ տզրուկ, բընաւ ոչ շատ է, կ'ասեն, եւ ոչ գոհ կը լինին, թէեւ բովանդակ երկրին հող ոսկի դառնայ. բայց նոքա պիտի յագենան միայն գերեզմանի հողով:

Տէր, դու պատուէր տուիր եւ քո Աւետարանի ձեռագրով երաշխաւորեցիր որ քեզ հաւատացող արքայութեան որդիներըդ, աշխարհայոյս հեթանոսաց պէս բազմահոգ չը լինին զեղխ

ու անառակ կեանք վարելու համար․ այլ հաւատան սրտով քո նախախնամող Հօր, որ Թռչնոց կերակուրն անգամ չի մոռնար․ որք ոչ վարուցան ունին եւ ոչ վաստակ, եւ կ՚ապրին բնութեան սեղանէն՝ որ լի է ամենունակ պարգեւներով։

Բայց մարդիկ, թերահաւատ մարդիկ որք առ ոչինչ կը համարին վերնախնամ Հօր տեսչութիւնը, անստոյգ ապագային զբաղանօք․ եւ երբ անդն ու անդաստանը բազմապատկեն, վաստակը ու շահավաճութիւնք յաջողին, կը խորհին յանժամ շտեմարան ընդարձակել, գանձատուն պատրաստել, հաւատալով թէ մարդոյն կեանք եւ վայելքն՝ ընչից մթերքներէն է։ Այլ քո սրտմտութեան շանթ որչա՞փ արագ է այս թերահաւատներու համար, գիշերամէջ պահուն, հոգեպահանջ հրեշտակ մի կը համառօտէ քո դատաստանը եւ իբրեւ փոշի կը ցրուէ թերահաւատին մթերած գանձը։

Ո՛չ, ո՛չ, մի՛ խաբիք, մարդիկ, տեսէք աշխարհին կեանքը ու դատեցէք․ մարդոց ուղիղ կեանք՝ գանձ չէ, ընչից մթերք չէ, մեծութիւն չէ, անկապուտ փառք չէ․ թէ այդպէս լինէր, հարկ էր որ մեծագանձ մարդիկ դեռ եւս ապրէին։ Սակայն ո՞ւր է Սողոմոն, ո՞ւր է Կրեսոս, եւ ո՞ւր են աշխարհակալ հարստութիւնք․ որք առաւօտուն յաշխարհ եկին, միջօրէին պահ մի փայլեցան, իրիկուն գերեզման մտին։ Հապա ստոյգ կեանք, ստոյգ մեծութիւն եւ ստոյգ յաւերժական փառք՝ Յիսուս է․ «Ես եմ, ասէ, ճշմարտութիւն եւ կեանք․ եւ թէ բանն, զոր խօսեցայ ընդ ձեզ՝ հոգի է եւ կեանք։»

Այդպէս է, ո՛վ Տէր, երանի՜ թէ մարդիկ հաւատային քեզ․ երանի՜ թէ ընկեր զընկեր չը զրկէր մամոնային համար․ հզօրը՝ զանաւագն չը կոփէր մամոնային համար, մին յղփացեալ առատ սեղանին վերայ, միւսն աւուր պարէնի կարօտ չմնար մամոնային համար, աշխարհ աշխարհի դէմ չի կռուէր մամոնային համար, բռնութիւնը չտիրէր, ստրկութիւն չլինէր մամոնային համար, եւ Յուդան զքեզ չմատնէր երեսուն արծաթին համար։ Երանի՜ թէ մարդ՝ ագահութիւնն հանէր իւր սրտէն․ շռայլութիւնն մեռնէր, զեղխութիւնն պալատականաց կեանքէն բարձուէր, տեսնայիր դու յայնժամ թէ ի՞նչպէս չքաւոր ժողովուրդն եւս լիութեամբ եւ գոհութեամբ պիտի ապրէր։

Մամոնա՜յ, մամոնա՜յ․ դու զմարդիկ ի քիրտ ի վաստակ տանջելով կը տանջես, դու մարդոյ ոսկերաց ցեցն ես եւ զհոգին՝ հոգածութեան մէջ խարտելով կը մաշես․ կապարի նման

ծանրանալով՝ հաւատք, եւ կրօն կ'ընկճես քո ծանրաբեռնութեան տակ․ մարդիկ տարակուսեալ են․ քե՞զ ծառայելով ծունըր դնեն թէ Աստուծոյ դու միթէ այս աշխարհին Աստուած՝ իշխան եւ թագաւո՞րն ես․ երկրաւոր արքայութիւն, մարդոց կեանք եւ երջանկութի՞ւնն ես․ ո՜հ, հէք մարդիկ, արդեօք այսպէ՜ս հաւատալով քեզ կը հպատակին:

Բայց դու երբեմն ո՞րչափ ոչնչացար մարդոց աչքին առաջ, խաչին ոտքը զքեզ փշրեց ու մոխիր դարձուց․ խաչի թըւականէն եւ Գողգոթայի՝ գլխէն զինուորեալ՝ աշխարհուրաց մարդիկ մրցեցան քո դէմ․ բիւրաւոր հազարաւոր մարդիկ մերժեցին քո փառք, քո անցաւոր վայելքը․ վազեցին գունդագունդ դէպ ի մահ․ սոսկաց սուր դահճին երբ կը տեսնար որ Յիսուսի քաջ հովուին ոչխարները կամովին ի սպանդ կը վարին, կը մորթուին, կը քերթուին, աշխարհ կը ծախեն, կեանք կուտան, երկինք կ'առնեն, մամոնան ամաչելով հրապարակէն ետ կը դառնար․ խաչի մերկամարմին զինուորները զենուելով կը յաղթանակեն:

Այլ աւա՜ղ, Ով Տէր, մեք յետին ժամանակիս մէջ քո խաչին դասալիք ու վատասրտեալ զինուորներն ենք․ խաչէն փախանք՝ մամոնան գրկեցինք, քո սէր թողինք, աշխարհը սիրեցինք, եւ ասացինք թէ, այս է մեր կեանք, մեր արքայութիւն եւ հանդերձեալ փառք եւ կ'ապրինք այնպէս՝ ինչպէս կ'ապրէին մարդիկ քո յայտնութենէն յառաջ: Եթէ այսպէս, ուրեմն ի՞նչ զանազանութիւն կայ անհաւատին եւ քո հաւատացեալ ծառային մէջ, յորոց միոյն կորուստ կ'սպառնաս եւ սակաւ գան, իսկ միւսին բազում գան ու հարուած, որ հաւատաց քեզ, ուսաւ եւ իմացաւ քո կամք ու պատուիրանք:

Արդար ես Տէր, քո այս դատաստանը ճշմարիտ է․ մարդ չի համարձակիր քեզ դէմ դատախազ կանգնել, երբ քո իրաւունքը վարձ ու հատուցումն ուղիղ կը կշռէ: Ո՞չ ապաքէն բիւր անգամ պատժապարտ են այն հեղգ ու ապիրատ ծառաները՝ որ քո սէր, քո խաչի յիշատակ, քո անկշիռ բարերարութիւնը՝ մամոնային հետը կը փոխանակեն, լոյս կը թողուն՝ եւ հող կը պաշտեն․ որոց կրօնքն է ագահութիւն, գրկանք, յափըշտակութիւն, մեծութիւն եւ գանձ, եւ այլ ամէն անկայուն վայելք, որք հող են, ու հող պէտք է լինին բոլոր աշխարհասիրաց յոյս:

Այլ դուք, ո՛վ Աւետարանի հոգւով աղքատները, խնդացէ՛ք, Յիսուսի երանին ձեզ համար է, ձեր յոյսը անմահու-

*թեամբ լի է․ թող աշխարհ եւ Մամոնան ձեր թշուառութեան վրայ խնդան ու սրտմտին՝ երբ դուք ծունր չէք դներ սատան Մամոնային, թէեւ խոստանայ զաշխարհ իւրայնովք պարգեւ տալ, մերժեցէ՛ք, մի հաւատաք այդ ստախօսութեան հօր, դուք այս աշխարհէն պիտի գնայք, ձեր սեպհական հայրենիքը հանդերձեալն է։ Զօրացէ՛ք, ոտնհարեցէ՛ք աշխարհի մեծութեան գանձը, զոր թէ չուտ թէ անագան միշտ աշխարհ կը կողոպտէ։ Դուք Քրիստոսի ընտրած փոքրիկ հօտն էք, յիշեցէք ձեր քաջ հովուին յորդորը, որ կտակ աւանդեց ձեզ․ ձեր գանձը երկինք դնել, ուր աշխարհիս գողերուն եւ հարստահարիչ զրկողաց ձեռք չի հասնիր։ Դուք յերկրի վերայ, յերկինս ապրեցէք․ մի վարանիք, թէ հնար չէ հողէ մարմնով այնչափ վերանալ։ Հոգին, սիրտ ու հաւատքը բարձրաթռիչ են, այնու վերաթեւեցէք եւ հաւատացէք յԱստուած․ զի օր մի աշխարհին և Մամոնային պատերազմը կը վերջանայ, յաղթանակը ձերն է։*



## ՆԻՒԹԱՊԱՇՏՔ ՆԱԽԱԽՆԱՄՈՒԹԵԱՆ ԴԷՄ

*Լո՛ւր երկին եւ ունկնդի՛ր, երկիր․ Մարգարէին պէս ես էլ բողոք կը բառնամ, ըձեզ ի հանդէս կը կոչեմ․ տեսէք ու զարմացէք․ մարդիկ Աստուծոյ դէմ մարտ կը մղեն, մարդիկ երկնից դէմ նետ կ՚արձակեն․ այս մեր հողագնդի գաճաճներ, գերեզմանի որդերը, գլուխ ամբարձեալ կ՚ապստամբին եւ կ՚ապերախտին բարերար Արարչին դէմ, եւ չեն ամաչեր, երբ եզն իւր ստացիչը կը ճանչնայ եւ էշը իւր տիրոջ մսուր։*

*Ամենակալ հզօր Աստուած, դու կը հայիս ու կը տեսնա՞ս․ ո՛վ են այդ ապիրատ անզգամներ, որ զքեզ եւ քո նախախնամութիւնը կ՚ուրանան եւ կը խօսին եւ կը գրեն այսպէս․ թէ «Այս աշխարհին վերայ քո արեւ չի ծագիր, քո անձրեւ չի ցօղեր, քո աչքը չի հսկեր եւ ոչ ոք այցելու ոտքը կը հրջի․ մարդիկ առանց քեզ կ՚ապրին․ առանց երեւիդ՝ լոյս կը տեսնան, առանց անձրեւիդ՝ հաց կ՚ուտեն, եւ առանց քո զօրութեան կ՚իշխեն․ թագաւորները գահերուն վերայ կը բարձրանան եւ առանց քո ակնարկութեան կը յաղթեն կամ կ՚ընկճին․ չկայ գերագոյն աթոռ մի, որ կը վարէ զաշխարհ, այլ ամենայն ինչ բնութեան ինքնավար օրինաց դիպուած է․ երջանկութիւն, թշուառութիւն, իշխանութիւն, զօրութիւն, յաղթութիւն, պարտութիւն, կեանքն եւ մահ։«*

*Այսպէս է, բարձրեալ Տէր, ուրեմն, դու չե՞ս որ դբնութիւն եւ զօրէնս ի միասին կը վարես. միթէ առանց քո ձեռին բնութիւն իւր օրէնքով ինքնին կը վարէ՞: Մեք կը տեսնամք, որ աշխարհիս կարգ եւ օրէնք առանց մարդոց չեն վարիր. եւ եթէ կայ մարդ, կան թագաւորք, կան իշխանք, կան օրէնսդիրք, որ այս փոքրիկ աշխարհագունդ կը կառավարեն, դու չե՞ս ու չկա՞ս ամենիշխան Տէր, որ տիեզերքին արարիչ եւ օրէնսդիրն ես. եւ զայն կը վարես քո անհուն իմաստութեամբդ: Մարդիկ զքեզ չեն տեսնար, եւ կը կարծեն թէ դու չկաս, եւ միթէ իրաւունք ունի՞ ոտքիս տակի մրջիւն երբ չի տեսնար զիս, նա կարծէ թէ ես չկամ որ կը կոխեմ ու ճմլեմ զինքն: Մարդի՛կ, ես կը ճանաչեմ զձեզ, դուք չքոտի մրջիւն չէք. դուք հանճար ունիք, ձեր կոչումն բարձր է, բայց ի՞նչ էք դուք անհուն անսահման էութեան առաջ. դուք թողլով հաւատքը՝ աչքով տեսնել կ՚ուզէք զայն:*

*Տէր, քո պետական աթոռը երկինքն է, ուր առաջի կայ դարանակալ իմաստութիւնդ. Սողոմոն քեզ համար ասաց թէ, Թագաւորք քեզմով կը թագաւորեն, եւ դու ես միայն ահաւոր Աստուած, որ կը քաղես զոգիս բռնաւորաց, եւ քո փառաց վրէժխնդիր ես. զայն ոչ Աղեքսանդրին կուտաս, ոչ Կեսարին եւ ոչ Բաբիլոնի հպարտին. որ արքայական տանեաց վերայ ճեմելով ոգին կը բարձրանար ու կը խօսէր՝ «Ես կանգնեցի Բաբիլոն, ես աշխարհին տէրն եմ :»*

*Դու զայս տեսար ու լսեցիր, Տէ՛ր, եւ որչա՞փ շուտ եւ արագ վճռեցիր բարձրամտին դատաստանը, երկնից բարձրութենէն նայեցար նետահարեցիր Բաբիլոնին հպարտացող գոռոզը. հզօր գաւազանէն, արքայական գահէն եւ ի պատուոյ մարդոյն զրկելով՝ հրամայեցիր որ երթայ արջառներուն հետ խոտ ճարակէ, մինչեւ ճանչնայ բարձրելոյն իշխանութիւնը. թէ դու ես միայն միահեծան Տէր, որ աշխարհիս գահերը ոտքիդ տակ դրած ես եւ երբ երկնից դէմ եղջիւր ածեն՝ դու զայն ոտնհարելով յանդունդս կը գլորես:*

*Տէր, թող խօսին քեզ համար՝ թէ դու չես, որ ամբարտաւանից հատուցումն կը վճարես քո արդար կշռով. եթէ դու չես, հապա ո՛վ էր այն, որ քո օծեալ Կիւրոսին աջ ձեռք բռնելով՝ առաջնորդեց տարաւ մինչեւ ի Բաբիլոն. ուր ջախջախել տուաւ այն արբշիռ բռնաւորին գլուխը, որ յանդգներ էր քո սուրբ տաճարին սպասները պղծել, եւ քո արդարութեան թաթը յանկարծ երեւելով դահլիճի պատին երեսն՝ երեք բա-*

ռով միայն չափեց ու կնքեց անարժան Թագակրին կեանքը, տեսաւ գայն եւ զարհուրեցաւ. իբրեւ հաւ մի սուրն ի վիզ Թրթռփաց ոտքիդ տակ ու մեռաւ սեղանակապուտ ամբարիշտն:

Դու չէ՞ր զարձեալ, որ նոյն Բաբելոնին վերայ արծուապէս իջար բռնեցիր գաշխարհասասան Աղէքսանդր, անդէն հանիր քաղեցիր նորա բռնաւոր շունչ եւ ոգին. որ Յունաստանէն մինչեւ Ի Պարս, ի Հնդիկ, ի Բաբիլօն աշխարհի պետութիւնները խորտակեց փշրեց երկաթի ժանիքներով. որուն ոտքը լայնածիր աշխարհս չափելէն յետոյ, եթէ չը մնար այլ եւս տեղի իւր արշաւանաց՝ Թերեւս ժպրհէր մտաբերել մինչեւ երկինք արշաւել եւ որպէս զհին հպարտն այն ամպերուն վերայ դնել իւր աթոռը:

Թողունք հին աշխարհակալաց հաշիւը եւ հատուցումն. դու չէ՞ր, որ նոյն իսկ մեր օրերը Փրանսայի վերջի դիւցազնին յաղթական արշաւանաց քայլը յետս ընդդէմ մղելով տարիր փակեցիր սուրբ Հեղինէ անձուկ կղզւոյն մէջ. ուր նա եւս մեր յաղթող Արտաշիսին պէս հառաչեց. «Աւա՜ղ փառացս անցաւորի». եւ այն անպարտելի աննկուն ոգին լքաւ ու ճանչցաւ զինքն թէ յիրաւի՛ Փրանսայի բախտն էր երբեմն, պատերազմի փառք, այլ իբրեւ սոսկական զինուոր անմխիթար մեռաւ իւր միայնութեան մէջ:

Վաթերլոյի դաշտին եւ սուրբ Հեղինէ կղզւոյն մէջ կալանաւոր Առիւծին դատաստանը վճարելէն յետոյ՝ դարձար ի Սէտան տեսնալ նաեւ փոքր կորիւնին դատաստանը: Եւ ո՛վ էր այն, վերջի Նաբոլէոն, որ սուրն ի պարանոց ձգելով՝ ինքնին գնաց խոնարհեցաւ Գերմանիոյ յաղթականին առաջ. եւ դու արդար Աստուած, այսպէս չափեցիր ուխտադրուժ կայսեր հռչակեալ պանծացեալ քաղաքականութիւն, աշխարհ տեսաւ այս եւ զարմացաւ, թէ քո դատաստանին կշիռը արդարաչափ է:

Աստուած ամենատես, մարդիկ այնպէս կը կարծեն թէ՝ աշխարհիս բան քեզմէ անտես է, եւ դու երկնից բարձրութենէն միայն իբրեւ զբօսանս կը հայիս երկրիս վերայ, պատերազմի դաշտաց վերայ. քեզ ոչ ինչ փոյթ չէ թէ մարդկութեան ծաղկահասակ նորատունկ ազնիւ սերունդ, անագորոյն հրազինաց բերան անխնայ կը մաշին, մարդիկ բանաւոր քո պատկերակից՝ ափսո՜ս իբրեւ անպիտան խոտ միահամուռ կը հնձուին, զորս դու մի մի կ՚ստեղծես, շունչ եւ կեանք կը բաշխես. եւ քո բարեխնամ կամքն է, որ մարդիկ, ողջ մնան, մար-

դիկ բարդաւաճին, ո՛հ, մարդիկ գիրեար կ՚սպառեն սրակոտոր մահով։

Իսկ դուք ո՛վ էք, որ այս ամէն, Աստուծոյ արդարութեան չափերը՝ դիպուած կը համարիք, եւ տիեզերաց գոյութեան համայն հրաշալիքները՝ բնութեան կը վերածէք․ ես չգիտեմ թէ ձեր այդ պաշտած բնութեան անունը ի՞նչ է, դուք զայն գերագոյն էակ եւ ճարտարապե՞տ կը ճանչնաք, արարուածն Արարչին տեղը դնելով․ եւ պատճառն ի՞նչ է, զի դուք արարուած բնութիւնը կը տեսնաք, որ ձեր ոտքի տակն է ու կը չօչափէք զայն, իսկ Արարիչը չէք տեսնար, արդեօք վասն ա՞յն կ՚երկբայիք․ եւ այս իսկ զարմանալի է, երբ դուք կը հաւատաք թէ Եգիպտոսի չորս հազար տարուան հնութեան բուրգերը մարդոց ձեռք բարձրացուցեր են, ընդէ՞ր ապա կը դժուարիք հաւատալ թէ Մասիսի եւ Հիմալայի լերանց բարձրութիւն յօրինող բնութեան ճարտարապետն է եւ մեք նորա անունն՝ Աստուած կը կոչեմք։

Ինչո՞ւ կը զարհուրիք եւ խոյս կ՚ուտաք այս ահաւոր անունէն, որուն յիմար հեթանոսք յուսալով փրկուեցան եւ դուք կարծեցեալ իմաստունք, դեռ կը դեգերիք երկմտութեան մէջ․ դուք Սուրբ գիրքը Հրէից ազգին հնարած առասպել կը համարիք, եւ նորա Աստուածապաշտ հաւատացեալները նախապաշարուած տգէտ կը կոչէք եւ միթէ ձեր այդ դատաստանը՝ հին եւ նոր պաշարուած մտօք չէ՞։ Բայց թողէք որ չօշափեմ ձեր ոգին, ձեր միտքը ու նպատակը։

35 կէլի — Հայրիկ քտո՞բրդւնեպ կընց․:Թգաց

Տէր, դու կը տեսնաս եւ ես ականջովս լսեցի այսպիսի մարդոց անուղղայ դատաստանը, որք կը խօսին եւ կը գրեն․ թէ քանի որ մարդիկ զԱստուած կը կոչեն, քանի՛ որ մարդիկ զայն հոգւով կը պաշտեն, քանի որ կրօնք, հաւատք կայ, քանի որ մարդիկ կրօնից պաշտօնեաներուն կ՚անսան, քանի որ հանդերձեալ անմահութեան յուսով կը խայտան, աշխարհիս ընկերհաշտական խաղաղութիւն եւ չինութիւն անհնարին է։

Ասացէ՛ք ուրեմն ի՞նչպիսի պէտք է լինի, աշխարհ եւ մարդիկ անտերունջ անաստուա՞ծ մնան, բարձուի՞ն իսպառ այդ յաւիտենական գաղափարները եւ Աստուծոյ տիրող անունն՝ աշխարհէն․ բարձուի՞ն կրօնք հաւատք մարդոց խղճէն ու սրտէն, բարձուի՞ն յոյս եւ ակնկալութիւն երկնից արքայու-

թեան փառքէն․ եւ մարդոց յոյս մինչեւ ի գերեզման տանել եւ անմահութիւն մեռուցանել մարդոյն հետ թաղե՞լ։

Ահա ձեր միտք եւ խորհուրդը այս է, դուք այնպէս կը կարծէք, թէ երբ հաւատքը կործանի, աշխարհ կը շինուի եւ յայնժամ միայն երջանկութիւն կը թագաւորէ։

Ես գիտեմ, եւ դուք եւս գիտէք, ձեր այս խորհուրդ սիրտ եւ նպատակ նոր չէ․ շատ հին է, կը ճանաչեմ զձեզ, դուք այն երկրաքարշ մարդոց վերջին որդիներն էք, որոց նկարագիրն ճշգրտապէս կը հանէ մեծն Սողոմոն․ դուք եւս ձեր անհաւատ հարց նման կը քարոզէք ու կ'ասէք․ «Արդ եկա՛յք վայելեսցուք ի բարութիւնս որ կան, եւ վարեսցուք արարածովքս զբաղեալք իբրեւ ի մանկութեան, պէս պէս գինեօք եւ անոյշ իւղովք լցցուք, բոլորիւք վարդից պսակեսցուք մինչեւ թառամեալ իցեն․․․ զի անցք ստուերի են կեանք մեր եւ չիք խափան ի վախճանի մարդոց եւ այլն։»

Ահաւասիկ այս է, ձեր թիւր խորհուրդ եւ ապաշնորհ բան, արարածոց բարութիւնները վայելել ցյագ եւ Արարիչը չճանչնալ, գինին խմել առանց գոհութեան եւ այգւոյ տէր եւ մատուակն արհամարհել, անոյշ ծաղկէիւղովք օծանիլ եւ ծաղկանց զարդարիչը չփառաւորել․ մարդոյն յոյս եւ բաժին միայն աշխարհիս վայելք դնել եւ չհաւատալ թէ գո՛յ անմահութիւն, գոյ այլ եւս բաժին մարդոյ յերկինս, մարդն անեղծ է․ զի Աստուած զայն յանեղծութիւն հաստատեաց, մարդն Աստուծոյ պատկերակից է, պէտք է իւր սկզբնատիպն պէս անմահ մնայ, դուք մի աշխատիք չքացնել զայն եւ մարդոց հոգեկան կեանքը՝ անասնոց հաւասարել։

Ուրեմն թողէք, որ նոյն Սողոմոնին պէս պարսաւանս դընեմ ձեր չարարուեստ գիտութեան․ մոխիր է ձեր սիրտ, ընդունայն է ձեր վայելից յոյս, անարգ կաւ է ձեր կեանք, երբ անաստուած եւ առանց նախախնամութեան կ'ապրիք․ եւ դուք խակ էք երկնից Հօր այն չար ու ապաշնորհ զաւակներն, որոց վերայ նա իւր անհուն սիրով կ'ածէ իւր անձրեւ եւ կը ծագէ իր համատարած արեւը։

Դաւիթ կը խրատէ, որ ձեզ չը նախանձեմ, զի դուք խոտի նման պիտի ցամքիք վաղվաղակի, այդպէս ձեր թերահաւատութեամբ ապրեցէք ու մեռէք, ձեր յոյս, ձեր կեանքը թող միայն գերեզմանին մէջ դադարի․ անդր մի՛ անցանէք, ձեզ համար կեանք չիկայ, ձեր կարճատեւ հաւատք մինչեւ ի հողն է․ եւ դուք պէտք է ծածկուիք գերեզմանական ստուերին տակ,

լոյս եւ անմահութիւն չտեսնաք· ձեր գայթակղութիւն կը մը֊նայ աշխարհիս վերայ, եւ դուք իշոյ երկայնաքարով մի կը խո֊րասուզուիք յանդունդս։ Այլ, դու ո՛վ մարդասէր Հծեան յ:ոտ րասուզուիք յանդունդս· այն խսկ է միայն ձեր բաժին ու վի֊ճակ։

Այլ դու, ո՛վ մարդասէր Հոգի Աստուած, դու հանճար եւ գիտութիւն տուիր մարդոյն, որ մարդիկ զքեզ գտնեն· մարդիկ ի խնդրելն զքեզ՝ կը կորուսանեն· եւ դու ո՞ւր կը ծածկուիս, ամենուրեք զօրութիւն, երկնից աստեղատան եւ տիեզերքին մէջ չե՞ս· զի տիեզերք քո մէջն է։ Այո՛, անհուն ես, անպարու֊նակ ես· նիւթն զքեզ կարող չէ բովանդակել, եւ տիեզերք քո անբաւութեան մէջ միայն մի նշանախեց կէտ մի է եւ դու մի շնչով կարող ես տապալել զայն· ինչպէս մի շնչով յոչնչէ ի գոյ ածեր։

Եւ դու, ո՛վ երկնից Ամենահայեաց աչք, դու կը տեսնաս եւ կը դիտես մոլորամիտ մարդոց անել ճանապարհ, որ կը տքնին չարաչար զքեզ աշխարհի գիտութեան մէջ գտնել, առ ոչինչ համարելով քո լոյս, քո յայտնութիւն, քո շնորհ։ Տէր ողեսէր, խնայէ քո վաստակեալ ծառաներուն, քո վճիտ սուրբ լոյսը՝ ճառագայթէ նոցա փակեալ աչքերուն, ինչպէս կը պա֊ղատէր Դաւիթ· որ միայն հաւատով զքեզ գտնեն եւ անհաւա֊տութեամբ չը ննջեն ի մահ։



## ՅԱՂԹԱՆԱԿ ՃՇՄԱՐՏՈՒԹԵԱՆ

Ո՛վ յաւիտենական ճշմարտութիւն, Զօրաբաբէլ քո ճշմա֊րիտ վկան է, որ համարձակեցաւ բարձրաբարբառ քարոզել ինքնակալ Դարեհին աւագաժողով ատենին մէջ· վկայեց քեզ համար թէ՝ յամենայնի յաղթող ես· եւ ստացաւ իւր մրցա֊նակն։

Ո՛վ ճշմարտութիւն, ասաց Զօրաբաբէլ· դու ամէն բանէն զօրաւոր ես, բովանդակ երկիր քեզ կ՚ապաւինի· երկինք եւ եր֊կիր միանգամայն կ՚օրհնեն զճշմարտութիւն, մարդկային ամէն գործքեր քո առաջ են, թէ արդար թէ ապիրատ· դու անխառն լոյս եւ արդարութիւն ես, անիրաւութիւնը բնաւ քեզ հետ մաս֊նակցութիւն չունի։

Ո՛վ միակ ճշմարտութիւն, դու միայն ես արդար եւ սուրբ· մարդկան որդիքները սուտ եւ անիրաւ են, նոցա ճանապարհ

ճշմարտութենէն խոտորած է, նոքա իրենց անիրաւութեան մէջ պիտի կորնչին. իսկ դու կաս ու կը մնաս յաւիտեան, քո իշխանութիւն մշտնջենաւոր է, քո դէմ ապստամբող եւ հպարտացող գոռոզ հոգիները զամէնն եւս ի հող կը դնես եւ քո հզօր յաղթանակ կը կանգնես նոցա գերեզմաններուն վերայ:

Ո՛վ անըմբռնելի ճշմարտութիւն, աշխարհիս իմաստութիւն զքեզ ըմբռնել կ՚ուզէ եւ դու կը փախչիս. նա կը վազէ քու ետեւէդ եւ դու սրավար կը հեռանաս, նա երբ մօտով կը վերանայ՝ դու առաւել եւս կը բարձրանաս. եւ մերթ եւս այնչափ կը թագչիս եւ կը ծածկուիս պանծացող իմաստնոց տեսութենէն, մինչեւ կուրանան եւ կը մտաբերեն տարակուսելով՝ թէ դու չը կաս: Նոքա կը հաւատան թէ աշխարհիս պալատներու մէջ թագաւորներ կան եւ կը գահակալեն. իսկ քո տիեզերք թափուր է, ոչ գահ ունի, ոչ թագաւոր, ոչ կառավար:

Ո՛վ անյայտ եւ յայտնեալ ճշմարտութիւն, քո ծառան, Մովսէս, Քորէբ լեռան գլուխ հրավառ մորենւոյն մէջ տեսաւ. Բեթլեհէմի հովիւները զքեզ մսրին մէջ տեսան, տեղ մի իբրեւ հուր եւ լոյս կը բոցավառէիր. տեղ մի իբրեւ նորածին մանուկ խանձարուրին մէջ զքեզ փաթթեց քո մայր, լոյս էիր եւ թանձրացար. որպէս զի մարդիկ տեսնան ու շօշափեն զքեզ, եւ ո՛վ կարաց նախ շօշափել զքեզ, միայն կոշտ հովիւներուն ձեռք. եւ ո՞ւմ յայտնեցար դու նախ, դարձեալ պարզամիտ գեղջուկներուն:

Սորա համար ահա, դու ո՛վ յայտնեալ ճշմարտութիւն, շնորհակալութիւն կը մատուցանէիր երկնից. «Հայր, գոհանամ զքէն, զի ծածկեցիր զայս յիմաստնոց եւ ի գիտնոց եւ յայտնեցեր տղայոց: Այո՛, Հայր, այսպէ՛ս հաճոյ եղեւ առաջի քո:»

Ո՛վ անպարտ ճշմարտութիւն, իբրեւ պարտաւոր գնացիր կացիր, Պիղատոսին առաջ, կոյր եւ ապուշ դատաւորն գիտես թէ ճշմարտութեան անունը երբէք լսած չէր, կը հարցանէր եւ իմանալ կ՚ուզէր քեզմէ թէ ի՞նչ է ճշմարտութիւն: Զգիտեմ, ո՛վ հեզամտունչ ճշմարտութիւն, թէ ի՞նչ խորհրդով թագուցիր զքեզ եւ չը ճառեցիր քո ճշմարտութենէն. դու՝ որ Աւետարանաւդ կը բարձրախօսէիր, «Թէ ոչ կարէ քաղաք թագչել, որ ի վերայ լերինն կայցէ»: Եւ դու լոյսդ աշխարհի, զքեզ մարմնոյդ գրուանին տակ դրիր, որ Պիղատոս չի տեսնա՞յ:

Ո՛վ ճշմարտութիւն, դատաստանի համար եկիր այս աշ-

խարհ, բայց աշխարհի դատաւորն զքեզ խաչել տուաւ. հզօր Արդարութիւն Հօր որ ընդ քեզ եւ քո աթոռակիցն էր, նա թոյլ տուաւ որ դատապարտուիս. որպէս զի քո իրաւունքը գերեզմանէն ի լոյս բերելով՝ քո յաղթանակն առաւել եւս փառաւոր կացուցանէ աշխարհին առաջ։

Ո՛վ ահաւոր ճշմարտութիւն, արդարութեան սուրը մէջքդ կապած շարունակ կը շրջիս աշխարհիս վերայ դատաստաններ կը տեսնաս. դու ճիշդ նոյն չափով կը չափես զմարդիկ, ինչպէս նոքա իրենց եղբայրներ կը չափեն. զի քո օրինագիրքն Աւետարանն է, եւ դու կանխաւ վճռագրեր ես թէ՝ «Որով չափով չափէք՝ չափեսցի ձեզ»։

Այլ ո՞վ կարէ չափել քո չափն ու կշիռը, դու մերթ ապիրատներն արագապէս կը չափես, մերթ եւս երկայնմտելով յապաշխարութիւն կը կոչես. մերթ զրկեալներուն իրաւունքը կը պաշտպանես եւ զրկիչներուն պատուհաս կուտաս, մերթ եւս այնչափ կը թողուս եւ կը մոռնաս, որ քո ծառաները մինչեւ ի գերեզման զրկուին. եւ ո՛վ կը հաւատայ քեզ թէ՝ անդր քան զգերեզմանն դու դարձեալ դատաստան ունիս եւ կը հատուցանես արդարոյն վարձք, եւ ամբարիշտին՝ պատիժը։

Ո՛վ ճշմարտութիւն, քո աչք ամենատես է, քո լոյս արեւու լուսէն եօթնպատիկ պայծառ է. աշխարհիս խաւարագործ մարդիկ քո լոյս չեն սիրեր, միշտ մթան մէջ գործել կ՚ուզեն եւ դու զամէն ի լոյս կը հանես. եթէ անիրաւ դատաւորները դուռը քո դէմ փակեն՝ հրապարակին մէջ կը բողոքես. կը ներշնչես յանկարծ մանուկ Դանիէլի ոգւոյն, որ ի մահ դատապարտուած անմեղ Շուշանին փաստաբան կանգնի եւ զանպարտ ոգին ազատէ չարածեր մատնիչներէն։

Ո՛վ ազատարար ճշմարտութիւն, դու Դանիէլի պաշտած միակ Աստուածն ես. նա քեզմով սպառազինեցաւ եւ մերկապարանոց խայտառակեց Բաբիլոնի քուրմերուն գաղտնածածուկ հնարքները, քո զօրութեամբ պայթեցուց ահագին վիշապն։ Քո հաւատարիմ ծառային դէմ քանիցս անգամ ոխացան օձապաշտ Բաբելացիք եւ բռնադատեցին թագաւորը, որ քո ճշմարտութեան Ջինուորը առիւծուց գուբը ձգեն. եւ դու անդէն սաստեցիր քաղցած ու կատղած առիւծներուն. որ փոխանակ փղոտելու՝ ընտանեբար քծնելով քո ծառային ոտքը լիզեն։

Ով ճշմարտութիւն, քանի հզօր պաշտպան ես քո արդար ծառայներուն, որ զքեզ ճշմարտութեամբ կը պաշտեն։ Դու

մերթ քո կտրիճ ըմբիշները ստուԹեան դէմ ի հանդէս կը հանես, ինչպէս հանիր քո արի նահատակն Յովբ․ Թոյլ տուիր որ Նախանձոտ սատան չարաչար հարուածներով խոշտանգէ քո առաքինի ծառան եւ Օտերին Թագաւորը իւր գահէն հանելով՝ ի փողոց աղբիւսին վերայ դնէ․ ուր դու ամպերուն վերայ աԹոռ դնելով հանդիսատես կը լինէիր․ Թէ ի՞նչպէս քո վերալից նահատակն կը մրցէր, մի կողմէն փորձիչ բանսարկուին դէմ, եւ միւս կողմէն չարեաց մխիԹարիչ բարեկամներուն դէմ․ որք զարդար հոգին մեղապարտ կը կարծէին եւ դու ամպէն ի վերուստ որոտալով, իրաւունքը՝ ծառային տուիր եւ հրամայեցիր, որ դատիչ բարեկամները իրենց մեղքը՝ նորա միջնորդուԹեամբ եւ զոհով քաւեն։

Այսպէս տեսար դու քո արդար ծառային դատաստանը․ որով տարաւ նա իւր յաղԹանակը եւ ամօԹահար կորացաւ Նախանձոտ ախոյեանին սեւագրոշմ ճակատ։

Ո՛վ ճշմարտուԹիւն, քանի անաչառ ես, զի դու քո ընտրեալ սիրելիներդ անգամ խստուԹեամբ կը դատիս։ Ինչպէ՞ս արդար եւ ուղիղ տեսար քո օծեալ ԴաւիԹին եւ Ուրիա Քետացւոյն դատաստանն․ ապստամբ որդին յարուցիր նորա դէմ եւ Թոյլ տուիր որ արքայական տանեաց վերայ կատարուի այն սոսկալի եղեռն, զոր քո արդարուԹիւնը հաւասար չափեց հօր ու որդւոյն մէջ․ Թոյլ տուիր որ Աբիսողոմ հալածէ իւր հայրը, ԴաւիԹ փախչի, Սեմէին անիծէ, բայց եւ անդէն Թողիր ԴաւիԹը՝ դարձար ապիրատ որդւոյն դատաստանը տեսնալ․ վարելով զհայրահալածիչն տարիր հասուցիր խիտ անտառին մէջ․ ուր ոսկեԹել վարսերէն կախելով Թողիր այնպէս, որ օդին մէջ երերայ, այն որ իւր հօր ԴաւԹի աԹոռը նաւիլ կը մտաբերէր։

Սոյն օրինակ դատեցիր եւ չարախորհուրդն ԱքիԹոբէլ, որ չոգաւ եւ իւրովի խեղդեց զինքն չուանով, երբ իւր ամէն խորհուրդները վրիպելով ի դերեւ ելան․ որպէս զի քո առաջ չպարծենայ խորհրդականն ի խորհուրդս իւր։

Ո՛վ ամենիշխան ճշմարտուԹիւն, դու ամենուրեք կը տիրես, ո՛վ կը ժպրհի փախչիլ քո երեսէն։ ԴաւիԹ վարանելով կը գոչէր, Թէ երկինքն ելնեմ՝ դու անդ ես, Թէ ի դժոխս իջնամ՝ անդ աւելի մօտ ես։ Անդադար կը շրջիս ընդ ծով ընդ ցամաք, եւ ուր հասնիս կը դնես քո դատական աԹոռը։ Թէ աշխարհիս պալատները զքեզ հալածեն, Թէ բռնաւորներ քո դէմ նոր սուր հանեն, Թէ դատաւորներ քո ձայն չի լսեն, կ՚եր–

թաս զքեզ ընդունող քո ծառաներուն տունը կ՚օթեւանիս եւ քո հանգիստ կը գտնես։ Սորա համար Խաչդ եւ Աւետարանդ գրկելով՝ անհանգիստ կը շրջէիր Սաղիմայ երկրին մէջ եւ կը գանգատէիր թէ․ Աղուէսներ եւ Թռչուններ դադար ունին եւ դու՝ գլուխ դնելու տեղ չունիս։

Ո՛վ հալածեալ ճշմարտութիւն, ստոյգ եւ ճշմարիտ է քո բան, մեր աշխարհ՝ սուտ եւ խաբեբայ աղուէսներով լի է․ ամենեւրեք որջացած են, դարանամուտ կը լինին՝ քո հաւեր եւ միամիտ աղաւնիներդ խեղդելու համար։ Վասն այն իսկ քո ծառան Դաւիթ, որ զարջ եւ զառիւծ կը պատառէր, տեսաւ օր մի՝ որ կեղծաւոր աղուէսներ զինքը շրջապատեր են՝ պաղատեցաւ առ քեզ․ «Ապրեցո՛ զիս, Տէր, զի նուաղեաց սուրբ․ նուաղեցան ճշմարտութիւնք յորդւոց ի մարդկանէ»․ եւ թէ՝ «Ի նանիր խօսեցաւ այր ընդ ընկերի իւրում․ շրթամբք նենգաւորօք․․․»։

Ո՛վ անկեղծ եւ անպատրուակ ճշմարտութիւն, աշխարհիս կեղծաւորներ, դպրաց ու փարիսեցւոց մնացորդ ժանտապղտուղ զաւակներ, որք առ երեւոյթ արտաքուստ որպէս բռեալ դերեզման ցոյց կուտան․ թէ իրենք ճշմարտութեան պաշտօնեայ են, ճշմարտութեանդ անունով կը պարծին, ճշմարտութեանդ անունով եկեղեցւոյ վերայ կը տիրապետեն, հովիւ կը կոչեն զիրենք եւ քո միամիտ գառները կը յափշտակեն․ դու ճանչցար զիրենք եւ շօշափեցիր նոցա ոգին՝ տեսար, որ ի ներքուստ լի էին յափշտակութեամբ եւ նենգութեամբ։

Արդեօք սուքա՞ են այն անիրաւութեան մշակներն, որոց դէմ քո փառաց արքայութեան դուռը կը փակես, եւ ի ներքուստ պատասխան կուտաս, ի բա՛ց կացէք, ի բա՛ց, ո՛վ անիրաւութեան մշակներ, ես զձեզ չեմ ճանաչեր։ Եւ նոքա կ՚ապշին անդէն քո այս դատաստանին վերայ, յուշ կը բերեն քեզ, իբրեւ թէ դու կը մոռանաս նոցա առաքելութեան ու մեծամեծ գործոց վարձատրութիւնը․ եւ ակնկալեալ արքայութենէդ զրկելով՝ վարձահատ կ՚առնես զիրենք։

Քանի՞ անամօթ են կեղծաւորներ, ո՛վ ճշմարտութիւն, երկրիս մէջ կեղծաւորելով՝ երկնից մէջ եւս կեղծաւորել կ՚ուզեն քո անաչառ աթոռին առաջ․ ուստի բողոք բառնալով կ՚ասեն․ «Տէ՛ր, դու զմեզ չէ՞ս ճանաչեր, որ քո առաջ կերանք ու խմեցինք, քո անունով մարգարէացանք, քո անունով դեւեր հանինք․ քո անունով առաքեալ եղանք․ Աւետարանդ քարոզեցինք, քո անունով քո հաւատացեալ հօտին հովիւ եղանք, ոչ-

*խարներդ ու գառներդ արածեցինք, եւ քո անունով այլ բազմապատիկ հրաշքներ գործեցինք աշխարհին վերայ. ժողովուրդըն զմեզ հայր կոչեց, սուրբ կոչեց, եւ քո հոգին ձեռնադրելով զմեզ՝ պաշտօնեայ կոչեց, վարդապետ կոչեց, քահանայ կոչեց, սարկաւագ կոչեց. եւ դու խսկ՝ լոյս եւ ա՛ղ անուանեցիր. ո՜հ, այժմիկ պիտի դատապարտուինք քո արդար դատաստանին առաջ եւ ի դերե՞ւ պիտի երթան մեր խաչակրութեան այնչափ անձնանուիրութեան զոհերը»:*

*Ո՛վ իրաւադատ ճշմարտութիւն, երբ դու անիրաւ եւ կեղծաւոր մշակներուն դատաստանն այսպէս կը տեսնաս եւ քո դուռը կը փակես նոցա դէմը, անշուշտ հաւատարիմ մշակներուդ, ազնիւ ծառաներուդ վարձքը՝ բիւրապատիկ կը վճարես. նոքա՝ որ զքեզ սիրեցին եւ քո բանը պահեցին. նոքա, որ ամէն բան թողին եւ զքեզ պաշտեցին. նոքա, որ քո շնորհաց տաղանդներն՝ բազմապատիկ շահելով աճեցուցին. նոքա, որ անափառութիւնը ոտնահարելով՝ Աւետարանիդ հեզութեան դասերը օրինակով ուսուցին. նոքա՝ որ ուղիղ հասկցան քո գերագոյն պատուէրը՝ թէ «Դուք ամենեքին հաւասար եղբայր էք». եւ երբէք չմտաբերեցին խաղաղ ու միամիտ որդիներդ վրդովել, մի հօտիդ ու փարախիդ գառները իրարմէ բաժանել, հերետիկոս, հերձուածող եւ չարափառ կոչելով: Եւ դու սիրոյ, խաղաղութեան եւ միութեան ճշմարիտ Վարդապետ Յիսուս, քանի՞ ցասմամբ ու խստութեամբ պիտի դատես այն տիրապետող վարձկան հովիւները, որ քո հօտը՝ բաժին բաժին երկպառակեցին:*

*Ո՛վ ճշմարտութիւն, թող մարդիկ եւ ստութեան պաշտօնեաներն այնպէս կարծեն թէ զքեզ կը հալածեն, եւ կամ քո ծառաները կը չարչարեն. որոց պատուէր տուիր, որ չարին դէմը չհակառակին. եթէ մի քաղաքէն հալածեն՝ ի միւս քաղաք փախչին. եւ միթէ աշխարհ զքեզ յաւիտեան պիտի վանէ՞, դու, ո՛վ խաչեալ ճշմարտութիւն, ո՞չ ապաքէն իրախոյս տուիր խաչիդ դրօշակին տակ զինուորող ծառաներուդ. «Քաջալերացարուք, զի ես յաղթեցի աշխարհի», ի՞նչ յաղթութիւն եւ ի՞նչ է քո փախուստ, չգիտեմք:*

*Ո՛վ անընկճելի ճշմարտութիւն, գիտեմք եւ կը խոստովանիմք. դու անյաղթ ես. այնպէս կը թուիս թէ նկուն կը լինիս եւ աշխարհ քեզ հետ կը խաղայ. ինչպէս խաղաց քո մարտիրոսներուն հետ. սրով ու հրով զրաւեց նոցա կեանքը. աշխարհ իւր անզգամներով այնպէս համարեց թէ՝ առ յիմարութեան*

*մեռան ու կորեան․ սակայն երկնից մէջ նոցա յոյսը լի է անմահութեամբ, եւ երկրիս վերայ նոցա յիշատակ օրհնեալ եւ փառաւորեալ է։ Եւ ո՞ գործեց այս մեծ հրաշք, դու միայն, ո՛վ յաղթական ճշմարտութիւն։*

*Ո՛վ արդար եւ ազատ ճշմարտութիւն, գիտե՞ս, խելակորոյս մարդիկ մեռուցանելն յաղթութիւն կը համարին, բռնանալ տիրապետել՝ բաղդի տուրք կը համարին․ մարդոյն ազատ պարանոցը ստրկութեան լծով կորացուցանել՝ իրաւունք կը համարին․ զաղքատն ու զանաւագ կափահարել՝ զօրութիւն կը համարին․ բազմաց վերայ բարձրանալ պերճանալ՝ թագաւորութիւն կը համարին․ միով բանիւ միշտ գուն գործելով ճշմարտութիւնդ նուաճել՝ փառք եւ յաղթութիւն կը համարին։*

*Այլ դու, ո՛վ անմահ ճշմարտութիւն, քո հաշիւդ այսպէս չէ․ ով որ ճշմարտութեանդ համար մեռնի՝ դու զայն Աստուծոյ պաշտօն կը համարիս․ ով որ աշխարհիս ստրկութեան լուծը կը կրէ՝ դու զայն Աւետարանովդ ազատորդի կը համարիս․ ով որ կը կուփուի կը ճուփուի հարստահարիչներուն ձեռքէն․ դու զայն ազատ ու երջանիկ կը համարիս․ հոգւով աղքատներ, սգաւորները, հալածեալներն առ հասարակ կ'երանես․ ոչինչ փոյթ չէ քեզ թէ աշխարհ՝ այս քո հաշուիդ վերայ կը խնդայ, երբ դու՝ հակառակ մարդոյն կրից ու ցանկութեան, մարդոց երանութիւնը՝ զրկման, թշուառութեան եւ մահուան մէջ կը դնես։*

*Ահաւասիկ այս է, ո՛վ անքննին ճշմարտութիւն․ որ աշխարհ զքեզ կ'ատէ, քո միտք եւ քո լեզուն չի հասկնար։ Այլ ըզքեզ սիրող եւ պաշտող ծառաներն շատ են, թող աշխարհ իւր թերահաւատներով՝ փիլիսոփան իւր գրչով՝ բնագէտն իւր փորձով տքնի ու ճգնի գրչով չքացուցանել քո զօրութիւն․ քո զինուորեալ ծառայներդ մինչեւ ցմահ կը մրցին, եւ քո Աւետարանդ բաւական է այն ամէն յամառ փիլիսոփայից կարծիքները նուաճել ու ցրել․ մանաւանդ այն վերջի պահուն, մինչ կը ցնդի նոցա գլխոյն ուղեղը, գրող մատուըները կը չորնան, աստեղագէտ աչկունք դէպի հող կը յառին, կորովի մտաց լոյսը՝ մահուան ստուերին տակ կը նսեմանայ․ եւ դու յայնժամ կուգաս ու կը քաղես նորա ոգին, կը փշրի հողակերտ անօթն․ փիլիսոփան հող կը դառնայ, դու լոյս կը մնաս․ փիլիսոփան կը մեռնի, իսկ դու անմահ եւ անմահութիւն ես, փիլիսոփայն ափ մի հողին մէջջ յաւիտեան կը լռէ, կը դադարի եւ կը խոնարհի իւր հպարտ գիտութենէն․ այլ դու կենդանի եւ յաւի-*

*տենական իմաստութիւն ես. քո գիտութիւն անչափ անսահման ովկիանոս է եւ երբէք չես սպառիր:*

*Այլ եւս բան է: Աւարտեմ քո յաղթական ճառը, ո՛վ յաւիտենական ճշմարտութիւն, ես որ Աւետարանիդ ճշմարտութեան մի հէք պաշտօնեան եմ՝ կը պաղատիմ քեզ, քո սիրով եւ լուսով զինուորէ հոգիս, ես մանուկ էի դեռ՝ ճշմարտութեանդ յուսացայ. եւ արդ նոյն յուսով ճշմարտութեանդ կ'ապաւինիմ. եւ երբ ճշմարտութիւնդ ինձ օգնական կանչեմ. «Յոյց ինձ ճանապարհ, յոր եւ գնացից. զի առ քեզ տէր համբարձի զանձն իմ»: Յոյց ինձ նաեւ որ քո ճշմարտութեան ճանապարհն ընտրեմ եւ քո իրաւունքը յաւիտեան չմոռնամ:*

———o———

## ԱԻԱՐՏ

Դնեմք աստ իբրեւ կնիք եւ պսակ ԽԱՉԻ ՃԱՌԻՍ, ՇՆՈՐՀԱԼԻՈՅՆ մի տաղերգ որ երգի վերջի Աւագ Ուրբաթուն:

Անեղ Որդին Հօր Միածին բազկատարած
Այսօր եկաց 'ի յատենին մեղաւորաց:
Բարձեալ մարմնով 'ի խաչն անճառ խոնարհութեամբ,
Բերեալ բազկաւ զհեռացեալ ազգս որդւոց մարդկան:
Գառն անարատ 'ի սպանդ ածեալ պատարագի,
Գայ հաշտութեամբ Հօր 'ի բառնալ զմեղս աշխարհի:
Դասապետ եղեն դըպիրքն առ Պիղատոս,
Դատաստանաւ բառեալ 'ի խաչ բողոքէին:
Եկըն եհաս վախճան մահու նախաստեղծին,
Եւ ցուրտ եւ պարզ օր մի յայտնի տեառն Աստուծոյ:
Զէլի էլին Հօր գըրութեանց տայր 'ի խաչին,
Զհաշտութիւն Հօր խաչահանուացն աղօթելով:
Էնն էից անպարագիրն յաւիտենից
Երեւեցաւ մեզ 'ի վախճան ժամանակիս:
Ընդ մեզ Աստուած յայտնեալ՝ բարձեալ մարմնով 'ի խաչ,
Ընդդէմ լուսոյ արեգականըն կնքելով:
Թողեալ լըքաւ լոյսն 'ի ծոցոյ արեգականն.
Թագոյց յինքեան ըզճառագայթս 'ի մէջօրեայն:
Ժամն ոչ տիւ էր եւ ոչ գիշեր 'ստ մարգարէին.
Ժամանեալ զայ տէր զօրութեանց ի պատերազմ:
Իշխանութեամբ զհոգին առ Հայր աւանդելով,

Ինքն 'ի հանդէս մարտի իջեալ ընդդէմ մահու։
Լըւան իշխանք չարին, պակեան ահիւ մեծաւ․
Լըւեալ մահու եւ դըժոխոց սասանեցան։
Խոր խաւարին սաստէր Յիսուս լուսով խաչին,
Խընդիր առնէր իւր ծառայիցն անդ գերելոց․
Ծանեաւ Ադամ զնըշան գալոյն տեառն 'ի դըժոխս,
Ծանր ամօթով կայր հիացեալ երկիւղագին։
Կարկառ նըմա Յիսուս ըզձեռս իւր բեւեռեալ․
Կոչէ ձեռամբ, քաջալերէր․ մի' երկընչիր։
Հայեաց 'ի ձեռս յոտս եւ 'ի կողս՝ որ վասն քո,
Հայեաց 'ի գլուխս բարձեալ զանէծս 'փշոց երկրէ։
Ջաղկ եղեգան հարին 'ի գլուխ իմ մեղաւորք։
Ջաղեալ ապտակ եւ թուք 'ի ծնօտս ինձ մատուցին։
Ղետի եռուն ինձ կերակուր ընդ քացախոյ,
Ղեղւոյ մեղաց քոց փոխանակ որ 'ի դրախտին։
Ճանապարհաւ մահու ընդ քեզ հետեւեցի,
Ճանապարհիս կենաց ընդ իս եկ յարութեամբ։
Մաքուր հոգիք սըրբոց, եւ ձեզ մեծ աւետիս․
Մատիք տեսէք մարմնով եկեալ ում ցանկայիք․
Յառաջագոյն գուշակելով զիմ ըզգալուստ․
Յայս ահագին խոր խաւարին՝ ուր էք կապեալ։
Նովին մարմնով, զոր 'ի Կուսէն եմ զգեցեալ։
Նախ 'ի դժոխս իջի փըրկել ըզկորուսեալսդ։

---

# ՑՈՐԴՈՐԱԿ

ՇՆՈՐՀՕՔ Սըրբոյ Հոգւոյն լըցեալ եղեն սուրբ մարգարէքն,
Շարժեա'լ ' նմին ժամու մեծ զօրութիւն մատուցանեն․
Որ ընդ Հօր ես յէութեան եւ 'ի յաթոռ փառաց նըստիս,
Որ իջեր զմեզ փըրկեցեր արարչական քո զըթութեամբդ․
Ջիշխէին հայել 'ի քեզ հոյլք երամիցըն Սրովբէից,
Ջարաչար նախատանօք լցեալ եղեր 'ի յատենի։
Պարակից եղեալ վերնոցըն, գոչեսցուք արտասուելով․
Պատուական արեամբըդ քոյ փրկեալ զգերեալքս 'ի թըշնամւոյս․
Ջրոյդ կենաց փափագեցաք, ըզմեզ արբո ըզծարաւեալքս․
Ջրով 'ւարեամբդ, որ 'ի կողէդ, ըզմեզ լըւա 'ի հնութենէ։

---

# ԺԱՄԱՆԱԿ

*և*

# ԽՈՐՀՈՒՐԴ ԻՒՐ

---

*ԽՈՐՀՐԴԱԾԵՑ*

*ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ*

Ամենեցուն ժամանակ է եւ ժամ ամենայն իրաց ի ներքոյ երկնից։

Ժամանակ ծնանելոյ եւ ժամանակ մեռանելոյ· ժամանակ տնկելոյ եւ ժամանակ խլելոյ զտնկեալն· ժաժմանակ սպանանելոյ, եւ ժամանակ բժշկելոյ· ժամանակ քակելոյ եւ ժամանակ շինելոյ· ժամանակ լալոյ եւ ժամանակ ծիծաղելոյ· ժամանակ կոծելոյ եւ ժամաւնակ կաքաւելոյ· ժամանակ խնդրելոյ եւ ժամանակ կորուսանելոյ· ժամանակ ցրելոյ քարինս եւ ժամանակ ժողովելոյ... ժամանակ պատառելոյ եւ ժամանակ կարկատելոյ· ժամանակ լռելոյ եւ ժամանակ խօսելոյ· ժամանակ պատերազմի եւ ժամանակ խաղաղութեան։

*Սողոմոն, Գիրք Ժողովողի. Գլ. Գ.*

## ԱՌ ՄԵԾԱՐՈՅ ՀԱՅՐԵՆԱԿԻՑԴ ԻՄ

### ԵՒ ՄՏԵՐԻՄ ՍԻՐԵԼԻ(*)

---

ԺԱՄԱՆԱԿ ԵՒ ԽՈՐՀՈՒՐԴ ԻՒՐ մակագրով մի քանի տող բան խորհրդածեցի եւ ի գիր հանի, զոր Ձեր ազնիւ անուան կը նուիրեմ· եւ դու որ բան, գիր ու գիրք ու յառաջդիմութիւն կը սիրես, կը խնդրեմ որ յօժարամտիս զայն ի լոյս հանել Ձեր անձնանուէր ձեռնտուութեամբ· եւ ձեզ նըման գիր ու բան սիրող Հայոց երիտասարդաց դուն նուիրես, որպէս զի կարդան ու խելամտին թէ ի՞նչ է ժամանակ եւ իւր անյայտ խորհուրդներ, եւ ո՛րչափ տիրող եւ հզօր է:

Երկնից Նախախնամութիւն իւր ամենիշխան գաւազանը ժամանակին ձեռք տուեր է· որ կը վարէ եւ կը կառավարէ մեր աշխարհ ինչպէս ոստիկան մի:

Հէք մարդոյն կեանք՝ ժամանակի յարաշարժ փոփոխութեան մէջ կը տարուբերի միշտ հողմավար լինելով որպէս չորացած խոփւր: Միայն սոսկական եւ ստրուկ մարդ չէ որուն վերայ կ'իշխէ ժամանակ, այլ եւ աշխարհիս հզօր գահեր նոյն անզօր խոփւներու պէս կը տարուբերին:

Եւրոպա ժամանակի խորհուրդ թողուց եւ այժմ իւր հրաշք Թուրքաստանի վերայ դարձուց· մարդ չէր հաւատար որ հինգ հարիւր տարեկան Թուրքիոյ պառաւած եւ ամուլ Մայր երկնելով երկնելով հին աշխարհին համար նոր Մանուկ Սահմանադրութիւն մի ծնէր: Ծնաւ, այո՛, եւ ստրկացած ժողովուրդներ իբրեւ ազատարար կը համարին զայն· բայց տեսցուք թէ դայեակներ ի՞նչպէս պիտի պահեն զայն որ ապրի· երբ նոր վերածնած մանուկ Թուրքաստան կռուով ու սրով մանկակոտոր կը լինի:

Դժխեմ ժամանակ երկու ձեռք միանգամայն բերաւ Թուրքաստանին վերայ· նոր Օրէնք՝ Սահմանադրութիւն բերաւ, որ նորա յաւիտենական աւերակներ շինէ· պատերազմ բերաւ, որ նորա հին աւերակաց վերայ նորանոր աւերակներ կ'ուտէ:

Բայց աշխարհի պատմութենէն, կարգէն ու դրութենէն այնպէս կ'իմանանք, որ ի վերջոյ յաղթող ժամանակ պատերազմին անդող ձեռքը կարնելով՝ կ'ընդարձակէ խաղաղութեան եւ յառաջդիմութեան ձեռք· եւ ինչ որ քակեց պատերազմ· Սահմանադիր Օրէնք, հաւասարութիւն եւ ազատութիւն զայն կը շինեն:

Եւ այս իսկ է ժամանակին գործ ու խորհրդանշան, որ աշխարհս քակուելով եւ շինուելով միշտ յառաջդիմէ: Անշուշտ ամեն հնութիւն պէտք է քանդուի· այլ միթէ ինչ որ այսօր կը շինեմք եւ զայն կը համարիմք, կը մնա՞յ: Քա՛ւ· այն եւս կը կորնչի եւ կը մնայ միայն Յաւիտենականն, ըստ Սաղմոսին· «Նոքա կորնչին եւ դու կաս եւ մնաս յաւիտեան»:

ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ

---

(*) Ուղղուած է գրքին առաջին հրատարակիչ Պ· Համբարձում Անէմեանի:

# ԺԱՄԱՆԱԿ ԵՒ ԽՈՐՀՈՒՐԴ ԻՒՐ

———o———

Ով յաւիտենական Ժամանակ, քո խորհուրդ, քո գործ եւ քո նպատակն ի՞նչ է, չըգիտենք. երկնակամարին վերայ պայծառ լուսագունտ մի ունիս, զոր արեւ կը կոչեմք, եւ որ անհուն բարձրութենէն ճառագայթներն արձակելով մեր այս երկրագունտ կը լուսաւորէ եւ կը չափէ մարդկային առօրեայ կեանք։

Քո արեւուն տակ մերկ կը ծնի մանուկն, նոյնգունակ մերկ կը մեռնի. գիտես թէ մէկ ձեռքովդ մանուկներն խանձարուրի մէջ կը պատես ու կ'օրօրես, միւս ձեռքովդ զանոնք կը տանես գերեզմանին մէջ կը թաղես։ Ասա՛ մեզ, գերեզմանին մէջ ո՞րչափ է. եւ մինչ մայրեր եղերամայր կը լինին, կու լան եւ կ'ողբան որդեկաց գերեզմանին վերայ, դու կը ծիծաղիս եւ ծափ կը զարնես։

Մերթ որպէս թէ խնայելով կը թողուս որ մանուկն աճի ու զարգանայ. դո՞ւ արդեօք մերթ դաւաղան կու տաս ձեռք որ մանուկ թագ կապէ թագաւոր լինի. մերթ եւս կը թողուս որ ստրկանայ. մերթ ազատ եւ երջանիկ, եւ մերթ ստրուկ ապերջանիկ, մերթ հարուստ եւ մեծատուն, մերթ աղքատ եւ տնանկ, մերթ հանդիստ եւ մերթ չարչարեալ։

Սակայն ո՛վ հզօր եւ տիրող Ժամանակ, մարդիկ թէ մեծ լինին եւ թէ փոքր, ոչինչ փոյթ է քեզ, դու զամէնք հաւասար կը ճանաչես, հաւասար դատաստան կ'առնես, եւ քո արդարութիւն այս է որ թագաւոր եւ ստրուկ, տէր եւ ծառան զամէն միահամուռ մահուան ստուերին տակ դնելով՝ հողն հողով կը ծածկես եւ կը կնքես հէք մարդոյն կեանքն ու վախճանը։

Ո՛վ գերիշխան Ժամանակ, քո դաւաղան միահեծան է. աշխարհիս հըպարտացող գահերն այնպէս կը կարծեն թէ չկայ ամենիշխան տէր մի որ կը տիրէ թագերուն վերայ, թէ չը կայ ամենազօր ձեռն մի որ թագեր կու տայ եւ կ'առնու, եւ թէ չը կայ գերագոյն դատաւոր մի որ թագերուն դատաստանը կը տեսնէ։

Այո՛, կը խոստովանի՛մք, ո՛վ իշխող Ժամանակ, որ դու մեր աշխարհի փայլուն թագեր եւ գահերն ոտքով կը տարուբերես եւ կը խաղաս, ինչպէս կը խաղայ մանուկն իւր գնտակին հետը։

Այսպէս չը խաղացի՞ր Մակեդոնացի դիւցազն Աղէքսանդրի հետ. Յունաստանէն մինչեւ ի Բաբիլօն վարեցիր այդ ջախջախիչ աշխարհակալ գընդակը, որ աշխարհիս լեռները տապալեց ու հարթեց։ Ժողովուրդի արեան մէջ թաւալգլոր խաղալով գնաց հասաւ մինչեւ Բաբիլոնի վիհը, հոն զարկիր գնտակը եւ գլորեցիր մահուան փոսը, ասելով՝ Ցայս վայր էր քո աշխարհակալութիւն, անդր եւս մի՛ անցանիցես։

Այսպէս խաղացիր դու նաեւ Ֆրանսիոյ դիւցազն մեծն Նաբոլէոնին հետ. այն հրացեալ պողպատէ գնտակն որ խուն ժամանակի մէջ աշխարհ դըլորելով պիտի փշրէր իւր ծանրութեան տակ բոլոր ազգեր եւ գահերը, Վաթէրլոյի դաշտին մէջ վրան հասար, ձիոյն սանձ բռնեցիր եւ մի հարուածովդ գլորեցիր գնտակը մինչեւ Ովկիանու Ս. Հեղինէ կղզին, ուր հրացեալ աշխարհակուլ գնտակ պաղեցաւ իբրեւ ջուր, փշրեցաւ եւ մոխիր դարձաւ դաւաղանիդ առաջ։

Ո՛վ Ժամանակ, հին աշխարհ իւր հին աշխարհակալներով, իւր հին չէնքերով եւ գերութեան շղթաներով ջախջախեցիր ու անցար. հին աշխարհին յաջորդեց նոր քաղաքակիրթ աշխարհ. գիտութիւն, արուեստ, ճարտարութիւն այնչափ յառաջդիմեց, որուն վերայ կը զարմանան եւ կ'ապշին մարդիկ, եւ շատ անգամ չեն հաւատար թէ այդ ամէն՝ մարդուն աշխատութեան եւ նորա հնարագէտ հանճարոյն արդասիքն են։

Ժո՛ղովուրդ, ելէք, յոտին կացէք, բարեւ բռնեցէք, եկաւ նոր քաղաքակիրթ աշխարհ եւ կ'ողջունէ մեզ. այլ զգուշացէք, ժողովուրդ, դարձեալ սուր կայ ի ձեռին եւ կը մխէ ժողովուրդին կողը։ Միթէ նոր քաղաքակիրթ աշխարհին գահերը հին աշխարհակալաց ոգին, փառասիրութեան տենչ եւ գահ գահին վերայ յաղթանակ տանելոյ փառք փոխե՞ց արդեօք։

Ո՛չ, ո՛չ, այլ առաւել եւս զօրացաւ ու զայրացաւ այդ ոգին, որ ահաւասիկ ազգ ազգի դէմ եւ Թագաւորութիւն Թագաւորութեանց դէմ կ՚որոտայ հրրուրի թնդանօթով, եւ կ՚սպառնան միմեանց հետն ու յիշատակ ջնջել աշխարհիս երեսէն։

Ո՞վ կը հաւատայ այլ եւս թէ կռուող դահերն երբեմն կը միանան, զիրար կը գրկեն, ուխտիւ խաղաղութեան դաշնակցութիւն կը կապեն եւ խրնամով կը դրեն զայն մագաղաթին վերայ որ չպատառի եւ անջինջ մնայ։ Բայց մեր դարու քաղաքականութեան սոսկալի դիւանագիտութիւնը եթէ չկարենայ այդ մագաղաթի խաղաղութեան դաշնագիրը մի մատով պատռել, սուր ժանիքներով կը պատռէ եւ արագ պատերազմի հրովարտակը կը գրէ։

Ո՛վ իմաստուն ժամանակ, մեկնէ՛ մեզ, պատերազմ դո՞ւ կը բերես թէ պետական մարդոց փառասիրութիւն կը հնարէ զայն· կամ թէ նախախնամող արդարութեան մի թագուն խորհուրդն ու գաղտնի՞քն է, որ ծածկուած է մեր տեսութենէն։ Այլ քա՛ւ թէ այնպէս կարծեմ որ մարդասէր Նախախնամութիւնը պատերազմի դաշտին երեսը ծովացած մարդոց սպաժոյժ արիւնով կը զուարճանայ։

Ո՛վ աներեւոյթ եւ անծանօթ ժամանակ· մեծն Սողոմոն քո փոփոխական երեւոյթները պէսպէս գոյներով կը նկարագրէ· «Ամենայն իրաց ժամ է եւ ժամանակ· ժամանակ պատերազմի եւ ժամանակ խաղաղութեան· ժամանակ շինելոյ եւ ժամանակ քակելոյ· ժամանակ կորուսանելոյ եւ ժամանակ խնդրելոյ· ժամանակ լալոյ եւ ժամանակ ծիծաղելոյ· ժամանակ խօսելու եւ ժամանակ լռելոյ»։

Եւ ես կը յաւելում առ այս· ժամանակ ստրկութեան եւ ժամանակ ազատութեան· ժամանակ չարչարանաց եւ ժամանակ փրկութեան· ժամանակ զրկանաց եւ ժամանակ հատուցման· ժամանակ կործանելոյ եւ ժամանակ կանգնելոյ· ժամանակ ինքնահրաման պետութեան եւ ժամանակ Սահմանադրութեան։

Ո՛վ խորածածուկ ժամանակ, ի՞նչ խառնակ ու հակառակ երեւոյթներ ունիս թշուառ մարդոյն համար, որոյ կեանքն անանջրպետ մի խառնուրդ է երջանկութեան եւ ապերջանկութեան մէջ։ Ո՛հ, ի՞նչ անօրինակ ներդաշնակութենէ կազմուած են մարդոյն կենաց լարեր, որ կը հնչեն այսպէս մերթ խնդութիւն եւ մերթ տխրութիւն, ծնունդ եւ մահ, խլել եւ տնկել, շինել ու քակել, ծիծաղն ու լաց, կոծն ու կաքաւ, կռիւն ու խաղ, սուրն ու համբոյր, խաղաղութիւն եւ պատերազմ, ազատութիւն եւ ստրկութիւն, խօսիլ ու լռել եւ այլն։ Ի՞նչպէս հնար է որ մարդն ապրի, այս դահավէժ ելեւէջներուն մէջ անկասկած վարէ իւր կեանք եւ նաւարկելով երթայ իւր նաւահանգիստ գտնէ։

Ո՛վ մարտագոռ ժամանակ, ասա՛ եւ դուշակէ մեզ, մարդ մարդոյ դէմ, ընկեր ընկերի դէմ, ազգ ազգի դէմ անխնայ կը պատերազմի սպիտակ դաշտեր արիւն ջրով լուացինք, մեր ճակատամարտ կոտորեցինք եւ կոտորուեցանք, մարդոց դիակները եւ կառափներ գահերու տակ գլորեցինք որ բռնութիւն եւ փառասիրութիւն յագենայ։ Արդեօք խաղաղութեան ցանկալի ժամն հասա՞ւ։

Ո՛վ աւերիչ ժամանակ· բազում ժամանակ է որ արեւելեան երբեմն մեր բարգաւաճ եւ հարուստ աշխարհ հիմնայատակ քանդուեցաւ, չէն չէն գիւղեր եւ քաղաքներ առ ի չգոյէ բնակչաց աւերակ դարձան, մնացորդ ժողովուրդ հայրենիքէն հեռացած պանդխտութեան մէջ անարգ ծառայութեամբ կը չարչարուի։ Արդեօք վերաշինութեան ժամն հասա՞ւ։

Ո՛վ կորուսիչ ժամանակ, դո՞ւ արդեօք տարար եւ քո անցելոյն մէջ կորուսիր ու թաղեցիր Արեւելեան աշխարհին հին փառքն ու վայելչութիւն, տարար ու կորուսիր առաքինի քաջազանց արիական յաղթանակները· տարար եւ կորուսիր նաեւ Հայկայ տան փառքն ու հարստութիւն եւ մեր նախնեաց մնացորդ նշխարներ· եւ զարդիս տարար եւ կորուսիր մեր կեանք, հացն ու վաստակ· ո՛հ։ Արդեօք մեր կորստեան գիւտի ժամն հասա՞ւ։

Ո՛վ սգոյ եւ սգաւորաց ժամանակ· Աւետարան երանի կուտայ սգաւորաց, այլ մինչեւ յե՞րբ սգանք ու լանք, միթէ մեր աշխարհ մեռելոց աշխա՞րհ է, մեր կեանք գերեզմա՞ն է, մեր գոյութիւն ոչնչութի՞ւն է,

մեր բնակութիւն բա՞նտ է, մեր կապանք յաւիտենական շղթա՞յ է․ ո՛վ Տէր, ժողովուրդ լի եղեւ տրտմութեամբ։ Արդեօք իւր մխիթարութեան ու խընդութեան ժամն հասա՞ւ։

Ո՛վ զրկանաց ժամանակ․ զրկեալ ժողովուրդ աղաղակելով հատաւ իւր յոյս, հատաւ իւր շունչ եւ ձայն․ հնձող մշակներուն բողոք դեռ չհասա՞ւ երկինք։ Բիւրաւոր զրկեալներ դատաւորաց տուներուն առաջ իբրեւ այրին այն ժտելով թախանձելով՝ դատ եւ իրաւունք կը խնդրեն։ Արդեօք դատաստանի եւ իրաւանց հատուցման ժամանակ հասա՞ւ։

Ո՛վ ջախջախիչ ժամանակ, վարիչ կառքիդ անիւներ կարծրակուռ երկաթ են եւ ժանիքներդ պողպատէ․ միշտ անսահման հոլովելով ջախջախեցիր ժողովուրդին կառափն ու պարանոցը, ոտք, սրունք, բարձք առ հասարակ խորտակեցաւ, անզգայացաւ, ժողովուրդ դարձաւ մի անյարիր անդամալոյծ, ո՞վ կարող է զինքն յարուցանել այսուհետեւ․— միայն արդար, հաւասար եւ ազատ Օրէնք։ Արդեօք գետնաթաւալ մեռելատիպ ժողովուրդին վերանորոգ յարութեան ժամն հասա՞ւ։

Ո՛վ ժամանակ, դու գիտես որ հարուածող գաւազանին տակ ստրկական երկիւղով փակուած ժողովուրդին բերանն ու լեզուն՝ որ իւր կեանք պահելու համար սովորած էր միայն լռութիւն պահել եւ ապտակողին դէմ անմռունչ կերպով միւս երեսը դարձնել, եթէ մերթ ընդ մերթ ազատ մամուլ իւր ազատութեան ճիգ եւ ձայն հանէր, այն եւս կը ճնշուէր խիստ օրինաց ներքեւ․ ուստի մեր աշխարհ զրկանաց եւ անիրաւութեան բազմատեսակ վէրքեր միշտ ծածուկ մնաց, վերջապէս նեխեցաւ ու փտեցաւ, ամէն ոք դարմա՜ն, դարմա՜ն կ՚աղաղակեն։ Արդեօք խորհելոյ, գրելոյ եւ խօսելոյ ժամանակ հասա՞ւ։

Հասա՛ւ, հասա՛ւ այն ազատաբեր ժամանակ․ քեզ աւետիս կու տամ, ժո՛ղովուրդ, լռած լեզուդ եւ փակուած բերանդ բա՛ց այսուհետեւ, խօսի՛ր եւ գրէ՛ որչափ սահմանադիր Օրէնք քեզ ազատութիւն կու տայ․ խօսի՛ր երբ կը զրկուիս․ խօսի՛ր դատաւորաց առաջ երբ ապիրատ ձեռք զքեզ կ՚ապտակեն․ խօսի՛ր եւ իրաւունք խնդրէ․ «Եթէ չար ինչ խօսեցայ, վկայեա՛ վասն չարին․ իսկ եթէ բարի՝ ընդէ՞ր հարկանես զիս»։ Գիտցիր որ ազատ Օրէնք զքեզ չի փրկեր, եթէ դու դարձեալ ստրկութեամբ վարուիս քո ոսոխ դատախազիդ առաջ։

Ո՛վ բարեգուշակ ժամանակ, դու բարի եկիր մեր աշխարհ քեզ կ՚ակնկալէր եւ կ՚սպասէր Թուրքաստանի հինաւուրց Մայր՝ որ ամուլ էր եւ հրաշիւք յղացաւ․ ցաւ երկունք կալաւ զինքն իբր ծննդականի․ երկնեց երկնեց եւ այսօր ծնաւ մեզ համար մի նոր մանուկ Սահմանադրութիւն։ Ցընծացէ՛ք, ստրուկ ժողովուրդ, ցնծացէք եւ ողջունեցէք այս նորածին մանուկ եւ միանգամայն աղօթեցէք որ կայտառ մնայ, ապրի, զօրանայ եւ զարգանայ ի կատարեալ հասակ։

Ո՛վ նորածին մանուկ Սահմանադրութիւն, քո մայրն զքեզ արիւնով մկրտեց եւ բազում զոհերով տօնեց քո տօն, որպէս զի Նախախնամութիւն քո կեանք պահէ եւ դու մեծնաս նոր կեանք տաս մեր աշխարհի մեռած ժողովուրդին, որոյ վերածնունդ կենդանութիւն քո ձեռքն է միայն, զի այսպէս կը վկայեն աշխարհավար իմաստուն վարիչները․ եւ միթէ փորձն ինքնին չի՞ հաստատեր։

Մի՛ դժկամակիր, ո՛վ դժուարածին Մայր, որ մանուկդ ցաւօք եւ հեծութեամբ ծնար եւ մարդոց արիւնով մկրտեցիր զայն․ դու արեւելեան կեդրոնին մէջ կը բնակիս, ինքնին խելամուտ եղիր, այնպէս չկարծես որ այդ դէպքը քեզ միայն դիպեցաւ, վասն զի Արեւմտեան աշխարհի մայրերը խիստ դժնդակ ցաւերով ծնան Սահմանադրութեան մանուկ, անհուն արիւնով եւ զոհերով մկրտեցին զայն․ փա՛ռք տուր Աստուծոյ, դու չա՛տ բախտաւոր մայր ես․ չե՞ս տեսներ որ ամէն աշխարհ կը սիրեն եւ կը գորովեն զքեզ․ մանաւանդ մեծն Ովկիանոս, որ քո խնամակալ եւ կնքահայրն է։

Ազատութի՛ւն տուր, ո՛վ մանուկ Սահմանադրութիւն, ազատութի՛ւն կը խնդրեմ քեզմէ որ առ քո սնուցիչ դայեակներն ազատաբար խօսիմ․ զի այլ եւս չեմ կարող հին ծառայական ստրկութեամբ խօսիլ։

Ո՛վ դուք․․․ որ նորածին մանուկ Սահմանադրութեան իբրեւ իմաս-

տուն դայեակ կը հանդիսանայք աշխարհի առաջ, աւաղ աչքով հսկեցէք այդ մանկան վերայ, պինդ գրկեցէք եւ գուրգուրալով պատսպարեցէք զինքն որ սառնամանեաց հովէն չդողայ եւ հարաւոյ կիզիչ արեւէն չտագնապի:

Եւ գիտէ՞ք ու կը տեսնէ՞ք քաջ որ թէ՛ օտար եւ թէ նոյն իսկ մեր աշխարհին մէջ դորա թշնամիներ շատ կան, որ կը չրջին ամենուրեք: Գուցէ դարան գործեն տգէտ ու խաւարադնաց մարդիկ, անտեսանելի մթութեան մէջ գողնան այդ մեր սիրական մանուկ եւ կամ անդէն իւր խանձարուրին մէջ ճնշելով ու նեղելով խեղդեն: Եւ ի՞նչ կը լինի յայնժամ, գիտէ՞ք դուք, ո՜հ, Յետինն չար քան զառաջինն:

Տքնեցէ՛ք ուրեմն, տքնեցէ՛ք որպէս անքուն պահապան. հզօր կամքով զինեցէք ամէն դարանագործ թշնամեաց դէմ, չուրջանակի պատնէշ փակելով՝ մանուկ Սահմանադրութիւն ընդ մէջ առնելով ողջ պահեցէք որ երթալով աճի ու զօրանայ, իւր օրէնքով տիրէ եւ ուղղէ Թուրքաստանի աշխարհավարութեան ուղին: Ո

Ահաւասիկ այդ զարգացած Մանուկն է որ Եւրոպիոյ քաղաքակրթութիւն կը ներմուծէ մեր հին աշխարհ. հին ժողովուրդ նոր օրէնքով կը վերանորոգի եւ Օսմանեան կայսրութեան տան ազատ դաւազան յայնժամ Սահմանադրական թագով կը փառաւորի:

Շատ անգամ մնացինք, ափսո՜ս, խելամտինք այսուհետեւ, հին աշխարհի ժամանակն իւր օրէնքովն անցաւ, նոր ժամանակ նոր օրէնք կու տայ մեզ, զի նոր մարդիկ նոր օրէնք կը խնդրեն: Հին դարերու նախապաշարմունք այլ եւս ծերացաւ ու զառամեցաւ, պէտք է մեռնի, եւ աշխարհէս բարձուի իւր յիշատակ, որ եղծեց ու ապականեց արեւելեան մեր կայտառ աշխարհ: Այսուհետեւ մեր փրկութիւն, մեր կեանք եւ մեր շահն այն է միակ որ ընդունիմք արեւմտեան ազգաց լոյսն, օրէնք եւ քաղաքակրթութիւն եւ այն ամէն յառաջդիմութեան ճանապարհ, յորում նոքա յառաջացան անցան քան զմեզ, եւ մենք յետս մնալով՝ ո՜հ, կը թափառիմք այսպէս խաւարեալ ու մոլորեալ անհետ ու անել բաւիղներու մէջ:

Ո՛վ դժբաղդ արեւելք, աւա՜ղ եւ եղո՜ւկ քեզ, բոլոր ճոխութիւններդ կապտեցան քեզմէ. Նախախնամութիւն՝ դրախտի դարաստանը քո մէջ տընկեր էր, անմահական ջուրերու գետերը դաշտերուդ վերայ վազէին, երկիրդ բարեբեր եւ լեռներդ բոլոր արծաթի եւ ոսկեհանքերով լի են, չգիտեմ թէ ինչո՞ւ համար դու այդպէս հէք, թշուառ եւ անճարակ մնացիր:

Եկան հասան վերջին անձկութեանդ օրերը, դու յայնժամ հազիւ ուրեմն ուշաբերեցիր, աչքդ բացիր յանկարծ տեսար որ քաղաքակրթութիւն իւր ճարտար գիտութեամբ քո չէն դրախտն Արեւելքէն Արեւմուտք փոխադրեր է. պահ մի զարմացար եւ յետոյ ներքին պատճառներն հետազօտելով հասկցար որ հսկող պահապաններդ քնացած էին:

Եւ ո՞ւր էր նոցա հանդիստ բարձն ու քնարան. այդ ծածուկ տեղ մի չէ, արեւուն առաջն է. ես կը տեսնամ եւ աշխարհ կը տեսնայ զայն. նոր Հռովմ եւ հին Բիւզանդիոնն է, Վոսփորի չնաշխարհիկ ափունքն է. անդ քնացեր էին խոր ի քուն աշխարհի հսկող պահապաններ. ա՛նդ կը տեղային Սպիտակ եւ Սեւ ծովերէն համայն Թուրքաստանի ժողովուրդին գանձն ու վաստակ եւ տակաւին բաւական չէր, զի Հռովմայ վերջին եւ Հին Բաբիլօնի անչափաւոր զեղխութեան կեանք անդ նորոգուած էր, այսր մայրաքաղաքին մէջ ճոխաճեմ ապարանքները կը բարձրանային եւ գաւառներում գիւղն ու քաղաք կը քանդուէր:

Ո՛վ չռայլող ժամանակ, եկաւ հասա՞ւ արդեօք այն ճշդող եւ տնտեսող ձեռք, յորում սահմանադիր Օրէնք եւ ճշմարիտ քաղաքակրթութիւն մեր նոր Հռովմայ անկոպար կեանք տնտեսութեամբ չափաւորէ եւ մեր աշխարհի պետական վարիչներ ճոխութիւն արդարութեամբ վայելեն, յիշելով աշխատող ժողովուրդին զրկանքն ու չարչարուած կեանք:

Եթէ այսպէս չլինի, եւ նոր Հռովմ իւր խորդ չփոխէ, զի՞նչ կը լինի արդեօք այս ներկային ապագայ հետեւանքն.— այն կը լինի որ աւասիկ եղեւ ու կատարեցաւ եւ տակաւին կը լինի: Աւա՛ղ, որ անագան զգացին խելամտող ոգիներ, որոց ձեռքն էր Պետութեան վարիչ սանձ. թէ երբ հարստահարիչ ծանրացող ձեռք ժողովուրդին տուն ու տեղ քանդէ այնու-

հետեւ մտաբերել պէտք է թէ երջանիկ Վոսփորին փառքն ու բարձրութիւն կանգուն կը մնա՞յ։

Ո՛վ Ժամանակ եւ Սահմանադրութիւն, պիտի կարճե՞ս այսուհետեւ այն հարստահարող կողոպտիչ ձեռք, որ հողագործին եզները լծերէն չարճակեն եւ մաճակալ՝ սրահար առնելով՝ արիւն եւ արցունք վազեն իւր վարած ակօսներու մէջ, ուր պէտք էր ցերանահատեր ցանուէին, հաց բուսնէր։ Տէրութիւն իւր տասանորդն առնէր, գիւղականին ամբար ցորենով լեցուէր եւ արքունի գանձարան ոսկեհատներով։ Ո՞ չգիտեր որ երբ հաց պակսի, հետեւապէս գանձն եւս պակսի. երկրին կենդանութիւն հացն է, եւ ո՞վ կարող է ապրիլ առանց հացի։

Ո՛վ Ժամանակ եւ սահմանադիր Օրէնք, պիտի կարճէ՞ք այսուհետեւ կաշառակուր դատաւորաց ձեռք. որ պատրուակով չխաղան ձեզ հետ՝ ինչպէս խաղացին մինչեւ ցարդ Տէրութեան օրինաց գրքերուն հետ. Օրէ՛նք, Օրէ՛նք ասացին եւ առանց արդար օրինաց գործեցին. առհասարակ դատաւորական աթոռներու վերայ տիրեց օրինաց զեղծումն, եւ երկրին դատաւորներ «Օրէնսդրութիւն՝ բռնութիւն մեր եղիցի» ասելով բռնաբարեցին զրկեալ բողոքողին իրաւունքը։

Ո՛վ սահմանադիր Օրէնք, դու պիտի քննես, փորձես եւ ընտրես մեր երկիր կառավարող արժանաւոր եւ կարող պաշտօնեաներ, հանճարեղ ծերեր եւ իմաստուն խորհրդականներ. էլ պիտի լռե՞ս եւ թողուս, որ ըստ առաջնոյն պետական մարդոց կամահաճ ընթացքը չարունակէ, զոր դատելով դատեց ու կշտամբեց կայսերական հրովարտակ։ Ո՛հ, եթէ այնպէս լինի, կ'ոչնչանայ երկրին վերանորոգութեան յոյսն. դու կը մեռնիս կամ թէ մեռած տառ մի կը համարուիս. քեզ ակնկալող ժողովուրդ պիտի նստի ողբայ քո ծնունդ եւ մօտահաս մահդ։

Ո՛վ պարտուց եւ իրաւանց հաւասարութեան Ժամանակ, ո՛վ Սահմանադրութիւն՝ որ կու գաս օրէնքով թագաւորել, դուք պիտի հանէք ու բառնա՞յք Օսմանեան տէրութեան երկրին այլեւայլ ժողովրդոց սրտէն թշնամութեան, ատելութեան եւ խտրութեան վէս ոգին, որ գան միանան ի միասին, մի ամբողջ միութիւն կազմեն Մահմէտական եւ Քրիստոնեայ ժողովուրդներ, թողուն այն հին ու յաւիտենական ոխն ու մոլեռանդութիւն վառող աշխարհաւեր կրակն. հանդարտին այդ հակառակ տարրքներ, Տաճիկ, Յոյն, Հայն, Հրէան զիրար ողջունեն իբրեւ համաքաղաքացի ժողովուրդ, եւ ուխտիւ կնքեն ու պահեն այն դաշնադրութիւն՝ զոր սահմանադիր Օրէնք կը նուիրագործէ։

Եւ ի՞նչ է այս հզօր դաշնակցութեան ուխտն, որ Օսմանեան պետութեան զանազան ազգերն մի կապով կը կապէ. այս կապն է մի միայն անխտիր հաւասարութիւն։ Այո՛, հաւասարութիւն իրաւանց եւ պարտուց մէջ, հաւասարութիւն երկրին օրինաց առաջ, հաւասարութիւն հայրենեաց ժառանգութեան մէջ, հաւասարութիւն փառաց եւ պատւոյ մէջ, հաւասարութիւն զինակրութեան եւ զինուորութեան մէջ, հաւասարութիւն քաղաքացիութեան եւ ազնուականութեան մէջ, հաւասարութիւն ուսման եւ յառաջդիմութեան մէջ, հաւասարութիւն արեան եւ անձնանուիրութեան մէջ, հաւասարութիւն արժանաւոր վարձուց մրցանակին մէջ. ահաւասիկ ա՛յս է սահմանադիր օրինաց անխտիր հաւասարութեան կշիռն ու ճշգրիտ պատկեր։

Ո՛հ Սահմանադրութիւն, զքեզ կը ճանաչեմ որ ճարտար քիմիագէտ ես. եթէ մարդիկ թողուն քեզ, դու անզօյգ անբաղադրելի ազգերու տարրքը հաւասարութեան քուրայիդ մէջ կը դնես, կը հալես եւ զամէն ի մի կը ձուլես։ Փորձենք այս անգամ այդ քո ճարտարութեան հրաշք. տեսցուք, ինչ որ Արեւմտեան աշխարհին մէջ գործեցիր՝ մեր անպատրաստ արեւելեան աշխարհին մէջ պիտի յաջողի՞ս։

Կը տարակուսիմք քեզ համար, ո՛վ Սահմանադրութիւն, թէ ի՞նչպէս պիտի շրջիս մեր մութ եւ աներեւոյթ աշխարհին մէջ. մեք այնպէս գիտեմք որ լոյս, դաստիարակութիւն եւ գիտութիւն միշտ քո յառաջընթաց կարապետն են. դու առանց քո կարապետին եկար մտար մեր աշխարհ։ Զգիտեմք, լոյս հետ քե՞զ պիտի բերես թէ առանց լուսոյ խարխափելով

պիտի չրջիս, եւ չկարենաս տեսնել այն մեծամեծ վհեր որ կը բացուին քո առաջ. զգո՛յշ, զգո՛յշ, յուշիկ յուշիկ անցիր. մի՛ դպչիր այն դռներուն՝ որ քո դէմ փակուած են, որպէսզի քո խիստ եւ խոժոռ երեսդ չտեսնան:

Անպատրաստ ժողովրդոց ընդարձակ հրապարակին մէջ համարձակ քալէ. բնաւ մի կասկածիր որ անուսումն ժողովուրդն ստամբակի, դրօշակ բանայ եւ մաքառի քո դէմ. զի դու նորանշան, անծանօթ երեւոյթ մի ես նորա աչքին. նա իրաւունք ունի զքեզ չճանաչելու երբ դու նորա հարազատածին զաւակ չես. օտար ես եւ օտար աշխարհէն կուգաս. քո միտքն ի՞նչ է. մեր հին աշխարհ վերանորոգել, մեր նախապաշարմունք բառնալ եւ մեր հայրենիք ժառանգե՞լ կ՚ուզես. Արեւմուտքը գրաւեցիր, արդ ելար որ Արեւելքն ե՞ւս գրաւես:

Գրաւէ՛, գրաւէ՛. ժողովուրդ կամովին քեզ անձնատուր կը լինի, զի քո ձեռն ազատարար է. դու մի՛ վհատիր թէ անդէտ ժողովուրդին հետը ի՞նչպէս պիտի վարուիս. հին երկաթէ ձեռք բարւոք դաստիարակեր է մեր աշխարհի՛ ժողովուրդ: Հարստահարութիւն, աղքատութիւն եւ ծանրատար տառապանքներ առհասարակ կորացուցեր են ժողովուրդին լծավարժ պարանոց, որ անդիմադարձ պատրաստ է յօժարափոյթ կրել քո դիւրատար լուծ:

Դու գիտե՞ս ու կը ճանաչե՞ս մեր Արեւելեան ժողովուրդը, որ առանց գիտութեան բնապէս ճարպիկ է, եւ այնչափ գռեհիկ չէ որ չգիտնայ իւր ազատութեան եւ յառաջդիմութեան պայմաններն: Այո՛, կան կարծիք եւ մարդիկ, որք տիրապետական ոգին փայփայելով եւ միշտ փասքուս լինելով կը խօսին եւ կը համոզեն այսպէս թէ դեռ մանուկ է մեր աշխարհ. դեռ չգիտէ կարդալ եւ գրել, դեռ ընտրութիւն չունի, ո՞րպէս կարէ որոշել իւր հայրենեաց շահն, բարին ու չար, անպէտն ու պիտանին, ոսկին ու պղինձ, արծաթն ու կապար:

Այսպէս երբ զքեզ իբրեւ անուս եւ անընտրող մանուկ կը դատեն, ժողովուրդ, ո՞վ է մեղաւոր, դո՞ւ թէ քո սնուցիչ դայեակներ. որք իբրեւ օտարամայր՝ կաթ եւ ուրիշ զօրացուցիչ կերակուր խնայեցին քեզ. ցամաք հացով եւ կորեակով ապրեցար. սրտիդ եւ լերդիդ արիւն ցամքելով՝ ողջ կեանքդ ծիւրեցաւ. քո մահն եւ վախճան մօտ էր. անադան ուրեմն զգացին խորհրդական բժիշկներդ. աճապարեցին դեղ եւ դարման տանիլ քեզ համար, որպէս զի հնացեալ ծերութիւնդ երիտասարդանայ եւ դու նոր կեանքով վերածնիս:

Քո դեղն եւ դարման ի՛նչ է, գիտե՞ս, ո՛վ սորկացած մահամերձ ժողովուրդ, ազատութիւն եւ քաղաքակրթութիւնն է. եւ այն է միակ որ պիտի բառնայ գլխէդ կափահարիչ հարուածներ, որ քո ազատ ուղեղը ճնշելով ճնշելով ցնդեց. ո՛հ, չթողուց երբէք որ դու ազատ խորհիս, ազատ խօսիս, ազատարար ճանչնաս քո պարտքն եւ քո իրաւունք, զոր կը սահմանադրէ անբռնադատ Օրէնք:

Օն ուրեմն, միացեալ ժողովուրդ Թուրքաստանի, սիրէ՛ այսուհետեւ քո սահմանադիր Օրէնք, պարտիքներդ վճարէ, իրաւունքներդ պահանջէ. մինչեւ ցարդ անդէտ էիր. այսուհետեւ գիտցիր պարտուց եւ իրաւանց հաւասարակշռութիւն պահել. մինչեւ ցարդ ամէն զրկանօք վարուեցան քեզ հետ, ծանր ծանր պարտիքներ պահանջեցին քեզմէ եւ իրաւունքներդ զլացան. միշտ զրկուեցար ու բողոքեցիր, բայց քեզ ոչ ոք լսեց. այնուհետեւ սովորեցար անմռունչ մնալ միշտ կտրիճներուդ առաջ:

Ո՛հ, տակաւին պահանջողներդ այնպէս կը կարծեն որ դու իբրեւ ալիւրի պարկ մի ես եւ դեռ անսպառ փոշիներ կան քո մէջ. ուստի զարնելով զարնելով դատարկ պարկիդ փոշիներ հանեն. այնպէս որ տաշտիդ մէջ հաց չմնաց եւ գրպանիդ մէջ մի լումայ. իսկ հարուածեալ պարկդ փարատ փարատ եղաւ: Այդ շատ բնական է. երբ հացդ բարձուի, այնուհետեւ հնա՞ր է որ դու մնաս:

Տեսնալով որ պատառ պատառ եղար այժմ, քո նորոգիչներ զքեզ կարկատել կ՚ուզեն. չգիտեմ այլեւս կարկատ կը բռնե՞ս, թէ հնացեալ ձորձիդ վերայ անթափ կապերտ ձգելով աւելի եւս պիտի բացուին հնութեանդ պատառուածներ. կամ իբրեւ նոր գինի հին տիկերու մէջ լեցուելով, նոր

գինւոյն եռացող զօրութենէն տիկեր պատռին եւ գինին կորնչի: Այս օրինակը շատ ճիշդ է Թուրքաստանի ժողովուրդին համար, զոր ցոյց կու տայ մեզ Աւետարանի ճշմարտութիւն:

Կը վհատի՞ս արդեօք, ժողովուրդ, երբ անդարման վիճակիդ նկարագիր կը հանեմ մի՛ խռովիր, մի՛ տագնապիր. մահկանացուաց խորհուրդ եւ դատաստանը Թիւր են. մարդիկ կարճամիտ են. ինչ որ մեր առաջ անհնարին կը Թուին, երկնից նախախնամութեան առաջ միշտ հնարաւոր են:

Ո՞վ կը հաւատար եթէ մի քանի դար յառաջ պատմէին մեզ, որ օր մի Արեւմտեան աշխարհի վայրենացած ժողովուրդ զգօնանայ, գիտութեամբ բարձրանայ, քաղաքակրթութեամբ բարգաւաճի եւ այսօր համայն աշխարհի օրէնք տայ եւ նախանձելի օրինակ լինի:

Այսպէս նաեւ, ո՛վ ապերջանիկ Արեւելք, ո՞վ կը հաւատայ, եթէ մարգարէանամ քեզ համար որ դու եւս օր մի երջանիկ Եւրոպիոյ փառաց ու բախտին պիտի տիրանաս. եւ այն փառաւոր ապագային ներկան այժմէն սկսար. երանի՛ թէ զայն աւարտ հանես եւ յաղթանակես հնութեան եւ նախապաշարման վերայ:

Թերեւս կը հոգաս եւ կը տատամսիս յոյժ, թէ քաղաքակրթութեան աշխարհաշինութիւն ի՞նչպէս պէտք է հիմնարկել եւ հաստատել անկայուն եւ երերուն երկրի մը վերայ՝ ուր շատ հազուագիւտ են իմաստուն ճարտարապետներ եւ շինութեան յարմարագոյն քարեր. զի մեր աշխարհի քարեր համակ անտաշ են, ոչ նախաձեռն դաստիարակութիւն տաշեր, յղկեր է եւ ոչ քաղաքակրթութիւն չափակցութեամբ պատրաստեր է. հապա զիա՞րդ հնար է քար քարի վերայ դնել որ զիրար չեն բռներ, եւ աւարտել այն մեծագոյն շէնքը՝ որ մեր անպատսպար աշխարհին հզօր պարիսպն է. զի այսուհետեւ Զինական քարէ պարիսպներ անպէտ են. միայն քաղաքակրթութիւն կը պահէ աշխարհ:

Այո՛, ե՛ս էլ կը վկայեմ քեզ հետ որ աշխարհաշինութեան քարերդ գիտութեան արուեստով տաշուած եւ քառակուսի չափուած չեն. բայց գիտե՞ս թէ քանի՞ ազնիւ եւ բնական յատկութեամբ գեղեցիկ են մեր աշխարհի քարեր. շատ մարմարիոնի հանքեր ունիմք որ ամէն շինութեանց յարմարութիւն ունին, միայն թէ շինող ճարտարապետներ իմաստուն եւ յառաջատես լինին:

Ափսո՜ս, հազա՛ր ափսոս, որ մեր աշխարհի մէջ դեռ ամէն բան երերուն եւ անհաստատ է. շատ անգամ շինող ճարտարապետներ եւ պատուական անկիւնաքարեր ի միասին կ՚անարգուին. եթէ ազատամիտ հերոսներ ջանան մէկ ձեռքով շինել, խորութիւն, հնութիւն եւ նախապաշարմունք միւս ձեռքով կը քանդեն:

Թող քանդեն որչափ ոյժ ունին. քանդողներ միշտ աւերակաց տակ կը մնան, գերեզման կը ծածկէ զիրենք եւ նոր նոր շինողներ կը ծնին: Այսպէս է այս աշխարհի գործն բուն աշխարհի սկիզբէն. մարդիկ միշտ շինելով եւ քանդելով յառաջ կ՚երթան. բայց ի վերջոյ քանդողներու ձեռք կը լքանի, նկուն կը դառնայ եւ շինողներ կը յաղթանակեն. զի միոյն գործիքներ տգիտութիւն եւ հնութեան են, իսկ միւսոյն՝ գիտութիւն, քաղաքակրթութիւն, եւ սահման՝ արդարութիւնն է: Միոյն առաջնորդ խաւար, իսկ միւսին՝ լոյս եւ գիտութիւն. միոյն իշխանութիւն սուր, իսկ միւսին՝ ազատ Օրէնք:

Բո՛ւռն հար, բռնէ այդ ազատ Օրէնք, ո՛վ Թուրքիոյ ալեկոծ ժողովուրդ. քանի՞ ժամանակ է, ո՜հ, որ կը ծփաս ու կը տարուբերիս մի լաստափայտի վերայ, որոյ համար կ՚ասեն անյոյսներ թէ կապերը քայքայուած են եւ դու սակաւիկ մի եւս անղեկավար, անապաւէն մնալով՝ պիտի խորասուզիս սեաւ եւ ճերմակ ծովերու ընդդիմահար ալիքներու մէջ. եղո՛ւկ քեզ, քո գերեզման ծովերու անդունդներ պիտի լինին. կէտ ձուկ իւր բերան բացած պիտի կլանէ զքեզ եւ դու եւս Յովնանու պէս ձկնափոր կենդանի գերեզմանին մէջ փակուելով խորանդունդ դժոխքէն ձայն բառնաս եւ աղաղակես առ Տէր Աստուած քո:

Օրէ՛նք սիրէ, ժո՛ղովուրդ, օրէնք սիրէ. Սահմանադրութեան երեսէն մի՛ փախչիր որ քեզ համար նոր ամրակապ լաստափայտ մի է, որ ժամանակ հրաշիւք բերաւ քեզ Ովկիանու ափունքէն. ապաւինիր այդ օրինադիր

լաստին, զոր բազում դարեր հազիւ կերտեր են զայն եւ դու պատրաստակազմ գտար։

Այլ թէ տակաւին դանդաղիս, տակաւին մեղկանաս ու մերժես քո վերջին ապաւէն լաստափայտն, տակաւին պաշտես քո հին կարծիքն եւ ասես որ «Մեր աշխարհ նոր օրէնք չի սիրեր, մեք հնութեան մէջ ծնանք, պէտք է հնութեան մէջ մեռնինք· զի հնութիւն՝ մեր խանձարուրն է, պէտք է նաեւ մեր պատանք լինի։

Ո՛չ, ո՛չ, չկամիմք փոխել մեր աշխարհի մութ գոյն եւ մերթ մորթ՝ զոր բնութիւն մութ ներկեր է· չկամիմք ճանչնալ մարդկանց հաւասար իրաւունք զոր պետական Աստուած մեծ եւ փոքր ստեղծեր է· միթէ փոքրիկ ձկներ մեծերուն կերակուր չե՞ն, ինչպէս որ ճնճղուկներ որսական բազէին· ո՞չ ապաքէն բնութեան կարգ եւ օրէնք այս է բովանդակ աշխարհին վերայ, որ միշտ զօրաւորներ տկարներուն տիրեն»։

Մի՛ հաւատար, ժողովուրդ· այդ վարդապետութիւնը տիրապետաց ոգին ստեղծեր է, մարդասէր եւ արդար Աստուծոյն չէ· զի ընդհանուր մարդկութեան կոչումն է կեանք՝ ազատութիւն, արդարութիւն եւ հաւասարութիւն է երկնից առաջ եւ աշխարհիս քաղաքակրթութեան օրինաց առաջ։

Հանէ՛ք այդ հնոտի հանդերձներ, հանէ՛ք ո՛վ Թուրքաստանի հնասէր ժողովուրդ, հանէք ձեր անձէն ու փոխեցէք, ինչպէս կը փոխէ օձն իւր շապիկ· այսուհետեւ դուք այդ պատառատուն զգեստով կարող չէք աշխարհի առաջ շրջիլ եւ քաղաքակրթութեան հրապարակի վերայ երեւիլ, եւ կամ թէ երթալ Եւրոպիոյ աշխարհաժողով արուեստահանդէսին մէջ մտնել, ցոյց տալով թէ դուք եւս քաղաքակրթութեան բաժանակից ազգ էք եւ արեւելեան ճարտարութեան օրինակ։ Ո՜հ, կը յիշե՞ս արդեօք քո անցեալ ազնուականութեան շուքն ու պերճութիւն, որ քան զամէն աշխարհ վեհ ու փառազարդ էիր։

Այլ յայտնէ՛ մեզ, մի՛ ծածկեր, ով անյայտ ժամանակ· դու որ զմարդկային ազգ բիւր ձեւերով եւ գաղափարով ձուլեցիր մինչեւ ցարդ եւ տակաւին նորանոր քաղաքակրթութեամբ կը ձուլես, ասա՛ մեզ, Արեւելք՝ որ իւր հին ազգերով մինչ ի գերեզման խոնարհեր է, այլ եւս պիտի բարձրանա՞յ արդեօք, ապագայ դարերում ի՞նչ կը պատրաստես դու Արեւելից անկեալ ազգերուն համար· ես գիտեմ· շրջող անիւներուդ վերայ առնելով աշխարհիս ազգերը՝ կը դարձնես, կը դարձնես, զոմանս ի վեր կը հանես եւ զոմանս ի վար կը տանես, եւ մերթ եւս անիւներուդ տակն առնելով կը ջախջախես եւ միայն մնացորդ նշխարներ կը թողուս աշխարհիս վերայ։

Ժողովրդոց մնացորդ նշխարներ դարձեալ յուսալից աչքով քեզ կ՚սպասեն, ո՛վ ժամանակ· արդեօք այդ փոշիացած եւ միանգամայն ողջ մնացած նշխարներն՝ որք աշխարհիս հզօր ու տիրող առիւծներու ժանիքներուն մէջ ծախուելով ծախուելով տակաւ տակաւ կ՚սպառին· պիտի բերե՞ս այն ազատութեան օրը, զի այդ փոշիացած նշխարներ մեռելութեան մոխրոց մէմէջէն յառնեն ինչպէս փիւնիկ, կրկինն վերակենդանութիւն ստանան եւ Աստուծոյ ազատաստեղծ մարդիկ՝ մարդոց բռնացող ժանիքներէն ազատին։

Ո՛վ ժամանակ, ժողովրդոց յոյս միշտ կենդանի է եւ չեն թերահաւատիր, այլ կը հաւատան միշտ թէ դու պիտի բերես այն գուշակեալ ոսկեդար, յորում զոռոզ առիւծն՝ աշխատաւոր եզին հետ բնակի, ինձն՝ ուլին հետ մակաղի, բարձր գահեր՝ հին հպարտութենէն խոնարհին եւ ժողովուրդ ազատութիւն համբուրէ։

Բաբէ՜, կը կասկածիմ ես թէ մարդոց այս մեծ հաւատ՝ երազայոյս է, զի հպարտութիւն եւ փառասիրութիւն, քանի որ աշխարհ կայ, մարդոց հետ պիտի ապրի եւ աճի· վասն զի այդ կրից արմատ մարդոց սրտին մէջ ընդարոյս ու բնական է· պանծացող գիտութիւն կարող չէ զայն մեռուցանել առանց Աւետարանի գերապանծ սիրոյն։ Այո՛, միայն Աւետարանի անբիծ կրօն՝ որ անձնասիրութիւն եւ զոհողութիւն կ՚ուսուցանէ· այո՛, այդ միայն կ՚սպաննէ մարդկային անձնասէր հպարտութիւն եւ նորա կամակոր կրից կատաղութիւն։

Ոսկին, հարստութիւն, գահն եւ թնդանօթ միշտ դաշնադիր կը մնան

աշխարհիս վերայ, ժողովրդոց ընկերհաշտական միութիւն այս հզօր դաշնակցաց դէմ պիտի մրցի մինչեւ ի կատարած աշխարհի· թէ իմաստուն ես՝ գուշակէ՛ այժմէն թէ ո՞վ պիտի յաղթահարէ։

Տէ՛ր ամենիշխան որ կ՚իշխես ժամանակին վերայ, զի ժամանակն եւ զայն չափող արեւ եւ լուսին քո կամակատար արբանեակներն են· եւ կը հաւատամ քեզ, ո՛վ Տէր, որ դու միայն ժամանակին սանձ ձեռքդ առնելով տիեզերք կը կառավարես, ամէն բան քո յաւիտենական օրինաց համեմատ կը վարես եւ մարդոց բժժոտած աչքերէն բոլորովին կը ծածկես ժամանակին Խորհուրդը։ Անցեալը՝ մեր մոռացկոտ մտքէն կը հանես· ներկան աղօտ նշմարանքով փոքր ի շատէ ցոյց կու տաս եւ ապագան՝ քո անհաս խորհրդեան մէջ թագուն կը պահես։

Ուրեմն ասա՛ մեզ, ո՛վ Տէր, որ չարն ու բարին աշխարհիս վերայ ելեւէջ կ՚առնեն, մերթ մին եւ մերթ միւսն կը տիրէ, եւ մարդիկ սովորած են ասել՝ ժամանակ չար է կամ բարի· արդեօք չար օր եւ չար ժամանակն դո՞ւ կը կոչես եւ կը բերես զայն ազգաց ու ժողովրդոց վերայ· ինչպէս կը վկայէ մարգարէն թէ առանց քո ձեռին՝ ժամանակն ինքնիշխանաբար կը գործէ այս աշխարհիս մէջ, մերթ բարին բերելով եւ մերթ չարն։

Եթէ այսպէս, ապա ուրեմն չարն ու բարին ժամանակի արգասիքն են, եւ մարդիկ նախասահմանաբար ստրկացած են ժամանակի բուռն եւ անխուսափելի իշխանութեան տակ· ողորմելի մարդիկ հարկիւ կը վարին ու կը մղին իբրեւ խուիւ փոթորկին առաջ· հարկիւ ազգեր կը զօրանան ու կ՚ընկճին· հարկիւ գահեր կը կործանին եւ կը կանգնին· հարկիւ այս աշխարհ եւ մարդկային ազգ ժամանակի պատահարաց ենթակայ է։

Ո՛չ, ո՛վ Տէր, ո՛չ· մարդիկ կը թիւրեն դատաստանը եթէ այսպէս դատեն· մարդիկ անգիտաբար կը զրպարտեն զժամանակն, որ քո բարերար ձեռքին պարգեւած կեանքն եւ լոյսն է։

Եւ ինչո՛ւ համար այսպէս դատել կ՚ուզեն մարդիկ, այդ քեզ յայտնի է, Տէ՛ր սրտագէտ· որպէսզի մարդիկ քո դատաստանէն փախչելով անմեղադիր մնան եւ քեզ պատասխան տալու ժպրհին, պատճառելով զպատճառս մեղաց թէ՝ մեզ ի՞նչ մեղ կայ, չարիքներ ժամանակ բերաւ եւ մեք առ ի հարկէ հակամիտեցանք չարին։

Խոնարհելով Երկնից առաջ կը խոստովանիմք, Տէր, եւ մեր խղճի գիտակցութեամբ կը վկայեմք թէ՝ չարիքները չարարուեստ մարդկանց գիւտըն է եւ մարդն է հեղինակ չարեաց ու բարեաց· զի նորա սրտին մէջ կայ ու կը դարանի չարութեան եւ բարութեան գանձ· եւ երբ ուզէ զայն ազատաբար ի դուրս կը բղխէ, որպէս ասաց Քրիստոս։

Սանձակոծէ՛, ո՛վ Տէր, սանձակոծէ եւ փակէ չարագիւտ մարդկանց բերան, որ միշտ չարիքներ բղխելով հեղեղի նման չխեղդեն բարիքները· զի անոնք քո հաւատացեալ զաւակներն են, իսկ չարիքներն՝ աշխարհին· բայց դու քո անհուն անկշիռ մարդասիրութեամբ երկուքին վերայ եւս հաւասար կ՚ածես արեւդ եւ անձրեւդ, որպէս զի քո անխտիր բարերարութեամբդ ապաշնորհ մարդկանց խստասրտութիւնն ամոքես, որ ճանչնան քո անտրտուր բարիքն ու երախտիք, դառնան չարութենէն ու պաշտեն զքեզ։

Բայց քո երկիւղած ծառաներ գիտեն ու կը հաւատան եւ չեն երկբայիր, ո՛վ Տէր, որ դու այս աշխարհը բարձրագոյն խորհուրդովդ կը կառավարես· չարն ու բարին ի մի կառք զուգակցելով յառաջ կը վարես· ինչպէս անմիաբան հակառակ տարերք· չարերն աշխարհէս չեն հաներ, այլ կը թողուս որ բարիներուն հետը միշտ մրցին, չարութիւնն պարտի եւ առաքինութիւնն յաղթանակէ· ո՛վ, ո՞րչափ զարմանալի է քո խորհուրդ, ո՛վ Տէր, որ առաքինեաց պսակ չարերուն ձեռքով կը հիւսես· եւ չարն՝ որ չարագիւտ մարդկանց հնարքն է, դու զայն ի բարին կը շրջես։

Մարդիկ կան որ անգիտաբար գանգատ կը բառնան Նախախնամութեանդ դէմ եւ կ՚ասեն թէ՝ ինչո՞ւ կը թողուս որ չարերն առաւել աճին ու յաջողին աշխարհիս վերայ· ինչո՞ւ համար դայթակղութեան քարերը մարդկային ընկերութեան մէջէն չես բառնար, որ միշտ տկարներու վերայ իյնալով կը ջախջախեն· ինչո՞ւ համար փուշերը տնկեր ես ծաղկաբուրաստանին մօտ,

որ քո հոտանոյշ ծաղիկներդ խայթոցահար լինին: Միով բանիւ, կ'ասեն, թող չարերը բոլորովին սրբէ աշխարհէս, որ բարիներ ազատ մնան եւ առաւել պտղաբեր լինին:

Սակայն միթէ դու մարդոյն անգէտ խորհրդո՞վ կամ դատաստանո՞վ կը կառավարես աշխարհ, յորում դու միայն բարի սերմն սերմանեցիր, իսկ չար որոմն թշնամի մարդ ցանեց. հրեշտակ ծառաներ տեսան ու զարմացան եւ զեկուցին քեզ որպէս թէ դու զայն չգիտես. հրաման խնդրեցին որ զորոմն ցորենի արտէն ի բաց խլելով որոշեն, որպէս զի բարի ցորեաններդ անխառն մնալով բարգաւաճին:

Կարճամիտ մշակներ խորհուրդ տուին քեզ, ո՛վ խորհրդոց Տէր, այլ դու երբէք չը կամեցար անսալ. Թողէք, ասացիր, որ երկու բոյսերն եւս ի միասին աճին մինչեւ հնձոց ժամանակ: Ուրեմն քո պետական կամքն այն է որ թէ՛ ցորեան եւ թէ՛ որոմն, թէ՛ բարին եւ թէ՛ չարն խառն ու հաւասար աճին ու ապրին աշխարհիս ագարակին մէջ. որով ցոյց կու տաս թէ դու բարիները չարերով կ'որոշես, եւ չարերը՝ բարիներով. ի վերջոյ բարերոյս ցորենահատներդ արքայութեանդ շտեմարանը կը ժողովես: իսկ չար որոմն եւ անպէտ յարդը անշէջ կրակին կու տաս, որ ճարճատելով այրին ու տոչորին: Այս է քո արդար հատուցումն նոցա համար, որ քո ծառաներ աշխարհիս վերայ զրկելով ու հարստահարելով չարաչար տանջեցին:

Ո՛վ երկնային Սէր, որ մարդոյն սիրով այս աշխարհ եկիր, որպէս զի անձամբ տեսնաս ու կրես մարդոյն քաշած վիշտն ու տառապանք. Երիքովի ճամբուն վերայ չօշափեցիր չարչարուած մարդկութեան բոլոր վէրքեր, կը թողո՞ւս այլ եւս որ աշխարհիս բուռն փորձութիւն իւր ծանր գաւազանով տակաւին տիրէ ու ճնշէ սորկացած մարդոյն վերայ, որ մինչեւ ի գետին կորաքամակ եղեր է:

Կը թողո՞ւս այլ եւս, Տէր, որ չարերը չարութեամբ զօրանան եւ չարաչար բռնադատեն քեզ հաւատացող ծառաները. դու ուսուցիր մեզ աղօթել միշտ երկնից Հօր, որ իւր որդիքը չարերուն ձեռքէն փրկէ, եւ չտայ փորձող ժամանակին ձեռք, որ անխնայ հոլովելով իւր անիւներուն տակ կտրատէ մեր կեանք ու բառնայ մեր հոգին: Մեք եւս յայնժամ Բաբիլոնի գերեվարեալ ազգին պէս անյուսաբար կոչեմք, «Տէր, հատաւ յոյս մեր եւ մեռաք:»

Այլ եւս կ'աւարտեմ փանաքի խորհրդածութեանս բան, խոստովանելով որ մեր մանկամիտ մտածութիւն եւ խորհուրդ անգիտութիւն է քո առաջ. Ժամանակին տէր դո՛ւ ես, եւ դու միայն գիտես նորա անյայտ խորհուրդը: Մոխիր է մարդոյն սիրտ որ չհաւատայ թէ դու ինչ որ կը կամիս եւ կը վճռես Երկնից պետական աթոռէդ, այն կը լինի աշխարհիս վերայ: Անշուշտ դու եւս քո երկնամայրաքաղաքին մէջ ատեան եւ դատաստան ունիս. աշխարհի ոստիկան հրեշտակներդ ամէն օր բիւրաւոր բողոքներ կը հանեն քո ատեան, եւ դու մարդոց սիրտն ու գործքերը քննելով՝ ըստ այնմ կը դատես: Երբ աշխարհիս վերայ մեղապարտ մարդ զմարդ կը դատի իւր օրէնքով, դու որ մարդոյն Աստուածն ես եւ գերագոյն դատաւոր, միթէ՛ քո արդարութիւն՝ իրաւունք չունի՞ աշխարհիս ապիրատներու դատաստանը տեսնալ:

Դա՛տ արա, Տէր, դա՛տ արա, զի քո օրէնքն ու դատաստան միայն ճշմարիտ է. համառօտէ՛ միանգամայն քո երկայնամիտ դատն ու վճիռը չարերուն վերայ. ինչպէս կը պաղատէր քո ծառան Դաւիթ, նովին ձայնիւ կը պաղատիմք քեզ:

Դա՛տ արա Տէր, դա՛տ արա, զի մեր աշխարհ լցաւ անիրաւութեամբ: Եւ դու գիտես, Տէ՛ր արդար եւ ազատարար, զի մեր փրկութիւն ի քէն է ի ժամանակի նեղութեան:

———o———

# ՎԱՆԳՈՅԺ
# ԿՈՒԺ ՄԻ ՋՈՒՐ

ԻՒՐ

*ԱՅՐԱԾ ՀԱՅՐԵՆԵԱՑ ՎԵՐԱՑ*

ԿԸ ՍՐՍԿԷ

ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ

ԱՌ ՄԵԾԱՐՈՅ ՍԻՐԵԼԻԴ ԻՄ

## *ԱԲՐԱՀԱՄ ՍՕԼԱԽԵԱՆ*

### *ՄՏԵՐԻՄ ՀԱՅՐԵՆԱԿԻՑ*



Վան վառուեցաւ, որ իմ եւ քո բնակասնունդ հայրենիքն է. անշուշտ մեր ազնիւ սիրտն եւս մեր կարեվէր սրտին հետը վշտահար եղած է:

Այդ քաղաքաւեր կրակին համար, որ անխնայ այրեց լափեց մեր հայրենեաց կեանքը, ես մի կաթ ջուր պատրաստեցի, չէ թէ այրած ժողովուրդին մորմոքեալ սրտին ջուր տալու մտքով՝ զի դորա համար գետեր եւ ծովեր պէտք են՝ այլ մի միայն Վանայ դպրատանց աղքատիկ մանուկներուն ծարաւն ու պապակը զովացնելու համար:

Սոյն իմ արտասուաց մի կաթիլ ջուրը ձեր բարեսիրտ ազնուութեան կը յանձնեմ, որ զայն ձեր օգնական ջանիւք առատացնէք, այսինքն մամուլին թալով հոգայք տպագրութեան պէտքը, որոյ դուզնաքեայ արդիւնք նուիրենք հետ քեզ մեր հայրենեաց այն կարօտ մանուկներուն՝ որք այսօր անդպրոց, անգիրք եւ անթուղթ մնացին: Այս փոքրիկ բարոյական հացի նկանակը մեք մատակարարեմք, զի մեր բաժին է. իսկ հանապազորդական հացն թողումք թող Աստուած հոգայ, ոչ միայն տղայոց այլ եւ հարցն ու մարց: Ո՛հ, հայրերը չքաւորութեամբ կը հեծեծեն տան մէջ. զոնէ զաւակներ մխիթարուին դպրոցին տաճարին մէջ: Շէն քաղաքի մի վանառանոցի խանութներ փակուեցան, չթողումք որ դպրոցներն էլ փակուին, մինչեւ յիշէ Աստուած եւ այցելութիւն լինի տառապեալ ժողովուրդին:

ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ

25 *Յունուար* 1877

# ՎԱՆԳՈՅԺ
# ԿՈՒԺ ՄԻ ՋՈՒՐ
# ԱՌ ԻՄ ԱՅՐԱԾ ՀԱՅՐԵՆԻՔ

Եղէ ես որպէս բու յաւերակի:

ՍԱՂՄ. ՃԱ. 6:

---

*Ո՞ տայր ինձ, ո՜հ, գեղեցիկդ Վան, Վասպուրական աշխարհի զարդն ու պսակ, որ աւերակիդ աճիւնացեալ մոխրին վերայ նստելով՝ արժանի լինէի զքեզ եւ քո որդիքներդ ողբալ, ինչպէս ողբախօս Երեմիան, որ լայր եւ կոծէր այրիամայր եւ դերեվարեալ Երուսաղէմի վերայ:*

*Որդիքներդ գերի չը գնացին ի Բաբիլոն, այլ նոյն իսկ հայրենեաց երկրին ու գրկին մէջ աղքատութեամբ սորկացան ու գերեցան. հաց՝ որ նոցա կեանքն էր, խլեցին զայն ու քանդեցին վաճառաշահութեան ագարակն, եւ այժմ դու համակ որդիքներովդ մնացիր անօթի եւ նուաղեալ:*

*Մի՛ լաք, դիեցիկ մանուկներ, մի՛ կոծէք, կաթընտու մայրեր, թէ հացն ու կաթ պակսեցաւ՝ մեր երկնաւոր Հօր, գութ, որ ճնճղուկներ կը հոգայ՝ զձեզ չի մոռնար. շուտ կ'անցնին ձեր սգոյ իրիկուն ու գիշեր, եւ առաւօտ ուրախութիւն կ'ողջունէք:*

*Պատահար քո՝ երկնից պատահար չէր, այլ նոյն իսկ քո երկրէն եւ քո մէջէն. հին դրացի քաղաքացիներդ գրաւեցին զքեզ. նոքա՝ որ քեզ հետ կ'ուտէին հայրենի սեղանէն, նոքա՝ որ քո ճակատին քրտանց վաստակով լիապէս կը յագենային, ո՜հ, անխնայաբար ոտնակոխեցին բարելից հացի սեղանդ.*

*Այսուհետեւ զարդիւնս ձեռաց իւրեանց կերիցեն:*

*Ես գիտեմ, հաց՝ քո զօրութիւն եւ հոգին էր, եւ այն իսկ էր միայն որ յառաջդիմութեանդ զօրավիդ կը լինէր եւ դու կը քալէիր այնչափ, որչափ մանուկ մի նոր ոտք ելած: Արդեօք տնակից եղբայրներդ նախանձեցա՞ն, հացն ու վաստակ ձեռքէդ կորզեցին, որպէս զի դու առ քաղցի ուժաթափիս, ոգիդ եւ ջիղերդ թուլնան, ծունկերդ կթոտին, եւ այլ եւս չկարենաս յառաջադիմել դէպ ի յուսոյն ասպարէզ եւ լաւագոյն կեանք:*

*Բայց ի՞նչ էր քո դուզնաքեայ յառաջդիմութիւն, ես գիտեմ ու կը ճանաչեմ զքեզ. որդիքներուդ կէս մասն պանդխտութեան մէջ մաշելով կը մաշին, կէս մասն եւս այդր բիւր զրկանօք հանդերձ հազիւ կը հայթայթեն իւրեանց ապրուստն ու պարէն. միթէ առ ա՞յդ եւս մախացաւ երիցագոյն եղբայրդ եւ հին ու մոլար քաղաքականութեան դատաստանով վնասակա՞ր համարեց:*

*Եթէ այսպէ՜ս, ափսո՜ս, նա քան զքեզ առաւել տուժեց ու չկրցաւ խորհրդով խելամտել, որ քո կարծեցեալ յառաջդիմութիւնդ երկրին ընդհանուր բարգաւաճման անխտրապէս շահ եւ օգտակար էր:*

*Եթէ յիրաւի՛ եւ իրապէս յառաջդիմութեանդ քայլերը հաստատուն եւ զօրաւոր էին, այդ իսկ մեծ շահ էր անշարժ եւ անաշխատ եղբօրդ. զի դու զայն եւս մղելով մղելով յառաջ կը տանէիր հետ քեզ, եւ իբրեւ երկու լծակից ամոլներ հաւասար վաստակելով, հաւասար բաժնելով հայրենեաց ագարակին արդիւնքը, այնուհետեւ հաւասար կը վայելէիք ի փառս Օսմանեան Կայսրութեան:*

Ո՛վ տիրասէր եւ ժրաջան Հայ մշակներ, հայրենեաց ագարակին մէջ այն ինչ միամտութեամբ կ'աշխատէիք բեղմնաւոր հունձերով երկիրը բարեշէն պահել եւ տիրոջ շտեմարանը գանձով ու ցորենով լեցնել, անտիրասէր ծառայակիցներ հրձիգ արարին ագարակն, խելաթափ եղեն ու չմտաբերեցին թէ այդ ոճիրն արքունի գանձուն եւ բոլոր հայրենակից ժողովրդոց հասարակ զեան է:

Ո՛վ չի գիտեր, որ երկրի մը բռնութենէն եւ զրկանքէն միապէս կը զրկուի բնակիչ ժողովուրդ, եւ կը թշուառանան առհասարակ սովու եւ տառապանաց մէջ. Ղուրանի եւ Աւետարանի որդիքներն՝ երկու դասն ի միասին պիտի նստին ու լան, մէկ դասն արեւուն տակ եւ միւսն գիշերավար լուսնին, հա՛ց հա՛ց աղաղակեն:

Միթէ նա որ յափշտակեց ընկերին հաց, նա կո՞շտ պիտի ուտէ: Ո՛չ, ո՛չ. զրկանաց ու յափշտակութեան հաց առաւօտէն մինչեւ իրիկուն չի տեւեր, շուտով կը սպառի. զի այն հացն է միայն արդար ու անսպառ՝ որ մարդոց ճակատին քրտանց՝ արդար վաստակն է. ով որ առանց այս պայմանին հաց կ'ուտէ աշխարհիս վրայ՝ պետական Աստուծոյն վճիռը կեղծանէ:

Չը գիտեմք քո մեղքն ի՞նչ էր, ո՛վ անզէն եւ հլու հնազանդ ժողովուրդ Վանայ, դու ոչ զէնք ունէիր եւ ոչ երբէք ըմբոստացար տիրող գաւազանին դէմ. քո հաւատարմութեան չափ հինգ հարիւր տարի է, եւ քո զէնք միայն խոփն ու արօր. արուեստ եւ վաճառականութիւն քո զբաղումն էր. եւ միթէ ա՞յս եղեւ հատուցումն քո հաւատարիմ հպատակութեան:

Ի՞նչ խորհրդաւոր օր էր հրափորձութեանդ օր, ով անբախտ Վան. միթէ այն օր քեզ համար սեւ օ՞ր էր, երբ Թուրքաստանի պայծառ օր կ'ըսկսէր, երբ Բիւզանդիոնի Վոսփորէն հրանօթներ կ'որոտային, եւ Օսմանեան միապետ ինքնակալ Կայսր սահմանադրութիւն կը կնքէր. այն ուրախ օրերում, ո՛հ, մոլեգնութեան հուրն զքեզ լափեց, ծուխով ու մուխով խեղդեց քո խնդութեան ձայն եւ շունչ:

Մինչդեռ մայրաքաղաքն իւր համայն գաւառներով հրավառութեան տօն կը կատարէր, դու հէք ապերջանիկ Վան, քո տօն հրավառութիւն չէր. այլ ծախիչ ու համաճարակ կրակ մի, որ մի գիշերուան մէջ սպառեց զքեզ. այսր Բիւզանդիոնին մէջ պանդուխտ զաւակներդ երգոց ու նուագարանաց ձայներով կը պարէին, իսկ այդր բոցերուդ ճարճատիւն միայն կը լսուէր, որոց հետ կը խառնուէր նաեւ թշուառ որդիքներուդ ողբ, կոծ, լացն ու աղաղակ:

Ծովն քեզ մօտ էր, ջրոց աղբիւրներ եւ վտակներ կը վազէին. կարաձմեռն էր, թանձր ձիւնի ճերմակ սաւանով պատած էիր, շէնքերդ ամէն հողակառոյց էին, մարդ կը զարմանայ, թէ որպիսի՞ դիւրութեամբ վառեց զքեզ կրակ:

Այդ մի հրաշք է աշխարհի առաջ. ե՞րբ հուրն զհող վառեց, ո՞վ լսեց ու տեսաւ որ Վանայ շէնքերն հրդեհէն վառին. թէ գիտէք՝ դո՛ւք պատմեցէք մեզ, ո՛ հարիւրամեայ ծերունիք, դուք դեռ ողջ էք եւ կ'ապրիք այսօր, վկայեցէք երկրիս դատաւորաց առաջ:

Թուրքաստանի վերանորոգ սահմանադրութեան տօնականին անշուշտ զոհ մի պէտք էր, եւ այն փառաւոր զոհ դու մատուցիր, ժողովուրդ Հայոց. բայց գիտցիր թէ կանխաւ քան զքեզ շատ զոհեր զոհուեցան այլ եւ այլ ժողովրդոց եւ պատերազմի դաշտերուն մէջ:

Եթէ այլքն այնպէս դատեն որ քո զոհն արիւն եւ կեանք կազմող զօրութիւնն էր. ո՛հ, նշտրակով բոլոր մարմնոյդ երակները բացին. թոյլ տուին որ դու այնուհետեւ տակաւ տակաւ մեռանիս չարաշուք աղքատութեան մէջ. եւ քո երակահատներ չքմեղս լինելով՝ աշխարհի առաջ ձեռքերնին լուանան եւ ասեն. «Քաւեալ եմք մեք յարենէ դորա»:

Ողորմիմ քեզ, ժողովուրդ Հայոց, ողորմիմ. արդեօք լաւագոյն չէ՞ր քեզ, որ միանգամ մեռնէիր եւ կնքուէր քո հանգստեան գերեզման եւ դու երթայիր դադարէիր առ հարս քո, քան թէ այսպէս ի գետին թալկանալով արիւնացամաք մեռնիս: Ո՛հ, մինչեւ ե՞րբ անսամ քեզ, որ ինքնազոհ

մեռնիլ սորվիս. աշխարհ սորվեցաւ այդ դասը, իւր մրցանակն առաւ, դու դեռ անուս մանուկ մնացիր:

Քո բախտն եւ քո յատկական առաքինութիւն այդպէս է, որ դու այդ օրինակ մեռնիս. ուրեմն փառք տուր երկնից ու մխիթարուիր. դու եւս ելիր այն գրկեալ արդարոյն պէս աւերակիդ աղբիւսին վերայ նստիր. ոչինչ տրտունջ կամ բարկութեան բան մի՛ խօսիր երկնից դէմ, այլ, «Կամք Տեառն օրհնեալ եղիցի, Տէր ետ եւ Տէր էառ»: Հանդուրժէ հարուածներուդ, թող այդ եւս քո անցեալ բիւրաւոր զոհերուդ հետ խառնուի:

Գիտեմ, մխիթարութիւն եւ սփոփանք դառնացեալ սրտիդ խոցերն ու վէրքերը չեն բուժեր, զի խիստ անօրինակ եւ դժնդակ դէպք էր որ քեզ դիպեցաւ այս ժամանակին մէջ, զոր քաղաքակրթութեան դար կը կոչեմք, եւ այն յուսալից օրերը, երբ Օսմանեան կայսրութեան նոր Թուականն կ'սկսէր եւ երկրին շինութեան հիմն կը դրուէր, ո՜հ, այն օրերը դու քանդուեցար:

Այո՛, այն օրերը, երբ սահմանադիր օրէնք պարտք եւ իրաւունք կը քարոզէր, հաւասարութիւն կ'աւետէր, քո զրկանք եւ հարստահարութիւն աւելի եւս ծանրացաւ, երբ այլ եւ այլ կրօնի տարանջատ որդիքներն ձեռք ձեռքի տալով մի ազգութեան դաշնակցութիւն եւ ուխտ կը կնքուէր մայրաքաղաքին մէջ. Վանտոսպ ըմբոստացաւ յանկարծ, խզեց այս նոր դաշնակցութեան կապը, երիցագոյն եղբայր կրտսերին վերայ յառնելով կըսպաննէր զայն:

Միթէ նա հին տրտմութի՞ւն ունէր սրտին մէջ, որ մոռցաւ ժամանակին վերահաս տագնապն, չարար պատիւ խորհրդարանին ծերերուն՝ որ կայսերական քաղաքին խորհրդարանին մէջ դիշեր ու ցորեկ երկրին խաղաղութեան համար կը հոգային կը խորհէին հնարից ելք մի գտնել, եւ ազատել երկիրը իւր վերահաս վտանգէն:

Ո՛վ Գուրա՜ն Գուրա՜ն, ես չեմ հաւատար այնպէս ինչ կը հաւատան ոմանք քո դպիրներէն, թէ դու քեզ հաւատացող որդիքներուն տիրապէս հրաման կուտաս որ Աւետարանի աղքատ որդիքներուն ձեռքէն հացը յափշտակեն, սորուկ ճանչնան, կեանքէն զրկեն. եթէ մեռցնեն՝ այդ եւս զոհ եւ արդարութիւն համարին, միով բանիւ միշտ բռնաւորութեան գաւազանով ջախջախեն զիրենք:

Ես չգիտեմ թէ ջախջախելով ջախջախելով ի՞նչ շահեցան քո որդիքները: Այդ հաշիւը տեսաւ կայսրութիւն եւ մեզ յայտնի է այսօր, որ Թուրքաստանի ժողովուրդ ամէն կրօնի ազգերը առ հասարակ ջախջախուեցան քաղաքակրթութեան առաջ. սուտ է թէ ասեմ՝ օտարին ձեռք զմեզ ջախջախեց: Ո՛չ, ո՛չ, մեք զմեզ անգիտաբար ջախջախեցինք եւ արդ փշուր փշուր եղանք:

Քա՛ւ թէ թշնամադիր ոգւով կը գրեմ եւ կը խօսիմ, ես Թուրքաստանի աշխարհին մի Հայ զաւակն եմ, եւ ի մանկութենէ անտի երկրին յառաջդիմութեան միշտ սիրահար. հաւատարմութեան կնիք միշտ անեղծ պահեր եմ ճակատիս վերայ. եւ առ այս վկայ կը կոչեմ հազար ութ հարիւր վաթսուն եւ երկու Թուականը, յորում Կովկասի լերանց վերայ քո փառք եւ քո Ներողամիտ մեծանձնութիւն կը հրատարակէի:

Հինգ ամբողջ դար է որ Հայն հետ քեզ կ'ապրի եւ երկրիդ արդիւնաբեր մշակութեան համար քո հաւատարիմ եւ լծատար եզն է. դու տեսա՞ր երբէք, որ Հայն ընդվզեցաւ իւր կենաց մէջ. կամ եղջիւր ածեց կարծրակուռ խարազանիդ դէմ, որով դու նորա թիկանց կաշին հարուածելով հարուածելով շերտ շերտ հանիր, տակաւին Հայն միշտ անմռունչ մնաց քո առաջ, քո լուծը միամտութեամբ կրեց եւ ոչ մի անգամ մտաբերեց որ թօթափէ իւր պարանոցէն, զի հետ քեզ հաւատարմութիւն ուխտեր է:

Նախատեսէ՛, նախատեսէ՛, ո՛վ Թուրքաստան, սուրն ու դանակ քաղաքակրթութեան պատենին մէջ դիր, գիտցիր եթէ ջանաս միշտ քո վաստակաւոր եզն իւր վարած ակօսին մէջ մորթել՝ ի՞նչ կը լինի այնուհետեւ քո շահն, ոչինչ, միայն միսն ու կաշին. եւ յայնժամ դու անադան ուրեմն կ'ուշաբերիս. եւ աւա՜ղ, կը տեսնաս որ երկիրդ անմշակ մնացեր է, հացին ու դանձին սովը կը տիրէ, երկրին զաւակներ քաղցած կը մնան: Ծանի՛ր ուրեմն ծանի՛ր, այդ ժրադործ եզին շահաբեր արդիւնքը, փոխանակ ազա-

զուն պահելոյ՝ դարման տար ու պարարտ պահէ զայն որ իւր ուժով կարենայ վարել քո խորդացեալ երկիրը:

Ո՛վ սուրբ հաւատարմութիւն, ո՛վ պայծառ աստղ, որ կը փայլիս Հայու ճակատին վրայ· չգիտեմ, քո պայման, քո չափ եւ քո սահման մինչեւ ո՞ւր է, եւ Հայն իւր հաւատարմութեան վարձն ու պսակը ե՞րբ պիտի ընդունի: Եթէ այսպէս դու անվարձ անպսակ մնաս եւ մերթ եւս փոխանակ վարձուցդ ծանր ծանր հարստահարուիս, ուրեմն այդ քո առաքինութիւն ի զուր եւ ընդունայ է աշխարհիս առաջ:

Դու գիտե՞ս, ով հաւատարիմ ժողովուրդ Հայոց, մարդիկ եւ ազգեր կան, որ քո այնչափ հաւատարմութիւնդ կը ծաղրեն ու կը մեղադրեն զքեզ· երբ կը տեսնան որ խիստ անմռունչ եւ անզգայ կը լինիս հաւատարմութեանդ մէջ, մինչեւ անշունչ անբարբառ դիակ մի կը դառնաս դու, այնպէս որ պարկեշտութիւնդ կը նշաւակեն եւ կոխկռտելով կ՚անցնին վերայէդ, եւ դու չես իմանար: Միթէ դռեհաց կա՞ւ ես դու աշխարհիս երես, ես էլ կը դատիմ զքեզ թէ այդչափ ստրկանաս եւ աղարտես մարդկութեան ազատ պատիւ:

Սակայն դուք մի վհատիք, Աւետարանի հարուածեալ որդիքներ· յոյս առ ու քաջալերուէ, ժողովուրդ Հայոց, երկհազար ամ է որ միշտ ջախջախուիս ու չես մեռնիր· Պարսիկ, Յոյն, Արաբացին եւ Կովկասեան բարբարոս ազգերը միշտ արշաւեցին ու քանդեցին քո հայրենիք· բայց դու անվկանդ՝ անյուսահատ տոկացող ոգի մի ունիս, որով կ՚ապրիս ու կը մնաս մինչեւ ցայսօր:

«Հաւատք քո կեցուցին զքեզ», ասաց Քրիստոս, ուրեմն հաւատա, որ երկնից Նախախնամութիւն արդար եւ բարերար է· քո սերմն ու արմատ պիտի պահէ այդ բնիկ հողին մէջ, որ քո հայրենատուր ժառանգութիւն է· ընդունայն կը ճգնին այն ձեռք, որ կ՚աշխատին զքեզ արմատախիլ առնել:

Ելէ՛ք ուրեմն, մի՛ նստիք եւ յուսահատ‿ողբաք այդ ապաժոյժ աւերակաց վերայ· ելէ՛ք, Վանեցիք, թաղեցէք այդ մեռելը, վրան կոթող մի կանգնեցէք ու գրեցէք այս յիշատակարանը· «ԱՍՏ ԹԱՂԵՑԱՒ ՎԱՆԵՑԻ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴՈՑ ԳԱՆՁՆ ՈՒ ԿԵԱՆՔ»:

Այդ անյարիր մեռելին սգոյ հանդէսը կատարելէն յետոյ, ելէ՛ք դարձեալ առէք բահն ու բրիչ, հորդեցէք պեղեցէք ձեր աւերակները, դուք ձեզ համար ճարտարապետ եղիք, հիմը դրէք եւ շինեցէք ձեր աւերեալ տունն ու քաղաք· անցեալն էանց այլեւս չի դառնար· ձեր դատն եւ իրաւունք թէ մոռանան աշխարհիս դատաւորներ, թողէք յայնժամ թող Աստուած տեսնայ:

Ո՞ւմ կայք եւ ո՞ւմ կ՚սպասէք այժմիկ, ձեր արտասուահոս աչքը դէպ յերկինս դարձուցէք· «Օգնութիւն ձեզ ի Տեառնէ եկեսցէ»: Հայոց աշխարհի աւերակները շատ են, իւրաքանչիւր գաւառացին, քաղաքացին եւ գիւղացին թող իւր աւերակները շինէ, եւ դուք զձերն:

Գիտեմ, չքաւորեցաւ ձեր ձեռք, ո՜հ, զոր այժմ կարկառելով այտի միայն հաց կը խնդրէք· գիտեմ, թէ քանի՞ դժուարին է կրկին կանգնել ձեր վաճառաշահութեան շէնքեր եւ նոր դրամագլուխ հաստատել, զոր երեսուն, յիսուն տարուան միջոց հազիւ ուրեմն հաստատած էիք:

Ձեզ ասեմ, ձեզ ասեմ, Վասպուրական երկրի գիւղական ժողովուրդք, ձեզ յորդոր կարդամ, ձեր առաքինութեան ժամն է ահաւասիկ· Վան քաղաք ձեր նեղութեան ապաստանարան էր, դուք ամէն անձկութեան մէջ քաղաքացւոց կը դիմէիք· իսկ այժմ նոքա ձեզ կը դիմեն, զի աշխարհիս շըրջանն այսպէս կը դառնայ: Տուէք ուրեմն ինչ որ ունիք· փոխարինեցէք սիրով մինչեւ կազդուրի քաղաքացւոյն ուժը, գիտցէք ձեր թեւ ու թիկունք քաղաքացին է· հասէք յօգնութիւն, որ ձեր կենսական ուժը զօրանայ դարձեալ եւ իսպառ չը ջլատի:

Իսկ դուք, անկեալ քաղաքացիք, դուք առաւել պէտք է ձեռն տաք միմեանց, որ ի միասին յոտին կանգնիք· ահաւասիկ է ձեր առաքինութեան ժամ, ընկերսիրութեան ժամ, քրիստոնէական եղբայրսիրութեան ժամ, անձնանուէր բարեկամութեան ժամ, միաբան հոգւով ու շնչով գործելոյ ժամ, ճշմարտութիւնը բարձրաբարբառ խօսելոյ ժամ· խօսեցէք, վկայեցէք, մի՛ երկնչիք, խօսեցէք ու հաւատացէք որ ճշմարտութիւն պիտի ազատէ զձեզ:

Միանգամ ելիք ու մտաք այդ խաչակրութեան ասպարէզը. դուք քրիստոնէութեան արժանաւոր որդիքներ կը լինիք, թէ անտրտունջ ոգւով տանիք այդ խաչերը. կարդացէք պատմութիւն, յիշեցէք ձեր անմահ առաքինի նախնիքն ու պապերը, որոց գլխէն այդ անցքերը շատ անցան արիւնով ու մահով հանդերձ։

Թէ յիրաւի՛ ձեր արիական նախնեաց նմանող հարազատ որդիքներն էք, այս հրոյ ու սրոյ ժամանակին մէջ ցուցէք ձեր առաքինութեան հանդէսը, զօրացէք ու զօրացուցէք վհատած որդիները, նկուն մի՛ լինիք փորձութեան առաջ՝ զի մարդուն կենաց ճանապարհ այս աշխարհիս վերայ լի է դժնդակ փուշերով։ Առաքինիք միայն զայն կոխելով կ՚անցնին, իսկ վատասիրտներ կը լքանին։

Կոխեցէք եւ անցէք, ո՛վ աշխատաւոր եզինք, մի՛ թափառիք ու հեռանաք ձեր աւերակ ագարակէն, ելէք դարձեալ զոյգ զոյգ լծուեցէք. ձեր սամոտիք պինդ կապեցէք ընկերական սիրով, հեծելով փնչալով վարեցէք ու պատռեցէք այդ տառապանաց ակօսն. ժիր մշակներ, գոգնոց կապեցէք, լի յուսով ցանեցէք ձեր վաստակաւէր քրտանց սերմն. պահ մի եւս սպասեցէք, զի ձմեռ է, ձիւն եւ սառնամանիք ծածկեր են մեր աշխարհ։

Գարուն մօտ է, Հայո՛ց աշխարհ, եւ պիտի գայ ծիծեռնակ քեզ աւետիս տայ, թէ Թուրքիոյ աշխարհին երկունք կ՚անցնի եւ իւր վերածնութեան օրը հասած է, եւ դու տես յայնժամ թէ ի՞նչպէս այդ մոխրակոյտ ագարակն անդրէն բողբոջելով կը կանաչի, եւ քո վերջին բարգաւաճ կը լինի քան զառաջին։

Դու լոյս եւ արեւ կը սիրես, ժողովուրդ. լոյս եւ արեւ զքեզ պիտի վերածնին, քո հրայրեաց երկիր մարգագետին կը դառնայ. լուսին ի վերուստ վերայէդ անցնելով պիտի զարմացմամբ հայի երբ տեսնայ, որ Արծրունեան աշխարհի որդիքներ համակ արծուապէս նորափետուր զարդարուած են, զոր բռնութիւն փետտեց որ լերկամարմին անպատանք մեռնին։

Կերպասն եւ չուխան եւ պէսպէս Եւրոպիոյ զարդար հանին քեզմէ, ժողովուրդ, մի չուարիր թէ դու մերկ անպատսպար պիտի մնաս. այդ քեզ թող մի բարի խրատ լինի. խելաբերէ այսուհետեւ, կեանքիդ տնտեսութեան դասերդ լաւ սորվիր. վաղուց մոռցած էիր, բարակաման կտաւներ կը հագնէիր, յիշէ այժմիկ քո հաստ կտաւն ու խամաքին։

Ծո՛ւտ արա, շուտ արա, հին կտաւագործութեան հօրերդ բաց. Հայոց տիկնայք, ճախրակ մանեցէք, թել հասուցէք. եւ դուք այրեր, կտաւ գործեցէք. կարմիր կապոյտ ներկեցէք. վա՜չ, ի՞նչ վայելուչ է, եթէ դուք ձեր աշխատութեան պարզ ձեռագործներ հագնիք որ շատ տոկուն է եւ չահաբեր, եւ միանգամայն կը ջեռուցանէ ձեր բաց կուրծքեր եւ քրտնած թիկունք։

Տէ՜ր ապաւէն մեր, զքեզ կը յիշենք միայն մեր նեղութեան մէջ, դու ես միակ անկեալ ժողովրդոց խնամակալ հայր, ի՞նչ է մահկանացու մարդոյն գրիչ եւ լեզուն, որ կարենայ մխիթարել քո վշտահար ժողովուրդ. եւ ի՞նչ է մարդոյն ապիկար ձեռք, որ կարենայ բառնալ հարստահարեալ զաւակներուդ բազմապատիկ աղէտները։ Բա՛րձ, Տէր, բա՛րձ, այլեւս բաւական է քեզ՝ հաւատացող ժողովուրդին տառապանք եւ Հայկայ տան աւերումն. վերաշինէ մեր քանդուած աշխարհ եւ մեր փլած տունը. եթէ դու չը շինես՝ ի նանիր վաստակին շինողներ։

Տէր բարձրեալ եւ ահարկու, դու կը հայիս եւ կը տեսնաս Երկնից պետական աթոռէդ, որ երբ ստրկացած ազգեր կուլան քո առաջ, ինչպէս կուլայ կարօտ մանուկ իւր ծնողաց առաջ, աշխարհիս ազատ եւ հզօրացեալ ազգեր կ՚այպանեն ծաղր ու կատակ կ՚առնեն զմեզ. երբ մեք զրկանաց դատաստան եւ իրաւունք միշտ քեզ կը թողումք գիտնալով որ անօգնական ազգին՝ միակ ապաւէն եւ զօրութիւն դու ես։

Աստուած մարդասէր, մեր գթած Սամարացին դու ես, մարդոց այս անխնայ դատաստանէն զմեզ ազատէ. որք Երիքովի ճանապարհի վերայ ինկած վիրաւորը կը տեսնան, եւ գիտեն իսկ, որ նա ինքնին անյարիր է,

դարձեալ զանց կ'առնեն. մին կ'ասէ, ի՞նչ շահ ունիմ ես որ ձէթ եւ գինի ածելով վէրքերդ պատեմ, եւ միւսն՝ թէ ի՞նչ վարձ կուտաս, որ զքեզ բառնամ տանիմ մինչեւ ազատարար պանդոկ, ուր դարման տանելով քեզ ողջնաս եւ նոր կեանք ստանաս աշխարհիս վերայ:

Այսպէս անկարեկիր են մարդիկ, ո՛վ Տէր, առանց պայմանի մեր վէրքերուն դեղ եւ դարման չեն դներ, եւ առանց փրկանաց գին խնդրելոյ զմեզ չեն փրկեր, սորա համար Դաւիթ իւր ժողովուրդին խրատ կուտար. «Մի յուսայք յիշխանս որդիս մարդկան, զի ոչ գոյ ի փրկութիւն ի նոսա»:

Ես կը լսեմ, Տէր, թող այրած ժողովուրդին հեծեծանքն միայն առ քեզ հասնի, բայց ի՞նչպէս լսեմ. թէ լսեմ ես, Վասպուրականի քարեր կ'աղաղակեն, երկու բիւր ժողովրդոց աչք վկայ են այս ճշգրիտ իրողութեան, թէ աշխարհիս իշխանութեան դատաւորներ այս վկայութիւն չընդունին, այնուհետեւ դատ եւ դատաստան քեզ կը մնայ, ո՛վ իրաւարար Տէր:

Մամո՛ւլ, մամո՛ւլ, որ քան զարծիւ արագաթեւ ես, ա՛ռ եւ տար մորմոքող սրտիս ցաւն ու հառաչանք եւ աչքիս աղէջուր կաթիլները, տար ցօղէ այն իմ այրած Հայրենեաց փոշիացեալ աւերակներուն վերայ, ցօղէ վառուած ու մրկած սեւ սիրտերուն վերայ:

Գիտե՛մ, գիտե՛մ այս իմ հեռաւոր նժդեհութեան վայրէս զքեզ լալ միայն հերիք չէ, ո՛վ իմ բնակասնունդ Հայրենի՛ք, ո՛վ իմ խանձեալ խանձարուր. գա՛մ գա՛մ եւ քեզ հետ կական բառնամ, մոխրակուտիդ վերայ ողբանուէր նստելով զքեզ ողջագուրելով լամ:

———o———

## ԱՌ ՈՂԲԱԿԻՑԴ ԻՄ

# *ՀԱՅՈՑ ՀԱՅՐԵՆԵԱՑ*

———o———

Մտերիմ հայրենակից
Գ. Համբարձում Անէմեան

Դու մինչ կայտառ ու ծաղկահասակ երիտասարդ ես՝ երնուանք եւ ու–
րախութիւն կը սիրես, երգ եւ հարսանեաց պար կը սիրես, ո՛հ, ես զքեզ
յողբ եւ 'ի լաց կը հրաւիրեմ Հայոց աշխարհին վերայ: Կը ճանաչեմ ազնիւ
ոգիդ, որ թէ՛ 'ի խինդ եւ թէ՛ 'ի լաց միապէս զգայուն ես. այդ եւս մի
նշանակ կը համարիմ ես՝ թէ ոգիդ կենդանի է, եւ դու Հայուն անզգայ
զաւակ չես: Հայոց աշխարհ կուլայ, ես եւ դու Բիւզանդիոնէն ինչպէս 'ի
մօտոյ կը լսենք նոցա կոծն ու կական, պէտք է լալակից ու վշտակից լի–
նինք, զի նոյն հայրենեաց պանդուխտ որդիքներն եմք:

Գիտես դու եւ կը յիշես թէ անցեալ տարւոյն 'ի վերջ՝ ես զՎան ՎԱՆ–
ԳՈՑԺով ողբացի, մինչ թագուցեալ կրակն միայն զՎան վառեց. այդ կրա–
կին հետ արիւն եւ այլ սոսկալի աղէտներ չկային, այլ միայն Վանեցւոց
կեանք եւ ստացուածք հուր ճարակելով մոխիր դարձուց: Եւ ի՞նչ պէտք
էր սուր եւ արիւն. միթէ ժողովուրդն իւր չքաւորութենէն ինքնին անարիւն
եւ անսուր չի՞ չքանար:

Ցո՛ւշ բեր, Վասպուրական գաւառի շինական ժողովրդոց յորդոր կը
կարդայի, որ Վանայ կրակին վերայ ջուր լեցնեն, եւ օգնեն դժբախտ Վա–
նեցւոց. ես չէի գիտեր եւ չէի գուշակեր որ Վանայ կրակէն յետոյ պիտի
ելնէր ուրիշ պատուհասիչ Մարական կրակ մը, որ քան զԲաբելոնի բոցն
ծաւալելով՝ բոլոր Վասպուրական աշխարհն դժոխային հրով ծախէր, Հա–
յոց գեղերն ու աւաններ քանդէր եւ աւերէր, Բագրեւանդայ գաւառի ժողո–
վուրդ իսպառ կոտորէր, Հայոց աշխարհի վանքեր, եկեղեցիներ եւ ամէն
նուիրական վայրեր պղծէր եւ ապականէր, Հայոց տնասէր կիներ, գեղա–
դէմ հարսներ եւ կոյսեր գազանային վայրագութեամբ լլկէր, եւ շատն եւս
յափշտակելով գերեվարէր, եւ այլ անլուր անօրինակ ոճիրներ գործէր եւ
ահռելի աղէտներ բերէր Հայոց աշխարհին վերայ:

Վասն այդորիկ ես արդ մոռցայ զՎան եւ զՎԱՆԳՈՑԺն. արդ կ'սկսիմ
ՀԱՅԳՈՑԺովս ողբալ մեր հայրենեաց համատարած աղէտներ, զորս վայ–
րագ խուժերուն ձեռքէն կրեց Հայոց անտէր ժողովուրդ: Ցաւ է ինձ որ
բաւական չեղայ Վասպուրական աշխարհին, բարձր Հայոց, Բասենոյ, Բագ–
րեւանդայ գաւառին եւ Մշոյ աշխարհին արդի վերահաս չարեաց հազար
բիւր աղէտներուն նկարագիրը բովանդակ հանել: Միթէ հնա՞ր է, որ մի–
այն հոգւով տեսնեմ կամ գուժատու լրերով չափեմ մեր հայրենեաց նորա–
քանդ աւերակներ:

Այլ ինչպէս ըղձակաթ կը լինէր Վահան Գողթնացին մինչ Բաբիլոնի
գերութեան շղթան կաշկանդել էր զինքն, նա կը գոչէր եւ կը պաղատէր
առ Ամիրապետն. «ԱՐՁԱԿԵՑԷ՛Ք ՈՐ ՏԵՍԱՆԵՄ ԶՈՐՁԱՓՈՒԹԻՒՆ ԱՒԵՐԱ–
ԾՈՅՆ ԵՐԿՐԻՆ ԻՄՈՅ ՀԱՅՐԵՆԵԱՑ»: Ո՛հ, ես էլ նոյն ըղձով կը փափա–
գիմ. որ միանգամ արձակուիմ այս պանդխտութեան շղթայէն, երթամ ոտ–
քովս շրջիմ եւ աչքովս տեսնեմ մեր աւերած աշխարհ, եւ թէ լամ՝ թող
արտասուքս այն կարմիր հողոյն վերայ կաթի. ուր կոտորուեցան Հայեր
եւ ուր թափեցաւ անմեղ մանուկներուն եւ անբիծ կոյսերուն արիւնը: Եւ
դու ինձ հետ գոչէ, որ սիրահար ես հայրենի ազատութեան: Ո՛վ անպարտ
զոհերու հրաշագործ արիւն, արդեօք Հայոց մեռեալ ու մոխրացեալ հողե–
րուն նոր կենդանութիւն պիտի տա՞ս:

# ՀԱՅԳՈՅԺ
# ԱՇԽԱՐԱՆՔ
# ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻՆ

———o———

ՈՂԲԱ՛Մ զքեզ, Հայո՛ց աշխարհ, զի քո կեանք ողբերգութիւն է. ամէն դար եւ ժամանակ երբ աղէտներ զքեզ պատեցին, դու միշտ աղէտներուդ հետ մի ողբերգու ծնար, քո առաջին ողբերգուն Մովսէս Խորենացին է, որ հազար երկերիւր ամ յառաջ ուժգին ողբաց զքեզ, մինչ վերացաւ գլխէդ Արշակունի թագ, մինչ ջախջախեցաւ իշխանութեանդ գաւազան, նսեմացաւ քո փառք, կորեաւ ազատութիւնդ, եւ դու տիրական բարձրութենէդ խոնարհելով իջեր ծառայական 'ի ստրկութիւն. դու որ քան զհիւսիսականս վեհագոյն կը դնէիր քո գահը:

Ցայն օրէն վերջի Թագին հետ մեռաւ քո ամէն յոյս եւ հայրենի ազատութիւն, յայն օրէն մինչեւ ցայսօր վեց դարեր անցան, դեռ ո՛չ լրացաւ քո տառապանք 'ի վերայ տառապանաց միշտ հասին 'ի վերայ քո. չտուին քեզ մի հանգիստ ժամանակ, որ պահ մի շունչ առնէիր եւ հանգչէիր մաշած ու Թալկացած կեանքիդ մէջ:

Ցայն օրէն վերջի Թագին հետ մեռաւ քո ամէն յոյս եւ հայրենի ազակունի Թագն դաւեցին, երբ Վեստ Սարգիս եւ մատնիչ Կիրակոս՝ Անուոյ ազատ բանալին նենգութեամբ Ցունական կայսրութեան յանձնեցին. այնուհետեւ Թէեւ պահ մի գիշերալոյս աստղի նման. հին Թագդ Հայկազանց գերեզմանէն ծագեցաւ, յանկարծ աղօտապէս փայլեցաւ Տաւրոսեան լերանց գլուխ, ո՛հ, այդ քո իրիկուան վերջալոյսն էր որ Լուսինեան Լեւոնին հետ արեւուն պէս 'ի մայր մտաւ. յայն օրէն Հայոց աստղ ծածկեցաւ օտար գերեզմանին մէջ եւ այլ եւս չծագեցաւ:

Թողումք Ցոյն, Պարսիկ եւ Արաբացին. Լէնկթիմուր, Շահապաս եւ այլ հիւսիսային բարբարոս ազգեր քանիցս անգամ արշաւեցին, քանդեցին, հողաբլուր դարձուցին ամուր ամուր քաղաքներդ, խրամատեցին բոլոր այգեցանկերդ, զքեզ ճռաքաղ արարին կայտառ որդիներդ մինչեւ 'ի Խուժաստան եւ Շահաստան գերի վարեցին:

Օրհնեալ ես դու, Հայոց աշխարհ. որչափ քանդող Թշնամոյն ձեռք կը ջանար զքեզ իսպառ ճռաքաղ առնել եւ որթերդ յարմատէն յօտել, դու անդրէն նոր նոր ուռեր տալով կը բողբոջէիր: Հաւատա՛ դու, Հայո՛ց աշխարհ, Թէ Աստուծոյ օրհնութիւնն էր որ միշտ անապական պահեց քո ճիւղերդ. զի դու Քրիստոսի ճշմարիտ որթին վերայ հաստատուած ես:

Բայց դարձեալ ողբամ զքեզ, անտէրո՛ւնջ ժողովուրդ Հայոց. զի քո մնացորդ ճիւղեր անխնայ ճմլեց ժանտ եւ ժպիրհ Քիւրտ. սորա համար քո կեանք՝ Թէ՛ առաջին եւ Թէ՛ վերջին, միշտ ողբերգութեամբ լի է. Մովսէս չէ միայն որ զքեզ կ'ողբայ. Եղիշէն, Ղազարիկ, Լաստիվերտցին, Մեծոփեցին, Առաքել պատմագիր, այս ամէն իրենց ժամանակին մէջ զքեզ ողբացին, ո՛հ, ես էլ քո ողբերգուն եմ. երանի՜ Թէ յետինն լինէի, եւ այլ եւս չծնէր քեզ ողբերգու. այլ եւս անպահապան այգիդ ճռաքաղ չլինէր. երԹայր և այլ եւս չդառնայր անդրէն քո տառապանաց տարին եւ ժամանակ:

Բայց դարձաւ եւ բարկութեամբ դարձաւ, երբ Արեւմտեան քաղաքակրթութիւնը Արեւելքը կ'ողջունէր, երբ Թուրքաստան Սահմանադրութիւն կը հրատարակէր, երբ պանծացող տասնեւիններորդ դարը՝ գիտութիւն, լոյս, ազատութիւն եւ ազգաց իրաւունքներ կը քարոզէր, եւ երբ դու ինքնավար Սահմանադրութիւն ունէիր, կը հրճուէիր յուսով նորաքայլ յառաջդիմութեանդ մէջ:

Զվարանիմք սակայն եւ ողբերով չյուսահատիմք․ Երկնից գթութեան եւ ողորմութեան խոստմնքներ անսպառ են․ այն որ երբեմն Բաբիլոնի դաշտին մէջ ցրուած անյոյս ժողովուրդին ցամքած ոսկորներուն վերայ ցօղեց եւ խնկոյն գերեզմանի դաշտավայրը կենդանութեամբ կանաչացաւ, օր մի եւս Երկինք այդ կենդանարար ցօղ Հայոց դաշտերուն վերայ կը ցօղէ․ դու կը տեսնես թէ ի՞նչպէս Հայոց աշխարհն եւս կը վերածնի հրաշիւք։ Միայն թէ մեք անձնկուն արիութեամբ գործենք եւ Աստուած մեր օգնականն է։

Իսկ դու, ազնի՛ւ բարեկամ, իմ փոքրիկ երկոյս փոքրիկ Մեկենաս, դարձեալ ձեր անուան կը նուիրեմ ՀԱՅԳՈՅԺս որ Հայոց աշխարհի աշխարանքն է, ինչպէս արդէն նուիրեցի մի դուզնաքեայ երկս, որ վերտառութիւնն էր ԺԱՄԱՆԱԿ ԵՒ ԽՈՐՀՈՒՐԴ ԻՒՐ։

Դու այժմիկ փութա՛ եւ տա՛ր ՀԱՅԳՈՅԺս տո՛ւր մամուլին․ թող մամուլն եւս իւր ազատ թեւերով տանի տայ աշխարհին։

Ես գիտեմ, այն ազգ եւ աշխարհ որ Հայ չէ մեզ հետ չի լար, այլ մեզ չէ պէտք օտարին լաց․ բաւական է որ թէ՛ տարաշխարհիկ գաղթական Հայեր, եւ թէ՛ Բիւզանդիոնի պանդուխտ Հայեր յիշեն մեր հայրենեաց չարչարեալ որդիքներ եւ լան։

Ես գիտեմ եւ դու գիտես թէ սուգ լալով ու ողբերով եթէ շաղախենք մեր հայրենեաց հող՝ հայրենիք չշինուիր։ Սորա համար թերեւս ոմանք որ չոր ու անզգայ սիրտ ունին, զիս մեղադրելով բամբասեն թէ Խրիմեանը մի լալկան մանուկ է դարձեր կամ թէ միշտ աւերակասէր բու։

Սակայն ես կը պատասխանեմ նոցա՝ որ այդպէս կը կարծեն։ Թող այդ ծեր իմաստուն եւ հանճարեղ շինողներ անլաց եւ անկոծ շինեն մեր հայրենիք, եւ կամ նորա լացող որդիքներուն արտասուքը ծիծաղով սրբեն։ Ես յայնժամ կը թողում գուժերս եւ ողբերս, կ'սկսիմ միայն ուրախութեան երգ նուագել։

Ամէն աշխարհ եւ ժամանակ իւր ծիծաղ եւ լացն ունի․ ո՞վ է այն՝ որ իւր հարսանիք խնդումով եւ պարերգութեամբ չկատարեր․ ո՞վ է այն՝ որ իւր մեռեալը առանց կոծոյ եւ լալոյ կը թաղէ։

Այժմիկ Հայոց աշխարհի կեանք եւ ժամանակ լաց է․ Հայոց տունը՝ սգոյ տուն է եւ իւր հանդէսը մեռելոց հանդէս է։ Պէտք է ուրեմն լանք վշտակցինք քանի որ մեր հայրենեաց որդիքներ կուլան․ եւ նոքա որ կուլան՝ մեր հայրեր, մեր մայրեր, մեր եղբայրներ, մեր քոյրեր, մեր սիրելիներ եւ մեր բարեկամներն են։

Երանի՛ թէ ազատ շնչով, ազատ ձայնով եւ ազատ գրչով լայինք․ ո՛հ, մանուկ քան զմեզ ազատ է եւ ազատարար կուլայ․ մեք հեղձամղձուկ լինելով կուլանք․ եւ դու գիտես որ մեր աշխարհին մէջ լացն եւս ազատութիւն չունի։

Լանք ապա եւ բարձրաձայն աղաղակենք․ թէ մեր լալոյ ձայնին աշխարհ խուլ լինի ու չլսէ, հաւատանք թէ Երկինք անշուշտ կը լսէ․ եւ Աստուած իւր բարերար ձեռքով կը սրբէ Հայոց աշխարհի լացն․ արագ կը բերէ մեր փրկութեան եւ ազատութեան օր․ եւ այն օրն է ահա, որ կը խայտան եւ կը ցնծան մեր հայրենեաց որդիներ․ յայնժամ մեք եւս Մովսիսի քրոջ Մարիամու թմբուկն մեր ձեռքն առնելով՝ հետ նոցա կ'երգեմք եւ կը պարեմք․ «Օրհնեսցուք ԷՏէր, զի փառօք է փառաւորեալ»։

ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ

*Տե՛ս, Տէր, զի նեղեալ եմ. ոսկերք իմ խռովեցան, սիրտ իմ գելաւ յիս եւ ես գտայ դառնացեալ. արտաքուստ անժառանգեաց զիս սուր, որպէս եւ մահ 'ի ներքուստ:*

*Լուարո՛ւք, լուարո՛ւք զայս՝ զի ես հեծեմ, հառաչեմ եւ ոչ ոք է որ մխիթարէ զիս. . . ո՛վ Տէր, դու արարեր զօրն զայն եւ դու կոչեցեր զժամանակն զայն, եւ եղեւ ինձ վա՜յ վա՜յ:*

*Ձե՛զ ասեմ, ձե՛զ ասեմ, ո՛վ անցաւորք ճանապարհաց. դարձայք՝ հայեցարուք եւ տեսէք թէ իցե՞ն երբէք ցաւք ըստ ցաւոց լեալ՝ որք 'ի իմ հասին. . . :*

Ողբ Երեմիայի Ա, Գլ.

# ՀԱՅԳՈՅԺ

# ԱՇԽԱՐԱՆՔ

# ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻՆ

---o---

*ՈՂԲԱ՛Մ զքեզ, Հայո՛ց աշխարհ, զի քո կեանք ողբերգութիւն է. ամէն դար եւ ժամանակ երբ աղէտներ զքեզ պատեցին, դու միշտ աղէտներուդ հետ մի ողբերգու ծնար, քո առաջին ողբերգուն Մովսէս Խորենացին է, որ հազար երկերիւր ամ յառաջ ուժգին ողբաց զքեզ, մինչ վերացաւ գլխէդ Արշակունի թագ, մինչ ջախջախեցաւ իշխանութեանդ գաւազան, նսեմացաւ քո փառք, կորեաւ ազատութիւնդ, եւ դու տիրական բարձրութենէդ խոնարհելով իջեր ծառայական 'ի ստրկութիւն. դու որ քան զհիւսիսականս վեհագոյն կը դնէիր քո գահը։*

*Յայն օրէն վերջի թագին հետ մեռաւ քո ամէն յոյս եւ հայրենի ազակունի թագն դաւեցին, երբ Վեստ Սարգիս եւ մատնիչ Կիրակոս՝ Անուոյ ազատ բանալին նենգութեամբ Յունական կայսրութեան յանձնեցին. այնուհետեւ թէեւ պահ մի գլիշերալոյս աստղի նման. հին թագդ Հայկազանց գերեզմանէն ծագեցաւ, յանկարծ աղօտապէս փայլեցաւ Տաւրոսեան լերանց գլուխ, ո՛հ, այդ քո իրիկուան վերջալոյսն էր որ Լուսինեան Լեւոնին հետ արեւուն պէս 'ի մայր մտաւ. յայն օրէն Հայոց աստղ ծածկեցաւ օտար գերեզմանին մէջ եւ այլ եւս չծագեցաւ։*

*Յայն օրէն վերջի թագին հեթ մեռաւ քո ամէն յոյս եւ հայրենի ազատութիւն, յայն օրէն մինչեւ ցայսօր վեց դարեր անցան, դեռ ո՛չ լրացաւ քո տառապանք 'ի վերայ տառապանաց միշտ հասին 'ի վերայ քո. չտուին քեզ մի հանգիստ ժամանակ, որ պահ մի շունչ առնէիր եւ հանգչէիր մաշած ու թալկացած կեանքիդ մէջ։*

*Թողումք Յոյն, Պարսիկ եւ Արաբացին. Լէնկթիմուր, Շահապաս եւ այլ հիւսիսային բարբարոս ազգեր քանիցս անգամ արշաւեցին, քանդեցին, հողաբլուր դարձուցին ամուր ամուր քաղաքներդ, խրամատեցին բոլոր այգեցանկերդ, զքեզ ճռաքաղ արարին կայտառ որդիներդ մինչեւ 'ի Խուժաստան եւ Շահաստան գերի վարեցին։*

*Օրհնեալ ես դու, Հայոց աշխարհ. որչափ քանդող թշնամոյն ձեռք կը ջանար զքեզ իսպառ ճռաքաղ առնել եւ որթերդ յարմատէն յօտել, դու անդրէն նոր նոր ուռեր տալով կը բողբոջէիր։ Հաւատա՛ դու, Հայո՛ց աշխարհ, թէ Աստուծոյ օրհնութիւնն էր որ միշտ անապական պահեց քո ճիւղերդ. զի դու Քրիստոսի ճշմարիտ որթին վերայ հաստատուած ես։*

*Բայց դարձեալ ողբամ զքեզ, անտէրո՛ւնջ ժողովուրդ Հայոց. զի քո մնացորդ ճիւղեր անխնայ ճմլեց ժանտ եւ ժպիրհ Քիւրտ. սորա համար քո կեանք՝ թէ՛ առաջին եւ թէ՛ վերջին, միշտ ողբերգութեամբ լի է. Մովսէս չէ միայն որ զքեզ կ'ողբայ. Եղիշէն, Ղազարիկ, Լաստիվերտցին, Մեծոփեցին, Առաքել պատմագիր, այս ամէն իրենց ժամանակին մէջ զքեզ ողբացին, ո՛հ, ես էլ քո ողբերգուն եմ. երանի՛ թէ յետինն լինէի, եւ այլ եւս չծնէր քեզ ողբերգու. այլ եւս անպահապան այգիդ ճռաքաղ չլինէր. երթայր և այլ եւս չդառնայր անդրէն քո տառապանաց տարին եւ ժամանակ։*

*Բայց դարձաւ եւ բարկութեամբ դարձաւ, երբ Արեւմտեան քաղաքակրթութիւնը Արեւելքը կ'ողջունէր, երբ Թուրքաստան Սահմանադրութիւն կը հրատարակէր, երբ պանծացող տասնեւիններորդ դարը՝ գիտութիւն, լոյս, ազատութիւն եւ ազգաց իրաւունքներ կը քարոզէր, եւ երբ դու ինքնավար Սահմանադրութիւն ունէիր, կը հրճուէիր յուսով նորաքայլ յառաջդիմութեանդ մէջ։*

Իբրեւ սրաթեւ արծուի, իբրեւ ճախրաթեւ բազէ յանկարծ հասաւ ու դարձաւ քո վերայ տառապանացդ օր. սեւ օր, սեւ գիշեր էր այն, եւ իբրեւ ծննդական մօր՝ ցաւոց երկունք զքեզ ըմբռնեց. դու արդ կը հեծես եւ ճիչ կը բառնաս. յոյսդ՝ երկոտնաց մէջ է. կամ կը ծնիս ողջամբ 'ի նոր յազատութիւն, եւ կամ կը մեռնիս այդ մահացու վէրքերովդ. անէ՛ծք այն ձեռաց, որ քո հանգստարանի գերեզման կը կնքէ թէ այլ եւս ո՛չ գոյ Հայն ու Հայաստան:

Ի՞նչ անբախտ եւ թշուառ ես դու, մա՛յր, թէ մեռնիս այժմիկ. երբ ուրիշ մայրեր եւ ազգեր 'ի նոր կեանս կը վերածնին. քո կեանք՝ քառասուն դար է. Յունական կրակէն, Պարսկական կրակէն, Արաբացւոց կրակէն, Թաթարներու կրակէն ողջ անցար, անհուն անհամար զոհեր տուիր, որպէս զի մնացորդ որդիներովդ ապրիս. եւ արդ ապիկար եւ վատազգի Քիւրտին կրակով պիտի այրիս եւ սպառիս:

Մինչ հիւսիս հարաւին դէմ 'ի մարտ կ'որոտար, Հայոց լեռներու հին աւազակներն 'ի զէն կը կոչուէին. այդ բանը՝ նոցա համար մի բախտ եւ պատեհ ժամ էր: Նոքա որ սովորած էին առանց քրտանց վաստակի՝ գիւղական ժողովուրդին ճակատի քրտանց հացն ուտել, միշտ աւարով ու յափշտակութեամբ ապրիլ, իրաւունք համարեցին իրենց համար ամէն բռնութիւն, ամէն եղեռն եւ ոճիր 'ի գործ դնել քրիստոնեայ ժողովուրդին վերայ. եւ այնչափ անվախ ու անկասկած կը գործէին չարիքներ, որպէս թէ երկիրն անիշխան էր, ոչ իրաւունք կար, ոչ դատաւոր, ոչ դատաստան:

Մարախի ու թրթուրի նման թափեցան, Հայոց գիւղեր եւ դաշտեր ծածկեցին, մի խուն ժամանակի մէջ ամէն կանանչութիւն կերան ու չորցուցին, այն չէն չէն գեղեր եւ աւաններ անապատ դարձուցին: Միթէ չգիտէ՞նք 'ի սկզբանէ անտի որ այդ ազգին ձեռք միշտ քանդող է, երբէք շինել չգիտէ. ես էլ չգիտեմ թէ ինչո՞ւ համար է որ երկրին իշխանութիւն այդ աշխարհաքանդ ձեռք կարճել չուզեր:

Եւ ո՞յք էին Քիւրտերու անկարգ հրոսակներուն վարիչ եւ առաջնորդ. — նոցա մոլեկրօն դենպետներն էին, որոց ոգիներ 'ի բնէ անտի ոխութեամբ լցուած կը զայրանային Հայոց ժողովուրդին դէմ. մանաւանդ երբ կը լսէին եւ կը հաւատային իսկ թէ այս պատերազմ յանուն Քրիստոնէից ազատութեան կը մղէ հիւսիսային Պետութիւն:

Ես գիտեմ ու կը ճանաչեմ զՔիւրտն. գիտեմ թէ նա ինքնին ոչինչ գործ եւ զօրութիւն չունի. այդ անդէպ պատճառանքներ 'ի բաց թողունք: Այո՛, դենպետներու կրօնամոլութեան հուրը կը վառէր զիրենք. այլ ի՞նչ հուր էր այն, որ 'ի ներքուստ զդենպետներ կը վառէր:

Ո՛հ, մի՛ կրկտեր այդ հուրը, գրի՛չ իմ, գրի՛չ իմ. կը բորբոքի եւ զքեզ կ'այրէ. Թող այրէ, թող այրէ, եւ աճիւնս երթայ խառնուի Հայոց այրած ժողովուրդի աճիւնին հետ:

Տէրութիւն զՔիւրտն 'ի զէն կը կոչէ. եւ ո՞վ իրաւունք ունի մեղադրել զինքն. զի Քիւրտն իր դաւանակից ժողովուրդն է՝ առանց գրի եւ Գուրանի, եւ քան զՀայն բիւր անգամ յարգի:

Այլ միթէ զինուոր անթօշակ կը զինուորի՞. Քիւրտին հացն ու թօշակ ի՞նչ էր զինուորող ձեռքէն.— ոչինչ. այլ միայն այս բան «Գնացէ՛ք եւ ձեր թօշակն ու հաց ձեր ձեռքով հոգացէք»: Եւ ուստի՞.— Հայոց գեղերէն ու ժողովուրդէն:

Այս անարդար դատաստանին մէջ Քիւրտ կ'արդարանայ Աւետարանին ու Գուրանին առաջ. եւ ես նմա իրաւունք կուտայի, եթէ Քիւրտն միայն իւր պէտքերը հոգար, հիւրաբար վարուէր, գիւղացւոց հացն ուտէր. թէ հեծեալ էր, ձիոյ դարման խնդրէր, ելնէր եւ ուղղակի 'ի բանակ երթար:

Քիւրտն այսպէս չվարուեցաւ. եւ այնպիսի սոսկալի խժդժութիւններ գործեց նա, որ աշխարհի պատմութեան մէջ ոչ դրիչ գրեց, ոչ բերան խօսեց եւ ոչ մարդոյ ականջ լսեց:

Կ'ասեն թէ Լէնկթիմուր Հայոց աշխարհ արիւնով լուաց. Լաւագոյն էր թէ Քիւրտն եւս արիւնով լուանար: Կ'ասեն թէ բռնաւոր Ալփասլան մի անօրինակ վրէժխնդրութիւն մտաբերելով՝ Անւոյ մէջ արեան աւազան մը կազմեց, Հայոց ջերմարիւն երիտասարդներ ոչխարի նման մորթելով լցոյց

զայն, ու մտաւ նորա մէջ ինչպէս 'ի լոգարան, եւ այսպէս չիջոյց իւր սըրտին զայրոյթը: Երանի՛ թէ Քիւրտն եւս իբրեւ արիւնախանձ ինձ՝ արիւնով միայն շատանար: Կ'ասեն թէ խորամանկ Շահապասն մինչ 'ի գերութիւն կը վարէր Այրարատայ աշխարհի որդիքներ, տասներկու հազար հոգի Երասխին մէջ թափեց: Հազա՛ր անգամ երանի թէ Քիւրտն եւս այդպէս գործէր. Հայոց կիներ եւ կոյսեր նոյն Երասխայ ծոցին մէջ թափուէին, ալիքներ առնէր տանէր ու ծածկէր նոցա առականքը:

Դստե՛րք Հայոց, բիւր երանի՛ կուտայի ձեզ թէ նոր Շահապաս մի գար զձեզ 'ի գերութիւն վարէր, եւ դուք երթայիք միահամուռ եւ կամակար թափուէիք Երասխայ գետին մէջ, գետն զձեզ գլորէր տանէր 'ի Կասպիական ծով, ծովն ձեզ գերեզման լինէր, իւր խոր անդունդին մէջ ծածկէր ձեր մերկութիւն, քան թէ կուսական արեան մէջ թաթախելով նշաւակէր զձեզ վատշուէր Քիւրտին վայրագութեան:

Հայոց լերանց մտերի՛մ էրէվայրիք, եւ դուք իսկ վայրենի՛ գազաններ, բացէ՛ք ձեր որջեր, ցո՛յց տուէք ձեր մութ խորշեր, հիւրասիրեցէ՛ք Հայոց փախուցեալ կիներ եւ կոյսեր, որ մարդակերպ գազաններէն փախչելով ձեր գթութեան կ'ապաստանին:

Ո՛վ հալածեալ գայլեր, դուք արդար էք, դուք իրաւունք ունիք, երբ սովալլուկ քաղցէն ստիպեալ հազիւ ահ ու դողով կը համարձակիք հովուի հօտէն գաղտագողի մի ոչխար յափշտակել. ելէ՛ք այժմիկ եւ լեռներէն դիտեցէ՛ք՝ թէ ի՞նչ կը գործեն ձեր դրացի մարդադէլներ, թո՛ղ գեղացւոց ոչխարներ՝ նոցա սիրելի ընտանիք եւ զաւակներն եւս յափշտակեցին, սրաժանիքներով պատառեցին ու կերան Հայոց դեղանի կոյսեր:

Ո՞վ ես դու, ողորմելի՛ կին, որ մերթ խուճապելով կը փախչիս եւ մերթ ծունկերդ կթոտելով կը տառապիս 'ի գետին. Հերովդէսի դահիճներ զքեզ կը վարեն. ո՛հ, երկունքդ առ երկիւղի հասեր զքեզ ըմբռներ է. սորա համար անցար մտար մեկուսի ցորենաբոյս արտին մէջ, դու ինքնին անդայեակ ծնար, դաշտի կակուղ խոտերէն խանձարուր շինեցիր, փաթութեցիր մանկիկդ. չգիտեմ թէ բերկրեցա՞ր, երբ անցաւ երկունքդ եւ ողջամբ ծնար:

Իրիկուն էր, քո տխուր ու սեւ սրտին հետ մութ գիշերն եւս եկաւ զքեզ պատեց. այլ եւս ապահով եղար թէ քո վարիչ որսորդներ անցան. առիր նորածին մանուկդ՝ գնացիր մօտակայ գիւղ. մանկիկդ կուլար կաթ, կաթ կ'ուզէր, եւ դու՝ հա՛ց հա՛ց կը խնդրէիր. զի քաղցէն նուաղելով կաթդ ցամքեր էր: Չգիտեմ, դժբա՛խտ կին, թէ այնուհետեւ ազատեցար բաղէներու ճանկերէն:

Անշուշտ կ'ողբաս, կի՛ն դու, թէ թշուառ եմ, որդի ծնայ, այլ ամուսինս կորուսի, բայց դու զքեզ բախտաւոր համարէ, կի՛ն, որ վերահաս անձկութեանդ մէջ կարացիր ողջամբ ծնել եւ մանուկդ ազատել: Քան զքեզ անբախտ եղան այն մայրեր, որ մայրենի գրկերէն մանուկներ ձգեցին ու փախան. որպէս զի գէթ ազատեն իրենց անձն չարաշուք Քրդաց լլկանքէն:

Ողբա՛մ զքեզ, մանո՛ւկ մայրակորոյս. կ'ասեն թէ քո մայր մինչ 'ի փախուստ կը խուճապէր, մոռցաւ մայրական սրտի գորով, ձգեց թողուց զքեզ մի վարած արտի ակօսին մէջ. թերեւս հաւատաց Քրիստոսի խօսքին եւ ասաց թէ մանկիկս իբրեւ ցորենահատիկ մի ցանեմ հայրենի հողին մէջ, թող մեռնի, որ բեղմնաւոր հատիկս բազմապատիկ տաոք ցորենով: Եւ ի՞նչ է այդ.— Հայոց աշխարհի ազատութիւն:

Զո՞րն ես պատմեմ մայրերէն ձգուած դիեցիկ մանուկներ. տեսող գըտաւ ու պատմեց թէ մի մանկիկ եւս Եփրատայ ափանց եղէգներուն մէջ ձգուած էր, ինչպէս Մովսէս Նեղոս գետին խաղեր: Մեր խեղճ մանուկ պրտուեայ սնտուկին մէջ չէր կպրաձիւթով պատած, այլ այնպէս բացօղեայ ձգուած. խե՛ղճ անմայր աղեկ կական բառնալով կուլար: Լսեց մի գիւղական աղջիկ, որ նա եւս կը թագուցանէր զինքն գետեզրի մացառներու մէջ. սիրտ արաց, ձայնի հետ գնաց գտաւ ընկեցիկ մանուկն. գիւղացի քաջ աղջիկ, որ դեռ մայր չէր եղեր, մայրենի գորովով խաղապատեցաւ տղեկին վերայ. ինչպէս Փարաւոնի դուստր՝ առաւ տարաւ մերձակայ գիւղ մի, ասաց թէ Եփրատին եզերք շամբերուն մէջ գտայ:

Զգիտեմ թէ ողջ մնացի՞ր դու, անհայր անմայր որբացեալ մանուկ. ո՞ր օտար մայր քեզ կաթ պիտի տայ ու սնուցանէ, մինչ քո բուն ծնող մայրդ՝ առ նեղութեան ու վշտին, զքեզ անմայր թողուց: Ո՜ տառապանաց եւ դառնութեան օր, որ կաթոգին մայրերուն բնական գորովն ու գութ մոռնալ կուտաս եւ սրտէն 'ի բաց կը հանես որդեկին սէր, որ մօր աղիքն եւ սրտին հատորիկն է:

Ողբա՛մ զձեզ, Հայո՛ց մայրեր, որ կորուսիք ձեր լծակից ամուսիններ եւ սիրական զաւակներ. թէ մեռաք՝ երանի՜ ձեզ, թէ ողջ մնացեր էք՝ եղո՜ւկ ձեզ: Ո՜հ, ի՞նչ կը լինէր, որ դուք եւս այն Մշեցի դիւցազն կնոջ պէս զօրանայիք, ձեր վշտակրութեան եւ հածանաց մէջ կամակար մեռնէիք կրօնի սրբութեան համար, ձեր զաւակաց սիրոյն համար, ձեր համեստ պատկառանաց համար. միթէ այժմ կ'ապրի՞ք դուք, եւ լաւագոյն չէ՞ր ձեզ մեռնիլ քան այդ չարավիշտ կեանք:

Ի՞նչ անդատաստան կը խօսիս դու, հէք ողբերգու. իբրև զառանցող բանդագուշ կը լինիս, կարծելով թէ աշխարհիս վերայ կինէր սուր եւ բազուկ ունին. մինչ քաջաբազուկ հուժկու այրեր կը վատանան իրենց ընտանեկան պատիւ մահու չափ պաշտպանելու, դու գիտես թէ քանի՞ դժուարին է որ տկար ու տանտիկին կիներ դիւցազնանան:

Այո՛, այդ գիտեմ. բայց միթէ չառաքինացա՞ն Հայոց աշխարհի կանայք ու տիկնայք. մինչ նոցա այրերը չղթայակապ վարեցին 'ի Խուժաստան, նոքա անայր եւ անտերունջ մնացին, կանացի տկարութեան անտար վիշտերուն դէմ մրցեցին, Պարսկական կրակին դէմ անվառ մնացին, կրօն, հաւատ եւ սուրբ կեանք անարատ պահեցին. որոց չնաշխարհիկ առաքինութեան հանդէսը ճառագրելով կը հռչակէ սուրբ Եղիշէ վարդապետ:

Մո՛վսէս, Մո՛վսէս Բագրեւանդայ վիճակին ծերունի հովիւ, դու զՀայոց աշխարհ եւ քո ժամանակ ողբացիր եւ ի հող մտար հանդչեցար, այլ եւս չգիտես թէ քո անթագ անզաւազան ստրկացեալ հայրենեացդ ողբեր դադրեցա՞ն:

Ո՛չ, ո՛չ. տասն դար անցաւ, տակաւին ողբերդ դառնապէս կը նորոգուին. դու այժմ գլուխդ գերեզմանէդ 'ի վեր առ, տես քո սիրելի հօտին վերահաս աղէտները. քանասար գայլերուն վոհմակ յարձակեցաւ, զառներդ կոտորեցին, որոց յորդահոս արիւն՝ շիրիմդ կ'ողողեն եւ կ'իջնան մինչեւ ի խոր տապանիդ հեծող ոսկորներդ:

Դու ինչպէս տեսնալով կ'ողբագրէիր, արդ եւս արհաւիրք անհնարինք պատեցին Հայոց աշխարհ. մարտ թէ 'ի ներքուստ եւ թէ արտաքուստ զմեզ պաշարեց, հայրենիքը թափուրացաւ, մնացորդ որդիքներուդ կէսն թողլով բնակասանունդ երկիր՝ գաղթական գնաց, կէսն եւս անխնայ կոտորուեցան սուրբ կրօնին համար եւ Հայոց հաւատին համար:

Եփրա՛տ, Եփրա՛տ, մկրտարա՛ն սուրբ Գրիգորի հոգեծին որդւոց, ափունքներուդ վերայ ինկած դիակները արեան հեղեղներ թաւալգլոր բերելով քո ծոց կը թափեն, եւ դու տո՛ւր ալիքներուդ՝ թող գլորէ տանի մինչեւ Ովկիանու ափունք. Հայոց աշխարհի անմռունչ բողոքն է այդ: Կը լսէ՞ արդեօք եւ կը տեսնա՞յ աշխարհի արեան հանդիսատես խաղաղասէր Լոնտոն. թէ ա՞յդ է գահ մեծին Անգղիոյ, որ քան զինքն յառաջ Աւետարանին հաւատացող որդիքներ տարապա՞րտ մեռնին:

Բագրեւանդայ փոքրիկ հօտին փոքրի՛կ հովիւներ, ո՛վ քահանայք, թէ ողջ մնացեր էք՝ առէ՛ք ժամհարներ հետ ձեզ, գնացէ՛ք շրջեցէք քաղաքի փողոցներ, տներ եւ տան մութ խորշեր որոնեցէ՛ք. շրջեցէ՛ք նաեւ գեղերու եւ դաշտերու մէջ, ժողվեցէ՛ք ուր եւ գտնէք Հայոց անթաղ մեռելներ. զի մեռելներու տէրերը թողին ու փախան. ծնողք փախան՝ զաւակներ թողուցին, զաւակներ փախան՝ ծնողք թողուցին. նոյնպէս անբաժան սիրելի ամուսիններ սէրը մոռցան, զիրար թողուցին ու փախան:

Մի մի կամ ուրոյն ուրոյն գերեզման մի՛ փորէք այդ անտէր մեռելներուն, այլ բոլոր միահամուռ խոր վիհերու մէջ թաղեցէք. միայն խաչքարէ նշան մի կանգնեցէք հողակարկառին վերայ. ես աստ կ'արձանագրեմ նոցա սուրբ եւ անմահ յիշատակը:

ԱՍՏ ԿԱՏԱՐԵՑԱՆ ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ ԵՒ ՀԱՅ ԱՆՈՒԱՆ ՀԱՄԱՐ ՔԻՒՐՏԵՐՈՒ ԱՆՈՂՈՐՄ ՍՐԷՆ, ՕՍՄԱՆԵԱՆ ՏԷՐՈՒԹԵԱՆ ՀԻՆԳ ՀԱՐԻՒՐ ՏԱՐՈՒԱՆ ՀԱՒԱՏԱՐԻՄ ՀԱՅԵՐ

*Փողոցէն ելէ՛ք, քա՛հանայք, մտէ՛ք այդ մերձակայ տան մի սենեկին մէջ, ուր երկու նոր ամուսնացելոց հարսնարան եւ առագաստն է. տեսէ՛ք, գուցէ կը ճանաչէք. Թերեւս դո՛ւք պսակ դրիք ու կապեցիք այդ դժբախտ գլուխները. տեսէ՛ք զոյգ համանման նորահաս կտրիճ ամուսիններ, երկու լծակից սիրելիները, զորս վայրագ Քիւրտեր միմեանց վերայ դնելով ընդ գետին գամեր են, որ գիտես թէ ուխտեր էին նոյն իսկ մահուան մէջ իրարմէ չբաժնուիլ։*

*Հանէ՛ք այդ արիւնոտ ցիցը, հանէ՛ք ու տարէք պահեցէք. եթէ դատ եւ դատաստան լինի աշխարհիս մէջ, եթէ Հայուն զրկանքն եւս յիշեն երկրիս դատաւորները եւ արդարութեամբ փոխարէն հատուցանեն, յայնժամ դուք զայդ դատական ատենին մէջ բերէք, թող բողոքէ, վկայ լինի Հայոց անպարտ արեան։*

*Առէ՛ք նաեւ իջուցէ՛ք 'ի վայր ընդ ձող եւ ընդ ցից հանեալ Հայոց սօսանման երիտասարդներն. արեւ տեսաւ, լուսին տեսաւ, աստղեր տեսան, աշխարհ տեսաւ եւ Աստուած տեսաւ. այլ վկայ կը խնդրէ՞ք, ո՛վ աշխարհի ատենակալ դատաւորներ։*

*Համառօտեցէ՛ք, համառօտեցէ՛ք աշխարհի խաղաղութեան դաշնագիր. համառօտեցէ՛ք ձեր երկար եւ պատիպատ դատաստանին վճռագիր, տեսցուք թէ Հայոց այնչափ զրկանաց, այնչափ զոհերուն եւ թափած արեան գինը դուք ի՞նչ կը վճռէք։*

*Ժա՛մհար, թո՛ղ այդ ցցահան դիակներ, մտի՛ր 'ի տանտուն թոնրին սալխուփն ի վե՛ր առ. տե՛ս, մարած մոխրին վերայ խանձողած կոճղ մի կայ, հա՛ն 'ի դուրս. մի՛ կարծեր թէ այրած հացի կոյտ է այդ, այլ հացթուխ եւ հացարար տանտիկինն է, որ մինչ բարկ թոնիրին չուրջ նստած անօթի Քիւրտին համար հաց կ''եփէր, ապիրատներ կերան նորա հաց, զարկին ձգեցին վառած թոնիրին մէջ ու գնացին։*

*Թէ դիր գիտես, ժա՛մհար, համրէ ու գրէ թէ քանի՞ քանի Հայոց տանտիկիններ այդպէս հրայրեաց չարամահ մեռան։ Թոնիրներէն ելած բոլոր Հայոց կիներուն խանձողուած նշխարները, ժա՛մհար, լի՛ց կողովը, շալակդ առ, գնա՛ մինչեւ յեւրոպա, չո՛ւրջ ած պալատականաց դռները. տեսցուք թէ աշխարհիս այդ ողորմած թագուհիներ Հայոց այրած տանտիկիններուն համար ի՞նչ դատաստան պիտի տեսնեն։*

*Ո՛վ ժրագոտի ժամհարներ, թողէ՛ք այդ թոնիրի այրածներ. փութացէ՛ք կողովներ առէք ձեր յուս՝ ելէք հնձանի դաշտ. Հայոց այգեկութն է. ժողովեցէ՛ք այդ կոխոտուած մանրիկ ճիւեր, Հայոց մանուկներու նշխարներ, զորս Լէնկթիմուրի ժանտածին զաւակը սմբակակոխ կոտորեց, ու քամեց Հայկայ զաւակներու արիւնը՝ որպէս քամեն խաղողն ի հնձանին։ Խնամով ժողովեցէք այդ փոքրիկ մարտիրոսներու սուրբ եւ ամբիծ նշխարներ, տարէք թաղեցէք իրենց հարց ու մարց հետ. եթէ անողոք սուր զիրենք ծնողական գրկերէն բաժնեց, թող գերեզմանին մէջ ոսկերոտօք գրկախառնին։*

*Միթէ սերմանահան մշա՞կ էք դուք, որ գոգնոցը կապելով այդ մատաղ ու պարարտ սերմեր կը ցանէք Եփրատայ արգաւանդ դաշտերուն մէջ։*

*Ցանեցէ՛ք, ցանեցէ՛ք այժմիկ եւ յուսով ցանեցէք. թող այդ անմահ հատիկներ մեռնին հողին մէջ. կ'անցնի ձմեռն, կ'անցնին խստաշունչ սառնամանիք, կուգայ կենդանարար գարուն, գերեզմանի արտերդ կը կանաչին, եւ դուք կը հաւատաք յայնժամ Յիսուսի խօսքին, թէ «Ամէն ամէն ասեմ ձեզ, եթէ ոչ հատն ցորենոյ անկեալ յերկիր մեռանիցի ինքն միայն կայ. ապա թէ մեռանիցի՝ բազում արդիւնս առնէ»։*

*Հնձանի դաշտին մօտ՝ այդ վարած արտերու մէջէն դառն մռնչիւնի ձայներ կուգան, կը լսէ՞ք, ժա՛մհարներ. այդ մռնչիւն՝ մորթաղերծ անասնոց մռնչիւնն է, որ հերկագործ ակօսներու մէջ ինկած կը տանջուին. վերէն արեւ կը կիզահարէ, ներքուստ գիշակեր անգղեր եւ ագռաւներ կտցա-*

հարելով թել թել միսեր ոսկորներէն կը քաշեն։ Դանակ մի առէք՝ կտրեցէք նոցա վիզեր, որ երթան հանգչին։

Ո՛վ սոսկալի անգթութիւն. անագորոյն Քրդեր հալածելով հասան, մաճկալներ, հօտաղներ սրակոտոր սպանին եւ թրերով կտրատեցին եզնամոլներուն եւ գոմէշներուն հաստապինդ ջիլերը. խե՛ղճ անասուններ տապլտկեցան ակօսներու մէջ, եւ առանց պարանոցներ կտրելու՝ սկսան չերտ չերտ քամակներէն կաշիներ հանել. այդ անվարտի միաչապիկ բոկոտն վայրենիք տրեխներ շինեցին իրենց համար. որ կ'երթային երկաթէ կօշիկներուն հետ կռուիլ։

Արդա՛ր Աստուած, եթէ դու աշխարհիս վերայ յանցապարտներ եւ մերթ եւս անմեղներ տանջելով կը լնուս ու կը կատարես արդարութեանդ չափն ու հատուցումն, միթէ անասո՞ւնքն եւս յանցապարտ են քո առաջ. այդ անողորմ ամբարշտաց աղիքներ չե՞ս կտրատեր նոցա փորին մէջ. դու որ Նինուէի անասնոց խնայեցիր, այս անխօսուն հեծող անասնոց դատաստանը չե՞ս տեսներ։

Արեւն 'ի մայր մտաւ, այլ ձեզ համար հանգիստ ու դադար չկայ, կըտրի՛ճ ժամհարներ. Տովբիթի նման առաքինացէ՛ք, գիշերաժամուն ելէք՝ լուսնի լուսով ժողովեցէք Հայ մարտիրոսաց նշխարներ. մայրերու գըրկէն ու կուրծքէն մի՛ բաժնէք յօշոտուած մանուկներ. մի՛ դպիք, մի՛ կըրկտէք արիւնշաղախ դիակներ. պատան պէտք չէ՛, կանաչ խոտերու մէջ փաթթեցէք Հայոց կանաչարեւ եւ ժուռումուռ մեռելներ. թէ պատառ մի կտաւ կը գտնէք, կենդանւոյն մեռած Հայոց հօլանի կիներուն եւ կոյսերուն տուէք, որ պատատեն իրենց առականքը. բաւ է՝ թէ այդ անտէր շապիկներով եւ պատառատուն ցնցոտիներով թաղէք։ Թող նոցա ոգիներ երթան Երկնից մէջ պայծառազգեստ լինին։

Այլ գիտե՛մ ես, գիտե՛մ, ո՛վ Հայոց անթաղ դիակներ, ձեզ համար ոչ քահանայ կայ, ոչ ժամահար, ոչ յուղարկաւոր, ոչ սիրելի, ոչ բարեկամ. սարսուռ եւ արհաւիրք ամենուրեք տիրեր է, ո՞վ կը համարձակի կատարել ձեր թաղման հանդէսը։ Ո՜հ, ո՜հ Հայո՛ց որդիքներ, հող ու դաշտ շատ ունէիք, գետնի երես դուք անհող, անծածկոյթ մնացիք, երկնից թռչուներր եւ երկրի շուներ ժողովեցան՝ կերան ձեր մարմին, կրծեցին ձեր ոսկորներ, մինչ ողջ էիք՝ բռնութիւն զձեզ կեղեքեց ու քերթեց. եւ մեռնելէն յետոյ՝ թերեւս ասացիք թէ ազատուեցանք տառապանքէն, հանգչինք հողին մէջ. ո՛չ, ո՛չ, հանգստեան հող չտուին ձեզ. զի նոյն անողոք բռնութիւն՝ ձեր անշունչ դիակներն եւս հարստահարեց։

Ո՛վ՝ Լուսի՛ն Լուսին, Հայոց աշխարհէն կուգաս, Բագրեւանդայ կոտորածի դաշտերէն անցա՞ր, այնպէս կը թուի որ գիշերաժամուն մէջ շառաւիղներդ արիւնոտ դիակներու վերայ զարնելով՝ երեսդ շառագուներ է։ Մի՛ անցնիր ճեպով. պահ մի կա՛ց Բիւզանդիոնի հորիզոնին վերայ, պանդուխտ Հայերուն լո՛ւր տուր Հայոց աշխարհէն. լո՛ւր տուր մեր թշուառ ընտանիքներէն, ո՞վ մեռաւ, ո՞վ մնաց, ո՞վ գերեցաւ եւ ո՞վ թողուց հայրենիք՝ գաղթական գնաց։ Թողուց իւր հասած հունձեր, թողուց իւր հօտն ու նախիր, թողուց իւր կեանքն եւ ամենայն ինչ։ Մերկ, կողոպուտ գնաց. ասաց թէ՝ անցնիմ այս կարմիր ծովէն եւ միանգամ ազատիմ չարչարանաց աշխարհէն։

Ո՛վ՝ Լուսի՛ն Լուսին, Մասիսի գագաթէն անցա՞ր, դաչերդ չուրջ ածիր, Արագածի ոտքը՝ Էջմիածնայ պարսպին տակ թափած Հայոց գաղթական ժողովուրդն տեսա՞ր որպէս յաշնանավերջին ծառերէն թափուած դեղնած տերեւներ. դիտեցի՞ր նոցա ապաժոյժ վիճակ. տեսա՞ր այն գետնի վերայ նուաղած ու թալկացած մայրեր, որոց ցամքած կուրծքերէն կախուեր էին դիեցիկ մանուկներ. նոքա կական բառնալով կաթ կը խնդրէին եւ մայրեր դհաց։

Ո՛վ Հայր ու Հայրապետ Հայոց, Էջմիածնայ վեհարանի լուսամուտէն կը դիտե՞ք դէպ 'ի Բագրեւանդայ կոտորածի դաշտ, թէ կ'ասէք հեռու է աչքէս եւ կարճ է իմ ձեռքս. ուրեմն թողէ՛ք մեռելոց դաշտը՝ դարձուցէ՛ք ձեր աչքը գաղթական ժողովուրդին վերայ, որ կենդանւոյն մեռած ու թաւալած են Էջմիածնայ պարիսպներուն տակ։ Է՛ջ, այտի, դու

ինքնին հայրական գործովդ մատակարար եղիր· դոքա սուրբ Գրիգորի մնացորդ որդիքներն են· տե՛ս, ի՞նչպէս մերկ, կապուտ կողոպուտ, անինչ անստացուած ձեր հայրական գիրկ դիմեր են, հաց կ'ուզեն, հանդերձ կ'ուզեն, հանգստարան կ'ուզեն· ժողովէ՛, պատսպարէ՛ զիրենք Այրարատայ ծոցին մէջ: Դոքա Եփրատայ ակներէն եւ Նպատ լեռնէն կու գան, Երասխէն, Արագածէն եւ Մասիսէն պաշտպանութիւն կը խնդրեն, ո՜հ, չգիտեմ թէ կը գտնե՞ն՝ թէ յուսով կը թափառին:

Ո՛վ իմ լրացեալ լուսին, Վասպուրական աշխարհի Աղբակու գաւառէն անցա՞ր, եւ ի՞նչ տեսա՞ր· ես քան զքեզ յառաջ գիտեմ այդ, դու պատմէ՛ մեզ: Պարսկական Քրդաց հրոսակներ յարձակեցան, աւարեցին տարան բոլոր Հայոց գեղեր: Անճարակ ժողովուրդ երբ մերկացաւ իւր կեանքէն եւ գոյքէն, չուարեցաւ մնաց· ասաց թէ ո՞ւր երթամ, ո՞ւր ապաստանիմ, գէթ, հոգիս ազատեմ· երկու կրակին մէջ մնացի եւ կը խորովիմ: Ո՜հ, ակամայ ընտրեց նա թողուլ քաղցր հայրենիք՝ գաղթական երթալ, կամովին ձգել զինքն Պարսկական հին կրակին մէջ, որ երբեմն մեր աշխարհ եւ մեր նախնիքներ վառեց ու մոխիր դարձուց:

Բա՛րդուղիմէ, Բա՛րդուղիմէ, Հայոց նախկին լո՛յս ու լուսաւորիչ, ո՞ւր ես· տարա՜ն, տարա՜ն քո փոքրիկ հօտն ու ժողովուրդ, որ քո հովանեաց տակ եւ գերեզմանիդ շուրջ կը բնակէր: Կողոպտեցին ու քանդեցին հազարամեայ հնաշէն վանքդ· այդ բաւական չէր, յանդգնեցան պիղծ ձեռքեր փորել ու կրկտել հազար ութ հարիւր տարուան կնքուած տապանդ· այդ յիմար եւ ապիրատ ազգ կարծեց որ գերեզմանդ գանձերով լի է կամ սուրբ ոսկորներդ ոսկի դարձեր են:

Այլ եւս ինչ որ գիտես ու տեսար, պատմէ՛ մեզ, ո՛վ Լուսին, Հայոց աշխարհի ցաւեր եւ աղէտներ մեզմէ մի՛ ծածկեր: Կ'ասեն թէ մեր հաւատոյ ոսոխն ու թշնամին... երբ Բագրեւանդայ կոտորածէն յետս կը դառնար, գեղեցիկ կիներ ու կոյսեր ընտրելով առաւ տարաւ իւր բանակին հետ· տարաւ փակեց Խիզանու գաւառին մէջ, ուր այդ չարաչուք գազանին որջն է· ուր 'ի սկզբանէ անտի սովորած էր միշտ Աւետարանի հօտէն հանել ու խառնել իւր գունդերուն հետ:

Լէնկթիմուրի գերեզմանի որդերէն ծնած ո՛վ չարաճճի սողուն, կրծելով կրծեցիր Հայու միսն ու ոսկոր, օձանման սողալով մտար Հայոց դըրախտը, ամէն ծաղիկներ եւ կանաչ բոյսեր պղծելով ապականեցիր, չարչարեցիր Աստուծոյ խոնարհ ժողովուրդ, եւ ասացիր դու ինքնին թէ՝ ո՛չ կը տեսնայ եւ ո՛չ 'ի միտ կ'առնու Յակովբայ եւ Գրիգորի պաշտեալ Աստուած:

Իմացի՛ր, իմացի՛ր, ո՛վ անմիտ եւ անզգամ, թէ արդար դատաւորն Աստուած իւր ծառաներուն վրէժխնդիր է, եւ նոցա անպարտ արիւն պիտի խնդրէ քու ձեռքէն· կը մեռնիս եւ 'ի դժոխս կ'իջնաս· նոյն գերեզմանի որդունք՝ յորմէ ծնար դու, եւ զքեզ պիտի ուտեն ու կրծեն· պիտի փշրին սրաժանի ատամունքներդ, զորս կը կրճտէր հաւատացեալ ծառաներուն վերայ:

Ո՜հ, Հայո՛ց աշխարհ, ո՜հ, աղէտներդ անբաւ անկշիռ են, զորս կրեցիր դու այս նոր Լէնկթիմուրի ձեռքէն: Ես ուշամոռաց եղայ եւ չգիտեմ թէ թէ զո՞րն ողբամ: Քանդուած գեղե՞րդ ողբամ, վարատեալ ժողովո՞ւրդ ողբամ, 'ի սար եւ 'ի ձոր թափառական ընտանիքնե՞րդ ողբամ, հայրենիքէն վարեալ գաղթական որդիքներդ ողբամ, յափշտակեալ կիներդ եւ կոյսե՞րդ ողբամ, քանդուած վանքերդ եւ պղծեալ տաճարնե՞րդ ողբամ, անհաց, անապրուստ, անճարակ ու թշուառ կեա՞նքդ ողբամ, վաստակաւոր մշակնե՞րդ ողբամ, որ բարդ 'ի բարդ հնձուեցան ու որայի նման փռուեցան արտերուդ մէջ, որոց արեան ցնցուղներ ցայտեցին եւ կարմիր ներկուեցան ցորենի հասկեր եւ հատիկներ:

Պահ մի կերէ՛ք այդ արիւնոտ հաց ու յագեցէք դուք՝ որ երկրագործ ժողովուրդը կոտորեցիք, վաստակաւոր եզնամոլներ մորթեցիք, հողագործին խոփն ու հարօր եւ սայլեր ջախջախեցիք, ոչխարաց հօտերը լեռներէն աւարեցիք, կաթնարար տանտիկինները կամ մեռուցիք կամ փախուցիք· ինչ որ արդիւնաբեր էր երկրին եւ տէրութեան շահ, ինչ որ ձեր անշահ եւ անվաստակ կեանքին առատ հացն ու սեղանն էր, դուք զայն ամէն ինչ ձեր

ձեռքով կործանեցիք. կարծեցիք թէ ուրիշներու կեանքը կ՚սպաննէք ու
դին կեանքն եւ ոյժը ջլատեցիք. նոքա որ մեռան, հողն իրենց հանգիստ
կ՚սպառէք, բայց դուք ինքնին անձնասպան եղաք ու չիմացաք:

Տեսցուք այսուհետեւ թէ ուստի՞ պիտի յագենաք, երբ մշակ ժողովուր-
դտան ու ազատութեան տառապանքէն. ո՛ն եւ օ՛ն արասցէ Աստուած՝ եթէ
դուք առանց հողի եւ մշակի՝ ողջ մնաք երկրիս վերայ:

Ո՛չ միայն կշտապինդ կերաք, այլ եւ խեղճ գեղացւոյն կեանքը ան-
խղճապէս կողոպտեցիք, ոչ ինչ չթողիք. թէ չտեմարանին մէջ մի դոււ ցոր-
եան կար, թէ իւղամանին մէջ մի կշիռ իւղ, թէ մառանին մէջ փոքր ինչ
պաշար՝ որ իւր տղոց բաժին ու հոգեպահիկն էր, զայն ամէն հանիք թա-
փեցիք 'ի դուրս աղբիւսներու մէջ խառնեցիք, որպէս զի գիւղացի ընտա-
նիք սովալլուկ մեռնին. բայց միթէ դուք պիտի մնաք ու ապրի՞ք, ժա՛նտ
խորամանկներ:

Ո՛հ, որչա՛փ իղձ կը լինիմ ես, եւ ո՞ տար ինձ, Հայո՛ց աշխարհ, որ
ողբերուս հետ սփոփանք խառնելով զքեզ մխիթարէի եւ սրբէի լացող ժո-
ղովուրդիդ գետահոս արտասուքը, զոր թափեց նա իւր արեան հետ: Բայց
ես էլ կը վարանիմ Մարգարէին պէս եւ կը գոչեմ, «Ո՞վ մխիթարեսցէ զքեզ,
դո՛ւստր Սիօնի, զի ծանրացաւ բաժակ բեկման քո»:

Այո՛, կարի յոյժ դառնացաւ քո բաժակ, Հայո՛ց աշխարհ. չգիտեմ թէ
ո՞րպէս յուսադիր լինիմ ու մխիթարեմ զքեզ. զի ես էլ քո տարաբախտ որ-
դիներէն անմխիթար մի զաւակն եմ, որ բախտն ինձ միշտ լաւ վիճակեց ու
երբէք չխնդացի: Եւ ի՞նչպէս խնդայ քո հէք ողբերուն, երբ քո կեանք՝ ող-
բոց ու ցաւոց աշխարան է:

Այլ մխիթարեա՛ց, մխիթարեա՛ց, Մա՛յր Հայաստան, զի դու սովո-
րած ես ցաւեր ու վիշտեր կրել. հազար անգամ մահաբեր երկունքներ զքեզ
ըմբռնեցին եւ դու հանդուրժելով անցուցիր երկունքներդ եւ ողջ մնացիր:
Հազար բիւր աղէտներ տեսար, միշտ որդիքներդ գրկէդ վարատեցան, բայց
դու երբէք չվհատեցար, զի ոգիդ պողպատի նման պինդ եւ աննկուն է:
Հազար անգամ գերեզմանին դուռը հասար, թշնամիներդ տեսան՝ ծափ
զարկին, թէ վա՛չ, մեռաւ Մայր Հայաստան, եւ դու անդրէն Ղազարոսի
նման վերածնար գերեզմանէն:

Միթէ մարդոյն կամ օտարին ձեռք կարո՞ղ է զքեզ մեռուցանել, երբ
դու ինքնասպան չը լինիս, եւ երբ յոյսդ անմահութեամբ լի է: Թէ խորա-
մանկութիւն կը ճգնի որդիքներդ ընկճել, որչափ հնար է՝ հարստահարել
ու վարատել, որպէս զի դու անբարգաւաճ մնաս, անճետ սպառիս, կամ
այդ վերահաս թշուառութեանդ մէջ բոլորովին չքաւորիս, նկուն դառնաս,
ոգիդ ստրկանայ եւ երբէք ազատութիւն չմտաբերես:

Թէ աշխարհիս խորամանկութիւն քեզ համար այսպիսի դաւ կը նիւ-
թէ, դու եւս փորձառութեամբ ուսի՛ր, խորագէ՛տ եղիր, այնպէ՛ս անցիր
դաւերէն՝ որն զքեզ չտեսնայ դարանամուտն. յուշի՛կ անցիր զնա՛ յառաջ-
դիմութեանդ մէջ. մի՛ գոչեր, մի՛ աղաղակեր. թէ կը խօսիս, թէ կը գոր-
ծես, լռին եւ անձայն եղիր:

Մի՛ վհատիր, ժո՛ղովուրդ, թէ զքեզ չարչարելով խոնարհ արարին,
ոտքիդ առաջ որոգայթներ լարեցին. դու հաւատ ունիս, Աւետարան ունիս,
խաչակրութիւն ուխտեր ես, կռի՛ր, անցի՛ր այդ Բաբիլոնի կրակը, թող
տեսնան ու զարմանան աշխարհի որդիքներ:

Այս աշխարհ եւ աշխարհիս գահեր՝ ամէն դայթակղութիւն եւ որո-
գայթներ ունին, խեղճ եւ ստրուկ ժողովուրդներ բռնաբարուած են եւ կը
գոչեն ազատութի՛ւն ազատութի՛ւն: Այլ ոչինչ ճար չունին, դորա միակ
ազատութեան ճար՝ լոյս եւ կրթութիւնն է. դու զայն երբ 'ի ձեռս բերես,
այն օր է միայն քո ազատութեան տօնահանդէս:

Ո՛վ Բագրեւանդայ դժբախտ որդիներ, վայրագ խուժան զձեզ կոտո-
րեց, վատ եւ ապիկար Քիւրտն ժողովեց տարաւ զձեզ 'ի սպանդանոց, դա-
նակը առաւ եւ միահամուռ մորթեց զձեզ, կացինով ձեր ոսկորներ ջարդեց,
դուք անխօս՝ անմռունչ՝ անշարժ մնացիք, որպէս ոչխար՝ իւր կտրչին
առաջ:

Անխնայ մորթուեցաք, այլ եւս պիտի մորթուիք. այս աշխարհիս օ-

րէնք, կարգ ու խղճմտանք այսպէս է. մարդիկ՝ որ տէր են եւ կ'իշխեն անասնոց, ոչխարի նման՝ մարդիկներէն պիտի մորթուին, երբ չունին խեթկիչ եղջիւր, որ ցուլի նման ոգորին իրենց կարիճներուն դէմ։

Յո՜ւշ, յո՜ւշ, ո՛վ կոտորուած դառներ, ո՛վ Հայոց ողջ ու մնացորդ որդիներ, դեռ պիտի կոտորուիք, դեռ պիտի մորթուիք այդ չքոտի Քիւրտերէն, քանի որ անզէն, անեղջիւր, անասպար կ'ապրիք· դուք մարդ էք, ձեռք եւ բազուկ ունիք, միթէ անզգացած մեռե՞ր է ձեր սրտմտութեան ոգին· միթէ կը հաւատա՞ք որ իշխանութեան աչքը հասնի մինչեւ Հայոց ամայի լեռներ ու դաշտեր եւ ձեզ պահապան լինի։

Ես գիտեմ ու կը տեսնամ զքեզ, որ իբրեւ մի անյարիր անդամալոյծ՝ Պրովպատիկէ աւազանին չուրջն ի կած, անոք, անօգնական մնացեր ես. ո՜հ, հիւանդութեանդ շրջանը չէ թէ երեսուն եւ ութ ամ է, այլ չորեքհարիւր ամ, անդամներդ ամէն բեկբեկուած, ոտքէդ մինչեւ 'ի գլուխդ վէրքերով լցուած, մարդ չի՛ հաւատար թէ դու այլ եւս կ'ողջանաս ու կը շրջիս աշխարհիս վերայ· ոգիդ կենդանի է ու կը տրոփայ, չունչ մի ունիս, որ շարունակ կ'աղաղակես ու կը պաղատիս, Տէ՛ր, ես անոք եմ եւ չունիմ ինձ օգնական, որ զիս ազատութեան աւազանին մէջ ձգէ եւ ես բժշկուիմ այս չարախտ եւ չարաչուք ստրկութենէն։

Գոչէ՛, գոչէ՛, ո՛վ անճարակ հիւանդ, քո օգնական՝ Տէրն է. աշխարհիս վերայ քեզ ոչ ոք օգնական չկայ։ Դու Պուլկար չես, որ Օրթոտօքս Եկեղեցւոյ Զարը քեզ զօրավիգ հասնի. Կաթոլիկ չես, որ Հռովմ կամ Ֆրանսան զքեզ պաշտպանէ. Բողոքական չես, որ սուրբերու բարեխօսութիւն Թողլու եւ Ովկիանու Թագուհին քեզ բարեխօս բռնես, որ թերեւս գթայ եւ դարման տանի. զի դու Հայաստանեայց Եկեղեցւոյ ազատ զաւակն ես, իբրեւ անծանօթ՝ մոռացեալ երկրի մէջ կը բնակիս. սորա՞ համար արդեօք մարդոց սրտէն ու մարդասիրութենէն մոռցուած ես դու։

Մատի՛ր, ո՛վ Յիսուս, մատի՛ր, հիւանդ եւ անկեալ Հայուն օգնական չկայ աշխարհիս վերայ, մատի՛ր, ձե՛ռն տուր այդ հինօրեայ անդամալուծին, որոյ բազմապատիկ ցաւոց ու վիրաց վերայ այլ եւս անհնարին ցաւս ու վարս յաւելին այժմիկ։ Ասա՛, ո՛վ ազատարար բժիշկ եւ փրկիչ, թէ արի՛, ա՛ռ զմահիճս քո եւ ե՛րթ յազատութիւն։

Ո՛վ դու մաշած եւ հիւծած հիւանդ, թէ յիրաւի՛ բժշկութիւն կը ժտես, թէ ստոյգ ազատութեան կը ցանկաս, օ՛ն ուրեմն, փոքր ինչ խլրտի՛ր մահճիդ մէջէն. ինքնաշա՛րժ եղիր. ահաւասիկ Աստուծոյ մատն ու հրեշտակ աշխարհիս յեղափոխութեան աւազանին ջուրերը կը յուզեն. ով որ զինքն վաղ ձգէ նորա մէջ, նա միայն իւր ցաւերէն ազատ կը լինի։

Թէ չգիտես, ես՝ իբրեւ դաս՝ խօսիմ քեզ, որ դու խելամտիս թէ քանի՞ թանդ է ազատութեան գին. աշխարհիս Փրկիչ զայն իւր խաչով եւ արիւնով գնեց. նոյնգունակ մեր նախնի քաջեր Եկեղեցւոյ եւ Հայրենեաց ազատութիւն մահով եւ արիւնով գնեցին։ Միթէ դու ցանկալի ազատութիւն առանց զոհի եւ արեան ձրի՞ ստանալ կ'ուզես։

Թո՛ղ, թո՛ղ որ դարձեալ ողբամ զքեզ, Հայո՛ց աշխարհ եւ ժողովուրդ. մինչ աշխարհիս ջրայուզման եւ արեան ալիքներուն մէջ այլ եւ այլ ազգեր կը լողան ազատութեան նաւահանգիստ գտնել, դու ալեաց ելեւէջներու մէջ կը տատանիս. գիշերալոյս փարոսներ չունիս, նաւահանգի՛ստ, նաւահանգի՛ստ, կ'որոնես եւ չես գտներ։ Այդ յայտնի է, թէ դու անարուեստ ես, լողալ չգիտես։

Թո՛ղ ուրեմն այժմիկ ազատութիւն, միայն խաղաղութիւն խնդրէ. դեռ քեզ համար ուսումն եւ կրթութիւն պէտք են, եւ դու այդ քո տատանման մէջ Պետրոսի նման ձեռքերդ Յիսուսի կարկառէ եւ ասա. Տէ՛ր, քո ձեռն տուր՝ զիս փրկէ. եթէ թողլու ու չփրկես, Տէ՛ր, ես կը կորնչիմ աւասիկ։

Յուշ կ'առնեմ քեզ, Տէր, մինչ մի նուագ Տիբերական ծով կ'ալեկոծէր, դու 'ի խելս նաւուն անխռով կը ննջէիր, ձայն տուին քեզ աշակերտներդ, զարթի՛ր ասացին, Տէ՛ր, զարթի՛ր, զի կորնչիմք աւասիկ։

Ո՛վ դու անքուն պահապան աշխարհի, որպէս թէ չէիր գիտեր եւ չէիր լսեր ծովալիքներուն ձայն, ելար յանդիմանեցիր նոցա թերահաւատու-

թիւն, մռնչող ծով լսեց քո ձայն ու հանդարտեցաւ եւ դարձաւ 'ի խոր խաղաղութիւն:

Միթէ եւ այժմ կը ննջե՞ս դու երկնից գահուդ վերայ, եւ երկիր՝ որ ոտքիդ պատուանդան է, կը սասանի ու կ'երերայ. պատերազմի դաշտերէն Կրուպի ազեղ թնդանօթներ կ'որոտան, հրալից գնդակներ կը թափեն, մի խուն վայրկենի մէջ ժողովուրդի կայտառ զաւակներ բարդ 'ի բարդ որայի նման մահուան ագարակներու մէջ կը թօթափեն, եւ դու չե՞ս տեսներ եւ չե՞ս իմանար:

Հայեա՛ց եւ տես, ո՛վ Տէր, թէ ի՞նչպէս Սպիտակ եւ Սեւ ծովերու կատաղի կոհակներ զիրար կը բաղխեն, հիւսիս եւ հարաւ հակառակ հողմերով փոթորիկներ կը հանեն, երկուստեք սեւ սեւ ամպեր կ'որոտան, բարկճայթ կարկուտներ կը թափին, աշխարհիս մարդկութեան ծառերն ու ծառաստաններն ջարդուելով լեհուելով տապալեցան 'ի գետին:

Երբ այս ծովեր կը խռովին ու ցամաքն եւս արեան ալիքներով կը ծփայ, ի՞նչ կը խորհի եւ կը գործէ Խաղաղական Ովկիանոս.— ներքուստ միայն կը մռնչէ նա եւ ուրիշ ոչինչ: Իւր խուլ եւ անորոշ ձայնէն միայն այս կը լսեմք, որ կ'ասէ. գնացէ՛ք կռուեցէք. ինձ ոչինչ է փոյթ. միայն թէ հեռո՛ւ հեռո՛ւ, իմ շահուս մի՛ դպիք, ապա թէ ոչ՝ եւ ես կը յուզուիմ:

Ո՛վկիանէ, Ո՛վկիանէ, որ կը պարծիս թէ ամէն ծովերէն մեծ եւ հարուստ եմ, որ կը քարոզես թէ մարդասէր եմ, խաղաղութիւն կը սիրեմ, Աւետարան կը սիրեմ, եւ յաճախ կը կարդաս Յիսուսի այս բան «Երանի՛ խաղաղարարաց, զի նոքա որդիք Աստուծոյ կոչեսցին.»:

Երկնից աչք կը տեսնայ, գիտէ եւ կը քննէ քո խոր երիկամունք. իսկ աշխարհի առաջ չքմեղս լինելով ստէպ ստէպ յայտարարեցիր, թէ տըքնեցայ ու ջանացի որ խաղաղութիւն հաստատեմ, բայց ընդունայն համարեցաւ իմ ջանք. ձեռքս լուացի եւ ասացի թէ քաւեալ եմ ես այդ պատերազմի արենէն. եւ դու սառն աչքով կը դիտես այստի այժմ արեան դաշտին վերայ:

Ո՛վ գահերու դատաւոր Աստուած, կը տեսնաս դու, Արեւելեան խնդիր մի կայ աշխարհիս վերայ, որ Գորդեան հանգոյց դարձեր է. այս քանի՞ ամ է, որ այդ խնդիրը աշխարհները կը խռովէ, ժողովրդոց խաղաղութիւնը կը բառնայ. Եւրոպիոյ գահերն ու դիւանագէտք չկամեցան կամ չկարացին լուծել զայն, զոր հին դիւցազն Աղէքսանդր մի հարուածով ընդ մէջ կտրելով լուծեց այդ հանգոյցը:

Իսկ նորն ասաց, 'ի բա՛ց կացէք, ձեռնամուխ մի՛ լինիք, այդ խնդիրն իմ բաժին եւ իրաւունքն է, թողէք ես միայնակ կը լուծեմ զայն: Զարնելով զարնելով բազուկներ պարտասեցան. կ'ասեն թէ սուրն եւս բթացաւ, եւ հանգոյցը դեռ անլուծանելի մնաց:

Ո՛վ դժոխային կնճիռ, որ մարդկանց արիւնով կը մածանիս եւ քա՛նի երթաս՝ կը կնճռիս, թշուառ ժողովուրդներ որչա՜փ զոհեր տուին եւ որչա՜փ արիւն թափեցին քեզ համար: Թէ լուծուիս՝ Պուլկարիոյ արեան գին ազատութիւն կը խոստանաս. այլ կը մոռնաս ու բնաւ չես յիշեր Հայոց անպարտ արիւն եւ իւր տուած անհուն զոհեր:

Ո՛վ Երկնից արդարութիւն, մարդկանց փրկութիւն ընդունայն է. սուրդ երկայնմտութեան պատենէն հա՛ն, դու միանգամ հա՛ր եւ լուծէ՛ այս յաւիտենական հանգոյցը, որ աշխարհիս վերայ գայթակղութիւն մի դարձեր է. վա՜յ նոցա՝ որոց ձեռքով այս աշխարհաքանդ գայթակղութիւն կու գայ:

Դու կը տեսնաս, երբ գահեր կռիւ ուզեն՝ Արեւելեան խնդիր կը յուզեն՝ եւ երբ աշխարհակալել կամին՝ դարձեալ Արեւելեան խնդիր կը հանեն: Մինչեւ յե՞րբ գահեր թողուն մարդկութեան վայելուչ խօսք, խորհուրդ եւ ուխտ, սրով եւ արիւնով խօսին. մինչեւ յե՞րբ զօրաւորներ կռուին՝ տկար եւ անզօր ազգեր ոտքի տակ ճմլուին, պատերազմի արշաւանքներու առաջ խեղճ ժժողովուրդ աշխարհաքանդ ու տնաքանդ լինի:

Նեղեալ, տառապեալ, զրկեալ, հարստահարեալ, կոտորեալ, վարատեալ, չքաւորեալ եւ յուսահատեալ ժողովուրդ՝ ճնշող երկաթին տակ կը հեծէ, կ'աղաղակէ եւ կ'օրհնէ քո անուն, ո՛վ Տէր, տո՛ւր մեզ քո մշտնջենաւոր խաղաղութիւն:

*Ասա՛ թող հանդարտին խռովեալ ծովեր. ասա՛ թող կտրին Կրուբի թնդանօթի ձայներ. ասա՛ գահերուն թող սուրերն 'ի պատեան դնեն: Ես գիտեմ, նոքա ո՛չ կը կարդան եւ ո՛չ քո բան 'ի միտ կ'առնուն, թէ «Որ սուր առնու, սրով անկանիցի»:*

*Տէ՛ր, դու գիտէիր կանխաւ, որ աշխարհ եւ գահերն զմեզ կը չարչարեն. սորա համար ասացիր որ աղօթենք եւ միայն քո արքայութիւն խնդրենք: Մարդիկ անգիտանալով՝ Սաւո՜ւղ, Սաւո՜ւղ կը խնդրեն:*

*Այլ քո ճշմարիտ հաւատացեալներ պէտք է յամենայն ժամ այս խնդրեն. Եկեսցէ արքայութիւն քո, որ է ճշմարիտ խաղաղութիւն, սէր եւ հաւասար եղբայրութիւն, եւ քո բարի կամքն այն է որ մարդիկ այս պայմանով ապրին աշխարհիս վերայ:*

Վ Ե Ր Ջ

# ԴՐԱԽՏԻ

# ԸՆՏԱՆԻՔ



ԳՐԵՑ

ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ

Ի ՊԷՏՍ ՀԱՅՈՑ ԸՆՏԱՆԵԱՑ



Ի ՅԻՇԱՏԱԿ

*ԱՆՄԱՀ ՀԱՅՐԻԿԻՆ ՀԱՅՈՑ*

*ՀՈԳԵԼՈՅՍ*

**Տ. ՄԿՐՏԻՉ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԽՐԻՄԵԱՆԻ**



ՆՈՒԻՐԷ

*ՉԱՅՍ ՄԱՀԱՐՁԱՆ*

ԵՐԱԽՏԱԳԷՏ

Հրատարակիչն Օ. ԱՐՁՈՒՄԱՆ

# ՆԱԽԱԲԱՆ

---

## ԱՌ ԸՆԹԵՐՑՈՂՍ

Բարեկամ ժողովուրդ Հայոց, Ձեզ կը նուիրեմ դուզնաքեայ երկասիրութիւնս, որոյ մակագիրն է ԴՐԱԽՏԻ ԸՆՏԱՆԻՔ: Այս անուն քաղցր ու ժողովրդական է. թերեւս զարմանաք եւ մեղադրէք զիս, զի գրքիս առարկաներն առաւել աշխարհիս առարկայից վերայ են քան թէ երկնից արքայութեան: Զիս պիտի դատէ՞ք արդեօք, երբ Եկեղեցւոյ վարդապետ, Աւետարանի աշակերտ, կենաց Հացին տնտես, թողու իւր բարձրագոյն պաշտօն, Պօղոսի քարոզած երկնից անճառ դրախտը, եւ երկրի ընտանեկան Դըրախտի համար ճառէ:

Ճշմարիտ կը լինէր քո այդ դատաստան, եթէ երկնից դրախտ մոռնայի, ու չը կապէի զայն երկրիս դրախտի հետը, որ իսկապէս երկնից դրախտին հիմն է: Ես Եկեղեցւոյ համար կը խօսիմ, որ Քրիստոսի տնկած դրախտն է, եւ նորա սուրբ ընտանիքն են Նոր Եկեղեցւոյ զաւակները: Ահաւասիկ այդ նոր Դրախտի ընտանեաց համար է դոյզն վաստակս, յոր տքնեցայ, որպէս զի Դրախտի ընտանեաց կեանք բարւոքի:

Գիտնալ ու հաւատալ պէտք է, որ աշխարհիս ընտանեկան դրախտին մեղապարտ եւ անհնազանդ զաւակներն՝ երկնից դրախտը կարող չեն ժառանգել:

Ուստի այս ընտանեկան կեանքի սեղանին վրայ ես միայն սոսկ հաց չպատրաստեցի, եւ թէ պատրաստէի եւս՝ Յիսուս հրաման կուտար, ինչպէս տուաւ իւր աշակերտաց, երբ անապատի մէջ ժողովուրդ քաղցած հաց կը խնդրէր՝ ասաց Յիսուս «Դուք տուք դոցա ուտել»: Աստի յայտ է թէ, կենաց բանին հետը մերթ եւս ժողովուրդին հաց մատակարարել. Աւետարանին հակառակ տնտեսութիւն չէ:

Ժողովուրդ Հայոց, քեզ համար նկարեցի Դրախտի ընտանիքը. կ'աղաչեմ, որ իբրեւ հայելի դնես աչքիդ հանդէպ, հայիս ու տեսնաս հիւանդ եւ հիւծեալ կերպարանքդ: Կարկի բերանս, թէ չարագուշակ լինիմ քեզ համար, մահդ ինքնին կը կոչես, ու պիտի մեռնիս, եթէ չվաղվաղես դարման տանել այդ համաճարակ ու մաշող մահաբեր ախտիդ. որ թէ կանուխ թէ անագան զքեզ դէպի թշուառութեան գերեզման կը տանի:

Կը խոժոռիս թերեւս երբ խիստ կը խօսիմ եւ խստութեամբ կը դատեմ զքեզ, եւ միթէ կը կարծե՞ս թէ ես միայն եմ եւ դու ինքնին զքեզ չե՞ս դատեր: Հապա ի՞նչ է այն, որ զօրհանապազ տրտունջ կը բառնաս, կ'աղաղակես, թէ ահաւասիկ կը կորնչիմք: Հրէամիտ մի լինիր, զայլ ոք պատճառ մի դներ, ո՛չ, ոք զքեզ կը կորուսանէ. կորուստ քո ի քէն է, քո տնէն է, եւ քո ընտանիքէն: Ուրեմն եթէ ստոյգ է եւ կ'զգաս դու թէ կը կորնչիս եւ թէ թշուառութեան օրերը մօտալուտ են, պիտի հասնին քեզ, եւ դու ամէն օր աչքիդ առաջ կը տեսնես անկեալ ընտանեաց վշտագին տառապանքն: Այո՛, կը տեսնաս եւ տակաւին չես խելաբերիր. թողեր ես զքեզ վարեն ու տանին, եւ ո՞ւր, դու գիտե՞ս. ես կանխաւ ասացի քեզ, թէ ուր կը տանին:

Յո՛ւշ, յո՛ւշ, յետս դարձիր. թող տուր, մահ է, մի հպիր, ձեռներդ թօթափէ այդ զեղծմանց փշիներէն. ընտանեկան սրահիդ սեմոց վրայ այս առած գրէ ԾԱՆԻՐ ԶՔԵԶ: Այդ իմաստուն առածը մի՛ մոռնար, կարդա՛ միշտ, չափ ու սահման դիր տնտեսական կառավարութեանդ, հացդ չափով կեր, ջուրդ չափով խմէ, հանդերձդ չափով հագիր. թող Հայոց տիկնայք քառասուն կանգուն հազար թերթիկ շրջազգեստը տասն կանգունի փոխեն, որ բաւ եւ շատ է այնչափ մարդոյ հասակի վայելչութեան. զոր Արարիչը չափով ստեղծեր է: Թող այր մարդիկ իրենց սպրպիկ նեղ ձեւ հանդերձը փոքր ինչ ընդլայնեն, որ անձկութենէն չպատռի: Թող չափ դնեն դարձեալ

ընտանեկան այն ամէն պէտքերուն· գիտնալով թէ պէտքերն անսպառ են, զորս օր ըստ օրէ կը հնարէ Եւրոպիոյ ձեռարուեստ հանճարը, եւ մարդոյն ցանկութիւն եւ հաճոյքը անհուն անսահման են, եթէ չափ չի դնենք՝ մարդ մի անգէտ մանուկ է, կը վազէ միշտ դէպի սիրուն խաղալիքները:

Ուրեմն պէտք է խոհական ու կատարեալ մարդ լինինք· սանձ դնենք մեր մանկամտութեան· փորձառութեամբ եւ մեծամեծ տուժերով տեսանք եւ կը տեսնամք մեր ընտանեկան բիւրաւոր աղէտները թէ նիւթապէս եւ թէ բարոյապէս:

Ժամ հասաւ, խոստովանիմ քեզ· ով ազգ Հայոց, չորս տարուան Պատրիարքութեանս շրջանին մէջ, քո ընտանեկան բազմապատիկ աղէտները ես ինքնին տեսայ· եւ այդ աղէտներուն մէջ՝ առաւել աղէտաւոր էին ամուսնական խնդիրները· որք թէ ո՞րչափ եւ քանիպատիկ ծանրալուր են· ես կը ծածկեմ այդ թուանշանը եւ խնդրոց պատմութիւնը չեմ յայտներ քեզ: Եթէ կը դժուարիս հաւատալ՝ ինձ վկայ եւ ապացոյց կը կոչեմ աստ Պատրիարքարանի Դատաստանական խորհրդոց արձանագիրը: Սակայն մեր ընտանեկան զեղծմունքներու բովանդակ ցանկը պէտք չէ որ միայն այդ արձանագրէն կշռենք, վասնզի մեր այս աւուր իւրաքանչիւրին ընտանեկան կեանքը կենդանի արձանագրութիւն է· մարդ որ աչք ունի՝ կարող է զայն կարդալ առտնին եւ հրապարակաց մէջ· ուր ցուցամոլ շռայլութիւն կը շրջի նազելով իբրեւ Անգլիացի լորտ եւ թագուհի, կարծելով թէ իւր հարստութիւն՝ Անգղիոյ անսպառ ոսկին է:

Ո՛չ, ո՛չ: Այնպէս մի՛ կարծէք, ո՛վ Հայոց ընտանիք, ճանչցէք Ձեր չափն ու վիճակը· դուք շատ աղքատ էք ոսկւով ու մտքով· աղքատ էք դաստիարակութեամբ եւ ազատութեամբ· աղքատ էք գործունեայ աշխատասիրութեամբ· աղքատ էք արուեստական հանճարով· աղքատ էք իմաստուն տնտեսագիտութեամբ: Առանց մտաւոր եւ նիւթական հարստութեան՝ դու միթէ արժանի կը համարի՞ս զքեզ նոյն Եւրոպական ժողովրդոց նոխ կեանքը վայելել: Ծանի՛ր, այդ կեանքը, ա՛յդ յառաջդիմութիւնը՝ ճակատի անխոնջ քրտինքով բազմակերպ արեան զոհերով, հարիւրաւոր տարիներու մէջ հազիւ հազ կազմուած է, եւ դու դեռ երէկ սկսեցիր նոր երախայի պէս քերական կարդալ· կը կարծես ու կը հաւատա՞ս թէ ուսեալ եւ քաղաքակիրթ Եւրոպացի դարձար:

Ես կը գովե՛մ քո եռանդը, որ կը ձգտիս դէպի յառաջդիմութիւն եւ քաղաքակրթութիւն, միայն թէ սխալ ըմբռնած ես, որպէս թէ զեղխութիւն, զեղծմունք, նորասիրութեան բուռն տենչանքը, ճշմարիտ քաղաքակրթութեան նմանողութիւն է: Այդ նոյնիսկ քաղաքակիրթ ժողովրդոց մէջ սինլքոր մասին կարծիքն է եւ վարք: Դու ազնիւ եղիր ու ազնիւ ժողովրդոց բարի ու պարկեշտ օրինակին հետեւի՛ր· որոց ամենայն ինչ կշռով ու չափով է· որոց ընտանեկան կեանքին լոյս եւ առաջնորդ՝ ուսումն, դաստիարակութիւն եւ տնտեսութիւնն է: Քաղաքակիրթ ժողովուրդ այս երեք բառերով կը վարէ իւր ընտանեկան կեանք, այս երեք բառերն են, որով նոքա բարեբաստիկ եւ երջանիկ կ'ապրին աշխարհիս վրայ, վասնզի ուսման լոյսով հաց կը գտնեն, դաստիարակութեամբ հոգին եւ սիրտ կրթելով բարի ընտանիք կը կազմեն, իսկ տնտեսութեամբ հացին սեղան եւ այլ կեանքի պիտոյքները չափով ու կշռով կը մատակարարեն միշտ հոգալով ապագայի անստոյգ օրերն· որ անշուշտ կը պատրաստեն մարդոյն համար կամ երջանիկ բախտ կամ թշուառ կեանք: Բայց մարդ իւր ներկային մէջ կամ զգաստութեամբ կամ ապշութեամբ իւր ապագայ օրերն ինքնին ձեռօք կը պատրաստէ· զի ներկան ապագային հիմն է եւ ապագան ներկային յաջորդութիւն եւ շէնք:

Բովանդակենք մեր յորդորական ճառը, ով դուք ընտանիք Հայոց, ուղղեցէ՛ք ձեր ներկան, որ ապագան ուղիղ լինի· տնտեսեցէ՛ք ձեր ներկան, որ ապագային հարցը չպակսի: Մի մոռնաք վերոյիշեալ երեք պայմանները որ մեր թշուառ կեանքը կը բարւոքեն· եւ այս է՝ լուսով հաց գտէք, դաստիարակութեամբ բարի ընտանիք կազմեցէք· իսկ իմաստուն տնտեսութեամբ հոգացէք միանգամայն ձեր ներկան եւ ապագան:

# ԴՐԱԽՏԻ ԸՆՏԱՆԻՔ

---

## Ա.

ՍՈՒՐԲ ԳՐՈՑ պատմութենէն կ՚իմանանք թէ՝ Տէր Աստուած տիեզերաց ճարտարապետ երբ մեր բնակած աշխարհին շէնքը ու հրաշալի զարդերը բովանդակեց· նախապէս պատրաստելով զայն իբրեւ բնակութիւն եւ սահման թագաւորութեան Մարդոյն· Աստուած, որ բանիւ միայն կ՚արարչագործէր, Եդեմական դրախտը իւր ձեռքով տնկեց· եւ իբրեւ արքայական պալատ զարդարեց զայն ի պատիւ առաջնաստեղծ Մարդոյն, որ իւր տիրական պատկեր կը կրէր· եւ ինչպէս յերկինս իւր պետական աթոռ դրած էր, երկիրն եւս Մարդոյն պարգեւ տուաւ, եւ դրախտին մէջ հաստատեց Ադամ թագաւորին անմահութեան գահը։

Զգիտեմ, երբ կենդանի շնչով ու բանականութեամբ հոգիացաւ հողն ու կաւն, ու յանկարծ աչք բացաւ տեսաւ նախ իւր ստեղծող Արարիչն· երկինք, երկիր, եւ իւր բոլոր շրջապատը՝ զարմանազան արարածները· զգա՞ց արդեօք ու համբուրե՞ց այն մեծագործ ձեռք, որ զինքն յանարգ կաւէն մարդ նկարեց· իմացա՞ւ թէ ինքն երկրի թագաւոր էր եւ պիտի իշխէր ծովուն, ցամաքին ու բոլոր հպատակ արարածոց։

Այո, այս տիրական իշխանութեան բարձրագոյն հրամանն ընդունեց իւր Արարչապետէն· թէ «Աճեցէք՛ եւ տիրեցէք երկրին»· բայց անզոյգ մարդն ի՞նչով պիտի աճէր ու բազմանէր։

Ադամ թագաւոր էր, այլ թագուհի չկար· ուստի, կ՚ըսէ Սուրբ գիրք, թէ Տէր Աստուած համաշխարհական հանդէս կազմեց, բոլոր ազգ թռչնոց ու անասնոց հրաւիրեց դրախտի ծառազարդ սրահը· հրաման տուաւ Ադամայ, որ իւր հպատակ արարածոց վայելուչ անունները ինքը դն·է յորմէ յայտ է թէ մեր մանուկ Նախահայր դրախտի դպրոցի մէջ բնագէտ իմաստուն էր· զի վարժապետն Աստուած էր, որ փչեց նորա երեսը ու ճառագայթեց գիտութեան լուսով։ Երբ կը տեսնէր ու կը դիտէր Ադամ կենդանեաց բոլոր ազգը՝ զոյգ զոյգ իւր առաջ կեցած, կը հանազանդէին իրեն համբոյր եւ ընտանի բնաւորութեամբ, թերեւս ինքնին մտախոհ լինելով պահ մը տխրեցաւ իր միայնութեանը վրայ, ու երանի տուաւ անբան

կենդանեաց․ որ զուգակից ընտանութեամբ քան զինքն երջանիկ էին։ Մանաւանդ երբ կը տեսնար որ սոխակ իւր վարդն ունէր, տատրակ իւր ամուսին, արօրիկ իւր սիրանուէր ընկերը․ առաւել եւս վարանեցաւ բանաւոր մարդն Ադամ․ եւ այն ինչ նորապսակ թագաւորի մը պէս թագ կապած կ՚իշխէր․ հրամայեց Տէր Աստուած, որ ընդհանուր կենդանեաց ազգէն իւր ազատ ընտրութեամբ հաւանելով իրեն համար կենակից ընկեր՝ հարսն ու թագուհի ընտրէ, զոր եւ կամի։

Քանի՞ ծանր եւ դժուարին էր անզուգական մարդուն համար, որ նա խնոարհէր ու ստրկանար անբանաւոր կենդանեաց սեռէն իրեն ընկեր ընտրէր։ Եւ միթէ Տէր Աստուած կը փորձէ՞ր զինքն տեսնել թէ՝ իւր բանաւոր նախապատիւ մարդըն, որ տիրական պատկերով կը փայլէր, եւ պատուով ու փառքով բոլոր ձեռակերտաց վրայ իշխան կարգուած էր, կը ճանչնա՞յ իւր ազնուականութեան շնորհ ու մեծութիւն․ եւ թէ կը գիջանի՞ հաւասարիլ անասնոց։

Մեծանձն եւ հանճարեղ էր մեր նախահայր․ համայն կենդանեաց սեռին մէջ չգտաւ համեմատ ինչ, որ իւր պատուոյն ու ընկերութեան արժանի լինէր։ Թող այս, երբ սահմանադիր արարչապետ բոլոր կենդանեաց սեռը զոյգ զոյգ ստեղծեր էր․ զրկանք եւ յափշտակութիւն չէ՞ր արդեօք եթէ հաճէր Ադամ մինն առնուլ եւ միւսն թողուլ։ Նա կը տեսնար թէ թէ սիրուն երգիչ էր սոխակ, եթէ զայն խլէր վարդի թփէն, անշուշտ վարդն կը թոռմէր ու կը մեռնէր․ թէ տատրակն առնուր, նորա ամուսնասէր ընկերն այլեւս ամուսին չընտրելով՝ այնպէս միայնակ զոր հանապազ կը սգար ու կը հառաչէր։ Զո՞վ ընտրէր Ադամ․ զօրաւոր առի՞ւծը, որ կենդանեաց թագաւոր էր եւ անտառ կը սիրէր․ զարծի՞ւն, որ բարձրաթռիչ լինելով ձեռք չէր հասներ․ կապիկն եւս դիմաց կեցած հրտապտանքով կը խաղար ու կը շողոքորթէր, իբրեւ թէ ինքն մերձաւոր ազգակից է Մարդուն, զայդ եւս թողուց Ադամ, որ երթայ վերջի դարուն իւր բնագէտ ու իմաստակ զաւակներուն հետ ամուսնանայ․ որք արհամարհելով մարդուն տիրական պատիւը, բանականութեան գերագոյն շնորհն․ եւ դիմաց հրաշագեղ տիպարը, անմտացան կարծել թէ մարդն կապկի սերունդն է, եւ կապիկն է մարդուն նախահաւն։

Այսպէս անընկեր մնաց խեղճ Ադամ ու սկսաւ հոգալ ու տխրիլ։ Բոլոր Դրախտի գեղազան վայելչութիւնք չկրցին զինքըն սփոփել, նա միայնակ էր․ ուստի, Տէր Աստուած փութաց

նորա տխրութիւն փարատել, թանձր քուն թափեց նորա աչքին վրայ, եւ նորա կողերուն մի ոսկորն առնելով հրաշապէս նորաստեղծեց Եւան կենդանի հողէն նորահրաշ կենդանի մարդ կերտելով: Զարթեաւ Ադամ քնաթաթախ աչքով, տեսաւ առընթեր իւր կեցած իւր մահատիպ պատկերը, հիացաւ, հաւանեցաւ, ու խայտալով գոչեց. «Ահա այժմ ոսկր յոսկերաց իմոց, եւ մարմին՝ ի մարմնոյ իմմէ». եւայլն:

Ադամ, որ բոլոր կենդանեաց անունները վայելչապէս յորջորջեց, առանց վարանման գտաւ իւր ընկերին անունը. Աստուած զայն Օգնական կոչեց. իսկ Ադամ Կին. զոր բացատրելով կը մեկնէ իբր իսկական մասն իւր անձէն առնուած. որով մեղմով իմն կ՚ազդարարէ իւր արարչին, թէ ինչպէ՞ս հնար էր, որ ինքն օտար մարմին եւ օտար ոսկր իւր համար ընկեր ընդունէր, եւ կցէր պատուաստէր զայն իւր մարմնոյն միութեան հետը, որ անբնական էր:

Այսպէս աւարտեցաւ Դրախտին հարսանիքը. որոյ պսակադիր Քահանայն Աստուած էր, Եկեղեցին Դրախտն էր, Խաչ ու Աւետարան Կենաց ծառն էր. Շարական երգող Տիրացուն Սոխակն էր, վկայող ժողովուրդը բոլոր կենդանեաց սեռն էր. հարսնարանին խնճոյք կազմող մատակարարն ու մատուռակ՝ հրեշտակաց դասն էր. անմահ անուշահամ գինին՝ Դրախտի չորս գետերն էին. սուրբ եւ մաքուր առագաստ՝ հովանաւոր ծառաստանն էր:

Ահա այսպէս կազմեց Տէր Աստուած առաջին ընտանիքը. իւր արարչական աջով օրհնեց նորապսակ ամուսինները, եւ սիրոյ անխզելի կապով զիրենք, այնչափ ամուր եւ անբաժանելի, մինչեւ թողուլ հայր ու մայրը եւ ամուսնոյն ետեւէն երթալ. որ կը յայտարարէ դրախտին Քահանայապետն թէ, «Զոր Աստուած զուգեաց, մարդ մի՛ մեկնեսցէ». այսինքն թէ պսակին խորհուրդը վեհ է. եւ թէ զայն Արարչին հզօր ձեռք կապեց, թող ստեղծուած մարդը իւր տկար ձեռքով չհպի յանդգնութեամբ քակել զայն:

Բայց աւա՜ղ, դրախտի ընտանեաց մէջ ուրիշ երկպառակիչ մարդ չմտաւ, զի դեռ չկար. միայն խորամանկ օձը կը նախանձէր երկու սիրելեաց երջանկութեան վերայ. ուստի նենգութեամբ խորհեցաւ երկու անփորձ ամուսինները ապերջանիկ վիճակի մէջ դնել. եւ դրախտին մէջ մահ բերելով, անեղծ մարդոյն անմահ կեանքը մեռուցանել: Կեղծաւոր ու ստախօս կենդանին իւր պատերազմի ձեռնարկութեան դաշտ–

նի յատակագիծը պատրաստելով՝ յարձակեցաւ նախ տկար կնոջ վերայ այն պահուն, երբ նա միայնակ էր ու առանց իւր մեծ Թիկնապահին կը շրջէր· գիտութեան ծառին տակ իւր դարանը լարեց կնոջ նորազգաց ցանկութիւնը գրգռեց դէպի գեղեցիկ պտուղը, գեղեցկովը՝ գեղեցիկը որսաց։ Նա քաջ մտաբերեց թէ երբ զկին խաբեմ հանեմ դրախտէն, անշուշտ Ադամ անոր ետեւէն կ'երթայ։ Արարիչն այնպէս պատուիրեց· կարելի չէ որ նա բաժնուի իւր կենակցէն· եւ թէ չերթայ եւս, դարձեալ ես կը շահիմ· զի ամուսնութիւն առանց աճման կը մնայ եւ Աստուծոյ օրհնութեան նպատակը ի դերեւ կը հանեմ։

Իժ օձն այսպէս յաղթանակեց· եւ իւր յաղթանակ տեւեց ցվեց հազար տարի· մինչեւ հասաւ Աստուածորդին, Խաչի ոտքի տակ ճմլեց դարանակալ օձը, եւ գոչեց՝ «Ո՞ւր է, մահ, խայթոց քո։»

Անխելամուտ մարդիկը դրախտի ընտանեաց եւ արդի Ադամարդւոց վիճակին վրայ կարեկցելով՝ զԱստուած կը դատեն· թէ նա խստութեամբ պատժեց իւր սիրելի ձեռակերտները, մահով եւ արիւնով գրեց նոցա վճռագիրը· փանաքի պտղոյն համար մահ սահմանեց· զոր իբրեւ ծաղր ու կատակ ի դէմս կը բերէր կոյր Յազկերտը՝ Հայոց նախարարաց առաջը։

Ափիբերան պէտք է լռէ սատ մարդոց կեղակարծ դատաստանը· զի անհուն անտակ է Աստուծոյ նախատեսութեան խորը· ո՛վ գիտէ, գերագոյն եւ բարերար դատաւորը՝ դրախտի յանցաւոր ընտանիքը պատժելով առաւել եւս բարերարեց· վասն զի մեր նախածնողք՝ Գիտութեան բարւոյ եւ չարի պտուղ ճաշակելէն յետոյ եթէ յաջողէին Կենաց ծառէն եւս ճաշակել, աներկբայ էր որ այնուհետեւ մեղաց մէջ անմահ կը մնային· որով իրենք եւ իրենց բոլոր սերունդները անիծեալ եւ տատանեալ կեանք պիտի վարէին աշխարհիս վերայ, եւ մահու ցանկանալով չգտնէին զայն։

Խնամակալն Աստուած մահով հանգոյց հողին մէջ իւր պատժապարտ ծառաները· մինչեւ իւր միածին որդին եւս ի գերեզման այցելելու ղրկեց· նա մահով քաւեց իւր նախահօր յանցանքը կրկին անգամ մեղապարտ ծառայն հողէն հանելով գրկեց վերբերեց տարաւ երկնից դրախտը։

Դրախտի տարաբախտ ընտանիքէն պէտք է օրինակ ու խրատ քաղենք նոր դրախտի որդիքներս, զգուշանանք չարանախանձ օձին հրապուրիչ թոյնէն· եթէ նա ջանաց, մահ մտոյց հին դրախտը ու մեր նախածնողքը մահացոյց, պիտի ջանայ

*նաեւ նոր դրախտի մէջ Ադամայ հաւատացեալ որդիքները երկնից դրախտէն հանել։ Հոն տեսանք․ որ բարեխնամն Աստուած թէպէտ մեծագորով, այլ արդարութիւնը ի գործ դնելով չխնայեց երբեք իւր նոր ձեռատունկներուն, զոր վաղ խամրացոյց խորամանկ օձին շունչ։*

*Արժան է խելմատիլ անցելոյն աղէտներով, դիտել ու տեսնալ նենգաւոր օձին դարանամուտ հետքերը, թէ նա ինչպէս կը շրջի ու կը սողայ մեր մէջ․ նա աշխարհիս չար մշակն է, որոմնացան թշնամին, նա ատելութիւն կը սերմանէ, նա միութիւն կ'երկպառակէ, ու վեր ի վար կը խռովէ ընտանեկան կեանքը։ Բայց հզօր մանուկն Յիսուս բռնեց եւ կապեց յաւիտենական շղթայով այդ մահաշունչ վիշապը, եւ խրախոյս կարդաց Եկեղեցւոյն ընտանեաց, որ զօրանան, քաջալերուին, կոխեն ու ջախջախեն նորա գլուխը, որ դրախտի օրէն սկսեալ դրանակալ օձը թշնամի դարձաւ մարդոյն, ու միշտ կ'սպասէ հարկանել նորա գարշապարը եւ թունաւորել մարդոյն կեանք։*

---

Բ․

# ԴՐԱԽՏԻ ԸՆՏԱՆԻՔ

## ԱՐՏԱՔՈՅ ԴՐԱԽՏԻՆ

---

*ՍՈՒՐԲ ԳԻՐՔԸ կը պատմէ թէ՝ երբ Տէր Աստուած դրախտի յանցաւոր ընտանիքը զրկելով անմահ եւ ազատ վիճակէն, դուրս վարեց Եդեմի դռնէն ու դրաւ գիրենք յանդիման դրախտին․ այն ապերջանիկ թշուառութեան մէջ, ո՛վ կարող է նկարագրել մեր նախածնողաց սուգն, ապաշաւ եւ ցաւագին ողբ, զոր ոմն հայ երգիչ կը յօրինէ պարզ ու սրտառուչ․*

*«Ադամ նստէր դուռն Դրախտին,*
*«Լայր եւ ձայնէր ողորմագին․*
*«Երէկ էի ի մէջ դրախտին,*
*«Լցեալ լուսով Աստուածային»․ եւայլ․։*

*Այո՛, պէտք էր լային ու անմխիթար ողբային փառաց վայելչութենէն տարամերժեալ ընտանիքը, որք միմիայն պահ*

մի դրախտի երջանիկ կեանք համբուրելէն յետոյ՝ աշխարհի թշուառութեան փուշը դրկեցին, եւ այն առաւել եւս կսկիծ էր, որ աչքով մօտ կը տեսնային մի կողմ դրախտ երկնաւէտ, մի կողմ երկիր անիծեալ. մի կողմ բիւրազան ծաղկունք հոտանոյշ, մի կողմ քամնելի տատասկ փուշ. մի կողմ ազատութիւն՝ Արարչին ազատ գաւազանին տակ, մի կողմ ստրկութիւն՝ Արարչին ազատ գաւազանին տակ, մի կողմ ստրկութիւն՝ աշխարհի բռնաւոր ձեռքին տակ. մի կողմ հանգիստ անաշխատ կեանք, մի կողմ քրտինք երեսաց տաժանելի վաստակ. միով բանիւ, մի կողմ անմահ կեանք ու յաւէրժական փառք, մի կողմ մահ, հող, գերեզման եւ դժոխք:

Բայց իսպառ անմխիթար չէին տիրոջ ապերջանիկ ծառաները, բաւ է թէ հանդէպ դրախտին կը բնակէին, վասնզի մարդոյն խնամատար Արարիչը՝ խորհրդով տնօրինեց այս վիճակը, որպէսզի իւր հէք ծառաները սփոփուին, որ կենաց ծառի անմահութեան ճաշակէն զրկուած էին. գոնէ յուսով մխիթարուին տեսնալով մօտէն ազատարար կեանքը, որ կենաց ծառի բարձրածայր ճիւղերէն կախուած էր խաչանման բազուկները տարածուած յոյս կը ցոլար աչքերէն, կը հայէր առ նախածնողն Եւայ, եւ այս բան կ՚աւետէր նմա. «Ես ձեր հանդերձեալ փըրկիչ եւ բարեկամն եմ, պիտի գամ ու փրկեմ զձեզ. աներկբայ հաւատով սպասեցէք ինձ Երիքովի ճանապարհին վրայ, ես հոն կը գտնեմ զձեզ: Դուք կը ցանկայիք Աստուած լինել, ես էլ այժմէն կը ցանկամ մարդ լինել: Դու ինձ համար կոյս մի պիտի ծնանիս, Եւայ, եւ ես այն կուսէն պիտի գամ ու ծնանիմ Էմմանուէլ Աստուած. քեզ նշան կուտամ, ճանչցիր այն կոյս. նորա անունը Մարիամ է, եւ նա միայն պիտի լուծէ քո վրէժը քո թշնամի ոխերիմ օձէն»:

Դրախտի ժառանգորդները թէպէտ զրկուեցան հայրենի անփուշ կեանքէն. բայց իրենց անկապտելի ժառանգութիւնն էր այն օրհնութիւնը, որով Աստուած օրհնեց իրենց ամուսնական պսակը թէ« Աճեցէք... ու լցէք երկիրը»: Ուստի առաջին երկունքն սկսեց նախամօր Եւային, անդրանիկ որդի ծնաւ Կայէնն. եւ հետզհետէ նահապետական առաջին ընտանիքը կազմեց Ադամայ տուն՝ ուրիշ շատ զաւակները ծնելով:

Ադամայ տունէն եւ ընտանիքէն տարածելով բարգաւաճեցան բոլոր աշխարհիս սերունդք, եւ մի ընտանիք՝ բովանդակ երկրագունդը այլ եւ այլ ազգերով լցուց ու զարդարեց:

Զարկամ թշնամին բանսարկու օձը, մարդն ուր երթար՝

*Նա ետեւէն կը սողար, դրախտէն ելաւ, Ադամայ տունը մտաւ· եւ իւր բնածին չարութեան նպատակն էր խաղաղ ընտանիքը խռովել, նախանձ եւ ատելութիւն փչել նոցա սիրտը՝ թէ հնար լինէր· նա կը կամէր ամբողջ Ադամայ տուն եւ ընտանիքը կռուով սպանութեամբ սպառել: Նա թոյն թափեց նախ Կայենի ոխակալ սիրտը՝ հարազատը հարազատին դէմը զինեց, նախաձեռն սպաննութեան ոճիրը· առաջին ընտանեկան սուգ, առաջին մահն ու գերեզման, առաջին անգամ մտոյց Ադամայ տունը: Մեր նախածնողք կոծելով լացին, անմեղ Աբելին վերայ, իրենց ձեռքով փորեցին դժոխքին փոսը, ու իրենց աչքով տեսան առաջին նուագ չարաշուք մահուան սեւ դէմքը եւ գերեզմանին սոսկալի ստուերը:*

*Լացին միանգամայն, Կայենի ապիրատութեան վերայ մինչեւ Ղամեքայ նետը Աբելի անպարտ մահուան վրէժ լուծեց:*

*Ադամայ տուն եւ ընտանիքը անմխիթար սրտով ու սգով կ՚անցնէին դառնաբեր օրերը, մինչեւ ծնաւ մխիթարութեան որդին Սէթ նահապետը· որ իսկական նախատիպար էր Աստուածորդւոյն· եւ ինչպէս Սեթայ սերունդը Աստուծոյ որդիք կոչուեցան· Քրիստոս եւս իւր հաւատացեալ որդիքները այդ բարձր անունով կոչեց: Աստանօր նկատել արժան է Կայենի տան ընտանիք եւ Սեթայ տան ընտանիքը: Երկիւղած եւ աստուածապաշտ Սէթը իւր սերնդոց առաքինութեան օրինակ եւ դաստիարակ կը հանդիսանայ· իսկ Կայէն, ագահ ինքնասէր ու վայրագ մշակը՝ չարութիւնը կը սերմանէ ընտանեկան անդաստանին մէջ, մեծամեծ հսկաները կը բուսնին, որք աճելով զօրանալով, հեղձուցին Սէթ նահապետի բարեբոյս ծաղիկները· եւ նորա ընտանեկան անխառն անդաստանը՝ խառնագնաց անառակութեամբ ապականեցին: Աստուծոյ որդիքները խնամութեան խառնուելով Մարդկան որդւոց հետը՝ գայթակղութեան չարութիւնը զբարին յաղթահարեց· որով այս երկու սերնդոց խառնածնունդ զաւակները միահամուռ մոլորեցան Աստուածապաշտ նահապետաց ուղիղ ճանապարհէն:*

*Սեթայ եւ Կայենի ցեղերուն այս նշանաւոր դէպքը ճշգրիտ ու անվրէպ օրինակ կ՚ընծայէ մեզ՝ չարերուն հետը չընտանենալ, եւ ոչ իսկ խնամութեամբ ազգակցութիւն կապել: Չարերը միշտ մարդկային ընկերութեան գայթակղութիւն են, եւ միշտ կան ու կուգան մեր կենաց ճանապարհին վրայ· յորմէ խուսափիլ անկարելի է· զի ասաց Քրիստոս· «Ոչ է մարթ չգալ գայթակղութեան»: Ուստի ամենայն խնամով զգուշանալ պէտք*

է, մանաւանդ ընտանեկան կապակցութեան մէջ: Մովսէս Աստուածախօս օրէնքներով պատուէր կուտար Իսրայէլի որդիներուն չխառնակել հեթանոսաց հետը․ նոյնպէս եւ Յիսուս իւր Աւետարանով անդադար կը քարոզէ Եկեղեցւոյ որդւոց զգուշանալ չարերու գայթակղութենէն:

Աստուած երբեմն չարերու մէջէն եւս բարին կը հրաշագործէ, եւ նա է, որ կը հանէ պատուականն յանարգէն․ վասն զի Սեթայ ցեղի մոլորուած զաւակներէն Ենովս նահապետ իբրեւ բարի շառաւիղ կը հանդիսանայ Սէթ նախահօր Աստուածպաշտութեան արմատին վերայ․ եւ մինչդեռ նախադարուն զեղծեալ մարդիկ Աստուծոյ տեսչութենէն յուսահատեալ անտէրունչ եւ առանց օրինաց կը շրջէին՝ օրըստօրէ վատթարանալով ամբարիշտ գործոց մէջ, Ենովս միայն յուսացաւ կոչել զԱստուած․ ինչպէս կը վկայէ Սուրբ գիրք: Մարդիկ իրենց թանձր մոլութեան մէջ մոռցեր էին Աստուծոյ սուրբ անունը եւ նորա արարչական խնամք՝ երբ տակաւին ողջ էին Ադամ, Սէթ եւ Ենովս նահապետները․ որք իբրեւ կենդանի քարոզ եւ օրինակ բաւական չեղան Աստուածպաշտութեան յիշատակը անմոռաց պահել ընտանեկան կեանքին մէջ: Շատ զարմանք է որ Սուրբ գիրքը առանց յիշատակութեան անցած է եւ բնաւ չի յիշեր կնոջ մի անունը, որ երկիւղած բարեպաշտութեամբ հանդիսացած լինէր նա ընտանեկան կեանքին մէջ ինչպէս Աստուածահաճոյ նահապետներ:

Ենովսէն յետոյ չնաշխարհիկ առաքինութեամբ բարձրացաւ Ենովք նահապետ․ որուն համար Սուրբ Հարց կարծիքն է, թէ նա ժուժկալութեան մէջ գերազանցելով հաճոյացաւ Աստուծոյ եւ իր անժուժկալ նախածնողաց պարտքը վճարեց լիովին: Ուստի վերին նախախնամութիւնը փոխեց զինքն յերկնային Դրախտն․ հանելով ամբարիշտ մարդոց կարգէն արդարոյն կեանքը․ որպէս զի մարդկանց չարութիւնը նորա լուսաւոր վարքը չաղարտէ:

Սուրբ Գիրք՝ առաջին դարուն վերջի նահապետ եւ երկրորդին սկզբնահայր Նոյ վկայութեամբ կը հռչակէ, արդար ու կատարեալ կոչելով զինքն իւր ազգատոհմին մէջ: Նոյին ժամանակը երկիրն ամբողջ ապականուած էր չարութեամբ․ այլեւս չկարաց հանդուրժել Տէր Աստուած, ահաւոր աչքով դիտեց երկնքէ՝ երկրի ամբարաշտութեան վերայ․ մարդոց ապիրատ գործքերը չափելով ասաց թէ «Ժամանակ ամենայն մարդոյ հասեալ է առաջի իմ»․ որով ցոյց կուտայ թէ առ հա–

սարակ մարդկային ընտանիքը, հաւատք եւ Աստուծոյ ոգին մերժելով շաղախուած էին մարմնապաշտ մոլութեանց մէջ. երկնից արդարութիւնը պատուհաս ածելով պիտի ջնջէր ու բառնար իրենց կեանքը: Ուստի Նոյ նահապետ եւ իր ընտանիքը միայն որոշելով ապականեալ մարդոց ընտանիքներէն, փակեց զինքն հրաշակերտ տապանին մէջ, ջրահեղձ առնելով կորոյս մարդկութեան սերունդը աշխարհիս երեսէն, միայնակ արդար Նահապետին տունը պահելով՝ բաւական համարեց զայն. որ երկրորդ դարուն սկիզբն մարդկային նոր սերնդոց նախահայր անուանուեցաւ:

Նոյայ տապանին նաւապետ Աստուածային տեսչութիւնն էր, որ վարելով զայն առանց ղեկի բերաւ հասոյց Այրարատայ լերանց վերայ Մասիսին բարձր գլուխ նաւահանգիստ կազմեց: Ծովացեալ ջրհեղեղ կը ցամքի երկրիս երեսէն, ջրասոյզ կը ջնջուին նաեւ խպառ մարդիկ եւ իրենց ամբարշտութեան գործքերը:

Սուրհանդակ Աղաւնին ձիթենին կանանչ ճղիկ մի նշան բերելով կ՚աւարտէ թէ պատուհասի ձմեռն անցեր է, գարուն եկել է աշխարհ: Նոյ նահապետ իւր ողջ ընտանեօք տապանէն դուրս կ՚ելնէ, եւ կ՚իջեւանի նախ նոյն Մասիսի կողերուն վերայ. յորում իւր վաղեմի ուխտին հաճոյական զոհ մատուցանելով՝ կ՚ողոքէ զԱստուած 'ի հաշտութիւն: Եւ ահա Ծիրանի գօտին կամար կը կապէ Այրարատեայ աշխարհին վերայ, ձգելով մէկ ծայրն 'ի Մասիս եւ միւսն յԱրագած:

Աստուած Արդարոյն հետը յաւիտենական ուխտ կը կնքէ այլեւս չապականել երկիրը ջրհեղեղի պատուհասով: Վաստակաւոր նահապետ յիշելու իւր արդար մշակութեան արուեստը, Մասեաց արեգդէմ դարեւանդին վերայ մի այգի կը տնկէ իւր ձեռքով, եւ օր մը կարբենայ գինւով, համեստ ծերունին գլուխ Մասեաց թեւին վերայ դնելով կը ննջէ եւ հովը կը հոլանէ նորա հանդերձը: Քամ կրտսեր որդին կը տեսնայ զայն, ծանակելով կը ծիծաղի. Սեմ ու Յաբեթ պատկառանօք կը ծածկեն իրենց հօր առականքը. ծեր Նահապետը կը զարթնու եւ կ՚զգայ. կ՚անիծէ Քանան մանուկը, եւ կ՚օրհնէ Սէմ ու Յաբեթ:

Նահապետական ընտանեաց մէջ շատ նշանաւոր էր ծնողաց յարգանք ու որդւոց պատկառանք. երանի՛ թէ այս վսեմ առաքինութեան օրինակը եւ յիշատակը Յաբեթի տան անցեալ եւ ներկայ որդիներ անմոռաց պահէին միշտ ընկերական կեան-

քին մէջ, զոր չի մոռնար Մովսէս պատմել Սուրբ Գրոց կարգին հետը. ցոյց տալով թէ քանի՜ պատկառանաց ու համեստութեան շնորհ կը փայլէր Նահապետաց ընտանեկան կեանքին մէջ:

---

Գ.

# ՀԱՅՈՑ ՆԱՀԱՊԵՏԱԿԱՆ ՏՈՒՆ ԵՒ ԸՆՏԱՆԻՔ

---

ԴՐԱԽՏԻ նախաստեղծ ընտանիքէն սկսելով միայն մի համառօտ նկարագրով յիշատակեցինք քանի մը Աստուածահաճոյ նահապետաց կեանքն, զոր կը պահանջէր գրոյս նպատակը:

Եւ թէպէտ Նոյէն յետոյ առաւել եւս կը փայլին հաւատացեալ ընտանիքով Աբրահամ Իսահակ եւ Յակոբ նահապետները, որոց վարք եւ ընտանեկան կեանքը սքանչելի է, եւ մարդ կը հիանայ երբ ուշադիր մտքով կը կարդայ Ծննդոց գիրքը:

Բայց չարադրածիս կարգ եւ առարկայն երբ պահանջեն, անշուշտ իբրեւ օրինակ յառաջ պիտի բերեմ, հին աշխարհի առաքինութեան այդ չքնաղ տիպարները, որոց ընտանեկան կեանքը զարմանալի է, ուր ոչ գիր, ոչ դպրոց, ոչ ուսումն կար. միայն խիղճ, երկիւղածութիւն եւ Աստուածպաշտութիւն կ'առաջնորդէր եւ կը դաստիարակէր զիրենք. արդի լուսաւոր եւ քաղաքակիրթ աշխարհի որդիքները պէտք է պատկառին նահապետաց պատկառելի շուքէն:

Մեր ազգին եւ Հայոց աշխարհին ընտանեկան կազմութեան առաջին հիմնադիր Նոյ նահապետն է, ինչպէս եւ ջրհեղեղէն յետոյ համուր մարդկութեան նախահաւն է. ուստի մեք Հայկայ անունով՝ Հայ կը կոչուինք, Արամայ անունով Արմէնեան. եւ երբեմն եւս Թորգոմական կամ Ասքանազեան. բայց այս նահապետները բոլորն եւս Նոյի կրտսեր որդի Յաբեթի սկզբնական սերունդէն են, ասոր համար մերթ եւս Յաբեթական ազգ կը կոչուինք:

Ինչպէս որ կը կարծուի, դրախտը Հայաստանի մէջն էր, եւ կեանքն այդ աշխարհէն սկսեց. նախախնամ տեսչութիւն

այնպէս կամեցաւ․ որ դարձեալ մարդկութեան սերունդին աճումն՝ դրախտի մօտէն սկսի։ Ուստի Հայոց Արարատեան աշխարհը մարդկային ազգի նոր խանձարուր եղեւ․ Նոյ նահապետ իւր բարեձոխ ընտանիքը Մասիսի հովանեաց եւ Թեւին տակ հաստատեց, որ այժմ Նախիջեւան կ՚ըսուի․ գրեթէ հինգ հազար տարիէն աւելի է այս աւանդական անունը անկորուստ պահելով մինչեւ ցայսօր նոյն անունով կը կոչուի։

Երբ Նոյի տան ընտանիքը, ինչպէս կը կարծուի չորս հարիւր տարուան միջոցը, այնչափ աճեցաւ ու բազմացաւ մինչեւ Արարատեան լայնատարած աշխարհի այլեւս բնակութեան տեղ չի մնալով, գաղթականութիւն սկսեց սփռել աշխարհիս ամէն կողմը, առաջին ընտանեկան գաղթականութիւնը դէպ 'ի Բաբիլոնի Սէնարայ դաշտ չուեց․ չը գիտեմ թէ ի՞նչպէս այս գաղթական ընտանիքը վաղ եւ շուտ մոռցան Նոյ նահապետի արդար ծերոյն յիշատակը եւ նորա հաւատք ու Աստուածպաշտութեան երկիւղածութիւնը․ եւ սկսան նանրախորհուրդ մտօք երկնից ցասման դէմ մի հզօր ամբարտակ կանգնել․ թերեւս յաւանդութենէ յուշի պահելով թէ ինչպէս բարձրագագաթ Մասիս Նոյայ տապանին ապաստանակ եղեւ, այդ մեծագործ ամբարտակն եւս կարող է զիրենք ազատել, եթէ կրկին անգամ ջրհեղեղ գայ աշխարհ։ Իսկ հաւատացեալ Նոյին սիրելի պաշտեցեալ Աստուած՝ որ հաշտութիւն ուխտեր էր, պահ մի ծածկեց իւր հաշտութեան աղեղն, եւ Մասիսի գլխէն իջաւ 'ի Բաբիլոն մի շնչով խորտակեց ամբարտակն ու խառնակեց միաբարբառ մարդկանց լեզուները, եւ ցրուեց չարաժողով միաբանութիւնը․ որպէսզի ճանչնան Բաբելոնի ամբարիշտ ընտանիքը թէ իրենց մեծամիտ խորհուրդ եւ գործն ընդունայն եւ Աստուծոյ ընդդէմ էր․ եւ այնուհետեւ այլեւս չժպրհին երկնից Բարձրելոյն դէմ թումբ կանգնել։

Մինչդեռ Բաբելոն կը խառնակէր, Բէլ կը տիրապետէր, Արարատեան աշխարհ խաղաղութիւն էր։ Հոն ազատութիւն եւ աստուածպաշտութիւն կը թագաւորէր, իւրաքանչիւր տոհմական նահապետները իրենց ընտանեաց վերայ կ՚իշխէին տանուտէրական իրաւունքով։ Իսկ ա՛րդար Նոյ՝ նահապետաց նահապետն, որ դեռ ողջ էր, Մասիսի մեծաշէն պալատին դուռը իւր աթոռը դրած կը հովուէր Հայոց մտերիմ ժողովուրդը, որ իրենց բնակասնունդ հայրենիքը սիրելով երբէք չբաժնուեցան․ որով իրենք անմասն մնացին Բաբելոնի պատուհասէն, անարատ պահելով հայրենի նախնական լեզուն, կրօն եւ եր–

*կխուղած Աստուածպաշտութիւնը: Քանզի Նոյ նահապետ, որ պահապան էր աշխարհին, ինքն կենդանի օրինակ եւ քարոզ էր, արդարութեան լոյս կը ծաւալէր բոլոր ժողովուրդի կեանքին եւ ընտանեաց վերայ. որ բաւական կը լինէր մէկ արդար մարդ աշխարհին լոյս տալ, եւ ազգը մոլեկրօն ամբարշտութենէն ազատ պահել: Նոյին արդարութեան լուսով զինուեցաւ մեր Հայկ Նահապետ աշխարհակալ Բէլին դէմ, եւ զայն նշկահելով Բաբիլոնէն կրկին դարձաւ իւր հայրենիքը. եկաւ համբուրեց հինաւուրց ալեւորեալ ծերոյն տապանաշէն աջը. եւ ես կը հաւատամ թէ նորա զօրավիգ օրհնութեամբ զօրանալով, յաղթանակ տնկեց Հայոց ձորին մէջ եւ կործանեց այն հսկայ որսորդը, որ կը խիզախէր Աստուծոյ առաջ եւ եղջիւր կ՚ածէր երկնից դէմը:*

*Աստի կը սկսի Հայկատուն եւ ընտանիքը, եւ հետզհետէ տանուտէրական իշխանութեամբ կը կառավարի ժողովուրդ:*

*Հայկայ կեանքէն եւ Թուականէն սկսեալ մինչեւ ցայսօր գրեթէ չորս հազար այսքան տարի կը հաշուեն. օրհնեալ է Նախախնամութեան անունը, որ դեռ Հայոց ազգը եւ իւր յիշատակը կենդանի պահուած է: Այսչափ ժամանակի ընդարձակ միջոցի մէջ. կան ուրիշ ազգերը որ հայրենիքէն գաղթականութեամբ ելած են, կան որ սպառած ու նուազած են, ինչպէս Հայոց դրացի Ասորին: Հայոց ազգը եւ իւր ընտանիքը: որ մեծագոյն մասամբ իւր հին հայրենեաց մէջ, պահպանեց ու կը պահպանէ դեռ իւր նախնեաց հողն ու գերեզմանը: Ամէն վիշտ ու տառապանք կրեց, աշխատեց Նոյայ տնէն, Մասիսի սարէն չհեռանալ, ուր Քրիստոս Հայաստանեայց եկեղեցւոյ Կաթուղիկէն բարձրացուց:*

*Զգիտենք, եւ կը տարակուսինք թէ արդեօք Հայոց ազգը իւր Նահապետին տուն եւ հայրենիքը չթողլով նոյն նախնի Նահապետաց ընտանեկան կեանքին չնաշխարհիկ առաքինութիւններն ողջ ու անարատ պահեց: Այդ ինքնին յայտնի է. եւ պատմութիւնը մեզ կ՚ուսուցանէ. երբ ազգ մի այլ եւ այլ ազգաց տիրապետութեան տակ կը նուաճի, անշուշտ նա կ՚ստիպուի օտարի կեանքին ու սովորութեանց հետեւիլ: Սորա համար Աստուծոյ պատգամախօս Մովսէս օրէնքով կ՚արգիլէր Իսրայէլի ժողովուրդին, որ զգուշանան եւ չխառնակին հեթանոսաց հետը, որպէսզի չսորվին նոցա անարժան գործերը: Հայոց ազգը եւ իւր նահապետական ընտանիք այդ խառնակութենէն ազատ չմնացին, ոչ հեթանոսութեան դարուն մէջ*

եւ ոչ քրիստոնէութեան: Պարթեւական Արշակունիք, Բագրատունիք, Ասորիք, Պարսիք, Մարք, Յոյնք, Թաթարք, եւ այլ փոքր ու մեծ ազգերը, կոխեցին մեր հայրենեաց հողը. մերթ խառնուեցան ու ձուլուեցան, մերթ տիրեցին ու զօրացան, մերթ գերեցին ու կոփեցին. ո՛վ կը տարակուսի թէ այսքան խառնակութեանց մէջ ունիցէ ազգ մի կարող չէ իւր հին ընտանեկան կեանքը, ողջ ու անեղծ պահել: Երբ այնչափ յեղափոխութիւնք մեր ազգային կեանքը իւր նախնի պարզութենէն հանելով այլափոխեր են. շատ դժուարին է ստոյգ եւ անխառն նկարագիրը հանել ժողովուրդի կեանքին: Մանաւանդ մեր ազգի հնութեան պատմիչները դուն ուրեք ժողովուրդի կեանքն ու բարք չօշափելով կ՚անցնին, միտ դնելով միայն նկարագրել պատերազմի դաշտ, քաջաց գործը. եւ շատ եւս ողբ եւ կոծ ժողովուրդի աղէտներու համար. ուստի քննասէր ու բանասէր միտքը շատ դժուարութեամբ կարող է իրաց պարագաներէն գուշակել մեր նախնի ժողովուրդոց բուն նշխարները, դորա հաւատարիմ աւանդապահը մեր հայրենեաց ժողովուրդն է. վասն զի գաղթական հայոց մասն, ուր որ գնաց՝ հոն իւր մեռելոց հետը թաղեց նաեւ իւր հայրենեաց հին ու փառաց հետը՝ մոռցաւ նաեւ էջմիածնի բարձրագոյն Կաթուղիկէն:

Իսկ դուք, ո՛վ որդիք Հայոց, որ մեր հին Նահապետական տան ժառանգորդ զաւակներն էք. հոն հայրենի տունը կացէք, մի՛ հեռանայք, սիրեցէք Մասիսը, իւր տապան եւ դուրբ Գրիգորի Կաթուղիկէն. մշակեցէք Նոյայ ձեռատունկ այգին՝ Արարատայ դաշտը, մի՛ թողուք յաւիտեան Նահապետական տուն ընտանիքը. դուք Մասիսին հարազատ որդիքներն էք, Մասիսը ձեր հայրենի սեպհական տունն է. Թող չէն մնայ ձեր տունը, չէն մնայ Նոյայ գերդաստանը, բարգաւաճին օրհնեալ Յաբէթը որդիները, արդար Նահապետին գերեզմանին աղերս եւ զոհին ծուխ մինչեւ երկինքը ելնէ, երկինք հաշտուի, եօթնագունեան աղեղն կամար կապէ դրախտի աշխարհին վերայ եւ դրախտի բնիկ որդիներ ցնծան թէ Աստուած ընդ մեզ է, իւր հզօր աջով կ՚օրհնէ եւ կը պահպանէ Նոյայ տուն եւ նորա տարամերժեալ ընտանիք:

———o———

Դ.

# ՄԱՐԴ

## ԵՒ

## ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

Մարդոյն Արարիչը ամուսնութիւնը միայն մարդոյն համար սահմաներ է. եւ ամուսնութիւն Աստուծոյ խորհրդաւոր, ձեռագործ եւ բնական օրէնք է: Մովսիսին օրէնքները Տէր Աստուած Սինայի սարէն տուաւ, իսկ ամուսնական օրէնքը դրախտէն կը սկսի: Անդրանիկ մարդն Ադամ եւ նորա ամուսին Եւայ երբ արարչութեամբ աշխարհ եկան, այս բնական օրէնքը իրենց գոյութեան հետն էր: Եւ ի՛նչ է այս արարչադիր օրինաց զօրութիւն եւ նպատակը: Այդ ինքնին յայտնի է, զօրութիւն բնական սէրն է եւ նպատակը մարդկային սեռին բարգաւաճումն ի փառս իւր Արարչին:

Այո՛, ամուսնութեան բուն օրէնքը բնական սէրն է, որ մարդուն բնութենէն անբաժանելի է: Բնական սէրն հաւասար է նաեւ ամէն թռչնոց եւ անասնոց առանց ամուսնական պայմանին՝ որ միմիայն ազատ մարդոյն համար է: Բնական սէրն է միայն բոլոր բնութեանց կենդանատու հոգին եւ զօրութիւն. եթէ չը կենդանացնէ սէրը՝ բնութիւնը կը մեռնի, ոչ մայր կը ծնանի եւ իր զաւկին կաթ կուտայ, ոչ հաւ, ոչ ճնճղուկ ձագեր կը հանեն եւ կուտ տալով կը սնուցանեն:

Ուստի, արժան է, որ ամենայն իրաւամբ ընդունիմք, թէ ամուսնական օրէնքը աշխարհի մարդկութեան հիմն է, բնութեան մէջ խորապէս հաստատեալ. եւ ոչ ձեռք մի կարէ խախտել զայն, եւ եթէ խախտի՝ մարդն իւր կեանքով կը չքանայ, եւ այլեւս չեն պէտք աշխարհ եւ իւր համայն զարդերը, որ տիրական մարդոյն սպաս տանելուն համար պատրաստուած են:

Ամուսնական օրէնքը յետ Աստուծոյ, մեր կեանքը շարունակող ստեղծագործ ձեռքն է, վասն զի արարչապետն միանգամ եւ եթ երկու նորաստեղծ ամուսիններ ի գոյ ածելով բաւ համարեց. թող տուաւ այնուհետեւ որ ամուսնութիւն արարչագործէ եւ մարդիկ զիրար ստեղծեն:

Այլ թող չի պարծին մարդիկ որ ունին այդ արարչական շնորհը, որ չկարեն մազ մի սպիտակ կամ թուխ փոխել, եւ թող հաւատան թէ մանուկը իւր մօր անգանդին մէջ պահող Նախախնամութիւնն է. մանուկ կը ծնանի, կաճի, կը զարգանայ. եւ մենք զարմանալով կը տեսնամք թէ մարդն զմարդն ծնաւ յաշխարհ: Ամենայն պատկառանօք խոստովանիլ պէտք է թէ Նախախնամող ձեռքն է մարդոյն կենաց բուն սնուցիչ մատակարար, զի «ո՞վ կարէ յաւելուլ ի հասակ իւր կանգուն մի» ասաց Քրիստոս:

Ամուսնական կենաց արգասիքն է մեր բնակած աշխարհի շինութիւն եւ բարգաւաճումն, եթէ այսօր մեր լայնատարած երկրագունդը լի է մարդկային սերնդով, այդ եւս ամուսնական կենաց պտղաբերութեան անսպառելի հրաշքն է. զի դրախտին մէկ ծառը՝ բովանդակ աշխարհը ծառազարդեց: Եթէ մարդոյն նախատես Արարիչն կինը իբրեւ կեանք եւ օգնական չըտար մեր նախահօրը, թէ որ չօրհնէր ինք բերանով թէ «Աճեցէք ու լցէք երկիրը», եւ այլն, ի՞նչ կը լինէր Ադամ իւր միայնութեան վիճակին մէջ: Նա կը մնար առանց կենակից ամուսնութեան, անծին, անծնունդ եւ անկեանք. զի Ադամայ եւ հանուր մարդկութեան կեանքը կինն էր, որուն համար կ'ասէ սուրբ Գիրք թէ «Նա է մայր ամենայն կենդանեաց». այսինքն մարդկային սեռին:

Հին դրախտին մէջ Եւան որ կեանք էր, մահ ծնաւ, մարդոյն կեանքը մահացոյց. նոր դրախտին եկեղեցւոյ մէջ Սուրբ Կուսին զաւակ Յիսուս՝ հին մահացեալ կեանքը վերանորոգեց. եւ իւր Աւետարանին ազատ ու շնորհական օրինօք սրբագործեց ամուսնական խորհուրդը, եւ վերստին պնդեց նորա կապը, զոր կը խզէր միշտ հրէական խստասրտութիւն:

Սուրբն Պօղոս, որ Քրիստոսի հոգւով կը խօսէր, պատուական կը կոչէ ամուսնութիւն, եւ սուրբ կը համարի նոցա առագաստը: Այնչափ մեծ նշանակութիւն կուտայ, մինչեւ կը համեմատէ զայն եկեղեցւոյ բարձր խորհրդոյն հետը. Յիսուս փեսային եւ իւր հարսին հետը:

Եւ մերթ եւս անձնուրաց Առաքեալը խաչակրութեան ազատ պաշտօնին եւ Աւետարանի քարոզութեան համար կամաւ ներքինի կը լինի, որպէսզի Եկեղեցւոյ հաւատացեալ ընտանեաց համար միայն հոգայ. վասնզի Աւետարան եւ Եկեղեցին խաչաբարձ խմբին առաջ վերագոյն համարուած էր: Նոքա քաջ սորված էին Աւետարանի այս դասը, թէ «Որ ոչ առցէ

գլխաւ իւր եւ եկեսցէ զկնի իմ, չէ ինձ արժանի»: Յիսուս խաչն ի յուս դէպի Գողգոթայ գնաց, զոհեց զինքն մարդկային սիրոյն համար. նոյն կը պահանջէր իւր ուխտադիր աշակերտներէն: Յայտ իսկ է թէ սոյն անձնուէր խաչակրաց առաջ որչափ որ կը խոնարհի ու կը լռէ ամուսնական իրաւունքը, այլ երբէք չի եղծանիր. զի Աստուածային ձեռք եւ դրախտի օրհնութիւնը զայն անեղծ դրոշմեր են: Թող ոչ ոք այնպէս կարծէ թէ ուրեմն Յիսուս եւ Պօղոս ընդդիմախօս են սոյն Աստուածական վճռոյն, մին իւր սիրոյն եւ Աւետարանին համար ընտանիք եւ աշխարհ թողուլ դաս կուտայ. եւ միւսն կը ցանկայ, որ ամէն մարդ իրեն պէս անամուսին կոյս լինի. եւ կամ թէ Կորնթացի հաւատացելոց կարծեաց կը հաւանի Պօղոս, որք կը գրէին թէ «Բարւոք է մարդոյ ի կին մարդ չը մերձենալ». յորում այնպէս կը թուի, թէ սոյն կարծիքը ուղղակի դիմախօսութիւն է դրախտի Աստուածային այն վճռոյն, թէ «Ոչ է բարւոք մարդոյդ միայն լինել». եւ այլն: Պօղոս Ա. Կորնթացւոց եօթներորդ գլուխն ամբողջ ամուսնութեան եւ կուսութեան վիճակի վերայ կը խօսի, եւ խիստ ազատութեամբ կը վարդապետէ, պատասխան տալով Կորնթացի ժողովրդոց գրոյն: Մարդ կարող է ինքնին խորհրդածել, որ դրախտի վճռոյն եւ Պօղոսի վարդապետութեան մէջ անշուշտ մեծ խորհուրդ եւ նպատակներ կան: Վասն զի մարդոյն Արարչութեան օր՝ Արարչին խորհուրդ եւ նպատակն էր, որ իւր պատրաստած ամայի երկիրը ամուսնական օրհնութեամբ լցնէր, եւ մարդն իւր աճեցեալ սերնդով փառաւորէր զԱստուած: Իսկ Պօղոսին նպատակն էր, որ եկեղեցւոյ որդիները՝ նոքա որ կարող են իրեն պէս առաքինանալ, թողուն աշխարհ եւ ամէն բան, միայն Աստուած եւ եկեղեցին հոգան, ազատ մնալով ընտանեկան զբաղմունքէն: Պօղոսի վեհ հոգին ըղձակերտ կը լինէր, որ Աւետարանի պաշտօնեայք ազատ զինուորներ լինին սկսեալ Երուսաղէմէն անարգել երթան մինչեւ աշխարհիս ծագը Աւետարան եւ հաւատքը ծաւալեն: Թող այս, Պօղոս երբեմն վերանալով տեսաւ երկնից դրախտն եւ Աստուծոյ սիրելեաց համար պատրաստուած փառքն, ապշեցաւ հիացաւ թէ անճառ է եւ անպատում. ուստի զարմանալով կը պատմէ եւ ի նոյն կը յորդորէ որ վերթեւին եկեղեցւոյ զաւակները, ու կը խօսի այսպէս. «Եթէ ժամանակս կարճեալ է այսուհետեւ, զի որ ունեցին կանայս, որպէս թէ չունեցին... եւ որ վարեն

զաշխարհս, որպէս թէ չը վայելիցեն, որ անցեալ է վայելչութիւն աշխարհիս»։

Երանելի Պօղոս, թող իւր տեսած դրախտէն նայի այժմ, թէ աշխարհիս վայելչութիւնը եւ կեանքը ո՞ւր հասած է եւ թէ՝ երկրասէր մարդիկը կը հասկնա՞ն իւր խօսքը, կամ կը հաւատա՞ն թէ իւր տեսած դրախտը Փարիզի դրախտէն գերազանց եւ վայելուչ է։

Այո՛, Պօղոսին յափշտակեալ միտքը երազ չէ, այլ ճշմարիտ իրողութիւն է՝ միայն ճշմարիտ հաւատացելոց համար. զի երբ երկնից արքայութիւնը յայտնուեցաւ, եւ երբ Յիսուս քարոզեց Աւետրանի որդւոց, թէ՝ «Դուք այս աշխարհէն չէք», այնուհետեւ աշխարհիս դրախտը կը քանդուի եւ երկնից դրախտը կը բացուի մարդոյն առաջը։

Այլ թէ այսպէս եւ թէ այնպէս, ոչ Աստուած, ոչ Յիսուս, ոչ Պօղոս եւ ոչ եկեղեցին բացարձակ վճիռ կուտան որ մարդիկը անժխտելի օրէնքով պէտք է ամուսնանան առանց երբէք բացառութեան. եւ կամ կուսական կեանք վարեն առանց երբէք ամուսնութեան։ Եթէ այսպէս լինէր, ամէն մարդ Պօղոսին հետեւէր, եկեղեցին ամուլ եւ անծնունդ մնալով՝ վաղ ուրեմն սպառած էին իւր որդիքները. եւ կամ թէ Պօղոսի նման կամաւ ներքինիք եւ Աւետարանին անձնուէր պաշտօնեայք չը լինէին, ո՛վ կ՚աւետարանէր անմախաղ, անցուպ այն բարբարոս հեթանոսաց մէջ. ո՞վ կը շինէր Քրիստոսի եկեղեցին, եւ ո՞վ կը թափէր արիւն հաւատոյ վկայութեան համար։ Մեք չենք ժխտեր թէ շատ ամուսնաւորք եւս առաքինացան այդ ասպարէզին մէջ. բայց Աւետարանի խաչակրաց խմբին գերազանցութիւն միշտ անհամեմատ է։

Ուրեմն յայտ է եւ պէտք է խոստովանիմք, որ մարդոյն երկու վիճակի կեանքն եւս իւր ազատ ընտրութեան ու կամաց թողուած է. իւրաքանչիւր մարդ իւր առանձին շնորհն ունի, ոմն այսպէս եւ ոմն այնպէս։ Քանզի եկեղեցւոյ դրախտի ծաղիկները մշակող հայրն՝ զանազան տնկեր է, եւ իւրաքանչիւրն՝ իրենց վայելուչ տեսքն եւ անուշ հոտն ունին։ Թէեւ Աւետարանի ազատ մշակները իրաւունք ունենան պարծենալ թէ իրենք առաւել վաստակեցին եւ կը վաստակեն, այլ ոչ երբէք իրաւունք ունին նոքա փարիսեցւոց աչքով նայել ամուսնական կեանքին վերայ, եւ այնպէս դատել որպէս թէ այդ կեանքը մեծ եւ հաճոյական չէ երկնից առաջ։ Սուրբ Գիրք եւ եկեղեցւոյ պատմութիւն ամուսնաւոր եւ չամուսնաւոր մարդոց նը-

կարագիրը միանգամայն կը հանէ մեր առաջը․ որուն վերայ եթէ մարդ ողջամիտ աչքով նայի, կը տեսնայ որ երկու դասի մէջն ալ առաքինեաց հանդէպ սքանչելի եւ հաճոյ է երկնից առաջը։ Աբրահամ իւր ընտանեկան վրանին տակ, աղօթաւորն Անտոն իւր խցին մէջ։ Ենովք եւ Եղիաս կենդանւոյն կ'արժանանան երկնից դրախտին, մին ընտանեաց Հայր եւ Նահապետ, եւ միւսն իբրեւ կոյս մարգարէ եւ այր Աստուծոյ։ Մեծ է Յովհաննէս Մկրտիչ կանանցածին ծննդոց մէջ, այլ ո՛վ է երկնից արքայութեան այն փոքրիկ հաւատացեալ արդարն զորս Յիսուս տեսնելով՝ մեծ կը համարի, եւ մեր աչքէն կը վրիպի իբրեւ աննշան եւ փոքրիկ․ չգիտենք նա կո՞յր է թէ ամուսնացեալ։

Ուստի կը պարտաւորիմք մեր կեղակարծ դատաստանը ուղղել, թէ այդ երկու դասն Աստուածահաճոյ առաքինիքը դարձեալ մի եւ նոյն ամուսնական ծառի բարի պտուղներն են, քանի որ աշխարհ կայ՝ միշտ պէտք է կանաչազարդ մնայ այդ ծառը, զի Աստուծոյ օրհնեալ ձեռաց տունկն է․ նորա սահմանադիր օրէնք եւ օրհնութիւն կը դարմանեն զայն, չարունակ աճելով իւր ընտանեկան ճիւղերը արձակելով միշտ բազմապատիկ պտղաբերէ թէ աշխարհիս եւ թէ երկնից արքայութեան համար։

Սակայն թէ հեթանոսութեան եւ թէ Քրիստոնէութեան այլ եւ այլ դարերու մէջ այնպիսի չարածնունդ աղանդաւորները եկան աշխարհ, գրեցին ու քարոզեցին․ յորոց ոմանք Ծընական փիլիսոփայութեամբ ուզեցին հանել մարդոց անձէն ամօթոյ ու պատկառանաց հանդերձը, ու թող տալ, որ նա չամաչէ աշխարհի հրապարակի մէջ, արեւու առաջ անասնոց նըման խառնագնաց լինելով, ծաղր ու ծանակ առնելով եւ քամահրելով սուրբ ամուսնութեան եւ մարդուն բանաւորութեան պատիւը։

Ոմանք ալ ծայրայեղ մոլեռանդութեամբ վարդապետեցին թէ նոյն իսկ ամուսնական կեանքը չար անառակութիւն է, եւ լաւ է որ մարդիկ հրաժարին ամուսնութենէն, կիներէն խորշին իբրեւ չար արարածներէ, Դիոգինէսի նման անինչ, անտուն, անընտանի կարասաբնակ լինին այր մարդիկ՝ խոտելով միանգամայն մարդկային բանաւոր կեանքն եւ ընկերութիւնը։ Այսպիսի անլուր, այլանդակ եւ անօրինակ հայհոյութիւն մտաբերեցին այդ մոլորամիտ մարդիկը, եղծելով

*նաեւ մարդոյն սիրտն, զգացումն, բնական սէրն եւ բանաւորութեան լոյսն։*

*Իսկ Քրիստոնէական կրօն եւ եկեղեցին նզովիւք կը հերքէ այդպիսի աղանդաւորաց մոլորութեան հոգին ու վարդապետութիւնը։ Եւ Յիսուս երկնից վարդապետը Մովսէսէն առաւել կը նուիրագործէ սուրբ ամուսնութեան անեղծ իրաւունքն. բազմակնութիւն բոլորովին ջնջելով, եկեղեցւոյ նոր դրախտով հին դրախտ կը վերանորոգէ, մի Ադամին համար՝ միայն մի Եւայ բաւ համարելով։*

*Ուստի իբրեւ եկեղեցւոյ իշխանութեան ճշմարիտ եւ հարազատ հպատակ պարտաւոր են եկեղեցւոյ օրինաց թէ նախանձաւոր հայրերն եւ հովիւները եւ թէ Աստուծոյ տան ընտանեաց ճշմարիտ զաւակները ամենայն պատկառանօք պահել սուրբ ամուսնութեան օրէնք եւ իրաւունքը, արթուն աչքով հսկել այդ օրինաց ցանկին վերայ, զոր օրինադիր Արարչին ձեռք խնամով հիւսեր է. Թող չը ժպրհի հեստող եւ ստահակ մարդը խրամատել անցնել Աստուծոյ պարսպած ցանկէն։ Եթէ միանգամայն քակուի այդ ցանկը, ընդարձակ ասպարէզ կը բացուի խստապարանոց մարդոց առաջ. այնուհետեւ ոտնակոխ լինելով ամուսնական օրէնքը. կը խախտի ընտանեկան կեանքին այն յաւիտենական ու հաստատուն հիմն, որով եւ վեր ի վայր կը հրջին մարդկային ընկերութեան ամբողջ շէնքը. մարդիկ անասնակենցաղ լինելով՝ կեանք կը վատթարանայ աշխարհիս վերայ, եւ վատթարանալով կը մեռնի դրախտի եօթը հազար տարուան ընտանիքը իւր ամէն սերնդով։*

---

## Ե.

# ՏՈՒՆ
## ԵՒ
# ԸՆՏԱՆԻՔ

---

*Ինչպէս որ երկու պսակաւոր լծակիցներէն ամուսնական միութիւն կը կազմուի, այսպէս նաեւ նոյն զուգակից միութենէն կը ծնի եւ կ՚աճի ամբողջ ընտանիքը, որոյ նախածնող անդամներն են հայր եւ մայր. իսկ ծնեալ անդամներն են արու*

եւ էգ զաւակները քոյր, եղբայր. որք երբ ամուսնանան՝ փեսաներով, հարսներով եւ թոռներով կը յաւելուն ընտանեաց թիւը:

Ուստի ընտանեկան կեանքին եւ տան շինութեան հիմնաքարեր կը համարուին հայր եւ մայր: Ո՞րչափ սքանչելի զարմանալի են ամուսնական պարտէզին մէջ այս երկու մանանեխի փոքրիկ հատիկները, որ ըստ Աւետարանի առակին՝ երթալով աճելով մեծ ծառ կը լինին եւ իրենց բազմապատիկ ճիւղերը կը համասփռեն բոլոր աշխարհը: Վասնզի: ամուսնական արմատէն ընտանիքը կը հաստատուի, ընտանիքէն ժողովուրդ, ժողովուրդէն այլ եւ այլ ազգերը, ազգերէն իշխանական պետութիւններըը եւ պետութիւններէն ընդհանուր մարդկային համաշխարհական ընկերութիւն: Ցորմէ դիւրաւ կ'իմաստասիրեմք թէ մեր ընկերական աշխարհին բովանդակ շէնքը ամուսնական եւ ընտանեկան պատուանդանին վրայ հաստատուած է. ժողովրդոց ոտքը եւ պետութեանց գահերը նորա վըրայ դրուած են. եթէ քանդուի այս պատուանդանը՝ ժողովուրդ եւ գահերը ի միասին կը տապալին. այնուհետեւ ոչ եւս կայ, ոչ աշխարհ, ոչ ադամորդի, ոչ կեանք, եւ երկիր կը դառնայ նոյն առաջին վիճակը, «Երկիր աներեւոյթ եւ անպատրաստ»:

Ոչ ոք կարէ ժխտել թէ այս այսպէս չէ. աշխարհիս հին ազգաց պատմութիւն, արդի ընկերական վիճակը՝ այս ընդհանուր ազգաց կեանքը ամէն կ'ապացուցանեն թէ ոչ միայն մարդկային աճումն, այլեւ ժողովրդոց, ազգաց, հայրենեաց եւ թագաւորութեանց բախտը ընտանեկան կեանքէն կախումն ունի. թէեւ մեր ընկերական երջանկութեան եւ թշուառութեան մէջ կան արտաքին ուրիշ այլեւայլ պատճառներ, բայց իմաստուն խելամտութեամբ նկատելով աշխարհիս իրողութեանց սկիզբն, միջոց եւ վախճանը. կը տեսնամք որ աշխարհիս չարեաց ու բարեաց սկզբնածնունդ մայր ընտանիքն է: Հապա ընտանեկան կենաց թէ չարութեան եւ թէ բարութեան պատճառ ո՞վ է. դորա պատճառն եւս շատ մօտ եւ յայտնի է. այսինքն ծնողք՝ հայր ու մայր, որոց հպատակութեան տակ կ'ապրի ամբողջ ընտանեկան գերդաստանը:

Տուն եւ ընտանիք մի փոքրիկ թագաւորութեան երկիր ու սահման է. որոյ նահապետական աթոռին վերայ կը նստին ծնողք. հայր իբրեւ թագաւոր, եւ մայրն իբրեւ թագուհի. եւ կը կառավարեն հպատակ ընտանիքը: Սոյն ընտանեկան պա-

լատին ու Թագաւորութեան մէջ, ոչ ոստիկան կայ, ոչ սուր, ոչ բռնութիւն, ոչ գաւազան այլ ամենուն տեղ հայրական սէր եւ մայրական գորովն է· դաստիարակ եւ խրատ՝ ծնողաց կենդանի օրինակն է։ Այս օրինակը այնչափ բարի ու տպաւորիչ է, որ գիտես թէ լուսարուեստին պէս Թափանցիկ կերպով ծնողաց պատկերը նոյնատիպ կը հանէ իր զաւակաց վերայ եւ զաւակները այդ սկզբնական տիպարն առնելով կը մտնեն ժողովուրդին եւ ընկերութեան մէջ։ Այնուհետեւ տարածել կ՚սկսի օրինակէ առ օրինակ, եւ այսպէս ընտանեկան կենաց բարի եւ չար օրինակներէն, ժողովուրդին կեանքը կը բարւոքի կամ կը զեղծանի, կը շինուի կամ գայթակղութեամբ կը փլչի· կենդանի կը մնայ աշխարհիս վերայ կամ կենդանւոյն կը մեռնի, եւ իր յիշատակ կը բարձուի աշխարհէս։

Ժողովուրդը եւ ազգերը միայն հացով չեն ապրիր· Թագաւորութեամբ եւ ազատութեամբ չեն բարձրանար, այլ առաւել բարոյական կեանքով· եւ այդ կենսական կեանք տունը ընտանիքն է։ Ուշադիր եղիր, եւ ես նկարագրեմ քեզ։

Ժողովուրդը եթէ կը յառաջդիմէ՝ իր առաջին քայլը ընտանեաց սրահէն կ՚առնու· եթէ կը լուսաւորի, իր լոյսը ընտանեկան ճրագէն է· եթէ կը միանայ, իր ոգին եւ կապն ընտանիքն է· եթէ կը զօրանայ իր ուժ եւ բազուկն ընտանիքն է· եթէ կը հարստանայ, իր գանձարան եւ գանձապետն ընտանիքն է· եթէ իր տուն եւ սեղան բարելից եւ առատ է, արդիւնաբեր անդաստանը ընտանիքն է· եթէ դրախտի գետերը կը վազեն իր հրապարակը՝ աղբիւրը դրախտի ընտանիքն է· եթէ իր կարասները լի են գինւով՝ կը խմէ կ՚ուրախանայ, խաղողաբեր այգին ընտանիքն է· եթէ բարեծնունդ զաւակներով օր ըստ օրէ բիւրապատիկ կ՚աճի, իր նախածնող խնամատար ընտանիքն է, եթէ իր զաւակները բարեկիրթ քաղաքացի պատրաստել կ՚ուզէ, իր բարեկրթութեան առաջին համալսարան ընտանիքն է· եթէ աշխարհիս վերայ երջանիկ ապրիլ կ՚ուզէ, Թող հաւատայ, որ երջանկութեան կեանք բղխող աղբիւր ընտանիքն է· եթէ երկրէս յետոյ երկինք եւս ժառանգել կ՚ուզէ՝ պահելով իր հայրենի կրօն, հաւատ եւ եկեղեցին, այո՛ այդ սուրբ աւանդները անեղծ անկորուստ պահելու խորանն ընտանիքն է։ Զի այդ գանձը եւ Աւետարանի անգին մարգարիտը աշխարհիս շահավաճառութեան հրապարակին մէջ, կառավարութեանց դահլիճներու մէջ, գիտութեանց ճեմարանաց մէջ անկորուստ չեն պահուիր, այլ միայն դորա հա-

ւատրիմ աւանդապահ ընտանիքն է։

Տեսար, մտադիր ընթերցող, այս նկարագրին մէջ քեզ յանդիման բերի. թէ ո եւ ի ցէ ժողովուրդ իւր բարոյական կենաց տիպարը ուղղակի ընտանիքէն կ'առնու, եւ պարծանօք ցոյց կուտայ աշխարհի թէ ինքն բարեկիրթ ընտանեաց զաւակ եւ ժողովուրդ է։

Տեսնանք նաեւ սորա հակադիր պատկերը, եւ աւաղ աչքով նկատենք. որ չարաբաստ ապերջանիկ ժողովուրդ իւր կեանքի գեղծումները դարձեալ նոյն ընտանեկան պատկերէն կ'ընդօրինակէ եւ ի տես կը հանէ աշխարհի հրապարակը. եւ ահաւասիկ ցուցնեմ քեզ։

Ժողովուրդ եթէ կը գեղծանի՝ ներքին իւր գեղծման սկզբնաւորութիւնը ընտանիքէն է, եթէ բարոյական կենդանի կեանք չունի՝ մեռելութիւն ընտանիքէն է. եթէ դէպի կորուստ կը դիմէ, իր կորստեան ճամբայ բացող ընտանիքն է. եթէ ծունկեր կթոտ են, իւր քայլերը յառաջ չեն երթար, լքումըն ու կաղութիւն ընտանիքէն է, եթէ երկու ձեռքով կը հարստահարուի՝ մէկ ձեռքն ընտանիքէն է. եթէ արտաքին թշնամիներէն պաշարուելով պաշած է, իւր ներքին մերձաւոր ու բարեկամ թշնամի իւր տան ընտանիքն է, եթէ աշխարհիս կեանքի ճանապարհին մէջ ուղղութիւն չունի, յոռութիւն ընտանիքէն է. եթէ Եւրոպիոյ կախարդիչ նորասիրութիւնք գինքը պիտի կողոպտեն անխնայ, թող զգաստ լինի եւ տեսնայ որ մեծ կողոպտիչ ձեռք իր ընտանիքն է. եթէ իր զաւակներ օր ըստ օրէ հացի կարօտ թշուառ կը լինեն, այդ քաջ յայտնի է որ ընտանեկան մշակները անաշխատ հեղգ եւ անհոգացող են, եթէ առանց տնտեսութեան, առանց նախատեսութեան կը վատնէ իւր վաստակ եւ գանձը, ո՞վ չի գիտեր թէ չռայլութեան տընտեսապետն ընտանիքն է. եթէ իւր զաւակները առոյգ ազնուածնունդ չեն, ուրեմն ընտանեկան սերունդն հիւծելով սորկացած է. եթէ իւր օրիորդք եւ երիտասարդք վարակած են մաչողական ախտով, ո՛հ, դոցա մահ եւ գերեզման փորող ընտանիքն է։ Ի վերջոյ եթէ ժողովուրդ, կրօն, հաւատ, եկեղեցին կը թողու, Աստուածպաշտութեան պարտիքները սրտէն կը հանէ եւ կը դառնայ դէպի Ջրհեղեղին դարը, ամբարիշտ կեանք կը վարէ, գիտցիր այդ ապականութիւնը Կայենի դըստերաց հետեւող ընտանիքէն է։

Տակաւին շատ ու բազում է զեղծեալ ժողովուրդի մի նկարագիրը, որ իւր սկզբնատիպ գաղափար իւր բնակած տան ըն-

*տանիքէն կ՚առնու. մենք միայն այսքան բաւ համարեցինք, Թող մնացորդ եւ ժամանակի նոր բերած զեղծմունքները հայրեր ու մայրեր ինքնին իմաստասիրեն, եւ ուշաբերելով ճանչնան Թէ առանց բարի ընտանիք կազմելու, առանց հայրական ու մայրական դաստիարակութեան՝ անհնարին է բարեկեցիկ ազգ, ժողովուրդ կազմել: Վասն զի ինչ որ չինենք, ինչ որ կազմենք, պէտք է գիտնանք, որ այդ կազմող առաջին տարերք ընտանիքն է: Իսկ այդ ազնիւ ու պատուական տարերքը ո՛վ կը ստեղծէ, ով կը կազմէ եւ ո՛վ կը պատրաստէ զայն ժողովուրդին եւ ազգին համար. ես խօսիմ քեզ, այդ պատրաստող ձեռք՝ ուսումն եւ դաստիարակութիւնն է, որ պէտք է տարածի նախ այն ամէն յարկերուն տակ, ուր կը բնակի ընտանիքը: Ճշմարիտ է, որ ժողովրդական դպրոցները լոյս եւ գիտութիւն կը սփռեն. սակայն բարի դաստիարակութեան տուրքը՝ միայն ծնողաց սեպհական է. զի առտնին դպրոցին ծայրագոյն եւ բնական վարժապետ նոքա են. ուրիշ ոչ ոք այդ վեհ պաշտօն չունի: Ընտանեկան դաստիարակութեան մասին դարձեալ երկարօրէն պիտի խօսինք իւր տեղը. այժմ սկսինք խորհրդածել ընտանեկան միութեան եւ բաժանման, զարգացման եւ նուազման ներքին եւ արտաքին պատճառներու վերայ:*

*Ընտանեկան միութիւնը բուն նահապետական կեանքին օրինակն է, որով ընտանեկան ճիւղերը մի արմատէն չառաւիղելով միշտ մի ընտանիք կազմել եւ մի տան յարկի տակ բնակիլ. զոր կը դրուատէ Դաւիթը Թէ «Զի՛ բարի կամ զի՞ վայելուչ, զի բնակին եղբարք ի միասին»:*

*Այս միութեան կեանքը առաւել գիւղացի ժողովրդոց համար փափաքելի եւ օգտակար համարուած է. վասնզի տան մի երկրագործ աշխատաւորները որչափ շատ լինին, այնչափ աւելի կ՚ընդարձակեն իրենց վարուցան. եւ արդեանց մեծ շահեկանութիւն կը ստանան:*

*Շինական ընտանիքը շատ ցաւ կ՚զգան, եւ տան աւերումն եւ քանդումն կը գուշակեն եթէ ընտանեաց բաժանումն պատահի. եւ բախտ մեծ կը համարին, յորժամ տան ծերունի նահապետ ողջ է, ու կը կառավարէ որդիքները եւ աթոռներր, նմանապէս մայր տանտիկին իւր հարսները եւ աղջիկները. ո՞րչափ փառք եւ պարծանք կը համարին, երբ նորածին մանուկներու օրօրոցներով կը լեցուի եւ կը ցնծայ տունը: Դեռ մանուկ էի, աստի իբր 50 տարի յառաջ կը պատմէր հայրս, որ*

*իւր ուղեւորութեան մէջ Մշոյ Հացեաց գաւառը մի գիւղական մեծ ընտանիքի հիւր եղած է եւ զարմացեր է երբ քանի չափ նորածին տղոց օրօրոցները համրած է. Թերեւս ամբողջ ընտանեաց Թիւը Յակոբ Նահապետի ընտանիքէն աւելի եղած են։*

*Սակայն նկատել պէտք է, որ ամէն բաժանում ընտանեկան բարգաւաճման արգելք չէ՛. անշուշտ կարեւոր է, որ ընտանեաց ճիւղերը բաժանուելով նոր նոր ընտանիքներ կազմեն։ Ինչպէս Եւրոպիոյ քաղաքակիրթ աշխարհ աւելի բարւոք դատած է. որ չափահաս զաւակները բաժանուելով ուրիշ ընտանիքները կազմեն։ Այլ այս դրութիւնը միայն յարմար եւ օգտակար է այն ազգաց ու քաղաքացի ժողովրդոց, ուր դաստիարակութիւնն յառաջ գնացած է. եւ ուր բաժանեալ զաւկըները հայրենի տնէն միայն ստացուածոց ժառանգութեան բաժին առնելով՝ դուրս չեն ելնէր, այլ եւ միանգամայն գիտութիւն, ապրուստ եւ դաստիարակութիւն. որոց ժառանգութիւնը՝ առաւել անկորուստ եւ մեծայարգի է։*

*Իսկ մեր հայրենի աշխարհին եւ նոյնիսկ գաղթական Հայոց համար ընտանեկան անդէպ բաժանումն միշտ վնասակար է. մանաւանդ երկրագործ ժողովրդոց համար, որոց ուժ՝ ար. դիւնքը՝ ընտանեկան միութեան ու միաբան աշխատութեան մէջն է, եթէ բաժանուին՝ միացեալ զօրութիւնը կը ջլատի եւ խպառ ուժաթափ կը լինին։ Ընտանեկան նահապետները միութեան հրաշքը՝ Նոյայ դարէն ի վեր փորձառութեամբ ճանչցած են։ Ուստի այդ առաքինի տան ծերունիք իրենց մահուան օրը վերջին կտակը միշտ այս կ՚աւանդեն ողջ ընտանեաց. որ նոքա սիրով ապրին, միաբան կենան, եւ չբաժնուին, չէն տուն չաւրեն։ Թերեւս փորձառութեան հետ Աւետարանէն եւս սորված են այդ միութեան բարձրագոյն դաս, թէ «Ամենայն թագաւորութիւն բաժանեալ յանձն՝ կործանի, եւ տուն բաժանեալ յանձն աւերի»։*

*Թողունք արտաքին պատճառները, որ պատահար են, ի՞նչ է արդեօք ներքին պատճառը, որ կը խռովէ տունը եւ ընտանիքը կը բաժանէ. այդ ինքնին յայտնի է՝ ատելութիւն, նախանձ ու վայելմանց անհաւասարութիւն. խստութիւն, աչառութիւն, անհաւատարմութիւն, անվստահութիւն. ի վերջոյ մեծերու անխոհեմ ու յոռի ընթացք եւ փոքրերու ստահակութիւն եւայլն։ Այս եւ սոյնպիսի առիթներով կը խռովի տունը, եւ կը բաժնուին զաւակներ ծնողքէն, եղբայր եղբօրմէն եւ մերթ եւս երկու ամուսինք իրարմէ։*

Արդեօք ի՞նչ է հնար եւ դարման, որ ապրին եւ վարին միշտ սիրակալ միութեան եւ խաղաղութեան մէջ։ Նոր աշխարհ կ'ուսուցանէ որ դորա միակ դարման է՝ մարդոց կատարեալ կրթութիւն տալ· չէ թէ միակողմանի կրթութիւնը, այսինքն մարդոյն կէսը կրթել, կէս մասին լոյս տալ, եւ նորա միւս կէս մասն թողուլ կոյր, խեղճ, ստրուկ եւ ապուշ։ Իմացնել կ'ուզեմ մարդոց երկու սեռին առանց խտրութեան կրթութիւն տալ իւրաքանչիւրին իւր կոչման պատշաճ· որպէսզի ընտանեաց մէն մի անդամը, իւր իրաւունք, իւր պարտիքը ճանչնայ, իրարու խօսքը հասկնան, միաբան խորհին, միաբան ընթանան առանց կաղալոյ· այր կամ կին, ծնողք կամ զաւակները, հարսն կամ սկեսուրն։

Այսպէս երբ Նոր աշխարհի մէջ հաւասար կրթութիւն պէտք է ընտանեկան միութիւնը պահելու համար· մարդ կը զարմանայ թէ, հապա ի՞նչ բան էր եւ ի՞նչ զօրութիւն, որ հին աշխարհի նահապետական կեանքի մէջ անխզելի կը պահէր ընտանեկան միութեան կապը։

Զարմանալ պէտք չէ, այդ միութիւնը պահելու համար, բաւական էր տան կառավար նահապետին հայրական պատկառանք մեծ տանտիկնոջ ժրագործ տնտեսութիւնն, զաւակաց ակնածութիւն եւ մեծարանք առ ծնողս, հարսներաց հլու հնազանդութիւն, եւ քան զամէն աւելի՝ կրօնի երկիւղածութիւն և աստուածպաշտութեան հաւատքը։

Այս կամայական եւ ազատ առաքինութիւնք նահապետական ընտանեաց համար իբրեւ բնական օրէնք եւ նախնական վարուց բարի ժառանգութիւն համարուած էր· որ աւանդաբար յորդւոց յորդիս կը ձգէր ու միշտ ջանային անեղծ եւ անարատ պահել· որոց մնացորդ նշխարները դեռ հայկական աշխարհին մէջ կ'երեւին· մանաւանդ հողագործ ժողովրդոց մէջ։

Սակայն աշխարհ եւ ժամանակը ամէն բանը կը յեղաշրջեն· արեւմտեան նոր քաղաքակրթութեան կեանքը դէպ արեւելք կուգայ հեղեղի պէս· Կոստանդնուպոլսոյ եւ ծովեզերեայ քաղաքաց ընտանեկան հին կեանքը ողողեց· ո՛վ կարող է թումբ քաշել այս հեղեղին դէմը· անշուշտ այս հեղեղը պիտի երթայ հասնի մինչեւ Մասեաց ստն՝ Նոյին զերդաստանը եւս ողողելով պիտի քշէ հետ տանի առ հասարակ բոլոր ազգերու հին կեանքը։ Երանի՜ թէ մեր կեանքի միայն յոռի մասն տանէր, ոչ, պարզ եւ ուղիղն եւս ի միասին կը տանի· շատ քաջ է այն ազգ եւ ընտանիքը, որ յոռին կը թողու եւ իւր նախնա-

կան կեանքին լաւ եւ ուղիղ մասն պինդ կը բռնէ ։ Նկատել արժան է, որ արեւմտեան քաղաքակրթութեան այս հեղեղին ջուրը շատ խառնուրդ ու պղտոր է․ չարն ու բարին, լոյսն ու խաւար, անկրօն գիտութիւնը իւր հետ զուգընթաց է ։ Ուստի Հայոց ընտանիքը պէտք է այժմէն իրենց աչքը բանան գիտութեան լուսով եւ բարի դաստիարակութեամբ պատրաստուին, միայն այսու կարելի է քաղաքակրթութեան խառնուրդէն բարի մասն ընտրել ։ Իսկ եթէ լոյս եւ դաստիարակութիւն թողու, ապուշ ու տգէտ լինելով բարի մասն ընտրել չգիտնայ, իւր բերան բանայ հեղեղին դէմ, ամէ՛ն ամէ՛ն ասեմ քեզ, մըտադիր ընթերցող, Հայոց ընտանեկան կեանքը պիտի խեղդուի․ աւա՜ղ կարդամ այն ընտանեաց, որ փոխանակ ի մի կողմ փախչելու, հեղեղի հոսանքին առաջ կեցած փորձ կը փորձեն․ կը տեսնան իսկ իրենց աչքով որ շատ ընտանիք խեղդուելով իրենց դիակները դեռ այսօր Վոսփորի ծովուն երեսը կը տատանին․ որով ջնջեցաւ իսպառ իրենց ընտանեկան սեռն ու ճետն Այնպէս չը կարծենք թէ այդ արեւմտեան հեղեղը՝ միայն արեւելեան ընտանիքները կը խեղդէ իւր ցեղխութեան հոսանաց մէջը, ոչ, այդպէս չխորհինք՝ հաւաստի լինելով, որ նոյն իսկ Եւրոպիոյ քաղաքակիրթ աշխարհին մէջ շատ ընտանիքներ կը խեղդուին ու կը ջնջուին․ միայն նոքա կ՚ապրին ապահով, որոց փրկութեան տախտակը միայն ընտանեկան կըրթութիւնն է ։

Հետեւինք ու հաւատանք ուրեմն թէ այդ է միայն Հայոց ընտանեաց ապաւէն, թող ամէն ընտանիքը գրկէ այդ կրթութեան փայտը, որ Քրիստոսի կենաց փայտին պէս պիտի պատսպարէ զինքն ։

---

Զ․

# ԱՄՈՒՍՆՈՒԹԵԱՆ
ԿԱՄ
## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԿԵԱՆՔԻՆ
### ԽԱՓԱՆԱՐԱՐ ԶԵՂԾՄՈՒՆՔՆԵՐ

---

Մարդիկ, որ ամուսնութեան պտուղ եւ արգասիքն են ի բնութենէ, եւ բնապէս կը սիրեն ամուսնութիւնը․ ի բաց թող-

*լով այն բացառութիւնք, որով մարդն իւր ազատ կամաց իրաւամբ կամ ուխտիւ կամ ուրիշ արդարացի առիթներով՝ խոյս կուտայ ամուսնութենէն։*

*Ուստի երբ աշխարհիս մարդոց ամենամեծ մասն կը սիրեն եւ կը պատուեն ամուսնական կեանքը եւ կը խայտան իրենց նախահօր պէս երբ առընթեր տեսնան իրենց նախատիպ պատկերը․ զորս Աստուած մենաւոր մարդոյն իբրեւ ընկեր, օգնական եւ զուգակից տուաւ։ Առ այս վկայ է աշխարհիս ընդհանուր ամուսնական եւ ընտանեկան կեանքն․ թէ մարդիկ ընդհանրապէս կը ցանկան ամուսնանալ, որդիս ծնանել, ընտանիքը կազմել, միշտ կենդանի պահելով իրենց տան փառքն եւ տոհմական յիշատակն։*

*Իսկ արդ եթէ այս այսպէս է ինչպէս որ ճշմարիտ․ այլ եւս ի՞նչ կան մարդոյն առաջ խափանարար առիթները։*

*Ընդարձակ մտքով եթէ քննենք շատ բազմապատիկ են, որք առ հասարակ մարդոյն հնարած զեղծմունքներն են թէ ներքին եւ թէ արտաքին․ որոց գլխաւորները թուեմ քեզ, դու ինքնին խելամուտ եղիր, եւ ահաւասիկ։ Սանձակոտոր ազատութիւն, անառակ կեանք, զեղխութեան պերճանք, չքաւորութիւն, ստրկութիւն, ծառայական վիճակ, պանդխտութիւն, քաղաքային օրէնք եւ երկրին հանգամանքները եւ այլն․ որոց վերայ ես միայն համառօտ պիտի խօսիմ, մնացեալը կը թողում որ դու ինքնին ժողովուրդի կեանքին մէջ տեսնաս եւ իմաստասիրես։*

*Մեր ժամանակը վկայ է, թէ ինչպէս ոմանք սանձակոտոր ազատութեան մէջ ցանկասիրութեան ընդարձակ ասպարէզ գտնելով, այլ եւս հարկ չեն տեսնար համեստ կապուիլ․ այլ առանց ուխտի եւ դաշին, առանց եկեղեցւոյ օրհնութեան, սուրբ եւ ողջախոհ առագաստէն դուրս ամենուրեք կը գտնեն իրենց ցանկութեան կրից յագուրդ ու ճարակը․ եւ այնուհետեւ մարդկային ամօթն համարելով՝ արձակ ու համարձակ վարիլ կ'ուզեն աշխարհիս օրինակարգ ընկերութեան մէջ․ որպէս թէ չը լինէին մարդոց համար պարտք եւ իրաւունք, չի լինէին ամօթ եւ պատուոյ զգացումն․ մարդիկ մոլի սիրով ընկերանային առանց տիրապէս հայր ու մայր կոչուելու, եւ այն դժբախտ անծին կամ ծնած մանկիկները դատապարտուէին իրենց ապօրէն ու մեղապարտ ծնողաց պատճառաւ կամ արեւ չտեսնալով չքանալ, եւ կամ իբրեւ անհայր անմայր անծանօթ որբերը՝ աշխարհիս հրապարակին վերայ անտէրունչ մնալով՝*

եկեղեցին միայն գծար ու հոգար զիրենք: Վասնզի սանձակոտոր ազատութեան կեանք ընտանեկան չէ. ոչ համեստութեան մէջ պատսպարուած է եւ ոչ եւս ամուսնութեան վկայագիր ունի. կամ այն սպիտակ անմեղութեան ծածկոյթը, որ կը ծածկէ մարդոյն առականք: Նա մերկ կը շրջի հրապարակի մէջ. թէ գիտուն եւ միանգամայն իմաստակ է: Շնական փիլիսոփայութեամբ կը համոզէ իւր միտքը, եւ թոյլ կուտայ որ իւր անժուժկալ կիրքը ազատօրէն վարի. եթէ նուաստ ու սինլքոր է, նա իւր ռամկութեամբ ոչինչ չզգար իւր պատուոյ եւ անուան համար. թէ հարուստ է, ազնուական է, կը կարծէ թէ մամոնային զօրութիւնը կամ անուան փառքն ու վարկը կարող են ծածկել իւր առականքն. մարդկային ակնածութիւնը եւ մեղադրանքն. մանաւանդ նոքա, որք կը համարին զիրենք Եւրոպիոյ քաղաքակրթութեան հետեւող զաւակները, եւ իրենց մեծ ուսմունք, կեանքն ու զբաղանքն են սիրավառ վիպասանութիւնք եւ այլն: Այսպէս ահա սանձակոտոր ազատութիւն եւ անառակութիւնը՝ խափանարար կը լինին ամուսնութեան:

Ձեղխութեան մոլութիւնը թէպէտ անառակ եւ անհամեստ կեանքին ճարակելի նիւթն է, սակայն այս նիւթն սոսկ արտաքին անառակութեան համար չի ճարակիր. այլ նոյն իսկ ընտանեկան կեանքին մէջ աւելի եւս կը ճարակի կեանքի ու տընտեսական պիտոյից համար. որ այնչափ բազմապատիկ շատցած են. որոց մէջ գրեթէ խեղդուած է ամուսնութեան պէտք ու կարիք: Միթէ չե՞ս հաւատար ընթերցող, թէ Հայ ընտանիքներէն շատերը պերճ ու փառասէր ցեղխութեան մէջ պարանոցաթաղ եղած են: Եւ ի՛նչ է նոցա սրտի եւ սիրոյ հաճոյք. գիտե՞ս, շքեղ տուն, թանկագին կահ կարասիք, կառք ու սիգաճեմ ձիերը, անբաւ զարդ, անհուն նորասիրութեան ձեւերը, սնապարծ ցուցամոլութիւն, զբօսասիրութիւն, ունայնամիտ տենչանք եւ այլն: Այս ամէն պերճանք՝ մի մեծ բանակ կազմելով կը զինուորին պարզ կեանքին դէմ եւ կը յաղթահարեն ամուսնական սէրը. ինչպէս մարախին բանակը ցորենի արտերը կ՚սպառէ. նոյնպէս այդ պերճանքն է, որ կ՚ուտէ կ՚սպառէ ամուսնութեան բաժին սեղանին հացն. ոչ հարսին օժիտ կը թողու եւ ոչ փեսային վաստակ, եւ ինչ պէտք է երբ այս կարգի մարդիկ ցեղխ ու մեղկ կեանքը աւելի նախադաս ու հաճոյական կը համարին քան ամուսնութիւն եւ ընտանիք:

Դու չե՞ս տեսնար, ընթերցող, այն ընտանիքը, որ առանց խնայելոյ ամենայն շռայլութեամբ կը հոգան ցեղխութեան ան-

պէտ պէտքերը եւ կը մոռնան ամուսնութեան կենաց պէտքն ու պարտիքը․ զարդասիրութեան բուռն տենչ՝ ամուսնասիրութիւնը մեռուցեր է։ Զգիտեմ զո՞վ առաւել մեղադրեմք․ անփեսայ օրիո՞րդն թէ անամուսին երիտասարդն․ որոց մինն կը պատասխանէ թէ ես հաճոյանալու համար զարդ կը սիրեմ․ կամ թէ ես կին եմ, ի բնութենէ զարդն իմ վայելչութիւնս է․ իսկ միւսն եւս իբրեւ իրաւացի փաստ յառաջ կը բերէ թէ նոյն իսկ ես ալ այդ զարդին համար կը խորշիմ ամուսնութենէն, նախատեսելով թէ ամուսնութենէ յետոյ ի՞նչպէս հոգամ ընտանիքը եւ ի՞նչպէս կարենամ փայտ հասցունել զեղխութեան կրակին․ որ շատ ընտանեաց տուն վառեց մոխիր դարձուց․ դեռ աւերակները կը մխան, ծուխ կ'ելլէ․ ես կը տեսնամ եւ այդ փորձերէն իրաւունք չունի՞մ խելաբերիլ եւ զգուշանալ ամուսնական վիճակէն եւ այլն։

Թող չարդարանան, երկուքն եւս հաւասար մեղադրանաց արժանի են․ որոց դատաստան ու վճիռը գիտեն որոշել մեր ընտանեկան կեանքը դատող իմաստուն դատաւորները։

Շատ զարմանալի է որ երբ զեղխ մարդիկ ամուսնութենէն կը խորշին, ընդհակառակն չքաւոր ժողովուրդ, մանաւանդ գիւղացի ընտանիքը ամուսնութիւնը կը սիրեն․ ոչ նախատեսել կ'ուզեն եւ ոչ ապագայի հոգ ու հաշիւը կ'ընեն, իբրեւ հասարակ առած կը խօսին իրենց մէջ, «Ամուսնանանք, հացն Աստուած կուտայ»․ եւ հարսանեաց սեղանին վերայ դարձեալ այս օրհնութիւն կուտան․ «Աստուած շատ հաց տայ մեր փեսային ու հարսին»։ Գիւղացի հողագործ ժողովուրդը անխորհուրդ չէ, իւր անուս վիճակի մէջ նախատեսութիւն ունի։ Նա ամուսնութիւն կը սիրէ, որպէս զի ընտանեաց մէջ աշխատաւոր մշակները շատնան․ նորա համար շատ պէտք են մանչեր ու աղջիկներ։ Նա միշտ այնպէս կը դատի, որ ընտանեկան հարստութեան աղբիւրը՝ ժրաջան զաւակներն են․ սորա համար է, որ հարկաւոր ու կանոնաւոր ամուսնութիւնը աւելի հասարակ ու շինական ժողովրդոց մէջ ընդհանրացած է քան թէ քաղաքակիրթ կարծուած ժողովրդոց ու ազնուականաց մէջ։

Սակայն աշխարհիս տնտեսագիտաց կարծիքին հետեւելով՝ պէտք է համոզուիմք թէ չքաւորութիւն միշտ խափանարար է ամուսնութեան․ վասն զի չքաւոր ընտանիքները թէեւ սիրեն ու բաղձան ամուսնութեան, այլ կարող չեն բարգաւաճել կամ ամուսնութիւնը արդասաւորել։ Փորձառապէս կը

տեսնամք ահա մեր հայրենեաց ժողովուրդի կեանքին վերայ․ որոց չքաւորութիւն ու տառապանքը միանգամայն խափանարար եղեր են ամուսնութեան եւ բարգաւաճման։ Ա՛հ, թէ որ հաց չը լինի՝ մայրերը անօթի կը մնան, եւ երբ մայրերը անօթի մնան, նորածին մանուկներու կաթ կը ցամքի։ Երանի՛ թէ այս լինէր միայն չքաւորութեան արկածն․ թող աղքատութիւն տառապէր զիրենք, միայն թէ երկու ամուսինք իրարու հետ անբաժան ապրէին։ Ոչ, չքաւորութիւն չի խնայեր, նորապսակ ամուսիններն անգամ քաղցր հայրենիքէ, սիրոյ գիրկերէն հանելով ի պանդխտութիւն կը վարէ․ այսօր քան հազարէն աւելի մեր հայրենեաց պանդուխտ զաւակները կը տառապին մայրաքաղաքիս մէջ, հինգ, տասն, տասնեւհինգ եւ մինչեւ քան երեսուն տարի օտարութեան մէջ տառապելով՝ որոց շատերն եւս հայրենի հողէն եւ իրենց նախնեաց գերեզմանէն զրկուելով՝ օտար երկրին ու հողին տակ կը թաղուին․ ով կը տնկէ նոցա վերա մի խաչքար եւ կը գրէ նոցա յիշատակը։ Եթէ ստուգիւ վիճակագրեմք Հայոց ժողովուրդին այս պանդխտութեան չարչարանաց վիճակը, շատ ողբալի է․ վասն զի տիրապետող չքաւորութենէն կը սպառին ու կը չքանան ընտանիքը ու հետեւապէս կը նուազի Հայոց հին ու բազմաճոխ ազգը։

Չքաւորութեան հետ մեծապէս խափանարար են ամուսնութեան ու բարգաւաճման նաեւ երկրին հանգամանքներ թէ բնական եւ թէ պատահական․ այսինքն հող, ջուր, օդ, ժողովուրդին բարոյական եւ նիւթական կեանք, եւայլն։ Սոսկ հաւատալով չենք խօսիր, ահաւասիկ կը տեսնամք, որ գիտութիւն եւ քաղաքավարութիւնը մարդոց ընտանեկան կեանքը կը բարւոքէ․ ժողովուրդին զաւակները օր ըստ օրէ կը բազմապատկին․ամէն տարի Եւրոպիոյ ամէն ազգերէն հարիւր հազար ընտանիքները գաղթական կ՚երթան դէպ յԱմերիկա։ Իսկ Ասիական աշխարհը կը թափուրանայ ժողովուրդէն․ պէտք չէ երբէք զարմանանք ու հետազօտենք, քանզի սորա պատճառները խիստ յայտնի են։ Աշխարհ, որոյ ժողովուրդը դեռ տըգէտ է, անուս է, անարուեստ է, կեանքն՝ իւր հնութեան մէջն է, յառաջդիմութեան տարերք չունի, կը ճնշուի կը հարստահարուի թէ իւր ձեռքով թէ օտարին, իւր հացը դառնութեան հաց է, իւր ջուրը՝ կարօտանաց, իւր օրերը վշտըմբեր են, իւր կեանքն ապերջանիկ․ նա կը դողայ միշտ այն ամէն արհաւիրքէն որ զինքն շրջապատեր են․ ինչպէս կարելի է յուսալ թէ

*այդպիսի ժողովուրդը հարսանեաց թմբուկ զարնէ, պար խաղայ, ամուսնանայ, ընտանեաց հայր լինի, ժողովուրդին թիւ յաւելու, ազգ, Հայկայ սերունդ բարգաւաճի ու բարձրանայ։*

*Հայ ժողովուրդին այս անյուսալի վիճակը, որ մեծապէս արգելք ու խափանարար է իւր ամուսնական կեանքին ու բարգաւաճման համար, այլ եւս տակաւին կը մխիթարուիմ մեր հայրենի ժողովրդոց ընտանեկան կեանքին վերայ, որ թէպէտ տառապեալ է, աղքատ է թէ՛ հայրենեաց եւ թէ՛ պանդխտութեան մէջ. սակայն որչա՜փ քաղցր ու նուիրական պարտիք է նոցա համար ամուսնասիրութիւն եւ ընտանիք։ Նոյ նահապետի հարազատ թոռները նոքա են տիրապէս, որ չեն մոռնար իրենց մեծ պահուն այն սուրբ յիշատակները, որ նահապետական կեանքը ժառանգութիւն թողած է իւր մնացորդ զաւակաց։ Այդ ժառանգութիւն ի՞նչ է, գիտե՞ս. գանձ չէ, ոսկի եւ արծաթ չէ, ադամանդ չէ, այլ դրախտի ամուսնական օրհնութիւնը, որ Ադամէն սկսեալ նահապետէ առ նահապետ անցնելով հասաւ մինչեւ Յաբեթի ու Հայկայ տունը. որոյ մնացորդ զաւակները այդ Աստուածապարգեւ հարստութեան տէր եւ ժառանգորդ են։*

*Դու չե՞ս զարմանար, մտախոհ ընթերցող, թէ ինչպէս այլ եւ այլ պատճառներէ եւ ա՛յնչափ ժամանակ գաղթականութեանց երեսէն, տակաւին չէն մնաց Հայկայ տուն. թէեւ իւր փառաց շուքը կողոպուտ տուաւ. բայց շատ պինդ պահեց այս օրհնութիւնը, որով մնաց ու դարձեալ պիտի անջինջ մնայ Հայկայ տուն եւ ընտանեաց յիշատակ Հայոց աշխարհէն։*

*Ո՛վ դուք անմահ ընտանիք հայրենեաց. խնամով պահեցէք այդ սուրբ օրհնութեան աւանդը, որպէսզի աճի կենդանի մնայ Հայկայ տան նահապետական սերունդը։*

*Ինչպէս տեսանք թէ դառն չքաւորութիւն եւ պանդխտութիւնը ստուգիւ մեծապէս խափանարար են Հայ ժողովրդոց ամուսնական կեանքին. այլ այս կեանքին հետ նկատել արժան է նաեւ գաղթական Հայոց վիճակը, թէ արդեօք նոցա համար ի՞նչ են խափանարար առիթները. որ հայրենիքէն դուրս մեծ մասամբ մայրաքաղաքիս մէջ կը բնակին։ Այս կարեւոր կէտն իբրեւ վիճակագրական խնդիր պէտք է ուշադրութեամբ առնումք։*

*Պատմութիւն կ՚աւանդէ թէ Կոստանդնուպոլսոյ գաղթական Հայոց թուականը Յովակիմ Պատրիարքին օրէն կ՚սկսի. որ հինգ հարիւր տարուան դրեթէ կը մօտենայ։ Այս միջոցը*

հինգ դարէ ամբողջ· Կայսերական քաղաքին մէջ բնակող Հայոց աճումն մինչեւ ո՞ւր հասած է։ Ես այնպէս կը կարծեմ տասն եւ հինգ կամ շատ շատ աւելի քան հազար ընտանիք, հազիւ կը կազմեն, որ պէտք էր կրկնապատիկէն եւս աւելի լինէր։ Եւ ի՞նչ է այս նուազական թուոյն պատճառը· պատճառներ շատ ու բազմադիմի են, թէ անցելոյն եւ թէ ներկայ ժամանակիս մէջ։

Եթէ պատմութեան միտ դնենք, Պոլսոյ գաղթական Հայոց անցեալ կեանքը ոչինչ տարբերութիւն չունէր բուն հայրենեաց ժողովուրդի կեանքէն· որովհետեւ ասոնք եւս միշտ քաղաքական փոփոխութեանց ենթարկուելով բարւոք վիճակ չունեցան եւ իրենց ընտանեկան կեանքն առանց բարգաւաճելոյ մնաց։

Ներկայ ժամանակիս մէջ թէպէտ հին խափանարար առիթները վերջացած են, սակայն նոր աշխարհը ուրիշ խափանարար առիթներ հանեց երեւան, որ քան զհինն դառն ու դժուարին է։ Եւ ի՞նչ է այս, դարձեալ կրկնեմ քեզ, ընթերցող, պերճանք եւ զեղխութիւնն է, որ իւր անողոք արշաւանքներով քանդեց եւ դեռ պիտի քանդէ գաղթական Հայոց տուն եւ ընտանիք։ Երբ պերճանք եւ զեղխութիւն կը քանդեն, հապա ի՞նչ բան կարող է շինել եւ վերջացնելով միանգամայն այդ խափանարար պատճառները· եւ բուժիչ դարմանն ի՞նչ է այս աղէտալի հիւանդութեանն։ Շատ խօսեցայ եւ դարձեալ նոյն կը կրկնեմ· դորա զօրաւոր դարմանն է միայն, որ խելաբերելով զգաստանան գաղթական Հայոց ընտանիքը։ Իսկ եթէ տակաւին ծերոց խրատները քամահրեն, բարոյախօս դաստիարակաց խօսքերուն չհամոզուին, տնտեսագիտաց հաշիւները մերժեն, եւ շարունակեն իրենց կորստեան ճանապարհ, այնուհետեւ այլ եւս ոչինչ դարման կայ զիրենք ուղղելու· բայց միայն ապագայի թշուառաբեր օրերը· յորում նոքա պիտի վազվաղեն դէպի զգաստութիւն, յիշելով Դաւիթին խօսքը· թէ «Յաճախեցին հիւանդութիւնք նոցա, ապա վաղվաղեցին»։ Դաւիթ Յակովբայ տան եւ նորա յամառ ընտանեաց համար խօսեր է այս բանը· իսկ կատարումն Հայկայ տան վերայ եւս կը յարմարի։ Կ՚աղօթեմ ձեզ համար Հայոց գաղթական ընտանիքներ· բացուի ձեր զգաստութեան աչքը, դուք ներկայի մէջ տեսնաք այն կորստաբեր օրն, տեսնաք ու բարւոքէք ձեր ընտանեկան կեանքը։ Այս միայն կ՚աղօթեմ ձեզ համար որդիք հայրենեաց· որ դուք ազատ մնաք այս աւերիչ զեղխութենէն,

ձեր փառքն ու պերճանք թող լինին միայն հայրենեաց հողն ու դաշտ, ջուրն ու բուրազան ծաղիկներ. եգնամոլը մաճն ու հարօր եւ չինականին անպաճոյճ խրճիթն։

---

Է.

# ԸՆՏՐՈՒԹԻՒՆ
## Ե Ւ
## ԻՐԱՒՈՒՆՔ ԿԵՆԱԿԻՑ ԱՄՈՒՍՆՈՅ

---

Ինչպէս տեսանք դրախտի ընտանեաց նկարագրին մէջ, որ Տէր Աստուած թոյլ տուաւ Ադամայ որ ինքնակամ ազատութեամբ ինքն իւր կենակից ընկերն ընտրէ եւ երբ նա ընդ այս դժկամակելով վարանեցաւ՝ չգտնելով մի պատշաճագոյն ընկեր տարասեռ անասնոց կարգէն, յայնժամ խնամակալն Աստուած կինն ի կողէն ընտրելով՝ հարսնացոյց Ադամ փեսային հետ. որ իւր անդրանիկ ստեղծուած ամենասիրելի որդին էր։ Եւ ով պիտի լինէր Ադամայ համար հարսնընտիր հայր, երբ նա ամուսնական ծնողք չունէր. մի միայն իւր ծնող եւ հայր Արարչապետին խնամակալութիւնն էր։

Ուստի կենակից ամուսին եւ հարսն ընտրելու իրաւունքը՝ ամուսնացող փեսային անժխտելի իրաւունքն է. ինչպէս եւ հարսին անբռնադատ եւ յօժարամիտ հաւանութիւնն։ Վասն զի հարսն ստրուկ չէ, այլ իբրեւ ազատ ընկեր իւր փեսային, նոյն հաւասար իրաւունքն ունի, որ իւր ազատակամ հաւանութիւնը նա եւս նուիրէ փեսային։ Որոյ գեղեցիկ օրինակը կը տեսնամք Ռեբեկային վերայ. զի երբ հարսնախօս ծառան Աբրահամու Եղիազար կը պնդէր առանց յապաղելոյ հետեւեալ օրը Ռեբեկայն առնելով ճամբայ ելնէ, հարսին ծնողք եւ եղբայր Լաբայն աղաչեցին զինքն որ կոյսն Ռեբեկայն այլեւս տասն օր մնայ իւր հօր տունը. եւ երբ չկարացին համոզել զինքն՝ պատճառեցին Ռեբեկայէն եւս հարցնել թէ կը յօժարի՝ երթալ. թերեւս այնպէս կարծեցին նոքա որ կոյսն առաւել ընտրէ ծնողական սէր քան փեսային անձկութիւնը։ Եւ երբ

*կանչելով կը հարցնեն թէ երթա՞ս, պատկառոտ կոյսն իսկոյն կը պատասխանէ, այո՛ կ'երթամ. եւ իսկոյն ծնողք զիջանելով կ'ուղեւորեն զիրենք: Այս հարսնախօսութեան դէպքը իմաստասիրել կուտայ մեզ թէ Նահապետական դարուն մէջ կինը որչա՞փ ազատ էր. կնոջ ազատութիւնը շատ հին իրաւունք է. Եւրոպիոյ իրաւագիտութիւնը զայն նոր չի հնարեց, այլ միայն վերանորոգեց:*

*Բայց կարող չենք ժխտել թէ ծնողքն եւս մեծ իրաւունք ունին այս պարագային մէջ. իբրեւ հայր ու մայր, իբրեւ փորձառու եւ խելահաս: Վասնզի բազում անգամ տեսնուած է. անցելոյն եւ ներկային մէջ շատ ապացոյցներ կան, որ թէ փեսացու երիտասարդն եւ թէ կոյսն յոլով անգամ կը վրիպին իրենց ազատակամ ու եռանդավառ ընտրութեան մէջ: Իսկ ծնողաց ընտրութիւնը դուն ուրեք կը սխալի եւ սորա պատճառը խիստ պարզ է. վասն զի թէ երիտասարդն եւ թէ կոյսն գրեթէ միշտ կրից բերմամբ եւ բուռն սիրոյ զգացումով կը տեսնան ու կը հաւանին եւ շատ անգամ աչքը կը դիւթէ զիրենք: Իսկ ծնողք ծանր խորհրդով ընդ երկար հետազօտութեամբ հազիւ ուրեմն կը հաւանին եւ կ'ընտրեն: Այլ ես կը խօսիմ այնպիսի ծնողաց համար, որ արդարեւ ընտանեաց գլուխ բարի հայր եւ բարի մայր հանդիսացած են, եւ որ արթուն եւ աչալուրջ են, գիտեն լաւապէս որոշել իրենց զաւակաց ամուսնութեան բախտն: Բայց շատ մեղադրանաց արժանի են այն ծնողք, որ կամ աչալուրջ եւ խոհական ընտրութիւն չունին եւ կամ այլ եւ այլ շահու եւ զաղտնի հանգամանքներէ ստիպեալ իրենց զաւակները նոյն իսկ իրենց ձեռքով զոհ կուտան անյարմար ամուսնութեամբ չխնայելով եւ չնախատեսելով ապագայ ընտանեկան աղէտն:*

*Ամուսնական ընտրութեան մէջ առաջին զգուշաւոր պայմանն է, որ առանց արենակցութեան լինի ինչպէս օրինադրած է Աստուածային օրէնքը եւ Եկեղեցւոյ հարց կանոնական սահմանը: Այս օրէնքը թէեւ կարծեն ոմանք թէ դրական է, կամ մարդոց մտացածին գիւտ. սակայն ոչ միայն բնական է, այլ եւ բանաւոր մարդոյն համար նուիրական եւ սուրբ է. Նովաւ է, որ մարդոյն ազնուութիւնը կը բարձրանայ եւ կը զանազանի անազգի եւ խառնազոյգ անասնոց կարգէն եւ քաջառոյգ կը բեղմնաւորին ընտանեկան պարտիզին մատաղատունկ ծառերը: Արենակցական ամուսնութիւնը ոչ միայն Եկեղեցւոյ օրի-*

նաց բարոյապէս հակառակ է, նաեւ բնապէս վնասակար է ազնուասերունդ ընտանիք կազմելու· եւ առ այս միաձայն կը վկայեն հին եւ նոր աշխարհ, տգէտ եւ իմաստուն առ հասարակ· եւ արդի ժամանակիս քաջափորձ բնագէտներ եւ բժիշկները փորձով կ՚ապացուցանեն ազգակից ամուսնութեան չար հետեւանքները:

Որչա՞փ անբարի է մեր ժամանակը· յորում այս վսեմ օրինաց գիրը սկսեր է հետզհետէ եղծանիլ եւ հին զեղծմունքն օր ըստ օրէ կը բազմանայ ազգին մէջ· զոր վերջացուց Մեծն Ներսէս, եւ տաժանելի աշխատութեամբ հազիւ հազ կարկատեց այդ օրինաց ցանկը: Այլ գիտե՞ս, ուշիմ ընթերցող, թէ ո՞յք էին Հայոց ազգի կարգէն այդ Աստուածագիր ցանկ խրամատող ձեռք· հասարակ ժողովուրդ չէր, աղքատ ընտանիք չէին· հապա Հայոց նախարարներ եւ իշխանազուն ընտանիքը· որք առանց ակնածութեան կը հեստէին Եկեղեցւոյ սահմանադրութեան դէմ եւ հայրապետին հովուական գաւազանը խորտակելով՝ կ՚ամուսնանային· զաւակները կ՚ամուսնացնէին մերձաւոր ազգախառնութեամբ եւ սորա պատճառը չէ թէ միայն իշխանական պերճութիւնն էր, այլ առաւել վատ ագահութեան նախանձը· որ տոհմական հարստութիւնը պահուի ու չժառանգէ զայն ժողովուրդին արժանաւոր զաւակը:

Դատեցէք, ժողովուրդ Հայոց, այս եղծումն, որ այժմ եւս կը տարածի ազգին մէջ· ով է պատասխանատու· նոքա որ սոնքացեալ հպարտանալով իրենց զօրութեան վերայ կը ստահակին այս օրէնքին դէմը, չէ մենք եկեղեցւոյ պաշտօնեաներս, որ չկրելով մեր այն վեհ նախնեաց սաստող ու նախանձաւոր հոգին՝ անկարող կը լինիմք հսկել օրինաց ցանկին վերայ· այլ կը խոնարհիմք ժամանակի կեղծաւորութեան հետը եւ սորա անունը կը դնեմք խոհեմութիւն, քաղաքականութիւն, ժամանակի պահանջման վարմունք, եւ մերթ եւս երբ յաջողի օրէնք ծանրագնով վաճառել, այդ եւս կը համարիմք մեզ համար պարծանք, գործունէութիւն եւ ազգին շահաբերութեան մի գիւտը: Երբ ապիկար հովիւներս գաւազանին իրաւունքը մի կողմ դնելով՝ կը թոյլատրեմք, որ գործադրուին այդ զեղծումները, դու միթէ իրօք կը սրտմտի՞ս, ժողովուրդ հայոց: Այո՛ պահ մի կը զայրանաս, կը բամբասես կղերը՝ ցոյց տալով թէ օրինաց շատ նախանձաւոր ես· շուտ կ՚անցնի քո այդ զայրոյթ, դու յետոյ կը մեղմանաս ու կը մոռնաս առջի դատաստանդ ու կը սկսիս զմեզ եւ մեր օրինազանցութիւնը գովել,

թէ ժամանակի ազատութեան համեմատ վարուեցաւ, թէ ազգասիրութիւն գործեց, հոգ չէ թէ օրինաց ցանկը փոքր ինչ քանդուեցաւ. ազգին նիւթական շահն եւս նկատել պէտք է եւայլն: Թողունք այս դատաստանը ուրիշ անգամ տեսնալու, դառնանք ճառիս նպատակին վերայ:

Ամուսնական ընտրութեան երկրորդ պայմանն է համեմատութիւն երկուստեք կողման հանդամանաց. համեմատութիւն հասակ առ հասակ, համեմատութիւն վիճակ առ վիճակ, համեմատել պէտք է նաեւ երկու ամուսիններու բարքն ու վարք. եւ երկու անմերձաւոր ընտանեաց կեանքն ու յարմարութիւնը: Ամենայն զգուշութեամբ երկուստեք կողմէն նախապէս զուգակշռել պէտք է այս կարեւոր հանդամանքները ու այնպէս հաւանութիւն տալ իրարու: Ապա թէ ոչ՝ շատ անգամ ինչպէս յաճախ կը տեսնամք ընտանեկան կռիւներ, բաժանումներ, անյարմար ու անպատշաճ խնամութենէն յառաջ կուգան ու կը խանգարեն ընտանեկան հանդարտ ու խաղաղ վիճակը: Այս դժուարին ապագայէն ազատելու համար, նոր խընամի եղող ընտանեաց պարտիքն է, որ չը մոռնան երբէք համեմատութեան չափն ու ճշդութիւնը, գիտնալով թէ բովանդակ տիեզերքը համեմատութեան չափով կը կառավարուի: Որչա՞փ անբնական է եւ մեծ խիղճ, երբ բռնութիւն կամ հըրապոյր եւ կամ թէ շահ կը ջանան իրարու հետ պատուաստել երկու ամուսինները, որ մին դալար նորատունկ է եւ միւսն հինաւուրց հաստացեալ ծառ, որ աչնան մօտ է, իւր տերեւներ դեղնած պիտի թօթափին, բունը փտած է, եւ ստեղունք դօսանալ սկսած են: Օրհնեալ լինին մեր եկեղեցւոյ սահմանադիր Հայրերը, որ օրինօք հաստատեր են կոյս ընդ կոյսի, այրին ընդ այրւոյ: Ամուսնութեան այս համապատշաճ օրէնք դեռ մեր հայրենի գաւառներէն շատերը երկիւղածութեամբ կը պահեն: Իսկ Պոլիս եւ ուրիշ ծովեզերեայ քաղաքները այդ օրէնքը իբր հին ու անպէտ համարելով բարձի թողի եղած է ժողովուրդէն եւ միանգամայն եկեղեցւոյ հայրերէն:

Եթէ մէկն յառաջ բերէ, եթէ որ կտրիճ նորապսակ երիտասարդ մը ամուսին մեռնի տարաժամ, նա պարտաւո՞ր է մի այրի կնոջ հետ ամուսնանալ:

Այդ հարցմանն՝ ես ալ մի հարցումն յառաջ բերեմ, եթէ նոյնպէս ապաժամ մեռնի փեսայն՝ այրի մնայ իւր հարսն, որոյ կեանք նոր բացուած գարնան պէս դեռ ծաղկահասակ, կաղաչեմ, որ խօսիս ի՞նչ է քո արդար դատաստանը, դու որ

խիղճ կ'ընես նորատի փեսային համար․ նոյն խիղճ չե՞ս զգար նորածաղիկ հարսին համար, եւ կ'ուզես, որ նա անամուսին, անպտուղ սեւաքօղ երթայ մինչեւ ի գերեզման։ Եթէ փեսայն կ'անձկայ որ դարձեալ կոյս ամուսին մի առնէ կամ ինքն կուսին փեսայ լինի․ արդեօք այրի հարսն իրաւունք չունի՞ այդպէս անձկանալ․ բիւր անգամ երջանիկ կը համարի զինքն, եթէ բախտաւորի․ թող կոյս փեսային՝ գէթ այրի փեսային ամուսին լինել։ Մեծ զրկանք է այս կանանց սեռին․ մեծ ոճիր է տառապեալ այրիներուն, քանի որ աշխարհիս դատաւորները այր մարդիկ են։ Խօսքիս միտքը չը լինի թէ խեղաթիւրես, մտադիր ընթերցող, ես չեմ ասեր, որ կիները դատաւորական աթոռ նստին, այլ ասել կ'ուզեմ բանին ճշմարտութիւն, որ ամեւոր դատաւորները, այս դատաստանին մէջ աչառելով կը վարին, եւ այս բարոյական հարստահարութիւնը տակաւին պիտի ծանրանայ շատ մանկամարդ կիներուն վրայ, քանի որ ժամանակ յուրի ազատութեան զեղծմունքներ կը յաւելու։

Հարսնընտրութեան կարեւոր պայմանները այսչափ միայն յիշելով՝ խօսինք այժմ Նշանադրութեան խորհուրդին վերայ որ հանդերձեալ պսակին նախորհնութիւնն է․ զոր կը կատարէ Եկեղեցին հանդերձ վկաներով, ցոյց տալով հրապարակաւ թէ խօսեցեալ կոյսն նշանեցաւ մի երիտասարդի համար․ այլ եւս ոչ ոք իրաւունք ունի ուրիշի համար խօսել կամ նշան տալ։

Նշանդրութեան խորհուրդ շատ հին աւանդութիւն է, եւ կը տեսնամք զայն նահապետական ընտանեաց մէջ։ Աբրահամ նահապետ իւր հաւատարիմ Եղիազար ծառայն ի Խառան կը ղրկէ իւր հայրենի ազգատոհմին տունը, որպէս զի Իսահակայ որդւոյն համար հարսնախօս լինի։ Տէր կ'առաջնորդէ հաւատարիմ ծառային․ Խառանու ջրհորին գլուխ կը գտնէ պարկեշտ Ռեբեկայն, հոն Եղիազար կը հաւատայ թէ կոյսն ըղձակաթ է իւր փեսային․ այլ եւս չսպասեր ծնողաց հաւանութեան․ խակոյն կը նշանէ դնելով մատնին ի մատն եւ ապարանջաններն ի բազուկ․ որ ի կողմանէ փեսային կ'ուղերձի առ հարսն իբրեւ ի նշան հաւանութեան եւ սիրոյ։ Այս ընտանեկան պարզ ու անկեղծ սովորութիւնը, որ Աբրահամէն յառաջ թերեւս Նոյի ընտանիքէն սկսեալ մինչեւ ցայսօր աւանդաբար հասած է։

Երանի՜ թէ մեր հարսնախօսք Եղիազար ծառային պէս հա-

ւատարիմ լինէին, առանց կեղծելոյ, առանց նենգելոյ, առանց ուրիշ խարդախ միջոցներ ի գործ դնելոյ՝ սրտի պարզութեամբ կատարէին այդ գգուշաւոր պաշտօնը որ ընտանեկան միութեան առաջին կապն է. զոր պէտք է ամենայն հաւատարմութեամբ եւ լի սիրով ամրապնդել:

Նշանդրութենէն յետոյ՝ նշանուած կուսին սուրբ պարտիքն է, իւր աչքի խանդակաթ սէրը դարձնել միայն Նշանի մատանւոյն վերայ. յիշել, միշտ յուշի պահել թէ ինքն նշանուած է, հարս պիտի լինի. այլեւս չիկայ աշխարհիս վերայ իրեն համար ուրիշ ոք բաց իւր փեսայէն, որոյ միայն պէտք է նուիրէ իւր մաքուր կուսական սէր:

Այս պարտիք փոխադարձական է, ոչ միայն հարսին համար, եւ փեսային. որ թէպէտ ինքն աւելի ազատ է, ազատաբար կը շրջի ամենուրեք հրապարակի մէջ, այլ պէտք է փակէ իւր աչքը, ամփոփէ իւր միտքը, պահէ իւր սրտին ամբծութիւնը եւ ոչ զոք տեսնալ ուզէ բացի իւր նշանած կուսէն: Նա թէպէտ չունի մատանի յուշարար, ոսկի եւ ադամանդ. մատանի իւր հզօր սէրն է, որով կը կապէ նա իւր անձկալւոյն հետը, մահ եւ աշխարհ կարող չեն զայն քանդել, եթէ չքանդէ իւր ձեռք եւ մերթ եւս նենգաւորին դաւ:

Արեւմտեան քաղաքակիրթ ազգաց մէջ իբրեւ ընտանեկան սովորութիւնը՝ թոյլատրուած է. նշանուած կոյսն եւ երիտասարդն ամուսնութենէն յառաջ կարող են իրարու հետ յաճախ եւ ազատաբար տեսնուիլ, խօսիլ եւ զբօսնուլ ընկերութեան մէջ եւ առ տնին: Պոլսոյ եւ ուրիշ մի քանի քաղաքաց մէջ եւս մտեր է այդ ազատ վարմունքը եւ հայ ընտանիքն եւս սկսած են սոյն ազատութեան փափաքիլ: Սակայն այսպիսի ազատ վարմանց ու տեսութեանց մէջ, կատարեալ կրթութիւն եւ դաստիարակութիւն պէտք է, առաւել եւս կրօնի երկիւղածութիւն եւ պատկառանաց շնորհը:

Թող չպարծի արդի աշխարհ թէ իւր ուսեալ եւ կրթեալ զաւակները Յակովբ նահապետի չափ ժուժկալութեան շնորհ ունին. որ եօթն տարի ամբողջ իւր նշանած ու սիրեցեալ Ռաքէլին համար հովուական ազատ կեանքով ժուժկալեց Խառանու արձակ դաշտերուն մէջ: Այս պարզ հովուին սքանչելի ժուժկալութեան վերայ չզիտեմ արդի ազատավար երիտասարդութիւնը ի՞նչ դատաստան կ՚ընէ, կը զարմանա՞յ, թէ ծաղր կ՚արձակէ որ Յակովբը պարզ ու անզգայ մարդ եղեր է:

Իսկ մեր հայրենեաց այլ եւ այլ գաւառներու նախնական

սովորութիւնք մանաւանդ քաղաքներու մէջ դժուարութեամբ կը թոյլատրեն այդ ազատ վարմունքը։ Բայց շինական կեանքի մէջ բնապէս եւ առ հարկի ազատ թողուած է թերեւս նահապետական դարէն ի վեր։ Վասնզի գեղերու փոքր վիճակ, դաշտային ազատավայր կեանք եւ աշխատութիւն միշտ կը ներեն, որ գիւղի աղջկունք բացերես խառն շրջին երիտասարդաց հետ· որոց համար գիւղական պարզ կեանք դաշտեր, լեռներ, աղբիւրներու գլուխները կը համարուին իբրեւ հասարակաց պարտէզ· ուր ընկերաբար կը վարին կը տեսնուին եւ կը խօսին· միայն թէ նշանուելէն յետոյ՝ կոյսն պարտաւոր է իւր պատկառանաց քօղով ծածկուիլ միշտ ի պատիւ փեսային· եւ միանգամայն ցոյց տալով թէ ինքն նուիրեալ է եւ այլ եւս ազատ չէ։

Բայց դարձեալ գիւղական պարզ ընտանեկան կեանքն եւս ազատ չէ պատահական զեղծմունքներէ· ուր մերթ ընդ մերթ առեւանգութիւնք կը լինին· որոց ըստ մեծի մասին պատճառը ծնողաց խստասիրտ յամառութիւնը եւ ընծայասիրութեան բաղձանքն է· որ շատ ու զանազան պարգեւները կը պահանջեն փեսային կողմէն· որով միայն կը զիջանին եւ կը հաւանին իրենց աղջիկը տալ։ Եւ երբ այս վատ սակարկութիւն չի յաջողի եւ միւս կողմէն երբ կոյսն ու երիտասարդը սրտիւ կապուած են իրարու հետը, անշուշտ սէրը կը յաղթահարէ եւ առեւանգող երիտասարդը մեղադրանաց արժանի է, այլ առաւել մեղապարտ կը համարուին աղջկան ծնողքը, որ իրեն ազատ զաւակը իբրեւ գերի ստրկաբար ի վաճառ կը հանեն ոտնահարելով մարդոյն եւ սիրոյն պատիւը· որոց թանգ եւ արժանաւոր գինը՝ միայն փեսային բարոյական արժանիք եւ սէրն է եւ ոչ թէ ուրիշ նիւթական վճարք։

Կարգ եկաւ, չի մոռնանք· խօսինք նաեւ Պոլսոյ եւ ուրիշ քաղաքաց ընտանեկան այս նորամուտ, օտար ուսումն եւ վատթար սովորութեան վերայ· որոյ սակարկութեան եղանակն առաւել պարսաւելի է։ Վասնզի անդ երբ գաւառացի գիւղական ընտանիքը հարսնախօսութեան մէջ իրենց աղջիկները ի վաճառ կը հանեն· աստ քաղաքակրթութեան մէջ բնակող ընտանիքը՝ երիտասարդները ի վաճառ կը հանեն։ Ձեզ հրաւէր կը կարդամ ազգի դատաւորները, դատեցէք ու վճռեցէք· այս երկու վաճառահանութեան եղանակէն ո՞րն է առաւել վատթարագոյն· երկուքն եւս հաւասար ստրկութիւն չէ։ Սակայն շինական ընտանիքը, ուր ռամկավարութեամբ հանդերձ թե-

րեւս արդարանայ քաղաքակրթութեան առաջ. որ կնոջ պատիւ եւ արժանաւորութիւնը բարձրացոյց. գուցէ բնապէս զգալով այս գիւղացի ժողովուրդը Թանկագին վաճառել կ'ուզէ զայն: Իսկ մեր քաղաքակիրթ ընտանիքը երբ երիտասարդները ի վաճառ կը հանեն ի՞նչ միտք ու նպատակ ունին. արդեօք այնպէս կը համարին թէ այր մարդ առաւել բարձր ու Թանկագի՞ն է, յառաջ բերելով այն բանը՝ թէ Պօղոս գնահատեր է. այր մարդը՝ գլուխ կնոջ անուանելով. անշուշտ գլխոյն պատուականութիւն բարձր է. պէտք է մեծագնի վաճառել: Երանի՜ թէ այդպէս լինէր, այր մարդիկ ճանչնային իրենց նախապատուութեան պարտիքը, ճանչնային ամուսնական սիրոյն անգին արժանաւորութիւնը եւ զայն չփոխէին նիւթական դրամին եւ ընչից հետը:

Այլ գիտեմ ես, ձեր նպատակն այդ չէ, ո՛վ դուք չահավաճառ ընտանիքը. կ'աղաչեմ մի զայրանաք, թէ այս անունով կը կոչեմ ըձեզ. չահագիտութիւն հրապարակի վաճառանոցէն ելաւ եւ ձեր սիրտը մտաւ, ամուսնական սէրը մեռցուց. ամուսնութիւնը առեւտուրի փոխեց. դուք օրիորդին չափազանց օժիտներով կամ սակարկեալ գումարով եւ այսպիսի անարգ ու նուաստ միջոցներով կ'ուզէք ձեր որդւոց ապագայ կեանք պատրաստել: Մեր իմաստուն նախահայրը միայն մի անօժիտ կին բաւ համարեց իբրեւ իւր կենակից ընկեր եւ զայն բարոյական կեանք կոչեց: Դուք Աստուծոյ այս պարգեւած կեանքը չատ չհամարելով՝ կ'ուզէք որ կնոջ բերած նիւթական կեանքո՞վ ապրիք. կ'ուզէք որ կինը իւր հաց, իւր հանդերձը, իւր հայրենի տնէ՞ն բերէ: Վա՜չ, որչա՞փ չատ գոհ կը լինիք եթէ իւր էրկան համար մեծագումար դրամագլուխ մի եւս հետը բերէ եւ նուիրէ. հոգ չէ թէ սիրտ եւ սէր չը նուիրէ. հոգ չէ թէ կրթութիւն եւ կնոջ վայելուչ արժանաւոր ձիրքերը չունենայ:

Թողում ձեր ծնողքը, ուղղակի ձեզ հետ խօսիմ, ո՛վ դուք ամուսնացող երիտասարդք Հայոց, չգիտեմ ձեր մայրեր, մայրեր. եւ ընտանիքը, ձեր ամուսնութիւնը չահավաճառութեան միջո՞ց կը համարին, եւ բարւոք կը դատին առանց ձեր քըրտանց՝ ձեր բախտը պատրաստել, դուք կը հաւանի՞ք, կը գիջանի՞ք եւ կը նուաստանա՞ք այնչափ, որ կնոջ հացով ապրիք, կնոջ չնորհիւ ընկերութեան մէջ պատիւ ունենաք եւ յայնժամ պարծի կին թէ ես հարստացուցի զայրս եւ այլն:

Եթէ ասէք թող մեր կիները մեզ հարստութիւն բերեն. թող

նոցա բարոյական արժանաւորութիւնը պակաս լինի· այդ հաշիւը ներկայ աշխարհիս մէջ աւելորդ է· մարդիկ ինչպէս կ՚ուզեն թող դատեն։

Եթէ այսպէս, ուրեմն ցոյց կուտաք, թէ պարտուց եւ իրաւանց կշիռ չունիք· պատուոյ զգացումն չունիք, արութեան վայելուչ մեծանձն ոգի չունիք։ Ցոյց կուտաք նաեւ թէ անգործ էք· անարուեստ էք, անվաստակ էք· պարապորդ կը շրջիք, բախտի միայն սիրահար էք հայրենի արհեստները կը մերժէք, ցածութիւն կը համարիք· որպէս թէ մտքով, կրթութեամբ բարձրանալով ազնուացած էք· երկաթագործի, կօշկակարի եւ դերձակի խանութէն անցնիլ չէք ուզեր· դէպի Բարձըր դուռը կը հայիք, կառավարութեան պաշտօնեաները կ՚ուզէք· դոյզն քրտինքով ամսական առնել կը բաղձաք· չը տեսնալով նոցա վիճակը, որոց կեանքն եւ սկզբունքն այդ է միայն։ Կամ դէթ գիջանելով վաճառականութեան եւ կամ դրամագրութեան կը ցանկաք։ Բարի է ձեր այս ցանկութիւնը, միայն թէ դրամագլուխ կը պակսի։

Արդեօք սորա համա՞ր դուք ամուսնութիւն կը սիրէք· թերեւս այդ միջոցով կարենաք մի դրամագլուխ ձեռք բերել· երանի՜ թէ կարենայիք զայն իմաստութեամբ ի գործ դնել, երանի՜ թէ բախտի այն կորստական հրապարակը մոռնայիք, ընտրէիք միայն հասարակաց շահավաճառութեան վաստակը, ինչ որ արդար եւ ապահով է։

Երիտասարդք Հայոց, դուք սովորական խօսք մի ունիք, զոր յառաջ կը բերէք իբրեւ իրաւացի փաստ· ուստի տրտունջ բառնալով կ՚ըսէք· թէ մենք հարսնցու օրիորդներէն որչափ հարստութիւն պահանջեմք, այդ դարձեալ նոցա տարապայման պճնասիրութեան համար է· այլ քննենք արդ թէ պճնասիրութիւնն եւս որո՞ց համար է։ Փաստաբանող կիները քաջ պատասխան կու տան, թէ մեր պճնասիրութեան պատճառը՝ միայն մեր վայելչասէր բնաւորութիւն կամ խաբուսիկ նորասիրութիւն չէ, ինչպէս կը կարծուի, այլ առաւել այր մարդոց աչքին հաճոյասիրութեան կերպերով հաճոյանալ։

Ուրեմն յայտ է թէ դուք եւս հրապուրուած էք եւ իրօք կը սիրէք պճնասիրութեան կերպերով հաճոյանալ։

Ուրեմն յայտ է թէ դուք եւս հրապուրուած էք եւ իրօք կը սիրէք պճնասիրութեան ցոյցերը· միթէ կիներն ապո՞ւշ են, փորձել չգիտե՞ն։ Ապա թէ ո՛չ իշխանութեան կշիռը ձեր ձեռքն է· չափ ու սահման դրէք, դուք այր մարդիկ էք· կնոջ տիրա-

*կան գլուխ էք, հեղինակութիւն ունիք, հանճար ունիք, ուսեալ էք. կրթութեամբ կը պարծիք. շահավաճառութիւն, վաստակ, դանձ, տնտեսութիւն, ամէն բան ձեր կամաց ձեռքն է. աշխատեցէք, հասկցուցէք կնոջ որ պճնասիրութիւնը՝ ձեզ համար հաճելի չէ. հասկցուցէք թէ ունայնասիրութիւն է, կարճմտութիւն է, անօտի մսխանք է, տնաւերութիւն է, վախճանը չքաւորութիւն է, եւ ի վերջոյ ընտանեկան բարեկեցիկ կեանքըն ու երջանկութիւն կը բառնայ եւայլն:*

*Հասկցուցէք նաեւ թէ կնոջ ճշմարիտ փառքն ու զարդն արտաքին փայլող ու մաշածոյ հանդերձին վերայ չի կայանար, այլ առաւել նորա ներքին ոգւոյ արտափայլող գեղեցկութեան վերայ. որ է համեստութիւն, անկեղծ ամուսնասիրութիւն, հաւատարմութիւն, երկիւղածութիւն, հնազանդութիւն, զաւակաց դաստիարակութիւն, տանտիկնութիւն և տընտեսող խնայութիւն, եւայլն: Ցոյց տուէք թէ առաքինի կնոջ նկարագիրն այս է, եւ իսկապէս այս է միայն նորա ճշմարիտ գեղեցկութեան փառքն, որ ոչ կեղծանի եւ ոչ ծաղկի նման կը թոռմի:*

*Իսկ եթէ տակաւին չհամոզուին կիները, դուք անպարտ էք. թողէք, ձեռնթափ եղիք թող նոքա ունայն զարդին եւ գեղխութեան հետ ամուսնանան, որոց անձնատուր եղած են սրտով ու հոգւով:*

*Այլ դուք սպասեցէք, երիտասարդք Հայոց, ժամանակ բերաւ այս գեղխութեան օրերը, ժամանակ դարձեալ պիտի բերէ զգաստութեան օրերը, յորում դուք եւ կիները պիտի սթափիք առհասարակ այս նոր խելագարութենէն, եւ անագան ուրեմն պիտի ճանչնաք, ձեր անցելոյն յոռի ընթացքը եւ պիտի գիտնաք թէ ճշմարիտ ամուսնութեան պայմանը սէրն է, որ սերտ կը կապէ երկու ամուսնեաց սրտերը ի միութիւն, ադամանդ ոսկի, եւայլն հարստութիւնները կարող չեն պինդ պահել այդ սուրբ կապը, երբ դոքա սպառին՝ իսկոյն կը քանդուին այն ամէն կեղծեալ կապերը, որ կամ փեսային ճոխութիւն եւ կամ հարսին հարուստ օժիտները կը կապեն: Ես տեսայ Հայոց Պատրիարքարանի դատարանին մէջ եւ կը վկայեմ այսօր թէ այդպիսի կապերը որչա՜փ դիւրախզելի են: Վասն զի երբ ամուսնական սէրը՝ նիւթին վերայ հաստատուի, նիւթը կը սպառի, սէրը տեղի կուտայ իսկ երբ բնական պարզ եւ ճըշմարիտ սիրոյ վերայ հաստատուի, մինչ ի գերեզման անշարժ կը մնայ միութեան շէնքը, եւ ոչ երբէք սպառելով կը չքաւորի*

սիրոյ հարստութիւնը: Երջանիկ են այդ սիրոյ միաւորեալ ամուսինքը, որ իրենց ընտանեկան կենաց հիմն՝ միայն սիրոյ վիմին վերայ կը հաստատեն, իմաստութեամբ խորհելով՝ թէ այդ կենդանի սիրոյ հիմն է, որ կարող է միայն անկործանելի հաստատուն պահել ընտանեկան կեանքին երերուն չէնքը՝ աշխարհին հողմերուն եւ հեղեղներուն բաղխման առաջ:

Բաւ համարելով այսքան՝ կ՚աւարտեմ հարսնախօսութեան ճառը, կը յորդորեմ զձեզ եւ կ՚աղօթեմ ձեզ համար, երիտասարդք եւ կուսանք Հայոց, որ դուք զգաստութեամբ խորհիք. դառնայք ներկայ կորստեան ճանապարհէն, ի բաց թողուք արտաքին նիւթական կապերն. ճանչնանք ամուսնական սիրոյ բարձր խորհուրդը. եւ միայն եկեղեցւոյ պատուիրանին համեմատ սուրբ սիրով կապուիք. զոր կ՚ամրապնդէ Աստուծոյ բանին հզօր ձեռքը, որով միայն կապեց դրախտի ընտանիքը:



Ը.

# ՀԱՐՍԱՆԻՔ
## ԵՒ
## ԽՈՐՀՈՒՐԴ ՊՍԱԿԻՆ



ՀԱՐՍԱՆԻՔԸ՝ պսակի սուրբ խորհուրդին հրապարական ու հանդիսաւոր արարողութիւնն է. եւ չատ վայելուչ է՝ թէ որ ասենք մարդոյն Նոր Կենաց մուտն եւ տօնահանդէսն է. ուր կը համախմբին չնորհաւոր ուրախակցութեան համար, ազգականք, բարեկամք, ու դրացիք: Այս մարմնաւոր խմբին հետ կը խմբակցի Եկեղեցւոյ հոգեւոր խումբն. եւ իւր օրհնութիւն տալով կ՚օրհնէ թագաւոր փեսային եւ թագուհի հարսին պսակը եւ Աստուածային օրհնութեամբ կը նուիրագործէ երկու ամուսնացելոց դաշնադրութիւնը, զոր ի մի մարմին զուգելով երկու լծակից ամուսինները՝ կը յայտարարէ թէ այսուհետեւ անբաժանելի են: Միայն քահանային ձեռք չէ, որ կը կապէ զպսակն. այլ պէտք է հաւատալ թէ Աստուած դրախտին վճռով միացուց զիրենք. մարդ կարող չէ բաժնել մինչեւ

ի մահ եւ գերեզման։ Այս խորհրդական դաշնագրին վերայ իբրեւ վկայ ձեռն կը դնեն Խաչն իւր թեւով, Աւետարան իւր բանիւն, պաշտօնեայք օրհնութեամբ եւ սոցա հետ ժողովուրդը միաձայնելով կը գոչէ ամէն, եղիցի՛ եղիցի՛։

Դաւիթ իւր սաղմոսին երգը հարսին ականջ նուագելով՝ կը հրաւիրէ զինքն ի տուն փեսային· «Լո՛ւր դուստր եւ տե՛ս, խոնարհեցո՛ զունկն քո, մոռա զժողովուրդ քո եւ զտուն հօր քո, զի ցանկացաւ թագաւոր գեղոյ քո»։ Իսկ Սողոմոն իւր բարձրախորհուրդ երգով բարբառել կուտայ փեսային առ հարսն· «Ահաւասիկ կաս, գեղեցիկ մերձաւոր իմ· աչք քո աղաւնիք· բա՛ց ի լռութենէդ քումմէ»։

Եկեղեցին այսպէս աւարտելով պսակին մեծ խորհուրդը, այնուհետեւ ներելով կը թոյլատրէ որ հարսնեւորք սկսին իրենց պարերգութիւն եւ թմբուկը։ Այդ եւս առանց նշանակութեան չէ, զոր վայելուչ կերպիւ կը բացատրէ Շնորհալի Սուրբ Հայրապետ իւր Ընդհանրական թղթոց մէջ· թէ հարսանեաց թմբուկն բարձրագոչելով ձայն կուտայ լսող ժողովուրդին ու կ՚իմացնէ· որ հարսանիքը խաւարին տակ ծածկուած գաղտնի չարութիւն չէ· այլ Եկեղեցւոյն առաջ, լուսոյն առաջ, հրապարակի մէջ, անպատրուակ ճշմարտութիւն է։ Ահաւասիկ եւ մենք մեր ուրախութեան թմբուկը զարնելով իբրեւ մունետիկ բարձրաձայն կը քարոզեմք· թող լսէ ու տեսնայ բոլոր ժողովուրդը։ Վասն զի ամուսնութեան զաւակներ միայն ծնողաց սեպհականութիւն չէ, այլ եւ ժողովուրդին իրաւունքն է, յիշէ ու ճանչնայ իւր նորածին անդամները· թէ արդեօք հարազատ ծնո՞ւնդ են նոքա սուրբ եւ պարկեշտ ամուսնութեան։ Եկեղեցւոյ եւ ժողովուրդին զաւակները պէտք է սուրբ ամուսնութեան յայտնի դրոշմն ունենան· եւ ժողովուրդն այդ իսկական դրոշմով ճանչնայ եւ իւր զաւակները· ապա թէ ոչ, ոչինչ զանազանութիւններ չէին լինէր պոռնկորդւոյն և սուրբ ամուսնութեան ծնունդներու մէջ։

Կը խորհիմ թէ աշխարհիս ուրախութեան այլ եւ այլ մեծամեծ հանդէսները, կարելի՞ է համեմատել հարսանեաց ուրախութեան հետը։ Ոչ թագաւորաց թագադրութեան աշխարհախումբ հանդէսը, ոչ պալատներու եւ իշխանաց մեծակոչ խրախճանք, եւ ոչ եւս ժողովրդոց դասին զուարճական խնճոյքները արժանի են համեմատելու։ Ես այնպէս կը համարիմ թէ հարսանեաց սոսկ մի թմբուկը՝ Իտալական նուագներէն ուրախարար է· եւ չինականի փեսայն՝ բարձր է թագա-

*պսակ Թագաւորէն։ Վասն զի աշխարհիս այլ ամէն ուրախութիւնք միայն զրաւական զբօսանք են մարդոյն ունայնասէր մտաց, յորում պահ մի հաճոյք, հրճուանք, փառք կը ըզգայ․ այլ երբէք չանցնիր սրտի ցանկութեան անհուն բաղձանքը՝ դարձեալ կուգայ եւ կը տիրէ մելամաղձիկ տխրութիւնը։*

*Իսկ հարսանեաց ուրախութիւնը իւր սուրբ նպատակով հանդերձ՝ մարդոյն կենաց համար տիրապէս կեանք է եւ ուրախութիւն․ զի միոյն մէջ կեանքը իւր անչափ ցանկասէր տենչանքներով վերջապէս կը մաշի եւ կը սպառի․ բայց միւսին մէջ կեանքն անթառամ կը մնայ, եւ Եկեղեցւոյ պարտէզ իւր նորաբոյս ծաղիկներով կը ծաղկազարդի։ Թէպէտ մարդոյն կենաց աշուն կը հասնի եւ կը թօթափէ զայն գերեզմանի մէջ, ինչպէս դեղնած տերեւն ի ծառէն։ Սակայն առաքինի մարդ, որ հարսանեաց օրհնութեամբ իւր տոհմական ընտանիք եւ սերունդը կենդանի կը պահէ՝ նա միշտ կ՚ապրի եւ կենդանի կը մնայ․ զի նորա կեանքը յաջորդաբար իւր զաւակներն կը շարունակեն։*

*Խօսինք այժմ հարսանեաց ուրախութեան եղանակին եւ պայմանին վերայ։ Ճշմարիտ է, որ հարսանիքը ընտանեկան ուրախութեան մեծ օրն է․ ո՛վ կարող է ասել, մի՛ ուտեր, մի՛ խմեր, մի՛ երգեր, մի՛ պարեր, մի՛ զուարճանար, զի այդ ամէն հարսանեաց ուրախութեան կարեւոր պայմաններն են, միայն թէ չափով, կշռով եւ պարկեշտութեամբ լինին։*

*Երանի՜ թէ ծնողք,, որ հարսանեաց կազմութեան հանդիսադիր են եւ հարսնեւորք, որ կամ ազգական եւ բարեկամ են առ հասարակ՝ լաւ ճանչնային հարսանեաց նշանակութիւն, պատիւ եւ նորա խորհրդական մեծութիւնը, որով թերեւս մեծ զգաստութեամբ զգուշանային անմեղ ուրախութեան հետը՝ մեղք չի խառնել։ Եւ դու գիտե՞ս, ընթերցող, թէ ի՞նչ է այս մեղք, որ հարսանեաց մէջ գիտես թէ մարդիկ սովորած են գործել եւ մեղք չի համարել։ Այս մեղքն է անչափաւորութիւնը ամէն վայելմանց մէջ, զեղխութիւն սեղանոյ, զեղխութիւն այլ եւ այլ հանդերձանաց, զեղխութիւն արբեցութեան․ եւ այլ այսպիսի զեղծմունքները, յորոց շատ անգամ կռիւ կը ծնանի, եւ հարսանեաց տուն՝ սգոյ տուն կը դառնայ․ մերթ եւս երկու խնամիներու նոր ընտանեկան ազգակցութեան կապը կը խզէ։ Արբեցութիւնը միայն կռիւ չի հաներ, այլ երբեմն եւս անհամեստ կերպեր եւ շարժմունքները յառաջ կը բերէ․ զոր օրինակ անպարկեշտ խեղկատակութիւնք՝ ծաղրութեան համար․ ան–*

վայել եւ լկտի խենեշանքները, որք առ հասարակ պարկեշտութիւն եւ պատկառանք սիրող ընտանեաց համար պէտք է զզուելի համարուին. եւ խորշին այդպիսի կատակերգու հարսնեւորներէն. որ հարսանեաց պատիւ եւ ընտանեկան ուրախակցութիւնը՝ խաղ կը համարին. քաղաքավարութեան, վայելչութեան շնորհը կ՚արհամարեն, եւ միանգամայն գայթակղութիւն կը լինին պարկեշտ ընտանեաց եւ իրենց մատաղ զաւկներուն. որք բնապէս ծաղր կը սիրեն եւ միշտ հակամէտ են կատակով զբօսնուլ: Յոռի խեղկատակութիւնը միայն տղայոց համար հաճոյական խաղ կամ զբօսանք չէ. այլ առաւել տղամիտ մարդկանց, որոց ճշգրիտ օրինակը կը տեսնուի թատրոններու մէջ. երբ ի վերջոյ զաւեշտական խաղ մի կ՚սկսի, ինչպէ՞ս ամէնքն ի միասին ծաղր կ՚արձակեն: Զարմանալ պէտք չէ. զի մարդիկ յաւէտ ծաղրի եւ կատակի կեանք կը սիրեն քան թէ լուրջ, ծանր եւ զգաստ կեանք: Զմեղադրենք ժողովրդական ընտանիքը, թէ ոմանք իրենց հարսանեաց ուրախութեան օրը միայն դիպուածով այդ խեղկատակութեան կեղծմունքները կը սիրեն. երբ աշխարհիս պալատականաց, իշխանաց, ազնուականաց հաճոյական կեանքն խեղկատակութիւն է. սորա համար է իսկ, որ խեղկատակ աղուէս ու կապիկ միմոսները նոցա դռները կը յաճախեն:

Խօսիլ չեմ ուզեր ինչպէս խօսեցայ ու գրեցի վերը, որ հարսանեաց տօնը լուրջ եւ անձայն լռութեամբ կատարուի. ո՛չ. Եկեղեցին ներելով կը թոյլատրէ, որ հարսանեաց մանկունք երգեն ու պարեն, մինչ փեսան ընդ նոսա է, ինչպէս կը խօսի Յիսուս. միայն թէ Քրիստոնէական պարկեշտութիւն, ընտանեկան պատիւ, եւ վայելուչ քաղաքավարութեան պարտիքները չմոռցուին, կարծելով թէ հարսանիքը՝ ծայրայեղ ազատութիւն եւ ուրախութիւն կը նշանակէ. որոյ վախճանը միշտ տրտմառիթ հետեւանքներն են: Ցաւով ու փորձառութեամբ կը խօսիմ. որ հարսանեկան չափազանցութիւնք՝ ոչ միայն թագաւորին թագն ու պսակ քօղածածուկ հարսին պատկառանքը կը քամահրեն. այլ եւ Եկեղեցւոյ սուրբ խորհուրդի վեհութենէն չակնածելով՝ առանց երկիւղածութեան կը վարին: Բաւ չէ այս, շատ անգամ եւս պսակադիր սուրբ տաճարի գաւթին մէջ Բաղդասարի արբեցութեան խրախճան կը կազմուի. արբեցողաց բարձրաձայն աղաղակներով՝ պաշտօնէից աղօթքին եւ շարականին օրհներգութեան ձայները կը խանգարուին:

Այս ռամիկ եւ գռեհկական վարմունքը գրեթէ քիչ ժամանակ յառաջ առ հասարակ տիրած էր Հայոց այլեւայլ գաւառներու մէջ, բայց արդի ժամանակը բաւական չափաւորուած է, եւ այս զգաստութեան շնորհը՝ յայտ է որ դպրոց եւ ուսմունքը իրենց լուսով փոքր ի շատէ ծաւալեցին մեր ժողովրդոց վերայ․ եւ ժամանակին անձկութիւնը պարտաւորեց Հայոց աղքատ ընտանիքը իրենց յոռի ընթացքը ուղղել, եւ թողուլ նաեւ եօթնօրեայ հարսանիքը, այն զեղխ ու չռայլ ծախքերը․ որ միայն ուտելու եւ խմելու համար կը պատրաստուէին․ հարսանեաց տունը իւր ամէն լիութենէն կը դատարկուէր։ Ո՛վ չի գիտեր թէ եօթնօրեայ հարսանեաց պատրաստութիւնը բաւական կը լինէր թերեւս մի ընտանիքը մինչեւ երկու տարի չափաւոր կեանքով պահել։ Ես չեմ յիշեր մեր գաւառացի ազգայնոց թէ քաղաքացի եւ թէ գիւղացի ընտանեաց այն մասն․ որ պարտքով հարսնիքը կ'ընեն․ պարտքով այդ անպէտ ծախքերը կը հոգան․ կ'անցնի հարսանիքը, եւ ուրախութիւնը կը տեւէ մի փոքր ժամանակը․ եւ ահա փեսան կը պարտաւորի թողուլ ընտանիքը եւ նորահարսին ամուսնական քաղցր սէրը՝ երթալ ի պանդխտութիւն, հոգալ իւր պարտքը եւ միանգամայն խեղճուկ ընտանեաց պարէն հայթայթել։ Երկու պսակաւորաց համար այս միջոցն քանի դառն ու դժուարին է․ փեսան իւր պանդխտութեան մէջ, հարսն իւր սեւաքօղ առագաստին մէջ․ սրտամաշ անձկութեամբ օրերը կ'անցնեն․ որոց կեանքը լի է ամենայն դառնութեամբ․ մանաւանդ երբ պանդուխտ ամուսին իւր պարտիքը կը մոռնայ, եւ իւր վշտացեալ կինը հացի կեանքէն եւս կը զրկէ, սիրոյ կեանքը զլանալէն յետոյ։ Ես չեմ ուզեր այս կեանքին դառնութիւնը իւր ամէն մասերով նկարագրել․ այլ կը թողում այլում տեղւոջ դորա տխուր պատկերը հանել․ կը թողում նաեւ որ մեր պանդուխտ եղբարք այդ կեանքին դառնութիւնը ինքնին ճաշակելով զգան․ խղճան ու ճանչնան իրենց ամուսնական սուրբ պարտիքները։

Ժամանակ եւ ժողովուրդի զարգացումն համառօտեց եօթնօրեայ հարսանիքն թէ գաւառաց եւ թէ նոյն իսկ մայրաքաղաքիս մէջ․ ուտելեաց եւ ըմպելեաց ընդունայն ծախսերը գրեթէ կը վերջանան հետզհետէ։ Սակայն ժամանակն եւ անկատար ազատ քաղաքակրթութիւնն՝ զեղխութեան եւ չռայլութեան ուրիշ մասերը աւելի բազմապատկեց, հանդերձի եւ նորասիրութեան այլ եւ այլ պերճանքները․ ոսկեկիտուած, ա-

դամանդեայ եւ այլն մեծագին քարերով մատանի, պսակ, ոսկեշղթայ, մանեակ եւ այլ Եւրոպական նորանոր զարդերը մըտցուց մեր ընտանեկան կեանքին մէջ. որով շատ ընտանիք այդ ճոխ հանդերձանաց պատրաստութեան համար ձեռնթափ լինելով՝ կը կասին ամուսնական կեանքէն. որպէս թէ ադամանդ եւ ոսկեզարդերը՝ ամուսնական կեանքին համար հացին չափ կարեւոր պիտոյք են։

Առաւել զարմանալին եւ ցաւալին այն է, որ հասարակ ժողովրդեան ընտանիքն եւս այդ պերճանաց բաղձանքն ունին առանց կշռելոյ իրենց չափն ու վիճակը, կը կարծեն թէ ադամանդն ու ոսկեզարդն անհրաժեշտ օժիտներ են հարսին, եւ թէ այս ինչ կամ այն ինչ հանդերձանքները պէտք են հարսանիք կազմելու համար։ Այդ ապրուստի կարօտ ընտանիքը այնպէս կ'երեւակայեն եւ կ'երազեն միշտ թէ՝ կօշկակար, երկաթագործ, դերձակ եւ արհեստաւոր ժողովուրդներ կարող են աշխարհիս պալատականաց, հարուստ ազնուականաց հետը մըրցիլ եւ նոյն պերճութեամբ ու կեանքով ապրիլ։

Մենք չենք մեղադրեր, գիտենք թէ մարդոց բաղձանքն ազատ եւ անզուսպ է. այլ ի՞նչ օգուտ ունի այդպիսի բաղձանաց ձգտումն. երբ մարդն բուն կեանքի հացէն եւ ամուսնութենէն կը զրկէ։ Ի՞նչ օգուտ ունին նմանապէս հարսանեաց պատրաստութեան այն մեծամեծ հոգերը, երբ ամուսնութենէն յետոյ ընտանեկան կեանքին վերայ բազում հոգերը կը յաւելնուն, հացի աշխատաւորներն մարմնով մաշուելէն յետոյ՝ չարաչար հոգածութեամբ եւս հոգի եւ կեանք կը մաշեն։ Եւ թէ հարցնես թէ ինչո՞ւ կը մաշիս, նա քեզ պատասխան կուտայ, թէ կին առի, ամուսնացայ, ծախուց հաշիւ ծանրացաւ. վասն զի ճոխ հարսանիք արարի, Ֆրանսիական սեղան յօրինեցի, թողլով Հայոց գինին, Պօրտոյի շիշերով շատ կենաց բաժակները պարպեցին հարսնեւորք, քսան տեսակ կերակուր եւ ուրիշ անուշեղէն համեմները պատրաստեցի եւայլն։ Թող այս, որչա՞փ գումար վատնեցի՝ ադամանդի ոսկեզարդուց եւ այլ կերպասեղէն զգեստուց համար։ Ամբողջ դրամագլուխս գրեթէ ոչնչացաւ, երջանիկ պիտի լինէի՝ թշուառացայ։

Խեղճ նոր ամուսնացող երիտասարդը անագան ուրեմն կը զղջայ կստրջանայ իւր ընդունայն ծախքերուն համար. երանի՜ թէ նախատեսութեամբ զուշակէր այդ օրը, իւր հարսանիք եւ այլ ամուսնական ծախքերը, ու չտեսնէր այդ նեղ ու դառնաբեր ապագան. որ հարսանեաց ուրախութեան յաջորդող տը-

խուր հոգածութեան կեանքն է։

Վերջ տանք հարսանեաց ճառին, եւ խրատ տանք ձեզ, Հայոց ընտանիք, նախատես ու սրատես եղէք. այդ չար ապագան հարսանիքէն ամուսնութենէն յառաջ գուշակեցէք. Թողէք հարսանեաց զեղխութեան պէտքերը, Թողէք զարդուց շռայլական պերճանքները, ճանչցէք պատուական եւ սուրբ ամուսնութեան ճշմարիտ պայմանները. որ ոչ հարսանեաց մեծամեծ պատրաստութիւնքն են, ոչ ոսկին է, ոչ ադամանդ է եւ ոչ եւս շքեղ զարդերու ցուցամոլութիւնք։ Դոքա իբրեւ փուշ կը հեղձանեն ամուսնացելոց ծաղկեալ սէրը։ Մի հաւատաք նոցա, որք այնպէս կը կարծեն Թէ կնոջ արտաքին շքեղ զարդը՝ կը յաւելու սէրը եւ կը զօրացնէ, ո՛չ, այդպէս չէ. փորձ եւ աշխարհ վկայ Թող լինին, որ զարդն ու պերճանքը սէրը կը նուաճեն. սորա համար է որ շատ անգամ շատ ընտանեաց կեանքէն ծաղիկ սէր կը ցամքի եւ կը Թօշնի, երբ կնոջ զարդն ու պերճանք պակսին։

Ուստի աղօԹել պէտք է այդպիսի ընտանեաց համար որ զգաստանան, ամուսնութեան ներքին ու ճշմարիտ սէրը՝ արտաքին պաճուճանաց հետ չի խառնեն. սոյդ կշռելով եւ համեմատելով. որ զարդի պաճուճանքը ամուսնական անբիծ սիրոյն հետ երբեք կշիռ եւ նմանութիւն չունի։ Բիւր մեղադրանաց արժանի է այն կինը որ կը դրժէ եւ կը մերժէ զսէր, եւ զարդն առաւել կը խնդրէ։ Իսկ բիւր գովութեանց արժանի է այն կինը, որուն համար զարդ, պերճանք, ադամանդ, ամենայն ինչ իւր ամուսին եւ նորա սէրն է եւ պատիւը։

Ուստի յորդոր կարդամ հայրաբար բոլոր ամուսնացելոց որ ի բաց Թողուն ընդունայն պերճանքներ, որ սեղանին հաց կը բառնան, փոխանակ լիութեան չքաւորութիւն կը տիրէ եւ այնուհետեւ կ՚սկսի խռովութիւն, վասնզի սիրոյ կեանք ամրապինդ պահելու համար, միԹէ մի գլխաւոր պայմանն եւս հացի կեանք չէ՞։

———o———

Թ.

# ԿՈՉՈՒՄՆ ՀԱՐՍԻՆ
## ԵՒ
# ՓԵՍԱՅԻՆ

———o———

Այս կոչումն սուրբ եւ նուիրական է։ Արարչին տիրական օրէնքն է, Դրախտի օրհնութեան ձայնն է, երկու զուգակցաց միութեան հրաման եւ հրաւէրն է, որով զհարսն ի մայրութիւն կը կոչէ, փեսայն ի հայրութիւն։

Երկու պսակաւոր այս գորովալի եւ խորհրդական բարձր անունները նոր կ՚ստանան, եւ տիրապէս այն օրէն՝ երբ իրենց անդրանիկ զաւակը աշխարհի կ՚ընծայեն։ Շատ յարմար է թէ որ ըսենք, թէ այդ անդրանկածին պտուղն է իւր ծնողաց կընքահայր եւ անուանադիրը, որ առաջին սիրաշարժ բարբառը՝ հայր եւ մայրն է։ Չկան աշխարհիս վերայ այլ անուանք, կամ զանազան վայելուչ եւ փառաւոր տիտղոսները որ հաւասարին եւ համեմատին սոյն սքանչելի անուանց հետը։ Թագաւոր, կայսր իշխան, ժողովուրդ, ազգ եւն. այս մեծափառ անուանք իրենց բարձրանշան տիտղոսներով հանդերձ, ցած ու նուաստ են՝ հայր եւ մայր սիրելի ու պատկառելի կոչման առաջ։ Քանզի հայր ու մայր անուանքը՝ նախասկիզբն արմատ են այլ ամէն անուանց, Թագաւոր, իշխան, ժողովուրդ, ազգ. հայր ու մայր փարելի անուանց ծնողական շառաւիղներն են. որ նոյն միացեալ արմատէն եւ երկճղի բնէն կը բուսնին եւ կը սփռեն աշխարհիս վերայ։

Տես դու, թէ քանի՞ յատկանիշ եւ խորհրդական նշանակութիւն ունին այդ աշխարհանազ անուանք. սէր, ծնունդ, կեանք, գորով, գգուանք, գութ, որդեսիրութիւն, խնամք, եւայլն։ Երկու նորապսակ ամուսինք մինչ երբեմն իբրեւ զաւակ եւ սոսկ իրենց մկրտութեան անունով միայն կը կոչուէին. իսկ այժմ այդ անուանց վերայ կը յաւելուն նաեւ հայր եւ մայր կոչումն, զաւակ ծնանելով նոցա՝ ընկերութեան կեանքին մէջ կը բարձրանայ իրենց կոչումն եւ կը միանայ երկնաւոր Հօր հետը, որ տիեզերաց հայր եւ հեղինակն է, եւ որ զԱ-

դամ հայր, եւ զԵւան մայր իբրեւ նախածնողք մարդկութեան կանուխ ծնաւ Դրախտի մէջ իւր նորաստեղծեալ արարչութեամբ։

Ո՛վ, ի՞նչ զարմանալի է. Երկինք ու Երկիրը ի միասին կը մշակեն ամուսնական եւ խորհրդական դրախտն։ Երկնից հայր երկնքէն կ'օրհնէ. սոքա երկրիս վերայ զաւակ կը ծնանին ու կ'աճին. այլ չը գիտեն թէ ո՞րպէս։ Լուռ լեր, բնագէտ, դու եւս չը գիտես այն խոր ու անյայտ օրէնքները, թէ ի՞նչպէս մանուկ իւր մօր յարգանդ կը նկարի ի մարդ եւ ո՞ր ձեռքն է, որ այդ չքնաղ պատկերը անհուն ձեւերու տիպով կը նկարէ։ Ամենայն ինչ բնական է, բնական օրէնքով է կ'ասես, ու կը վճռես. որպէս թէ՝ այդ օրէնքները հրաշք չեն մեր տգիտութեան առաջ. կամ թէ այդ յաւիտենական օրէնքներուն վարիչ չիկայ, օրէնք ինքնին կը հրաշագործէ։ Ո՛չ, այդպէս չէ, դու եւս խոնարհիր հպարտացող գիտութենէդ, եւ մեզ հետ խոստովանիր ու հաւատա. միայն Երկնից Հօր ձեռքն է, որ մանուկներու փոքրիկ հասակները ի վեր կը քարշէ. Երկրի ծնողք կաթն ու հաց կուտան. Երկնից Հայր բանաւորութեան լոյս եւ հանճարը. սոքա ձեռագործ ու չինովի հանդերձ կը պատրաստեն. իսկ նա բնական գեղով զարմանազան կը զարդարէ, սոքա մեծ աշխատութեամբ ուսումն եւ գիտութիւն կ'աւանդեն, եւ նա մանկան փափուկ ուղեղի մէջ խելքն ու հանճար կը զետեղէ։

Ահա այսպէս երկինք եւ երկիր միանալով մշտապէս կ'արարչագործեն մարդկութեան յարատեւող կեանքը. եթէ պահ մի դադրին դրախտի ընտանեաց մէջ այս արարչագործող եւ մշակող ձեռք՝ կեանքը կը մեռնի ու կը սպառի մարդն աշխարհէս։

Այսչափ մեծ եւ այսչափ բարձր է հարսին ու փեսային մայրութեան եւ հայրութեան կոչումն։ Երանի՜ թէ մտախոհ լինելով ճանչնային թէ յո՞ր կոչումն նուիրուած են, եւ թէ ի՞նչ նպատակ ունի մարդոյն ամուսնութեան կեանքը։ Շատ ծանծաղամիտ ու կարճամիտ են նոքա, որ կը կարծեն թէ ամուսնութիւնը սոսկ մարմնոյ հաճոյք է, կամ խաղ ու զբօսանք եւ աշխարհիս շահավաճառութեան մէկ հաճոյական ձեւը. եւ կամ թէ բնաւ պէտք չիկայ հայր եւ մայր անուան, աշխարհիս վերայ սեպհական տուն եւ ընտանիք կազմելու. ամէն բան անորոշ անխտիր թող լինի, զաւակները՝ ժողովուրդին համարուին, ժողովուրդ՝ մարդկութեան, եւ մարդկութիւն առ հա-

*սարակ աշխարհիս վերայ ապրի այնպէս, ինչպէս, անտառին մէջ անասունք եւ երկնից մէջ թռչունք, որոց ոչ տուն, ոչ ընտանիք, ոչ տոհմական սերունդ, ոչ սեպհականութիւն կան, եւայլն։*

*Նուաստ անասնաբարոյ եւ ամբարիշտ են այդ մոլորամիտ մարդիկ, որ այդպէս կը կարծեն, կը դատեն, ամուսնութեան, հայրութեան, մայրութեան եւ ընտանեկան իրաւունքները ջնջել բառնալ կ՚ուզեն մարդկային ընկերութենէն. այնուհետեւ այլ եւս զանազանութիւն չէր մնար խօսուն մարդոց եւ անխօսուն անասնոց մէջ։ Այդ մոլար կարծիքը՝ մարդոց կեանքը բանականութենէն կը հանէ. ընկերութիւն կ՚եղծանէ, քաղաքակրթութիւն կը քանդէ. եւ կը թողու, որ մարդը լոկ իւր զգայական հաճոյքով վարի եւ ապրի։*

*Եթէ մարդոց կեանքը նուաստանար այդչափ, չիմանային հայրութեան ու մայրութեան պատիւ. չգիտնային թէ ի՛նչ է մարդոց կոչումն հոգւոյն անմահութիւն եւ բանականութեանց շնորհ, վաղուրեմն պէտք էր որ երթային գտնէին առիծին անտառը եւ աղուէսին որջը. հարկ չէր մնար այլ եւս տուն շինել, ընտանիք կազմել, քաղաք հիմնել, ընկերական կեանք վարել, եւայլն. որոց վերայ փոքր ի շատէ գրեցի Ամուսնութեան յօդուածին մէջ։*

*Երկու ամուսինք հայրութեան եւ մայրութեան կոչումէն յետոյ՝ ունին տակաւին իւրաքանչիւր այլ եւ այլ կոչումներ եւ պարտիքը. զորս կը թողում հետեւեալ գլխոց մէջ յառաջ բերել ըստ պատշաճի նիւթոյն. միայն աստ չեմ մոռանար յիշել, որ այդ երկու նորապատուաստ Արմաւենիքը պէտք է ամենոյն խնամով եւ անբիծ սիրով պատատեն զիրար, հարսն իւր համեստ քօղով, փեսայն իւր բաց ճակատով. եթէ մէկն արեւ է եւ միւսն լուսին, երկուքն եւս առանց ստուերական բծի պէտք է փայլին անարատ սիրոյն պարզ ճառագայթներով։*

*Հարսին հաւատարիմ նշանաբան եւ բուն բարոյական եւ արժանաւոր օժիտը սէրն է միայն, սէր, որ անխառն է, անկեղծ է, եւ արտաքուստ շպարեալ չէ. սէր, որ խանդակաթ սրտով ու հոգւով կը միանայ սերելոյ եւ կեանք պահելոյ համար, եւ այլ ուրիշ նպատակ չունի։ Աշխարհիս բոլոր ադամանդները. բոլոր զարդուց պերճանքները, բոլոր հարստութեան գանձերը թէ ի կշիռ բերես, ամուսնական սիրոյն հետը չեն հաւասարիր. երբէք արժանաւորութիւն չունին այդ նիւթական օժիտները բնական ու բարոյական սիրոյ օժիտին տե-*

*ղը բռնել։*

*Հարսին նուիրական պարտիքն է, որ նիւթական օժիտէն աւելի հսկէ իւր բարոյական սիրոյ օժիտին վերայ, չտալ երբէք զայն՝ կողոպուտ, եթէ միանգամ կողոպտուեցաւ, այնուհետեւ շատ դժուարին կը լինի զայն դարձնել վերստին։ Նոր ամուսինք իբրեւ բարոյական ճարտարապետ պէտք է որ սիրոյ հիմն ամրապէս ձգեն. եթէ առաջին անգամ քանդուի, այլ եւս հազար օժիտ կարող չեն զայն հիմնել ու հաստատել։*

*Ամուսնական սէրն անգին է, անգիւտ է, եւ քան զմահ զօրաւոր է. իր կոչումը սուրբ եւ խորհրդական է, նրա պատկեր պարզ եւ մաքուր է. թող չաղարտեն նորա պայծառ երեսը սիրոյ այլանդակ վիպասանները։ Սիրոյ ճշգրիտ պատկերահան Սողոմոն է. վայելուչ է որ հարսն ու փեսան փոխադարձ սիրոյ ձայնով երգեն առ միմեանս նորա խորհրդական երգը. «Դիր զիս իբրեւ զկնիք ի վերայ սրտի քո, եւ իբրեւ զմատանի ի վերայ բազկի քո, վասնզի հզօր է սէր իբրեւ զմահ»։ Այո՛, հզօրագոյն է սէր երկու ամուսնաւոր սիրելեաց մէջ, երկու շնչով կը շնչէ, երկու ոգւով կ՚ապրի, երկու կեանքով կը զօրանայ. եթէ մին պակասի՞ սէր կը մեռնի. զի սիրոյ կեանքը երկու սրտից միութիւնն է։*

*Ուրեմն ամուսնացելոց մեծ կոչումն եւ պարտիքն այն է, որ, երկուստեք կողմէն սիրոյ միացուցիչ վէմն անշարժ եւ անբաժանելի պահեն. ոչ ոք կարող է այդ վէմը շարժել, եթէ ինքնաշարժ լինելով չգլորի։ Նոր ամուսնացելոց սէր գարնան եղանակն է. նորատունկ դրախտ է. ծաղկազարդ բուրաստան է. զոր ամենայն խնամով պէտք է կանաչ ու մշտադալար պահել. եւ չթողուլ երբէք, որ կամ ներքին ատելութիւն եւ կամ օտարաշունչ նենգութեան խորշակը փչէ ու խամրէ սիրոյ կանաչութիւնը. եւ թօթափէ ամուսնութեան դրախտի վարդի թուփն իւր սոխակովն հանդերձ. ինչպէս հին բանսարկուն Եդեմ դրախտին մէջ Աստուծոյ նոր ընտանիքը դաւաճանեց, մահ բերաւ աշխարհը։ Գիտնալ պէտք է թէ այդ բարակ սեւ օձն՝ սիրոյ եւ միութեան յաւիտենական ոսոխն ու թշնամին է։*

*Յիսուս սպաննեց հին օձն. բայց նորա օրինակին հետեւող արբանեակներն դեռ կը շրջին աշխարհիս վերայ. եւ սողալով կը մտնեն ընտանեկան դրախտի հարսնարանը, թոյն թափելով հրապուրիչ լեզուով, սիրոյ կեանք եւ քաղցրութիւն ի մահ ի դառնութիւն կը փոխեն։*

*Ուստի ամուսնասէր փեսայն, որ ընտանեկան համեստու-*

թեան եւ հաւատարմութեան առաջին հսկող պահապանն է, եթէ կ՚ուզէ, որ ազատ մնայ օձերուն խորամանկութենէն՝ թող նախազգոյշ լինի յիշելով դրախտի պատմութիւն եւ արկածն. յորում այն պահուն մէջ Եւային կը մօտէր թելադիր օձն, երբ նա միայնակ կը շրջէր ու կ՚զբօսնուր դրախտին դարաստանը ու կը դիտէր մի առ մի գեղազան ծառոց պտուղները: Նա յայնժամ հրապուրեցաւ, երբ տեսաւ մի նոր ծառի պտուղը. որ հաճոյ էր աչաց հայելոյ եւ գեղեցիկ ի տեսանել:

Աշխարհ իրաւունք կուտայ փեսային, որ իր հարսին ճանապարհը հսկելով շրջափակէ. այլ ե՛ւ պէտք է փակէ ու կապէ փեսային ճանապարհ եւ ոտքը. երբ նա արձակ է ,ազատ է, կը շրջի ամենուրեք: Հաւատարմութիւնը հաւասար է ամուսնական պարտուց եւ իրաւանց մէջ. եւ արդարութիւնը բողոք կը բառնայ, եթէ փեսայն ինքն եւս պահապան չլինի իւր անձին վերայ, չփակէ իւր աչքը հրապուրիչ օտար առարկայէն. եւ կրից ծարաւով չխմէ օտար աղբիւրին ջուրը. բաւ համարելով իւր սեփական աղբիւրը ինչպէս կը խրատէ Սողոմոնին առակը: Ամուսնական հաւատարմութեան սուրբ պարտիքը ամենայն հաւատարմութեամբ պահելու համար բաւական չեն միայն աչք եւ հսկողութիւնը. այլ առաւել եւս լուսաւոր ե մաքուր խիղճ, պատուոյ զգացումն, ապագային ամօթ եւ չարաղէտ հետեւանքըն եւ այլն:

Եւ ի՞նչ են այդ ընտանեկան աղէտաբեր հետեւանքները. գնա՛ ի դատարանն եւ կը տեսնաս. զի այդ ամօթալի գործոց վախճանը մինչեւ հոն կը հասնին. որ երբ պատահին երկու ամուսնեաց մէջը՝ սէրն անդէն կը մեռնի, միութիւն կը քակուի, նախանձուն կրակը կը խանձէ սիրտերը, երկու ամուսինք իրարու դէմ անհաշտ ատելութեամբ կը վարին. եւ այնուհետեւ տես դու, ընտանեկան կագ ու կռիւ կ՚սկսի. բողոք, դատաստան, մի զմիով անպատկառ չարախօսութիւն, եւ մերթ եւս չարաչար զրպարտութիւն, չխնայելով բնաւ ամուսնական պատուոյն, ամենայն ինչ մերկապարանոց հանելով, ընտանեկան քօղին տակ ծածկուած ամօթն եւ այլն: Հուսկ ապա այս հետեւանքներուն վախճանը կուգայ պատիժ, տոյժ եւ տան բաժանումն որով ընտանեկան քաղցր ու խաղաղ կեանքը թէ նիւթապէս եւ թէ բարոյապէս ապերջանիկ կը լինի. բաժանեալ ամուսնեաց պատիւն ու վարկը կ՚աղարտի ընկերութեան մէջ եւ եկեղեցւոյն առաջ:

Եթէ կան ամուսնական կեանքին մէջ ուրիշ շատ դառնա–

համ ճաշակները, զոր օրինակ աղքատութիւն, Թշուառութիւն, զրկանք, զաւակաց կորուստ, եւ մերթ եւս նոցա, ստահակութիւն եւ աշխարհիս այլ եւ այլ պատահար ձախորդութիւնք եւ այլն, որք շատ անգամ ընտանիքները մոխրի վրայ կը նստեցնեն սակայն երբ ամուսնեաց սէր կենդանի է, քաղցր է, այդ ամէն դառնութիւնները կանուշցնէ, մոխրին կեանքը, դըրախտ կը լինի, ապերջանկութիւնը՝ երջանկութիւն կը դառնայ:

Իսկ երբ մեռնի ու դառնանայ մտերիմ լծակիցներու սէրը՝ այնուհետեւ աշխարհիս քաղցրութեան ամբողջ ճաշակները, երջանկութիւն իւր ամէն հանգամանքներով թէ ի միասին գան՝ կարող չեն դառնացած սէրը յանուշութիւն փոխել:

Եթէ այսպէս եւ այսչափ աղէտաբեր է ամուսնական սիրոյ մահն ու դառնութիւն. որ իբրեւ օձահար թոյն ամբողջ ընտանեկան կեանքը կը թունաւորէ. ուրեմն ո՛վ Հայոց հարսներ եւ փեսաները, ձեր մեծ կոչումն եւ հաւատարմութեան սուրբ պարտիքն այն է. որ անմեղութեամբ շրջիք աշխարհիս ընտանեկան դրախտին մէջ. խղճի արթնութեամբ խոյս տուէք այն ազատաշրջիկ մարդոց խորամանկութենէն. որ եթէ ուսեալ վիպասան են՝ դրախտի օձէն աւելի գիտեն խորամանկել. եւ եթէ ռամիկ ու գռեհիկ են՝ գիտեն չամաչել:

Եւ դուք մանաւանդ, Հայոց գաղթական ընտանիք, որ քաղաքակրթութեան մօտ կ'ապրիք, որ թերեւս մերթ կը յիշէք հին տանի հարսներաց քօղն ու եօթնամեայ անխօս լռութիւն. եւ փեսաներու յոտին կացեալ զօտեպինդ բարեւն, որ պատրաստ կը կենայ սպասաւորելու համար թէեւ ազնուական լինի, չգիտեմ ձեզ ինչպէս կը թուի հայկական ընտանեաց այս կերպն. կը հաւնի՞ք թէ կ'արհամարհէք իբրեւ վայրենութիւն համարելով նոր դարուս ազատ աշխարհին առաջ:

Այնպէս համարեցէք, ես կը լռեմ. բայց դուք կը հաւատա՞յք, եւ կը կարծէ՞ք, որ ազատ աշխարհին ազատութեան ճշմարիտ զաւակներն էք: Դու ծանիր զքեզ, եւ ես գիտեմ քո այժմեան կեանք եւ կրթութիւն. դեռ խանձարուրէն նոր ելար, ազատութիւն կը կանչես. դեռ գայթ ի գայթ գետնի վերայ ուղիղ քալել չը գիտես՝ ազատութեան չուանին վերայ ելեր կը ճօճա՞ս, չունելով ձեռքդ դաստիարակութեան այն ձողն ու կշիռ. որով կարենաս անկասկած խաղալ ազատութեան բարակ լարին վերայ:

Ուշ կը դնէ՞ք, Հայոց ազատասէր ընտանիք, ձեզ քանի մի

խրատ տամ ու կնքեմ այս ճառը: Չեմ խօսիր ձեզ, որ հին Թանձըր քօղ ձգէք նոր հարսին գլխուն վերայ, որ նա կորանայ ու չը կրնայ ազատութեան լոյս տեսնալ, եւ կամ ընտանեկան կեանքին մէջ կարկել խօսուն մարդոյ լեզուն, որ նա կամաւ համր լինի: Չեմ ասեր որ փեսայն եւս գօտեբարեւ ծառայէ ստորակարգ սպասաւորի մի պէս:

Այլ այս միայն կ՚ասեմ քեզ, որ ծայրայեղ ազատութեան չուանէն վար իջնաս, դու ինքնին գիտես թէ վստահ չես տակաւին համարձակ խաղալու․ դու տեսար եւ կը տեսնաս թէ քանի՛ քանի՛ ընտանիքները այդ հրապուրիչ չուանէն վար ինկան ու ջախջախուեցան․ որոց կորստական փորձը թող քեզ խրատ լինին:

Այլ գիտեմ, ու քաջ համոզուած եմ, դու միանգամ այդ չուանին վերայ ելար․ աշխարհի խրատ եւ Աւետարան կարող չեն զքեզ վար իջուցանել․ դու այդ ազատութեան խաղ պիտի շարունակես առանց դորա վտանգէն խուսափելու, եւ կ՚ասես թող տուէք զիս ազատ, ազատաբար խաղամ եւ խաղալով սորվիմ:

Առաքինութեան ասպարէզ ելած չես, որ թոյլատրէի եւ ներէի քեզ այդ, ոչ ոք կը հաւատայ թէ այդ օրինակի միջոցը զքեզ ազատութեան մէջ կը կրթէ․ թերեւս ասել կ՚ուզես, թողէք, որ մեծամեծ վնասներով եւ զոհերով խրատուիմ:

Աւա՛ղ, դեռ բաւական չե՞ս համարիր թէ անցելոյն եւ թէ ներկային մէջ Հայոց ընտանեկան զոհերը․ աւելի ապահով, բարի, եւ բնական չէ՞, որ նախ բարւոք դաստիարակութեամբ կրթուիս․ ազատութեան դժուարին արուեստին եւ իւր ամէն պայմաններուն մէջ քաջավարժ լինիս․ եւ ապա վստահապէս ելնես այդ ազատութեան չուանին վերայ․ յայնժամ ցոյց տաս աշխարհի առաջ թէ Հայոց ընտանիքն եւս գիտէ պարկեշտութեամբ ազատութեան խաղ խաղալ առանց կործանելու:

———o———

Ժ.

# ՓՈԽԱԴԱՐՁ ՊԱՐՏԻՔ
## ԵՒ
## ԻՐԱՒՈՒՆՔ ԱՌՆ ԵՒ ԿՆՈՋ

---

Տիեզերաց կարգադիր Արարիչը՝ բնութեան անյեղլի օրէնքով ինչպէս աշխարհիս ամէն բան կշռով ու չափով կարգադրեր ու հաստատեր է· նոյնպէս առն եւ կնոջ պարտիք եւ իրաւունք բաժներ է այն օրէն՝ երբ մարդն աշխարհիս վերայ ծնաւ։ Ոչ ոք կարող է Արարչին կարգադրութիւն շրջել եւ փոխել։

Նորա իմաստութիւնն է, որ զկին՝ կին ստեղծեր է, եւ տուեր է նմա ի բնութենէ ծնողական բուռն սէր, մեծագորով սիրտ, դիւրաշարժ զգացումն· որպէս զի զաւակ ծնանի, մայր լինի, մայրական սիրով ու կաթով սնուցանէ զայն։ Եթէ չլինէր կնոջ սրտին մէջ այս հզօրագոյն սիրոյ զգացումն, նա վաղուց կը խուսափէր ամուսնական կեանքէն, յիշելով երկանց ցաւն ու վիշտ։

Նախախնամութեան ստեղծող հանճարը կինը լի սիրով եւ փափկութեամբ կազմեր է, իսկ այր մարդը հուժկու բազկով ու ուժով· նա եւս հայր եւ ծնող է, սէր եւ ծնողական գորով ունի· միայն թէ կնոջ եւ մայրական սիրոյն հետը կարելի չէ համեմատել։

Ուստի այր եւ կին իրենց բնական յատկութեամբ եւ չափով միանգամայն Աստուծոյ եւ աշխարհիս ընդհանուր օրինաց համաձայն պարտք եւ իրաւունք ունին, եւ այս այն օրէն կ՚սկսի երբ սուրբ ամուսնութիւնը զայր եւ զկին իրարու հետ կը կապէ կամաւոր եւ ազատ դաշնադրութեամբ։

Եւ ի՞նչ է այս փոխադարձական պարտք եւ իրաւունքը· որ ընդհանրապէս երկու իրաց մէջ կը կայանայ· այն է բարոյական եւ տնտեսական կենաց մէջ հաւասար արդարութեամբ։ Բարոյական առաջին մեծ պարտիք առն եւ կնոջ՝ ամուսնական սէրն է· զոր ամուսնութեան իրաւունքով փոխադարձաբար կը պահանջեն իրարմէ· զի որչափ սիրէ այր՝ նոյնչափ խանդակաթ սէր կը պահանջէ իւր կնոջմէն· միայն այս փոխադարձ հաւասար սէրն է, որ սիրոյ կենակից երկու ամուսինները ի

միութեան կը պահէ, որոց վերայ նախորդ ճառին մէջ խօսեցանք բաւական. աստ միայն պէտք է ուրիշ մնացած մասերու վերայ խօսիմ, որ ամուսնական եւ ընտանեկան կեանքին վարչութիւնն է, եւ այս բարոյական վարչութեան պարտք եւ իրաւունքը սուրբն Պօղոս այս կերպով կը բաժանէ: Նա այր մարդը՝ գլուխ կ'անուանէ կնոջ, որով իրաւունք կուտայ, որ գլուխ տիրէ, վարէ, հրամայէ, եւ այլն: Կնոջ իբրեւ պարտքը հնազանդութիւն կ'որոշէ. բարձր եւ խորհրդաւոր օրինակ մի տալով թէ ինչպէս եկեղեցին՝ Յիսուսին հնազանդ կը լինի. նոյնպէս եւ պէտք է, որ կանայք հնազանդ լինին իրենց էրիկներուն:

Թող ոչ ոք այնպէս կարծէ, թէ իրաւախօս Առաքեալը ինքնին իբրեւ հեղինակ եւ դատաւոր այնպէս կը վճռէ ամուսնացելոց պարտք եւ իրաւունքը:

Ո՛չ. Պօղոս, որ միշտ Քրիստոսի հոգւով կը խօսէր, այս վճռին դասը՝ հին դրախտի պատժական վճռէն կ'ուսանի եւ կ'աւանդէ եկեղեցւոյն: Քանզի Տէր Աստուած երբ յանցապարտ նախակնոջ համար պատիժ տնօրինեց. որ ցաւով ու տրտմութեամբ ծնի իր զաւակները՝ յարեց նաեւ այս բանը, թէ «Առ այր դարձ քո լիցի եւ նա տիրեսցէ քեզ»: Զգիտեմ մարդ կարօ՞ղ է իմաստասիրել, եւ այս բացորոշ խօսքէն հանել սոյն հետեւութիւնը. այսինքն եթէ մեր նախամայր կին առաջին մեղապարտ չը լինէր՝ անշուշտ իւր հաւասար ազատութեան իրաւունքը պահելով՝ Ադամայ տիրապետութեան տակ չէր սորկանար:

Բայց Յիսուս եւ Աւետարանը կնոջ կորուսեալ իրաւունքը դարձեալ իրեն տուին. որոյ համար կը յայտարարէ նոյն Պօղոս թէ՝ «Այսուհետեւ չիք խտիր, ոչ արուի եւ ոչ իգի. զի ամենեքեան դուք մի էք ի Քրիստոս Յիսուս»: Որով ցոյց կուտայ թէ ամէն Քրիստոնեայ հաւատացելոց պարտք եւ իրաւունքը միեւնոյն է. հաւասար է Աւետարանի ազատ կրօնին առաջ: Պօղոսին այս բանը որչափ որ կինը իւր հին սորկութենէն կը հանէ. այլ չի ջնջեր նորա հնազանդութեան պարտքը, որ բնական եւ բարոյական է:

Իսկ Եւրոպիոյ քաղաքակրթութիւնը, որ դարձեալ Քրիստոնէութեան շնորհիւ յարգեց այս ազատութեան սկզբունքը՝ անդր քան զչափն բարձրացոյց կնոջ արժանաւորութիւնը, ճանչցաւ նորա պատիւն եւ իրաւունքը, այն ինչ արեւելեան ազգաց մէջ դեռ շատ մասամբ սորկացած է խեղճ կնոջ վիճակը իւր ամէն իրաւունքներով:

Խօսինք այժմ. Առաքեալը երբ կնոջ համար հնազանդութիւն կը պատուիրէ, արդեօք այնպէ՞ս է. ինչպէս ժողովուրդը՝ իշխանին, զինուոր՝ զօրապետին, ստրուկ ծառան՝ իւր տիրոջ։ Ո՛չ այդպէս չէ, կին ոչ հպատակ է, ոչ զինուոր է եւ ոչ ստրուկ ծառայ։ Կին իւր ամուսնոյն ազատ ընկեր ու հաւասար լծակիցն է ամենայն իրաւամբ։ Ուստի կին աղախին չէ. այլ տան տիկին եւ թագուհի. թէպէտ եւ այր մարդ թագաւոր լինի։ Իշխան լինի, տէր եւ գլուխ լինի, բնաւ իրաւունք չունի եւ կարող չէ այնպէս իշխել, ինչպէս կ՚իշխեն աշխարհիս այլ եւ այլ տիրող գլուխները իշխանական գաւազանով, վասն զի ընտանեկան կեանքին ու վարչութեան մէջ իշխանական սուր ոստիկանութիւն եւ գաւազան չկայ. այլ միայն սէր, խնամք եւ միութիւն։ Եւ ի՞նչպէս կարելի է, որ այր մարդ բռնակալ լինի կնոջ վերայ, չարաչար ճնշէ ու նուաճէ իր կեանքն եւ ընկերը. երբ տիրապէս ճանչնայ թէ կինը բարոյապէս իւր մարմին, իւր սիրտ եւ ոգին է. եւ ամուսնական կապակցութիւնը՝ մի թիւ է, երկու չէ. եւ միթէ հնա՞ր է, իրաւո՞ւնք է. որ մարդը ինքզինքը եւ իւր իսկ անձին ազատութիւնը իբրեւ օտարի՝ բռնակալէ, մինչեւ իսկ հարուածէ. չարչարէ եւ խեղդէ, կարծելով թէ իրաւունք ունի. որովհետեւ ինքն զօրաւոր եւ ուժաւոր է թէ բազկով թէ բանիւ եւ միանդամայն աշխարհիս ատեանը իւր ձեռքն է. եթէ կին իւր զրկանաց համար բողոքէ. ո՞վ է իւր իրաւունքը լսող եւ դատաստան տեսնող, դարձեալ ինքն դատաւոր ու վճռատուն։ Հոն չէ արդար Յիսուս, որ անտէր կնոջ դատը պաշտպանէ եւ յանդիմանէ փարիսեցւոց անիրաւութիւնը, որ կեղծաւորեցան իբրեւ օրինապահ, մեղաւոր կին մի նորա ատեան հանել ուր տեսող Դատաւորին առաջը՝ իրենք կնոջմէն աւելի յանցաւոր ու մեղաւոր էին։

Սուրբն Պօղոս այր եւ կնոջ դատաստանին մէջ անիրաւ դատաւոր չէ. երբ մի կողմէն կնոջ կը պատուիրէ որ նա հպատակ ու հնազանդ լինի, միւս կողմէն եւս որպէս եւ Քրիստոս սիրեաց զեկեղեցի եւ զանձն իւր մատնեաց վասն նորա»։ Որով կ՚ուսուցանէ բարձրախօս Առաքեալը. այր մարդիկ Յիսուսի սիրոյն եւ անձնանուիրութեան հետեւելով՝ նորա չափ առաքինանան. ընտանեաց սիրոյն եւ ազատութեան համար մինչեւ ի մահ անձնանուէր լինին։

Առանց խորհուրդի չէ երբ անձնուիրութեան այս մեծ պարտիքը՝ այր մարդոյն բաժին կը հանէ Առաքեալը. Թերեւս այսպէս կը դատի նա. որ աշխարհիս իշխանական իրաւունք,

սուր, կռուոյ ասպարէզը՝ այր մարդոց ձեռքն է, ու փառաց մրցանակը՝ նոքա միայն կ'ընդունին․ պարտաւոր են ընտանեաց համար մեռնիլ ինչպէս կը մեռնին հայրենեաց համար․ ու քարոյական հայրենիքն՝ ընտանիքն է։ Այրեր միայն չեն մեռնիր․ կիներն ալ կը մեռնին, երբ հաւատքի եւ կրօնի համար․ միթէ չմեռա՞ն ու գերի չվարեցա՞ն Ե․ դարու Հայոց առաքինի կանայք․ որոց առաքինութեան հանդէս պատմագրելով կը հռչակէ Սուրբ Եղիշէ Հայրն, եւ Եկեղեցին շատ կին նահատակներն ունի։

Ուրեմն պէտք չէ բոլորովին տկար համարել զկին, կարծելով՝ թէ նա մի հողակերտ եւ դիւրաբեկ անօթ է․ երբեմն հրացեալ երկաթ կը դառնայ երբ Սուրբ Կրօնին, ամուսնոյն եւ զաւակաց սէր զինքն կը բոցավառէ ու կը մղէ առ ամենայն վտանգ։

Ամուսնական միութեան մէջ այր եւ կինը՝ մի մարմին է․ այլ կինը գլուխ չէ․ կը հաւանինք հոգեխօս Առաքելոյն, թէ կնոջ գլուխ այրն է․ սակայն ո՛վ կարող է մտաբերել թէ ուրեմն կինը նորա ոտքն է, պատուանդան է եւայլն։ Ո՛չ, կին այր մարդոյն նուաստագոյն մասն չէ․ այլ նորա կողի բուն միջակէտն է․ նորա սրտին հոգւոյն մօտ․ յորմէ Արարչապետին իմաստութիւնը խորհրդով մի ոսկր առաւ եւ ամուսնական մարմինը լրացուց։ Եթէ համարիմք, դարձեալ այր մարդ իբր տէր ամուսնական կեանքին մէջ, միթէ իրաւո՞ւնք ունի խըստութեամբ իշխել, տիրապետութեամբ վարել, կամ կարծել թէ կինը իւր ստացուածն է եւ կամ արծաթագին ծառայ։ Եթէ զօրութիւն ունի, բուռն են իւր բազուկները․ նա միթէ իրաւո՞ւնք կը ստանայ ջարդել փշրել իւր կողին մի տկար ոսկրը․ իւր կեանք բառնալ ու չիմանալ։ Եթէ կը համարի զինքն իբրեւ հանճարեղ, իմաստուն, խոհական, քաղաքագէտ, աշխարհավար եւայլն․ իւր պարտիքն է իբրեւ նախաթոռ բազմելով ընտանեկան գերդաստանին գլուխն՝ կինն եւս իւր խորհրդակից առնելով կառավարեն ի միասին ընտանեկան կեանքը։

Իսկ եթէ իրաւապէս կը ճանաչէ, որ կինը իւր կենակից ամուսին է, մինչեւ ցմահ դաշնակից ընկերն է․ իւր աշխատութեան հաւասար լծակիցն է, բախտին ու ապերջանկութեան մէջ անբաժանելի կարեկիցն է, իւր մահուան ու շիրմին վերայ լացող ողբերգուն է, իւր թողուցած որբ զաւակներուն խնամատար մայրն է․ իւր գերեզմանն օրհնող եւ յիշատակն անմահ պահող ջերմեռանդ այրին է․ ուրեմն պէտք է գիտնայ,

երբ ամուսնասէր կինը այս պարտիքները կատարէ, այլեւս ի՞նչ պարտք կը մնայ։

Երկու ամուսնացելոց փոխադարձական պարտիքները մինչեւ ի գերեզման տեւելով անդրեւս կ'անցնին։ Վերը պահանջեցինք այր մարդէն սէր եւ անձնուիրութիւնը. միանգամայն զեկուցինք, որ իւր ուժը եւ զօրութիւնը չը չափէ կնոջ տկարութեան հետը. պէտք է իրաւապէս պահանջենք, որ կինն եւս իւր չափով եւ ուժով անձնանուէր լինի ու հաւատարմապէս հատուցանէ իւր փոխադարձ պարտիքները։ Սէր՝ սիրոյն փոխան, խնամք՝ խնամոց փոխան, սիրտ՝ սրտին փոխան, հաւատարմութիւն՝ հաւատարմութեան փոխան։

Թող այս, կնոջ համար մի առանձին պատուէր եւս կայ, որ է Առաքելոյն պատուիրած կատարեալ հնազանդութիւն դէպ ամուսին իւր։ Վասնզի երբ այր մարդուն իրաւունք չը տուինք որ նա բուռն գաւազանով իշխէ կնոջ վրայ, նոյնպէս իրաւունք չենք տար կնոջ, եւ ոչ մի օրէնք այդ իրաւունքը կարող են տալ, որ կինը անհնազանդ լինի։

Այո՛, կնոջ պարտիքն է կատարեալ հնազանդութիւն առանց բնաւ ստրկանալոյ. չէ թէ այն պատճառաւ որ նա ընտանեկան կեանքին մէջ անոյժ եւ անզէն թողուած է, այլ առաւել բնութեան եւ խղճի օրէնքը զայս կը պահանջեն ի կնոջէն։

Այս աշխարհիս վերայ ուժովներ կը տիրեն թէ բարոյապէս եւ թէ ֆիզիքապէս, եւ տկարները բնականաբար կը խոնարհին։ Նոյն կը տեսնամք նաեւ ընտանեկան կեանքին մէջ. յորում կինը ստիպուած է հպատակիլ եւ խոնարհիլ։ Վասն զի ինքն չէ թէ ուժին կողմանէ միայն տկար է, եւ զինակիր բազուկ չունի հապա մտաւորական զօրութիւնն եւս անհաւասար է եւ նոյն մասին մէջ եւս կ'երեւի յայտնի իւր տկարութիւնն։

Սորա համար այր մարդիկ կը դատեն զկինն իբրեւ կարճամիտ, անխորհուրդ եւ մանաւանդ անհոգ եւ անհեռատես։ Միայն բացառութիւն համարել պէտք է այն մեծ դիւցազնուհի կիները, որք թէ հին պատմութեան եւ թէ նոր քաղաքակրթեալ աշխարհին մէջ հանճարով ու քաջագործութեամբ փայլեր են եւ այսօր նոր 'ի նորոյ կը փայլին Եւրոպիոյ այլ եւ այլ ազգաց մէջ իբրեւ դաստիարակ, իբրեւ մատենագիր եւ իբրեւ ժրագլուխ եւ տնտեսող կին։

Ոչ ոք կը տարակուսի թէ կինն եւս այր մարդուն պէս բանաւոր ու մտաւոր է։ Եթէ մշակուի նորա միտքը՝ նա կարող է հաւասար յառաջդիմել. բայց նկատել արժան է, որ կինը

իւր տկար ոտքով մինչեւ մի փոքրիկ բլուրի գլուխ հազիւ կարող է բարձրանալ. կին կարող չէ Նեւտոն եւ Հերշել լինել երկնից աստեղատունը դիտելու համար։ Գիտութիւնը տաժանելի աշխատութեան վաստակ է. որդէն երկանց վշտով չարչարեալ կինն յանձն կ'առնու այդ գիտութեան ցաւոց երկունքն եւս կրել. եւ միթէ իրաւո՛ւնք է. որ մայր մոռնայ կաթն մանկան, սէր գգուանք զաւակաց եւ պարապի բարձրագոյն գիտութեան։ Բաւ եւ չատ է նորա համար դաստիարակութիւն, ընտանեկան կրթութիւն եւ տնտեսութիւն առտնին կառավարութեան։

Այդ ճանչնալով մեր աշխարհ, մեր ժողովուրդ եւ մեր կեանքը՝ հարկ է, խոստովանիմք, որ այր մարդիկ եւս պակաս կարճամիտ չեն կնոջէն. եւ նոցա այս կարճմտութիւն պիտի տեւէ, քանի որ մայրեր կարճամիտ են եւ ո՞վ չի դիտեր, թէ կարճամիտէն՝ կարճամիտ կը ծնանի։ Լուսաւոր եւ քաղաքակիրթ աշխարհը սորա դարման միայն այս գտաւ. որ նախ մայրերու կարճմտութիւն կրթէ ու բժշկէ դաստիարակութեամբ. որպէս զի նոքա կատարեալ եւ առողջամիտ զաւակ ծնանին։

Երանի՛ թէ երկու կարճամիտ ամուսինները իրարու չպատահէին. որով ընտանեկան կեանքը կը դառնանայ խսպառ։ Եթէ միայն կին կարճամիտ լինի եւ այր մարդ բանգէտ եւ խոհեմ, իւր վերայ կը մնայ բարոյական մեծ պարտիքը, որ ամենայն խնամով ու երկայնամիտ համբերութեամբ դարման տանի իւր կենակցին կարճմտութիւնը բժշկելու համար։

Իսկ եթէ այր մարդն է կարճամիտ, որ յոլով անգամ թէ կը պատահի. յայտ է յայնժամ այդ պարտքը իմաստուն եւ խոհեմ կնոջ բաժին կը մնայ. որ քաղցր հոգատարութեամբ դարմանէ իւր ամուսնոյն կարճմտութիւնը։

Բարի եւ ժրագլուխ կինը, միայն արժանաւոր ամուսնոյն համար իւր բարոյական պարտքերը չի կատարեր, այլ եւ նոյն իսկ անարժանին համար. որ չէ թէ միայն բնապէս կարճամիտ է, այլ եւ խստաբարոյ, դաժան եւ ստամբակ մարդ է. այսպիսւոյ համար եւս իւր վայելուչ պարտիքները նա չի մոռնար. այլ ի գործ կը դնէ եւ կը ջանայ միշտ իւր ընկերին խստութիւնը ողոքելու. որպէսզի չխռովի ամուսնական սէր, չի վրդովի տան խաղաղութիւն, եւ չը բամբասուի ընտանեկան պատիւն։

Հարկ չէ կրկնենք. ինքնին յայտնի է թէ սիրաչահական այս պարտիքները միայն կնոջ յատկացեալ չեն. զի մերթ եւս բարի այր մարդուն կը պատահի կին չար, կամակոր, լեզուա-

*նի ու անզգամ․ յորմէ Սիրաք իմաստուն լաւ կը համարի խոյստալ եւ անապատին մէջ անընկեր ապրիլ։ Սակայն ճշմարիտ Քրիստոնէութեան սիրոյ եւ մարդասիրական օրէնքը պարտք կը դնէ ամուսնացողին վերայ, որ իւր զընկերը ողոքելով շահի։ Մանաւանդ երբ Աստուծոյ Առաքեալը կը խրատէ․ որ հաւատացեալ ամուսին՝ իւր անհաւատ ամուսին չարձակէ․ թէ այր լինին նոքա եւ թէ կին։ Որչափ հնար է, պիտի ջանան նոքա միացեալ կեանքը չի բաժանել․ անբաժան կենակցութեամբ ապրիլ եւ միշտ իրարու պակասութեանց համար ներողաբար վարուելով՝ զիրար ողոքել ու շահել թէ ամուսնական սիրոյն եւ թէ ընտանեկան օգտին ու բարւոյն համար։*

*Բաւ կը համարիմ այսքան, թէ առն եւ թէ կնոջ բարոյական պարտուց եւ իրաւանց մասին համար․ այժմ կը դառնամ փոքր ի շատէ գրել նիւթական եւ տնտեսական մասին վերայ․ յորում միեւնոյն փոխադարձ պարտիքներով պէտք է վարուին երկու ամուսինք հաւատարիմ աշխատութեամբ։*

*Երբ կը տեսնամ հողագործի արտի մէջ, որ մի զոյգ ամոլակից եզները լծուելով գետին կը հերկեն, երբ կը տեսնամ, որ միակտուր լծնփայտ՝ եզներու վզի վերայ հաւասար դրուած է․ որպէս զի հաւասար քալեն եւ հաւասար ուժով հարօրը քաշելով վարեն արտն․ ճիշդ այս բնական օրինակէն՝ բարոյական օրինակ հանելով, կարի՛ պատշաճ է ընտանեկան կեանքին մէջ թէ առն եւ թէ կնոջ աշխատութեան պայմանները որոշել ու չափել։*

*Ընտանեկան ագարակին մէջ երկու գլխաւոր աշխատաւորներ կան․ որոնց համար* լծակից *բառին նշանակութիւնը շատ յարմար ու ճիշդ է․ որ ցոյց կուտայ առն եւ կնոջ հաւասար կեանք եւ ընթացքը։*

*Այր մարդ արտաքին վաստակաւորն է․ եւ այս է ի սկզբանէ անտի նորա աշխատութեան բաժին ու պարտիքը։ Իսկ կին մարդը՝ տան տիկինն է․ եւ նորա պարտիքն է արդար ու հաւատարիմ տնտեսութիւն։ Այր՝ հաց ու հանդերձ կը բերէ, կինը կը մատակարարէ․ այր՝ շահավաճառութեան խանութ կ'երթայ, կին առ տնին գործոց մէջ կ'զբաղի․ այր՝ զանազան դըժուար արհեստներու մէջ մարմնով ու մտքով միանգամայն չարաչար կը խոնջի, իսկ կնոջ մեծ ու առանձին արհեստն է տան կառավարութիւն, իմաստուն տնտեսութիւն, եւ մայրական դաստիարակութիւն։*

*Եթէ իրաւապէս դատելով խօսինք, աշխարհիս ընդհանուր*

կեանքին մէջ այր մարդոց աշխատութեան բաժին շատ ընդարձակ, ծանր, դժուարին ու տաժանակիր է. մինչդեռ կնոջ բաժին անձուկ շէնքին տակը շրջափակուած՝ միայն առ տնին աշխատութիւնն է, թող այս, այր մարդ քաղաքականութեան մէջ ամենամեծ ծանր հոգերով կ'զբաղի. աշխարհ կը կառավարէ, զէնք կ'առնու, պատերազմի դաշտ կ'երթայ. արիւն կը թափէ, հայրենիքը կը պաշտպանէ եւայլն: Մերթ եւս կը ստիպուի գողութեան ոճիր գործել թէ ընտանեաց սիրոյն եւ թէ զաւակաց կարօտութեան համար՝ որով քաղաքային օրէնքը զինքն առանձին կը դատապարտէ բանտարկութեան պատիժ կրել, որ գողութեան հացն իւր ընտանեաց հետն ի միասին կերաւ: Թողում, չեմ յիշեր այնչափ զարմանալի գիւտեր, մեծաջան արուեստները. որք միայն այր մարդոցն հանճարին եւ ձեռքին հրաշալիքներն են:

Արդ իբրեւ մի կողմ այսքան կը ծանրանայ այր մարդուն չարաչար աշխատութեան զբաղանքն եւ հաւասար պարտուց կշռոյն նժարը կը վայրահակի. որով ամուսնական ընկերութեան մէջ՝ կ'ընկճէ զկին պարտուց բեռան տակը: Բայց տեսնանք, միթէ ապիկար կնոջ վաստակն ու պարտիքները թեթե՞ւ են:

Մենք գիտենք, Մովսէս եւ հաւատքը կը պատմեն թէ վըշտահար կինը՝ Դրախտի օրհնութեան հետը՝ մի անէծք եւս ժառանգեց. այսինքն ամուսնական սիրոյ քաղցրութեան հետը՝ ճաշակել նաեւ դառն երկունքը ցաւոց. որով նա դատապարտեալ է իւր ծննդաբերութեան մէջ ցաւ կրել ու զաւակ ընծայել աշխարհի ընկերութեան համար:

Զգիտեմ, ուղիղ դատաստանէն կը վրիպի՞մ եթէ ասեմ ու վճռեմ կնոջ համար: Թէ իւր այս անփախուստ ցաւոց պարտիքը՝ այր մարդուն բովանդակ աշխատութեան դէմ հաւասար եւ շատ է: Չեմ յիշեր նաեւ, որ մերթ եւս ցաւոց ու վշտաց մայր խեղճ կինը՝ իւր ծննդական բուռն ցաւոց մէջ կը մեռնի. կամ անմայր կը թողու իւր թշուառ տղեկն ի խանձարուրս կամ հետ իւր ի գերեզման կը տանի:

Ո՞ւր թողունք ապա կնոջ երկայնամիտ հոգատարութիւն իւր զաւակաց համար. որ ծնած օրէն սկսեալ մինչեւ պատանեկութեան հասակը, նա սրտով եւ կեանքով կը մաշի. այն ինչ հայրը՝ տղուն լացէն ձանձրոյթ կ'զգայ, կը զայրանայ եւ փոխանակ փայփայելու՝ օրօրոցի քովէն փախուստ կուտայ:

Այո՛, խոստովանիլ պէտք է, թէ ծնողական սրտին ու գո-

*րոլոյն մէջ՝ կին կ'առաւելու քան զհայր միշտ պատրաստ լինելով՝ անտրտունջ կրել զաւակաց ցաւն ու կարիքը. մանաւանդ երբ ճշմարիտ ու հոգացող մայր է եւ լիովին կը ճանչնայ իւր մայրական պարտիքները:*

*Բայց իրաւունք կը պահանջէ, որ սա եւս խոստովանիմք. զի երբ կնոջ երկայնմտութիւն առտնին անձկութեան մէջ կ'ամփոփի. այր մարդուն մտածութիւնը՝ խիստ կ'ընդարձակի արտաքին զբաղմանց չարաչար հոգերով, յորս այնպէս կը տեսնուի փորձիւ, որ կինն անհոգ է եւ այս անհոգութեան համար չարաչար կը դատեն զինքն: Սակայն ես խօսիմ, դու դատաստան արա, ուշիմ ընթերցող. կնոջ անհոգութիւնն ի բնութենէ՞ է, թէ այր մարդիկ թողեր են, որ կինը անհոգ լինի ու չմտածէ, թէ ընտանեկան սրահէն դուրս ի՞նչ կայ աշխարհիս մէջ եւ ի՞նչ կը գործեն այր մարդիկ:*

*Ես այնպէս կը կարծեմ, որ կնոջ անհոգութեան պատճառը մեծ մասամբ այր մարդիկ եղած են, որ կամ այրական, ինքնահաւան հպարտութեամբ կնոջ կարեւորութիւն չտալով՝ նա սովորեր է անհոգ մնալ. կամ մեծամտութեամբ ստրկութիւն եւ նուաստութիւն կը համարին կնոջ խորհուրդ տալ, կամ առնուլ. եւ կամ օրուան ձախորդ անցքեր պատմել եւ ցոյց տալ իւր վիճակի կացութիւնը: Թող այս, շատ անգամ սնապարծ լինելով՝ կնոջ անհոգութիւնը աւելի ընդարձակեր են:*

*Ուստի կինը իւր անհոգ վիճակէն հանելով՝ ընտանեկան հոգածութեան մէջ կրթելու համար, այր մարդիկ պէտք է զայն արժանի համարին իրենց խորհրդակցութեան, ամօթ եւ նուաստութիւն չհամարին իրաց վիճակը ստուգութեամբ խօսիլ ու խոստովանիլ:*

*Եթէ այր մարդոց իրաւունքն է ընտանեկան ու առ տնին գործոց վերայ խելամուտ լինել. միթէ կնոջ իրաւունք չէ՞ արտաքին իրաց վերայ տեղեկութիւն ստանալ ու գիտնալ թէ այր մարդիկ ի՞նչ կը գործեն աշխարհիս կառավարութեան ու չահավաճառութեան մէջ:*

*Ստոյգ է որ առն եւ կնոջ իւրաքանչիւրին աշխատութիւնները յատկացեալ են, զոր ի վեր անդր գրեցինք այլ համական խորհրդակցութեան մէջ երկուքն եւս պարտական են իրենց հաշիւները տալ. մին՝ վաստակին համար եւ միւսն՝ տնտեսութեան: Առանց այս հաշւոյն երկու ամուսնեաց պարտուց եւ իրաւանց կշիռը կը չփոթի. շատ անգամ երկու կողմի պարտազանցութիւնք կը ծածկուին. այնուհետեւ այր եւ կին կը ջա-*

նան միշտ կեղծելով զիրար խաբել. միշտ ներքին վիճակը իբարմէ պահել եւ առերեւոյթն ցոյց տալ: Այլ մինչեւ յե՞րբ, կարօտութեան դժբախտ օր կը հասնի, նոքա կը ստիպուին խօսիլ. մին կը խոստովանի, թէ շահավաճառութեան մէջ կորսնցուցի, գանձարանիս մէջ դրամ չի մնաց. եւ միւսն թէ տաշտին մէջ հաց չիկայ. մառանը պարպուած է. սնտուկիս միջի թանկագին օժիտներս վաղուց ծախած եմ, իմ այլ եւ այլ պէտքերս հոգալու համար:

Ուրեմն պարտաւոր է այր, որ իւր կեանքի ու գործոց վիճակը թագուցանելով, չի թողուր որ իւր կենակիցն՝ իւր հետ հաւատար ընտանեկան կեանքին վերայ հոգածէ: Պարտաւոր է կինը, որ իւր ամուսնոյն հոգածութեան բաժանորդ չի լինիր:

Պարտաւոր է այր որ հեղգ ու պղերգ է իւր բաժին աշխատութեան մէջ. որ կը մոռնայ ընտանեաց հացն, կամ կը դեգերի գինարբուաց հետը կամ իւր հաց անառակ կեանքով կը վատնէ ու կը զրկէ ընտանիքը:

Պարտաւոր է կին, որ աշխատող ու ժրագլուխ չէ. որ իւր էրկան դառն քրտինքով վաստկած հացն՝ ուղղութեամբ ու խնայութեամբ չի տնտեսեր. այլ կամ նենգութեամբ խաբելով եւ կամ գեղխութեամբ շռայլելով՝ յումպէտս կը վատնէ հացի առատութիւնը, երբէք չմտաբերելով թէ իւր ամուսինը քանի՞ տաժանութեամբ այդ հացն վաստկած է. զօրհանապազ ծուլու եւ ցամաքի վերայ տքնելով տառապելով: Ես չեմ յիշեր, թէ ի՞նչպէս նոքա երբեմն կը ստիպուին ընտանեկան պիտոյից համար անպատիւ միջոցները ի գործ դնել. շահավաճառական գործոց մէջ խարդախութիւն խառնել. եւ ընտանիքը թշուառութենէն ազատելու համար՝ ուրիշի ընտանիքը թըշուառացնել եւայլն: Որք մերթ եւս կամ յուսահատ զգացմամբ. անձնասպան կը լինին, լաւ կը համարին մահուամբ խփել իրենց աչքը քան տեսնալ ընտանեաց ողորմելի կեանքն ու թըշուառութիւնն:

Պարտաւոր է այր որ խպառ կը մոռնայ ծնողական գութըն, տուն եւ ընտանիքը, մեռցնելով իւր խիղճն ու պատիւ. ի բաց կը թողու կենակից ամուսինը եւ ընտանեկան պարկեշտ կեանքը՝ կ'երթայ ու կ'ապրի անառակ ընկերութեան հետը, կը վատնէ իւր ամէն ինչքը կեանք, պատիւ ու հարստութիւնը. վերջապէս վատթարութենէ ի վատթարութիւն երթալով՝ նա օր մի կը մեռնի օտար փողոցներու անկիւնը առանց ընտանե-

*կան սգոյ, ու չարժանանար փառաւոր թաղման ու հայրենի գերեզմանին։*

*Բիւր անիծից արժանի է այնպիսին, որ կ'ուրանայ ընտանիքը· զոր Պօղոսը՝ հաւատուրաց ամբարիշտ կը կոչէ։ Այո՛, այնպիսին հանապազ նզովք կ'ընդունի ընտանեկան տաճարէն, որ կարճի այնպիսւոյն կեանքը, նա շուտ բարձուի աշխարհէս, որ նախատինք է ոչ միայն ընտանեաց, այլ մարդկային ընկերութեան։*

*Տակաւին շատ ու բազմապիսի են ամուսնական կեանքին մէջ առն եւ կնոջ իրաւունք, պարտք եւ պարտազանցութիւնք· այլ մեք այսչափ միայն յիշատակելով շատ կը համարիմք եւ կը թողումք, որ պակաս մնացելոց վերայ՝ կենակից ամուսինք ինքնին իմաստասիրեն· ճանչնան ու գիտնան իրենց պարտիքները ու խորշին ամենայն պարտազանցութենէ։*

---

## ԺԱ.

# ՄԱՅՐ ԵՒ ԴԱՅԵԱԿ

---

*Մանկիկ դեռածին երբ կը ծնի յաշխար՛հ կուգայ, ո՛վ է նորա կաթնատու սնուցիչ· ծնող մայրն է միայն, որ երկունք կրեց ու զայն ծնաւ։ Մայրական այս պարտիքը այնչափ պարզ ու բնական է ծնողական սրտին ու զօրովոյն· որոյ համար ոչ վարժապետ պէտք է, ոչ դաս· բնութիւնը իւր բուռն սիրով կ'ուսուցանէ զայն։ Մայրենի արգանդէն ի լոյս ելած տղեկը՝ առաջին անգամ աչեր բանալով իւր մայր կը տեսնայ· նա դեռ անլեզու, անբարբառ մանուկ է, կարող չէ իւր կարօտութեան փափագը բացատրել։ Իւր կարկամ լեզուն լացն է միայն, այդ անորոշ ձայնով նա ամէն բան կը խնդրէ· կաթ, գգուանք ու խնամք։ Կաթը՝ իւր կեանքն է, գգուանք՝ խնամք՝ մայրական պարտաւորութիւնն է· զորս մանկիկը միայն իւր ծնողէն կը խնդրէ, եւ ուրիշ ոչ ոք չի ճանչնար, մանուկ անզօր իւր իրաւունքը լալով կը փաստաբանէ բանտարկուած խանձարուրին մէջ։*

*Եւ երբ փոքր առ փոքր կ'աճի ու կը զարգանայ մանուկն*

իւր նախաբարբառ ձայն՝ մայր անունը կը թոթովէ։ Անշուշտ այս անուան բնախօս ուսուցիչ մայրն է․ ինչպէս նաեւ հայր անուան։ Ո՞վ, ո՞րչափ սքանչելի է բնութեան այս դպրոցը․ որ զգուասէր մօր անուշակ գրկարանն է․ մանուկը իւր քերականին առաջին դասը՝ այդ կենդանի բնութեան դպրոցէն կ՚սկսի։

Ուստի ամուսնացող կին երբ զաւակ կը ծնի եւ մայր անունը կը ստանայ․ ինչպէս նա եւ իւր այր՝ հայր անունը, այդ ինքնին յայտնի է բնութեան եւ աշխարհի օրինաց առաջ․ թէ ինքն եւ իւր ամուսին են միայն իրենց զաւակաց ստացիչ եւ տէր։ Այս բնական իրաւունքէն անխուսափելի պարտիք մի կը ծնի ծնողաց համար եւ նոցա նուիրական պարտիքն է պահել, սնուցանել մանուկը կաթով, կերակուրով ու հանդերձով։

Այլ աստանօր միայն առանձին մայրական պարտուց վերայ պիտի խօսիմ, եւ կը թողում հայրական պարտուց մասն, որ սորա հետը կցորդութիւն չունին։

Մօր ու մանկան մէջ կամ ծնողին ու ծնելոյն մէջ այն օրէն պարտք եւ իրաւունք կ՚սկսի երբ մայրն կը ծնի։ մանուկն ի լոյս կուգայ։ Այո՛, այն օրէն պարտք եւ իրաւունքը մանկան հետը ի միասին կը ծնին․ մանկան անդրժելի իրաւունքն է՝ կաթ խնդրել։ Եւ մօր բնական պարտքն է, կաթ տալ։ Վասն զի մեծագութ Արարչապետը միայն այդ պարտուց համար ամէն ծնող մօր կուրծքէն երկու ստինքները կախեր է, եւ քանի՞ մեծ է Նախախնամողին հոգը․ որ զկաթն մանկան հետ կը ստեղծէ եւ այն պահուն կը սկսին մօր ստինքներուն երկու աղբերակները բղխել, կաթնածարաւ մանուկը իւր բերանը կաթի աղբերակներու դէմ կը բանայ։

Ուստի Աստուած եւ բնութեան անփոփոխ օրէնքը պարտաւոր կը կացուցանեն մայրը․ որ իւր ծնած զաւակ ինքն իւր իսկական կաթով սնուցանէ։ Մայր մի կարող չէ այս պարտիքը եղծել․ զոր թէ բնութեան օրէնք եւ թէ բնական սէր՝ անեղծ դծեր են մօր սրտին եւ կուրծքին վերայ։

Մայր մի եթէ մոռնայ այս ծնողական պարտիքը, եթէ եղծէ այս օրէնքը, այդպիսի մայր, անգորով, գրկիչ եւ պարտազանց է․ թող թագուհի լինի, թող իշխանուհի, կամ քաղաքացի եւ շինական, աշխարհիս ո՛ր կարգէն կը լինի թող լինի, նա կարող չէ արդարանալ․ երկնից Նախախնամութեան դատաւորին առաջ միթէ արժանի՞ է մի կին մայր կոչուելու, երբ ստինքները լի են կաթով, նա մանուկն՝ օտար կաթին եւ օտար

*դրկէն յանձնէ. եւ կամաւ թողու, որ ցամքի ու կտրի բանաւոր կաթն: Զգիտեմ, աշխարհիս մեծատանց ոսկիներուն այդ մի ազնուականութեան շնորհ ու նշա՞ն է. որ մայրական այդ մեծ ու առաջին պարտիքը՝ նուաստութիւն կը համարին, որպէս թէ ամօթ լինէր այն իրենց տիկնութեան եւ կամ թէ այնպէս կը դատեն թէ մանկան կաթ տալը՝ աղախնական պաշտօն է. եւ այդ ծառայութիւնը դիեցիկ դայեկներու համար է միայն:*

*Մարդկային ընկերութեան ընտանեկան կենաց մէջ եթէ անօրինակ զեղծումն մի կայ՝ այս է. եթէ գրկանք մի կայ, այս է. որով մայրերը բուն իրենց զաւակները կը հարստահարեն. եթէ բանաւոր մարդ՝ անբան անասնոց առաջ կը նուաստանայ ու կամաչէ՝ այս է: Վասնզի բնութեան իմաստուն Արարիչ ինչպէս մարդոյն՝ նոյնպէս բոլոր կենդանեաց համար դուրթը՝ հաւասար բաշխեր է:*

*Թող տեսնան մայրերը, որ առիւծն անտառին մէջ իւր կորիւն կը դարմանէ. կովն՝ իւր հորթիկ, մաքին՝ իւր գառնուկը, հաւ՝ իւր ճետերը, ճնճղուկ՝ իւր ձագերը, այլ եւս իրաւունք ունի՞ մայրն իւր կաթովը չի սնուցանել իւր զաւակը, որ իւր հոգւոյ հատորիկն է. կամ թէ չդարմանել այն հարազատ ծաղիկը, որ իւր ծոցէն բուսած է, իւր արմատին ծիլն է. ի՞նչպէս ձեռք է այն մօր ձեռք, որ կը քանդէ այդ մատաղ ծիլն իւր բնաբոյս արմատէն եւ զայն օտար արմատին հիւթով սնուցանել կ'ուզէ:*

*Դիեցիկ մանուկը կը բողոքէ այս գրկանաց դէմ միայն յայնժամ ներելի կը համարուի մօր համար, երբ ինքն տկար, անառողջ է եւ կամ կաթին աղբիւրները ցամքած են: Բայց այս պատճառներէն՝ չի կայ ուրիշ մի այլ զօրաւոր պատճառը, որ իրաւունք տայ ծնող մօր, իւր մանուկը ուրիշ մօր կաթով դիեցնելու. որոյ անունը դայեակ կը կոչուի, եւ ես ճիշդ կը հասկնամ այդ բառին նշանակութիւնը, որ է կաթ վաճառող կին:*

*Դայեակն եւս անշուշտ նորածին զաւկի ծնող է. ո՛հ, մի տառապեալ մայր է նա, որ անհնարին կարօտութենէն ստիպեալ իւր մանկիկն մի ուրիշ մօր կը յանձնէ նուազ վարձքով, կ'երթայ կը դեգերի մեծատանց տուները. որպէսզի իւր կաթն աւելի գնով վճարէ. որ իւր մանկան արդար իրաւունքն է: Ողորմելի որդեգուրկ կին պարտաւորեալ է իւր դայեակութեան*

վարձքէն՝ մի մասն վարձեալ կնոջ տալ. եւ մնացեալ մասովն՝ իւր ընտանեկան ապրուստ հոգալ: Ձեզ կը թողում, Հայոց ճշմարիտ մայրեր, որ դուք դատեցէք, այս երկու մայրերէն ո՞րն է աւելի յանցապարտ. կարօտագին դայեա՞կ, որ առ չքաւորութեանն՝ իւր կաթը կը վաճառէ, թէ հարուստ տիկին, ու անուցիչ կերակուրներէն լիանալով ու յափրանալով՝ թաթաղուն զեղուն լցուած ստինքները աղբիւրի պէս կաթ կը հոսեն, այլ անխղճաբար կը խցէ այդ կաթնաբուխ ակները: Բարեսիրտ տիկին երկու զրկանք ի միասին կը գործէ, զրկանք մի իւր բընածին մանկան. զրկանք մի եւս դայեկին մանկան՝ որոյ բաժին կաթն դրամով կը գնէ: Ո՜հ, աղքատիկ մօր կաթն՝ իւր խեղճ տղեկին կեանքն է, արդեօք տիկին մայր՝ իւր մանկան կեանքը չը՞ զոհեր: Այո՛, այսպէս է աշխարհիս դատաստանը, երբ հզօրները զանզօրը կը ճմլեն, զարմանք չէ, որ տիրոջ եւ տիկնոջ մանուկը նոյնպէս խանձարուրէն սկսի յաղթահարել ու ճնշել ծառային դայեկամօր մանուկը:

Աւա՜ղ, եւ ա՜հ, որչա՞փ անբնական, որչա՞փ անգթական, եւ որչա՛փ անարգ ու դժուարատար է դայեկին կեանքն ու վիճակը. որոյ մայրական սիրոյն եւ գորովոյն վերայ կը բռնանայ թշուառութիւնը մինչեւ կը ստիպուի դժբախտ կինը թողուլ իւր արգանդին ծնունդն եւ երթալ անասնոց կաթի պէս վաճառել իւր կաթն. որով թերեւս կարենայ երկու կեանքը միանգամայն պահպանել, եւ մերթ եւս իւր ամուսնոյն կեանքը. որ կամ ծոյլ եւ անաշխատ կեանքի մէջ անպիտան է եւ կամ ընտանեկան պարտիքները մոռացող մոլորամիտ մարդ է. որոյ աչքը կնոջ ձեռքն է եւ կը սպասէ նորա վաստակով ու հացով ապրիլ:

Թողումք այս պարագաները, որ տկար կնոջ համար շատ ծանր ու դառն են. աւելի դառնագոյն պարագայ մի կայ, որ ի ներքուստ կը տանջէ մանկամայր դայեկին սիրտն ու ոգին: Ո՜հ. բնական ու մայրական սիրոյն գորովն է այն, որ հանապազ կը մորմոքէ, կը կտրտէ ծնողական աղիքները, երբ կը տեսնայ օտար մանուկ իւր գիրկը, անդէն երեւակայութեան մէջ կը յիշէ զայն որ իւր մայրական կաթէն ու գրկէն զրկուած է: Նա կենդանի մայր է. քար չէ, այնչափ կը վշտակրի ու կը դառնանայ սրտին ցաւոց մէջ. որոյ անհնարին դառնութեան չափը՝ միայն մօր սիրտ կարող է զգալ ու չափել:

Ով որ մայր է թող հետաքրքիր լինելով առանձին քննէ, փորձէ դայեկամօր ցաւակիր սիրտը, թէ ի՞նչ են նորա տխուր

մտածմունք, թէպէտ նա արտաքուստ ուրախութիւն կը կեղ-
ծէ, զուարթ կ՚երեւի, գուրգուրալով կը փայփայէ զմանկիկ,
տիկին կը հաւատայ թէ իրօք մայրական սիրով կը սիրէ, չը
գիտէ թէ խեղճ դայեկին սիրտը արիւնով ու ցաւով լցուած է։
Մայրութեան եւ որդեսիրութեան բուռն զօրով միշտ կը յու-
զեն նորա սիրտը. եւ կը շարժեն նորա ոգին, որ իւր բնածնունդ
զաւկին ոգիէն կախուած է. ամէն վայրկենի մէջ կը յիշէ ու
կը դառնանայ։

Այլ պատմեմ իբրեւ վկայ եւ ապացոյց ասացածիս, ինչ որ
մի գիտող եւ բարեսիրտ տիկին պատմեց ու ես լսեցի։

Մի օր մանկամայր տիկին դայեկին սենեակ կը մտնէ այն
պահուն՝ երբ նա տղուն կաթ կուտար. եւ կը տեսնայ որ դա-
յեկին աչքերէն կաթ կաթ արտասուք կը հոսին մանկան երե-
սին վերայ։ Կը հարցնէ տիկին, թէ ինչո՞ւ համար կուլաս եւ
ի՞նչ է պատճառ։ Դայեակը թէեւ առաջին անգամ ծածկել կ՚ու-
զէ սրտին ցաւը. բայց երբ կը ստիպէ տիկին նա կը պարտա-
ւորի խոստովանիլ։

Ինչպէ՛ս խօսիմ. տիկին, եւ ի՞նչպէս բացատրեմ սրտիս
դառնութիւնը՝ կը պատասխանէ դայեակը, անմայր մանկիկս
յիշեցի եւ կուլամ. եւ միշտ կուլամ քեզմէ գաղտնի եւ առան-
ձին. մի գուցէ տեսնաս եւ կարծես, որ ցաւակիր մօր սիրտը
կը դառնացնէ կաթին քաղցրութիւնը. եւ կամ այս աղի ար-
տասուաց կաթիլները. որ կայլակելով աչքէս կը թափին մին-
չեւ ի կուրծքս, եւ մանուկը կը ծծէ զայն կաթին հետը։ Կ՚ա-
ղաչեմ, մի զայրանար տիկին, դայեկին կեանքը թշուառ է.
ամէն ժամանակ երբ կը յիշեմ ու կը մտաբերեմ. թէ իմ վար-
ձակալ դայեակը՝ զաւկիս կաթ կուտա՞յ, թէ իւր զաւկին հա-
մար իմ զաւակս կը զրկէ. վասն զի մի քանի տարի յառաջ, մի
սիրական զաւակս կաթնազուրկ մեռաւ։ Գիտէ՛ք, տիկին, այն
կիները, որոց մեր զաւակները յանձնելով՝ մեր տնէն տեղէն կը
հեռանամք եւ կուգամք ձեր զաւակաց համար կաթնտու կը
լինիմք. ա՜հ, այդ անկարեկիր կիները միթէ մօր պէս կը խը-
նամեն մեր զաւակները։ Ո՛չ, շատ անգամ կաթնակարօտ կը
մեռցնեն. երբեմն եւս ծանր քուն լինելով՝ խեղճ տղեկը կամ օ-
րօրոցին մէջ լալով՝ եւ կամ անկողնոյ մէջ շնչարգել ընելով կը
խեղդեն։ Ջեմ յիշեր, որ մերթ եւս իսպառ անհոգ լինելով ա-
ռանց հսկողութեան կը թողուն մանկիկը՝ որով այլեւայլ վը-
տանգներու կը պատահի։

Բայց իրաւունք չունիմ այսչափ մեղադրել այդ կարօտա-

ւոր կիները, որոնք մեզ պէս թշուառ են, աղքատութեան ու չքաւորութեան աղագաւ կը պարտաւորին երկու դիեցիկ երախաներն միանգամայն սնուցանել· որպէս թէ երկուորեակ ծընած լինին:

Վշտամայր դայեկին խօսքերը եւ իր արտասուքը շատ եւ կարի սրտառուչ են, որուն վերայ մարդ կարեկցելով պէտք է խորհրդածի· եւ առաւել պէտք է տիկին մայրերը զգան եւ խորհրդածեն· թէ քանի՞ դառն ու դժուարին է սնուցիչ դայեկին վիճակը· երբ նա հանապազ կ՚աղեկիզի իր զաւակին սիրով:

Երանի՛ թէ այդ բարեսիրտ տիկին հետաքրքիր լինելէն յետոյ, իր մայրական սրտով ու գորովով դայեկին գորովը չափէր, գիտնար ու հաւատար թէ նա եւս իր պէս մայր է, սիրտ ունի, աղիք ունի, որ կը դալարի միշտ յիշելով իր հոգւոյ հատորիկ զաւակը· եւ մայրապէս կարեկցելով՝ դայեկին մանկիկն եւս բերել տալով՝ իր զաւկին հետը սնուցանել տար· եւ յայնժամ ազնուամիտ տիկին՝ տիրապէս առաքինի մայր կը հանդիսանար ընտանեկան կենաց մէջ:

Ես չգիտեմ· գթասիրտ տիկնայք կարո՞ղ են մի անգամ փորձել· թէ երբ դայեկին համար այս մեծ շնորհ լինի, ի՞նչ ազդեցութիւն կ՚ընէ նորա սրտին վերայ: Ինձ այնպէս կը թուի, որ դայեկին սիրտը յայնժամ մեծ երախտագիտութեամբ կը լցուի, զուարթ եւ ուրախ ոգւով, ամենայն հաւատարմութեամբ խնամ պիտի տանի տիկնոջ զաւկին· չէ թէ միայն վարձուց համար, այլ առաւել իր զաւկին սիրոյն համար· զգուշանալով որ երբէք տրտունջի պատճառ չը տայ, մի՛ գուցէ սորա համար իր սիրական զաւակը աչքէն հեռացնեն:

Խնդիր է եւ այս, թէ երբ դայեկին սիրտը ուրախութեամբ կը զեղու, արդեօք այս բարոյական սրտահաճոյ վիճակ՝ ազդեցութիւն չընէ՞ր նորա կեանքին եւ առողջութեան վերայ եւ հետեւապէս կաթին շատութեան եւ զեղման: Սոյն կէտն եւս կը թողումք բժշկաց, թող նոքա վճռեն:

Գիտեմ, այս անսովոր կարեկցութեան դասը խիստ դըժուարին կը թուի ազնուական տիկիններուն· որք թերեւս գըրկանք համարին իրենց զաւակաց համար· կամ թէ այնպէս կարծեն, որ մի առողջ եւ առոյգ դայեակը կարող չէ երկու մանկիկը ի միասին սնուցանել:

Առ այս ես կը լռեմ, բնութիւնը թող պատասխան տայ· որ շատ անգամ մի մօր երկու զաւակներ կը ծնին· երկուքն

եւս՝ մի մօր կաթով կ՚ապրին ու կը մեծնան. եւ միթէ Նախախնամութիւնը չէ՞ նախատեսեր, որ երկուորեակ ծնածներուն կաթ բաւելու համար՝ երկու ստեանց աղբիւր բացեր է մօր սրտին վերայ եւ երկու կաթնաբուղխ պտուկները կախեր է նորա կուրծքէն։

Քաջայայտ է ինձ, որ այս դժուարալուր խորհրդածութիւնը՝ զառանցանք կը համարուի արդի ժամանակին եւ ընտանեկան փափկութեան առաջ. այլ մեր փափաք եւ սկզբունքն է, որ բնական օրէնք տիրէ, Աւետարանին գթութիւն թագաւորէ. երբ աշխարհիս վերայ այնպէս կը կարծուի, որ այր մարդոց գութը նուազ է. գոնէ տիկին մայրերը գթած լինէին ու ճանչնային իրենց մայրական պարտիքները։ Ամէն մայր ու ծնողը իւր զաւակ սնուցանէր այն կաթով, եւ այն սիրով, զոր Նախախնամութիւնը մի միայն ծնողական անհրաժեշտ պարտիքը հաստատեր է։ Պարտազանց է ամէն ծնող, եթէ այս պարտիքը խղճի մտօք չի կատարէ։ Թող չի խոժոռին Հայոց տիկնայք. մենք չենք ասեր, որ դայեկութիւնը մեր ընտանեկան կեանքէն իսպառ բարձուի, հարուստ, ազնուական ընտանեաց մայրերը կաթնտու լինին. այլ այս խօսիլ կ՚ուզեմք, երբ փափկասուն կեանքը մոռցնել կուտայ այդ պարտիքը, գոնէ դայեկաց վիճակը՝ արժանի համարին իրենց կարեկցութեան, որ կին է, աղքատ ու ցաւած, մայր մի է իրենց պէս։

Այլ որովհետեւ աղքատութիւնը բռնաւոր է, աշխարհիս ամէն չքաւոր ընտանիքները կը պարտաւորին նորա լծոյն տակը խոնարհիլ։ Աղքատութիւնը ոչ մի այն այր մարդիկը ի ծառայութիւն կը վարէ. այլ եւ կիներ ու մայրերը, որք յակամայից կը պարտաւորին թողուլ իրենց լծակից ամուսին եւ անուշիկ զաւակները, ու երթալ ազնուականաց դռները դեգերիլ. որպէսզի աղախին լինին, դայեակ լինին, իրենց եւ ընտանեաց կարօտութիւնը լեցնելու համար։

Այսպէս երբ աղքատ ընտանիքները առ յոյժ կարօտութեան կը մոռնան իրենց երկանց զաւակները։ Միւս կողմէն եւս նոր աշխարհի նոր ժամանակի փափկասուն տիկինները ճշմարիտ մայրութեան պարտիքները կը մոռնան իրենց արգանդէն ծնունդն սնուցանելու անգամ մեծ ձանձրոյթ կը զգան, որպէս թէ մայրական խնամատարութիւնը՝ նուաստ եւ անպատիւ ծառայութիւն լինէր։

Երբ ընտանեկան մայրերը բուն ծնողական եւ բնական այդ պարտիքէն կը խորշին. այլ եւս ի՞նչ կը մնայ իրենց աշխա-

տութիւն։ Լո՛ւր որ պատմեմ քեզ, նոքա գիտեն անաշխատ կեանք վարել եւ երբէք չը ձանձրանալ. որոց վերայ տիրեր է առ հասարակ հեղգութիւն, մեղկութիւն, պարապ եւ ունայնախօս ընկերական կենակցութիւն. նոքա գիտեն անժամ այցելութիւններ մտածել, զբօսասիրութիւն հնարել, եկեղեցին երթալ, չէ թէ Աննայի ջերմեռանդութեամբ աղօթելու համար, այլ աւելի ցոյց տալ զիրենք, զիրար տեսնալ եւ բամբասանաց նիւթեր ժողովել։ Թողունք այս, միթէ այդպիսի մայրերը աշխատութիւն չե՞ն համարիր իրենց համար, ժամանակի չռայլ զեղխութեան մէջ սիրտ եւ հոգի մաշել, անձնատուր եղած են. այլ եւս ո՞ւր կը մնայ տիկնութեան եւ մայրութեան պարտիքները յիշել, տուն հոգալ, զաւակները բուն մայրական կաթ ջամբելով սնուցանել եւայլն։

Հապա ո՛վ դուք, Հայոց ազնուական տիկնայք, ես կը փափաքիմ, որ դուք ձեր բարեկեցիկ կեանքին մէջ՝ ձեր մայրական պարտիքները դարձեալ չի մոռնայք երբ ձեր այրերէն ոմանք ժողովուրդ կը հարստահարեն, դուք եւս աղքատ մայրերը չի հարստահարէք. նոցա զաւկին կաթը յափշտակելով։ Դուք ձեր խիղճը մի խաբէք ու ողողէք թէ կաթին գին կամ դայեակին վարձքը կը վճարէք. գիտցէք ստոյգ այդ վարձքը թէ բիւր անգամ աւելի վճարէք, կաթին փոխարէն չէ։ Եւ միթէ կը կարծէ՞ք. որ աղքատ մօր կաթն այնչափ աժան է. երբ դուք ձեր կաթն՝ նոյն իսկ ձեր զաւկին կը խնայէք։

Ես կը հաւատամ, որ մայրերը ի բնութենէ փափուկ սիրտ եւ խիղճ ունին, զգուշացէք որ զայն չի խեղդէք փափուկ կեանքի փուշերուն մէջ, զգուշացէք որ դայեկին զաւակը՝ կաթնասուէն մեռցնել չի տաք. եթէ երկիւղած ու ճշմարիտ մայրեր էք՝ պէտք է երկնչիք ու յիշէք, որ այդ աղքատ ու տառապեալ մօր տէր ու դատաւոր կայ. որ մի՛ գուցէ նորա զաւկին զրկանաց արիւնը ձեզմէ խնդրէ եւ դուք յայնժամ պարտական ու պատասխանատու մնաք։ Այլ ես կ'աղօթեմ, որ դուք ճշմարիտ մայրեր լինիք եւ ազատ մնաք այս դատաստանէն։

———o———

ԺԲ.

# ԸՆՏԱՆԵԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆ

## ԶԱՒԱԿԱՑ

---

Ընտանեկան կամ առտնին դաստիարակական վարժոցին մէջ ո՞յք են այն բնախօս եւ մեծ վարժապետները· որոց ի բնութենէ յանձնուած է իրենց զաւակաց կրթութեան հոգատարութիւնը։

Այդ՝ աշխարհ գիտէ· եւ բնութիւնը ինքնին կ՚ուսուցանէ, թէ ընտանեկան դպրոցին մէջ օտար մանկավարժ չի կայ· այլ միայն նոքա են հեղինակ ու դաստիարակը, որոց պատկառելի եւ քաղցր անունը՝ հայր եւ մայր կը կոչուի։

Այո՛, մանուկները մի ճշմարիտ եւ նախախնամող բարի հայր եւս երկնից մէջն ունին, որ զիրենք կը ստեղծէ եւ կը բերէ ի լոյս· երկնքէն անձրեւ եւ արեւ, երկրէն հաց եւ ջուր բաշխելով՝ կը պահպանէ եւ կը սնուցանէ մանուկներու կեանքը· նոքա կ՚աճին ու կը զարգանան, եւ մեք կը զարմանանք տեսնելով, որ տհաս մանուկը՝ հասակաբարձ մարդ եղաւ։

Ուստի արդար չափով չափենք ու բաժնենք երկնից Հօր խնամք եւ ծնողաց պարտիքը։ Արդ երբ շունչ եւ կեանքը՝ երկնից Հօրն է, սքանչելի պատկերն ու կերպարանքն՝ երկնից Հօր, արեւ, անձրեւ, հաց եւ ջուր, երկնից Հօր· հասակն եւ աճումըն՝ երկնից Հօր· այլ եւս ի՞նչ կը մնայ երկրաւոր Հօր եւ մօր բաժինն, եթէ ոչ միայն դաստիարակութիւն։

Եւ ի՞նչ է ծնողական դաստիարակութիւնը, ուրիշ ոչինչ, այլ միայն կոյր ծնուած զաւակներուն աչքը դէպ ի բարին բանալ, սիրտն ու ոգին առաքինութեամբ կրթել· որպէս զի աշխարհը տեսնան, մարդոյն կեանքը տեսնան, լոյս ու խաւարը որոշեն, բարին ու չարը ճանչնան· եւ մեծ քան զամէն՝ զԱստուած ճանչնան ու հաւատան, կրօն եւ ճշմարտութիւն ընդունին։

Եւ իրա՞ւ է արդեօք որ մանուկներն առ հասարակ կոյր կը ծնին· ո՞չ ահա կը տեսնամք որ պայծառ աչեր ունին· կը տեսնան ու կը խաղան հրապարակներու մէջ։ Եթէ մանուկներն ի ծնէ կուրին պէս աշխարհ կուգան· այլ եւս ի՞նչ մեղադրութիւն կայ իրենց ծնողաց· միթէ ծնողք կարո՞ղ են Յիսուսին պէս

*ձեռք դնել եւ հրաշագործելով կոյրերը լուսաւորել:*

*Այդպէս է, հայրեր ու մայրերը հրաշագործ չեն, նոքա կարող չեն մարմնով կոյրերը բժշկել. այլ մեր խօսքը՝ մանուկներու մտաւոր կուրութեան վերայ է, որոց բժշկութեան լոյսը՝ ծնողաց դաստիարակութեան ձեռքն է. եւ այդ ձեռքը՝ պարտաւոր է, որ անդուլ անդադար գործէ ընտանեկան կեանքին մէջ, եւ մշակէ նորա դարաստանին նորատունկ ծաղիկները: Այդ ձեռաց պարտիքն է այո՛ որ խլէ մանուկներու սրտէն անպիտան եւ խոտան բարքը, սերմանէ ու տնկէ նոցա տեղը ճշմարիտ բարին եւ օգտակարը:*

*Մենք կը հաւատամք. եւ Դաւիթը կը վկայէ թէ Աստուած առանձին առանձին կը ստեղծէ մարդոց սիրտերը, եւ նոցա գլխոյն մէջ կը զետեղէ հանճարոյն ամանը: Բայց գիտենք նաեւ, որ այդ կենդանի ամանը ի սկզբան դատարկ է, երբ մարդը մանուկ է ու տղայ. եւ ո՛վ կը լեցնէ առաջին նուագ այդ անբաւ դատարկութիւնը, թէ բարի եւ թէ չար գաղափարաց նիւթերովը յայտ է թէ այդ պարապ ամանին մօտ ու մերձաւոր ձեռքը՝ միայն ծնողաց ձեռքն է. ինչ որ ուզեն՝ զայն կարող են լեցնել, եթէ բարի եւ եթէ չար:*

*Ահաւասիկ սկիզբն աստի է բարւոյն ու չարին. ապա թէ ոչ ուստի՞ կը յաւելուն բարի ու չար մարդիկը մարդկային ընկերութեան մէջ: Միթէ դոցա սկզբնական աղբիւրը ընտանեկան կեանք չէ՞: Ես վկայ ունիմ ու կը բերեմ աստ Յիսուսի վճռական բանը, որ մարդոյն սիրտը՝ բարի եւ չար գանձուց աղբիւր կը համարի. «Մարդ բարի, ի բարի գանձուց սրտի իւրոյ բղխէ զբարի, եւ մարդ չար՝ ի չարէն բղխէ զչար:»*

*Ուստի մարդ ինքնին կարող չէ մակաբերել, թէ մարդ իւր մանկութենէն սկսեալ իւր սրտի գանձարանին մէջ հետզհետէ կ՚ընդունի թէ բարին եւ թէ չար. եւ զոր ինչ ընդունած է նախապէս՝ զայն միայն կ՚արտադրէ դուրս նմանապէս թէ բարին եւ թէ չարը:*

*Մանուկ՝ մինչդեռ մանուկ է, չգիտէ որոշել չարն ու բարին. ինչ որ իւր ծնողաց բերնէն լսէ, եւ ինչ որ նոցա կեանքի մէջ օրինակով տեսնայ՝ զայն միշտ բարի կը կարծէ. եւ միթէ ծնողք իրենց որդւոց համար չարակա՞մ են, թէեւ իրենք չար լինին: Առ այս կը խօսի Յիսուս իւր Աւետարանով. «Թէ «Դուք որ չարքդ էք, գիտէք պարգեւս բարիս տալ որդւոց ձերոց» եւայլն:*

*Աւետարանին այս ակնարկութիւնը, որ երկնաւոր հօր եւ*

*երկրաւոր ծնողաց բարիքները համեմատելով՝ ցոյց կուտայ թէ քանի՜ առաւել եւ գերագոյն է Երկնաւոր Հօր՝ տուած բարիքները, եւ միանգամայն եւս ցոյց կու տայ թէ քանի՜ առաւել եւ գերագոյն է Երկնաւոր Հօր տուած բարիքները, եւ միանգամայն եւս ցոյց կուտայ թէ երկրաւոր ծնողք՝ միայն բարեաց մատակարար կը լինին այս առօրեայ կենաց մէջ. անցաւոր բարիքները եւեթ գիտեն պարգեւել իրենց որդւոց. զոր օրինակ հարստութիւն, գանձ, հայրենի ժառանգութիւն եւ աշխարհիս այլեւայլ նիւթական բարիքները։*

*Մեծապէս կը սխալին ծնողք, եթէ այնպէս հաւատան, որ այս նիւթական բարիքները, առանց հոգեկան ու բարի դաստիարակութեան՝ մնայուն ու ճշմարիտ բարիք են որդւոց համար։ Ո՛չ, մեք փորձով կը տեսնամք աշխարհիս վերայ, որ հարուստ մեծատանց զաւակները, երբ առանց հիմնաւոր դաստիարակութեան հայրենի մեծագանձ փարթամութեան ժառանգորդ եղած են, եւ որոց կեանք ու վարքը պատմութիւնը շատ օրինակներով կը հանէ մեր առաջ, զոր կարդալով կը խելամտիմք, թէ այդպիսի անդաստիարակ ժառանգորդները վերջոյ չքաւորեր են. ագնուական ծնելով՝ սրուկ մեռեր են. եւ փոխանակ իրենց տոհմական անունը յարատեւ փառաց մէջ բարձր պահելու՝ զայն ջնջեր են անարգութեամբ, անյիշատակ եւ անանուն գնացեր են աշխարհէս։*

*Ուստի յետամնաց զաւակներու համար,ստոյգ, հիմնական ու յարատեւող բարիքը՝ միայն ուղիղ դաստիարակութիւնն է. առանց այս ճշմարիտ պայմանին՝ Նոքա՝ ինչպէս կը խօսի Իմաստունն, ծնողական փտեալ արմատէն բուսած փուտ շառաւիղներ են։ Որք թէպէտ առ ժամանակ մի անպտուղ ծաղիկներով կը ծաղկազարդին, եւ այնպէս կը կարծեն մարդիկ աչքախաբ լինելով՝ թէ այդ ընտանեկան դարաստանը բախտաւոր ու երջանիկ է. կ'անցնին մօտէն եւ երանի կուտան, տեսնելով զայն իբրեւ Լիբանանու անտառը բարձրացած։ Կ'անցնին եւ ապա յետս դառնալով կը դիտեն՝ որ այլեւս ոչ զոյ։ Ընտանի շառաւիղներն արմատովին խլուած են, մեծագանձ փարթամութիւնը՝ վատթար կեանքի մէջ փճացեր է, հայրենի շէն տուն՝ անշէն աւերակ դարձեր է. եթէ մնացեր է մի մնացորդ ճիւ, այն եւս աւերակ տան փողոցի անկիւն նստած հաց կը մուրայ. անցորդներուն առաջ վկայ լինելով՝ թէ ես քանդեցի հօրս տուն։ Այս է ահա վախճանը անդաստիարակ*

գաւակներուն, եւ այս է արդիւնք եւ պտուղը նիւթապաշտ եւ անհոգ ծնողաց։

Ո՛վ կը հաւատայ թէ աշխարհիս թշուառ աղքատները՝ ամէնքն եւս դառն ու դժբախտ դիպուածներէն մուրացիկ եղած են։ Ո՛չ, այդպէս չէ, մարդիկ կը պատմեն ու կը վկայեն, եւ ես նոյն իսկ ներկայ կեանքին մէջ կը տեսնեմ ու կը ճանաչեմ զիրենք՝ որ հայրենի տան ապարանից բարձր պատշգամէն իջեր խոնարհեր են մինչեւ գետնի փոշիի վերայ, չորաբեկ մի կտոր հացի անգամ կարօտ մնալով։ Անշուշտ նոքա այդ անբախտ վիճակին հասնելով՝ անազան ուրեմն կուշաբերին, ինչպէս այն կրտսեր անառակ որդին, զոր ի դէմս մեր բերելով կը խօսի Յիսուս, եւ կամ թէ այն չարաժառանգ զաւակը, որոյ համար կը պատմեն հին իմաստասիրաց բանք. թէ հայրենի տան բազմազանձ հարստութիւն շռայլաբար վատնելով՝ մի օր առուի եզերք նստած չորաբեկ ու ցամաք հացը ջուրի մէջ թաթխելով պարկեշտաբար կ՚ուտէր Սոկրատ բարոյական իմաստասէրը հոն պատահելով՝ կը դիտէ եւ կ՚ըսէ այս բանը. «Պատանի դու, եթէ այդպէս կեցեալ էիր, այժմ զխորտիկս ճաշակէիր»։

Աշխարհիս ընկերական հրապարակի մէջ, ջուրերուն եզերքը որչա՞փ կան այնպիսի ապերջանիկ զաւակները, որք իրենց շռայլ կեանքին երեսէն ազնուական բարձրութենէն ի թշուառութիւն խոնարհեր են, որով իրենց հայրենի տան տոհմական փառք իրենց վերայ կը վերջանայ։

Այսպէս է, մշտապէս վառ չի մնար տան ճրագ, եւ կը շիջանի շուտով երբ դաստիարակութեան լուսով վառուած չէ։ Ուրեմն զաւակաց ապագայ կեանքը՝ ծնողաց դաստիարակութենէն կախումն ունի։ Եթէ ի սկզբան մատաղ զաւակները բարի եւ ուղիղ դաստիարակութիւն ստացած են այլ եւս տարակոյս չի կայ որ հայրենի տան ճրագ մշտավառ կը մնայ, եւ ընտանեկան առհասարակ բարեկեցիկ կեանք կը վարեն։

Սակայն գո՛նէ գրենք փոքր ի շատէ, թէ ընտանեկան կենաց մէջ ի՞նչ եւ ո՞րչափ են ծնողաց կրթական դասերը, եւ կամ բարի եւ ուղիղ դաստիարակութեան պայմանները։

Ծնողական դաստիարակութեան մէջ առաջին մեծ դաս եւ առաջին մեծ գիտութիւնը կրօն եւ Աստուածպաշտութիւնն է. եւ սորա միակ դասագիրքն է Աստուածաշունչ մատեանը. թէպէտ բարձր եւ վսեմ գաղափարներ են Աստուածպաշտութեան գաղափարները. մանուկները կարող չեն ըստ արժանւոյն ըմբռ-

նել զայն. ինչպէս արդի դաստիարակ մատենագիրներէն ոմանք փորձառապէս կը դիտեն՝ թէ խիստ ապաժամ է մանուկներու անզօր միտքը դէպ ի երկինք հանել, որ դեռ իւր շրջապատ եղած երկրի բաները չգիտէ։

Ես կ՚ընդունիմ այս կարծիքը, այլ ես չեմ խօսիր աստ այն դասերուն համար՝ զոր դպրոցի ուսմանց կարգին հետ կ՚աւանդեն կրօնուսոյց դասախօսները. ես կը խօսիմ կրօնի նախակրթութեան վերայ, որ դաստիարակութեան շէնքին առաջին հիմնաքարն է, եւ զոր պէտք է միայն ծնողաց ձեռքը այդ երկնից արքայութեան հիմնաքարը ձգէ ու հաստատէ մանուկներու սրտին մէջ։ Չեմ խօսիր նաեւ, որ ծնողք իբրեւ աստուածաբան վարդապետ ճառեն կրօնի բարձրութեան վերայ։ Ո՛չ, ծնողաց դասերը շատ պարզ ու բնական են. մանուկ երկինքը եւ աստղերը տեսնելով՝ զաներեւոյթ Աստուած կ՚ըմբռնէ. նա երկիր, ծառեր ու ծաղիկները տեսնելով հետաքրքիր կը լինի, կը հարցնէ գիտնալ կ՚ուզէ թէ ո՛վ է երկնի եւ երկրի զարդարող Արարիչը։ Մանուկ շատ անգամ իւր սրաբիբ աչքերը տիեզերքին վերայ ածելով՝ ինքնին գիտես թէ ուշադիր կը լինի եւ իմանալ կ՚ուզէ ի՞նչ է արեւ, ի՞նչ է լուսին, ի՞նչ են աստղերը եւ ի՞նչ է աշխարհ, ծովն ու ցամաքը։

Մանուկ իւր այս հարցաքննութեան մէջ փաստ չի խնդրեր ծնողաց դասերուն, թէեւ սխալ ինի՝ նա ուղիղ եւ կատարելապէս կը հաւատայ, բաւական է, որ ծնողք ձանձրոյթ չը զգան, այլ երկայնամիտ ոգւով պատասխանեն ինչ որ մանուկը կը հարցանէ։

Կրօնի եւ Աստուածպաշտութեան դասերը՝ դժուարին եւ անըմբռնելի դասեր չեն. մանուկներ եւ պարզամիտները հաւատով շուտ կ՚ըմբռնեն զայն, վասն զի Աստուծոյ յայտնութիւնը տղոց համար է, ինչպէս կը յայտնէ Յիսուս. «Հայր, գոհանամ զքէն, զի ծածկեցեր զայս յիմաստնոց եւ ի գիտնոց եւ յայտնեցեր տղայոց»։ Այո՛, Յիսուսի յայտնութիւն սիրող աւելի Գալիլեացի տխմար ձկնորսներ էին. եւ գեղացի բոկոտն փոշոտ մանուկներն, որ կը վազէին նորա գիրկը, որ գրագէտ դպիրները արհամարհելով կ՚անցնէին։

Ծնողական դասերուն մէջ ճարտարախօսութիւն, փիլիսոփայութիւն բնաւ պէտք չունի, հապա գիջանելով՝ մանկական հասակին համեմատ հարկ է պարզ, ընտանի եւ սիրալիր խօսքերով աւանդել կրթութիւնը։ Գիտնալով, որ տղայոց դաստիարակութեան մեծ պայմանն՝ ծնողական գորովն եւ բնա–

*կան սէրն է. միայն թէ այդ սիրոյն մէջ չը գեղծանին ծնողք, կամ չափազանցութեամբ եւ կամ խիստ եւ անհոգ սառնութեամբ:*

*Այս երկու կերպ վարմունքն եւս միօրինակ վնասակար են դաստիարակութեան եղանակին մէջ: Վասն զի չափազանց սէրը՝ չափազանց ազատութիւն եւ համարձակութիւն յառաջ կը բերէ տղայոց դիւրազգաց եւ անհաստատ բնաւորութեան մէջ, այլ եւ այլ յոռի կիրքերով հանդերձ. որով կը լինին նոքա կամակոր, ինքնահաւան, զայրացկոտ, եւ սաստիկ պահանջող:*

*Իսկ չափազանց խստութիւնը՝ կը ճնշէ եւ կը ջլատէ տղայոց բնաւորեալ աշխոյժ եւ զուարթ ոգին, որով կը բթանայ միտքը, սիրտ կը թանձրանայ եւ որդիական գորովն թմրիլ կ'սկսի: Շատ անգամ եւս կը դառնանայ, կը սրտմտի իր ծնողաց դէմ. մանաւանդ երբ ծնողք չարաչար անարգանօք ու բրածեծով՝ դաստիարակութեան հին փորձ կը փորձեն տակաւին:*

*Յոռի դաստիարակութեան զաւակները այս կերպով վրէժ կը լուծեն իրենց խստասիրտ ծնողքներէն, եւ իրենք եւս գիտեն թէ օրինակ առնելով խստապարանոց կը լինին. եւ կը մոռնան ծնողական մեծ երախտիք, մօրն անոյշ գրկարանին կաթն եւ հօր սեղանին հացն:*

*Զարմանք չէ, որ անարգ դաստիարակութիւն այս արգասիքը համէ, եւխստութիւնը՝ ուրիշ խստութիւնը ծնանի: Վասն զի ծնողք միայն մարմնով չեն ծներ իրենց զաւակները, այլ բնաւորութեամբ եւս կը ծնին, որով ընտանեկան կեանքին մէջ զաւակները բնապէս սովորած են իրենց ծնողաց բնաւորութենէն եւ օրինակէն փոխ առնել: Արծւոյ չափ սրատես են մանուկներու աչքը, քաջ կը դիտեն իրենց ծնողաց կեանքը եւ շարժումն. եւ ըստ այնմ կ'ընդունին եւ կը հետեւին եթէ առ չարն՝ եւ եթէ առ բարին:*

*Ուստի ծնողաց ամենամեծ եւ սեպուհ պարտիքն է, որ բընախօս ու մտաւոր դաստիարակութենէն առաւել, բարի գործոց օրինակով դաստիարակեն իրենց զաւակները: Թող համոզուին ամէն ծնողք, որ մի բարի օրինակ առաւել ազդու եւ տպաւորիչ է քան հազար խրատ. եւ սորա բնական պատճառն այն է որ մեր աչքին զգայարանքը շատ զգայուն եւ ներընդունակ է, որ իբրեւ ներս կ'ընդունի եւ կը տպաւորէ զայնս մեր սրտին եւ ոգւոյն վերայ:*

*Մանուկները թէպէտ պատանի եւ երիտասարդ հասակի մէջ՝ երբ ընտանեկան կեանքէն դուրս արտաքին ընկերութեան*

մէջ կը մտնեն, շատ չարօրինակ դայթակղութիւնները կը տեսնան, կամ կը խորշին եւ կամ կ՚ընդունին. բայց ամենէն աւելի չարադոյն դայթակղութիւն է այն, զոր մանուկները ընտանեկան կեանքի մէջ կ՚ընդունին. եւ առաւել եւս չար այն է, եթէ բուն ծնողաց օրինակներէն ընդունին: Երանի՜, հազար երանի այն ծնողաց, որ միշտ արթուն լինելով կը հսկեն իրենց կեանքին եւ անձին վերայ. որպէս զի երբէք դայթակղութիւն եւ չար օրինակ չտան՝ իրենց զաւակներուն: Իսկ վա՜յ եւ եղո՜ւկ այն անզգոյշ ծնողաց, որք ընտանիք եւ մանուկները իբրեւ չմարդ համարելով՝ իրենց անբարի կեանք ու վարմունքը նըշաւակ կը կացուցանեն նոցա առաջ, արտաքին եւ օտար դայթակղութենէն աւելի՝ իրենք իսկ դայթակղութիւն կը լինին զաւակաց ու ընտանեաց, եւ նոցա ապագայ կեանքը մանկութեան մէջ կը մեռցունեն:

Յիսուս ամէն դայթակղութիւն տուողաց համար սոսկալի պատիժ կը սպառնայ, եւ բարւոք կը համարի, որ նոքա շուտ բարձուին աշխարհէս եւ իշոյ երկան կապելով նոցա պարանոցը ձգուի ծով, թող մինչեւ յանդունդ սուզանի ծածկուի նորա չարօրինակ պատկեր եւ յիշատակը մարդոց աչքէն, որ այլ եւս չը կարենան տեսնել ու դայթակղիլ:

Արդ հաւատացէք, ով դուք ընտանեաց ծնողք, որ պատասխանատու էք առաջին Աստուծոյ, եւ միանգամայն մարդկային ընկերութեան առաջ եթէ չար զաւակը թողուք աշխարհիս վերայ. դուք երթալէն յետոյ՝ ձեր մեղքը պարանի պէս ձեր ետեւէն կը ձգէք, որով ոչ միայն սոսկ մի ընտանեկան կեանքը կը գեղծանէք, այլ եւ ժողովուրդ, ազգ եւ հայրենիքը:

Այսպէ՛ս, ինչ որ յոռի դաստիարակութիւն կը քանդէ, ուղիղ դաստիարակութիւն կը շինէ, եւ սորա շինողք բարոյական ճարտարապետները՝ միայն ծնողն են առ տնին կենաց ու դաստիարակութեան պաշտօնին մէջ:

Ոչ ոք թող այնպէս չը համարի եւ այնպէս չի հաւատայ, թէ չարութեան դայթակղութիւնը ինքնին եկաւ մեր աշխարհ. եւ եղծեց ապականեց մարդկային ընկերութիւնը: Ո՛չ, չարութիւն իւրաքանչիւր ծնողք բերին յաշխարհ ու աւանդեցին իրենց զաւակաց, եւ զաւակները՝ թոռներուն. ու այսպէս ընտանեկան շրջանէն սկսելով տարածուեցաւ ու ծաւալեցաւ մարդկային ընկերութեան մէջ՝ չարութեան ժանտ ու ապականիչ սերմերը:

Մենք չենք խօսիր աստ սկզբնաչար նախանձուն վերայ, որով առաջին մահ եւ գայթակղութիւն մեր աշխարհ մտաւ. այլ կը խօսիմք այն ամէն նորածին գայթակղութեանց վերայ, զորս ակներեւ կը տեսնամք թէ մարդիկ կը ծնին զայնս ու կը բղխեն իրենց չար գանձուց սրտէն եւ կը կարծեն թէ չարութիւնը ինքնին ծնունդ առած է, առանց մարդոյն ձեռաց, զի ասաց Քրիստոս, «Վա՛յ մարդոյն այնմիկ, յոյր ձեռն գայցէ գայթակղութիւն»:

Ուստի ամէն ջանք ու խնամք պէտք է տանին ծնողք բարի մշակութեամբ ընտանեկան կեանքի պարտիզէն խլել, ու չքացնել չարասերմ բոյսերը, գիտնալով, որ միայն իրենք են իրենց պարտիզին դարմանող մշակները, ուրիշ ոչ ոք չիկայ:

Կարի յոյժ կը սխալին այն ծնողք, որ զաւակաց դաստիարակութեան պարտուց բեռը՝ դպրոցին եւ մանկավարժից վերայ կը թողուն, որոց պարտականութիւնն՝ միայն ուսուցանելն է, զի մանկավարժները միայն մտքին հետը կը խօսին, սրտին եւ հոգւոյն հետ բան չունին: Այդպիսի ծնողք թերեւս այնպէս կը կարծեն, թէ առանց ծնողական սիրոյ կամ հեղինակութեան ընտանեկան կեանքէն դուրս՝ դաստիարակութիւն կայ աշխարհիս վերայ. եւ կամ օտար վարձկան մարդը՝ որչափ բարի ու հաւատարիմ կը լինի թող լինի, կարող է ի բնութենէ այնպէս սիրել ու կրթել ինչպէս գորովասիրտ ծնողք, որոց միայն տուեր է բնութիւնը ծնողական սրտին բուռն սիրոյ բընական զգացումն:

Եթէ ծնողք դեռ հնապաշար մտքով այնպէս կը հաւատան, որ իրենք միայն զաւակ ծնին. եւ դպրոցը դաստիարակէ: Ուրեմն Յիսուսի խօսած Աւետարանական վճիռը երկբայելի է: Զի նա կը խօսի հովիւներու համար թէ «Վարձկան է եւ չէ նմա փոյթ վասն ոչխարաց»: Եւ դուք կը հաւատա՞ք, ո՛վ հայրեր եւ մայրեր, եթէ ձեր ընտանեկան գաւթին մէջ ծնած այն մատաղ գառնուկներու համար ձեզմէ դուրս ու ձեզմէ աւելի հոգատար սիրտ եւ ձեռք կայ աշխարհիս վերայ: Ո՛չ բնաւ, կը ստրջանայք եւ կը խաբուիք դուք, եթէ այդպէս կարծէք, վասն զի եթէ ամէն հայր եւ ամէն մայր նոյն ծնողական գորովով՝ կարենային բնապէս սիրել ուրիշին ծնած զաւակը, աստի մի ուղիղ հետեւութիւն հանելով կ'ըսեմք՝ թէ ուրեմն խորթ մայրը ծներ է: Եւ եթէ տակաւին չէք համոզուիր, ապացոյց կը խնդրէք, ուշի ուշով նկատեցէք այն երկու մանկաբեր կիներուն բողոքն ու դատաստանը, որ առաջին անգամ Սողոմոնին ատ-

*եանը ելաւ, եւ այն իմաստուն վճիռը արձանագրեց Սուրբ Գիրքը, որոյ վերայ աշխարհիս դատաւորները կ'ապշին։*

*Գիտցէք նաեւ ընտանեկան դաստիարակութեան մէջ կատարեալ կրթութիւնը՝ ծնողաց կենդանի կեանքն է, եւ ոչ թէ դպրոց· այդ գործնական կեանքը որչափ ուղղութեամբ վարի, ուղիղ շաւղով քալէ, այլեւս ո՞վ կը տարակուսի, որ զաւակները խոտորին ծնողաց ուղղագիծ շաւղէն։*

*Որչա՞փ զարմանալի է, եւ արժան է իսկ եթէ ապուշ համարինք այն ծնողքը· երբ իրենք կրթական կեանքին ուղղութենէն շեղելով միակողմանի կը քալեն· եւ կը պահանջեն, որ իրենց զաւակները ուղղութեամբ քալեն· որոց համար շատ յարմարագոյն է Խեչափառին առակը· որ խրատ կուտար իւր ձագուն ուղիղ քալել։ Ճարտար ձագը իսկոյն պատասխան կուտայ· «Հայր, ես կը տեսնամ քո միակողմանի քայլելը»։*

*Արդ, եթէ ճշմարիտ եւ գործնական կրթութիւնը՝ ընտանեկան կեանքի մէջ միայն ծնողաց անխոտոր շաւիղ եւ ուղղավար կեանքն է, ուրեմն կնքելով մեր ճառը, այս խրատն աւանդենք ամէն ծնողաց, որ նախ իրենց կեանքն ուղղեն եւ ապա իրաւունք ստանան իրենց զաւակները խրատելու։ Վասնզի իրենք երբ կրօնի պարտաւորութեանց մէջ զաղջ եւ մեղկ են, թող չը սպասեն որ Կիրակի առաւօտ զաւակները իրենցմէ կանուխ Եկեղեցի երթան, եթէ զեղխ ու շռայլ են, թող չը յուսան, որ նոքա սակաւապէտ եւ խնայիչ լինին, եթէ արբեցող եւ անառակ են, ո՛վ կ'ակնկալէ, որ որդիքները պարկեշտ ու համեստ լինին· եթէ անգործ, անաշխատասէր են, ով չգիտեր որ զաւակները աւելի եւս անհոգ դատարկաշրջիկ կը լինին եւն։*

*Ահա այսպէս ծնողաց յոռի կեանքը՝ զաւակներուն կը թափանցի իբրեւ ժառանգութեան ախտ, նոյնպէս բարի ծնողաց առաքինի կեանք ժառանգութիւն կը մնայ որդւոց յորդիս, որով թէ ընտանեաց եւ թէ ազգին ու ժողովուրդին համար բարի զաւակները կը պատրաստեն եւ ճշմարիտ հայր ու մայր եւ բարի դաստիարակ կը հանդիսանան աշխարհիս վերայ, որոց յիշատակը միշտ օրհնութեամբ լի է։*

——o——

ԺԳ.

# ԶԱՒԱԿԱՑ ՊԱՐՏԻՔ

## ԱՌ ԾՆՈՂՍ

Մանուկ կաթնկեր, որ թէպէտ նա դեռ իմացականութիւն չունի․ բայց բնազդեցիկ բերմամբ մօր գրկին մէջ առաջին անգամ կ'զգայ եւ կը ճանչնայ սէր։ Մանուկը, եթէ չեմ սխալիր, մօր միջնորդութեամբ եւ վկայութեամբ կը ճանչնայ նաեւ իւր հայր․ եւ ահա սոյն ճանաչման մէջ կը ծնի ծնողասիրութեան զգացումն եւ որչափ ինքն կ'աճի ու կը զարգանայ, պէտք է այնչափ մեծնան իւր սրտին մէջ ծնողասիրութեան պարտիքը։

Եւ ի՞նչ են այս պարտիքները․ ահա մի առ մի բացատրեմ քեզ։ Բնական եւ Աստուածային պարտիք է նախ եւ առաջ ճանչնալ, թէ իւր կենաց եւ գոյութեան պատճառը՝ իւր ծնողքն են, եթէ չլինէին ծնողք, ինքն այս աշխարհիս վերայ ոչ լոյս պիտի տեսնար, ոչ արեւ, եւ ոչ մարդ պիտի կոչուէր, եւ կամ մարդկային ընկերութեան կարգ խառնուէր․ այլ պիտի մնար չգոյութեան մէջ անծնունդ եւ անանուն։

Այո՛, զաւակաց պարտիքն է ճանաչել զծնողս, եւ ծնողական ծայրագոյն սէր չափել պէտք է, թէ չկայ աշխարհիս վերայ ուրիշ ոք, ոչ եղբայր, ոչ քոյր, ոչ բարեկամ, ոչ ազգական եւ ոչ իսկ ամուսին, որ զինքն այնչափ զօրովով սիրէ ու խանդաղատի․ անձն՝ անձին, եւ հոգին՝ հոգւոյն փոխան տայ, ինչպէս ծնողք։ Ուստի ծնողական սիրոյ այս մեծ իրաւունքը, նոյն փոխադարձ սէր կը պահանջէ զաւակներէն․ զոր սրտի մտօք պէտք է հատուցանեն ու պարտական չի մնան։

Ճանաչել եւ հպատակիլ պէտք է, ընտանեկան կենաց եւ առ տնին փոքրիկ թագաւորութեան մէջ՝ քանի՞ բարձր ու փառաւոր է ծնողաց իշխանութեան աթոռ, թէպէտ եւ սորուկ լինին նոքա, աղքատ լինին եւ իբրեւ անքաղաքացի չինական իբրճիթին մէջ ապրին, դարձեալ միշտ մեծ են ծնողք, որ քաղցր եւ անընդհատ սիրով կը հրամայեն, որոց կամակատար հնազանդութիւն մատուցանել արժան է, ինչպէս տիեզերք Աստուածպետական աթոռին առաջ։ Չկայ բնաւ օրէնք եւ իրաւունք մի որ զաւակներ ազատ եւ անհնազանդ կացուցանէ ծնողաց բնական և պարտաւորիչ իշխանութենէն, բայց միայն Հաւատք, Խաչ ու Աւետարանը, որ իւր հաւատացեալները յԵկեղեցի կը կոչէ․ Թողուլ եւ մերժել հարկ է յայնժամ ծնողաց սէր եւ հրամանը, Յիսուսի առաւել սիրոյն համար, ըստ այնմ՝ թէ որ

սիրէ զհայր կամ զմայր առաւել քան զիս, չէ ինձ արժանի։

Ճանաչել պէտք է նաեւ թէ որդիքները որչա՞փ երախտապարտ են առ ծնողս, որք ոչ միայն երկանց վիշտերով ծներ են զիրենք՝ այլ եւ բազմադիմի չարչարանքներ, տառապանքներ, եւ կարօտութիւններ կրելով՝ պահեր ու դարմաներ են զիրենք, որոց տրիտուր եւ փոխարէն պէտք է հատուցանեն որդիք երբ ծերութիւն կը հասնի ծնողաց վերայ, կամ մերթ եւս տարաժամ հիւանդութիւնք եւ փորձութիւնք կը շրջապատեն զիրենք։ Այս դառն տառապանաց մէջ ո՛վ մխիթար պիտի լինի ծնողաց սրտին, եթէ ոչ զաւակները՝ որոց անհրաժեշտ պարտականութիւնն է, ամենայն սիրով դարման տանել ծնողաց մինչեւ գերեզմանին դուռը, եւ ձեռքով ի հող դնել նոցա խոնջեալ գլուխ եւ աշխատեալ անձն։

Բարեծնունդ եւ օրհնեալ զաւակները մինչեւ ցվախճան ծնողաց ամէն պարտիքները կատարելու միշտ յօժարափոյթ են. բայց արդի ժամանակիս Հայոց ընտանեկան կեանքին մէջ կ'երեւին շատ անգամ անխրատ, ապիրատ, անգութ, աննուէր, ստահակ, անհնազանդ ծնողաց, անհաւան եւ անառակ զաւակները, որք հօր եւ մօր անկշիռ երախտիք, խնամք, գութ եւ սէր ոտնահարելով՝ ինքնամերժ կը լինին հայրենի տունէն, ուր որ մոլեկան կիրք զիրենք կը վարէ։ Նոքա անձնատուր կը լինին վատաբարոյ ընկերաց եւ կը վարեն անառակ կեանք ու վարք. եւ ինչպէս ճշգրիտ կը նկարագրէ Աւետարանին առակը, նոքա իբր ծառայ եւ ստրուկ խոզարած կը լինին, զեղխ եւ զազիր կենաց մէջ թաւալելով. ոչ միայն կը վատնեն հայրենի ժառանգութիւնը՝ այլ եւ հոգին, մարմին առ հասարակ անարգ ցանկութեան եւ վատթարութեան մատնելով կը կորուսանեն։ Զգիտեմ կա՞ն արդեօք այդ անառակ դասէն ոմանք, որ անառակ որդւոյն օրինակին հետեւելով՝ մտաբերեն հայրենի տուն ու հացալից սեղան եւ որդիութեան ազատ կեանք, յետս դառնան այդ չարավար տղմալից կեանքէն, զգաստանալով գան խոնարհին ծնողաց գթոյն առաջ ու վերստին ստանան իրենց նախնի փառքն ու պատիւ։ Զգիտեմ նաեւ թէ այսպիսի դարձող ու ստրջացող անառակաց համար պիտի գտնուի՞ն այնպիսի վեհանձն ու որդեսէր ծնողք, որ երկնաւոր հօր նմանելով ընդառաջեն եւ ողջագուրելով համբուրեն անառակ զաւակին կորացեալ պարանոցը, թէ աններող խստասրտութեամբ ծնողական սիրոյն եւ գթոյն դուռը փակելով՝ թողուն, որ տարամերժեալ թշուառ զաւակը հայրենի տան դրան առաջ ինկած՝

Ղազարոսին պէս անտէրունչ եւ սովատանջ մեռնի։ Եւ ի՞նչ կ'ընեն յայնժամ փառասէր ու խստասիրտ ծնողք, իսկոյն կը հաշտուին անշշունչ դիակին հետը, մեծ պատուով եւ շքով յուղարկաւորութեան հանդէս կը կազմեն եւ կը թաղեն անառակ որդին իբրեւ մեծատան զաւակ։

Մի՛ կարծեր դու, ընթերցող, թէ այսպիսի եղերական դէպքեր կամ անառակ զաւակները չկան Հայոց ազգին մէջ, այլ թէ խելամուտ լինիս, մեր ազգային կամ ընտանեկան կեանքին մէջ մտնես ու շրջիս, պիտի տեսնաս շատ կարդացող անառակ որդիները, մանաւանդ Բիւզանդիոնի եւ այլ ծովեզերեայ քաղաքներու մէջ. ուր որ կը կարծենք թէ քաղաքակրթութիւն, դպրոց, ուսումն յառաջ գնացած են։ Այո՛, այդ այդպէս է. բայց անդաստիարակ յառաջդիմութիւնը մեր ընտանեկան կեանքը չի բարւոքեր. ինչպէս քսան տարիներէ ի վեր սկսեալ մինչ այսօր թէ փորձով եւ թէ օրինակով մեք կը տեսնամք եւ կը համեմատենք ազգին անցեալն եւ ներկայն։

Դառնանք այժմ բարի զաւակաց ուրիշ պարտիքները յիշեցնել։ Այո՛, բարեժառանգ զաւակները շատ պարտիքները ունին առ ծնողս, թէ ի կենդանութեան եւ թէ մահուանէն յետոյ, թէ երկրիս վերայ եւ թէ երկնից մէջ, օրհնեալ եւ գովեալ են այն բարեյիշատակ ծնողք, որ այդ սուրբ պարտիքները անթերի կը կատարեն, որոց կեանք եւ վախճանը միշտ բարի կը լինի աշխարհիս վերայ եւ ընտանեկան բարեկեցիկ երջանկութեան մէջ. ինչպէս կը յորդորէ խրատատուն Սողոմոն իւր առակախօսութեամբ. թէ «Պատուեա՛ զհայր եւ մայր, զի բարի լինիցի քեզ». եւ ընդհակառակն հայր եւ մայր անարգողաց համար նզովք կը կարդայ. «Որ անարգէ զհայր եւ զմայր, բիբք աչաց նորա խաւարեսցին»։ Ո՛հ, ո՛րչափ խստութեամբ կը դատի Սողոմոն այն ապաշնորհ զաւակները, որ ծնողական սիրոյն դէմ կ'ապերախտին, որոց հատուցումն անաչառ արդարութեամբ կը վճռէ ինքն, որ այնպիսի չար յիշատակ զաւակները կուրնան, լոյս եւ արեւ չի տեսնան, խաւար աչքով շրջին աշխարհիս վերայ, որպէսզի տեսնան ու սոսկան հաւատարիմ ու հնազանդ զաւակները։

Ուրեմն ո՛վ դուք, որ աշխարհիս վերայ հայր եւ մայր ունիք. ընտանեկան կենաց ու ծնողական գրկարանին մէջ կ'ապրիք. թէ մեծ եւ թէ փոքր, թէ անդրանիկ եւ թէ կրտսեր, թէ քոյր եւ թէ եղբայր, առ հասարակ ձեզ յորդոր խօսելով համառօտեմ ճառիս միտքը եւ ձեր պարտիքները, ուշադիր ե-

ղիք: Գիտէ՛ք, ո՛վ են նոքա որ ձեզ կեանք տուին, այս աշխարհ բերին. նոցա անուն հայր եւ մայր կը կոչուի, եւ ձեր ծնողքն են. դուք պարտաւոր էք նոցա, սէրը՝ սիրոյն դէմ փոխարինել. դուք պարտաւոր էք նոցա, կաթին եւ հացին դէմ՝ Ցակոմբ Նահապետին պատրաստած խորտիկը փոխարինել. որպէսզի արժանապէս ժառանգէք Իսահակայ հօր օրհնութիւնը: Դուք պարտաւոր էք ամենայն ակնածութեամբ խոնարհիլ ձեր ծնողաց առաջ, հնազանդութեամբ լսել, մեծարանօք ընդունիլ այն ամէն հրամանները, որ ձեզ եւ ընտանեկան կենաց համար բարի եւ օգտակար են: Դուք պարտաւոր էք ողջակիզին փայտ շալկել, անդիմադարձ երթալ մինչեւ Բեթէլին լեռը եւ հոն թողուլ, որ ձեր թեւեր կապուին ինչպէս Սահակ՝ Աբրահամ սուրբ նահապետին առաջ: Բան մի չիկայ ինչպէս միանգամ յիշեցի առաջ. բայց միայն Աւետարանի բանը կարող է այդ պարտուց պինդ կապը քակել. եթէ Աբրահամ թողու հաւատքը, դառնայ ի Խառան իւր հօր Թարայի տունը, պաշտէ հայրենի կուռքը. Սահակ խաչը գրկէ մնայ ի Բեթէլ եւ Գողգոթային գլուխ:

Դուք պարտաւոր էք, երբ կը ծերանան եւ կը զառամին ձեր ծնողքը, դուք նոցա որդի մխիթարութեան եւ ցուպ ծերութեան լինիք. ամենայօժար սիրով խնամել, դարմանել եւ երբէք չը տրտմեցուցանել զիրենք: Դարձուցէք նաեւ ձեր աչքը Քամայ ժպիրհ եւ հայրածանակ օրինակէն, Նոյի պարկեշտ եւ երկիւղած որդւոց պէս ծածկեցէք ձեր ծնողաց առականքը. որ ընտանեկան տան պատիւն է. զգուշացէք, հայր եւ մայր բամբասողները՝ Աստուծոյ եւ մարդկանց առաջ շատ մեղապարտ են:

Դուք պարտաւոր էք դարձեալ, հայրենի տան փառք, ճրագ, տոհմական ազնուականութիւնը նոյն ճոխութեան եւ փառաւորութեան մէջ պահել, եւ ջանալ միշտ չաղարտել երբէք ճշմարիտ ազնուականութեան պատիւը: Եթէ աշխարհիս բախտը ձեր վիճակ այնպէս հաներ է, որ դուք աղքատ ծնողաց զաւակ լինիք, շատ է թէ նոցա բարոյական առաքինութիւնը ժառանգէք, որ ադամանդէն, ոսկիէն եւ կորստական հարըստութենէն աւելի մեծ է: Գիտցէք նաեւ, այն ազնուականաց զաւակները, որոնք հայրենի տան հարստութիւնը դիւրապէս կը ժառանգեն, այնչափ մեծ ու գովելի չեն. հապա այն իսկ է աւելի փառք եւ պարծանք, որ ձեր ազնուականութիւնը ձեզմէ սկսի. որով դուք իրաւամբ հայրենի տան հիմնադիր ազնուա-

կան կը լինիք։ Եւ քանի՞ գորովանաց արժանի են այն վատ, հեզգ եւ անվաստակ զաւակները, զորս կը հրաւիրէ Սողոմոն որ երթան մրջիւնին գործունէութիւն տեսնեն։ Նոքա թէպէտ կը պարծին, թէ իրենք ազնուականաց զաւակներ են, բայց վատթար եւ վատնիչ տնտեսութեամբ վարուելով՝ հայրենի տան ազնուականութիւն իրենցմով կը վերջանայ, կը չէջանի տան պայծառ ճրագը։ Նոքա, որ երբեմն տէր էին՝ ծառայ եւ ստրուկ կը դառնան։ Մուրացկանաբար կը շրջին եւ մերթ եւս հանգանակութիւն կ'ընէ նոցա համար Եկեղեցին. ծանուցանելով թէ ճոխ հարստութենէ ինկած արժանաւոր եւ թշուառ անձ մի է. կը խնդրէ որ Եկեղեցւոյ մէջ ծածկեն իւր անունը, երբ ինքն հրապարակին մէջ յայտնապէս կը մուրայ։ Դուք մի այնպէս կարծէք թէ հարստութենէ ինկած ամէն դժբախտներն երկնից կամ աշխարհիս պատահարներէն են. ո՛չ, դոցա մեծ մասին անկումն՝ բուն իրենց վարած անչափաւոր կեանքէն է։

Բաւ կը համարիմ ձեզ համար այսչափ ո՛վ հաւատարիմ զաւակներ, յուշի պահեցէք ինչ որ գրեցի. լիովին հատուցէք ձեր ծնողաց պարտիքները. որքան Աստուած, օրէնք եւ բնական ծնողասիրութեան գութը պարտաւոր կը կացուցանեն զձեզ։ Յիշեցէք Յիսուսին բանը, «Ի՞նչ չափով որ չափէք ըզձեր ծնողս, դուք եւս նոյն չափով պիտի չափուիք. եւ ինչ որ ցանէ մարդ, նոյն կը հնձէ»։ Սողոմոնի առակը կը խրատէ զձեզ. որ դուք ձեր հօր եւ մօր օրհնութիւնը միանգամայն ժառանգէք։ Բաւ չէ որ միայն հայրն օրհնէ, այլ նա եւս մայրն օրհնէ, վասն զի եթէ մայրն անիծէ, տան հիմերը կը խախտուին։

Ժառանգեցէք ուրեմն երկու բերանոց օրհնութիւնք, որպէս զի ձեր կեանքը եւ վախճանը միշտ բարի ու բարդաւաճ լինի։

———o———

ԺԴ.

# ՄԱՀ ԾՆՈՂԱՑ
## ԵՒ
## ՕՐՀՆՈՒԹԻՒՆ

---

*Նոքա, կը ծնին յաշխարհ, նոքա մեռնելով կ'երթան աշխարհէս հայրեր ու մայրեր կ'երթան. զաւակները՝ նոցա տեղը կը փոխանակեն: Բնական կարգն եւ օրէնքն է այս. Թէեւ շատ անգամ մահուան տապարը անխտիր կը հատանէ մատաղատունկները եւ հաստաբուն կաղնիները կը թողու:*

*Ո՛վ են այդ հինաւուրց կաղնիքը. որք կը բարձրանան ընկերական ծառաստանին մէջ եւ իրենց համասփիւռ հովանիքը կը տարածեն իրենց շառաւիղներուն վերայ. Նոքա հայրեր ու մայրերն են, որոց երբ կը մօտենայ մահ իւր տապարով, զայն կը տեսնայ ծերունի նահապետ. երբեք չի սոսկար մահուան դաժան երեսէն, այլ գոտեպնդեալ կը պատրաստուի իւր հայրական օրհնութիւն տալ ընտանեաց, եւ ապա վերջին շունչը պարգել:*

*Ինչպէս կը տեսնամք Ծննդոց գրքին մէջ քանի մի նահապետաց դասին. Աբրահամ աստուածապաշտ նահապետին մահուան համար այսպէս կը պատմէ Սուրբ Գիրք. Թէ «Հասեալ ի բարւոք ծերութեան, ալեւորեալ լի աւուրք յաւելաւ առ ժողովուրդս իւր»: Նահապետները գրեթէ բոլորն եւս ծաղկեալ ծերութեամբ ու բնական մահով կը մեռնէին. եւ սորա պատճառն էր՝ նոցա անստգիւտ կեանք, ողջախոհ և անարատ վարք, պարզ ու սակաւապէտ սեղան, հողագործ մշակութեան անխարդախ վաստակ եւայլն, եւ քան զամէնն աւելի Աստուծոյ օրհնութիւնը, որ բարդաւաճ կ'առնէր զիրենք:*

*Նահապետական կենաց մէջ ծերոց օրհնութիւն հայրական ու պապկենական պարտիք մի էր: Այն ինչ դաշտային վրանին տակ Նահապետին վերջին օրերը կը հասնէր, նա կը ցանկար վերջին ընթրիքը վայելել իւր զաւակաց ձեռքէն, եւ աւելի անդրանիկին, ինչպէս կը տեսնամք Իսահակ նահապետին վախճանը, որ կոչելով զԵսաւ, ասաց. «Որդեակ, ահաւասիկ ես ծերացած պիտի մեռնիմ. առ դու զքո նետաղեղն գնա ի յորս,*

փափուկ որսիկ մի բեր ինձ, խորտիկ շինէ, ուտեմ ու օրհնեմ զքեզ»։ Բայց, ինչպէս ծեր Նահապետի ցանկութիւն էր որդիքները օրհնել, այսպէս եւս որդւոց համար կարի նախանձելի էր հօր օրհնութիւն կանխապէս ժառանգել, ուստի ճարտար Յակովբ իւր մօր խրատով փութաց ու յաջողեցաւ Իսահակայ օրհնութիւնը իբրեւ անդրանիկ ժառանգել՝ որ կրտսեր էր։

Իսկ Յակովբ Նահապետի օրհնութիւնը իւր որդւոց համար շատ նշանաւոր է, որ երկոտասան նահապետները կանչելով, անդրանիկէն սկսեալ մինչեւ կրտսեր որդին կ՚օրհնէ․ եւ այս օրհնութեան նիւթը իրենց կեանքէն կ՚առնէ․ եւ ըստ այնմ կը յարմարէ իւր խօսքերը, եւ միանգամայն իբրեւ մարգարէ նախապէս կը գուշակէ նոցա ապագայ կեանքն ու վախճանը։

Բարի Նահապետ որ սուրբ ողջախոհութեան նախանձաւոր էր, չի մոռնար անդրանիկ Ռուբէնին ոճիրը․ որ յանդգներ էր իւր հօր անկողին ելնել․ ուստի թերեւս այս ակնարկութիւն կ՚ընէ նորա համար․ «Իբրեւ զջուր մի եռասցիս»․ որով թերեւս այս ակնարկութիւն կ՚ընէ․ թէ նկուն եւ անզօր լինիս իբրեւ սառուցեալ ջուր, կեանքիդ մէջ չեռաս ինչպէս նոր եւ զօրաւոր գինին ամանին մէջ։ Նոյնպէս չի մոռնար Շմաւոն եւ Ղեւի եղբարց ոխակալ վրէժխնդրութիւնն․ որք իրենց քրոջ բռնաբարութեան համար խորամանկութեամբ սուր հանին Սիւքեմայ բնակիչները անխնայ կոտորեցին։ Ընդ որ մինչեւ ցօր Մահուան սրտմտելով մարգասէր Նահապետ կը գայրանայ իւր օրհնութեան մէջ եւ կ՚ըսէ․ «Շմաւոն եւ Ղեւի եղբարք, կատարեցին զանիրաւութիւն ի կամաց իւրեանց․ ի խորհուրդս նոցա մի մտցէ անձն իմ... Անիծեալ սրտմտութիւն նոցա, զի յանդուգն էր եւ ոխութիւն նոցա, զի խիստ էր։ Կը թողում այլեւս այս կարգին մէջ յառաջ բերել Յուդայի օրհնութիւնը, որ շատ նշանաւոր է․ Կորիւն առիւծոյ կ՚անուանէ զնա եւ ձեռքըդ, կ՚ասէ, քո թշնամեաց թիկանց վերայ զօրանայ եւ այլն։

Աստի խելամտել պէտք է թէ այդ երջանիկ նահապետները, որչափ որ բարի եւ արժանաւոր զաւակաց համար բարձր ու փառաւոր օրհնութիւն կուտային․ նոյնպէս չար եւ ստահակ որդիքները անիծիւք յիշելով, նոյն իսկ մահուան պահուն մէջ կը յանդիմանէին զիրենք որով այդ յանդիմանութիւնն եւս օրհնութիւն կը դառնար նոցա համար եւ թափանցելով որդւոց սրտին մէջ կուղղէր, եւ ի զգաստութիւն կը տանէր նահապետին մահուանէն յետոյ։ Վասն զի բարի եւ առաքինի հօր գերեզմանը եւ յիշատակը ի հողէն եւս կը խօսի եւ կը դաստիա—

րակէ կենդանի զաւակները։ Օրհնութեան շնորհը՝ ոչ միայն մնացորդ զաւակները կը խրատէ ու կը պահէ, այլեւ դարէ ի դար, տոհմէ ի տոհմ հաստատ կը պահէ հայրենի տուն եւ գերդաստանը։ Եւ առ այս կը վկայէ առակախօս իմաստունն թէ «Օրհնութիւն հօր հաստատէ զտուն որդւոյ. եւ անէծք մօր խախտեն ի հիմանէ։» Սողոմոնին այս վճռական խօսքը կ'ակնարկէ. թէ մօր անէծքն եւս նոյն համազօրութիւն ունի՝ ինչպէս հօր։ Բարի է, թէ որ զաւակները իրենց ծնողաց օրհնութիւնը միապէս ժառանգեն։ Օրինակ մի յառաջ բերենք. եթէ մի հայր իւր մահուան օր բարի տեսնայ իւր զաւակները ու արժանի համարի իւր օրհնութեան, իսկ մահուանէն յետոյ չարանան որդիքները, և մայր՝ որ տակաւին կենդանի մնացած է՝ անիծէ զիրենք, անշուշտ այս պարագային մէջ վերջին անէծքը՝ առաջին օրհնութիւնը կ'եղծանէ իրաւամբ, վասն զի անէծք եւ օրհնութիւն Աստուծոյ արդարութեան ձեռքն է, որ առաքինի որդւոց գլուխը երկնից ցօղ կը թափէ. իսկ անբարի չարժառանգ զաւակաց՝ կարկուտ եւ հարուած։ Նկատել արժան է այս. եթէ ծնողք ի բնական գթոյն եւ սիրոյն վարեալ՝ օրհնութիւն կարդան ապիրատ զաւակաց. ես չեմ հաւատար որ այդպիսի օրհնութիւնը հաճոյական թուի երկնից հօր առաջ. որ թէպէտ չարաց ու բարեաց վերայ իւր մարդասիրութեան անձրեւ հաւասար կ'ածէ, այլ մերթ եւս կը տեսնամք, որ իւր արդար ցասումն ի գործ դնելով ամբարիշտ մարդոց տունը կը քանդէ։ Ինչպէս քանդեց եւ արիւնով լուաց Աքայաբին եւ Եզաբելին տունը, Թագաւոր եւ Թագուհին՝ աւերակաց մոխրով ծածկեց։ Աստուած արդարութեան դատաւոր միշտ այնպէս կը դատի. Սողոմոնին վճռագրով, թէ «Անէծք Տեառն ի տունս ամբարշտաց. յարկք արդարոց օրհնին»։

Ուրեմն, ո՛վ դուք ծնողք, որ հայր եւ մայր վեհ անուան արժանացած էք, եւ որ աշխարհիս վերայ տուն եւ ընտանիք կազմէք. եթէ կը ցանկայք, որ ձեր վախճանէն յետոյ ձեր տուն, ձեր գերդաստան, ձեր ամէն ժառանգութիւն եւ ձեր գործը մշտնջենաւոր մնայ, ձեր անունը եւ յիշատակ աշխարհիս վերայ օրհնութեամբ յիշուի, ստոյգ եւ ճշմարիտ օրհնութեան պատրաստեցէք ձեր զաւակները։ Մի անհոգ զանցառութեամբ սպասէք. ձեր այս Նուիրական պարտիքը՝ ձեր մահուան տագնապի օր կատարելու. երբ անբարբառ կը լինին մարդոյն շրթունքները ու բերանը. այլ անդստին խանձարուրէն եւ օրօրանէն սկսեցէք ձեր օրհնութեան դասերը. այսինքն

ծնողական դաստիարակութիւն եւ խրատ, որ լի եւ զեղուն օրհնութիւն կը բերէ ամբողջ տան եւ ընտանեաց վերայ։

Ուստի այս անանց օրհնութեան կտակը աւանդեմ ձեզ։ Դուք այնպէս օրհնեցէք, որ նոքա երկնից իմաստութիւնը ճանչնան ու բարձր համարին, աշխարհիս, ընչաւոր իմաստութեան վերայ չի պարծենան։ Օրհնեցէք, որ նոքա հայրենատուր սուրբ կրօն, հաւատք սուրբ հարց աւանդութիւնն՝ անարատ ու անեղծ պահեն, Հայաստանեայց Եկեղեցին սիրեն․ Թադէոսի եւ Լուսաւորիչ Հօր հօտէն ու փարախէն չի բաժնուին։ Օրհնեցէք, որ նոքա Աւետարանը գրկեն եւ սորվին նորա սիրոյ դասերը․ եղբայր սիրեն, ընկեր սիրեն, մարդասէր լինին։ Օրհնեցէք, որ ազգ սիրեն, հայրենիք սիրեն եւ նորա հին անչքացեալ փառք ու յիշատակը չի մոռնան։ Նորա կիսակործան տաճարները յիշեն, օրհնեցէք, դաստիարակեցէք, որ նոքա ուսումն սիրեն․ գիտութիւն սիրեն, դպրոց սիրեն, գիրք սիրեն, յառաջդիմութիւն պատուեն։ Օրհնեցէք եւ ուսուցէք․ եթէ քաղաքացի են՝ նոր աշխարհի այլ եւ այլ արհեստները սորվին․ անխարդախ լինին վաճառելոյ եւ գնելոյ մէջ։ Իսկ եթէ չինական են, հող սիրեն, մաճ սիրեն, եւ աշխատութիւն սիրեն․ ափ մը հայրենի նուիրական ու սեպհական հողերէն ձեռքէ չի հանեն։ Ի վերջոյ օրհնեցէք, որ նոքա ամուսնասէր լինին, տնաչէն եւ տնտես լինին․ բարի եւ ազնուական ընտանիք կազմեն, որով միայն հնար է որ ազգային կեանքը բարւոքի, բարձրանայ իւր համբաւ եւ փառք։

Արդ կը մնայ մեզ, որ աշխարհիկ ընտանեկան կեանքէն դուրս ելնելով՝ խիստ արժան է նահապետական օրհնութեանց հետ յիշել նաեւ այն սուրբ հարք, որ իբրեւ հոգեւոր ծնող կը համարուին եկեղեցւոյ որդւոց․ որոց օրհնութիւն առաւել բարձր ու համատարած է ընդհանուր Եկեղեցւոյ բոլոր զաւակաց վերայ։

Զգիտեմ, մեր Հայաստանեայց Եկեղեցւոյ որդիքները մեր սուրբ Հարց օրհնութիւն ժառանգեցին առ հասարակ․ եւ կամ նոյն երանելի հարք թէ բնական մահուամբ եւ թէ նահատակութեամբ երբ գնացին աշխարհէս, արդեօք օրհնեցի՞ն զհայրենի աշխարհ եւ այնպէ՞ս հրաժարեցան։ Ո՛չ, Պատմութիւն յանդիման կը հանէ մեզ, թէ ոմանք այդ չնաշխարհիկ հայրերէն, որ Քրիստոսի հօտին անձնադիր հովիւներէն էին, նոքա խռովեցան յոյժ, դարձուցին իրենց դէմքը ապաշնորհ որդւոց երեսէն ու սրտամնաց վշտակրութեամբ մտան ի գերեզման․

Սուրբն Գրիգոր Սեպուհ լեռան գլուխը անշուշտ կ'աղօթէր եւ կ'օրհնէր զհայս. բայց միանգամայն կուլար այն ապիրատ որդւոց վերայ, որ դաւաճանեցին սուրբն Տրդատը. Արիստակէս Ծոփաց աշխարհին մէջ հայրադրուժ իշխանի մի ձեռքով խողխողեցաւ. նոյնպէս Յուսի եւ Դանիէլ՝ հաւատամերժ Տիրան թագաւորին ձեռքով: Հապա մոռնա՞նք մեծն Ներսէս եւ Սահակ Պարթեւ, յորոց մին թունալի բաժակը ինքնակամ խմեց. խմեց եւ դառնութեամբ անիծեց այն ապերախտ գլուխը, որոյ համար Յունաց կայսրութենէն թագ բերէր էր. իսկ միւս սուրբն Սահակ անխորհուրդ նախարարաց կամակորութեան եւ մատնութեան համար միթէ չողբա՞ց ու չը հառաչե՞ց մինչեւ գերեզմանին դուռը:

Այսպէս ահա մեր պատուական սուրբ հարք գնացին աշխարհէն. եթէ նոքա Յիսուսի հեզութեան նմանելով իրենց հալածչաց եւ սպանողաց դէմ նոյն ձայնով աղօթեցին. «Հայր, թող սոցա...» Սակայն առանց օրհնութեան հեռացան. վասնզի անիրատ եւ ապառում որդիքները չը կամեցան նոցա օրհնութիւնը ժառանգել: Որով, մեր տուն ու տեղը քանդուեցաւ:

Եթէ կը հաւատայք, Հայոց որդիքները, թէ Աստուած դատաստանը այսպէս տեսաւ որ դատեց. ուրեմն անցելոյն մեղքը ներկային մէջ քաւելով ուշաբերիմք, ճշմարիտ հաւատարիմ եւ անձնադիր հարց ու հովուաց օրհնութիւնը միշտ ժառանգել, չապերախտիլ երբէք նոցա դէմը. այլ ըստ Պօղոսի խրատուն յարգել Եկեղեցւոյ ընտիր վաստակաւոր եւ աքնող մշակները, որոց թիւը միշտ օր ըստ օրէ պակասեցաւ. եւ Հայոց եկեղեցւոյ հունձերը անմշակ մնացին այսօր: Երանի՜ թէ, աղաչող հաւատացեալ որդիքները չը պակսէին, որով թերեւս գթար Տէր ու լսէր նոցա աղաչանաց:

Այսչափ համառօտ յիշատակութիւնը հերիք է Եկեղեցւոյ հարց օրհնութեան համար. այժմ դառնամք նոյն ընտանեկան նահապետաց օրհնութեան վերայ, եւ աւարտեմք այս գլուխը, յորդորելով, որ ամէն ընտանեաց բարեկեցիկ զաւակները թէ բնական պարտեօք թէ Սուրբ Գրոց հոգետու խրատներով պարտաւոր են իրենց ծնողաց օրհնութիւն արժանապէս ժառանգել. հեռի եւ ի բաց մնալով այն ամէն ապերախտութենէ, որ ստահակ, անհնազանդ եւ անժառանգ որդիքները կը հատուցանեն

*իրենց ծնողաց. որոց կեանքն ու վախճան աշխարհիս վերայ դառն ու կարճատեւ է եւ ոչ երբէք երկայնակեաց կը լինին նոքա երկրիս վերայ:*

---

*ԺԵ.*

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԿՏԱԿ

### ՑԻՇԱՏԱԿ

---

*Ընտանեկան կենաց մէջ ծերունի Նահապետք իրենց վերջի օրհնութենէն յետոյ՝ վերջին անհրաժեշտ պարտք մի եւս ունին, այն է կտակը, կեանք եւ յիշատակ, եւ կ'ապրին նոքա հազարաւոր տարի, եւ նոյնիսկ գերեզմանին մէջ:*

*Կտակը տիրապէս կը նշանակէ այն սուրբ աւանդ եւ յանձնարարութիւնը, զոր մարդ իւր կենդանութեանը ուրիշ կտակակատար անձի մի կ'աւանդէ, որ յետ իւր մահուն կատարեն իւր կտակը՝ աննենգ եւ անվրէպ հաւատարմութեամբ: Կտակարար անձն շատ անգամ եւս իւր կտակը ինքնին ձեռօք կը կատարէ ի կենդանութեան եւ կամ կը փոփոխէ զայն: Նա անբռնադատ է այս իրաւանց մէջ, զի կտակը միայն իւր ազատ կամքէն կախումն ունի: Բայց ինչպէս կը վկայէ Պօղոս Առաքեալը՝ Կտակ յետ մահուան հաստատուն է, զոր եւ ոչ աշխարհիս Թագաւորաց բուռն հրամանը կարող է խախտել զայն կամ ըստ կամս փոփոխել:*

*Թէ Սուրբ Գրոց եւ թէ Ազգային պատմութեանց մէջ նկատելով կը տեսնամք, որ կտակը երկու կերպ աւանդուած է, կամ իբրեւ բարոյական պատուէր եւ կամ նիւթական նուէր: Նիւթականին օրինակները շատ կը տեսնամք մեր վաղեմի եւ արդի յիշատակարանաց մէջ, որ բազմաթիւ աստուածապաշտ անձինք թէ արք եւ թէ կանայք, իրենց սեպհական կալուածներէն կամ հարստութեան գանձէն կտակելով նուիրած են Եկեղեցեաց, վանորէից շինութեան եւ յարատեւ պայծառութեան՝ որոց առ հասարակ տէր եւ ժառանգորդ եղեր է ժողովուրդը առանց վաստակելոյ: Եթէ հետազօտեմք մեր նախնեաց ձեռա-*

գիր յիշատակարաններ, բազմաթիւ վանորէից ու տաճարաց արձանագրութիւնք պիտի գտնեմք, որ դոքա մեծ մասն՝ կտակաց շնորհիւ հաստատուած են առանձին առանձին իշխանաւոր ու հարուստ ընտանեաց ձեռքով։ Ով չի հաւատար որ Անւոյ հազար եւ մէկ Եկեղեցիք կտակաց ու յիշատակտուաց օժանդակութեամբ կառուցուած են, որոց անունները դեռ կը նշմարուին աւերակ ու կիսակործան տաճարներու վրայ։ Եւ ոմանք տեսնելով կը զարմանան ու այսպէս կը դատեն թէ Հայոց ճոխութիւն եւ երկրի գանձերը՝ վանքերու եւ հոյակապ տաճարներու շինութեան համար սպառած են։

Իսկ բարոյական կտակ ու պատուէրը, որ խառն է լի օրհնութեամբ ու դառն անիծիւք, այդ եւս սքանչելի կերպով կը տեսնամք Սուրբ Գրոց մէջ։

Աբրահամ նահապետ իւր վախճանին մօտ կասկածելով թէ գուցէ ինքն կանուխ մեռնելով՝ Իսահակ որդին մոռնայ հայրենի տան ազգակցութիւնը, պանդուխտ երկրի մէջ օտար ընտանեաց հետ ամուսնանայ, կը կոչէ իւր հաւատարիմ ծառայն եւ կտակաւ կը պատուիրէ որ Քանանացւոց երկրէն չընտրէ ամուսին Իսահակայ որդւոյն համար, եւ ուխտիւ երդում կ՚առնու իրմէն չդրժել այս կտակին դէմ։ Նոյնպէս Իսահակ Աբրահամէն ուսեալ՝ նոյն կտակաւ կը պատուիրէր Յակոբայ, Քանանացւոց երկրի աղջիկներէն չառնուլ, այլ միայն իւր մօրենական տան ազգակցութենէն ընտրել իւր ամուսին։ Յովսէփ նահապետին կտակը շատ նշանաւոր էր, որ ցանկութեամբ կը խնդրէր ու կ՚ըսէր· թէ՝ «Երբ Տէր Աստուած այցելութեամբ կը հանէ Իսրայէլի տան ժողովուրդը Եգիպտոսէն, հանէք եւ դուք իմ ոսկորներս այն երկրէն եւ տարէք ամփոփեցէք իմ հարց շիրիմներուն ծոցը։

Նահապետաց կտակէն յետոյ առաւել մեծ եւ նշանաւոր էր Մովսիսին կտակը, որ իւր վախճանին մօտ բոլոր Իսրայէլի ժողովուրդին կ՚աւանդէր, որ էր մի միայն Աստուծոյ օրէնք եւ պատուէրները, զորս կրկնելով կ՚աւանդէր Յակոբայ տան ու ընտանեաց· երկնից օրհնութիւն կը ցօղէր օրինապահ որդւոց գլխոյն, իսկ անէծք եւ նզովք կը սպառնար նոցա, որ ստունգանելով պատուիրազանց կը լինին։

Այլ մեր գթած Յիսուսի կտակը լի էր ամենազեղուն օրհնութեամբ· զոր վերջին ընթրեաց իրիկուն կ՚աւանդէր իւր սիրելի խմբին եւ բոլոր հաւատացելոց· Նորա սուրբ կտակը սէրն

էր, զոր միշտ կրկնելով կ'աւանդէր, եւ կտակագիրն Աւետարանն էր։

Այս կտակագիրը Թողուց Յիսուս. չէ Թէ մի ընտանեաց կամ մի ազգի համար, ինչպէս Մովսէս, այլ համայն Եկեղեցւոյ ընտանեաց կ'աւանդէ իւր հայրապատուէր կտակը, որ լի ու լի պատարուն է երկնատուր օրհնութեամբ. զի նորա սուրբ եւ անդրժելի կտակապատուէրը իւր աւանդած հաւատքն է, ընկերսիրութիւնն է, համատարած խաղաղութիւնն է, կարեկից համբերութիւնն է, Թողութիւն եւ ներողութիւնն է։ Եթէ մահկանացու մարդոց կտակ յետ մահուան այնչափ հաստատուն է, որչա՞փ անմահ Աստուածորդւոյն կտակը, որ խաչին արիւնով եւ նոր յաւիտենական ուխտիւ կնքուած է։

Ուստի Թէ Մովսէս, Թէ Յիսուս, Թէ Առաքեալք եւ Թէ Եկեղեցւոյ սուրբ Հարք, ինչ որ աւանդեր են, պարտաւոր կը մնան Եկեղեցւոյ ընտանիքը եԹէ զայնս անեղծ եւ հաստատուն չը պահեն։

Թողունք այս բարոյական կտակը, որ մեր մասնաւոր առարկայէն բարձր է, խօսինք դարձեալ նիւԹականին վերայ, որ աշխարհիս բախտաւոր եւ հարուստ ընտանեաց համար մի անհրաժեշտ պարտիք է։

Մարդ, Թէ այր եւ Թէ կին, երբ յիշէ իւր օրահաս վախճանը եւ մտաբերէ Թէ՝ ինքն մահկանացու է եւ պիտի մեռնի ու Թողու այս աշխարհս, ընտանիք, սիրելիք, դանձ, հարստուԹիւն եւ շատ կալուածները. իմաստուն եւ արդար տնտես է այն մարդը, եԹէ ցանկայ իւր մահուան եւ գերեզմանին մէջ եւս ապրիլ։ Եւ ի՞նչպէս, կտակաւ եւ բարի յիշատակով, այսինքն իւր սեպհական հարստուԹենէն մի բաժին հանէ ազգին. բաժին հանէ աղքատ ընտանեաց առանց երբէք զրկելոյ իւր տան ընտանիքը։ Երջանիկ կը լինէր ազգը, երջանիկ կը լինէր մեր հայրենիքը, եԹէ ազգին մէջ գտնուած իւրաքանչիւր դանձատէր անձինքը առանց կտակի եւ յիշատակի չմեռնէին։

Սակայն շատ բուռն է մարդկանց մոլեկան ագահուԹիւնը, որ մարդոց սիրտ եւ հոգին կը կապէ մինչեւ վերջին շունչ. նա հոգին տալու կը յօժարի, քան Թէ դանձ ու ստացուածք. նա իւր անգին հոգւոյն փրկանաց համար երբէք չի հաճիր դուզնաքեայ դանձ փոխարինել. Թէեւ հնար լինէր հոգին անդրէն վերադարձնել։ Ուստի ագահ մարդոց կտակը եւ անյագ տենչն այն է, որ իւր դանձը իւր հետ ի գերեզման տանի ու Թաղէ։ Եւ ճշմարիտ է այս, ապա Թէ ոչ՝ ի՞նչ է պատճառ, որ աշխար-

*հիս ազահները շատ անգամ իրենց գանձերը հողին տակ անյայտ կը թաղեն. ուր կը թաղեն նաեւ իրենց քարաժեռ սիրտը, ինչպէս կը վկայէ սրտագէտ Յիսուս թէ. «Ուր գանձք ձեր են, անդ եւ սիրտք ձեր եղիցին»:*

*Ոչինչ զանազանութիւն չունին ագահէն նաեւ այնպիսի մարդիկ, որ չափազանց ընտանեսէր լինելով վաղուան եւ ապագային համար հեթանոսաբար կը հոգան. իրենց ամէն ջանք ու վաստակը միայն իրենց գերդաստանին համար կը պատրաստեն. նոցա համար բնաւ փոյթ չէ ընկերսիրութեան պարտիք եւ կամ ազգին կարօտ ընտանիք: Եկեղեցի, դպրոց, կտակ եւ յիշատակ, այս ամէն՝ նոցա եւ այնպիսեաց մտքէն հանուած է: Նոքա Նախախնամութեան չեն հաւատար եւ կ'ուրանան երկնից Հօր խնամքը, որ ճնճղկան բունի ընտանիքը չի մոռնար, այնպիսիք որ թէպէտ իրենց ժլատութեան ձեռք մինչեւ ի գերեզման կը կծկեն, բայց ի պատիժ նոցա՝ ժառանգորդ ընտանիքը ամենայն շռայլութեամբ կը բանան իրենց ձեռքը ու անխնայ կը վատնեն բոլոր հարստութեան գանձը, որով ճոխ մեծատան ընտանիքը՝ կարօտ մուրացիկ կը լինին, որոց բազմաթիւ օրինակներն անցելոյն մէջ պատմութիւն կ'աւանդէ եւ ներկային մէջ մեք մեր աչքով կը տեսնամք:*

*Կտակարարութեան պարտիք միայն մեծատան ընտանեաց համար չէ, այլ ազգին իւրաքանչիւր անհատ անձինքը առանձին իրենց կտակն ունին: Արծաթով եւ անարծաթ կղերները թող մէկը իւր արծաթը կտակէ, միւսն իւր գիրք եւ խրատ: Թող կտակեն նոքա Եկեղեցւոյ որդիքներուն, հայրենատուր հաւատք եւ հարց աւանդութիւնք պինդ պահել: Թող կտակեն նոքա Հայոց գաղթական գաւակներուն ուր որ կը լինին. Արարատ եւ Էջմիածնի Կաթուղիկէն չի մոռնան: Թող կտակեն նոքա սուրբ Ղեւոնդեանց ու Վարդանանց խաչ եւ անձնանուիրութիւնը: Թող կտակէ քաղաքացին իւր ընտանեաց՝ արհեստ, աշխատութիւն, վաճառաշահութիւն, տնտեսութիւն, խնայութիւն եւ բարոյական կեանք:*

*Իսկ շինական աշխատամաշ ծերունիքը թող այս կտակն աւանդեն ընտանեաց, որ սիրեն հին նահապետական պարզ կեանք, սիրեն մշակութիւն, հողն ու մաճը. երբէք չի վաճառեն իրենց կեանքն ու հարստութեան մշտաբուխ աղբիւրը, այսինքն հայրենի երկիրն ու գետին:*

*Եւ դո՛ւք ի՞նչ պիտի կտակէք, հայրենեաց կարօտ խեղճ պանդուխտ Հայեր. դուք կտակեցէք ձեր զաւակաց ու եղբարց,*

երբ օտարութեան մէջ կը հասնի ձեր վերայ, ո՜հ, մահ ու գերեզման: Այո՛, նզովիւք կտակեցէք, որ նոքա հայրենի հողին ու երկրին մէջ տքնին ու աշխատին, թող մեռնին, թող իրենց գերեզման իրենց սրտիկ լինի, թող չիգան այս տեղը, ուր ձեր ազատ եղն ու մահ թողլով՝ բեռնակիր կը լինիք. եւ շատ անգամ բեռանց ծանրութենէն ձեր ոսկորները կը ճարճատին եւ ձեր հուժկու բազուկները կը թուլնան. երես ընդ գետին կը թաւալիք փողոցի սալայատակաց վերայ. կը բառնան ու կը թաղեն զձեզ անյիշատակ չիրիմներու մէջ, ուր չեն ու չկան ընտանեկան գերեզման, ձեր պապերուն ու մամերուն խաչաքարեր եւ ոսկորները:

Իսկ դու, հէք Արծրուեաց Վասպուրական. քո կտակն ի՞նչ է. թէ որ մահն զքեզ պանդխտութեան մէջ նետահարէ. «Կամք Տեառն օրհնեալ եղիցի» կ՚ասեմ եւ կ՚աւանդեմ իմ կտակը իմ սիրելի, հաւատարիմ եւ մտերիմ Ազգին՝ որ զիս բառնան տանին այն հողին աւանդեն. եւ դնեն զիս ի դիր հանգստեան Վարագայ խաչաքարերու տակը, ուր թերեւս չիրիմս ու ոսկորներս խառնուի. Եղիսէի նման սուրբ հարց չիրիմներուն հետը. ես մեղապարտ մեռեալս, արժանի լինիմ նորոգ յարութեան ննջելով ի Քրիստոս հաւատով եւ յուսով:

———o———

ԺԶ.

# ՏԱՆ ԵՐԷՑ
## ԵՒ
## ԻՒՐ ՊԱՐՏԻՔ

———o———

Ինչպէս ընդհանուր Հայրապետ Հայոց իբրեւ ծայրագոյն հովիւ, եւ տնտես է բոլոր Հայոց գերդաստանաց իւրաքանչիւր իրենց վիճակին վերայ նոյն հոգեւոր տնտեսութեան պաշտօնն ունին. այսպէս եւս ընտանեկան եւ առանին Եկեղեցւոյ փոքրիկ հօտին՝ փոքրիկ հովիւներն են Տաներէց քահանայք՝ որոց միայն յանձնուած է ընտանեկան հոգեւոր պէտքերը հոգալ ու մատակարարել: Տանէրէց, որ թէպէտ իւր վիճակաւոր Եպիսկոպոսին իշխանութեան տակ ստրուկ համարուած է, եւ նոյն իսկ ժողովուրդին առաջ այնչափ ըստ արժանւոյն պատ-

ուասիրեալ չէ․ մանաւանդ մեր բարեկարգ ժամանակի մէջ, յորում Եկեղեցւոյ տնտեսութեան վաղեմի օրէնք եւ կանոնական վճիռներ այլափոխուած են։ Բայց տանէրէց քահանային հովուական պարտիքն ու կոչումն՝ շատ մեծ, շատ նուիրական եւ շատ արդիւնաւոր հոգեւոր աշխատութեան մշակութիւնն է։ Վասն զի նորա սեպհական պարտիքն է, ընտանեաց նորածին երախայք սուրբ Եկեղեցւոյն մկրտարանին ջրով մաքրել ու որդեգրել Աստուծոյ։ Նորա պարտիքն է ամուսնութեան սուրբ պսակ դնել․ նորա պարտիքն է խոստովանութեամբ ընտանեկանգաղտնի ու յայտնի վէրքերը դարմանելով բժշկել, Նորա պարտիքն է մահուան ծանր ստուերին տակ հեծող հիւանդը սուրբ եւ ջերմեռանդ աղօթքով կազդուրել եւ հոգին հաւատով զօրացունել։ Նորա պարտիքն է ննջեցեալը ի հող դնել ու կնքել նորա գերեզմանը Խաչիւ եւ Աւետարանով։ Նորա պարտիքն է սգաւոր ընտանեաց սուգը չափաւորել, խրատել որ հեթանոսաբար չողբան յոյս ու հաւատ չունենալով հանդերձեալ կենաց։ Նորա մեծ պարտիքն է աղքատ ու չքաւոր ընտանիքը՝ չէ թէ միայն սոսկ մխիթարական խօսքերով սփոփել, այդ արդեամբ իբրեւ ճշմարիտ հայր հոգալ նոցա պէտքըն ու կարիքը․ հարուստ եւ ողորմած ընտանիքներէն հայթայթելով՝ թշուառ տնանկին կարօտաւոր զաւակները կերակրել։

Նորա մեծ եւ սեպուհ պարտիքն, է, երկրի վերայ իբրեւ երկրաւոր հայր՝ խնամ տանել բոլոր ծխական ընտանեաց․ մանաւանդ նոցա պատահար թշուառութեանց մէջ Յիսուսին նկարագրած գորովալիր գթութեան տիպարը լիովին յանձին բերել․ ի բանտ գնալ․ բանտաւորին կապանքը դիւրացնել, հիւանդին ի տես գնալ, սուրբ Պօղոսին թաշկինակով նորա քըրտինքը սրբել, դեղ ու ճար գտնել․ թէ քաղցեալ է՝ հաց տալ, թէ ծարաւ է՝ ջուր տալ․ թէ մերկ է՝ հանդերձ եւայլն։ Եթէ այսպէս վարի Տանէրէց հովիւն, եթէ իւր այս պարտիքները խղճի մտօք կատարէ, յիրաւի՝ յայնժամ տիրապէս Քահանայ Աստուծոյ կը կոչուի, լինելով կատարեալ որպէս երկնաւոր Հայր։

Տակաւին քան զամէն առաւել մեծ պարտիք մի ունի Տանէրէց հովիւը, զոր պէտք չէ մոռնալ, եւ ի՞նչ է․ առտնին հոգեւոր դաստիրակութիւնը, որ պէտք է հաւասար ընթանան ծնողաց դաստիարակութեան հետ։ Ես այնպէս կը դատեմ, որ կրօնի եւ հոգեւոր դաստիարակութեան պարտիքը՝ դպրոցի

վարժապետին չէ, այդ Տանէրէց Քահանային բաժին է, որ պարտաւոր լինելով իբրեւ առ անին Եկեղեցւոյ տնտես՝ պէտք է ինքնին բաշխէ ու մատակարարէ Հոգեւոր դաստիարակութեան հացը ընտանեկան սեղանին վերայ, եւ այդ հացն է մի միայն Աւետարան. բովանդակ սուրբ Գիրք, որ է կենաց բան. ու վարդապետաց դիւրալուր խրատները. որք առ համառակ գրեթէ սուրբ Գրոց մաքին պարզապէս բացատրութիւնք են։

Ճշմարիտ խօսելով, ընտանեկան Հոգեւոր վիճակը եւ կեանք յայնժամ կ'եղծանի, երբ Տանէրէց Քահանայն տգէտ եւ անուս է. որ բաւական կը համարի իւր պաշտօնին համար Սաղմոս, Շարական եւ Մաշտոց, որ միայն Եկեղեցւոյ խորհուրդներ եւ ծխական կարգերը կատարելով՝ քահանայութեան բարձըր պաշտօնի միւս պարտիքները անկարեւոր կը դատի։ Տանէրէց Քահանային տգիտութիւնը շատ մեղադրելի է. թերեւս փոքր ինչ այդ մեղադրանք թեթեւնար, եթէ բարի ու անբասիր վարքով եւ գործնական ընտիր օրինակով տգէտ Քահանայն քօղաւորելով ծածկէր իւր տգիտութիւնը, ու տգիտութեամբ այնչափ վնասակար չէր լինէր ընտանեկան կենաց, խօսքին տեղը՝ միայն օրինակը քարոզելով։ Բայց եթէ գիտուն եւ թէ տգէտ Տանէրէց երբ իր վարուց ու պաշտօնին մէջ կը ղեղծանի. երբ բարի օրինակին տեղը՝ գայթակղութեան չարօրինակ կուտայ, այնուհետեւ բարի եւ երկիւղած ընտանեաց համար՝ հոգեպէս մեծ վտանգ է. որ թէ չգիտեն ուրիշ արժանաւոր հովիւ մի՝ կը պարտաւորին առանց քահանայի մնալ, Աստուծոյ հովուութիւնը խնդրել։

Սակայն արժանաւոր եւ անարժան պաշտօնէից մէջ ընտրութիւն առնել պէտք է. երբ ընտանեաց ձեռքն է այդ իրաւունքը եւ ազատութիւնը, թող խորհին եւ այնպէս ընտրեն Տանէրէց Քահանայն։ Եւ եթէ գտնեն այդ արժանաւոր ու պատուական պաշտօնեայն, պէտք է կրկին պատուոյ արժանի համարին զինքն, որոյ համար իսկ յատկապէս կը պատուիրէ Առաքեալը։ Եթէ ընտանեաց իրաւունքն է Տանէրէց Քահանայէն պահանջել, ինչ որ քահանայութեան պաշտօնին եւ կարգին վայելուչ պարտիքն է, նոյն Տանէրէց Քահանային իրաւունքն է՝ պահանջել իր պաշտաման ու հոգեւոր աշխատութեան վարձքը։ Մշակը՝ իւր վարձուց արժանի է, կը խօսի Տէր ո՛վ կարող է ժխտել թէ իրաւունք չէ այս եւ եւ Առաքեալը կը հաստատէ սոյն իրաւունքը, թէ «Զինուորը իւր թոշակով զինուորիր». եւ

*ուրիշ խօսքով դարձեալ նոյն բանը կը կրկնէ․ թէ «Սեղանոյ պաշտօնեայն, արժան է որ նոյն սեղանէն կերակրուի»:*

*Արդ, ընտանեկան սեղանոյն պաշտօնեայն Տանէրէցն է․ պէտք է որ սեղանին հացէն լիապէս կերակրուի, ապա եթէ գրկի, անհատուցումն, անվարձ մնայ իւր հոգեւոր մշակութիւնը, նա հոգւոց հանելով կը կատարէ իւր պաշտօնը․ որով ընտանեկան փարախին փոքրիկ հօտը պարտաւոր կը մնայ իւր հովուին առաջ․ ոչ կաթէն՝ կաթ, եւ ոչ բուրդէն բուրդը՝ պարտեաց փոխարէն վճարելով: Եւ միթէ իրաւունք ունի՞ն յայնժամ՝ Տանէրէց մշակին վարձք հատանող ընտանիքը տըրտունջ բառնալ ու միշտ գանգատել թէ զմեզ հովուելու եւ մեր հոգեւոր պիտոյք հոգալու բարի հովիւ եւ արժանաւոր պաշտօնեայ չունիմք:*

*Այլ դուք, ո՛վ ժողովուրդ եւ ընտանիք Հայոց, մի՛ սրտմըտիք, թէ ասեմ, ձեր տրտունջն անիրաւ է․ ժողովուրդի ընտիր որդիքներէն ո՛վ յանձն կ’առնու քեզ համար հովիւ ու Տանէրէց լինել, երբ դու արժանաւորին եւ անարժանին մէջ ընտրութիւն չունիս: Դու աւետարանին ազատ գինուոր եւ Եկեղեցւոյ պատուարժան պաշտօնեայն ճնշեր ստրկացուցեր ես չքաւորութեան լուծին տակը, եւ կը սպասես տակաւին որ նոքա վեհանձն եւ ազնուական կերպով շարժին․ ձրի շնորհը՝ ձրի տան, չ’ագահին, անաչառ լինին, ճշմարտախօս լինին, սուրբ լինին, բարի վարքով փայլին, բարի օրինակով հանդիսանան, օրինաց նախանձաւոր լինին, թէ յանցապարտ լինիս զքեզ կշտամբեն․ թէ չուղղիս՝ հեթանոս համարին, թէ յանդգնիս Դէոդոս կայսեր նման ձեռք լի արիւնով Եկեղեցւոյ գաւիթը մտնել, Ամբրոսիոս քաջ հովուին պէս իբրեւ Ամենակալին ահարկու հրեշտակը քո դէմ կենալ ու Եկեղեցւոյ գաւթէն զքեզ արտաքս մերժել:*

*Ահաւասիկ իմ դատաստանս այս է․ ես գիտեմ, դուք չէք հաւանիր, կ’ասէք, թէ այդ խստութիւն է, հաւատաքննութիւն է, անցաւ այն դարը, պէտք է մեր Տանէրէց Քահանայք, հոգեւոր կատարելութեամբ հանդերձ՝ քաղաքակիրթ ու քաղաքավար լինին, ճանչնան ժամանակ եւ ժամանակի պահանջումները․ բարեկամ լինին յառաջդիմութեան, եւ մեր ընտանիքը ի նոյն յորդորեն ու համոզեն:*

*Ուրեմն ըստ ձեր դատաստանին, եթէ ընտանեկան կեան-*

քին շահն ու պէտքը այդպիսի հոգեւոր ժիր մշակ կը պահանջէ իւր անդին եւ անդաստանին համար, հապա այլ եւս ի՞նչ կը վարանիք, ի՞նչ կը դեդեւիք, ճանչցէք, որոշեցէք ու ընտրեցէք այն արժանաւոր անձն բարի եւ առաքինի ընտանեաց մէջէն։ Ընծայացուն երկնից հրեշտակներէն չէ․ մարդկային ընտանեաց սեռէն է, եւ ընտանիքը կը ծնի զայն․ ձեր իրաւունքըն է ձեր ձեռքն է, ընտիր անձինք որոշեցէք եւ ապա ածէք Եպիսկոպոսին առաջ, թող ձեռն դնէ եւ օրհնէ ձեզ Քահանայ։

Բայց դուք, երբ պիտանին ու պատուաւորը, ուսեալ և արժանաւոր անձինքը կը թողուք, անպատիւ, տգէտ եւ անարժանը յառաջ կը վարէք․ կ՚ընտրէք եւ կը վկայէք իսկ եպիսկոպոսին եւ Եկեղեցւոյն առաջ, եթէ ճշդիւ հարցաքննութիւն լինի, ժողով եւ Եպիսկոպոսը արժանի չհամարին ձեռնադրութեան, ես գիտեմ ու տեսայ թէ որքան կը խստանաք եւ կամակոր յամառութեամբ ստահակ միջոցները ի գործ դնելով՝ վերջապէս անարժան անձն ի պատիւ Քահանայութեան կը հանէք։ Եւ այնուհետեւ երբ մտաբերելով կ՚զգաք թէ սխալած էք, կը ստրջանաք, կը տրտնջաք ու կ՚սկսիք չարաչար ձեր ընտրած ու հաւնած կղերը դատել ու բամբասել։ Եւ շատ անգամ եւս ոմանց անարժանութիւնը առիթ բռնելով՝ ամբողջ Եկեղեցական դասն անարգելով, ոտնհարելով վատաբանելով՝ նշաւակ կը կացուցանէք զիրենք աշխարհին առաջ։ Զգիտեմ կը կարծէք ու կը հաւատա՞ք թէ այդպիսով կ՚ուղղէք զիրենք, որոց անուղղութիւնը Քահանայութենէն յառաջ բնաւորեալ է եւ դուք յաճախ կը տեսնայիք զիրենք․ փորձը ձեր աչքին առաջն էր․ դուք քաջ գիտէիք ու կը ճանաչէիք։

Բայց թոյլ տուէք որ անաչառ խօսիմ, միթէ դուք իբրեւ թէ կարեկից լինելով մարդասիրութեան պատրուակաւ ձեր բարեկամաց հաց ու գործ ճարելու համար չաշխատեցա՞ք զիրենք Քահանայ ձեռնադրել տալու, եւ յետոյ իբրեւ մեծ վարձք եւ առաքինութիւն համարելով, կը խօսիք եւս պարծանօք․ թէ «խեղճին ընտանիք թշուառութենէ ազատեցէք» եւ այլն։ Այդպէ՛ս է, մի ընտանիք իւր թշուառ վիճակէն ազատելու համար՝ ուրիշ ծխական ընտանիքները հոգեպէս թշուառացուցիք։ Զգիտեմ․ Եկեղեցւոյ գերագոյն դատաւորին առաջ ո՞րն առաւել դատապարտութեան արժանի է, Եպիսկոպո՞սը, որ աչառեց ու ձեռնադրեց, թէ ժողովուրդը, որ զայն ընտրեց ու ընծայեց։

Այլ կը թողում այս մասն այժմ, մտադիր լինելով յայլում տեղւոջ ընդարձակապէս խօսիլ, եւ ժամանակն իսկ կը պահան-

չէ գայդ․ վասնզի չատ տարապարտ տրտունջները կը բարձրանան երկու կողմէն կղերին ու ժողովուրդին, որք ընդ աչս դատելով զիրար կը բամբասեն չարաչար առանց դատաստանի ու քննութեան։

Իսկ մեք, որ նոյն կղերաց դասուն տրուպն ու յետինն եմք, յորդոր կը կարդամք նախ բոլոր Տանէրէց ղահանայից, որ ճանչնան իրենց սուրբ պարտիքը․ յիշեն որ պատասխանատու են նորա առաջ, որ կ՚սպառնայ ու համար կը պահանջէ ամէն հովիւներէն թէ մեծ եւ թէ փոքր․ Տանէրէցն եւս իւր տան հաշիւը պիտի տայ։

Նաեւ յորդոր կը կարդամ այն բոլոր Հայ ընտանեաց, որք եթէ գիտեն խղճիւ թէ հոգեւոր եւ արժանաւոր պաշտօնէին պէտքն անհրաժեշտ է․ ուրեմն թող աչառելով անընտրող չըլլին, թող խոտանն ու անպիտանը ի բաց թողուն․ ընտրեն եւ իրենց բարի որդիքներէն ընծայեն Աստուծոյ Եկեղեցւոյն․ արդար Աբելին պէս արդարապէս որոշելով Աստուծոյ բաժին եւ ոչ թէ ժլատ ու խնայող Կայէնին պէս անարգն ու անպէտը հանել Աստուծոյ մասն։

Արդ, դուք, ո՛վ ընտանիք Հայոց, ճառիս բանը՝ այս մի բանով աւարտեմ․ եթէ Տանէրէց Քահանայն ձերն է, ձեզ համար է, եւ ձեր հոգեւոր մշակն է, ձեր բարին դուք ինքնին ճանչցէք ու ընտրեցէք, ձեր մշակն ընտրեցէք, արժանաւորն ընտրեցէք, ուսեալն ընտրեցէք, հաւատարիմն ընտրեցէք․ եւ եթէ ի՛չայ տակաւին ձեր մէջը՝ հրեշտակակրօն ընտրեցէք․ եւ քանի որ ընտրութեան այս իրաւունքը ձեր ձեռքն է, դուք այսօր եւ յաւիտեան իրաւունք չունիք գանգատիլ։

———o———

ԺԷ․

# ԸՆՏԱՆԵԿԱՆ ՊԱՏԿԱՌԱՆՔ

## Ե Ի

## Ա Զ Ա Տ Ո Ւ Թ Ի Ւ Ն

———o———

Ընդհանուր տեսութեամբ խօսելով՝ ընտանեկան պատկառանք եւ ազատութիւն, երկուքն եւս մարդոյն համար ի բնու-

*թենէ տրուած ազատ կամաց եւ բնական զգացման օժիտներն են։ Միայն թէ մարդ պարտաւոր է զայն օրինօք վարել եւ ոչ թէ ծայրայեղ ազատավար մոլութեամբ կամ նախապաշարեալ հնութեամբ։*

*Մեր հին ընտանեկան կեանքին սաստիկ պատկառանք եւ ամօթխածութիւնը, որ կնոջ գլուխ եւ երեսը թանձր քօղով կը ծածկէր ու կը փակէր զայն տան ու վրանին տակը, եւ նորա հարսն պարտաւոր էր եօթնամեայ լռութիւնը պահել իբրեւ պահք, անշուշտ նոր աշխարհին առաջ շատ պարսաւելի վարմունք է։*

*Իսկ հին աշխարհը, որոյ նահապետները դեռ մեր հայրենեաց մէջ շատ կան, նոքա դատելով կը դատեն աշխարհի ընտանեկան կեանքին ծայրայեղ ազատութիւնը, որ խպառ կը բառնայ պատկառանաց քօղն ու շուքը, կինն ազատ կը թողու ընկերական հրապարակին մէջ, որ նա նոյն իսկ իւր հարսանեաց օրը լեզուն բանայ, խօսի, պարէ, իբրեւ հարսնեւոր զուարճանայ եւ նոցա հետը խնճոյից սեղանին վրայ հրճուի եւ մերթ եւս ծիծաղ արձակէ, որովհետեւ ըստ Պղատոնի սահմանին՝ միթէ կինն եւս ծիծաղական մարդ չէ՞։*

*Ուղղապէս դատելով, երկու աշխարհի ծայրայեղ վարմունքն եւս չափազանցութիւն կը համարուին ուղիղ բանաւորութեան եւ բարոյական օրինաց առաջը։ Ափսո՛ս, որ այս աշխարհիս մէջ միջին եւ ուղիղ ճանապարհով քալել դժուարագոյն է։ Մարդիկ սովորած են չափազանցել եւ իրենց կիրքերէն վարուելով կը խոտորին միշտ յաջ կամ յահեակ, միջասահման ուղիղ ճամբուն վերայ խիստ սակաւ մարդիկ կը յաջողին որ համեստ ընտանեկան կեանքի ուղղութիւնը պահելով չեն խոտորիր, հետեւելով միշտ բարոյական օրինաց եւ բնական խղճին գիտակցութեան, որք լոյս են եւ միշտ մարդը դէպ ի լոյս եւ ուղղութիւն կ՚առաջնորդեն։*

*Թողունք հին եւ նոր աշխարհի ծայրայեղութեան մասերը՝ ստոյգ խոստովանելով, որ ամօթոյ զգացումն ու պատկառանքը մարդոյն ընտանեկան կեանքին սեպհական վայելուչ զարդն ու պատիւն է։ Այն ընտանիքը, որ այս չքնաղ զարդը ամենայն համեստութեամբ հագած է, միշտ պատկառելի կը հանդիսանայ երկնից եւ աշխարհի մէջ։*

*Ընտանեկան պատկառանք նախ պէտք է ամենայն մեծարանօք յարգուի ու պահուի նոյն ընտանեկան շրջանին մէջ, ուր ծերունի նահապետ եւ մայր տիկին բարձրաթոռ կը բազ–*

*մին, որոց պարտաւոր են չուք դնել ու պատկառիլ բոլոր գաւակներ, հարսներ, թոռներ եւ ուրիշ այլ ամէն ընտանեկան պարագայք։*

*Գիտնալ արժան է նաեւ որ պատկառանքը միայն փոքրերուն պարտիք չէ, այլ եւ նոյն իսկ մեծերն պարտաւոր են զգուշաւոր պատկառանօք վարիլ փոքրերուն հետը։ Վասն զի մեծերն երբ պատկառանքն ի բաց թողուն, այնուհետեւ ի զուր է պահանջել, որ փոքրերը ամաչեն։ Եւ եթէ ջանան մեծերն ուղղել զանոնք, նոքա քաջ գիտեն դարձեալ Մեչափառին առակը յառաջ բերել, ցոյց տալով թէ մեծերն իրաւունք չունին յանդիմանելու, քանի որ իրենց միակողմանի քայլերով՝ փոքրերուն օրինակ կուտան․ տղայոց ներկայութիւնը բանի տեղ չի դնելով՝ անզգոյշ կը չարժին, անպատկառ կը խօսին, ծուռ կը քալեն, եւ զարմանալին այն է որ մերթ եւս կը զայրանան իսկ, եթէ փոքրերը իրենց նման չարժեն ու քալեն։*

*Ցիրաւի՛ ընտանեվարութեան մէջ եթէ մասնաւորապէս թուենք՝ չատ անպատչաճ չարժմունքները կը լինին․ բայց ամենէն աւելի տպաւորիչ եւ թունաւորիչ է անպատկառ վարմունք անմեղ տղայոց առաջ։ Նոքա խիստ արագապէս կ՚ընդօրինակեն զայն․ թող յոռի ու չար լինի, ոչ ինչ փոյթ չէ, զի նոքա միամիտ են ու տեսնալով կը հաւատան թէ ինչ որ մեծերը գործեն՝ բարի ու անվնաս է։*

*Այր մարդիկ, որ առաւել ազատ վարմունք ունին թէ ընտանեկան յարկին տակը եւ թէ արտաքոյ ընկերութեան մէջ, նոքա պատկառանաց ամօթը աւելի կանանց սեռին կը վերածեն․ որոյ չատ օրինակները կը տեսնամք նահապետական կենաց մէջ, Աբրահամու վրանի տակ ուր երբ երեք հրեչտակները հիւր կուգան, Սարա որ պառաւ եւ մեծ տիկին էր Նահապետի տան՝ կը պատկառի տեսնուիլ հիւրերուն հետը․ այլ յետուստ խորանին պահուելով՝ ականջ կը դնէ երբ հրեչտակներ կը խօսէին աւետիս տալով հանդերձեալ զաւակին համար։ Նոյնպէս եւ Ռեբեկայ մինչ բացերես ուղտին վերայ նստած Խառանու երկրէն դէպ Աբրահամու տուն կուգար, յանկարծ կը տեսնար Իսահակ փեսայացուն իւր, որ ի գբօսանս ելած էր ի դաշտ․ խկոյն ուղտէն վար իջնելով կը քօղաւորէ երեսը, պատիւ եւ չուք տալով իւր նորատես ամուսնոյն։*

*Այս պատկառանաց հին քօղ գրեթէ չորս հազար տարիէն ի վեր դեռ մեծ խնամով կը պահեն մեր հայ հարսները․ այն ինչ գաղթական Հայոց ընտանեկան կեանքին նոր ազատու–*

թիւնը զայն վերցնել կը ջանայ· ինչպէս ուրիշ շատ պատկառանաց կերպերը թողուցեր է արդէն, որք մի մի յատկանիշ էին հայկական հնութեան ու կեանքին։

Բայց հին աշխարհի ընտանեկան խիստ պատկառանաց այս վարմունքը՝ որ ինչպէս գրեցի, զկինն իբրեւ խուլ ու համըր էակ մի կը ճնշէ անխօս լռութեան մէջ եւ որ տակաւին կը տիրէ այդ վաղեմի սովորութիւնը՝ նոր քաղաքակիրթ աշխարհին առաջ ոչ ընտանեկան առաքինութիւն կը համարուի եւ ոչ ազգային գովելի յատկութիւն։ Վասն զի աշխարհի եւ ազգերու նոր փոփոխութեանց հետը, գիտութեան եւ ազատութեան հետը, անշուշտ բնական է, որ ընտանեկան կեանքն եւս իւր հին դրութենէն փոփոխի· եւ այս յեղափոխութեան մէջ այր մարդիկ զկին իւր գրկանքէն ազատելով՝ նմա եւս բաժին տուին կրթութիւն եւ դաստիարակութիւն։ Առաջին անգամ երբ կինը այբ գիրը արտասանեց՝ ինքնին լուծեց իւր համրութիւնը, կինը կարդաց ու ճանչցաւ իւր իրաւունքն, բողոքեց ու հռչակեց աշխարհին առաջ թէ ինքն եւս իւր ընտանեաց մայրն է, պէտք է խօսի եւ այր մարդոց ընկերութեան մէջ հաւասար աթոռ ունենայ։ Կին եթէ իւր ամուսնոյն ազատ ու ճշմարիտ կենակիցն է, արժան է որ նա աշխարհի կեանքը ճանչնայ, մարդկային ընդհանուր ընկերութեան հետ մտերմանայ, խորհիլ գիտնայ, մտածել սովրի, փոքր ի շատէ վերահասու լինի այն ամէն իրաց, ինչ որ մտաւոր ու բանաւոր մարդոյն բնական եւ ազատ իրաւունք կը պահանջեն։

Սակայն մեր դարու պատկառասէր ու պարկեշտ նահապետներ ու մամիկները երբ նոր աշխարհի հանդէս մտնեն՝ անհնար է, որ չի գայթակղին չարաչար ու մերթ եւս սրտմտելով գայրանալով տրտունջ չը բառնան· թէ վա՛յ մեզ, ի՞նչ ժամանակի հասանք, ամօթ եւ պատկառանք աշխարհէս վերջացաւ, կին ընտանեկան լռարանէն դուրս ելաւ, կին լեզուն բացաւ ճարտասան դարձաւ· կին քօղն ու լաչակ ձգեց, քօղին տեղը հիւսկէն վարդածաղիկ խոյր դրաւ· կին հրապարակ ելաւ, ընկերութեան մէջ մտաւ· կին հաւասար մեզ հետ պատիւ ստացաւ· նա համարձակ կը խօսի, համարձակ կը վիճի, կը դատի եւ կը պատասխանէ եւայլն։ Մէկ խօսքով՝ անմռունչ կին՝ խօսուն բանադատ դարձաւ· կարդալ գրել սորվելով, լեզուագէտ լինելով, նա կը ճգնի մեզ հետ խորհրդական լինել, աշխարհ կառավարել, օրէնք տալ, Սահմանադրութիւն գոչել։ Թերեւս օր մի այլ եւս աւելի յառաջ երթայ ու մեզ հետ հաւա-

*սար քուէ տալու իրաւունք խնդրէ· թողու ընտանեկան ամէն հոգն ու կեանք, թողու ամուսնական սէր: Աւա՛ղ այն ժամանակին, յորում աշխարհիս կարգ եւ օրէնք պիտի խանգարուին· եօթն հազար տարուան վաղեմի ընտանեկան շէնքը քանդուի եւ կնոջ այս անպատշաճ յառաջդիմութիւնը՝ տանի մղէ զիրենք մինչեւ ծայրայեղ ազատութեան վիճակը: Ո՛վ այնուհետեւ կարող է զսպել զիրենք· աշխարհիս բոլոր տէրութիւնք եթէ միաբանելով դաշնակցին, միթէ կարո՞ղ են թումբ քաշել նոցա զօրութեան եւ արշաւանաց դէմ· ո՛վ կը տարակուսի այս անկարգ ապագայի վերայ, որոյ ստոյգ նշանները՝ ներկայն իսկ այժմէն ցոյց կուտայ եւ մեք կը հաւատամք Զօրաբաբէլի մեծ վկայութեանն՝ թէ կին զօրաւոր է ու կը տիրէ: Եթէ կին զօրաւոր էր մինչ ուսմունք չունէր· քանի՞ առաւել պիտի զօրանայ երբ ուսման եւ ազատութեան զէնքով զինուորի:*

*Կը լսե՞ս, խոհական ընթերցող, մեր դարու նահապետ ծերոց այս նախանձաւոր դատաստանը· չգիտեմ կ՚ընդունի՞ս, որ շատ մասերու մէջ իր ստուգութիւն ունի: Մեր կեանքի ապագան միշտ ներկայէն կը սկսի եւ ներկան ապագային ծայրայեղութիւնը՝ ծերոց մարգարէութիւն պիտի կատարուի թէ վաղ եւ թէ անագան: Մի բան կայ միայն, որ սոյն ճախորդ մարգարէութեան երազը դէպ ի բարին կատարել կուտայ եւ այդ բանն է՝ կանանց սեռին ուղիղ եւ պատշաճաւոր դաստիարակութիւնը, զոր հազար դիր կրկնեցի ու դարձեալ կը կրկնեմ: Բոլոր աշխարհ այսպէս կը դատի· երբ նոր ազատութեան իրաւունքը կիներուն գլխէն վերցուց այն պատկառանաց ճնշող քօղը· պէտք է ճշմարիտ ու պայծառ դաստիարակութեամբ քօղաւորէ նոցա ամօթխած ճակատը, զորով թէ հին մթութեան քօղ ստուեր կածէր· թող լուսոյ քօղով կին իր աչքը բանայ ու տեսնայ աշխարհին գործերը: Առանց այս պատսպարող քօղին՝ կնոջ ծայրայեղ անդաստիարակ ազատութիւնը դէպ ի խաւար կը տանի զինքն· եւ երբ կնոջ ոտքը գթի ու սահի՝ ողջ ընտանեկան կեանքը իր հետ կը կործանէ: Այո՛, ուղղել պէտք է կնոջ ընթացքը որ այդ վտանգաւոր խորխորատէն յետս կասի: Անհրաժեշտ հարկ է նորա միտք ու հոգին մշակել եւ ապա թողուլ ազատ, որպէս զի զօրանայ կին եւ իր կթոտ ոտքով կարողանայ ազատութեան մէջ անսայթաք ու անխոտոր քալել, եւ ճշմարիտ դաստիարակութեան մայրերը լինելով նոր ընտանիք, նոր կեանք կազմեն Հայոց ժողովուրդին: Երջա-*

նիկ օրեր են այն օրերը երբ Հայոց տիկնայք ու կանայք հին պատկառանաց չնորհին հետը՝ նոր դաստիարակութեան լոյսով եւս կը փայլին եւ յայնժամ միայն կարող են իսկապէս նմանիլ Եւրոպիոյ կրթեալ եւ ժրագլուխ կիներուն: Ապա թէ ոչ, սոսկ արտաքին կեղծ երեւոյթով, քաղաքավարի չարժման կերպերով, պերճ հագուստներու նոր նոր ձեւերով, առանց մայրենի լեզուին՝ քանի մը Ֆրանսերէնի բառերը հնչելով, Հայուն հին պար մոռնալով՝ նոր պար խաղալով, մեր հայրենի կամ մայրենի անուշակ երգեր թողլով՝ անընտանի դաշնակ զարնելով՝ Հայոց ընտանեկան կեանքը դէպ ի լաւագոյն չի փոխիր, այլ յաւէտ կը վատթարանայ հին ու նոր զեղծմունքները իրար խառնուելով. որով յետին ազատութիւնը՝ թերեւս չար լինի քան զառաջինն, եւ յայնժամ իրաւունք չունի՞ն պատկառասէր ընտանիք նզովք կարդալ նոր աշխարհի ծայրայեղ ազատութեանն եւ դարձեալ բարւոք համարին կինը ընկերական հրապարակէն հանել և անդրէն տանել հին նահապետական վրանին տակ փակել եւ թանձր քօղով ծածկել նորա գլուխ, որ այլ եւս արեւ՝ եւ ազատութիւն չի տեսնայ:

Մոռացէ՛ք այդ, մոռացէ՛,ք ո՛վ դուք գաղթական Հայեր, դուք որ կէս ու կեղծ լուսաւորութեամբ խայտացիք. առանց ընտանեկան դաստիարակութեան՝ աճապարեցիք կինը պատկառանաց համեստ քօղին տակէն հանելով՝ դպրոցին տաճար տարիք զինքն. ինչ որ կնոջ պէտք չէր՝ դուք զայն ուսուցիք, եւ ինչ որ պէտք էր՝ դուք կամ չգիտցաք կամ աւելորդ դատեցիք, միայն աղօտ կիսախաւար լոյս տուիք կնոջ եւ արձակեցիք զինքն:

Կին միանգամ ազատութիւն գտնելով՝ ճամբայ առեր է կ՚երթայ, ուր որ հրապոյր եւ հաճոյք կը վարեն զինքն: Կինը իր կորստեան ճանապարհ չի նկատեր, կոյր զկուրայն կ՚երթայ եւ իւր ուժով ետեւէն կը քարշէ կը տանի իւր խեղճ կապեալ ամուսինը: Չկայ բնաւ զօրութիւն մի, որ կնոջ քայլերը յետս կասել տայ. նա պիտի չարունակէ այդ խոտորնակ ճանապարհ, ո՛վ կարող է կրկին անգամ շղթայել նորա ոտքը երբ նա ազատութեան իրաւունքը՝ իւր զօրավիգ առած է: Չգիտեմ ի՞նչ ճար ու դարման կը մտածէք սորա համար, ո՛վ դուք, այր մարդիկ, որ ընտանեաց տէր ու կառավար էք, կը խորհի՞ք վերստին դնել զինքն այն հին պատկառանաց բանտին մէջ կապել ձեռքն ու ոտքերը եւ խապառ փակել նորա դէմ ազատութեան դուռը:

*Այդ դարմանը, զոր դու կը խորհիս անհնարին եւ անօգուտ է այսուհետեւ. դու կարող չես աշխարհի եւ ժամանակի անիւները դէպի յետս դարձնել անդրէն, որք անդիմադրելի ուժով դէպ յառաջ կ'երթան: Մանաւանդ Եւրոպիոյ հոսանքները որ մէկ բաղխելով քո հին բանտերը եւ շղթաները առ հասարակ կը խորտակեն:*

*Ուրեմն մի ճար, մի դարման միայն կը մնայ քեզ եւ այս է. կնոջ հոգին ու միտքը տիրապէս կրթել ուղիղ դաստիարակութեամբ, թող այնուհետեւ նա ինքնին իւր կիրք, իւր հաճոյք եւ իւր ազատութիւնը չափաւորէ, ինքնին զգալով ու ճանաչելով իւր մոլորամիտ շաւիղը: Աշխարհիս բոլոր ողջամիտ իմաստասէրներ, բարոյախօս բժիշկները՝ կնոջ հիւանդութեան համար միակ դարման ու դեղ՝ այս կը վարդապետեն:*

*Ո՜վ դուք դաստիարակք Հայոց, որ թերեւս աւելի քան զիս կը ճանաչէք Հայոց ընտանեկան կեանքն ու վիճակը, թէ ի՞նչպէս հին պատկառանաց մէջ նա առողջ էր, նոր ազատութեան մէջ հիւանդացաւ. եթէ կայ եւ գիտէք ուրիշ դեղ ու ճարը՝ հոգացէք ու գրեցէք այս հիւանդին համար. թող կարդան խելաբերին ամէն ընտանեաց հայրերը, որ յուսախաբ եղած՝ դարմա՜ն դարմա՜ն կ'աղաղակեն:*

---

ԺԸ.

## ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆ ԸՆՏԱՆԵԿԱՆ ՎԻՃԱԿԻՆ

### ԱՆԿՈՒՄՆ ԵՒ ԲԱՐԳԱՒԱՃՈՒՄՆ

---

*Այս աշխարհի վերայ մարդոց ընտանեկան վիճակը միշտ անստոյգ եւ անհաստատ է. եւ այնչափ վիճակէ ի վիճակ կը փոփոխի ինչպէս տարերաց շարունակող եղանակները: Շատ յարմար է թէ որ ըսենք ընտանեկան վիճակը այնքան ել եւ էջ ունի, ինչպէս օդաչափ գործիքին աստիճաններն առաւօտէն մինչեւ երեկոյ:*

*Աշխարհիս տարերքը բնական ու մշտնջենաւոր օրէնքով կը շարժին ու կը փոփոխեն. արդեօք պէ՞տք է համարինք այնպէս թէ մարդոյն ընտանեկան կեանքն եւս նոյն մշտնջենաւոր օրէնքին տակ փակուած է, միայն թէ ուրիշ պայմաններով: Զոր*

օրինակ Աստուծոյ պետական հրաման օրինօք վճռեր է, որ մարդ իւր երեսաց քրտինքով իւր հացն ուտէ. ուստի թէ քաղաքացի թէ հողագործ մշակը, եթէ մինն արհեստով եւ միւսն հարօրին մաճով չ՛աշխատին՝ ընտանեկան սեղանէն հաց կը պակսի եւ զաւակները սովալլուկ կը տանջին: Ուրեմն հացն աշխատողինն է, իսկ հեղգացող մշակին բաժինն է սովամահութիւն:

Իբրեւ ճշմարիտ Քրիստոնեայ եւ անթերահաւատ հաւատացեալ պարտաւոր եմք հաւատալ թէ զաշխարհ կառավարող Նախախնամութիւնն՝ իւր անյեղլի օրէնքով մեր վիճակը կը փոփոխէ բարձրութենէ ի խոնարհութիւն, խոնարհութենէ ի բարձրութիւն: Բայց երկնից արդարութեան ատեանն այդ օրինաց վճռագիրը յայնժամ ի գործ կը դնէ՝ երբ մարդ մեղանչէ նորա բնական օրինաց եւ պատուիրանին դէմ, որով յայտ է թէ, մեր վիճակի փոփոխութիւնը՝ մեր մեղքէն յառաջ կուգայ, եւ մեղքը մեր ազատ կամքէն կը ծնանի: Եթէ այսպէս է, ուրեմն ընտանեկան չարեաց ու աղէտից նախապատճառը՝ դարձեալ ինքն ընտանիքն է, ինչպէս նաեւ բարեկեցիկ երջանկութեան:

Սակայն աշխարհս եւ ժամանակը միշտ այլատարբեր օրեր ունին ու կը բերեն ընտանեկան վիճակին վերայ. որ այսօր ճոխ է՝ վաղը կը չքաւորի. որ այսօր երջանիկ է, վաղն ապերջանիկ. որ այսօր բարձրապատիւ է, վաղն անպատիւ եւ արհամարհ: Եթէ պարզ հայեցողութեամբ նայիմք, այնպէս կը թուի մեզ՝ որ շատ անգամ ընտանեաց վերահաս չարիքները՝ հեռաւոր պատճառներէն կուգան. զոր օրինակ երկնից ցասումներուն անարգել պատուհասներէն, երկրի անարդար կառավարութենէն, արշաւանքներէն, պատերազմներէն, մահտարաժամէն եւ այլ սոյնպիսի կոտորածներէն եւ պատահարներէն: Որք առ հասարակ սոսկալի ու կորստեան պատուհասներ են. խոտի նման կը հնձեն ու կ՚սպառնան մարդկային ընկերութեան ընտանիքը. ճոխն եւ աղքատն ի միասին եւ անխտրապէս ի գերեզման իջուցանելով:

Յիրաւի շատ ահաւոր ու դժնդակ են այս արտաքին արկածները. բայց առաւել սոսկալի առաւել մահաբեր են ընտանեաց համար ներքին ամենօրեայ սովորական պատուհասները, զոր մարդիկ իրենց ազատ կամքով ու ձեռքով կը պատրաստեն: Արտաքին պատուհասները մարդոց ձեռնհասութենէն վեր են, մարդ կարող չէ խոյս տալ կամ դիմակալել նոցա դէմ: Զի ո՛վ կարող էր Իտալիոյ Վեսուվ լերան հրաբուխի բերան փա-

կել, որ հռչակաւոր Պոմպէն մոխրով չի ծածկէր. եւ ո՛վ կարող է ամպերուն հրաման տալ, որ բարկաճայթ կարկուտով եւ յորդահոս անձրեւով գիւղեր եւ քաղաքներ չ՚ողողեն:

Իսկ ներքին պատուհասները այսպէս չեն. այլ մեր ազատ կամաց ու հրամանին տակ լինելով՝ մեք կարող եմք դոցա առաջ թումբ քաշել արգելուլ որ մեր տունն են ընտանեկան սըրահը չողողեն: Արտաքին պատուհասն՝ աշխարհիս վրայ միայն 'ի տեղիս իւր արկածներ կը թափէ, իսկ ներքինը գրեթէ նոր քաղաքակիրթ աշխարհիս մէջ համաշխարհական պատուհաս է, որ Արեւմուտքէն ելնելով դէպի Արեւելք իւր արշաւանքները կը շարունակէ որ իբրեւ համաճարակ ախտ իւր մահատու ցաւ տիրեր է մեր ընտանեաց սրտին մէջ. նոքա այս ծիւրական ախտով տակաւ առ տակաւ կը մաշուին ու չեն զգար:

Սկսինք այժմ պարզապէս բացատրել այս հոճայական ախտին տեսակներն, առ որ սիրահարած են մեր կարճամիտ ընտանիքը եւ մահ գրելով տարաժամ մեռնին: Քանի՞ են այդ ներքին ախտերուն ցեղը, ուշ դիր, ես խօսիմ քեզ մի եւ երկու բառով. եւ այս է, գեղխ եւ անբարոյական կեանք. եւ ըստ սուրբ Գրոց չափազանց ցանկութիւն եւայլն. որոց այլ եւ այլ ճիւղերը թուեմ քեզ ահաւասիկ:

Ցանկութիւն բազմախորտիկ սեղանոյ եւ գինարբեցութեանը առանց գիտնալոյ ու հաշուելոյ թէ տաշտին մէջ ո՞րչափ հաց, մառանին մէջ որչա՞փ պաշար եւ կարասին մէջ ո՞րչափ գինի կայ: Ցանկութիւն հանդերձի եւ նորասիրութեան, առանց նկատելոյ թէ նորա աշխատութիւն եւ կազմութիւնը մեր երկրի եւ մեր ժողովուրդի աշխատութեան արդիւնքն չէ. մեր հանճարոյ գիւտ չեն եւ մեր մեքենական գործարաններէն ելած չեն, ճշմարիտ խօսելով մեք արժանի չեմք այդ պերճութիւնները վայելել: Եւ գիտէք թէ քանի՞ ծանր գնով կը գնեմք առանց երբեք հոգալու մեր օրական պարէնն: Միթէ ես չե՞մ ճանաչեր ու տեսնար այն բազմաթիւ ընտանիքներ որք իրենց տղոց բերնէն հաց կտրելով՝ նախ նորասիրութեան չպէտ պէտքերը կը հոգան. ես չե՞մ ճանաչեր ընտանիք անպատուող, այն անհոգ հայրերը, որ պարտքը չվճարելով վարկն ու պատիւ կը կորուսանեն, եւ փոխանակ ընտանեկան ցանկութիւն զսպելու եւ չափաւորելու՝ իրենք եւս նոյն ցանկութեան հոսանքէն մղուելով կ'երթան կը հասնին մինչեւ այն կէտ, ուր յուսահատ չքաւորութիւնն կը տիրէ: Երանի՛ թէ այդ զգալի փորձով

ուշարբերէր պճնասէր ընտանիքը եւ այնուհետեւ գիտնար չափաւորել իւր կեանք եւ ունայնասէր ցանկութիւնը։

Նորասիրութեան ցանկութեան հետը կցենք նաեւ մեծածախ շինութեանց ցանկութիւն եւ թանկագին կահ կարասեաց կազմութիւնը։ Մեք գիտեմք թէ թագաւորին՝ պալատ պէտք է, իշխանին՝ ապարանք, քաղաքացի ժողովուրդին՝ չափաւոր տուն եւ դաշտաբնակ շինականին՝ խրճիթը։ Մենք տեսանք ու տակաւին կը տեսնամք մեր ազգին մէջ այն կարգի ընտանիքը՝ որոնց դրամագլուխը միայն իրենց կեանք եւ ապրուստը կ'երաշխաւորէր թէ արհեստի եւ թէ շահավաճառութեան մէջ։ Անմիտ սնափառութիւն չէ՞ արդեօք, երբ այդպիսիները անխորհուրդ ձեռնարկութեամբ իրենց դրամագլուխը՝ տան շինութեան եւ կահ կարասեաց համար կը վատնեն, որով շահու եւ վաստակի աղբիւրը նուազիլ կ'սկսի․ յայնժամ տրտունջ կը բառնան այդ տնաշէն տնտեսները, թէ մեր ժամանակ դառն ու անյաջող է, թէ վաստակ չկայ, թէ տուրեւառ դադրած է, թէ անցեալը շատ լաւ էր քան թէ ներկայն։ Բայց հուսկ ուրեմն նա կը գղջայ ու կը խոստովանի եւ ինքնադատ լինելով իւր անմտութեան վերայ կ'ողբայ, որ ցուցամոլ պերճութեան համար դրամագլուխ փճացուց։ Եւ ի՞նչ կ'ընէ յետոյ հոյակապ տան փառասէր բնակիչը, երբ կը տեսնայ որ արտաքուստ ընկերութեան մէջ իւր վարկ ու պատիւ պակասած է, եւ ի ներքուստ մեծաշէն տան սեղանին հացը նուազած․ եւ մի կողմէն եւս անհոգ ընտանեաց նորասիրութեան անյագ ցանկութիւն երբեք պակասած չէ․ եւ կուգայ արագ կը հասնի այն դժպատեհ ժամն, որ տան տէրն՝ իւր ձեռաշէն տունը ի վաճառ հանէ, եւ կէս գին վաճառելով՝ վճարէ իւր դիզուած պարտքերը, եւ երանի՛ թէ մնար դուզնաքեայ մասն մի, որով կարենար նա կրկին դրամագլուխ կազմել եւ շարունակել իւր շահավաճառութիւնը․ եւ միշտ անցեալը մտաբերելով խելաբերէր սակաւապէտ տնտեսութեամբ բարւոքէր իւր ընտանեկան կեանքը եւ այլ եւս չերթար իւր հին ճանապարհ, որոյ վախճանը վաճառել կուտայ իրեն հայրենի տուն եւ ժառանգական ստացուածքը եւ ինքն կը մնայ անվարկ անպատիւ եւ այնուհետեւ կամայ ակամայ կը խոնարհի սակաւապետ տնտեսութեան վարժապետին առաջ, եւ կ'ուսանի խնայութեան պարկեշտութեան պարզութեան, աշխատութեան եւ ապագային հեռատեսութեան դասերը։ Եւ դարձեալ կրկնեմ․ երանի՛ թէ մի անգամ եւ եր-

կէցս խրատելով եւ փորձելով, չմոռնար այդ օգտակար դասերը՝ որ մարդոյն կենաց ապահովութիւնն է:

Դառնանք այժմ ընտանեկան ցանկութեան միւս ճիւղ բացատրենք աստ, որ քան զամէն ժանտաբեր ու աւերիչ է. մահ կը բերէ իրեն եւ տարածելով կը թունաւորէ ազգին ամբողջ ընտանիքը, որ հարստութեան հետը՝ կեանքն եւս կը բառնայ եւ կը ջնջէ մարդոյն արժանաւորութեան պատիւ, հանելով ու զրկելով զիրենք ընտանեկան պարկեշտ դասէն: Այնուհետեւ նոցա բաժինն այն է, որ առակ ու նշաւակ լինին մարդոց աչքին ու դատաստանին առաջ: Եւ ի՛նչ է այս մոլեգոյն ցանկութեան անուն եւ վարք. մէկ բառով խօսիմ, անառակութիւնն է. մեր հրաշամիտ Թարգմանիչները Աւետարանի ճառած անառակ որդւոյն կեանքը՝ երկու բառով բովանդակած են «Զի կեայր անառակութեամբ». որ կը նշանակէ մոլորական մարդոյն գեղխ կեանք իւր ամէն հանգամանօքն, զոր կը վարէր անառակ որդին իւր կենաց մէջ: Մարդոց մոլորութեան եւ անառակ վարուց ասպարէզը շատ բազմաճղի եւ ընդարձակ է, որոց նկարագիրը Աւետարան կը հանէ մեր առաջ ջրհեղեղեան դարուն մարդոց ապականեալ կեանքը, որոց համար կը խօսի. «Ուտէին, ըմպէին, կանայս առնէին եւ արանց լինէին»: Հաց ուտել մեր կեանքը պահպանելու համար է, գինի խմել մեր տխրութիւն փարատելու համար է աշխարհիս վշտակրութենէն, սուրբ ամուսնութեամբ կին առնել, այդ եւս աստուածադիր օրինաց համեմատ, մարդկային կեանքը պահելու եւ բարգաւաճելու համար է: Ի՞նչ է ապա Նոյան դարուն մարդոց անառակ կեանքը, զորս Յիսուս իբրեւ յօրինակ յառաջ կը բերէ ի զգուշութիւն իւր հաւատացելոց որդւոց: Այդ ինքնին յայտնի է, թէ նոցա կեանքը՝ ծայրայեղ անբարեխառնութիւնն էր: Նոցա սեղանն որկրամոլութիւնն էր եւ իրենց որովայն Աստուած զոր կը պաշտէին. նոցա գինին խելաթափ արբեցութիւնն էր: Նոքա կ'ուտէին կը խմէին եւ անմիջապէս կը վայելէին Աստուծոյ պարգեւները առանց պարգեւատուն օրհնելու. նոյն ամբարիշտ դարուն մէջ՝ կնոջ եւ սուրբ ամուսնութեան պատիւ ոտնհար եղած էր, անասնաբար խառնագնաց լինելով՝ սուրբ պսակին դաշնագրութիւն եղծուած էր, այլ եւս ընտանեկան կեանքին պահապան պարիսպ չի կար, ամօթ երկիւղածութիւն վերջացած էր. առ հասարակ երկիր եւ մարդկութեան սեռ ապականուած էր Աստուծոյ առաջ. միայն մի բարի արդար Նահապետ մնացեր էր անարատ երկնից առաջ, զոր Նախախնամութիւն

*պահեց տապանով ու ջրհեղեղով երկրիս երեսէն ջնջեց ապականեալ մարդոց սերունդը ։*

*Սուրբ Գրոց պատմութեանց՝ այս պատուհասի դասէն պէտք է ուսանիմք, թէ ընտանիք եւ մարդկութիւն ջնջող մեծ պատուհասը՝ անառակ եւ ցեղխ կեանքն է ․ թէ հայրենի ժառանգական հարստութիւնը վատնող՝ այն է, թէ ի վերջոյ հացի կարօտ եւ սովամահ լինելոյն պատճառն՝ այն է, թէ անխզելի ամուսնութեան կապ հատանող յանդուգն ձեռք՝ այն է, թէ ազգին թէ այլ ազգին դատարանաց մէջ քրիստոնէական պարկեշտութիւն քամահրող անպատկառ երեսն՝ այն է ․ թէ յայտնի գինետանց մէջ, հրապարակի մէջ եւ այլ խաւարաշրջիկ տեղերը ․ Քրիստոնեայ անուն կրելով՝ հեթանոսի կեանք վարելով, եւ հեթանոսին գայթակղութիւն տուողն՝ այն է ․ խաղաղ ընտանիքխռովող, ընտանեկան միութիւն քակող, հայրենական տան հաստատ հիմունք հիմն ի վեր շրջող՝ այն է ։*

*Ո՜վ, որչա՜փ երանի կը լինէր, եթէ արդի աշխարհի սրամիտ ու վարժ անառակներն՝ Աւետարանի պատմած հին անառակին օրինակն մտաբերելով՝ միանգամայն յիշէին իրենց նախնի կեանքն ու վիճակը ․ յիշէին թէ անարգ կրից ծառայութեան մէջ խոզարած եղած են եւ փափագէին ի ձեռս բերել նախնի կորուսած ազատ կեանք ու հացալից սեղան ։*

*Դարձէ՛ք ուրեմն, ով դուք, անառակութեան մէջ մաշուած ու սողած թշուառ զաւակներ, դարձէք, զգաստացէք ու դարձեալ շինեցէք ձեր ընտանեկան աւերակները, զոր ձեր ձեռքով, ձեր գործով եւ ձեր հեստութեամբ քակեցիք ։*

*Ձեր խեղճ ծնողք վշտացուցիք, ձեր քոյրեր, ձեր եղբայրները լացուցիք ․ ընտանեկան պատիւ, մարդկութեան պատիւ արհամարհեցիք ․ դարձէ՛ք ու դարձեալ դո՛ւք շինեցէք ձեր քակած տան աւերակներն ․ եթէ տակաւին յամէք ու յամառիք այդ ճանապարհին վերայ, անշուշտ ի կորուստ կը տանի դձեղ եւ դուք վատահամբաւ ու սովամահ կը կորնչիք, եւ ի վերջոյ ձեր եւ ձեր հայրենի տան յիշատակ կը բարձուի աշխարհէս ․ գերեզման մ՚իայն կը թողուք առանց անուան եւ փառաց ։*

*Թողունք այժմ ընտանեկան կենաց այս մոլութեան նկարագիրը, որ շատ ընդարձակ է ․ յառաջ բերենք նաեւ նոր սովորական մոլութեան այն մասն, որ շատ ընտանիք յաջողութենէ եւ հարստութենէ հանելով՝ հողի վերայ նստեցուց ․ եւ ի՞նչ է դորա անունը, խաղամոլութիւն է ։*

*Լումայափոխ կամ տնտեսագէտ չեմ ես ․ դժուարին է ինձ*

*այդ մոլութեան նկարագիրն ըստ արժանւոյն երեւան հանել. միայն այսքան ըմբռնած եմ, որ այդ մոլութիւնը՝ բախտին երեւակայութեամբ մոլորուած մարդիկը, երկու կերպով ի գործ կը դնեն, որ երկուքն եւս միապէս կորստական է: Մի կերպն է դրամով թղթախաղութիւնը, որոյ ծածուկ հրապարակը բուն ընտանեկան կեանքին ու ծոցին մէջն է. միւսն է Մայրաքաղաքիս արժեթղթոց հրապարակը, որ այսօր գրեթէ բազմաթիւ մարդկանց համար իբր յաջողակ շահավառութիւն մի դարձած է. որով շատ ընտանիք դահավիժեցան այդ խոր ու անտակ գետին մէջ: Եզովբոսին խորհրդաւոր առակը՝ նոցա վերայ կատարուեցաւ. արհեստաւոր, վաճառական, իրենց բերնին հացը այսինքն փոքրիկ ու չափաւոր դրամագլուխ եւ ապահով վաստակը թողլով՝ հոն վազեցին. անըմբռնելի ըստուերին հետը խաղացին. իրենց չնչին ու ցամաքաջուր առուակներով՝ մեծամեծ գետերուն հետ մրցեցան. եւ ի՞նչ շահեցան ի վերջոյ, ոչինչ, առուակներ ու վտակներ դարձեալ առատ գետերուն մէջ թափուեցան. գետերն եւս աշխարհի գանձապետ Մեծին Անգղիոյ ծովացեալ գանձուց հետ խառնուեցան: Իսկ մեր փոքրիկ վտակներուն վիճակը ակներեւ տեսանք թէ ի՞նչ եղաւ ու տակաւին կը տեսնամք թէ ի՞նչ կը լինի: Կը ցաւիմ գրել, ոմանք թշուառացան իրենց ընտանիքներով ու ոմանք եւս կատաղի յուսահատութեամբ գնացին դէպի ծով. ասացին, որ զիրենք ծածկէ. որպէս զի մեռնին ու չզգան պատուոյ եւ ամօթոյ կսկիծն եւ չտեսնան իրենց թշուառ ընտանեաց անբախտ վիճակը:*

*Իսկ առ տնին խաղամոլութիւնն, որ շատ ընտանեաց համար իբրեւ միակ զբօսանք դարձած է, զբաղելով միայն չնչին եւ աննշան գումարներով. սակայն ոմանց եւս իբրեւ բախտի խաղ, որ մեծամեծ գումարներով կը մրցին՝ անբաժանելի մոլութիւն դարձած է. երկուքն եւս իրենց խիստ վնասակար հետեւանքներ եւ վատթար կողմեր ունին. եւ դարձեալ թէ բարոյապէս եւ թէ նիւթապէս շատ աղետաբեր են ընտանեկան կեանքին: Վասն զի ոմանք կը կորուսանեն, ուրիշներ կը գըտնեն. նոքա, որ կը կորուսանեն, յայտնի է թէ ո՞ր աստիճան մեղապարտ են աշխարհի առաջ. նոյն իսկ ընտանեկան կենաց մէջ, մօր ու զաւակաց առաջ, սեղանին հաց, ինչ ու ստացուածք բառնալ եւ ինքնին ձեռօք կողոպուտ տալ ուրիշին. որ քան զայս աւելի ընտանեկան աւարառութիւն չի կայ: Քաղաքակրթութեան մէջ այլ եւս ո՛վ կարող է մեղադրել ամայի լեռ-*

ներու աւագակաց գործը, որ միայն դիպուած է ճամբորդին համար եւ շատ անգամ գոհ կը լինին եւ գտած միայն կ՚առնեն, առանց ամբողջ տունը եւ ընտանիքը կողոպտելու:

Իսկ այն, որ լի ուրախութեամբ կը խայտայ իւր բախտին խաղով, մինչ նա եւ իւր ընտանիքը կը վայելե՞ն այդ անար-դար եւ անքիրտն վաստակը, ոչ. նոքա ինչպէս կը գտնեն, նոյնպէս վաղ եւ դիւրաւ կը կորուսանեն դարձեալ, թէ խաղին մէջ եւ թէ այլ եւ այլ անհաշիւ ցեղխութեանց մէջ, վասն զի շատ դժուարին է հաւատալ թէ աշխարհիս խաղամոլները տըն-տեսութիւն գիտեն. կամ թէ կարող են հաշուով եւ խնայու-թեամբ ապրիլ. այդ շատ անընական է. զի ով որ դիւրութեամբ շահի, դիւրութեամբ կը մսխէ. եւ ով որ դառնաքիրտ աշխա-տութեամբ հաց եւ հարստութիւն ձեռք բերէ, նա միայն կը հոգայ տնտեսութեամբ ապրիլ, տնտեսութեամբ կառավարել իւր ընտանիքը:

Ցիշենք այժմ նաեւ բարոյական կողմի մեծ անպատւու-թիւնն, զոր կը կրէ խաղամոլն: Ձեմ գիտեր. նա ամօթ կը զգա՞յ, երբ նորա անունը վատահամբաւ կը հնչի, կը տարածի թէ այս ինչ պարոնը իւր խաղին մէջ այսքան գումար կորուսեր է. ի՞նչ կը լինի յայնժամ պարոնին վիճակը. պատիւ եւ վարկը կը կորուսանէ պարկեշտ ժողովուրդին առաջ, որով իւր առեւ-տրական գործերը եւ շահավաճառութիւն անյաջողութեան մէջ կը դադրի եւ երբեմն եւս խպառ ի սնանկութիւն կ՚երթայ:

Բարոյական ուրիշ մի մեծ վնաս եւս ասեմ քեզ, որ է ըն-տանեկան կեանքի մէջ այդ չար օրինակով՝ ընտանեաց կեանքը եղծանել. զի ո՛վ կը հաւատայ. երբ ծնողք եւ ընտանեաց մե-ծերը թղթախաղով մոլին՝ խեղճ զաւակները չի հետեւին նոցա եւ իրենց մատաղ հասակէն սկսեալ չը վարժին այդ անմեղ կարծեցեալ մոլութեանց մէջ: Թողունք այս, մայրեր եւ կինե-րըն եւս այդ ախտով կ՚ախտանան եւ շատերն ախտացած են իսկ. թողլով առ տնին տնտեսութիւն, թողլով զաւակաց խը-նամք եւ կրթութիւն, թողլով ընթերցմունք եւ ուրիշ ծնողա-կան պարտիքները: Խաղամոլ մարդոց կեանքին մէջ, աւելի մեծ խանգարմունք մի եւս կայ, զոր նոքա թեթեւ եւ փոքր կը հա-մարին, այսինքն թէ ժամանակի բարւոք տնտեսութիւնը նոցա համար չէ. նոքա ցերեկուան աշխատութեան զբաղմունք բա-ւական չեն համարիր. գողջոյն գիշերն եւս այդ հաճոյական խաղով կը զբաղին. նոքա չեն շնչեր ու չեն տեսնար ոչ առա-ւօտեան կենդանարար շունչ եւ ոչ արեւուն ծագումը, նոքա չա-

րաչար գնահատութեամբ գիշերահանգիստ պահուն մէջ արթուն կենալով կը տանջուին, կորուսանելով մարմնոյ առողջութիւնը, հոգւոյ մտաւորական ուժը, որով կը ջլատի եւ կը թմրի ողջ մարդոյն գործունեայ ճարտարութիւնը: Դու քաջ գիտէ եւ կը տեսնաս, որ այդ քնահատ պարոնները՝ ցերեկուան մէջ իբրեւ քնաշրջիկ եւ ապուշ կը դեգերին: Քաղցր քուն եւ դժուարագիւտ ոսկին կորուսանելէն յետոյ՝ ցերեկուան շահն եւ վաստակն եւս կը կորուսանեն. որոց միայն կ՚ակնկալեն խեղճ ընտանիքը, զի այդ օրական շահերէն կը կազմուի իրենց ներկայ եւ ապագայ կեանքին պարէնը:

Համառօտենք, թէ եւ շատ են եւ զանազան մեր ընտանեկան կենաց ներքին եղծմունք եւ անկարգութիւնք որով մեր ընտանեկան վիճակը շարունակ փոփոխութեան ենթակայ է: Մեր հարուստ եւ ազնուական գերդաստանները գրեթէ հարիւր տարուան շրջան չունին. այսօր աստղի նման պահ մի կը փայլին, վաղը իրենց տոհմական փառքով կ՚անցնին ու կը ըստուերանան: Մեք գիտենք երկիր եւ երկրի օրէնքը չ՚երաշխաւորէր որ նոքա տոհմային ճոխութեամբ յազգէ յազգ յարատեւեն Անգղիոյ Լորտերուն չափ. բայց պէտք է խոստովանիլ. որ մեր ազգի ազնուական ընտանիքը չափազանց ձեռնարկութեամբ, անհաշիւ տնտեսութեամբ եւ փառասիրական զեղխութեամբ իջեր խոնարհեր են: Ձեմ յիշեր թէ ոմանք եւս անարդար ճանապարհով ու զրկանօք ճոխացեր են եւ դարձեալ նոյն անարդար միջոցներով տուժեր են մինչեւ ցյետին բնիոնն:

Ուրեմն այս աշխարհիս վերայ ընտանիքները թէ հարուստ թէ աղքատ կ՚ապրին ու կը մնան: Եթէ գործաւէր մրջնոց նման աշխատասէր լինին. եթէ աշխատութեան արդիւնքը ժողվելով ի գանձատուն եւ շտեմարանը, ընտանեկան պէտքերն իմաստուն տնտեսութեամբ մատակարարեն. չմոռնալով հաշիւ, չափ ու կշիռ, հոգալով նաեւ ապագայ ձմերան պաշարն. յորում թերեւս գործելն անհնարին լինի: Եթէ արդար վաստակին հետը զրկանք չի խառնեն, հարստահարելով աղքատ ընտանիքները, որոց վրէժխնդիր դատաւորն Աստուած է եւ կը հատուցանէ: Եթէ ընտանեկան դուռը ամուր փակեն, որ մուտ չի գտնայ հոն անառակ ու զեղխ կեանք: Այս բացուած դուռը, որ այժմ Հայոց ընտանիքը կը կործանէ, կը փակուի միայն ուսմամբ, դաստիարակութեամբ եւ երկիւղած Աստուածպաշտութեամբ, առ որ պէտք է լինի բոլոր ընտանեաց խնամք, ջանք եւ մեծ հոգատարութիւն այլ եւ այլ զոհերով եւ անձնանուի-

*րութեամբ հանդերձ։ Այդ իսկ է միայն ճար ու դարմանը եւ մեք եւ աշխարհ կը հաւատայ յայնժամ, որ Հայոց ընտանեաց վիճակը լաւագունին մէջ կը յարատեւէ, բարգաւաճեալները կանգուն կը մնան եւ անկեալ ընտանիքը կը բարձրանան։*

*Կ'աւարտեմ այս ԴՐԱԽՏԻ ԸՆՏԱՆԵԱՑ դուզնաքեայ երկոյս վաստակը, դարձեալ նոյն բան կրկնելով ու գրելով թէ ընտանեկան տան հաստատուն հիմն՝ ողջամիտ կրթութիւն եւ ուղիղ դաստիարակութիւնն է. այս է աշխարհիս բարոյախօս իմաստասիրաց ցոյց տուած միակ ճանապարհ։ Իսկ քան զիմաստասիրաց ցոյց տուած միակ ճանապարհ։ Իսկ քան զիմաստասերս գերազանց՝ ցոյց կուտան մեզ եւս լաւագոյն ճանապարհ Սողոմոն եւ քան զՍողոմոն իմաստուն Յիսուս. մինն իբրեւ պատգամ կը վճռէ թէ՝ «Արդարութիւն զազգ բարձրացուցանէ, մեղք նուազեցուցանեն զազգ»։ Բայց ազգն ընտանեկան արդարութեամբ կը բարձրանայ եւ ընտանեկան մեղքով կը նուազի։ Իսկ միւսն այսինքն Յիսուս, հաւատացելոյն համար ցոյց կուտայ Աւետարանի բան եւ ճշմարտութիւն, որ այն իսկ է եւ միայն համայն Քրիստոնեայ ընտանեաց կեանքն եւ յաւիտենական հիմն։ Երանի՜ որ այս հիման վերայ կը հաստատէ իւր ընտանեկան կեանք. զոր երբեք չկարեն խախտել, աշխարհիս գետեր եւ հեղեղներ։*



# ՍԻՐԱՔ ԵՒ ՍԱՄՈՒԷԼ

## ՃԱՐԻ ՀՕՐ

## ԿՐԹԱԿԱՆ ԴԱՍԵՐ

———o———

ԳՐԵՑ

ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ

ԻՆՈՒԷՐ

ՀԱՅՈՑ ՀԱՐՑ ԵՒ ԶԱՐԳԱՑԵԱԼ ՈՐԴԻՈՑ



# ՆԱԽԱԲԱՆ

## ԲԱՐԵԿԱՄ ԺՈՂՈՎՈՒՐԴ ՀԱՅՈՑ

ԴՐԱԽՏԻ ԸՆՏԱՆԻՔԷՆ յետոյ, Սիրաք եւ Սամուէլ անուն նոր երկասիրութիւնս, զոր Հայոց հայրերուն համար գրեցի, դարձեալ ձեզ կը նուիրեմ, ժողովուրդ Հայոց· որոյ նիւթ եւ պարունակութիւնն՝ աշխարհիս կեանքի կրթական դասերն են, զորս բարի հայր Սիրաք կ'աւանդէ իւր զարգացեալ Սամուէլ որդւոյն:

Սիրաք իւր դասերն կը խօսի աշխարհիս բազմադիմի առարկաներու վերայ, և Սամուէլ մտադիւր ունկն կը դնէ: Սիրաք հայրական եւ բնական սիրով կ'աւանդէ մարդկային կենաց ամենակարեւոր խրատներ, եւ Սամուէլ որդիական հնազանդութեամբ կ'ընդունի հայրախօս դասերը, որ կը կրթէ ու կը մարզէ զինքն իւր կենաց յառաջդիմութեան յասպարէզ:

*Նախադասոյն* մէջ՝ ցոյց կուտայ Սիրաք, թէ ի՞նչ է մարդըն աշխարհիս վերայ եւ ի՞նչ է իւր կոչումն, պարտիք եւ իրաւունք մեր ընկերական կեանքին մէջ, եւ այլն:

*Երկրորդին* մէջ համառօտիւ կը բացատրէ ընդհանուր տիեզերաց բնական եւ յաւիտենական օրէնքներ· որով օրինակարգ Արարիչն այդ անյեղլի օրինաց սանձը իւր ձեռքն առնելով կը կառավարէ վերնաշխարհ եւ մեր բնակած երկրագունդը: Կը խօսի նաեւ բարոյական օրինաց վերայ, զոր Տէր Աստուած Մովսիսի եւ Յիսուսին ձեռքով աւանդեց մարդուն, որպէս զի մարդն եթէ մոռնայ իւր խղճին բնական օրէնքն, գէթ յիշէ ու ու կարդայ Աստուծոյ դրական եւ գրական օրէնքները, որ միշտ լոյս կուտան եւ յուշարար լինելով՝ կ'ուղղեն մարդուն խոտորեալ կեանքը:

*Երրորդին* մէջ կը խօսի Սիրաք մարդկային ընկերութեան անհաւասար կեանքին վերայ· ընդ որ կարճամիտ եւ թերահաւատ մարդիկ մեղադիր կը լինեն Աստուծոյ, թէ ինչո՞ւ համար մարդիկ հաւասար կեանք ու բախտ չունին աշխարհիս վերայ չխորհելով անգիտաբար թէ՝ աշխարհի վերայ մարդկային ընկերութեան ամրապնդող հզօրագոյն կապն՝ անհաւասարութիւնն է, որ կը կապէ եւ կը վարէ մեր ընկերական կեանքը:

*Չորրորդ* դասին մէջ կը խօսի աշխարհիս տիրող իշխանութեան եւ հպատակ ժողովուրդին վերայ· երկարաձառելով ցոյց կուտայ, թէ ի՞նչ է իրաքանչիւրին պարտիք եւ իրաւունք եւ թէ ի՞նչպէս կը զեղծանի իշխանութիւն, երբ ի բաց դնելով օրինաց արդարութիւնը՝ միայն սրով եւ գաւազանով կ'իշխէ· երկրին բարգաւաճման եւ յառաջդիմութեան ճամբան չի բանար, որ իշխանութեան զօրութիւնն է: Նմանապէս կը զեղծանին հպատակ ազգեր, երբ անսաստող կը լինին սահմանադրեալ

օրէնքին դէմ: Մեծապէս եւ առաւել կը սխալին ժողովուրդներ ունայնամիտ յոյսերով, երբ իրենց բաժնին եւ ուժին չափով յառաջդիմութեան ճանապարհի չեն բանար. այլ հեղգամիտ լինելով ամենայն ինչ կառավարութենէն կ'սպասեն:

*Հինգերորդ* դասին մէջ նկարագիր կը հանէ Սիրաք աշխարհիս ժողովրդոց եւ ազնուական դասերուն. ցոյց տալով թէ ժողովուրդն է բուն աշխատութեան եւ երկրին կեանք տուող ոգին: Սորա հետ կը յարէ թէ ճշմարիտ ազնուականութիւն՝ հոգւոյ մեծութիւնն է, եւ թէ նոցա պարտիքն է աշխարհիս վերայ մեծագործել եւ ժողովրդասէր լինել:

*Վեցերորդ* դասով՝ մարդոյն աշխատութեան եւ աշխատութեամբ հայթայթուած հացին վերայ կը խօսի Սիրաք. յայտնելով թէ հացին ու հարստութեան աղբիւրը երկիրն է, հողն է, եւ զայն բեղմնաւորող մարդուն աշխատութեան ձեռքն է. մարդ կը չքաւորի, մուրացիկ կը լինի երբ անաշխատ ձեռքով հաց կը խնդրէ, եւ առանց վարուցանի՝ հնձել կ'ուզէ:

*Եօթներորդ* դասն աւանդելով Սիրաք, կենաց ուղիղ տընտեսութիւնը կ'ուսուցանէ. յառաջ բերելով թէ անօգուտ է գանձ եւ հարստութիւն երբ գանձատէր հարուստն տնտեսել չգիտէ. եւ խիստ շուտով կ'սպառի գանձն՝ գանձատուէն, եւ ցրեանը շռեմարանէն: Կը յաւելու նաեւ թէ ուղիղ տնտեսութիւնը գիտէ արդարութեամբ հատուցանել իւր պարտիքը. կայսերին՝ կայսեր տալ եւ Աստուծոյն՝ Աստուծոյ, եւ ապա իւր բաժին վայելել:

*Ութներորդ* դասով ցոյց կուտայ Սիրաք, թէ առանձին մարդոյն եւ թէ աշխարհիս ժողովրդոց մեծաքայլ յառաջդիմութիւն՝ ինքնաշխատութեան զօրաւոր ջանքն է. եթէ կայ բախտ աշխարհիս վերայ, այդ միայն ինքնաշխատութեան ձեռքն է. ով որ հեղգութեան մէջ փակէ իւր ձեռքը, բախտն իրմէն կը խուսափի: Անարժան է այն ձեռք, որ առանց աշխատութեան հացը յիւր բերան կը տանի. «Ձեռք որ ոչ աշխատիցեն, կերիցեն մի'». սուրբն Պօղոս կը պատուիրէ:

*Իններորդ* դասով կը ճառէ Սիրաք թէ ինչպէս ինքնաշխատութիւն, հանճար եւ ընկերական զօրութիւն, այս երեք հզօր դաշնակիցներ միանալով քաղաքակրթեցին զաշխարհ. ինքնաշխատ հանճար ծնաւ գիտեր, արուեստներ, այլ ընկերական զօրութիւն զարգացուց. եւ այսպէս այս երեք անզէն դաշնակիցներ աշխարհիս տիրեցին:

*Տասներորդ* դասով կ'իմաստասիրէ Սիրաք աշխարհիս երջանկութեան եւ ապերջանկութեան վերայ. ցոյց կուտայ բնական փաստերով թէ այդ երկու հակառակ տարերք մարդոյն կենաց հետ միշտ համընթաց կը լինին, եւ թէ կարելի չէ, որ մարդ աշխարհիս վերայ միայն երջանկութեան ծաղիկները քաղէ առանց փուշերէն խոցոտուելու:

*Մետասաներորդ* դասին մէջ քննաբար ցոյց կուտայ Սիրաք, թէ ի՞նչ են այն զօրաւոր ներքին եւ արտաքին պատճառ-

ներ, որով աշխարհիս ազգեր կը բարձրանան եւ կը խոնարհին, կը բարգաւաճին եւ կը նուազին: Այս պատճառները Ս. Գրքէն առնելով Սիրաք կը հաստատէ թէ՝ մեղք եւ արդարութիւնն է:

*Երկրորդաներորդ* դասին կարգը կը խօսի Սիրաք ժամանակի եւ աշխարհիս այլ եւ այլ պատահարներու վերայ: Կը խոստովանի թէ այո՛, կան աշխարհիս վերայ բնական տարբեր այնպիսի պատահարներ, որոց վերահաս զօրութենէն մարդ կարող չէ խուսափիլ: Բայց աշխարհի դէպքերով կը հաստատէ Սիրաք, թէ մարդ մարդոյն՝ առաւել չար եւ մեծագոյն պատահարն է, որոց առաջ շատ նուազ են եւ առ ոչինչ կը համարուին բնական պատահարներ:

*Երեքտասաներորդ* գլխով կ՚աւարտէ Սիրաք իւր դասերը, եւ իբրեւ աներկմիտ հաւատացեալ ոգեւորուելով կը խօսի Աւետարանի քարոզած ընկերսիրութեան վերայ. առակով եւ օրինակով ցոյց կուտայ թէ մարդոյն ազատ եւ երջանիկ կեանք՝ ընկերսիրութեան մէջն է. ցոյց կուտայ թէ աշխարհիս վերայ տիրող թշուառութեան միայնակ դեղն ու դարման՝ ընկերսիրութիւն է. ցոյց կուտայ նաեւ թէ առանց Աւետարանի ճշմարիտ ընկերսիրութեան որչափ ճգնի քաղաքակրթութիւն՝ կարող չէ մարդոյն ապերջանիկ կեանքը բառնալ, կամ նորա խռովեալ ոգւոյն խաղաղութիւն տալ:

Սիրաք, որ Աւետարանին սիրահարն է, միւս դասերուն վերայ իբրեւ գլուխ եւ պսակ հիւսելով կ՚աւանդէ իւր սիրական Սամուէլին, որպէս զի Աւետարանի ընկերսիրութեան դասերն իւր բոլոր կենաց մէջ հոգւով եւ ճշմարտութեամբ ընդունի:

Անհաւասիկ այսչափով բովանդակեցի Սիրաքայ բարի Հօր կրթական դասեր. սիրով կարդացէք, խելամտելով ի միտ առէք, ո՛վ դու Հայոց ժողովուրդ, Հայոց հայրեր, Հայոց դաստիարակներ եւ Հայոց զարգացեալ որդիքներ:

Առ հասարակ ձեզ համար գրեցի այս պիտանի դասեր. դուք եւս Սիրաքայ հօր բարի օրինակին հետեւելով աւանդեցէք ձեր որդիներուն. աւանդեցէք ձեր աշակերտներուն. վասն զի զարգացեալ նոր սերունդին համար՝ աշխարհի գիտութիւն եւ մեր ընկերական կենաց դասերն՝ ամենակարեւոր գիտութիւն եւ իմտութիւնն են:

Սոսկ դպրոցական ուսումներ բաւական չեն Հայոց զարգացեալ պատանիներուն համար, որ նոր կը թեւակոխեն աշխարհի կենաց շրջանին մէջ. այլ պէտք է զի նոքա Սամուէլի նման ականջ դնելով միշտ բարեխրատ լինին ու յառաջդիմեն դէպի լաւագոյն կեանք. որոյ միջոցը մի միայն ուղիղ դաստիարակութեան ձեռքն է, որ կ՚ուղղէ եւ կը վարէ զիրենք:

Սիրաքն այդ կրթական ձեռք յօրինեց և կուտայ Հայոց հայրերուն ձեռքը. թէ սիրաբար ընդունին, ո՛վ դաստիարակ Հայեր, Սիրաքայ տքնող ձեռքն ու գրիչ այլ եւս պիտի շարունակէ իւր բարոյախօս դասեր:

———o———

# ՍԻՐԱՔ

## ԵՒ

# ՍԱՄՈՒԷԼ

———o———

## ԴԱՍ Ա.

## ՄԱՐԴ ԵՒ ԱՇԽԱՐՀ

Ինձ հօրս լուարուք, որդեակք· եւ այնպէս արարէք, զի ապրեսջիք· Սիրաք· Գլ· Գ·

*ՈՐԴԵԱԿ իմ Սամուէլ, դպրոցի դասերդ արդէն փոքր ի շատէ աւարտեցիր· հասակդ զարգացաւ եւ այժմ հասեր ես մինչեւ ութն եւ տասն ամ· իբրեւ հայր պարտական եմ ես, որ աշխարհի ընդհանուր դասերը ես ինքս աւանդեմ քեզ· թէ ի՞նչ է մարդն աշխարհիս վերայ, ի՞նչ է իւր ընկերական կեանք, ի՞նչ է իւր պարտիք եւ իրաւունք: ի՞նչ է իւր առանձին կոչումն, ի՞նչ էր մարդոյն հին կեանք· եւ ի՞նչ է արդի կեանք, զոր քաղաքակրթութիւն կը կոչեն· եւ ի՞նչ են առհասարակ մարդոյն յառաջդիմութեան պայմաններ, ի՞նչ են աշխարհիս վերայ այն բնական եւ պատահական պատճառներ, որով զմարդն երջանիկ եւ ապերջանիկ կ'առնեն: Մի խօսքով, աշխարհիս վերայ մարդոյն վարած ընկերական կեանքին մի փոքր նկարագիրը պիտի հանեմ քեզ:*

*Որդեակ իմ, ընտանեկան կեանքին մէջ ծնար եւ հայրենի տան ու գաւառին մէջ զարգացար· այսուհետեւ կեանքիդ անձուկ շրջանն ընդարձակելով կը մտնաս աշխարհի լայնածաւալ շրջանին մէջ· քո պարտիքն է աշխարհ եւ մարդիկ ճանչնալ· եւ ինչ որ աչքի եւ մտքի լուսով կը տեսնաս աշխարհիս մէջ՝ առանց դիտելոյ ապշութեամբ չանցնիս· այլ քննես ու հետամուտ լինիս, թէ ի՞նչպէս կը կառավարուի աշխարհ եւ մարդկային ընկերութիւն:*

*Եթէ ի բնէ եւ ի մօրէ կոյր ծնէիր, ես այս դասերը չէի աւանդեր քեզ· վասն զի առանց աչքի լուսոյ այս աշխարհ եւ բովանդակ տիեզերք տեսնելու՝ անհնարին կը լինէր, որ ես աշ-*

խարհի դասերն աւանդէի քեզ. անհնարին կը լինէր նաեւ, որ դու միայն մտքի լուսով կարող լինէիր գաղափարել աշխարհիս իրաց գիտութիւնը: Սորա համար կ՚աղաղակէր Յիսուսին՝ մի կոյր, «Տ՚էր, խնդրեմ զի բացայց»: Դժբախտ կոյր աչքի լոյս կը խնդրէր, յայտ է թէ աշխարհ եւ կենդանի կեանք տեսնալու համար էր: Նա իւր կուրութեան մէջ թշուառ էր, ոչ ինչ չէր տեսնար եւ ոչինչ չէր զգար, ոչ երկինք կը տեսնար լուսազունդ աստղերով, եւ ոչ երկրագունդ կը տեսնար ծառերով, ծաղիկներով, որպէս զի վայելէր եւ փառք տար իւր ըստեղծողին եւ օրհնէր աշխարհի Արարիչը:

Իսկ դու, բարեբախտ որդեակ իմ, որ աչքի լուսով ծներ ես, բիւրանգամ ծունր դիր եւ փառք տուր քո բարերար Ստեղծողին: Շնորհապարտ եղիր նաեւ քո ծնողին, որ կաշխատի լոյս տալ ու բանալ մտքիդ աչքը, որպէս զի դու երկու լուսով տեսնաս աշխարհ: Մարդիկ կան, որ կը շրջին աշխարհիս վերայ, կը տեսնան որ չեն տեսնար. այս մարդիկ մտաւորական լոյսէն զուրկ են. միայն աշխարհի արտաքին երեսն իբրեւ ըստուեր կը տեսնան, եւ չը գիտեն աշխարհի ներքին կեանք. բնական եւ բարոյական օրէնքներ, վարիչներ եւ շարժման զօրութիւններ եւայլն:

Ջանացիր եղիր, որդեակ իմ, որ մտաւորական լոյսդ պայծառ լինի, եւ որչափ պայծառանայ մտքիդ լոյս՝ այնչափ պայծառ ու պարզ կը տեսնաս աշխարհ եւ աշխարհի բաները, դու ստուերի նման չես անցեր աշխարհէս եւ աշխարհս ստուերի նման չես տեսնար. այլ տիրապէս կը տեսնաս թէ ի՞նչ է մահկանացու մարդոյն կոչումն աշխարհիս վերայ, եւ ի՞նչ է նորա գործ, վախճան ու նպատակ իւր կենաց մէջ:

Մարդոյն կոչումն եւ գործ շատ մեծ է աշխարհի վերայ: Աստուած կը ներշնչէ եւ Մովսէս կը պատմէ, թէ մարդ իւր Արարչապետին տիրական պատկերն զգեցած է. եւ ի՞նչ է այս պատկերին նմանութեան կնիքն.— անմահ հոգին, եւ բնաւորութիւն, որով մարդն կը զանազանի բոլոր ստեղծական արարածներէն, խօսուն լեզուով, բանականութեամբ եւ հանճարով ճոխացած:

Սակայն դու մի՛ այնպէս հասկնար, որ մարդն Աստուծոյ նոյնատիպ, եւ ամենայնիւ հաւասար ճշգրտահան պատկերն է: Քա՛ւ, եթէ այսպէս կարծուի՝ ամբարշտական մեծամտութիւն է, զի մարդն իւր բարերար սկզբնատիպ Արարչին մի ամենափոքրիկ տիպարն է. Նորա կատարեալ եւ անհաս իմաստութեան

առաջ՝ մի անգէտ մանուկ է, մի նմոյշ է, որ մշտնջենաւոր լուծէն երկրիս վերայ ձգուած է, եւ յաւիտենական անմահութեան առաջ մի հողակերտ մահկանացու է: Եւ ի՞նչ համեմատութիւն կայ կաթ մի ջուր Ովկիանոսի ծովուն հետ, եւ կաթ մի շող՝ արեւու համատարած լուսոյն հետ:

Ուստի պէտք է ողջմտութեամբ այսպէս իմանանք, որ մարդս իւր բանականութեան խելքով ու հանճարով խիստ չափաւոր սահմանի մէջ փակուած է, եւ նորա բարերար Արարիչն այնչափ ձիրք ու զօրութիւն շնորհեր է մարդոյն, որչափ կամեցեր է: Այո՛, մարդն այս աշխարհիս հողագնդին վերայ իբրեւ իշխող տիրապետ կարգուած է իւր Արարչապետէն, տիրել բովանդակ երկրին, իշխել ծովուն ու ցամաքին, անասնոց ու թռչնոց, եւ ինչ որ կան, կը շնչեն ու կը սողան երկրիս վերայ, զորս առ հասարակ մարդոյն հրամանին տակ դրաւ, ինչպէս կը խոստովանի Դաւիթ թէ «Զամենայն ինչ հնազանդ արարեր ի ներքոյ ոտից նորա» եւայլն... Աստի կ՚իմանանք եւ ինչպէս կիմաստասիրեն եկեղեցւոյ վարդապետք՝ թէ Տէր Աստուած աշխարհիս ամէն բան մարդոյն համար ստեղծեր է, իսկ մարդն՝ Աստուծոյ համար, որ յաւիտեան օրհնէ եւ փառաւորէ իւր Արարիչն, իւր արդար եւ առաքինի կեանքով, որպէս ասէ Յիսուս. «Տեսցեն զգործս ձեր բարիս եւ փառաւորեսցեն զՀայր»: Սակայն կը յաւելում ասել մանաւանդ թէ՝ մարդ մարդուն համար կարգեր է, զի մարդոյն կեանք ընկերական է. մարդն ինքնին առանձին առանձին ոչինչ է, եւ ոչինչ զանազանութիւն չունի վայրենի կենդանիներէն, որոց բնակութիւն՝ լեռներու խորշեր եւ անտառներու մէջն է:

Ահաւասիկ այս պատճառաւ կը բարձրանայ մարդոյն կոչումն մեր ընկերական աշխարհին մէջ, եւ ընկերաբար վարելով իւր կեանքը կը յառաջդիմէ, մինչդեռ անասնոց կեանք նոյն կը մնայ առանց երբէք յառաջդիմութեան: Մարդոյն յառաջդիմութիւն՝ իւր ընկերական կեանքէն է. ապա թէ ոչ՝ մարդն եւս վայրենութեան եւ անասնոց կարգին մէջ կը մնար, ոչինչ շնորհ չէր իւր լեզուին եւ խօսակցութեան առաւելութիւն, երբ նորա միտքն ու հոգին վայրենութեամբ թանձրացած լինէր: Մարդոյն ընկերական կեանքէն յառաջ եկաւ աշխարհաշինութիւն. մարդիկ աշխարհիս վերայ տիրապէս տիրեցին եւ տիրապէս կատարեցաւ Աստուծոյ հրամանն:

Դաւիթ կ՚ասէ, թէ Տէր Աստուած տիեզերքի ժառանգութիւն բաժնեց. Երկինքն՝ իւր բաժին առաւ, եւ Երկիրը՝ մար-

դոց որդիներուն ժառանգութիւն տուաւ. եւ բովանդակ աշխարհ իբրեւ մի դրախտ զարդարելով՝ յանձնեց մարդոյն, որպէս զի գործէ ու պահէ զայն: Ցոյց կուտայ Տէր Աստուած թէ՝ մարդն աշխարհիս ագարակին մէջ մի գործաւոր մշակ է. պէտք է անդադար աշխատի արդիւնաւորել զայն, եւ որչափ ժրագործ լինի՝ զաշխարհ մշակութեամբ, շինութեամբ, գործունէութեամբ արդիւնաւորել, այնչափ աւելի կը վայելէ եւ կը բարգաւաճի իւր կեանք:

Այլ դու մի՛ այնպէս ըմբռներ, որդեակ իմ, որ ամենահաբուստ մեծատունն Աստուած, աշխարհս իւր հարստութեամբ մարդոյն տուաւ իբրեւ սոսկ նիւթական կեանք, որ նա աշխատի, վաստակէ, ուտէ եւ վայելէ միայն երկրին բարիքը:

Եթէ այսպէս լինէր՝ ոչինչ գերազանցութիւն եւ առաւելութեան շնորհ չէր ունենար մարդն, երբ նա սոսկ նիւթական կեանքով ապրէր ինչպէս կ՚ապրին անասունք:

Գիտենք, մարդ աշխարհիս հետ եւ նիւթական կեանքին հետ կապուած է, բայց իւր մեծ կոչումն կը պահանջէ, որ նիւթականին հետ կապէ բարոյական կեանք. եւ այդ է միայն, որ կը բարձրացնէ մարդոյն պատիւ եւ արժանաւորութիւնն. ապա թէ ոչ՝ մարդ կը նուաստանայ ու կը հաւասարի անասնոց:

Ուստի աշխարհիս վերայ մարդոյն կոչումն, պատիւ, փառք, արժանաւորութիւն՝ իւր գործքերու կշիռն է. նա ինչ վիճակի մէջ կը լինի թող լինի. նորա նուիրական պարտիքն է ճանչնալ իւր կոչումն, ճանչնալ մարդկութեան վայելուչ կեանք, ճանչնալ նաեւ թէ ինքն այս աշխարհիս վերայ դիպուածով եւ ունայնաբար չէ եկեր. այլ մեծամեծ պարտիքներ կատարելու համար ծներ է, քանի որ կեանք ունի՝ պէտք է գործէ. վասն զի մահն ու գերեզման գիշեր կը բերեն, յորում այլ եւս մարդ կարող չէ գործել: Այս աշխարհ մարդոց առաքինութեան ասպարէզն է, ով որ ընթանալ գիտէ՝ նա միայն մրցանակ կ՚առնու:

Կարդա՛ Սուրբ գիրք, կարդա՛ Հայոց աշխարհի պատմութիւն եւ տես թէ առաքինի ոգիներ ի՞նչպէս ընթացան: Նոյ իբրեւ այր կատարեալ՝ արդարութեամբ ընթացաւ՝ մրցանակն առեց. Աբրահամ հաւատով ընթացաւ՝ մրցանակն առեց. Յովսէփ ողջախոհութեամբ ընթացաւ՝ մրցանակն առեց. Մովսէս Աստուծոյ ժողովուրդին իբրեւ առաջնորդ ընթացաւ՝ մրցանակն առեց. Յովբ համբերութեամբ ընթացաւ՝ մրցանակն առեց. Յեսու յաղթութեամբ ընթացաւ՝ մրցանակն առեց. Սա-

*մուէլ հնազանդութեամբ ընթացաւ՝ մրցանակն առեց· Դաւիթ ապաշխարելով ընթացաւ՝ թողութեան մրցանակն ընդունեց: Յիսուս Դաւթի որդին խաչակրութեամբ ընթացաւ՝ առեց այն մրցանակն եւ անունն, որ ի վեր է քան զամենայն անուն: Առաքեալք նոյն խաչակրութեամբ ընթացան՝ մրցանակն առին· Հայրապետք եկեղեցին բարեզարդելով ընթացան՝ մրցանակն առին· Վարդապետք ուսուցանելով ընթացան՝ մրցանակն առին· Սուրբ Գրիգոր, իւր Որդիք եւ Թոռունք Հայոց աշխարհի համար ընթացան՝ մրցանակն առին· Սուրբն Սահակ ու Մեսրովբ, աշակերտելով հանդերձ գրելով թարգմանելով ընթացան՝ մրցանակն առին· քաջն Վարդան իւր ուխտադիր խմբով խաչով ընթացան՝ մրցանակն առին· եւ այլ ո՞ր մէկ համրեմ քեզ Հայոց աշխարհէն, որք առաքինական վաստակով ընթացան՝ մրցանակն առին:*

*Թողունք անցեալ աշխարհի առաքինեաց դասն, թողունք եկեղեցւոյ սուրբ նահատակներ, որ արիւնով ընթացան· ներկայ քաղաքակիրթ աշխարհին մէջ մտնենք: Ո՛վ կարող է համար բերել այն աշխատաւոր առաքինեաց թիւը, որք զօրհանապազ կը տքնին եւ կ'ընթանան աշխարհիս ասպարէզին վերայ, հանճարով, գիւտերով, արուեստով, աշխարհաշինութեամբ, մեծագործութեամբ եւ այլ բազմադիմի չահաւէտ եւ արդիւնաւոր վաստակներով ճոխացուցին լիացուցին մարդոյն ընկերական կեանք, չեմ յիշեր գրիչներ եւ մամուլի անխոնջ թեւերը, որ զտիւ եւ գիշեր լոյս տարածելով կը լուսաւորեն մարդոյն մտաւորական աշխարհ:*

*Արդ կ'աւարտեմ այս դասը, եւ ուխտիւ կ'աւանդեմ քեզ· ծանի՛ր, թէ ի՞նչ է քո կոչումն աշխարհիս վերայ, եւ համեմատ ընթացիր քո կոչմանդ, որ հասնիս նպատակին եւ մրցանակն ընդունիս: Թէ իբրեւ հաւատացեալ՝ բոլոր սրտով պաշտէ քո Տէր Աստուած· Թէ իբրեւ աշխարհի մարդ՝ քաղաքավարութեամբ առաքինացիր· Թէ իբրեւ ազատ մարդ՝ մի ստրկանար, այլ պաշտպանէ մարդկութեան պատիւ· Թէ իբրեւ իշխան՝ օրէնքով իշխէ, արդարութիւն եւ իրաւունք սիրէ· Թէ իբրեւ հպատակ՝ օրէնքով հնազանդիր· Թէ իբրեւ եկեղեցւոյ հովիւ՝ հօտիդ վերայ անձնադիր եղիր· Թէ իբրեւ գառն՝ արածող հովուին հետեւիր· Թէ իբրեւ ընկերական մարդ՝ ընկերական պարտիքներ սիրով կատարէ եւ միանգամայն ճանչցիր իրաւունքդ· Թէ իբրեւ հայ եւ հայու զաւակ՝ ազգդ սիրէ· Թէ իբրեւ Աւետարանին ընդհանուր մարդա–*

*սիրութեան աշակերտ՝ ամէն մարդ անխտրապէս սիրէ:*

*Մի բան եւս պատուէր տամ քեզ. միշտ յուշիդ պահէ Պօղոսին խրատ, ուր եւ կը լինիս, թէ հայրենեաց եւ թէ օտար աշխարհի մէջ անդրդուելի կաց կոչմանդ վերայ, կարճմտութեամբ կրօնէ ի կրօն մի՛ փոխուիր: Հայոց աշխարհի զաւակն են. Հայաստանեայց ազատ եկեղեցւոյ ազատ որդեգիրն ես, ի նոյն կաց եւ ի նոյն մեռիր. թող հայ ժողովուրդ տանի թաղէ զքեզ քո հարց ու նախնեաց գերեզմանին ծոցը:*

---

## ԴԱՍ Բ.

# ՏԻԵԶԵՐՔ

## *ԲՆԱԿԱՆ ԵՒ ԲԱՐՈՅԱԿԱՆ ՕՐԷՆՔ*

> Արարեր զլուսին վասն ժամանակի, արեգակն ծանեաւ զժամ մտանելոյ իւրոյ. Սաղմոս ՃԳ. ԳԼ.:

*ՍՐԱՏԵՍ ես, որդեակ իմ Սամուէլ, աչքդ բաց նայէ տիեզերքին վերայ. դարձիր դու խորապէս մտաքնին եղիր. զի տէր Աստուած իւր պետական աթոռը երկնից մէջ դնելով՝ բոլոր տիեզերքը՝ բնական եւ յաւիտենական օրէնքով կը կառավարէ. իւր օրէնքներն անշարժ եւ անփոփոխ են եւ ոչ ոք կարող է զայն շրջել կամ խախտել. ինչպէս աշխարհիս դրական եւ քաղաքային անհաստատ օրէնքներ. զորս միոյն մատ կը գրէ եւ միւսին կ'եղծանէ:*

*Բնական օրէնքով կը դառնայ արեւը, կը ծագի առաւօտ, լոյս կուտայ տիեզերաց, յերեկուն ի մայր կը մտնէ: Արեւը մեր կեանքին եւ ժամանակին չափն ու կշիռն է. կ'որոշէ մեր օրեր, տարին ու դարեր: Թո՛ղ այս՝ իւր լուսով ու ջերմութեամբ կը կենդանացնէ մեր աշխարհ, մարդիկ նորա լուսոյն տակ կը գործեն. եթէ անլոյս մնան՝ կը դադարին: «Ելանէ մարդ ի գործս իւր, ի վաստակս ձեռաց իւրոց մինչեւ յերեկոյ»: Աստի կիմանանք թէ բնական աշխարհին լոյս պէտք է, որ մարդիկ գործեն. քանի՞ առաւել պէտք է լոյս մարդոյն մտաւորական աշխարհին, որ կարենան ուղղութեամբ գործել:*

*Բնական օրէնքով գիշերավար լուսին մերթ կը նուազի եւ մերթ կը լրանայ, կը մեռնի եւ դարձեալ կը ծնի, իւր շրջանն*

երեսուն օր է․ եւ այս Թուով կը չափէ ամիսը, եւ տասներկու ամսով՝ մի տարին կը բոլորէ։ Երկնակամարին այս երկու մեծ լուսաւորներ մեզ նման բանաւոր մարդ չեն․ բայց բնական օրէնքով գիտեն կատարել Աստուծոյ կամք, ինչպէս սաղմոսելով Արարչին մեծագործութիւնը կը հռչակէ Դաւիթ․ «Արարեր զլուսին վասն ժամանակի եւ արեգակն ծանեաւ զժամ մտանելոյ իւրոյ»։

Աստեղագէտ չեմ, որ երկնից բովանդակ համաստեղութեանց վերայ ճառեմ եւ ծանօթութիւն տամ քեզ, թէ ո՞րպէս տիեզերքի անհուն տարածութեան մէջ կը շարժին կը դառնան, մերթ կ՚երեւին մերթ կ՚աներեւութանան, եւ այս ամէն անսայթաք ընթացքը բնական օրէնքով կը կատարեն եւ երբէ՛ք զիրար չեն դիմահարեր։ Դու կը տեսնա՞ս մարդիկ աշխարհիս վերայ կը շրջին, շատ անգամ իրենց գլուխը իրարու զարնելով կը պստտեն։ Երանի՛ թէ մարդոց գլուխներն եւս ճանչնային իւրաքանչիւր իրենց սահմանն ու շրջան։

Դառնանք երկրիս վերայ։ Մեծն Ովկիանոս երբեմն իւր ահեղ ալիքներով կ՚ուռի կը լեռնանայ եւ դարձեալ դաշտանալով իւր տեղը կը խաղաղի, այդ եւս բնական օրէնքով է․ զի ծովերու ամենիշխան Տէր՝ մանր աւազանով պարիսպ քաշեր է ու մոնչող ալիքներուն դէմ սահման դրեր է, որ անդր չանցնին ու չ՚ողողեն երկիրը։ Երանի՜ թէ այդպէս մի սահման եւս մարդոյն համար դնէր զերիշխան Տէր․ եւ իւր մէջ փակէր աշխարհակալութեան ոգին․ որպէս զի արեան ծովերով չ՚ողողէր խեղճ ժողովուրդը։

Ռամիկն բնագէտ չէ որ տեսնայ, այլ միայն զարմանալով փառք կուտայ Աստուծոյ․ նա չը գիտէ թէ ի՞նչպէս յամարան անձրեւ կուգայ եւ ձմերան ձիւն․ մեր մամիկներ մեզ կը պատմէին թէ հրեշտակներ ալիւրի նման ձիւն կը մաղեն երկրիս վերայ, մերթ մանրիկ մանրիկ, եւ մերթ խոշոր խոշոր։

Բայց դու գիտես, որ ծովէն ու ցամաքէն արեւուն զօրութեամ՛բ գոլորշիներ ի վեր կը բարձրանան եւ խտանալով ամպ կը լինին․ ամպերէն անձրեւ եւ ձիւն կը տեղան երկրիս վրայ, աղբիւրներ ու վտակներ յորդելով կ՚առատանան, գետերու մէջ կը վազեն, գետերն եւս կ՚երթան ի ծով կը թափին․ եւ այսպէս ծովու ջրեր շրջան կ՚առնուն, ոչ կը նուազին եւ ոչ կ՚առաւելուն, ինչպէս կը դիտէ մեծն Սողոմոն թէ «Ամենայն ուղխք ի

ծով գնան․ եւ ծով ոչ լնու․ ի տեղի յոր ուղխք գնան, անդ նոքին դառնան ի գնալ»։ Ահաւասիկ զարմանալի այս անդրադարձութիւնն եւս բնական օրէնքով է, որ ծովեր ու ջրեր նոյն քանակութեան մէջ կը պահէ․ որչափ եւ որքան են ի սկզբանէ անտի՝ նոյն պիտի մնան մինչեւ յաւիտեան․ զի Տէր Աստուած ամէն բան չափով եւ կշռով ստեղծեր է։

Ո՛վ, քանի՜ զարմանալի է Արարչին կարգադրութիւն, զմեզ շրջապատող տարերք բոլորն եւս բնական օրինաց տակ հնազանդելով՝ նորա հրամանը կը կատարեն։ Դու կը տեսնա՞ս երբ գարուն կուգայ, գիտես թէ մեռած ցուրտ հողագնդիս նոր յարութիւն կուտայ, բոլոր բուսական տարերք մայրենի հողին ծոցէն ի վեր կը զարթնուն․ կը ծլին կը բողբոջին, նախ տերեւներ կը բանան եւ ապա կը ծաղկին, յամարան կը պտղաբերեն, յաշնան տերեւաթափ կը լինին եւ ի ձմերան կը դադարին գործելէ․ եւ երբ ցուրտ կը ցամքեցնէ բուսականներու վերի մասն՝ ի ներքուստ ջերմիկ հողին տակ կը սնանին արմատներ եւ կը յղանան սերմեր, այդ եւս յաւիտենական ու բնական օրէնքով է։ Հուժկու հովերն եւս բնական օրինաց զօրութեան տակ կը հպատակին․ մերթ հիւսիս կը շնչէ, մերթ հարաւ, մերթ արեւելք, մերթ արեւմուտք։ Երկնից եւ երկրի դատարկութեան մէջ գիտես թէ պատերազմ բանալով կը մրցին իրարու դէմ եւ կը յաղթահարեն զիրար։

Դաւիթ կը դիտէր այս եւ կը հրաւիրէր տարերք, որ օրհնեն զՏէր Աստուած․ «Օրհնեցէք զՏէր, հուր եւ կարկուտ, ձիւն եւ սառն, հողմ եւ մրրիկ, որք առնէք զբան նորա»։

Այսպէս եւս ամէն շնչաւոր կենդանիք նոյն բնական օրէնքով կը վարին․ տես դու, ճնճղուկ իւր բոյն ծառի ճղի վերայ կը դնէ․ տնասէր ծիծառն իւր կաւակերտ բունիկ տան գերանի կողէն կը կախէ, ընտանի հաւն ի թուխս կը նստի, ամէնքն եւս իրենց ժամանակին ձագեր կը հանեն․ կաթ տալով կը սնուցանեն եւ երբ մեծնան թեւաբոյս լինին՝ ազատ կը թողուն։

Այն հզօր առիւծ՝ որ բոլոր կենդանեաց իշխող թագաւորն է, իւր պալատ անտառներու խորերն են, ուր եւ կը ծնի կորիւնները․ որք երբեմն առ քաղցի կ՚աղաղակեն․ զուցէ Դաւիթ իւր հովուութեան մէջ տեսաւ ու լսեց նոցա մռնչիւն, ուստի կ՚ասէ․ «Կորիւնք առիւծոց մռնչեն եւ յափշտակեն, խնդրեն յԱստուծոյ զկերակուրս իւրեանց։ Ի ծագել արեւու ժողովին եւ ի մորիս իւրեանց դադարին»։

Կ՚ուզե՞ս բնութեան Արարչին մեծագործ կարգադրութեան

վերայ սքանչանալ, զոր նա կը գործէ բնական օրինաց ձեռքով, հիացեալ ոգւով կարդա հարիւր երեք գլուխ Սաղմոսն, որ այսպէս կ'սկսի· «Օրհնեա՛ անձն իմ զՏէր, Տէր Աստուած իմ, մեծ եղեր յոյժ· եւ այլն»։ Այս գլուխ ծայրէ ի ծայր վսեմագոյն նկարագիր մի է բնական օրինաց, զոր կը հանէ Դաւիթ օրհնելով ու փառաւորելով զմեծագործն Աստուած։

Իսկ բանաւոր եւ ազատ մարդ, որ իւր խելքով ու հանճարով կ'իշխէ երկրիս վերայ եւ մերթ եւս տարերաց դէմ կը մըրցի, կը մեծամտի, որ հողմեր, ամպեր, ծովեր, ալիքներ, եղանակն ու ժամանակ անսան ու հնազանդին իրեն։ Բայց նա եւս բնական օրինաց իշխանութեան տակ նուաճուած է· կը ծնի, կաթով ու հացով կ'ապրի, կ'աճի ու կը զարգանայ· հուսկ յետոյ կը ծերանայ եւ կը մեռնի, հողէն ի մարդ, եւ մարդէն ի հող կը դառնայ անդրէն· ուստի տիրական մարդն եւս բնական օրինաց հպատակ ծառայն է։ Միայն թէ մարդն ազատակամ է, իւր կեանք եւ գործեր վարելու համար։ Միթէ առիւծն եւս ազատ չէ՞ անտառավայրին մէջ շրջել եւ իւր որսեր հոգալ։ Արծիւն ազատ չէ՞ օդային թագաւորութեանց մէջ ազատաբար սաւառնել· եւ իւր զահը դնել բարձրագագաթ լեռներու վերայ։

Բաւ է այսքան, որդեակ իմ, ես բնախօս չեմ, որ բնական օրինաց գիտութիւնն ընդարձակ հմտապէս ճառեմ քեզ· այժմ սկսիմ համառօտել քեզ բարոյական օրէնք, որ միայն բանաւոր մարդոյն կը վերաբերի։

Ինչպէս բնական օրինաց, նոյնպէս եւ բարոյական կամ գըրաւոր օրինաց աղբիւրը նոյն յաւիտենական իմաստութիւնն է· եւ ինձ այնպէս կը թուի երբ տէր Աստուած նախամարդն ստեղծեց՝ նորա սրտին եւ ոգւոյն մէջ դրոշմեց մի միայն խղճի այս օրէնքը· «Զամենայն զոր ինչ կամիցիք թէ արասցեն ձեզ մարդիկ, այնպէս արարէք եւ դուք նոցա»։ Այս գերագոյն ու կատարեալ օրէնք մարդոյն համար շատ բնական ու բաւական էր, եթէ մարդն անեղծ պահէր զայն ու չի գեղծանէր։ Ադամէն սկսեալ մինչեւ ի Մովսէս բոլոր նահապետներ զարմերով զաւակներով հանդերձ այս օրէնքով վարուեցան, որք առ հասարակ արդար հանդիսացան աշխարհի եւ Աստուծոյ առաջ։

Իսկ այն ազգ եւ ժողովուրդ, որ սոյն խղճի օրինաց գիրը քերեցին իրենց սրտէն, ապականելով ապականեցան ու եղծաւ մարդկութեան պատիւը։ Սորա համար Տէր Աստուած մի անգամ ջրհեղեղով լուաց երկրին երեսը, ողողեց ամբարիշտ մարդոց մեղքերը, միայն արդար նահապետ մի թողուց իբրեւ արմատ նոր սերնդեան։

Գերագոյն օրէնսդիր Աստուած, որ զօրհանապազ մոլորեալ մարդոց ուղղութեան համար կը հոգայ. նա իւր ծառայն Մովսէս պատգամաւոր ընտրեց եւ նորա ձեռքով շատ բարոյական եւ գրաւոր օրէնքներ տուաւ իւր ընտրեալ ազգին: Այս ընդարձակ եւ ընդհանուր օրէնքներէն կան, որ կրօնի պաշտաման կը վերաբերին, այսինքն քահանայական եւ ծիսական օրէնքներ. կան նաեւ որ մասնաւոր խրատներ եւ պատուէրներ են, որ սրտի փափկութեան եւ գթութեան կը վերաբերին, զոր օրինակ. կը պատուիրէ որ գգառն ի կաթն մօր չը մորթեն. չը զպին ճնճղուկի բունին՝ երբ նա ձագեր հաներ է, կամ գրաւ չ՚առնել երկանի մի քարն, որ տան պիտանի գործիքն է, եւ այլն:

Իսկ հիմնական եւ բարոյական մեծ օրէնքներ Տասնաբանեայ պատուիրաններն են, որ բանաւոր մարդոց ընկերական կեանքին պարտուց եւ իրաւանց սահման կը դնեն. որք դարձեալ ամբողջ այս ամէն օրէնքներ խղճի օրինաց աղբիւրէն կը բղխին:

Մովսէս իւր օրէնքով իշխեց մինչեւ ի Քրիստոս. եկաւ փրկիչ Յիսուս, որ շնորհք եւ ճշմարտութիւն էր. նա եւս իւր Աւետարանի ձայնով ու տառով նոյն խղճի օրէնք կրկնեց. «Զամենայն զոր ինչ կամիք թէ արասցեն ձեզ մարդիկ եւայլն»:

Յիսուս այս յաւիտենական հիման վերայ հաստատելով իւր շնորհական օրինաց բարձրագոյն շէնքը՝ ասաց. Մարդիկ, սիրեցէք միայն, եւ բաւ է: Մովսէսի օրինաց ծրագիրը թերի էր, Յիսուս լրացուց զայն: Եւ գիտե՞ս թէ ի՞նչ զանազանութիւն կայ Մովսէսին եւ Յիսուսին մէջ. միոյն օրինաց գրքէն մահ կը հոտէր, իսկ միւսոյն՝ Աւետարան եւ կեանք. միոյն մէջ միշտ պատժական փոխարինութիւն կար, իսկ միւսոյն միշտ շնորհք եւ ներողութիւն եւ ո՞րչափ, գիտե՞ս, մինչեւ եօթանասնիցս եօթն, այսինքն անկէտ եւ անսահման: Մովսէս սուրն յազգերէն կախած իսկոյն յանցաւորին վճիռ կը հատանէր. Յիսուս Պետրոսին ասաց, սուրդ ի պատեան դիր, զի ես կեանք տալու համար եկայ:

Ծունր դիր, որդեակ իմ, Յիսուսի ներող մարդասիրութեան առաջ. պարանոցդ ծռէ եւ ա՛ռ նորա քաղցր լուծը եւ փոքրոգի բեռն: Ծանիր, որ Աւետարանի բարոյական օրէնք մեր աշխարհի վայրենի վիճակը յեղաշրջեց. մարդոյն ստրկական վիճակը բարձրացուց, գերութեան շղթաներ խորտակեց եւ ասաց. «Այսուհետեւ ազատ էք ի Քրիստոս Յիսուս»: Եթէ այսօր գիտութիւն եւ քաղաքկրթութիւն՝ Աւետարանի ազատութեան շնորհն է. այսպէս կը խոստովանին աշխարհիս

բոլոր ողջամիտ իմաստասէրները։

Ծունր դիր նաեւ քո մեծագոյն Արարչին առաջ, որ իւր ձեռակերտն տիեզերք այսպէս բնական ու յաւիտենական օրէնքով կը կառավարէ։ Եւ դու՝ մինչ կենդանի ես աշխարհիս վերայ, կոյր թերահաւատ մի լինիր, ինչպէս աշխարհիս անզգամներ ու անմիտներ։ Այլ Դաւթի նման հիանալով գոչէ «Ո՛րպէս զի մեծ են գործք քո, Տէր, եւ այլն»։ Եթէ հասնի քեզ, որ Նեւտոնի չափ ներհուն լինիս, ու քննես տիեզերաց օրէնքին բնական կարգն ու շարժումն, այնչափ առաւել զարմացիր եւ օրհնէ քո զարմանագործ Արարիչը։ Եթէ ռամիկն սոսկ աչքով կը դիտէ տիեզերքը, կը հաւատայ առանց գրի ու գիտութեան, յամենայն ժամ փառք կուտայ եւ լիաբերան կ'օրհնէ իւր ստեղծող. քո պարտիքն այլ եւս կը մեծնան ու կ'առաւելուն, երբ տիեզերաց օրէնքներ քննելով նորա գերագոյն Արարչապետ գիտութեամբ ճանչնալ կ'ուզես. ծանիր ուրեմն, որդեակ իմ, որ հեթանոս իմաստասիրաց նման սոսկ աստուածագէտ չը լինիս առանց արժանապէս պաշտելոյ զայն։

---

## ԴԱՍ Գ.

# ԱՆՀԱՒԱՍԱՐ ԿԵԱՆՔ
## ՄԱՐԴԿԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

Թէ մարդիկ աշխարհիս վերայ եւ արեւուն տակ անհաւասար կերեւին, հողին ու գերեզմանի ստուերին տակ կը հաւասարին։

ՄԱՐԴԻԿ հաւասար կը ծնին, հաւասար կ'ապրին եւ հաւասար կը մեռնին։

Անհաւասարութիւն չէ թէ միայն մարդկային ընկերութեան մէջ, այլ եւ ընդհանուր տիեզերքին մէջ կ'երեւի։ Աչքդ բաց ու տես, որդեակ իմ, որ ամէն բան զանազան ու աննման կը տեսնաս, թէ երկնից երես, թէ երկրիս վերայ, թէ բովանդակ աշխարհիս բնական արարածոց մէջ եւ թէ մարդոյն նիւթական եւ բարոյական կեանքին մէջ։ Մարդ պէտք է ափշի, հիանայ եւ օրհնէ իւր մեծագործ Արարիչը, որ ամէն բան զանազան եւ աննման յօրիներ է եւ կը յօրինէ։ Սորա մէջ կ'երեւի արարչին անհուն զօրութիւն, անհուն իմաստութիւն եւ անհուն հանճար, որ ստեղծեալ իրաց թէ արտաքին ձեւն ու պատկեր

եւ թէ ներքին բնական զօրութիւններ, ամենայն ինչ, իրարու աննման, զանազան ու անհաւասար են, եւ այս անհաւասարութեան մէջ ամենայն ինչ չափով ու կշռով համեմատ կարգադրելով՝ անհաս եւ անհաւասարն Աստուած կը յօրինէ եւ կը վարէ տիեզերք։

Աչերդ յառէ, որեղա՛կ իմ, դէպ երկնից կամարը, ամենարուեստ Արարչին զարմանագործ ձեռաց հրաշակերտ գործեր տես, համայն աստղեր մեծութեամբ, լուսով, դիրք եւ շարժումով զանազան են, արեւն եւ լուսին՝ զանազան են. չգիտենք ու չենք զօրեր տեսնալ թէ այլեւս ո՞րչափ անզանազան էակներ կան երկնաշխարհին մէջ։ Դարձիր դէպի մեր երկրագունդը՝ նոյնպէս ամենայն ինչ զանազան եւ անհաւասար կը տեսնաս։ Ցամաքն անհաւասար, լեռներն անհաւասար, դաշտերն անհաւասար, աղբիւրներ, վտակներ, գետերն առհասարակ անհաւասար, ծաղիկներն անհաւասար, ծառերն անհաւասար, գոյներով, ձեւերով, համով, հոտով եւ ներքին զօրութեամբ, բընաւին անհաւասար։ Սոյնպէս բոլոր կենդանեաց սեռն նոյն անհաւասար օրէնքին տակն են։ Անհաւասարութիւն դու պէտք չէ՛ այնպէս հասկնաս թէ միայն տարասեռ իրաց մէջ կ՚երեւի. այլ մի եւ նոյն տեսակին մէջ անհաւասարութեան հրաշք կը տեսնուի։ Ծաղկաց Թագուհին վարդ, իւր տեսակին մէջ գոյնով, հոտով, ձեւով եւ նոյն իսկ թերթերով անհաւասար է. նմանապէս բոլոր ծաղիկներ։ Խնձորենին իւր տեսակին մէջ պտուղներու մեծութեամբ եւ գոյնով անհաւասար են. սոյնպէս բոլոր պտղատու ծառերը։ Մտի՛ր մայրի անտառը, անդ եւս կը տեսնաս մեծութեամբ, բարձրութեամբ եւ ճիւղերու ընդարձակութեամբ իրարմէ անհաւասար են, միեւնոյն ծառի տերեւներն անգամ հաւասարութիւն չունին։

Իսկ մարդն, որ բովանդակ արարածներէն հրաշակերտն է, այդ անհաւասարութեան հրաշքն աւելի ունի. թէ ներքին եւ թէ արտաքին ամէն հանգամանքներով անհաւասար է իւր ընկերին հետը։ Ուղեղն անհաւասար, միտքն անհաւասար, իղձքն ու ոգին անհաւասար, վարքն ու բարքն անհաւասար, երեսն ու դէմքն անհաւասար. ձեռն ու մատունք եւ ոտքն անհաւասար, քայլերն անհաւասար, ուժն անհաւասար, բոլոր ըզգայական անդամներ՝ ձեւով ու զօրութեամբ հաւասար։ Եւ նոյն իսկ մի մարդոյն վերայ անհաւասարութեան օրէնքը յայտնապէս կը տեսնուի. աչքեր, ականջներ, ձեռքեր, ոտքեր անհաւասար են իրարու։

Այս ընդհանուր նկարագրէն յետոյ, այժմ սկսինք մարդոց

ընկերական կեանքին անհաւասարութեան նկարագիրը հանել, որ մեր այս դասին նպատակն է:

Մարդկային ընկերութիւն եւ քաղաքային աշխարհ նոյնպէս անհաւասար տարերքներէն կազմուած է: Աշխարհ՝ աշխարհի հետ, ազգ՝ ազգի հետ, ժողովուրդ՝ ժողովրդի հետ, թագաւոր՝ թագաւորի հետ, իշխան՝ իշխանի հետ, կառավարութիւն՝ կառավարութեան հետ, զօրութիւն՝ զօրութեան հետ, հարստութիւն՝ հարստութեան հետ, եւ այլ շատ բաներ ու հանգամանքներ իրարու հետ անհաւասար են:

Եւ նոյն իսկ մի աշխարհ, մի թագաւոր, մի ազգ եւ լեզու՝ անհաւասար տարերքներով կազմուած է: Կը զարմանաս, թէ որ ասեմ քեզ, որդեակ, թ էաշխարհիս մարդկային ընկերութեան հզօրագոյն կապն անհաւասարութեան օրէնքն է, որ թագաւորը՝ հպատակ ժողովրդին հետ, իշխան՝ գաւառին հետ, զօրավար՝ զօրքին հետ, առաջնորդ՝ եկեղեցւոյն հետ, ամուսին՝ ամուսնոյ հետ, ազգական՝ ազգականի հետ, բարեկամ՝ բարեկամի հետ կապեր է. եւ բոլոր անհատական մարդիկ այդ անլոյծ կապով միացնելով՝ մեր ընկերական տարերք կազմեր է:

Եթէ ասես, արդեօք եւս բարի ու լաւագոյն չէ՞ր լիներ, որ այդ անհաւասարութիւն բնաւ չը լիներ. թէ մեր կեանքի պիտոյք, թէ մարդոյն նիւթական եւ բարոյական զօրութիւններ, այսինքն հաւասար ծնելով՝ հաւասար ապրէինք. աշխատութիւն հաւասար, հացն ու սեղան հաւասար, մեծն ու փոքր հաւասար, մարդիկ առ հասարակ եւ ամենայն ինչ հաւասար:

Այո՛, որդեակ իմ, շատ անգամ քեզ նման կը դատեն միամիտ, բարեսիրտ եւ գորովահոգի մարդիկ, կարեկցելով մեր ընկերական թշուառութեանց վերայ, որ մեծ մասամբ ապերջանիկ կեանք կը վարեն աշխարհիս երեսը. չարչարուած, աշխատութեան մէջ մաշուած, սորկացած ու կորացած են երկաթէ լծերուն տակ, աղքատութեան ու կարօտութեան մէջ:

Այդ քո դատաստանը՝ մեղադրանք մի է, զոր մարդիկ մինչեւ երկնից նախախնամութեան դէմ կը հանեն, տրտնջալով, որ աշխարհիս կեանքը անհաւասարութեան մէջ դրեր է, մին երջանիկ կը լինի եւ մին ուրիշ թշուառութեամբ կ՚ապրի: Մին գլուխ կը լինի եւ միւսն ոտք, մին կը տիրէ եւ միւսն կ՚ընկճի, մին ցյագ կուտէ եւ միւսն սովամահ կը կորնչի եւն:

Խօսեմ քեզ, որդեա՛կ, որ դատաստանիդ մէջ ուղղախոհ լինիս: Նախախնամող կարգադրիչ իմաստութիւնը կամեցեր է,

*որ այդ անհաւասարութեան կապով մարդկային ընկերութիւն կանգուն եւ կենդանի մնայ· եթէ մեր ընկերական կեանքը ամենայնիւ մի օրինակ հաւասար լինէր, այլ եւս ընկերական միութիւն չէր մնար աշխարհիս վերայ, բոլոր յարակցութեան կապերը կը քանդուէին· եւ պէտք էր յայնժամ մարդիկ ապրէին այնպէս՝ ինչպէս կ'ապրին անասուններ։*

*Եթէ մեր ընկերական կեանք հաւասար լինէր, եւ մարդիկ երբէք իրարու ձեռնտուութեան չի կարօտէին, այնուհետեւ մարդոց մէջէն կը բարձուէր բովանդակ արդարութիւն, կ'եղծանէին առ հասարակ պարտք եւ իրաւունք, կ'եղծանէին մարդոյն մէջ յառաջդիմութեան ոգին եւ մրցումն, աշխատութիւն կը դադրէր եւ հանճարը մարդոց ուղեղին մէջ թմրած անշարժ կը մնար։ Ազատ մարդ՝ հարկի տակ պիտի ապրէր առանց բանաւորութեան։ Այնուհետեւ մարդոյն կեանքը խորհրդով, հանճարով ու յառաջդիմութեամբ չէր բարդաւաճեր, այլ կը չքանար իւր մտաւորական կարողութեան մէջ, եւ հոն կը մնար մարդ՝ ուր կան այժմ Ափրիկէի եւ Ամերիկայի հեռաւոր վայրենիները· որոց կեանքը անասնոց կեանքէն եւս վատթարագոյն է· իբրեւ մարդ ծնիլ, մարդ անուն կրել, եւ անասնաբար ապրիլ, բարին ու չար, լոյսն ու խաւար չորոշել։*

*Ծանիր ուրեմն, հանճարեղ որդեակ իմ, թէ մարդոյն Արարիչ՝ մարդն ընկերական, բանաւոր եւ ազատակամ ստեղծեր է· նորա լեզուն եւ ոտքեր բնական օրէնքով չէ կապեր, որ չի խօսի եւ չի յառաջդիմէ, ինչպէս անասնոց սեռ, որ ս կզբանէ անտի ուր որ են՝ անդ կան ու կը կենան։ Իսկ մարդոյն եւ ընկերական կեանքին մէջ մղիչ զօրութիւն մի կայ, որ ամէն կարգի եւ վիճակի մարդ կը մղէ եւ կը վարէ դէպի յառաջդիմութիւն· եւ այդ մղիչ ու շարժիչ զօրութիւնը՝ ուրիշ բան չէ, քան թէ իւրաքանչիւր մարդոց անհաւասարութեան վիճակ եւ կեանք։*

*Սորա համար բովանդակ մարդկային ընկերութիւնը մի զմիով ել եւ էջ առնելով՝ կը նկրտին եւ կը ձգտին եւ միշտ քան զընկերս առաւելուլ։*

*Թագաւոր կը ձգտի իւր գահն իւր աթոռակիցներէն բարձր դնել, եւ մերթ եւս աշխարհակալել։ Իշխանը կը ձգտի իւր իշխանակից ընկերէն յառաջ անցնիլ· զօրապետն կը ձգտի իւր զինակիցներէն աւելի յաղթանակ տանել, հարուստն կը ձգտի իւր հաւասարէն աւելի եւս հարստանալ, աղքատն կը ձգտի իւր թշուառութենէն ազատիլ։ Բովանդակ ժողովուրդ կը ձգտի*

աշխարհիս հրապարակին վերայ մէն մի իւր ընկերէն անցնիլ, կամ հաւասար երթալ եւ կամ եթէ չկարէ առաւելուլ՝ գէթ յետս մնալով չնուաղիլ: Այնպէս նաեւ գիտի հանճարներ գեբազանցել կը մրցին, գրոց հեղինակները մատենագրելով կը մրցին: Մամուլի ազատութեան խմբագիրներ ազատաբանելով կը մրցին, ճարտասաններ իրաւաբանելով կը մրցին. վարդապետներ ուսուցանելով եւ դաստիարակելով կը մրցին, ճեզ նման պատանիք յառաջդիմելով կը մրցին:

Արդ երբ ընկերական անհաւասարութենէն կը ծնին այսչափ յառաջդիմութեան մրցանակ տանողներ, խելամտութեամբ նկատել պէտք է որ մեր ընկերական անհաւասարութիւնն՝ իւր յոռի ծնունդներ եւս ունի: Անտի կը ծնի նախանձ ու մախանք, որոյ ապացոյց եւ օրինակ Յովսէփայ ծաղկեայ պատմուճանն է. անտի կը ծնի բռնութիւն եւ զրկանք, երբ զօրաւոր զտկարն միշտ նուաճելով կը յաղթահարէ եւ կը հարըստահարէ. անտի կը ծնի անյագ արծաթսիրութեան մոլեգին ախտ. անտի կը ծնի մեծամիտ տիրապետութեան ոգին, անտի կը ծնին այլ եւ այլ թշուառութիւններ, եւ կ՚ապականեն ընկերական կեանք: Բայց ինչպէս ուրիշ դասերուդ մէջ բացատրած եմ թէ՝ ամէն լոյս իւր խաւարն ունի, ամէն գեղեցիկ իւր տըգեղ մասն ունի, եւ ամէն առաքինութեան հետ՝ մոլութիւն համընթաց է, եւ առաքինութեան ծնունդ միշտ երկուորեակ է: Երբ զբարին ծնի, չարն եւս անդէն գիտես թէ ի միասին ծնունդ կ՚առնու, ինչպէս Եսաւ: Եւ միթէ ծնողքն եւս չար ու բարի զաւակներ միեւնոյն արգանդէն չե՞ն ծնիր: Ուստի բընական օրինաց ուղիղ հետեւանքն է, որ անհաւասար կեանքէն անհաւասարութիւն ծնի:

Լիկուրգոս, Սպարտացի մեծ օրէնսդիր, ուզեց այդ բնական օրէնքին դէմ կռուիլ ու ջնջել զայն. օրէնքով ոսկին եւ արծաթ հալածեց իւր աշխարհէն, որպէսզի ագահութեան ընչաքաղցութիւնը բառնայ հարուստներու սրտէն. եւ հասարակաց սեղան հաստատելով օրինադրեց, որ աղքատ եւ հարուստ մի եւ նոյն սակաւապէտ սեղանին վրայ հաւասար ընկերութեամբ ուտեն զհաց: Օրէնք դրաւ, որ հարուստներու հայրենի կալուածները երկրի ընդհանուր ժողովուրդին վերայ իբրեւ հաւասար ժառանգութիւն լարաբաժին լինին: Եւ այսպէս բոլոր Սպարտացի ժողովուրդ, իբրեւ մի ընտանիք եւ գերդաստան կազմելով՝ կը հաւատար այդ անբանաւոր օրէնսդիրն թէ՝ կարող եղեւ անհաւասարութեան օրէնքը խպառ եղծել իւր աշ-

խարհէն: Ուստի մտաբերեց երթալ ի Դելփիս պատգամ ընդունել թէ՝ արդեօք իւր օրէնքներ՝ դիցն առաջ հաճոյ եղեր ե՞ն, ու երբ իմացաւ թէ խիստ հաճելի թուեր են դիցն, անդ ինքնասով կամակար մեռաւ. որպէսզի իւր օրէնքը նուիրագործելով կենդանի պահէ աշխարհին մէջ:

Երանի՛ թէ Լիկուրգոսի նման Անգղիոյ մայրերը նոր օրէնսդիր մի ծնէին, որ ելնէր Լորդերուն աշխարհագրաւ կալուածներ հաւասար բաժնէր մշակ ժողովուրդին վերայ, ինչպէս Լիկուրգոս, որ օր մի հնձոց ժամանակ՝ տեսնելով արտերուն մէջ հաւասարաբաժին ցորենի խուրձեր, ասաց. «Ահաւասիկ եղբարցս՝ հաւասար ժառանգութիւն.» թերեւս կ՚ակնարկէր հանճարեղ օրէնսդիրն, թէ այլ եւս կռուելու, զրկելու, բաժնելու պատճառ չէ մնացեր:

Այլ եւ այլ ժամանակի մէջ, մեծ օրէնսդիրներ ծնաւ աշխարհ. ոմանք իբրեւ ժողովուրդին հայր ու մայր՝ ջանացին օրէնքով հայրենի ժառանգութենէն ժողովուրդին բաժին հանել եւ չը թողուլ, որ մշակ ժողովուրդն անժառանգ մնալով սարկանայ: Հողային հարստութեան մէջ, թերեւս փոքր ի շատէ յաջողի միայն երկրագործ ժողովուրդին համար. բայց միթէ հնարաւո՞ր է քաղաքային կամ առեւտրական հարստութիւններ հաւասար բաժնել, որ շահավաճառութեան, արուեստի, եւ մարդոյն ինքնաշխատութեան իբրեւ արդար արդասիք համարուած՝ իբրեւ հողային կալուած հաւասարաբաժին առնել. թողունք երկրին կառավարութեան պաշտօնեաները, որ մէն մի՝ իւր աստիճանի բարձրութեան չափով ռոճիկ կը ստանայ:

Թողունք այս ամէն, որդեակ իմ, պէտք է ներկային մարդ՝ ներկայ կեանքին վրայ մտածէ, հին աշխարհ իւր հին օրէնքով ու ժողովուրդով անցեր է. այժմ Լիկուրգոսի եւ Սողոնի ժամանակն եւս անցեր է. վասն զի քաղաքակրթութիւնը՝ նոր դար, նոր օրէնք, եւ նոր ժողովուրդ կազմեց. ամենայն ինչ իւր հնութենէն յեղափոխեցաւ: Քաղաքակրթութեան ազատ օրէնք թոյլ կուտան, որ իւրաքանչիւր մարդ ինքնաշխատութեան արդիւնքն՝ ինքն ազատապէս վայելէ, բաւական է որ արդար լինի մարդ իւր աշխատութեան մէջ: Բաւական է եւ երջանիկ կը լինի ժողովուրդ, եթէ երկրին օրէնք եւ իշխանութիւն հսկէ, որ աշխատող ժողովուրդին վաստակն ապահովի եւ նա կարենայ ազատութեամբ միայն իւր վաստակն վայելել. եւ չէ թէ հարուստի վաստակէն բաժին ընդունել: Ո՞րչափ չնոր-

*հակառակ կը լինի բաւականասէր ժողովուրդն, եթէ հարուստն եւս իւր արդար վաստակովն բաւականանայ, եւ չկռուէ ու չհարստահարէ զանաւագ ժողովուրդն։*

*Կրկնելով այս դասն, դարձեալ կ'ասեմ քեզ, որդեա՛կ իմ. քանի որ աշխարհ կայ, քանի որ մարդիկ թէ բնապէս եւ թէ կրթութեամբ իրարմէ կը զանազանին. անհաւասարութեան կեանք իբրեւ մշտնջենաւոր անյեղլի օրէնք պիտի տիրէ աշխարհիս վերայ. եւ դու եւս այս օրէնքին տակ պիտի հնազանդիս ու ապրիս։*

*Ուստի զքեզ կը յորդորեմ, որ ջանաս աշխատութեանդ մէջ արդար լինել, բնաւ երբէք աչք չը դնել ու չը նախանձիլ ուրիշի վաստակին. այլ բարենախանձ լինելով՝ ձգտիր, որ դու եւս հարստանաս. բաւական է, որ արդար վաստակիդ հետը գըրկանք ու նենգութիւն չի խառնես։ Տէր Աստուած պատուէր տուեր է, որ մարդ իւր ճակատին քրտինքով ապրի, գդուշացիր, որ կաթիլ մի ուրիշ ճակատի քրտինքէն չը խառնես քո քրտանց հետը. յուշ բեր այն առակը զոր կը պատմեն մեր մամերը. թէ՝ պառաւ կին մի այծ մ'ունէր, եւ նորա կաթը վաճառելով կապրէր. բայց միշտ կը խորդախէր իւր կաթը՝ մեծ մասն ջուր խառնելով։ Արդար Աստուած պառաւին չը խնայելով՝ պատժեց զայն, վասն զի կաթին մէջ խառնուած ջուրերը միանալով գետ դարձան, ու դաշտէն գլորեցին տարան պառաւին այծը։*

*Դու կը զարմանա՞ս այս առակին վերայ. տեսնելով որ ներկայ աշխարհին մէջ ամէն կաթերը խառնուած են։ Բայց դու կաթդ արդար ու անարատ պահէ, միշտ երկնչելով Աստուծոյ արդարութենէն, որ կը հրամայէ ամպերուն, անձրեւով ու հեղեղով կորուսանել աշխարհիս անիրաւ նենգողները։ Զը մտաբերես երբէք թէ կարեմ ես հեղեղէն փախչիլ, տունս հեղեղատին քովը չեմ շիներ։ Կ'ուզես բարձրավանդակի վերայ շինէ եւ ուր կը լինիս եղիր. ջուրը կը թողու եւ գետնաշարժով կը քանդէ։ Սորա համար Դաւիթ վարանելով կ'ասէր. Ես ո՞ւր փախչիմ։ Տէր իմ, եթէ երկինք ելնեմ, դու անդ ես, եւ թէ դըժոխքն իջնեմ, անդ աւելի մօտ ես։ Ուրեմն արդարութեամբ գործէ, արդար վաստակով յառաջդիմէ, այլ եւս հարկ չը մնար քեզ Աստուծոյ ամենահաս ձեռքէն փախչիլ։*

———o———

## Դ Ա Ս Դ.

# ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ
## ԵՒ ՀՊԱՏԱԿ ԺՈՂՈՎՈՒՐԴ

Իշխանութիւն՝ ժողովուրդին եւ ժողովուրդ իշխանութեան միշտ պէտք են աշխարհիս վերայ. եթէ մին կամ միւս պակասի՝ կը դադարի կամ կը խոտորի ընկերվարութեան կեանք:

*ՄԵՐ ստեղծող իշխան Արարիչը, երբ զմարդն ստեղծեց, այնպէս կը թուի որ նախամարդոյն սերունդին հաւասար իշխանութիւն տալով՝ զայն տիրող իշխան կարգեց երկրին վերայ, ասելով թէ «Աճեցէք եւ բազմացարուք եւ լցէք ու տիրեցէք երկրին». այսինքն ծովուն ու ցամաքին եւ այն ամէն կենդանեաց, որ կը հպատակին մարդոյն իշխանութեան տակ. թէ եւ ոմանք մարդէն առաւել հուժկու եւ զօրաւոր են:*

*Դաւիթ մարդոյն այս տիրական իշխանութիւնը հաստատելով կ'ասէ. «Զամենայն ինչ հնազանդ արարեր ի ներքոյ ոտից նորա, զխաշն եւ զարջառ եւ զամենայն ինչ»: Թէեւ այնպէս կը թուի Սուրբ Գրոց պարզ իմաստէն, որ մարդ իւր առանձին իշխանութեան սահման, եւ իւր ընկերին հաւասար իրաւունքը ճանչնալով՝ պէտք չէր որ բռնանար ու տիրապետէր իւր ընկերին վերայ:*

*Բայց դու յիշէ, խոհական որդեա՛կ իմ, եթէ քաջ խելամուտ եղար նախորդ դասիդ իմաստին, դու ինքնին կարող ես իմաստասիրել, որ իշխանութիւն մարդոց անհաւասար կեանքէն, խռովարար ոգիէն, տիրողական բուռն ձգտումէն եւ զօրութենէն ծներ է: Եւ ինչպէս յայտնի է, մարդիկ հաւասար ձիրքով, հաւասար ուժով, հաւասար խելքով եւ հաւասար տոհմային ազնուականութեամբ չեն ծներ: Ոմանք աչքի հետ մտաւոր լոյս ունին՝ ընկերին կ'առաջնորդեն. եւ ոմանց մըտքին լոյս նուազ լինելով՝ կը ստիպուին այլոց ետեւէն երթալ. ոմանք զօրութիւն ստանալով կը տիրեն, եւ ոմանք տկար լինելով կը հպատակին:*

*Աշխարհի պատմութիւն ցոյց կուտայ, որ իշխանութեան առաջին խանձարուրն ընտանիքն է. եւ մինչեւ ցայսօր իբրեւ բնական օրէնք ընտանեաց հայրն կ'իշխէ բոլոր գերդաստանին վերայ, եւ ինքն իւր տան մէջ նախաթոռ բազմելով կը վարէ*

ու կը կառավարէ զայն, որպէս զի խաղաղութեան եւ երկիւղած հնազանդութեան մէջ կենայ ընտանեկան կեանքն։

Իսկ երբ ընտանիքէն ընտանիք կազմուելով՝ շատ ընտանիք ի միասին բնակեր են. բնական է որ խռովութիւն, կարգ ու կռիւ զանազան պատճառներէ յառաջ գալով՝ մարդկանց հետ կ'աճի. հարկն ստիպեր է յայնժամ, որ ամէն տանուտէր հայրերու մէջէն մի տանուտէր հայր ընտրեն իբրեւ դատաւոր եւ իշխան, որ պատկառելի ծերութեամբ, համբաւով, զօրութեամբ ու հարստութեամբ առաւելութիւն ունեցեր է միւս տանուտէրներէն. եւ աստի նախապէս կազմուեր է փոքր տանուտիրական իշխանութիւն։ Եւ որչափ մարդիկ եւ ընտանիք բազմացեր ու տարածեր են աշխարհիս վերայ, այնուհետեւ իշխանութեան աստիճանն ալ աճելով եւ մեծնալով՝ հասեր է մինչեւ աշխարհակալութեան ծայրագոյն դիրք. որոց հզօր գաւազանին տակ փոքրիկ իշխանութիւններ կամ խպառ ջընջուեր են, եւ կամ նուաճելով հպատակեր են։

Ուստի քաջայայտ կ'երեւի, որ իշխանութեան առաջին շաւիղ՝ ընտանեկան արմատէն բուսեր է փոքր ինչ մեծնալով ընտանիքէն ելեր բոլոր ցեղին վերայ տարածեր է թեւերը. աւելի ես մեծնալով այլ եւ այլ ցեղեր իւր իշխանութեան տակ հնազանդութեան բերելով՝ տիրեր է շատ քաղաքներու եւ գաւառներու վերայ։ Հուսկ յետոյ կարի զօրանալով, ու բարձրանալով կամ թագ կապելով՝ թագաւոր եղեր է եւ կամ այլ եւայլ իշխանութեան առանձին գաւազաններն իւր միահեծան գաւազանին տակ նուաճելով՝ իբրեւ Կեսար, կայսրութեան բարձր տիտղոս ստացեր է։

Եւ այսպէս աստիճան առ աստիճան բարձրանալով՝ իշխանութիւնն իւր գագաթնածայր հասեր է։ Բայց իշխանասիրութեան ոգին երբէք իւր ծայր եւ սահման չունի։ Քանի այս աշխարհ կայ՝ իշխանութեան գաւազաններ պիտի մրցին իրարու հետ. եւ ով գիտէ, գուցէ ապագային մէջ բովանդակ երկրագունդը մի գաւազանի տակ ընկճուի. եւ միթէ այս բանն՝ աշխարհիս պատմութիւն եւ փորձ չատ օրինակներով ցոյց կուտայ, որ իշխանութեան կեանքն ալ իւր ծերութիւն եւ վախճանն ունի, եւ եթէ Նաբուգոդոնոսորի ծառին չափ բարձրանալով իւր գաւազանին շառաւիղներ տարածէ բովանդակ աշխարհին վերայ. ի վերջոյ յերկիր կործանելով կը տապալի ինչպէս Մակեդոնականն, Հռովմայ, Բաբիլոնի եւ Ասորեստանի իշխանութիւններ, որպէս զի ճանչնայ եւ խոնարհի

մարդոյն մեծամտութիւն. թէ՝ Բարձրելոյն մշտնջենաւոր զօրութիւնը կը տիրէ, եւ ժամանակի ահեղ տապարով պիտի կտրէ ու կործանէ այն ամէն իշխանութեան ծառերը, որ երկնից զօրութեան դէմ կը բարձրանան եւ կը ջախջախեն ժողովուրդին կեանք եւ զօրութիւն։

Եթէ մտաբերես, որդեակ իմ, ինչպէս մտաբերելով կը ցանկան ծայրայեղ ազատամիտներ. թէ արդեօք աւելի լաւ եւս չէր լինէր, եթէ մարդկային ընկերութիւն ազատ անիշխան ապրէր, եւ իշխանութեան ծանրակիր լուծ չը կրէր իւր պարանոցին վերայ. մարդն ինքնիշխան ինքնավար լինէր, եւ չը պարտէր երբէք տուրք, հարկ, զինուոր, եւ այլ բազմապատիկ օրինական եւ ապօրինի բռնի պահանջներ վճարել։

Լո՛ւռ, որդեակ իմ, ես պատասխան տամ քեզ, ամենայն խելամտութեամբ ուշ դիր։ Մարդկային ընկերութիւն բնաւ կարելի չէ որ առանց իշխանութեան, առանց օրինաց, առանց դատաստանի եւ հատուցման այս աշխարհիս վերայ ապրի եւ խաղաղ կեանք վարէ. ինչպէս երկնից թռչուններ եւ լեռներու ազատ էրէվայրիներ, եւայլն։ Զէ թէ աշխարհիս այլ եւ այլ ազգեր, այլ նոյն իսկ մի ազգ եւ մի համազգի ընտանիք առանց հայրական իշխանութեան հնար չէ կառավարել։ Կը տեսնամք եղբայր եղբօր դէմ սուր կը հանէ, եւ համարինն՝ իւր համարին հարազատին արիւն կը թափէ. եւ մերթ եւս ստահակ որդիքներ հօր դէմ կ'ապստամբին. ո՞ւր կը մնայ անընտանի օտարն օտարին հետ խաղաղութեամբ ապրի ու վարի։

Կան մարդիկ, որ կը մտածեն, թէ իշխանութիւնը հին աշխարհի վայրենի ընկերութեան համար պէտք էր, բայց արդ երբ գիտութեան լոյս եւ քաղաքակրթութեան դարը մարդոց հին կեանք փոխեց. վայրենական բիրտ ոգին զգօնացոյց. մարդ ճանչցաւ իւր պարտիք եւ իրաւունքը. ճանչցաւ իւր ընկերին հաւասարակշիռ իրաւունք. Աւետարանին հաւատալով ճանչցաւ նաեւ Յիսուսին աւանդած մարդկութեան ընդհանուր խըղճին օրէնքը. «Զամենայն զոր ինչ կամիցիք թէ արասցեն ձեզ մարդիկ, այնպէս արարէք եւ դուք նոցա»։ Այլ եւս զի՞ պիտոյ է իշխանութեան նուաճող գաւազան, կամ սպառնացող սաստն ու սուր. օրէնք եւ իշխանութիւն խաժամուժ ամբոխին համար է, որ ոչ գիր գիտէ եւ ոչ օրէնք։

Երանի՛ թէ քաղաքակրթութիւն զմարդն այդ ծայրագոյն կատարելութեան տանէր. սուրն եւ իշխանութիւն բարձուէր աշխարհէս։ Բայց դու մի՛ հաւանիր, որդեակ իմ, այդ կար-

ծիք ազատասէր մարդոյն երեւակայութեան երազն է։ Թողունք ասիական ազգեր, ուր քաղաքակրթութիւն դեռ չէ ծներ, եւ թէ ծներ՝ տակաւին մանուկ է։ Երթանք Եւրոպա, ուր քաղաքակրթութիւն ծներ եւ զարգացեր է, եւ եթէ այդ եւս բաւական չես համարիր, անցնինք Ովկիանոս, երթանք Ամերիկա․ ուր կը կարծուի թէ ազատ քաղաքակրթութիւնն իւր արբուն հասակն առեր է։ Ուր ժողովուրդ առանց թագի, առանց կայսերական հզօր գաւազանի, մի նախագահով եւ օրէնքով կը կառավարուի։ Արդ այնպէս համարենք, որ այդ աշխարհէն բարձուի նախագահն, վերնան բոլոր օրէնքներ, սուրն ու թընդանօթ ժողովուրդին դարբնոցին մէջ․ միայն երկրագործին համար խոփ ու մանգաղ չինուին․ եւ ընդհանուր Ամերիկայի կիսաշխարհին մէջ հրատարակուի այսպէս թէ․ «Այսուհետեւ իշխանութիւն եւ օրէնք բարձուած է, դատաստան հատուցումն չիկայ այլ եւս․ իւրաքանչիւր մարդ թող իւր ազատական իշխանութեամբ վարի, մարդն ինչ որ կարէ գործել՝ ազատ է, իւր համար հսկող ոստիկան, ատեան եւ հարցափորձ չիկայ»․ եւայլն։

Դու կը տեսնաս յայնժամ, թէ ինչ կը լինի սորա հետեւանքն․ այդ քաղաքակիրթ աշխարհն Ամերիկա, այդ հասարակապետական օրինասէր ժողովուրդն մի վայրկենի մէջ վայրենի կը դառնայ, խուժանն եւ քաղաքակիրթն միանգամայն ի զէն կը դիմեն, ընկերութեան հրապարակն արեան ծով կը լինի․ հարուստներն առ հասարակ կը կողոպտուին, խաղաղութիւն տեղի կուտայ, խռովութիւն կը յուզի ինչպէս Ովկիանու ալիքներ․ ով որ բուռն է՝ կը տիրէ, ով որ տկար է՝ կը նուաճի բռնութեան տակ վերջապէս ընկերութեան բոլոր շէնքեր կը քանդուին, կապեր կը կտրուին, մարդիկ կռուով ու սրով կը սպառեն զիրար մինչեւ յետին ճետն ու սերունդ։

Եթէ քաղցած առիւծ հանես իւր վանդակէն եւ արձակ թողուս ժողովուրդին հրապարակ, ինչ կը լինի եւ ի՞նչ կը գործէ․ այդ յայտնի է, իւր ժանիքներով ամէն բան կը ծախէ․ այսպէս նաեւ մարդկային ընկերութիւն, թող քաղաքակիրթ լինի նա, եթէ զայն ի դուրս հանես իշխանութեան եւ օրինաց շըրջափակ վանդակէն եւ ազատ թողուս, նոյն կը գործէ մարդն ինչ որ կը գործէ վայրենի առիւծն․ Թերեւս հնար լինի ողոքել զառիւծն երբ յագենայ, բայց մարդոյն կատաղութեան երբէք յագուրդ չիկայ։

Համոզուեցա՞ր այժմ, ազնիւ որդեակ իմ, որ աշխարհս

առանց իշխանութեան չի կառավարուիր: Միթէ հաւատալ կարելի՞ է, որ տիեզերք առանց Աստուծոյ եւ յաւիտենական օրինաց կառավարուի, նաւն առանց նաւապետի եւ ղեկավարի ուղղուի. եւ կամ ամեհի ձին՝ առանց սանձահարի: Ո՞վ չի գիտեր թէ մարդն քան զձին ամեհի է. միայն իշխանութեան եւ օրինաց սանձն է որ կը վարէ զայն, ապա թէ ոչ՝ նա սանձակոտոր լինելով կը գահավիժի: Սորա ապացոյց եւ օրինակ քանիցս անգամ ցոյց տուած է Ֆրանսիոյ այն մեծ ազգ որ քաղաքակիրթ աշխարհին մէջ զինքն իբրեւ փայլուն աստղ մի կը կարծէ, եւ երբ անիշխանութիւն կը տիրէր՝ այդ կրթեալ եւ ուսեալ ժողովուրդը, խուժան կը դառնար եւ ամէն բան կը տապալէր, թէեւ այն բան՝ իւր հայրենեաց փառք ու պարծանք լինէր: Ես այնպէս կը դատեմ, որ քաղաքակրթութիւնը մարդոյն վայրենութեան բարքը կեղեւով մի պատեր է արտաքուստ. եթէ վերցնես իւր գլխէն իշխանին սուր եւ օրէնք՝ նա իսկոյն իւր բուռն կրից ժանիքներով կը պատառէ այդ կեղեւը եւ հին վայրենութիւն դուրս կը հանէ: Ուրեմն իշխանութիւն եւ օրէնք վերին տեսչութեան յաւիտենական կարգադրութիւնն է, որպէս զի մարդիկ երկիւղածութեամբ եւ բանավարութեամբ ապրին ընկերական կեանքին մէջ:

Արդ սկսիմ համառօտել թէ՝ իշխանութիւն եւ ժողովուրդ ինչ պարտիք եւ իրաւունքներ ունին իրարու հետ, զորս կը չափէ արդարութիւն, որ միշտ հաւասարակշիռ լինին եւ երկուստեք պարտքեր վճարուին եւ իրաւունքներ պահանջուին:

Իշխանութեան առաջին պարտիքն է ճանչնալ եւ հաւատալ. թէ իշխանութիւն աստուածպետական զօրութենէն իբրեւ աւանդ տրուած է, ինչպէս Հոգին կը խօսի Սողոմոնի բերնով. «Ի տեառնէ տուաւ ձեզ հարստութիւնդ եւ իշխանութիւնդ ի Բարձրելոյն. որ պահանջեսցէ զգործս ձեր եւ քննեսցէ զխորհուրդս»: Իշխանութիւն իւր հաշիւն ու համար միայն Աստուծոյ չի տար, այլ եւ ժողովուրդին, երբ ինքն սահմանադրապէս ընտրուած է: Իշխանութեան՝ մեծ ու նուիրական պարտիքն է, արդարութիւն սիրել եւ օրինաց իրաւացի վճիռը արդարութեամբ ի գործ դնել. առ այս կը յորդորէ Սողոմոն, որ դատաւոր եւ թագաւոր էր Աստուծոյ ժողովուրդին: «Սիրեցէ՛ք զարդարութիւն, որք դատէք զերկիր»: Իշխանութեան պարտիքն է, երկրին խաղաղութեան համար հսկել. հանապազ հոգալ ժողովուրդի բարօրութեան, բարգաւաճման ու յառաջդիմութեան համար. ուղղապէս խորհելով, որ իշխանութեան

աթոռը՝ ժողովուրդի պատուանդանին վերայ հաստատուած է, եւ երբ ժողովուրդ կործանի՝ անշուշտ իշխանութիւնն եւս կանգուն չի մնար։ Իշխանութեան իրաւունքն է չափով եւ արդարութեամբ ժողովուրդէն հարկեր պահանջել. բայց երբէք դատաստան եւ իրաւունք չէ, որ ծանր ծանր բեռներով ժողովուրդին թիկունք մինչեւ ի գետին կորացուցանէ։ Եթէ այսպէս ջլատէ ժողովուրդին ուժն եւ ոգին, ինքն եւս իւր զօրութենէն կը թափի. զի ով չի գիտեր թէ ժողովուրդն իբրեւ գործող անդամ կը համարուի կառավարութեան. երբ անդամներ ուժաթափին՝ գլուխն եւս նորա հետ կ՚ուժաթափի, այնուհետեւ կը կորուսանէ իւր խորհուրդ. կը հիւանդանայ առաջնորդող գլխոյն առողջ ուղեղն եւ յայնժամ ժողովուրդին եւ իշխանութեան զօրութիւն միապէս կ՚սպառին եւ երկրին վերայ կը հասնի եւ կը տիրէ աղետաբեր վիճակ։

Իշխանութիւն՝ երկրին եւ ժողովուրդին երաշխաւորող հաւատարիմ աւանդապահն է. այնպէս պէտք է պահել այդ սուրբ աւանդը, որպէս թէ իւր կեանքն է, իւր փառքն է եւ իւր կենդանատու հոգին եւ զօրութիւնն է։

Իշխանութեան զօրութիւն եւ հաստատութիւն՝ արդար եւ հաւասար օրէնքն է։ Ուստի իւր ամենամեծ պարտիքն է, որ երկրին օրէնք անաչառ ճշդութեամբ հաւասարապէս գործադրէ տկարին եւ զօրաւորին վերայ. իշխանին եւ ժողովուրդին վերայ չը թողուլ, որ զօրաւորներ հեստեն օրէնքին դէմը. եւ նոքա, որ կարգեալ են օրէնք պաշտպանելու՝ նոքա զեղծանին օրինաց մէջ եւ առ ոչինչ համարին զայն։

Իշխանութիւն իբրեւ օրինաց վրէժխնդիր ու նախանձաւոր, իւր պարտիքն է. երկրին, ժողովուրդին եւ առաւել վարիչ պաշտօնեաներու մէջէն օրինաց զեղծումներն առ հասարան բառնալ. ապա թէ ոչ, զեղծումներ յաճախելով՝ ի վերջոյ իշխանութիւնը կը բառնան, եւ կը մատնեն զայն օտարին ձեռք. վասն զի ներքին զեղծումներն զհայրենիք աւելի կը դաւաճանեն քան թէ օտար թշնամիք։

Իշխանութիւն պէտք է առաքինութեան պաշտպան հանդիսանայ եւ մոլութիւն սանձահարէ իւր մեծ նուիրական պարտիքն է՝ չը թողուլ երբէք, որ ժողովուրդին կեանք եւ բարք ապականող զեղծումներ տարածեն երկրի մէջ, իբրեւ տարափոխիկ հիւանդութիւն, որ ի վերջոյ մահ եւ կորուստ կ՚սպառնան ընդհանուր իշխանութեան երկրին։ Միայն կրօնի պաշտօնէից քարոզն ու խրատ բաւական չէ հեստող ժողովուրդին

կամք նուաճել, այլ պէտք է նաեւ իշխանութեան սաստն եւ սուր, որ ձեռնհաս կը լինի զեղծումներ քաղաքային օրէնքով բառնալ։

Իշխանութեան պարտիքն է մեծ իմաստութեամբ տնտեսել երկիրը. չթողուլ որ իւր հարստութեան գետերը երթան թափին օտար ծովերու մէջ, ի վերջոյ երկրին ջուրը ցամքի, դառնայ ծարաւ մի անապատ, երկրին հարստութեան գետեր երկրին մէջ պահելու համար՝ պէտք է զայն շրջապատել օրէնքով եւ այն միջոցներով, զոր քաղաքային տնտեսութիւն կ'ուսուցանէ։

Եթէ իշխանութեան զօրութիւն կը յաւելու երկրին հարստութիւնք եւ բարգաւաճանք, ուրեմն իւր ձեռնհասութեան պարտիքն է ժողովուրդին առաջը յորդել յառաջդիմութեան ճանապարհ. բառնալ ամէն խոչ եւ խութեր, յորմէ ժողովուրդ խուսափելով կանգ կ'առնու չհավաճառութեան առաջ. նաւարկութիւն բանալ, լեռնել եւ ձորեր հարթել, արուեստ եւ արուեստագէտները քաջալերել, երկրագործ ժողովուրդին ազատութիւն եւ ապահովութիւն տալ, որ երկիրը մշակելով արդիւնաւորէ։ Քանի որ չհավաճառութեան մէջ իւր երկրի բերքն ուրիշ երկիրներէ ընդունուած բերքերուն հետ հաւասարակշռութիւն չունի, պէտք է օրէնքով հաստատել եւ զսպել ժողովուրդին վայելչասիրութեան ցանկութիւնը, որ իւր երկրի բերքերով շատանայ, սակաւապէտ կեանքի մէջ վարժելով զայն. թէեւ ընդհանուր վաճառականութեան օրէնք ազատ է, բայց իւրաքանչիւր իշխանութեան ազատ իրաւունքն է իւր երկրին շահը առաւել պաշտպանել։

Իշխանութեան սրբազան պարտիքն է միշտ խաղաղութիւն սիրել, խաղաղութեամբ կառավարել, եւ ամէն հնարաւոր միջոցներ ի գործ դնելով պատերազմ չը յարուցանել ոչ ուրիշ իշխանութեան դէմ, եւ ոչ պատճառ տալով ուրիշ իշխանութեան մը՝ իւր դէմը։ Բայց երբ դաշնակցութիւն կեղծուի, ուրիշ իշխանութիւն մի կը բռնանայ իւր վերայ եւ երկրին շահը կը վտանգի, յայնժամ իւր պարտիք եւ իրաւունքն է պատերազմ հրատարակել, որ թշնամին չոտնահարէ երկրին ազատութիւն եւ իրաւունքը։ Միայն թէ պատերազմող իշխանութիւնն՝ սաս պէտք է յիշէ Քրիստոսի առակը, որ նախատեսութիւն կ'ուսուցանէ. նախ պէտք է հաշուէ իւր ծախսեր, եւ իւր զօրութիւնը՝ թշնամւոյն զօրութեան հետ կշիռ դնելով՝ հասու լինի թէ կարո՞ղ է տասնհազարով պատերազմ տալ նորա

*դէմը, որ քան հազարաւ կուգայ իւր վերայ: Ապա թէ ոչ, մեծ խոհեմութիւն է հրեշտակութիւն առաքել և հաշտութիւն խօսիլ: Վասն զի շատ բարի է եւ երկրին շահ, թէ մեծ եւ թէ փոքր զոհողութեամբ խաղաղութիւն հաստատել քան թէ պատերազմով երկրաւոր լինել. Թող այն, որ երկրին գանձ կ'սպառի, այլ եւ արիւնով եւ մահով ժողովուրդին կայտառ որդիք զոհ կ'երթան եւ կ'սպառին պատերազմի դաշտին մէջ, որով ինքն պարտական ու պատասխանատու կը մնայ. «Զի թագաւորն ոչ միայն զիւրն տացէ պարտիս, այլ եւ որոց եղեւ պատճառ մահուան:»*

*Իշխանութեան առաջին եւ վերջին մեծ պարտիքն է լոյս, գիտութիւն եւ կրթութիւն տարածել ընդհանուր երկրին մէջ. իշխանութեան աթոռէն սկսեալ մինչեւ խոնարհ ժողովուրդին խրճիթը հաւասարապէս լոյս ծաւալել. հաւատալով, որ երկրին բարգաւաճանք ժողովուրդին լուսաւոր կրթութենէն կը ծնի ինչպէս որ թշուառութիւնը՝ նորա տգիտութենէն:*

*Շատ մեծ սխալ, եւ անիրաւ քաղաքականութիւն է. եթէ ասէ իշխանութիւն, թէ՝ ժողովուրդը տգիտութեան եւ անզգայ թմրութեան մէջ պահեմ, որպէսզի նա կոյր մնայ, չ'անսաստէ իշխանութեան դէմ, եւ ես անկասկած եւ դիւրութեամբ իշխեմ: Որչա՛փ յոռի եւ յետադէմ է այս դրութիւն քաղաքակիրթ աշխարհին լուսամիտ գաղափարին առաջ, որ միշտ կը ջանայ ժողովրդին մտաւորական զարգացումն յառաջ տանելով լուսաւորել զայն, հաւաստի լինելով որ երկրին յառաջդիմութիւն եւ բարգաւաճ կեանքը ժողովուրդի լուսաւորութենէն է, ինչպէս թշուառութիւն տգիտութենէն. միթէ ինքնին երջանի՞կ կը լինի իշխանութիւն, երբ ժողովուրդ թշուառանայ, եւ ի՞նչ փառք ու պարծանք է թշուառին վերայ իշխել: Թշուառ ժողովուրդին կեանք անշուշտ վախճան մի ունի. նա կը մեռնի թէ վաղ թէ անագան. եւ երբ մեռնի, իշխանութիւն այլ եւս ո՞ւմ վերայ կ'իշխէ, անշէն եւ անապատ երկրին վերա՞յ: Նոյն ժողովուրդի թաղուած գերեզմանին մէջ կը թաղուի իշխանութիւն. եթէ ջանայ նախ ժողովուրդը թշուառութեան գերեզմանին մէջ թաղել, եւ բռնութեան ծանր կափարիչով փակել նորա բերանը:*

*Այսչափ եւ այսպիսի են, սիրելի որդեակ իմ, իշխանութեան պարտիքներ, զոր փոքր ի շատէ միայն գրեցի. կան տակաւին ուրիշ պարտիքներ. Թողի զայնս, որ դու ինքնին իմաս-*

տասիրես։ Երկրին իշխանութիւն կը զեղծանի, եթէ այդ պարտիքներ չկատարելով ընդհակառակն վարի, եթէ թողու օրինաց արդարութիւն եւ միայն բռնի եւ սրով իշխէ։ Եթէ մեղկանալով երբէք թէ թշնամին քաղաքը պաշարեր է. եթէ ժողովուրդին եւ իշխանութեան շահն իրարու հետ չկապէ, որ երկրին ընդհանուր շահն է. այլ միշտ ջանայ որոշել իշխանութեան շահն եւ այնպէս վարիլ, կամ անգիտութեամբ եւ խորամանկութեամբ։

Իշխանութիւն կեղծանի իւր վարչութեան մէջ, երբ անընտրող կը լինի, արժանաւորին եւ անարժանին յարգ մի կըշռով կը չափէ. մերթ եւս պատիւ եւ բարձ կ՚ընծայէ նմա, որ երկրին շինութեան հիման մի քար չէ դրեր. կը թողու լաւն ու կարող, եւ ժողովուրդին կառավար կը դնէ այնպիսիներ, որոց միտքը թափուեր է կառավարութեան ուսմունքէն եւ օրէնքէն, որք առաւել կարօտ են կառավարուելու քան թէ կառավարելու։

Իշխանութիւնն անիրաւութեամբ կը զեղծանի. եթէ դատաստանի առաջ նուիրական չհամարի օրինաց հաւասարութիւն, աչառելով խաբէ տեառն եւ ծառային դատաստան, զօրաւորին եւ տկարին դատաստան, եւ թողու որ դատաւորաց կամք՝ դատարանին մէջ իբրեւ օրինագիրք վճռէ։

Իշխանութիւն չարապէս կը զեղծանի եթէ երկրին չարերը չպատժէ պարզապէս, այլ թողու որ չարեր աճելով բազմանան ու հեղձուցանեն բարիքները. նոյնգունակ մեծապէս կը զեղծանի, երբ բարիքները կը թողու անվարձ անպսակ, նոքա որ երկրին յառաջդիմութեան անձնանուէր կը լինին, որ հաւատարմութեան ուխտն անդրժելի կը պահեն։

Իշխանութեան զեղծումներ շատ եւ բազմադիմի են, դըժուարին եւ երկար բանից կարօտ է նորա նկարագիրը հանել. բայց դու թէ հետաքրքիր լինիս, հետազօտես երկրին իշխանութեան եւ ժողովուրդին կեանքը, զեղծումներու երեւոյթ պատկերը յանդիման կը տեսնաս։

Այլ եւս կը մնայ ինձ խօսիլ, որդեակ իմ, թէ ժողովուրդին պարտիք եւ իրաւունքն ի՞նչ է առ իշխանութիւն. եւ բովանդակել այս դասն՝ որ բաւական ընդարձակեցաւ, եւ դու գիտես, որ դորա պատճառը նիւթին եւ առարկային մեծ կարեւորութիւնն էր։

Ինչ որ իշխանութեան պարտիքն էր, այն է աւասիկ ժողովուրդին իրաւունք, եւ ինչ որ իշխանութեան համար իրաւունք է, այն է տիրապէս ժողովուրդին պարտիք։

*Ժողովուրդին առաջին պարտիքն է ճանչնալ եւ հաւատալ, թէ իշխանութեան զաւազանը երկնքէն դէպ ի երկիր ձգուեր է․ նորա վերին ծայրը տիեզերքը վարող պետական աթոռին կըցուած է, եւ միւս վարի ծայրը աշխարհիս վերայ հաստատուած է։ Սորա համար Սուրբ Պօղոս կ'ասէ․ Իշխանութիւն յԱստուծոյ է, եւ որ ենն՝ յԱստուծոյ կարգեալ են։ Թողունք այս․ մեծ քան զՊօղոսն՝ Յիսուս վարդապետ Պոնտացի դատաւորին առաջ վկայեց, երբ Պիղատոս կ'ասէր․ Եթէ ես իշխանութիւն ունիմ զքեզ խաչ հանել կամ արձակել․ Յիսուս պատասխան տուաւ «Ոչ ունէիր դու իշխանութիւն ի վերայ իմ եւ ոչ մի, եթէ ոչ էր տուեալ քեզ ի վերուստ»։ Քրիստոս եւ քրիստոնէական կրօնի ուսուցիչներ առ հասարակ կը պատուիրեն ճանչնալ իշխանութիւնը, պատուել, հնազանդիլ, երկնչել․ եւ տալ կայսերին՝ կայսեր․ եւայլն։*

*Ժողովուրդին պարտիքն է իշխանութեան հետ ճանչնալ նաեւ երկրին ընդհանուր օրէնքները, քաղաքային օրէնքներ, դատաստանի օրէնքներ, տրոց եւ հարկի օրէնքներ, կալուածական օրէնքներ, եւայլն։ Վասն զի իւր պարտիք եւ իրաւունք այս օրէնքներէն կ'որոշին, եւ օրէնքն է որ կը չափէ եւ կը կշռէ ժողովուրդին եւ իշխանութեան իրաւունք եւ պարտիք։ Ուստի ժողովուրդն ամենայն խնամով պէտք է սորվի երկրին օրէնքներ․ որպէս զի օրինավարներ ժողովուրդի անգիտութեան եւ ապշութեան համար չը համարձակին նոյն իսկ օրէնքով հարստահարել, որոց օրինակ բազում անգամ եւ բազում տեղ կը տեսնամք աշխարհին մէջ։*

*Ժողովուրդ երբ իւր հպատակութեան պարտիքներ սրտի մտօք եւ անթերի կը կատարէ, նա իրաւունք ունի իշխանութենէն պահանջել այն ամէն պարտիքներ, զորս գրեցի ի վեր․ եւ երբ իշխանութիւն մի իւր իրաւունք ժողովուրդէն լիովին կ'ստանայ եւ առ ժողովուրդն ունեցած պարտիքներ կը մոռնայ, այլ եւս ժողովուրդ ինչ միջոցաւ կարող է այդ անվճար եւ մոռացեալ իրաւունքը ձեռք բերել։*

*Իսկ դու, ազնիւ որդեակ իմ, որ ընդ իշխանութեամբ ծընած ես եւ ժողովուրդին կրթեալ զաւակն են, պարտիքներդ սրտի մտօք տար ու կատարէ, իբրեւ քրիստոնեայ ուշ դիր Պօղոսի խրատուն, որ կը յորդորէ հնազանդ լինել իշխանութեանց․ եւ հատուցանել որում զպարտս՝ զպարտ, որում զպատիւ՝ զպատիւ․ եւայլն։ Նոյն Պօղոս կ'ասէ թէ՝ իշխանութիւն վայրապար չէ կապեր սուրը իւր մէջքը, որով աշխարհիս չա-*

*բագործներուն հարուած կ՚սպառնայ․ իսկ եթէ դու կ՚ուզես իշխանութենէն չերկնչիլ եւ ազատ վարել կեանքդ՝ բարիք գործէ․ զի բարութիւն եւ բարեգործն, առաքինութիւն եւ առաքինին միշտ ազատ են այդ երկիւղէն ու հարուածէն։*

*Բայց թէ մերթ ընդ մերթ բարութեանդ փոխարէն ապիրատութիւն ընդունիս, յայնժամ յիշէ Պետրոսին խօսք որ կ՚ասէ․ «Զի՞նչ երախտիք իցեն, եթէ յորժամ մեղանչիցէք տանջիցիք եւ համբերիցէք․ այլ եթէ զբարիս գործիցէք, չարչարիցիք եւ համբերիցէք․ այն շնորհք յԱստուծոյ են, քանզի ի դոյն իսկ կոչեցարուք»․ եւ այլն։*

*Քանի որ աշխարհ կայ, չարչարանքներ աշխարհէս չեն բարձուիր, միայն թէ կը պակասին․ ժողովուրդ եւ մարդիկ անհրաժեշտ է պիտի կրեն չարչարանքներ․ թէ առաւել թէ նուազ, թէ իշխանութեան ձեռքէն եւ թէ նոյն իսկ իրենց ձեռքէն, թէ իբրեւ մեղապարտ՝ յանցաւոր դատուելով, եւ թէ իբրեւ անպարտ՝ անիրաւի կրելով։*

*Կը փափաքիմ քեզ համար, որդեա՛կ, որ ոչ դու անձիդ համար չարչարանք քու ձեռքովդ պատրաստես եւ ոչ նաեւ յանցապարտ լինիս, որ իշխանութիւն զքեզ չարչարէ․ բայց թէ աշխարհի ծանրացող ձեռք զքեզ եւ ժողովուրդ հաւասար չարչարէ, այդ եւս քո քրիստոնէական պարտիքն է, զոր պէտք է յօժարաբար տանիս ու համբերես եւ մինչեւ խպառ համբերես, հաւատալով թէ վախճանը կեանք է։*



ԴԱՍ Ե․

# ԺՈՂՈՎՈՒՐԴ ԵՒ ԱԶՆՈՒԱԿԱՆՔ ԱՇԽԱՐՀԻՍ

Ճշմարիտ ազնուականութեան նշան հոգւոյ մեծութիւնն է, ոչ հողն է եւ ոչ ոսկին, ով որ ունի զայն։ Նա է աշխարհիս տիրապէս ազնուական, որոյ փառք միայն ժողովրդասիրութեան մէջ կը փայլի։

*ԱՇԽԱՐՀԻՍ խոնարհ ժողովուրդին եւ ազնուական կոչուած բարձրադոյն կարգին դասը պիտի խօսիմ քեզ, անտոհմիկ որդեակ իմ․ դու գիւղական ժողովուրդի մի զաւակն ես, ժողովուրդի մէջ կա՚պրիս, պէտք է գիտնաս ու ճանչնաս նաեւ այն բարձրադոյն դասն մարդոց, որոց կեանքն ու վիճակ հասարակ ժողովուրդի կեանքէ շատ բարձր է, ու շատ զանազանութիւն ունի։*

Դու պէտք է լիովին գիտնաս ժողովուրդին կեանք եւ գործեր, եւ թէ ի՞նչ են հարուստ ազնուականաց դասն, իրենց կեանք եւ գործեր, եւ իւրաքանչիւրին պարտիք եւ իրաւունք աշխարհիս վերայ։

Բոլոր երկրագնդիս երեսը բնակող մարդկային ընկերութեան ամենամեծ մասն միշտ ժողովուրդն է. եւ նա է ծներ ամէն կարգի ազնուականաց եւ իշխանաւորաց դասն. կայսր, թագաւոր, իշխան, պայազատ, ամէնքն եւս ժողովուրդի զաւակներն են, զի ժողովուրդն է բուն արմատ եւ մայր ամէն կարգի եւ վիճակի մարդոց։

Աշխարհիս մեծագոյն շինարար մասն ժողովուրդն է. դաշտային գիւղերու բնակիչ աշխատաւոր եւ հաց վաստակող մըշակ՝ ժողովուրդն է. նմանապէս քաղաքներու բնակիչներն մեծ մասամբ ժողովուրդն է։ Խիստ փոքրագոյն մասն կը կազմեն ազնուականաց կարգն, որք ընդհանրապէս մայրաքաղաքաց եւ քաղաքներու մէջ կը բնակին։

Ժողովուրդ մարդկային ընկերութեան մէջ՝ բուն մարդոց կեանք եւ պիտոյք կազմող եւ պատրաստող ամենաշխատ եւ պիտանի օգտակար մասն է։ Ժողովուրդն է, որ իբրեւ երկրագործ մշակ կ'արդիւնաւորէ երկրին բարեբերութիւն, եւ կը մատակարարէ աշխարհին։ Նա է, որ հաց, միս, իւղ եւ այլ կաթնեղէն նպարներ կը հանէ մեր սեղան։ Նա է, որ այգեգործութեամբ մեր խնձոյից բաժակներ պատուական գինւով կը լեցնէ։ Ժողովուրդ իւր տնկած պարտիզէն բազմազան ազնիւ պտուղներ հանելով՝ քաղաքացւոց եւ ազնուականաց սեղան առհասարակ կը զարդարէ։ Նա է, որ բուրդով, փափկասեր այծենով, բամբակով, վշով, եւ այլ բազմատեսակ բուսական նիւթերով՝ ժողովուրդին պարզ հանդերձ եւ ազնուականաց պերճանքներ կը պատրաստէ։

Ժողովուրդ իբրեւ արհեստաւոր, բիւր հազար տեսակ արուեստական աշխատութեամբ մեր կեանքի անհուն անհամար պէտքեր կը հոգայ, մանաւանդ քաղաքակիրթ աշխարհին մէջ, ուր կ'առաւելուն միշտ նորասիրութեան պերճանքներ։ Նա կը շինէ ու կը զարդարէ թագաւորի պալատ, իշխանաց ապարանք եւ այլ ամէն ինչ, որ կը վերաբերի նոցա ճոխ կեանքին ու վայելման։

Ժողովուրդն իբրեւ գիւտերու եւ արուեստներու հնարիչ՝ իւր արդիւնք եւ յառաջդիմութիւն շատ մեծ է. եւ այլ մասին

մէջ երբէք համեմատութիւն չունի, այլ միշտ կ՚առաւելու ազնուականաց դասէն։

Ժողովուրդ իբրեւ աշխատութեան մայր՝ բոլոր ծովագնաց նաւերուն համար նաւապետ եւ նաւաստի կուտայ. բոլոր մեծամեծ գործարանաց համար գործաւոր մշակ կուտայ, բոլոր հանքերուն համար գետնի տակ անարեւ անլոյս խորերուն մէջ հանքահաններ կուտայ, համայն երկրագունդ բեղմնաւորելու համար հողագործ աշխատաւորներ կուտայ։

Ժողովուրդ իբրեւ գրականութեան անխոնջ մշակ, իբրեւ մատենագիր հեղինակ, իբրեւ լուսաւորութեան եւ յառաջդիմութեան առաջնորդ՝ աշխարհ թուղթերով, գրքերով ու թանգարաններով լցոյց, խաւարն ու մութ փարատեց մարդոց մըտքէն եւ լուսաւորեց մարդոյն մտաւորական աշխարհ։

Կը խելամտի՞ս, որդեակ իմ, թէ աշխարհիս վերայ մարդկային ընկերութեան կեանք պահող եւ արդիւնաւորող ժողովուրդին աշխատութեան կեանքն է։ Թող այդ ամէն արտաքին մասերը, որ ժողովուրդի աշխատութեան կեանքէն կը բղխի, եւ աշխարհ նորա վաստակով կը յագենայ ու կը ճոխանայ։ Ժողովուրդ նաեւ իւր ներքին ամուսնական եւ ընտանեկան կեանքին մէջ շատ պտղատու եւ բարգաւաճ է. գիւղեր ու քաղաքներ նորա զաւակներով կը լեցուին. դրախտի օրհնութիւն իսկապէս ժողովուրդ կը վայելէ, որ միշտ աճելով բազմանալով կը լնու երկիրը. եւ աշխարհ իւր որդիքներով չէն կը մնայ։

Բայց դու, ժողովրդասէր որդեակ իմ, արդեօք կը սըրտմտիս կամ անիրաւութի՞ւն կը համարիս երբ կը տեսնաս աշխարհիս կարգն ու դատաստանը. զի երբ ժողովուրդն ընդհանուր մեր ընկերական կեանքին մէջ այսչափ մեծամեծ պարտիքներ կը կատարէ. զօրհանապազ չարաչար կը տքնի եւ քիրտըն կը թափէ մարդկային յառաջդիմութեան համար. ո՜հ, քանի՜ դառն ու դժուար է որ իւր յառաջ բերած անբաւ արդիւնքէն խիստ նուազ եւ յոռի մասն կը վայելէ։ Ազնիւ ցորեան եւ պատուական հացն՝ ազնուականին կուտայ, եւ ինքն գարի ու կորեակ կ՚ուտէ, նմանապէս գէր կենդանիներ նոցա բաժինն է. ժողովուրդ թանապուրով եւ ցամաք հացով կ՚ապրի. անուշահամ գինին նոցա բաժինն է, ժողովուրդ պարզ ջրով իւր ծարաւ կ՚անցունէ. բեհեզն ու ծիրանին եւ տարազագործ կերպասներ ազնուականին կուտայ, եւ ինքն պարզ կտաւ կամ չալ կը հագնի. չքեղ ու փառաւոր ապարանքներ կը շինէ նոցա համար, ինքըն անշուք տուներու եւ մերթ եւս խրճիթներու մէջ կ՚ապրի։

*Ժողովուրդի մեծագոյն մասն երկրիս վերայ միշտ կարօտ ու չարչարուած կեանք կը վարէ ։ Նա ոչ միայն արեւելքին մէջ, այլ եւ արեւմտեան քաղաքակրթութեան աշխարհին մէջ, ուր լոյս տարածուած է, տակաւին ժողովուրդին մեծ մասն ծանր աշխատութեան եւ կարօտութեան մէջ կը մաշի ։ Զի ես լսեր եմ եւ հարցնելով գիտեմ թէ՝ Եւրոպիոյ գործաւոր մշակներու կեանք շատ դառն է, որոց ապրուստ միայն օրական պարէն ու հացն է, գործաւորին համար գանձ ու ապագայ չը կայ, գործաւոր միշտ գործաւոր կը մնայ․ եւ գործարանապետ անհուն հարստութեան տէր կը լինի ։*

*Այդչափ եւ այդպիսի են, ազնիւ որդեակ իմ, ժողովուրդին գործունեայ կեանք եւ ընդհանուր աշխարհի մատուցած մեծամեծ արգասիք, յորս մեք հարեւանցի տեսութեամբ անցաք, եւ պէտք է խոստովանիլ, որ քաղաքակիրթ աշխարհին մէջ ժողովուրդ մեծ տարերք կը կազմէ, եւ յառաջդիմութեան ընդարձակ ասպարէզը՝ ժողովուրդին աշխատութեան ոտք չափեց ։*

*Այժմ դառնամք եւ ազնուականաց դասուն նկարագիր հանենք, որոց դիրք, կարգ, աստիճան, պաշտօն, պարտիք եւ կենցաղավարութիւն աշխարհի առաջ ժողովուրդի խոնարհ դասէն շատ վերագոյն կը համարուի ։*

*Այս վերակարգ դասուն կը պատկանի աշխարհավարութիւն, աշխարհաշինութիւն, քաղաքագիտութիւն, դատաւորութիւն եւ այլն ։ Դոքա քան զժողովուրդն առաւել պէտք է կրթեալ լինին, հանճարեղ, իմաստուն եւ խորհրդական լինին, վասն զի երկրին կառավարութեան սանձն իրենց ձեռքն է, երկրին շահն ու վնաս կշռող նժարը՝ իրենց խելքն է ։ Այդ վարիչ իշխանական կարգն է որ կը խորհի, կը կարգադրէ, եւ յառաջ կը վարէ քաղաքակրթութեան կառք ։*

*Թողունք այդ ազնուական դասուն աշխարհավարական մասն, որուն համար արդէն նախադլխոյն մէջ գրեցի թէ ի՞նչ է իշխանութեան պաշտօն եւ պարտիք ։*

*Այժմ խօսինք ազնուականաց դասուն այլ եւ այլ հանգամանաց եւ պարտուց մասին ։ Նոքա, որոց բախտ յաջողեր է հարուստ եւ մեծատուն լինել աշխարհիս վերայ․ նոքա մեծ պարտիքներ ունին կատարելու․ «Զի որում շատ տուաւ, շատ խնդրեսցի ի նմանէ» ասաց Քրիստոս ։*

*Բայց դու, հարցասէր եղիր, որդեակ իմ, քննենք թէ ո՞յք են աշխարհիս վերայ իրօք եւ ճշմարիտ ազնուականներ, ինչ–*

պէս Աբրահամ, Յակովբ եւ Յովբ, որոց արդար վաստակին հետ զրկանք չէ խառնուած, եւ ո՞յք են անարդար եւ նենգող ագնուականներ, որոց հարստութեան հողն ու ոսկին յանիրաւութենէն գոյացեր է, կամ տիրապետելով, կամ զրկելով ու հարստահարելով եւ կամ նենգութեան բիւր հնարքներ ի գործ դնելով մեծատուն, իշխան, պայազատ եւ ազնուական եղեր են աշխարհիս վերայ: Այս անարդար ազնուականաց նկարագիր կը հանէր երբեմն Եսային. «Վաճառականք ձեր խառնեն զջուր ընդ գինի. իշխանք ձեր ապստամբ՝ գողակիցք են գողոց, սիրեն զկաշառս, վրիժագործք, որբոց իրաւունս ոչ առնեն եւ դատաստանի այրեաց՝ ունկն ոչ դնեն» եւ այլն. որով ցոյց կուտայ մարգարէն թէ քանի՞ մեծ անիրաւութիւններ կը գործէին Իսրայէլի ազնուական կոչուած իշխաններ: Դոքա շատ անգամ եւս խիստ խորամանկ միջոցներ ի գործ դնելով կալուածատէր կը լինին. ինչպէս կը յայտնէ դարձեալ նոյն մարգարէն. «Վա՛յ այնոցիկ որ յարեն զտուն ի տուն եւ ագարակ առ ագարակ մերձուցանեն. զի զընկերին հանիցեն. միթէ միա՞յն բնակելոց իցէք յերկրի»: Աստուած այսպէս կը դատի աշխարհիս անիրաւ ազնուականներ, բայց աշխարհիս դատաստանը այսպէս չէ. զի ով որ ոսկեգանձ ունի, ով որ կալուածատէր է, ով որ իշխան է եւ կը տիրէ՝ նա միշտ աշխարհիս աչքին դատաստանով ազնուական կը համարուի:

Իսկ արդար վաստակով եւ ուղիղ աշխատութեամբ հարըստացած ազնուականներ շատ հազուագիւտ են աշխարհիս վերայ, եթէ որոնենք՝ կը գտնենք առաւել վաճառական, արհեստաւոր եւ երկրագործ կարգերուն մէջ: Դու այնպէս չըմբռնես, թէ իրօք մեծահարուստ ազնուական լինելու համար Անգղիացի լորդերուն չափ անհուն ոսկի եւ հող ունենալու է. վասն զի ճշմարիտ ազնուականութեան յատկանիշ միայն հողն ու ոսկին չէ, որ սոսկ նիւթական հարստութիւն կը կազմէ, այլ առաւել մեծ է հոգւոյն եւ բարուց ազնուականութիւն, որ բարոյական առաքինութեան օրէնքներ կը պահէ, որ ժողովրդասէր է եւ ամբարհաւաճ լինելով չի մեծամտեր, որ ագահելով, ժլատելով ձեռք չի կծկեր, այլ իւր հարստութեան ոսկին հասարակաց բարւոյն համար առատ կը սփռէ. որ առանց փառասէր ոգւոյ կը մեծագործէ ուղիղ եւ բարի նպատակով ժողովուրդի յառաջդիմութեան համար, որ լուսոյ տուներ ու դպրոցներ կը կանգնէ, գրատուններ եւ թանգարաններ կը հաստատէ, հեղինակ մատենագիրներ կը քաջալերէ, գործարաններ կը բանայ, ագ-

դին աղքատ ու պարապ որդիքներուն գործ կը գտնէ, բարեպաշտ ու մարդասիրութեան ոգւով աղքատանոց, հիւանդանոց շինելով ազգին թշուառներ կը պատսպարէ Յովբայ նման իր ոչխարաց բուրդերէն բաժին հանելով մերկերու թիկունք կը ջեռուցանէ, եւ այսպէս կը կատարէ իր պարտք ճշմարիտ ազնուականն· և Նա կը խորհի զօրհանապազ Աստուծոյ եւ աշխարհին առաջ միայն մեծագործ առաքինութեամբ բարձրանալ: Նա իր առաքինութեան վարձ՝ երբէք ժողովուրդէն երկրպագութիւն չի խնդրեր, միշտ յիշելով Յիսուսի պատուէրը՝ աջով կը գործէ եւ ձախը չիմանար· իր փառք եւ սրտին հաճոյքը՝ միայն իր առաքինութեան մէջ կը շատանայ:

Տեսցուք նաեւ անիրաւութեամբ ու զրկանօք հարստացած ազնուականաց գործն ի՞նչ է:

Այդպիսի սուտանուն ազնուականաց ճանապարհ շատ բազմադիմի է աշխարհիս վերայ: Ոմանք հարստահարելով, յափշտակելով կը հարստանան, ոմանք դիպուածով կը հարստանան, զոր բախտ կը համարին, եւ յանկարծ մի աւուր մէջ մեծնալով ազնուական կը դառնան· միայն թէ՝ այն հարստութեան գանձեր զոր մարդ առանց աշխատութեան դիւրութեամբ կը գտնէ, շատ բնական է որ զայն դիւրութեամբ կը կորուսանէ: Այսպիսեաց օրինակներ շատ կան աշխարհիս վերայ, եւ մեք մեր ժամանակի մէջ տեսանք ու տակաւին կը տեսնանք: Ո՞ւր են Պոլսոյ մեր հին հարուստ ու Հայ սեղանաւորներ· որոց վստահութեան յանձնուած էր Տէրութեան գանձ, այսօր նոցա որդիքներէն շատերը հայրենի ժառանգութեան մեծագանձ հարստութեան հետ՝ կորուսին նաեւ ազնուականութեան պատիւ: Ոմանք եւս հնարագէտ եւ ամէն խարդախ միջոցներ ի գործ դնելով կը հարստանան· իսկ ոմանք գիտես թէ ի բնութենէ արծաթասէր բարք ունենալով՝ անհնարին ագահութեամբ եւ ամենախիստ խնայութեամբ կեանք վարելով կը հարստանան: Զմոռնանք, յիշենք նաեւ այս կարգին հետ այն կալուածատէր ազնուականներ, որոց հարստութիւն կը կարծուի թէ հողն է, բայց հողէն առաւել հողագործ մշակներու ճակատէն թափուած քրտինքն է: Այդ անգութ եւ խստաբարոյ կալուածատեարք իրենց վաստակաւոր մշակներ աշխատութեան մէջ զօրհանապազ կը մաշեցնեն· կամ կիսավարձ եւ կամ վարձահատ առնելով՝ խեղճ մշակները՝ միշտ մշակ մնացեր են, եւ կալուածատէրը՝ ազնուական դարձեր է: Թող վարձահատութեան զրկանք, մի ուրիշ քան զայս առաւել սոսկալի

*գրկանքներ պատմեմ քեզ, որոց ես ինքս ականատես եմ եւ հարցափորձելով տեղեկացայ:*

*Միանգամ մայրաքաղաքիս Հայ ազնուականաց միոյն ագարակը գնացի, որուն մէջ շատ ծառայող մշակներ կային, եւ ես այն պահուն պատահեցայ երբ մշակներ աշխատութենէն դադրած նստեր հաց կուտէին. դիտեցի, որ իրենց կերակուր միայն սեւ հաց եւ խաշած լուբիա էր, ուրիշ ոչինչ: Ես այնպէս կարծեցի, որ մի աւուր պատահումն էր այս, ուստի հարցուցի ագարակատէր ազնուականին. Թէ ձեր մշակներու կերակուր միշտ ա՞յս է, մանաւանդ Զատկի այս մեծ օրերը: Այո՛, ասաց, տարին բոլոր դոցա կերակուր այդ է միայն. մշակներու համար Զատիկ, Բարեկենդան չկայ, այլ միշտ միօրինակ հաց ու լուբիան է նոցա կերակուր: Ոգիս խռովեցաւ, կրկին հարցուցի. միթէ այս աշխատաւոր մշակներ, որոց ձեռքէն բազմապատիկ բերքեր կ'ընդունիք բուն ագարակէն ելած, միթէ դոքա կաթէն, մածնէն, իւղէն, պանրէն եւ այլ զանազան բերքերէն ուտելու իրաւունք եւ բաժին ունենան, այլ եւս մեր ագարակին շահն ոչինչ չմնար, վասն զի մեր գլխաւոր շահը պէտք է նոցա խիստ ու սակաւապէտ կեանքէն գոյանայ:*

*Ահաւասիկ ագարակատէր մեծատանց ազնուականութեան փառք, դու ինքնին դատաստան արա մտքիդ մէջ, ազնիւ որդեակ իմ, հազար անգամ Ասիոյ եւ մեր հայաբնակ աշխարհի մշակներ երջանիկ ու բախտաւոր են, որք կաթով, իւղով, եւ այլ կերակուրներով կը սնանին: Թող այս փողոցի աղքատներն եւս գոնէ տարուան նաւակատեաց օրերը մատաղ ուտելով մսի համ կ'առնուն, իսկ այդ ազնուականաց մշակներ չգիտեն թէ միսն ի՞նչ համ ունի:*

*Սորա համար Աստուած վերէն կը տեսնար եւ մշակները զրկող ու հարստահարող կալուածատեարց համար մարգարէին բերանով կը խօսէր. «Եւ բողոք հնձողաց եհաս յականջս իմ», եւայլն:*

*Մեծատունն Յովբ, որ հին աշխարհի մէջ մի ճշմարիտ ազնուական նահապետ էր, նա յառաջ կը բերէր իւր ազնուականութեան պարտիքներ, զորս անթերի կատարեր էր. մինչդեռ իւր բարեկամներ վիճելով կասկած կը յարուցանէին: Իսկ ազնուական նահատակն մեծ համարձակութեամբ ցոյց կուտար իւր առաքինութեան հանդէս եւ կը խօսի. «Եթէ խոտեցի՞ երբէք զիրաւունս ծառայի կամ աղախնոյ մատուցելոյ առիս յատեան, եւ զի՞նչ գործեցից եթէ հարցափորձ արասցէ ինձ Տէր,*

*եւ եթէ այցելութիւն, զի՞նչ պատասխանի արարից: Ո՛չ ապաքէն որպէս ես եղէ յարգանդի եւ նոքա եղեն. ի նմին որովայնի եղաք: Իսկ տկարք, որոց պէտք ինչ էին՝ ո՞չ արդեօք երբէք վճարեցի: Զակն այրւոյ ոչ կողկողեցուցի: Եթէ կերա՞յ արդեօք զպատառ իմ միայն եւ որբոյն ոչ կարկառեցի: Զի ի մանկութենէ իմմէ սնուցի իբրեւ զհայր, եւ յարգանդէ մօր իմոյ առաջնորդեցի: Եթէ արարի՞ անտես զմերկն կորուսեալ եւ ոչ զգեցուցի: Եթէ ո՛չ օրհնեցին զիս տկարք եւ ի կորոյ խաշանց իմոց ջեռան թիկունք նոցա: Եթէ վերացուցի՞ ձեռն ի վերայ որբոյն՝ յուսացեալ թէ բազում է օգնականութիւն իմ, ապա թափեսցի յանրակէ ուս իմ եւ բազուկ իմ յարմկանէ իմմէ խորտակեսցի» եւայլն:*

*Ահաւասիկ ճշմարիտ ազնուականութեան գործ ու պարտիքը, զորս մեծանձն Յովբ վեհանձնաբար կը ճառէ ու վստահութեամբ կ'արդարանայ Աստուծոյ առաջ. թէ եւ բարեկամ դատաւորներ մեղապարտ կը դատէին զինքն կարծելով թէ հարուածեալն Յովբ իւր զրկանաց երեսէն պատուհասուեր է:*

*Է՛, ազնուամիտ որդեակ իմ, համեմատէ դու այժմիկ հին աշխարհի եւ մեր դարու ազնուականաց գործն ու կեանք. եւ դու ինքնին դատաստան արա, թէ աշխարհիս ամէն հարուստ մեծատունք, որ ազնուականութեան տիտղոս ստացեր են՝ նոքա իրօք եւ ճշմարիտ ազնուական չեն: Մի կարծեր թէ ընդարձակ հողն ու ոսկին եւ անուն զմարդն ստոյգ ազնուական կ'անեն, եթէ նորա ոգին ընչաքաղցութեամբ սարկացած է եւ զուրկ մեծանձնական առաքինութենէն: Կան մարդիկ, որք թէպէտ մեծահարուստ չեն, այլ իրենց չափաւորութեան մէջ առաւել կը մեծագործեն քան համբաւեալ ազնուականն:*

*Իսկ դու, անանուն որդեակ իմ, որ ազնուական չես ծներ, այլ չինական ժողովուրդին մի հասարակ զաւակն ես, ջանացիր փոքրկութեանդ մէջ փոքրիկ ազնուական լինել. ոչ գանձ ունիս եւ ոչ մեծ կալուածատէր ես, որ ոսկւով եւ հարստութեամբ մեծագործես. բայց դու գրով, ուսմամբ եւ կրթութեամբ մեծագործէ:*

*Սիրէ նաեւ բարուց ազնուութիւնն, անկեղծ կենցաղավարութեան ազնուութիւն. եւ քան զամէն առաւել՝ ընկերսիրութեան ազնուութիւն: Եթէ աշխարհիս դէպքեր յաջողեն քեզ, կամ գիրն եւ աշխատութիւն քեզ ոսկի բերեն, եւ դու յանկարծ խոնարհ ժողովուրդի վիճակէն բարձրանալով ձգտիս դէպի*

ազնուականութեան դասն՝ մի անարգեր գիրն ու գրիչ․ այլ գուն գործէ, որ գրով ու ոսկւով միանգամայն ազնուանաս:

Գիտեմ ես, գիտես նաեւ դու, Քրիստոս որ աղքատ եւ ժողովրդասէր էր, վկայեց թէ մամոնան անիրաւ է, անիրաւ են եւ նոքա որ սոսկ մամոնայի ազնուականութիւն կը կեղծեն․ բայց արդար եւ ժողովրդասէր ազնուականը գիտէ բարւոք ի գործ դնել զայն, եւ շահեցուցանել թէ ի սակաւուն եւ թէ ի բազմին իբրեւ հաւատարիմ ծառայ Աստուծոյ տնտեսութեանն:

Կը փափաքիմ քեզ համար, որդեակ, որ դու ի փոքուն, այսինքն այդ քո այժմեան վիճակին մէջ միշտ հաւատարիմ լինիս, որպէս զի բազմին արժանանաս:

Որչափ եւ կարես՝ կեանքն ազնուացուր աշխարհիս վերայ․ մի ասեր թէ ես մարդոց կեանքին մէջ եւ նոցա աչքին առանց ոսկւոյ ու մեծութեան միշտ նուաստագոյն կը համարուիմ: Կը գովեմ զքեզ եթէ անձնաճանաչ լինելով խոնարհամտիս, այլ չեմ ներեր զքեզ թէ այնչափ նուաստանաս մինչեւ մոռանաս մարդկութեան հաւասար պատիւ: Գիտցի՛ր դու, որ Աստուած զմարդիկ հաւասար ազնուական ստեղծեր է եւ այնպէս կը համարի․ ոչինչ զանազանութիւն չըկայ․ ազնուականին եւ ժողովուրդին մէջ․ միայն աշխարհին աչք ու դատաստանը խտիր կը դնէ եւ այնպէս կը տեսնայ․ իսկ Աստուծոյ մեծութեան առաջ՝ աստուածապատկեր մարդն հաւասար ազնուական է: Մանաւանդ եկեղեցւոյ հաւատացեալ ընկերութեան մէջ․ որոց համար ասաց Քրիստոս թէ «Դուք ամենեքին եղբայր էք»:

Վերջին խրատ մի եւս աւանդեմ քեզ Սողոմոնի բանէն․ եւ այն միշտ քո խնդրուած Աստուծոյ առաջ: «Մեծութիւն եւ տընանկութիւն մի տար ինձ․ այլ կշռեա ինձ զարժանն բաւականութեամբ: Զի մի մեծացայց եւ ստեցից եւ ասիցեմ թէ ո՞վ տեսանիցէ զիս․ կամ աղքատացայց գողացայց եւ երդուայց յանուն Աստուծոյ իմոյ:»

## ԴԱՍ Զ.

# ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆ ԵՒ ՀԱՑ

Աշխատութիւն մարդոյն կեանք արդիւնաւորող Աստուծոյ օրհնած սերմն է. եթէ յուսով ցանես զայն՝ շահաբերութեամբ կը հնձես, կեանքդ լիասեղան հացով եւ բարեօք կը լեցուի. եթէ չ'ցանես՝ ոչ ինչ չես հնձեր եւ կեանքդ կը սովամահի:

*ՄԱՐԴՈՅՆ աշխատութեան եւ գործունեայ կեանքին պիտանի եւ օգտակար դասը պիտի խօսիմ քեզ, ժիր ու գործասէր որդեակ իմ, ականջդ բաց եւ ինձ տուր քո միտքդ, զի այս կենսական դասն է, որ քո կեանքը կը բեղմնաւորէ, դու անպէտ անպտուղ ծառ չես լինիր մարդկային ընկերական դրախտին մէջ, որ աշխատութեան պտուղ չը տալով՝ միայն երկիր կը խափանեն. զոր իրաւամբ հատանել պէտք է, կը վճռէ Յիսուսին բացախօս առակը: Եթէ մարդն ինքնին ազատ իրաւունք ունի իւր տնկած եւ դարմանած պարտիզին անպտղատու ծառեր հատանել, քանի՞ առաւել աշխարհիս դրախտ տընկագործող Արարիչը տիրապէս իրաւունք ունի հատանել այն ապարդիւն մարդատունկեր, որք ոչ միայն հակառակ կը վարին տիրական վճռոյն դէմ, այլ եւ տիեզերքի բնական օրինաց դէմ շատ մեղապարտ կը լինի մարդ, երբ կը դիտէ ու կը տեսնայ, որ երկինք ու երկիր կը շարժին եւ կը գործեն, անդադար միշտ արդիւնաւորելով այս մեծաշահ դաստակերտ թէ ի պէտս մարդոյն եւ թէ ի փառս բարեխնամ Արարչապետին:*

*Տեսողութեամբ ու մտքով կոյր մի լինիր եւ կորահայեաց, որդեակ իմ Սամուէլ, գլուխդ ի վեր առ, աւադ աչքով դիտէ եւ տես բովանդակ տիեզերաց գործունէութեան հանդէսը, որ զտիւ, եւ գիշեր շարժման եւ փոփոխութեան մէջ անվրէպ կը կատարեն իրենց սահմանեալ ընթացքը՝ միշտ հպատակ լինելով յաւիտենական օրինաց տակ: Եւ նոյն ինքն տիեզերաց փարող Արարիչը միթէ անգործ կը հանգչի՞. ոչ. զի ասաց Քրիստոս. «Հայր իմ մինչեւ ցարդ գործէ եւ ես գործեմ»: Եւ ի՞նչ է նորա գործը. դու տես թէ ինչ էր: Իր աներեւոյթ գահէն տիեզերաց սանձ բռնել ու վարել, նախախնամել արարած էակները, որ գոյութենէն ի չգոյութիւն չը դառնան, մեռեալներ հողին տալ, հոգիներ յանմահութիւն կոչել, եւ*

նորածնելոց՝ նոր հոգի տալով՝ մարդոյն կեանք վերանորոգելով պահպանել: Զմոռնանք նաեւ նորա գերագոյն արդարութեան դատաւորութիւնը, որով կը տեսնայ աշխարհիս դատաստանն. եւ մարդիկ չը գիտեն թէ հոգմն ուստի՞ կուգայ եւ ո՞ւր կ'երթայ:

Երանի՛ թէ մեր աչք պարզապէս զօրէր եւ մեք տեսնայինք թէ այն կապուտակ երկնակամարին անհուն անհամար մարմնոց մէջ ի՞նչ աշխատութիւն եւ տքնութիւն կայ: Արեւ, լուսին, մոլորակներ եւ բոլոր համաստեղութիւնք, որք թէպէտ մարդոյն նման ազատ էակներ չեն, այլ իբր ինչպէս ինքնավար, ինքնաշարժ կը մղուին կը վարին արարչադիր օրէնքով:

Իսկ մեր աշխարհ, որ մեր աչքին առաջ եւ մեր ոտքին տակն է, եւ զոր մարդկային իմաստասիրութիւն հանապազ կը հետազօտէ ու կը տեսնայ, թէ ինչպէս ծովն ու ցամաք, բոլոր բուսական խոտեր ու ծառեր, անշունչ եւ շնչաւոր էակներ, տարերք, ժամանակ, եղանակներն եւ առհասարակ բովանդակ երկրագունդ անդադար շարժման եւ աշխատութեան մէջ են. որոց արդիւնք եւ նպատակ շատ յայտնի է մեզ: Մարդոյն կեանք եւ նորա հետ բոլոր կենդանեաց կեանք մի աւուր մէջ կը չքանայ, եթէ երկիր ցորեան չիտայ մեզ համար, եթէ խոտ չբուսուցանէ անասնոց համար, եւ ծառեր չը պտղաբերին եւ արեւ իւր լուսով ու ջերմութեամբ չկենդանացնէ մեր աշխարհ. եւ այս ամենուն հետ եթէ արարչական խնամքն իւր երեսը դարձնէ՝ ի՞նչ կը լինի մարդոյն եւ բոլոր շնչաւորաց կեանք. այդ կը խոստովանի Դաւիթ. «Դարձուցանես զերեսս ի նոցանէ՝ խռովին, հանես զոգի ի նոցանէ՝ պակասին եւ ի հող դառնան»:

Իսկ մարդոյն աշխատութեան համար կը խօսի. «Ելանէ մարդ ի գործս իւր ի վաստակս ձեռաց իւրոց մինչեւ յերեկոյ»: Զի մարդն այս աշխարհիս վերայ գործաւոր մշակ մի է. քանի որ կեանք ունի, աշխատութիւն՝ իւր բնական ու բարոյական պարտիքն է:

Մարդկային ընկերական աշխարհ Թագաւորէն սկսեալ մինչեւ գիւղական մշակն՝ ամէնքն եւս անդադար աշխատութեան մէջ կը դեգերին ու կը պարապին: Բայց դու պէտք է գիտես, որդեակ իմ, թէ աշխարհիս վերայ ամէն մարդ իւր աշխատութեան բաժինն ունի:

Հին աշխարհին մէջ մարդոց աշխատութիւն խիստ պարզ եւ անձուկ վիճակի մէջ էր. բայց նոր աշխարհ եւ քաղաքա–

կրթութիւն մարդոց աշխատութեան գործ եւ ասպարէզ կարի շատ ընդարձակեց. եւ այսօր բիւր հազար տեսակ գործերու մէջ կը պարապի մարդկային ընկերութիւն: Այդ եւս բաւ չէ, տակաւին կը տքնին մարդիկ անդուլ անդադար նորանոր արուեստներ եւ գործեր հնարել զբաղասէր մարդոյն համար: Այլ գիտես թէ մարդ որչափ իւր կեանքին պէտքեր հնարէ, բազմապատկէ՝ այնչափ եւս իւր ցանկութիւն կը գրգռէ եւ երբէք շատ չասէր: Ո՛վ գիտէ, թերեւս Նախախնամութիւն՝ մարդոյն ցանկութեան չափ չը դրաւ. որպէս զի մարդ հնարասէր գործասէր լինի եւ հայթայթէ իւր կենաց պէտքեր: Բայց թէ ինչո՞ւ համար ոմանց ամենածանր եւ ոմանց ամենաթեթեւ աշխատութեան բաժին հասեր է, մի զարմանար, այդ եւս անհաւասարութեան օրէնքին տակն է: Բայց թէ ծանր եւ թէ թեթեւ, թէ մտքով ու թէ մարմնով՝ մարդիկ ընդհանրապէս աշխատութեան դատապարտուած են: Թագաւոր՝ զոր մեք անաշխատ կը կարծենք, նա եւս մտքով եւ աշխարհի հոգերով կ'աշխատի. իշխան, դատաւոր՝ աշխարհավարութեան մէջ կ'աշխատին. զօրավար, զինուոր պատերազմի դաշտին մէջ արիւնով կ'աշխատին: Այսպէս նաեւ վաճառական՝ իւր վաճառականութեան մէջ, արուեստաւոր՝ իւր արուեստին մէջ, իմաստասէր՝ իւր կարասին մէջ, մատենագիր հեղինակ՝ իւր մտաւոր ու գրաւոր աշխատութեան մէջ, եւ քան զամէն առաւել երկրագործ մշակ՝ արեւակէզ դաշտին մէջ:

Ես ո՞ր մէկ թուեմ քեզ բազում զբաղման գործեր, որոնց մէջ հէք մարդ հոգւով ու մարմնով կը տառապի ու կը տառապի: Եւ գիտե՞ս դու թէ ի՞նչ է իւր նպատակ եւ ջանք. Սողոմոն կը բացատրէ քեզ այդ. «Ամենայն ջան մարդոյ ի բերան». այսինքն թէ մարդ այս աշխարհիս վերայ իւր բերնին ու փորին համար կը ջանայ եւ կ'աշխատի: Երանի՛ թէ իւրաքանչիւր մարդոց աշխատութեան հաց՝ իւր բերանը հասնէր. զի մարդիկ կան, որ բիւրաւոր մարդոց աշխատութեան հաց իրենք կ'ուտեն եւ ես չեմ յիշեր քեզ, դու ինքնին գտիր, թէ ո՞յք են այդ կարգի մարդիկ աշխարհիս վերայ:

Այս անհաւասար բաժնին ու կեանքին դասը՝ պէտք չէ կրկնեմ քեզ, որդեա՛կ, աշխատութեան վերայ խօսիմ միայն, որ մարդոյն եւ իւր կեանքին ճակատագիրն է. մարդ կարող չէ քերել ու եղծել զայն: Մեծն Սողոմոն իւր գահէն կարեկից աչքով տեսաւ մարդոյն քաշած վշտակիր ու տառապանաց

*կեանքը՝ ասաց. «Զբաղումն չար ետ Աստուած որդւոց մարդկան, զբաղիլ ի նոսա»: Զխոտորիս, որդեակ իմ, այլ ուղիղ մտքով իմացիր Սողոմոնի բան, որով կը պարսաւէ ունայնամիտ եւ չարարուեստ մարդոց անշահ աշխատութիւն եւ ագահութեան ընդունայն դեգերանքն: Քա՛ւ թէ այնպէս կարծեմք, որ բարեխնամ Արարիչը՝ բարի աշխատութիւնն իբրեւ չար զբաղումն տուաւ մարդոյն: Եթէ այսպէս կարծենք՝ ուրեմն Աստուած զմարդն ստեղծեց, որ զայն չարազբաղ աշխատութեան մէջ ջախջախէ եւ ինքն զբօսնու կամ զուարճանայ: Բայց չէ. նա զմարդն աշխարհիս ագարակին մէջ դրաւ, որպէսզի գործէ ու վայելէ իւր արդար վաստակը, երախտապարտ լինի, օրհնէ ու փառաւորէ իւր Արարիչը:*

*Գրենք այժմ թէ ի՞նչ է մարդոյն նիւթական աշխատութեան արդիւնք: Այդ ինքնին շատ յայտնի է մեզ, որ մարդոց աշխատութեան արդիւնք հաց եւ հարստութիւնն է. եւ հարստութեան առաջին եւ մշտնջենաւոր աղբիւրը՝ հողն ու երկիրն է, զոր մեծատուն Աստուած տուաւ մարդոյն իբրեւ օժիտ կամ իբրեւ ժառանգութեան կալուած, որ գործէ ու պահէ: Մարդոյն այս ամենահարուստ կալուածն՝ իւր ծոցէն եւ ակնէն իբրեւ անհատահոս աղբիւր շարունակ կը բղխէ եւ կը հոսէ յորդեալ գետերու պէս անսպառ եւ անհատնում հարստութեան գանձերը: Չէ թէ միայն հաց կամ ուրիշ արմտիք, որք մեր կեանքին բուն սնունդ են, այլ եւ հանքային գանձեր, ոսկի, արծաթ, պղինձ, երկաթ, անագ, կապար եւ այլ շատ պէսպէս մետաղներ, որ դարձեալ մեր կեանքին կը ծառայեն արուեստաւորաց ձեռքով, եւ բազմապատիկ կը յաւելուն մարդոյն հարստութեան մեծութիւնը:*

*Սակայն երկրին այս բնական հարստութիւն բաւական չէ, այլ պէտք է հողին ու երկրին հետ: Քրիստոս կ՚ասէ թէ երկիրն ինքնին կը բերէ պտուղ, այո՛, շատ բաներ կան, որ առանց մարդոյն աշխատութեան երկիր իւր ինքնաբերութեամբ կը մատակարարէ. զորօրինակ անմշակ անտառներ եւ այլ անձեռատունկ շատ վայրենի ծառեր. թողումք լեռներու եւ դաշտերու բուսական խոտեր: Բայց Քրիստոսի խօսք, որ մանաւորապէս ցորենաբոյսին համար է, այդ եւս մինչեւ մշակ գետին չհերկէ եւ չցանէ սերմն, արտն ինքնին ցորեան չի բերեր:*

*Ուստի եթէ հարստութեան առաջին ամենաբուղխ աղբիւր երկիրն է, պէտք է համարինք որ այդ աղբիւր առատացնող ձեռքը՝ մարդոյն աշխատութիւնն է:*

Հանճարեղ մարդ շատ պէսպէս վայրենի բոյսեր, կենդանիներ ընտելացոյց, որք այսօր առ հասարակ մեր պէտքերուն կը ծառայեն: Երկրասէր մշակ իւր աշխատութեամբ հազար տեսակ հունտեր կը ցանէ, մատաղ տունկեր կը տնկէ եւ բիւրապատիկ բազմազան բերքեր հանելով կը հարստանայ: Վաստակասէր մարդ սոսկ երկրին երեսը բաւ չը համարեց իւր անդուլ աշխատութեան ասպարէզ· այլ փորեց հողը, մտաւ մինչեւ երկրին սիրտը, կրկտեց գտաւ ոսկին ու արծաթ, հանեց ճոխացոյց իւր հարստութեան գանձարանը: Երկաթ հանեց, երկրագործին խոփն ու մանգաղ շինեց, ափսո՛ս որ, խոփին ու մանգաղին հետ՝ սուրն եւս կոփեց իւր ընկերին կեանքը բառնալու համար:

Մարդոյն հարստութեան երրորդ ամենամեծ աղբիւրն, որ կը միանայ հողին եւ աշխատութեան հետ, եւ որով ահագին Ովկիանոսի չափ հարստութեան ծով կը կազմէ, ի՞նչ է, գիտես· հարցուր, որդեակ իմ, եւ ես խօսիմ քեզ· գիտութիւն եւ արուեստն է, որ այնչափ եւ անհամար նորանոր հարստութեան աղբիւրներ բացաւ զորս չը կարեմ՝ թուել ու ճառել:

Դու պէտք է գիտնաս թէ հին դարերում երբ գիտութիւն եւ արուեստ իւր խանձարուրին մէջն էր, դեռ չէր զարգացեր ու չէին ծներ այն մեծ եւ աշխատաւոր հանճարներ, որք նորանոր գիւտեր եւ արուեստներ ծնան, մարդոյն հարստութեան գլխաւոր աղբիւրներ միայն հողային մշակութիւն եւ հովուական խաշնադարմանութիւն էր:

Իսկ վերջին դարերում մանաւանդ տասնեւիններորդ յառաջդիմութեան դարը, յորում տքնող հանճարներ իրենց գիւտերով յորդեցին ընդարձակեցին հարստութեան աղբիւրին ակները, այդ մշտաբուղխ աշխարհի ակներէն վտակներ, գետեր բղխեցին, ողողեցին առ հասարակ արեւմտեան Եւրոպիոյ աշխարհ: Այլ մեր արեւելեան աշխարհ, որ նա կարենար յառաջդիմել:

Խօսինք այժմ անգործ եւ անաշխատ կեանքին վերայ, որոյ հետեւանքն աղքատութիւն է· անտարակոյս աղքատութիւն եւս իւր սկզբնական պատճառներ ունի, եթէ հարստութեան պատճառը կը համարինք թէ մարդոյն աշխատութիւն եւ ժրագործ ձեռքն է· ուստի պէտք է ուղիղ հասկնամք թէ ապա ուրեմն անգործ ձեռք եւ անաշխատ կեանք՝ մարդոյն չքաւորութեան բուն նախապատճառներն են: Ասիոյ արեւելեան աշխարհ ուր մեք կը բնակիմք, երկրի բնական հարստութեան ա-

մենաճոխ ծածկեալ գանձարան մի է։ Մեր լայնածաւալ արգաւանդ դաշտեր, որ ամէն սերմերու եւ տնկագործութեան ընդունակ են, եւ եթէ մշակուին՝ իրենց բարեբերութեան եւ առատութեան արդիւնք աշխարհին բաւ է։ Մեր լեռներ ու հովիտներ եթէ ապահովլին, արդեօք Զուիցերիոյ չափ կովեր ու եզներ, անթիւ անհամար ոչխարաց հօտեր չե՞ն դարմանուիր։ Հապա մեր ինքնաբոյս անմշակ անտառներ, մեր բազմագանձ հանքեր, որ այնպէս անկրկիտ կոյս մնացեր են հողին տակ, անգործ եւ ապարդիւն։

Ինչպէս գրեցի ի վեր, յիշէ, որդեակ իմ, աստի յայտնի է, որ երբ աշխատութիւնը չի միանար բնական հարստութեան հետը, հարստութիւնն իբրեւ ծածկեալ գանձ կը մնայ հողին ծոցը· եւ մարդիկ անհաց, անգանձ, անգիտաբար կը շրջին ոտքի տակ թաղուած գանձերու վերայ միշտ աղքատ եւ կարօտած։

Ուրեմն մեր աղքատութեան աղբիւրի մի ակն՝ մեր անաշխատ ձեռք եւ թմրած ոգւոյն ծուլութիւնն է։ Մի մարդ, մի ժողովուրդ, մի աշխարհ, որ զինքն աշխատութեան չէ նուիրեր, նա միշտ հացի կարօտ կը մնայ վասն զի աշխարհիս վերայ հացն ու գանձ՝ միայն աշխատող ազգին ու ժողովուրդին բաժինն են, եւ սորա ճշմարիտ ապացոյց՝ Եւրոպիոյ ժողովուրդն է։

Բայց ի՞նչ պէտք է, եւ ի՞նչ է զօրաւոր դարման, որ անաշխատութեան մէջ ափշած ու թմրած ժողովուրդին միտքն ու հոգին մեռելութենէն հանէ ու մղէ դէպի գործունէութեան կեանք։ Այն պէտք է, ինչ որ պէտք եղաւ արեւմտեան ազգերուն· այսինքն լոյս, գիտութիւն։ Լոյսն ու գիտութիւն՝ մեր գործող զգայարանքներ եւ աշխատութեան կեանքը կ'ուղղեն· եւ մեր յառաջդիմութեան քայլերուն ճամբայ կը բանան եւ կ'ապահովեն մեր արդիւնք եւ հարստութիւն։ Եւ երբ արեւելեան ժողովուրդներ զուրկ են այս առաջնորդող լուսէն եւ մղիչ զօրութենէն, կը մնան ուր որ են, միշտ կարօտ, բեղմնաւոր երկրի մէջ· վասն զի հեղգամիտ եղան· աշխատութիւն չսիրեցին, ուսումն ատեցին,ն հանճարն անպատուեցին, գրասէր անօթի մեռաւ արուեստաւորն առանց քաջալերութեան մնաց· եթէ կային մեծամեծ խոչընդոտներ ելան· մեր ընկերական կեանք դարձաւ մի անշարժ դիակ· տեսանք յառաջադէմ աշխարհ եւ իւր անթիւ գործունէութեան օրինակներ մեր աչքին առաջ կեցած են, մեր միտք ու հոգին տակաւին չնորոգեցան·

մնացինք այնպէս հնութեան ու հեղգութեան մէջ: Մեք մտաւոր մարդ ծնանք, այլ մեր ոտքի տակ աշխատող չքոտի մըրջիւնին ժիր գործունէութիւն չտեսանք: Մեծն Սողոմոն իւր խրատով աշխարհի վատ ծոյլերն կը յղէ դէպի մրջիւնին բոյն:

Եւ դու, որդեակ իմ, երբ մրջիւնի բունէն կ'անցնիս՝ կաց պահ մի ու դննէ, տես ու զարմացիր թէ քանի՜ աշխոյժ է այդ նկուն կենդանին. իւր բունէն մինչեւ քառասուն քայլ աւելի ուղղագիծ ճամբայ կը բանայ, կարաւան կարաւան անդադար կ'երթայ կուգայ. միշտ մի հատիկ պարէնով կը բեռնաւորի, կը բերէ կ'ամբարէ իւր բոյնը. եթէ պատահմամբ կոխես ու ճմլես զինք ի գետին, եթէ սայլին անիւն իւր ճամբոյ վրայէն անցնի, հազարներով ջախջախուին, նա տակաւին աշխատութենէն չի կասիր եւ երբէք չի թողուր իւր բացած արիւնոտ ուղեգիծն. այլ դիակներու վերայ կը կոխէ ու կ'ացնի իբրեւ աշխատութեան աննկուն չահատակ:

Մրջիւն՝ մարդ չէ, բայց կը նախատեսէ, յամարան կը ժողովէ կ'ամբարէ իւր պաշարը, եւ ի ձմերան կը վայելէ. ազատ մնալով ի սովէն: Մարդ մրջիւն չէ, նախատեսող միտք ունի. եւ երբ չի նախատեսեր, անգործ կեանք կը վարէ՝ նորա ձմեռն անշուշտ սովամահն է:

Թողունք մրջիւնի բոյն, երթանք դէպի մեղուն. դիտէ ու տես թէ որչափ գործասէր է. երամ երամ կապելով կ'երթան ծաղկաւէտ հովիտներ կը շրջին, մեղրանիւթ կը ժողովեն եւ կուգան փեթակին մէջ կը գործեն, որոց արդիւնք թագաւորաց սեղան կը զարդարէ. եւ մեղրամոմն Աստուծոյ սեղանին վերայ կը վառուի:

Հապա չտեսնա՞նք մեր պատերու սարդի գործունէութիւն, որուն համար կ'ասեն թէ կտաւագործութեան արուեստին հեղինակ լինելով՝ օրինակ տուեր է մարդոյն. տես ՞նչպէս անդուլ կը ճգնի իւր աշխատութեան, մէջ անդադար կը մանէ, կը հիւսէ իւր որսական ցանցը պատրաստելու համար: Եւ ի՞նչ է իւր նպատակը, գիտե՞ս, միայն ճանճիկ մի որսալ եւ իւր կեանք պահել:

Թող մտածեն մտաւոր մարդիկ եւ մեր աշխարհի ծոյլեր. եթէ սարդին համար ճանճիկ մի պէտք է, ո՛վ չի գիտեր թէ իրենց համար եւս հաց պէտք է: Զի մարդոյն կեանքը պահպանող հացն է, մարդն առանց հացի կը չքանայ: Մարդոյն ընկերական կեանք աշխատութեան զբաղումով կ'ապրի եւ կը յարատեւէ:

«Եթէ կայ աշխարհիս երկրագնդին վերայ ծայրագոյն եւ անտանելի բեռն մի, այլ ծոյլերուն կեանքն է»․ հարցուցին իմաստասէրի մի եւ նա այսպէս պատասխանեց։

Արդ ինչպէս տեսանք, սիրելիս իմ Սամուէլ, որ հարստութեան ծնող աշխատութիւնն է․ ուղիղ կը հետեւի, որ աղքատութեան ծնող ծուլութիւն եւ անգործ կեանքն է․ իսկ երկուցունց մեծ առաջնորդ, միայն՝ գիտութիւն եւ լոյսն է, իսկ միւսին՝ տգիտութիւն եւ կուրութիւն։ Վասն զի մարդոյն թշուառութեան բուն աղխաբեր արմատը՝ մտաւոր կուրութենէնկ'սկսի եւ կ'աճի։

Կը յիշես դու, Եւրոպիոյ գիտնոց կաճառէն յառաջ, մեր իմաստասէր Եղիշէն մարդոյ կոյր կեանքի նկարագիրը ճշդութեամբ կը հանէ․ երբ հազար երեք հարիւր տարի յառաջ կը տեսնայ նա Հայոց աշխարհի թշուառութիւն եւ անկատար կեանք, այսպէս կուտայ իւր վճիռը, թէ «Կոյր զրկի ի ճառագայթից արեգական, եւ տգիտութիւն զրկի ի կատարեալ կենաց»։

Այո՛, կուրութիւն կեանք չունի․ նա պէտք է միշտ խարխափի աշխարհիս հրապարակին վերայ եւ մերթ եւս իւր գլուխը պատէ ի պատ զարնելով ջախջախուի։

Այլ եւս համառօտենք այս դասը աշխատասէր եւ լուսասէր որդեակ իմ․ եթէ կը բաղձանք որ աղքատութիւն եւ կուրութիւն մեր աշխարհէն բարձուին, թշուառութեան աղբիւրի ակներ խցուին, եւ հարստութեան ու երջանկութեան ակներ բացուին, աշխատութիւն սիրենք ու պատուենք, հեղգամտութիւն եւ ծոյլ կեանք ատենք ու հալածենք մեր անձէն եւ մեր ընտանեկան սրահէն։

Իսկ դու, իմ ջանասէր որդեակ, որ մեր հայրենեաց մի պանդուխտ զաւակն ես, երբ կը յաջողի քեզ դառնալ քո հայրենի երկիրը, գործասիրութիւն եւ աշխատութիւն քարոզէ, ժրագործ եղիր, կեանքդ բեղմնաւորէ եւ բարի օրինակ հանդիսացիր քո հասակակից պատանիներուն առաջ։ Թող ի բաց ոսկին ու գանձ, տար իմ այս աշխատասիրութեան դասեր․ տար աւանդէ մեր հայրենեաց անուս, անդպրոց մանուկներուն․ ասա նոցա, թէ ձեր հայրեր պանդխտութիւն սիրեցին, օտարութեան մէջ մաշուեցան ու մեռան․ դուք ձեր հայրենի քաղցր ծոցէն ու գրկէն, հողէն ու ջրէն բնաւ մի հեռանաք։ Ասա թող աշխատին, գործասէր լինին եւ իրենց դառն քրտինք հայրենի հողին վերայ թափեն։ Այն հողն ու ջուր, զոր օրհներ է

*Աստուած, չատ Հաց ու Հարստութիւն կը տայ իրենց: Յիչէ դու եւ յուչ բեր նոցա Սողոմոնի օգտակար խրատ, թէ «Որ գործէ զերկիր, լցցի Հացիւ. եւ որ երթայ զՀետ դատարկու-թեան, լցցի աղքատութեամբ:»*

---

# Դ Ա Մ Է.

# ՈՒՂԻՂ ՏՆՏԵՍՈՒԹԻՒՆ ԿԵՆԱՑ

## ՀԱՑ ԵՒ ԲԱՆ

Մարդիկ կան, որ միայն հացով կապրին. մարդիկ կան, որ կը հրեշ-տականան, անհաց ապրիլ կուզեն. երկու դասն ալ միապէս կը խո-տորին ուղղութենէն: Արդար ու տնտես մարդն այն է, որ հացով եւ Աստուծոյ բանիւ միանգամայն կապրի աշխարհիս վերայ:

*ՈՒՂԻՂ տնտեսութիւն՝ մեր նիւթական եւ բարոյական կեանքին մէջ այն իմաստութիւն եւ խոհական տնտեսող ձեռքն է, որ գիտէ Հացիւ ու բանիւ միանգամայն իւր կեանքի պէտքեր Հոգալ, եւ Քրիստոսի խօսքին Համեմատ «Կայսերին՝ կայսեր տալ, եւ Աստուծոյն՝ Աստուծոյ»:*

*Այս տնտեսող ձեռք՝ պէտք է արդարութեան ու չափաւո-րութեան մէջ պաՀել. զի եթէ խիստ ընդարձակես զայն՝ չռայլ ու զեղխ կը լինիս. եւ եթէ սաստիկ կծկես՝ ագաՀ ու ժլատ կը լինիս. եթէ միայն քո անձին տաս եւ ընկերիդ մոռնաս, զըր-կող կը լինիս. եթէ կայսերին տաս եւ Աստուծոյն մոռնաս՝ ապերախտ կը լինիս. եթէ միայն նիւթական կեանքիդ Հա-մար Հացի պէտքեր Հոգաս եւ մոռնաս Աստուծոյ բան եւ բա-րոյական պէտքեր, դու յանժամ թերաՀաւատ եւ նիւթապաչտ կը լինիս, կարծելով թէ մարդոյն կեանք սոսկ Հացով կարող է ապրիլ: Եւ կ'ապրի, այո՛, եթէ մարդ յանձն առնու Հաւա-սարիլ անասնոց եւ միայն խոտով ապրիլ:*

*Գիտենք թէ Հաց մեր մարմնոյ սնունդ եւ աճումն է, բայց Հոգին ալ իւր սնունդ եւ աճումն ունի, եւ այդ՝ Աստուծոյ բանն է: Ուստի արդար տնտեսող ձեռք եւ միտք պէտք է որ նախ երկու ծայրայեղ կեանքէն զգուչանայ, ոչ առաւելու եւ ոչ նուազի. միանգամայն ոչ Հացը թողու եւ ոչ Աստուծոյ բանը: Այլ իւր կենաց այդ երկու մեծ ու կենսական պէտքեր առանց*

*ղրկանաց արդար բաժինով հոգայ. դիտելով նաեւ թէ մեր կեանքին բուն կենդանարար մասն հոգին է. զի ասաց Քրիստոս՝ «Հոգին է կենդանարար. մարմին ինչ ոչ օգնէ»:*

*Սամուէլ որդեակ իմ, եթէ դու հաց եւ բան միանգամայն կը սիրես, մտադիր լսէ այս դասը, որպէս զի կարենաս ուղիղ տնտեսութեամբ կառավարել քո կեանքը: Վասն զի առանց ուղիղ տնտեսութեան մարդոյն կեանքը իւր չափաւորութենէն կը խանգարի. գանձը՝ գանձարանէն կ'սպառի, եւ ցորեանը՝ շտեմարանէն: Սորա հետ եւ ի միասին կ'սպառի բանն հոգիէն, կրօն եւ հաւատ՝ սրտէն: Բայց խօսիմ նախ հացի եւ նիւթական կեանքի տնտեսութեան վերայ. վասն զի մարդիկ հացն աւելի կը հասկնան, բանին եւ հոգւոյ կեանքը իբրեւ վերացական գաղափար համարելով կը դժկամակին ըմբռնել զայն: Բայց անհնարին է հացն ու բան որոշել իրարմէ: Սոքա այնչափ սերտ կապակցութիւն ունին իրարու հետ՝ ինչպէս հոգին մարմնոյն հետ:*

*Խոհական որդեակ իմ, ինչպէս ուսար դու նախորդ դասիդ մէջ, թէ բուն հարստութեան աղբիւր մարդոյն գործունեայ աշխատութիւնն է, այսպէս նաեւ հարստութեան գանձարանին հսկող պահապանն՝ արթուն տնտեսութիւնն է: Մարդիկ աշխարհիս վերայ մէն մի իւր կարգին եւ վիճակին մէջ առանձին առանձին տնտեսապետ են, եւ ամէն մէկ հաշիւ ու համար, պարտիք եւ իրաւունք ունին: Թագաւոր՝ իւր աշխարհին տընտեսապետն է. իշխան՝ ժողովուրդին. հարուստն՝ իւր կալուածոց. աղքատն՝ իւր տնակին. քաղաքացին՝ իւր արհեստին եւ չահավաճառութեան. գիւղացին՝ իւր հողագործութեան. եւ իւրաքանչիւր գերդաստան ու ընտանիք՝ առտնին տնտեսութեան:*

*Երկրի մի ընդհանուր տնտեսութեան վիճակն ե՞րբ կը խանգարի, գիտե՞ս. երբ այդ կարգի մարդոց դասեր մեծ ու փոքր առ հասարակ կը խոտորին ուղիղ տնտեսութեան եւ պարտուց ու իրաւանց հաւասար չափէն:*

*Այլ պէտք է նկատեմք, որ այս խոտորումն միշտ բարձրագոյն աստիճանէն կ'սկսի, եւ կ'երթայ կը հասնի մինչեւ ի ստորին աստիճանը. այսինքն թագաւորին պալատէն մինչեւ յետին գիւղացւոյն տունը: Այս տեսութիւն շատ ճշմարիտ է, եւ շատ յայտնի է մեզ, զի դորա բազում օրինակներ կը տեսնամք աշխարհի մէջ եւ մեր աչքին առաջ:*

*Այսչափ միայն յիշելով շատ կը համարիմ ու կ'անցնիմ.*

*միտքս այն չէ, որ խօսիմ մեր քաղաքային տնտեսութեան վերայ. եւ թէ խօսիմ եւս՝ ո՞վ պիտի լսէ: Այլ միայն խօսիլ կ'ուզեմ իւրաքանչիւր մարդոց կեանքին եւ առտնին ընտանեկան տնտեսութեան վերայ, որ իմ պաշտօնին եւ չափաւորութեանս պարտիքն է, լինելով անարժան տնտես Աստուծոյ եկեղեցւոյն:*

*Յիշէ, որդեակ իմ, ԴՐԱԽՏԻ ԸՆՏԱՆԻՔ կոչուած աշխատութեանս մէջ այս պարտիքը փոքր ի շատէ վճարած եմ. բայց դարձեալ անձանձրոյթ կը կրկնեմ այս դասիդ մէջ զայն, որպէս զի Հայոց անտնտես ժողովուրդ, առաւել քաղաքացիք եւ մայրաքաղաքացիք, գէթ մեր գրելով եւ նոցա կարդալով խելաբերին. թէեւ ժամանակն նեղելով կը խրատէ զիրենք. վասն զի նորա ձայն եւ խիստ խրատ շատ կրթիչ ու զօրաւոր է քան զմեր գիրն ու քարոզ:*

*Բայց մարդիկ զարմանալի են. անցեալը շուտ կը մոռնան, եւ ժամանակն միշտ փոփոխական լինելով՝ բազում անգամ եւ շատ մարդոց համար տնտեսութեան եւ նախատեսութեան վարժապետ չը լինիր. այլ մանաւանդ երբ յանկարծ երկրին կամ առանձին այս եւ այն մարդոյն համար բախտ բերելով կ'ընդարձակէ յաջողութիւն, գիտես թէ յայնժամ առաւել շռայլութեան եւ գեղխութեան դասեր կ'ուսուցանէ: Մեք մեր ժամանակի եւ կեանքի մէջ դորա փորձ եւ ապացոյց տեսանք, որ այդ անստոյգ խաբող ժամանակ քսան տարի չարունակ այդ յոռի ու կարճամիտ դասեր սորվեցոյց Ասիական եւ առաւել Պօլսոյ ժողովուրդին:*

*Խրատ կուտամ քեզ, որդեակ իմ, ժամանակի բարեկամութեան վերայ երբէք մի վստահիր. նա միշտ խաբուսիկ է, երկու երես ունի, այսօր կը խնդայ եւ վաղը կը խոժոռի: Միշտ յուշիդ պահէ Սողոմոնին խրատ. «Ժամանակ լալոյ եւ ժամանակ ծիծաղելոյ»: Մինչ գանձարանդ գանձով, շտեմարանդ ցորենով լի են, մինչ շահավաճառութիւնդ յաջող է եւ դու առատ եւ կ'ուրախանաս անկասկած. ահաւասիկ այս է քո ծիծաղելոյ եւ բախտի ժամանակ:*

*Իսկ երբ բախտին անվստահ բարեկամութիւն յանկարծ իւր երեսը կը դարձնէ քեզմէ, շտեմարանդ եւ գանձատունդ կը դատարկանան, բազմաճոխ սեղանդ կը բարձուի, անդէն եւ մտերիմ բարեկամներդ կը հեռանան, որ քո խրախճանակիցներն էին. դու յայնժամ կ'ափշիս ու կը մնաս, թէ ի՞նչպէս պատահեցաւ քեզ այս: Ահաւասիկ այս եւս քո լալոյ ու դժբախ-*

տութեան ժամանակն է։ Եւ ես պատմեմ քեզ, թէ ի՛նչպէս կը պատահի եւ որչափ են աշխարհիս եւ մարդոց կեանքի պատահարներ, մանաւանդ մեր ժամանակին եւ մեր բնակած աշխարհին։

Հարուստ ու մայրաքաղաքիս մէջ հռչակուած ճոխ գերդաստանի մի հայր կը ճանաչեմ ես. մի օր տեսի զինքն, որ հոգւոց հանելով կը խօսակցէր իւր բարեկամին հետ, եւ ես լուին ունկն կը դնէի։ Նկատեցի նորա երեսը զի զուարթ եւ ուրախ չէր, ինչպէս յերեկն եւ յեռանդն, այլ թախծագին դիմօք նստեր էր, կը խորհէր ծանր հոգածութեամբ։

Իւր խօսակից բարեկամ հարցուց զորա պատճառը. Նա զարմանալով պատասխանեց նմա, միթէ դու չը գիտե՞ս, միթէ իմ պատահարս քեզ չըպատահեցա՞ւ։ Ո՛չ. ասաց բարեկամըն, չը գիտեմ։ Ուրեմն դու միայն կաս յՅրուսաղէմ եւայլն ... սկսեց ապա այլաբան ոճով մի պատմել։

Ես, ասաց, մի պողպատէ գանձու պահարան ունէի, այնչափ կուռ զրահաւորեալ էր, որ ամէն կերպ ճարտար գողութեանց դէմ կարող էր մրցիլ, որուն մէջ իմ բոլոր հարստութեանս գանձը ապահոված էր ու ես բնաւին անկասկած էի։ Մի օր բացի այդ իմ երկաթկուռ գանձարանս, ասացի թէ փոքր ինչ զբօսնում եւ խաղամ գանձերուս հետ։ Ո՛հ, ո՛հ, ի՛նչ. առանց բանալիի, առանց ո եւ իցէ ձեռքի ճարտարութեան՝ գանձի պահարանս փակուած տեղ ինքնին պարպուած էր։ Թուեցի կրկին եւ կրկին, տեսայ քանակութիւնն՝ նոյնն էր։ Բայց ի՛նչ օգուտ, զօրութիւն սպառած էր, ոչինչ արժէք չունէին ոսկիներս, գիտես թէ ամբողջ ժանտաջուրի մէջ թաթախուելով՝ հարիւրէն տասն հազիւ իբր թէ ոսկւոյ մասն մնացեր էր։ Այս մնացորդին վերայ գուրգուրալով կը կասկածիմ, գուցէ այն եւս առնի տանի նոյն ոսկեհան ժանտաջուրն։

Ես ի սկզբանն իբրեւ ապուշ կը լսէի այս պատիպատ պատմութիւնն. հուսկ ուրեմն հասկցայ այդ գանձատէր մեծատունին միտքը։ Բայց ես մտքիս մէջ դատեցի զինքն յիշելով Եզովպոսի իմաստուն առակը, թէ «Դու մսագործ էիր, քեզ ի՛նչ պէտք էր պայտառութիւն»։ Որովհետեւ այդ անձն՝ հայրենի արուեստով վաճառական էր, բայց շահու ցանկութիւն հրապուրեր էր զինքն սեղանաւորաց նման տոկոս առնելով դիւրաշահութեամբ եւս հարստանալ։

Այս փորձառու պատմութենէն խրատ առ, որդեակ իմ, որ առաւել շահու ցանկութեամբ արուեստափոխ չը լինիս։ Գիտ-

ցէր նաեւ, որ ամէն ժամանակն՝ իւր ժանտաջուրն ունի. եւ այնչափ ճարտարաձեռն դող է ժամանակ, որ դանձարանդ աւռանց բանալւոյ կը կողոպտէ: Անհոգ անկասկած մի լինիր, այլ միշտ վախցիր դու ժամանակի դժպատեհ բերմունքէն, ինչ որ այսօր է, վաղը նոյն չէ. «Շատ է աւուր չարն իւր», ասաց Յիսուս:

Զգայթակղիս, որդեակ իմ, թէ ես Աւետարանի պատուէրին դէմ՝ հակառակ կ'ուսուցանեմ քեզ, այն է, թէ «Մի հոգայք վասն վաղուին, վաղին վասն իւր հոգասցէ». եւայլն: Բացատրեմ քեզ Աւետարանին միտքը, որ ուղիղ մտքով հասկընաս նորա հոգին եւ իմաստը. եւ դու այնպէս չը դատես ինչպէս իմաստակներ կը դատեն, զոր ես լսեցի ու յոգիս վշտացայ. որպէս թէ Աւետրան իւր այդ պատուէրով կարգելու մարդոյն՝ ապագայի հոգն ու մտածմունք:

Ո՛չ, այդպէս չէ, բարեմիտ որդեակ իմ. Յիսուս իւր հաւատացելոց երբ այս աշխարհէն յետոյ՝ երկնից արքայութիւն խոստացաւ, նա կամեցաւ որ իւր հաւատացող ծառաներ հեթանոսաբար բազմահոգ նիւթապաշտ չը լինին, միայն իրենց յոյսն աշխարհի վայելից վերայ դնելով՝ այն անձնապաշտ մեծատան պէս կ'ասէր. «Անձն իմ, ունիս բազում բարութիւն ամբարեալ ամաց բազմաց. կե՛ր, ա՛րբ եւ ուրախ լեր»:

Այս յանձնապաստան ոգիէն յայտնի է թէ խիստ անիրաւ տնտես մի էր նա, որ միայն իւր անձին համար դանձեր էր, եւ իւր մեծութեան մէջ Աստուծով չէր պարծեր: Նա չունէր այն երկիւղած հաւատը, թէ ամէն բարիքներ Աստուծոյ ձեռքէն կ'ընդունի մարդն: Բարերար Աստուած, որում շատ պարգեւէ, կը կամի որ մարդն արդար տնտեսութեամբ մատակարարէ զայն. գէթ իւր աւելորդ ընչից կարօտ ընկերին բաժին հանելով:

Քաջ ի միտ առե՞ր դու թէ՝ ոչ Աւետարան եւ ոչ Սուրբ գըրոց ուրիշ բան կը պատուիրեն որ մարդ չնախատեսէ: Վասն զի մտածող մարդոյն ի բնութենէ բնական է նախատեսութեան հոգը. թող բանաւոր մարդն, ապաքէն տեսար դու աշխատութեան դասիդ մէջ մրջիւնին եւ մեղուին օրինակը: Եթէ այդ չքոտի կենդանիներ այդչափ նախադոհակ են իրենց զոյգն պարենի համար, անշուշտ մարդ քան զմրջիւն մեծ է. նա առաւել պարտաւոր է որ նախատեսէ եւ հոգայ իւր կեանքի պէտքեր:

Բայց զարձեալ նկատել արժան է, որ երկու ծայրայեղ անչափաւորութենէն հեռի մնայ մարդն, ոչ այնչափ նախատե-

սութեան խորերուն մէջ սուզանի, որով ագահութեան եւ թերահաւատ հոգերով խեղդուի. եւ ոչ այնչափ անհոգ աննախատես լինի, որ նոյնպէս շռայլութեան ու զեղխութեան հեղեղներով գլորի: Ուստի մեծ իմաստութեան չափ ու կշիռ պէտք է ուղիղ տնտեսութեան մէջ այդ միջին ճանապարհ գըտնել, ոչ ի ձախ խոտորիլ եւ ոչ ի յաջ:

Այո՛, աշխարհ, ժողովուրդ, եկեղեցի, ընտանիք, եւ նոյն իսկ մարդ իւր առանձին կեանքը տնտեսելու համար՝ իմաստուն խոհականութիւն պէտք է, գիր ու հաշիւ պէտք է, ուղիղ ճշդութիւն պէտք է. եւ այս ամենուն հետ արդար խղճմտանք եւ Աստուծոյ բան պէտք է, որ գիտնայ մարդ ուղիղ բաժանել թէ կայսերին եւ թէ Աստուծոյ բաժին:

Այլ որովհետեւ այս աշխարհիս վերայ մարդոց կարգ, վիճակ ու կեանք շատ զանազան են իրարմէ, սորա համար անձնիւր մարդ առանձին առանձին տնտեսութեան պարտիքներ ունի՝ առաւել կամ նուազ: Աշխարհիս իշխաններ եւ մեծատուններ փառասէր չենք համարիր, եթէ նոքա իրենց համբաւոյն, անուան եւ ճոխութեան համեմատ վայելուչ պերճութեամբ կեանք վարեն: Նոքա մեծ զրկանք կը գործեն ընկերութեան, եթէ ամենագծուծ կեանք վարելով՝ խիստ ժլատութեամբ կծկեն իրենց ձեռքը. եւ գետի նման յորդացած գանձին ճանապարհ գոցեն, որ չվազէ ժողովուրդին հրապարակը: Նոքա եթէ չշինեն շքեղ տուն եւ մեծամեծ ապարանքները, այդ ինքնին յայտնի է որ տան ճարտարապետ, շատ արհեստաւոր եւ գործաւոր մարդիկ վնասուելով իրենց վաստակէն՝ կը զրկուին: Նմանապէս եթէ նոքա թանկագին մատանիները չը դնեն իրենց մատը, եթէ ամէն օր տարազ տարազ հանդերձներով չը պըճնազարդին. եթէ բազմախորտիկ սեղանով չը լիանան. եթէ հրապարակի մէջ շրջելու համար չը պերճանան, եւ թողլով այդ ճոխապանծ կեանքը՝ հասարակաց անշուք ու սակաւապէս կեանքով ապրին. ո՞ւմ կը հասնի այս վնասը. գիտե՞ս, բոլոր արհեստաւորաց եւ շահավաճառութեան այլ եւ այլ ճիւղերուն. որոց բախտ եւ իրաւունքն էր այդ ամէն մեծածախ պէտքերը պատրաստել ու տալ. եւ այս փոխանակութեան միջոցով՝ հարուստներուն կուտած աւելորդ գանձը հանել ժողովուրդին հրապարակ. որպէս զի մէն մի իւր աշխատութեան բաժինն ընդունի:

Եւ գիտե՞ս դու, մեր ընկերական կեանքին հաւասարակշռութիւն պահող նժարներ՝ փոխանակութեան օրէնքն է: Վասն զի ո՞ւր տեղէն կամ ո՞ր աղբիւրէն կը ժողովին ու կը ծո-

*վանան աշխարհիս մեծատանց եւ արքունական գանձեր. այդ ինքնին մեզ շատ յայտնի է. զի դոցա մշտահոս վտակներ՝ ժողովուրդի աշխատութեան աղբիւրի ակներէն կը վազեն:*

*Իրաւունք է եւ մեծ իրաւունք, որ այդ գանձու վտակներ անդրէն իրենց ակներն դառնան եւ այսպէս միշտ շրջան առնուն, որով թէ ժողովուրդին եւ թէ մեծատանց դարաստաններ ու տունկեր միշտ ջրարբի լինելով՝ զուարթ ու պտղաբեր մնան:*

*Ուստի մեծապէս կը մեղանչեն ուղիղ տնտեսութեան օրէնքին դէմ այն մեծատունք, եւ առանց բռնացող յափշտակութեան՝ հարստահարիչ կը համարուին նոքա, եւ միանգամայն յառաջդիմութեան խափանարար կը լինին, երբ ժողովուրդի վաստակոց եւ շահերու աղբիւրներ խցելէն յետոյ արուեստներու յառաջդիմութիւն եւս կը խափանեն: Վասն զի աշխարհիս գեղարուեստից այնչափ անհուն, անհամար պէտքերը, զոր միշտ կ'ստեղծէ արուեստագէտ հանճարներու ձեռք, դոքա իրենց ամենամեծ մասերով՝ մեծատանց վայելման համար են:*

*Իրաւունք ունինք աշխարհիս մեծատանց որ ճոխ ու փառաւոր կեանք վարեն, միայն թէ չանցնելով չափաւորութեան ու վայելչութեան սահմանէն: Բայց թէ նոքա այդ իրաւունքը՝ միայն ճանաչեն իրաւունք, եւ զայն ըստ հաճոյից կատարելով՝ մոռնան ու չը յիշեն երբէք միւս բազմադիմի պարտքեր, այսինքն հացի տնտեսութիւն միայն հոգալով՝ թողուն Աստուծոյ բանը, թողուն բարեգործութեան պարտքերը, չըյիշեն երբէք ժողովուրդի աղքատներ, որբեր, հիւանդներ, անօգնական թշուառներ եւ իրենց դռներու առաջ ինկած վիրալից Ղազարոսներ, եթէ մոռնան նոքա իրենց մեծամեծ պարտականութեան գործեր առ եկեղեցին, առ ազգն, եւ ազգային դպրոցներ. եթէ ազգին յառաջդիմութեան արահետ ճամբայ մի բանալու համար՝ իրենց գանձարանին դուռը չի բանան. եթէ հայրենեաց բարգաւաճման համար՝ հայրենասիրութեան մեծ պարտիքներ չը կատարեն. եթէ բախտ յաջողեր է նոցա մեծ պաշտօնեայ եւ նախարար եղեր են երկրին կառավարութեան, ինչպէս առաքինին Յովսէփ, որ յիշեց Յակովբայ տուն ու լացաւ. այլ սոքա ցյաղ ունեն հաց եւ չը յիշեն երբէք Հայկայ քաղցած տունը. եթէ նոքա վերջապէս իրենց մեծութեան գանձ ու գութ փակեն առ մարդկային ընկերութեան թշուառութիւն. միայն ու միայն վայելեն Աստուծոյ տուած բարիքներ. նստին մեծահաց սեղանին վերայ,, հագնին բեհեզն ու ծիրանին, գէթ*

սեղանին փշրանքներէն եւ պատառ մի կտաւէն չի տան աշխարհիս փողոցներու մէջ ինկած Ղազարոսներուն, որպէս զի ողեպահիկ հաց ունեն եւ այդ պատառիկ կտաւով իրենց մերկութիւն ծածկեն կամ իրենց վէրքեր պատատեն. ամէն ամէն ասեմ քեզ, որդեակ իմ, այդպիսի մեծատունք անիրաւ են իրենց տնտեսութեան մէջ. անիրաւ են երկնից եւ երկրի առաջ, այսօր եւ յաւիտեան, որոց համար Քրիստոս իւր Աւետարանով սպառնացաւ. «Վա՛յ ձեզ մեծատանցդ, զի ընկալայք զմխիթարութիւն ձեր»:

Այսչափ դատեցինք աշխարհիս մեծատուններ: Բայց մեծապէս կ'անիրաւիմք, որդեակ, եթէ արդար տնտեսութեան բեռները միայն մեծատանց վերայ բարդեմք: Սկսիմք այժմ ժողովուրդի միւս դասերուն կեանքը դատել, որոց կարգ, վիճակ եւ աստիճան շատ բազմատեսակ է, եւ ամէն կարգի մարդիկ եւ ընտանիք՝ իւրաքանչիւր իրենց ունեւորութեան չափով ուղիղ տնտեսութեան օրէնքը պահելու պարտական են:

Ինչպէս իրաւունք տուինք մեծատանց, որ իրենց աստիճանին պատշաճող պերճութեամբ ապրին, նոյն իրաւունք կուտանք ժողովրդական դասերուն, որ իրենց վիճակին ու վաստակին համեմատ չափաւոր պարկեշտութեամբ ապրին: Բայց երբէք իրաւունք չենք տար ժողովրդական կարգի այն դասերուն, որոց շահ ու վաստակ շատ չափաւոր է, որ նոքա եւս ցանկութեան տենչով ձգտին մեծատանց պէս ճոխագոյն կեանքով վարիլ, առ ոչինչ համարելով՝ ոչ նախատեսութեան եւ ոչ չափաւորութեան տնտեսող կշիռը: Զի թէպէտ քաղաքային օրէնք ազատութիւն կուտայ ժողովուրդին որ իւրաքանչիւր մարդիկ՝ իրենց գոյից եւ ընչից բացարձակ տէր լինելով՝ ազատաբար վարուին, ազատաբար տնտեսեն իրենց կեանքը: Այլ երանի՛ թէ դորա համար եւս չափ ու սահման որոշէր երկրին կառավարութիւնն. որով թերեւս անչափասէր ժողովուրդը օրէնքով ու սրով ճանաչէր իւր չափաւորութիւնը: Բայց միթէ հա՞րկ էր դորա համար օրէնք. վասն զի թէ աշխարհի եւ թէ առտնին տնտեսութեանն՝ այդ օրէնքը շատ բնական է մարդոյն կենաց մէջ եւ իւրաքանչիւր մարդոց բուն իրենց կեանքէն, գոյքէն, եւ գանձէն կը բղխի: Խոհական ու բանաւոր տնտեսութիւնն կ'ուսուցանէ որ մարդ իւր շահերուն չափով կենցաղավարի:

Իսկ եթէ ճոխասէր լինելով իւր չափէն ի դուրս նկրտի, աշխարհ զայն կը դատէ ու կը մեղադրէ: Եթէ մարդ, որ ինքն

պարզ քաղաքացի մի է ու չափաւոր շահու տէր, պարզ տուն մի իրեն բաւական չի համարիր, պերճասիրութեան ցանկութիւն զինքն գրգռելով կը ձեռնարկէ իշխանի վայելուչ ապարանք մի շինել, ծանրագին կահ կարասիներով զարդարել· նոյնպէս նուաստութիւն կը համարի նա հետիոտս քալել, իշխանի կառք կը նստի, հրապարակէն կ'անցնի եւ կը ցուցամոլի աշխարհին առաջ· չարաչար կը դեղծանի նա անչափաւոր տնտեսութեան մէջ:

Սոյնպէս եթէ սոսկական արհեստաւոր մի, որուն ձեռքն ու մատունք արհեստագործութեան մէջ բրտացեր են, մեծամտի իշխանի մատանի դնել, եւ իւր կին իբրեւ իշխանուհի՝ սիրամարդի պէս պճնազարդելով ելնէ ու նազելով շրջի ժողովուրդի հրապարակի մէջ, ցոյց տալով թէ եւ ես կարող եմ մրցիլ հարուստ տիկիններուն հետ, եւս չարաչար կը զեղծանի տնտեսութեան մէջ:

Այլ ո՛վ չի գիտեր ու չը ճանչնար, թէ այդպիսիներն այն ընտանիքներէն են, որոց հացը՝ առաւօտէն մինչեւ իրիկուն կը տեւէ· այսինքն թէ օրական աշխատութեամբ ու շահով կ'ապրին դոքա: Ուստի յայտ է թէ՝ այդ պճնասիրութեան անհարկի պէտքեր թէ պարտքով եւ թէ խաբէական միջոցներով եւս հայթայթեն, ոչինչ փոյթ չունին եւ չեն հոգածեր երբէք, թէ այդպիսի անտնտես կեանքի մը ապագան՝ ընտանեկան կեանքին կործանումն է:

Ահաւասիկ այսպէս կը զեղծանի ուղիղ տնտեսութեան օրէնք, ուղղասէր որդեակ իմ, երբ ժողովուրդի կարգեր կ'անցնին իրենց չափէն ու սահմանէն, թողլով պարզութիւն եւ սակաւապէտ կեանք, չխնայելով իրենց դառն ու չարաչար աշխատութիւնն, մոռանալով թէ մարդ քանի՞ տաժանելի քրտինքով իւր հացը կը հայթայթէ աշխարհիս վերայ:

Ազգ, ժողովուրդ, քաղաքացի, գիւղացի, տէր, ծառայ, հարուստ, աղքատ, առ հասարակ ամէն կարգի մարդիկ երբ կեանքի տնտեսութեան ուղղութենէն կը խոտորին, նոցա ճանապարհ դէպ ի կորուստ կ'երթայ· նոքա միշտ իւրեանց հարըստութենէն կը թափին եւ աղքատութիւն շուտ կը հասնի նոցա վերայ ինչպէս մի արագոտն սուրհանդակ: Այսպէս հասաւ Բիւզանդիոնի մայրաքաղաքին վերայ· նոյն օրինակ պիտի հասնի բոլոր գաւառացի ժողովրդոց վերայ, եթէ անցեալ փորձերէն եւ Բիւզանդացւոց տնաւեր օրինակէն ուշաբերելով չխրատուին:

Է՛, սիրելիդ իմ Սամուէլ, քաջ ի միտ առի՞ր տնտեսութեան

այս դասն, դու որ դեռ ուսանող ես եւ տակաւին տնտեսական կեանքին մէջ չի մտար: Բայց քո որդիական մեծ պարտիքն է, գիտնալ ու երախտագէտ լինել. թէ ուսմանդ ու դաստիարակութեանդ համար որչա՞փ անխնայ ծախսեր արած եմ. այս մասին մէջ՝ տնտեսութեան հաշիւն իմ չափէն անցուցի, այն ապագային յուսով, յորում կեանքիդ պտղաբեր արդիւնքը բազմապատիկ պիտի քաղեմ:

Ուսիր, որդեակ իմ, ուսիր այժմէն, որ այն ապագային մէջ, յորում գուցէ ես ի գերեզման իջած լինիմ, դու ողջ մնալով բարւոք տնտեսես քո կեանք եւ հայրենի ընտանիք: Ես հարուստ վաճառաշահ քաղաքացի չեմ, որ բազում գանձ թողում քեզ ժառանգութիւն: Մի պանդուխտ գիւղացի հայր եմ ես, եւ քո ժառանգութիւն՝ մեր գեղի հողն ու դաշտն է: Ես հող միայն կը թողում քեզ, հող, որ հազար անգամ ոսկեգանձէն անսպառ անկողոպուտ գանձ է. զոր ես քո պապէն ժառանգեցի, եւ այդ անգին աւանդ ողջ ամբողջ պահեր եմ մինչեւ ցայսօր: Եօթն անգամ ի պանդխտութիւն ելայ. եւ չուզեցի բնաւ որ թիզ մի գետին վաճառեմ, մինչ անձկութիւն զիս կը ստիպէր եւ պարտատեարք զիս ի բանտ կը վարէին: Այլ միշտ աշխատեցայ ամէն բան զոհել ու հողային կալուածներս պահել:

Ուստի զքեզ պարտական կը կացուցանեմ, որդեակ, որ հօրդ օրինակին հետեւիս, բոլոր կեանքովդ ջանացիր գիւղական տնտեսութեան մէջ յառաջդիմել: Ես քո միտք այս դասերովս մշակեցի, որպէս զի դու եւս քո հողերդ ու դաշտերդ բարւոք մշակես: Տես դու յայնժամ այն մեր արգաւանդ հողերն ո՞րչափ առատ խոտ ու ցորեան պիտի տան քեզ:

Եթէ ողջ մնամ ու հետ քեզ դէպ ի հայրենիք դառնամ, վա՜յ, ո՞րքան պիտի հրճուի հոգիս, երբ տեսնամ քո յառաջդիմութիւն գիւղական տնտեսութեան մէջ, որով դու բարի օրինակ պիտի լինիս այն խեղճ գիւղացւոց որ, հողագործութեան արհեստին մէջ դեռ մանուկ մնացեր են: Միթէ իրաւո՞ւնք ունինք մեղադրել զիրենք, երբ ուսումն չունին: Իմ եւ քո սեպուհ պարտիքն է գեղացի մանուկները զարգացնել եւ կարեւոր կրթութիւն տալ: Փորձով կը տեսնաս դու թէ ի՞նչպէս մանկակիցներդ շուտով կը յառաջդիմեն: Չգիտե՞ս դու թէ գիւղական դաշտի ազատ մանուկներ քանի աշխոյժ եւ կորովամիտ են:

Վերջին բան, վերջին մի քանի խրատ եւս աւանդեմ քեզ,

*որդեակ, եւ այսպէս աւարտեմ այս կրթական դասդ, որ աշխարհիս վերայ կեանքդ ուղղավարող ուղիղ տնտեսութեան ղեկն է: Այս ղեկն՝ քո հերկագործութեան մաճին պէս ուղիղ բռնէ, եւ մի թողուր երբէք որ խոտորի. զի այդ է միայն որ կեանքիդ բոլոր ակօսներն ուղղութեամբ կը վարէ. եւ մինչեւ ի գերեզման քո հաց եւ հարստութիւն չի պակսիր: Զգո՛յշ, զգո՛յշ, Աստուծոյ բան չարհամարհես եւ միայն հացով ապրիս դու. յայնժամ կը մոռնաս մարդկութեան շնորհն ու պատիւ, անասնոց կը հաւասարիս. կ՚ապիրատիս նաեւ նախախնամող երկնից Հօր դէմ, երբ նորա հացն ուտես եւ զայն չօրհնես: Սոսկ բերանոյ օրհնութիւն բաւական չէ. այլ եւ պարտական ես արդեամբք փառաւորել զայն: Երբ այգիդ կը կթես՝ ճռաքաղ մի առներ. երբ արտերդ կը հնձես՝ թափած ու մնացորդ հասկեր թող, որ այրիներ, որբեր եւ աղքատներ ժողովեն զայն: Այսպէս կը պատուիրէ Աստուծոյ օրինաց Սուրբ Գիրք: Ամէն արմտիքէն բաժին ու տասանորդ տուր Աստուծոյ. «Պատուեա՛ զՏէր ի քոյոց արդար վաստակոց, եւ հան նմա պըտուղ ի քոց արդարութեան արմտեաց: Զի լցցին շտեմարանք քո ցորենով եւ հնձանք գինեաւ քով առաւել եւս բղխեսցին»: Ագահ Կայենի նման անուղիղ մի բաժաներ. այլ արդար Աբէլի պէս պտուղդ հաճոյապէս նուիրէ Աստուծոյ:*

*Այս է աւասիկ հացին ու բանին ուղիղ տնտեսութիւն, եւ ես կ՚օրհնեմ զքեզ, որդեակ իմ, որ բոլոր կեանքիդ մէջ հացն առանց Աստուծոյ բանին չուտես. այլ հացն ու բան ի միասին խառնելով կեր, որպէս զի կեանքդ կատարեալ լինի, եւ դու թէ առ Աստուած եւ թէ առ մարդիկ պարտիքներդ կատարելով իբրեւ արդար ու հաւատարիմ տնտես ապրիս աշխարհիս վերայ: Յիշէ Աւետարանին առակը, քեզ յանձնուած քանքարը շահեցուր. զի Տիրոջ առջեւ պատասխան ունիս տալ, եթէ անհոգութեան վարշամակին մէջ ծրարելով անշահ պահես զայն: Իսկ եթէ տոկոսով հանդերձ հատուցանես, Քրիստոս զքեզ կը գովէ. «Ազնի՛ւ ծառայ բարի եւ հաւատարիմ ,որով ի սակաւուդ հաւատարիմ եղեր, ի վերայ բազմաց կացուցից զքեզ. մուտ յուրախութիւն Տեառն քո:»*

## Դ Ա Ս Ը.

# ԻՆՔՆԱՇԽԱՏ ՅԱՌԱՋԴԻՄՈՒԹԻՒՆ

Ինքնաշխատութիւն՝ մարդոյն բնական պարտիք եւ արդար քըրտինքն է, իւր կեանք պահող ամենէն առաւել պտղաբեր յոյսն է: Անիրաւ է մարդ, թէ ուրիշի քրտանց ու ձեռաց հացին ըսպասէ. «Զվաստակս ձեռաց քոց կերիցես. երանի՛ է քեզ եւ բարի եղիցի», կը խրատէ Դաւիթ:

*ՍԻՐԵԼԻԴ իմ, Սամուէլ, մարդոյն ընդհանուր աշխատութեան դասն ուսար, եւ նոյն աշխատութեան արդիւնքն ուղիղ տնտեսելու դասն ուսար. այժմ եկաւ կարգն որ ժողովուրդին ինքնաշխատութեան դասն սկսիմ քեզ. ուշի ուշով միտ դիր դու. վասն զի այս ամենակարեւոր դասն է, աշխարհիս այլ եւ այլ ժողովրդոց յառաջդիմութեան, եւ բարգաւաճման՝ միակ պայմանն ու ճանապարհն:*

*Քաջ ի միտ առ, որդեակ իմ, եւ ես թուեմ քեզ, թէ՝ ի՞նչ են ժողովրդոց ինքնաշխատութեան պարտիքները, զորս նա պէտք է իւր բոլոր կենաց մէջ աշխատելով, տքնելով կատարել ջանայ:*

*Աշխարհիս վերայ ոեւիցէ մի ազգ եւ ժողովուրդ, իւր կեանք պահող, տնտեսող ու բարւոքող քրտնաջան մշակն է, իւր արտ վարող մաճկալն է, իւր սերմ ցանող ու հնձող ինքնավարձ աշխատաւոր է, իւր դրախտն ու դարաստանն տնկագործող պարտիզպանն է, իւր տուն շինող ճարտարապետն է: Իւր ընտանեկան կեանքին պէտքերն հոգացող հայր ու տնտեսն է, իւր հաց ու սեղան պատրաստող մատակարար ձեռքն է, իւր արուեստ հնարող հանճարին աղբիւրն է, իւր գործարանին մեքենաները դարձնող մղիչ շոգին է, իւր անձին մերկութիւնը պատսպարելու կտաւագործն է. իւր ամէն շահավաճառութեան վաճառական եւ խանութպանն է, իւր դպրոցներ շինող ու կարգադրող իւր ընկերական հանգանակութիւնն է, իւր մանուկներ գրկող դաստիարակն է, իւր ներկային մէջ գործող ձեռքն՝ եւ ապագային մէջ նախատեսող աչքն է. վերջապէս ժողովուրդին ինքնաշխատութիւն ամենայն ինչ է, այս աշխարհիս վերայ իւր առանձին յառաջդիմութեան համար:*

*Պէտք է խելամտի ու ճանչնայ ժողովուրդ թէ՝ իւր կեանքըն արդիւնաւորողն՝ միմիայն իւր ինքնաշխատութեան ձեռքըն է, եւ գիտե՞ս որչա՞փ շահաբեր է։ Մի ազգ եւ ժողովուրդ՝ եթէ իւր կեանք եւ բախտ ուրիշէ կ՚ակնկալէ, շատ բնական եւ յայտնի է թէ՝ իբրեւ երազայոյս պահ մի գիշերուան ծանր քունին մէջ կը խայտայ եւ առաւօտ ոչ ինչ կը գտնէ։*

*Մշակ ժողովուրդին անժխտելի ու բնական պարտիքն է, որ իւր հացն ինքնին հոգայ, իւր արտն ինքն քաղէ· ապա թէ ոչ՝ արտն առանց քաղելու կը մնայ· կը կծղի ու կը թօթափին ցորենահատեր, եթէ նա դրացւոյն կամ բարեկամին սպասէ։ Այս ճշմարտութիւն իմ կեանքիս մէջ փորձով ճանչցած եմ· դու որ դեռ անփորձ ես, ուշ դիր, ես մի հնոց առակով պատմեմ քեզ։*

*Արտուտ թռչունն՝ որ թերեւս արտ ուտելէն առեր է այս յարմար անունն, իւր բոյն հասկաւոր արտի մի մէջ դնելով՝ ձագեր հաներ է։ Նախատես ձագամայրն միշտ կ՚ապսպրէ իւր ձագերուն, որ միտ դնեն արտին տիրոջ, թէ ի՞նչ կը խօսի, երբ նա իւր տղուն հետ կուգայ տեսնել թէ՝ արտին հնձելու ժամանակն հասե՞ր է։ Առաջին անգամ կը լսեն ձագեր եւ կը պատմեն իրենց մօրն, թէ՝ հայրն իւր տղու կ՚ասէր· Որդեակ, արտը հասնելու մօտ է· գնա խօսիր մեր դրացիներուն թող մեզի յօգն գան, արտն ի միասին քաղեմք։ Արտուտն կը պատասխանէ, դեռ անհոգ կեցէք, քանի որ արտին տէր՝ դրացիներուն օգնութեան կ՚սպասէ, այս արտը չի քաղուիր։ Երկրորդ անգամ մտիկ տալով ձագերն՝ այս կը պատմեն թէ՝ գեղացին իւր տղուն կ՚ասէր· դրացիներ չեկան, գոնէ բարեկամներ հրաւիրէ։ Խելացի արտուտն դարձեալ նոյն կը կրկնէ· հանգիստ եղէք, ձագերս, երբ գործը բարեկամներուն մնացեր է, յաւիտեան չի քաղուիր արտը։*

*Երրորդ անգամ կը պատմեն ձագերն, թէ՝ արտին տէրն՝ վա՛շ, վա՛շ անելով իւր տղուն կ՚ասէր· որդեակ իմ առ դու քո մանգաղ եւ ես· մենք մեր արտը քաղենք· այլ եւս դրացեաց, բարեկամաց սպասելն ընդունայն է։ Ուշադիր ձագերն երբ այս վերջին խօսք կը պատմեն իրենց մօր, մայրն կը պատասխանէ· այժմ ստոյգ կը հաւատամ, թէ՝ արտը պիտի քաղուի· պէտք է զձեզ տեղափոխեմ։*

*Այս կրթիչ առակի օրինակէն արդեօք պիտի հասկանայ ու խելաբերի՞ իւրաքանչիւր առանձին մարդ եւ ժողովուրդ, թէ՝*

*աշխարհիս դրացիներ եւ բարեկամներ եւս իրենց արտեր ունին քաղելու:*

*Եթէ այս այսպէս է, ինչպէս որ է ճշմարիտ. ուրեմն թող ժողովուրդ իւր յոյս միայն իւր ինքնաշխատութեան վերայ դնէ: Եթէ իւր կեանք պահելու համար հաց հարկաւոր է, թող առնէ մանգաղ եւ երթայ իւր արտը քաղէ: Եթէ ջուր պէտք է իւր չորցած արտը ոռոգելու համար, թող խցուած աղբիւրներու ակերն բանայ, փտակներու լցուած առուները յորդէ: Եթէ հանդերձէ եւ այլ զանազան պէտքերու համար կտաւ կարեւոր է, թող բամբակ ցանէ, կտաւ գործէ: Իսկ եթէ փափկութեան պերճանք սիրելով՝ կերպասի կը ցանկայ, թող շերամագործութեան արուեստին հետեւելով՝ յառաջ տանի զայն:*

*Եթէ նախանձելով Եւրոպական ազգաց գեղեցիկ օրինակին՝ գիւտեր եւ արուեստներ հանճարել կ՚ուզէ, թող նախ դպրոց երթայ, գիտութիւն սորվի, ինքնաշխատութեան մէջ տքնի, ինչպէս նոքա:*

*Իսկ եթէ կ՚ասէ. ես ի՞նչպէս ինքնաշարժ ինքնաշխատ լինիմ եւ յառաջ երթամ...*

*Դորա դարման եւ ճարն ի՞նչ է, գիտե՞ս. դպրո՛ցն է, դըպրո՛ց, եւ անյուսահատ ինքնաշխատութիւն. ուրիշ ոչինչ: Ես կը տեսնամ զքեզ այդ քո վիճակին նկարագիրը՝ շատ ճշգրիտ է: Բայց դու պէտք է անվկանդ մնաս ոգւոյդ մէջ. առանց երբէք լքանելոյ շարունակես ինքնաշխատութիւնդ, գիտնալով, որ յառաջդիմութեան ուղին՝ ինքնանուէր շահատակութեամբ կը բացուի: Ես գիտեմ որ խոչեր ու խութեր կան քո ճամբոյն վերայ. մի սպասեր որ ամբողջ փոխուին դոքա եւ դիւրանան քայլերդ: Մի՛ սպասեր դու, ինչպէս այն ապուշ ու բթամիտ ճամբորդն, որ գետափին մօտ կեցած կ՚սպասէր մինչեւ անցնի գարուն, անցնի ամառն, աշուն գայ, ցամքի գետի ջուրը եւ ինքը անթաց ոտքով անցնի:*

*Ժողովուրդ, դու ինքնին գիտես, մեր աշխարհ յորդ անձրեւներ եւ ձիւներ շատ ունի. մեր գետերու ջուրեր ով գիտէ երբ կը ցամքին. ուրեմն սրունքդ բաց, անվախ մտիր ի գետն, մինչեւ պարանոցդ ջրաթաղ եղիր եւ անցիր ի միւս կողմն:*

*Իսկ եթէ կ՚ուզես գետերու յորդ ջուրերէն, աշխարհիս ծովերէն անկասկած անցնիլ, քաջ ուսիր լողալու արուեստն, եւ ո՞ւր տեղ, այդ եւս դպրոցի լճին մէջ. թղթով, գրով, եւ ինքնաշխատ կրթութեամբ:*

*Թերեւս դու այնպէս կը կարծես, որ արեւմտեան ժողո-*

վուրդին յառաջդիմութեան քայլերուն դէմ ծովեր ու գետեր չելան։ Ո՛չ, դու կարդա այդ ժողովուրդի պատմութիւն եւ պիտի ապշիս ու զարմանաս, որ նա ջրոյ եւ ծովու հոսանքներէն անցաւ, մինչեւ ի գլուխ տարաւ յառաջդիմութեան եւ գիտութեան յաղթանակ։ Դու մի՛ վհատիր երբ կը տեսնաս, որ ուղիներդ դժուարին առապարներ են. այդ ամէն ինքնաշխատութեան ոտքիդ առաջ կը հարթուին եւ կը դիւրանան. միայն թէ դու մի՛ վատասրտիր։

Ձեռքերդ ծոցէդ հան, մի անգամ ինքնաշխատութեան սկսէ. ի զուր է, յուսաեքէ օգնութիւն մի՛ սպասեր, միթէ փորձով չը տեսա՞ր թէ՝ աշխարհիս վերայ քեզ ոչ ոք օգնական կայ, ուստի ի բերան ա՛ռ Դաւթին այն բան եւ աչերդ դէպ երկնից բարձրութիւն դարձնելով աղօթէ «Համբարձի զաչս իմ ի լերինս, ուստի եկեսցէ ինձ օգնութիւն.» Ասա դու. «Օգնութիւն ինձ ի Տեառնէ եկեսցէ, որ արար զերկինս ի զերկիր։» Մի մոռնար, կարդա նաեւ Դաւթին միւս խրատ. «Մի յուսայք յիշխանս որդիս մարդկան. զի ոչ գոյ փրկութիւն ի նոսա։» Եւ թէ. «Երանի ազգի որոյ Տէր Աստուած Յակովբայ օգնական է նմա եւ յոյս նորա ի Տէր Աստուած է։»

Ուրեմն յոյսերդ յԱստուած եւ ի քեզ ժողովէ, վհատեալ ժողովուրդ, եւ զո՛նէ գիտցիր այսուհետեւ թէ՝ դու ինքդ ես միայն քեզ օգնական։

Այո՛, քո ձեռքն է քեզ օգնական, երբ գործես, արուեստահնար լինիս։ Քո աչքն է քեզ օգնական, երբ նայելով չուրջդ՝ հեռատես լինիս, ներկայէդ քո ապագան չափես ու տեսնաս։ Քո միտքն է քեզ օգնական, եթէ զայն լուսաւորես եւ թողուս տգիտութեան մտաւոր ու կամաւոր կուրութիւնը։ Քո դպրոցներն են քեզ օգնական, եթէ մանուկներդ կրթես գիտութեամբ։ Քո հայրենի հողն է քեզ օգնական, երբ դու զայն արհեստիւ մշակելով բեղմնաւորես։ Քո բազմարօտ լեռներ եւ հովասուն հովիտներն են քեզ օգնական, եթէ խաշնադարման լինիս եւ յիշես դու այգետունկ որթերդ ի պարտիզի ծառերն են քեզ օգնական, եթէ քաջ մշակելով՝ գինուով ու պտղով լնուս վաճառանոց։ Քո տնտեսական ճարտարամտութիւնն է քեզ օգնական, որ դաշտին մէջ հող սիրես, եւ քաղաքին մէջ արուեստ եւ վաճառականութիւն։ Քո հայրենեաց միութեան սէրն է քեզ օգնական, եթէ իբրեւ մայր գիրկդ բանաս, պանդուխտ ու գաղթական որդիներդ անդրէն ժողովես եւ չը թողուս որ այլ եւս գրկէդ հեռանան։ Քո հայրենի Կրօն, Հաւատ ու Եկեղեցին են

քեզ օգնական, թէ չմեղկանաս ի կրօն, չը լինիս հաւատաքրքիր, այլ պինդ պահես հայրենի կրօնիդ սուրբ աւանդ, զոր արիւնով ու մահով քո նախնիք քեզ անկորուստ աւանդեցին: Վերջապէս քո ընկերսիրութեան եւ միայօդ հոգին է քեզ օգնական, եթէ զայն ուխտիւ պահես, եւ ի բաց մերժես երկրապառակութեան ոգին, որ աւերիչ քանդիչ է ազգին ու հայրենեաց:

Է՛, անձկալիդ իմ Սամուէլ, պահ մի զքեզ թողլի, խօսքիս դէմը առ ժողովուրդն ուղղեցի եւ դու միտ դրիր. աշխատութեանս աւա՛ղ կը կարդամ. որչա՞փ այսպիսի ոգեւոր յորդորներ, խօսքեր գրեր ու դրեր եմ հայ ժողովուրդին համար: Նա միշտ մտադիւր լսեց ու կարդաց, բայց դեռ կը տատամսի, վարանամիտ կը լինի. չը համոզուեցաւ թէ՝ իւր հաց, իւր կեանք ու բարեկեցութիւն, իւր փառք եւ յառաջդիմութիւն՝ միմիայն իւր ինքնաշխատ ձեռքով, ոտքով ու մտքով կը լինի. իւր ճակատին քրտանց վաստակով կը լինի, իւր առանձին խելքով ու խորհրդով կը լինի: Ընդունայն է օտարի ձեռքէն ու սեղանէն հաց սպասել: Ինքնաշխատութեան յաջող ժամանակն միշտ ներկայն է, ինքնաշխատ մշակ ներկային մէջ լիաբուռն կը ցանէ, որ նա ապագային մէջ առատապէս հնձէ:

Թո՛յլ տուր այժմէն ողբամ, որդեակ իմ, թէ Հայ ժողովուրդ սրտի մտօք այս դասեր չլսէ, ժամանակն աշխարհիս մեծ վարժապետն է, դժպհի գաւազանով պիտի լսել տայ իրեն, եւ նա յայնժամ իբրեւ դպրոցի բթամիտ մանուկ պիտի նստի ու լայ, հեկեկալով ու կոծով սերտէ այս դասերը:

Իսկ դու, սրամիտ որդեակ իմ, ականջդ բաց, առանց գաւազանի լսէ իմ դասերս. յիշէ որ զքեզ երբէք ոտնապիրկ գանով չխրատեցի: Յիշէ թէ ես իմ հայրական պարտքս լիովին կատարեցի. թէ հացով, թէ ուսմունքով միապէս ու հաւասար անկարօտ կեանքդ զարգացուցի: Այսուհետեւ զքեզ ազատ կը թողում, որպէս զի դու ինքնին քո ինքնաշխատ ոտքով յառաջադիմես դէպի լուսագոյն ապագայն, որչափ մտքիդ կորով եւ յարատեւող ջանքդ քեզ ասպարէզ կուտան:

Դու մինչ մանուկ էիր, իմ ծնողական պարտիքս էր որ ձեռքէդ բռնելով օգնէի տկար քայլափոխութեանդ: Այժմ ջիլերդ ու սրունքներդ զօրացան, ուժաւոր կորիճ մի դարձար, այլ եւս ազատաքայլ կը թողում զքեզ: Ես բնաւ չկամիմ նմանիլ այն կարճամիտ հայրերուն, որք մինչեւ ցմահ խնամակալ լինել կ՚ուզեն իրենց արբուն հասակ որդիքներուն. եւ այս յոռեգոյն դաստիարակութեամբ տիրապետ կը լինին, կը ջլատեն ու կը

*ճնշեն նոցա գործունէութեան ոգին. եւ յետոյ կը դառնան գանգատ կը բառնան թէ՝ մեր զաւակներ անգործ անպիտան են:*

*Խորհելոյ եւ գործելոյ ինքնաշխատութեան ազատ իրաւունք կուտայ քեզ, բայց երբէք չեմ կամիր, որ դու այդ ազատութեան մէջ զեղծանիս, յանձնապաստան լինիս, անխորհուրդ վարուիս եւ բարձրութենէդ դահավիժիս ի վայր, այլ այժմէն խրատ կ՚աւանդեմ քեզ, որ ինքնաշխատ գործերուդ մէջ յարգես ու պատուես ծերերուն խոհական խրատ եւ խորհուրդ, վասն զի նոքա կեանքի փորձառութեան դասերը քաջ սովորած են. մինչդեռ դու անփորձ եւ խակ ես, միայն խօսքով ու գրով գիտես:*

*Գնա՛, զօրացիր, որդեակ իմ, գիւղական կենաց ինքնաշխատ արդար մշակութեանդ մէջ ձեռքովդ ցանէ, ձեռքովդ հնձէ, հացդ ու սեղանդ ձեռքովդ պատրաստէ. նստիր, քրտանցդ իրաւունքովդ կեր քո ձեռաց վաստակ. այս թող լինի միշտ քո բարեվայել կեանք. քանի որ կենդանի եմ, տեսնամ քո աշխատութեան յառաջդիմութիւնն, եւ հրճուի հոգիս: Ես մըրցանակ կուտամ քեզ միայն հայրական օրհնութիւնս եւ աշխարհէն ոչինչ բան մի՛ սպասեր. ծանիր, որ քո ճշմարիտ մըրցանակն՝ ինքնաշխատութեանդ արդեանց, քո ձեռահիւս պսակըն է, եւ այն բաւ է քեզ:*

———o———

## *ԴԱՍ Թ.*

## ՀԱՆՃԱՐ ԵՒ ԸՆԿԵՐԱԿԱՆ ԶՕՐՈՒԹԻՒՆ

Ինքնաշխատութիւն, հանճար եւ ընկերական զօրութիւն. այս երեք հզօր միացեալ դաշնակիցներ աշխարհիս կեանքը յեղաշրջելով յառաջդիմութեան հրաշքներ գործեցին, եւ նոյն իսկ մարդըն ինքնին կապշի կը զարմանայ թէ ինքն է գործող արդեօք:

*ՆԱԽՈՐԴ ինքնաշխատութեան դասով ուսար, որդեակ իմ, թէ աշխարհիս վերայ ժրագործ մարդոյն ձեռք իւր ինքնաշխատ զօրութեամբ կարող է յառաջդիմել առանձին մարդկային ընկերութեան մէջ: Իսկ այս դասին մէջ պիտի ուսանիս թէ ի՞նչ է զօրութիւն ընկերական միութեան, որոյ առաջ աշխարհիս դժուարութիւններ կը դիւրանան. եւ ինչ որ մի մարդոյն ձեռք կարող չէ գործել, ընկերական հոգին միութեամբ կը մե-*

ծագործէ: Վասն զի մարդոյն ինքնաջան զօրութիւն՝ եթէ ընկերական միութեան ուժին հետ չմիանայ, եթէ առանց հաղորդող տարածութեան՝ իւր զօրութեան արգասիք միայն իւր մէջն ամփոփելով պահէ, յայնժամ այդ առանձնական զօրութեան սերմ ոչ կ՚աճի, ոչ բեղմնաւորելով կը բազմապատկի. այլ կը մնայ նոյնչափ, որչափ մի անհատ մարդ իւր ինքնաշխատութեամբ ձեռք բերեր է:

Սորա համար մի պարզ ու համոզիչ օրինակ տամ քեզ: Եթէ շոգւոյն մեծ զօրութիւն գտնող հեղինակն՝ այդ աշխարհաշէն գիւտ իւր մտքին եւ տան մէջ թագուցանէր ու չհանէր զայն ընկերութեան հրապարակն, ի՞նչ արդիւնք կ՚ընծայէր աշխարհին, ոչինչ: Ինքնաշխատ հեղինակն իւր հանճարած գիւտին հետ կը մեռնէր, եւ շոգին իւր մաշած ուղեղին հետ կը ցնդէր գերեզմանին մէջ. եւ այսպէս հանճարն եւ գիւտ ի միասին կը կորսուէր:

Այս մի օրինակ քեզ բաւական է. դու ինքնին իմաստասիրէ եւ կ՚իմանաս, թէ մարդոյն ինքնաջան զօրութեան հետ՝ պէտք է միանայ ընկերական միութեան զօրութիւն. ապաթէ ոչ՝ հանճարին սերմն ապարդիւն կը մնայ, կամ շատ շատ՝ իւր սերմնագիւտ մշակին միայն առօրեայ հաց կը հայթայթէ:

Մի մարդ, մի զօրութիւն, մի հանճար թող որչափ կ՚ուզէ ինքնաշխատ լինի, մեր ընկերական աշխարհ չի շիներ: Դու տեսե՞ր ես, որ մի մարդ՝ մի քաղաք կամ գիւղ շինէ. կամ մի թագաւոր ինքն առանձին մի տէրութիւն կազմէ առանց ժողովուրդին:

Եւ, որդեակ իմ, երթանք քեզ հետ ի պարտէզ, ես ցոյց տամ քեզ բնական օրինակները: Տես դու այդ ձեռատունկ ծառեր, երկիրը փորէ, արմատներ դիտէ. դէպի ի վեր նայիր դէպ յարեւ բարձրացած աճեցուն ճիւղերը դիտէ. կա՞յ մի ծառ, որ մի արմատով եւ մի ճիւղով աճի ու պտղաբերէ: Երթանք ի դաշտ, որ քեզ աւելի շատ բնական է, եւ դու տեսեր ես ու գիտես. թէ մի մշակ մի եզով կամ մի լծով կարո՞ղ է գութան լծել եւ գետին վարել, մանաւանդ երբ կորդացած լինի, կամ սերմնացան, որ մի հատիկ ցորենով մի ամբողջ արտ ցանէ:

Շատ ճշմարիտ է հիներուն առածը, թէ մի ծաղիկ գարուն չի բերեր. մի մեղու մեղր չի շիներ. եւ ոչ իսկ պուտ մի ջուր՝ ջրաղացի ծանր քարը կը դարձնէ. մի կաթիլ անձրեւ՝ մի աղբիւր եւ մի վտակ գետեր չեն կազմեր:

Այդ ամենուն պատճառ մի՛ հետազօտեր, ինքնին յայտ–

նի է․ երբ փոքրիկ զօրութիւն մի՝ մարդոյ մէջ կը մնայ առանձին առանց ընկերական մեծ զօրութեան, թէ հանճարով եւ թէ բազկով հուժկու մարդն ապիկար կը դառնայ․ նա մի խելքով եւ ուժով ոչինչ կարէ գործել աշխարհիս վերայ․ խեղճ ինքնաշխատ մարդ կը վարանի ինքնին․ կը շիջանի նաեւ հանճարին լոյս առանց իւր շուրջը լուսաւորելու:

Այո՛, հանճարին զօրութիւն՝ գաղափարի աղբիւրն է․ որ կը բղխի մարդոյն մտաւորական ակնէն․ եթէ ջրոց վտակներու պէս վազելով չը ծաւալի ընկերութեան հրապարակը, կամ նախանձոտ հանճարը ջանայ իւր ջրով միայն իւր պարտէզ ջրել, եւ չիմանայ թէ հանճարին փոքրիկ աղբիւր քանի վազէ ու տարածի՝ գետի պէս կ՚առատանայ․ թէ թումբ կանգնես իւր դիմաց եւ արգիլես՝ անդէն իւր տեղը կը ցամաքի եւ կը չքանայ:

Աշխարհիս բոլոր գիւտերու ինքնաշխատ գրիչ հեղինակներն իրենց նորանոր գիւտեր միշտ փոխ տուին ընկերութեան․ եւ տես դու թէ ի՞նչ գործեց ընկերական զօրութիւն: Հանճարներէն մի փոքրիկ աղբերակ կամ լուսոյ նշոյլ մի առնելով՝ այնչափ ծաւալեց եւ ընդարձակեց, մինչեւ բովանդակ աշխարհ ողողեց ջրով ու լուսով, եւ այսպէս առաւել եւս պայծառ պսակեց հանճարին արդիւնքը եւ փառաւորեց զայն:

Եթէ հանճարին սերման գիւտը նմանցնեմք մանանեխի հատիկին, որչա՞փ կը յարմարի Աւետարանի այն առակին, զոր Քրիստոս օրինակ բերաւ, այսպէս ասելով․ Մանանեխի հատիկն ամէն սերմերէն փոքրագոյն է, եւ երբ ցանես զայն՝ կը բուսնի եւ աճելով մեծ ծառ կը դառնայ, մինչեւ կուգան թռչուններ եւ նորա ոստերուն վերայ կը հանգչին:

Այսպէս նաեւ եթէ հանճարին հատիկն առանձին մնայ իւր ինքնաշխատ մշակին պարտէզը՝ ոչինչ առաւելութիւն չունի: Բայց երբ ընկերութեան դարաստանին մէջ ցանուի, անդէն վաղվաղակի կը բուսնի եւ աճելով ահագին մեծ ծառ մի կը դառնայ․ իւր ճիւղեր բոլոր աշխարհի վերայ կը սփռէ, եւ իւր անհուն առատ պտուղները կը վայելէ մարդկային ազգ:

Խօսիմ ու պատմեմ քեզ, որդեակ, թէ հանճարին փոքրիկ զօրութիւն՝ ընկերական ամենամեծ զօրութեան հետ միանալով՝ ինչ գործեց եւ ի՞նչ արդիւնք արտադրեց արեւմտեան աշխարհին մէջ, որք արեւելեան անգէտ ժողովրդոց համար կը թուին թէ այդ գործերը գերմարդկային հրաշքներ են: Ընկերական միացեալ զօրութիւնը՝ շոգւոյն եւ մեքենային ոյժը՝

իւր զօրութեան հետ միացնելով՝ ծովն ու ցամաք հնազանդեցուց իւր ոտքին առաջ:

Դու կարե՞ս թուել թէ այսօր որչա՞փ անթիւ անհամար շոգենաւեր կան ու կը շրջին աշխարհիս ծովերուն վրայ: Ծովամայր Ովկիանոսին տարածութիւն, զոր երբեմն մարդիկ անծիր եւ անսահման կը կարծէին, շոգին ու մեքենայն զայն մի քանի աւուր մէջ կը չափեն: Խեղճ Կօլոմբոս այն ինչ տարիներով կը դեգերէր նոր աշխարհ գտնելու համար, այսօր Լօնդոնէն մինչեւ յԱմերիկա տասն աւուր մէջ կը չափեն: Ծովու մեծ կէտ վիթխարի Լեւիաթան զարմացաւ, երբ տեսաւ որ քան զինքն մեծագոյն հազարաւոր փայտակերտ, մարդաշէն Լեւիաթաններ ծովու թագաւորութեան տիրելով՝ ազատաբար կը լողան. իւր գլուխ եւ տուտ քաշեց ու սոսկալով մտաւ ծովու խորութեան մէջ ծածկեցաւ:

Ցովբ կ՚ասէ թէ այդ մեծ ծովային վիշապը՝ մեծագործ Արարիչ հրեշտակներու համար ստեղծեց, որ զբօսնուն եւ խաղան նորա հետ: Թող այժմ այդ զբօսասէր հրեշտակներ մարդոց հնարած Լեւիաթաններուն հետ խաղան, ու ճանչնան թէ աշխարհիս որդիքներ քան զիրենք աւելի իմաստուն եւ հնարագէտ են. որպէս վկայեց Ցիսուս:

Գիտե՛ս եւ չկարծես դու թէ շոգենաւուց գիւտը միայն մարդկային շահավաճառութեան շահաբեր եղաւ, այլ եւ դորա հետ ապահովեց նաեւ մարդոյն ծովագնացութեան կեանքը. այն ինչ աստի գրեթէ մինչեւ վաթսուն տարի առաջ նաւապետ, նաւաստին, ուղեւոր առահասարակ ծովալեկոծ ահեղ փոթորիկներու պատահելով՝ շատ անգամ կուր կը լինէին ծովուն ու ձկներուն, խորանդունդին մէջ ջրաթաղ լինելով, անհող եւ անգերեզման:

Մարդ իւր հանճարով եւ ընկերական զօրութեամբ ծովու հոսանուտ կոհակներու վերայ յաղթանակեց, դարձաւ դէպի ցամաք. ասաց թէ կարո՞ղ եմ արդեօք սարն ու ձոր հարթել հաւասարել այնպէս, ինչպէս ծովուն մակերեւոյթ:

Այո՛, մարդն Աստուած չէր, բայց՝ ասաց եւ եղեւ: Իւր հանճարով եւ ընկերական ուժով այդ ամէն գործեց, հողին վերայ երկաթէ ուղիները յարդարեց, հնարիչ ճարտարագէտի մի ձեռք շոգեկառք շինեց. ընկերութեան զօրաւոր ձեռք հազարաւոր կառախումբեր նորա ետեւն կապեց ու շարեց: Մարդիկ այն օրէն գիտես թէ թռչնոց թեւ առին. աշխարհէ յաշխարհ, քաղաքէ քաղաք թռչելով՝ անդադար կ՚երթան կուգան:

*Թէ կարծես ի համար բեր եւ հաշուէ, այդ երկու միացեալ զօրութիւնք, շոգին ու մեքենան, ի՞նչ մեծ արդիւնք ընծայեցին աշխարհի։ Եթէ այսօր Ասիացին, Եւրոպացին, Ամերիկացին, Ճաբոնացին եւ Հնդկացին զիրար կարող են տեսնել ու ճանչնալ. այդ շնորհիւ հանճարին եւ ընկերական զօրութեանն է, որ մին շոգենաւ եւ շոգեկառք հնարեց, եւ միւսն իբրեւ զօրավիգ՝ ձեռն տալով ի գործ դրաւ։ Եւ այսպէս աշխարհ առ աշխարհ, ժողովուրդ առ ժողովուրդ իբրեւ մի քաղաքացի եւ դրացի կապեց։*

*Ո՛վ գիտէ, թերեւս թերեւս ապագայ աշխարհին մէջ մեր բնակավայր հողագունդն ամբողջ այնպէս լինի, ինչպէս մի քաղաք, զանազան ազգեր եւ լեզուներ միանան, մի ազգ, մի ժողովուրդ կազմեն. աշխարհս դէպի իւր նախնական վիճակ դառնայ եւ երթայ հասնի միազգութեան նախադար. երբ մարդիկ մի երկիր, մի լեզու ունէին, ինչպէս կը պատմէ Մովսէս. «Եւ էր երկիր մի եւ լեզու մի»։*

*Թողունք հաղորդակցութեան դիւրութիւնը. թողունք շահավաճառութեան ամենամեծ արդիւնք, յորում աշխարհիս ազգեր ու ժողովուրդներ կ՚զբաղին ու կը պարապին մեր անյագ կեանքին անհուն պէտքերը հոգալու համար. թողունք այն ամէն նիւթական շահաբերութան արգասիք, զորս մարդոյն ցանկութիւն իւր ճարտարութեան արուեստով հնարեց. խորհինք, յառաջ բերենք ու հաշուենք բարոյական մեծ շահն։*

*Վասն զի թէ շոգենաւն եւ թէ շոգեկառքը, այս երկու արագընթաց զօրութիւններ եթէ թեւ չի տային մարդոց ընկերային հաղորդակցութեան, հեռաւոր աշխարհաց, վայրենի եւ կիսավայրենի ժողովուրդներ կը մնային այնպէս իրենց հնութեանց մէջ, որոց վերայ տիրեր էր տգիտութիւն, թշուառութիւն եւ խաւար կեանք։ Այն օրէն երբ շոգին լոյս տարաւ նոցա, այն օրէն սկսեցին լուսաւորիլ եւ տակաւ տակաւ մօտենալ քաղաքակիրթ աշխարհին։*

*Քաղաքակրթութիւն ուր որ ծնաւ, իւր անձուկ հորիզոնին եւ խանձարուրին մէջ կը մնար. նա չէր կարող իւր լոյսը մինչեւ հեռաւոր եւ անծանօթ տեղեր տարածել, լոյս տալ ու քաղաքակրթել բարբարոս ազգերը։*

*Հանճարին եւ ընկերական ուժին զօրութիւն միայն այդ հրաշքներ չի գործեց, այլ եւս շատ եւ անհամար արուեստական հրաշքներ յառաջ տարաւ, եւ այնչափ, զոր ես չկարեմ թուել։ Արուեստից ծնունդներ այնքան բազմապատիկ են, ո-*

րոց վերայ մարդոց միտք կը հիանայ, կ'ապշի ու չի հաւատար թէ ինքնաշխատ մարդոյն հանճարն է ծներ զանոնք:

Եւրոպիոյ բիւրատեսակ արուեստից այն հսկայ մեծագործ շէնքեր, որք գիտես թէ մէն մի մեծագործ քաղաքնե՛ րեւ պալատներ են. այն անդուլ անդադար շոգեշարժ ահագին մեքենայից ահագին զօրութիւն, որոց միոյն ուժը՝ հազար սեմ, երկու հազար սեմ, մարդոց կամ ձիոց ուժին հաւասար է: Հապա այն բիւրաւոր միլիոնաւոր գործաւորաց աշխատութիւնը, որ շոգիին զօրութեան հետ միանալով՝ անբաւ եւ անչափ արդիւնք կ'արտադրեն եւ բովանդակ աշխարհիս մարդոց կեանքին համար պէտքերը կը պատրաստեն. որոց չափն ու քանակութիւն անհնարին է կշռել ու չափել:

Ցանկացայ ես, այլ բախտն ինձ չյաջողեց, որդեակ իմ, երանի՛ թէ քեզ մի նուագ յաջողէր երթայիր Եւրոպիոյ այն հրաշից աշխարհը, կենդանի աչօք տեսնայիր, զարմանայիր թէ ի՜նչպէս մարդոյն հանճար եւ ընկերական զօրութիւն ձեռն ի ձեռն տալով՝ գիտութեամբ, ճարտարութեամբ, արուեստով մարդկային հին կեանքն, որ երբեմն ունայն եւ դատարկ էր, զայն լցուցեր են եւ լիացուցեր մինչեւ ցբերան. եւ աւելորդն յորդեալ գետերու եւ հեղեղի նման՝ աշխարհիս չորս կողմ կը վազէ ու կը տարածի այդ անհուն չահավաճառութեան հոսանք:

Քաջ խելամտեցա՞ր, որդեակ իմ, որ ինքնաշխատ հանճարն ընկերական միութեան հսկայաքայլ ոտքով արագապէս յառաջադիմեց աշխարհիս վերայ: Ճարտարագէտին հանճարն՝ իւր մի ոտքով միշտ կաղ կը մնար եւ կարող չէր նա դէթ, դանդաղ կրիային չափ ծանրաքայլ երթալ, եթէ ընկերական ուժն օժանդակելով յառաջ չը վարէր զայն:

Քա՛ւ թէ, այսպէս դատելով՝ ես կ'ուրանամ հանճարին իրաւունքը, եւ դու այնպէս չը կարծես, հանճարասէր որդեակ իմ, այլ եւ կը խոստովանիմք, որ մեծ մրցանակն ու փառք հանճարին կը վայելէ: Վասն զի յառաջդիմութեան առաջին տարերք, առաջին հիմնաքարեր հանճարներ կը համարուին. իսկ շէնքն ընկերութիւն կ'աւարտէ. եւ մերթ եւս մի հանճարին պակասն՝ մի ուրիշը կը լրացնէ: Ինչ որ հանճարը մի տաղանդ կուտայ, եւ ընկերութիւն զայն ի գործ կը դնէ եւ անհատնում շահերով կը բազմապատկէ:

Բիւր օրհնութեան եւ յիշատակաց արժանի Գուտթէմբէրգ՝ աքնելով աքնելով վերջապէս հանճարեց տպագրութեան գիւտըն, որ առաջին անգամ չատ փոքր ու անկատար էր, եկան

վերջին հանճարներ եւ կատարելագործեցին զայն։ Եղան նաեւ ընկերութիւնք, ոք հսկայաչէն տպագրական տուներ հաստատեցին, մեծամեծ շոգեշարժ մեքենաներ դրին նոցա մէջ, եւ այնչափ յառաջ տարան ու զարգացուցին տպագրական արուեստը, որոյ նիւթական ու բարոյական շահաբերութիւնը՝ թէ առեմ Ովկիանոսին չափ ծովացաւ աշխարհիս վերայ, հաւատա՛ զու։

Այն երկաթէ հրաշալի Մամուլը թէ ոսկով թէ լուսով միանգամայն փայլեցուց աշխարհ։ Թէ չը լինէր լուսատիւն մամուլը, ի՞նչ կը լինէր այնչափ գրագէտ հեղինակաց հանճարին երկասիրութիւնք, ոչինչ․ այնպէս անլոյս անհոգի կը մնար ու կը մեռնէր ինչպէս վիժած մանուկ մի իւր մօր արգանդին մէջ։ Այո՛, եթէ մամուլ իւր գրերով, իւր թեւերով հանճարին ստեղծած գաղափարին լոյս չտարածէր իմացական աշխարհին հորիզոնին վերայ, այլ եւս լոյսն ու գաղափար ոչ կենդանի կը մնար, ոչ կ՚արդիւնաւորէր մարդկային լուսաւորութեան համար, հապա մի ափ մոխիր կը դառնար հանճարը, մարդոյն հետ կը մեռնէր եւ կը լցուէր գերեզմանի սափորին մէջ։

Այնպէս չեղա՞ն մեր նախնեաց հանճարէն ծնած անգիւտ ձեռագիրներ եւ հնութեան յիշատակարաններ։ Ո՛հ, կամ բարբարոսաց ձեռքով հրոյ ճարակ եղան, կամ իբրեւ վարձք եւ բարեպաշտութիւն, անգէտ մարդոց ձեռքով իբրեւ մեռած դիակներ հողին մէջ թաղուեցան։ Մեծ գովութեան եւ ազգի երախտագիտութեան արժանի են Մխիթարեան ուխտին գրավաստակ Հարք, որք ինքնաշխատ ջանքով աստի եւ անտի մեր հին գրական մնացորդ նշխարներ ժողովելով ի լոյս ընծայեցին։ Փտտած ու փոշոտած ձեռագիրներ, որք իբրեւ ճրագ գրուանի տակ դրուած վանքերու մութ խորշերուն մէջ ծածկուած մնացեր էին, անլոյս եւ ապարդիւն, տպագրութեան լուսով եղան կենդանի ժողովուրդին մէջ մտան, եւ այսուհետեւ անմահ են։

Եթէ մի Գուտթէմբէրգ եւս քան դար, երեսուն դար յառաջ Մասիսին տակ ծնէր, մեր աշխարհին վէպեր, մեր քաջ դիւցազանց գործեր, թէ գրական եւ թէ մեր հին հարց կենդանի աւանդութիւնք, եւ ինչ որ մեր հայրենեաց անուն եւ փառքը կը պատմէր այս ներկային մէջ, անշուշտ այդ ամէն անցելոյն ստուերին կրճատ, բեւեռագիր արձանագրութեանց չէինք

դիմեր, որոց ամենադժուարին վերծանութեան համար աշխարհիս հնագիտաց ուղեղներ կը տանջուին:

Ուրեմն խոստովանիմք, որդեակ, թէ մի հանճար՝ իւր կապարեայ գրերով եւ տպագրութեան մամուլով գրական մշակներու վաստակն անմահացուց, եւ սորա փոխարէն գրական հանճարներն եւս զԳուտթէմպէրգն անմահացուցին: Եւ այս իսկ զարմանալի է· զի հանճարներու հոգիներն՝ իրարու անմահութիւն կը ներշնչեն, եւ մինն՝ միւսին գործն ու յիշատակ կը փառաւորէ:

Մենք եւս պարտական եմք միշտ յիշել ու փառաւորել հանճարներուն յիշատակ, վասն զի նոքա եւս իրենց Տօնացոյցն ունին, եւ զիրենք կը տօնախմբէ քաղաքակիրթ աշխարհ: Եւ միթէ արժանի չէ՞ն նոքա, որք իրենց ինքնաշխատ կեանք գիտերով արդիւնաւորեցին, եւ ոմանք եւս հացակարօտ անձնազոհ մեռան: Այո՛, այդ հանճարոյ նահատակներ մարդ էին ու մեռան· բայց իրենց պտղաբեր կեանքին անմահ եւ անսպառ արդիւնքն այսօր բովանդակ աշխարհ կը վայելէ:

Քրիստոս՝ Աւետարանի քարոզութեան ինքնաշխատ մշակներ օրհնեց եւ ասաց· «Զի դուք երթայցէք եւ պտղաբեր լինիջիք եւ պտուղն ձե կայցէ»: Այո՛, խաչէն մինչեւ ցայսօր հազար ութն հարիւր այսչափ տարի է, այդ խաչակիր մշակներու պտուղն երթալով կ'աճի ու կը մնայ:

Միթէ կը մեղանչէ՞մ կամ չափազա՞նց կը համարիս դու, եթէ ես զհանճարներ՝ քաղաքակրթութեան առաքեալ կոչեմ: Վասն զի եթէ հանճարներն՝ քաղաքակրթութեան սնուցիչ եւ դայեակ չը լինէին, քաղաքակրթութիւն իւր խանձարուրին մէջ կը մնար իբրեւ մանուկ առանց աճման:

Այլ ինչպէս գրեցի ի վեր, հանճարներն եւս մանուկ կը մնային, եթէ նոցա օժանդակ չը հասնէր ընկերական քաջալերիչ ոգին եւ զօրութիւն: Ի՞նչ պիտի անէր ինքնին այն կորովի եւ նկատող աչքն, որ փոքրիկ կաթսայի մի վերայ, եռացող ջուրին վերմղիչ բուռն շոգիէն շարժող ու վարող մի ահաւոր զօրութիւն գտաւ: Միթէ կարո՞ղ էր նորա չքաւոր ձեռն վիթխարի մեքենաներ ձուլել կամ ահագին շոգեկաթսաներ կազմել: Ի՞նչ պիտի անէր այն Թադուն ելեկտրիք զօրութեան գտիչ, որով անբարբառ երկաթէ թելին խօսիլ տուաւ: Միթէ նորա ձեռն բաւակա՞ն էր, որ աստի մինչեւ ի Հնդկաստան, մինչեւ յԱմերիկա երկաթէ թել ձգէր: Մեր լեռնցի ճարպիկ քիւրտեր այնպէս կը հաւատան թէ այդ երկաթէ թելերուն մէջ

*սատանայ կայ, բայց սատանան իրենք են, գիտե՞ս դու. վասն զի իրենց գողութեան յուր հաղորդելով չի յայտնէ կառավարութեան։*

*Այսպէս ահա, ցանկալիդ իմ Սամուէլ, հանճարն եւ ընկերական զօրութիւն դաշնադիր եղան, մին՝ միայն սերմ տուաւ, եւ միւսն զայն ցանեց եւ ժրաջարծ ձեռքով ու մեծ տնտեսական գիտութեամբ մշակեց. ամենալի բարութեամբ լցաւ, լիացաւ, բարգաւաճեցաւ արեւմտեան աշխարհ։ Այսօր իւր որդիքներ ամենառատ սեղանի վերայ նստած՝ կշտապինդ կը վայելեն հանճարին եւ ընկերական ձեռաց պատրաստած բարիքներ։*

---

Դ Ա Ս Ժ.

# ԵՐՋԱՆԻԿ ԵՒ ԱՊԵՐՋԱՆԻԿ ԿԵԱՆՔ ԱՇԽԱՐՀԻՍ

---

Երջանկութեան ծաղիկներ եւ ապերջանկութեան փուշեր մարդկութեան դարաստանին խառնարոյսերն են, որ կը բերեն զբարին եւ զչար։

Իսկ եթէ ի՞նչ է ապա բարւոյն եւ չարին աղբիւր եւ արմատ — Մարդոց սիրտն է, զոր տեսաւ Յիսուս եւ ասաց։

«Մարդ բարի՝ ի բարի գանձուց սրտի իւրոյ բղխէ զբարի, եւ մարդ չար՝ ի չարէն բղխէ զչար։»

*ՍԻՐԵԼԻԴ իմ Սամուէլ, աշխարհիս երջանկութեան եւ ապերջանկութեան դասը պիտի խօսիմ քեզ, խելամտութեամբ ուշ դիր, դու որ ծաղկատի հասակիդ մէջ մտադիր ես աշխարհիս երջանկութեան ծաղիկները միայն քաղել եւ ապերջանկութեան փուշերէն ի բաց հեռանալ։*

*Խօսինք. ի՞նչ են երջանկութեան ծաղիկներ եւ ի՞նչ են ապերջանկութեան փուշեր, որք խառնաբոյս կ՚աճին մարդկութեան ագարակին մէջ. դոքա դաշտի խոտերու նման ինքնաբոյս են, թէ մարդոյն ձեռք չը մշակէ զանոնք։*

*Եթէ ողջամիտ տեսութեամբ դատենք, պիտի տեսնամք որ այդ ծաղիկներու եւ փուշերու մշակը՝ մարդն է, իւրաքանչիւր անձն է, ընտանիքն է, ժողովուրդն է, ազգն է, աշխարհն*

է, տէրութիւնն է. որք առհասարակ կ'աշխատին աշխարհիս ագարակին մէջ, կամ ծաղիկներ կը մշակեն եւ կամ փուշեր. այդ երկու բոյսերուն սերմերն՝ իրենց ազատ կամքն ու սիրտըն է։

Արդ եթէ մարդոյն ձեռքն է՝ երջանկութեան եւ ապերջանկութեան թէ ծաղիկներու եւ թէ փուշերու մշակն, ուրեմն քանի որ մարդիկ կան աշխարհիս վերայ, մարդկութեան դաբաստանին մէջ երջանկութեան եւ թշուառութեան ծաղիկներ եւ փուշեր յաւիտենական անհաժեշտ օրէնքով պիտի մշակուին։ Եթէ միայն խլել ուզենք փուշերը, ոչինչ օգուտ չունի. դարձեալ անդրէն կը բուսնին. վասն զի նոցա բուն արմատն մարդն է. հարկ է որ զմարդն խլենք աշխարհէս։ Թէպէտ կան մարդիկ, որ դժնիկն ու ծաղիկ ի միասին խլել կ'ուզեն, առանց խնայելու կանաչին եւ չորին, վարդին եւ փուշին։

Եթէ կարենանք եւս միայն փուշեր խլել եւ ծաղիկներ թողուլ, այսինքն թշուառութիւն բառնալ եւ երջանկութեան ծաղիկներն այլ եւս կը մնա՞ն. կամ երջանիկ կարծուած մարդ իւր երջանկութիւն կը զգա՞յ առանց թշուառին վիճակը տեսնելու։ Վերցուր աղքատ Ղազարոս մեծատան դրան առջեւէն. եւ ահա այլ եւս նա իւր երջանկութիւն չը զգար եւ առ ոչինչ կը համարի իւր այնչափ հաճոյք եւ փափկասուն կեանք։ Վերցուր նաեւ մեծատունն եւ իւր չքեղ ապարանք Ղազարոսի աչքի դիմացէն, ծածկէ նորա բեհեզն ու ծիրանին մեծահաց սեղան եւ ծառաները. եւ ահա նա չը զգար այլ եւս իւր թշուառութիւն. նա ինքնին մեծատուն կը լինի, ուրախ եւ գոհ կեանք կը վարէ բարեկամ շներու հետ։

Այո՛ կը լսենք ու կը հաւատանք, թէ մարդասէր քաղաքակրթութիւն անտէրունջ անկեալ Ղազարոսներ ժողվեց աշխարհիս հրապարակէն. հիւանդանոց, դարմանոց եւ պատսպարան պատրաստեց նոցա համար, կոյրեր, համրեր եւ խուլերն անգամ գործունէութեան մէջ դրաւ. մինչդեռ մեր աշխարհի խեղանդամներ անդարման, անպատսպար թողուած են փողոցներու մէջ։ Մարդկութեան այդ անարգուած պատկերներ գետնասող, գետնաչարչար լինելով՝ կողկողագին ձայնով կը պաղատին, անցաւորաց կարեկցութիւն կը հայցեն։ Եւ դու երբ Վոսփորի ծովակամուրջէն անց ու դարձ կ'անես, կը տե՞սնաս այդ թշուառութեան ապաժոյժ օրինակներ բուն մայրաքաղաքիս մէջ, որ Եւրոպիոյ քաղաքակիրթ աշխարհին խիստ մերձաւոր դրացին է։

Բայց միթէ թշուառութեան երեւոյթ պատկերներ նոքա՞ են միայն, որ խեղանդամ են, կոյր ու համր են, մի լումայի եւ հացի կարօտ են, անտուն անյարկ են, մերկ ու մուրացիկ կը շրջին փողոցներու մէջ։ Ոչ, դոքա թշուառութեան փոքրիկ երեւոյթներ են. զորս մարդոյն աչք սովորած է տեսնալ եւ այնպէս կարծել թէ դոքա միայն թշուառ են։

Թշուառութիւն աշխարհիս վերայ համատարած է. եւ մեր ներքին ու արտաքին կեանքին մէջ ծաւալելով տիրեր է, տեղ մի առաւել եւ տեղ մի նուազ, նորա պատկերին երեւոյթներ շատ բազմադիմի են. տե՛ս, որդեակ իմ, եւ ես նոցա պատկեենր հանեմ քո առաջ։

Թշուառ չե՞ն նոքա, որ աչք ունին, լոյս չեն տեսնար. կամաւոր կոյր են տգիտութեան մէջ։ Թշուառ չե՞ն նոքա, որ լեզու ունին, ականջ ունին. այլ ոչ խօսիլ կարող են եւ ոչ լսել կը կամին։ Թշուառ չե՞ն այն մարդիկ, որ ոտք ունին, քալելու ճանապարհ չունին. ձեռք ունին, գործել չկարեն. սիրտ, հոգի ունին, թմրած ու լքած են։ Առաւել թշուառ չե՞ն այն ժողովուրդներ, որ ընտանիք ունին, պանդխտութեան մէջ չարաչար կը մաշին. որ վերջապէս կեանք ունին, կը շնչեն եւ կը շրջին երկրիս վերայ, այլ կիսակենդան են. բանաւոր կեանքի եւ ճշմարիտ կենդանութեան պատկեր չունին։

Կան տակաւին ընդհանուր թշուառութեան այլ եւս շատ մերկատեսիլ ողորմելի պատկերներ, զորս կը թողում եւ քո աչքին առաջ չեմ հաներ, որպէս զի մատաղ ոգիդ այժմէն չը վշտակրի եւ դու յուսահատ լինիս, տեսնելով՝ թէ մեր կեանքի թշուառութեան փուշեր որչա՞փ բազմապատիկ են, որոց մէջ շրջապատուած դժբախտ մարդ միշտ խայթոցահար լինելով՝ ամենայն վշտաբերութեամբ կը վարէ իւր կեանքը։

Եւրոպիոյ քաղաքակրթութիւն գիտութեամբ, կրթութեամբ, հին աշխարհի բարբարոս կեանքը յեղաշրջեց, եւ կը ջանայ մարդկային թշուառութեան փուշերը բոլորովին քաղել, արմատախիլ ընել, եւ մարդկութեան կեանքն՝ երջանկութեան ծաղիկներով զարդարել։

Այլ ի՞նչ օգուտ երբ կը տեսնայ, որ անդէն կեանքին մէջ թշուառութեան նոր երեւոյթներ այլ եւ այլ կերպարանքով երեւան կուգան. եւ այդ նոր աշխարհի մարդիկ ծաղիկներու հետ փուշերն եւս կը մշակեն։ Պարծեցող քաղաքակրթութիւնն իսկ կը զարմանայ, թէ ուստի՞ արդեօք կը ծնանին թշուառութեան

նորաբոյս փուշերը․ կամ մեր ընկերական երջանկութեան արտին մէջ, բարի սերմերուն հետ ո՛վ կը խառնէ ու կը ցանէ դառնահամ ու հեղձուցիչ որոմները։

Հրեշտակներ հարցուցին, Յիսուս պատասխան տուաւ․ Թէ թշնամի մարդ ցաներ է զայն։ Այո՛, չարարուեստ մարդն է որոմնացան մշակ, որ ինքնաբոյս կ՚արտադրէ իւր սրտէն ու բնութենէն։ Ուրեմն մա՞րթ է բառնալ այս աշխարհէն այն մարդիկը, որ թշնամի են ընկերական երջանկութեան եւ կ՚ապականեն միշտ նորա բարի սերման ագարակը։

Այդ ցանկութիւնը հրեշտակներն եւս ցանկացան․ հրաման խնդրեցին, որ երթան որոմնաբոյսերն ի բաց քաղեն։ Բայց Նախախնամող Հօր Որդին ասաց․ Թոյլ տուէք, թող առժամանակեայ մի երկուքն ի միասին աճին մինչեւ հնձոց ժամանակը։

Թէպէտ Աւետարանին առակը տիրապէս հաւատացելոց եւ թերահաւատից համար ցոյց կուտայ, որ այդ երկու դասն անբաժան ի միասին աճին եւ ապրին, թէ եկեղեցւոյ անդաստանին մէջ եւ թէ աշխարհիս վերայ։

Սակայն շատ բնական է իմաստասիրել այս խորհրդաւոր առակէն, թէ երկնից Նախախնամութեան մի թագուն անիմանալի խորհուրդն է այս, որ նա կը կամի զի այդ երկու հակառակ բոյսեր իրարու հետ աճին ու մնան։ Միթէ երկիրն եւս այդ օրէնքին տակ չէ, դու չե՞ս տեսնար որ տեղ մի ծաղիկներ եւ տեղ մի փուշեր բուսած են։ Երկրի բնական փուշեր հնազանդ են մարդոյն․ եւ մարդ կարող է զանոնք արմատով քանդել եւ տեղը ծաղիկներ տնկել։ Բայց մեր ընկերական աշխարհի փուշեր, այնչափ հին ու խորարմատ են, այնչափ խիստ ու ստահակ են, որ մարդոյն բանաւորութեան եւ ճարտարութեան առաջ չեն հնազանդիր․ ուստի դժուարին, անհնարին է թէ հին եւ թէ նոր փուշեր մարդկութեան անդաստանէն ի բաց խլել։

Խոնարհելով վերնախնամ Տեսչութեան առաջ, պէտք է խոստովանիմք թէ մարդոց այս խառնաբոյս ընկերական կեանքը՝ յաւիտենական օրինաց մի փակուած կնիքն է․ մարդոյն ձեռք անձեռնհաս է քակել կամ եղծել զայն․ երջանկութիւն պահել, թշուառութիւն վարել աշխարհէն։

Կը խօսինք եւ կը գրենք, որդեակ իմ, թէ մարդոյն երջանկութեան եւ թշուառութեան ճշգրիտ նկարագիրն ի՞նչ են, կամ ո՞վ է երջանիկ եւ ո՛վ է թշուառ աշխարհիս վրայ։

Մարդիկ յեղակարծ դատաստանով այնպէս կը համարին․ ով որ հաց եւ գանձ ունի, ով որ համբաւով, հարստութեամբ

իբրեւ աստղ կը փայլի ընկերական հորիզոնին վրայ, ով որ իշխան է, կը տիրէ ժողովուրդին վերայ, ով որ դահ ունի եւ զօրութեամբ պերճացած հրաման կուտայ աշխարհին· ահաւասիկ սոքա երջանիկ կը համարուին մարդոց դատաստանին առաջ։ Իսկ ով որ հաց չունի, իւր աստղ աղօտ է, չի փայլիր· սորա համար եւս կ՚ասեն թէ թշուառ է։

Բայց թէ մտնենք մարդկային ընկերութեան իւրաքանչիւր կարգի մարդոց սիրտ եւ ոգին զննենք, պիտի տեսնամք այն մարդիկ՝ զորս ժողովուրդ երջանիկ կը կարծէ· նոքա զիրենք այնպէս չեն կարծեր, եւ ես ցոյց տամ քեզ մի այլաբան օրինակով։

Մեր մտքով մի սանդուղ ստեղծենք, որոյ ծայր հասնի մինչեւ երկինք եւ իւր մէն մի աստիճաններուն վերայ աշխարհիս բոլոր մարդիկ կարգ կարգ շարուած լինին, թագաւորներէն սկսեալ մինչեւ յետին ստրուկ ծառաներ։ Դու պահ մի կաց այդ սանդուղին հանդէպ, դիտէ ու տես, թէ ինչպէս աշխարհիս իւրաքանչիւր մարդիկ իրենց կեանքի վիճակէն անհոգ լինելով, սանդուղի ստորին աստիճաններէն սկսեալ մինչեւ ցվեր, ուր դրուած են թագաւորաց գահեր, բոլորն եւս ի միասին երջանկութի՛ւն երջանկութիւն կ՚աղաղակեն, եւ դէպի այն կը ձգտին։

Թագաւոր, զոր կը համարինք թէ եջանկութեան կատարն է հասած, կ՚ասէ թէ այլ եւս երջանիկ կը լինէի, եթէ գահս ուրիշ գահէ մի վեր դնէի, Կեսար լինէի, Նապօլէօն լինէի, եւ այլն։ Գահաժառանգ կ՚ասէ· այն օր է իմ երջանիկ օր, երբ գահակալ հայրս ի գերեզման կ՚երթայ· իւր գահն ինձ կը թողու եւ ես թագ կը կապեմ ու կը թագաւորեմ աշխարհիս վերայ։ Մեծ նախարար իշխան կ՚ասէ· երանի՛ թէ արքայազուն լինէի եւ իմ գլուխս թագով պսակուէր, յայնժամ ես տիրապէս երջանիկ կը լինէի։

Այսպէս սանդուղի գլխէն մինչեւ ցվայրաստիճան մարդիկ ցանկութեամբ կը ձգտին դէպ ի վերագոյն կարծուած երջանկութիւն· եւ միշտ դժգոհ լինելով իրենց կեանքէն ու վիճակէն, ցանկութեան մէջ մաշուելով, կը վախճանին եւ միայն կը յագենան գերեզմանի հողով։

Ի՞նչ զարմանալի խաղեր կան ու կը լինին այս երջանկութեան, դու ասա, թշուառութեան սանդուղին վերայ, յորում մարդիկ ել եւ էջ առնելով կը մրցին եւ ամէն ոք դէպ ի բարձ-

րութիւն կը ձգտի, յուսալով թէ ստոյգ երջանկութեան կայանը՝ բարձրութեան աստիճանին վերայ է:

Բայց, աւա՜ղ, հէք մարդկային ընկերութեան այս դըժուարին ելեւէջներու մէջ մեծագոյն մասն սանդուխի աստիճաններէն վայրահոսելով, կը թօթափին ի գետին, ամէն մարդ իւր չափով ու թափով կը ջախջախուի· եւ մեր աչքին առաջ կը բացուի յայնժամ մարդոց թշուառութեան տեսարան:

Թշուառին կեանքն արդէն ինքնին ջախջախուած է իւր կարօտութեան եւ զրկանաց մէջ, նորա վիճակ միշտ գետնահաւասար է· նա բարձրութիւն չունի, որ երկնչի կործանումէն: Իսկ երջանիկ կարծուածն, որոյ բախտն ու վիճակ բարձրագոյն աստիճանին վերայ կայացած է, մինչդեռ ինքն անկասկած է, յանկարծ սահելով կը կործանի եւ մեծ շառաչմամբ կը տապալի ի գետին ինչպէս մի տապարահատ մայրի ծառ: Յայնժամ միապէս կ՚ողբան անբախտն ու բարեբախտն· մին իւր մէկ ոտքէն եւ միւսն իւր փարթամ գլխէն չարապէս ջախջախուելով:

Եթէ այսպէս, ապա ուրեմն այս աշխարհիս վերայ երջանկութիւն եւ ապերջանկութիւն զուգածին եղբայր են· մեր կենաց ճանապարհին մէջ միշտ համընթաց են· անհնարին կը թուի մեզ իրարմէ բաժանել, եւ մարդկային կեանք իբրեւ մի դրախտ մշակել այնպէս, որ բնաւ թշուառութեան փուշեր չըբուսնին:

Այլ որովհետեւ մարդոյն կեանք խառնաբոյս է երկրիս վերայ, քանի որ ինքն կայ, փուշն ու ծաղիկ միեւնոյն արմատէն պիտի շառաւիղէ, այլեւս ընդունայն է ջանալ մեր այս փշալից աշխարհ ծաղկեբուրաստան դարձնել:

Կը խռովիս ու կը վհատի՞ս, որդեակ իմ, երբ այսպէս յուսահատ կը խօսիմ· տեսնալով որ պարտիզպան մի իւր պարտէզը մշակելով, դարմանելով, փուշերէն կը մաքրէ· եւ անբեր երկիրը՝ բարի սերմերով ու տունկերով կ՚արդիւնաւորէ· միթէ մարդն կամ մարդկութեան երկիր քան զհողն անպիտա՞ն է:

Այո՛, մարդն՝ հողին տիրապետ իշխանն է եւ քան զհողն բիւր անգամ գերազանց, հոգեղէն ձիրքով ու բանաւորութեամբ ճոխացած: Բայց գիտե՞ս, մարդն ի բնէ չարին հակամէտ է· կը ճանաչէ զբարին, բայց ինքն դէպի չարըն կը հակամիտի· վասն այսորիկ կարդարանայ Աստուած· «Թէ Միտք մարդկան ի խնամս չարին են արձանացեալ ի մանկութենէ»: Մարդն ոչ միայն չարին հակամիտ է, այլ եւ չարաստեղծ ու չարահնար է· մարդն իբրեւ հեղինակ՝ իւր սրտի գործարանին մէջ կ՚ստեղ–

ծէ զչարն եւ կը հանէ ի դուրս, եւ ահա այն է թշուառաբերութեան աղբիւր, որ կը վազէ մեր ընկերական դարաստանին մէջ, կը սնուցանէ մեր ապերջանիկ կեանքի թշուառութեան փշերը։

Քրիստոս աշխարհիս փիլիսոփայից պէս զմարդն իւր երեսով եւ երեւոյթով չքննեց. նա թափանցիկ հոգի էր, մտաւ մարդոյն սիրտը, կրկտեց եւ վկայեց, որ չարութեան ու բարութեան աղբիւրը՝ մարդոյն սիրտն է, բարի սիրտն՝ զբարին կը բղխէ, եւ չարն՝ զչար։ Այս երկվտակ հոսանքներ կը ծաւալին մեր ընկերական երկրին վերայ. որոցմով թէ երջանկութեան ծաղիկներ եւ թէ թշուառութեան փուշեր ի միասին կ'աճին ու կը զօրանան։

Քաջ խելամտեցա՞ր, բարեսէր որդեակ իմ, որ շրջելով դառնալով գտանք մարդկային ընկերութեան բուն աղբերակին ակն, որ է մարդոյն սիրտ ու միտք։

Պէտք է խցել չարին ակն, որ չարութիւն չբղխէ, պէտք է բանալ բարւոյն ակն, որ բարութիւն բղխէ։ Փոքրիկ չարեր, փոքրիկ չարութեան վտակներ կը բղխեն. եթէ առանձին մնան, այնչափ կարող չեն ողողել մարդկային ընկերական աշխարհը։

Իսկ մեծագոյն չարեր՝ եւս ամենամեծ չարութեան գետեր կը յորդեն իրենց խորագոյն սրտէն, եւ առհասարակ հեղեղելով կ'ապականեն ժողովուրդին դաշտն ու դարաստանը։ Եւ զարմանալին այս է. զի չարերը՝ չարերուն եւս չեն խնայեր, որք նոցա գործակից եւ բաժանակից են, այլ զչարն ու բարին միահամուռ ջրատար առնելով կը հեղձուցանեն, եւ մի կրակով կը վառեն երջանկութեան ծաղիկներ ու թշուառութեան փուշերը։

Մեծն Աղեքսանդր եւ Քսերքսէս մի մի մարդ էին, եւ մի մի սիրտ կը կրէին. դոցա լայնաբաց սրտէն բղխեց այն աշխարհակալութեան ջրհեղեղն. մինն Պարսկաստանէն սկսեց հասաւ մինչեւ Յունաստան եւ Յոնիական ծովը թափեցաւ։ Իսկ միւսն Մակեդոնիոյ աշխարհէն սկսեց, իւր հզօր արշաւանաց հեղեղով խեղդեց Պարսիկն ու Հնդիկն, դարձաւ ի Բաբիլոն եւ Պարսից ծոց թափեցաւ։

Այսպէս նաեւ ուրիշ աշխարհակալաց հպարտահող սրտերէն բղխեցին չարութեան հեղեղներ, ապականեցին մարդկութեան դրախտը։ Ոմանք այդպիսի արիւնկզակ սրտերէն կ'ուզէին ձեռք լուանալով չքմեղս լինել աշխարհին առաջ. ուստի պարծենալով կ'ասէին. թէ մեք Աստուծոյ ձեռաց վրէժխնդիր պատուհասն եմք։

Գիտենք այդ, թէ երկնից արդարութեան մի դատաստանն է, որ մեղապարտ ժողովրդոց հատուցումն այդպէս կը տնօրինէ. դոքա անպա՞րտ կը համարին զիրենք: Այլ գիտենք թէ աշխարհիս վերայ շատ անգամ չարերով՝ չարեր կը պատուհասին, առ որ կը վարանի մարդոյն միտք եւ կարող չէ ըմբռնել Աստուծոյ արդարութեան ու դատաստանին անքննելի խորհուրդ:

Տեսա՞ր, սիրելի որդեակ իմ, մեծասիրտ չարեր՝ մեծագոյն չարեաց աղէտներ կը բերեն աշխարհի վերայ, որոց մահաբեր շունչին առաջ կը խամրին բոլոր երջանկութեան ծաղիկներ եւ կը թօթափին ի վայր. եւ այն որ այսօր երջանիկ է, վաղը կը նստի թշուառութեան հողի վերայ:

Բայց փոքրասիրտ չարերէն եւս վախնանք ու կասկածինք, թէպէտ առանձին առանձին մտածելով դոքա մի մի փոքրիկ սիրտ եւ փոքրիկ աղբիւրներ կը համարուին. խակ երբ վտակ առ վտակ գալով միանան՝ յայնժամ ահագին գետ կը կազմեն կը յորդին երկիրը, ազգ եւ ժողովուրդ միանգամայն գետատար ջրահեղձ կը լինին:

Ես չեմ ասեր չարութեան բնածին սերմեր ու կաթիլներն իսպառ չքացնել մարդոյն սրտէն, յորում ելեւէջ կ՚առնուն ինչպէս հիւլէն արեւաշողին մէջ. եւ մարդոյն չարամէտ սիրտը բոլորովին բարութեան աղբիւր մի դարձնել, անխառն եւ անմասն չարութեան շամանդաղներէն:

Որչա՞փ դժուարին եւ անհնարին է կապարի նման երկրի վերայ ծանրացած երկրաքարշ մարդ այնչափ գերագոյն բարութեան վերածել, եւ կարծել թէ նա կարող է բարի լինել ինչպէս է Աստուած եւ հրեշտակ: Յիսուս տեսաւ թէ ի՞նչ կը կրէ ներքուստ մարդոյն կեղծող ոգին, ասաց. «Ջիք ոք բարի, բայց միայն Աստուած»:

Մարդոյն սիրտ իբրեւ երկծորակ մի աղբիւր է. մերթ չարութիւն կը բղխէ եւ մերթ բարութիւն. մերթ դառն եւ մերթ քաղցր: Սորա համար մեր հոգեկիր Նարեկացին մարդոյն յարափոխ վիճակն ողբալով կ՚ասէ. «Այսօր մաքուր հոգեկիր. վաղիւն մոլի խելագար»: Շատ եւ բաւական է, եթէ կարենայ ապիկար մարդ չարութեան ակն որչափ հնար է խցելով նուազցնել, բարութիւն բղխել եւ սրբել իւր սիրտն աղտոտին կաթիլներէն:

Սոկրատի նման բարոյական իմաստասէրներ կը ջանին զօրհանապազ եւ թերեւս չհաւատան ու կը խօսին թէ՝ լոյս, գի-

*տութիւն, դաստիարակութիւն, քաղաքակրթութիւն, կարող են մարդոյն սիրտը կրթելով, մշակելով, ուղղելով, սրբել չարութեան ախտերէն եւ թշուառութիւն աշխարհէն բառնալ:*

*Այդ հրաշք եթէ միայն մարդոյն ձեռք արուեստաւորէ, ես չեմ հաւատար, որդեակ իմ, իսկ եթէ մարդոյն դաստիարակող ձեռքին հետ Աւետարանի հոգին եւ ընկերութեան ձեռքն եւս հրաշագործէ, այո՛, կը հաւատամ յայնժամ թէ մեր ընկերական կեանք կը ծաղկազարդի, եւ կ'ազատի չարութեան եւ թշուառութեան փուշերէն:*

*Երկիւղած որդեակ իմ, ես չեմ խրատեր քեզ, որ աշխարհի կրթութեան եւ գիտութեան իմացական լոյս չընդունիս, այլ կը յորդորեմ զքեզ, զի քո ստացած բնական լոյսը՝ Աւետարանի լուսոյն եւ սիրոյն հետ խառնես, երկու լուսով շրջիս աշխարհիս վերայ. մի լուսովն՝ քո առօրեայ հացը գտնես եւ միւսովն՝ յաւիտենական կեանք: Այսու դու միանգամայն ազատ կը մնաս մարմնոյդ եւ հոգւոյդ կորստական թշուառութենէն:*

*Աշխատիր, որ սրտիդ բուրաստան բարեբոյս ծաղիկներով մշակես. աշխատիր, որ փշաբոյս չը լինի սիրտդ եւ փշերով չը վարակի ոգիդ. գիտցիր, թէ չարարուեստ լինելով՝ փուշ մշակես, փուշն զքեզ կը վառէ. կեանքդ մոխիր կը դառնայ: Մարդ ես դու, անշուշտ բնածին փուշեր կը բուսնին ի քեզ. միշտ ջանայ խնամով սրբել զանոնք. եթէ միանգամ խորարմատ ձգեն, գիտե՞ս, որչա՞փ դժուարին է յետոյ արմատահան առնել: Զգուշացիր նաեւ եկամուտ չարութեան սերմերէն, երբ չար մշակ ընկերներ գայն սերմանել ուզեն մատաղ սրտիդ մէջ: Ընկերական կեանքիդ մէջ ոչ չարութիւն փոխ տուր եւ ոչ չարութիւն փոխ առ, այլ միշտ բարութիւն ստացիր:*

*Ի վերջոյ, մեծ երկիւղածութեամբ կարդա՛ Դաւթին սրտահան աղերս. «Սիրտ սուրբ հաստատես յիս, Աստուած, եւ հոգի ուղիղ նորոգեա ի փորի իմում»:*

——o——

ԴԱՍ ԺԱ.

# ԲԱՐԳԱՒԱՃԱՆՔ ԵՒ ՆՈՒԱԶՈՒՄՆ ԱՇԽԱՐՀԻՍ ԱԶԳԱՑ

Ի՞նչ է նորա անունն, որոյ ամենակալ ձեռքէն աներեւոյթ կշիռ մը կայ երկնքէն երկրիս վերայ կախուած:

Նորա սուրբ անունն՝ Արդարութիւն է, որ այս աշխարհիս ազգերուն մեղք եւ արդարութիւն կը կշռէ եւ կը չափէ զհատուցումն: Մարդիկ զայն չեն տեսնար եւ կը վարանին թէ ինչո՞ւ համար ազգեր մերթ կը բարձրանան եւ մերթ կը խոնարհին, մերթ կը բարգաւաճին եւ մերթ կը նուազին:

Դորա պատճառներ զէնք եւ զօրութիւն չեն. այլ մեղք եւ արդարութիւն: Ուստի կասէ Սողոմոն. «Արդարութիւն զազգ բարձրացուցանէ. մեղք նուազեցուցանէ զազգս» Առակ ԺԴ. 34

*ՆԱԽՈՐԴ դասին մէջ քաջ խլամտեցար, որդեակ իմ, թէ ի՛նչ էին մարդոյն ընկերական կենաց երջանկութեան սկզբնաբուղխ աղբիւրներ: Սորվեցար թէ բարութիւն եւ չարութիւն էր այն, որ յառաջ կուգայ մարդոյն սրտէն ինչպէս ջուրի վտակն աղբիւրի ակնէն:*

*Այս դասիդ մէջ պիտի սորվիս, թէ ի՞նչ են ապա այն սկզբնապատճառ աղբիւրներ, որով աշխարհիս բովանդակ ազգեր եւ ժողովուրդներ մերթ կը բարգաւաճին եւ մերթ կը նուազին. մերթ կը բարձրանան եւ մերթ կը խոնարհին մերթ ազատ քաղաքացի կը լինին, եւ մերթ ստրկական ծառայ. մտադիր հոգւով ուշ դիր եւ ես խօսիմ քեզ այդ յեղյեղուկ բախտին պատճառներ:*

*Երկրիս համայն ազգեր, ժողովուրդներ, իշխանութիւններ եւ գահեր յեղաշրջող տարերք կան. միոյն անունն՝ արդարութիւն է եւ միւսին՝ մեղք. այս երկաքանչիւրին հեղինակ եւ ծնող դարձեալ մարդն է, մարդոյն սիրտն է եւ մարդոյն աշխարհիս վերայ վարած կեանքին արդասիքն է:*

*Սուրբ գիրք այդ երկու որոշակի բառերով կը հասկացնէ Իսրայէլի ժողովուրդին կեանքը, զի այդ երկու բառերուն ընդարձակ նշանակութեան տակ կը փակէ մարդոյն կենաց բովանդակ գործքեր, մեղք եւ արդարութիւն:*

Մարդն այս աշխարհիս վերայ այդ երկու ճանապարհին վերայ կը քալէ. կամ արդարութեան եւ կամ մեղաց։ Ուղիղ ճանապարհ՝ արդարութեան ճանապարհն է. մոլոր ճանապարհ մեղքի ճանապարհն է։ Մարդն ազատ անբռնադատ է. ինքն ազատաբար կ'ընտրէ իւր ճանապարհ. կամ արդարութիւն գործելով՝ արդար կը լինի, կամ մեղք գործելով՝ մեղապարտ կը լինի։

Եւ ինչպէս մի մարդ, այնպէս մի ազգ, մի ժողովուրդ, մի երկիր եւ թագաւորութիւն, դարձեալ այդ երկու ճանապարհով կ'ընթանան։ Եթէ արդարութիւն գործեն, դորա պտուղն է անարդանք, սովորութիւն, սուր եւ պատերազմ, տառապանք աղքատութեան եւ չարավար կեանք։

Ո՛վ է, որ այս հատուցումներ կուտայ ազգերուն. ո՛վ է, որ կը կշռէ ու կը չափէ ազգերու մեղք եւ արդարութիւն եւ կը վճարէ փոխարէնն. ո՛վ է որ արդարագործ ազգերն օրհնելով՝ նոցա կեանք եւ սերունդ բազմապատկելով բարգաւաճ կ'առնէ երկրիս վերայ, ինչպէս կը խոստանար արդար Նահապետին. «Օրհնելով օրհնեցից զքեզ, եւ բազմացուցանելով բազմացուցից զաւակս քո ի վերայ երկրի»։

Իսկ ո՛վ է, որ անիրաւ, մեղաւոր ազգեր իւր օրհնութենէն կը զրկէ. նոցա կեանքն անճեմ, անսերունդ կը թողու առանց բարգաւաճելու, որով կամ իսպառ կը ջնջուին եւ կամ կը նուազին։

Ահաւասիկ այդ ամէն չափող եւ տնօրինող՝ Արդարութիւնն է, նոյն ինքն Աստուած՝ որ արդարութիւն եւ ուղղութիւն կը սիրէ, ինչպէս կը խօսի Դաւիթ։ Նոյն արդարութիւնն է, որ իւրաքանչիւր ազգերու գործոց չափով կը չափէ զիրենք։ Քրիստոս եկաւ աշխարհ այդ արդարութեան համար վկայեց եւ ասաց. «Որով չափով չափէք։ չափեսցի ձեզ»։

Բայց արդ սկսիմ ճառել քեզ, որդեակ իմ, թէ ի՞նչպէս կը տարածի թէ մեղք եւ թէ արդարութիւն մի ազգի եւ ժողովուրդի։ Շատ բնական է որ մեղք նախ անհատ անձինքներէն կ'սկսի եւ երթալով կը բազմանայ, կ'անցնի բոլոր ժողովուրդի դասակարգութեան մէջ. այսինքն գլխէն մինչեւ ոտքը միահամուռ կախտանայ ժողովուրդի մարմինն. ահաւասիկ այդ է ամբողջ ազգին եւ ժողովուրդին մեղք։

Իսկ երբ ընդհակառակն ժողովուրդի բարոյական մարմինը գլխէն սկսեալ մինչեւ ոտք արդարութիւն կը գործեն, մեծ եւ փոքր առհասարակ իւրաքանչիւր կարգի մարդ կը ճանչնայ

իւր պարտիք եւ իրաւունք· այդ եւս ժողովուրդին եւ ազգին արդարութիւնն է:

Թէ մեղք եւ թէ արդարութիւն իրենց նկարագիրն ունին· ես նախ մեղքին տգեղ ստուերագիր հանեմ քեզ, թէ զիա՞րդ մեղք իւր ամէն հանգամանօք իբրեւ համատարած՝ ախտ՝ երբ կը ճարակի ժողովրդոց բոլոր մարմնոյն մէջ, մահառիթ կը լինի նմա, որով կ՚սկսի յայնժամ տակաւ տակաւ հիւծելով մեռնիլ:

Եւ ի՞նչ է այդ մահացուցիչ մեղք: Ինչ որ ինձ յուշ կու գան, զայն թուեմ քեզ:

Երբ մի ազգի եւ ժողովուրդի խղճի գիտակցութեան խայթ իսպառ կը բթանայ, երբ պարտուց եւ իրաւանց արդարաչափ կշիռը՝ ժողովուրդի ընկերական կեանքէն կը բարձուի, երբ ազգի եւ աշխարհի վարիչ իշխաններ՝ արդարութեան պարտիքներ կը մոռնան, երբ դատաւորներ կ՚անիրաւեն, եւ օրինաց տեղ կամք եւ բռնութիւն կը տիրէ, երբ ժողովուրդ կը մոռնայ այն պատուէրներ եւ պարտիքներ զորս Քրիստոս եւ Պօղոս պատուիրեցին՝ Կայսերինը կայսեր տալ եւ հատուցանել ում պարտական է ժողովուրդ եւ ումեք պարտական չմնալ· երբ կ՚ստահակի ժողովուրդ, երկրին եւ ազգին օրէնքները հնազանդութեամբ չի յարգեր, կը հեստէ եւ անիշխան վարիլ կ՚ուզէ, երբ ժողովուրդ իւր ընկերական շահավաճառութեան մէջ առանց արդար կշռի կը գործէ, այլ եւս իւր խիղճն ի բաց կը թողու, եւ որչափ կարող է կ՚անիրաւէ եւ կը նենգէ, երբ նիւթապաշտութիւն կը տիրէ ժողովուրդին մէջ, հոգին կը նուաստանայ ու կը մեղկանայ, հովիւն իւր հօտով, պաշտօնեայն իւր ժողովրդով եւ իշխան իւր երկրով առ հասարակ Աստուծոյ ճանապարհէն կը խոտորին, երբ ժողովուրդ ճշմարտութիւն կ՚ատէ, դէպ ի լոյս երթալ չուզեր, երբ խաւարասէր լինելով՝ խաւարագործութեան մէջ կը թափառի, երբ ազգի եւ երկրի կառավարութեան անձնիւր կարգեր գերիվայր լինելով կը շփոթին, ժողովուրդն իբրեւ իշխան կը լինի, մանուկ՝ ծերոյն աթոռը կը բազմի, քահանայն իբրեւ ժողովուրդ կը լինի եւ ժողովուրդ իբրեւ քահանայ· տէրն իբրեւ ծառայ եւ ծառան իբրեւ տէր· տիկին իբրեւ աղախին եւ աղախին իբրեւ տիկին· երբ անարգն իբրեւ պատուական կը յարգուի եւ պատուականն կ՚անարգուի, երբ տգէտք ու խաբեբայք կը տիրեն, ժողովուրդի հաւատարիմներ կը մերժուին:

Մի խօսքով համառօտեմ քեզ· երբ երկրի ժողովուրդ բանա-

ւորութեան լոյս, մարդկութեան պատիւ խաւար կը մնայ· թէ բնական խղճի օրէնքներ, թէ Աստուծոյ յայտնեալ օրէնքներ, թէ քաղաքային եւ ընկերական օրէնքներ, գլխովին կ'եղծանէ եւ կ'ապրի նա այնպէս, ինչպէս Նոյեան դարու ապիրատ ժողովուրդ, որոց համար կը վկայէ Սուրբ գիրք· «Ապականեցաւ ամենայն մարմին առաջի Տեառն»։

Իսրայէլի ժողովուրդի մարմին երբ ոտքէն մինչեւ գլուխ կը գեղծանէր ու կ'ախտանար, Եսային իբրեւ բժիշկ նորա ցաւերը շօշափելով կ'ասէր· «Ամենայն գլուխ ի ցաւս եւ ամենայն սիրտ ի տրտմութիւն, յոտից մինչեւ ցգլուխ չիք ի նմա առողջութիւն, եւայլն»։

Եթէ կ'ուզես թէ եբրայական ժողովուրդին եւ թէ աշխարհիս այլ եւ այլ հին ժողովրդոց բարուց ապականութեան բոլոր նկարագիրը տեսնալ, մեծ մտադրութեամբ կարդա Սուրբ Գրոց մէջ Դատաւորաց եւ Թագաւորաց պատմութիւն· կարդա՛ բոլոր մարգարէութեանց գրքեր ու բողոքները· տես ո՞րչափ կենդանի նկարագիր կը հանեն Աստուծոյ ընտրեալ Մարգարէք եւ կը դնեն գայն ժողովուրդի աչքին հանդէպ։

Թո՛ղ Սուրբ Գիրքը· կարդա՛ ընդհանուր ազգաց պատմութիւնները, յորս յայտնի կ'երեւի նոյն ժամանակի մարդոց կեանքի հանգամանքներն, եւ կը տեսնաս դու թէ ժողովրդոց համատարած մեղք կործաներ է աշխարհիս հին ազգեր եւ գահերը· ինչպէս Եգիպտոսի, Յունաստանի, հին Հռովմայ վերջին հարստութիւն, Կարքեդոնի, Բաբելոնի, Ասորեստանի, եւ այլն։ Զմոռնանք նաեւ նոր Հռովմայ Կոստանդնիանոսի գահը, որ Բիւզանդիոնի գագաթան վերայ բարձրացած էր։

Այլ եւս տակաւին աշխարհիս նոր ազգերու մեղք պիտի կործանէ այն ամէն ազգեր, որ ճշմարիտ քաղաքակրթութեան լոյսէն խոյս կուտան, եւ դեռ ապրիլ կ'ուզեն հնութեան եւ հին մեղքերու մէջ։

Ճշմարիտ քաղաքակրթութիւն ասացի, որպէս զի դու կարենաս որոշել թէ աշխարհիս վերայ սուտ քաղաքակրթութեան երեւոյթներ եւս կան· որք թէպէտ ի հեռուստ այլ եւ այլ գոյներով չպարեալ կը տեսնուին, այլ ի ներքուստ ժողովուրդին կեանք երթալով կը վատթարեն, կը գեղծանեն գեղխութեան ու ծայրայեղ ագատութեան մէջ։ Նոքա եւս թէ վաղ թէ անագան այժմեան բարդաւաճութենէն կը նուազին եւ կը կործանին։ Վասն զի ցոյց կուտայ աշխարհիս փորձը թէ ամէն ծայրայեղութեանց վախճանը կործանումն եւ կորուստ է։

Բայց դու, ողջամիտ որդեակ իմ, մի դուցէ այնպէս ըմբռնես ու դատես թէ ազգ եւ ժողովուրդ երբ իւր վարիչներով հանդերձ միահամուռ կը մեղանչեն, զոր ի վեր անդր նկարագրեցի քեզ, յայնժամ համայն ազգ, հայրենիք։ եւ պետութիւն կը կործանին իբրեւ արդար եւ անաչառ հատուցումն բոլորն ի միասին կրելով կորստեան աղէտը, որոյ ճիշդ օրինակ կը տեսնամք Սոդոմայ եւ Գոմորայ ամբարիշտ ժողովրդոց վերայ։ Արդար նահապետ Աբրահամ խոնարհելով իբրեւ հող եւ մոխիր երկնից արդարութեան առաջ՝ կամեցաւ նորա ցասումն իջուցանել, ուստի մտերմօրէն հարցանելով կ'ասէր. Տէր, եթէ այն քաղաքներուն մէջ քառասուն արդար գտնուի, դարձեալ պիտի կործանե՞ս. նոցա համար չը պիտի՞ խնայես մնացեալ ժողովրդոց։ Եւ այսպէս հարցանելով՝ իջաւ մինչեւ հինգ արդարոց թիւ, այն եւս չը գտնուեցաւ. միայն արդար Ղովտ մի կար՝ զայն ի դուրս հանեց եւ անդէն կործանեց, մոխիր դարձուց ամբարշտաց քաղաքները։

Սակայն շատ անգամ արդարութեան հատուցումն ուրիշ եղանակաւ կը տեսնամք. այսինքն ժողովուրդի կամ երկրի մի մասն կը մեղանչէ, օրինազանց կը լինի. հատուցումն ամբողջ ազգ հաւասարապէս կ'ընդունի։ Վասն զի անցելոյն մէջ պատմութենէն գիտենք, եւ ներկային մէջ մեր աչքով կը տեսնամք. եւ ի՞նչ է այս, շատ յայտնի է աշխարհին առաջ։ Զի երկրի վարիչներ կը գո՞են մեղք, երկիր եւ ժողովուրդ կը տուժէ եւ կը կործանէ։ Հայրեր կ'ուտեն ազոխ, եւ որդւոց ատամունքներ կ'առնուն. առաջնորդներ կը խոտորին եւ ժողովուրդ մոլորելով կը հետեւի։ Եւ այսպէս աշխարհիս մեծամեծ լեռներուն մեծակոյտ մեղքեր՝ զայրացած հեղեղներու եւ գետերու նման բարձրադիր լեռներէն կը թափին ժողովուրդի դաշտին վերայ, եւ զայն հեղեղատար առնելով՝ ամէն բարեչինութիւն կը քանդեն ու կ'աւերեն։ Եւ ի՞նչ կը լինի սորա վախճանը, ոչինչ, իրենք եւս կը նստին այնուհետեւ աւերակ հողաբլուրին վերայ։

Համառօտ անցայ այս կէտին վերայ, որդեակ իմ, ուշիմ ես դու, կը հասկնաս թէ ինչ կը խօսիմ։ Թողլով այդ ժողովուրդին մեղք, բաւ է որչափ ինչ խօսեցայ, սկսիմ այժմ նորա արդարութեան վերայ խօսիլ։

Ինչպէս տեսար ի վեր թէ՝ մեղք մեծնալով տարածելով կը քանդէ աշխարհ եւ ժողովուրդ, եւ նորա վախճանը դէպ ի կորուստ կը տանի, այսպէս նաեւ արդարութիւն կը շինէ եւ կը կանգնէ ժողովուրդին տուն, քաղաք եւ երկիր. եւ ինքն հօն կը

հանդչի։ Արդարութիւն ժողովուրդը դէպի կորուստ չի տանիր։ այլ դէպ ի գիւտ, դէպ ի փառաւորութիւն, բարձրութիւն եւ անմահութիւն. «Զի արդարութիւն մշտնջենաւոր եւ անմահ է»։

Եւ թէ ի՞նչպէս կը լինի որ երկիր մի իւր ժողովուրդով, վարիչներով, իւրաքանչիւր կարգի եւ վիճակի մարդիկ մէն մի իւր պարտուց բաժին արդարութեամբ կը գործէ, դու միտ դիր. եւ ես կ'արճաբանեմ քեզ։

Երբ պետական աթոռի վերայ նստող թագաւոր արդարութեամբ կը գործէ, իշխանն՝ իրաւունքով կ'իշխէ, դատաւորն օրէնքով կը դատի, ժողովուրդն՝ օօրինաց կը հնազանդի։ Երբ ընկերական շահավաճառութեան մէջ՝ գինւոյն մէջ ջուր չի խառներ, կամ անփորձ արծաթը փորձեալին տեղը չի ծախեր, զոր վերէն կը տեսնար Աստուած ու կը յանդիմանէր Իսրայէլի ժողովուրդը։

Այո՛, արդարութիւն զազգ եւ ժողովուրդ կը բարձրացնէ, երբ նա ճշմարտութեամբ պաշտէ իւր տէր Աստուածը, չկեղծաւորի միայն շրթամբք պատուել զայն. եւ երբ նա երախտագէտ կը լինի իւր պարգեւատու Արարչէն, եւ չապերախտեր ինչպէս Իսրայէլի ապաշնորհ ժողովուրդ, որոց ապերախտութիւն դատելով Աստուած՝ վկայ կը գոչէր երկինք եւ երկիր. ու սրտառուչ կերպով կը գանգատէր. «Ծանեաւ եզն զստացիչ իւր եւ էշ զմսուր Տեառն իւրոյ, եւ Իսրայէլ զիս ոչ ծանեաւ եւ ժողովուրդ իմ զիս ի միտ ոչ էառ»։

Արդարութիւն կը գործեն ու կը բարձրանան, երբ քահանան ու ժողովուրդ կը կատարեն եկեղեցւոյ օրինաց պարտքերը։ Քահանան պաշտօնասէր կը լինի, ժողովրդասէր կը լինի. եւ գիտութիւն չի մերժեր, տեսուչ հովիւն ու հօտ կը ճանչնան զիրար. մինն անձնադիր լինի, արթնութեամբ հսկէ ու հովուէ. եւ միւսն կամակար լսէ նորա ձայնին։

Այսպէս երբ ժողովուրդի բոլոր դասակարգութիւն եւ իւրաքանչիւր անհատ անձն թէ առ Աստուած եւ թէ առ մարդիկ իրենց պարտքեր կը ճանչնան եւ Աւետարանին քարոզած ընկերական օրէնք լիովին կը կատարեն։

Ժողովուրդ եւս կը բարձրանայ, եթէ Աւետարանին եկեղեցւոյ աւանդած այդ արդարութիւններ գործելէն յետոյ՝ սիրէ նաեւ ճշմարիտ քաղաքակրթութեան յառաջդիմութիւնը, որ աւետարանի քարոզած ազատութեան լոյսէն լոյս առնելով, մարդկային ընկերավարական աշխարհ կը լուսաւորէ, մարդ

իւր հին բարուց բրտութենէն կ'ազնուացնէ եւ դէպ ի կատարելութիւն կը վարէ :

Ես գիտեմ, դու այս մեր ժամանակը տեսնալով, քաղաքակիրթ աշխարհին վերայ կը գայթակղիս, երբ կը թողու Աւետարանի խաղաղութեան դարը· կը թողու արդարութեան իրաւախոհութիւնը, կռիւ, սուր ու թնդանօթ ի գործ կը դնէ, արիւնով կը լուանայ կեանքը, մահով կը դրաւէ ժողովուրդին որդիքները :

Այդ մի հարցներ այժմ, դորա պատասխանը շատ դժուարին ու ընդարձակ է· դու չգիտե՞ս որ նոյն իսկ քաղաքակիրթ աշխարհ իւր հին ոգին փոխուելով դեռ զգօնացած չէ, եւ այդ սպանիչ հրազէն գործիքներն իբրեւ արդարութիւն ի գործ կը դնէ : Ո՛վ կը լսէ Քրիստոսի խօսքին, որ կը սաստէ· «Սուրդ ի պատեան դիր, եւայլն» :

Թող դահեր, թող պետական մարդիկներ, նոյն իսկ ժողովուրդն եւս գահ կը սիրէ, փառք կը սիրէ, սուր կը սիրէ· իւր ընկեր ժողովուրդին վերայ յաղթութիւն կը սիրէ : Եւ ես չասացի քեզ թէ արեւմտեան քաղաքակիրթ աշխարհին մէջ արդարութիւն հանդուցեալ է տիրապէս :

Ո՛չ, դեռ նորա մեղքեր շատ են, դեռ նա կը պահէ հին վայրենութեան այն մեծ ահռելի մեղքն· եւ ի՞նչ է այդ, փոխանակ խաղաղարար արդարութեան՝ խռովութիւն եւ արիւնագործութեան արհեստ· զի երբ զայրանայ՝ իւր հնարած գերանդիներով մարդոց կեանքը կը հնձէ ու կը բառնայ աշխարհէն· մարդոց հոգիներն ինքն չէ տուեր· չգիտենք թէ ի՞նչ իրաւունքով կ'առնէ :

Տեսա՞ր, արդարասէր որդեակ իմ, թէ քանի՞ զօրաւոր է արդարութիւն, քանի՞ հզօր ձեռնկալու է աշխարհիս վերայ այն ազգերուն, որ զայն կը սիրեն ու կը պահեն, նոքա միայն օր ըստ օրէ կը բարդաւաճին ու կը բարձրանան : Իսկ այն ազգեր, որ արդարութիւն կ'արհամարեն, արդարութեան ուղիղ ճանապարհէն կը խոտորին, պարտուց եւ իրաւանց կշիռը ոտնհարելով կը խորտակեն, մարդկութեան շնորհ ու խղճի գիտակցութիւն կը կորցնեն, աստուածպաշտութեան կրօն եւ հաւատ առ ոչինչ կը համարին, ահաւասիկ այդ ազգերու սերունդ՝ Աստուծոյ արդարութեան օրհնութիւն կարող չեն ժառանգել :

Եւ ի՞նչ կը լինին· այդ յայտնի է, թէ հազար տարի եւս ապրին, թէ աշխարհակալ լինին, թէ գահերն ամպերու վերայ դնեն, ի վերջոյ արդարութեան կայծակէն զարնուելով կը տա-

պալլին ի գետին, կը խոնարհին մինչեւ գերեզմանին խոր: Ինչպէս մի մարդու համար ծնունդ, աճումն, մահ եւ գերեզման կայ, այսպէս ազգերն եւս իրենց գերեզմանն ունին· եւ ահագին վիհ մի է, որոյ մէջ կը ծածկուի նոցա յիշատակ: Եւ ի՞նչ կը թողուն նոքա· Եգիպտոսի բուրգեր, Բաբելոնի աշտարակներ եւ Հռովմայ կրկէսներ· դոքա պահ մի աշխարհիս վերայ կը վերանան, կը բարձրանան որպէս Լիբանանու մայրիներ, զոր անցաւ տեսաւ Դաւիթ, եւ ամբարիշտն վերացեալ եւ բարձրացեալ որպէս զմայրս Լիբանանի: Անցի եւ ահա ոչ ոչ էր· խնդրեցի, եւ ոչ գտաւ տեղի նորա»:

Այլ եւս հերիք է, որդեակ իմ, թողունք ազգերու մեղք եւ արդարութիւն, շատ յարմարագոյն է թէ սեմ, մահ եւ կեանք: Դու ինքնին անշուշտ խելամտեցար· թէ այդ երկուքին սկզբնական սերմեր ժողովուրդի անհատներէն կ'սկսին եւ ցանուելով ցանուելով կը տարածին ազգութեան երկրին բոլոր երեսը: Եւ դու, որ մի ազգի եւ ժողովուրդի անհատ սերմիկ եւ զաւակն ես, մանկութեանդ հասակէն սկսելով ուղղութիւն եւ արդարութիւն սիրէ: Ոչ մտքէդ եւ ոչ ձեռքէդ երբէք մի թողուր այդ ուղղութեան սուրբ կշիռը, որ ընկերական կեանքիդ մէջ կ'ուսուցանէ քեզ պարտուց եւ իրաւանց կատարեալ ճանաչումն: Այդ կշիռը թէ անարատ պահես, դու աշխարհիս վերայ մուրացիկ չես լինիր· Դաւիթ կ'երաշխաւորէ· «Մանուկ էի ես եւ ծերացայ, եւ ոչ տեսի զարդարն արհամարհեալ եւ ոչ զաւակ նորա թէ մուրանայ հաց»: Քեզ լաւ եւս է թէ աղքատ լինիս, արդար լինիս· քան մեծատուն՝ սուտ եւ անիրաւ, ըստ Սողոմոնի առակին: Նոյն կը խօսի դարձեալ· «Մեծութիւն խռկեալ անիրաւութեամբ, պակասեսցի· իսկ որ Աստուածպաշտութեամբ ժողովէ, բազմասցի»:

Կը փառաւորիս, որդեակ իմ, թէ նախանձաւոր ու հետեւող լինիս նախնի արդարոց շաւղին: Թէ Արիստիդէսին պէս ուրախութեամբ վարուիս կեանքիդ մէջ, անիրաւութենէն խորշիս եւ արդար անունը թողուս աշխարհիս վերայ, յայնժամ քո արդար գործքեր, քո յիշատակ կը յաւերժացնեն քո հայրենի ժողովուրդին մէջ: Եւ քեզ ի՞նչ մեծ փառք, գիտե՞ս, թէ անունդ կենդանի մնայ, կարդացուի միշտ ժողովուրդի կենդանի սրտին մէջ, եւ չը լինիս դու այնպէս՝ ինչպէս կ'ասէ Դաւիթ· «Եւ կարդասցին անուանք նոցա ի հողս իւրեանց»:

## ԴԱՍ ԺԲ.

# ԺԱՄԱՆԱԿ ԵՒ ՊԱՏԱՀԱՐՔ ԱՇԽԱՐՀԻ

Ի՞նչ են ժամանակի պատահարներ, որ մեծամեծ աղէտներ կը բերեն աշխարհիս վերայ. տարե՞րքն են, եղանա՞կներն են, ծովե՞րն են, ցամա՞քն է, շա՞րժն է, սո՞վն է, մահտարաժա՞մն է: Ո՛չ, ո՛չ. աշխարհիս մեծ պատահարներ՝ մարդիկ են, եւ նոյն իսկ մա՛րդն է մարդոյն պատահար. տարապարտ է մարդոց դատաստանը, որ պատահարները՝ միայն տարերաց վերայ կը ձգեն կամ կ'ասեն թէ չար ժամանակ բերաւ:

*ՀԱՐՑՈՒՐ, Նորատի որդեակ իմ Սամուէլ, եւ ես խօսիմ քեզ թէ ի՞նչ է ժամանակ եւ իւր պատահարներ աշխարհիս վերայ. դու որ նոր ժամանակի գարնան ծաղիկն ես. դու որ նոր թեւակոխեր ես կենացդ առաջին շրջանին մէջ. դու դեռ ամառն ունիս, որ քո պտղաբերութեան շրջանն է. աշունն ունիս, յորում պիտի ժողովես պտղաւէտ կեանքիդ արդիւնք. ձմեռն ունիս, յորում պիտի հանգչիս ու վայելես:*

*Մեծ մտադրութեամբ ուսիր այն դասն. ուսի՛ր թէ ի՞նչպէս կը դառնայ արագ արագ ժամանակի անիւն ու շրջանը, եւ իւր յարաջարժ հոլովման մէջ կը վարէ կը տանի մարդոյն կեանքը խանձարուրէն մինչեւ ի գերեզման, եւ յառաջ կը բերէ աշխարհիս այլ եւ այլ պատահարներ. մերթ չարիքներ ի վեր կը հանէ եւ մերթ բարիքներ. եւ չարն ու բարին, անիրաւն եւ արդար առ հասարակ իւր հզօր գաւազանին տակ վարելով՝ հէք մարդոյն կեանքը իբրեւ աշխարհիս գետերը կը տանի կը թափէ յաւիտեան ծովուն անդունդը:*

*Ժամանակն աշխարհիս գահերուն, թագերուն տիրող մեծ աշխարհակալն է. միապէս հաւասար կ'իշխէ իւր յաւիտենական գաւազանով, գահին եւ սորուկ ծառային վերայ. զամէն մարդ միահամուռ կը վարէ դէպի գերեզմանին վիհը:*

*Ժամանակ հանուր մարդկային գործոց մեծ դիւանապետն է. նա է որ կ'արձանագրէ մեր կեանքին հաշիւը, աշխարհիս տիրող թագաւորաց հաշիւը մեծ դիւանագէտներու հաշիւը, պատերազմի եւ արեան դաշտերու հաշիւը, հպատակ ժողո-*

վուրդին հաշիւը, բողոքող գրկեալներուն հաշիւը, յղփացող մեծատանց հաշիւը, տուայտեալ Ղազարոսներու հաշիւը, ամէն կարգի եւ վիճակի մարդոց հաշիւը։

Ժամանակ երկնից արդարութեան եւ հատուցմանց գործադիր ոստիկանն է․ իբրեւ սուրհանդակ կը շրջի աշխարհիս վըրայ։ Կ'երթայ կը մտնի յանտառ, անտառին տիրապետ առիւծ կ'սպաննէ․ կը դառնայ Թագաւորին պալատը, նորա չունչ եւ ոգին կը քաղէ, կը հասնի Բաբելոնին դաշտը հպարտացող գոռոզին դիցապատկեր արձանը կը կործանէ։ Ժամանակ իւր ձեռքի տապարով կտրեց այն աշխարհասփիւռ ծառը, որ բարձրամտելով իւր ճիւղերը դէպի երկինք կ'արձակէր․ անկաւ տարածեցաւ գետնին վերայ․ եւ ճանչցաւ իւր չափը։

Ժամանակ քան զարծիւն սուր արագաթեւ է․ կը բարձրանայ եւ չեշտակի կը դիտէ զաշխարհ, կ'իջնայ եւ քաղաքներ հողաբլուր կը դնէ․ Բաբելոնի, Նինուէի, եւ հին Արմաւիրի, Արտաշատ ու պերճ Անւոյն փառքն աւերակաց տակ կը թաղէ։ Թողլով հողադնդին երեսը՝ կ'երթայ Վեսուվի լեռան տակ կը մտնէ, կրակ կուտայ, հրանիւթ կը բորբոքի, եւ Պօմպէի պերճութիւն մոխրաթաղով կը ծածկէ։

Բայց կ'անիրաւիմք, եթէ ասենք ժամանակի պատահարին ձեռքը միշտ կը քաղէ ու չի շիներ․ կամ թէ կաչառէ, զաշխարհ մի կը շինէ, միւս կը քաղէ։ Ժամանակ վաղուց է, որ թողուց արեւելքը գնաց արեւմուտք․ երեք դար է, որ անդ կը դեգերի, արեւմտեան հին աշխարհ իւր ամէն չէնքով տապալեց․ նոր հիմըն դրաւ, նոր աշխարհ կանգնեց, նոր մարդ վերածնեց, լոյս գիտութիւն եւ քաղաքակրթութիւն ծաւալեց ընկերական աշխարհին մէջ։ Անշուշտ ժամանակ միշտ յարեւմուտս չի մնար․ մի օր կը դառնայ յարեւելս եւ զայն եւս իւր հնութենէն կը վերանորոգէ։

Թողունք այս վերացեալ մտածութիւններ, որդեակ իմ․ եւ այսպէս չը կարծենք ու դատենք հեղգամտութեամբ, թէ երբ մարդիկներ անգործ նստին, ժամանակն ինքնին նոցա համար կը գործէ։

Մենք թէպէտ աշխարհիս բոլոր պատահարներ ժամանակի ազդեցութեան կուտանք, բայց հետազօտել պէտք է, թէ պատահարներն ի՞նչ են, ուստի՞ է նոցա սկիզբն եւ ծնունդ։

Ուղիղ դատելով հարկ է խոստովանիլ, թէ ժամանակի պատահարներ մեր անցեալ գործոց հետեւանքներն են․ եթէ մենք չգործենք՝ ժամանակ իւր պատահարով կը դադարի, ի

բաց թողլով այն բնական տարերաց պատահարներ։ Ժամանակը մինչեւ գերեզմանին դուռը կը վարէ իւր պաշտօնը եւ կ՚իշխէ մարդոյն կենաց վերայ, այնուհետեւ կը կնքէ իւր հաշիւը, ինչպէս կնքեր է մեռելոց աշխարհին հետ։

Որչա՞փ զարմանալի է, երբ մարդիկ առանց գործելոյ, ժամանակէն գործ եւ յաջողութիւն սպասեն, որպէս թէ ժամանակն աշխարհին տնտեսն ու մատակարարն է, եւ կամ թէ մեր ագարակի մէջ վարձաւոր մշակ։ Նախախնամութեան օրէնքով ժամանակն իւր պարտիքը լիովին կը կատարէ։ Ցանկալի գարուն կը բերէ մեզ, որ վարենք, ցանենք· ամառն կը բերէ, որ մեր ցանածներ բուսնին· աշուն կը բերէ, որ մեր ամէն աշխատութեանց ու վաստակոց պտուղները ժողովելով շտեմարանենք· ձմեռն կը բերէ, որ երկրին հող, վաստակաբեր մշակն, եզնամոլներ հանգչին, եւ մարդ իւր վաստակը քաղցրութեամբ վայելէ։ Անաշխատ եւ տրտնջող մարդ, որ ամէն բան ժամանակի յաջողութենէն կը յուսայ, ոչ ի գարնան կը ցանէ, ոչ յամարան կը դարմանէ, ոչ յաշնան կը ժողովէ եւ կը ցանկայ նա, որ ի ձմերան նստի հանգիստ ուտէ եւ վայելէ։

Մարդիկ որ վիճակի մէջ որ լինին, թէ յաջողութեան եւ եւ թէ ձախողութեան, միշտ սովորած են թէ անշնորհակալու լինել ժամանակէն· ուստի եւ կը խօսին թէ ժամանակ չար է, անյաջող է, միշտ արկածներ կը բերէ· մի օր ծաղրերես կ՚երեւի եւ միւս օրը կը խոժոռի· թէ այսօր հաց տայ՝ վաղն անօթի կը թողու եւայլն։

Գիտենք, ժամանակին բախտ եւ մարդոյն յեղյեղուկ կեանքը անհաստատ է· գիտենք նաեւ ժամանակի մեծամեծ արկածներ ունի, որ մեր ուժէն կը խուսափին եւ մարդ կարող չէ խոյս տալ կամ փախչիլ։ Ամպեր կ՚որոտան, հուր եւ կայծակ կը փայլատակեն, խեղճ հովիւ որ կաղնի ծառի տակ ապաստաներ է, կը զարնուի եւ անդէն մրկած ու սեւցած խանձող կը դառնայ։ Ժամանակ՝ նոյն ամպերէն սոսկալի կարկուտ եւ անձրեւ կը տեղայ, սարն ու ձոր հեղեղ կը դառնան, գեղն ու քաղաք կ՚ողողեն ու կը քանդեն։ Ժամանակ՝ ամպերէն կ՚իջնայ գետնի տակ կը մտնայ· ահագին երկրաշարժներ կը հանէ· կը կործանէ մեր շքեղ կառուցած շէնքերը· ո՛հ մեր շինած տունը մեզ համար գերեզմանի գուբ կը լինի։ Ժամանակն իբրեւ ժանտ հրեշտակ մահտարաժամ կը բերէ, աշխարհէ աշխարհ կը յածի, չորն ու կանաչ առ հասարակ կը վառէ, եւ չգիտես դու թէ ո՞ւր տեղէն կը բերէ այն անհուն անհամար ջորեակն ու

մարախ, որ ցանած արտեր եւ դաշտերու կանաչներ կուտէ կ՚սպառէ։ Ժամանակն մերթ եւս երկնից անձրեւաբեր ամպերը կը վանէ ու կը ցրուէ, երկինք կը պղնձանայ երաշտութեամբ եւ կը հարուածէ խեղճ երկրագործին բոլոր աշխատութիւնը։ Ժամանակը չէ թէ սաստկաշունչ հողմերով կը փչէ ու ծովու ալիքներ միայն կը յուղէ, եւ ծովավաստակ աշխատաւորները ջրի անդունդին տակ անհող, անգերեզման, անյիշատակ կը թաղէ, այլ եւ նոյն իսկ ցամաք երկրին վերայ, զոր մարդիկ ապահով կը կարծեն, նոյն հողմերով կը տապալէ ծառեր ու շէնքերը, եւ Ափրիկէի մէջ շատ անգամ գեղեր ու կարաւաններ անապատի աւազներուն տակը կը թաղէ։

Ձենք ժխտեր թէ ժամանակն այլ եւս շատ արկածներ ունի, որուն տակ ենթարկուած է աշխարհն ու հէք մարդ, բայց ժամանակի բերած այդ պատահար արկածներ շատ նուազ են եւ ոչինչ համեմատութիւն չունին այն արկածներուն հետ, զորս մարդ ինքնին իւր ձեռօք կը բերէ, կամ անգիտութեամբ կամ գիտութեամբ ու չարութեամբ հանդերձ։

Մտադրութեամբ լսէ, որդեակ իմ, ես մարդոց ու ժամանակի իրաւանց դատաստանը ի վեր պիտի հանեմ· եւ դու մանուկ իմաստուն ես, իբրեւ ծեր՝ դատաւոր եղիր ու վճիռ տուր։

Մարդիկ իրաւունք ունի՞ն ասել, թէ ժամանակն իւր այդ արկածներով մեր աշխարհ կ՚աւերէ, եւ կը թշուառացնէ մարդկային ընկերութիւնը, երբ ազդ՝ ազդի դէմ, մարդ՝ մարդոյ դէմ, ընկեր՝ ընկերի դէմ սուր հանելով՝ եղբայր՝ հարազատ եղբօր դէմ իբրեւ թշնամի կը զինեն։ Եւ երբ աշխարհիս դահակալաց հոգին զայրանայ, դիւանագիտութեան ծածկեալ հրաբուխներ պայթին, ծովալիքներու պէս բանակները պատերազմի դաշտը խաղան, վիթխարի հրանօթներ որոտան, բիւր բիւր հազար կտրիճ կայտառ երիտասարդներու կեանք՝ մի փոքրր ժամանակի մէջ դիտապաստ ի գետին փռուին, ոտնաքարշ անարգաբար լցուին այն վիհերուն մէջ, զորս այդ դժբախտ զինուորներն իրենց ձեռքով փորեցին· մայրեր սգան որ կորուսին զաւակները, ամուսիններն ողբան որ կորուսին լծակից սիրելիներ։

Ահաւասիկ քեզ ամենամեծ պատահար եւ պատուհաս մարդկային ազդի, որ բիւր անգամ բնական կատահարներէն դժնդակ է։ Եւ ո՛վ է այդ արուեստական ու կամածին պատահարներ յառաջ բերող· մարդն է, մա՛րդ· նորա մեծամիտ ոգին է, նորա բարձրացած ձեռքն է, որ կը ծանրանայ մար-

ղոյն վերայ եւ անխնայ կը ջախջախէ Աստուծոյ ճարտարապետած պատուական անօթները, զորս իբրեւ բրուտ մի մի կը շինէ նա, եւ թրծելով ղայն հոգեղէն կրակով՝ կը հանէ ի լոյս:

Բայց միթէ սորա համար ցա՞ւ կ'զգան աշխարհիս անսիրտ, սառնահոգի դիւանագէտներ, եթէ պատահին իրարու՝ կատակով կը խօսին.— Թող մայրերը կրկին ծնին: Ո՛հ, միթէ չգիտե՞ն դոքա վշտակիր մայրերուն երկունք. չգիտե՞ն թէ մի մանուկ քանի՞ դժուարութեամբ կը մեծնայ, մարդ կը լինի: Զգիտեն, այո՛, նոցա մեծ գիտութիւն՝ միայն շահն ու փառքն է, որոց համար փոյթ չէ երբէք թէ կոտորուին ժողովուրդի որդիքները:

Հասկցա՞ր, խոհական որդեակ իմ, թէ մարդոյն կենաց մեծ պատահարն ու պատիժը՝ դարձեալ նոյն իսկ մարդն է: Տարերաց պատահական արկածներ ոչինչ համեմատութիւն չունին այն արկածներուն հետ, զորս խորամանկ մարդոց ձեռք կ'արուեստաւորէ:

Սակայն շատ զարմանալի կը թուի ինձ այս, զի մարդիկ, ժողովուրդներ այնքան սովորած են մարդոց ձեռքէն պատահարներ կրել, մինչեւ ոչխարի նման ի սպանդանոց թէ վարին, ոչինչ չեն զգար կ'ասեն թէ մեր բախտ, մեր ճակատագիրն այս է: Մանաւանդ արեւելեան ժողովուրդներ. եւ սորա բարոյական եւ ներքին պատճառն ուրիշ բան չէ, քան թէ տգիտութեան անլոյս խաւարին մէջ կաշկանդուած մարդոց ստրկացած, ընկճուած, խեղդուած ոգին:

Դառնանք, այժմ խօսինք այդպիսի ժողովրդոց կարծեաց վերայ, որք միշտ յամենայն ժամ տրտունջ կը բառնան թէ՝ ժամանակի պատահարներ չար են. ժամանակ մեզ համար գլացող է, մեք մանուկ ժողովուրդ ենք, մեր ձեռքէն բռնելով յառաջ չի վարեր. այլ թողեր է զմեզ կիսաճամբոյն վերայ այնպէս անշարժ ու յետադէմ, մինչ արեւմտեան բոլոր ազգերը տարաւ հասոյց յառաջդիմութեան օթեւան եւ հանդիստ:

Բայց միթէ այդ աչառող կարծուած ժամանակն՝ արեւելեան աշխարհին եւ նորա ժողովրդոց համար բարի պատահումներ չը բերա՞ւ: Ա՛յո, քսան տարիէն առաջ նա մի մեծ պատահար անցուց, այնուհետեւ քնացաւ. ասաց ու կարծեց թէ այլ եւս պատահար չունիմ ես, դարձեալ կ'ապրիմ այնպէս, ինչպէս կ'ապրէի յառաջ հին օրէնքով, հին դրութեամբ եւ հին ճանապարհով, որոյ ելքը դարձեալ հին պատահար բերաւ մեր

աշխարհին վրայ․ յանկարծ մեր քնացած տեղէն արթնացանք եւ ահա պատահարը մեր դուռը հասեր էր։

Դո՛ւ ասա, որդեակ իմ, այլ եւս իրաւունք ունի՞ այսպիսի աշխարհ եւ ժողովուրդ, որ սուր աչք ունի՝ հեռատեսել չը գիտէ, սուր միտք ունի՝ սովրիլ չի կամիր, հանճար ունի, ուղեղին մէջ թմրած է, ի դուրս հանել չգիտէ․ ձեռք ունի, արուեստագործել չգիտէ․ առոյգ ոտք եւ սրունքներ ունի, քալել չգիտէ․ լեզու եւ ազատ կամք ունի, խորհելու եւ խօսելու փաստ չգիտէ․ կը ճնշուի՝ ճիչ բառնալու եւ եղանակ չգիտէ․ բնակավայր ունի՝ կը մոռնայ, յիշել ու շինել չգիտէ․ ընդարձակ հող ունի՝ մշակել արդիւնաւորել չգիտէ․ աղքատ է դեռ կը սիրէ գեղխ կեանք, խնայութեամբ տնտեսել չգիտէ․ թէ պատեհութիւն յաջողի՝ ժամանակ ճանչնալ չգիտէ․ թէ ոտն մի փոխէ՝ կը պարծի, կ՚աղաղակէ, լռին ու խոհեմ յառաջդիմութիւն չը գիտէ․ թէ ասեն ճամբոյն վրայ առիւծ կայ, վատասրտելով կը դողայ, առիւծի ձեռքէն անցնիլ, ազատիլ չգիտէ․ ինքնավար օրէնք եւ սահմանադրութիւն ունի, վարիլ ու հնազանդիլ չգիտէ․ դեռ մտօք մանուկ լինելով՝ քուէն եւ ընտրութիւն չը գիտէ․ միշտ իւր վարիչները փոփոխել կ՚ուզէ, անփոփոխ պահել չգիտէ․ միշտ ներկային մէջ գեղծանելով, ապագային հետեւանքները չգիտէ։

Լսեցիր ու դատեցի՞ր, որդեակ իմ, երբ մի երկիր, ազգ եւ ժողովուրդ այսչափ եւ այսպիսի անգիտութեան եւ խակութեան կեանքին մէջ կը թափառի, այլ եւս իրաւունք ունի՞ նա մեղադրութեան յանցանքը ժամանակի վրայ դնել, եւ ինքն չքմեղս լինելով ասել՝ թէ ժամանակը չար է․ եւ թէ երկրի պատահարներ կը կապեն մեր ձեռք եւ ոտքը։

Գիտենք այդ, այո՛, կան երկրի պատահարներ, ծանր ու դժուարին, որք մարդոյն յառաջդիմութեան քայլերը կը կաշկանդեն։ Բայց միթէ ժամանակի պատահարները կը բարձուի՞ն կամ կը պակսի՞ն աշխարհէս։ Եթէ մարդոյն մեծ պատահար մարդն է, պէտք է մրցիլ այդ պատահարին հետ գիտութեամբ եւ կրթութեամբ․ այդ միակ միջոցն է, որ կը յաղթէ պատահարներուն։

Թողունք այժմ երկրի եւ ժողովուրդի ընդհանուր պատահարները, դառնամք առանձին ընտանեաց, գերդաստանաց եւ առանձին անհատ անձինքներու համար խորհրդածել, որք զօրհանապազ դառն տրտունջ կը բառնան, թէ ժամանակի չարու-

*Թենէն մեր տուն մեր գերդաստանը կործանեցաւ. ճոխ ու հարուստ ազնուական ընտանիք չքաւորեցան. եւ այլն։*

*Բայց ուղղութեամբ դատելով տեսանք զոցա եւ ժամանակի պատահարին դատաստանը, տեսնամք նաեւ թէ այդ կործանիչ ձեռք առաւել իրենց ձե՞ռքն է, թէ չարապատեհ ժամանակին։*

*Եթէ այդ ճոխ ու փարթամ ազնուական ընտանիքներ, երբ ուղիղ տնտեսութեան օրէնքէն ու չափաւորութենէն խոտորելով՝ դեղձան չռայլեցան ամենազեղխ կեանքի մէջ, թափեցան թէ հին եւ թէ նոր հարստութենէն. այս բնական վախճանը՝ չար ժամանա՞կ բերաւ, թէ չափազանցութեան հետեւանքն էր, որ չգիտցան հարստութեան կեանք տնտեսել։*

*Դու կը տեսնաս ու կը ճանչնա՞ս մեծատանց այդ ժառանգորդ զաւակներ. զոքա երանի՛ կուտան իրենց հօր եւ պապու ժամանակին, ասելով, թէ նոցա ժամանակ շատ բարի ու յաջող էր, իսկ մեր՝ չար ու դժուարին։ Այսպէս արդարանալ կ՚ուզեն զոքա, որք իրենց կեանքը հեղգութեան եւ անգործութեան մէջ վարեցին, ոչ միայն անսպառ գանձեր վատնեցին, այլ եւ այդ նիւթական ճոխութեան հետ կորուսին հայրենի տան բարոյական համբաւն, փառքն ու յիշատակն։ Արդ, ո՛ւմ է մեղադրանք, ո՞ւմ է յանցանք, չար ժամանակի՞ն թէ չարավար ժառանգորդներուն։*

*Գուցէ զոքա սրտմտին եւ չընդունին այս դատաստանը, ասեն թէ չար ժամանակ զեղխութեան չարօրինակ, նորասիրութեան պերճանքները հեղեղի նման արեւմուտքէն քշեց բերաւ մեր աշխարհ, մեք եւս կամայ ակամայ ողողեցանք. եւ նոյն իսկ ժամանակ զմեզ ստիպեց որ հետեւինք քաղաքակիրթ աշխարհին։*

*Կը դրուատէի ես Հայոց ընտանիքը, եթէ ստոյգ եւ իրապէս փափագէին քաղաքակիրթ աշխարհի օրինակին հետեւիլ։ Երանի՛ թէ այնպէս լինէր, բայց իրաց ճշմարտութիւն կը վկայէ որ զոքա թողլով Եւրոպիոյ մեծամեծ բարեմասնութեան օրինակները, միայն նորասիրութեան պերճանքները գրկեցին. թողին ներքին կրթական մասն, եւ միայն արտաքին կեղեւն առին. թողին ինչ որ վայելուչ էր մեր ազգային բնիկ յատկութեան, եւ ինչ որ մեր յառաջդիմութեան ձեռնտու օգտակար էր, այսինքն բուն քաղաքակրթութեան ճշմարիտ տարերք, որ է գիտութիւն, կրթութիւն եւ լուսաւորութիւն։*

*Է՛հ, լսասէր որդեակ իմ, ես ձանձրացայ այս տնտեսական*

խնդրոյն վրայ քարոզելով, խօսելով, գրելով եւ կրկնելով. այս մի քանի օրինակները քեզ բաւական են, մնացորդները դու ինքնին իմաստասիրէ: Գիտցիր, որ աշխարհիս վերայ ամէն չարաչար կեանք՝ իւր չար հետեւանքն ունի, զորս մարդիկ չար ժամանակ կը կոչեն:

Բայց մենք կը հաւատանք թէ՝ ժամանակն երկնից արդարութեան ձեռաց մի չափն է. Քրիստոս վկայեց այդ չափին համար. «Որով չափով չափէք, չափեսցի ձեզ»: Կը հաւատանք նաեւ որ այդ չափին գործադրիչ ոստիկանը՝ ժամանակն է, որ իւր չար կարծուած պատահարներով կը հատուցանէ իւրաքանչիւրին գործոց համեմատ չափով:

Այլ եւս աւարտենք այս դասը, որդեակ իմ, եւ դու ուղղէ քո դատաստանը ժամանակի պատահարին վերայ, գիտնալով թէ ժամանակն ինքնին պատահար չունի, այլ ամէն պատահար մեր նախորդ գործքերուն վերջին հետեւանքներն են, եւ հետեւանքները Աստուծոյ յաւիտենական օրինաց հատուցումն են: Ինչ որ այսօր կը կրենք, անցելոյն հետեւանքն է, եւ ինչ որ այսօր կը գործենք՝ նորա հետեւանքն եւս ապագայն կը կրէ:

Ուրեմն, երկիւղած որդեակ իմ, վախցիր գործերէդ քան ժամանակի պատահարներէն. ներկայ կեանքիդ մէջ միշտ ջանացիր ուղղութիւն գործել, հաւատալով որ ուղիղ գործին հետեւանքն ու վախճանը՝ ուղիղ կը լինի: Ուղիղ ճանապարհ դէպի ուղիղ նպատակը կը տանի: Ուսիր Քրիստոսի առակէն, որ անառակութեան հետեւանք սովամահութիւն է, ուսիր աշխարհի օրէնքներէն, որ գողութեան հետեւանքը՝ կախաղան է: Ուսիր կեանքի փորձերէն, որ զրկանաց հետեւանքը՝ չարաչար հատուցումն է:

Շատ մի ծիծաղիր, հետեւանքն լաց է, եթէ սգաս ու համբերել գիտնաս՝ հետեւանքն մխիթարութիւն է: Ամենայն օրինազանցութեան հետեւանքը միշտ պատիժ, անարգանք եւ կորուստ է, ինչպէս առաքինութեան հետեւանքը վարձատրութիւն եւ փառք է: Եթէ աշխարհ արդարապէս չը վարի, ոչ օրինազանցին պատիժ տայ եւ ոչ արդարոյն վարձ, թո՛ղ յայնժամ քո դատաստանը երկնից արդարութեան, եւ դու առաքինացիր, զօրացիր բոլոր կեանքիդ մէջ. եւ հաւատա, որ ժամանակի պատահարներու հեղեղներ եթէ յառնեն ու բաղխեն զքեզ, դու անսասան, անկործան կը մնաս, երբ հաւատոյդ չէնքը՝ դու եւս Աւետարանի այն իմաստուն մարդոյն պէս, խորադիր վիմի վերայ հաստատես:

*Թէ ժամանակի պատահարներ զքեզ տարուբերեն, դու անշարժ կաց. մի թերահաւատելով սասանիր, պատահարներ կուգան կ'անցնին. զի այս աշխարհ պատահարի աշխարհ է, հէք մարդ պատահարներուն տակ ճնշուած է եւ կարող չէ խոյս տալ. սորա համար Քրիստոս կարեկցելով մեր անպաշտպան խեղճութեան վրայ՝ սորվեցուց, որ աղօթենք առ Հայր, «Մի տանիր զմեզ ի փորձութիւն, այլ փրկեա ի չարէ»:*

*Աղօթէ, որդեակ իմ, յԱստուած ապաւինիր, եւ պատահարներ քեզմէ կը հեռանան: Ուղիղ մտածէ, ուղիղ գործէ, ուղիղ ընթացիր, եւ պատահարներ քեզ չեն պատահիր: Այլ մանաւանդ աղօթէ որ մարդոց պատահարին չը հանդիպիս: Դաւիթ առաւել ընտրեց Աստուծոյ պատահար քան մարդոց, որ խստասիրտ են, ողորմիլ չը գիտեն. սորա համար քեզ միշտ լաւագոյն է որ Աստուծոյ ձեռքն յանձնուիս, եւ սրտեռանդ աղօթես Դաւթին բերանով. «Աստուած ապաւէն իմ եւ ես յուսամ ի նա»:*

---

### *Դ Ա Ս Ժ Գ.*

## ԱՒԵՏԱՐԱՆ ԵՒ ԸՆԿԵՐՍԻՐՈՒԹԻՒՆ

---

Ի՞նչ է դարման այս մեր հիւանդ ու թշուառ աշխարհին.— Աւետարան, ընկերսիրութիւն եւ միաբան զօրութիւն. սորա համար՝ բանն բժիշկն ինքնին եկաւ յաշխարհ. մեր վէրքերը բուժել եւ մարդկութեան հնացեալ կեանքը վերանորոգել: Եւ որոյ անունն՝ ճշմարտութիւն եւ կեանք էր, այսպէս աւետարանեց. «Ես եկի, զի զկեանս ունիցին եւ առաւել եւս ունիցին»:

*ԱՒԵՏԱՐԱՆԻՆ որդեգիր, հաւատացեալ որդեակ իմ Սամուէլ, Աւետարանը եւ Աւետարանին քարոզած ընկերսիրութեան դասը պիտի խօսիմ քեզ. ականջդ բաց արա, սիրտդ ինձ տուր, խոնարհ երկիւղածութեամբ լսէ Յիսուսի դասին, որ քեզ լոյս կուտայ, յոյս կուտայ, կեանք եւ անմահութիւն կուտայ:*

*Յիսուս, որ աշխարհիս վերայ ինքն անգիր անդպրոց էր, Պաղեստինոյ աշխարհին մէջ բացաւ իւր Աւետարանին համալսարանը եւ սկսեց քարոզել:*

*Ես կը թողում այժմ աւետարանին քարոզած ընդհանուր*

դասեր, միայն ընկերսիրութեան դասն պիտի աւանդեմ քեզ, եւ այն բաւական է թէ սրտի մտօք պահես։ Վասն զի սէր եւ ընկերսիրութիւն Աստուածային պատուէրներուն գլուխն է եւ օրինաց հիմն։

Մովսէս, որ Իսրայէլի ընկերութեան օրէնսդիրն էր, աստուածսիրութենէն յետոյ, յարեց ընկերսիրութեան պատուէրը։ Բայց Մովսէս այս գերագոյն պատուէրը միայն քարէ տախտակին վերայ գրեց՝ թողուց ու գնաց, եւ զայն անձնազոհ արիւնով մկրտելով չը նուիրագործեց։

Իսկ Յիսուս սիրոյ մեծութիւնն՝ իւր անձին վերայ չափելով ասաց. «Մեծ քան զայս սէր ոչ գոյ, եթէ ոք զանձն դիցէ ի վերայ բարեկամին»։ Ասաց, եւ անդէն իւր բարեկամ մարդոյն համար գնաց ի խաչ եւ ընկերսիրութեան օրէնքը իւր արիւնով, իւր մահով եւ իւր մեծ ու անկշիռ սիրով մկրտեց, եւ այս իւր գերագոյն օրինակով սէրը տուաւ աշխարհին՝ իբրեւ մի միայն դեղ ու դարման, փրկութիւն, ազատութիւն, հիւանդ ու թշուառ մարդկային ընկերութեան։

Այս դեղն ու դարման մի բառով կը կազմուի.— ՍԻՐԵՑԷՔ. իւր զօրութիւնն անչափ է, իւր շնորհն՝ անկշիռ է, իւր բժշկութիւնն՝ ամենարուեստ է, իւր ձեռքն՝ ամենահաս է, եւ իւր սուրն է միայն, որ կ՚սպաննէ մարդոց ոգւոյն մահաւիթ կիրքերը։

Երկնային սէր, որ մարդոյն կերպարանքով երեւցաւ աշխարհին, եւ որ մեր փրկութեան ճարտարապետն է, նա խորագոյն դրաւ սիրոյ այս հիմն. եւ չէ թէ հողի վերայ, հապա մարդոց սրտին ու հոգւոյն մէջ, որպէս զի այդ հիման վերայ նորոգէ մարդկութեան հնացեալ շէնքը։

Սիրոյ այս մեծագոյն օրէնքն է միայն, որ կարող է աշխարհիս վերայ հաստատուն պահել մեր ընկերական շէնքը, ապա թէ ոչ՝ հիմնայատակ կը քայքայուի։

Խոստովանիլ եւ վկայել պէտք է, որդեակ իմ, որ գիտութիւն եւ քաղաքակրթութիւնն եւս արդի մարդկային ընկերական վիճակը բարւոքեցին առաւել արտաքուստ։ Բայց դու մի հետեւիր այնչափ այն սնապարծ մարդոց մեծախօսութեան, որ այդ շնոհ եւ պարծանք՝ միայն գիտութեան եւ քաղաքակրթութեան կուտան. եւ առ ոչինչ կը համարին Աւետարանին արդիւնքը։

Այլ դու ճշմարտութեամբ հաւատա, թէ աշխարհիս արդի ընկերական յառաջդիմութեան հիմունքը՝ Յիսուս իւր Աւետա-

բանով եւ ձեռքով դրաւ։ Եւ ի՞նչ են այդ բարոյական հիմունքը, ահաւասիկ. սէր, հաւասարութիւն, եղբայրութիւն, միութիւն եւ ընդհանուր անխտիր մարդասիրութիւն, որով բովանդակ երկրիս անհամար ազգերը մի համաշխարհական եկեղեցւոյ գաւիթը ժողովելով՝ մի հօտ կը կազմէ, մի հօր որդիքներ կը կոչէ, եւ ինքն է միայն այդ հօտին հովիւ եւ առաջնորդ։

Եւ ի՞նչ է առաւելագոյն եւ ճշմարիտ կեանք զոր Յիսուս բերաւ յաշխարհ, եթէ ոչ Աւետարանին քարոզած ընկերական սէր. եւ հաւատացելոց՝ համատարած խաղաղութիւն. զոր Յիսուս միայն տուաւ, եւ աշխարհ կարող չէ տալ զայն։ Ուստի իբրեւ իւր վերջին կտակ, վերջին ընթրեաց իրիկուն խօսեց. «Զխաղաղութիւն զիմ տամ ձեզ, զխաղաղութիւն զիմ թողում ձեզ։ Ոչ որպէս աշխարհս տայ՝ տամ ես»։

Կարդա հնախօս պատմութիւններ եւ կը տեսնաս, որ մեծամեծ աշխարհակալներ եկան այս աշխարհ անցան ու գնացին. աշխարհ խռովութեան մէջ թողին, իրենք գերեզմանին մէջ խաղաղութիւն գտան։ Նոքա իրենց զօրութեամբ ու սրով բնաւ չկարացին խաղաղութիւն տալ երկրին, այլ մանաւանդ երկրին երեսը արիւնով լուացին եւ սոսկալի բռնութեան տակ ջախջախեցին մարդոյն ազատութեան կեանքը։

Եկան վերջին դարեր եւ մանաւանդ իննեւտասներորդ դարը, զոր քաղաքակրթութեան դարը կը կոչեն եւ յորում ես եւ դու ծնանք ու կ'ապրինք. կասեն թէ մարդոյն յառաջդիմութեան քայլեր քիչ մնաց որ մինչեւ ի կատար հասնին։ Քաղաքային եւ աշխարհի կառավարութեան համար դիւանագէտներ ժողովեցան, մեծամեծ ստուար ստուար օրինագրքեր շինեցին, եւ երկրի խաղաղութիւն մշտնջենաւոր պահելու համար դաշնակցութիւններ կռեցին։ Եւ ի՞նչ էր նոցա բոլորի նպատակը, մարդկային ընկերական կեանքը հաւասար բարւոքելո՞ւ. թէ՞ մէն մի գահեր իրենց երկրի շահը առաւել հոգալու։ Այդ իրաւունք է, գիտենք, բայց առանց ընկերին եւ ազգերու իրաւունքը խլելու։

Այժմեան աշխարհիս վերայ տիրող մեծ աշխարհակալ՝ շահն է. սորա համար մարդ չի հաւատար թէ քաղաքակրթութիւն՝ Յիսուսին տուած խաղաղութիւն կամ Աւետարանին քարոզած ընկերսիրութեան դաշնակցութիւնը կ'ընդունի։

Ո՜հ, որչա՞փ հեռու են իրարմէ դիւանագիտութիւն եւ Աւետարան, Խաչն ու Կրուպի Թնդանօթն. եկեղեցւոյ միաժո-

ղով գաւիթն եւ պատերազմի արեան դաշտ․ եւ ի՜նչ համեմատութիւն կայ մահուան եւ կեանքի մէջ։ Քաղաքակրթութիւն դեռ մահ կը բերէ, դեռ մարդոց համար սպանութեան գործիքները կը հնարէ, քուն եւ հանգիստ չունին աշխարհիս տիրապետներ ու դիւանագէտներ․ վիշապի նման տուտի վերայ կեցած կը փչան կ'սպառնան, եւ ի՜նչ կը խնդրեն, պատերազմ․ անշուշտ զիրար կլանելու համար։

Այսպէ՛ս, մինչդեռ Յիսուս իւր Աւետարանին ազատ սիրով խաղաղութիւն կուտայ երկրին, մեր կարծեցեալ քաղաքակրթութիւն՝ դեռ սրով եւ արիւնով եւ հին աշխարհի խելքով խաղաղութիւն հաստատել կ'ուզէ։

Տե՛ս դու եւ համեմատէ այս երկու հակառակ եղանակները․ այլ եւս կը հաւատա՞ս թէ սուտ քաղաքակրթութիւն առանց Աւետարանի աջակից զօրութեան՝ մարդոյն խռոված ընկերական վիճակը խաղաղութեան մէջ կը պահէ․ զգօնանան հանդարտին այն զայրացած ոգիները, որ հուր, սուր, կռիւ եւ վրէժխնդրութիւն կը գոչեն։

Աւա՛ղ մարդկային թշուառաբախտ ընկերութեան, ո՛վ գիտէ, դեռ քանի՞ ժամանակ, քանի՞ դարեր աշխարհ իւր ազգերով ժողովրդով պիտի հեծեն աղիողորմ, երկրիս մեծամեծ պետական ծովեր պիտի խռովին․ այդ ալիքներ կոհակներ պիտի հանեն․ այդ ինքնավառ հրաբուխներ, ինչպէս գրեցի, միշտ պիտի բորբոքին, շարժեն երկրագունդ, աշխարհ սասանեն, ջրով ու մոխրով ծածկեն ժողովրդոց կեանքը։

Ոգիդ կը լքանի, որդեակ իմ, եւ յուսահատ կը լինիս, եթէ տակաւին աշխարհավար դիւանագէտներ այսպէս շարունակեն, աշխարհի վիճակ ու վախճանն ո՞ւր կը հասնի։

Ես խօսիմ քեզ, որդեակ․ մեր աշխարհի կարգ ի սկզբանէ անտի այս է եւ այսպէս պիտի երթայ տակաւին։ Դու գիտե՛ս դեռ մարդն անհաւ եւ անկատար հանք մի է․ աշխարհիս պատահար քուրային մէջ, այսինքն կրակի եւ իւր արեան մէջ նա դեռ պիտի հալի ու մաքրուի, մինչեւ որոշուին ընտրեալներ, մինչեւ գայ ճշմարիտ քաղաքակրթութեան ոսկեդար, յորում աշխարհիս վարիչներ անկեղծ սրտով եւ անխաբ մտքով ընդունին Աւետարանի ընկերութեան եւ խաղաղարար ոգին։ Մեռնին երթան աշխարհիս երեսէն խռովարար եւ անարդար տիրապետող ոգիներ։ Այն օր միայն հաւատանք, որդեակ, որ Դաւթի գուշակութիւնը տիրապէս կը լրանայ․ «Եղիցի խաղաղութիւն ընդ ամենայն երկիր․ եւ ի վերայ գլխոց լերանց։ Առցեն լերինք

*զխաղաղութիւն ժողովրդեան եւ բլուրք զարդարութիւն»:*

*Դառնանք այժմ խօսինք ընկերսիրութեան այն պարտիքներու վերայ, որոց առ հասարակ պարտական են Աւետարանին հաւատացող որդիքներ:*

*Բայց թէ կ'ուզես ճշդիւ իմանալ, որդեակ իմ, թէ ի՞նչ է ընկերսիրութեան պարտք, ո՛րչափ եւ մինչեւ ո՞ւր, եւ ո՞վ է մեր ընկեր․ միայն մեր ընտանի՞ք, մեր ազգակա՞նք, մեր բարեկա՞մք, մեր դրացի՞ք, մեր ազգայինք կամ հայրենակի՞ցք, եւ կամ այն մարդի՞կ, զորս մենք կը ճանաչեմք: Ո՛չ, Աւետարանի ընկերսիրութեան պարտիքը ընդհանուր մարդասիրութիւնն է․ երբէք այդ խտրող բառերը չի ընդունիր․ «Եթէ սիրէք դուք զսիրելիս ձեր, կամ փոխ տայք միայն բարեկամաց ձերոց, ո՞ր շնորհ է ձեր»․ ասաց Քրիստոս:*

*Ուստի ընկերսիրութեան մեծ պարտիք պէտք է համատարածի բոլոր մարդակյին ընկերութեան վերայ, չխտրելով երբէք, ոչ ազգ, ոչ կրօնք, ոչ մեծ, ոչ փոքր, ոչ ծանօթ, եւ ոչ անծանօթ, այլ ընկեր համարել հաւասարապէս ամէն մարդ որ իւր նմանակից պատկեր կը կրէ:*

*Եւ այս ապացոյց՝ մի առակ բերեմ քեզ Աւետարանէն, որով ծայրագոյն ընկերսիրութեան օրինակը կուտայ Յիսուս իւր բոլոր հաւատացելոց: Երբ կեղծող օրինական դպիր մի փորձելով զՅիսուս կը հարցանէր․— Վարդապետ, զի՞նչ գործեցից, զի կեանս յաւիտենականս ժառանգեցից: Յիսուս պատասխան կուտայ․ Յօրէնս զի՞նչ գրեալ է եւ ո՛րպէս ընթեռնուս: Կը պատասխանէ դպիրն․ Թէ՝ Սիրեսցես զՏէր Աստուած քո յամենայն սրտէ քումմէ»: Յիսուս դարձեալ կը պատասխանէ․ Ուղիղ ետուր զպատասխանիդ․ զայդ արա եւ կեցցես: Պարծող դպիրն սկսեց կրկին անգամ հարցնել․ «Եւ ո՛վ է իմ ընկեր»․ որպէս թէ չգիտէր: Յիսուս յայնժամ ճշմարիտ ընկերսիրութեան՝ եւ սքանչելի առակով մի պատասխան տուաւ:*

*«Այր մի իջանէր յԵրուսաղէմէ յԵրիքով, անկաւ ի ձեռս աւազակաց» եւ այլն:*

*Դու շատ անգամ լսեր ու կարդացեր ես այս խորհրդաւոր առակը, որով Յիսուս ընդհանուր եւ անխտիր մարդասիրութիւն կ'ուսուցանէ, եւ աշխարհիս համայն մարդկային ազգը միապէս ու հաւասար ընկեր կ'անուանէ: Յիսուս Մովսէսի նըման միայն Եբրայական ազգին մարդ չէր, որ խտրէր Եբրայեցին ու Եգիպտացին․ այլ նա համայն աշխարհի, համայն ժողովրդոց մարդն էր: Նա չը գիտէր երբէք Հրեայն եւ Սամարա-*

ցին խտրել: Այնպէս կը թուի թէ այդ հարցաբան օրինասէր դպիրն Հրեայ էր, որ զՍամարացին մահու չափ կ՚ատէր. Քահանայն եւ Ղեւտացին եւս Հրեայ էին. որք ճամբու վերայ ինկած անյարիր արիւն շաղախ վիրաւորը տեսան եւ առանց երբէք կարեկցելու՝ անցան գնացին: Չը գիտենք թէ աւազակներէն հարուածեալ անձն ի՞նչ ազգէ էր. Յիսուս նորա ազգի անունը կը պահէ եւ կը յիշէ միայն անկեալ թշուառին կարեկցող մարդ՝ որ բնիկ Սամարացի էր, եւ իսկոյն գթացաւ խեղճին վրայ, պատեց ու դարմանեց նորա վէրքը:

Ով գիտէ, գուցէ անկեալ վիրաւորն եւս կամ Սամարացի էր եւ կամ անծանօթ մի անձն. սորա համար այդ երկու անցնող Հրեայ ուղեւորներն մոլեկրօնութեամբ իրենց սիրտը խըստացուցին եւ չուզեցին տեսնալ անկելոյն աղէտը:

Երանի՛ քեզ, որդեակ իմ, թէ ազնուասիրտ լինիս եւ այս առակի օրինակէն Քրիստոսի քարոզած ընդհանուր ընկերսիրութեան եւ մարդասիրութեան օրէնքը սրտիդ մէջ խորագոյն դրոշմես, գթասիրտ գործասիրտ լինիս. այս աշխարհիս հրապարակին վերայ անկեալ վիրաւորներ շատ կան, չէ թէ միայն ամայի լեռներու մէջ ուր աւազակաց որջերն են, այլ նոյն իսկ բազմաժողով քաղաքներու եւ շինութեանց մէջ. եւ ո՛չ զարկեր ձգեր է ի գետին.— զօրաւորաց զրկանք եւ հարստահարողաց ձեռք: Երբ կը պատահին քեզ այդպիսի զրկեալներն, անկարեկից աչքով մի տեսներ եւ անցնիր առանց կատարելոյ ընկերսիրութեան պարտիքդ որչափ եւ կարող ես: Աշխարհիս թշուառներ մի զններ թէ ո՛վ են, քո պարտիքն է թշուառին վերայ գթալ. քեզ ի՞նչ փոյթ նորա լեզուն եւ կրօն:

Յիշէ, որդեակ իմ, Յիսուսի վերջին պատասխանը, զոր տուաւ օրինասէր դպրին, «Զայդ արա եւ կեցցես»: Գնա կատարէ ընկերսիրութեան պարտիքներդ. եւ յայնժամ կ՚ապրիս դու:

Այլ աւա՜ղ, չը գիտեմ թէ մարդիկ ե՞րբ պիտի ճանչնան այդ մեծ բարոյական զօրութիւն, այդ երկնային զօրավիգ ձեռք, զոր Յիսուս տուաւ իւր հաւատացեալ ժողովուրդին եւ զայն այդ զէնքով զինուորեց. որպէս զի նա կռուի աշխարհի դէմ:

Բոլոր կեանքդ եւ քո անձն թէ Աւետարանին եւ թէ նորա քարոզած ընկերսիրութեան համար նուիրես՝ արժան է: Սիրոյ մեծ օրինակ մեր առջեւէն անցաւ գնաց Գողգոթային գլուխ: Սէրն ի սէր մարդկային ընկերութեան նուիրեց իւր անձն, եւ

*որ բանիւ կը քարոզէր զայն՝ արդեամբ կատարեց աշխարհին առաջ: Տեսէք ու չափեցէք, մարդիկ. Մեծ քան զայս սէր ոչ գոյ. եթէ ոք զանձն դիցէ ի վերայ բարեկամին. ասաց եւ մեռաւ:*

---o---

### ՎԵՐՋԱԲԱՆ

# ՍԻՐԱՔ ԱՒ ՍԱՄՈՒԷԼ

---o---

ՅԱՆԿԱՐԾ որդեակդ իմ Սամուէլ, կեանքիդ առաջին շրջանի դասերն աւարտեցի. թոյլ տուր ինձ որ փոքր մի հանգչիմ, միտքս ու հոգիս կ'ազդուրի, թէ ողջ մնամ ես, եւ Աստուած զքեզ ողջ պահէ, մի բարեդէպ ժամանակի մէջ կ'սկսիմ դարձեալ խօսիլ երկրորդ շրջանի դասերդ. զի դեռ եւս գրել կը սիրեմ, զգիս յօժար է. եւ դու լսել ու կարդալ կը սիրես, ոգիդ փոյթեռանդ է, գիտես ու կը ճանաչես քո յառաջդիմութեան ժամանակ:

Հայրական ու կրթական դասերս խնամով պահէ յուշիդ, միշտ յիշէ թէ՝ եւ ես քանի՞ խնամով եւ սիրով խօսեցայ քեզ, ես քո սերմանացան մըշակն եմ, որդեակ, այս իմ սեւ սեւ գրեր իբրեւ մի մի ցորենահատիկ սրտիդ պարարտ երկրին վերայ ցանեցի այժմիկ. երկինք իւր արեւով եւ անձրեւով բուսուցանէ, եւ Աստուած աճեցուցանէ, ինչպէս կը խոստովանի Պօղոս: Դու պտղաբեր լինիս այնչափ մինչեւ միոյն տեղ հարիւր բերես, եւ ես ու քո հայրենեաց կարօտ որդիքները՝ ուրախ ուրախ վայելենք քո առատ ու շահեկան արդիւնքը:

Քրիստոս իւր աջով զքեզ օրհնէ, ինչպէս օրհնեց իւր մշակ աշակերտները. եւ դու երթալով պտղաբեր լինիս, եւ քո բարի պտուղն ու յիշատակ մնայ աշխարհիս վերայ:

Ես քո հայր Սիրաք ամենայն խնամով աւանդեցի քեզ այս դասեր եւ դու երկիւղած հնազանդութեամբ լսեցիր. բայց գիտցիր, որ միայն լսելով չեն արդարանար. այլ առնելով եւ ուսուցանելով: Եւ դու այժմէն ուխտ դիր որ իմ դասերս որդիներուդ աւանդես եւ այսպէս յորդւոց յորդի, թոռնէ ի թոռ շարունակուելով՝ անմոռաց եւ կենդանի կը մնայ Սիրաքայ հօրդ խրատներ ու դասեր. որով տիրապէս կատարող կը լինիս Առակաց բանին. Որդեակ, զօրէնս իմ մի մոռանար եւ զբանն իմ պահեսցէ սիրտ քո, զի երկայնաւուրք լիցիս ի վերայ երկրի»:

Վարէ՛, որդեակդ իմ Սամուէլ
Ուղի՛ղ վարէ զմանն եւ ակօս․
Արձակ դաշտերն են մեր արտեր,
Պարարտ բերուն եւ բարեբեր․
Եւ ես ցանեմ ցորնի հատեր․
Քաղե՛նք յուսով բազմապատիկ․
Օրհնեա՛լ է հողն եւ մեր սերմեր,
Օրհնեա՛լ՝ մշակք եզնամոլներ,
Օրհնեա՛լ է անդ եւ անդաստան,
Օրհնեա՛լ՝ Աստուած,
Որ տայ անձրեւ եւ արեւ․
Օրհնեա՛լ վաստակ երկրագործին,
Արդար ազատ ի դժրանաց ։





ՍԵՐՈՎԲԷ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ
1833—Փետր․ 10, 1886

ՀՐԱՒԻՐԱԿ

# ԵՐԿՐԻՆ ԱՒԵՏԵԱՑ

---

*ՇԱՐԱԳՐԵԱՑ Ի ՁԱՓՍ ՀԱՅԿԱԿԱՆՍ*

**ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ**

---

Ի ԼՈՅՍ ԸՆԾԱՅԵԱԼ ԲԱՐԵՐԱՐ ՁԵՌՆՏՈՒՈՒԹԵԱՄԲ

ԳԵՐԱԶՆԻՒ ԵՂԲԱՐՑ

**ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ**

---

Բ· ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

---

ՀՐԱՄԱՆԱՒ

*ՊԱՏՐԻԱՐՔԻ Ս· ԵՐՈՒՍԱՂԷՄԻ*

**ԱՄԵՆԱՊԱՏԻՒ Տ· ՅԱՐՈՒԹԻՒՆ**

ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

---

*Ի ՏՊԱՐԱՆԻ ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԱԹՈՌՈՅ*

ՍՐԲՈՑ ՅԱԿՈՎԲԵԱՆՑ

ԵՐՈՒՍԱՂԷՄ

1892

Ի ՅԻՇԱՏԱԿ

ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ՍԻՐԵՑԵԼՈՅ ՀՕՐՆ

*ՍԵՐՈՎԲԷ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ*

*ԿԱՆԳՆԵՆ ԶՀՐԱՒԻՐԱԿՍ*

**ԻԲՐԵՒ ԱՆՄԱՀ ՄԱՀԱՐՁԱՆ**

ՈՐԴԻՔ ՀԱՐԱԶԱՏ

ՀԱՅՐԵՆԱՍԷՐ ԵՒ ԵՐԱԽՏԱԳԷՏ

*ՊԱՏՐԻԿ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿԻՒԼԱՊԻ*

*ԵՒ*

*ՅԱՐՈՒԹԻՒՆ*

# ՈՒՂԵՐՁ

## ԱՌ ԳԵՐԱԶՆԻՒ ԵՂԲԱՐՍ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ

———o———

Ո՞վ էր այն մեռեալ, որ խնկապէս մեռեալ չէր, այլ կը ննջէր քաղցր 'ի քուն. ո՞յր էր այն՝ օրհնեալ դագաղն, որ յանկարծ դրուեցաւ Քաղկեդոնի Սուրբ Թագաւոր Եկեղեցւոյն մէջ. աշխարհ նորա դագաղին չուրջ թափեցաւ. համայն Կոստանդնուպոլսոյ Եկեղեցական դասն. զթաղման տխուր Դատեան ողբաձայն երգեց. Խրիմեան Հայրիկ նոր դամբանական խօսեց, լացիք դուք որդիք առաքինի Հօր, լացին բոլոր ընտանիք, լացին սիրելիք եւ բարեկամք, լացին համայն ազգայինք, լացին զայն առաւել աղքատք:

Եւ ո՞վ էր, որ քան ամէն ուժգին ելաց, դառնապէս ելաց, անմխիթար ելաց, ոչ որդիք, ոչ դստերք, ոչ սիրելիք, ոչ բարեկամք չկարացին մխիթարել այդ զարմանալի ամուսնասէր կին, տիկին՝ մայր տանն Կիւլպէնկեան. ա՛յս ելաց նա վշտակրեցաւ, իւր օրերն սգաւորութեամբ անցին, հեծեծեց, հառաչեց, որպէս արօրիկն այն ամուսնասէր թռչուն, որ լընկերն կորուսանելով, այլ եւս չկամի յետ սիրելւոյն ողջ ապրիլ. ախ ու վահով եւ հեծեծելով կը մեռնի:

Այսպէս մեռաւ եւ մայրն ձեր սգաւոր մինչեւ գնաց գըրկեց սիրեցեալ ամուսնւոյն գերեզման. անդ հանգստացաւ, փակեց իւր աչքը, դադարեց արտասուք:

Այլ ընդէ՞ր այսչափ լաց ու կոծ եւ համայն ազգայնոց տխրութիւն, նա մահկանացու մարդ էր եւ մեռաւ: Բայց չգիտէ՞ք միթէ զի մարդիկ չեն կամիր, որ առաքինիք բարձուին աշխարհէս. քանզի այդ կարի դառն կորուստ է ընկերութեան, որպէս կամիս մտածիր դու թէ նիւթապէս եւ թէ բարոյապէս: Սորա համար առաւել քան զամէն ողբաց Կիւլպէնկեան Նահապետական գերդաստանն. ո՜հ, պակասեցաւ Նահապետն իւր գլխէն եւ ծերն 'ի տանէն. ողբացին ողջոյն Վարդպատրիկեան չառաւիղք, բարեկամք եւ սիրելիք զի բարի խնամակալն՝ Թողուց զիրենք երկնից Հօր պաշտպանութեան ու գնաց, լացին այն ամէն աղքատ ղազարոսներ, զի այն բաց ու պատրաստ կարկառիչ ձեռն՝ կծկեցաւ 'ի գերեզման:

Ես չգիտեմ, դուք ինձ ասացէք, զի՞նչ էին ձեր հանգուցեալ բարի Հօր բարեմասնութեան տիպարներ: Խօսեցէք եւ ես արձանագրեմ: Թէ ասէք մեր հայր գորովալի որդեսէր ընտանեսէր եւ քաղցր էր. այո՛, գիտեմ եւ դուք քան զիս առաւել գիտէք: Թէ ասէք մեծահաւատ կրօնասէր աստուածապաշտ

էր, այդ աշխարհ գիտէ եւ կը վկայէ: Թէ ասէք, եկեղեցին կը սիրէր, ազգ կը սիրէր, ընկերսիրութեան պարտքեր կը կատարէր, դպրոց կը սիրէր, յառաջդիմութիւն կը սիրէր, զայդ ամէն գիտէ ժողովուրդ: Թէ ասէք պարկեշտ էր, համեստ էր միշտ չափաւորութիւն կը սիրէր եւ չէր անձնացոյց, զայդ ես փորձով գիտեմ, նա զուցէ Իմաստնոյն խրատ կը յիշէր, «Որչափ 'ի մեծութեան հասանիցես՝ 'ի խոնարհութեան կալ]անձն քո»:

Հապա չըմոռնաք ասել, թէ մեր հայր հմուտ, կշռող, խելամտող, անխոնջ աշխատող մեծավարկ մի վաճառական էր, այժմ ոչ միայն հայ ազգ, այլ եւ Եւրոպ, Ասիա զանազան ազգեր քաջածանօթ են, եւ գի Կիւլպէնկեան տան համբաւ համատարած է:

Թողունք այս ամէն, եթէ մոռնամ, Վասպուրական աշխարհ ինձ յիշել կուտայ սովացեալ ժողովուրդին այն սեւ օրեր. երբ Պօլսոյ յանձնաժողովին Ատենապետ էր հանգուցեալ հոգին, իւր համաշխատ անդամներով, Վոսփորի ափունքէն մինչեւ 'ի Վան հաց կը մատակարէր սովյալուկ ժողովուրդին, եւ ո՞ կարէ պատմել այդ անձնանուէր եւ ժրաջան գործունէութեան մեծախնամ տնտեսութիւն:

Սորա համար ահա Խրիմեան Հայրիկ պարտականութիւն կզգայ ինքնին, 'ի ճակատ Հրաւիրակիս հանգուցելոյն անուն եւ յիշատակ արձանագրել:

Ահա յԵրուսաղէմ Սիօնի լերան վերայ նստած, մի մահարձան կերտեցի գրչով: Մահարձանս մարմարիոն չէ զոր կը քանդակէ գեղարուեստին ձեռք խորհրդաւոր նշաններով. այլ միայն սպիտակ թուղթ սեւագրեալ, որ կը բովանդակէ իւր վերայ Երուսաղէմի փառաց նկարներ: Ահաւիկ թուեմ ձեզ մի առ մի:

Նազարէթ սուրբ Աւետման տաճարին Գաբրիէլի եւ ողջունեալ Կուսին՝ նկար: Բեթլեհէմի սուրբ Այրին եւ Մորին՝ Մանուկ Յիսուսին նկար: Յորդանանու այն սուրբ գետին Մկրտելոյն եւ Մկրտչին, իջման Աղաւնակերպ Հոգւոյն եւ Հօր վկայողին՝ նկար: Թափօրական լերին վերայ լուսափայլեալ Աստուածորդւոյն փառաց՝ նկար: Սիօնի սուրբ Վերնատան Յիսուս զատին եւ զատկական զառին՝ նկար: Գեթսեմանի պարտիզին Հրեշտակին եւ բաժակին, աղօթող եւ քրտինք թափող Յիսուսին մշակին՝ նկար: Գողգոթայի գլխոյն վերայ բարձրացեալ փառաւորեալ խաչեալ Փրկչի թափեալ արեան կարմիր՝ նկար. Քրիստոսի Գերեզմանին այն ահաւոր վիմին՝ նկար. մեռեալ եւ յարուցեալ Յիսուսի յաղթանակին՝ նկար:

Ահա այսչափ եւ այսքան կենդանի եւ հոգեշունչ նկարներով Մահարձանս զարդարեցի. տեսէ՛ք, դուք ազնուական չառաւիղք տանն Կիւլպէնկեան, թէ կարէ՞ք բաղդատել մարմարիոն քարէ արձանին հետ որ բերան ունի՝ չխօսիր, աչք ունի՝ չիտեսնար, որ կայ յատին եւ չիշարժիր:

Իսկ իմ գրական կենդանագիր արձանս եւ կը խօսի եւ կը

*չարժի եւ կը թուչի համայն աշխարհ, զի իւր թեւերն Քրիստոսի խաչն է եւ իւր բարբառ՝ Աւետարանն է։ Գիտեմ թէ գիտէք գնահատել թէ քանի՛ փառաւոր է այս յիշատակարան, զոր կը նուի րեմ Ձեր հանգուցեալ Հօր յիշատակին։*

*Իսկ դուք, որդիք երախտապարտ, ի՞նչ տրիտուր հատուցէք այնպիսի արժանաւոր Հօր։ Շա՛տ ապրիք, այնպէս արէք, ինչպէս իւր ցանկութիւնն էր. տարէք թաղեցէք զինքն Փրկչին ծոց, այն մարդասիրական կայանին մէջ, որ լի է աղքատ ղազարոսներով. հանգուցեալ Սերովբէի գերեզմանը մի մշտնջենաւոր սեղան պիտի լինի, եւ նորա շուրջ բոլորեն քաղցեալ հոգիներ, ուտեն մեռելոց հաց, օրհնեն եւ ողորմի տան ձեր Հօր հոգւոյն։*

*Հայրիկն էլ իւր հոգւով սեղանակից կը լինի Յիսուսի սիրած ղազարոսներուն, եւ իմ օրհնութիւնս՝ իբրեւ ցօղիկն 'ի յամպէն յԵրուսաղէմէն եւ Սիօնի լեռնէն կը թափեմ այն գերեզմանին վերայ. յոր կը թափին անձրեւի պէս աղքատաց օրհնութիւնք, եւ կը ցնծան ոսկերոտիք 'ի ներքուստ։*

*Իսկ հոգւոյն համար, ի՞նչ աղօթեմք, հանգչի հոգին Սերովբէ ծառային, Աբրահամու գոգ, երկնից արքայութեան ծոցն. ԱՄԷՆ։*

―――o―――

# ՆԱԽԱՇԱՒԻՂ

ՄԻՆՉԴԵՌ մանուկ երիտասարդ էի, մարմնով առոյգ եւ հոգւով զուարթ, անձամբ անձին գոհ ածէի եւ երթայի յո՛ եւ կամէի. երանի՛ տամ այն աւուրն, յորս կեանք զուարթաժպիտ առաւօտ էր: Պանդուխտ էի եւ նշդեհ. զի անողոք ճակատագիր եւ զիս վարեալ էր յօտարութիւն, բախտակից առնելով ընդ հայրենածին զաւակս:

Որպէս 'ի բազումս, նոյնպէս եւ յիս զօրացաւ այն սուրբ ցանկութիւն, տեսանել զԵրուսաղէմ, զաշխարհ Փրկչին մերոյ, յորում լոյսն ագաւ, Բանն մարմին եղեւ հրաշապէս եւ բնակեցաւ ընդ մարդիկ: Աչօք իսկ տեսանել զԹանձարուրն եւ զՄսուր, յոր եդաւ Մանուկն Յիսուս: Տեսանել անդ զակունս աղբերաց եւ զգետոց կենդանարար ջուրց, որ բղխեցին յԵրուսաղէմ, եւ ըմպացեալ արբուցին զհեթանոսական անապատն, զորմէ կանխապէս գուշակելով աւետիս տայր Եսային, «Ուրախ լեր, անապատ ծարաւի»:

Ես հաւատամ, թող երկմիտն տատանի, թէ Աստուած է յաջողէ զամենայն յամենայնի, եւ ինձ ցանկացողիս յաջողեաց 'ի հազար ութ հարիւր յիսուն ամի Փրկչին, ելի եւ գտի զցանկալին Երուսաղէմ, երկրպագի ամենայն հրաշավայր Ս. Տեղեացն, ուր կան եւ մնան յաւիտենական յիշատակք մարդացեալ Աստուածորդւոյն:

Առ հովանեօք սուրբ Յակովբեանց Հայոց մեծահռչակ Աթոռոյն, օթեւանեցայ եւ զիս բախտաւոր համարեցի, զի վիճակեցաւ ինձ փոքրկանս մի փոքրիկ սենեակ, շինեալ առանձին 'ի վերայ տանեաց եւ հայէր դուռն ընդ արեւելս 'ի լեառն Ձիթենեաց: Նախագուշա՞կ էր արդեօք սենեակն այն. թէ տիրացու Մկրտիչն՝ վարդապետ լինելոց է. զի բնակեցայ ես 'ի թաղն եւ 'ի չարս միարանական դասուն: Յայս նուագ եւս յայց ելի տեսանել զնոյն իմ սիրելի սենեակն՝ տեսի, զի ծերացեալ եւ խարխլեալ էր եւ փլուցին իսկ. աւա՜ղ ասացի, զի եւ իմ տաղաւար մարմնոյս այսպէս փլուզանի, զի ծերացայ եւ հնացայ: Այլ հաւատամ, թէ Տէր պահէ զիս, դեռ եւս տարաժամ է. զի պարտական եմ Նմա եւ եկեղեցւոյն:

67 կէլի — Հայրիկ խ–ակչղըետայՐգ··ւՀան–աբեր,

Անդ յայնժամ 'ի փոքու սենեկին ամփոփեալ ծուարեալ ձեռնարկի Հրաւիրակիս աշխատութեան, զի վճարեցից զպարտս իմ առ Երուսաղէմ:

Յաւուր միում մինչ պարապէի եւ ձայնարկեալ եղանակաւ երգէի եւ գրէի, զի առանց երգելոյ՝ երգ հոգի չունի. յանկարծ եկն եկաց առաջի դրան սենեկին հանգուցեալ Տէր Յովհաննէս մեծագործ Պատրիարքն: Զայնդ առ ասաց, տիրացու Մկրտիչ, զի՞նչ երգես եւ գրես. Տէր Սրբազան, ասացի, զՀրաւիրակն Աւետեաց երկրին, գրեմ. զո՞վ հրաւիրես, ասաց. զմանկունս եւ զժողովուրդս Հայոց հրաւիրեմ, Տէր հոգեւոր: Գրեա՛ գրեա՛, օրհնեալ լինիս, Հրաւէր կարդա, թող յուխտ գան Հայոց ջերմեռանդ ժողովուրդ. զի բազում գանձուց պէտս ունիմ եւ մտադիր եմ եթէ յաջողէ Տէր՝ նորանոր շինուածս կառուցանել(*), որ խիստ կարեւորագոյն է 'ի

(*) Հանգուցեալյն մեծագործութեան պատկանին այժմեան հոյակապ Պատրիարքարան. խաչաձեւ յատակագծի վերայ գմբեթայարկ փառաւոր Ուսումնարան՝ եւ հանդէպ նորին մի թաղ ուխտաւորաց, որ այժմ Դպրոցին կը ծառայէ:

պատիւ Ս. Աթոռոյս եւ անուան: Արդարեւ այսօր իւր մեծագործութեանց յիշատակք փառաւոր հանդիսանան 'ի պարծանս ազգին Հայոց եւ Ս. Յակովբեանց գերապանծ Աթոռոյն:

Իսկ ես յետ աւարտելոյ զերկ Հրաւիրակիս՝ դարձայ՝ 'ի Բիւզանդիոն. ուր բարերար ձեռնտուութեամբ Պալեան Ճարտարապետ Կարապետ Ամիրային տպագրեալ 'ի լոյս հանի ԶՀՐԱՒԻՐԱԿՆ ԵՐԿՐԻՆ ԱՒԵՏԵԱՑ: Այժմ կրկնակի տպագրութեան պատեհութիւնն՝ առիթ ետ ինձ՝ ի լոյս հանել եւ յայտնել զծածկեալ անուն Բարերարին:

Անցին իբր չորեքտասան ամք. 'ի ժամանակին, յորում ընտրեցաւ Պատրիարք Ս. Երուսաղէմի հանգուցեալ Տէր Եսայի Պատրիարք. զարթեաւ յիս դարձեալ յիշատակ Ս. Երկրին. ուստի ուղեկցելով ընդ նմին ելի միւս անգամ յԵրուսաղէմ, եւ կատարելով զուխտն իմ, վերադարձայ 'ի Կոստանդնուպօլիս եւ ես չէի յայնժամ սոսկ տիրացու Մկրտիչ, այլ Վարդապետ եւ վանահայր Վարագայ Վանից. իսկ այժմ եմ նաեւ Եպիսկոպոս Գլակայ Վանից եւ ինձ գայ յերազի եւ ասեն զինէն թէ նախկին Պատրիարք եւս լեալ իցեմ Կոստանդնուպօլսոյ: Անցին զինեւ այդ ամենայն եւ եմ այժմ հովիւ առանց հօտի եւ վանահայր առանց վանուց: Միթէ տրտո՞ւնջ բառնամ ասա, քա՛ւ, ոչ երբէք; զի ես ճանաչեմ զաշխարհ եւ գիտեմ զճանապարհ սուրբ Հարցն, որոց ոտից փոշւոյն՝ չհամարիմ զանձն իմ արժանի:

Անցին զինեւ այլ եւս բազմադէպ ժամանակք իբրեւ մի քառորդ դար. եւ ես հասի հազար ութ հարիւր իննսուններրորդ յամն, ոտն փոխելով յաստիճան ծերութեան: Եւ թէպէտ ծերութիւն հանգիստ խնդրէ, անձն խռովեալ փութայ 'ի նաւահանգիստն եւ խոնջեալ վաստակեալ ծերոյս հանգստարան պիտոյ էր լինել Վարագայ Խաչի հովանիք: Այլ յիշեցի դարձեալ զԵրուսաղէմ եւ յուշ եկն ինձ Սիօնի լերինն բարձրացեալ խաչին յիշատակ, զի մեծ քան զՎարագայն է ատա: Ուստի 'ի ժամանակի ծերութեան իմում յերրորդ անգամ ելի յԵրուսաղէմ. զի գէթ 'ի վերջալոյս կենաց իմոց մի անգամ աւես տեսից զշնորհաբեր Աւետեաց երկիրն. յորում երեւեցաւ շնորհն Աստուծոյ Փրկիչ ամենայն մարդկան եւ ոչ միայն Հրէին:

Տեսի այժմիկ զԵրուսաղէմ, մեծացեալ պանծացեալ եւ փառաւորեալ յոյժ. 'ի վերայ ամենայն լերանց՝ 'ի վերայ ամենայն բլրոց կառուցեալ բարձրացեալ կան մեծամեծ եւ նորանոր հաստատութիւնք, վանք, կուսանոց, որբանոց, հիւանդանոց, դպրոց եւ այլ բազմաթիւ կրօնական եւ մարդասիրական հաստատութիւնք, եւ ո՞վ կարող է այժմէն գուշակել զապագայ փառաց մեծութիւն քաղաքին Աստուծոյ Երուսաղէմի:

Այլ Փրկիչն աշխարհի զհամատարած տիեզերս իւրով Աւետարանաւ իբրեւ զԵրուսաղէմ մի տաճար շինեաց 'ի տեղի երկրպագութեան համայն հաւատացելոց. զի ասաց Յիսուս առ Սամարացի կինն, յորժամ վաստակեալ նստէր առ ջրհորովն Յակովբայ. «Կին դու, հաւատա ինձ, զի եկեսցէ ժամանակ, յորժամ ո՛չ 'ի լերինս այսմիկ եւ ոչ յԵրուսաղէմ երկիրպագանիցեն Հօր»... Այո՛ յամենայն տեղիս, ուր տիրէ թագաւորութիւն Հօր եւ ուր հնչեց Աւետարանին ձայն եւ հաստատեցաւ հաւատն, պարտ է երկրպագանել Հօր հոգւով եւ ճշմարտութեամբ:

Այլ սակայն կայ մնայ Երուսաղէմ դարձեալ գեր 'ի վերոյ քան զամենայն գերազանցեալ եւ փառաւորեալ իբրեւ նուիրական մայրաքաղաք համայն հաւատացելոց եւ իբրեւ քաղաք Աստուծոյ. զորմէ զգուշացուցանէր

*Յիսուս, մի բնաւ երդնուլ յայն սուրբ եւ պատկառելի անունն, զի ասէր թէ Երուսաղէմ քաղաք է մեծի Արքայի։*

*Յերրորդումնուագիս մինչ գտի զԵրուսաղէմ, ասացի, այս է հանգիստ իմ 'ի տան Սրբոց Յակովբեանց, եւ առաւել մխիթարեցայ երբ գտի զվաղագոյն մտերիմ եղբայրակիցն 'ի Քրիստոս, Ամենապատիւ Տէր Յարութիւն Սրբազան Հայրն, որ ժողովեաց զմեր պանդխտութիւն եւ ոչինչ եթող պակաս 'ի պարտուցն եղբայրսիրութեան։ Յաւելցէ Տէր Աստուած 'ի կեանս իւր որպէս զԵզեկիային, որ ճգնի անդուլ անդադար բառնալ զպարտս Սուրբ Յակովբեանց տան եւ բարեկարգ պայծառութեամբ պահել զԱթոռ Հայոց Երուսաղէմի։*

*Որ սիրեմ զբաղիլ գրովք, ձեռն արկի Հրաւիրակին նորագոյն աշխատութեան եւ տպագրութեան, վասն զի յետ քառասուն ամաց համայն տպագրեալ օրինակք սպառեալ էին։ Եւ նոյն իսկ ցանկալին Երուսաղէմ ներշնչէր եւ թելադրէր զիս նոր խանդով, նոր ձայնիւ, Դաւթին հոգւով նուագել զԵրուսաղէմ, յորում լրացան աւարտեցան ամենայն խորհուրդքն Աստուածայայտնութեան։*

*Ի կրկնակի տպագրութեանս, ես ոչ խնայեցի աշխատութիւն, այլ տքնեցայ յաւէտ, գրեաթէ զվաղեմի երկն վերստին գրել, զքառանդամ տողս չափուցն առաւել եւս ներդաշնակ շարադասել, որչափ պահանջէր լեզուին օրէնք եւ շնորհք, որպէս զի ընթերցուածն առոգանութեան դիւրահնչիւն լինիցի։*

*Ի դոյզն տեղիս ոչ անճահ համարեցի զաշխարհիկ կամ ժողովրդախօս լեզուին զոճն եւ զբան 'ի կիր արկանել, զի մերթ կրճատումն բառին հարկադրէր, եւ մերթ եւս բանն այնպէս յարմարէր։ Եւ ինձ այնպէս թուի թէ գեղեցիկ եւս է խառնումն երբ քերթողին՝ գրականն եւ ժողովուրդին՝ աշխարհիկ զիրար գրկեն դուն ուրեք ըստ տեղւոյն վայելչութեան եւ այն առաւել եւս յարմարի 'ի չափական բանս, որոց օրինակք երեւին 'ի նախնի մատենագիրս։ Ես բարեկամ եւ սիրող եմ իսկ ողովրդական լեզուին, այլ ոչ երբէք յանդգնիմ զգրական ոսկեղէն լեզու մեռեալ համարել եւ թափել զայն ընդ մեծին Սահակայ 'ի հող եւ միթէ ապականի՞ ոսկին։ Եւ որ զայս ասեն եւ շարագրեն զաշխարհիկ լեզուաւ՝ տեսանեմ, զի տակաւ տակաւ գան մերձենան յաղբերակունս գրական լեզուին։*

*Որ հետաքրքիր է բանասէր քերթողն, զհին Հրաւիրակն ընդ նորոյս բաղդատելով՝ տեսանէ, զի բաւական տողք յապաւեալ են, այլ բազմապատիկ եւս յաւելեալ։ Եւ զի ներշնչող ոգին Երուսաղէմ է, խաչեալ Փրկչին զարմանագործութեան հանդէսն է, աշխարհի իշխանին կործանումն եւ գերեալ ոգւոցն ազատութիւնն է, մեռեալ եւ յարուցեալ Աստուածորդւոյն յաղթանակն է։*

*Այլ չ'գիտեմ թէ յաջողեա՞լ իցեմ, զի կարծէի ես ինքնին թէ ընդ թառամեալ մարմնոյս՝ եւ ոգիս թառամեալ եւ լքեալ է, զի որ 'ի տիս երիտասարդութեան՝ բնութեան բերմամբ ստեղծաբան լինել նկրտէի, միթէ կարիցե՞մ 'ի պակասեալ աւուրս ծերութեան դադարեալ յամուլ մտաց՝ նորանոր ծնունդս արտադրել։ Զայս դատաստան թողում քննաբան քերթողին, զանազանել ընդ մէջ երիտասարդութեան եւ ծերութեան։*

*Այլ ես այնպէս համարիմ թէ դեռ ոգիս այնչափ թառամեալ չէ, ոգիք դիւրաւ չեն թառամիր, եթէ յերկնից զուարթարար ցօղ ընդունին, եւ ես հաւատամ, Հոգին է կենդանարար, մարմին ինչ ոչ օգնէ, ասաց Յիսուս։*

*Սիրելի՛ Մանկունք Հայոց, յառաջ քան զքառասուն ամ Հրաւիրակ եղէ ձեզ, Տէր որ կեանս տայ եւ կենաց աղբիւրն է, ողջ պահեաց զիս եւ այժմիկ դարձեալ յետ քառասուն ամաց՝ Հրաւիրակ լինիմ ձեզ եւ ո՞ տայր ինձ որ նման արծուոյ նորափետուր մանկանայի եւ միշտ Հրաւիրակ լինէի ձեզ: Ահա 'ի Սուրբ լեռնէն Սիոնի ընծայ մատուցանեմ ձեզ դարձեալ զՀՐԱՒԻՐԱԿՍ ԵՐԿՐԻՆ ԱՒԵՏԵԱՑ: Աւա՜ղ, մօտ չեմ ձեզ, զի կենդանի բարբառով խօսէի պատմէի զԵրուսաղէմէն, եւ դուք հարցանէիք զողջունէ եւ զշինութենէ նորին:*

*Այլ արդ փոխանակ իմ Թող խօսի ընդ ձեզ Հրաւիրակս խոնարհան երգոյս, քանզի գիրն կենդանի մնայ եւ ապրի հազար տարի. իսկ ես՝ եմ այսօր եւ եւ վաղիւն ոչ. եւ դուք Մանկունք Հայոց եւ որդիք ժողովրդեան, միշտ նորածնելով եւ ապրելով՝ մշտնջենաւորէք աստի կեանս, կարդացէք եւ Աստուած ողորմի ասացէք,*



## *ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿԻ ՀՈԳԻՈՅՆ։*

Զի եղիցի յաւուրս յետինս յայտնի լեառն Տեառն, եւ տուն Աստուծոյ 'ի վերայ գլխոց լերանց, եւ բարձրասցի 'ի վերայ բլրոց, եւ եկեսցէն 'ի նա ամենայն հեթանոսք: Եւ երթիցեն ժողովուրդք բազումք եւ ասասցեն· Եկայք ելցուք 'ի լեառն Տեռան եւ 'ի տուն Աստուծոյ Յակոբայ եւ պատմեսցէ մեզ զճա–նապարհս իւր եւ գնասցուք ընդ նա: Զի ' Սիոնէ ելցեն օրէնք եւ բան Տեառն յԵրուսաղէմէ:

*Եսայի Բ. Գ. 2—3 համ.*

## ՆԱԽԱՑՈՅՑ ՊԱՏԿԵՐ ԻՄԱՍՏԻՑ

### *ԱՌԱՋԻՆ ԵՐԳՈՑ*

Ի ՍԿԻԶԲՆ առաջին գլխոյս իւրաքանչիւր զմանկտին նախ 'ի սուրբ քաղաքն Նազարէթ. երգէ անդանօր զհրաշալուր Աւետեացն եւ զխորհրդականն երջանիկ եւ անարատ Կուսին: Բանք եւ բանաստեղծութեան առ Նազարէթ յաղագս տեղի լինելոյ այնպիսում շնորհաց եւ յորդորակ առ մանկտիսն նմանող լինել Յիսուսի անմեղ մանկութեանն:

Ածէ անտի 'ի վանս ծննդեան Յովհաննու Կարապետին: Այցելութիւն եղանէ Կոյսն Եղիսաբեթի մօրն Յովհաննու: Գովեստ առ Մկրտիչն Քրիստոսի, որ արժանի եղեւ մատակարար լինել գերագոյն շնորհաց տնօրէնութեան Աստուածորդւոյն:

Բերէ անդուստ 'ի Բեթղեհէմ. եւ անդ նուագէ զսքանչելի ծնունդ Փրկչին մերոյ՝ Աւետիս տալով նախագուշակ տեսանողացն ծածկեալ խորհրդոյն, որ յայտնեցաւ: Համառօտ նկարագիր կոտորման Բեթղեհէմեան մանկանցն:

Տանի յետոյ 'ի Յորդանան գետ: Իջումն Յովհաննու յանապատէն, եւ բանք նորին կշտամբողական առ ազգն Հրէից: Մկրտութիւն Քրիստոսի 'ի նմանէ, եւ իջանելն Հոգւոյն Սրբոյ աղաւնակերպ 'ի վերայ Փառակցին: Վկայութիւն Հօրն զիրբելի Որդւոյն, եւ բան զգուշութեան առ Յակոբ չթողուլ զփառս իւր այլում ազգի: Յորդոր առ մանկտիսն զգոյշ լինել անարատ պահելոյ զընկալեալ շնորհս մկրտութեան, մի՛ գուցէ կոծոցեսցին 'ի յարմատոյն. առ որ պատուաստեցան Քրիստոսի ձրի շնորհաց ձեռամբ:

---o---

# ՀՐԱՒԻՐԱԿ

## ԵՐԿՐԻՆ ԱՒԵՏԵԱՑ

---

### ԵՐԳ ԱՌԱՋԻՆ

ՍԿԻԶԲՆ 'ի քէն առնեմ Երգոյս, ո՛վ սուրբ քաղաքդ Նազա-
[րէթ,
Վիճակեալ տուն հայրենի խօսնայր ծերոյն Աստուածահօր·
Որ ըզկոյսն 'ի տաճարէն առ եւ պահեաց 'ի Քեզ մաքուր·
Մինչ յածեա՛լ Գաբրիէլի ընդ տիեզերըս բովանդակ,
Ի Քե՛զ եկեալ միայն եգիտ ըզԿոյսն երանեալ·
Ողջունի՛ն ետ ըզնշան եւ խօսեցաւ զնա Յիսուսին։
Դու առագաստ երկնային կազմեալ եղեր անշուք տնակաւդ
Կոյս հարսի՛ն եւ փեսային անախտաւոր պըսակելոցն։
Վայելուչ իմն է, Մանկունք, յառաջ ըզձեզ անդ հրաւիրել
Ի տաճարըն մաքրութեան, ուր եկըն Տէր յանկարծակի·
Եւ 'ի տուն Աստուածաբնակ աղքատ հիւսանըն Յովսեփայ·
Ուր ընտրեալն 'ի բիւրուց Դաւթեան բողբոջըն Մարիամ
Իբրու շուշան փըթթեցաւ 'ի մէջ հովտիս խոնարհագոյն։
Հրաշաւէտ եւ նորասքանչ դրախտ է տեղիս այս վայելուչ,
Յորում տունկ ծառոյն կենաց երեւեցաւ որպէս յԱդին,
Մարիամըն հրաշագեղ, որ կուսութեամբըն անմատչելի
Բոցանիւթ սրով Քերովբէից շուրջ փակեցաւ պարածածուկ,
Մինչ երեր ըսքանչելի զպտուղ լուծիչ դառնագունին·
Յոր դիւրամերձ լեալ մեր արդ, վա՛շ ճաշակեմք ախորժօրէն։
Բոյս վարդին երփնափայլ ցուցաւ աստէն առանց փըշոց,
Ի՛ջ եւ նըստաւ սոխակն 'ի նմա վեհ դասապետըն Գաբրիէլ,
Գեղգեղեաց քաղցրախօսակ բանիւ զողջոյն իւր շնորհաբեր·
Թէ վարդիդ գեղոյ չըքնաղ Երկնից արքայն է խանդակաթ,
Գայ իջանէ 'ի ծոցոյ Հօրն եւ ծոց 'ի թփոյդ օթագայի,
Ուրա՛խ լեր, ողջոյն ընդ քեզ, երջանիկ մայրըդ Մարիամ։
Տիպ կալոյն Գեդէոնի ճըշգրիտ ցուցաւ մեզ աստանօր,
Մարիամ գեղմըն մաքուր եւ լուսակիզըն կուսութեամբ
Պարգեցաւ խոնարհ ոգւովն ինքն 'ի ներքոյ երկնից պատրաստ
Լուսախառն եւ մանրամաղ ցօղն իջանէր 'ի գեղմըն սուրբ·
Այսպէ՛ս էջ Բանն 'ի Հօրէն, խաւար չ'ետես բանին խորհուրդ,
Տեսի՛լըն հրաշաւոր ցուցեալ հովուին անդ 'ի Սինա,
Հրավառեալ 'ի մորենին, որ բորբոքէր անծախապէս·
Նոյնահրաշ եւ աստանօր տեսաք 'ի ծառըն Մարիամ,
Որ ըզհուրըն աստուածեղէն հայրածին Բանն 'ի սկըզբանէ
Յարգանդի տարաւ մարմնով եւ ինքն եկաց անկիզելի։
Նոր երկիր բանեղէն եւ անդաստան իմն անարօր
Երեւեալ աստ Մարիամ սերման երկնից լեալ ընդունող·
Արբեա՛լ 'ի ջրոյ Հոգւոյն եւ մըշակեալ աջովըն Հօր,

Սովելոյ բնութեանըս մեր երբեր ըղձացըն կենդանի։
Կուսութեամբ կընքեալ աղբիւրն, որ ըստ երգոյն Սողոմոնեան,
Աստ յամպոյ երկնից առեալ զկենդանի ջուր յիւր աւազան,
Բըղխեցոյց ՚ի Բեթլեհէմ, աղբիւրացաւ աշխարհ համայն։
Երջանի՛կ ես, Նազարէթ, զի քո վերայ բացաւ երկին,
Ուստ ՚ի վայր շող արփենւոյն հրաշածագեալ Լոյսն ՚ի Լուսոյ
Ցոլացաւ, եւ սքանչելեօք մուտ ՚ի յարգանդ Կուսին անփորձ,
Ուր բնակեցա՛ւ փառակից Բանն որ մարմին եղեւ ճշգրիտ,
Զոր նախապէ՛ս պատրաստեաց և յարդարեաց Հոգին Աստուած։
Երանիս ընդունողիդ անբաւ շնորհաց տամ բիւր անգամ,
Դու նախկի՛ն խանձարուր եւ բնակասնունդ տեղի Փըրկչին·
Որ այն ինչ յամպ թեթեւ նըստեալ փախեալ նա յԵգիպտոս
Անդուստ ՚ի հայրենիդ եկըն դարձեալ եւ բնակեցաւ։
Զքոյդ անուշակ օդ ծըծեաց եւ զարգացաւ Յիսուս մանուկ·
Այն որ շընչովըն կենսատուր զոգիս մարդկան զարգացոյց։
Երանի՛ս տամ եւ դաշտացդ, աղբերց, լերանցըդ քարաշատ,
Որ ոտի՛ց Մանկացելոյն եղեն տեղիք եւ ճեմարան։
Առ ՚ի ջրո՛յդ քո էարբ կենդանի ջրոյն առատաբաշխին,
Ի հողորդ վերայ նընջեաց այն որ ըստեղծ յերկրէ զԱդամ։
Ընդ ապաշո՛ւք եւ գեղջկական յարկիւըդ քո անփառունակ,
Պատըսպարեա՛լ օթեցաւ զերդ շինական ոք անաւագ։

Աստ, Մա՛նկունք, ընդ օրինակ Յիսուս Մանկան հայեցա—
[րուք,
Եւ նորի՛ն ըզտղայութեան զանմեղութիւն ցուցէք ՚ի ձեզ·
Թէ որպէ՛ս Մանուկ եղեալ՝ յանձին երբեր ըզմանկականն,
Եւ տակաւ տակաւ ՚ի տիս այրականին վերամբարձաւ։
Նա որ Աստուա՛ծ էր և կարող չոյտ յաւելուլ զհասակ մարմնոյն,
Ում յաւէ՛տ ըղձալի էր զբեռըն խաչին բառնալ յօժար,
Ելանել ՚ի Գողգոթա եւ զենանիլ ՚ի նմա կամաւ·
Այլ ժուժկալեա՛լ համբերէր ՚ի լնուլ սիրով զՀօրըն սահման·
Եւ տա՛լ այսու մեզ ՚ի խրատ մի քան ըզժամ փութալ ՚ի գործ,
Զա՛յս ուսոյց նախախոնարհ օրինակաւըն Մանկութեան։

Զե՛ւ տարեալ, Մանկունք, ըզձեզ Փըրկչին ՚ի Ծնունդըն
[Բեթլեհէմ,
Նախ աստո՛ւստ ածել անկ է մեծին ՚ի ծնունդըն Յովհաննու·
Եւ ՚ի տո՛ւն լեռնակողմ Զաքարիայ քահանային·
Որ զողջոյն ՚ի տաճարին առ ընկալաւ նախ քան զԿոյսն,
Գաբրիէլի՛ աւետեօք ծնանիլ ծերոյն Եղիսաբեթ։
Ա՛յր ահա ելեալ դիմէր Կոյսըն յըղի Հոգւոյն շնորհիւ,
Տալ զողջո՛յն տոհմակից մօր Մկրտչին երիցագոյն·
Նաեւ ՚ի լուր ամուլ ծնողին պատմել բանիւ ուրախական,
Զաւետեա՛ցըն հրաշալուր ազդեալ ինքեան ՚ի Հրեշտակէն,
Մինչ մեղմիկ ձայն ողջունի յունկըն հընչէր պառաւ ամլոյն,
Ծո՛յտ ՚ի ներքուստ լըսէր ծառայն եւ կայր յողջոյն Տեառն
[առաջի·
Եւ նըկատի՛չ լեալ Լուսոյն՝ յարգանք Կուսին տաղաւարեալ,

Ցընծալո՛վ խայտայր խաղայր նա ընդ գալուստ Փրկչին յաշ–
[խարհ.

Եւ խոնարհեա՛լ յորովայնէ 'ի յորովայն երկըրպագէր
Կարապե՛տն յառաջընթաց լըցեալ Հոգւովն աստուածեղէն:
Հրաշանայր ընդ այս յաւէտ մայրըն մանկան Եղիսաբէթ,
Նոյն հոգւո՛վ լըցեալ եւ ինքն աղաղակէր ձայնիւ առ Կոյսն,
Օրհնեա՛լ ես 'ի կանայս, ո՛վ դու Լուսոյդ մայր Մարիամ.
Որ յարգանդի քում անբիծ իբրեւ 'ի տուն բնակի Լոյսն,
Եւ ուստի՞ ինձ այս բախտ զի եկեսցէ մայր Տեառն առիս,
Օրհնեա՛լ է եւ այդ պըտուղ կենաց ծառին 'ի քէն բերեալ,
Որ պարգեւի՛ մարդկան ազգի համեղ ճաշակ անմահական:
Մինչ մերձէ՛ր ժամ ծագելոյ արուսեկին ծնընդեամբ յաշ–
[խարհ,

Տեղի տայ Մօրն Արեւուն՝ ժըտէր սիրով Եղիսաբէթ,
Որ անդրէն դառնայր աստի ուրախ 'ի տուն իւր Նազարէթ,
Քանիո՛ն մեծ խընդութեան հանդէս լինէր աստէն, Մանկունք,
Ի ծնանիլ ամուլ ծերոյն զանհամեմատն 'ի ծնունդս կանանց,
ԶՄկրտի՛չն Աստուածորդւոյն, մաքուր տատրակն անապատի,
Ի Քրիստոսի՛ բերանոյն ըզգըրուատեալն արժանապէս.
Թէ մե՛ծ ոք յորդւոց կանանց չ'է յարուցեալ քան զՅովհաննէս.
Որ անուա՛մբըն շնորհազեղ բաց ըզլեզուն պապանձեալ հօրն
Յորժամ գըծեաց 'ի տախտակին ըզտարփալի ձայն Յովհաննէս.
Զարմացան տեսողք հրաշիս եւ որ լուան զլուր նորասքանչ,
Ափշեա՛լ գուշակէին, զի՞նչ լինիցի Մանուկս այս:
Մարգարէ՛ բարձրելոյն առ 'ի հօրէն անուանեցաւ
Երթալո՛վ Տեառն առաջի եւ զառապարս հորդել շաւիղ,
Զանպատրա՛ստ ոգիս մարդկան գոլ դիւր և հարթ Փըրկչին
[ոտից:

Նա՝ հանգո՛յն արուսեկին ընդ մերձ այգուն ծագեալ պայծառ
Զգերարփւոյն աւետիս ետ, որ 'ի Կուսէն հրաշածագէր.
Ղօղեցա՛ւ յանապատին ըզշառաւիղս ամփոփելով,
Ում զուարթո՛ւնք 'ի վերուստ առաքեցան 'ի սպասաւոր
Պահպանել ըզցանկալին մինչ 'ի լըրումն երեսնամի:
Զօրէ՛ն Եղիայի վարս ըստացաւ ըզհրեշտակաց,
Մաշկեղէ՛ն գօտի ընդ մէջ եւ 'ի ստեւոյ ուղտու հանդերձ,
Զվայրենի՛ մեղր եւ մարախ պարէն առեալ մարմնոյն 'ի պէտս:
Այնչա՛փ գերազունի վիճակեցաւ նորոյ շնորհաց,
Մինչ եռանձնեայ Աստուածութեան տեսող եղեւ 'ի Յորդանան:
Խորհըրդեա՛ն Մարմնազգեցին, ում ցանկային հեռուստ գու–
[շակք.

Ընդ աղօ՛տ տեսին միայն զԲանն 'ի մարմին թանձրացեալ,
Այլ Մըկրտի՛չն Աստուածորդւոյն մարմնոյն աչօք հուպ նը–
[կատեալ,

Ցո՛յց մատամբ ինքն 'ի մօտոյ զԳառն Աստուծոյ բարձող
[մեղաց:

Եւ իւրո՛ց աշակերտացն 'ի բաց մերժեաց ըզտարակոյսն
Անշո՛ւշտ վըկայելով վասն նորին Աստուածութեանն:

Ես չե՛մ ասէր, Քրիստոս, այլ ընդ առաջ նորա հրեշտակ,
Զայս իսկ վասն իմ ճառեաց տեսողն անդուստ Մաղաքիաս։
Որ ունի՛ ղհարսն անարատ ըզնորածնեալ Եկեղեցին·
Ա՛յն է ահա Փեսայն անախտ առ սէր հարսին իջեալ յերկնից։
Միա՛յն ես հարսնաւէր եւ բարեկամ եմ Փեսային,
Ի հանդէս այս հարսանեաց, վա՜շ, փեսային ցընծամ ձայնիւ,
Որ եւ ա՛յս ուրախութիւն սըրտիս իմոյ լըցեալ եղեւ։
Ժա՛մ է աճիլ արդ նըմա մեծ զօրութեամբն աստուածային,
Այլ ի՛նձ մեղմանայ յոյժ տըկար բընութեամբըս մարդկային·
Ես նըման գիշերայնոյ փոքրիկ աստեղն աղօտանշոյլ,
Ծագեցայ նըւաղ լուսով դոյգն բանիւ քարոզութեան·
Եւ ՚ի զա՛լ առաւօտեան պայծառ արփւոյն աշխարհալոյս
Ուստի ա՛րդ ես ՚ի նորին ճառագայթիցն աղօտանամ։
Սա զինարբո՛ւ օրինամերժ Հերովդէսին լեալ կըշտամբիչ·
Նա վասն ա՛յն խընդրէր հընարս գործել ըզդաւ մահու նըմին·
Պատկառեա՛լ երկընչէր նա յանբասիր նորին վարուց
Թաթաւե՛լ զձեռն իւր յարիւն յանդիմանչին իրաւապէս։
Աւա՜ղ, ՚ի ձեռն անպարկեշտ կնոջըն մատնեալ զուր ՚ի զընտան՝
Կաքաւմա՛մբ լըկտի դըստերն՝ դահճին սըրով գըլխատեցաւ։
Այսպէ՛ս ՚ի ջուր Մըկըրտիչն ինքն ՚ի յարիւն իւր մըկըրտեալ,
Ծրագին այն գեղանըշոյլ՝ լոյս առ աշխարհ աղօտացաւ։
Եւ այսո՛ւ բանդն ՚ի խաւար գնացեալ ելոյց դարձեալ զճրագ
Ցընծութեան աւետատու լեալ անդ հոգւոցըն գերելոց,
Որ ՚ի ստուե՛ր մահու նըստեալք՝ փըրկող աջոյն ըսպասէին։
Մինչ ըզձայն Կարապետին լուան աւետեաց այս նորալուր
Խընդացին նահապետք եւ զուշակաց գունդքըն բոլոր։
Այսպէ՜ս նախընթաց եղեւ յերկրի եւ ՚ի դըժոխս
Կանխագոյն տալով նըշան ըզՓրկողին գալըստենէն·
Եւ այսպէս ինքըն ցուցաւ վեհ ՚ի ծառայսըն Քրիստոսի,
Եօթնեկի՛ խորհըրդական զըտաւ անուանց արժանաւոր։
Յովհաննէ՛ս՝ յորջորջելով բացող եղեւ կարկեալ լեզուին·
Մկրտի՛չ՝ ՚ի Յորդանան զԱստուածորդին մըկըրտելով,
Մարգարէ՛՝ վերջին գալով Մարգարէիցըն կանխագոյն·
Առաքեալ՝ ՚ի նոր քարոզ լեալ ինքն ըսկիզբն Առաքելոյ·
Կարապե՛տ՝ իջելոյ Բանին յաշխարհ յառաջընթաց,
Մարտիրո՛ս՝ մարմնովըն իւր նահատակեալ ՚ի մէջ բանտին,
Աւետի՛ս՝ գոլ ՚ի դըժոխս աւետատու գերեալ հոգւոյն։
Ո՜վ, այսքա՛ն շնորհագործ տնօրէնութեան Մարդացելոյն,
Դու եւ ե՛թ ըսպասաւոր ՚ի սուրբ Հոգւոյն որոշեցար,
Յիսուսի՛ն բարեկամ եւ մըտերիմ սուրբ Յովհաննէս։
Որ ըզկնի՛ երջանիկ մօր սուրբ ընտանեացն աստուածամերձ
Յաւէ՜տ սիրելի ցուցար Բանին մարմնացելոյ։
Լե՛ր ուրեմն ընդ Տիրուհւոյն դու առ Քրիստոս աղերսահայց
Ըզմանկանց Եկեղեցւոյ հրաւիրելոց ՚ի քո տաճար։
Նա՝ վասն ի՛մ անարժանիս ըզքեզ երգող անուանակցիս,
Մաղթե՜մ լինել միջնորդ քեւ ընդունել շնորհս Յիսուսէն,
Որ ե՛տ ինձ ըզմեծարեալդ առ ՚ի նմանէ երգաբանել։

Ելանեմք աստի, Մանկունք, արդ եւ 'ի ծնունդ Փրկչին մերոյ
Բեթլեհէմ, տուն Եփրաթայ, քաղաք Դաւթի մեծ արքային
Ցերջանիկ այրըն հովուաց սուրբ իջեւանն աղքատ Կուսին:
Այլ զի՞նչ առցուք ընդ մեզ, որ ընդ Մոգուցն ընծայաբերս
Զօնեսցո՛ւք Յիսուս Մանկան արքայ ծնելոյն Իսրայելի:
Ընդ ոսկւո՛յն հողանիւթ՝ ըզկատարեալ ամբիծ հաւատս,
Ընդ կընդրկին եւ զըմըռսոյ՝ ըզհուր սիրոյն Քրիստոսի
Բարձեա՛լ 'ի սիրտ սուրբ եւ մաքուր իբր 'ի բուրվառ խըն–
[կամատոյց
Զօնեսցո՛ւք Մանկացելոյն բարդեալ 'ի ծուխ անուշահոտ,
Որ բազմի ա՛նդ 'ի Մըսուր եւ գիրկ Կուսին քրովբէաթոռ.
Ո՞վ, անկեա՛լ 'ի սուրբ Այրին՝ երկըրպագցուք Մօրն եւ
[Մանկան,
Երգեցի՛ց ես անդ ապա զԲանին ծընունդ անճառահրաշ:
Որ զոգի՛ս հանուր մարդկան թըւեալ ունէր իւր 'ի ձեռին,
Տէ՞ր տիեզերաց եւ թագաւոր միահեծան.
Ո՞վ, ինքն ե՛ւս 'ի կարգ մարդկան գայր 'ի համար աշխար–
[հագրին,
Եւ դիմեաց 'ի Բեթլեհէմ 'ի քաղաքէն իւր Նազարէթ:
Այն ի՞նչ արեւն 'ի մայր իւր մուտս առնէր յերեկորեայ
Ա՛յր եկեալ հասանէին վաստակեալ ծերն եւ Մարիամ,
Իջեւանեալ 'ի տուն հովուաց, ո՞հ, օթէին ընդ անասունս.
Բա՞բէ, որ եկեալն էր հանել զմարդիկ յերկնից քաղաքն.
Ի՞նքն 'ի մէջ երկրի անիջեւան եկաց արտաքս:
Վայելո՛ւչ էր իսկ հովուաց գոլ քաջ Հովուին ապըրնջական.
Եւ Եւայի՛ն՝ (*) իւր շիրմաւն, յորում հեծէր ինքըն ցաւօք,
Հիւրընկա՛լ լինել այսպէս ամբիծ դըստեր իւր եւ Թոռան
Որ զերկո՛ւնըս Մօրն եբարձ անախտ ծնընդեամբըն կուսական:
Աստ 'ի լըրումն բոլորէր Լուսինըն մայր լուսոյն ծընող
Զինըամսեա՛յ ժուժկալեալն 'ի յարգանդին ծնանէր հրաշիւք:
Որոյ զգե՛ստն աննիւթական լոյսն էր երկնից արփիահրաշ,
Խանձարրո՛ք նիւթականին պատեալ դընէր 'ի մէջ մըսրոյն
Զայն փափկի՛կ քընքուշ Մանկիկ 'ի ծղօտս յարդից քըստըմ–
[նափուշ:
Անդ յերկի՛նս յաջմէ Սրովբէք եւ յահեկէ հոյլք Քրովբէից.
Աստ յերկրի՛ ըստ Ամբակումայ զարմանալեօք տեսանողին.
Ի մէջ երկուց կենդանեաց, եզինն ասեմ ես եւ իշոյն,
Ընդ հասանե՛լ ժամանակին անճառ սիրովըն ծանուցաւ:
Որ 'ի գա՛հ չորեքկերպեան փառօք ընդ Հօր բազմէր յերկինս.
Լո՞յսն անմատչելի միշտ ըղնովաւ պարածածուկ,
Ի մատաղ Կուսին 'ի գիրկ գըգուեալ եղեւ որպէս Մանուկ:
Եւ որո՛ւմ չ՚բաւէր տեղի երկնից տաճար լայնակամար,
Խոնարհեա՛լ նուաստացաւ բովանդակեալ 'ի փոքրիկ այր.
Զի նորին խոնարհելովըն բարձրասցուք մինչ 'ի յերկինս.

---

(*) Յաւանդութենէ ասեն թէ Եւայի շիրիմ անդ 'ի Բեթղեհէմ է, ուր պատահեցաւ ծնունդն Յիսուսի:

Եւ մարմնովըն նուաստացեալ մեծանայցեմք ՚ի հոգիս։
Որ ցանկային թագաւորք ըղձի յաւուրց այս տեսանել,
Յառաջեալ քան ըղնոսա հովիւք տեսին զօրն անդրանիկ·
Եւ զուարթնո՛ցըն զաւետիս նոքին եւ եթ լուան յերկնուստ·
Որ հընչէ՛ր մեծաբարբառ, ոն փութացէք ՚ի Բեթլեհէմ,
Նորածի՛ն Աստուածորդւոյն դո՛ւք նախ եղէք խորհըրդազգած։
Զի՞ յայնժամ մի ըղձիով վաղվաղէին ՚ի տես հրաշիցս։
Այն ի՛նչ մըտին այրին ՚ի ներս տեսին ըղԿոյս մի նոր ծընեալ,
Նորահրա՛շ եւ ծիրանի լոյսն ըղնովաւ կամար կապէր·
Զունէ՛ր զոք մերձ մանկաբարձ, այլ միայնիկ զծերըն Յովսէփ·
Ի չգոյէ՛ դոյզն ինչ տեղի՝ եդեալ զՄանուկն ՚ի չոր ՚ի Մըսուր։
Աննըման էր գեղ դիմացն, երեսըն ողջ լոյս փայլէին·
Յայգւոյն բացեալ վարդի նըման, շաղն ՚ի վերայ մարգարիտ
[էր·
Կոյսըն հրճուէր ՚ի սրտին եւ խելամուտ լինէր իրացն·
Զի ծնաւ Փրկիչ աշխարհի եւ ոչ ծընաւ մարդ յաշխարհ։
Որպէ՞ս յայնժամ երջանիկ հովուացն ՚ի ծունկըս խոնարհեալ
Փափագմա՛մբ հոգւով սըրտիւ երկըրպագին Նորածնելոյն։
Զնոյն եւ ես որ հասեալ կամ արդ ՚ի տաճար քո սուրբ
[Ծնընդեան,
Տենջանօ՛ք համբուրեմ զտեղին, յորում խանձարրապատ
Եդար իբրեւ յօրրան, լացեր աստէն դու տղայաբար ·
Ո՛վ, հայրածին Բան, վասն իմ կըրկին ծնեալ ՚ի Կուսէն։
Եւ որ Տէր եւ նոյնազոյ Աստուած գոլով հաւասար Հօրդ·
Բա՛բէ ա՛յնչափ խոնարհեալ փոքըրկացար եղեր Մանուկ,
Զի մեզօք ըղմանկացեալս եւ ըղթերիս ՚ի քո շնորհէդ
Ի կատար այրութեան դու հասուցես օրինակաւդ։
Այլ քեզ արդ աւետիս տամ, ո՛վ Նախահայրըդ մեղապարտ,
Որ ՚ի ձեռըն Եւային կերեր զպըտուղըն մահաւիթ·
Ո՛հ, այնու արտաքսելով յաստածատունկ դարաստանէն,
Թափառեա՛լ յերկիր փշոյ բերեր ծնընդովք ըզփուշ մեղաց·
Դու արդ ցընծա՛ զուարճացեալ, քանզի զարմէ քոյդ զաւակաց,
Յայտնեցա՛ւ առանց փըշոց Կոյս մի ամբիծ եւ անարատ·
Որ ծնող եղեւ Լուսոյն ծածկեալ ՚ի ծոց Ծնողին անմայր,
Ա՛յն, որ ըզքեզ իւր Աստուածութեանն ՚ի ճոխ պատկեր
Յօրինեաց ինքնին ձեռօք, փըչմամբ Հոգւոյն կենդանաձիր,
Նո՛յն՝ ըզծառայիդ արդ ըզգեցաւ ըզկերպարան։
Որ զծառայդ ճոխացուցեալ ՚ի վեր անդրէն բարձրացուցէ
Տիրականին ՚ի պատիւ, յոր պանծայիր անդ ՚ի դրախտին,
Ուստի ՚ի վա՛յր անկանելովդ զտար անասնոց դու հաւասար։
Աւետի՛ս եւ Եւայիդ, բերկրեալ ուրախ լեր ընդ Դըստերդ,
Որ ելոյծ ծընընդեամբըն իւր տըրամածին Մօրդ զերկունս ցա—
[ւոց·
Պարտեցա՛ր ՚ի բանսարկուէն անդ յԵդեմ դու պատրանօք,
Զձեռդ ՚ի ծա՛ռըն մահածին կարկառելով զառն ՚ի պըտուղն·
Յաղթեա՛ց սակայն խաբիչ օձին ընտրեալ քո դուստրըր Մարիամ
Զաղխելո՛վ ըզգլուխ նորին խոնարհութեան զարշապարաւն·

Զի չասաց Աստուած լինիմ, այլ աղախին եմ ես Տեառն,
Զաւակս անիծապարտ ոչ եւս ծընցիս այսուհետեւ·
Օրհնեցան քո զաւակունք կուսիդ Որդւով անախտածին։
Ցընծասջի՛ր, Դաւիթ արքայ, ընդ քո բողբոջ լուսածաղիկ
Ընդ քընքո՛ւշ գեղմն որոջիդ, յոր լուսոյ՝ անձրեւ ամպէն
Է՛ջ եւ ցօղեցաւ քաղցրածաւալ Բանն ՚ի վերուստ։
Զբանեղէ՛ն բոյսըս մեռեալ կենդանացոյց ՚ի նոր կեանս։
Թագաւորք ՚ի Սաբայէ եւ յԱրաբայ եկեալ տենչմամբ·
Մատուցի՛ն ըզպատարագըս քո Մանկան արքայածին։
Բարձրացաւ քան զԼիբանան պըտուղ ծառոյդ լուսաբողբոջ.
Ի քաղաքի՛դ քո եւ Տեառըն ծաղկեցաւ ծաղիկն Յիսուս։
Ցընծասջի՛ր ընդ Հօրդ եւ դու, ո՛վ իմաստունըդ Սօղոմոն,
Խանդակաթ սիրով երգող ըզսէր հարսին եւ փեսային·
Բացա՛ւ՝ անճառ կերպիւ պարտիզին այն դուռըն փակեալ·
Ուստ ՚ի դուրս բուրեաց անոյշ հոտ նարդոսի եւ չուշանի,
Է՛ջ ՚ի նմա Եղբօրորդին եւ ճեմեցաւ մարմնանալովն։
Կենդանի՛ ջուր ՚ի նմանէ ՚ի բանաւոր երկիր խաղաց·
Արբեցո՛յց ըզպապակեալս, այլ յաւիտեան ոչ ծարաւիմք։
Երջանի՛կ առ ՚ի զարմէ Ամովսածին Եսայիաս,
Գուշակո՛ղ յայտնաբարբառ զԿուսին ծընունդըն հրաշալի,
Խընդա՛ յաւէտ հոգւով ՚ի լըրումըն քո բանիդ ըստոյգ·
Աւադի՛կ ՚ի Թագազարմ շառաւիղէ տանըն Դաւթի
Ընձիւղեա՛լ ծիլ կուսական եւ փըթթեցոյց ըզնոր ծաղիկն,
Ի հոտո՛յն անուշաբոյր ըզմայլեցաւ աշխարհ բոլոր,
Թըմբրեցեալ հոգիքըն ՚ի մեղս ըսթափեցան նորին հոտովն։
Յանարօր անդաստանէն ոռոգելոյ ցօղով Հոգւոյն
Ե՛լ բուսաւ ցորեան ատոք յերկնից իջեալ կենաց հացին·
Կոյսըն հրաշի՛ւ յըղացեալ ծընաւ զորդին Էմմանուէլ։
Եւ ընդ մե՛զ փըրկողն Աստուած էջ շըրջեցաւ իբրեւ ըզմարդ·
Ժողովո՛ւրդն ՚ի խաւարի ետես ըզլոյսն եկեալ յաշխարհ։
Դու եւս ո՛վ լեր զուարճալից հրեշտակացեալըդ Դանիէլ,
Այն փոքրի՛կ վէմն ՚ի լեռնէն բարձրացելոյ խոնարհութեամբըն
Ինքնի՛ն ՚ի Կոյս մօրէն հատաւ ՚ի դաշտ աշխարհիս այս,
Ուր զկանգնեա՛լ չարին պատկեր մանր փըշրեաց ուժգին հար-
[մամբն,
Զբարձրացեա՛լս հըպարտութեամբ ըզԹագաւորս խոնարհե-
[ցոյց,
Մեծութեամբըն լեռնացեալ ելից համայն ըզտիեզերս։
Եւ հին աւո՛ւրց ալեւորն մատաղացաւ նոր մանկութեամբըն·
Որ յաթոռ բարձրութեան, աստ յանբանից ՚ի Մսուր իջաւ,
Ընդ բիւրաւո՛ր Հրեշտակացն եւ երգեցին ըզնա հովիւքն։
Ըստ ողջունի՛ն Գաբրիէլի բերկեալ ուրախ լեր, Տէր ընդ քեզ·
Առաւե՛լ քան զամենայն դո՛ւ խրախացիր Կոյս լուսածին,
Լո՛յսն անպարունակ, որ ՚ի յերկրի մարմնոյդ ագաւ,
Ծագելո՛վ ՚ի քէն պայծառ ճառագայթեաց ըզտիեզերս·
Ցընծացի՛ն որ ընդ մահուն մըթով նըստեալ ոգիք մարդկան։
Քե՛ւ բարձան ծանըր երկունք ցաւածին մօրըդ Եւային·

Որ միայնակ ՝ ինմանէ նոր շառաւիղ անդատապարտ
Ըստ երգո՛յն իմ Մովսիսի ու յԱրմատոյն Յեսսեայ բուսար,
Դո՛ւ զաւակ օրհնութեան մօրն Եւայի անիծելոյն
Եւ յերկի՛ր կարկամելոյն կանգնիչ եղեր Որդւոյդ ձեռօք.
Կեանք ետուր նախածնողիդ, որ մայր կոչէր ողջ կենդանեաց,
Այլ տիրապէս դու Մայր եղեր նոր Սիօնի ծնեալ մանկանց.
Ո՜վ, 'ի քեզ մե՜ծ էր խորհուրդն, որ դեր հրաշիւք աւարտեցաւ.
Զանըսկիզբ ծնունդըն Հօր՝ ծնանիլ մարմնով ժամանակաւ,
Եւ 'ի գըրկի՛դ կաթ ջամբելով 'ի կոյս ըստեանցըդ քաղցրա—
[բուխ

Սնուցանե՛լ դայեկապէս զտածիչ մարդկան բանին կաթամբ.
Եւ երգով մայրական զօրօր ասել Աստուածորդւոյն.
Եւ շըրթամբքդ շուշանազեղ հըպել 'ի համբոյր անմատչելոյն.
Որ տըւաւ քեւ 'ի յերկնից համեղ ճաշակ մեզ քաղցրելոցս.
Այս անբա՛ւ զանձու շնորհաց գտիչ եւ միայն արժանաւոր
Դո՜ւ եղեր, ո՛վ 'ի կանայս անհամեմատըդ Մարիամ,
Սխրալի՛ խոնարհութեամբդ եւ քո վարուքըդ մաքրազարդ:
Զանչափ ըզմեծութիւնդ եղեալ 'ի կշիռ Սողոմոնի՝
Ցո՛յց ըզքեզ առաւելեալ յոյժ 'ի դըստերս հրաշաւորս
Լի շնորհօքդ ամենազան՝ անցեալ զանցեալ զամենեքումբք:
Ի քեզ ո՛չ նըշմարեցաւ սուտ հաճութիւն եւ զեղ պատրիչ.
Դու վասն այն ազատ գըտար առ 'ի պարտեացըն նախամօրդ:
Եւ տաճար անձեռագործ առ 'ի Հոգւոյն մաքրազարդիչ
Յօրինեա՛լ պատրաստեցար անճառելոյ Բընակողին,
Ընդ Կուսի՛ն եւ քեզ հըրճուիլ արդ վայելէ, ո՛վ Բեթլեհէմ,
Որ յերկրի՝ երկին եղեր, Աստուած 'ի քեզ մարդ երեւեալ.
Այն քո այրիւըդ անձկութեան հանգոյն մաքուր արգանդին մօր,
Կըրկնակի՛ տուն տաղաւար վիճակեցար Անբաւելոյն.
Եւ գըլխոյն անօթեւան, ուր ոչ ետուն մարդիկ տեղի,
Դու սիրո՛վ ասպընջական լեալ հանգուցեր 'ի գոգ Մըսրիդ:
Ուր ըզլալո՛յ ձայնիկ բարձեալ եւ արտասուեաց նա տղայապէս,
Սիրայի՛ն յաչաց կաթիլքըն կայլակեալ իջին 'ի քեզ,
Որ զ'ի հո՛գս եւ խանձարուրս իմ լացողիս սըրբեաց զարտօսր:
Զի չ՚էր մարդ մահկանացու ծընեալըն 'ի քեզ ըսքանչելեօք,
Այլ անմա՛հ Աստուած գոլով՝ ծնաւ առ 'ի տալ կեանս մեռելոյս:
Զա՛յն առնէր քեզ Աւետեաց նախագուշակըն Միքիաս.
Բեթլեհէ՛մ երկիր Յուդայ չ՚ես դու կըրտսեր կամ աննըշան.
Ի քէ՜ն ելցէ ինձ նոր իշխան հըզօր, Իսրայելի.
Որ հովուէ՛ զիւր ժողովուրդ Տեառն Աստուծոյ մեծ զօրու—
[թեամբ:

Տո՛ւր ուրեմն այժմ աւետիս մարգարէիդ քո խընդալից,
Թէ յայրէ՛ս էլ աւասիկ Մանուկ իշխան ըսքանչելի,
Ում եկեա՛լ երկըրպագին մեծ թագաւորք խոնարհելով:
Երջանի՛կ ես, Բեթլեհէմ, լեալ արժանի դու նախազոյն
Ընդ Գառի՛նն անարատի քոյդ ըզԳառինս տալ 'ի զենումն.
Զի զայն ողջա՛մբ պահեցեր, որ 'ի սեղան խաչին անպարտ
Կամաւո՛ր վասն աշխարհի զանձն ընծայեաց իւր յողջակէզ:

Որ ընդ ի՛ս այսըր հասեալ հոգւով ճեմիք, փըրկեալ ման–
[կունք·

Առաջի՛ ձեր նըկարեմ զկոտորումն անմեղ մանկանց·
Զորս Հերովդէս ե՛տ խողխողել 'ի գիրկս մարց աղիողորմ
Առ 'ի բառնա՛լ զկեանըս մանկանն, որ ծնաւ արքայ հրէաս–
[տանի·

Զերկեմեան տղայս սանդեայս, ո՜հ, սուր դահճին անագորոյն
Ի բաց խըլեալ փողոտէր, ո՞վ սաստ աղէտ պատմէր ըզմարցն·
Իսկ որ պի՛նդ գըգուեալ զորդեակն, եւ նա ըզմօր փափուկ
[զըստինս

Ի բերա՛ն առեալ ծըծէր զկաթըն քաղցրիկ մայրենի ծոց,
Վերացեա՛լ սուրն անարգել ընդ մէջ երկուցըն թափանցեալ
Զդիեպիկն հարեալ կըտրէր եւ կամ զըրկին ընդ մէջ գենոյր,
Ո՜հ, արիւն կաթամբ խառնեալ թանայր ըզմօր ծոցըն լընոյր·
Ո՞ր սիրտ յայնժամ հանդուրժէր հայիլ 'ի տեսն այն ապաժոյժ:
Թէ խուճապէ՛ր սըրտաբախ մայրըն մանկամբ զերծիլ 'ի դաշտ,
Պարտասեալ կըթոտ ծընկովք անկեալ յերկիր ուշաթափէր·
Ո՜հ, ոտիւք հարեալ անդէն, զերթ ըզողկոյզ 'ի յուռ որթոյն
Ժուռ ու մո՛ւռ ճըմլէր այնպէս ըզնոր մանկիկն 'ի հընձան մօր·
Կամ նըռնենեա՛ց հանգունակ պըճնեալ գեղով կարմիր ծաղկանց
Ծղակոտո՛ր 'ի կարկտէ՝ վայր թօթափին ծիլք ընդ ծաղիկս,
Նոյնակի՛ սպիտակաթոյր փափկիկ մարմինք արիւն թաթաւ
Ի վերա՛յ գեանոյն թաւալ՝ թափեալ ծաղկանց նըմանէին:
Քո բան աստէ՛ն կատարիւր, ո՞ մարգարէդ Երեմիաս,
Ի Հռոմայ որդեկոտոր մարցըն զուժեալ ձայն լալականչ:
Այսպէ՜ս, ո՛վ Մանկունք, նախանըւէր հոտանոյշ զոհ
Յիսուսի՛ ընծայեցան Բեթլեհէմեան մատաղ մանկունք,
Ոյց ոգիք լուսատեսիլ կացին թէպէտ փոքր ինչ 'ի մթան.
Այլ ընդ աճի՛լ Մանկան Հօր եւ բարձրանալ խաչին 'ի թեւ·
Որպէ՜ս յայնժամ աղաւնանման եւ ձագախառն երամովին
Թռուցեա՛լք 'ի վեր գնացին առ Հա՛յրն ըստ Եսայեայ բար–
[բառելոյն

Գըգուի՛լ առ 'ի նմանէ, որ Միածնին փոխան զենան:
Իսկ մեք ապա զի՞նչ տացուք ընդ մեր 'ի մահ զենեալ Գառինն·
Թէ չունի՛մք արեամբ զանձինս այժըմ ձօնել նորին փոխան,
Մի՛ սակայն վերջասցուք լինել հաճոյ զոհ անարիւն
Ի սեղա՛ն սըրտից մերոց առ սէր նորին ճենճերելով,
Կամ հոգւով խոնարհ ըզմեզ Հօր պատարագ նըւիրեսցուք·
Որ հաճոյ ե՛ւս է նըմին բուրմամբըն 'ի վեր հոտոյն անոյշ:

Ի Ծնընդեան սուրբ Տաճարէս ելեալ իջցուք 'ի Յորդանան,
Որ 'ի լերանց Ահերմոնի եւ Սանիրայ սահի յորդոր,
Էր երբեմըն ոռոգիչ դըրախտահանգոյն երկրին Սոդոմ
Մինչ ո՛չ էր սուզեալ 'ի խորս երկնատեղաց հրոյն ծըծըմբով:
Այն ինչ բանն 'ի վերուստ ազդէր պայծառ արուսեկին
Զայն բարբառոյ յանապատի, զայր Յորդանան ձայն արկանէր·
Մկրտիչն Աստուածորդւոյն նախ մկրտէր զժողովուրդն,

Քարոզէր գալ 'ի գըղջումն մարմնով 'ի ջուր մըկըրտելոցն:
Կըշտամբո՛ղ ձայնիւրն իւր նա բարբառէր ըստ Եսայեայ
Ընդ առաջ Հանդերձելոյն հարթ ճանապարհըս պատրաստել,
Եւ տա՛լ արժանաւոր պըտուղ գըղջման այսուհետեւ:
Մի՛ պարծիլ բանիւ յանձինս, թէ հայր ունիմք մեք զԱբրահամ.
Զի կարո՛ղ է Տէր Աստուած արդ 'ի քարանց հեթանոսաց
Զորդի՛ս Աբրահամու յարուցանել ըստ հաւատոյն:
Խիստ բանիւքըն որոտայր իբրեւ ըզջուրս Յորդանանու.
Աւանի՛կ տապարըն սուր ահեղ հրաման Հօր մըշակին
Կա՛յ պատրաստ յարմին ծառոցդ մօտակըտուր առնել ըզձեզ.
Եթէ ո՛չ բերջիք այժմիկ դուք ըզպըտուղ պահանջողին,
Հաւատալ յՈրդին Աստուած, որ 'ի վերուստ գայ 'ի Հօրէն.
Հատանիք իսպառ 'ի բաց 'ի ճըշմարիտ յորթատունկէն,
Անաչառ դատաստանօք դատեալ մատնիք հրոյ գեհենին:
Սովին խիստ քարոզութեամբ եւ անձկագոյն վարուց չաւղօք
Կարծեցա՛ւ Հրէից ազգին զօլ Մեսիա ինքն Յովհաննէս.
Ուստի բանի՛ւն իւր խոնարհ գլոյս իւր ճրագին եցոյց նըւաղ
(Առ որով առ ժամանակ մի ցընծացին Իսրայէլեանքն)
Ասէր թէ ես մըկրտեմ ջրով նիւթեղէն առ 'ի գըղջումն,
Այլ որ հուպ ըզկնի գայ իմ յոյժ զօրաւոր է իւր արդեամբքն.
Որում չ՛ե՛մ ես արժանի լուծիչ լինել խըրացից կօշկաց.
Ահա նա՛ հրով հոգեղէն մըկըրտեսցէ ըզձեզ ողջոյն:
Որ 'ի ձեռի՛ն հեծանոց ունի զարդար ըզդատաստան,
Կըրկնակի յիւր զալըստեանն, որ 'ի յերկնից իբր ըզհուր,
Ժողովե՛լ զցորեան յամբար զհաւատացեալ դասս արդարոց,
Եւ ըզյարդն անշիջանուտ հրոյն տալ յայրումն յաւիտենից:

Իսկ որ դեռ 'ի մէջ մարդկան թագչէր լուսովն 'ի մարմնոյ քօղ
Որ աճեալ զվայելչութեան հասակն առցէ Ադամային,
Գալով գայր եւ հասանէր ժամ յայտնելոյ զինքն աշխարհի,
Ընդ յառաջել Կարապետին, փութայր եւ ինքն ըզկնի նորա,
Մարմնացեալ Բանն 'ի Կուսէն գայր մըկըրտիլ 'ի Յորդանան,
Որ Հոգւո՛յն ակամբըն ըզնա նախ նըկատեաց 'ի յարգանդին,
Մինչ մարմնո՛յն աչօք 'ի հուպ տես կըրկնակի, ծանեաւ ըզՏէրն.
Ուստի մատամբ տայր նշան աշակերտացն իւր Ամլորդին,
Աւասի՛կ Գառն Աստուծոյ, տեսէք ասէր, ում տենչայիք.
Որ 'ի լերանց Գալիլիայի, ո՛վ, հետիոտս խոնարհաբար,
Առի՛ս գայ, հեզ է թէպէտ, այլ ես ահիւ նորին լըցայ:
Եւ յորժամ մերձեալ մօտ էր Տէրն 'ի ծառայն իւր պակուցեալ,
Սիրալի՛ր բանիւ հայցէր առ 'ի նմանէ զմըկրտութիւն:
Մկրտի՛չն հրաժարեալ եւ դողալով աղերս ածէր,
Մի՛ դու զայդ հրամայեր, ո՛վ Տէր 'ի քէն ինձ մըկըրտիլ
Արժա՛ն է հողոյս անարդ, հի՛մ Աստուծոյդ է խոնարհիլ:
Ո՛վ սիրոյդ, նիւթականի ջրոյս մաքրութեան եւ անկարօտ
Այդպէ՛ս դիմեալ զաս առիս, իբրեւ ըզմարդ ոք մեղաւոր:
Դո՛ւ մաքրի՛չ աշխարհի առ 'ի Հօրէդ երկիր յաշխարհ,
Եւ կիզի՛չ հրովդ հոգեղէն հնացեալ մեղաց Ադամային.

Եւ Կուսակա՛ն յարգանդէ, ո՛վ անտխեղծ մարմին ծընեալ·
Ազա՜տ ամենայնիւ ՚ի նախահօրըն յանցանաց,
Զմէ՞ ապա զիս ըստիպես ըզմըկըրտողս ջրով անկատար։
Զիս հրեշտա՛կ Մաղաքիաս, եւ Եսայի ձայն բարբառոյ,
Այլ ո՛չ Գառինդ անմահի գուշակեցին գոլ ինձ լուացող,
Սիրով ըզծառայի եւ եթ պաշտօն տանիմ քեզ արդ՝
Կարապե՛տ լեալ նախընթաց ըզքոյդ ոտից հորդեմ շաւիղ·
Եւ տամ նշան ծագման Արփւոյդ՝ աղօտ լուսով արուսեկիս
Որ սակաւիկ մի եւս ծածկիմ եւ դու ծագիս լոյս աշխարհի։
Մի՛ զպաշտօն տիրականիդ տար ծառայիս, ժըտեմ ո՛վ Տէր·
Զհանդուրժե՛մ, ձեռք իմ դողան եւ սասանի սիրտ իմ տըկար·
Հուպ մերձիլ յանմատչելի Հուրդ ՚ի մարմնիդ աստուածա–
[խառն·
Յորմէ սրովբէ՛ն սարսելով եւ ունելեօքըն մերձենայր
Ո՞րպէս կարեմ ջուր ածել ափովս գըլխոյդ բարձր եւ անհաս,
Առ որ հայե՛լ ոչ զօրեն թեւասքօղեալ հոյլք հրակերպիցն·
Քա՜ւ, Տէր իմ, չառնեմ զայդ ես, դու մի՛ ստիպեր զիս հեզու–
[թեամբդ։
Թո՛յլ արա, ո՛վ Մըկրտիչ, հեզաբանէր զառըն Յիսուս,
Ի բարձա՛նց խոնարհելոյս, մի՛ արգելիչ լինիր այդպէս·
Որչափ իջից ես ՚ի վայր, այնչափ զանկեալսդ հանեմ ՚ի վեր։
Թող որ այսպէս լընուլ ես զնորոյ կրօնիս արդարութիւն·
Հայր իմ այսպէս պատուէր ետ ինձ, ես հընազանդ եմ Հօր
[կամաց
Որ զՈրդին պարտաւոր է տանել պաշտօն ըզծառայի,
Նո՛յն եւ զԿարապետդ իմ կոչ բանից կամակատար,
Լեր հապա հնազանդ հեզոյս եւ մուտ ՚ի ջուր, ո՛վ Մըկըրտիչ։
Զարհուրէր եւ Յորդանան ընդ Մըկըրտչին հրաժարելոյ
Տեղի տային Տեառըն ոտից ալիքն ՚ի վեր վէտ վէտ դարձեալ,
Եւ զի տես ճըշգրիտ ըզտիպն ոչ ձեռագործ ՚ի տապանակն·
Այլ ՚ի մարմնի կուսական նոր երեւեալ կերպիւ անճառ։
Կամ ոչ յուս քահանայից բաձեալ պատուով Աստուածական·
Կամ ՚ի ծոց ոսկիապատ արկեղըն սուրբ ծածկեալ յաչաց,
Ում Քրովբէք հոլաթեւեալ աստի ու անտի հովանաւոր
Հապա ինքն, որ ՚ի Սինէ գըրեաց ըզտառսն ՚ի տախտակին,
Կենդանի եւ նորահրաշ տապանակաւ մարմնոյն ծածկեալ·
Ճըշգրիտ մարդ կերպանալով՝ առ ինքըն զայ եւ մըկըրտի,
Ուստի խոյս տըւեալ փախչէր, Դաւիթն ըզկնի ձայնէր հարց–
[մամբ,
Զի՞ է քեզ, զո տեսեր դու դառնաս անդրէն, ո՛վ Յորդանան,
Միթէ ըզքոյդ արարիչն եկեալն առ քեզ կերպիւ խոնարհ՝
Դարձիր օն ընկալ ՚ի ծոցդ եւ ջուր լուացման տուր Արարչիդ։
Մերկանայր անդէն Յիսուս ընդ Մկրտչին իջեալ ՚ի գետ,
Վեհային ըզգլուխըն իւր առ ծառային աջով կալեալ
Այնպէս խոնարհ ակն ՚ի կոր յոտին լինէր եւ նուաստանայր·
Յոր ածեալ ձեռնադրողին ջուր ըզմարմնովըն մաքրագոյն,
Լըւանայր, եւ չոյտ անդէն ելեալ ՚ի դուրս՝ կանգնէր յաղօթս,

Բանային երկինք վերուստ եւ երեւէր Հոգին Աստուած:
Որպէս անդ 'ի սկզբանէ շրջէր 'ի ջուրս համատարած,
Նոյն եւ աստ 'ի Յորդանան, այլ հրաշագոյն օրինակաւ
Սաւառնեալ աղաւնակերպ յիւր փառակցին վերայ հանգչէր:
Առ նմին եւ հայրական բարբառ լսիւր որոտագոչ:
Ահա դա՛ է սիրելի եւ անդրանիկ իմ միածին,
Յառաջ քան զարուսեակ ծնունդ 'ի Հօրէ, որ չ'գիտէ մարդ:
Եւ մինչ ես 'ի յօչընչէ զտիեզերս պատրաստէի,
Դա յի՛ս էր պատշաճեալ իմաստութեամբըն չարժագոյն:
Զոր հայցէր Սողոմոն զայդ ընդունել յերկնից բարձանց,
Աւասիկ արձակեցի ամենիշխան յիմ աթոռոյ.
Որ եկեալ դադարեսցէ 'ի ձեզ կերպիւ այդ մարմնազգեաց.
Գիտէ՛ եւ խելամուտ է դա համայն ճանապարհաց.
Թէ զի՞նչ կամիմ ես յերկինս եւ զի՛նչ հաճոյ է իմ աչացս:
Դարձ, Յակոբ, հայեաց 'ի դա եւ տես ըզլոյսըդ քո ծագեալ.
Բուռն հար ըզզըմանէ, ո՛վ սիրեցեալդ իմ Իսրայէլ.
Մի՛ թողուր զփառս քո այլում եւ մի զօգուտդ օտարոտւոյ
Դու մի՛ երկբայեր զխոնարհ դորին զալըստենէ,
Թէ իցէ դա ինքն անշուտ Փըրկիչ եկեալ Իսրայէլիդ:
Ասեմ քեզ, ահա Որդւոյս վկայ լինիմ ես 'ի յերկնուստ.
Այսպէս առ 'ի Հօրէն եւ 'ի Հոգւոյն՝ Բանըն մարմնով
Մըկրտեալ վըկայեցաւ Աստուածորդի զօլ ճըշմարիտ.
Եւ ըզգլուխըն կամակոր վիշապ օձին բունեալ 'ի ջուր
Ջախջախեալ եւ խորտակեաց առեցելոյ զարշապարօքն.
Եւ օծեալ Քրիստոս արքայ, Յիսուս փըրկիչ՝ իւղով Հոգւոյն՝
Զօրացաւ քան ըզՅեսու եւ կործանեաց զհին Երիքով,
Եւ յերկիր այս Աւետեաց, որ օրինակէ վերնայնոյն,
Մոյծ ըզմեզ եւ ժառանգորդ արար սըմա զնոր Իսրայէլ:
Նորագործ մեզ աւազան կազմեաց ըզծոց Յորդանանիս,
Ուր մըկըրտեալ մերկանամք զհին մարդ մեղաց ըսկըզընածին,
Զարդարիմք լուսազգեաց պատմուճանաւն անմեղութեան,
Կըրկնակի արժանանամք ընդունելոյ զՀոգին շնորհաց:
Երանի՛ է մեզ, Մանկունք, զի զփառս ազինըն Յակովբայ
Հաւատոյն զօրութեամբ յափըշտակեալ մեզ գըրաւեցաք.
Եւ զերկիրս, որ քաղցրութիւն կաթին մեղեր բըղխէ զԲանին,
Ժառանգեալ եւ կըշտապինդ այդ վայելեմք 'ի բարութեանցն:
Այլ ըզգոյշ լինել պարտ է ըստ Պօղոսեան ըսպառնալեացն,
Մի՛ գուցէ կոճոպիցեմք ի յարմատոյն նոր պատուաստեալքս:
Սիրելի՛ էր տընկողին Իսրայէլեան ազգ ձեռնատունկ,
Ո՛հ, անարգեալ մերժեցաւ, զի զհաւատոյն չ'եբեր պըտուղ.
Երկընչիլ արժան է մեզ, մի եւ ոստոցս անհարազատ,
Դիպեսցի այս եւ յայնժամ 'ի բաց քանցեալ կոճոպիցիմք.
Լեալ շնորհազեղծ անպըտուղ առ պատուաստիչըն բարեխնամ:

# ՆԱԽԱՑՈՅՑ ՊԱՏԿԵՐ ԻՄԱՍՏԻՑ

## *ԵՐԿՐՈՐԴ ԵՐԳՈՑ*

---

Ի յերկրորդ մասն երգոյս հանէ 'ի լեառն փորձութեան եւ անդէն 'ի մէջ բերէ զերրակի փորձութիւնն դարանամուտ խոռամանկին եւ զճաջայաղթ լինելն Քրիստոսի ժուժկալութեամբն պահոց եւ իմաստուն պատասխանատուութեամբն։ Խրատական բանք առ մանկտին, մի երկիրպագանել փառաց աշխտին, յորժամ հասանէ նոցա 'ի մէջ աշխարհիս ամբառնալ 'ի գլուխ լերին մեծութեան հրապուրեալ յերեւելի վայելչութեանցն, զոր ընդ առաջ աչաց նոցին բերէ պատրիչն։

Իջուցանէ անդուստ յեզր ծովուն Տիբերական. ուր զկոչմանէն ձկնորսացն յաշակերտութիւն եւ զլուսաւոր ճարոզութենէն, Քրիստոսի համառօտիւք անցեալ՝ դարձուցանէ զոն բանին առ ազգն Հրէից եւ զսակաւս բազում եւ զարմանազան սքանչելեացն Յիսուսի 'ի դէմս բերեալ՝ յանդիմանէ զխըստութիւն սրտի նորին, որ չհաւատաց 'ի զալուստ Որդւոյն Աստուծոյ։ Աղճատաբար կենցաղավարութիւն Քրիստոսի եւ նորուն աշակերտացն՝ այլովքն հանդերձ։

Հանէ ապա'ի լեառն Թափորական։ Պայծառակերպութիւն Քրիստոսի եւ ուշաթափ լինել իւրից աշակերտացն։ Երեւումն Մովսիսի եւ Եղիայի սքանչելեօք, որոց տայ խօսիլ ընդ Յիսուսի յաղագս անճառաիրաշ տնօրէնութեանն եւ զխաչին չարչարանաց, որ կատարելոց էր 'ի նոյն աւուրս յԵրուսաղէմ։ Բանք՝ ուշամոռաց Պետրոսին առ Քրիստոս վասն տաղաւարաշինութեան։ Պատասխանիք նորին առ նա, մի խնդրել զերկնային փառաց հանգիստ եւ զվայելումն առանց չարչարանաց խաչի։

Ի վերջոյ յորդորէ զմանկունս հետեւել Քրիստոսի խաչակիր առաքինութեամբ. որով արժանանալ ելանելոյ յիմանալի լեառն վերին 'ի Թափորն երկնից եւ անդ վայելել յաւէրժ յԱստուածային զմայլեցուցիչ ճաղցր տեսութենէն ըստ ընտրեալ երից աշակերտացն։

---

# ՀՐԱՒԻՐԱԿ
# ԵՐԿՐԻՆ ԱՒԵՏԵԱՑ

---

## ԵՐԳ ԵՐԿՐՈՐԴ

Որ յարգանդ աւազանին մըկըրտեցաք անդ 'ի Ծընընդեան,
Խաչակնիք դրոշմեալ իւղովն արիացաք զինու Հոգւոյն.
Ի լեառըն Փորձութեան արիք ելցուք ընդ Քրիստոսի.
Ուր պահօք Օրէնսդիրըն անդ 'ի դրախտին հնոյն Ադամայ
Ժուժկալեալ զաւուրս այնքան՝ պատրաստեցաւ 'ի պատերազմ.
Եւ որ նըմին որդիացեալ էր 'ի նմանէ առեալ մարմնովն.
Փոխանակ Հօրն անցելոյ զպատուիրանօք ծառոյ պըտղոյն,
Կամաւոր յօժարութեամբ մնայր անճաշակ զքառասուն օր:
Առ որ մերձեալ փորձողին որպէս 'ի դրախտն առ Եւա
Գոլ հասու լուսոյն ճըշգրիտ որ 'ի մըթան մարմնոյն ծածկէր,
Եւ դարանս զաղտնագիտին դընել ջանայր պէսպէս հնարիւք
Խելամուտ լինել նորին խորախորհուրդ տնօրէնութեանն:
Ո՛վ, ասէր, Աստուածորդիդ դու վըկայեալ առ 'ի վերուստ,
Զոր լըւայ 'ի Յորդանան եւ զքէն ունիմ ես տարակոյս,
Թէ Որդի ես արդարեւ Հօր Աստուծոյ եւ սիրելի,
Զես հապա մարդ ապիկար, այլ համագոր Աստուծոյ,
Որ ըզձեռն իւր բանայ եւ արարածք լընուն հացիւ:
Զի՞ զկարօտ մարդոյ կըրեալ քաղցիւ այդպէս դու տագնապիս
Ծընչելով զմարմինդ այդչափ եւ կենդանւոյն մեռուցանես.
Տուր հրաման թող այդ քարինք հաց լիցին քեզ առատ առատ,
Զի գնասցէ իմ տարակոյս եւ զքեզ ծանեայց անշուշտ Աստուած:
Ո՛չ, ասէր, քաղցեալն Յիսուս հացիւ լոկով կեայ և եթ մարդ,
Այլ եւ բանիւ պատգամաց 'ի հրամանէ Աստուածային:
Բուսանի հացն 'ի հողոյ բուծիչ լինել մարմնոյն միայն.
Պարգեւի Բանն 'ի վերուստ 'ի սնուցանել զոգիս մարդկան:
Զհողածին անարգ մարմնոյն տաս դու հոգալ, որ չ՚օգնէ ինչ,
Եւ զհոգւոյն կենդանաճիր անփոյթ առնես, ո՛վ կեղծաւոր.
Այդպէ՞ս 'ի մէջ երկուցըն դատ առնես յանիրաւի
Լեալ զըկիչ մեծագունին եւ ընդ փոքուն փութաս հոգալ:
Վերառեալ տանէր ապա 'ի յաշտարակ վեհ տաճարին,
Արկանել զքեզ 'ի վայր, մի զանգիտեր, ասէր, դու բնաւ.
Պաշտպան են զունդք հրեշտակաց քեզ թէ Որդի ես Աստուծոյ.
Ձայն տայ զքէն խրախուսանաց Դաւիթն անդուստ, մի՛ [երկնչիր,
Պատրաստ են նոքին առ քեզ, բազկօք բառնան ըզքեզ ընդ օդս.
Եւ յերկրի զոտըս քոյին չթողուն երբէք ընդ քար հարուլ:
Զի՞նչ առ այս պատասխան տայր Իմաստութիւն երկնային,
Որ ինքըդ Աստուածորդւոյս զբանդ 'ի վըկայ դիտես ածել.

Հի՛մ եւ զայն ՚ի Մովսիսէն գրեալ ՚ի տառս ոչ ընթեռնուս
Որ սպառնայ մի ժըպըրհիլ փորձել ըզՏէր Աստուած քոյին,
Շատ լիցին վասն իմ եղեալքն ՚ի Բեթղեհէմ եւ Յորդանան
Տար ՚ի քէն ըզտարակոյս եւ հաւատա ըստուգապէս.
Ես այն եմ իսկ, որ ՚ի գերել ըզքոյդ աւար իջի յերկնից,
Ըզհնարս հաղբից քոյին տակաւ տակաւ խայտառակեմ.
Մի՛ յուսար այլով հնարիւք զիս դարանել ՚ի քո թակարթ:
Իսկ չարին խորամանկ՝ ոչ չատացեալ կըրկին փորձիւքս՝
Յաւել եւ երրակի նոր այլ հընարըս ճարտարել,
Նոյն հետայն առեալ հանէր զնա ՚ի լեառն բարձրակատար,
Զգիտե՛մ, դառըն հեգիկ ո՞րպէս երթայր զհետ կամակար.
Եւ նըշմարել տայր անտի զհանուրց երկրի արքայութիւնս,
Եւ նոցին փառք, պերճութիւն, ունայնութեան չուք անցաւոր.
Քեզ, ասէր, տամ զայդ բոլոր իշխանութիւնս այս աշխարհի
Իմ են համայն եւ ինձ տըւեալք, ում եւ կամիմ տամ ես ազատ.
Թէ անկեալ երկըրպագցես, քեզ տաց ահա զայդ ամենայն:
Խոժոռեալ ընդ այս բան՝ Հեզագունին ասէր ցասմամբ
Ե՛րթ, ո՛վ սատանայ, երթ ՚ի յետս իմ, դարձիր ՚ի չիք,
Ո՛չ ՚ի տառըն գրեալ է, Տեառն Աստուծոյդ երկըրպագցես,
Եւ նըմա միայնում տարցես պաշտօն զայդ վայելուչ:
Ո՛վ արուսեակըդ խաւարեալ, որ ընդ առաւօտըս ծագէիր,
Յերկնաւոր փառաց թափեալ՝ անկար յերկիր այս տարագիր,
Ի՞ւ այդչափ մեծաբանես իբրեւ իշխան աշխարհիս:
Համբեր, այժմիկ դատաստան է, մինչ բարձրանամ կամաւ ՚ի [խաչ.
Անդ քո զայդ իշխանութիւն հանից ՚ի քէն նոր յաղթութեամբս,
Եւ հզօրիդ ՚ի տուն մըտեալ զգանձըդ բոլոր աւարեցից:
Զինուոր եմ ես Հօրն իմոյ, եկի յաշխարհ ՚ի յասպարէզ,
Փոխանակ պարտեալ մարդոյն՝ արդ ելանեմ ՚ի մարտ ընդ քեզ.
Ո՛չ ուժով աստուածային, այլ առեցեալ մարմնովս անզօր:

Տէրն այսպէս ըզմեքենայս չարահնարին խայտառակեալ,
Յաղթական հանդիսացաւ ՚ի յասպարէզ նախամարտիս.
Եւ փորձիչն ՚ի բաց լինէր լի ամօթով եւ կորագլուխ:
Շոյտ անդէն մատեան զուարթունք պաշտօն տանել Աստուած– [որդւոյն,
Սեղան կազմեալ երկնային եւ նորաստեղծ հաց ՚ի վերայ
Ի Հօրէն յըղեալ պարգեւ յաղթող Որդւոյն իւր սիրելի,
Որ թշնամւոյն հնոյն Ադամայ՝ յաղթանակեաց նորն Ադամ,
Ցընծայր Հայրն ՚ի յերկինս, հանդէս առնէր ուրախութեան,
Եւ հիւսեալ լուսոյ պըսակ յաղթող Մանկան իւր առաքէր,
Խրախոյս կարդար մարտադրին, ազնիւ, Որդեակդ իմ, զօրա– [ցի՛ր
Այդպէ՛ս մինչ ՚ի խաչ չարին յաղթող հանդիսացիր:

Եւ մեք եւս, ո՛վ Մանկունք, Փըրկչին մերոյ նախամարտիկ
Հետեւեալ ժուժկալութեամբ յաղթող լիցուք փորձողին:
Թէ մեծութեամբ աշխարհիս լերանց ՚ի գլուխ բարձրանամք,

Մեր աչաց երեւեսցին վայելչութիւնք փաղփուն փառաց·
Որ զօրէն դաշտի ծաղկանց հեշտատեսիլ են հայելեաց·
Վայրիկ մի զուարթ են գեղով մինչ երջանիկ գարնան է ժամ։
Իսկ ընդ մերձիլ աշնայնոյն եւ ձմերան մահագուշակ
Փոյթ անդէն լեալ ծաղկընկէց եւ մերկանան տերեւաթափ։
Մի՛ լիցի ուրեմըն մեզ, որ ՚ի չարէն հրապուրելով
Պատրանաց վայելչութեան յառեալ ՚ի գեղն զմայլեսցուք·
Մի՛ եւ խաբեալ երեւելեօք, քաւ թէ անկեալ իբր Աստուծոյ
Ի գլուխ լերին մեծութեան երկըրպագցուք փառաց բախտին·
Թը նըման Յիսուս Փըրկչին չառնեմք երես երեւելեացս,
Յայնժամ եւ մեք փորձողին յաղթող լինիմք խաբէութեան։
Որ յաղթէ, ասէ Աստուած ՚ի Յայտնութեան Առաքելոյն,
Տաց նըմա որ ճաշակէ Մանանայէն թագուցելոյ,

Օ՛ն իջանեմք, ո՛վ Մանկունք, յափըն ծովուն Տիբերական,
Ուր ըզկնի յաղթութեան էջ Զօրագլուխըն հաւատոյ·
Հեզ ոտիւքըն ճեմելով՝ զաչըս յածէր յայսկոյս յայնկոյս,
Առ ՚ի գիւտ ընտրեալ զընդին, թէ ո՛վ զխաչն իւր բառնայցէ։
Պատրաստ էր եւ չոյտ եգիտ այլ յանտոհմիկ ՚ի մարդկանէ·
Ո՛չ յԱթենեան տաճարէն ՚ի կիրթ ուսման վարժեցելոցն·
Ո՛չ դպրոցէն Աղեքսանդրի, որ համբաւ տայր համայն յաշխարհ
Կամ Հռովմայ մեծի տանէն հռչակելոյն աշխարհակալ։
Ո՛չ եւ դպրաց փարիսեցւոց, որ ճոխ էին արդարութեամբ·
Այլ աղքատ եւ ցածուն ՚ի ձըկնորսաց ծովավաստակ·
Այլ ռամիկ եւ պարզամիտ գեղջիկ յարանց սուկականաց։
Զի աղքատ Վարդապետին եւ աշակերտն աղքատ պիտէր,
Որ ընդ լըսել ըզձայն հեզիկ կոչման Հովուին երկնաւորի,
Փութացան ըզկնի նորին իբրու գզառինս ՚ի կաթն մօր,
Հոտ առեալ եւ դիմեցին մի ըզմիով յԱղն երկնաւոր,
Զօրս առեալ կոչողին զունդ մի փոքրիկ կազմէր զինուոր,
Մարտակից լինել ընդ իւր յորժամ կըռուէր ինքն ընդ աշխարհ։
Ո՛վ, խեցեղէն անօթս ընտրեաց, որ ջախջախէ երկաթի զէնս,
Պօղոսն ասէ զյիմարսն ընտրեաց, որ զիմաստունս յամօթ առնէ։
Սկիզբն առնոյր շըրջիլ նորօք ՚ի մէջ երկրին իւր Հրէաստան·
Լոյսն ՚ի ճրագ մարմնոյն լուցեալ՝ վառէր ՚ի տան Իսրայէլի·
Զոր ծածկեալ ամփոփէր զամս երեսուն ՚ի Գալիլեա·
Իբրեւ Որդի մարդոյ սոսկ ՚ի Նազարէթ քաղաք սընեալ,
Տեսին մարդիկ եւ կարծեցին՝ թէ որդի է հիւս Յովսէփին·
Այլ Յիսուս վասն իւր ասէր, Որդի մարդոյ եւ վկայէր։
Իսկ յորժամ ՚ի Յորդանան նա յայտնեցաւ ՚ի վերուստ,
Թէ սիրելի Որդի, է նա Հօրըն լուսոյ յաւիտենից
Ծընունդ անհաս եւ անճառ զոր չըդիտէ մարդ երկնաւոր,
Ո՛չ ժուժայր այնուհետեւ լոկ Յովսէփայ կոչել որդի,
Կամ որ Լոյս աշխարհի էր՝ զԼոյսն յաշխարհէ թագուցանել։
Եւ որ ինքն ՚ի գլուխ լերինըն սըրբութեան քաղաք շինէր·
Կենդանի աննիւթական վիմօք բանին նորոյ կտակին·
Ո՛չ կարէր թաքչել երբէք, որ սիրեցին զյայտնութիւնն

սիրեցին եւ փութացան, օ՛ն երթիցուք 'ի նորա լոյսն,
Եկեա՛լ 'ի յաշխարհ գոլ լուսատու խաւարելոցն:
Դիւրամերձ էր նոր Մովսէս, լոյս 'ի բանէն արտափայլէր
Բացադէմ եւ ոչ քօղով նըման նըմին ծածկէր զերեսս:
Այլ աւա՛ղ, առ որըս ճառագայթեաց լոյսն ճըշգրիտ,
Կափուցին զաչըս իւրեանց, մի՛ տեսանել լոյսն ըզդէմս
Որ քաղցր էր եւ ոչ իբրեւ ըզՄովսիսին, որ խայթէր զաչս:
Ո՛չ որպէս անդ 'ի Սինէ ծածկեալ ամպով մառախլապատ,
Մեծագոչ լերինաթինդ՝ ձայնիւն իւր տայր ըզպատգամս,
Յոր զարհուրէր ծառայն Մովսէս, գընդայր ահիւ բոլոր բա–
[նակն:
Այլ աստ, ո՛վ, Աստուածորդին 'ի Սինայէ երկնից իջեալ.
Անցուպ եւ միայնակ, ոչ Ահարօն ունէր ընկեր,
Եւ զի՞ պիտոյ էր Ահարօն եւ կամ զոհ եւ զոհարան,
Ինքն էր զոհ եւ քահանայ եւ զոհարան խաչի սեղան,
Որ միանգամ զինքըն մատոյց ինքնանուէր պատարագ,
Զմեղըր աշխարհի քաւեաց մահուամբ եւ անասնոց բարձան
[զոհք.
Յիսուս եբեր զԱւետարան եւ աւետիսն էր կենաց բան,
Ո՛վ, ընդ Մովսէս եւ ընդ Յիսուս քանի՞ լայն է անջրպետ
Աւետարան՝ լի շնորհօք, լի սիրով եւ գորովով
Մովսէս մահ էր ժողովուրդին, որ մեղանչէր առ օրէնս.
Յիսուս կեանք եւ շնորհ, պարտապանին շնորհէր զպարտիս,
Մինն ասէր. քարկոծեցէք զկին մեղաւոր առ օրէնս
Միւսն ասէր. արձակեցէք, եւ ո՞վ 'ի ձէնջ է անմեղ
Զի՞ մեղաւոր ըզմեղաւոր դատել կարէ ո՛վ կեղծաւորք:
Մովսէս պատուհասիչ աստուած եղաւ Փարաւոնի.
Յիսուս աւետաբեր Փըրկիչ եղաւ համայն ազանց:
Բերանովըն իւր խօսէր Թարգ միջնորդի մըտերմաբար,
Բանըն Հօր զԱւետարան եւ ըզպատուէր Հօրըն խօսէր,
Եսայեայ բանին ճշգրիտ նըկարագիր կըրէր յանձին յանձին.
Ո՛չ վիճէր նա ընդ ումեք եւ կամ հանէր ինչ աղաղակ,
Ո՛չ երբէք լուան մարդիկ զբարբառ նորա 'ի հրապարակս:
Անդ անջուր յանապատին յորդահոսան վիմին վըտակ
Հետընթաց խաղայր հրաշիւք զհետ բանակին Իսրայէլեան,
Ջուր անոյշ բաշխէր առատ ծարաւ լեզուացըն տըրտընջող.
Աստանօր կենաց աղբիւր կենդանի վէմըն ինքըն Քրիստոս.
Գետահետեալ ընթանայր 'ի սուրբ Երկիրս այս Աւետեաց.
Երկնախօս 'ի բերանոյն յորդոր բըղխէր զբանին վըտակ,
Ծարաւուտ երկիր հոգւոց արբեալ լինէր ջրովըն կենաց:
Աւա՛ղ, անընդունակ, անբեր երկրիդ Իսրայէլեան,
Ոռոգեալդ 'ի Քրիստոսի քաղցր ականէն կենդանաբուղխ,
Տակաւին ոչ ընձիւղեալ բողբոջեցար դու հաւատովք:
Երկնաւոր սերմացանն եւ պարարակ եգըն Յիսուս
Խոնարհ մարմնոյն առեալ ըզլուծ վարեաց ըզքեզ ակօս ակօս,
Մարմնաւիկ ստիւքըն իւր ընթանալով յայսկոյս յայնկոյս,

Ըզբանին սերմ՝ սուրբ հատիկներ 'ի քեզ ցանեաց լի բուռն լի
[բուռն
Եղո՛ւկ, որ չ'ընկալար յերկիր սըրտիդ ապառաժուտ
Սիրաշխատ քոյդ մըշակին դու ոչ բերեր բարի պըտուղ·
Որ այնչափ վաստակեցաւ, ո՛հ,, եւ 'ի քեզ թափեաց քըրտունս·
Տէրըն ո՛չ բանին յարօր միայն 'ի վարել զքեզ ջանացաւ,
Նա՝ հրաշիւք զարմանազան Աստուած լինել զինքըն ծանոյց·
Թէ բանիցըն ճշմարիտ քեզ հաւանել ծանր էր ունկանդ·
Թող աչացըդ գոնէ քաղցր թուէին հրաշիցըն գործք
Երեւեալ 'ի քեզ պէս պէս, որ զմարդն ածէ 'ի զարմանս:
Ի Կանա դու ո՞չ գնացեր 'ի նորահրաշ գինւոյն յարբումն·
Ուր ընդ Մօրըն հրաւիրեալ 'ի հարսանիս երթայր Յիսուս
Որ ինքն էր Որթ ճշմարիտ եւ բարունակ, կուսէն բերեալ
Ծաղկեցաւ, եւ անդ երբեր զանոյշ գինին նոր նըշանացն
Ո՞չ ուսար թէ այնու զգաստըն Ջուր հնոյն օրինացն
Նոր սիրոյն պատուիրանօք 'ի քաղցրութիւն դարձոյց գինւոյ·
Որ աւա՛ղ, քեզ դառն եղեւ եւ ոչ ախորժ քո բերանոյդ:
Ի Նային, ուր դագաղօք ըզմիամօրէն տանէին
Դու չէի՛ր յուղարկաւոր եւ սքանչելեացըն տեսանող
Որպէ՛ս մատչէր 'ի գին գորովաշարժ կենդանատուն,
Մեռելոյն ձայն տայր անդէն, ձայն հասանէր հոգւոյն 'ի բանդ
Քեզ ասեմ, պատանեկիկ, արի՛ եւ կաց 'ի մահուանէդ·
Յարուցեալ 'ի մեռելոց լեր դու քարոզ առ կենդանիս,
Զի՞նչ անդէն, յառնէր կանգնէր իբրեւ 'ի քնոյ նընջեալն 'ի մահ·
Որ ընդ մօրն 'ի տուն դառնայր, ո՛վ աստ զմօրն չափէր
[բերկրանք:
Ծանուցաւ մեռեալ ունկան ձայն Արարչին, ո՛վ սքանչելեացս,
Կենդանւոյդ ոչ ազդեցաւ, զի խուլ եղեր դու կամովին
Առ 'ի ոչ լըսել կանգնել քեզ հաւատով 'ի մահուանէդ:
Ի դաշտին տափարակ, ո՛չ բազմեցար 'ի ճաշ հրաշիցն,
Ուր հընգեակ նըկանակօք ըզհինգ հազարսըն կերակրեաց:
Դու կերեր կըշտապինդ եւ յագեցար աճեալ հացիւն·
Բարէ՛, հաց մարմնոյդ քան զբան կենաց քեզ դիւր եկաւ եւ
[չահեկան:
Յիշեցե՞ր միթէ դու ձրի մանանայն եւ լորամարգ
որ ջանացար կացուցանել քեզ թագաւոր ըզկերակրիչն:
Իսկ ըզհացըն կենդանի քեզ 'ի վերուստ իջեալ պարգեւ
Ո՛հ, 'ի բաց անարգեցեր եւ ոչ մատեար 'ի ճաշակումն:
Դաւիթն անդուստ իւր հոգւով հրաւէր կարդաց քեզ բարձրա—
[ձայն·
Մատերուք, քաղցեալ ոգիք, ճաշակեցէք, զի քաղցր է Տէր,
Երանի՛ս տայր եւ քեզ թէ յուսայիր նըմա սըրտիւ·
Իսկ դու ոչ հաւատացեր արդ մեռանիս սովամահ:
Ուսա՛ր ըստուգապէս 'ի ծնէ կուրէն հարցանելով·
Ում այն ինչ 'ի տաճարին Տէրըն կըրկին երեւեցաւ,

Անկեալ երկրպագէր Աստուածորդի խոստովանեալ
Յամօթ եւ նախատինս քեզ ունողիդ աչըս տեսող.
Զոր փակեալ կամովին ըստ Եսայեայ գուշակութեանն,
Մի՛ լուսոյն աշխարհասփիւռ լինել երբէք քեզ նըկատիչ.
Որ գի մի՛ դառնայցես դու հաւատով 'ի քո բըժիշկն.
Ողւոյդ աչքըն բացին ըզքոյդ Փըրկիչըն ճանաչել:
Զո՞րն ես աստ 'ի սքանչելեացըն Քրիստոսի բերից 'ի դէմդ,
Զգաստանա՞լն 'ի հեզ բնութիւն Գերգեսացւոց դիւահարացն,
Ըզճեմե՛լն 'ի լուծական ծովուն վերայ իբր 'ի դաշտի.
Զհնազանդի՛լն ալեաց հողմոց 'ի հրամանէ Արարչական
Դու տեսար զանդամալոյծն, որ ըզմահիճս առեալ գնայր,
Ո՛չ հրեշտակ, ոչ ջուրց շարժումն, այլ Յիսուսի ձայն էր բժիշկ,
Դու հրաշիցն հաւատացեր, այլ զշաբաթն բերէիր փաստ:
Անդ էիր որ զՂազարոս 'ի թաղմանէն կոչեաց 'ի կեանս
Ասէիր միթէ չ'կարէ՞ նա զսիրելին յարուցանել.
Այսչափ հրաշից հանդէսք շատ ոչ եղեն անհաւատիդ
Ճանաչել Աստուած ըզնա եւ ոչ Որդի մարդոյ եւ եթ,
Որ տակաւին 'ի նմանէ այլ եւս նըշան պահանջէիր:

Արդ երգեմ եւ ըզշինական անշուք կենաց ըզՔրիստոսին,
Որ 'ի մարդիկ համարեալ՝ կենցաղ վարեաց նման մարդկան,
Աղքատիկ աշակերտօքն, որ խաչաբարձ գնացին ըզհետ:
Որ զվերին աշխարհ զուարթնոց, զերկիր մարդկան հրաշա—
[կերտեաց.
Ո՛վ անճառ սիրոյն իւրոյ ինքն անվայրիկ եկաց պանդուխտ.
Անօթեւան եւ անտուն կեանս անցուցեալ աստանդական:
Գանգատէր, ո՜հ սըրտառուչ 'ի լուր ազգին անհիւրընկալ.
Աղուեսուց որջըս էտուն, ասպընջական եղեն լերինք
Եւ թըռչնոց երկնից ըզբոյնս ծառքըն ոստովք ապաստանի.
Ո՜հ, չէտուր, ո՛վ Իսրայէլ, Հիւրոյդ քոյոյ զըլխոյն հանգիստ:
Նախահաւդ Աբրահամ նըստեալ 'ի դուռըն խորանին
Անծանօթ ուղեւորաց 'ի հրաւիրումն ընդառաջէր,
Յանկացայ եւ ես երթալ հիւր նազելի ծերոյն այնմիկ.
Մինչ ետես փութացաւ տարաւ հանգոյն զիս իւր 'ի վրանն.
Ջուր, անդէն վաստակելոյ եւ մարմնաւոր ոտից իմոց
Նա յայնժամ ածեալ անդէն՝ լուանայր ձեռօք եւ դիւր առնէր,
Եւ սեղան լիախորտիկ կազմեալ հիւրոյս՝ ինքըն պաշտէր:
Որ այսօր պարծիք այդչափ գոլ հարազատ որդիք նըմին,
Զի՞ ապա զնմանութիւն Հօրըն ձերոյ չունիք յանձինս:

Ո՛չ եւ եթ չեղեն յօժար զՏէրըն սիրով ընդունելոյ
Ո՜հ, լըցեալ ատելութեամբ հալածէին վայրէ 'ի վայր.
Որ երթեալ աշակերտօքն աստ անդ 'ի գաղտ ծածկէր զերեսս
Մերթ 'ի դաշտի բացօթեայ՝ հովուաց նըման իջեւանեալ՝
Յօղաթուրմ անձրեւահար լինէր զգիշերըն բովանդակ.
Մերթ ընդ յարկօք շինականաց ննջէր այնպէս զետնախըշտի,
Ընդ փափկութեան աշխարհի ինքն 'ի վերայ քարակոշտից:
Եւ մերթ եւս 'ի միջօրեայ տօթաժամու ճանապարհին

*Զայն քրնքուշ կուսածաղիկ մարմին խարշէր շող արեւուն։*
*Զունէր ցուպ 'ի ձեռին, խաչն էր նորուն ցուպ հաստատոյն,*
*Կամ պարկիկ մի հացաբարձ ըստանձնելով աշակերտացն,*
*Զինչ դընէին առաջի ոչ պահանջէր քան զայն աւել·*
*Որ խրատէր Մարթայի, աստ սակաւ ինչ պիտոյ է մեզ·*
*Որ բանիւըն պատուիրէր՝ տալ զօրինակ փութայր արդեամբք·*
*Հեզ էր եւ ոչ բարձրավիզ Ինքն 'ի միջի աշակերտացն։*
*Իշխան եւ կառավար, այլ ոչ յօնօք էր ակնարկող,*
*Քաղցր եւ ընտանի սիրով խօսէր ընդ մըտերիմսն։*
*Անշուք էր ըզգեստ անձին, պարզ անպաճոյճ այլ վայելուչ,*
*Մի պատմուճան, մի վերարկու պարածածուկ, բաւ էր այն*
*Պատմուճանն էր փորանկեալ, սիրայնոյ մօր մատամբ հիւսեալ·*
*Զողջ գիշերն ագանէր նա 'ի լերինըն Ձիթենեաց,*
*Թէ հանգչէր իբրեւ զմարդ, թէ կայր արթուն աչք իւր առ*
*[Հայրն,*
*Զունէր պէտըս ինքըն աղօթից, այլ աղագաւ իմ պաղատէր·*
*Եւ 'ի տուընջեան 'ի տաճարին կայր 'ի քարոզ Բանին կենաց։*
*Մանո՛ւկ, այլ մըտավարժ եւ ծերունեացըն խրատատու,*
*Նոր ոմըն Դանիէլ, այր ցանկալի եւ խորհրդոց,*
*Զի գիտէր Յիսուս հոգւովն թէ զի՞նչ կրէր մարդն 'ի հոգին։*
*Անաչառ բանիւ արդար յանդիմանիչ Փարիսեցւոյն,*
*Միշտ ուղղիչ էր խոտորեալ ազգին իւրում յԱւետարանն·*
*Յազատ օրէնըս շնորհատու որ զնոսա տանէր 'ի կեանս,*
*Յերկնից արքայութիւն, զոր աստ յերկրի սպասէին·*
*Առ 'ի փրկել զազգն Յակովբայ Հռովմէական յերկաթ լըծէն։*
*Թուէր սակայն 'ի մէջ ազգին իբրեւ Թիւրիչ ժողովրդեան,*
*Եւ որ զդեւս 'ի մարդկանէ հանէր մատամբըն աստուածազօր·*
*Աւա՛ղ, 'ի զուր բամբասէր իբր իշխանաւ բէեզզեբուղ,*
*Տանէ՛ր այսմ ամենի երկայնամիտ հեզութեամբըն։*
*Գոլով ինքն գառն Աստուծոյ, վասն այն յինքեան կրէր զգա—*
*[ռինն·*
*Որ 'ի բառնալ զմեղս աշխարհի՝ նա համբերէր մինչեւ խպառ։*

*Այսպիսի կենցաղ վարեաց Տէրըն փառաց պատուեալ յեր—*
*[կինս,*
*Փառօ՛ք անպատում եւ մեծութեամբըն ճոխացեալ·*
*Բարէ՛, Թափուր 'ի նոցանէ իբրու կարօտ ոք տառապեալ*
*Շըրջեցաւ 'ի Հրէաստան 'ի տան ազգին իւր սիրելի։*

*Հանգո՛յն Վարդապետին եւ աշակերտքըն հետեւող*
*Մերկացան 'ի բնաւ յընչից, թողին ըզտուն եւ զընտանիս*
*Ընդ անձուկ շաւիղ մըտեալ՝ հետեւեցան խաչաբարձին·*
*Բարեկամ Յիսուսի եւ մըտերիմ մինչեւ 'ի մահ·*
*Թէպէտ մարդիկ էին պարզ եւ անգիտակ զապազայէն*
*Միթէ զշահ անձին իւրեանց ո՛չ ըզգային 'ի բնութենէ·*
*Ո՛չ ուսան միթէ նոքա 'ի ծովակին Տիբերական,*
*Զուկ որսալ ձրի առատ, տանել ծախել շահել դրամ։*
*Վասն որոյ յուշի եկեալ հարցանէին գիտակ լինել·*

Տէ՛ր, ահա զգոյս մեր բոլոր թողեալ եկաք մեք ըզկնի քո
Զի՞նչ լինիմք ՚ի վախճանի, եւ զի՞նչ ի ցէ վարձ մեր ՚ի քէն:

Դուք, ասէր որ այդպէս, վասն իմ կամաւ աղքատացայք,
Եւ զթիկունս յօժարութեամբ եդիք ընդ իմ խաչիս բեռամբ,
Ձե՛զ ասեմ, որպէս հաղորդ լինիք աստէն դուք իմ վըշտաց,
Անդ յերկինս արժանանայք ձեզ պատրաստեալ յերկնից փառաց.
Եւ ընդ իս յաթոռ նըստիլ դատիչ լինել. արդ խոստանամ,
Յորժամ ես գամ ՚ի դատել զազգս մարդկան.
Թէ փառացըն հանդերձեալ դուք փափագիք լինել տեսող,
Իբրեւ զոյգն առհաւատչեայ ցուցից ըզփառսն ՚ի Թափօր:
Օ՛ն առեալ մանկունք, եւ մեք արդ ընդ երից աշակերտացն,
Ելցուք անդըր հոգւով եւ հաւատով տեսցուք զփառսըն.
Քանզի անդ հրաշածաղիկ վարդըն Յիսուս մարմնովըն իւր
Ծիրանի եւ երփնագոյն գեղով վառեալ պայծառացաւ,
Լո՛յս ՚ի կուսական յանձնէ մարմնոյն արտափայլեալ.
Ճառագայթք առ ՚ի նմանէ հատան իբրեւ ՚ի յարփենւոյն.
Ձիւնափայլ դարձան հանդերձք, որ սեաւ եւ մութ էր պարեգօ— [տըն
Նոր երկին եղեւ Թափօր լըցեալ լուսով անմատչելի
Տէրն ՚ի նմին իբր ՚ի Սինա փայլատակեալ Աստուածութեամբըն:
Յորմէ ահիւ զարհուրեալ ընտրեալ երից աշակերտացն
Զհանդուրժեալ ՚ի տես հրաշիցն՝ անկանէին ուշամոռաց.
Եւ նայել ոչ ժուժէին ՚ի հայելին Հօրն՝ անարատ,
Ի պատկերն առատութեան եւ ՚ի ծագումն ամենափայլ,
Ի ճաճանչըն հրանըշոյլ՝ տիրականին մեծ զօրութեան:
Ո՞վ, աստէն ես ո՛չ գիտեմ զարագ հրաման Աստուածային,
Զի՞ կոչմամբ այսըր բերէր զՄովսէս ծառայն ՚ի մեռելոց.
Եւ յերկնից զԵղիան, նախանձաւոր սուրբ օրինաց:
Եւ ահա շոյտ ՚ի միջի կացին յաջմէ եւ յահեկէ.
Զարմա՛նք հիասքանչ, տիպ յարութեանըն համօրէն,
Ոյք խօսէին ընդ Յիսուսի ըզփրկաւէտ խաչին ելից
Հրաշապէս կատարելոյ առ ՚ի նմանէ յԵրուսաղէմ:

Օրհնեալ է, ասէր Մովսէս, այդ քո խոնարհ գալուստ, [Փրկիչ.
Որ հանդերձեալ ես կամաւ մատնիլ ՚ի մահ եւ մեռանել:
Յընծա՛մ ընդ երեւումն անտես դիմացդ աստուածածհրաշ.
Անդ այնչափ թախանձելով՝ տեսի միայն ըզդարշապարդ,
Վա՛չ, այժմիկ իբր հայիմ հուպ ՚ի տիպարըդ լուսաճաճանչ:
Մեռանի՛, դու ասէիր, թէ ոք զերեսդ իմ տեսանէ.
Բա՛րէ, ինձ մեռելոյս արդ կեցուցիչ եղեր տեսլեամբդ.
Անդ ահիւ զարհուրէի, աստ խրախուսիմ եւ զուարճանամ:
Նա յակճիռս եղեալ ափշիմ մինչ նըշմարեմ զհուրըդ կիզիչ,
Որ յայնժամ ըզմորենին վառէր եւ մնայր անկիզելի.
Եւ այժմիկ նոյնահրաշ ՚ի կուսական մարմինդ վառեալ,
Ո՛վ անհաս քո զօրութեանդ, պահել գիտես դու զայդ անկէզ:
Այո՛, Տէր, ես հաւատամ Մարգարէն ի՛սկ ես ճըշմարիտ

Յարուցեալ 'ի վերջ դարուս 'ի հզօր տանէն քո Յուդայի,
Աւա՜ղ, որ ոչ լըսեն քեզ որդիքըն Թիւր եւ արատոյ.
Ջածեն զ'ի քէն շնորհեալ անբաւ բարիսըդ քո 'ի յուշ.
Որ բազկաւըդ զօրութեան հաներ զնոսին յԵգիպտոսէն,
Որ 'ի տօթոյ եւ ծարաւոյ պաշտպանեցեր թեւապարփակ,
Որ խնամով դարմանացեր առատ արդեամբք անդաստանաց.
Որ կոդւով կովուց ու անոյշ կաթամբ մաքեաց դիեցուցեր,
Որ տարեալ տընկեր զնոսին 'ի լեառնըդ սուրբ ժառանգութեան.
Կեր եւ յագեցաւ Յակոբ 'ի քէն զայս բարութիւնս,
Գիրացաւ եւ յափրացաւ, թող եւ թողու զքեզ Արարիչդ.
Ո՛հ, ո՛վ Տէր, ըզսիրելիդ արդ անկուշէ խաչին վըշտօք.
Մի՛ սըրտմըտիր դու ընդ այս, համբեր քոյին ներողութեամբդ,
Թող առցեն ըզհատուցումն 'ի քէն յաւուր վրէժխնդրութեան:
Քեզ փութալ է աւասիկ 'ի փըրկութիւն օձահարացն,
Թոյնամահ եղեւ աշխարհ յանբուժելի լարից չարին.
Հասի՛ր, Տէր, սիրովդ անչափ շոյտ բարձրանալ 'ի ձող խաչիդ,
Որ առ քեզ վիրաւորեալքըն հայելով բըժըշկեսցին:
Եւ 'ի մահուն սուր ժանեաց դու զըմբըռնեալքս 'ի բանդ ներքին,
Կարկառեա՛ զձեռըն քոյին, կորզեա եւ հան անդուստ յերկինս:
Երթա՜մ եւ աւետիս տամ ըսպասող անդ Նախահարցն,
Զազատչիդ մերոյ զիջումն ըզմերձ լինելըն քարոզեմ.
Զայս ասէր, լըռէր Մովսէս, խօսիլ առնոյր եւ Հեղիաս:

Դո՛ւ Աստուած նախանձաւոր եւ վրէժխնդիր փառացդ
[անուան,

Որ վառելոյս 'ի քոյդ նախանձ ցուցեր այնչափ ըսքանչելիս.
Իմ բանիւ փակեալ զերկին չետուր անձրեւ Իսրայէլի,
Եւ թաթիւ սիրոյդ ամպոյ դարձեալ ցօղեր ծարաւելոցն.
Մինչ առ ջրով հեղեղատին ես թաքչէի միայնաւոր,
Ագռաւուց հրաման ետուր հացիւ մըսով զիս կերակրել:
Անհատ իւղով եւ ալերբ զեղեր ըզտուն այրի կնոջն,
Եւ փըշմամբ իմով դու շունչ նոր շնորհեցեր մեռեալ մանկանն.
Հրաշային հրովդ երկնաէջ ծախեր ըզզոհն իմ քեզ հաճոյ,
Զիս խընդրող զերկ յիսնապետս պատուհասաւ բոցոյդ կիզեր:
Մաշկեկին իմոյ հարմամբ ըզՅորդանան անջըրպետեր,
Ի վերջնումն հրեղէն կառօք հաներ 'ի դըրախտըդ երկնային,
Եւ այսօր դարձեալ անդուստ վայրաբերեր այսր 'ի Թափոր:
Առ ի՞նչ այս, եւ զի՞ տեսիլ կերպարանացըդ նորահրաշ.
Մեղմախառն հեզիկ օդովն երեւեցար ինձ 'ի Քորեբ,
Օրինա՞կ էր այն միթէ մարմնոյդ այդմիկ խոնարհակերպ.
Յօրում լոյսդ անվայրափակ պարագրելով անճառապէս.
Ի մարմնոյդ արտափայլեալ ծագիս այդպէս իբրու զարեւ
Առ 'ի վկայ միացելոյ Աստուածային բնութեանդ 'ի մարդ,
Կամ 'ի տիպ հանդերձելոյ քոյդ գալըստեանըն միւս անգամ:
Զեւ հասեալ իմ ժամանակ, ընդէ՞ր այժմէն ածեր զիս, Տէր.
Վայելուչ է նախ Փըրկչիդ զպաշտօն լընուլ իւր զփըրկական,
Զ'ի մահ մատնիլ եւ 'ի խաչ եւ սիրտ յերկրի թաղիլ մեռեալ.

Ըզյառնելն եւ համբառնալն եւ ըզնըստիլն ընդ աջմէ Հօրն:
Ես ապա հանդերձիմ գալ եւ կարապետ լինիմ յայնժամ․
Եւ 'ի վէմդ անշարժելի նոր հաստատել զազգն անարգող․
Ո՜հ, որ 'ի նուազ նախ գալըստեանդ առ 'ի նոցունց անարգե-
[ցար:
Է՛ջ, ո՛վ Տէր, արդ 'ի լեռնէս, մի՛ յապաղեր, փութայ 'ի խաչ․
Սիրական որդւոյդ այդ նոր դեղոյ կերպիդ Ադամային․
Ո՜վ, քանի՞ Հայրըդ ցանկայ եւ փափաքի անձկակարօտ,
Թէ եւ դու առ 'ի նմանէ անբաժ ծնելովդ ես անորոշ:
Զայս առ Տէր, իսկ եւ իսկ եւ Ինքն անդէն ընդ Մովսիսի․
Մեկնէին 'ի Քրիստոսէն, մինն 'ի յերկինս եւ միւսն 'ի բանդն․
Որոտա՛յր եւ 'ի միջոյ բարբառըն Հօր հաճոյական,
Դ՚աւադիկ է միածին եւ սիրելի Որդեակ իմ իսկ․
Որպէս անդ 'ի Յորդանան, զնոյն կըրկնակի աստ վըկայեմ․
Իսկ ըզմայլեալըն Պետրոս ընդ այս տեսիլ Աստուածասքանչ․
Խօսէ՛ր իբրեւ թմրեալ եւ զոճ բանիցըն ոչ գիտէր․
Թէ հաճոյ է քեզ, ո՛վ Տէր, այսըր երիս նոր տաղաւարս․
Մեք յօժար եմք յօրինել Քեզ, Մովսիսի, Եղիայի:
Յոյժ բարւոք է մեզ, ասէր, մնալ յայս վիճակ մինչ 'ի վախճան,
Եւ 'ի լոյսըդ երեսաց յառել այսպէս եւ զուարճանալ․
Զի՛ք եւ չիք յերկրի մեզ դիւր եւ հեշտ կեանք խաղաղիկ․
Ազա՜տ ամենայնիւ յազգէն դըժպիհ եւ ոխերիմ․
Որ միշտ ատեն ըզքեզ եւ հալածեն տարապարտուց,
Թողում զայս եւ աւասիկ խորհին ըզքէն սպանանել:
Քա՛ւ, Տէր իմ, մի՛ լիցի քեզ երթալ աստի կամաւ 'ի մահ․
Եւ սիրոյդ երկնաւորի վաղ առ 'ի մէնջ մեկնիլ, աւա՜ղ:

Մի՛, Պետրէ, ասէր Յիսուս, լիցիս այդպէս ինձ խոչընդոտն,
Որ սիրեմ ինքնին դիմել 'ի խաչ 'ի մահ 'ի Գողգոթա․
Միթէ մեծ է սէրդ առիս քան Հօրն իմոյ գորովագոյն,
Ոյր ես որդի՛ եմ միածին եւ սիրելի անձին նորա,
Այլ 'ի սիրոյ ձեր յաղթեալ՝ զիս ոչ խնայէ մատնել 'ի մահ:
Դու առանց վըշտաց խաչի հանդի՛ստ խընդրես, ո՛վ Պետրէ․
Ասե՛մ քեզ, թէ ոչ ընդիս 'ի խաչ 'ի մահ դու դիմեսցես,
Մի՛ յուսար լինել երբէք հաղորդ փառացս Աստուածային
Է՛ջ ուրեմն ուր ես երթամ, եկ եւ ըզկնի դու իմ յօժար:

Զա՛յն բանիս, որ առ Պետրոս եւ մեզ լըսի, գիտէ՛ք ման-
[կունք․
Թէ փառացըն Քրիստոսի մեք փափագիմք լինել հաղորդ,
Օ՜ն ըզկնի նորին սիրով ըզխաչն առեալ հետեւեսցուք
Լեալ նըմին չարչարակից՝ նովիմբ հանդերձ մըտցուք 'ի փառս․
Որ յորժամ յայտնեսցի 'ստ աւագափող Տարօնացւոյն
Եւ մեք նման նմին լուսափայլեալ լիցուք դիմօք:
Մի՛ հանգիստ առանց խաչի աստ խընդրեսցուք իբրու զՊետրոս,
Զէ՜ եւ չէ հընար զայն գըտանել մեզ հեշտ եւ դիւր․
Եւ մի՛ թարց վաստակելոյ ընդ առապար աշխարհիս այս,
Ելանել յօժարիցիմք յիմանալի երկնից թափօրն,

Կամ փառացն անճառագոյն արժանանալ տեսանելոյ·
Յոր այժմիկ սիրով յառեալ պըշնումք յերկրէ յուսոյն աչօք,
Զտիպ նորին տեսանելով ընդ վայելուչ սուրբ հաւատոյն:
Նա՝ ըստ բանի ըզմայլողին ՚ի տեսլենէն Աստուածահրաշ
Զերրակի ըզտաղաւարս յօրինեսցուք Երրորդութեանն·
Ո՛չ սակայն հողանիւթիւ, այլ ՚ի սըրտի խոնարհ ոգւով,
Յոր եկեալ հանգիցէ Յիսուս ընդ Հօր եւ Սուրբ Հոգւոյն:



# ՆԱԽԱՑՈՅՑ ՊԱՏԿԵՐ ԻՄԱՍՏԻՑ

## ԵՐՐՈՐԴ ԵՐԳՈՑ

---

Ընդ կենաձիր այցելութիւն Քրիստոսի՝ ցնծացեալ Հրաւիրակին 'ի սկզբան երգոյս, հրաւիրէ զմանկտին 'գիւղն Բեթանիա: Յարութիւն Ղազարու 'ի չորեքօրեայ թաղմանէն՝ այլովքն հանդերձ:

Նկարագրութիւն մեծահանդէս եւ խոնարհ գալստեան Փրկչին՝ իշով յԵրուսաղէմ, ընդ որ մախացեալ ոխերիմ երիցանցն Հրէից՝ 'ի խորհուրդ ժողովին սպանանել զՏէրն:

Հրաւիրէ ապա 'ի Սիօն վերնատուն, ուր յաղագս ծայրագոյն խոնարհութեան երկնաւոր Վարդապետին, զքաւիչ եւ կենարար խորհրդոյն, զմատնիչ Յուդայէն եւ զվերջին ողջունական սրտառուչ սիրոյ բանիցն, որ առ աշակերտսն՝ երգէ տրտմալի ձայնիւ:

Իջուցանէ անդուստ 'ի պարտէզն աղօթից· ուր մահուն երկիւղիւ տագնապի Քրիստոս քրտնահար եւ 'ի յաղօթս կանխէ առանձին· առաքի բաժակաբեր Հրեշտակն 'ի Հօրէն, որ մերձեալ ահիւ՝ խրախոյս տայ եւ զօրացուցիչ լինի նմա 'ի դառն տագնապին: Ինքնակամ ըմբռնումն Քրիստոսի մատնութեամբ տիրադրուժ աշակերտին:

Հանեալ 'ի պարտիզէն բերէ 'ի տուն Աննայ քահանայապետին, 'ի պատասխանելն ապտակի Տէրն 'ի դաժան սպասաւորէն· անճառ հեզութիւն բարերարին եւ ժանտաբարոյ բժշկեալ ծառային ապերախտութիւն: Կապիլն Յիսուսի 'ի ձիթենւոյն ծառ և դալար ստեղամբք հարկանիլ անխնայապէս:

Ածէ անտի ապա 'ի տուն Կայիափայ Քահանայապետին, ուր քարշի Քրիստոս կրկին յատեան եւ 'ի վկայել զինքենէ գոլ որդի Աստուծոյ եւ գալ ընդ ամպս երկնից՝ պատառէ Կայիափայ զձորձ իւր եւ ատեանն բողոք բառնայ թէ մահապարտ է· որով հանեալ յատենէն ձաղեն պէս պէս անարգանօք եւ կապեալ 'ի սիւն՝ գանահարուած առնեն զողջ գիշեր: Դարձ Պետրոսի յուրացութենէն եւ դառնապէս արտասուելն:

Հուսկ յետոյ ածէ 'ի պալատն Պիղատոսի, ուր եկակոչ լինի Յիսուս եւ քննի գոլ մահու անպարտական· բողոքէ խուժանն Հրէից եւ 'ի հաճոյս նոցին վճռէ դատաւորն 'ի խաչ հանել զանպարտն եւ արձակել զպարտաւոր Բարաբբայն:

Վերջին դառն եւ դժուարին ձաղանք Քրիստոսի, փշով պսակիլ, նախատանաց ծիրանեաւն յաթոռ անարգանայ նստիլ՝ այլովքն հանդերձ:

---

# ՂՐԱՒԻՐԱԿ
# ԵՐԿՐԻՆ ԱՒԵՏԵԱՑ

---

## ԵՐԳ ԵՐՐՈՐԴ

ՑԸՆԾՈՒԹԻՒՆ է ինձ յաւէտ երգոյս այսմիկ ձայն Թախծալի,
Է՛ջ քանզի եւ եկն ինձ յայց կենդանաձիր Աստուածն յերկնից.
Ես հրճուիմ յոյժ 'ի ճառիս, Տէրն իմ տըրտմի վասն իմ եւ լայ.
Մինչ կենդանւոյն ըղթաղեալս 'ի վեր հանցէ ընդ սիրելոյն.
Կանգնեցայց, եւ 'ի յանձնէս լուծել տացէ գկապըն մահուն,
Յայնժա՛մ եւ յարուցիչն առցէ հըրճուիլ ընդ յարուցեալս:
Անդ ահա գձեզ հրաւիրեմ, ուր այս եղեւ ինձ, ո՛վ մանկունք.
Ի գեղջիկըն Բեթանիա եւ գերեզման Ղազարու
Քրիստոսի՛ բարեկամին եւ սիրողին հիւրընկալիչ:
Այր այն ինչ լըւաւ ըզմահ կենդանատուն հեռաստանէ,
Մըտերմացըն պատմելով փութայր նոքօք յԵրուսաղէմ
Մեռանել ինքնակամ, զի յարիցէ իւր սիրելին:
Իսկ որ առ մահ անձկալւոյն դըժուարացեալ երկընչէին,
Խրախուսէր զնոսին 'ի սիրտ քաջըն Թովմաս երկուորեակն,
Օ՛ն արիք, ասէր եւ մեք ընդ նազելի Վարդապետին
Երթիցուք եւ ընդ նըմա մեռցուք անդէն սիրով նորին.
Քա՛ւ լիցի զանգիտել 'ի մահուանէն որ ըստ մարմնոյ,
Ա՛ւ որ ըզմեզ Տէրըն մեր վառեալ զինեաց բանիւ իւրատուն,
Զի՞ սիրեմք մնալ յաշխարհիս Թըշուառավայր աղէտալից,
Երկին է մեզ դիւր վիճակ, մեռցուք, զի անդր ելցուք ազատ:
Զձայն գալոյ Յիսուսին լըւեալ Մարթա ընդառաջէր,
Մինչ 'ի վէմն, այր 'ի վերայ նըստեալ հանգչէր վաստակաւորն,
Տէ՛ր, ասէր, Թէ հանապազ դու 'ի տան մեր մնայիր մեզ հիւր
Զմեռանէր քոյդ բարեկամ, ո՛հ, եղբայրիկն իմ Ղազարոս,
Գիտե՛մ, զի կեանք ես դու եւ պարգեւիչ կենդանութեան,
Զինչ հայցես առ 'ի Հօրէդ, նա տայ քեզ փոյթ, չառնէ երես.
Որ յայս իսկ առ 'ի նմանէ ելեալ երկիր սիրով յաշխարհ,
Յարութիւն մեռեալ բնութեանս տալ քո բանիւդ կենդանարար:
Գայր անդէն եւ Մարիամ լըռիկ ազդմամբըն Մարթային,
Սիրային քորքըն երկու փարեալ ոտիւք Վարդապետին
Թափէին արտասուս եւ սըգային 'ի մահ եղբօր:
Սէ՛րն անչափ, որ եկեալն էր ըղստուգ մերժել յիւր սիրելեացն.
Հարցանէր, ո՞ւր եդիք դիմէր գնայր 'ի գերեզման.
Լա՛յր եւ արտասուէր եւ ցօղէին կաթիլք յաչաց,
Ա՛ւ 'ի ցոյց բնութեան մարդոյն, որով ցաւէր կարեկցաբար:
Որ բանիւն իւր զօրութեան լերանց փոխել տայր 'ի տեղեացն,
Հրամայէր բառնալ ըզվէմն իբըր կարօտ ձեռին մարդկան.
Թող աչօք իւրեանց տեսցեն ըզդին մեռեալ՝ Թերահաւատքն.

Առ որ բանիւ վըկայէր քոյրըն Մարթա հառաչելով,
Տէ՛ր, հոտեալ է արդ մեռեալ գոլով չորեքօրեայ։
Իսկ որ հոտովն իւր անմահ էր նորոգիչ նեխեալ բնութեանս,
Մի՛, ասէր, զայդ ինձ, Մարթա, զիս լոկ անզօր կարծելով [մարդ·
Թէ յուսա՛ս հաւատալով զփառս Աստուծոյ տեսցես աչօքդ։
Գայր կանգնէր ՚ի դուռն այրին կոչէր ձայնիւ կենդանատուն,
Հրամանաւն Արարչական, որ զարարածըս գոյացոյց·
Սիրելի՛դ իմ Ղազարէ, ել այտի արդ եւ եկ ՚ի դուրս,
Թօթափեա ըզմահն ՚ի քէն, ձայն Յիսուսի ըզքեզ կոչէ·
Ե՛լ ողջմամբ ՚ի պատանէդ թող ժողովուրդն զքեզ տեսցէ,
Երանի՛ թէ հաւատայր, ազգ անհաւան նըշան խնդրէ։
Ո՞վ ձայնիս ահարկութեան, սարսեալ դողաց սանդարամետ·
Կպեալ հոգին Ղազարու լինէր անդէն շըղթայազերծ,
Եւ յանել դրանէ բանտին ՚ի դուրս վազէր ազատարար·
Բարապանքըն պակուցեալ ՚ի կոչողին ահեղ ձայնէն,
Զգէմ ունել ոչ կարէին միոյ ոգւոյն արձակելոյ,
Որ ՚ի բարբառ Տէրունւոյն արագ դիմեալ չոյտ հասանէր·
Ընդ մարմնոյն պատանելոյ զուգաւորէր զարմանապէս,
Յիսուսի՛ կենդանաբուղխ ՚ի բերանոյն նոր շունչ առեալ։
Միթէ ՚ի քո՞ւն էր Ղազար, որ ՚ի շիրմէն զարթնոյր յառնէր·
Այնպէ՛ս մարմնովըն ողջ պատանապատ պարաւանդեալ,
Զոր լուծանել հրամայէր, որ պատեցին ձեռօք իւրեանց,
Ազա՛տ այնուհետեւ վազել ՚ի կեանս յաւիտենից։

Յիսուսի՛ կենսահրաւէր ձայն եւ ըզմե՛զ կոչեաց, մանկունք·
Որ ՚ի դժոխս իբրեւ յայրիս թաղեալ էաք, ո՛հ, կենդանեաւ·
Եւ յորժամ տառապէաք ՚ի մէջ գրոյն խաւարային,
Է՛ջ առ մեզ Յիսուս փրկի՛չ, այցելութեամբ եհան ՚ի վեր·
Եւ որ հին մեղօք նեխեալ փըտեալ էաք ՚ի մեր հոգիս,
Սըրբագործ շնորհիւըն իւր խընկալիր զըմըռսելով,
Դարձեա՛լ ըստ առաջնոյն անապականս արար ըզմեզ։

Ընդ մանկանցն Եբրայեցւոց ելէք եւ դուք Հայոց մանկտիք,
Զօրհնութիւնըս նուագելով նոր Արքային որդւոյ Դաւթի
Ի լեռնէն ձեթաստանեայց տարցուք ըզնա յԵրուսաղէմ։
Մինչ տակաւ տակաւ մօտէր օր փըրկական չարչարանացն,
Անհա՛սըն հեզութեամբ նըստաւ ՚ի յէշ եւ յաւանակ·
Որպէս կանխաւ ետես գուշակն ետ աւետիս Մաղաքիա,
«Ուրախ լեր դուստըր Սիոնի եւ պարառեալ դու զուարճացիր
Առ քեզ գայ քոյդ թագաւոր արդար, Փըրկիչ, հեզ եւ խոնարհ·
Հեծեալ յէ՛շ եւ յաւանակ մըտեալ՝ սիրով ՚ի քեզ բնակի»։

Այպէ՛ս Տէրն ՚ի տաճար իւր գայ յանկարծ, զոր դուք [խնդրէք·
Այսպէ՛ս Հրեշտակն ուխտին զոր դուք կամիք՝ գայ առ հին [ուխտն·
Նորոյ ուխտին ճշմարտութեան կնքել նոր ուխտ յԱւետարանն·
Ասէ Տէր ամենակալ, ասէ Աստուած Աբրահամու·

Հաւատացէ՛ք, ո՛վ որդիք, Որդին մարդոյ գայ ձեզ Փրկիչ.
Եւ ո՞ ժուժկալեսցէ ընդ յայտնութիւն Աստուածորդւոյն,
Որ զերծ հուր 'ի հալոցի հալէ մաքրէ զազգ մարդկային,
Թէ Հրրէայ թէ հեթանոս, որ հաւատան բանից նորին:
  Ընդ գալուստ այս հանդարտիկ Թընդայր ողջոյն Երուսաղէմ,
Խուռընթաց ամենեքին երագէին ընդառաջել.
Խումբ ծերոցն երթայր յառաջ 'ի յօրինակ Հրէից ազգին,
Եւ ըզկնի մանկտւոյն երամ, որ տիպ էր այն հեթանոսաց.
Իսկ ըզնովաւ 'ի բոլոր դասք հետեւակ աշակերտացն ,
Ինքն 'ի մէջի Վեհ Թագաւոր, ո՞վ, ոչ 'ի կառս նըստեալ փառօք.
Կամ յերիվար սիգաճեմ ոսկեսարեան պալարակապ,
Այլ 'ի ցած եւ անշուք անհամեստ էշ յուշիկաքայլ.
Որ այնու զհպարտութեան կառս Եփրեմի սատակեսցէ:
Ոմն 'ի ծառոց ձիթենեաց, ոմն յարազուարթ յարմաւենեաց
Նորընձիւղ ծաղկափըթիթ ոստըս հատեալ արագ արագ.
Բերեալ սըփռէին զճանապարհաւ արքայաճեմ.
Ողջ ուղին քարուտ անբոյս ծաղկազարդէր կանանչագեղ:
Եւ այլ ոմն զհանդերձիկըն իւր հանեալ ստիպով սիրոյն,
Ըզգետնով տարածանէր առ 'ի պատիւ Նոր Արքային.
Որ գայր յԵրուսաղէմ, 'ի տալ հրաժեշտ հին տաճարէն,
Որ հանդերձեալ էր շինել զնոր տաճար Եկեղեցւոյ:

  Տարածեսցո՛ւք, ո՛ մանկտիք, եւ մեք զանձինս խոնարհու–
[թեամբ,
Զի Փըրկիչըն մեր եկեալ սիրով ընդ այն անցանիցէ.
Նա՝ հեզ ոգւով եւ սըրտիւ լիցուք նըմին կենդանի կառք,
Յոր նըստեալ հանգիցէ որպէս ասէր Եսայիաս:
Ընդ ոստոց ձիթենեաց, որ ըղպտուղ բերէ լուսոյ,
Իբր 'ի ծառոց բանաւորաց ոստըս հատեալ նըւիրեսցուք:
Եւ փոխան գեղաշխտակ արմաւենեացըն բարձրացեալ
Զանուշակ բերեալ պըտուղ ընծայեսցուք Յիսուսին,
Որ ընդունի հաճոյապէս թէ սուրբ իցէ սըրտի նուէր:
  Իսկ յորժամ մեծ հանդիսիւ Փըրկիչն եմուտ յԵրուսաղէմ.
Քաղաքը՛ն բովանդակ դըղըրդեցաւ 'ի տեղւոջէն,
Եւ ձայն Մանկտւոյն բազմութեան լնոյր զողջոյն ըզհրապա–
[րակս,
Դիեցիկ տղայոց բերանք 'ի յօրհնութիւնըս բանային.
Ովսաննա՛յ 'ի բարձունս, օրհնեալ եկեալ անուամբ Տեառն.
Որպիսեօք ճըշգըրտագոյն յայտնի ծանոյց Դաւիթ հոգւովն,
Զօրհնութիւն 'ի բերանոյ դու ըստընդեայց առ ընկալար:
Խանդացեալ երիցանցն եւ ասէին ըզչարբելով,
Լըսե՞ս, ո՛վ Վարդապետ, թէ զի՞նչ գոքին ասեն ըզքէն.
Սաստեա՛ զի լըռեսցեն, քեզ չէ արժան երգ Արքայի:
Անցաւաւմն եւ հեզն առ այս պատասխանէր սիրոյ բանիւն.
Զե՛զ ասեմ, թէ լըռեսցեն որդիքըն ձեր յօրհնութենէն,
Քարի՛նքդ այդ անզգայ աղդք անծանօթ հեթանոսաց
Խօսուն եղեալ հաւատովք՝ լեզուքն առիս բանին երգովք:

Բացէ՛ք օն, Հայոց մանկունք, զի Տէրն առ մեր ասաց [զայս բան,
Օրհնեցէ՛ք քաղցր երգով դուք գալստեանն հեթանոսաց։
Յայնժա՛մ առ Աբգարու սուրբ արքային նախահաւատ
Այսր եկաք եւ մեք Փրկչին 'ի գալստեան հանդիսատեսք.
Հրաւիրել զՅիսուս բժիշկն 'ի մեր աշխարհն հեթանոս,
Զի զբլխոյն բորոտելոյ ընդ ախտացեալ ողջ անդամոցն,
Բուժի՛չ առողջարար լիցի դեղովքըն զօրաւոր։
Աստ յայնժամ կենդանիքս, աւա՜ղ, իբրու քարինս թուեցաք,
Գոլ անշունչ տարրեղինաց երկրրպագու իբր Աստուծոյ։
Երանի՛ է մեզ այժմիկ, որ հաւատով հոգի զգեցաք
Ընդ գալուստ Աստուածորդւոյն աղաղակեմք բարձրաբարբառ.
Դաւանեալ ըզնա Մեսիայ 'նդ երգող մանկանցն Իսրայէլի։
Ո՛վ, առ մեօք փառաւորի Որդին մարդոյ որպէս ասաց,
Ծանուցեալ Ինքըն բոլոր հեթանոսաց Տէր եւ Արքայ,
Եւ անուամբն աշխարհանաց հրատարակեալ ծագէ 'ի ծագ։
Յայնժամ առ դուրս իբրեւ օտար 'ի Քրիստոսէն
Փիլիպպոսն առեալ եմոյծ, նովաւ տեսաք լուսոյն երես.
Աւադիկ ընտանեցեալ եւ կոչեցեալք հրաւիրանաւն,
Անմիջնորդ մըտեալ ըզՏէրըն տեսանեմք, յԵրուսաղէմ.
Աչօ՛ք հաւատոյն, որով առաք մեք զերանին։

Իբրեւ այն ինչ հասանէր ժամ յղացելոցն ըզնենգութիւն,
Ամբարիշտ բանիւ ծնանել ըզթիւր խորհուրդ ըսպանութեան.
Որով ըստ իմաստնոյն անջատեցան 'ի յԱստուծոյ,
Ո՛հ, երկնելով սաէին բանիւ նորին ճըշգըրտաձառ.
Որպէ՛ս մեք արդարոյն լիցուք արդեօք դարանակալ.
Զի՞նչ յանցանս եղեալ Նըմին եւ դատեսցուք ըզնա 'ի մահ.
Որ դըժպըհի եղեւ մեզ եւ միշտ գործոց մեր հակառակ.
Նախատէ բանիւքն ըզմեզ թէ զօրինօք յանցանիցեմք,
Եւ 'ի դէմըս մեր բերեալ զմեղս մանկութեան յանդիմանէ։
Պարծի յոյժ եւ խոստանայ Ինքն Աստուծոյ ըզգիտութիւն,
Յանձին ունել լիովին եւ կատարեալ ամենայնիւ,
Թողումք զայս եւ իսկապէս Աստուածորդի անուանէ զինքն.
Մեզ 'ի վկայ ածէ առ այս պէս պէս ըզգործըս իւր հրաշից,
Եւ ասէ եւ պարծի գոլ հաւասար ինքն Աստուծոյ.
Եմ ասէ Որդի մարդոյ նա եւ Որդի Հօրըն լուսոյ,
Զհանդուրժեմք լըսել տանել այս նորալուր հայհոյութեանց։
Ո՞չ ահա գիտեմք մեղէն ըզնա որդի աղքատ հիւսանն.
Եւ լոկ մարդ ամենայնիւ, անկար առ գործս Աստուածային,
Թէ զդիւացն ելումն ասեմք, զայն իշխանաւ նոցին առնէ,
Ո՛չ պատրիմք զերթ խաժամուժն, գիտեմք ըզլաւըն ճանաչել։
Զի՞նչ այս, զի առ երեւս իշխանաբար զմեզ կըշտամբէ.
Թող գործոց մեր արտաքին՝ յանդիմանիչ է եւ մըտաց.
Քանի՞ ծանր է մեր աչաց եւ տեսանել ըզնա անգամ,
Զի կենցաղ վարուց նորին ոչ են նըման այլում կենաց,
Նորագոյն եւ այլազգի շաւիղըն իւր 'ի մեր գնացից։

Որ մաքուր եմք օրինօք՝ համարեցաք նըմին ՚ի դարչ.
Խորչի յոյժ յընթացից մեր խոյս տայ իբրեւ ՚ի պղծութեանց.
Այլ Ի՛նքն ընդ մեղաւորս եւ ընդ պոռնիկս ուտել սիրէ:
Թէ գչիրիմս մարգարէիցն ՚ի չուք պատուեալ զարդարիցեմք.
Կեղծաւոր զմեզ համարի եւ կցորդ արեան հարցն ըսպանիչ.
Որ մե՛ծ է քան զամէն՝ հըպարտացեալ բանիւըն իւր,
Անդըրագոյն քան զԱբրահամ տարեալ հանէ զօր լինելոյն.
Տիսն է իւր երեկածին, գոլ հին աւուրց մեծաբանէ.
Տեսցուք ուրեմըն փորձիւ գնորին բանից ըստուգութիւն,
Թէ լինի՞ն ճըշգըրտապէս ՚ի վախճանի կենացըն իւր:
Թըշնամանօք եւ գանիւք խոշտանկեսցուք ըզնա պէս պէս.
Եւ ՚ի հաց նորա մարմին արկցուք ըզփայտ չարչարանաց.
Զի գչափ առցուք հեզութեանն եւ խելամուտ լիցուք բանին.
Ըզփայտէ մահու կախեալ այնպէս լիցի Թող խայտառակ,
Եւ անուն եւ յիշատակ եւ կեանք նորա բարձցուք յերկրէ.
Գո՞յ, տեսցուք, այցելութիւն յիւր ՚ի բանիցն եւ յուստեքէ.
Թէ իցէ Ինքն արդարեւ ծնունդ եւ Որդի Հօր Աստուծոյ,
Ապաքէն պաշտպան լինի նա ՚ի վերուստ հըզօր Հօր Աստուծոյ,

Այսպէ՛ս պետք Քահանայից, այսպէս դըպիրք օրինականք
Ըզբերանս եդին յերկինս եւ ըզլեզուս ածին զերկրաւ.
Թիւրեցան ՚ի խորհուրդս եւ ոչ ծանեան զմեծ խորհուրդն,
Որ ծանուցաւ Իսրայէլի խորհուրդ ծածկեալն իսկզբաննէ:
Խորհուրդն էր Կուսին ծընունդ Էմմանուէլ ընդ մեզ Աստուած.
Այս իսկ էր ըսքանչելիք, Բանն մարմին եղեւ եւ մարդ.
Եկն ՚ի տուն Յակովբայ, որդիք տեսին եւ ոչ ծանեան.
Քանզի խաւար հին չարին զաչօք մըտաց նոցին պատեալ,
Կուրացան չարեօք կամաց, ոչ գիտացին զխորս Աստուծոյ
Ո՛չ եւ ընտրել կարացին զպատիւ ոգւոյն անարատի,
Կամ վարձուցըն փըրկութեան ակընկալեալ ըսպասեցին:
Զ՚իմացան ոգիքըն Թիւր զխորհուրդ փայտին անարգանաց,
Զոր Փայտ կենաց ամենեցուն կոչէր հոգւովըն Սողոմոն.
Թէ զոր ինքեանք ՚ի նախատինըս պատրաստեն Աստուած—
[որդւոյն.
Ի նմա փառքըն պարծանաց Թագուցանի անտեսաբար
Ի մահուն անարգութեան, անմահութիւն յաւէրժական:

Իսկ անպարտըն Յիսուս Թիւր խորհըրդոցս չարութեան,
Տեղի տըւեալ դադարէր ՚ի յԵփրայիմըն հիւըընկալ:
Յետ ապա երկուց աւուրց այն ինչ Պասեքըն մերձենայր,
Ի Սաղիմ դառնայր անդրէն ուտել ըզգառըն զատկական.
Քանզի գառինն Աստուծոյ գայր մերձենայր զօհին մեծ օր.
Որ ՚ի խաչին պիտէր զենուլ ըստ հին գառանց ազատութեան.
Անդ դըրանդիք դրանց դըրօշմէին յարիւն գառանց խաչանչան.
Իսկ աստ դըրօշմի մեր ճակատ, ո՛վ, Քրիստոսեան խաչի նշան.
Գոլ մեզ կնիք եւ պահապան ՚ի մահուանէ չարին սատան.
Անդ զորդիսն Իսրայէլի, աստ ըզհամայն աշխարհս փըրկել.
Եւ վարել զիշխանն մահու եւ ընկենուլ ըզնա արտաքս,

*Վա՛չ, ազատեալ Ադամորդիք զհի՛ն Թշնամ՛ին ՚նդ ոտիւք առցեն։*  
*Առ քեզ ո՛վ Վերնատուն, լեառըն Սիոն լեառն Աստուծոյ*  
*Առ քեզ բերեմ ըղձքոյդ մանկունս, զորս դու ծընար Սիոնի վերին․*  
*Զարմա՛նք, դու ասէիր, թէ ո՞ ծընաւ ինձ ըզդոսա․*  
*Դու, գիտե՛մ, ամուլ էիր հազար հազար յամաց անտի․*  
*Երկնեցեր ՚ի միում աւուր անթիւ ծընար լուսոյ որդիս․*  
*Ուրախ լեր, դու մայր ամուլ, քեզ աւետիս տայ Եսային,*  
*Տե՛ս զորդիս քո թըռուցեալ, եւ ձագախառն երամովին․*  
*Առ քեզ գան, մայրըդ Սիոն, յամեն ազգաց եւ աշխարհաց,*  
*Եւ դու այսպէս ուրախամիտ որպէս ըզմայր որդւովք բերկրեալ։*  
*Իսկ ես արդ, Սիոն վերնատուն, զերգոյս մրմունջ փոխեմ [յողորմ,*  
*Յարմարեալ ընդ սրտառուչ բանից սիրոյ Վարդապետին․*  
*Զեմ արժանի հուպ սեղանոյդ, յոր Զատկական խորովեալ [գառն,*  
*Յոր կենաց հաց, կենաց բաժակ, ո՛վ, Գառն էր զառինն [մատակարար,*  
*Տո՛ւր ինձ տեղ միայն առ դրանդ նըստիմ երգեմ զհիւրըդ [Յիսուս։*

*Որ ցանկ տենչայր փափագէր զվերջին Պասեք չարչարանացն,*  
*Ուտե՛լ, ելեալ ՚ի քեզ ընդ աշակերտացն բազմեցաւ,*  
*Թախծալին յայն երեկուն եւ ՚ի յաւուր յետին Ընթրեացն։*  
*Սէ՛րն անմահ եւ անկարօտ սեղանակից լեալ սիրելեացն,*  
*Իսպա՛ռ սիրեաց ըզնոսին, քանզի յետին էր այն Զատիկն․*  
*Առ որ չգիտեմ, ո՛վ Մանկունք, թէ յո՞ր օրէն Աստուածորդին,*  
*Ցանկանալո՛վ ցանկանայր, որպէս ասէր առ աշակերտսն․*  
*Յօրէ՞ն, յոր ըզնոսին ընտրեալ արար իւր բարեկամս,*  
*Թէ անդուստ ՚ի մարդանալըն իւր մարմնով առ ՚ի Կուսէն*  
*Յելի՞ցն յեգիպտոսէն յորժամ զօչխարսըն տարեւոր*  
*Կերին անոսկրաբեկ ցուպ ՚ի ձեռին Իսրայէլեանքն․*  
*Թէ յօրէն վեցերորդի երբ ՚ի դրախտէն Առաջնաստեղծքն,*  
*Պատրանօք բանսարկուին արտաքսեցան սրով Քրովբէիցն։*  
*Որով Հայրըն գըթած ասաց Որդւոյն իւր միածնի․*  
*Զի որ էր առ Աստուած բանն, մարմին առցէ առ ՚ի Կուսէն,*  
*Գայ յաշխարհ եւ շըրջելով ըզմոլորեալըն խընդրիցէ․*  
*Օ՜չ, վասն այն ցանկացելոյն ախորժ բերէր վերջին Պասեքս։*  
*Աստ ըզխորհուրդ հաղորդութեան խորին անհաս ՚ի մեր միտաց,*  
*Հաստատէր եւ աւանդէր ՚ի յիշատակ իւրոյ մահուանն․*  
*Հաց առեալ եւ օրհնէր եւ բեկանէր ՚ի մասըն մասն․*  
*Ասէր, Առէ՛ք եւ կերէք, ո՞վ, դուք ընտրեալ իմ աշակերտք,*  
*Նորահրաշ այս մանանայն յերկնից իջեալ, Ես իսկ եմ այն․*  
*Այդ է Մարմին իմ ճշմարիտ, որ խօսէր միշտ առ Հրէայս,*  
*Որ կեանս տայ աշխարհի, որ հաւատան եւ ճաշակեն․*  
*Աւասիկ զբանն պարզեալ ուսուցի ձեզ ըզդալապէս։*  
*Ո՛վ, այսպէս Աստուած ընդ մարդ, մարդ ընդ Աստուած [լինէր հաղորդ․*

Այսպէ՛ս Հայցն եւ հաւատն խառնէր ըզմարդն ընդ Աստուծոյ.
Այսպէ՛ս հինն Ադամ նոր Ադամաւ Աստուածանայր,
Մա՛րդ մահկանացուն ընդ Աստուծոյն անմահանայր:

Աւարտէր Ընթրիքըն սուրբ յառնէր Յիսուս 'ի սեղանոյն,
Ի բաց եդեալ ըզհանդերձն ըսփածանէր զիւրեւ ղենջակ,
Ջուր առեալ եւ լնոյր 'ի կոնք, յոտին այնպէս կայր 'ի սպասու.
Լո՛ւռ յակճիռս եղեալ անդէն պաշտող դասուցն ապուշ մնային:
Զի՞նչ այս նոր սպաս ծառայի, զոր Տէրըն մեր տանի սիրով,
Մեք գիտեմք, մեք սովոր եմք, մեր աշխարհին չէ այս օրէնք.
Զիք տեսեալ մեր զայս երբէք, որ ընդ սըմա ցանկ հրջեցաք,
Նոր գործ, նոր օրինակ, մեր ուսուցիչ Վարդապետին:
Մի՛ վարանիք, Տէրն ասէր, դուք աշակերտք իմ սիրեցեալք.
Զոր բանիւ անդ ուսուցի՝ զայն աստ ահա լընում արդեամբք.
Յիշեցէ՛ք, զինչ ասացի թէ հեզ եմ ես եւ սիրտ խոնարհ:
Կարգ չէր անդ մեծագունին, այլ անխտիր պաշտէր հաւսար,
Եւ այնպէս բոլոր դասուն զոտըս լուանայր ըզտաժանեալս,
Եւ ղենջակաւըն սրբէր, ո՛վ, սուրբ ձեռօքըն սըրբագործ.
Որո՛վ քաջընթացիկս արար զնոսին ընդ տիեզերս,
Համարձակ զընալով 'նդ ոտիւք կոխել զօձս եւ կարիճս.
Քարոզե՛լ զԱւետարան, զաշխարհ ամէն աշակերտել:
Ա՛յսր, ո՛վ հիւրասէր Իսրայէլեան տոհմիդ քո Հայր.
Հայեա՛ց եւ տե՛ս թէ ճանաչէ՞ս որ ընդ հրեշտակս քեզ հիւր
[եկն,
Ում ընթացար ընդառաջ եւ հանգուցեր 'ի վըրանիդ,
Ջուր ածեր եւ ընդ ծառով զոտըս լուացեր զովացուցեալ.
Նո՛յն փոխան նըմին, զոտըս լուաց քոյդ զաւակաց.
Եւ ույր անդ կոզւով, կաթամբ, որթու մըսով սեղան կազմեր,
Ն'աւանիկ ըզկենահրաշ մարմինն ընդ այն ետ ճաշակումն:
Գայր առ Պետրոս եւ նա խոյս տայր, բան առ Յիսուս բե–
[րէր 'ի դէմս
Տէ՛ր, ասէր, չեմ հանդուրժեր որ սպաս տանես քո ծառայիդ.
Ես մի ձկնորս էի նուաստ, այլ ընտրեցեր զիս առաքեալ.
Որ ըզքեզ դաւանեցի Աստուածորդի Հօր քո ազդմամբ:
Նա եւ 'ի լեառըն Թափօր տեսի ըզլոյսդ արտափայլեալ,
Յորմէ ահիւ հըրտուցեալ յերկիր անկայ ես ուշաղնաց:
Զի՛, ո՛վ Տէր, զի քեզ այդչափ ըզշուք անձինըդ մերկանալ.
Ո՛վ, զըլխոյդ ամենատէր ծունր կրկնեն երկնային դասք.
Ես թողում որ խոնարհի՛ մինչեւ մարդոյն յոտս անարգ.
Դո՛ւ զայդ ինձ առնես, ում քո ծառայդ է պարտական:
Ես մի տըզէտ մարդ եմ, ո՛վ Տէր, եւ չըգիտեմ Աստուծոյ բան.
Ուսո՛, դարձեալ, ո՛վ Վարդապետ, դեռ ես չուսայ քո դասեր.
Գիտե՛ս քանի՞ դժուարին է քո բան, խորհուրդ, Աւետարան.
Բիրտ անկիրթ Գալիլեացին միթէ կարէ՞ զայդ հասկանալ:
Թող զիս, Տէր, եւ անց զինեւ՝ նա պաղատէր աղերսագէմ.
Այլ ուսո՛, հազար կրկնէ, որ խելամուտ լինիմ ո՛վ Տէր:

Գիտե՛մ, Պետրէ, դու դեռ մտօք չեղեր բանին խորհրդազգ–
[եաց,
Թէ եկն Որդի մարդոյ՝ պաշտօն տանել անկեալ մարդոյն·
Եւ չըտեսա՛ր եւ չըզգացե՛ր 'ի կոչմանէդ մինչեւ ցայսօր,
Եւ չըլինի՞ն քեզ յուշ երբէք համօրէն գործք մարդացելոյս,
Որպէ՛ս կեանս վարեցի հեզ եւ խոնարհ կերպարանօք·
Ու չուսա՞ր իսկզբանէ Բանին կենաց նկարագիր։
Որ յերկինս էր՝ եկն յաշխարհ, յանճառ փառացըն թափելով·
Որ լոյս էր 'ի լուսոյ Հօրն՝ եկն 'ի մարմին նուաստութեան·
Եւ իբրեւ Որդի մարդոյ՝ նա շըրջեցաւ ընդ մարդիկ,
Մարդ աղքատ եւ անինչ՝ Աստուած գոլով եւ մեծատուն·
Որ ետ զաշխարհ որդւոց մարդկան, Ինքն չունէր տեղի գլխոյ,
Քաղցեալ, ծարաւեցայ մարմնոյս կարեօք իբրեւ կարօտ·
Եկի առ Յովհաննէս 'ի Յորդանան մըկրտիլ·
Նա հրաժարէր որպէս եւ դու, զի չգիտէր բանին խորհուրդ։
Առ ծովակին Տիբերական զձեզ ընտրեցի ինձ աշակերտ·
Գոլով Տէ՛ր եւ Վարդապետ, այլ 'ի միջի ձեր սպասաւոր։
Գիտէ՛ք, տեսիք եւ լըսեցիք՝ որպէ՞ս տարի Հրէից նախանձ·
Որպէ՛ս համբերեցի այն չարախօս բամբասողացն։
Աշխարհի բարկութեան դէմ, ես հեզութեամբ դիմադրեցի·
Բայց դեռ կայ ինձ համբերել եւ նախատիլ մինչեւ 'ի խաչ·
Է՛ Պետրէ, այս ամէն գործ ցոյց ո՛չ էին խոնարհութեան։
Հարց թէ առ ի՛նչ եւ զի՞ այդչափ կեանս վարեցի ես խոնարհ·
Լո՛ւր մտադիր, ես պատմեմ քեզ, դու խելամուտ լեր բանին։

Որ ըստեղծուածն էր իմ ձեռին՝ Աստուած լինել նա ցանկա–
[ցաւ,
Այլ զի չարին էր հրապոյր, յոյժ խաբեցաւ ողորմելին·
Որ ակն ունէր բարձրանալ էջ 'ի դըժոխս առ հրապուրիչն·
Որ Աստուած լինել կամէր եւ Աստուծոյ աթոռակից,
Ո՛հ, զըրկեցաւ թշուառամիտն եւ 'ի դրախտէն եդեմական,
Սիրելի ձեռակերտին իմոյ դիպաւ այս մեծ աղէտ։
Որ կամէր աստուածանալ ծառոյն պըտղովըն մահառիթ,
Թող այսու ճանապարհաւ խոնարհութեան աստուածասցի։
Անկելոյն սատան չարին ձեզ մի՛ լիցի նմանիլ երբէք·
Որ ասէր եւ ժպրհէր զաթոռն 'ի վեր դնել ընդ ամպս,
Հաւասար իշխանակից կալ բարձրելոյն աստուաբար·
Բայց, աւա՜ղ, թափուր եկաց եւ յիւր փառացըն բարձրագոյն·
Բարկացաւ Տէրըն փառաց, որ ըզփառս իւր չըտայ այլում,
Շանթ եւ կայծակ թափեց 'ի գլուխ յերկնից վարեց մինչեւ
[յանդունդ·
Եւ փոխան երկնից փառաց՝ եկաց ժառանգ տարտարոսին,
Առ իւրում անսաստութեանն՝ արժանահաս կըրեաց պատիժ։
Լե՛ր ուրեմըն դիւրանսաց, Պետրոս, դու ինձ ամենայնիւ·
Լուա՛ր անդ 'ի Հօրէն անդիմադարձ լըսել որդւոյս։
Տիրական հրամանին ծառայն սիրով հնազանդ կացեալ·
Զոտս 'ի կոնք եդեալ ահիւ՝ լուա՛ դու ասէր, Տէր իմ, խոնարհ։

Եւ ապա՛ ճշմարիտ որթն, որ զՀայր իւր կոչէր մշակ,
Ի ձեռն առնոյր զգինւոյ բաժակ ըմպէր սիրով զուարթ եւ տը-
[խուր,
Արբէ՛ք ասէր ՚ի սմանէ, այս է բաժակ իմ նոր ուխտի·
Եւ արիւն իմ իսկապէս, զոր ես հեղում ՚ի մահ խաչին,
Ի փրկանս աշխարհի եւ մեղապարտ մարդոյն քաւիչ։
Ո՜վ, բաժա՜կ, բաժա՜կ որ ըզմահու եւ ըզկենաց տաս նըշան
ԸզՅիսուս ՚ի մահ վարես, զմարդ մեղապարտ թողուս ազատ·
Զե՛ս այն բաժակ հարսանեաց, որ ՚ի Կանայ Գալիլեացւոց
Ուր գեղոյր գինին հրաշիւք, ուրախ առնէր զհարսն եւ փեսայն,
Տէր, միթէ չէ՞ այս բաժակ քո հարսանեաց խորհրդաւոր,
Որ ընդ հարսին Եկեղեցւոյ զքեզ պսակէ առօք փառօք։
Զինչ յետոյ բան սըրտառուչ բանայր անդէն Խաչապատ-
[րաստն,
Ընդ գինւոյն սուրբ խրախճանացն ըզտրտմական խառնէր բան·
Ոմն ՚ի ձէնջ աւասիկ, ո՛վ սիրեցեալ իմ աշակերտք,
Մատնելոց է զիս ՚ի մահ, առիս գըտեալ, ո՜հ, ապերախտ։
Ընտրելոցդ ՚ի թիւ ըզնա թէպէտ գրեցի ես առաքեալ,
Ա՜հ, ՚ի դասուց հանեալ ձեր՝ իւրովի արդ որոշէ զանձն·
Երթա՜յ մարդոյ Որդին յօժար ՚ի խաչ ըստ Հօր կամացն,
Այլ եղո՜ւկ մարդոյն այնմիկ, յոյր ձեռն ՚ի զուր մատնիմ ՚ի
[մահ։
Լա՛ւ էր նմա մնալ ՚ի խաւար՝ չըգալ ՚ի կեանս ընդ արեւով,
Քան ծնանել մարդ յաշխարհ՝ լինել մատնիչ Որդւոյ մարդոյ։
Խուճապէր ՚ի սըրտին ընդ այս Պետրոսն անձնանըւէր,
Առ սիրելին Յովհաննէս ակնարկելով՝ գիտել կամէր·
Որ ըզդաստակս պարզեալ փարէր նա ըզլանջօքըն Յիսուսի,
Բոլոր հոգւով չընչով ողջագուրէր ըզՎարդապետն·
Տէ՛ր, ասէր, ո՞վ է մատնիչն այն ապաշնորհ եւ ապիրատ·
Ծանո՛ մեզ եւ մի՛ թողուր, զի տըրտմիցիմք տարակուսեալ։
Որ զբան մի՛ չունէր ծածուկ յիւր մըտերիմ բարեկամացն,
Պատառաւըն թացելոյ՝ նըշաւակէր զմատնիչ Յուդայն·
Ե՛ւ, ասէր, ո՛վ նենգաւոր, ե՛րթ եւ արա վաղվաղակի,
Դու զոր ինչ եդեր ՚ի միտս դաւաճանել ըզՎարդապետն,
Եւ դարանեալ ՚ի սըրտիդ յափըշտակել խնդրես զաղքատս։
Ա՜հ, չէ՛ քեզ այն երանին, զի դու զտնանկէս չար խորհեցար·
Ե՛րթ ատի, մի՛ յապաղեր, քանզի պատրաստ եմ աւասիկ,
Ո՛չ դարանաւըդ քոյին, այլ իմ կամաւ երթալ ՚ի մահ։
Ո՜վ սըրտին սալացելոյ աշակերտին անըզգացեալ,
Խըստացեալ բոլորովին զերդ ըզդարբնաց սալ անընդոստ,
Զոր հրացայտ սիրոյ կռանաւ եհար այսպէս հեզըն Յիսուս·
Ո՜հ, ոչինչ ըզգաց Վարդապետին նըստեալ եկեր կուշտ եւ
[ցյադ·
Յաճախեաց խաբէութիւն՝ չարին գըտեալ ինքն արբանեակ,
Անարգեաց ըզՏէրունեան կենաց մարմնոյն քաղցր ըզճաշակ·
Եւ զբաժակ նորոյ ուխտին արհամարհեալ՝ թափեաց ՚ի վայր·

Յերամէն սուրբ աղաւնեաց ել խառնեցաւ 'նդ ագռաւուց տարմ
Եւ որպէս այժ մի սեւագէս 'ի լուսակիզն անմեղ գառանցն։
Յաթոռոյն դատողական զոր խոստացաւ Տէրըն դատող,
Կամովին գահավիժեալ 'ի վիհն անկաւ անդընդաստոյգ·
Դիւրագին վաճառեալ ընդ արծաթոյ ըզՏէրն անգին,
Ի տաղանդոյն շնորհէ զըրկեալ՝ կորստականին եղեւ գտիչ·
Նուազեցան աւուրք նորին, զորմէ կանուխ ծանոյց Դաւիթն,
Ըզվիճակըն պաշտաման տարաւ ընտրեալըն Մատաթի։
Սիրեա՛ց նա զանէծս եւ ել յիւր գլուխ վաղվաղակի,
Զգաւ նա յուսաբեկ չուան 'ի կախ ձգեաց 'ի ծառն,
Կախեցաւ, խեղդեցաւ եւ իւրովի եբարձ ըզկեանս·
Արեւն եհար 'ի վերուստ, եկաց 'ի վրէժ իւր Արարչին,
Եւ այնպէս ուռուցեալ հերձաւ հեղաւ փորըն իւր գարշ։
Թէպէտ գնաց առ Քահանայս առեալ տարաւ զերսուն արծաթն·
Ասաց՝ առէ՛ք, ես մեղա՛յ, զի մատնեցի զարիւն արդար·
Խիղճ իմ ներքուստ հուր վառի՝ այրէ մըրկէ զիս չարաչար·
Ո՜հ, զիւրովի երթամ ես, բառնալ ըզկեանս իմ յերկրէ,
Զըլինի որ երերիմ եւ տատանիմ որպէս Կայէն·
Եւ չիցէ որ ինձ Ղամէք, որ ըսպանցէ զիս նետահար։
Կորընչի՜մ, կորընչի՜մ, պատռի՛ր երկիր, առ զիս 'ի ներքս·
Անցնիմ 'ի խոր անդունդ՝ հանգչիմ 'ի գոգ Սատանին·
Եւ անուն եւ յիշատակ թող կորիցէ իմ յաշխարհէն·
Զի Յիսուս ջընջեց զանունս, որ կայր 'ի թիւս աշակերտացն,
Զըրկեցայ 'ի լուսոյն եւ 'ի դասէ ընտրեալ գընդին·
Արդ պաշտօնեայ լինիմ դիւաց եւ խաւարին իշխանութեան,
Տէրն աթոռ ինձ խոստացաւ որ բազմէի ընդ մետասանս·
Թողի ըզՏէրն եւ զաթոռ ընդ սատանայ կըռեցի դաշն։
Եւ ի՞նչ եղեւ պատճառ հիքոյս իմ կորըստեան,
Ո՜հ, անիծեալ ագահութիւն, երսուն արծա՛թ, երսուն ար– [ծա՛թ·
Այլ զի որդի եմ կորստեան, ասաց Տէրն, պարտ էր գրոյն [լընանիլ։
Մի՛ շինէք ինձ գերեզման եւ մի՛ գրէք արձանագիր·
Որ մարդիկ անցնին զինեւ՝ կարդան անէծք եւ ասեն,
«Այս է տապան ապիրատին, մատնիչ ագահ Յուդային»։
Այսպէս մեռանէր յոյսն 'ի սրտին՝ եւ ոչ ելաց նա դառնապէս·
Զըկամեցաւ նա օրհնութիւն, հեռի եղեւ 'ի նըմանէ։

Իսկ իբրեւ յիւր ընկերաց տարամերժէր դողըն մատնիչ,
Զի՞ մանկունք, այնուհետեւ Տէրըն բանիւ աւաղական,
Խօսէ՛ր ըզսիրալիր վերջին կըտակն առ մըտերիմսն·
Զերթ ուղեւոր հեռագնաց տայր հրաժեշտի զողջոյն վերջին։
Որդեա՜կք սիրելիք եւ մերձաւորք իմ բարեկամք,
Այսօր 'ի ձէնջ հեռանամ, մնաց ինձ ահա փոքրիկ մի ժամ·
Յերկնից առ 'ի Հօրէն ելեալ եկի սիրով յաշխարհ·
Զյանձնեալ ինձ տընտեսութիւն կատարեցի ըստ Հօր կամացն·
Յայտնեցի զանուն նորին, քարոզեցի զԱւետարան,

Թէ նա՛ է միայն Հայր մեր յերկինս, Աստուած եւ Տէր
[տիեզերաց·
Պա՛րտ է հոգւով ճշմարտութեան նմա միայնոյ երկրպագել։
Մնայ ինձ սակայն ՚ի լրումն ածել զխորհուրդ խաչին չարչա–
[րանաց·
Զի մահն իմ փրկանք լիցի հանուր մարդկանց ազատութեան,
Զի մեռցի մահըն կենաց, արտաքս անկցի մահու իշխան
Եւ յայնժամ թողում զաշխարհ, յաղթանակաւ երթամ առ Հայր
Յուսով աներկմիտ յԱստուած եւ յիս հաւատացէք·
Ո՛չ թողում զորդեակսըդ որբ, եւ արդ զձեզ Հօրն իմ յանձնեմ·
Ես երթամ ձեզ օթեւանըս պատրաստեմ ՚ի տան Հօրն·
Գամ դարձեալ առնում ըզձեզ տանիմ երկնից յարքայութիւն·
Ուր ՚ի սեղան լի բարեաց՝ նըստեալ ընդ իս խրախանայցէք,
Եւ այլ եւս ոչ ոք ՚ի ձէնջ կարէ հանել ձեր խընդութիւն·
Այն է վարձ եւ փոխարէն ձեզ մըշակացդ աշխատախոնջ·
Որ զհետ իմ առեալ ըզխաչն դուք հետեւիք յօժարակամ·
Որ թողիք զինչս եւ ըզտուն, հայր, մայր, եղբայր եւ սիրելիս,
Որ միա՛կ զիս պաշտեցիք իբրեւ ըզՏէր եւ Ուսուցիչ։

Նոր պատուիրան աւանդեմ, զոր ես գործով ուսուցի ձեզ,
Եւ դուք ըզնոյն որդեակք իմ, փոյթ լինիջիք առնել միմեանց·
Սիրեցէ՛ք սիրեցէ՛ք, այդ է միակ ձեր նըշանակ,
Որ մարդիկ զձեզ ճանաչեն թէ աշակերտ էք Յիսուսին։
Անկըշիռ սիրոյս առ ձեզ հասու եղէ՞ք եւ խելամուտ,
Ըսկսեալ ՚ի ծովակէն, ուր ձուկ որսալ վաստակէիք։
Եւ գիտէք քանի՞ բարձր է սիրոյ խորհուրդ եւ մեծութիւն·
Սիրով դընեմ զանձն իմ ՚ի մահ, վասն սիրոյ բարեկամացդ,
Վասն աշխարհի, վասն նոցա, որ ձեր բանիւ յիս հաւատան։
Դուք հրաւիրակ երթայք հարսին, որ հանդերձի պըճնիլ
[՚ի զարդ,
Իսկ ձեր զարդն է խաչն եւ արիւն՝ վասն հարսին դնել զանձն
[՚ի մահ·

Հարսնարան իմ հրճուի պարէ, զի իւր փառքն է խաչին պըսակ։
Հեզիկ բարս ըստացարուք աղքատ ոգւով խոնարհութեան,
Այր օրինակ նոյնատիպ՝ ցուցաւ յինէն եւ տեսիք դուք·
Քանզի չէք մեծ քան ըզՏէրս, այլ հաւասար ծառայակիցք։
Իք ՚ի ձեզ իշխանական երիցութիւն ըստ աշխարհաց,
Որ ՚ի ձէնջ մեծ համարի՝ լիցի կըրտսեր եւ նուաստ·
Բազմեալն իբրու զծառայ, պաշտօղ յոտին առ սեղանով·
Զայս քաջիկ տեսիք աչօք, թէ զի սըրտիւ ես անհըպարտ,
Ի միջի ձեր երեւեցայ, միթէ գրեցի՞ անձինս ամօթ։
Երանի՛ է ձեզ յաւէտ, յորժամ հանգոյն Վարդապետիս·
Մըտադիւր ծառայիցէք եւ դուք ընտրեալ իմ աշակերտք·
Ուսարո՛ւք՝ թէ զինչ է Բանն, որ զանձն իւր խոնարհ առնէ·
Բարձրանայ մինչեւ յերկինս, եւ հասանի յաթոռըն Հօր։
Եւ թէ աստ անձանց ըզշուք ու ոչ խընդրելով խոնարհ լիջիք,
Անդ յերկինս եօթընպատիկ ձեզ յաւելուն փառաց պատիւ։

Մի՛, մանկունք առագաստի, յորժամ փոքր ինչ մեկնի Փեսայն,
Կարծիցէք թէ առ 'ի ձէնջ կամիմ իսպառ ես վերանալ·
Ուստի սուգ առեալ վասն իմ վարանեսջիք յանձինս ձեր։
Քանզի դարձեալ երեւիմ յետ յառնելոյն իմոյ փառօք,
Քանզի դարձեալ երեւիմ յետ յառնելոյն իմոյ փառօք,
Յառաջեալ 'ի Գալիլիա, զիս տեսանէք փառաւորեալ,
Զարմանայք եւ ասիցէք, արդեօք Տէ՞րն է այն որ մեռաւ,
Ըզհանդերձ սըգոյ հանեալ՝ դուք ըզգեցջիք զուրախութեանն,
Դուք յայնժամ թողեալ ըզսուգ լըցջիք համակ ուրախու—
[թեամբք·
Ցընծացէ՛ք, զի ոչ ոք եւս կողոպտելով հանցէ 'ի ձէնջ։
Մի՛ յորժամ չար մըշակք այգւոյն իմոյ Իսրայէլեան,
Զհայրաքուն եւ սիրատունկ որթըս խըլել խնդրեն մահուամբ·
Ո՜հ, խլիցիք եւ դուք ուռքդ 'ի հաւատոցըն թուլացեալք։
Հաստատուն կացէք յիս, մինչ ես թաղմամբ երեքօրեայ·
Խորարմատ կանդաղեալ զհողմով մահու խաղ առնիցեմ·
Եւ իբրեւ 'ի գարնայնի վերընձիւղեալ նոր յարութեամբս·
Եւ դուք ուռքըդ նորոգիք եւ կանաչիք նոր հաւատով,
Պարզիք յինէն ուռճացեալ, 'ի սփիւռ աշխարհըս տարածիք,
Օ՜չ, յայնժամ շնորհիւ որթոյս պըտուղ բերջիք բազմապատիկ։
Մի՛, որպէս ի խելս նաւուն նընջէի վայրիկ մի։
Ծովն աշխարհի զձեզ խռովէ, ո՜հ, կորընչիմք, ձայն բառնայք։
Ես 'ի սիրտ երկրի նընջեմ, մարդիկ կարծեն թէ մեռա՜ւ.
Այլ անդրէն զարթնում 'ի քնոյ, որպէս հըզօր թափէ զգինին·
Եւ յառնեմ ես ինքնազօր, քանզի ազատ եմ 'ի մեռեալս·
Խաղաղի ծովն ալէկոծ, անցանի սուգ եւ խաչին օր·
Սիրտ առեալ քաջալերիք ձեզ աւետիս տայ իմ հրեշտակն։

Օ՛ն արիք աստի ելցուք, գընամք 'ի ձորն Գեթսեմանի·
Ես աղօթեմ 'ի պարտիզին դուք մի՛ ննջէք ծանր 'ի քուն·
Ո՛չ, կացէք արթուն հըսկեցէք, որ չանկանիք 'ի փորձութիւն։
Սուրն ահա կամացըն Հօր փայլատակեալ շողայ վերուստ·
Եւ հուպ է զիս հարկանել զհովիւըս ձեր ըստ գուշակին·
Ո՜հ, ոչխարք իմ սիրասուն ցրուիք յինէն եւ թագչիք·
Թողանիմ ես միայնակ մատնել 'ի ձեռս ազգին ժըպիրհ։

Դուք եւս ելէք, ո՛ Մանկունք զաւինք ծընեալ նոր Սիովնի·
Հովուասէր հօտին հանգոյն իջեալ գնասցուք ըզկնի հովուին,
Անդ 'ի պարտէզն աղօթից ՚ ձորըն խոր Գեթսեմանի·
Ուրանոր 'ի սիրելի աշակերտացըն մենացեալ,
Ո՜վ, ընդ մեր ըստէպ ըստէպ ծունր կըրկնէր 'ի խոնարհ·
Տըրտում էր, հոգայր 'ի ժամն եւ մըտադիւր կայր յաղօթս·
Ժամն էր այն, յոր կամաւ եկն, 'ի կատարել զՀօրըն վըճիռ։
Տագնապէր մարդապէս 'ի մահուանէն հասեալ առ դուրս,
Եւ հոսէին յորդ քրտունք եւ խառնէին ընդ արտասուս,
Եւ կաթէին ոլոռն ոլոռն 'ի հող երկրին անիծապարտ·
Ընդ անիծիցն օրհնէր ըզհողն եւ փուշ երկրին դառնայր վարդ։
Ո՞ կարէր ժուժել, Մանկունք, այն ուժգնակի ձայնին ողորմ,

Որով գոչէր ՚ի յերկինս մեծապաղատ առ Հայրըն իւր·
Հա՛յր, ուր ես այժմիկ, լըսե՞ս արդեօք ՚ի վերուստ·
Հայի՞ս այտի գթոյդ աչօք ՚ի տնանկ որդիդ վաստակեալ·
Որ ՚ի ծոցոյդ քաղցրութեան եւ ՚ի բարձու երկնից գահէդ·
Խոնարհեալ եւ ծառային մեր Ադամայ զգեցայ մարմին·
Արդ ափշիմ եւ պաշարիմ ես ՚ի մահուն տագնապէ·
Յորդորի հոգիս ներքուստ, յօժարէ յոյժ դիմել ՚ի խաչ·
Խուսափի բնութիւն մարմնոյս անկար է, Հա՛յր, չ՚կարէ
[ժուժել։
Ակն յիս դարձո՛ այսր, զի միամօր աղքատ եմ ես·
Ի սըրտիս անձկութենէ եւ ՚ի վըշտաց աստի հան զիս·
Եկն ահա ՚ի վերայ իմ, հաս եւ պատեաց դողումն եւ ահ·
Տա՛յր, ինձ որ զթեւս աղաւնոյ, զի թուչէի վերանայի,
Յանապատ երկնից ելեալ՝ յանքոյթ ծոցիդ դադարէի·
Մի՛ լինիր յինէն ՚ի բաց, ահա մերձին յիս նեղութիւնք·
Լե՛ր սատար, եւ զօրավիգ, զի գդէմ կալայց անոյժ մարմնովս։
Վասն որոյ լուր դու ձայնի նեղեալ Որդւոյդ, որ պաղատիմ·
Զբան մի խնդրեմ ՚ի քէն, Հայր, եւ աղաչեմ խոնարհելով,
Թէ հնա՛ր է եւ քեզ հաճոյ անցցէ յինէն դառն այս բաժակ,
Այլ մի՛ երբէք լիցի այս որպէս կամիմ ես մարդկաբար·
Հապա քոյդ եղիցին կամք, առ որ հնազանդ եմ մահու չափ։

Այս բարբառ աղօթանուէր լըսիւր յերկինս առ լաւութեանն·
Սաւառնեալ պատգամաբեր Հրեշտակըն Հօր գայր առ Որդին·
Բաժա՛կ մահահրաւէր դառնաճաշակ իւր ՚ի ձեռին·
Տըխուր էր զուարթնոյն երես, մօտիլ ՚ի Տէրըն վարանէր·
Եւ հուպ կացեալ սարսելով՝ հնազանդելոյն մատուցանէր։
Այս հրամա՛ն է Հօրդ, ասէր, զի զայդ արբցես ախորժապէս,
Առ դորին եկիր, ո՛վ Տէր, կամաւդ ՚ի ժամս անձկութեան։
Ես կարօտ քո զօրութեան, Հայր քո յղեց զիս առ Քեզ·
Գոլ այժմիկ զօրացուցիչ խոնարհելւոյդ մարմնով քան զիս·
Որ նեղիս յանձկութենէդ, ա՛հ, զի՞ քրտունք արիւնախառն
Յերեսացըդ վիժելով կայլակահոս թափին ՚ի վայր։
Մի՛ այդչափ տագնապեր, Տէր, հանգոյն դու կնոջ որ յեր—
[կունս կայ,
Անցանէ ժամդ առ ՚ի քէն եւ գայ քեզ օր ցընծութեան·
Երբ հարսըն քո անարատ ծընցի զողջ ազգ մի Փեսայիդ։
Նոր զարմանք, զօրք լուսաձիր, յերկնուստ այտի ակնարկեցէք·
Սքանչացէ՛ք ընդ այս բան, որ չգիտէն երկնային դասք·
Զի՞նչ իցէ, որ ՚ի ծնանել ամուլ հարսին ըզնոր մանկունս
Փեսային իւր անձկալի կայ աւանիկ կըրել զերկունս։
Խորհուրդ է այս թաքնութեան ծածկեալ յերկինս ՚ի
[հրեշտակացս,
Ո՞վ, յերկրի, մարդկան ազին յայտնեալ միայն ծածկապէս·
Գիտէր զայս եւ մեզ չասաց հրեշտակապետըն Գաբրիէլ,
Զօրացի՛ր ուրեմըն դու մատակարար մեծ խորհրդոյս·
Առ ՚ի սէր հարսին քոյոյ դու մի՛ խնայեր զանձըդ ՚ի մահ,

Տար զայդ երկանց երաշխէպ, զի դիւր ծնցի նոր քո Սիօն։
Գիտեմ ո՞վ Տէր, քո պատերազմ աշխարհի պէս չէ երբէք·
Աշխարհ կռուի ընդ աշխարհ եւ մեռուցեալ յաղթանակէ·
Իսկ դու տկար մարմնով կռուիս, ոչ ձի ունիս ոչ զէն ասպար,
Քո մարտ չէ ընդ մարդիկ, այլ ընդ իշխանն աշխարհիս այս։
Ո՛վ, մեռանիս խաչի մահուամբ, կենդանանան մեռեալ հոգիք։
Հայրն ասաց, ասա Որդւոյս, ես չեմ թողուր զինքն ՚ի դժոխս,
Զձեռն իմ պարզեմ յԵրկնից յանդունդ, կորզեմ հանեմ ՚ի
[ճկան փորէն·
Եւ չթողում վիշապ օձին, որ կլանիցէ զնորն իմ Յովնան։
Դանիէլի գունդն է ինքն, զոր վիշապին ձգեցի բերան·
Նա թէ կուլ տայ պայթի պիտի, գունդըն ողջմամբ գայ ՚ի
[դուրս·
Յետ երից աւուրց ապա ես խորտակեմ ըզգերեզմանն,
Յառնէ Մանուկն իմ հզօր փառաւորեալ յարութեամբ։
Վա՛չ, յայնժամ ես ՚ի վիմին զփող հարկանեմ քոյդ յաղ-
[թութեան·
Որ խնդրեն զքեզ ՚ի մեռեալս, տամ աւետիս, յարեա՛ւ Յիսուս·
Զայս խրախոյս տըւեալ զուարթնոյն անդէն ՚ի վեր երթայր
[առ Հայր·
Կամակար յանձնառութիւն հնազանդ Որդւոյն՝ մատուցանէր·
Ասաց Որդեակն քո, Հա՛յր, յօժար ըմպեմ զխաչին բաժակ·
Թող լիցին կամք Հօրն իմոյ, ես Որդի եմ եւ Նա Հայր·

Խոնարհեալ, ո՛վ Մանկունք, համբուրեսցուք զպարտիզին
[հող,
Ուր իջին քըրտանց կաթիլք եւ հեծեծանք ելին ՚ի վեր·
Ուր եմուտ մշակ խաչին զփուշս անիծից խըլել ՚ի բաց·
Տընկել ջըրել եւ պատրաստել զնոր դրախտն Եկեղեցւոյ·
Աղօթիւքըն սըրտագոչ զՀայրն ընդ աշխարհ հաշտ առնել·
Վերստին հնոյն Ադամայ փակեալ դրախտին դուռըն բանալ·
Ասել զԱդամ եւ զԵւայ մըտէք ՚ի ներքըս համարձակ·
Վազեցէք ՚ի կենաց ծառն, Սրովբէից սուր չէ ձեզ արգել։
Արդ ձգեցէք զձեռս ձեր ազատ զանմահ պըտուղըն քաղեցէք·
Կերէ՛ք, անմահացէք, այսպէ՛ս լինիք դուք Աստուած։
Այս, գիտե՛մ, Տէր, քո սիրոյդ անհասական բան է եւ գործ·
Այլ ՚ի կերպըն հայելով՝ տարուբերի մարդոյն միտք·
Որ ասէիր՝ թէ Հայր յիս է եւ ես ՚ի Հայր անբաժան,
Հի՞մ ապա ՚ի սիրայնոյ Հօրէդ թողեալ անօգնական·
Միայնակ, կրեցեր կամաւդ զայնչափ տագնապ անտար ու
[դառն·
Գիտեմ, Տէ՛ր, հնոյն Ադամայ որդխացեալդ միայնակ·
Դու յանձն առեր ըզպարտըս Հօր գալ վճարել միայնակ·
Ըզդըժնդակ մահու վճիռ զոր դատաւոր Հայր քո կընքեաց·
Զայն միայնակ լուծել քակել զմարդ վերածել ՚ի նոր կեանս·
Տէ՛ր, վասն այն դու փութացեր եկիր յայս ժամ միայնակ։
Այլ ո՛վ Տէր, մարդ զարմանայ ընդ քո ոգին սիրող ներող·

Որ լալով աղօթէիր վասն մարդկան ապաշնորհ․
Ցայն գիշեր խաւարակուռ Քեզ դաւ դըրին ոգիք խաւար,
Հասին յանկարծ 'ի վերայ քո, ոյց առաջնորդ էր Յուդան․
Անձնատո՛ւր եղեր ո՛վ լոյս, մարդիկ ըզՔեզ ըմբռնեցին․
Հրաշապէս չ'անցեր գնացիր, որպէս լերինըն յարտեւան․
Դու միամիտ աղաւնի, հըսկեալ յաղօթըս մընջէիր․
Զըկացեր հակառ դու չարին, եւ վարեցար տարապարհակ․
Եւ մինչեւ ո՞ւր վարեցար, մինչեւ յատեան դատաւորաց։
Հուսկ ապա զերթ գլխապարտ գնացեր մինչեւ կառափնատեղ․
Միայնակ մնացեր, Յիսուս, ո՞ւր աշակերտք եւ բարեկամք․
Փախեա՛ն, որպէս նապաստակք, զվէմս առին ապաստան․
Միայն Պետրոս անձնադիր, եւ սիրելի աշկերտն Յօհան․
Երթային զկնի զանխուլ՝ տեսնել զելիցն ըզվախճան։

Ընդ Քրիստոսի կապելոյն, Մանկունք, եւ դուք սիրով կապ– [եալ․
Երթիցուք ընդ նըմա 'ի տուն Աննա Քահանային,
Ուր այն ինչ նըսեմացեալքն առ ի լուսոյն ճըշմարտութեան․
Նըստէին դատաւոր քննել դատել զազգն Իսրայէլ․
Որ եկալ էր հատանել զկապանս մարդոյն մահապարտ․
Ո՛հ, ձեռակապ ըզՏէրն անպարտ ածին յատեան Աննային․
Որ յաթոռըն Մովսիսի նըստեալ էր նա դատել ըզՏէրն։
Այսր ահա 'ի հարցանելն եւ պատասխան տալ Յիսուսին․
Զարաշուք ծառայն անդէն, որ հուպ կացեալ էր հեզոյն․
Ապտակ ածէր սաստկահար, ո՛վ ահաւոր սուրբ երեսացն։
Ա՛ծ յայնժամ ժանտաբարոյն, իմ արդ սոսկայ սիրտ ահիւ․
Մինչ հայիմ 'ի հեզութիւն ապտակելոյդ վասն իմ, ո՛վ Տէր։
Մեռանէր տեսողն անդէն, աստ ապտակ եւս առեր յերեսդ․
Ո՛չ յանկարծ ընդոստուցեալ՝ դու խըստացար, ո՛վ քաղցրու– [թիւն․
Եւ ներող բնութեամբըդ քո թողեր զծառայն անպատուհաս։
Տեսէ՛ք աստ Բարերարին զերկայնամիտ համբերութիւն։
Տեսէ՛ք եւ ապաշնորհ բըժըշկելոյն ըզհատուցումն։
Ծառայ չար եւ ապիրատ, զի՞ մոռացար վաղ ըզպատուէրն․
Ե՛րթ, բուժեալդ այժմիկ, մի՛ մեղանչեր այսուհետեւ։
Եղուկ քեզ, բարուք լըւար զհրաման քոյոյ Բարերարիդ,
Ո՛չ 'ի մարդ, այլ 'ի յԱստուած դու մեղանչել ժըպրհեցար։
Որ զլուծեալ բազկիդ ըզջիղս հաստեաց անդըրէն 'ի շարժումն
Ո՛հ, միթէ ապտա՛կ ածել քեզ երեսացըն կեցուցիչ․
Գիտէ՛մ անբոյժ լինել ախտացելոյդ հոգւով 'ի չարն
Զի՞նչ օգուտ մարմնոյդ դարման, քանզի հոգիդ էր վարակեալ։
Լաւ էր քեզ թէ անյարիր մնայիր այնպէս մարմնովդ ծընկեալ․
Գէթ յերկար ապաշաւանս մաշեալ մարմնովդ զմեղսդ քաւէիր,
Քան յոտին ելեալ առողջ ծառայ եղեր դու անըզգամ։
Մի՛ կարծեր թէ անարգանս բերեր հեզոյն ապտակելովդ․
Դու նախկին ձեռներէց 'ի մէջ զընդին տիրասպանու․
Այլ յաւէտ պատիւ ետուր եւ ծանուցեր զչափ հեզութեանն։

Զապտակէն Թողեալ արդ՝ զմեծն ասացից ըզհարուածոյն,
Զկապիլն առասանաւ 'ի ձիթենւոյ ծառն ըզՅիսուս·
Որ 'ի շուրջ բոլորելով զինուորաց դասքըն դըժընդակ·
Ըստէպ ըստէպ սաստկագոյն հարկանէին դալար ստեղամբք։
Ցա՛ւ ըզգայր ընդ Արարչին ծառն անխօսուն անըզգայ·
Կապելոյն Յիսուսի լինէր վըկայ հրաշապէս·
Զի պատառեալ ըզծոցն բանայր եւ պարուրէր զհարուածեալն,
Որ փոխան լեալ ըզգայուն, ծառն արբ ըզգան յանըզգայից·
Զայս պատմեն եւ գըրեն՝ աւանդութեամբ հասեալ առ մեզ,
Զարմանա՛ս, ո՞չ 'ի մահուն պատռեցան վէմք եւ վարագոյր։
Ընդ եզին եւ իշոյ ծառն եւ ծանեաւ զիւր ըստացիչն,
Եւ 'ի ձեռս ծերոց, մանկանց օրհնաբանեաց ըզնա ոստովքն·
Եղո՛ւկ քեզ, ո՛վ Իսրայէլ, դու ո՞չ ծանեար զՏէր Աստուած·
Որ ստացաւ զքեզ ժողովուրդ իւր սեպհական եւ սիրելի·
Հան յերկրէն գերութեան, ած Աւետեաց յազատավայր·
Ցօրենով, գինւով, իւղով, կաթով, մեղրով լիացար,
Դու այնչափ պարարտացար, մինչ լայնեցեր զքո անկողին,
Զա՛յս Բարերարին դու հատուցեր ըզփոխարէնն·
Պարգեւօք նորա ձեռինն տանջեալ ըզքո պարգեւատուն·
Կացցէ՛ ծառն քեզ դատաւոր եւ ընդ ազգին Նինուէացւոց։

Ի կըրկին ատեան ելցուք արդ եւ 'ի տուն Կայիափայ·
Ուր ժողովեալ խորհէին իշխանք Հրէից վասն Օծելոյն·
Շըշընչեալ 'ի լուր միմեանց բան անօրէն ըզնըմանէ·
Զանմեղն ածին զառաջեաւ իբրեւ ըզԳառն 'ի մէջ գայլոց·
Որ ըզժանիս իւրեանց վաղուց՝ սըրեալ էին նենգութեամբ·
Զի՞ արդեօք մահու դատեալ՝ պատառեսցեն զգառն Աստուծոյ։
Հարցանէր Կայիափայ զբան, որ լըւեալ էր բիւր անգամ·
Եւ դարձեալ զնոյն պատասխան լըսէր աստէն 'ի Յիսուսէն·
Որդի լինել Աստուծոյ եւ գալ յերկնից փառօք ընդ ամպս։
Ընդ լըսել չըրտնոյր ատեան, ձորձ պատառէր Կայիափա,
Զէն, ասէր, պիտոյ վըկայ արդ մեզ այլուստ 'ի մարդկանէ,
Լուաք ահա եւ դատեսցուք իւր բերանով, դուք զի՞ կամիք·
Մահապա՛րտ մահապա՛րտ, լեզուք համայն գոչեցին։
Սիրտ իմ գելու աստանօր եւ ջախջախի քնար ոգւոյս·
Ձեռք իմ 'ի դող հարկանի եւ դադարի գրիչն 'ի գիր·
Զի՞ կարեմ ես նկարել ըզձաղանացըն տեսարան·
Ցոր Փըրկիչն անարգութեան թատր եղեւ 'ի խուժանին։
Ոմանք թուք արձակէին 'ի լոյս երես Հօրըն փառաց·
Լոյսն էր այն, որ եկն յաշխարհ, որով տեսաք զԱստուած Հայր։
Ոմանք ապտակ ածէին աղու այտիցն սըրբափայլ,
Զորմէ ասէր Սողոմոն, այտք քո իբրեւ զկեղեւ նըռան։

Իսկ ոմանք ձորձ ըզգլխովըն պարուրեալ ծածկէին զաչս,
Կռուփըս հանեալ ասէին, մարգարէա՛ց, թէ ո՛վ էր։
Աւա՛ղ ես բիւր անգամ կըրկնեմ աստէն անմիտ ազգին·
Զոր անդուստ յանդիմանէր Դաւիթ բանիւըն կըշտամբող·
Ծաներո՛ւք ծաներո՛ւք, ո՛վ անզգամբք ժողովրդոց,

Որ ձեռօքըն իւր տնկեաց տունկն եւ ըստեղծ դակըն լուսոյ,
Որպէ՞ս ոչ լըսէ ինքն եւ տեսանել անկարանայ։
Այլ գիտեմ ծածկէք ըզլոյսն, որպէս զի դուք չգայք առ լոյսն·
Եթէ գայք, յայտնի լինի թէ չարութեան են ձեր գործք։

Անմոռաց է ինձ եւ այն կիրք Տէրունոյն զանահարուած·
Ի սիւն կապիլըն մերկուց եւ զան ըմպել խարազանիւք·
Մինչ քընքուշ մորթոյն անօսր ակօս ակօս պատառելով·
Ապաժոյժ արեան վըտակք ծորեալ 'ի դուրս ծաւալէին։
Եւ խաղային իջանէին սուրբ գիրանամբք մինչեւ 'ի սրունս·
Ողջ մարմինն վիրօք լըցաւ, ոչ մընաց ողջ խայծիկ մի տեղ։
Որ 'ի Նընջելն Իսրայէլի՝ պահպանէր Ինքն անքուն ակամբն·
Հանգչէ՛ր եւ քաղցր 'ի քուն լինէր Յակոբ եւ յօրանայր·
Ասէր գիտե՛մ զինչ առնեմ, տարածանեմ զանկողինս·
Ես Աւետեաց երկրին Տէրն եմ, զոտըս պարզեմ, որչափ կամիմ·
Ո՛վ սիրոյն, զգիշերն 'ի գլուխ Ինքն 'ի Նմանէ տանջէր աննինջ·
Այնպէ՛ս պարանակապ 'ի սիւն պըրկեալ յոտից վերայ։
Այս կըտտանաց դառնագոյն Տէրըն տարաւ անդիմադարձ,
Ըզթիկունս իւր հարուածոց, եւ ըզծնօտըս իւր յապտակս·
Ո՛չ դարձոյց առ ամօթոյ զդէմս իւր 'ի թքոյ անարգանաց·
Ո՛չ բարբառ ինչ արձակեաց եւ կամ ցաւոց եհան մըրմունջ։
Առ վըշտին սաստկագոյն չըբացեալ բընաւ զիւր ըզբերան·
Ինքն ասէր Եսայիաս, թէ Տէր եղեւ իմ օգնական·
Առ ոչինչ համարեցի կրելով կամաւ զայս ամենայն·
Եւ իբրեւզվէմ հաստատուն զդէմս իմ եդի նախատանաց·
Ուսա՛յ ես չամաչել, զի մերձ էր ինձ իրաւարարն·
Որ արդար զիս կացուցեալ՝ զվրէժն իմ առնոյր յանարգողացն։

Ո՞ւր էր Պետրոս մինչ Տէրըն իւր կայր 'ի ձաղանս կապեալ
['ի սիւն,
Անդ 'ի գաւիթ առ խարոյկաւ նըստեալ ջեռնոյր, ցուրտ էր օրն·
Մօտէր առ նա աղջիկ մի՝ զվէմըն շարժէր տըկար մատամբ·
Պետրոս հարցեալ լինէր երիցս, նա ուրանայր եւ ասէր·
Ես մի ձկնորս եմ անծանօթ, մարդ սոսկական Գալիլիացի·
Առ ծովուն Տիբերական ճգնիմ միայն զհացն իմ ճարել·
Անուս անգիր ոմն եմ ես, զի՞ փոյթ ինձ այդ կըրօնի խնդիր·
Ո՛չ, ոչ գիտեմ, ոչ ճանաչեմ, ո՛վ է Յիսուս Նազովրեցին։
Այսպէ՛ս երբ թողու զմարդ՝ մատն Աստուծոյ գլորի մարդ։
Ձայն հաւուն խօսէր անդէն, ձայն արկանէր առ Պետրոս,
Արի՛ սթափիր դու 'ի քնոյդ առ երկիւղի թըմրեալ այդպէս·
Զարթի՛ր 'ի սէր սիրելւոյդ, դարձիր նայեաց 'ի Վարդապետն·
Իմ աճ խօսեալ երիցս՝ եղէ վըկայ նորա բանին։
Ընդ հաւո՛ւն եւ ինքըն Տէր, ա՛հ, մոռացեալ զձաղանաց վիշտն,
Դարձա՛ւ հայեցա՛ւ, զաչս, 'ի Պետրոս յառեց ողորմ·
Լո՛ւռ եւ եթ ակնարկելով աչօք լեզուին խօսէր անձայն·
Զի՞ այդ քեզ, պարծող Պետրէ, ո՞ւր այն քո բան մեծաբանիդ·
Թէ արդէն իսկ եդից զանձն իմ 'ի վերայ քո, մինչ 'ի մահ·
Վէ՛մ էիր անխախտելի, այդպէս փութո՞վ տատանեցար·

Որ ցանկ ընդ իս շըրջեցար զամըս երիս մըտերմաբար։
Հայրն իմ ազդեաց, դու ծանեար զիս, Աստուածորդի դա-
[ւանեցեր,
Եւ դո՛ւ այժմ ուրանա՞ս ըզՎարդապետն եւ Ուսուցիչդ·
Զքեզ վէմ եդի անշարժ, ո՜հ, գըլորիս գնաս առ Յուդա՛·
Այլ ես Հօրն աղերս ածի, որ չպակասին քո հաւատք·
Դարձի՛ր օն եւ հաստատեաց, մի՛ սասանիր ուժգին այդչափ։
Զի՞նչ անդէն, հո՞ւր էր թէ լոյս ցայտեց յաչացըն Յիսուսի,
Ցոլաց մըտաւ, ՚ի սիրտ Պետրոսի, հրավառեցաւ ցուրտ ոգին·
Եւ լուցանէր նոր ըզսիրոյ ջահըն շիջեալ ուրացութեամբ։
Յուշ ած Պետրոս, յիշեաց ըզբանն, չկարեց մընալ եւս անդէն,
Եւ արտաքս վազվաղակի, ասեն մըտաւ ՚ի մի քարայր,
Ելա՜ց ելա՜ց դառնապէս, դառնապէս եւ ուժգնապէս։
Աւետարան միայն ասէ դառնապէս, եւ ո՞ չափէ զդառնապէսն·
Դաւիթ Թանայր զանկողին, իսկ նա զյատակ այրին բոլոր·
Այսպէ՜ս նա լուաց քաւեց ըզմեղըս մեծ ուրացութեանն,
Ո՞ ժըտի ճառել բանիւ ըզՊետրոսին դարձն եւ զըղջումն։
Տէր եւ ինձ տուր արտասուս եւ ես լացից դառնապէս·
Միթէ արսունք, լաց ու ողբ՝ չէ՞ քո շնորհ առ մեղապարտն։

Ելէ՛ք, մանկունք, տարան զՅիսուս, երթամբք յատեան
[Պիղատոսին,
Ուր ընդ այգուն եղելոյ, ածաւ, տանէն Կայիափայ·
Տեսցուք թէ զի՞նչ եւ անդէն կըրեաց կամաւ Տէրըն մեր։
Ա՜հ, կապեալ մարդոյն ձեռօք եկաց հանդէպ դատաւորին։
Որ ասէր իշխանաբար ՚ի դատաստան եկի յաշխարհ·
Յիսո՜ւս Աստուածորդի դու ապիրատ ինչ ոչ գործեր·
Կամ իբրեւ մարդ նենգաւոր՝ նիւթեր ու մեք չարութիւն,
Կամ աշխարհի իշխանութեան՝ դու հակառակ կացեր երբէք·
Դատեցար եկակոչ, աւա՜ղ, զօրէն մահապարտի։
Իշխա՜ն եւ դատաւոր համուրց ծնընդոց Ադամային,
Եդար առ ՚ի Հօրէն ՚ի յերկրորդի քոյդ գալըստեան·
Դու ասէիր Հայր իմ ետ ինձ իշխանութիւն եւ դատաստան·
Նա ո՛չ դատի զոք երբէք, այլ ՚ի ձեռս իմ ետ զամենայն—
Բա՜բէ, մարդն զքեզ դատեց՝ եւ դու եղեր դատափետեալ։
Եւ խոնարհ կալեալ ըզգլուխդ, ո՜վ հեզութիւն անբարբառ,
Ոչ բան, ոչ պատասխան, այնպէս մնացեր անմռունչ դառն·
Հա՞յրն ասաց քեզ թէ մի՛ խօսեր, որ դատաստանդ համառօտի՞։
Զարմացա՜ւ դատաւորն ընդ քո շըրթանցդ անշարժութիւն·
Ո՜վ, Արարիչդ անխօս եղեր որպէս ըզխուլ որ չըլսէ·
Որ յօրիներ ըղբերան՝ խօսուն ՚ի նմա եղեր զլեզուն։
Այլ դու մերթ խօսէիր կարճ եւ ճառէիր զճշմարտութիւն·
Զ՚իմանայր Պիղատոս, զ՚ի զքէն լըսէր անլուր բան·
Հարցանէր թէ զի՞նչ իցէ ճշմարտութիւն, չգիտեմ ես։
Ճշմարտութիւն մարմին զգեցեալ՝ կայր առաջի հեթանոսին,
Նա թուի թէ կարծէր ՚ի միտս ճշմարտութիւն վերացեալ բան,
Եւ չըմբռնէր զճշմարտութիւն թէ թանձրացեալ մարդ եղեր է։

Այլ զի՞նչ մեղ Պիղատոսին, որ չգիտէր զգիրս եւ զօրէնս,
Այլ մեծ մեղք Իսրայէլին, որ զԴաւթին երգէր Սաղմոս·
Ճշմարտութիւն յերկրէ բուսաւ, Յեսսէի տան ՚ղաւազանէն·
Ինքն ետես եւ չետես, զի կամաւոր էր կուրութիւնն։

Իսկ Պիղատոս թուի թէ կամէր պաշտպան լինել Արդարոյն,
Գուն գործէր, զզատն ամոքել, թափել զանմեղն ՚ի մատըն—
[չացն·
Զի՞ բերիք դուք զայրս առիս իբրեւ մահու պարտական·
Ահա՛ հարցի եւ դատեցի, չգտի ոչինչ վընաս ՚ի դմա,
Եթէ կամիք լաւ խրատեմ, թողում ազատ ՚ի շնորհս տօնին։
Ժանտաժուտ խըռնեալ խուժանն անդէն բարձին ձայն աղաղակ·
Մի՛ ըզդա, ո՛վ դատաւոր, զայլ քո արժան թող մեզ ազատ,
Ի խա՛չ ՚ի խա՛չ ըզՅիսուս, որ հայհոյիչ է օրինակ։
Իսկ ջատագով մարդահաճն առեալ ըզջուր լուանայր
ըզձեռս,
Զարդարոյն անպարտ արիւն՝ ջընջել քաւել կամէր յանձնէն·
Գիտե՛մ, ասէր առ նախանձու զանմեղդ ՚ի ձեռս իմ մատնեցիք·
Զայս բանիւ, այլ ըզհաճոյս գործով առնէր կեղծաւորն·
Զարժանին խաչի մահու թողոյր ազատ ընդ Արդարոյն,
Եւ զանպարտըն զանելով՝ խաչիւ դատել տայր մատնողացն։
Թէպէտ յանուրջս ետես երազ հեթանոսին կինն ըզգաստ,
Շոյտ ընդ այգուն բանտար յղէր առ Պիղատոս իւր ամուսին·
Զ՚կայ ինչ քո եւ Արդարոյդ, զգո՛յշ զգո՛յշ, մի՛ տար վճիռ·
Զի բազում անցք անցին ընդ իս, զարհուրեցայ յերազիս·
Ես հաւատամ Նազովրեցւոյն թէ Աստուծոյ Որդի է Նա,
Ի բա՛ց, ՚ի բաց տար զքո ձեռն, մի՛ թաթաւեր յարիւն արդար։
Ես լուայ թէ Արդարոյն դու յարենէ լուացիր զձեռսդ,
Եւ ՚ի վերայ ազգին մատնիչ թողեր զարիւն անպարտին·
Ո՛չ, զայդ արիւն չ՚կարես ջընջել դու սոսկ ջրով, ո՞վ դա—
[տաւոր,
Ո՛հ, սոսկամ ես, զի ընդ Հրէայս լիցիս արեան պարտաւոր·
Ու մեք եւ որդիք մեր դատապարտիմք ընդ անիծիւք·
Իսկ դու չքմեղս լինելով՝ միթէ անպա՞րտ ես յարենէն։
Լուաւ զայս Պիղատոս եւ առ ոչինչ համարեաց բանն,
Գիտեմ, ասէ, այդ՝ կարճամիտ կնոջ բան է, չեմ հաւատար,
Եւ այն եւս ոչ թէ լուրջ բան, այլ մի ցընորք խօլական·
Ես դատաւոր եմ ՚ի Հռովմայ եւ օրինաց իրաւաբան,
Զի՞նչ իցէ մի կին վկայ առ ողջոյն ազգ եւ ժողովուրդ·
Վերջացաւ դատն եւ վճիռ, զՅիսուս տարան արդ ՚ի խաչ,
Գնա՛ բանբեր, ասա տիկնոջ, թող չըլինի երազայոյզ։
Այլ զի՞նչ տեսեր դու, ո՛վ կին եւ զի՛նչ էին բազում անցք,
Միթէ տեսե՞ր, Յիսուս ընդ ամպս իջեալ յաշխարհ ՚ի դատաս—
[տան·
Ահեղ ատեան կազմեցաւ, Նըստէր յաթոռ դատողական,
Պիղատոս կայր առաջի ակնկորեան եւ դողահար·

Նա ծանեաւ զնազովրեցին, զորմէ ասաց «Ա՛յրդ ցձեզ»․
Թաթաւեալ էին համակ ձեռք իւր արեամբ զորս լուաց․
Դատեցա՛ւ կեղծաւորն, սատան վարեաց 'ի դըժոխս։
Երանի՛ տամ քեզ, ո՛վ կին, վկայ եղեր ճշմարտութեան,
Թէ սրտիւ հաւատացիր, հոգւով ծանեար ըզճշմարտութիւն,
Ճշմարտութիւն ըզքեզ ազատեաց եւ Պիղատոս մնաց կապեալ,
Աւետարան զքէն գրեաց, ես կրկնեցի ըզքո յիշատակ։
Զայս իսկ եւ դո՛ւ կամէիր, ո՛վ կամովին մատնեալդ 'ի դատ,
Զի՛ զպարտականըս մահու զվեց հազար ամ կապեալ 'ի մեղս,
Քո մահուամբդ անպարտական արձակեսցես յազատութիւն․
Եւ յարիւնդ քո թաթաւեալ՝ թըռչիլ թողցես 'ի լեառն երկնից․
Որպիսեօք զաղաւնին ցուցեալ անդէն առ Ահարոն։

Իմ աստ ահա, ո՛վ Մանկունք, սասանի սիրտ, քստմնին [ոսկերքս,
Եւ որպէ՞ս հանդուրժեցից դըրել վերջին ըզձաղանացն,
Ում ըզկնի մահու վըճռոյն՝ Հեզըն համբեր սիրովն անհաս։
Քանզի չունք եւ ցուլըք գէրք, ո՛, զիմ Յիսուս առեալ 'ի մէջ,
Պատեա՛լ պաշարեցին զընդովք իւրեանց վայրենի․
Խայթահար 'ի տատասկաց հիւսեալ պըսակ բոլորակի,
Բա՛բէ, եդին 'ի գլուխ նորա՝ Դաւթի որդւոյն թագաժառանգ․
Ընդ թագին յօրինելոյ ազնիւ յականց երկոտասան։
Եւ որ մնայր սիրեցելոյ այդւոյն բերել նըմա խաղող,
Զոր պարփակէր ցանկապատով եւ ոռոգէր երկնից ամպով․
Զողաբարձ զարդարէր եւ որթ սորեկ տընկէր ընտիր․
Զաշտարակ պահպանի, զուբ եւ հընձան փորէր 'ի նմա։
Իսրայէլն էր այս այգին, որ փուշ երեր ընդ խաղողին․
Զփուշըն քաղեց պսակ հիւսեց, ո՛վ, եդ 'ի գլուխ տընկողին։
Ծիրանիս նախատանաց ըզգեցուցին իբր Արքայի․
Եւ յաթոռ անարգանաց բազմեցուցին զհին աւուրց ծերն․
Ընդ զօրութեան գաւազանին՝ ջախջախ զեղէգն ետուն 'ի ձեռն։
Ինքն անդանօր բեհեզեայ պատմուճանաւըն սըրբանուէր,
Զարդարեաց զԱհարոն չուրջանակի պըճըրղնաւոր․
Զայս ընդ այն հատուցին աստէն որդիքն անհարազատ,
Երկնաւոր Քահանային, ո՛վ, հատուցմանս անօրինակ։
Քանի՞ դառն էր այս կատակ, զի մերթ առեալ զեղէգն այն,
Ծեծէին զգլուխըն վեհ, զոր Սերովբէն պաշտէր դողով․
Որ հանդերձեալ էր հովուել գաւազանաւըն երկաթեայ․
Եւ որպէս բրտի զանօթ փըշրել մանրել ըզթշնամիս։
Դպիրն Երկնից արքայութեան եկն 'ի գրել նախ զԻսրայէլ,
Որդի՛ս Աստուծոյ եւ անդրանիկ ժառանգ երկնից․
Զգրիչն առին՝ 'ի գլուխ նորա ջախջախեցին չար ժառանգք,
Իւրովի հանին զինքեանս 'ի թուոց երկնից ժառանգողացն։
Այսպէ՞ս նոքա մերժեցան 'ի ձեռանէ քումմէ, ո՛վ Տէր,
Ազգ հեթանոս քեզ հաւատաց, ասաց մեք եմք քո ժողովուրդ։
Զո՞րն ասեմ բիւրակերպ զձաղանացըն չարահնար,
Զորս տարաւ հեզութեամբ, Հրեշտակք, մարդիկ զարմացան․

*Արդարոյն Յովբայ նըման 'ի մերձաւոր իւր բարեկամս,*
*Սիրելոյ ազգին ընդ մէջ՝ որդի Կուսին եւ Աստուծոյ,*
*Այսպէ՛ս 'ի կատականս եղեւ Արդարն եւ անարատն։*
*Հընչեց ժամըն երրորդ եւ խաչելոյ ժամն եհաս,*
*Առէք ձեր քղամիդ կարմիր, եւ ագուցէք զիւր հանդերձիկն.*
*Խաչն պատրաստ կայ 'ի դուրս, եւ խաչակիրն է պատրաստ,*
*Լրացան ամէն կատակ, ծաղանք, մընաց վերջին խաչի մահ։*



# ՀՐԱՒԻՐԱԿ

## *ԵՐԿՐԻՆ ԱՒԵՏԵԱՑ*

## ՆԱԽԱՑՈՅՑ ՊԱՏԿԵՐ ԻՄԱՍՏԻՑ

### ՉՈՐՐՈՐԴ ԵՐԳՈՑ

---

ՀՐԱՒԻՐԱԿՆ զքնարն իւր բառնայ հանգոյն Քրիստոսի խաչաբարձին եւ զնորոյն Իսահակայ, թէ ի՞բր երթայր զհետ անհրազատ որդւոցն Աբրահամու՝ նուագելով ելանէ 'ի Գողգոթա· ուր զխորհուրդ խաչին նախագուշակեալ պէս պէս օրինակօք երգէ յաղթական ձայնիւ:

Փեսայն Քրիստոս ելեալ առանձին 'ի լեառն զմռսոյ եւ խնկեալ 'ի նմա չարչարանօք՝ բուրէ զանուշութիւն, հոտ առեալ դիմէ առ նա հարսն 'ի Լիբանանէ:

Ձայն տայ անձկով իւր Փեսային հարսն սգաւոր· սկիզբն առնու աւաղական բանիւ լալ զհեռանալն իւր 'ի նմանէ, զմխանալն ընդ անմռունչ կուռս քարանց եւ փայտից· եւ ուրախանայ մինչ յաւուր փեսայութեան եկեալ գտանէ զՓարելին:

Ցնծայ Հրաւիրակն եւ բերկրի ոգւովն 'ի նկատելն իւր զայսոսիկ 'ի վերայ լերինն Գողգոթայի· այլ կրկին ակնարկելով ըստ Ամբակումայ 'ի գործ խաչեցելոյն, ընդ մերկութիւն եւ տեսիլ նորին անշքութեան՝ զարմանայ եւ զարհուրի յոյժ:

Նկարագիր անկշիռ վշտաց Կուսին, որով խաչակից եղեւ միածնի Որդւոյն:

Ցաւալի ողբ նորին առ սիրասուն Որդեակն իւր Յիսուս· եւ սփոփիչ յուսադրական բանք Որդւոյն առ Մայրն:

Փոխէ ապա Յիսուս զդէմս բանիցն առ Հայրն եւ 'ի դէմս ածէ նմին զթողանիլն իւր 'ի նմանէ առանց օգնականի· առաջին արկանէ զնուիրումն անձին հաճոյական պատարագ· հայցէ զի հաշտեսցի ընդ աշխարհ եւ թողցէ զյանցանս չարչարողացն իւրոց:

Պատասխանիք Հօրն առ Որդին վասն փոյթ կատարելոյ սիրով զնորին հայցուած· վաղվաղակի վրէժխնդիր լինել առ անմեղ դատապարտութեանն· եւ խոստանայ դնել զթշնամին 'ի պատուանդան ոտից նորա:

Հուսկ ապա իջուցանէ Գողգոթայէն 'ի Պատանատեղ· ուր զանվեհեր համարձակութիւն Արեմաթացւոյն Յովսեփայ, զկրկին կոծ եւ լաց պարկեշտ Մարեմանցն եւ Մօր Տեառն· եւ զպատանիլն Քրիստոսի 'ի մահկանացու ձեռաց՝ առ որ Սահակայ մեծի զՊարգեւատուն 'ի մէջ բերէ 'ի թաղումն Քրիստոսի, ընդորս յաւելու զիւր հիացական բանս եւ վերջացուցանէ:

# ՀՐԱՒԻՐԱԿ

## ԵՐԿՐԻՆ ԱՒԵՏԵԱՑ

---

### ԵՐԳ ՉՈՐՐՈՐԴ

ԱՌ ըղքնարդ, երգահան, ընդ Քրիստոսին խաչաբարձ,
Ի լեառըն Գողգոթա ել աւասիկ նըւագելով·
Մինչեւ նոր Սա՛հակն ըղփայտ ողջակիզին բարձեալ 'ի յուս,
Ի տեղին Սաբեկայ տակաւ տակաւ տարեալ հանցէ:
Առէ՛ք եւ դուք, Մանկունք, փոքրիկ փոքրիկ ըղձեր խաչեր,
Ձեմք արժանի Յիսուսին, եթէ երթամք առանց խաչի եւ վշտի·
Դիտեցէ՛ք եւ զարմացէք 'նդ նոր Սահակայ անպարտ զենումն,
Որ ո՛չ էր հնոյն հանգունակ լեալ ինքն անգէտ իւրոյ զենմանն,
Հայրիկդ իմ, յիս ահա փայտն, իսկ հուր եւ սուր պատրաստ
['ի քեզ·
Ո՞ւր գառնուկըն ողջակէզ՝ հարցանելով տեղեկանայր:
Չի գիտէր թէ ուր գնայր, չէր պիտոյ ինչ, ոչ հուր, ոչ փայտ
[եւ ոչ գառն:
Ո՞վ էր, որ վարէր տանէր, աներեւոյթ էր վարիչն·
Հա՛յրն էր, Հա՛յրն, մեծ զոհագործ, որ զսիրելին տայր 'ի զոհ·
Տեսէ՛ք, հնազանդ որդին որպէ՛ս գընայ անդիմադարձ·
Ում չէր անդրէն դառնալ ողջ՝ զխոյն ընկալեալ 'ի Սաբեկայ·
Ինքն էր իսկ խոյն անարատ ձօնեալ փոխան Իսահակայ:
Խոյն կախէր յեղջերացն, Տէրն 'ի թեւոց խաչի ծառոյն
Զոր չգիտեմբք, այլ հաւատամք, յաւիտենի՛ց պատրաստ—
[եաց Հայրն:
Միայնիկ երթայր Սահակ, չէր ընդ նմին Հայր Աբրահամ,
Այլ որդիքն անհարազատ, որ պարծէին Աբրահամաւ·
Սուր ունէին ըղլեզուս սըրեալ սաստիկ արդարոյն դէմ·
Հուրն էր նոցին այլանիւթ, զնախանձն ասեմ ըղչարութեան,
Որ 'ի հնոցէ յոգւոցն 'ի վեր բոց բորբոքէր, կայծ թափէր
Ի վերայ անպարտ գառինն, որ ինքնանուէր սիրով կիզոյր եւ
[խորովէր:
Ի սպանդ իբրու զոչխար վարեաւ լինէր 'ի զենարան·
Լուռ անձայն եւ անմըռունչ ընդ մըշակացըն չարակամ·
Որ հանէին այգւոյն արտաքս կորուսանել զՀօր ժառանգն·
Եւ ասէին սպանցուք զորդին, զի մեր լիցի ժառանգութիւն:
Ո՜հ, աստէն առուք արեան առ ծանրագոյն խաչի բեռան·
Հոսէին 'ի բերանոց բացեալ վիրացըն զանահար·
Յօղէին եւ թափէին յերկիր մեռեալ եւ անիծից·
Երկիր ծըծէր զկենաց արիւն եւ բուսանէր կեանքն 'ի հողէն,

Եւ հո՛ղն օրհնէր ընդ մարդոյն, վերըստանայր գնոր կեանս·
Ես անկեալ գհողըն լիզեմ, ուր հոսեցաւ Փըրկչին արիւն:
Տեսե՞ր արդեօք, ո՛վ նախաստեղծ, եւ ամբարձե՞ր գաչըս
[քոյին,
Հայեցա՞ր ընդ Արարիչդ առ 'ի շիրմէդ Գողգոթայի·
Որ առ քեզ գայ Խաչաբարձն, որ գագաթանդ 'վերայ խաչի,
Խաչին արիւն ցօղէ 'ի վայր, Գերեզմանիդ 'վերայ թափի:
Եւ իջանէ մինչեւ յոսկերսդ, կենդանանաս դու եւ որդիքդ:
Դու ոտիւքըդ կայթելով չոգար 'ի ծառըն մահածին·
Տես որպէ՞ս դրախտին Աստուած գխաչն բարձեալ գայ քեզ
[յայց,
Առ 'ի քաւել պտղոյն ըզմեղս, եւ զմահ դընել ընդ ոտիւքդ:
Է՛, Յիսուս, վաստակեցար, պահ մի 'ի վայր դիրք գքո խաչ·
Որ չընչովըդ հատկլեալ եւ նըւաղեալ յուժոյ մարմնոյդ,
Մերթ քայլես կթուցեալ ծընկօք, մերթ խոնջելով ըզկայ
[առնուս·
Դահճացըն դառնութեան 'ի ստիպմանէ տագնապելով,
Ո՛հ, անկա՛ր դու ընդ խաչիւ այլ եւս չկարես ոտընփոխել·
Տեսին զայս խաչահանք եւ ճեպեցին պահակ բերել·
Մի՛ գուցէ անխաչ մեռցի այսպէս 'ի կէս ճանապարհին·
Մեք վասն այն հանեմք 'ի խաչ, որ խայտառակ լիցի մարդկան:
Երանի՛ քեզ, պահակ Սիմոն, եթէ սիրով կրեցեր գայդ խաչ·
Եւ սրտիւ ցաւ ըզգացեր ընդ մահ անպարտ Աստուածորդւոյն:
Բա՛րձ, Տէր իմ, կրկին գխաչդ, մնաց փոքր ինչ, մօտ է գա–
[գաթն·
Խաչն քոյդ է, Սիմոնին չէ, ա՛ռ զի պահակն երթայ յիւր բան·
Քա՛ւ թէ դու յաշխարհիս այս բըռնի վարեր գոք տարապարտ:
Այսպէ՛ս, Մանկունք, գառն անարատածաւ մինչեւ 'ի
[սպանդարան·
Այսպէ՛ս Յիսուս ինքնին բարձեալ գխաչն իւր հասոյց 'ի
[Գողգոթա:

Բե՛ր սիրտ ինձ աստ 'ի ժուժել ընդ անմեղուկ որոջն Յիսուս,
Որպէ՞ս անշարժ կայր առաջի իւր կըտըրչացն ինքն անմըռունչ·
Այնպէ՛ս որ չբանայ գբերան, գոր Եսային ետես կանուխ:
Այլ կըտրիչք դեռ չըղենեալ՝ զմորթն քերթել փութային·
Ջհանդերձիկն ապաշուք եւ գպատմուճանըն փորանկեալ,
Ի բաց քարշեալ յանձնէն՝ մերկ առնէին ըզգեցուցիչն·
Որ մերկացեալ՝ ամօթապարտ մարդոյն կարէր նոր պատ–
[մուճան:
Տարածեցին զփայտ խաչին եւ 'ի վերայ մերկ ըզՅիսուս,
Որ ինքնին գոտս եւ ըզձեռս պարզէր ձըգէր 'ի թեւս խաչին·
Պինդ եւ պիրկ բեւեռեցին որ չանկանի վայր 'ի խաչէն·
Խաչահանք յամէն կողմանց ձեռըն տուեալ բարձրացուցին·
Կանգնեցին ճիշդ յայն գագաթ, ուր նախահօրն էր գագաթ:
Մովսէս կացեալ անդէն՝ նշանց տայր մատամբ Իսրայէլին·
Տեսէ՛ք ասէր, ո՛վ թիւր ազգ, կեանքն 'ի փայտէն կախեցաւ·

Որ ըզքեզ ՚ի միջնաղս բարձեալ բերէր որպէս արծուի·
Բերէր հանգուցանէր եւ հովանի տարածէր թեւս:
Դու ընդ այն զա՛յս հատուցիր քո ազատիչ բարերարին,
Ազգ անմիտ, ոչ իմաստուն, ազգ ապիրատ, անհաւան:
Աւաղի՛կ ՚ի բարձու գլուխդ ելի հասի, ո՛վ Գողգոթա,
Տո՛ւր ժրտեմ զվէմ ինձ տեղի, ուր ես կացից ՚ստ Ամբակումայ,
Կացից եւ հայեցայց ընդ գործ խաչիդ, զոր ետես,
Որ դողէր նա զարմացմամբ, Տէ՛ր, ըզլուր քո լուայ ես·
Լո՛ւր ըզխաչէդ, լո՛ւր ըզմահուդ, լո՛ւր ըզփառաց եւ [զօրութեանդ·
Աստուածդ ՚ի ձեռս մարդոյն մատնեալ ՚ի դատ ՚ի խաչ եւ [՚ի մահ,
Եւ Արդարդ ընդ անօրէնս համարեցար որպէս ըզմարդ·
Յաջ եւ յահեակ քո աւազակք եւ ի միջի Տէրըդ փառաց·
Ո՛վ, ես վասն այն զարհուրեցայ եւ հիացայ ընդ քո բան:
Այլ գիտե՛մ թէ ՚ի մահուդ հաստատեցաւ քո զօրութիւնդ·
Գիտե՛մ թէ յերեսացդ ելցեն հարուածք մեծամեծք·
Կապեսցի մահու իշխան, արձակեսցին կապեալքն ազատ·
Եւ ՚ի շաւիղս հետոց քոյին գնասցեն թռչունք հոգիք արդարք·
Նահապետք, Մարգարէք, եւ արդարոց դասքըն համայն:
Արի՛ եւ դու Եսայիաս, մատիր խաչին ՚ի տեսարան·
Որպէ՞ս տեսեր զՏէրըն պաշտեալ ՚ի Սերովբէիցըն սրբասաց,
Պատմէ՛ զտեսիլն այն ապաշուք եւ նըկարէ մեզ յանդիման:
Ես, ասէ, տեսի ըզնա յԱստուածային գեղոյն թափեալ·
Լուսափայլ տեսիլ դիմացն անշքացեալ ամենեւին·
Այնպէ՛ս նըւազեալ քան զամենայն որդւոց մարդկան·
Որպէս արմատ ՚ի ծարաւուտ երկրի ցամաք եւ անհիւթ
Մերկանայ ՚ի զարդուց ծառն ՚ի ծաղկանց գեղեցկութեան·
Դեղնին տերեւք մեռելադոյն եւ թօթափին համակ ՚ի վայր·
Ասեն թէ ծառըն մեռաւ, բայց միթէ ո՞չ յառնէ ՚գարնան:
Այսպէ՛ս, որ համակ զերկին, զերկիր լնոյր փառօքըն իւր·
Եւ եղելոցըս բոլոր շնորհ պարգեւէր գեղեցկութեան,
Կապտեցաւ ՚ի ճոխ փառացն եւ մերկացաւ ՚ի խաչին, ո՛հ:
Որ եկեալ էր կարկատել զպատառատեալ հնութիւն մարդոյն·
Հանել ըզհին հանդերձ մեղաց, զգեցուցանել նոր պատմուճան·
Պատմուճան արդարութեան, ազատութեան եւ սրբութեան:
Արդ՝ երգեցից զմանուկըն Հօր, որ վերացաւ խաչին թեւօք,
Վերացա՛ւ ՚ի բարձունս, անտի գերել ըզգերութիւն·
Այսր ընդիս եւ դուք, մանկունք, փըրկեալք արեամբ Խաչելոյն,
Այսր ուշի ուշով զհանդէս յաղթող մանկանըս դիտեցէք·
Որ հեծեալ այլ իմն ՚ի ձեռին՝ ել ՚ի վերայ Փըղըշտացւոյն·
Դաւթի որդին էր այն հըզօր հար կործանեաց զհին Գողիաթ·
Որ ասէր իմ է աշխարհ, ես տիրապետն եմ յաւիտեան:
Այսպէ՛ս յաղթեաց Մանուկըն Հօր առ որ աշխարհ զարմանայ·
Նորահրաշ եղանակաւ մահուամբըն իւր անպարտակիր·

Ուստի յերկրի եւ յերկինս փառաւորեալ եղեւ Նա յոյժ·
Թէ եւ աստ մերկ 'ի փառաց պատիժ խաչի կըրեց անարգ։
Սիրե՛մ ես ըզբաղէն որ վերացաւ հրամանաւ Հօր,
Եկաց Թեւատարած եւ 'ի խաչէն դիտեաց աչօքն·
Զափէր զերկիրըն բովանդակ եւ փրկութիւն բաշխէր յաչացն·
Փրկութիւն հեթանոսաց, որ ջեռուցեալ էին առ կուռս·
Նա յաւէտ Հըրէին, զի յիւրսըն եկն, այլ չ'ընկալան։
Յերուսաղէմ եւ 'ի վերայ Սիօնի լերինըն գագաթան,
Զոհի սեղան մի կազմեցաւ եւ զոհագործ չէր Մովսէս·
Այլ Սինայի Տէր Աստուած Հայր, որ զնոր Մովսէս ածէր
['ի զոհ·
Զիւր Միածին պարարակ զեզն՝ յաւիտենից պահեալ 'ի ծոցն։

Զայն առնէր եւ հրաւիրէր զանառակեալ ազգ մարդկային,
Ի սեղան զենեալ եզինն առ 'ի փրկանս մեղաւորաց·
Որ դիմեալ դարձան առ Հայրն տանջեալք սովու արդարութեան
Եւ մատեան քաղցեալ ոգւով պարարտ եզինն 'ի ճաշակումն,
Թողեալ ըզբարս անըզգամ՝ ելին խընդրել զիմաստութիւն։
Զողաբարձ օձըն պղընձի, որ օրինակ էր խաչին,
Բարձրացա՛ւ աստէն կանգուն 'ի տես հանուր աշխարհի·
Ո՛չ եւ եթ Իսրայէլեան ըզվիրաւորսըն բըժըշկել,
Հապա ողջ սեռըս մարդկան զթունաւորեալսն 'ի թշնամոյն,
Թափեա՛ց զօրեղ դեղօք՝ ամբիծ՝ արեամբըն իւր կազմեալ։
Սաբեկայ ծառ խոյաբեր բուսաւ 'ի բլուրըն Սիօնի·
Ո՛չ անբանըն կախեցաւ յիւր եղջերացն առ 'ի նմանէ·
Այլ ա՛յն, զոր Տէրըն տես յայտնի բանիւ Աբրահամու·
Յիսո՛ւսըն կուսաբեր կախեալ խաչին 'ի յեղջերաց,
Ո՛չ փըրկանս Իսահակայ, այլ եւ հանուր հեթանոսաց։

Ըստ երգոյն՝ Հարսին 'ի սէր ե՛լ աստ Փեսայն ինքն առանձին,
Եւ խընկեալ գաւըն վըշտօք իբրեւ զըմուռս 'ի հուր ծըխեալ,
Զհոտ բուրեաց անուշութեան, առ հոտոտեաց Հարսն 'ի
[հեռուստ,
Վաղեալ եկն առ իւր Փեսայն ինքն յանտառէն Լիբանանու·
Ուր, աւա՛ղ, Թողլով զԱստուած զուգաւորեալ էր նա մեղօք,
Ընդ անչունչ կուռըս փայտից անիծագործ կազմեալ ձեռօք։
Դարձի՛ր առ իս, ձայնէր Փեսայն, յառեաց 'ի գեղն իմ
[կարմրացեալ,
Տե՛ս Փեսայիդ փառաց ըզզարդ զթագն ու պսակ եւ ծիրանին,
Զգեցի՛ր եւ դու զպըրախտին զարդ, զոր հան 'ի քէն կապտեաց
[հին օձն,
Արի՛ եկ մուտ յառագաստ խորհրդաւոր իմ հարսանեաց·
Քեզ հարսանիք կազմեցի աստ ես 'ի գինւոյ ամբիծ արեանս,
Չ'ունիս այսուհետեւ արատ 'ի քեզ տըգեղութեան,
Զրով արեան իմոյ լուացեալ՝ գեղեցկացար ամենեւին։

Զայն յօրինէր Հարսն առ Փեսայն անձկով իւրով եւ ասէր,
Աւասիկ ես, որ սիրով քո կամ 'ի վաղո՛ւց խանդակաթ·

Անդո՛ւստ մինչ ՚ի դրախտին առագաստէն արտաքսեցայ.
Ո՛հ, զըրկեալ ՚ի փառելւոյդ՝ Թափառեցայ ՚ի մէջ երկրի,
Ի սիրոյդ ելեալ, աւա՜ղ, գնացի կամաւ առ ատելին.
Յազատչէդ իմ արձակեալ՝ տոռամբ Նորին ես կապեցայ.
Զիս տարաւ եւ հարսնացոյց ընդ իւր ուստերց անշունչ կռոց.
Ի կենդանւոյդ իմ լուծեալ՝ ընդ անմռունչըս միացայ:
Երբ ըզմեղաց հեշտութեան զքուն նընջէի ես ՚ի մահիճս.
Եւ զաչօքըս մածեալ էր մըթին գիշեր անդիտութեան,
Կարծէի՝ թէ զոր սիրեաց անձն իմ ընդ իս է նա բնակեալ.
Խընդրեցի խանդակարօտ, ո՛հ, ոչ գտի զքեզ հուպ առ իս.
Զայնեցի, ձայն ոչ ետուր, ելի խընդիր ես Փեսայիդ,
Զողջ գիշեր ՚ի փողոցս եւ հրապարակըս շըրջեցայ.
Եւ այն ինչ ընդ մերձ այգուն երբ արուսեակըդ ծագեցաւ,
Հարսնաւէրն Յովհաննէս՝ ինձ աւետիս ետ խընդաւէտ.
Ասաց մօտ է առաւօտ, ահա ծագի Փեսայն լուսով:
Ուրախ եղէ՝ անցի փոքր ինչ եւ երբ գիշերըն մերժեցաւ,
Անըստուեր ճառագայթիդ լոյս ծագեցաւ յամէն աշխարհ.
Վա՜չ, ըզսիրելիդ գըտի ՚ի լեառըն Սիոնի,
Եւ յաւուր փեսայութեանդ ես հարսըն քո եկեալ հասի:
Արդ՝ կալեալ զքեզ ոչ թողում այլ եւս յինէն մեկուսանալ.
Մինչեւ զիս տարցես անդրէն ՚ի հարսնարանդ երկնից դրախտ,
Ուրանօր երգեալ ըզՄէր՝ ուրախասցուք յաւէրժաբար:

Թողեալ այժմիկ, ո՛վ Մանկունք, զերգըս Հարսին եւ [Փեսային,
ԶՏեառըն Մօր առնում երգել, որ առ խաչին կայր դալկացեալ,
Մինչ հայէր յիւր Միածին՝ կրէր բիւր մահունս անհնարինս.
Զի հանդէպ խաչեալ Որդւոյն՝ եւ Մայրն անդէն էր խաչակից.
Ո՛չ փայտիւ, ո՛չ բեւեռօք, այլ սաստկավէր սըրտին խոցով.
Նոյնավիշտ եւ զուգակիր եղեալ Նըմին ՚ի չարչարանս:
Անարիւն նահատակէր եւ ո՞ կարէ չափել ըզվիշտն,
Մեծ հռետոր Նարեկացին չափէ միայն ըզՄօր վիշտն,
Իբրու որոջ անարատ Ինքն ՚ի սեղան սիրոյն մատեաւ.
Հրով անծախ բոլորանուէր ողջակիզեալ անձնատուչոր.
Եկա՛ց կենդանի մըշտաչարչար մեռելութեամբըն.
Հայէ՛ր եւ տեսանէր զՈրդին այնպէս անարգամահ.
Յուշ բերէր զԳաբրիէլին բան յաւետեացըն բերկրալուր,
Զդէպ ժամուն այն յիշէր, յանձին հեծէր հառաչելով:
Եւ զի ոչ յաթոռ Դաւթին ետես ըզնա նըստեալ Արքայ.
Այլ ՚ի զահն անփառունակ ՚ի փայտ խաչին պըրկեալ անարգ.
Եւ ՚ի գլուխըն զերակայ չէր թագ փառաց ականակուռ.
Ո՛հ, ընդ այն անարգութեան պըսակ եդեալ քըստմնափուշ:
Որ արփւոյն էր հանդունակ, ըզդիտակին գեղ վայելուչ,
Տեսանէր անաւագեալ ձաղկեալ յարիւն ապաժոյժ:
Փշահերձեալ ՚ի գըլխոյն ծորէր արիւն ըլոռն ըլոռն,
Ի ծայրից զանգուր հերացն իբր ՚ի ծառոց խընկաբերից,
Ի վերայ երեսաց Մօրըն կաթէին իբրեւ զըմուռս.

Որ ըզխաչիւրն մածանէր 'ի սէր Որդւոյն սիրասընունդ·
Որ ընդ արեանըն բոսոր խառնէին Մօրն եւ արտասուքն:
Առ խաչին պատուանդանի մերթ դալկանայր ուշաթափեալ,
Մերթ յուշի եկեալ անդէն պատըսպարէր զինքն 'ի յոտին·
Փարելով հեղուսապինդ ըզՄիածնին մերկիկ թաթիւք՝
Համբուրէր չըրթամբքըն իւր կափուցելովք արիւնամած:
Շուրջ կային եւ ողբանուէր պաշտող կանայքն եղերամայր·
Աղաւնին Մարիամ 'ի սիրտ մընջէր հառաչահան·
Ո՞ւմ այնչափ դառն էր մընչիւն, միայն իւր ձագուն սըր—
[տակցեալ,
Ո՞ւմ յաւէտ ցաւս յաւելոյր, միայն Միածնին հոգեհատոր,
Առ որ չըրթամբք տատանեալ՝ ողբս յօրինէր աշխարահեծ:

Արարե՛ր ընդ իս այո՛, ըզմեծամեծս, հըզօր Որդեակ,
Անդըստին մինչ ես հոգւով Քեզ աղախին խոնարհեցայ·
Մեծութեամբդ անպարագիծ 'ի յարգանդիս ամփոփեցար,
Հուրդ անմերձ 'ի Մովսիսէն՝ ըզմօրենիս պահեր անկէզ·
Հայրական ծոցոյն ծընունդ, կըրկին դու ծնար 'ի Կոյս մօրէս·
Քեզ Արքայք ընծայաբերք խոնարհելով երկըրպագին:
Լուսով ծածկեալդ անմատոյց, ո՛վ, իմ ձեռօք խանձարըրապատ,
Յանբանից 'ի մսուր եդար իբրեւ զաւակ աղքատածին,
Դարմանիչ տիեզերաց 'ի կաթանէ Մօրս դիեցար:
Տաճարին դուռըն փակեալ բացաւ անդէն քոյդ առաջի,
գըրգուելովդ 'ի ծերունոյն՝ արձակեցեր զնա 'ի կապից:
Քեւ Թագաւորք Թագաւորեն, 'ի յարքայէն Հերովդէսի՝
Զքեզ բարձեալ 'ի գիրկս մինչ յԵգիպտոս փախուցի,
Դեռ Մանուկ էիր անոյժ, այլ զօրութիւնդ չարժեց զկուռս,
Ձեռագործ անշունչ աստուածք խոնարհեցան ընդ ոտիւքդ·
Ընդ քաղաքիդ երկնային՝ դու բնակեցար 'ի Նազարէթ,
Կատարեալդ Աստուածութեամբ՝ տիեօք աճելով սընար
['ի Նմին:
Ընդ ձեռինդ ամենազրաւ հնազանդ էին երկինք, երկիր·
Ո՛վ, հնազանդ Որդի ցուցար դու Յովսեփայ եւ Մօրըդ կոյս,
Եւ 'ի տան ընտանեբար ծառայեցեր միշտ 'ի պէտս:
Կոչո՛ղ ըզհրաւիրեալս 'ի հարսանիս Արքայորդւոյդ·
Դու սիրո՛վ եկիր ընդ իս 'ի հարսանիսըն Կանայ·
Ուր ըզջուրըն իմ ժըտելով փոխարկեցեր յանոյշ գինի:
Այսօքիկ են քո, Որդեա՛կ, գործք անքըննին եւ մեծասքանչ,
Յոր դիտեալ եւ խելամուտ լեալ՝ 'ի սըրտիս պահէի,
Թողո՛ւմ զանթիւ հրաշից ձեռին քոյոյ Աստուածազօր,
Ներգործեալ մարդկութեամբդ 'ի մէջ ազգիդ անհաւան·
Ես որովք ուրախամիտ լեալ բերկրէի սըրտիւ, հոգւով,
Յի՛ս տեսեալ ըզՏէրդ ըստ Հրեշտակին աւետաւոր:
Այլ ընդէ՞ր այս, ո՛վ Որդեա՛կ, զի՞նչ քո այդ գործ վերջին
[առ իս
Անճա՛ռ եւ մեծահրաշ, զի՞ մարթասցի Մայր քո գիտել:
Զհեզութեանդ չափ գիտե՛մ, բայց անցուցեր քան զպայման·

Դու արդա՛ր ամենեւին, այդպէս ՚ի խա՛չ դատապարտիս·
Դու անմա՛հ գառն Աստուծոյ, ո՜հ, զենանի՛ս անմըռունչ·
Դու արե՛ւ աշխարհալոյս ՚ի միջօրէ տիս հասակիդ,
Յանկա՛րծ ՚ի մուտըս հասեալ՝ նըսեմանա՞ս մահուդ մըթով·
Դու ծաղի՛կ երկնահոտ, ո՜հ, թառամի՛ս կանաչ կանաչ·
Դու ՚ի ծնէ՛ կուրին ական լոյս շնորհեցեր միայն կաւով,
Այսօր ՚ի ծով քո յաչաց՝ քաղին տակաւ նըշոյլք լուսոյ։
Դու զբազուկըն գօսացեալ կենդանական ՚ի շարժմանէ,
Ջրով արեան զուարթացուցեալ՝ անդրէն դալար հրաշա-
[գործեր,
Այժմ ընդ այն ՚ի չոր փայտին ըզքոյդ բազո՞ւկըս տարածեր։
Ո՞ւր Երգոյդ սիրահրաւէր բան առ Որդւոյս իմ Փեսայի,
Երեւեալդ նորուն ՚ի տիպ արքայածինըդ Սողոմոն·
Եւ զի չէ ՚ի գլուխըն վեհ պսակ կեփազեայ մաքուր յոսկւոյ·
Հապա, զի՞նչ, տեսէք ահա, քըստըմնելի տատասկափուշ,
Թոյրաթուխ կռածոյ զվարսիւքըն բոլորեալ պըսակօրէն։
Կոչեցէ՛ք, ա՛յ օրիորդք, արդ ըզդըստերսըն Սիոնի,
Ելանել եւ տեսանել յիմ Միածին նոր Սողոմոն
Ըզգըլխոյն փըշէ պսակ, զաթոռ խաչին արիւնազանգ·
Այսպէ՜ս մայր իւր Սիոն եկեղեցին Իսրայէլեան
Պըսակեաց այսօր ըզնա յաւուր նորին Փեսայութեան։

Այդ, գիտե՛մ, քաղցր է գըլխոյդ, ոչ քըստըմնիս, ազնիւ
[Որդեա՛կ,
Վաղո՜ւց փափագէիր այդ օրինակ Փեսայութեան·
Այլ, գիտե՜ս, թէ քանի՞ սուգ այդ ՚ի սըրտիս իմ սաստկանայ
Մինչ այսպէս կամ հրաւիրեալ ՚ի հարսանիս խաչապսակիդ։
Որ ի՜նձ հանդերձեալ էք տալ գերանիս, ո՛վ ազգք մարդկան,
Եղո՛ւկ այսօր կարդացէք ցընծացելոյս յԱստուած Փըրկիչ·
Որ մեկնի յինէն մահուամբ եւ խընդութիւն ոգւոյս բառնի։
Արի՛ դու, ո՛վ ծերունիդ գուշակ ցաւոյս անհանդուրժ,
Ե՛կ եւ կաց ինձ առ ընթեր, հայեաց ՚ի Մայրըս վըշտակոծ·
Տես որպէ՛ս խորամուխ սուրդ անցեալ ընդ անձն իմ աւասիկ,
Մինչ ՚ի սիրտըս կարեվէր մըխի, խոցէ դառնակըսկիծ։
Ա՜հ, մեռանի՜մ, մեռանի՜մ, գոնէ հանգեայց ես ՚ի ցաւոց·
Լոյս զոլ Մանկանս, գուշակեցեր, հեթանոսաց խաւարա-
[սնունդ,
Եւ փա՜ռք անդրանիկ ժողովրդեանն Իսրայէլի·
Եկն ահա ժամ խաւարին՝ Լոյսըն պայծառ անըստուեր,
Նուազեցա՛ւ նըման Լուսնին ՚ի լըութենէն բոլորափայլ։
Ձա՛յն առ քեզ արկանեմ, ո՛վ Նախամայրդ իմ Եւայ,
Հասիր այսր եւ կարեկից լեր քո դըստերս Մարիամու·
Կուսական ծնընդեամբ թէպէտ ազատ կացի յերկանց ցաւոց,
Սակայն եւս դառնագունի ցաւոց վըշտաց ես դիպեցայ·
Զոր ոչ Մա՛յրս եւ տըրտմածին դըստերք քո կրեցին երբէք։
Դու ՚ի ծառըն մահաբեր շոգար չարին հրապուրանօք
Անդ կերեր քաղցր ըզպըտուղ, աստ որովայնըս դառնացաւ,

Զի զորդեա՛կըս տեսանեմ վասըն պարտեաց քոյին այսօր
Ի ծառ խաչին բեւեռեալ, զի քաւեսցէ զմեղս Նախամօրդ.
Եւ այսպէ՜ս, ո՛վ Միածին անդրանիկդ իմ աննըման,
Ըզպարտիս նախածնողաց դու հատուցեր անպարտականդ:
Այլ ինձ Մօրս ողորմելւոյս ձայն տուր այժմիկ, Յիսուս [որդեակ,
Զմէ՞ լռեալ ոչ բարբառիս առ Մայրըդ քո աղէկիզեալ,
Զի՞ անուշակ քո լեզուաւդ չ'լինիս դու Մօրդ սփոփիչ.
Մինչ տակաւ դոյ շունչ 'ի քեզ խօսեաց եւ տուր զյետին [զողջոյնդ
Ո՜հ, քաղին ահա ոգիքդ զամ քան ըզգամ նըւաղելովդ,
Եւ մերձ ես աւանդել զՈգիդ քո սուրբ 'ի ձեռըս Հօրդ:

Շա՛տ է ինձ Խաչիս իմոյ կըսկիծ անտար 'ի կըտտել զիս.
Մի՛ Մայրիկդ իմ այդպիսեօք դու ցաւ 'ի ցաւըս յաւելուր,
Ի ներքուստ աղէկոտոր մորմոքելով հանդէպ Որդւոյս:
Ե՛րթ, ծածկիր յաչաց իմոց, մի՛ զվըշտահան Մայրդ իմ տեսից,
Սէ՛րըն հըզօր զքեզ եւ զիս տանջէ համակ նոյնաչարչար:
Գոհ եմ ըզքէն, օրհնեալ Մայր, վասըն մեծի քո երախտեացդ,
Ցուցեա՜լ 'ի ծնընդենէն մինչեւ ցայսօր բազմապատիկ:
Հաճեցար խոնարհ ոգւովդ ինձ աղախին լինել եւ Մայր.
Զինն ամիս տաղաւար յարդարեցեր զմաքուր արգանդդ,
Անդայեակ 'ի մէջ այրին աղքատակերպ ծնար կուսութեամբդ,
Զքառասունըս պահեցեր ըստ օրինացըն Մովսիսի,
Եւ ընդ զոյգ տատրակաց առեալ ածեր զիս 'ի տաճարն.
Արդ՝ յանձն քո անց վըշտի սուրն, կատարեցաւ ծերոյն բան,
Զիս բազկիդ վերայ բարձեալ՝ հետի փախեար յԵգիպտոս:
Պէսպէս եւ այլ բազում վիշտըս կրեցեր 'ի սէր Որդւոյս,
Անհանգի՛ստ եղեր յազգէդ միշտ բամբասեալ եւ հալածեալ.
Կուսական անոյշ կաթամբդ զիս դիեցեր գորովանօք,
Հանդերձիկս արարեր եւ զգեցուցեր Մանուկ տիոյս,
Եւ այլով ամենայնիւ խնամարկեցեր մայրապէս:
Արդ՝ եհաս եւ Մօրդ իմոյ, որ յետ այնչափ յանձանձանաց,
Ի վերջին օրհաս ժամուս, գալ վըշտակից լինել Որդւոյդ,
Ես 'ի Խաչին, դու առ խաչիւս, Մայրըն Որդւովք չարչարեալ:
Մի՛ սակայն սըրտակոտոր լինիր այդ քան, Մայր ցաւակիր,
Անցանէ՛ ժամս առ 'ի մէնջ իբրու թեթեւ ամպ հողմավար.
Հանգիցեն լալիք քոյին եւ Մարեմանցդ ընդ երեկոյս,
Դու որ զիս արդ տեսանես Արեւուն պէս մերձեալ 'ի մուտս,
Գայ լուսաբեր առաւօտն, ես նորահրաշ ծագիմ լուսով,
Տեսանե՛ս զՈրդիդ յայնժամ փառաւորեա՛լ Յարութեամբ:
Փարատի՛ այդ տըրտմական սուգն 'ի սըրտէդ ծանրաթախիծ.
Եւ սըրոյն Սիմէօնեան բուժին անդէն խոցեալ վէրքդ.
Դու լըցեա՛լ ուրախութեամբ, վաղ մոռանաս այդ քո վիշտ:
Ո՛չ թողից ըզքեզ երբէք, սէր է անուն իմ, Մարիամ.
Վայրիկ մի մեկնիմ 'ի քէն, այլ երեւիմ յետ Յարութեանս:
Արդ՝ ընդ իմ լիցի Որդի եւ խնամատար 'ի բոլոր կեանսդ.

Մըտերիմ քոյն Յովհաննէս եւ աշակերտն իմ սիրելի,
Որ առ Խաչիւ կայ ընդ քեզ՝ գոլ որդեգիր սիրով Կուսիդ·
Նա քեզ որդի, դու Նմա մայր մինչեւ եկից առից ըզձեզ:

Զի՞նչ յետոյ զբան սըրտառուչ դարձուցանէր Յիսուս [յերկինս,
Հայր իմ, ընդէ՞ր այդքան յամես, ներէ՞ քո սէր թողուլ [զորդիդ,
Քաւ քան ըզքոյդ մեծ լինիցի գութ Մօրն իմոյ, որ կայ ընդ իս:
Յորդանան եւ 'ի Թափօր դու կըրկնակի վըկայեցեր,
Ինձ՝ հաճոյ եւ սիրելի որդի լինել անճառ ծնողիդ·
Ո՞ւր եւ արդ սէր քո առ իս, ընդէ՞ր թողեր զիս միայնակ·
Եւ յինէն հեռացուցեր ըզբարեկամս իմ եւ ծանօթս·
Եղէ՛ ես որպէս մարդ մնացեալ առանց օգնականի·
Արարեր դու զայս ընդ իս, թըշուառանա՞լ Որդւոյդ այսպէս:
Յիմ վերա՞յ հաստատեցաւ սըրտմըտութիւն քո սաստիկ·
Ես ցաւօք անհընարին տագնապիմ յոյժ աստ 'ի տանջանս·
Դու այտի անկարեկից լեալ քո Որդւոյս եւ զուարճանաս·
Տեսարան Խաչիս իմոյ քեզ 'ի զբօսա՞նս է համարեալ·
Զի զենուլ ետուր 'ի Նմա ըզՄիածինդ պարարակ եզն·
Եւ խրախճան կազմեալ յերկինս ուրախանաս թըմբկօք պարուք,
Ի դարձումն անառակին սովեցելոյ հացիդ անմահ:
Մի՛ Հայր իմ, մի՛ դու մերժեր իսպառ 'ի գթոյդ եւ սիրոյդ·
Դարձո՛ զաչըս քո այտի, հայեա՛ց Որդւոյդ 'ի նախատինս·
Ահա եդին զիս նըշաւակ իւրեանց որդիքն Իսրայէլի,
Տեսանե՜ս թէ զի՞ կացեալ ինձ յանդիման շարժեն ըզգլուխս,
Հայհոյեն եւ բիւրազգի բանըս խօսեն ըզկըծանաց:
Ահա ետուն ինձ կերակուր, ո՜հ, ըզլեղի դառնաճաշակ·
Ընդ պարգեւաց մանանայիդ, որ զեղանէր յանապատին:
Ահա քացա՛խ ինձ արբուցին ծարաւելոյս ոգւոց մարդկան,
Ընդ անոյշ եւ յորդահաս ջրոյդ 'ի վիմէն բըղխեցելոյ:
Մի՛ լըռեր, մի՛ լըռեր, տեսեալ վերուստ զիմ անարգանս,
Սիրո՜վդ հայրականաւ հայեաց յաղքատս եւ միամայրս·
Ապրեցո՛ զիս 'ի նեղչացս եւ թըշնամեաց իմոց փըրկեա՛·
Մի՛ զուցէ վա՛շ վա՛շ կարդան անձանց իւրեանց եւ ասասցեն,
Թէ Խաչիւ անկուշելով զնա ընկլուզաք 'ի մահուն խոր:
Հա՛ն աստի, մի՛ թողուր, Հա՛յր, ձըգմամբ ձեռինդ ամենազօր,
Ամօ՛թ լիցին թող նոքա, որ զայսօսիկ ինձ հատուցին:
Ես զՀօրդ իմոյ զպատուէր բոլոր սըրտիւ կատարեցի,
Խաչըն միայն մնացեալ էր ինձ, ահա ելի եւ բարձրացայ·
Ահա զա՛նձն իմ ողջակէզ հաճոյական քեզ նըւիրեմ,
Ըստ Աբելի պատարագին ընկալ Խաչիս իմ պատարագ·
Յոր ինքնանուէր մատեայ ես, քանզի այս էր Հօրդ իմոյ կամք·
Հայցեմ զի հաշտեսցիս, մահուամբ իմով ընդ աշխարհ·
Եւ հայեսցիս քաղցր ակամբդ այսուհետեւ ընդ անկեալ մարդն·
Զոր Խաչիւս վերականգնես եւ վերբերես երկնից դըրախտն:
Թո՛ղ նաեւ չարչարողացն իմոյ ըզմեղս, ներող Հայր,

Ոչ չգիտեն թէ զինչ գործեն, զի կուրացեալ են 'ի լուսոյդ,
Ըզխորհուրդ քոյին ծածկեալ ոչ կարեցին 'ի միտ առնուլ,
Խաւարեցան եւ ոչ տեսին զլոյսն, որ 'ի քէն ծագեց յաշխարհ,
Ջանացին եւ ընդ մարմին զլո՛յսն սպաննել միանգամայն,
Զ'իմացան թէ ըմբռնի՛ եւ մեռանի՛ լոյսն անմահ.
Թէ այսպէ՛ս անարգամահ բարձին ըզկեանս մարմնոյս յերկրէ,
Այլ ո՛վ Հայր, ես 'ի քեզ եմ, հոգիս 'ի քեզ կենդանի է:

Քո հայցուած կատարեալ է, ո՛վ հեզ որդեակդ իմ եւ հնա–
[զանդ,
Վարեալդ 'ի մահ կամովին յայդ անըզգամ ժողովրդէն.
Վա՛յ դոցա, որ ոչ ծանեան զփրկող բազուկդ իմ զօրաւոր,
Զոր պարզեցի ես յաշխարհ առ 'ի փրկել ըզմարդկան ազդ.
Այլ հատանել հնարեցան, մինչ վերածել դու կամէիր,
Իւրովի յաջոյդ հըզօր թողացուցեալ զինքեանս 'ի բաց,
Յերկիր կործանեցան եւ մերժեցան 'ի ձեռանէդ:
Անմեղիդ ըզդատաստան ոչ յամեցից, տեսից փութով,
Մերձ եմ ես արդար առնել զքեզ առաջի քո դատողացն.
Առ այդչափ մըտադիւր ծառայելոյդ մարդկան՝ սիրով:
Որ ըզքեզ չարչարեցին՝ հնազցին չուտով իբրեւ ըզձորձս,
Կերիցէ եւ ըզնոսին ցեց մեցամէս պատուհասից:
Տաց ըզչարս վաղվաղակի ես փոխանակ գերեզմանիդ.
Եւ պատիժըս մեծամեծս ընդ քո մահուդ անպարտակիր:
Իջանեմ, ես իսկ ձեռամբ սըրբեմ ըզվէրըս քո, Որդեակ,
Դու ողջանաս, եւ նորահրաշ մարմին կազմեմ քեզ փառաւոր:
Ո՛չ թողից հըզօր ոգւոյդ կալ 'ի դըժոխս վըտարանդի,
Քա՛ւ, դու ոչ տեսցես գերեզմանի որդն այն կերիչ.
Այնպէ՛ս ողջ առնեմ ըզքեզ, միայն թողում յոտս եւ 'ի ձեռսդ
Կարմիր կարմիր գեղեցիկ զնշան վիրացդ արիւնաներկ,
Որ տեսանեն թերահաւատք, եւ հաւատան Խաչեալ Փրկչիդ:
Բե՛ր համբուրեմ ըզվէրըս քո, որ 'ի Խաչին հընձան հարեր,
Հարեր միայն, ազնի՛ւ Որդեակ, եւ կոխեցեր ըզթշնամին:
Որ յայդ կառս, Մանուկդ իմ քաջ, ձիաւորեալ ես զօրութեամբ.
Է՛ջ, խաղայ 'ի ստոր երկրիդ զհետ իշխանին խաւարասէր,
Մո՛ւտ 'ի տուն զանձու նորին, կապեա՛ զհըզօրն աշխարհակալ,
Առ զաւարն 'ի գերողէն, դարձո՛ առ իս երամովին.
Աւասիկ պատրաստեմ նոցա տեղի եւ օթեւան,
Եւ քե՛զ գերադարձիդ գահ ընդ աջմէ իմ զօրութեան.
Եւ ես դընեմ ըզթըշնամիսդ 'ի պատուանդան քոյդ ոտից:
Որ փոքր ինչ խոնարհ ցուցար քան ըզհրեշտակս առեալ մարմ–
[նովդ,

Բարձրացի՛ս քան ըզնոսա փառօք պատուով պըսակեալ.
Իշխա՛ն եւ թագաւոր լիցիս հանուր ձեռակերտաց,
Տիեզերք ամէն ընդ քո ոտիւք կացեալ՝ հնազանդեսցին.
Եւ տա՛ց քեզ մեծ անուն եւ քան զամէն անուն 'ի վեր.
Ում երկին երկիր ողջոյն ծունր 'ի խոնարհ կըրկնել եկցեն:
Այսպէ՞ս, ո՛վ մարտադիր, Մանուկդ իմ քաջ եւ յաղթական.

Յայդ 'ի Խա՛չ վերանալովդ՝ փառաւորեալ լիցիս դու յոյժ։
Մօտ էր հընչել ժամ իններորդ, ծարաւակրէր կենաց
[Աղբիւրն
Որ 'պարտիզէն մինչեւ 'ի խաչ, վաստակեալ էր Խաչին մըշակ.
Որ 'ի վիմէն ջուր եհան, արբ զովացաւ Իսրայէլ.
Ծարաւի՛ եմ, ջուր խընդրէ, նա 'ի ձեռաց ապերախտիցն։
Ջեն պիտոյ այլ եւս քեզ, Տէ՛ր, ո՛չ ջուր, ո՛չ հաց եւ ոչինչ.
Ասա՛ դու քո վերջին բան, Թող վերջանան Խաչին վիշտք։
Ձէլի՛ էլին կարդաց Յիսուս, ձայն 'ի Խաչէն հնչեց յերկինս.
Է՛ջ խոնարհեցաւ, Հայրն առ Որդին զվերջին ժամն,
Զաչըս յառեց ասաց Յիսուս Քե՛զ աւանդեմ ըզհոգիս.
Եւ միայն քեզ, Աստուած Հայր, խաւարն եգիտ յիս ոչինչ.
Պահ մի պահեա՛ զայդ աւանդ մինչ ես դառնամ յաւարէն։
Յուդայի հզօր առիւծն ձայն արձակեալ մըռընչեց.
Հան զհոգին, առ զրկեց Հայրն, զոհըն զենաւ 'ի Խաչին.
Հակեալ ըզգլուխն 'ի խոնարհ՝ մեռաւ Յիսուս, լըացան բանք։
Գայր ճեպով սատան իշխան մեծ գերեվարն Ադամորդւոց.
Ասէր խուզեմ ըզՅիսուս, եթէ գըտից մեղաց ինչ բան,
Զհոգին կորզեմ 'ի Հօր ձեռացն եւ պաշտպանեմ զիրաւունս։
Խուզեցի՛, խուզեցի՛, չգիտի եւ ոչ զփոշի մեղաց.
Երեւոյթն էր Ադամորդի, այլ զօրութեամբ Աստուած էր նա.
Յորդանանէն մինչեւ 'ի Խաչ լըտեսեցի զնորա հետս,
Ուղիղ էր իւր ճանապարհ, կեանք սուրբ եւ անարատ.
Ի վեց հազար ամաց հետէ ես չ'գտի մարդ մի նման.
Զոր ինչ տեսի՝ զայն վկայեմ, միթէ կարծի՞մ ես Քրիստոսեան.
Ո՛չ, քա՛ւ այդ յինէն, զի հակառ եմ եւ յամառ.
Ո՛չ, ես չեմ հաշտ ընդ Յիսուսին, ուխտն իմ անհաշտ է յա–
[ւիտեան։
Ես գիտե՛մ, հզօր հոգին մըտեալ 'ի տուն իմ աւարէ,
Փութա՛մ փակեմ ըզդրունս բանտին եւ ամրացեալ պահեմ
[զգանձն.
Զոր յԱդամայ օրէն ցայսօր ես կուտեցի պէս պէս հնարիւք։
Ինեւ մահ մըտաւ յաշխարհ, ե՛ս մեռուցի ըզմարդն անմահ.
Գերեցի զոգիս մարդկան. իմ են այդ գանձք իրաւամբ.
Ո՛հ, ես Թողում որ այսօր Նազովրեցին տանի յաւա՛ր.
Եւ զի՛նչ լինի ապա վախճանս, ո՛հ, Թշուառանամ, Թշուա–
[ռանա՛մ.
Եւ մնայ միայն ինձ բաժին՝ խաւար երկրի ժառանգութիւն.
Եւ հուրն այն յաւիտենից, որ պատրաստեալ է 'ի վաղուց,
Վասն իմ սատանայիս եւ Հրեշտակացըս համօրէն.
Ես ապըստամբ եմ Բարձրելոյն, իմ դատաստան վճիռն այս է.
Այսպէ՛ս ասաց սատան չար, չոգաւ եկաց առ դրան բանտին։
Հերիք է բանիցըս ողբ 'ի Գողգոթայ գերաշխարան,
Արդ՝ անկեալ, Սիօնի Մանկունք, առ պատուանդան Խաչին
[ըղըբոյ,
Հաւատո՛վ երկիրպագցուք իբրեւ 'ի նմա խաչնցելոյն։

Եւ ապա իջեա՛լ անդուստ 'ի վայրըն սուրբ Պատանատեղ,
Անդ երգեցից ըղպատանիլն եւ ըղթաղումըն Կենդանւոյն·
Ում ըսպաս տարաւ Յովսէփ, որ աշակերտ էր Յիսուսի,
Որ տեսանէր 'ի ծածուկ եւ հաւատայր նըմա հոգւով:
Չէր նա կըցորդ խորհըրդոց նենգաւորացըն տիրասպան,
Իշխա՛ն էր եւ նախարար, այլ արդար էր եւ բարեգործ:
Մինչ մըտերիմքըն թագուցեալ եւ երեւիլ ոչ իշխէին,
Սա եւ եթ յիշեաց ըզՏէրն, որ 'ի Խաչին մեռեալ մընայր·
Ե՛լ 'ի դուրս ինքն անվեհեր 'ի բաց եդեալ զահըն Հրէից,
Փութաց եւ եկն յԱրիմաթեայ, մուտ համարձակ առ Պիղատոս:
Գիտե՞ս դու քաջ, ո՛վ դատաւոր, ասէր բանիւն իմաստուն,
Զի ապաշնորհ եւ դառնացող այն ոխերիմ ազգ մեր նենգիչ,
Զանմե՛ղն առ նախանձու քեզ մատնեցին իբրեւ խռովիչ·
Զուր բարուրս կըցկըցելով՝ բողոք բարձին առ քեզ Դըպիրքն,
Լըցին զատեանդ աղաղակաւ, ո՛հ, մահապարտ ցուցին զԱր—
[դարն:
Մինչ դու յաւէտ ձանձրացա՛ր 'ի խուժանիցըն խառնաձայն,
Եւ ի Դպրաց, Քահանայից, որ գոչէին բա՛րձ ըզդա,
Ուստի ելեր ու յանդիման ժողովրդին լուացեր զձեռս,
Քաւեա՛լ եմ ասացեր, ես յարենէ Արդարոյդ,
Հուսկ ապա ետուր խաչել, եւ թիւրեցին զքո դատաստան:
Արդա՛ր էր Նազովրեցին եւ անարատ 'ի կեանս իւր·
Ո՛չ ոք լուաւ, ո̣չ ոք ետես եթէ Յիսուս մեղս մեղաւ·
Եւ ինքն ասէր, ո՛վ կարէ զիս, յանդիմանել վասն մեղաց:
Ծանուցաւ Որդի մարդոյ, այլ ինքն Աստուած էր ճշմարիտ,
Այսըմ վըկայեն նորա զարմանագործ ըսքանչելիք·
Եւ թէ զի՞նչ գործեաց Յիսուս՝ պատմեմ քեզ աստ, ո՛վ իշխան:
Նա բժիշկ էր առանց դեղոյ, ցաւըս բառնայր միայն բանիւ·
Քայլ առին կաղքըն նովաւ եւ լոյս տեսին աչքըն կուրաց·
Զայն առին խուլ ականջք, բարբառեցան լեզուք համերք·
Զերեսնութամ անդամալոյծն, ելաւ գընաց Պրսպատիկէն·
Թողում թէ քանի՛ քանի՛ նա ըզմեռեալըս յարոյց·
Դեռ երէկ զՂազարոս 'ի մեռելոց կոչեաց 'ի կեանս:
Այս հրաշից նորա պէս պէս ականատես եմ, ո՛վ իշխան·
Ես վասն այն աշակերտիլ նըմին սըրտիւ յօժարեցայ,
Մինչեւ ցայժմ իբր 'ի ծածուկ, այլ յայտնապէս այսուհետեւ:
Եկի ես սպաս տանել վասըն խաչեալ Աստուածորդւոյն·
Նոր գերեզման ունիմ պատրաստ 'ի պարտիզիս իմ սեպհական,
Տո՛ւր ուրեմն, խընդրեմ 'ի քէն զմեռեալ մարմինն ինձ 'ի
[պարգեւ,
Պատեցից արժանապէս եւ թաղեցից ըզնա պատւով·
Ո՛հ, սըգալի՛ մօրըն նորա անհուն ցաւոց դիւր տաց ես զէթ·
Որ առ Խաչիւըն թալկացեալ աղէկիզի Որդւոյն 'ի տես:

Լըսէ՛ր յօժար Պիղատոս կոչէր անդէն զհարիւրապետն,
Զարմանա՛յր ընդ վաղամեռ լինել կամաւ մեռելոյն,
Եւ ընդ մեծ հրաշիցըն դէպ՝ ցուցեալ 'ի ժամ վերջի շընչոյն·

Ուստի սիրով շնորհէր զմարմինն զայն հայցողին մեծափափագ։
Զի՞ յայնժամ սրտին ըղձիւք փութայր Յովսէփ ածել ըզկտաւ,
Եւ իշխան Նիկոդիմոս բերէր զըմուռս եւ ըզհալուէս,
Երկոքին Քրիստոսասէրք 'ի Գողգոթա զոյգ ընթացեալք՝
Երկիւղած եւ ջերմ ոգւով մերձեալ 'ի Խաչն Աստուածակիր,
Զեղելոյն վասն իմ անէծ՝ առին 'ի վայր զկախեալ մարմինն,
Այսր ահա բերին, Մանկունք, եւ ըզվիմաւ տարածեցին·
Առ գլխովըն կայր Յովսէփ եւ յոտից կոյս Նիկոդիմոս,
Աստի ու անտի՝ Մարեմանք եւ Մայրըն իւր ուշակորոյս։
Ոմն ըզծակեալ ձեռսն համբուրէր, եւ ոմըն զոտս վիրաբաց,
Եւ այլ ոմն արիւնամած մարմնոյն ըզվէրս լուացեալ սրբէր·
Իսկ վըշտալին Մարիամ որպէ՛ս անկեալ աղէտակոծ
Ի վերայ դալկահար եւ գեղաթափ դիմաց Որդւոյն·
Ի վերայ լուսարփի եւ կափուցեալ աչացըն, ո՛հ·
Անբաժա՛ն 'ի նմանէ խընդրէր լինել անդ 'ի մահուն։
Ո՞ տայր նըմա ողջ այնպէս ընդ մի պատան դնիլ ընդ Որդւոյն·
Կենդանւոյն 'ի գերեզման թաղիլ երկուցըն զըրկախառն։
Որ յայրին ընդ հրաշաւոր ծնունդըն իւր անախտ հրճուէր
[հոգւովն
Ի մսուր եդեալ խանձարրապատ՝ մանկիկըն լայր, ինքըն ցըն-
[ծայր,
Տեսանէ՛ր, աւա՛ղ, ըզնա մեռեալ աստէն իբրեւ զմարդ,
Խանձարուրին փոխան պատան եւ ընդ մըսրոյն՝ ո՞հ, գերեզ-
[ման։
Այլ Մայրըն լայր աղէխարշ, ցընծայր հոգւով՝ մեռեալ Որդին,
Որ գնացեալ էր աւարել զգանձըս հոգւոցն 'ի գերողէն։
Զի՞ աստ կոծ ջայլական ըզՄարեմանցն ասեմ, մանկունք,
Որ Կուսին լեալ ողբակից ըզտարփալւոյն մահ սըգային·
Յարտասուաց նոցին թափեալ՝ թանայր մարմին Յիսուսի։
Յուշ լինէր աստանօր Մարիամու Մագթաղինին,
Բա՛նըն սըրտառուչ, որ զհեղմանէ իւղոյն ազնիւ,
Ի գլուխ պարտեաց բաշխողին՝ գոլ նըշանակ նորին Թաղման։
Հազիւ ըզգաստըն Յովսէփ զինքն յարական սիրտ պընդեալ,
Ողոքէր ըսփոփելով զեղերական դաս կանանւոյն·
Եւ ըզմարմինն անապական ըստ օրինի զըմըռսելով՝
Զլոյսն 'ի պատան ծրարէին, որ չոյտ անդէն ցոլայր 'ի դուրս։
Ի մաքուր պաստառակալ եդեալ պատէր զանպարագիրն·
Ո՞ւմ կարէին ըզպատան, որ ըզմահու պատանք պատռել նա
[մեռաւ·
Զո՞ դընէին 'ի գերեզման, միթէ բնակի՞ Կեանքն 'ի հող·
Այո՛, ինքն իսկ դընաց 'ի գերեզմանս եւ տըքնեցաւ 'ի տա-
[պանի,
Զորմէ ասաց արդարըն Յովբ, մինչ զԱստուած ճառէր բան։
Որ երէկ ըզՂազարոս 'ի թաղմանէն կոչէր 'ի լոյս,
Եւ լուծանէր 'ի նմանէ զերիզապինդըն մահազգեստ·
Ինքն այսր 'ի մահացուած, բա՛բէ, պատան ըզգենոյր։

Որ Աստուած եւ պարգեւիչ անբաւ բարեացըն ճանաչէր,
Եւ իւրաստեղծ արարածոց բաշխէր ըզձիր առատապէս·
Ո՛հ, 'ի ծառայէն պարգեւ խընդրեաց ըզնա Յովսէփ·
Նա որ զԱդամ զարդարեաց պատմուճանաւըն լուսաշուք·
Եւ զի՞նչ ընդ այն ըզգեցաւ, ո՛հ, ըզկտաւ անարգանիւթ·
Եւ որ նըմին անդ ըզհոգի եւ շունչ շնորհեաց կենդանատու,
Ի մարմնի անշընչացեալ՝ համարեցաւ աստ ընդ մեռեալս·
Զի նորին անշընչութեամբ՝ շունչ եկեսցէ մեռեալ յոսկերս·
Որ 'ի շնորհէ ցամաքեալ՝ սըփռեալ էաք 'ի դաշտ երկրիս,
Անդրէն յօդեալք 'ի մի կենդանացաք հրաշապէս,
Զայս հոգւովն ածեալ 'ի դաշտն՝ ետես կանուխ Եզեկիէլ:
Ո՛վ գործոյս Աստուածահրաշ յաւէտ 'ի մէնջ անճառելի:
Շունչ շնորհեաց անշընչութեամբն 'ի կըրկնակի Արարչութեանս
Ոսկերացըս հողանիւթ՝ կենդանութիւն Մեռելութեամբն:

———o———

# ՆԱԽԱՑՈՅՑ ՊԱՏԿԵՐ ԻՄԱՍՏԻՑ

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ԵՐԳՈՑ

———o———

ԸՆԴ կանանցն Իւղաբերից բարձեալ զիւղ հաւատոյ՝ հրաւիրէ զմանկտին 'ի Գեթեզմանի Քրիստոսի· ուր զվերջին գործ Տնօրէնութեան նորին յուշ ածելով՝ ափշի զարմացմամբ:

Իջանէ Քրիստոս հզօր Հոգւովն 'ի դժոխս աւար առնուլ զոգիս արդարոցն· արհաւրօք ըմբռնեալ իշխանին խաւարասէր՝ խուճապի տագնապաւ եւ թաքչիլ կամի յերեսացն ահաւոր:

Աստ հոգիք արդարոց խօսին իւրաքանչիւր առ այցելու Փրկիչն յառաջ բերելով զքանս գուշակութեանց իւրեանց:

Եւ ապա ազատիչն փրկութեան զաջն իւր առ Ադամ եւ առ բոլոր Նահապետս եւ Մարգարէս կարկառեալ՝ խօսի այցելութեան բանիւ· եւ զիւրաքանչիւր նոցին որ վասն իւր գրեալ զգուշակութիւն 'ի մէջ բերելով՝ աւետիս տայ նոցա ցնծութեան եւ քարոզէ զյաղթող փրկութիւն իւր: Յետ ամենեցուն խօսի առ Դաւիթ եւ ակնարկէ նման լինել պարագլուխ ազատեալ դասուցն եւ հարկանել զտասնաղին օրհնութեան մինչեւ յերկինս: Սատանայ ողբայ զաւարն, եւ զկործանումն իւր դառնապէս եւ յուսահատ:

Փոխեալ աստ Հրաւիրակին զեղանակ երգոյն՝ ընդ Դաւթի հարկանէ զուրախալի քնար եւ զյաղթականին Աստուածահրաշ եւ փառաւոր հանդէս Յարութեան երգէ հռչակելով պէս պէս օրինակօք խորհրդոց նախագուշակեալ:

Գոհութիւն փառատրութեան առ Հայրն որ յաղթեալ 'ի սիրոյ եւ 'ի գթութենէ իւրմէ՝ ոչ խնայեաց մատնել զՈրդին վասն մեր 'ի մահ:

Մատուցանէ ապա զնոյն շնորհ գոհութեան առ Որդին, որ ոչ շատացաւ մարդ եղանիլ միայն 'ի Կուսէն, այլ եւ անբաւ հեզութեամբն տարաւ այնչափ վշտաց դառնութեան, զորս մի մի վերստին յիշատակեալ՝ վերջացուցանէ:

———o———

# ՀՐԱՒԻՐԱԿ
# ԵՐԿՐԻՆ ԱՒԵՏԵԱՑ

———o———

## ԵՐԳ ՀԻՆԳԵՐՈՐԴ

ԻՒՂԱԲԵՐ ընդ սուրբ կանանց լի բարձեալ մեր գիւղ
[հաւատոյ,
Մի՛ յանօթ բըրտի չինած, այլ 'ի մաքուր սըրտի անօթ,
Օ՛ն Մանկունք, հետեւելով գնամք 'ի պարտէզըն Յովսէփայ.
Առ քընարան Քրիստոսի՝ մեք շուրջ նըստիմք լո՛ւռ անձայն.
Թող երգէ ողբաձայն գիւր չարական Մեծըն Սահակ.
Այն ականց գոհարագարդ, գոր մատըն իւր չարահիւսեաց.
Որ Յիսուսի սուրբ Թաղման, ո՛վ, հիացող երգահանն է,
Եւ ո՞վ քան գայն կարէ երգել ըզմահու Դատեանն:
Պարգեւատո՛ւն ամենեցուն՝ խընդրի պարգեւ Պիղատոսէն.
Որ գիւրեւ բակ բոլորէ գլոյս ծիրանի իբրեւ գօթոց,
Հաւանի, դժկամակ չէ, պատան գդենու 'ի Յովսեփայ:
Կենդանատո՛ւն տիեզերաց, 'ի Գերեզման դընի մեռեալ.
Անմահութեան գանձըն կընքի, ո՛վ, մատանեաւ Քահանայից:
Փըրկութի՛ւն արարածոց վէմըն Քրիստոս Սիօնի հիմն,
Ի նորափո՛ր վիմին եղաւ եւ այն պարգեւ էր Յովսէփայ,
Եւ գոր օրհնեն գօրք Երկնից՝ 'ի գինուորացըն պահպանի:
Որ ծածկոյթ էր մերկութեան հնոյն Ադամայ 'ի դրախտին,
Ադամայ որդին Յովսէփ ընդ այն պատան տայ տրիտուր:
Անմահութիւն մահկանացուաց խոնարհեցաւ 'ի հող մահու.
Որ յանմատոյց 'ի լոյս բնակէր եմուտ մարմնով 'ի սիրտ երկրի:
Արեգա՛կն արդարութեան եղաւ 'ի գբի ստուերականի.
Որ ճառագա՛յթ էր փառաց Հօր նա ծածկեցաւ 'ի մէջ երկրի:
Կուսածին մարմնով Յիսուս դընի 'ի կոյս Գերեզմանի,
Եւ դըժոխոց երկանց լուծիչ, ո՛վ, ըմբռնի յերկունս մահու:
Արարի՛չն արթուն բնութեամբ՝ նընջէ 'ի մէջ մահացելոց.
Որ գիսրայէլ պահէր անքուն, գինուո՛րք ըզնա պահեն անքուն:
Ցընծութի՛ւն հանուրց էից արարածոց Յիսուս Բանն,
Որ ցնծա՛յր առաջի Հօր մինչ զարարածս ըստեղծանէր.
Ո՛հ, արտասուեցա՛ւ որպէս մեռեալ 'ի մտերիմ տրտմագգե–
[ցիցն,
Եւ որ բուրէր անմահութիւն ազգի մարդկան ըզկենաց բան.
Ծընկեցա՛ւ անոյշ հոտով 'ի գգաստ կանանց Իւղաբերից:
Այսպէ՛ս երգեց, այսպէս պատուեց գԹաղումն Փրկչին Սահակ
[Պարթեւն,
Այլ ո՞ տայր ինձ գէթ մի նուագ եւս, ա՛խ, երթայի յան–
[չուք մատուռ,

Համբուրէ՛ համբուրէ՛ Գերեզմանիդ այն սեւ քար, ո՛վ
[սբ. Սահակ.
Զմխաս իմ տարար, Հոգի վեհ, դառնամ երգեմ զԹաղման
[կարգ։
Տէ՛ր հիանամ ընդ քո բան, որ տանի զիս 'ի զարմանս,
Զանքննին վերջին այս գործ տեսանելով ափշիմ մնամ.
Ո՞ւր երկինք անմահութեան, ո՞ւր Գերեզման մեռելութեան,
Եւ զի՞ անմահն Աստուած՝ 'ի Գերեզման մահու եկաց.
Եւ առ ի՞նչ մահու լուծիչն՝ մըտաւ մահուն 'ի բերան։
Միթէ Յովնա՞ն էր Յիսուս, որ կէսն եկուլ ըղնա 'ի փոր.
Զքեզ ճանաչեմ 'ի Սինայէն, պատմէ Մովսէս, Տէր ահաւոր,
Ըզկամիր ծով պատառեցեր ըզՓարաւոն սուզեր յանդունդ,
[գիտե՛մ, Տէր.
Այլ արդ եւ դու 'ի ծով մահուն ընկղմեցար մինչեւ յանդունդ,
[եւ ո՞վ զքեզ հանէ 'վեր.
Ձեռըն Հօ՛ր ձեռըն Հօ՛ր, որ զամենայն կրէ զօրութեամբ։
Զվէմդ գիտե՛մ, ծանրագոյն էր, գլորեաց քո Հայր հզօրին
['տուն,
Որ քանդես, յաւեր ածես եւ ըզհըզօրն կապես անլոյծ։
Հրաշալի՛ վէմ, յանտես լեռնէն հատար անկար 'ի Բեթլեհէմ.
Ըզվէմդ ծընաւ Կոյսն 'ի յայրին, գլորեց ըզքեզ 'ի մըսուր.
Տեսին ըզքեզ փոքրիկ Մանուկ, այլ մեծացար դու յոյժ յոյժ.
Վէմըդ Թագոյց գլոյսն 'ի մարմին եւ կարծեցին թէ սոսկ
[մարդ ես։
Այլ ըզվէմդ անարգեցին Իսրայէլի տան շինողք.
Վարեցին եւ գլորին բերին հանին Սիօնի 'բլուր։
Վէմն ծանր էր եւ ծանրագոյն որպէ՞ս հանին Խաչին 'ի գլուխ,
Եւ 'ի Խաչէն գլորեցին իջաւ մինչեւ մահուան 'գուբ։
Գլորիչներ խորհեցան, ասեն վիմով փակենք ըզվէմն,
Ամուր փակենք, որ ճնշուի եւ չըխլըտի 'ի տեղւոջէն.
Ո՛հ, թէ յառնէ վէմըն հրաշիւք՝ անշուշտ քանդէ զՅակոբայ
[տուն։
Ափսո՛ս, հազար ափսոս, որ չըծանեան զվիմին խորհուրդ.
Զի վէմն էր այն միացուցիչ Իսրայէլին, հեթանոսին.
Ի յերկուցն ըզմի Սիօն շինել հոգւով ճշմարտութեան։
Տաճա՛ր տաճա՛ր ասացին, մեզ չէ պիտոյ նոր Սիօն.
Միթէ թողո՞ւմք այնչափ զոհից առատութիւն շահն ու վաս-
[տակ.
Թէ նոր Սիօն հոգւով կազմի, զի՞նչ է ապա մեր բաժին։
Այսպէ՛ս խորհեցան եւ դատեցին անմիտ շինողք.
Եւ զարմացան երբ տեսին՝ վէմն այն եղեւ գլուխ անկեան։
Թողո՛ւմք ասա, ո՛վ մանկունք, զԹաղումըն Տեառն եւ
[Գերեզման,
Թող պահ մի ըռքնի մարմնով 'ի տապանին, Տէրըն մեռեալ,
Նա հոգւովն ամենազօր էջ 'ի ներքին բանտըն խաւար.
Գնասցո՛ւք եւ մեք ըզհետ հոգւոյն, տեսցուք թէ զի՞նչ առնէ
[հըզօրն.

Շարժեցա՛ւ վէմըն կնքեալ Սիօնի 'լեռնէն դէպ 'ի դըժոխս,
Գլորելո՛վ Թաւալելով աՀեղ եւ մեծ էր որոտումն,
Սարսեցաւ իշխան մաՀու, սասանեցաւ Սանդարամետ.
Վէմըն զարկա՛ւ եւ տապալեաց սատանի տուն քանդեց Հիմամբ:
Միթէ Հիւսի՞ էր նա ձեան, որ 'ի լեռնէն փըրթի փոքրիկ,
Գլորի՛ գլորի մեծանայ եւ ձիւնակոյտ լինի աՀեղ լեռնաչափ.
Տապալէ՛ զինչ կայ առաջ, եւ կործանէ զամէն շինուած.
Ասեն թէ յառաջընթաց Հովըն Հիւսոյ ուժգին է յոյժ.
Որ մինչ չըՆչէ գայ Թափով, ծառք Հին աւուրց տապալին վայր.
Քա՛ւ թէ, Տէր իմ, գքո զօրութիւն չափեմ ես սաստ ընդ Հիւսոյ
[ձեան:

Այլ զի՞նչ արար մաՀու իշխան, որ գնաց փակել զդուռըն
[բանտին,

ԱրՀաւրօք անՀնարին ըմբռնեցաւ Հարաւ 'ի դող,
Խուճապէր տագնապաւ կամէր Թագչիլ յերեսացն,
Եւ զերթ օձ գալարէր, սողայր սաստ անդ եւ ո՞ւր փախչէր.
Թէ յերկինս՝ անդ էր Հայրն, եւ թէ 'ի դժոխս՝ մօտ էր Որդին.
Ո՞ տայր նըմա տեղ զի Թագչէր, որ անցանէր այս բարկութիւն:
ԳերաՀան աւարառուն մըտաւ 'ի ներքըս Համարձակ,
Եւ բացան առաջի դրունքըն փակեալ յաւիտենից.
Որ նըստէին 'ի ստուերս մաՀու կապեալ 'ի բանդ խաւարտչին,
Տեսին յանկարծ լոյս ծագեալ եւ 'ի միջի լուսոյն՝ Փըրկիչ:
Դաւիթ տեսա՛ւ ծանեաւ զՈրդին վազեց գըրկեց եւ Համ-
[բուրեց.
Ասաց եկի՛ր, ո՜վ իմ Փրկիչ, եկիր փրկել զմեզ 'գերողէն,
Արդ՝ ես ցընծամ 'ի բանս քո, որպէս այն որ գըտանէ աւար
[բազում:

Սողոմոն մօ՛տ էր տեսաւ, ո՜, եղբօրորդին իմ է ճչգրիտ.
Տեսէ՛ք, կարմիր եւ սպիտակ է եւ նըման է խընձորի.
Որ յանտառի խընծորենեաց կախին 'ի վայր կարմիր կարմիր.
Եւ ես ըզքեզ տեսի Հոգւով խաչի 'ծառէն կախեալ այնպէս,
Սպիտակ Մարմինդ բոսոր գունով կարմրացած խընծորի պէս:
Ես մեղապարտ եմ քո առաջ, ո՛վ սիրելի եղբօրորդի,
Զի գնացի ըզՀետ կանանց եւ պաշտեցի ըզկուռըս նոցին.
Եւ գիտե՛ս Տէր, իմաստուն եմ, 'ի դըժոխոց լուայ զքո բան,
Թէ չ'եկի կոչել զարդարս, այլ առաւել ըզմեղաւորս.
Ես մեղաւո՜ր եմ, մեղաւո՜ր եւ զիս կոչեա՛ ընդ Արդարոցն:

Եսային դիտեց Հեռուստ, կարմիր արեամբ զներկեալ սրունս.
Գոչե՜ց, ա՛յն է ա՛յն է Փըրկիչ, որ ըզխաչին Հնձան կոխեց,
Եւ եկն ա՛րդ սրտմտութեամբ կոխել ըզմաՀ եւ ըզդըժոխս:
Ո՜վ, Յեսսէի ծաղիկն է այն եւ գաւազան եւ չառաւիղ.
Որ 'ի Կուսէն ծընաւ մարդ, ընդ մեզ Աստուած էէմմանուէլ.
Ցընծացէ՛ք Թախծեալ ոգիք, որ 'ի մաՀու ստուերաւ նըստիք.
Լոյս ծագեցա՛ւ մեզ Փրկիչն, ելէք 'ի լոյսն ազատութեան:
Երեմիա՛ս 'ի գբի ներքնում, դեռ ողբայր զԵրուսաղէմ,
Ասաց Տէ՛ր իմ, զձայն քո լուայ եւ դո՜ւ լացեր զԵրուսաղէմ,

Գիտե՛ս, ո՛վ Տէր, ես անդ արկայ 'ի գուբ տըղմին տառա–
[պանաց,
Չարագոյն եւս արկեալ եմ աստ 'ի խորս անդունդ եւ անել,
Եկիր 'ի վեր հանել դու զիս, ո՛ ազատիչ խաչիդ արեամբ.
Եւ ես նըստիմ ընդ հովանեաւդ, ո՛վ դու օծեալ Տէր իմ
[Քրիստոս:

Եզեկիէլ ուշով դիտեց, յո՛ւշ քեզ, ո՛վ Տէր, ճանաչե՞ս զիս,
Բաբիլոնի մարգարէն եմ, որ զիս ածեր մեռելոց 'դաշտ.
Հարց արարեր, Որդի՛ մարդոյ, կենդանասցի՞ն ոսկերքդ այդ.
Շուարեցայ, զի՞նչ ասէի, Տէ՛ր, Տէ՛ր, դո՛ւ գայդ գիտես
[միայն:
Շունչ մի շնչեա՛ց, շունչն 'ի քէն էր, կենդանացան ոսկերք
[մեռեալք.
Շունչ մի շնչեաց, Տէր զօրութեանց, ազատութիւն զերեալ
[հոգւոց.
Եւ 'ի շընչէդ մեռցի սեւ օձն, խափանեսցի մահու խայթոց:

Դանիէլ ժամադիր էր, զի լըրացան իւր ժամանակք.
Հոգւով անձկով սպասէր նըմա, որ նըման էր Որդւոյ մարդոյ,
Որ գայր ընդ ամպս Հին աւուրցն եւ գայս ետես 'ի Բաբիլոն.
Հոգին հըրճուեց երբ տեսաւ, որ հասեալ կայ Որդի մարդոյ.
Մօտ գընա՛ց եւ փարեցաւ զոտիւք Փըրկչին, գոչեց ձայնիւ,
Օրհնեցէ՛ք զերեալ հոգիք եւ օրհնեցէ՛ք բարձր արարէք.
Եկըն եհա՛ս հզօր Առիւծն, որ 'ի տանէն Յուդայի,
Հանե՛լ ըզմեզ 'ի գբոյ աստի 'ի բերանոյ չար առիւծւոյն.
Եւ զատամունս նորա փըշրել, խըցել ըզգուբ դըժոխոց:
Անդ էին երեք Մանկունք բոլորեցան 'ի շուրջ Փրկչին.
Ո՛ն օրհնեցէ՛ք որ էջն առ մեզ անդ 'ի հնոցին Բաբիլոնի.
Թօթափեաց զհուրն 'ի մէնջ եւ զարմացոյց ըզթագաւորն.
Որ ըզչորրորդըն տեսանէր նըման Որդւոյ Աստուծոյ:
Օրհնե՛մք ըզքեզ խաչեալ Փըրկիչ Աստուածորդի,
Որ 'ի հնոց գեհենին իջեր փրկել զզերեալ հոգիս:

Ո՞ւր էր Յօնան, աղաղակէր նա 'ի պորտոյ վիշապ ձըկան.
Տէ՛ր, տուր հրաման, որ մօտ գամ Քեզ, չ'կարեմ ինքնին
[ես խըլըրտիլ.
Լսեմ աստի, որ Մարգարէք իւրաքանչիւր զիւր բան պատմէ.
Դոքա չ'գիտեն զդժոխոց բան, եւ ես հմուտ եմ քաջապէս.
Զի Ես բնակիմ 'ի միջավայր Մայրաքաղաքըն դըժոխոց,
Ի փոր կիտին մեծ եւ անհուն, որ զհամօրէն աշխարհ եկուլ.
Իմաստասէր աշխարհագիր տեղագծողն եմ դըժոխոց.
Ես յայն օրէն վարժեցայ, երբ յերեսաց քոց փախչելով,
Հրամայեցե՛ր եւ կէտըն մեծ զիս ըմբռնեաց 'ի ծովուն,
Եկուլ, եւ տարաւ զիս մինչեւ 'ի խորս անդընդոց:
Անդ տեսի յաւիտենից դրունըս փակեալ յերկաթի նիգս,
Անդ ուսայ թէ կան 'ի ներքս ընտրեալ հոգւոց գանձք բազում.
Զոր 'ի դրախտէն մինչեւ ցայսօր գերի տարաւ իշխան մահու:

Յիշեա՛, ո՛վ Տէր, զի ես յայնժամ 'ի ձկան պորտոյ ձայն իմ
[բարձր,
Ի նեղութեան իմում անդ, զքեզ յօգնութիւն կարդացի.
Ա՜խ, իցէ թէ յաւելից գալ 'ի տաճար քո սուրբ ուխտ:
Լուար, Տէ՛ր հրամայեցեր եւ կէտն եթուք զիս 'ի ցամաք,
Գնացի քարոզ 'ի Նինուէ, կատարեցի զքո մեծ հրաման,
Դարձայ, մեռայ եւ թաղեցայ ընդ Մարգարէսն առաջին.
Գիտացի թէ միանգամ իջի 'ի դժոխս, եւ այն բաւ էր.
Այլ ինձ վա՜յ եւ հազար վայ, կրկին սուղայ 'ի մահուն ծով.
Կէտն այն մեծ կուլ զիմ հոգին, դարձեալ մըտայ ես 'ի փորն.
Միթէ մնա՞մ աստ յաւիտեան, Քոյդ փրկութեան սպասէի,
[Տէ՜ր.
Ես լըսեցի զբան աւետեացդ, յոր օրինակ բերեր դու զիս,
Որպէս Յովնան 'ի փոր կիտին եւ ես 'ի սիրտ երկրի թաղիմ.
Արդ՝ լըացան երեք աւուրք, քո Յարութեան ժամն եհաս.
Հազարամեայ գերեալ հոգւոցն ազատութեան ժամն եհաս,
Քառասայր Խաչիդ սըրով հար պատառեա՛ զվիշապին փոր,
Կորզեա՛ 'ի դուրս կըզակէն, զհոգիս ընտրեալ արդարոց.
Եւ 'ի վերայ մահու սըրտին կանգնեա ըզԽաչ քո յաղթանակ:
Ամբակում լուաւ անդէն զձայն Յովնանու աղերսագին,
Ցոյտ եկաւ եկաց հանդէպ յաղթող Փըրկչին եւ ասաց,
Ես Ամբակումն եմ ճանաչե՞ս, փոքրիկ գուշակ քո բանին,
Որ Սաղիմէն 'ի Բաբելոն ես ճաշ տարաւ Դանիէլին.
Փոքրիկ եմ, այլ տեսի ես ըզգործըս քո մեծամեծս.
Երկեա՛յ եւ գոչեցի, Տէ՜ր, ըզլուր քո լուայ ես,
Զարհուրեցայ զի զքեզ տեսի 'ի մահու Խաչ բարձրացեալ.
Այլ ցընծացի՝ երբ կարդացի Խաչիդ դըրօշակ՝ մահ եւ կեանք.
Մահ սատանին եւ կեանք մարդկան, որ փըրկութեան
[քում սպասեն.
Մարդիկ յերկրի, հոգիք 'ի դժոխս ազատարար Փրկչիդ սպա—
[սեմք.
Միթէ չ'գիտե՜մ ես, ո՛վ Տէր, թէ յերեսաց քո բարկութեան,
Ելցեն հարուածք դըժնդակ, դըժոխք հիմնովին տապալեսցի.
Ընկրկեսցի մահու իշխան, հոգիք ընդ քեզ 'վեր թռչիցեն:
Օրհնեմք զՔեզ կեանք Յարութիւն, որ անդ չընչեր մեռեալ
[ոսկերց,
Ցընչեա՛ եւ աստ ազատութիւն մահու դաշտի գերեալ հոգւոցն:
Զաքարիաս տեսս ըզվէրս 'ի ձեռս Փրկչին եւ հարցանէր,
Տէ՜ր, զի՞նչ իցեն վէրքդ այդոքիկ, միթէ դու զմա՞րտ մըղեր
[ընդ մարդ,
Որ այդպէս վիրաւորեալ սրտմտութեամբ իջեր այսր.
Եւ 'ի դըժո՞խս ունիս մղել զնոյն պատերազմ ընդ սատանին:
Ո՞չ գիտես, ո՛վ Զաքարէ, Իսրայէլի մարգարէ ես,
Թէ 'ի Հօրէ եկի յաշխարհ զմարդն ազատել 'ի հին չարէն.
Ո՜հ, մարդիկ ո՛չ ծանեան զիս, այլ ընդ չարին կռեցին դաշն,
Վէրս եւ հարուածս ետուն ինձ եւ զազատիչն հանին 'ի Խաչ.
Եւ գիտե՞ս թէ ոյք էին այդ ապիրատ խաչահանք.

Միրեցելոյ տանն Յակովբայ, որդիքն ըմբոստ եւ ապստամբ,
Որոց ըզվէրս նախ բժըշկել՝ պատուէր առի Ես ՚ի Հօրէն·
Դեղ ետու ըզկենաց բան, ո՛չ ընկալաւ տուն Յակովբայ
Այնպէս մընաց անբուժելի իւր կամակոր յամառութեամբ։
Թողի անդ ըզկենդանիս եւ թող մեռնին անհաւատ·
Եկի կոչել ըզմեռելոց հոգիս ՚ի կեանս, որ հաւատան։
Լուեցին Մարգարէք, ծանեան ըզՏէրն ՚ի նշանացն,
Ծանեան եւ զաջն ազատիչ եկեալ հասեալ ՚ի փրկութիւն,
Զոր յԱդամ նախ կարկառեալ ձայն արկանէր արարչագործն·
Ո՞ւր ես, Ադամ, այլ մի՛ թաքչիր, որպէս յայնժամ ընդ թը–
[զենեաւ,
Պատկառեալ ամօթերես, ո՛վ նախաստեղծդ իմոյ ձեռին,
Արի՛ որ վաղ նընջես աստ, ե՛լ եւ կանգնեաց ՚ի մեռելոց·
Ես Արե՛ւ լուսաբեր քեզ յայտնեցայ արդ ՚ի բարձանց·
Հերիք եղեւ զեղեցիկ ձեռակերտիդ իմոյ այդչափ,
Ի վայրիդ խաւարակուռ՝ կալ փոխանակ դըրախտին փառաց,
Ես ըզքո պարտս վըճարեցի, եղէ որպէս պարտապան·
Զի Որդի եմ ըստ մարմնոյ, Հօրդ ըզպարտիս ես յանձն առի,
Որ ըզքո եւ ծնընդոցդ պատառեցից մահու զմուրհակն·
Դու չըպահեցեր ըզպատուէրն Հօր, զոր ՚ի դըրախտին ետ քեզ
[Հայրն,
Տէ՛ս որպէս հնազանդ Որդին ճըշդիւ զամէնն կատարեաց,
Ընդ արգելեալ պըտղոյն ճաշակ, Ես պահեցի զքառասուն օր·
Ընդ անիծից քըրտանց եւ փշոց, որ զքեզ անխնայ չարչարեցին,
Քըրտնեցայ, վաստակեցայ, միշտ անհանգիստ, անօթեւան,
Եւ զանիծիցն այն ըզփուշ բոլորեցի գլխոյս պըսակ։
Դու սփածար մաշկեղինօք ընդ լուսանիւթ պատմուճանին,
Ի դըրախտէն արտաքս անկեալ վըճիռ մահու հատաւ քեզ·
Ես թափեալ սիրով քոյին յերկնից փառացն իմ ընտանի,
Զծառայիդ կերպ ըզգեցայ՝ ընդ հանդերձիդ մաշկեղէն·
Անդրագոյն եւ քան ըզքեզ պանդըխտեցայ աղքատ կենօք·
Եւ ՚ի վերջոյ որդիքըն քո՝ զիս ՚ի խաչ հանին անարգաբար·
Յիշե՞ս արդեօք թէ մեծագութ Հայրն իմ հոգաց վասըն քո·
Եւ գիտե՞ս, զի բնակեցոյց զքեզ յանդիման դըրախտին յԵդեմ·
Ուստի կենաց ծառն երեւէր եւ դու յառեալ մորմոքէիր·
Յերջանիկ դըրախտէն զըկեալ՝ նստեալ առ դըրանըն ողբայիր·
Ո՞ տայր ինձ գէթ միանգամ պահպան Սրովբէն թողոյր ինձ,
Ես ՚ի դըրախտ մըտանէի եւ քաղէի զկենաց պըտուղ,
Ուտէի եւ լինէի ընդ Հրեշտակաց ես անմահ·
Թափէի զմաղձ մահու պըտղոյն, ո՜հ, դառնահա՜մ դառնա–
[հա՜մ։
Ե՛ս եմ Կենաց ծառն, ո՛վ Ադամ, ես եմ պտուղն անմահու–
[թեան·
Արի՛, մատի՛ր, եւ ճաշակեաց, անմահացիր յաւիտեան·
Ես մեռուցի մահուամբ ըզմահ, զմարդն արարի անմահ Աստ–
[ուած·
Սերովբէի սուրն վերացաւ, մօ՛տ ՚ի դըրախտըն համարձակ։

Փութայի՛ր եւ դու ըղձեա, ո՛վ Նախամայրդ Եւայ,
Ողջ հատոյց ըղձոյդ պարտիս զաւակդ ամբիծ Մարիամ.
Որ ծնաւ զիս կոյս յարդանդէ եւ արդ Փրկիչ քեզ առաքեաց.
Ես մարմնոյս զարշապարօք առեալ 'ի քո դըստերէդ,
Կոխելով ջախջախեցի ըզգլուխ օձին այն պատրիչ.
Որ պըտղովըն ցանկատես աստուած լինել զքեզ յուսացոյց:
Պարծի՛ր դու եւ բարձրացի՛ր օրիորդիդ խոնարհութեամբ.
Մուտ 'ի դրախտըն երկնային, զոր տընկեցի իմով արեամբ.
Զձեռըն քո յի՛ս ձըգեա քաղէ զպըտուղն անմահութեան.
Ես եմ, Եւա՛, ծառըն կենաց, Կուսին պըտուղ զմայրդ ազատ–
[եաց:

Տիպ ճըշգրիտ քաջ Հովուիս, Աբէլ արդար սիրող խաչանց.
Մատուցողդ հաճոյական զոհ 'ի զառանցդ անդրանկածին.
Սիրեցի եւ ես հովիւ լինել հօտին իմ բանաւոր.
Ի վեր թողի զանմոլարն՝ եւ զհետ իջի կորուսելոյն.
Օ՛չ, գտի զայն 'ի Գողգոթա՝ ես զառն անմեղ զենեալ 'ի զոհ.
Յեղբարցն իմ ընտանի, որպէս եւ դու՝ հարազատէդ:
Թափեալ արեանըդ զոչումն յերկրէ բողոք ամբարձ առ իս.
Հասեալ կամ այսր աւադիկ ընդ քեզ ընդ այն դատ առնել այժմ.
Վասն արդարոյդ եմ եկեալ՝ ե՛լ դու, Կայէն մնասցէ աստ:
Թախծելո՛յն կարի սըգով ընդ կըրտսերոյն մահուանն ան–
[պարտ.
Մխիթարիչ Որդի եղեալ, Սէթ նախահօրդ 'ի կերպարան.
Համատիպ քեզ՝ ես Ադամայ որդի ծընայ բերկրութեան.
Եւ տես դու նըմա՛ն եմ, ճշգրիտ եղէ Որդի մարդոյ.
Դու մխիթար Ադամայ, իսկ ես հանուր աշխարհի:
Ձեռն 'ի ձեռն տըւեալ ելէք, ընդ Ենովսայ նահապետին.
Որ անյուսիցն 'ի միջի՝ միայն յուսացաւ կոչել ըզՏէր.
Լուայ յերկնուստ եւ աւասիկ հասի նըմին յայցելութիւն:
Առ ընդ քեզ եւ զողջ քո զարմս որդի գրելով Տեառն Աստուծոյ.
Ոչ երբէք ոչ թիւրեցան 'նդ մարդկան դստերս կայենազարմ.
Դու միա՛յն մարդ երեւեալ ընդ մէջ մարմին եղեալ մարդոց.
Զոգի աստուածատիպ անեղծ 'ի քեզ պահեալ միշտ.
Արդար եւ երկիւղած, Նոյ կատարեալ 'ի մէջ ազգիդ.
Հանգուցիչ եղեր անդէն յանարժան գործս աշխատելոցն,
Եւ կազմելովդ ըզտապան՝ ցուցար քարոզ ամբարըշտացն.
Որ ըզբանիւքդ այպանելով՝ աւա՛ղ, քեզ ոչ հաւատացին.
Ջրով սուզմամբ պատուհասեալ՝ անապաշաւ կորեան յերկրէ,
Վրիպեցան 'ի կենաց, օրհնեա՛լ փայտին արդարութեան.
Որ քե՛զ յուսացողիդ Փըրկիչ եղեւ ազատութեամբն.
Անյուսիցն ամբարըշտաց՝ դատապարտիչ եւ պատուհաս:
Քառակոյս եւ ես տապան մի, կերտեցի խաչանըշան:
Ի Գողգոթա կանգնեցի՝ գոլ հանգուցիչ ամենեցուն,
Որ նորին բացեալ թեւով առ հովանեօք պատըսպարին.
Եւ յենուն 'ի նա յուսով իբրեւ 'նմին խաչեալ Փըրկիչ.
Որ յայնժամ 'ի հեղձմանէ ջուրցն ապրեցար դոյզն լաստիւ,
Արդ՝ փըրկութեան մուտ 'ի նաւն եւ նաւապետ քո Փրկիչն է.

Թող 'ի հեղձումըն դժոխոց մնասցեն ոգիք ամբարըշտաց·
Որ ո՛չ հաւատացին կենաց փայտին ազատութեան:

Զհայրենիդ յօժար թողեր, պանդուխտ շրջիլ ելեր վասն իմ·
Երբ կոչեցի յերկրէ քումմէ, դու աներկմիտ լուար ձայնիս·
Կորուսեր եւ զտուն Հօր քոյ առ միայնակ զիս գըտանել,
Աբրահամ մեծ նահապետ եւ լի յուսով հաւատացեալ·
Եկի արդ 'ի դըժոխոց կոչել ըզքեզ, ո՛վ Հայր ազգաց,
Ահա զոր դու հայցեցեր՝ արար Հայրն իմ սիրողապէս,
Պատրաստեալ զիս ողջակէզ ընդ սիրելւոյդ Իսահակայ·
Ամբարձե՞ր զաչըս քոյին անդուստ 'ի լեառըն Գողգոթա,
Տեսե՞ր զիս թեւատարած մերկ 'ի ծառոյ Խաչին կախեալ·
Ու որպէ՞ս նըման ճիշդ էր, որ քեզ ցուցաւ անդ 'ի լերինն,
Ի Սաբեկայ ծառէն կախեալ խոյն յեղջերաց ընդ Սահակայ·
Որ ցանկայիր տեսանել զԽաչին զենումն եւ պատարագ,
Տեսեր զայն Իսահակաւ, լըցաւ խիղճ քո եւ փափագ:
Ես քո եմ չառաւիղ՝ զաւակ ծընեալ առ 'ի զարմէդ,
Ինե՛ւ օրհնին ազինք, որ հանդերձեալ են հաւատալ:
Աւա՛ղ, զի քո որդիք անհարազատ 'ի բնութենէդ,
Վարեցան ընդ իս իբրեւ ընդ օտարի եւ թըշնամւոյ·
Հիւր եկի ես 'ի քո տունն զիս մերժեցին, թողին արտաքս·
Դու զենուլ ըզՄիածինդ, ոչ խնայեցեր վասըն սիրոյդ,
Այլ նոքին զիս ատեցին եւ դատեցին մինչ 'ի մահ:
Ողբա՛ դու զորդիսըն քո, ո՛վ Աբրահամ զի մերժեցան յինէն
['ի բաց·
Հեթանոսք հաւատացին մըտին յերկնից ժառանգութիւն·
Արի՛ դու ընդ Սահակայ, բազմեաց յերկնից արքայութիւն·
Բաց ընդարձակ ըզգոգըդ քո՝ թող գան բազմին հաւատացեալք·
Թող որդիքն անհաւատ ելցեն 'խաւարն արտաքին:

Հե՛զ եւ ընդասուն Յակովբ օրհնեալդ 'ի Սահակայ,
Իսրայէլ կոչեալդ յինէն ընդ ժուժկալելդ գօտեմարտիւ·
Դու զինեւ պինդ փարեցար ուժով ձեռինըդ հաւատոյ,
Քոյդ ըզփառս այլում ազգի թողուլ երբէք ոչ կամէիր:
Ո՛չ զինէն բուռըն հարին, որդիքըն քո թոյլ անպիտան,
Թողին աւա՛ղ, զիս 'ի բաց՝ ետուն զօգուտն օտարոտւոյ,
Ոյք ինձ վաղ ըսպասէին որպէս կանխաւ գուշակեցեր:
Կորիւն եմ ես առիւծու նըման որդւոյդ քո Յուդայի,
Ի նորին չառաւիղէ վերընձիւղեալ առ 'ի Կուսէն·
Ելի եւ բազմեցայ 'ի քառաթեւ գահն իմ փառաց,
Իջի անդուստ 'ի Գերեզման, ուր արդ նընջեմ առիւծանման·
Եւ ո՞ զարթուսցէ զիս, Հայրն իմ ասաց նընջէ, Ո՛րդեակ,
Եւ ես ըզքեզ զարթուցանեմ, հզօր զօրութեամբ փառաւորեալ:
Յակովբ ծառայ իմ սիրելի, գիտե՞ս թէ զի՞նչ արարի ես·
Կապեցի զորթոյս ճըշգրիտ՝ զէշն ազգիդ քո զհաւատացեալս,
Եւ զգընդակէն յաւանակ՝ զեկեղեցին հեթանոսաց:
Լուացի եւ զպատմուճան մարմնոյս անաղտ յարիւն զինւոյ,

Զուարթացան աչք իմ սիրով, հայել 'ի քեզ արդ փրկութեամբ.
Հայեաց Յակովբ 'ի դժոխոց, հայեաց 'ի վեր յիմ տուն Բեթէլ.
Տես կազմեալ քեզ անդանոր Խաչն իմ սանդուխտ յերկրէ
[յերկինս.
Զերծիր ոչ յԵսաւայ, այլ անողոք 'ի բանսարկուէն:
Ագնի՛ւ եւ գեղեցիկ Յովսէփ ընտրեալդ 'ի մէջ եղբարց,
Ցանկալի ծնողիդ աչաց՝ եղեալ նըմին ցուպ ծերութեան.
Ընդ իս ե՛ւս նախանձեցան որդիք հօր քո իբրեւ ընդ քեզ,
Հաց կենաց 'ի Հօրէն առաքեցայ նոցին յերկնուստ,
Որոնեալ ըստէպ ըստէպ 'ի մէջ դաշտին Հրէաստանի,
Խնդացի յուսապատար մինչ ըզնոսին գտի ողջամբ:
Իսկ եղբարք իմ տեսին հեռուստ՝ կորուժանել զիս խորհեցան,
Քամահեալ զկենաց հացիս, ո՜հ, կապտելով զիս կապեցին.
Զպատմուճան մարմնոյս իմոյ՝ ծաղկեայ գեղովըն կուսական,
Ո՛չ անբան ուլուն այծի, այլ իմ արեամբ թաթաւելով,
Կախեցին մերկ զփայտէ, ետես Հայրն իմ ողբաց վերուստ:
Ոչ ողջամբ որպէս զքեզ վաճառեցին զիս յԵգիպտոս,
Այլ սպանին ձեռօք իւրեանց եւ իջուցին մահուն 'գուբ:
Արդ հոգւով իմ զօրութեան՝ քեզ այց իջի գերելոյդ.
Ի բանտէդ խաւարչտին՝ յարեւ կենաց հանել զքեզ,
Տէր կարգել՝ ո՛չ Եգիպտոսին, այլ երկնային արքայութեանն,
Ուրանոր տէրն ընդ ծառայս՝ ծառայք ընդ տեառն թագաւորեն:
Մովսէ՛ս, ծառայդ իմ հեզ, ո՞ւր ես, առ իս ե՛կ խայտալից,
Մի՛ սարսիր յինէն դողմամբ որպէս անդէն 'ի Սինէ լեառն.
Մեղմացան դէմք իմ ահեղ տնօրէնութեամբըս մարմնաւիկ.
Նո՛յն եմ անեղածին լնն 'ի Քորէբ քեզ երեւեալ,
Ի բոցահուր մորենւոջ՝ հրաշիւք պահեալ յինէն անկէզ.
Անդ եւ եթ 'ի յայց իջի չարչարելոցն 'ի յԵգիպտոս,
Իսկ աստ հանուրց աշխարհի եւ խաւարաւ կաշկանդելոցդ:
Հո՛ւր 'ի ցասմանէ Հօր բորբոքեալ յոյժ զօրութեամբ,
Մինչ ներքին 'ի դժոխս իջի՝ այսպէս յերկնուստ կայծակնա—
[թափ,
Այրե՛լ եւ ճարակել զտուն հըզօրին դժոխոց.
Եւ անլոյծ կապեալ ըզնա՝ գրաւել զաւարն 'ի գերողէն:
Գերահրաշ է եղանակ նոր փրկութեանս իմոյ, Մովսէս.
Թէպէտ աստ իշխանաբար բուռըն ձեռամբս Աստուածազօր,
Այլ անդ յաշխարհ միայն մատամբ ես գործեցի խոնարհ
[մարմնովս,
Խաւարն ետես երկուացաւ, կարծեց թէ սոսկ մարդ եմ ես:
Դու յինէն պատուհասիչ Աստուած եղար Փարաւոնի,
Նըշանօք զարմանազան ապշեցուցեր զողջ Եգիպտոս.
Խուճապաւ հաներ անտի զազգ Յակոբեան յազատութիւն:
Իսկ ես՝ տէր Աստուած քո իբրեւ զծառայդ հեզացայ յոյժ:
Զէր ընդ իս հարուած, պատիժ, այլ քաղցր սէր եւ հեզութիւն.
Ընդ խաւարին չօշափելի՝ լոյս աշխարհի ծագեալ 'վերուստ.
Ընդ կարկտոյն անասնածախ՝ ցօղ զուարթարար 'վերայ սիգոյ.
Ընդ հրեշտակին սատակիչ՝ տիեզերաց կենդանատու.

Խաչն եղեւ իմ դաւաղան, Նովիմբ հարի զհին Փարաւոն,
Եւ պատառեալ մահուն ըզծով՝ դիւր ձեզ շաւիղ բացի յերկինս·
Ել 'ի չարատանջ յԵգիպտոսէդ յազատ վիճակ·
Որ անճաշակ մնացեր դու 'ի յԱւետեաց երկրին բարեաց·
Հրաւիրեմ ըզքեզ, Մովսէս, 'ի ճաշ երկնից արքայութեան:

Հետեւողըդ Մովսիսի եւ քան ըզնա ցուցեալ յաղթող,
Անուանակիցդ իմ Յեսու, պարտիչ ազգին Ամաղեկայ·
Տարածմամբ աղօթանուէր առ իս բազկացըն Մովսիսի,
Նմին նըման եւ իմ ելեալ մարմնով 'ի լեառըն Գողգոթա,
Ի վերայ թեւոց խաչին, որ յենարան եղեւ ինձ դիւր·
Զբազուկ իմ պարզի յաղերս առ հաշտութեան Հօրն ընդ
[մարդիկ·
Եւ զինու վառեալ անդուստ՝ իջի յայս դաշտ իբրու ըզքեզ,
Խորտակել ըզզօրութիւն արդ անմարմին Ամաղեկայ,
Քանդել զդըժոխս՝ հին Երիքով, որ այլ չ'կանգնի յաւիտեան:
Այլ զի՞նչ աստ գանգատ բերից այն քո զազգէն թերահաւատ,
Զմեծ ողկոյզն առհաւատչեայ՝ ձիր Աւետեաց երկրին պարարտ,
Զոր ուսով բարձեալ բերեր, զի հաւատան քեզ աներկբայ,
Թէ տէր Աստուած տայ Յակովբայ ժառանգութիւն Սուրբ
[երկրին:
Աւին զայդ մերժող ոգիքն եւ 'ի լծակէ խաչին կախեալ,
Ծըմլեցին քարաձիգ որպէս ըզքեզ անդ 'ի բանակն·
Եթէ ոչ ամպով փառաց պաշտպանէի չոյտ առ վրանօք:
Չ'իմացան խելաթափքն եթէ պարգեւ էր այն 'վերուստ,
Որ քաղցրախորժ ճաշակմամբն՝ հաղորդ առնէր երկնից բար-
[եաց:
Դու սակայն, որ զօրացեալ եղեր յուսով անտարակոյս,
Խրախուսեալ եւ զԻսրայէլ մուծեր յերկիրըն կաթնաբուղխ·
Ժառանգող եղեր նըմին, յորմէ չուառքըն զըրկեցան,
Արժան է քեզ եւ այժմիկ ժառանգ լինել երկնից բարեաց:
Զօրավար ես, քաջդ Յեսու, զքեզ զօրավար կացուցանեմ·
Ես յառաջոյ՝ դու 'ի յետուստ վարեմք տանիմք ըզհօգւոց
[բանակն:

Որ ձայնիւըդ մեծագոչ զիս կոչէիր դու անձանձիր,
Արի՛, Տէր, փրկեալ զգերեալքս եւ մի՛ մերժեր ըզմեզ իսպառ·
Ողորմեա՛ մեզ, ո՛վ Աստուած, օրհնեա՛ եւ ցոյց զերեսըս քո·
Աւասիկ հասի առ քեզ, Դաւիթ, հայրիկդ իմ ըստ մարմնոյ,
Այս քո թախանձ սրտագին շարժեաց ըզգութ սիրոյ Հօրն իմ·
Զիս ըզԲան իւր առաքեաց բուժել զաշխարհ 'ի մեղաց·
Հանդերձեալ են տեսանել ըզփըրկութիւն իմ ծագք երկրի,
Իշխանք եւ թագաւորք խոնարհելով երկրպագել,
Ծառայել ինձ երկիւղիւ եւ համօրէն ազգք եւ ազինք:
Ո՛հ, ապառումըն Յակովբ չ'ետես միայն զիմ փըրկութիւն,
Զդէմս դարձոյց, թիկունս եդ եւ զաչըս իւր կափոյց յինէն·
Արար զայն ամենայն, զոր դու կանուխ գուշակեցեր·
Թագոյց 'ի նանիր ինձ որոգայթ խարդաւանօք,

Եւ ՚ի զուր տարապարտ գիս նախատել բերան եբաց·
Հատո՛յց չար ընդ բարւոյ, սիրոյս փոխան զատելութիւն,
Խորհեցաւ անժառանգել զանձն իմ յորդւոց ՚ի մարդկանէ·
Ծակեաց զոտս իմ եւ ձեռս, եւ պիրկ ՚ի փայտ սեւեռեաց,
Զարդարիչըս մերկացոյց եւ խայտառակ եհան ՚ի խաչ·
Ե՛տ ՚ի կերակուր ինձ ըզլեղի դառնաճաշակ,
Արբոյց ծարաւելոյս քացախ փոխան ջրոյն անուշակ·
Ի խաչէն իջուցեալ՝ ՚ի գբի ներքնում ետ խաւարին։
Արդ զօրութեամբ հոգւոյս եկի հանել ՚ի գբոյդ խաւարային,
Ել ՚ի վեր, ո՛վ ցանկացող դու փրկութեան Աստուածորդւոյս·
Թող իջցեն այդըր նոքա, որ զայսօսիկ ինձ հատուցին։
Հար այժմիկ ընդ առաջ իմ ըզտասնաղիդ քո օրհնութեան,
Որ առաջի Տապանակին կաքաւէիր ուրախ ուրախ։
Ես կենդանի Տապանակն եմ, գիտե՛ս Դաւիթ,
Յի՛ս է ծաղկեալ գաւազան եւ մանանայն Կենաց հացին·
Յի՛ս է Հին եւ Նոր ուխտին Կտակարան, Աւետարան։
Զեւ այգուն հասելոյ ժամէ զարթնուլ ինձ Առիւծիս
Զպահապան զունդըս զինուորաց պակուցանել մռընչելով
Որ գողացեալ համբաւեցին տեսցեն՝ Յարեա՛ւ զոր խաչեցին։
Իսկ դու կրկնէ զայն բան, Դաւիթ, զոր դու հոգւովդ տեսա– [նէիր
Ցընծացա՛յ ես ՚ի բանըս քո, որպէս այն որ գտանէ աւար [բազում։
Տե՛ս, Դաւիթ, քանի շատ են, կարե՞ս թուել զաւարն իմ·
Զայդ ամէն տանիմ յերկինս եւ Հօրն իմոյ տամ պարգեւ։
Իսկ թէ ո՞ւր էր դըժոխապետըն սատան մինչ յաղթական [Նազովրեցին,
Վարէր տանէր զաւարըն իւր, Խաչին դըրօշն էր առաջնորդ·
Նա ՚ի մութ խորշ մի ղօղեալ՝ դիտէր զելիցըն վախճան։
Մատուցեալ հրեշտակք չարին, ասեն զի՞ կաս, տէր սատայէլ,
Թափուրացան դըժոխք համայն, առան տարան եղեւ ամէն·
Միթէ վա՞տ եմք եւ անարի թողուլ զաւարըն մեր այնպէս,
Առանց կռուի եւ քաջութեան զրաւէ տանի թըշնամին,
Եւ մեք նըստիմք յողբ եւ ՚ի լաց որպէս կանայք եղերական։
Օ՛ն փութացիր մեծ զօրավար, տուր հարկանել փող մարտի
Կոչեա՛ ըզզունդըն լէգէոն եւ ըզդիւաց ջոկս համօրէն·
Պընդեսցուք զհետ աւարին, մարտ մըղեսցուք քաջաբար,
Մեք շատ եմք, անշուշտ յաղթեմք, վա՛շ թէ կալցուք զՆա– [զովրեցին·
Ո՛վ է այն Որդի մարդոյ, զոր խաչեցին ընդ աւազակս·
Որ պարծէր խօսէր առ իւրսն թէ յաղթեցի ես աշխարհի։

Ո՛չ, ասէր բանգէտ սատան, դուք չըգիտէք զանցելոյն բան,
Յիշեցէք ըզՓարաւոն, որ պընդեցաւ զհետ Մովսիսին,
Եւ ահեղ իւր բանակօք հեղձաւ ՚ի ծովըն կարմիր։
Դուք չըգիտէ՞ք քան ըզՄովսէս՝ Նազովրեցին հզօր է եւ բուռն·
Որ զՂազարու հոգին կոչեաց, ձայն իւր հասաւ սանդարամետ·

Հոգին ազատ էլ եւ գնաց, եւ ո՞ կարաց արգելուլ.
Եթէ պնդեմք զհետ աւարին գուցէ հասցէ մեզ պատուհաս,
Անդրադոյն քան զդըրժոխս հեղձնումք 'ի ծով անդնդային.
Դուք չըյիշէ՞ք զխոզաց բան, յորս մըտաք դուք իբր ապաստան,
Խոզեանն դիմեց հեղձաւ 'ի ծով, ելին եկին դեւք ջրաթաթախ.
Ո՛չ, ես խելամուտ, հեռատես եմ, չ'կամիմ վարել զայդ պայ-
[ք ար,
Գուցէ յայնժամ իսպառ բարձցի արքայութիւն մեր դըժոխոց:
Թողէ՛ք թողէ՛ք ողբամ զաւարն, զանգիւտ գանձս իմ զոր
[կորուսի,
Ողբա՛մ զանկումն իշխանութեանս, այլ յաւիտեան չ'կարեմ
[կանգնիլ:
Դուք լըսեցի՞ք թէ զինչ ասաց Նազովրեցին Առաքելոյն,
Ետու ձեզ իշխանութիւն կոխել 'նդ ստիւք զօձս եւ կարիճս.
Վա՛հ, ես սատան եւ դուք հրեշտակք օձ եւ կարի՞ճ լինիմք
[մարդկան,
Եւ մարդիկ զմեզ կոխեն եւ հաւասար լինիմք հողին.
Վասըն մե՞ր ասաց Դաւիթ թէ թշնամիք Նազովրեցւոյն
Հող կերիցեն ոտից մարդկան, անէ՛ծք, անէ՛ծք մեզ յաւիտեան:
Մատեաւ յայնժամ դեւ մի ճարտար, որ միշտ շըրջէր ընդ
[Յիսուսի
Ասաց, ո՛վ Տէր, քաջալերեա՛ց, զի՞ բան խօսիս անմըխիթար,
Եւ այդչափ յուսահատիս թէ մեր դըժոխք աղքատացաւ.
Նազովրեցին սակաւ տարաւ, եւ շա՛տ բաժին եթող մեզ:
Ջաւետարան ես կարդացի, զոր քարոզէր Յիսուս, գիտեմ.
Քանի՞ անձուկ եւ նեղ գըծէր զուղին երկնից արքայութեան,
Եւ քանի՞ մեծ ընդարձակ լայն ճանապարհ եթող մեզ,
Մեք շնորհիւ ձեր մեծութեան շատ շոյտ լընումք դըժոխոց
['տուն:

Ես քաջ գիտեմ զմարդիկ, որ չըգնան նեղ ճանապարհ,
Զի կարի՛ մարմնասէր են եւ մեղկացեալ թուլամորթ,
Եւ առ չարըն հակամէտ 'ի բնութենէ ասաց Աստուած.
Հոգին մեծ է եւ առաւել քան զմարմին, ասէ Յիսուս.
Այլ ո՛վ կամի զայդ լըսել, թող թէ առնել, դըժուարի՛ն բան:
Եթէ այսպէս, մեր ժողովուրդ բազում եւ շատ են, ո՛վ Տէր,
Որ ասես աղքատացաւ՝ հարստանայ դըժոխք մեր.
Եւ դարձեալ թագաւորես եւ հաստատի իշխանութիւնդ:

Ո՛չ, ո՛չ, ես յուսահա՛տ եմ յուսահա՛տ, զիս մի՛ ջա-
[նայք ըսփոփել,
Միթէ կարծէ՞ք խաւար հոգիք փառք եւ պարծանք են դըժոխոց.
Ես համարիմ զնոսին անպէտ, անարգ անօթ տանն իմում:
Դուք մի՛ տըքնիք զխաւարային հոգիս բերել առ խաւարն,
Որչափ դոքա յաւելուն, այնչափ կըկնին մեր տանջանք:
Ես խաւար եմ, լոյս խընդրեմ, զորդիս լուսոյ բերէ՛ք առ իս,
Զի՞նչ օգուտ 'ի խաւարէն, խաւարն արդէն մե՛րն է մեր.
Եւ ես կամիմ, որ Յիսուսի, բաժնէն խըլէք բերէք ինձ,

Ընտրեալ հոգիք, լուսոյ որդիք, այդ են պարծանք մեր տէ–
[րութեան.
Ո՞հ, այդ ամէն անգիւտ գանձք աւարեցան 'ի հըզօրէն:
Նազովրեցւոյն հեծանոցն՝ հոսեց մաքրեց զկալ դըժոխոց,
Զատոք ցորեան ժողվեց տարաւ, զյարդըն թողուց անշէջ
[հըրոյն:
Ո՞ւր Ադամ, ո՞ւր Եւա, Աբէլ եւ Սէթ եւ Ենովս.
Ո՞ւր Նոյ արդար եւ Աբրահամ, ո՞ւր Իսահակ եւ Յակովբ,
Երկոտասանք Նահապետօք բարգաւաճեալ, ազգին փառք,
Հապա Յովսէփ այն գեղեցիկ եւ մեծազօրըն Մովսէս,
Յեսու մեծ զօրավար եւ Սամուէլ եւ դատաւորք Իսրայէլի.
Դաւիթ եւ Սողոմոն, որոց թակարթ ես լարեցի,
ԶՈղորմեայն ասաց Դաւիթ եւ Սողոմոն զՈւնայնութիւնն,
Ո՛չ, ո՛չ ասեմ ես յաւիտեան, զի կամակոր եմ եւ հպարտ:
Ողորմած Աստուած ներեց, զի ես չասի զՈղորմեայն.

Այլ ես դարձեալ պատուէր տամ ձեզ, ո՛վ կամարար
[հրեշտակք եւ դեւք,
Մի՛ աշխատիք դուք ընդունայն չահ եւ վաստակ համարելով,
Զխաւար հոգիս ածել բերել, ճանճով լընուլ ըզդըժոխս:
Ես խաւար եմ աղջամըղջին եւ դուք որդիք խաւարի,
Եւ զի՞ զխաւար բերէք բարդէք դուք 'ի վերայ խաւարի.
Խեղդի խաւարն 'ի խաւարէն եւ չըքանայ մեր գոյութիւն.
Փակե՛մք փակե՛մք ըզդըժոխս ընդդէմ խաւար ոգւոց մարդ–
[կան,
Ազատ լիցի մեր բնակութիւն, զի սեպհական մեզ եդ Աստուած.
Թէ պէտք են մարդկանց դըժոխք՝ թող դատաւոր տէր հոգայ
[դայդ,
Միթէ անհուն 'ի տիեզերս չ'կա՞ն տեղիք պատժելոց:
Իսկ ես եմ ճարտարապետ, հիմն ես դըրի ըզդըժոխոց.
Եւ ո՞ գիտէր թէ իմ դըժոխք՝ ծնանէր երկնից արքայութիւնս,
Արձակէր զկապեալ գերիս, եւ զիս կապէր 'ի հազար ամ:
Զմարդն հանէր մինչեւ յերկինս, տանէր դընէր անկելոյս 'տեղ,
Եւ զիս կապէր թողոյր այսպէս յաւիտենից յանել բանդ:
Այլ մի՛ ջանայք, անզօր ոգիք, զիս արձակել 'ի կապանաց.
Հըզօրին ձեռք զիս կապեաց եւ ո՞ կարէ քակել զայն,
Թողէ՛ք թողէ՛ք 'ի կապանս իմ, զի ողբացից ես յաւիտեան.
Արդարութիւն եկն յաշխարհ 'ի դատաստան ընդ իս ընդ մարդ,
Որ աշխարհի իշխան էի, Արդարութիւն ընկէց արտաքս:
Խոստովանիմ, տէր Արարիչ, արդարութիւնդ զիս դատեց:
Այլ զի՞ է, զի՞ չըկարեմ, ես խոնարհիլ ասել ասել մեղա՛յ.
Ո՛չ, քանզի վէս եմ, ամբարտաւան, ինձ հակառակ է Աստուած:

Իսկ դու Դաւիթ ցընծասջի՛ր, թող սատանայ նըստի, ողբա.
Պինդ կըքեա՛ ըզտասն աղիդ, դու զա՛րկ դարձեալ ըզնոյն բան,
Ցընծացա՛յ ես 'ի բանըս քո, որպէս այն որ գըտանէ աւար
[բազում:

Աստ ահա փոխեմ, Մանկունք, եւ ես երգոյս իմ զեղանակ,

Յարեա՛ւ Աստուած փառօք, որ սիրտ արթուն ննջէր յերկրի·
Հարկանէ՛մ ուրախալի զԴաւթեան քընար աւետաւոր·
Ցըրուեցան իւր թըշնամիք դատապարտողքն ըզնա 'ի մահ։
Ծափահարէ՛ք, ո՛վ հեթանոք, եւ ցընծացէ՛ք դուք առ Աստուած·
Օրհնեցէ՛ք, որ եւ թեւօք Խաչին իւրոյ Ինքն 'ի բարձունս
Առ զաւարն 'ի գերողէն՝ դարձոյց անդրէն 'ի հայրենին։
Վասն որոյ յաղթանակին հընչեմ զփող մեծաբարբառ,
Նոր Յեսուն Փըրկիչըն մեր արկ 'ի կործան զհին Երիքով·
Ահարկու ձայնիւն իւր, որ 'ի Խաչին անդ արձակեաց։
Նոր Մովսէ՛ս հրաշարուեստ գաւազանաւըն խաչանիշ,
Պատառեալ մահուն ըզծով՝ հորդեաց որդւոց մարդկան շաւիղ·
Սուզեցաւ հին Փարաւոն եւ զօռ իշխանն աշխարհական·
Եւ եբա՛ց նորագոյն մեզ ճանապարհ ազատութեան·
Որ ոչ եւս տանի դըժուար ընդ անապատ Սինէական,
Ուր կարօտ հացի եւ ջրոյ կրէր տըրտընջող հին Իսրայէլ·
Հապա ո՞ւր, 'ի Սի«ն վերին, յոր լիութիւն է հոգեպէս։
Անդանօր Ահարօնի քոյրն ըզթըմբուկն առեալ 'ի ձեռն,
Պարագլուխ լեալ կանանց՝ երգէր ըզբան օրհներգութեանն։
Իսկ աստէն ընդ ընկզմել Փարաւոնին աներեւոյթ,
Դասագլուխ լինէր կանանց Մագթաղենին Մարիամ,
Որ դեգերէր 'ի պարտիզին եւ պարտիզպան կարծեալ ըզՏէրն·
Անձկանօք հարցանէր, տէր դո՛ւ բարձեր, արդեօք ըզՏէրն·
Ասա՛ ինձ թէ ո՞ւր եդեր, զի ես առից ըզնա ինձ·
Ո՛, ո՛ Մարիամ, միթէ Յիսուս քո բաժի՞ն է, որ զայն առնուս
[դու միայն·

Եւ երբ Յիսուս աղու ձայնիւ կոչեց զանուն, Մարիամ,
Մագթաղենին խանդաղատեալ փարիլ կամէր զոտիւք սիրոյն,
Դեռ աստ եմ, Մարիամ, մի՛ խուճապեր մերձենալ յիս·
Ե՛րթ, ասէր, վաղագոյն դու առ եղբարսն իմ թափառեալ·
Ասա՛ տեսի ես ըզՏէրն 'ի պարտիզին, Յարեա՛ւ Յարեա՛ւ։

Ջուարթունն, որ 'ի ծնընդեան հովուացըն տայր մեծ ա—
[ւետիս,
Նոյն եւ արթուն զգաստից կանանց հընչէր յայգուն տարփո—
[ղելով,
Ո՛չ 'ի լուր նախ ուստերց, այլ դըստերացըն Եւայի,
Յարեա՛ւ, եւ զի՞ խընդրէք ըզԿենդանին ընդ մեռեալս·
Եւ լայք դառնապէս զայն, որ սըրբեաց Մարդկան զարտօսր·
Սուգ սըրտին ձեր թախծալից՝ թող փոխեսցի խընդութիւն,
Սըրբեսցին յաչաց կաթիլք, որ առ Խաչիւն ցօղեցիք։
Ճպիդ ե ՞,ըմիբ Ե՚խ։ժ,ժի պ Ս մ բբպպրեիեց,ը,, ժոնէն
Սըգաւոր մայրըն Մարիամ խոցեալ 'ի սուրըն խորամուխ,
Յարութեամբ Որդւոյն անդէն վիրաց խոցուածքըն բուժէին,
Մագթաղենւոյն չ՚ետ համբուրել, Մօրըն խնայեա՞ց ըզհամ—
[բոյր։
Հօտ ցըրուեալ ոչխարացն ընդ քաջ Հովուին 'ի հարկանելն,
Աւետեօք Մարիամու, դարձեալ 'ի մի ժողովելով,

Խընդալից եղեն յոգիս ամենեքին յուսապատար.
Նա՝ յուշ բերեալ անդանօր զՎարդապետին կանխագոյն ճառ.
Ես թէպէտ մատնեալ կամաւ 'ի ձեռն ազգին այն դըժկամակ,
Մեռանիմ անպարտօրէն եւ զխս դընեն 'ի գերեզման.
Այլ եւ յետ երից աւուրց յառնեմ կանգնիմ ես կենդանի,
Նորահրաշ մանկութեամբ, նոր նորոգիմ արծւոյ նըման:
Գերարփին լոյս համասփիւռ պահ մի ծածկեալ 'ի ծոց երկրի,
Թաղմամբ երեքօրեայ՝ յինքն ամփոփեաց ըզշառաւիղս,
Եւ դարձեալ ճառագայթող Արեւն ելաւ 'Գերեզմանէն.
Զուարթաբեր արշալոյս նոր ծագեցաւ տիեզերաց.
Փարատեալ մերժեցաւ մութն եւ ըստուերն 'աշխարհապատ:
Նըման փախուցելոյ մարգարէին այն Յովնանու,
Տէրըն եկաց 'ի սիրտ երկրի եւ մուտ 'ի փոր վիշապ ձըկան.
Սրաժանիք, աշխարհակուլ բերան մահու լայնաբացեալ.
Ասաց, վա՛շ, ըմբռնեմ, եկն 'ի բերանս Որդին մարդոյ,
Այլ ըմբռնել ոչ զօրեց, խորտակեցան ժանիքըն իւր.
Եւ զի ոչ 'ի Նորն Ադամ եգիտ ըզմեղս հնոյն Ադամայ.
Յոր թափեաց ըզմահու թոյն եւ մահացոյց ողջ ըզծնունդս:
Հօր որսորդն ամենարուեստ իւր կուսական դոյզըն խայծիւ,
Զկարթըն ձգեաց 'ի մահու ծովն եւ անդ կալաւ ըզկէտըն մեծ.
Պատառեաց ըզխոր կըզակն՝ 'ի դուրս եհան ողջ ողջ հոգիս:
Որ բանիւ տեսանողին երդնոյր 'ի յանձն իւր կենդանի,
Շօշափել յաւուր միում ըստորին վայրըս երկրի մերում.
Աւասիկ զօրեղագոյն զաջն իւր ձըգեալ զԲանն 'ի վերուստ,
Շօշափեաց ած ըզբըռամբ ըզմեծ վիշապըն բանսարկուն,
Զախջախեաց զգլուխ նորին, թաւալեցաւ կիսամեռ,
Ցընծացին հոգիք սրբոց, համբուրեցին զՓրկչին աջ.
[զուկըդ փրկող:

Գոչէին օրհնեա՛լ է Հայր, օրհնեա՛լ Որդին, օրհնեա՛լ բա–
Մեռուցեր ըզմեր ոսոխն, որ դատախազ կայր միշտ մեզ:
Որ հակառակ կայր արդարոցն՝ չըթողոյր զմեզ լինել ընդ քեզ.
Արդ ազատեա՛լ 'ի խաւարէն, տար 'ի տուն Հօրդ լուսաչէն.
Զի ասացեր ուր եսն իցեմ, անդ պաշտօնեայք իմ եղիցին:
Յուդայի 'չառաւիղէն յաղթեաց կորիւն Առիւծու,
Զայն ահեղ մըռընչելով՝ դող առ սաստիկ սանդարամետ.
Զարթեա՛ւ որպէս 'ի քնոյ Տէրն, որ նընջէր 'ի սիրտ արթուն
Զ'առ Խաչիւ արբեալ զգինին, թափեաց յիւրմէն իբրեւ հըզօր:
Որ մահուամբըն վայրիկ մի զաչըս կափոյց իբրեւ 'ի քուն,
Միթէ ո՞չ այլ եւս անդրէն յաւելուցու յառնել 'ի վեր:
Հատն ատոք ցորենոյն՝ յանդաստանէ Կուսին բուսեալ,
Ի կալատեղ Գողգոթային կասեալ Խաչին կամնասալիւք,
Նըման սերման յերկիր անկաւ, մեռաւ որպէս հատն ընդ
[հողով.

Հրաշալի՛ էր այն հատիկն, զոր ձեռըն Հօր ցանեց երէկ,
Եւ այսօր հատն 'ի հողէն բուսաւ փընջովք բազմապատիկ,
Մի հատիկ էր որ մեռաւ, զանթիւ հատիկս կենդանացոյց,

Բազմազոյն առատաբեր արդիւնս գործեաց ըստ իւր բանին,
Անհամար նընջեցելոց պըտղովք 'ի կեանս բարգաւաճեալ:
Որ առ Խաչիւ կացեալ հանդէպ տիրադրուժիցըն խօլ խուժանն,
Կախելոյն, ո՛հ, ըզփայտէն՝ վա՛շ կարդային շարժեալ ըզ- [գլուխս.
Զամօթի հարան խսպառ եւ կորակնեալ եղեն գըլուխք,
Մինչ տեսին զոր քակեցին զտաճար մարմնոյն խաչի մահուամբ,
Զայն շինեաց զերիս աւուրս ճարտարապետըն Յիսուս:
Նա՝ պաշտպան եկաց Որդւոյն եւ Հայրըն իւր դատաստանաւ,
Զ'առ 'ի նեղչաց զերծուցեալ՝ ծանոյց համայն աշխարհի,
Թէ Խաչեալ մեռեալ Յիսուս, Աստուածորդի է ճշմարիտ,
Եւ զհանդէս արդարութեան Խաչի նորին՝ ցոյց փորձողացն:
Վասն որոյ նախ առ 'ի մէնջ միշտ մատուսցի քեզ օրհնու- [թիւն,
Սիրողի Հօրըդ մերոյ, որ յաղթելով 'ի գթութենէդ,
Առ սիրոյ մարդոյն անկեալ՝ ըզսիրելիդ մատներ 'ի մահ.
Իբրեւ թողեալ 'ի խնամոցդ՝ թողեր 'ի ձեռըս թըշնամեաց,
Զարչարեցի՛ն չարչարեցի՛ն, անձն բոլոր լըցաւ վիրօք.
Զի նորա մարմնոյն վիրօք՝ բըժըշկեսցես դու ըզվէրս
Կիսամահ անկեալ Մարդոյն, որ իջանէր յԵրիքով,
Եւ 'ի սրոյ աւազակաց վիրաւորեալ հեծէր ողորմ.
Որ 'ի կերպըն գըթալի եւ նուազ ձայնին աղաչելոյ
Զ'ածին զութ հայել երբէք եւ լըսել անփոյթարարքն:
Ձեռըն նոցին ապիկար՝ չզօրէր ըզվէրս նորին բուժել,
Եթէ ոչ 'ի քէն, ո՛վ Հայր, Սամարացին ելանէր յայց.
Եւ ո՛ կարէ չափել զսէրդ, զոր սիրեցեր դու զաշխարհ,
Մինչ ետուր ըզսիրելիդ անձին քոյոյ առ 'ի մահ.
Որ յարիւն անպարտ Որդւոյդ, կենդանասցի մեռեալ աշխարհ.
Եւ այսպէ՛ս ցուցեր առ մարդ զանհուն սիրոյդ քո ըզչափ:
Այլ եւ քեզ Որդւոյդ անմահ՝ մարմնով առ մեր մահացելոյդ
Նուիրեսցի յաւէտ եւս շնորհ 'ի փըրկելոցըս քո արեամբ,
Որ սիրով դու եղանիլ մարդ 'ի Կուսէն ոչ շատացար.
Նա եւ անբաւ զըրկանաց քո հեզութեամբըդ տանելով,
Ի ձեռաց ապաշնորհաց, ո՛հ, եւ ըզմահ ճաշակեցեր:
Թալկանամ, ո՛վ, երբ ըզքոյդ կիրս նըկատեմ, խաչեալդ [Յիսուս,
Զարտասուելն 'ի պարտիզին եւ զընբռնումըն կամօվին,
Զկալըն քո 'ի յատենի դատաւորաց լուռ անմռունչ.
Զհարուածով զանին ձաղկիլն 'ի զինուորացըն դըժընդակ,
Զապտա՛կն, ըզփուշ պըսակն եւ զթուքըն պիղծ՝ անարգանաց,
Զխաչակրութիւնդ 'ի Գողգոթա եւ զքայլ ոտիցըդ լըքեալ,
Զտարածումդ Խաչի սեղան եւ զուժգնապիրկ սեւեռումն,
Զբարձրանալն յերկրէ 'ի Խաչ՝ կալ նըշաւակ աշխարհի,
Զվէր կողի քո տիգախոց եւ զպատանիլդ իբրեւ մեռեալ,
Եւ կենդանւոյդ ըզթաղումն 'ի գերեզման մահացելոց:
Այս քո վըշտաց յիշատակ եւ Խաչի մահ չարչարելոյդ,
Զոր պատմէ, Աւետարան եւ ես կարդամ զմահուանդ ճառ.

Յիշե՛մ եւ վըշտակրիմ, այլ եւ ցընծամ ընդ փրկութիւնդ·
Զոր ցուցեր 'ի մէջ երկրի դու նորահրաշ եղանակաւ:
Ո՞ ետես եւ ո՞ լուաւ թէ լոյսն Աստուած գայր՝ մեր յաշխարհ·
Լոյսն 'ի Կուսէն ծնանէր մարդ, Աստուած լինէր Որդի մարդոյ,
Եւ 'ի վերջոյ երթայր կամաւ 'ի Խաչի մահ եւ Գերեզման·
Գերեզմանէն յառնէր փառօք, այսպէ՛ս կընքէր զԽաչին ճառ:
Ես արդ անկեալ ահիւ 'ի ծունկս՝ երկրպագեմ, Գերեզմանիդ,
Ուր տարրացար դու մարմնովդ զիս դըրկեցեր 'ի տապանիդ·
Զի զթաղեալս մեղօք 'ի հող քո յարութեամբըդ վերածես:
Ո՞վ, Գերեզմա՛ն, Գերեզմա՛ն, որ մահու դրան կափարիչն ես,
Եւ երկնից արքայութեան՝ դուռըն մըտից եւ ճանապարհ·
Յամէն ազգաց եւ աշխարհաց երամովին դիմեն դան,
Թէ հարցանես՝ թէ ո՞ւր երթայք, ասեն գնամք յԵրուսաղէմ·
Քրիստոսի Գերեզմանին երկրպագել մեք ուխտ ունիմք·
Կա՛ց դու հանդէպ Գերեզմանին տես դու ո՞րպէս հոգւով ըղձիւ·
Համբուրե՛ն համբուրե՛ն զվէմն անշարժ եւ կենդանի·
Եւ հաւատան քեզ, ո՛վ Տէր, թէ դու մեռար, թաղեցար աստ·
Վա՛շ, մեռելոց աշխարհին, դու կեանս ետուր քո Յարու—
[թեամբդ·
Անշա՛րժ մնասջիր, Գերեզման, Փրկչի մահուան յիշատակ:

---o---

# ՆԱԽԱՑՈՅՑ ՊԱՏԿԵՐ ԻՄԱՍՏԻՑ

## ՎԵՑԵՐՈՐԴ ԵՐԳՈՑ

---o---

ՍԿԻԶԲՆ երգոյս յուշ առնէ նախ զսէր Հարսին սգազգեաց եւ Փեսային հեռացելոյ․ որ զկնի Յարութեանն երեւի բազմիցս եւ Սողոմոնեան Երգոց Երգոյն ձայնիւ աւետիս տալով՝ մերժէ 'ի նմանէ զվարանական սուգն եւ հաւատարիմ առնէ նմա զիւր Յարութիւն:

Հանէ զՄանկտին 'ի լեառն Ձիթենեաց․ Նկարագրութիւն Համբարձման Քրիստոսի եւ հանդէս Հօր Աստուծոյ Հրեշտակաց տօնակատարութեամբն՝ այլովքն հանդերձ:

Ի լեռնէն Ձիթենեաց հրաւիրէ կրկին 'ի Սիօն վերնատուն․ ուր զգերազօր Հոգւոյն գալստենէն․ զբազմադիմի շնորհաց նորին՝ երգէ հոչակելով եւ գերազանց ցուցանէ զարդիւնս Հոգւոյն․ որով լցան իմաստութեամբ տգէտ Աշակերտքն եւ զօրացան լքեալ ոգիք նոցուն:

Հայցուած առ նոյն Հոգին Աստուած ինքնազօր ընդունել 'ի նմանէ շնորհս ճշմարիտ գիտութեան:

---o---

# ՀՐԱՒԻՐԱԿ
# ԵՐԿՐԻՆ ԱՒԵՏԵԱՑ

---

## ԵՐԳ ՎԵՑԵՐՈՐԴ

Բե՛ր ինձ արդ նուագեցից Հարսին ըղձալի եւ փեսային,
Եւ զՄանկանցն առագաստի, զնորածնեալ Եկեղեցւոյն,
Հաւատով պսակաւորեալ ընդ փեսային յարուցելոյ.
Հրճուէր Հարսըն հոգեպէս, մինչ առ ինքն էր փեսայն Յիսուս։
Այլ աւա՜ղ, ժամ հասեալ էր, որ վերանայր անձկալին.
Ուստի ստէպ կարօտելոցն՝ Ինքըն զաւուրս քառասուն,
Երեւէր եւ ըսփոփէր զոգիս նոցին ըղթախծալից.
Եւ իբր Արեւ լուսաբեր՝ ծագէր դիմաց նոցին նըսեմ,
Հալածէր առ 'ի նոցունց ըզմութ սըգոյն վարանական։
Նա երթեալ 'ի Գալիլիա՝ Հովիւըն քաջ եւ անձնադիր,
Նըստեալ փողէր քաղցրալուր, ձայն արկանէր փոքրիկ հօտին.
Որ թափառէր աստանդելով թագուցանէր զինքն 'ի գայլոցն։
Զայն առեալ դիմէին անդըր զառինքըն հովուասէր,
Կարօտեալ՝ Վարդապետին աղին կենաց անուշարար,
Որպէ՜ս անձուկ ոգւով անկեալ յայնժամ երկրպագին.
Գոդ թէ վաղուց 'ի հետէ չէին տեսեալ ըզՓարելին,
Եւ լուսափայլ 'ի դէմս յառեալ՝ քաղցեալ ոգիք յագեցան։
Այլ ոմանք երկուացան, քանզի տեսին փառաւորեալ,
Մարմին ունէր լուսապայծառ, նուրբ թափանցիկ լուսոյ [նըման.

Եւ զի չէր պարզ Վարդապետն որ ընդ նոսա շըրջէր անշուք.
Այլ Պետրոս եւ Յովհաննէս, այն է ասեն, հաւատացէ՛ք,
Ծիրդ այսպէս տեսաք զնա մեք 'ի Թափօր դէմք լուսափայլ,
Եւ անդ լըցա՛ւ խընդութեամբ սիրտ բոլորին յուսապատար։
Դարձեալ 'ի Վերնատուն յորժամ թագչէր Հարսըն տըխուր,
Զհանդուրժեալ եւս 'ի սըրտի նոր աւետեօք Մագթաղենւոյն,
Լայր եւ սըգով վարանէր ըզսիրելոյն, որ մեռաւ.
Գայր յանկարծ Փեսայն իւր ողջ, առ դուրս կացեալ ձայն [արկանէր.

Բա՛ց ինձ արդ, ո՛վ Քոյր իմ, մերձաւոր իմ, աղաւնիդ իմ,
Որ խանդակաթ ես 'ի սէր քո Փեսայիդ յարուցելոյ։
Սեւաթոյր զքօղըդ սըգոյ 'ի բաց այժմիկ առ 'ի գըլխոյդ,
Զգեցիր արդ պըճնեալ 'ի զարդ պատմուճանաւըդ Հարսնու- [թեան,

Ողջախոհ զօտեաւ պընդեալ՝ եկ ընդ առաջ իմ պարելով.
Քանզի ձմեռն էանց գնաց, անձրեւք անցին չարչարանաց.
Գարուն է արդ գեղեցիկ, զձայն տատրակիս յարուցելոյ,

Աւասիկ գամ եւ հընչեմ 'ի պարտիզիդ քո փակելոյ,
Որ յանձկալւոյդ իմ գտեալ՝ զիս որոշեաց վայրիկ մի խաչն,
Եւ այրի Թողեալ ըզՔեզ՝ ողբով լըցար դու յուսահատ:
Արդ առ քեզ դարձայ կըրկին եւ դու առ իս դարձիր այժմիկ,
Պինդ գըրկեա զիս հաւատով, չունիմ այլ եւս մեկնիլ 'ի քէն.
Դու ընդ իս եւ ես ընդ քեզ սիրով կապեալ անխըզելի:
Զայս ասէր եւ դրօք փակեալ մըտեալ առ Հարսըն սըգաւոր,
Ի միջի զօղեալ հօտին կանգնէր յանկարծ Հովիւըն քաջ.
Շողապէս ընդ պատուհան Թափանցելով ծագեալ 'ի ներքս,
Նո՛յն առ 'ի Կուսէն Թանձըր մարմնովն ըմբռնելի:
Հարցանէր տեղեկանայր ըզհաւատոյն ողջութենէն.
Եւ զնոսին 'ի նոյն կըրկին նոր կազդուրէր կ'ըշտամբելով,
Առ 'ի չկարծել զինքն անմարմին՝ առեալ ուտէր զձուկն եւ
[խորիսխն:
Յետ ութից աւուրց ապա ըստ առաջնոյն մըտեալ առ իւրսն,
Երեւէր նոյնօրինակ Առաքելոց դասուն ամբողջ.
Ե՛կ հուպ առ իս, ասէր, Թովմաս, բեր զմատունսդ մըխեա
['ի կողս,
Շօշափեա՛ զդեղարդախոց վէր իմ կողիս ձեռօքըդ քո.
Տես աչօք եւ նըշմարեա զծակեալ տեղիսըն բեւեռաց,
Դաւիթ հոգւովն 'ի հեռուստ, դու 'ի մօտոյ ո՞չ տեսանես.
Հաւատա՛ ուրեմըն յիս եւ ընդ եղբայրսըն քո դասեաց:
Իսկ Թովմաս գոչէր, Տէր իմ, հաւատացի՛ եւ հաւատա՛մ.
Տեսի ըզվէրս խաչելոյդ, դեռ կարմիր են արիւնանիչ,
Եւ մատունք իմ կարմրացան, այլ ոչ մեռայ ես քո հետ.
Որ ձայն տայի երկչոտ դասուն, օ՛ն արդ եւ մեք մեռցուք ընդ
[քեզ,
Տէ՛ր, մատունք իմ վկայ լիցին, խաչիդ նըշան եւ յիշատակ:
Առ ծովակին Տիբերական յայտնէր դարձեալ ըստ Յով—
[հաննու,
Ուր Պետրոսըն ծովատենչ Տեառն ըզպատուէր անյուշ առնէր.
Փափագեալ հնոյ արուեստին որսալ ըզձուկըն դեգերէր,
Մըտերմօքըն որսակից, որ զհետ երթալ յօժարեցան:
Անդ մանկունըս կոչելով՝ յանդիմանէր Տէրն ըզնոսին,
Եւ հրաշիւք ուռկանալիր խուռըն ձըկանց ըմբռնելոց,
Եւ մի ձկամբըն որ 'ի կրակին եւ նորաստեղծ հացն ընդ նըմա,
Ցուցանէր անդէն հրաշիւք Թէ յարուցեալ Տէրն ինքն է:
Եւ ո՞վ հապա զայդ պատրաստէր այդ անճարակ աշակերտացն,
Որ զողջ գիշերըն տըքնելով՝ ոչինչ կալեալ տըրտընջէին:
Սիրոյ Վարդապետն էր, որ գործէր հոգայր զամէն.
Նորանոր ըսքանչելեօք զիւրսն 'ի հաւատս հաստատէր.
ԶՅարութիւն իւր ճըշմարիտ՝ հաւատարիմ առնէր նոցա:
Այլ ըզկնի քառասնաւուրց 'ի Ձիթենեաց լեառըն հանէր.
Օ՛ն Մանկունք, ելցուք եւ մեք ընդ Քրիստոսին 'ի Սուրբ լեառն.
Գոլ նըմին յուղարկաւոր եւ շնորհաբաշխ յաջոյն օրհնել:

Ո՛վ, քանի՞ ցընծութիւն էր յաղթող Փրկչին մերում յայնժամ,
Որ ըզծոցըն հայրենի թողեալ՝ յաստիս պանդուխտ եկաց,
Անարգեալ 'ի մարդկանէ՝ դատապարտեալ եղեւ 'ի Խաչ.
Մեռեա՛լ, բայց Յարութեամբն կեանըս շնորհեաց մահացե–
[լոցս,
Երեւեալ Ինքըն նըկուն՝ վանիչ եղեւ աշխարհի:
Եւ երբեւ ըսքանչելի եղանակաւ վարեաց ըզմարտն,
Այսր ել զօրագլուխն եւ նահատակըն խաչազէն,
Զինուորեալ փոքրիկ խըմբին նա քաջալեր կարդաց աստէն.
Յաղթեցի՛ ես աշխարհի, յաղթանակաւ դառնամ յերկինս:
Զի՞ բանիւ մըտերմական խօսէր աստէն առ սիրելիսն.
Այսօր 'ի ձէնջ վերանամ, երգիչ Մանկունք, Հարսնարանիս.
Այսօր զողջոյն իմ տուեալ՝ յԱշակերտացըդ հեռանամ.
Այսօր ըզձեզ, Որդեակք իմ, օրհնեմ աջովս Հայրական:
Դուք ինեւ զօրացարուք, մի՛ լըքանիք յուսահատեալ,
Տեսիք զիս, ուսայք յինէն զնոր եղանակ իմ յաղթութեանս,
Թէ ո՞րպէս պարտ է եւ ձեզ, որ խաչակրիս դրեցայք զինուոր,
Կուռ վարեալ մերկամարմին՝ կըռուել մըրցիլ ընդ աշխարհ.
Ընդ անձուկ շաւիղ դըժուար հետեւեցէ՛ք հանդիսադրիս,
Որպիսեօք ես ընթացայ լեալ իմ Խաչիւս Նախամարտիկ:
Թէ ընդ նոյն յօժարակամ զխաչն իմ բառնայք արիապէս,
Վըկայէք եւ մեռանիք վասն կրօնի ճըշմարտութեան,
Որպէս Ես այնպէս եւ դուք յաղթանակաւ գայք յերկինս.
Գնամ պատրաստեմ ձեզ մըցանակ, եւ Ես եմ ձեր պսակադիրն:
Զոտըս ձեր զբոկանի նոր ամրացոյց Հայրն իմ կօշկօք,
Եւ զառաջին պատմուճան ագոյց անդրէն մերկացելոցդ.
Տիրական իշխանութեան ըզմատանին մատոյց 'ի ձեռս.
Յորժամ եզն Ես պարարակ զենայ առ ձեր 'ի Գողգոթա:
Տի՛ անվախ ընթացարուք արդ ընդ աշխարհըս բովանդակ,
Անվեհեր դուք 'ի վերայ գըլխոյ չարին կոխեալ անցէք,
Քամահեալ զնետիւք նորին, զինու Հոգւոյն զրահաւորեալք:
Մատանւոյն զօրութեամբ տիրող լերուք տիեզերաց,
Խաղացէք զօձիւք, կարճօք, ձեզ ոչ վնասեն թոյնքըն նոցին.
Ես փըշրեցի զխայթոց չարին եւ մեռուցի զմահն ընդ ոտիւք:
Անմըռունչ գառին նըման զձեզ առաքեմ 'ի մէջ գայլոց,
Մի՛ կասեալ զանգիտիցէք 'ի սրաժանեացըն պատառող.
Խորագէտ լերուք մըտօք հանգոյն օձի դուք եւ ըզգոյշ,
Որպէս ինձ նոյնպէս եւ ձեզ դարան դընէ նենգիչ ոսոխն.
Բիւրակերպ գաղտնի հնարիւք զոտըս ձըգել 'ի թակարդ:
Որ յինէն եդաք որսորդ 'ի յալեծուփ ծով կենցաղոյս,
Մի՛ լիցի ձեզ ըմբըռնիլ յուռկան որսորդ չար սատանին.
Զօրացարուք մանաւանդ, որ զըմբռնեալս 'ի բանսարկուէն,
Ուռկանաւ քարոզութեան առ իս ձըգեալ որսայցէք:
Լերուք դարձեալ հեզագոյն դուք միամիտ աղաւնւոյ պէս,
Մինչ բըռնի դուք առաջի դատաւորաց քարշեալ տանիք.
Մինչ ըզձեզ նախատեն եւ բան ըզչար խօսին ըզձէնջ.

Մինչ անարգեալ եղանէք դուք 'ի յատենէ դատաւորաց·
Երանի՛ է ձեզ յորժամ զըրկանս կրիցէք դուք զայսոսիկ,
Որ այսու հարազատ իմ Աշակերտ գոլ ճանաչիք:
Այլ մի՛ լուռ մնայցէք այնչափ երբ անարգի ճշմարտութիւնն·
Ի խօսիլ զիրաւացին՝ յանդուգն եղէք եւ համարձակ:
Լոյս եդի զձեզ աշխարհի, 'ի լոյս գնացէ՛ք, մի՛ ընդ խաւար·
Դուք Աստուծոյ քաղաքն էք՝ Սիօնի լերին 'վերայ շինեալ,
Անդ կանգնեալ է Խաչին դրօշ, եւ 'ի դրօշին ճշմարտութիւն:
Յաշտանակ Եկեղեցւոյ եդի ըզձեզ իբրու զճրագ·
Մի՛ դուք ըզլոյս Աւետարան Թագուցանէք ընդ գրուանաւ·
Զոր խօսեցայ ձեզ յունկանէ, ելէք 'տանիս քարոզեցէ՛ք:
Աղ երկրի զձեզ կոչեցի, զի համ տայցէք անհամելոցն·
Ըզխոտեալս՝ աղիւ կենաց բանից իմոց անուշեցէք:
Մայր եղէք տղայացելոցն եւ ջամբեցէք զԲանին կաթն
Զոր բանիւ ուսուցանէք՝ զնոյն գործով ցուցէք յանձինս·
Ցիս կատարեալ տեսիք զայն, զի ձեզ արդեամբք աւանդեցի:
Թէ զերկնիցն ունիք խօսիլ, զաշխարհի բան Թողէք 'ի բաց·
Թէ զփառացն յաւիտենից՝ խոտեալ խոյս տուք յանցաւորէն·
Թէ զկենացն անմահական՝ ընդ առ աշխարհ մեռեալ լերուք·
Թէ զինէն ունիք խօսիլ՝ զԽաչն առեալ հետեւեցէք:
Լուսաւոր ըզվարքս ձեր, լոյս արարէք մարդկանց առաջ·
Զի տեսեալ հաւատասցեն, փառաւորեն զՀայրն իմ յերկինս·
Երբ զամենայն գործէք դուք, զոգչիք զձեզ ծառայս անպէտ·
Եւ խոստովան եղերուք, Թէ զոր պարտն էր, զայն արարիք:

Այլ, գիտե՛մ, զոր ցարդ ընդ ձեզ ես խօսեցայ յայտնապէս,
Հասու ոչ եղէք լիով Թաքուն բանից իմ զօրութեան·
Ուստի փութամ առաքել զՀոգին շնորհաց եւ գիտութեան,
Որ 'ի Հօրէ ելանէ եւ գայ բնակի առ ձեզ անբաժ·
Նա բանայ ըզմիտըս ձեր եւ ուսուսցէ զամենայն,
Թէ մոռասջիք՝ զինչ խօսեցայ, նա յուշ բերէ ձեզ 'ի միտս,
Եւ բանիցըս խորագոյն առնէ հըմուտ եւ իմաստուն·
Ես 'ի ձէնջ մեկնիմ երԹամ, փոխան լիցի նա ընդ իմ·
Սգաւորացդ աշխարհի՝ լիցի սփոփիչ եւ մըխիԹար,
Զօրավիգ զինուորացդ, որ ըզԽաչին կրէք ըզդրօշ·
Զայն ազդու խրախուսական՝ լըքեալ ոգւոցըդ դիւրաբեկ:
Դուք ըզՀոգին ըզգեցեալ անպարտելի քաջանայցէք,
Ընդ աշխարհ եւ սատան, եւ ընդ մարմին մարտընչելով,
ՅաղԹեսջիք աշխարհի, յաղԹանակաւ դարձջիք յերկինս·
Օ՛ն գնացէք, այլ մի՛ մեկնիք 'ի քաղաքէն Երուսաղէմ,
Անդ նըստեալ ըսպասեցէք Հօրն աւետեաց, զոր խոստացայ:

Աւարտէր, Յիսուս ըզբան եւ համբարձեալ զձեռս իւր օրհնէր,
Այն աջովն արարչագործ, որ զկաւն արար մարդ կենդանի,
Այն աջով նորաստեղծէր զգունդ մի Ադամ իշխան երկրի·
Իշխա՛ն ոչ անասնոց, այլ տիրապէս մարդկան հոգւոց:
Այն աջով ձեռնադրեցան նոր երիցունք Եկեղեցւոյ,
Անդէն անոստիկան վարել ըզՀօտըն փոքրիկ,

Պաշտել զեկեղեցին, պաշտօն չառնուլ յեկեղեցւոյն,
Քրիստոսի նմանելով զանձն 'ի փրկանս տալ բազմաց,
Զլուիրել միմեանց վերայ եւ ոչ հօտին եւ վիճակին:
Այդ դատաստան վճռեց Յիսուս, դուք եղբա՛յր էք ամենեքին,
Որ ասաց միայն չասաց, որպէս յետինքս միայն ասեմք.
Ո՛չ, ասաց եւ արար, լոյսըն Հօղին սպասաւորեաց:
Այն անէծք, որ 'ի Հօրէն գեղան 'ի գլուխս յանցաւորացն,
Յօրհնութի՛ւն փոխարկեցաւ աստ բերանովըն Յիսուսի.
Լինելոյն անդրէն 'ի հող՝ դառնալ լինել 'ի հոգենիւթ
ՅԱստուա՛ծ միանալով՝ նովիմբ 'ի դրախտըն վերբերիլ:
Ընդ աւարտիլ օրհնութեանն զօրացուցիչ եւ շնորհատու,
Նոր Եղիայն ինքնաթռիչ եւս հրաշային կառօք մարմնոյն,
Ի մէջոյ Աշակերտացն անջրպետեալ վերանայր:
Զմարդըն քարշեալ տանէր 'ի վեր, թեթեւացեալ էր մարդոյն բեռն,
Զայն ըստանձնեալ էր Փրկիչն, ազատ թռչէր մարդն 'ի վեր.
Որ ծանրացեալ էր նա մեղօք, յերկիր հակէր կապարի պէս:
Բա՛բէ, զի՞ ցաւ էր յայնժամ բաժանելոցն առ 'ի սիրոյն,
Ի՞բր անթարթափ պլշուցեալ ընդ զարշապարս Վարդապետին,
Աղաղակ բառնային Եղիսէի նըման վայրուստ.
Յիսո՛ւս Վարդապետ, դու ոչ միայն կառք Իսրայէլի.
Այլ եւ հանուր հեթանոսաց, զորս քո Խաչիւըդ կենարար.
Այդպէս ունիս վեր հանել իբրեւ կառօք յերկրէ յերկինս.
Ա՛րկ այսր, ժըտեմք 'ի քէն, ոչ ըզմաշեակըն մաշածոյ,
Այլ ըզհոգին եօթնաշնորհ, որով հարեալ զգետ աշխարհիս,
Նըմա՛ն Յորդանանու պատառելով զջուրսըն մեղաց,
Յայդ վեր կոյս ելցուք եւ մեք ընդ քեզ 'ի քոյդ շաւիղ նորոգ,
Զոր այդպէս հորդելով լայնես բանաս մեր ընդ առաջ:
Մի՛ զոր մեզ խոստացար 'ի յառաքումըն յապաղեր,
Ո՛հ, 'ի քէն թողեալ այրի՝ այժմէն պատիմք տարակուսեալք:
Ակընկալեալ յուսայաք մանկունքըս քոյդ առագաստի
Հոգեզուարճ խընջոյս կազմեալ՝ ակումբ առնուլ եւ պարել
Յաւէ՛րժ 'ի Փեսայիդ յարուցելոյ սուրբ Հարսնարան.
Եւ յագիլ 'ի քո փառացդ, որ ըզգեցար նոր յարութեամբ.
Շուտ լրացաւ քառասուն օր եւ քանի՞ կարճ էր ժամանակն.
Տէ՛ր, կարօտո՛վ թողեր ըզմեզ, փութով այդպէս բաժանեցար:
Երբ ըզմիտըս մեր բացեր փըշմամբ 'ի մեզ զՈգիդ քո սուրբ,
Իմանալ, որ վասն քո զկանխաճառ բան մարգարէից.
Այն ի՛նչ աչք մեր բացան դիտել զանտեսդ առ 'ի նոցունց,
Ծածկեցար ամպով 'ի մէնջ իբրու զարեւ երեկորի:
Որ ծագեցար 'ի բարձաւց ճառագայթիւքըդ գերահրաշ,
Ի վերին մայր Սիոն՝ անդրէն յերկրէ մուտ արարեր:
Իցի՛ւ, զի դարձեալ գըտցուք ըզքեզ առ մեզ, Յիսուս,
Եւ տեսլեամբըդ տենչալի, օ՛չ, հոգեպէս հրճուեսցուք:
Զայս նոքին, այլ զի՞նչ անդէն սպիտակազգեստ արք լուսաւորք
Երեւեալ եւ աւետիս տային նոցա յուսադրական.

Զի յակճիռս եղեալ 'ի վեր հայիք այդքան, Գալիլեացիք·
Սիրակաթ աչօք զկնի սիրեցելոյն յափըշտակեալ,
Այդպէս որ չեւ խաչեալ ձեր եւ դո՞ւք յերկինս գնալ կամիք·
Կալ վերին 'ի Հարսնարան ընդ Փեսային ուրախակցիլ։
Մի՛ կարի ըղտարփալին յուշ բերելով ճըմլիք 'ի սիրտս,
Գայ նա վաղ դոյն օրինակ, որպէս այժմիկ գընաց յերկինս։
Թախծալից տըխուր դիմօք դարձան անտի յԵրուսաղէմ,
Եկին մըտին 'ի վանս իւրեանց, անդ խըմբէին 'ի միասին·
Համայն դասք Աշակերտաց եւ Մարեմանք եւ Մայր Տեառն·
Մինչ յաղօթըս կանխելով ըսպասէին Հօրն աւետեաց·
Խօսէին զամէն անցից, զոր կատարեաց Յիսուս Բանն։
Ե՛կ բեր արդ, ըզհրեշտակաց դասուց երգել զտօնակցութիւն
Զոր կարգաւ կատարեցին ընդ համբառնալ Բանին 'ի վեր·
Դասք ներքին խորհըրդագգածք Մարդացելոյն տնօրէնու— [թեան,
Առ վերին դասս անդիտակ՝ ըղձաձայնեալ բարբառէին·
Համբարձէ՛ք ըզդըրունըս ձեր, ա՛յ Պետութիւնք երկնաւորաց,
Թող մըտցէ ընդ այն յաղթող Վեհ Թագաւորըն փառաց։
Որ ընդ մէջ երկնի, երկրի զխաղաղութիւն արար իջմամբն։
Համբարձէ՛ք պահպան Քրովբէք սուր 'ի դրանէ դրախտին [երկնից
Թող անցցէ ազատօրէն Ադամակերպըն Փըրկիչ,
Որ եբաց զայդ ճանապարհ, զոր փակեցիք Ադամայ դէմ։
Բացէ՛ք եւ դուք, Սերովբէք, ըզմուտ վերնոյ վարագուրիդ,
Թող մըտցէ 'ի ներքին կողմն անցեալ կայցէ առաջի Հօրն,
Քահանայն ինքնանուէր պատարագաւըն հաշտութեան,
Զանարատ Կուսին պըտուղ ընծայել Հօրն 'ի մարդկանէ։
Այլ վերինքըն սըխրացեալ ընդ նոր այս լուր մեծասքանչ,
Նա յաւէտ 'ի չքնաղ կերպ վերընթացող Թագաւորին,
Զարմացեալք եւ 'ի ներքնոցըն գոլ հասու հարցանէին·
Ո՛վ իցէ այս Թագաւոր, որ գիտակքդ էք, ասացէ՛ք մեզ,
Զի՞ դիմեալ արագապէս գայ յԵդովմայ եւ յերկրէ
Դա՛ մարդ է, մարմին ունի, զի՞ վերանայ հրեշտակի պէս,
Մեք տեսաք զԵնովք Եղիա, որք հրեշտակօք համբարձան վեր,
Կարմիր են ձորձք իւր համակ եւ գեղեցիկ է պատմուճանն·
Թագ 'ի գլուխ եւ Փեսայի նորոյ նըման զարդարեալ ինքն·
Նա՛՝ ցընծայ հըսկայապէս եւ ճոխաբար ընթանայ վեր·
Կարի բուռն է զօրութեամբ իբրեւ յաղթող գայ 'ի յերկրէ·
Նորասքանչ է դրօշըն իւր խաչանկար 'ի գոյն արեան,
Եւ անարգել ընթանայ 'ի ճանապարհըս երկնաչու,
Միայնակ ինքն առանձին առանց ուրուք օգնականի։
Ո՞ իցէ, տուք մեզ նըշան զնոր Արքայէս ամենասքանչ,
Երեւեալ զերդ առաւօտ, այլ 'ի յերկրէ զարմանապէս·
Գեղեցիկ իբրեւ զլուսին ջահավառեալ բոլորապէս,
Ընտիր եւ քան զարեւ, ո՛վ, 'ի ստորին յերկրէ ծագեալ
Ի հիացումն եւ նոր տեսիլ կարգեալ է մեզ երկնաւորացս·
Գոգ թէ երկնից Տէրն է ինքն եւ փառակից աթոռոյ Հօրն·

*Ասացէ՛ք, ո՛վ ներքին դասք, ո՞ իցէ Վեհ այս Թագաւոր։*

*Է՞ր այդպէս անկարանայք զՏէր զօրութեանցըդ ճանաչել.*
*Այդ իսկ է, ո՛վ Սերովբէք, որում երգէք զերեքսրբեանն.*
*Այն է դա, ո՛վ Քերովբէք, ում 'ի հանդիստ փառաց լինիք։*
*Ո՞չ տեսիք, մինչ 'ի ծոցոյն հայրականի լուսածագեալ,*
*Առ ձեօք անց եւ էջ յերկիր Բանն 'ի վերուստ չողանըման,*
*Մուտ 'ի Կուսին սուրբ արգանդ եկն 'ի մարմին անարատ,*
*Հրաշապէս ծընաւ նա մարդ, այլ ո՞ գիտէ զանճառ բան,*
*Բեթլեհէմի երկնուց վերայ մեք երգեցինք* զՓառքն 'ի բարձունս.
*Մանուկ Աստուած մարդ ծընաւ, այլ զօրութեամբ ցուցաւ Աստուած,*
*Աստուած՝ բայց ըզմարդոյն կիրըս բոլոր կըրեաց մարմնով։*
*Ի վերջնում աւուր ապա չոգաւ ինքնին 'ի չարչարանս,*
*Մատնեալ՝ եւ դառնապէս վըշտաց Խաչին տարեալ՝ մեռաւ.*
*Մարմնով եդաւ 'ի Գերեզման, այլ էջ հոգւովն 'ի ներքին բանտն.*
*Անդ քարոզեալ հոգւոցն արդար, հաւատացին թէ Փըրկիչն է,*
*Արձակեցան կապեալ հոգիքն եւ ընդ Փրկչին հա՛ գան 'ի վեր,*
*Տէրըն Յարեա՛ւ 'ի մեռելոց, զմեռեալս յարոյց ընդ իւր*
*Այսպէ՛ս քաջ մարտադիրն ըզթըշնամին իւր վանելով*
*Հրաշափառ յաղթանակաւ յերկրէ դարձեալ գայ 'ի յերկինս,*
*Օ՛ն արդ երգով օրհնութեան բարձր արարէք ըզնահատակդ։*

*Իսկ որ հուպ յառեալ ընդ գեղ հրաշանային կարմիր ձորձոյն*
*Հարցանել ոչ 'ի ներքնոցն, այլ 'ի Յիսուսէն ըղձանային.*
*Տէ՛ր, զի՞նչ այդ քո հանդերձ համակ 'ի գոյն բոսորագեղ,*
*Մի թէ հընձա՞ն հարեր դու նոր որ դեռ կարմիր են սըրունքներդ.*
*Եւ լիակոխ առնելովդ ողջամբ դու զայդ թաթաւեցեր։*
*Եւ ընդէ՞ր են այդ նշանք վիրաց 'ի յոտս քո եւ 'ի ձեռս,*
*Ընդ ո՞ւմ ինքնին մըղեր ըզմարտ, մի թէ չգո՞յր քեզ զօրավիգ,*
*Զի՞ լըռելեայն գործեր զայդ, մեք չըլուաք փողոյդ ձայն.*
*Եւ ո՞ւր էր քո կռոյ տեղ, յԵրուսաղէմ քաղաք Դաւթի*
*Ուստ ի վեր գաս արդ փառօք զայդ գեղեցիկ վէրս ընկալեալ։*
*Թէ անշուշտ որպէս ասեն ըզքէն ներքինք իցես Աստուած,*
*Հաւատա՛մք եւ մեք 'ի քեզ Տէր զօրութեանց եւ Արարիչ.*
*Զի՞ հապա զանեղական Աստուածութեամբըդ լուսագեղ,*
*Նիւթական եւ զարինոտ զգեցեալ ունիս այդ նոր հանդերձ։*
*Կերպդ է իսկ Ադամային, բայց հրաշագոյն է ընթանալդ.*
*Նա մարմնովըն վայրաբեր, դու վեր այդու թեթեւ սլանաս։*
*Եւ է՞ր ըզբիւրաւոր բանակս որ քեզ եմք զինուորեալ,*
*Թողե՛ր եւ զաղտ 'ի մէնջ իջեր յաշխարհ միայնակ.*
*Ոչ գիտեմք, թէ ի՞ւ, ո՛վ Տէր, վանիչ եղեր զօռ թըշնամոյն,*
*Այդ մարմնո՞վդ մարդկային թէ զօրութեամբդ Աստուածային.*
*Ուսո՛ մեզ աւասիկ ըզյաղթութեանդ նոր յեղանակ։*

*Այս գործ է իմ անքընին, ո՛վ լուսաստեղծ հոյլք հրեղինաց,*

Միայնում յայտնեալ յինէն Եկեղեցւոյս նորածնելոյ.
Թէ տարփայք եւ դուք յաւէտ զայս ուսանիլ ըստուգապէս,
Խոնարհեալ հասուք լերուք ՚ի ստորայնոյ Եկեղեցւոյն,
Որ ինձ Հարսն եղեւ նա Կոյս եւ Ես Նըմին Փեսայ մաքուր:
Ո՞ւր արդեօք խորհուրդս այս մեծ կատարեցաւ, գիտէ՛ք,
[գուարթունք.
Ո՞չ ելիք եւ տեսիք զիս, ո՛վ դուք վերին Սիօնի դըստերք,
Ի լեա՛ռըն զմըռսոյ եւ հրաշակերտն իմ Հարսնարան.
Անդ ահա նոր պատմուճան այս առեցեալ մարմնոյս իմոյ,
Որ գեղովըն կուսական՝ շուշանի պէս փայլէր յառաջ,
Դարձա՛ւ բոսորաթոյր, մինչ եւ յօրն իմ ուրախութեան,
Բազմեցայ Խաչին ՚ի գահ՝ պըսակեցայ կարմիր արեամբ:
Անդ ըզլի հրնձան Խաչին ես կոխեցի սըրտմտութեամբ,
Յորմէ կաթիլք արեան գինւոյն ցայտեալ՝ հանդերձք իմ
[կարմրացան:
Անդէն առի եւ զայս վէրս, ո՛հ, ՚ի տանէն իմ սիրելեացն,
Անկորուստ յիս պահելով՝ ցուցից նոցա յիմ գալըստեանն:

Այսպիսի օրինակաւ, ո՛վ զըւարթունք, զինու մարմնոյս
Պարտեցի ըզբանսարկուն յաղթայարիչ նախաստեղծին,
Որ մեղօք ախորժ պըտղոյն մարմնովըն իւր ծանրանալով,
Ի դըրախտին բարձրութենէն անկաւ յաշխարհ վայրաքարշ:
Սէրըն Հօր զիս վարեց իջոյց ըզկնի անկեալ մարդոյն,
Որ զմարմին մեղաց նորա առի զինեւ աստուածութեամբս
Զծանրութիւն բարձի մեղաց, եւ անարատ պահելով զայն՝
Յերկրէ հանեմ ՚ի յերկինս այսպէս ընդ իս թեթեւընթաց:
Տոյտ ուրեմն արագեցէք, ո՛վ սքանչացող Սրովբէից դասք,
Զխորանին ուստի ելի բացէք այժմիկ ըզվարագոյրն.
Յոր մտեալ մատուցից զայս պատարագ Հօրն իմ հաճոյ:

Զի՞ անդէն սաւառնացեալ սըրբանըւագ սէրաբիի գունդք,
Ոմն ըզփող յաղթանակի առեալ երգէր բարձրաբարբառ.
Ոմն անցեալ ըզխորանին Երրորդութեան բանայր ըզփեղկն.
Մուտ առնէր ընդ այն Յիսուս, Հայրըն յառնէր գայր ընդ
[առաջ.
Ըզսիրած որդեակըն իւր ողջագուրէր ըզՄիածինն,
Համբուրէ՛ր համբուրէ՛ր ըզնոր Փեսայն Ադամակերպն:
Նորն Ադամ, հնոյն Ադամայ որդիացեալ զգեցեալ զպատկերն
Զհայրն Ադամ ածէր առ Հայրն ՚ի հաշտութիւն եւ համբոյր.
Ո՛վ, սուրբ համբոյր, երկինք, երկիր, Աստուած եւ մարդ
[եղեն մի,
Անդ կրկնեցաւ, Փա՛ռք ՚ի բարձունս, խաղաղութիւն երկնից,
[երկրի
Եւ ո՞վ միջնորդ այս հաշտութեան, միակ Յիսուս եւ ո՛չ ոք:
Եւ ապա Դաւթի բանիւն ասէր ցՈրդին Հայրն Աստուած,
Նի՛ստ, Որդեակ, ընդ աջմէ իմ, որ ՚ի յերկրէ գաս վաստակեալ,
Ա՛նց բազմիր ընդ իս յաթոռ այդ առեցեալ մարմնովըդ քո.
Եւ ահա Ադամ եղեւ իբրեւ զմի ՚ի մէնջ Աստուած:

Եկաց յանկարծ անդ սատան, ո՛ ո՛ միթէ ես չ՚ասացի՞,
Թէ ուտիցէք լինիք Աստուած, ահա Ադամ հըրջեաց զբան քո
[այսպէս
Զի յայտնեսցի բանսարկութիւնդ եւ դու լիցիս խայտառակ:
Զի՞ դու ասա, ո՛վ ապստամբ, քո տեղ դըժո՛խքն է դըժո՛խք,
Ե՛րթ ի հուրն յաւիտենից, զքեզ այրեսցէ քո նախանձ:
Այլ դու ե՛կ, մարտադիրդ իմ, որ պարտեցեր զմահու իշխան,
Յաղթեցե՛ր Մանուկդ իմ քաջ, տապալեցաւ 'ի քէն աշխարհ,
Զո՞ր պսակըս հիւսեցից, եդից 'ի գլուխ քո գերագոյն,
Նոր անուն տամ ես քեզ, որ քան զամէն անուն վեր է.
Ո՛ւմ երկին, երկիր բոլոր երկըրպագցեն խոնարհելով:
Օ՛ն հապա, ո՛վ հրակերպեան հոյլք Հրեշտակաց եւ Պե–
[տութիւնք,
Պարակից եղեալ միմեանց զերգըս Դաւթեան հընչեցուցէք,
Այսօր է օր փրկութեան երկրի, երկնից, մարդկան եւ ձեզ,
Արարեալ յինէն անդուստ իբրեւ օր մեծ եւ հրաշաւէտ.
Հըրճուեցէք պարելով եւ ցընծացէք ուրախամիտ,
Աւասիկ հասայք աւուրն, ում անձկալով ըսպասէիք:

Այլ Որդին, որպէ՞ս յայնժամ զբան իւր առ Հայրն ուղղէր
[այսպէս.
Հա՛յր, արդար, զհաճոյս կամացդ ես կամակար կատարեցի,
Առ 'ի քէն ելեալ իջի զհետ կորուսեալ մի ոչխարին,
Ի մէջ լերանց աշխարհի յոյժ որոնեալ վաստակեցայ,
Մինչ ելի 'ի գլուխ լերինըն Սիօնի գըտի զայն, վա՛հ,
Խընդութեամբ 'ի յուս բարձեալ առ քեզ հանի աւասիկ,
Զոր խառնել ընդ անմոլար հօտին այժմիկ արժան է, Հայր.
Եւ զդըրացի դասս արդարոց կոչել առ մեզ ուրախակցիլ:
Նա՝ զօրէն աւելածու կնոջն 'ի միջի տանն աշխարհին
Ճրագ վառեալ զմարմնոյս իմոյ՝ եդի Խաչին 'ի յաշտանակ,
Աւելեցի զաղբիւրս մեղաց, եւ մութ յերկիր մոռացեալ,
Զառ 'ի մէնջ ըզկորուսեալ դրամըն գըտի 'Սիօնի լեառն,
Եւ ըզժանգըն սըրբելով 'ի հուր արեան իմ կողահոս,
Նոր եղեւ ըստ առաջինն՝ մաքուր փայլուն ոսկւոյ պէս:
Պարզ էր եւ սըրբափայլ դրամըն մարդոյն՝ 'ի բնութենէն,
Բանսարկուին պատրանօք առ արտաքուստ ժանգոտեցաւ.
Ծանեա՛ զայս, յորժամ 'ի փորձ մատեայ նըմին մարդեղու–
[թեամբս.
Զ'ի բոց հրոյս արկեալ ըզնա բորբոքելոյ 'ի մեծ սիրոյդ,
Հալեցի, սըրբեցաւ ժանգն, գըտաւ մաքուր որպէս յառաջն.
Եւ ձուլեալ զայն ընդ լուսոյս միացուցի ըզնիւթականն,
Ահա՛, սուրբ ամենայնիւ, քեզ ընծայեմ զպատկեր մարդոյն.
Տե՛ս ա՞յն է իսկ նոյնատիպ, զոր անարատ ձեռօք ստեղծեր.
Առ, Հայր իմ, եւ դիր դարձեալ 'ի գանձարանդ արքայութեան:
Հայր իմ, մինչ Ես 'ի պարտիզին աղօթէի առ քեզ ուժգին,
Անդ մատուցաւ մահու բաժակ, որ ես ըմպեմ կամակար,
Արբի՛ զայն 'ի Խաչին եւ մատուցի զանձն իմ 'ի զոհ.

՚Նդ անբան զոհիցն Ահարոնի՝ Ես քահանայս մատեայ ՚ի զոհ․
Միանգամ պատարագեալ նուիրեցայ Քեզ, ո՛վ Հայր․
Առ փրկութեան մարդոյն դու գայս՝ բաւ համարեա յաւիտ–
[եան:
Ընդ աշխարհ հաշտեաց վասն իմ, քանզի միջնորդ եմ հաշ–
[տութեան,
Ես Քահանայ եմ մշտակաց ՚ի ներքին կողմ վարագուրին,
Քեզ յանդիման կացուցանեմ ըզԽաչին մահ եւ յիշատակ,
Ես բարեխօս վասն աշխարհի, վասն այնոցիկ որ հաւատան,
Պահեա՛, Հայր իմ, զհաւատացեալս, զի որդիք են Հօր բարձ–
[րելոյդ,
Զորս քեզ Որդիս գրեցի արեամբս եւ ժառանգորդ արքայու–
[թեանդ:
Եւ ՚ի քէ՛ն հայցեմ այժմիկ, ո՛վ փառակից, Հոգի Սուրբ,
Է՛ջ յեղբարսն իմ անտերունջ, որ վըհատեալ են ապշութեամբ,
Է՛ջ սիրովդ արդ ՚ի նոսա, որ ըսպասեն Քեզ փափագմամբ․
Է՛ջ հանգիր եւ ՚ի սրտից նոցին մերժեա՛ զահ, տարակոյս,
Որ դողեալ ՚ի Վերնատուն, ո՛հ, պաշարեալ են երկիւղիւ:
Քանզի այն ինչ ՚ի Խաչի ժամն թողի միայնակ ըզնոսին,
Տատանեալ իբրու զտերեւս ՚ի շարժմանէ ուժգին հողմոցն,
Ի վիմէս հաստատնոյ ՚ի բաց խախտեալ տապալեցան․
Եթէ ոչ իմ Յարութիւն պընդէր զնոսին ՚ի հաւատս,
Եթէ ոչ Հայրն իմ պահէր, որում աւանդ ետու յայնժամ,
Մինչ յերեկուն սուրբ Ընթրեաց, աւանդէի սիրոյ կըտակս:
Հասիր օն Հոգի հըզօր վառեա զնոսին եւ զօրացո,
Եւ սըրտիցըն բեկելոց՝ վէմ անդամանդ լեր կարծրագոյն,
Տուր խրախոյս լըքեալ ոգւոց, թո՛ղ ՚ի կըռիւ ընդ աշխարհ:
Քո՛յդ յայսրմհետէ ՚ի խնամս յանձնեմ զգունդն իմ փոքրիկ,
Զօրավար լեալ նոցին դու խաղացո ՚ի յասպարէզ․
Գիտե՛մ, զի քո մատամբ յաղթահարեն ըզտիեզերս:
Դեռ տըգէտ են իմ Աշակերտք եւ թանձրամիտ գալիլիացիք,
Թէ մոռացան, զի՛նչ խօսեցայ, յուշ ած նոցին զայն ամենայն,
Թէ լի արա զհոգիս նոցա իմաստութեամբ եւ զօրութեամբ:
Զդէմս յերկիր եդեալ, Մանկունք, տացուք համբոյր
[Ոտնատեղեացն,
Ի Ձիթենեաց լեռնէն իջեալ՝ ելցուք կըրկին ՚ի Վերնատունն
Ուր խըմբեալ ընտրելոց դասք ըսպասէին աւետեաց Հօրն,
Երգեցից անդ զԵլողին առ ՚ի Հօրէ զՀոգւոյն գալուստ:
Որ այն ինչ լըումըն լինէր հընդից տասանց Պենտեկոստէ
Բանըն երթայր, Սուրբ Հոգին գայր, ոչ մեղմագոյն փա–
[ռակցին պէս,
Այլ սաստիկ հողմոյ նըման ահեղաձայն որոտալով,
Մուտ առնոյր այսըր յանկարծ, տունն ողջ լընոյր հրաշէկ
[բոցով,
Երեւէին հրակերպ լեզուք եւ հանդչէին իւրաքանչիւր
Ի վերայ ընտրեալ դասուն որպէս կամէր Հոգին շընորհաց,
Աստ յայնժամ էր տեսանել զձայնից հընչումն այլատարազ,

Թէ զի՞ առանց աշխատութեան՝ ոգէտ եւ անուս Աշակերտքն
Հրաշագոյն 'ի դպրոցիս առ 'ի Հոգւոյն վարդապետեալ,
Քաջակիրթ 'ի մի վայրկեան ուսան խօսել զբարբառս այլոց։
Ի հանդէս հոգեվարժիցն խուռն ընթանայր մարդկան ժողով
Նորալուր ըզդէպ հրաշից դիտել աչօք յանվարժ ձրնորսս։
Ընդ որս յաւէտ սըխրացեալք եւ աւէին սքանչանալով․
Գիտէ՞ք դուք ըզդոսա, որ են գռեհիկ Գալիլիացիք,
Շինականք եւ անշուք 'ի գաւառի ծընեալք ողջոյն,
Զմի բարբառ ամենեքին եւ եթ ուսեալք ըզհայրենի։
Բա՛բէ, զիա՞րդ ըզբոլոր ազգաց լեզուս այժմիկ ուսան խօսել․
Ոմն ըզճոխ Հռովմայեցւոց բարբառ ո՞րպէս քաջիկ հընչէ,
Ոմըն պերճ Հայոց բառիւք, զի՞ վայելուչ բանս յօդէ․
Նո՛ր են այս ըսքանչելիք Աստուածահրաշ ցուցեալ առ մեօք,
Զի՞նչ արդեօք լինել կամի, եւ մեք բնաւին անգիտանամք։
Այլ կիսոցըն խաղ առեալ զմեծամեծօքն Աստուածային,
Զհանճարով Հոգւոյն լըցեալս՝ գոլ քաղցուալից՝ համարէին,
Իսկ Պետրոս, որ աղախնոյն հարցմամբ լեզուն կակազէր,
Նըստեալ դողայր առ խարոյկին եւ առ ահի զանձըն պահէր,
Զի՞ աստէն յառնէր, յոտին, զոր ուրացաւըն դաւանէր․
Ցի՛ս դարձուցէք ունկն, որ զարմացեալդ էք ապշութեամբ,
Ո՛չ որպէս դուքըդ կարծէք, եթէ արբեալ եմք 'ի գինւոյ,
Այլ 'ի Հոգւոյն բաժակէ, որ ըստ բանին Յովելեա,
Տէրըն հեղ յոգւոյ իւրմէ առատահոս 'ի վերայ մեր․
Որով արդ մեք հրաշապէս խօսիմք պէս պէս լեզուս ազգաց։
Այս պարգեւ է Յիսուսին, ում Աշակերտ եղաք յօժար,
Զոր դատեալ յանիրաւի՝ սպանիք զանմեղն եւ զանպարտն։
Իսկ Աստուած յարոյց ըզնա 'ի մեռելոց հզօր ձեռամբ,
Որ բազմիցըս երեւեցաւ փառաւորեալ մարմնովըն իւր,
Ցոյց մեզ ըզվէրս խոցեալ կողին, ընդ որ հայեցաք 'ի Խաչին։
Համբարձաւ եւ զաւետիս Հօրըն իւրոյ մեզ խոստացաւ․
Զոր առաքեաց աւասիկ, ընդ որ այդչափ սքանչացեալ էք։
Ձեզ ե՛ւս են այս աւետիքս եւ ձեր որդւոցն հաւասար,
Որ կոչին հրաւիրանաւն 'ի հարսանիս արքայ Որդւոյն,
Թէ դարձջիք եւ 'ի Յիսուս հաւատացէք ապաշաւեալ։
Այսր եւ ինձ է սքանչանալ, որպէս ճառող Լամբրոնացին
Թէ առ ի՞նչ Քրիստոսի այնչափ հրաշիցըն մեծամեծ
Ո՛չ զղջաց, ո՛չ չարժեցաւ Երուսաղէմ գալ 'ի հաւատ,
Ո՛չ գիտաց գոնէ յաւուրս Փրկչին իւրոյ զխաղաղութիւն։
Իսկ աստանօր Պետրոսին մի բարբառոյ քարոզութեանն,
Անձի՛նք երեք հազար աշակերտիլ յօժարեցան․
Որ այսու քարոզեցաւ արդիւնք Հոգւոյն գերազանց։
Բանըն երթայր, Հոգին գայր, եւ զի հոգւոյն էին պահեալ
Զբանին ըրնտեսութիւն ածել յաւարտ եւ 'ի լրումն․
Բանն ըզմարդկան սիրտս արօրեալ՝ զԲանին կենաց ցանեաց
[սերմն
Թող այնպէս իբր առ հողով Ինքըն չողաւ 'ի յերկինս։
Եկըն Հոգին կենդանարար ցօղեաց ըզցօղ իւր 'վերուստ,

Ո՛վ, անդէն չոյր ՚ի վեր ծլէին իւր ելակցին բանից բոյսք,
Պետրոսի ՚ի մի հատէն, երեք հազար հատ բուսանէր։
Յերկի՛ր, յոր ընթացեալ սերմանահանքըն Քրիստոսին,
Հերկել եւ ՚ի նմա ցանել զցորեան սուրբ հաւատոյն․
Զոյգ ընդ Բանին ընթանայր վըտակ Հոգւոյն ոռոգանող․
Զուր տուեալ արբուցանէր, պըտուղ բերէր բազմապատիկ։
Որ շըրջէր անդ իսկըզբան ՚ի ջուրս երկրի համատարած
Զօրութիւն տալ եղելոցն առ ՚ի Բանէն Արարչական․
Նո՛յն եւ ՚ի մէջ մըկրտելոցն առ ՚ի Քրիստոս հաւատով,
Շըրջէր Հոգին նորաստեղծէր, զնոր Սիօնի ծընեալ որդիս։
Գարո՛ւն աւետաւոր եկըն յաշխարհ յետ Յիսուսին,
Որ շընչէր հալէր տանէր սառնամանիս կռամոլութեան․
Տեղի ետ ձըմեռըն ցուրտ եւ անձրեւացըն ժամանակ,
Բանաւոր դաշտաց երկրի բացան երեսքըն ձիւնապատ,
Նորափթիթ ամենազան ծաղկունք ՚ի վեր երեւեցան․
Յանուշահոտ բուրմանէ լըցաւ բոլոր մեր աշխարհ։
Թըռչնիք անպըտուղք ընձիւղեցին զբողբոջս իւրեանց,
Այգիք՝ զոր չար աղուէսք ապականեալ էին բոլոր,
Պատկեցան եւ ծաղկեցան ուռք, որ քանցեալ էին յորթոյն,
Զորս նորապէս պատուաստէր մատըն Հոգւոյն յորթըն Յիսուս։
Եւ ո՞յք կալան զաղուէսունս, երկչոտ նըկուն նապաստակք,
Որ ՚ի Հոգւոյն զօրացեալք՝ յայգեաց ՚ի բաց հալածեցին․
Եւ հաւատով ցանկապատեալ շուրջ փակեցին զայգին Տեառն։
Յորս չկարէր այլ մուտ առնել նենգող աղուէսըն սատան,
Քանի՞օն այնուհետեւ բարգաւաճէր այգին խոպան,
Ծուլթ ճուլթ ողկոյզքըն կախէին, խաչն էր խնչակ բարունակաց․
Եւ ո՞վ մշակ դարմանիչ, Յիսուսն ասաց իմ Հայրըն է․
Եւ ես եմ Որթըն ճըշմարիտ ՚ի նմա տընկեալ ՚ի Հօրէն,
Եւ ՚ի միջի աղբիւր Հոգւոյն որպէս վտակ անհատահոս,
Ընթանայր արբուցանէր զուռս ըղնորեկ հաւատացեալս․
Որով աճէր Քրիստոսի որթն եւ տայր պըտուղ հազարապատիկ։
Մեծ են ձիրք Հոգւոյն, Մանկունք, ո՞ր բան զօրէ ճառել
[դայն,
Կամ Նորին պարգեւաց, որ առ մարդիկ՝ լինել քարոզ։
Եսայի՝ վասըն սորա ձայն առնէ մեզ աւետագուարճ․
Ուրա՛խ լեր եւ ցընծայ յոյժ, ո՛ ծարաւիդ դու անապատ,
Քանզի ջուր կենդանի բըղխեալ յորդեաց ՚ի քեզ առատ․
Դաշտորայք քո անջըրդի՝ դարձցին յաղբիւր եւ ջըրալից,
Առ որովք ուրախութիւն լիցի հաւուցըն համերամ․
Զօրացեալ երկիրդ անբոյս փոխեսցի ողջ մարգագետին,
Եւ Խաշանցըդ բազմահօտ անդ եղիցի մակաղատեղ։
Աւետիս տամ ձեզ, աղքատք եւ կարօտեալք ամենայնիւ,
Որ ըղջուր խընդրէք յաւէտ, ջուր կենդանի եւ անսպառ․
Բացի՛ց ես ահա զգետս յԵրուսաղէմ Սիօնի լեռնէն,
Վըտակ վըտակ բաշխելով խաղացուցից ՚ի մէջ դաշտացդ․
Բուսուցից յանջուր երկրէդ զանտառ մայրի եւ ըղտօսախն․
Դըժնըկին փոխան ելցէ ծառ մըրտենւոյն անուշահոտ,

Տընկեսցի ցըրտոյն 'ի տեղ նոճն եւ սօսին, սարդն եւ սարոյն,
Կաղամախն եւ այլ պէս պէս ծառք վայելուչ բուսցին 'ի քեզ·
Ծանիցե՛ս դու յայնժամ, թէ ձեռն արար իմ զայդոսիկ։
Ժամ է արդ եւ ըզՀոգւոյ մատըռուակացըն երգեցից,
Որ զուխըս փափկութեան արբեալ 'ի տանըս լիապէս
Լըցեա՛լ ըզմայլեցան եւ զուարթացան յոգիս իւրեանց։
Եւ ըզբաժակն 'ի ձեռս առեալ ընթանային ընդ տիեզերս
Բաշխե՛լ առատապէս հրաւերելոցն 'ի Հարսանիս։
Ծով, ցամաք՝ ոտից նոցին դիւր ճանապարհ լինէր պատրաստ,
Ո՞ կարէր կալ խոչընդոտն եւ արգելիչ հրեղէն ոտիցն,
Թեթե՛ւըս թըռչէին աւետաւորքն արքայութեան,

Ճախր առեալ եւ արծուօրէն վէր սլանային որսորդքըն քաջ·
Ի վերայ լերանց բարձանց եւ 'ի միջոյ ծակուց վիմաց,
Զոգիս անասնամիտ վայրենացեալ անբանութեամբ,
Որսային 'ի գիտութիւն լուսոյ Բանին ճըշմարտութեան·
Եւ դաժան 'ի բնութենէ փոխեալ անդրէն 'ի նոր մարդ,
Դառնայի՛ն ոգի ըզգօն, հանդարտ եւ հեզ բարեբարոյս·
Նա՝ 'ի սըրտից յանդաստանէ նոցին խըլեալ զփըշաբոյսս
Զհուր Հոգւոյն արկեալ 'ի նմա զմեղաց տատասկըս կիզէին·
Եւ հերկեալ զօրութեամբ Բանին խոփովըն խորամուխ,
Ցանէին եւ տափէին զցորեան կենաց առատաբուռն·
Եւ ահա բուսանէին հասկաւորեալ ջրով Հոգւոյն։
Ծառա՛յքն եւ սպասաւորք Արքայ Որդւոյն Հարսանեաց
Ելեալ կացին 'ի հրապարակս՝ կատարելով զմեծ հրամանն,
Զխեղս եւ կաղս, կոյրս եւ զաղքատս մուծին 'ի տուն Հարսան–
[եաց·

Եւ հրաւիրակք 'ի Հօրէն առաքեցան 'նդ աշխարհ բոլոր,
Իւր սիրելի միակ Որդւոյն ընտրել ըզՀարսն ամբիծ եւ սուրբ·
Շըրջեցան, եւ երբ գըտին, անդ խօսեցան, նըշան եդին,
Եւ զի՞նչ էր այդ նըշան, Աւետարան էր եւ հաւատ,
Թողուլ ըզկուռս եւ ըզտուն հօր, երթալ զհետ հրաւիրակացն։
Հաւանէր Հարսըն յօժար, Թողոյր ըզտուն ըստ Ռեբեկայ,
Ո՛չ կամէր կալ եւս 'ի նմա, որպէս ծընողքըն խընդրէին·
Եւ մինչ լուաւ զայս աւետիս, ում ըսպասէր նա խանդակաթ,
Թէ գեղոյ իւր ցանկացող Արքայորդին նոր Սահակն
Կոչէ զինքն 'ի Հարսանիս, Փեսայանալ կամի Հոգւով։
Վասն որոյ սիրալըցեալ չոգաւ ըզհետ հրաւիրակացն,
Որ ըզնա զարդարեցին նոր հանդերձիւքըն հարսանեաց,
Եւ նարդեան անուշահոտ իւղով օծեալ շնորհաց Հոգւոյն՝
Այնպէս զի յորդառատ երկնաւորին մուծին յերկրէ,
Փեսային Քրիստոսի անդ կացուցին 'ի յանդիման,
Իբրեւ ըզկոյս մի ամբիծ, որպէս պարծի Անօթն ընտրեալ։
Ո՛վ հրաշալի Սիոն վերնատուն, Հոգին 'ի քեզ վառեաց
[ըզհնոց,
Թըրծեաց զանօթըս հողանիւթ, հրազէ՛ն եղեն ոգիք անզօր·
Ո՛ զարմանագործ արուեստիս, ոսկի դարձան բրուտի անօթք։
Եւ զի՞ ապա Պօղոսն ասէ, թէ մեք անօթք եմք խեցեղէն,

*Գիտեմ ըզմիտըս քո, Պօղոս, պարծանք Հոգւոյն տալ կամիս·*
*Այդ խեցեղէն անօթք չէին՞, որ գլորեցան յամէն աշխարհ,*
*Տապալեցին ըզկռոց տունս, փըշուր փըշուր եղեն դըրօշեալքն:*
*Խեցի անօթն այն Պօղոս, 'ի Սաղիմէն մինչ 'ի Հռովմ,*
*Քանդեց, տափեց զհին աշխարհ, միոյն Աստուծոյ կանգնեց [տաճար,*
*Զաստուածոց հօր Արամազդայ, ջընջեց զանուն զՅիսուս գրեց:*
*Իբրեւ ըզգետ յորդեալ գընայր՝ զԱւետարան տանէր առ ազգս,*
*Այդ գետն էր որ վարեց տարաւ զհին կրօնին առասպելս·*
*Յանծանօթին Աստուծոյ քարոզ կարդաց անդ յԱթէնս,*
*Կարծեցեալ սերմանաքաղն՝ յամօթարար զիմաստունս,*
*Այսպէ՛ս Հոգին Աստուած զխեցեղէնս արար անյաղթ,*
*Այսպէ՛ս ընտրեալ անօթք վայր շըրջեցին զհին աշխարհ·*
*Եւ 'ի վերայ սըրտին եդին ըզկափարիչ Վէմն անշարժ:*

*Արդ 'ի վեր համբառնալով զաչըս, Մանկունք, 'ի Վեր- [նատանս*
*Մաղթեսցուք հաւատով առ ինքնազօր Հոգին Աստուած,*
*Եւ 'ի մեզ որչափ կամի՝ հեղցէ զկաթիլ իւրոյ շնորհաց,*
*Հոգի ուղիղ սուրբ գիտութեան եւ հանճարոյ բաշխեսցէ մեզ·*
*Մերժեսցէ իսպառ 'ի մէնջ ըզշնչաւոր թիւր գիտութիւն,*
*Ըզհաճոյն իւր ուսուսցէ, որ տայ խորհիլ միշտ ըզվերնոյն:*
*Հոգին տայ, ոչ անխայէ թէ արժանի լիցուք պատրաստ,*
*Օթեւանըս յարդարել 'ի բնակութիւն նմին մաքրութեամբ:*
*Եւ զի միշտ ինքըն շըրջի խընդրէ զոգիս երկիւղած,*
*Որ ըզմարմին վարէ 'ի մեղս չ'առնէ երբէք անդ դադար·*
*Նա՝ 'ի թիւր խորհըրդոց եւ նենգաւոր մըտաց փախչի,*
*Տըրտմի յոյժ յորժամ թափուր մնամք մեք նորին 'ի պար- [գեւաց:*
*Ուստի զանձինըս մեր խորան մաքուր գործով յօրինեսցուք,*
*Կենդանի տաճար լիցուք ըստ հոգեկիրըն Պօղոսի,*
*Զի եկեալ դադարեսցէ եւ հանգիցէ առ մեզ Հոգին:*



# ՆԱԽԱՑՈՅՑ ՊԱՏԿԵՐ ԻՄԱՍՏԻՑ

## ԵՕԹՆԵՐՈՐԴ ԵՐԳՈՑ

———o———

Ի ՀԱՍԱՆԵԼ յաւարտ տնօրինական Տեղեացն սրբոյ Քաղաքին՝ ածէ անդուստ 'ի գերեզման Սուրբ Աստուածամօրն, որ է 'ի ձորն Գեթսեմանի: Հրաշափառ Վերափոխումն նորին յերկրէ եւ աւանդումն ամենասուրբ եւ պայծառ Հոգւոյն 'ի ձեռն Միածնի իւրոյ:

Ապա հրաւիրէ Զմանկտին 'ի գերահռչակ վանս Սրբոց Յակովբեանց: Համառօտ ներբողեան 'ի Սուրբն Յակովբ որդին Զեբեթեայ եւ 'ի միւս Յակոբն՝ Տեառնեղբայր կոչեցեալ:

Ի վախճան բոլոր երգոցն՝ յիշեցուցանէ մանկտւոյն համառօտիւք զօր դատաստանին զահաւոր առեհին զհանդէս, որ անդ լինելոց է եւ կրկին զտնօրինական Տեղիսն յիշատակելով՝ յուշ արկանէ նոցա զերախտիսն Քրիստոսի:

Գոհութիւն Հրաւիրակին առ սէրն իւր Յիսուս եւ կնիք երգոց բանից:

———o———

# ՀՐԱՒԻՐԱԿ

## ԵՐԿՐԻՆ ԱՒԵՏԵԱՑ

———o———

### ԵՐԳ ԵՕԹՆԵՐՈՐԴ

ՄՆԱՑ ինձ աստէն տակաւին գձեզ հրաւիրել, ո՛վ Մանկունք,
) Ի հովիտն աշխարհատեան 'ի ձորըն մեծ Յովսափաթու,
Ի գերեզման հրաշալի Մօրն Աստուծոյ Մարիամու.
Որ այն ինչ գայր հասանէր վախճան կենաց աշխարհի,
Մօրն առ Որդին երթալ պարտ էր, լինել երկնից թագուհի,
Զի ուր Յիսուս՝ անդ պաշտօնեայք, այլ յաւէտ Կոյսն, գի [Մայր էր:
Իջանէր որպէս յառաջն մեծ Գաբրիէլ աւետատուն,
Ի լեա՛ռըն Ձիթենեաց տայր բրաբիոն Կուսին պըսակ.
Ուրա՛խ լեր եւ արդ, ասէր, ո՛վ երջանիկ Մայր Յիսուսի,
Հանդերձեալ ես աւասիկ կալ ընդ աջմէ Նորին փառօք.
Միածին Որդեակըն քո, որ թող ըզքեզ չոգաւ յերկին,
Ի պատիւ ծնողիդ ամբիծ նա խոնարհի գա՛յ առ քեզ,
Հրաւիրել ըզՄայրդ 'ի յերկրէ տանել վերին յԵրուսաղէմ:
Շա՛տ եղեւ քեզ, Մայր Տեառն, կալ 'ի հովտի, վըշտաց [աշխարհ,
Եւ այդպէ՛ս աղքատին կեանըս վարել, կրել տառապանս,
Անհանգիստ զօր ամենայն հալածելով յազգականացդ:
Եկն ահա քո ժամն ուրախ, թողուլ զաշխարհ երթալ յերկինս,
Կալ ընդ Որդւոյդ եւ նա ընդ քեզ մնալ անբաժան յաւիտեան:
Քանի՞ յայնժամ հոգեզուարճ Մայրըն հրճուէր յայս [աւետիս,
Ուրախամիտ դառնայր անդէն 'ի տնակըն իւր աղքատիկ.
Ժողովեալ գային առ նա պաշտող կանայքըն խաչակիր.
Եւ Առաքեալք, որ քառանկիւն 'նդ աշխարհ բոլոր սըփռեալ էին,
Շոյտ գային հասանէին յԵրուսաղէմ ազդմամբ Հոգւոյն,
Հանդիսադիր լինել Կուսին 'ի գերեզման եւ 'ի յերկինս:
Անդ ակըմբեալ բոլորէին չուրջ ըզմահճօք Մօրն անմահին,
Նախազգեստեալք լուսավառ, եւ պաշտէին զտիւ եւ զգիշեր,
Անդադար քաղցր երգովք, ըզԿոյսըն սուրբ օրհնաբանեալ:
Հոգին ազդեալ էր, գիտէին եթէ Որդին միածին,
Որ 'ի ձեռս Հօրն աւանդեաց անդ 'ի Խաչին ըզՀոգին,
Վայե՛լ էր իսկ եւ արժանի, որ ինքն առցէ զՄօր հոգին:
Եւ ահա չարժումն եղեւ, վերանային տանն առիք,
Իջանէր Տէրն 'ի յերկնուստ գայր եւ կանգնէր ըզգըլխով Մօրն.
Լուսափայլ ամպն էր ոտից իւր պատուանդան եւ կայան.

Եւ հովանի գըլխոյ Կուսին, Թափօր լերին հրաշից պէս:
Հրճուէր հոգին կարօտ Մօրն, զուարթանային դէմքն առ
[Որդին,
Ասէր, Որդեա՛կ, եկիր դու հանգուցանել զվաստակեալ Մայրդ,
Առ ահա՛ զհոգիս իմ, ստեղծող հոգւոց, Տէր իմ Յիսուս,
Աւանդէր քաղցրութեամբ 'ի ձեռս Որդւոյն աւանդատուր,
Այնպէ՛ս դիւր եւ հեշտ, որպէս խընծոր տայր 'ի ծոցոյն:
Պետրոս հայէր եւ սքանչանայր ընդ լուսազեղ պայծառ հոգին,
Հարցանէր ստեղծող 'Բանէն եւ պատասխան առնոյր անդ·
Թէ ոգիս մարդկան այդպէս պայծառ ստեղծի ըսկըզբան,
Այլ սիրեցին մարդիկ ըզմեղս, հոգին դարձաւ խաւարըզգած·
Զ՚գիտե՛ս, Պետրէ, մեղքն ըզհոգին խաւար առնէ չարին պէս,
Իսկ անմեղին եւ արդարոյն հոգին պայծառ է լուսոյ պէս:
Վերանայր Տէրն անդրէն, զՄօր լոյս հոգին տանէր 'ի լոյսն,
Եւ ապա պաշտող կանայք պատանեցին զմարմինըն սուրբ,
Եւ բարձեալ Առաքելոց օրհներգութեամբ եւ սաղմոսիւք,
Յայս տապան բերեալ եդին զանօթ զանձուն, թաղուցելոյ·
Ուր պահ մի 'ի պահ եւտուն, միթէ մընա՞յր անդ Լուսոյ Մայրն:
Քա՛ւ, որ ծընաւ զանապականն՝ ապականէ՞ր զՄայրն 'ի հողին·
Բանն, որ չարա՞ր հրաշապէս ըզՄօր մարմինն անապական·
Հաւատա՛մ, Տէր, ոչ երկբայիմ, քո բան հրա՛շք է, հրա՛շք:
Եւ զի յետ երից աւուրց Վերափոխէր Կուսին մարմին,
Այլ թէ ո՞րպէս, ես չըգիտեմ, Աստուծոյ բան է ո՛վ գիտէ·
Հաւա՛տք, հաւա՛տք, այս է միակ հաւատացեալ ոգւոյն կրօն:
Բարդուղիմէ Առաքեալ, որ դեգերէր 'ի տար աշխարհ,
Ի Փոխումն Աստուածամօր, նա գայր ճեպով, ոչ ժամանէր·
Որ ըզԿուսին տապան գըրկեալ լայր եւ սըգայր անմըխիթար,
Պաղատէր թախանձանօք, ո՛վ Առաքեալք եղբայրակիցք,
Տուք ինձ հրաման, որ զկափարիչն առնում 'ի վայր բանամ
[զտապանն,
Միթէ կընքեա՞լ են քահանայք եւ կամ զինուորք պահեն ըզնա·
Ո՛չ, ես բանամ եւ համբուրեմ ըզձեռն առ Պետրոս,
Տո՛ւր, ասէր, Բարդուղիմեայ դու զտիպ Կուսին կենդանագիր,
Թող սփոփանս եւ մըխիթար լիցի ոգւոյն թախծելոյ·
Ընկալեալ զայն խընդալից, առ որ անչափ ըղձիւ տենչայր,
Համբուրէր եւ անձկաբեկ սիրտըն լինէր բերկրապատար,
Լեալ այնպէս պարգեւագիւտ, դառնայր ուրախ 'ի վիճակն,
Անձեւացեաց աշխարհին զայն ընծայէր զօլ պահապան,
Եւ հալածիչ խաւար չարին 'ի տեղւոջէն դիւասարսափ:
Ուր առ ափով Տիգրիս գետոյ շինեցաւ վանքըն Հոգեաց,
Անդ ժողովեալ Կուսան կանայք աւետաւորք Բանին կենաց,
Քարոզէին զԱւետարան եւ գործէին հրաշըս պէս պէս:
Մարմնով անմարմնացեալ՝ լուսեղինաց նըմանէին,
Հոգեաց վանքն էր Հոգւոց տուն, մարմին մեռեալ առ աշխարհ,
Եւ ո՛ւր այժմիկ այդ հոգիք, հոգիք դարձան առ աշխահ,
Գնա՛ց, այլ ոչ դառնայ ճգնաւորաց ժամանակ:
Այլ մեք, ո՛ Մանկունք, առ տապանաւ Կուսին՝ անկեալ

Արտասուօք պաղատեսցուք, զի բարեխօս լիցի առ մեր
Յատենին աշխարհախումբ առ անաչառ Որդին դատող։
Քանզի աստ դայ 'ի կասուլ ըզկալ մարդկան ժողովելոց,
Հեծանաւն արդարութեան զցորեանն կուտէ յերկնից ամբար,
Զյարդըն ո՛հ, անշիջելի հրոյ գեհենին մատնէ յայրումն։
Մի՛ ուրեմն հանցուք 'ի մտաց զահեղ աւուրն ըզհատուցումն,
Մի՛ մեղօք՝ ամօթապարտ ելցուք յատեան Դատաւորին,
Եւ լուիցուք զահեղ վըճիռն, Երթա՛յք յինէն, ո՛վ անիծեալք,
Այլ, զոր սիրոյ ձայնիւ կոչէ, Եկա՛յք, օրհնեալք Հօր իմոյ։
Որ քաղցելոյ բըրդեցիք հաց, ծարաւելոց ետուք ջուր·
Որ զգեցուցիք ըզմերկ թշուառն, ժողովեցիք զօտարն 'ի տուն·
Որ հիւանդին գնացիք 'ի տես, բանտարկելոցն ելիք յայց։
Ազնի՛ւ ծառայք, որ սիրեցիք զԱւետարան եւ ըզպատուէրսն,
Սիրել զԱստուած՝ եւ զընկերն, որ հաւասար եղբայր է,
Մըտէք յերկնից ուրախութիւն յաւէտ ընդ Տեառըն լինիջիք։

Այլ դուք, որդիք խաւարի, որդիք անգութք եւ աննուէրք,
Որ չարարիք ողորմութիւն, ոչ աղքատին, ոչ ծարաւին,
Ոչ օտարին, ոչ հիւանդին, եւ ոչ անտէր բանտարկելոյն,
Ոչ մերկացեալ ողորմելոյն, որ դեգերէր առ դուրըս ձեր,
Թո՛ղ այս անդր, եւ կըռփեցիք զանաւագն՝ եւ ճըշնեցիք չա—
[րաչար։
Եւ զի՞ աստ միայն արդարոց ըզգթութիւն յիշէ Տէր,
Ընդ այն եւ եթ կըշռէ ըզվարձս, անյուշ առնէ զայլ բարի
[գործս,
Յո՞յց տայ արդեօք թէ քան զամէն սէր ընկերին եւ գթութիւն,
Մե՛ծ է առաւել, զի սէր ծնանի զայլ բարի գործս·
Եւ առ այս ճառաբանէ քեզ հոգեխօսըն Պօղոս·
Թէ զամենայն ես առնեմ, մինչեւ մատնել զանձն իմ յայրումն,
Թէ չունիցիմ զընկերին սէր, ոչինչ օգտեմ 'ի գործոցն·
Սէրն է միայն որ կենդանի առնէ ըզգործս ըստ հաւատոցն։
Յո՛ւշ ձեզ, Մանկունք, ուսարուք, չըմոռանալ սէր ընկերին,
Ունել գորով եւ գթութիւն եւ մարդասէր հոգի ազատ,
Բարերարել անխըտիր, երկնաւոր Հօր նըմանելով,
Որ հաւասար տայ աշխարհի զանձրեւըն իւր եւ զարեւ·
Այսպէ՛ս լինիք ճըշգըրտապէս բարի որդիք Բարձրելոյն·
Դատաւորին լըսէք ըզձայն, Եկա՛յք, օրհնեալք Հօր իմոյ։

Մինչեւ ցարդ, ազնիւ Մանկունք, 'ի բոլոր վայրս Տնօրի—
[նական
Մարդացեալ Աստուածորդւոյն, շըրջեալ ընդ իս՝ հասաք 'ի
[լրումն·
Հրաւիրեմ այժմիկ ըզձեզ եւ խաչակրացն 'ի վկայարանս,
Վեհագոյն եւ հրաշակերտ 'ի սուրբ Աթոռըն Յակովբեանց,
Վեհագոյն եւ հրաշակերտ 'ի սուրբ ծօնեալ Հայոց պարգեւ·
Բարձրացեալ յարմարապէս 'ի գլուխ լերինըն Սիօնի·
Ուր հանգչի գլուխըն պատուեալ Առաքելոյն Յակովբայ
Որ ընդ իւրումն հարազատ խոստանային ըմպել զբաժակն։

Անդ 'ի հանգիստ կայ եւ մարմնով, որ արդարոյ կըրէր զանուն,
Միւս Յակովբ աշակերտ, որ Տեառնեղբայր յորջորջէր։
  Նախ 'ի մատուռըն մըտեալ՝ տացուք համբոյր Գըլխոյն [այնմիկ,
Որ պարծանք է Հայոց ազգին, ում ժողովուրդ դիմէ յուխտ.
Խընդրէ առնու, քանզի Աստուած փառաւորէ զծառայն իւր։
Աստանօր զբարի բողբոջըն Զեբեդեայ դրուատեցից,
Զտարփալին Յակովըն ասեմ, քան ըզնախնին գերազանցեալն.
Նա եւ եթ 'ի մի գիշեր ըզցանկալին արկեալ 'ի բուռն,
Թողուլ երբէք ոչ կամէր, չեւ ըզփափաք սըրտին առեալ։
Սա դերրեակ ամըս ողջոյն զտիւ եւ գիշեր միշտ անբաժան,
Ցանկալւոյն ըզհետ շըրջեալ՝ սիրով նորին սիրտըն լընոյր։
Նա ցաւոցն ամոլաջլին չ'հանդուրժելով՝ ձըգէր ըզՏէրն,
Կաղացեալ այլ ոչ կարէր վազել ըզկնի եւ ըմբռնել.
Օրինակ որդւոցըն Թոյլ, որ կաղացան կամօք իւրեանց,
Զհետ շաւղացըն երկնաչու ճըշմարտութեան ճանապարհին։
Սա որոշեալ 'ի նոցունց՝ ճետ քաջաշնորհ երեւեցաւ,
Զօրացաւ եւ քաջընթաց անկաղ ոտիւք սուրբ հաւատոյն,
Հետեւեցաւ Քրիստոսին եւ երկնատար կենաց ուղւոյն։
Նա զորդիս երկոտասան ծընեալ մարմնով տայր աշխարհի,
Իսկ սա եղեւ Առաքեալ գնաց 'ի վիճակն իւր 'ի Սպանիա,
Անդ ըզԲանն քարոզեաց այն մոլեկրօն անաստուածիցն.
Ի Քրիստոս հոգւով ծընեալ՝ զազգըն ողջոյն՝ տայր երկնից։
Որ Յիսուսին խոստացաւ յօժար ըմպել զմահուն բաժակ,
Այլ ա՛նդ, ուր Տէրըն իւր արբ յիւր ազգէն դըժընդակ.
Վասն որոյ դառնայր անդուստ եւ 'ի Սաղիմ աճապարէր,
Տեառըն իւր նըմանելով, որ եկն ինքնին 'ի չարչարանս։
Ուր 'ի ժանտ Հերովդէսէն եղաւ 'ի բանտ դերդ Յովհաննէս,
Արբ ըզնոյն բաժակ արեան հատմամբ գըլխոյն Քրիստո— [սանուէր.
Ում համբուրման տարփացեալք 'ի սպաս հասին զուարթունք [երկնից
Եւ բարձեա՛լ զայն 'ի միջոյ լուսասպիտակ դաստառակաւ,
Բերին այսր յԵրուսաղէմ, ուր սըգաւորք նըստեալ լային,
Աստուածամայր եւ Յովհաննէս եւ Յակովբոս Առաքեալք,
Անդ առաջի նոցա եդին ըզգլուխըն սուրբ արիւնթաթախ։
Քանի՞օն եւս կըրկին կոծ յաւելոյր մըտերմացն,
Լացի՛ն լացի՛ն եւ ապա թաղուցին աստ զանգիւտ գանձն։
  Սիրելի էր Յակովբայ բնակել գըլխովն 'ի Սուրբ Երկրիս,
Լինել հուպ վեհագունի Գըլխոյն մեռեալ եւ յարուցեալ.
Իսկ մարմնովն կալ յիւր վիճակն, ուր քարոզեաց ըզկենաց Բան,
Իբրեւ յօդիչ որոշելոցն 'ի մի գըլուխըն Քրիստոս.
Ցոր միանան հանուր անդամք եկեղեցիք հեթանոսաց։
Նա՝ մասամբըն իւր միով զինքն ընծայեաց ազգիս Հայոց,
Իսկ միւսովըն՝ սեպհական իւր վիճակին Սպանիոյ։
Այսպէ՛ս թէ աստ եւ թէ անդ պարգեւ անգիւտ բաշխեցաւ,
Եւ հոգւովն առ Քրիստոս միշտ բարեխօս նոցին եւ մեզ.

*Ուր արդ Նըստի յաջմէ Փրկչին՝ արեամբն 'ի մահ մըկըրտելով:*
*Դիմեսցուք այժմ 'ի Նըշխարս եւ փոքըրկանըն Յակովբայ,*
*Որ ամփոփին յԱւագ խորան առ սեղանով վիմին անշարժ.*
*Վըշտըմբեր ճըգնող ոսկերք, որ փըշրեցան յազգէն ժըպիրհ:*
*Փոքըրի՛կ, այլ մեծութեամբ շնորհացըն իւր յոյժ անքանակ,*
*Արդա՛ր, անարատ գնայր 'ի շաւիղս վարուց իւրոց,*
*Տեառնեղբայր, զի ազգակից եւ մերձաւոր էր Քրիստոսին,*
*Ամոխալս սիրասնունդ 'ի մի տոհմէ շառաւիղեալք:*
*Այսոքիւք պատուեալ եղեւ 'ի մէջ գընդին Առաքելոցն,*
*Նախաթոռ յԵրուսաղէմ Նըստիլ 'ի գահ Դաւթի որդւոյն:*
*Յիսուսին Նըմանելով սիրեաց եւ սա զՅակովբայ տուն,*
*Անդ եկաց, անդ քարոզեաց, որ զԻսրայէլ ածէր 'ի լոյսն:*
*Այլ բանիւըն իւր խըրատու գրէր խօսէր առ հեռաւորս,*
*Առ 'ի սփիւռս երկոտասան Հըէից ազգացըն նորակոչ.*
*Յորդորէր, սոսկ հաւատոյն ապաստանիլ ընդունայն է,*
*Եթէ ոչ տալ ըզպըտուղ գործոց բարեաց՝ փոյթ ունիցիք:*
*Ծառ էք Նոր Քրիստոսատունկ, որ արդ ծաղկեալ էք հաւատով,*
*Տո՛ւք պըտուղ, զի մի՛ հատջիք սուր տապարաւն եդեալ 'ի հուպ:*
*Սիրտ վառէր աննիւթ բոցովն եւ նախանձու Եղիային,*
*Ո՛չ Նըման Նըմին փախչէր՝ զանգիտելով յազգէն սոսի,*
*Այլ իբրեւ զվէմ հաստատուն կայր 'ի միջի զայթակղելոցն,*
*Ըզշինողըս կըշտամբեր, որ զվէմն անկեան անարգեցին:*
*Դարձեալ սիրով աղաչէր ընտրել անդրէն զայն 'ի շինուած,*
*Հաւատով միանալ եւ հաստատիլ 'ի վէմն անշարժ:*
*Մի՛, ասէր, հարեալ 'ի Նա դուք փըշրիցիք մանր 'ի կորուստ,*
*Եւ հողմով բարկութեան հոսեալ այսր անդըր ցըրուեսջիք:*
*Այլ որդիքն ապառում ձանձրացեալ յոյժ յանդիմանչէս,*
*Խորհեցան խարդաւանել զԵրանելին նենգաւ 'ի մահ,*
*Դարան գործել Արդարոյն եւ կալ անմասն յօրհնութենէն:*
*Վասն որոյ հնարիւք հանեալ զնա տաճարին 'ի յաշտարակ՝*
*Եւ անդուստ արկին 'ի վայր, որ բարձրացաւ հոգւովն յերկինս.*
*Մինչ ոչ մեռաւ սքանչելեօք՝ Թափչով ըզգըլուխըն փըշրեցին,*
*Բարձին զԱրդարն յաշխարհէս, զի դըժպըհի էր նոցա յոյժ:*
*Մատուցեալ արդ, ո՛վ Մանկունք, եւ մեք ոգւով փափա-*
*[գողին(*),*
*Արդարոյն Նըշխարաց տացուք համբոյր սիրոյ շըրթամբք.*
*Երկնամբարձ գըլխոյն այնմիկ, որ զհամայնից զըլուխըն*
*[Քրիստոս*
*Ընդունէր, վասն այնորիկ Թափչով հարեալ խորտակեցաւ.*
*Աչա՛ցն արտասուահեղ, որ վասն ազգին լայր եւ հոգայր,*
*Բերանո՛յն որ լոյս բըղխէր որպէս խորան Աստուծոյ,*
*Որ վըկայ լինէր Բանին եւ դաւանէր ըզնա Քրիստոս,*
*Որ դըպրաց, փարիսեցւոց յանդիմանիչ էր անաչառ:*
*Ձեռա՛ցն Աստուածակիր, որ պաղատէր տարածելովն,*

---

(*)Սարգիս վարդապետ *Շնորհալի կոչեցեալ*, որ կաթուղիկեայց թուղթս մեկնեալ է յի ճոխաբանութեամբ:

Որ զպատարագն արիւնագեղ նախանուէր մատուցանէր:
Սըրբութի՛ն այն սըրբազոյն, որ Յիսուսին էր բնակարան.
Որ անխառն էր եւ անախտ 'ի բնաւ չարեացըն եկամուտ.
Ծընգա՛ցըն խըստացեալ 'ի կըրկնելոյ ծունր 'ի յաղօթս,
Որ տըկար էր եւ կըթոտ առ 'ի պահոցըն պընդութեան.
Ոտի՛ցն ընթացելոց մինչ 'ի տաճարըն սըրբութեան,
Որ 'ի տես հիւանդաց՝ երթայր հոգայր եւ աղօթէր:
Համբուրիւ ողջունեսցուք զբոլոր մարմինն սըրբասընեալ,
Զպատարագն անուշահոտ եւ զբանաւորըն ողջակէզ,
Ըզպարկեշտն եւ ողջախոհ ըզկուսութեամբըն զարդարեալ,
Ըզտաճարըն մաքրութեան կազմեալ մասամբքն արդարութեան,
Ուր եկեալ Քրիստոս ընդ Հօր օթեւանէր ըստ իւր բանին:
Որ երգոյս ձայնիւ, Մանկունք, ելիք հոգւով յԵրուսաղէմ,
Ուր յայտնեցաւ սէրն Աստուած՝ անճառ սիրովն առ մարդիկ.
Տիպ սիրոյն Աստուածային նըկարեցաւ 'ի հոգիս ձեր,
Բեթլեհէմի Մըսրոյն նըկար, Սիօնի լերին Խաչին նըկար.
Սուրբ Յարութեան վէհ տաճարին, Գերեզմանին վիմին նըկար.
Երանի՛ ձեզ թէ պահիցէք 'ի հոգիս ձեր ըզնըկարեալսն:
Իբրու 'ի վէմըս քանդակեալ անեղծ մնասցեն այս յիշատակք:
Զայսոսիկ յուշ ածելով՝ նորոյ Սիօնի ծընեալ Մանկունք,
Ի սէր Փըրկչին վառեալ մըտօք՝ օ՛ն փութացէք յԵրուսաղէմ,
Յոր ածի ես ըզձեզ հոգւով եւ Հրաւիրակ եղէ երգովս:
Արդ յիշատակ թողում ձեզ այս, ես մեռանիմ երթամ առ
[հարսն,
Քանիցս անգամ թէ ընթեռնուք միշտ յիշեցէ՛ք զԵրուսաղէմ.
Ես յիշեցի, երիցս անգամ եկի տեսի զԵրուսաղէմ.
Շըրջեցայ, համբուրեցի, յորս կոխեցին ոտք Փըրկչին,
Ուխտ եդի որպէս Դաւիթ ոչ մոռանալ զԵրուսաղէմ:
Առ քեզ բանիս ընդդէմ դարձուցից արդ, սէր իմ Յիսուս,
Քեւ ըզկնիք յաւարտ երգոյս դընեմ վերջին վայելչօրէն,
Խոստովանիմ թէ քո շընորհ քերթող առնէ զծերն ապիկար:
Խրախուսեալ 'ի քէն, ո՛վ Տէր, անդ յիսկզբան մըտի յայս
[դուռն.
Քե՛զ ընդ ելանելս՝ աստ ընծայեմ ըզհոգութիւն:
Ո՛վ քո սիրոյդ, միթէ հո՞ւր է, զոր արկեր դու յերկիր
[մարդկան,
Որ զհամօրէն աշխարհ վառէ՝ վարեալ տանի յԵրուսաղէմ.
Վարեցե՛ր եւ զիս, ո՛վ Տէր, մինչ ես հոգւով կայի վարեալ,
Այլ դու արդ հոգւով մարմնով զիս վարեցեր յԵրուսաղէմ:
Մինչ Մանուկ էի տըհաս յիս թագուցեր սիրոյդ ըզկայծ,
Եւ վառեցեր զճրագ բանիդ, որ լոյս տայր ինձ կենաց շաւիղ.
Արդ հասի ես, անցին զինեւ եօթանասուն ամք ծերութեան.
Ժըտեմ 'ի քէն, լոյս իմ Յիսուս, պահեալ զճրագն իմ լու-
[սավառ,
Ո՛հ, չիջանիմ ես 'ի խաւար եթէ քո լոյս չպահէ զայն:
Եւ մի՛ հանէր զհոգիդ յինէն մինչեւ իցեմ ես մեռեալ.
Զի յամենայն 'ի սըրտէ զՄարդեղութիւնդ սիրեցից,

*Եւ յիշեցից զԵրուսաղէմ, Սիօնի Սուրբ լեառն եւ Խաչիդ ճառ:*
*Դաւիթ գոչէր, Երուսաղէմ, ո՛վ նախասկիզբն ուրախութեանս,*
*Թէ մոռանամ զքեզ չը յիշեմ, թող կցեսցի լեզուս 'ի քիմս.*
*Եւ ես ընդնոյն կրկնեմ, Յիսուս, յիշել ընդքոյդ Երուսաղէմ.*
*Տո՛ւր ինձ արեւ, Տէր, զի կեցից եւ յիշեցից զԵրուսաղէմ.*
*Յորչափ չընչէ հոգիդ յիս երգ, ես երգեցից զԵրուսաղէմ:*
*Այլ թէ կոտրէ մահն ընդգըրիչս եւ խորտակի ոգւոյս քընար,*
*Ես յայնժամ 'գերեզմանէս երգեմ Երկոյս յիշատակաւ.*
*Զի երգահան եմ Սուրբ երկրիդ եւ Հրաւիրակ Սիօնի որդւոց:*
*Զի՞նչ տրիտուր կարէի տալ, ո՛վ մեծատուր չընորհաց աղբիւր.*
*Անբաւ սիրոյդ, Խաչիդ մահուն փոխարինել մարդ ունի՞ բան.*
*Ես ունիմ սիրտ, զայն ետու քեզ, ասա՛ Որդեակ, բաւ է այդ:*
*Իսկ դու զի՞նչ տաս ինձ, ո՛վ Տէր, յաչխարհ աստ նեղութի՛ւն.*
*Արդա՛ր ես, Տէր, բայց ապա տաս* Արքայութի՛ւն,
[Արքայութի՛ւն, եւ այլ ոչինչ ԱՄԷՆ:

(ՎԵՐՋ)



# ՀԱՄԱՌՕՏ

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ Ի ՎԵՐԱՅ ՍՈՒՐԲ ՏԵՂԵԱՑՆ

## ՈՐՔ ՅԻՇԱՏԱԿԵԱԼ ԵՆ

## Ի ՀՐԱՒԻՐԱԿԻՍ

---o---

ՆԱԶԱՐԷԹ. Յիսուսի հայրենիք հեռի կայ յԵրուսաղէմէն իբրեւ երից աւուրց ճանապարհ, յորում էր հայրենի տուն Աստուածահօրն Յովսէփայ եւ է արդ վանք 'ի ձեռս Լատինաց. ունի վայելչաշէն տաճար մի: Իսկ տեղին, յոր էջ Գաբրիէլ եւ աւետիս ետ Կուսին՝ քանի մի աստիճանօք խոնարհագոյն է քան զյատակ եկեղեցւոյն եւ ունի նմանութիւն Բեթլեհէմեան այրին:

ՅՈՎՀԱՆՆՈՒ ԾՆՈՒՆԴ. Իբր մի ժամ եւ կէս հեռի է յԵրուսաղէմէն, 'ի լեռնակողմն՝ ուր շինեալ կայ վանք Յովհաննու ծննդեան. ունի գեղեցիկ եւ վայելուչ եկեղեցի մի 'ի ձեռս Լատին կրօնաւորաց: Իսկ բուն ծննդավայր ցածուն այր մի է. քանզի վիճակեցաւ Մկրտիչ ծառային Տեառն իւրում նմանելով 'ի մէջ այրի ծնանիլ:

ԲԵԹՂԵՀԷՄ. Քաղաք Դաւթի, բացագոյն կայ յԵրուսաղէմէն իբր երկու ժամ յարեւմտեան 'ի հարաւակողմն, յորս կառուցեալ կան երից ազգաց՝ Յունաց, Հայոց եւ Լատինաց ընդարձակ վանորայք եւ բազմաթիւ սենեակք 'ի պէտս միաբան կրօնաւորաց եւ ուխտաւորաց: Մեծ եկեղեցին, որ իբր գաւիթ համարի Սուրբ Ծննդեան տաճարին, ընդարձակ է յոյժ, շինեալ 'ի վերայ միաձոյլ քարեղէն մեծամեծ յիսնից սեանց, ոյր կամար թուի յառաջագոյն, սրբատաշ քարամբք յօրինեալ իցէ, բայց արդ տեսանեմք 'ի կարծրագոյն փայտից շինեալ է 'ի վերջին ժամանակս:

Իսկ այրիկն հովուաց հրաշալի տեղին Սուրբ Ծննդեան Փրկչին մերոյ՝ է 'ի ներքոյ Աւագ խորանին, յոր իջանեն աստիճանօք եւ 'ի վերայ շինեալ կայ սեղան կիսաբոլոր. հուպ սմին հանդէպ Ծննդեան սեղանոյն կայ Մսուրն անբանից, ուր եդաւ նորածին մանուկն Յիսուս եւ ընծայեցաւ 'ի մոգուցն:

ՅՈՐԴԱՆԱՆ ԳԵՏ. Հեռի կայ յԵրուսաղէմէն իբրեւ միոյ աւուր ճանապարհ. որ 'ի հիւսիսոյ 'ի հարաւ ընթացեալ թափի 'ի մեռեալ ծով: Եւ մեռեալ ասի զի չիք 'ի նմա կենդանի: Այժմ յեզերս Յորդանանու կան երկու փոքր վանորայք Յունաց, որք իբրեւ հիւրանոցք ծառայեն Յոյն ուխտաւորաց ոյք կարի ջերմեռանդ են երթալ Յորդանան լուանիլ ջրովն, որով լուաց Փրկիչ զմեղս աշխարհի:

ԼԵԱՌՆ ՓՈՐՁՈՒԹԵԱՆ. Կայ հանդէպ Երիքովի յարեւմտից կուսէ, եւ է փոքրիկ լեռնակ ուր եկաց Տէրն մեր եւ ժուժկալեալ զքառասուն օր՝ յաղթեաց փորձիչ դաւաճանին:

ՏԻԲԵՐԱԿԱՆ ԾՈՎ. Որոյ ջուրն անոյշ է եւ ձկնաւէտ, եւ ձգի հիւսիսոյ 'ի հարաւ, ուր մարմնացեալ Աստուածորդին յաճախ շրջէր յեզերս ծովակին, եւ անդ ընտրեաց զձկնորս Առաքեալս, որ ապա որսացին զմարդիկ 'ի կեանս:

ԼԵԱՌՆ ԹԱՓՕՐ. Կայ հանդէպ Նային քաղաքին. յառաջին ժամանակս 'ի գլուխ Թափօրական լերինն բազում մենաստանք շինեալ կային, որք յերեսաց արշաւանաց քանդեցան. բայց արդ մնացեալ կան դարձեալ 'ի ձեռս Լատինաց եկեղեցիք եւ յիշատակք Յիսուսի հրաշալի Այլակերպութեան:

ԲԵԹԱՆԻԱ ԳԻՒՂՆ. Զմի ժամ հեռու յԵրուսաղէմէն եւ կից է 'ի պարանոց Համբարձման լերինն: Անդ է գերեզման բարեկամին Ղազարու, որք զոր յարոյց Տէր 'ի մեռելոց: Անդ էր եւ տուն Սիմոնի բորոտին. ուր հրաւիրեցաւ Յիսուս 'ի մօտակայ աւուրս չարչարանաց եւ օծաւ 'ի մեղաւոր կնոջէն ազնիւ իւղով նարդեան:

ՍԻՕՆ ՎԵՐՆԱՏՈՒՆ. Որ է մերձ Փրկչին վանուց մերոց 'ի հարաւակոյս. զոր շինեաց Դաւիթ արքայն եւ անդ հանգոյց զտապանակն Աստուածային:: Ի մեծահաւատ Հեղինէ թագուհւոյն շինեալ կային աստ յառաջին դարս քրիստոնէութեան՝ կրկին եկեղեցիք, մինն 'ի տեղի իջման Հոգւոյն Սրբոյ, բարձրագոյն կաթուղիկէիւ եւ միւսն 'ի ներքոյ նորին, ուր կան շիրիմք Դաւթի եւ Սողոմոնի. էր երբեմն 'ի ձեռս Լատինաց. իսկ ' վաղուց հետէ Արաբացիք գրաւեալ են եւ չկարէ ոք 'ի քրիստոնէից մտանել անդր:

ԳԵԹՍԵՄԱՆԻ ՁՈՐՆ. Յոր ցուցանեն զպարտէզ ուր աղօթեաց Յիսուս 'ի գիշերին մատնութեան. Փոքր ինչ բացագոյն է յԱստուածածնայ գերեզմանէն: Այժմ 'ի ձեռս Լատինաց է պարտէզն. եւ 'ի շրջապատ պարտիզին 'ի ներքուստ կողմանէ յորմունս զետեղեալ կան Յիսուսի խաչակրութեան զանազան դրէւք եւ ձեւով, արձանագործ փոքր պատկերք:

ՏՈՒՆՆ ԱՆՆԱ ՔԱՀԱՆԱՅԻՆ. Որ այժմ եկեղեցի եւ վանք Հայոց. շինեալ 'ի հարաւակողմ քաղաքին առ պարսպօք սուրբ Յակովբայ վանուց. փոքր՝ այլ գեղեցիկ յոյժ եւ կոչի սա նախկին բանտ Քրիստոսի. քանզի յորժամ ըմբռնեցին զՅիսուս նախապէս ածին այսր, եւ ծառն յոր կապեցին զՏէրն առասանաւ, աստ է:

Թերեւս զարմանայ բնադէտն, թէ ծառն ապրի՞ մինչեւ 'ի քսան դար: Այո՛, զայդ քաջ գիտեն Արաբացիք, զի յորժամ կարի ծերանայ ծառն՝ զայն կտրեն 'ի հողաբերանոյն եւ անդրէն արմատք նոր մանուկ շառաւիղս արձակեն, զի արմատք ձիթենւոյն կենդանի մնան եթէ պահպանին հողով եւ մանրախճով:

ԱՊԱՐԱՆՔ ՊԻՂԱՏՈՍԻՆ. Որ կայ 'ի մէջ քաղաքին առ ճանապարհաւ, որ հանէ 'ի դրանէն երեւելից. թէ եւ 'ի ժամանակէ անտի բազմադիմի փոփոխութիւնս կրեալ է. բայց կայ այժմ տեղին այն շինեալ զինուորանոց տէրութեան:

Հանդէպ այսմ 'ի միւս կողմ ճանապարհին է տեղին ձաղանաց եւ առի Փուշ պսակ. քանզի յորժամ վճիռ եհատ Պիղատոս դատաւոր վասն մահուանն կենարարին, այսր ածին զինուորքն զՅիսուս, պսակ կազմեալ բոլորակի 'ի փշոց եդին 'ի գլուխ նորա եւ այլ պէս պէս անարժան կերպիւ ձաղեցին զՏէրն մեր:

ՍՈՒՐԲ ՅԱՐՈՒԹԵԱՆ ՎԵՀԱԳՈՅՆ ՏԱՃԱՐՆ. Յոր ընդ մտանելն 'ի բարձրակամար դրանէն, հուպ հանդէպ առաջի աչաց երեւի վէմն Պատանատեղ, որ ահաւոր տպաւորութիւն գործէ 'ի հոգի մարդոյն, եւ իբր աչօք նկատէ 'ի վերայ նորուն կենդանին յաւիտենից մեռօրինակ տարածեալ 'ի վերայ վիմին 'ի մահկանացու ձեռաց պատանի: Ո՛վ, քանզի՞ փղձկեալ սրտիւ ջերմեռանդագոյն ուխտաւորք զդէմս 'ի վերայ վիմին եդեալ համբուրեն արտասուօք եւ յիշեն զմահ Տեառն:

ԳՈՂԳՈԹԱ. Զենարան անմահ գառինն բարձրացեալ կայ 'ի մէջ լայնածաւալ Տաճարին Ս. Յարութեան. ընդ որ ելանեն աստիճանօք, եւ անդ իսկոյն հանդէպ աչացդ երեւի Մարդադէմ պատկեր խաչելոյն. որ կայ բազկատարած 'ի փայտ մահու սեւեռեալ, ընդ որ 'ի հայելն ո՞ իցէ այն, որ

սրտիւք ոչ ճմլիցի, եւ անկեալ առ պատուանդան խաչին ոչ երգեսցէ· «Խաչի քո Քրիստոս երկիրպագանեմք, եւ զխաչելութիւնդ քո փառաւորեմք· եկայք հաւատացեալք երկրպագեսցուք Քրիստոսի Աստուծոյ մերոյ», եւայլն։

**ՏԱՐԱԾՄԱՆ ՏԵՂԻՆ·** Մօտ առ ընթեր կայ 'ի ձախակողմ Գողգոթային· ուր խաչահան զինուորք տարածեցին նախ զՏէրն 'ի վերայ փայտ խաչին զոտս եւ զձեռս քարշեալ բեւեռեցին, եւ ապա անդուստ վերացուցեալ աղաղակաւ բերեալ կանգնեցին 'ի գագաթան Գողգոթայի գոլ 'ի տեսիլ եւ նշաւակ ամենեցուն։

**ԳԵՐԵԶՄԱՆ ՔՐԻՍՏՈՍԻ·** Որ ընդունարան եղեւ մեռեալ խաչելոյն եւ ուր պահ մի ննջեաց Յուդայի Առիւծն, կայ 'ի միջակէտ Ս· Յարութեան Տաճարին· յորոյ վերայ շինեալ կայ փոքրիկ գմբէթ մի, որ չէ այնքան վայելուչ եւ արուեստաշէն

Յառաջին դրանէ Գերեզմանամատրանն՝ ընդ մտանելն՝ կայ առաջի մի վէմն, յորոյ վերայ լուսափայլ Հրեշտակն նստեալ աւետէր կանանց՝ «Զի՞ խնդրէք զԿենդանին ընդ մեռեալս»· յերկրորդ դրանէն մտեալ՝ անդ է ահա Փրկչին Գերեզման եւ վէմն անշարժ, որ 'ի Բեթլեհէմի Մսրէն հոլովեցաւ· խորտակեաց զզօրութիւն մահու եւ աշխարհի իշխանին· եւ յարուցեալ 'ի մեռելոց գոչեաց զօրութեամբ «Ո՞ւր է, մահ՝ յաղթութիւն քո եւ ո՞ւր դժոխք՝ խայթոց քո»։ Ո՛վ աստ կարող է չափել զհաւատս ջերմեռանդ հաւատացելոյն, որ անդադար մտանեն ելանեն 'ի Գերեզմանամատուռն· եւ համբուրեն զմահու Վէմն, որ կեանս ետ մահացեալ ոգւոց։

Երանի՞ թէ ճշգրտահան նկարիչ լինէի եւ կարէի նկարել այն վսեմագոյն հանդէսն, որ լինի 'ի վերջի շաբաթ օր 'ի ժամ լուսահանութեան։

Բովանդակ սուրբ Յարութեան Տաճարն ցնծայ զանազան քրիստոնեայ ազգաց լի հաւատացելովք, յայն մեծ օր, զոր Աստուած առանձին ստեղծ՝ Քրիստոսի ժողովրդոց ցնծութեան օրն է· նա բուռն ցնծութեամբ ծափս հարկանէ· երգէ զԴաւթին քնար · Ծա՛փս հարէք, ամենայն հեթանոսք։ Եսային եւս 'ի վերայ գմբէթին կացեալ զգիրս իւր կարդա· «Լուսաւորեա՛ց Երուսաղէմ, զի հասեալ է լոյս քո»· խաժամուժ կարծեցեալ ամբոխն Լո՛յս լո՛յս աղաղակէ եւ ահա Լուսահան պաշտօնեայք որք կան 'ի ներքս Մատրան Գերեզմանին 'ի կանթեղացն անտի զխրձունս մոմեղինաց վառեալ տան 'ի դուրս։ Եւ ահա աստ է տեսանել· ժողովուրդ ցնծութեան աղաղակաւ եւ որոտմամբ վերացուցանէ ըզՏաճարն։ Աստ է տեսանել թէ ո՞րպէս լուսատենչ հաւատացեալք զլոյսն 'ի ձեռանէ միմեանց յափշտակեն· եւ բարւոք առնեն, զի արքայութիւն երկնից բռնաբարի եւ բռունք յափշտակեն զնա։ Եւ ահա 'ի խուռն վայրկեանի տաճարն եւ իւր համազգային հաւատացեալք 'ի մէջ լուսոյ ողողին։ Եւ Աստուած Հայր այսպէս փառաւորէ զտեղի սրբութեան Որդւոյ իւրոյ· զի ասաց ինքն «Հա՛յր, փառաւորեա՛ զՈրդի քո, զի եւ Որդի փառաւորեսցէ զքեզ»։

Քաղաքակրթեալ լուրջ եւ զգօն մարդ մի տեսանեմ, որ 'ի բացուստ կացեալ ուշով դիտէ յայս տեսարան, եւ 'ի միտս իւր դատաստան առնէ· միթէ ա՞յս իցէ երկիւղածութիւն եւ փառաւորութիւն Տաճարին Աստուծոյ։ Լրջամիտ մարդն այսպէս դատի եւ անդէն գայթակղի 'ի միտս։

Այլ թէ ոք յուշ ածէ զբան Փարիսեցւոցն՝ ոչ գայթակղի, այլ առաւել չինի 'ի հաւատս, զի ասացին նոքա վասն Յիսուսի· «Միթէ յիշխանաց կամ 'ի փարիսեցւոց ոք հաւատա՞ց 'ի նա, այլ այն խաժամուժ ամբոխն, որ ոչ գիտեն զօրէնս եւ նզովեալք են»։

Այո՛ Քրիստոսի հաւատացող, եւ զՔրիստոս սիրող եւ պաշտող՝ պարզամիտ եւ խաժամուժ ամբոխն էր, որ յաճախ երթայր զկնի նորա, ուր եւ երթայր։ Այո՛ այդ հասարակ եւ առաւել աղքատիկ դասուն ժողովուրդն է, որ յիշէ զԵրուսաղէմ եւ զտեղիս յիշատակաց մարդացելոյն Աստուծոյ, յամենայն տարի ջերմեռանդ ոգւով դիմէ յուխտ, եւ 'ի վաստակոց քրտանց իւրոց բաժին հանեալ կաթիլ կաթիլ նուիրէ Ս· Տեղեաց 'ի պահպանութիւն եւ 'ի փառս փառաւորելոյն Երուսաղէմի։

ՀԱՄԲԱՐՁՄԱՆ ՏԵՂԻՆ ՔՐԻՍՏՈՍԻ. Է 'ի կատար լերին Ձիթենեաց յարեւելից կուսէ յանդիման քաղաքին. ուր թէպէտ յառաջին դարս շինեալ կայր փառաւոր եկեղեցի, այլ զանազան բազմադիմի պատճառօք քանդեալ է եկեղեցին, միայն շրջապատ Ս. Տեղւոյն պարպեալ, եւ 'ի միջի կայ գմբէթ մի, յորում կայ Ոտնատեղին Յիսուսի: Ի տարւոջ մի անգամ յամենայն քրիստոնեայ ազգաց 'ի տօնի Համբարձմանն անդ վրան հարեալ՝ պատարագ մատուցանեն 'ի յիշատակ հրաշափառ Համբառնալոյն Մարմնացեալ Աստուածորդւոյն, որ եթող զաշխարհ եւ գնաց առ Հայրն. յետ կատարելոյ զխաչին եւ փրկութեան խորհուրդ:

ԳԵՐԵԶՄԱՆ ԱՄԵՆՕՐՀՆԵԱԼ ԼՈՒՍԻՆ. Որ ամփոփեալ կայ 'ի մէջ ձորոյն Գեթսեմանի եւ է խորագոյն յոյժ գրեթէ քառասուն եւ աւելի եւս աստիճանօք իջանեն 'ի վայր: Յատակագիծ Տաճարին խաչաձեւ իմն է. եւ վերին կամարք կարի հնաշէն երեւին: Ասեն թէ 'ի վերայ խորագոյն տաճարիս՝ յառաջին դարս կայր հրաշակերտ եկեղեցի, զոր 'ի վաղուց քանդեալ են արշաւանաց ոտք: Յամենայն աւուրս անխափան 'ի մէնջ եւ 'ի Յունաց պատարագ մատուցանի 'ի վերայ դերեզմանի Մօր Տեառն: Ո՞ կարէ պատմել աստ զջերմեռանդութիւն արանց եւ առաւել կանանց որք գան երամովին, եւ դրկեն զտապան երկնից Տիրուհւոյն, լան եւ խնդրուածս առնեն 'ի նմանէ, որ վասն իւր ուխտաւորաց բարեխօսէ առ Որդին իւր Միածին:

ԱԹՈՌ ՍՐԲՈՑ ՅԱԿՈՎԲԵԱՆՑ. Որ է վիճակ Հայոց եւ առանձին սեփհականութիւն. արդարեւ չնաշխարհիկ է, եւ մեծահռչակ անուամբ համայն քրիստոնեայ ազգաց տեսութեան տենչալի հանդիսանայ, իբրեւ գերկին պանծայ մեծվայելչութեամբն իւր 'ի քաղաքին Երուսաղէմ. բարձրացեալ 'ի վերայ լերինն Սիոնի. ուր հանգչէր երբեմն տապանակն Աստուծոյ եւ ուր Դաւթի արքունիքն էր, որ 'ի հալածանս իւր սիրահար էր Սիոնին, եւ երգէր Սաղմոսարանաւն. «Ո՞րպէս սիրելի են յարկք քո, Տէր զօրութեանց, ցանկայ եւ փափագի անձն իմ 'ի գաւիթս քո»:

Սուրբ Յակովբեանց վանք, ոչ միայն իւր նուիրական դիրք պանծալի է. այլ եւ իւր լայնածաւալ ընդարձակութեամբ մեծ առաւելութիւն ունի քան զայլ ամէն վանօրայս, որք կան յԵրուսաղէմ 'ի ձեռս այլ եւ այլ քրիստոնեայ ազգաց: Վասն այս իսկ զարմանան ուխտաւորք Եւրոպիոյ եւ ասեն՝ չգիտե՞մք, թէ ո՞րպէս յաջողեալ է, զի այսպիսի անգուգական հաստատութիւն մի՝ բաժին վիճակեալ է, այն անկեալ եւ նուաղեալ ազգին Հայոց: Զայս ասեն եւ չգիտեն զանցելոց պատմութիւն՝ թէ Հայք ոչ միայն զվնաս Սուրբ Յակովբեանց, այլ եւ զեօթանասուն վանօրայս ունէին յԵրուսաղէմ յառաջին դարս. որոց աւերածեալ տեղիք դեռ եւս նշմարին:

Սուրբ Յակովբեանց վանք շուրջանակի ամրափակեալ է պարսպօք եւ 'ի միջի շինեալք կան թէ 'ի նախնեաց անտի եւ թէ 'ի նոր ժամանակս առաւել քան զեօթն հարիւր սենեակք. 'ի պէտս միաբանից եւ ուխտաւորաց. յորս իբրեւ մեծագործ եւ հոյակապ շինուածք համարին, Պատրիարքարանն, Ուսումնարան եւ մի եւս Նոր թաղ. որ յիշատակք են 'ի Տէր Հանգուցեալ Յովհաննէս Պատրիարքին: Բաց 'ի յայնչափ շինուածոյն որ իբրեւ զփոքրիկ քաղաք մի ձեւանայ, վանքն ունի նաեւ ընդարձակ պարտէզս, որք առաւել եւս ընդարձակեն եւ վայելչացուցանեն զսահմանս վանուց:

Սուրբ Յակովբեանց վանուց տաճար եւ եկեղեցին թէեւ փոքր է, այլ գեղեցիկ է յոյժ իւր ներքին վայելչութեամբն, 'ի վերայ չորից սեանց հաստատեալ է կաթուղիկէն. համայն որմունք եւ սիւնք տաճարին զարդարեալ են զանազան խորհրդաւոր պատկերօք. որք յանդիման առնեն աչաց զՀին եւ Նոր Կտակարանի պատմութիւն զԵկեղեցւոյ հարց եւ զՄարտիրոսաց նահատակութիւն: Իսկ յաջակողմ տաճարին կայ այն հրաշալի մատուռն, ուր ամփոփեալ է Գլուխն Յակովբայ Առաքելոյն. յորում հաստատեալ կայ կիսաբոլոր մի սեղան, եւ յաւուրս շաբաթու միշտ պատարագ մատուցանի:

Իսկ Սուրբ Յակովբեանց տաճարին փառք, եկեղեցւոյ արարողական պաշտամունք, Մեծահանդէս տօնից պայծառափայլ հանդերձանք, թէ ո՞րպիսի Հրաշափառութեամբ կատարին ամենայն կարգապհութեամբ, ես ոչ

*կարեմ զնորա վայելուչ նկարագիր հանել 'ի համառօտութեանս, միայն աչք պխտին տեսանել:*

*Ոչ մոռանամ 'ի վերջ ծանօթութեանս յիշել հակիրճ բանիւ զհամայն միաբանական ընտանիս Սուրբ Յակովբեանց մեծի Տանն. յորում պարունակին ոգիք իբրեւ հարիւր եւ ութսուն. եւ բաժանին 'ի զանազան դասակարգութիւնս. Եպիսկոպոսք, Վարդապետք, Սարկաւագունք, Ուրարակիրք, Դպիրք. անդամք համարին նաեւ քրձազգեաց միաբանք, մայրապետք: Որոց իւրաքանչիւր դասակարգութիւնք ամենայն խղճմիտ հաւատարմութեամբ կատարեն զիւրեանց պաշտօն ըստ վաղեմի կարգադրութեան նախնեաց:*

*Այլ ո՞վ է որ հաց մատակարարէ եւ հոգայ զբազմադիմի պէտս վանական այս ճոխ գերդաստանին, Հայոց ժողովուրդ: Ո՞վ է, որ սրբանուէր թանգարին սպասիւք, պայծառազգեստ պատմուճանօք եւ յաւիտենական յիշատակօք զարդարեալ՝ պանծալի հանդիսացուցանէ Սուրբ Յակովբեանց Տաճար, Հայոց ժողովուրդ: Ո՞վ է որ յիշէ եւ ո՛չ մոռանայ զԵրուսաղէմ, այլ յամենայն տարւոջ ձաղախառն երամովին գան փառաւոր առնել զտեղի սրբութեանցն, Հայո՛ց ժողովուրդ: Իսկ ապա ո՞վ է, որ իբրեւ պահապան հրեշտակ արթնութեամբ հսկէ եւ պահպանէ սուրբ Յակոբեանց Աթոռը եւ չնաշխարհիկ զայս աւանդ անաղարտ պահելով՝ իւր յաջորդին աւանդէ. զինուորեալ այս անձնանուէր միաբանութիւն, որդիք վանական ուխտին, որ զօրհանապազ աքնին, աշխատին, մերթ եւս նահատակին եւ մեռանին. զի անմահ մնասցէ Հայոց ազգին այս նուիրական յիշատակ:*

*Ուրեմն օրհնեալ է Հայոց ազգ, որ իւր պտղաբերութեամբ շէն պահէ զտուն Սուրբ Յակովբեանց. օրհնեալ են նաեւ սպասաւորք տանս, որ ընդ մարմնականին զհոգեւորն փոխարինեն կան եւ մնան մշտնջենաւոր պահապան. որոց ակնկալութիւն վարձուց յաշխարհի աստ միայն հաց, իսկ զմնացեալ վարձսն՝ Աստուած հատուսցէ 'ի հանդերձելումն: ԱՄԷՆ:*

(Վ Ե Ր Ջ)

# ՊԱՊԻԿ ԵՒ ԹՈՌՆԻԿ

ԳՐԵՑ՝ ՀԱՅՈՑ ՀԱՅՐԻԿ

---

ԳԻՒՂԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԻ

*Թ Ո Ռ Ն Ի Կ Ն Ե Ր Ո Ւ  Հ Ա Մ Ա Ր*

---

ԵՒ Ի ԼՈՅՍ ՀԱՆԻՆ ՅՕԺԱՐԱԿԱՄ

*ԱԶՆՈՒԱԿԱՆ ԵՂԲԱՐՔ*
*ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ*

---

*Տ Պ Ա Գ Ր Ե Ա Լ*

*Ի ՄԱՅՐ ԱԹՈՌ ԱՐԱՐԱՏԵԱՆ*

*Ս Ր Բ Ո Յ  Է Ջ Մ Ի Ա Ծ Ն Ի*

1894 — *ՌՅԽԳ*



ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿԻԻԼՊԷՆԿԵԱՆ
1861—Յուլվ. 8, 1894



Ի. Յ Ի Շ Ա Տ Ա Կ

*ՍԻՐԵՑԵԼԻՈՅ ՀԱՐԱԶԱՏԻՆ*

**ՅՈՎՀԱՆՆԷՍԻ**

Ի ՏԷՐ ՀԱՆԳՈՒՑԵԼՈՅ

ԿԱՆԳՆԵՆ ԶԱՅՍ ՄԱՀԱՐՁԱՆ

**ՊԱՊԻԿ** *ԵՒ* **ԹՈՌՆԻԿ**

ԳԵՐԱԶՆԻՒ ԵՂԲԱՐՔ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ

**Պ Ա Տ Ր Ի Կ**

*ԿԻՒԼԱՊԻ ԵՒ ՅԱՐՈՒԹԻՒՆ*

# ՅԻՇԱՏԱԿ

## *ԱՌ ԳԵՐԱԶՆԻՒ Պ. ՊԱՏՐԻԿ*

## *ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ*

---

Արդեօք ինձ՝ եւ միայն Հայրիկի՞ն վիճակուած է, որ Կիւլպէնկեան տան յիշատակաց դպիր լինիմ, ո՛չ թէ կենդանեաց համար, այլ յաւէտ մեռելոց, որք թողին զաշխարհ ի Տէր ննջեցին. նոցա առաքինի յիշատակ դրոշմել ի ճակատ մի երկասիրութեան, թողուլ Ձեր մեծանուն Ազգատոհմին իբրեւ անմոռանալի մի յիշատակ:

Առաւօտ արեւածագին էր, ո՛հ չը գիտէի թէ Ձեր հարազատին եւ իմ սիրելոյն արեւն ի մայր մտած է: Եւ ես աւա՛ղ այն պահուն, երբ գուժ առի թէ մեռա՛ւ յառաջադէմն Յովհաննէս: Ափ առէ՛ք, ահա պատրաստ է Հայրիկին պսակ, «Պապիկ եւ Թոռնիկ», տարէք դրէք նորա գերեզմանին վրայ:

Անագորոյն մահուան սուր տապար դեռ չէ ելեր դուրս Կիւլպէնկեան գերդաստանէն, մի փոքր ժամանակի մէջ զարկաւ տապալեց իրարու ետեւէն երեք հաստաբուն նոճիներ, չասաց թէ բաւ է այսչափ, թող փոխանակ հարց եղիցին որդիք:

Կարծեցինք թէ գնաց հեռացաւ մահուան դժնդակ ոստիկան, բայց անդրէն շուտ դարձաւ, զարկաւ կտրեց այն աննման շառաւիղն, որ նոր պատուաստուած ամուսնական ճղիկով եւ ճղիկէն ծլած էր մի նորաբոյս մանկիկ. աւա՛ղ, անգութ մահու ոստիկան չը խղճաց երբէք, սիրասուն ծնողական գրկերէն մանկիկն ի բաց գլորեց. մի հարուածով կտրեց երկու զուգակցեալ նորատունկ սօսիներն, Յովհաննէսն էր եւ Արաքս: Միթէ ուխտե՞ր էին նոքա եւ ի մահուն անբաժան մնալ:

Թէպէտ Յովհաննէս փութաց առաջ գնաց, թողուց իր կեանքն անբաղդն Արաքս: Ո՛հ այլ եւս ինձ համար չեն պիտոյ, ո՛չ աշխարհ եւ ո՛չ կեանք, ասաց Արաքս վազեց ետեւէն գնաց, չը գիտեմ թէ ի մի քնարա՞ն ննջեցին սուրբ Փրկչին հանգստարանը, երկու սիրակալ ամուսինք, բայց գիտեմ թէ հոգիներ երկնից մէջ միացան:

Դառնամ այժմ դէպի քեզ, հոգւոյդ հետ խօսիմ, անձկալիդ իմ Յովհաննէս, դու անձնուէր էիր ազգին եւ Հայրիկին ամէն առիթներու մէջ: վերջին անգամ վիճակ եղաւ քեզ, որ իբրեւ պատգամաւոր Հայոց Մայր Սուրբ Էջմիածին գնաս եւ Հայրապետական ընտրութեան տաս քո ազատ քուէն: Ինձ այժմ պատմում են, որ դու քո այս պարտուց մէջ ամենայն ազնուութեամբ վարուելով՝ թողեր էք աստ ձեր բարի համբաւ եւ յիշատակ:

Չգիտեմ դու ի՞նչ մտածեցիր արդեօք որ քո անբաժան ամուսին Արաքսն էլ քեզ հետ առեր էիր, որպէս զի տեսնա՛ր նա Հայոց աշխարհ, Հայոց Մայր Աթոռ, մեր Լուսաւորիչ Հօր հոգեւոր ծննդարանն, որ ծնաւ զազգ մի ողջոյն, տեսնար նաեւ Արաքս դրախտի գետ, ոյր անունով նա կնքուած էր: Այդ մի բաղդ էր թէ քեզ եւ թէ նորա համար, գէթ միանգամ խմել Երասխին անմահական ջուր եւ պահել ու յիշել միշտ մեր Հայրենեաց այդ յաւերժական յիշատակ:

Կիւլպէնկեան տուն ողբաց քեզ, ողբացին սիրելիք եւ բարեկամք. Հայրիկն էլ քո բարեկամն էր, որ քան զամէն աւելի ողբաց. ի մանկութենէ կը ճանաչէի զքեզ եւ ոգւոյդ գեղեցիկ յատկանիշներ: Միշտ պայծառ եւ զուարթագին էր քո դէմքը, իբրեւ մի բացուած գիրք, ես կը կարդայի սըրտիդ եւ ոգւոյդ նշանագիր, որ դպրոցի կրթութեան օրէն մի բառ միայն

խորագծուած էր՝ *յառաջդիմութի՛ւն*։ Եթէ սոսկ աշխարհիս գիտութեանց յառաջդիմութիւն լինէր այն՝ ես այնչափ մեծ չէի համարեր, եթէ Կիւլպէնկեան սան Աստուածպաշտութեան հաւատք համընթաց չը լինէին յառաջդիմութեանդ հետ։

Ձեր հին հայրենատուր վաճառականութեան ասպարիզին մէջը անվախ եւ խիզախ յառաջ կ'երթայիր եւ ի՞նչ էր քո միտք եւ նպատակը, հարստանալ, մեծանալ եւ սոսկ աշխարհի պերճութեամբ վարիլ եւ վայելե՞լ կեանքը, ո՛չ, հարստանալ միայն բարերարելու համար· ազգին, եկեղեցւոյն եւ Հայոց լուսաւորութեան համար եւ միշտ առատաձեռնել։

Այլ աւա՜ղ, դու տարաժամ մեռար, ապագայ յոյսերդ անպսակ մնացին։ Եւ ո՞վ աշխարհիս մէջ լի պսակեալ յուսով ի գերեզման գնաց։ Ո՛հ, ողբացեալ փոքրիկ Յուսիկ ժառանգ մի թողիր Կիւլպէնկեան տան եւ գնացիր, ո՞վ գիտէ, խնամակալ երկնից Հայր պահպանելով զայն, մի օր մեծանայ, զարգանայ, յառաջդիմէ, յիշէ իւր հօր յիշատակ եւ պսակէ քո յոյս եւ քո ազնիւ նպատակը։

Իսկ Հայրիկ Արարատայ աշխարհէն, ծեր Արագածայ հովտէն, Մասիսի Նոյայ դարաստանէն եւ Վասպուրականի Վարագայ սարէն «ՊԱՊԻԿ եւ ԹՈՌՆԻԿ» իբրեւ ծաղկեփունջ մի կապելով կը պսակէ քո անուն եւ յիշատակ միշտ կենդանի եւ անմահ պիտի մնայ։

Իսկ դու բարեգործ երիցագոյն ժառանգ Կիւլպէնկեան գերդաստանին, սիրեցեալդ իմ Պետրիկ, ա՛ռ իմ այս ծաղկեփունջ պսակ, տար դիր հարազատիդ գերեզմանին վերայ· այդ պսակն անթառամ է, դու դարձիր ի տուն, գրկէ եւ համբուրէ ողբացեալ մանկիկն. ասա՛, ես եմ այսուհետեւ քո հայր եւ խնամակալ եւ բաւ է։

———o———

# ԱՌ

# ՇԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՍ ՀԱՅՈՑ

ՊԱՊԻԿ ԵՒ ԹՈՌՆԻԿ քեզ համար գրեցի եւ քո անուան նուիրում եմ, իմ սիրելի դաշտաբնակ մշակ ժողովուրդ, Հայոց Հայրիկ, որ այժմ ծերացած մի պապիկ դարձած է, նա սիրեց եւ փոքրութիւն չհամարեց, որ ինքն պահ մի իբրեւ մի շինական պապիկ ձեւանայ, որպէս թէ Վասպուրականի Առճակ գիւղի մէջ ծնած է, Վարագայ վանքում մաճկալ եղած է, շատ անգամ ի Պօլիս գնացել եկեր է եւ առանց դպրոցի նա միայն մտիկ անելով եւ գրքեր կարդալով քիչ մի բան սովրած է եւ իւր սովրած կ'աւանդէ իւր սիրական Թոռնիկին:

Պապիկի միակ նպատակն ի՞նչ է որ այս փոքրիկ գիրքը շարադրեց քեզ համար, որպէս զի դու կարդաս իմանաս ու ճանչնաս քո նշանակութիւն, ճանչնաս ու զգաս միանգամայն քո խեղճ կեանք ու վիճակ:

Երջանիկ ես եւ թշուառ կ'ապրիս, բազմահարուստ գանձի տէր ես եւ գրպանդ մի փող չկայ, երկրիս մեծ կալուածատէրն ես, բայց միշտ հացի կարօտ ու պարտապան՝ երկրի ընդհանուր քաղաքացի ժողովուրդին ամէն կենսական բարիքներ դու կը մատակարարես, Թագաւորէն սկսեալ մինչեւ յետին քաղաքացւոյ սեղանին հաց կուտաս, իւղ կուտաս, միս կուտաս, հագուստներու նիւթ կը մշակես, բուրդ կուտաս բամբակ կուտաս, քթան կուտաս, չերամ կուտաս եւ այլ շատ բաներ, զորոնք ես այստեղ չեմ ուզեր թուել: Բայց ի՞նչ է պատճառ գիտե՞ս արդեօք, որ դու քո թուած այնչափ բարիքներէն միշտ զրկուած կը մնաս, դու կարդա՛ «ՊԱՊԻԿ ԹՈՌՆԻԿ», քաջ կ'իմանաս թէ դորա միակ պատճառ տգիտութիւնն է, դռեհկութիւն, կարդալ, գրել, հաշուել, տնտեսել չգիտնալն է: Իսկ քո տգիտութեան եւ այդ վիճակի մէջ այդպէս մնալուն պատճառն ի՞նչ է, այն էլ խօսիմ ու բացատրեմ քեզ, դու մտիկ արա, որ գիտենաս եւ խելամուտ լինիս:

Ինձ այնպէս կը թուի թէ դու եղեր ես մի մոռացեալ երկիր, ինչպէս ասում է Սաղմոս. դու լայնածաւալ դաշտերու եւ լեռներու վրայ բնակում ես, ի՞նչ զարմանալի բան է, որ քաղքցիք զձեզ չեն տեսնար, քո գիրք շատ խոնարհած գետնահաւասար եղեր է, անխոնջ մրջիւնի նման կ'աշխատիս: քաղքցին բարձրավիզ է, չի տեսներ զքեզ եւ շատ անգամ, ո՜հ, կոխկռտելով կ'անցնի քո վրայէն եւ դու կը ճմլիս նորա ոտքի տակ:

Քաղաքցիք իմաստասէր մատենագիր դարձան, բայց չեն գիջանիր քեզ համար գրքեր գրել, թէ եւ խմբագիրք եւ գիւղատնտեսներ քեզ համար շատ յօդուածներ նուիրում են, դու մի գանգատիր, նոյն իսկ գիւղականի մի զաւակ, որ մի բարերարի շնորհիւ կերթայ Եւրոպայ, կ'աւարտէ իւր ուսումն եւ համալսարանէն կը վերադառնայ, ասացէ՛ք դուք շիտակ դէպ ուր կ'երթայ, դէպ ի քաղա՜ք առանց իւր հայրենի շինական տան ու ծնողաց առաջին ողջոյն եւ այցելութիւն տալու. եթէ ասես, պարոն ինչու մոռանում ես քո գեղ, որ քո ծննդավայր եւ խանձարուրն է:

Տե՛ս դու, ի՞նչ կը պատասխանէ. ես քաղաքակիրթ աշխարհակիրթ աշխարհէն կուգամ, կեանքս եւ ճաշակս բոլորովին փոխուած է. ես լոյս եւ գիտութիւն ունիմ, միթէ կարելի՞ է որ գիւղական խաւար եւ անկիրթ ժողովուրդին մէջ ապրիմ, որ երբէք չգիտեն գնահատել իմ արժէք, ո՛հ, ես յիշում եմ մեր տուն ու խրճիթ եւ այն չարաճճի անզգամ լուեր, որ զիս կը խածէին եւ կը տանջէին: Ուրեմն մեր պ. համալսարանական պիտի բնակի քաղաքում եւ պիտի սպասէ այնչափ, մինչեւ իւր գեղը քաղաքակրթուի, խաւար գիւղացիք լուսաւորուին, իւր խրճիթներ ապարանք դառնան, եւ ապա մեր պարոնը վերադառնայ իւր գիւղը: Եւ թէ ասես, մի սպասիր այդ անյայտ երկա՜ր ժամանակին, դու այժմէն գնա կրթէ, լուսաւորէ գիւղացի մանուկներ եւ այդ բախտաւոր ժամանակ դու բեր քո անբաղդ գիւղին հա-

մար, մինչ դու ինքնին պարտականութիւն չունի՞ս, յիշէ այն օրը, երբ պաղատում էիր քո բարերարին թէ զիս Եւրոպա ղրկէ, կ'ուխտեմ եւ կը խոստանամ, թէ ողջ վերադառնամ, ամենայն անձնուիրութեամբ հայրենեաց ծառայեմ. բայց պարոնին հայրենիք միայն քաղաքն է եւ ոչ թէ գիւղ։

Թողունք Եւրոպիոյ համալսարանի պարոնը, որ գուցէ իւր առարկութիւն երբեմն իրաւացի լինին. հապա ի՞նչ ասեմք այն պարոններուն, որ առանց Եւրոպիոյ աշխարհ տեսնելու, նոյն իսկ մեր աշխարհին մէջ, կրթութեան փոքր ինչ պարզացումն ստանալէն յետոյ՝ իրենց միտք եւ իրենց սրտի թագուն տենչանք դէպի քաղաքն է, որոց մեծ մասն դարձեալ գիւղացի զաւակներն են, կրթութեան եղանակի՞ն է յանցանք, չը գիտեմ, դաստիարակ ուսուցիչներո՞ւն է յանցանք, չգիտեմ, ժամանակի եւ կեանքի պահանջմա՞նն է յանցանք, դարձեալ չը գիտեմ։ Միմիայն այս գիտեմ ես, որ դպրոցի կրթութեան կապանքէն արձակուելէն յետոյ, դէպ ի քաղաք կը վազեն։

Ես լսեցի գիւղացի հայրերու ոմանց տրտունջն ու գանգատ, Հայրիկ, ես զաւակս մեծ փափագով կրթութեան տուի, որ ծերութեան ցուպ լինէր, նա գնաց այլ եւս չի դարձաւ, մոռացաւ իւր որդիական պարտիք եւ աւելի ճիշտ է, որ ասեմ ուրացաւ իւր ծնողք եւ այլն։

Կրթութեան այս մեծ խնդիր, ունի շատ իւր դժպատեհ հետեւանքներ, եթէ չը մտածենք դեղն ու դարման եւ թողունք որ այսպէս շարունակուի այս կրթական հիւանդութիւնն քիչ ժամանակէն պիտի տեսնամք, որ մեր գիւղացի պատանիներ դպրոցէն դէպի քաղաք մի գաղթականութեան ճանապարհ պիտի բանան, եւ ի՞նչ կը լինի յայնժամ, երբ հայ ժողովրդի ամենամեծ մասի կեանք հողն ու երկիրն է։

Ահա քեզ համար հոգացի եւ պատրաստեցի. «ՊԱՊԻԿ եւ ԹՈՌՆԻԿ», իմ սիրելի գիւղացի ժողովուրդ, որ դու քո հայրենատուր հողն ու դաշտ սիրես եւ երբէք չի բաժանուիս, գիտնալով թէ քո կեանք հողն է եւ հողագործութեան արդար ու հալալ վաստակ։ Ուշադրութեամբ կարդա՛ այն խորհրդաւոր գլուխն՝ «ՊԱՊԻԿԷ ՊՍԱԿՆ Ի ԴԱՇՏ», թէ ինչպէս Պապիկ իւր Թոռնիկ խաչով, Աւետարանով պսակելէն յետոյ, կը տանէ զինքն ի դաշտ եւ կ'ասէ՝ գիւղացի փեսայի համար բաւական չէ, ես այժմ կրկին պիտի պսակեմ զքեզ հողին ու մաճին, դութանին եւ հողագործութեան հետ, պէտք է ուխտես երկնից եւ երկրի առաջ, որ այս պսակն անքակտելի պահես, ահա կը դնեմ քո գլուխ ցորենաբոյսի ցողուններէն հիւսուած այս գեղեցիկ պըսակ, թող վկայ լինին մեր մշակներ, հօտաղներ եւ մեր լծկան գոմշուկներ եւ եզներ։

Գիտե՞ս, Թոռնիկ, Աստուած մի արասցէ, եթէ քո ամուսին Շուշան մեռնի, մի ուրիշ Շուշան կարող ես առնել, բայց երբ հող քեզ համար մեռնի, այսինքն կամ ծախես, կամ ձեռքէդ հանես եւ զրկուիս քո ժառանգած հողէն, էն ժամանակ դու էլ կը մեռնիս, Շուշանն էլ հետ քեզ կը մեռնի եւ Պապկի տուն եւ օճախ կը քանդուի։

Այսպէս Պապիկ իւր Թոռնիկին վրայ կրկնապսակ մի կատարեց, Հայրիկն էր համայն գիւղական ժողովուրդին գլուխ կը դնէ իւր պսակն՝ Պապիկ Թոռնիկով եւ կ'աղօթէ որ դու այս պսակ՝ անթառամելի պահես, սիրես քո հող եւ հողագործութեան աշխատութիւն, սիրես ուսումն եւ կրթութիւն, որ քո մշակութեան քրտնաթոր վաստակ արդիւնաբեր լինի, որով միայն քո կեանք կը բարւոքի եւ դու տառապանաց կապանքէն կ'ազատուիս, որ ազատութեան արդասիքն է։

Վերջին բան առ ձեզ ուղղելով, ո՛վ Վասպուրական երկիր, իմ անձկալի Հայրենիք. ՊԱՊԻԿ եւ ԹՈՌՆԻԿ յատկապէս Ձեզ համար գրեցի, Երուսաղէմի Սիօնի լեռան վրայ, խաչի հովանեաց տակ, դու կարդալով կը տեսնաս, որ Պապիկ Թոռնիկի նիւթեր՝ Վասպուրական երկրի շինական ժողովուրդի ծաղիկներէն քաղած եմ, զոր փնջիկ կապելով եւ ահա ձերն՝ ձեզ կը նուիրեմ։

Հոտոտելով այս փունջը, անշուշտ կ'զգաք եւ վա՞շ կ'ասէք, Առճկեցի Պապիկ մեր ծաղիկն է, Աչըղ Մուշօն մեր ծաղիկն է, մեռելոց դաշտի մէջ ննջած այն մեծ մեծ տանուտէրերուն խաչքարերու յիշատակներ մեր պարծանքն է։

Կը թուիմ թէ շատ մօտ եմ ձեզ, միայն հինգօրեայ ճանապարհ մի անջրպետ կայ։ Վարաղայ խաչի սար ծածկուած է աչքէս. Վասպուրական Արծիւն էի երբեմն, բայց այժմ թեւաթափ ծերացած եմ, եւ ո՞ տայր ինձ որ նորափետուր արծուի լինէի, թռչէի վերանայի դէթ վերջի անգամ տեսնայի բարձր քարին վերայ դրուած իմ աւերակ բունիկս։

Այլ եւս ի զուր է այս ցանկութիւն, կը մնայ ինձ հոգւով մօտ լինել ձեզ եւ հոգւով աղօթել վասն ձեր։

Իսկ ձեզ կը մնայ կարդալ Պապիկ Թոռնիկ եւ յիշել զՀԱՅՐԻԿ։

Թէ մեռնիմ երթամ գերեզման եւ այլ եւս չկարեմ խօսիլ ձեզ հետ կենդանի բարբառով ու գրով. ահա կը թողում ձեզ գիրս իբրեւ մշտախօս կըտակ եւ յիշատակ. որոյ միակ նպատակն է, որ հայն իւր հայրենատուր հողէն չը բաժանուի, զի իւր սեփհական ժառանգութիւն է դրախտի երկիր, զոր Տէր Աստուած մեր Ադամ՝ պապուն եւ ժառանգորդներուն տուաւ եւ ասաց գործել զերկիր ու պահել։

———o———

# ՊԱՊԻԿՆ ԱՌ ԹՈՌՆԻԿ

---o---

## Ա.

Սիրելի Թոռնի՛կ, կը տեսնաս ահա. Պապիկդ ծերացել է, եօթանասուն տարին անցուցի, դու միակ ժառանգ մնացեր ես մեր հայրենի տան: Ես միայն մի անդրանիկ զաւակ ունեցայ, Թորոս անուն, որ շատ աննման, կտրիճ, աշխատասէր մի զաւակ էր: Մեր տան գործեր բոլոր նա կը դարձունէր: Ժամանակին ամուսնացուցի զինքն, աւա՜ղ, երկու տարի միայն մընաց իւր սիրական նորահարսին մօտ. Թողուց գնաց Ըստամպօլ, նորա գնալէն յետոյ դու ծնար. ես թուղթ գրեցի հօրդ թէ քեզ մի որդի ծնաւ, մկրտեցին, անուն Ռուբէն դրի. Թորոս, քո հայր չտեսաւ քո ծնունդ, քո խանձարուր եւ չը համբուրեց քո մանկութեան երեսներ: Երբ երկու երեք տարեկան եղար լեզուդ բացուեցաւ. միայն մայրիկդ եւ պապիկ կը կանչէիր. հայրիկդ չը կար որ տեսնայիր ու ճանչնայիր. որչա՞փ դառն բան է այս, երբ մայրեր աստ կը ծնեն, հայրեր Ըստամպօլէն կ՚իմանան:

Երբեմն կան այնպիսի հայրեր, որ կամ ձախորդութեան պատճառաւ եւ կամ անխղճմտանք լինելով, տասն եւ մինչեւ քսան տարով օտարութեան մէջ մնալով՝ իրենց զաւակաց երես տեսած չեն: Եւ երբեմն Հայրերն ի Պօլիս օգնութեան կը կանչեն իրենց զաւակներն, երբ պանդխտութեան խոր տղմին մէջ խրուած կարող չեն խլրտել՝ դուրս ելնել: Շատ անգամ կը պատահի, որ անտէրունջ դժբախտ կին՝ ճար հատած իւր հասուցած միակ զաւակ՝ աչքին լոյս ի Պօլիս կը ղրկէ, կասէ՛ գնա տես ի՞նչ եղաւ քո հայր, քանի տարիներ եղաւ ո՛չ թուղթ կղրկէ ո՛չ դրամ:

Բայց քո Հայր Թորոս այնպէս չէր, նա միշտ ժամանակին թուղթ եւ դրամ կղրկէր, նա շատ կը պատուէր պապիկդ եւ շատ գորովական սիրտ ունէր դէպի իւր ամուսին: Հապա ըզքեզ որչա՞փ կը սիրէր առանց գգուանքի եւ տեսութեան, սիրուն ու գեղեցիկ լաթեր կղրկէր քեզ: Մայրիկդ կը հագցունէր եւ կասէր թէ՝ Հայրիկդ ղրկած է. դու էլ կը հարցնէիր, Մայրի՛կ, հայրիկս ե՞րբ պիտի գայ Պօլսէն, դու խեղճ միամիտ մանկիկ էիր չգիտէիր թէ Թորոս Պօլսէն չպիտի գայ: Մի ժամանակէն յետոյ Թորոսէն թուղթ եկաւ, որ կը գրէր թէ, «հիւանդացայ, գեղացիներս զիս տարին դրին հիւանդանոց»: Դու չե՞ս յիշեր, Թոռնիկ, երբ Պապիկ Մայրիկիդ հետ կուլար ու կողբար Թորոսին մահ. դու կը հարցնէիր, թէ ինչո՞ւ կուլաք Պապիկ եւ Մայրիկ. մեք չուզեցինք ասել քեզ թէ Թորոս հայրիկիդ համար կուլանք, որ մեռած է ի Պօլիս:

Դու կը կարծես Թոռնիկ թէ՝ միայն այն օ՞ր լացի, ո՛չ. ես երբեմն առանձնացած կը շարունակեմ նոյն ողբն ու լաց, երբ կը յիշեմ Թորոսին մահն ու յիշատակն, դու չգիտես թէ այդ քաղցր անուն ի՞նչ անցեալ բաներ կը բերէ մտքիս մէջ. իմ մեծ պապս կը պատմէր թէ ուրիշ Թորոսներ ծնած են մեր տնէն, ամէնքն եւս ժուռ ու մուռ մեռած են եւ մէկն էլ Պարսից արշաւանքն մեր գիւղի վերայ գալով գերի վարած է:

Խոստովանիմ քեզ, Թոռնի՛կ, այդ պանդխտութեան ճամբան, նախ ես բացի մեր խեղճ Թորոսին առաջ. նա կը տեսնար թէ ի՞նչպէս քանիցս անգամ Պոլիս երթալով գալով, Աստուած յաջողութիւն կուտար բաւական գումարներ վաստկելով կը դառնայի: Բայց դու գիտե՞ս, թէ ի՞նչ մեծ նեղութեամբ դառն քրտինք թափելով մեր պանդուխտ եղբայրներ դրամ կը վաստկեն: Մի օր չեմ մոռնար, երբ ութ հոգի կտրիճ բեռնակիրներս մի ահագին պալեա ձողիներու զարկած կը տանէինք, Պոլսոյ նոր խանի դարու վեր, քրտինք ծնծնալով մեր ճակտէն ճողճող կը վազէր, մեր երեսէն կիջնար ու կը թրջէր մեր բացուած կուրծք. տեսանք որ Հայրիկ մեր դիմաց կուգայ, պալեան վար դրինք կեցանք: Հայրիկ ողջոյն տուաւ մեզ, հարցուց մեր որպիսութիւն. Մէջերնին ես համարձակ էի, ասի. Հայրի՛կ, ահա մեր որպիսութիւն, բեռներու տակ ընկճուած կը հեծեմք եւ կը թափեմք մեր դառն քրտինք այս քարայատակներուն վերայ: Ես նայեցայ որ Հայրիկին աչքեր լեցուեցան, ասի մտքիս մէջ, թէ մեր վիճակին ու մեր ճակտին քրտանց դէմն՝ Հայրիկն իւր աչքի արտասունքով կը պատասխանէ: Այո՛, Հայրիկ մի կարճ պատասխան տուաւ, խեղճ զաւակներս, ասաց, այդ բեռն պիտի կրէք մինչեւ կարդալ գրել սորվէք, մինչեւ ճանչնաք ձեր ցեղին ու հողին արժէքը, ուր եթէ թափէիք ձեր այդ չափ աշխատութեան քրտինք, երբէք պանդխտութեան երես չէիք տեսնար: Այսչափ խօսեց Հայրիկ, աչքեր սրբեց ու անցաւ: Ես որովհետեւ փոքր ի շատէ կարդալ գիտէի, իրիկուն իմ ընկերներուս լաւ կերպով հասկցուցի Հայրիկին խօսած բանին միտք:

Ճշմարիտ է, Թոռնիկ, ես փորձով հասկցայ, եթէ մեք ամենայն հոգւով ու սրտով աշխատենք մշակել մեր հողերն՝ կապրենք եւ երբէք չենք տեսնար պանդխտութեան երես: Ինչպէս վեր խօսեցայ, քանիցս անգամ Պոլիս գնացի դարձայ. առատ առատ ստակ բերի, բայց գիտես թէ՝ այդ Ստամպօլէն չահած դրամին մէջ խէր պէրէքէթ չը կար, կը տեսնայի որ մէկ երկու տարուան մէջ կըսպառէր, աչնան աղբիւրներու պէս չուառով կը ցամքէր: Ափսո՛ս, երիտասարդ ծաղիկ կեանքս պանդխտութեան խորշակով թառամեցաւ, անպտան խելքս գլուխս եկաւ: Վերջին անգամ երբ դարձայ Պոլսէն. արդէն միտքըս դրած էի, որ առաջին անգամ Արճակու վանից Ս. Աստուածածնայ տաճարին ուխտ երթամ, մոմ, խունկ, կանթեղին ձէթ պատրաստեցի ու գնացի, մտայ Տաճար, գլուխս բացի, սեղանին առաջ ծունկի վերայ եկայ, աղօթք արի սիրտս լիյու

*ու շատ լացի․ կանչեցի Տիրամայր Աստուածածին, գործիս յաջողութիւն խնդրեցի, Քրիստոսի խաչի սեղանին առաջ ուխտեցի, որ այլ եւս չը հեռանամ գեղէն, չթողում տուն ու տեղս, արտերս ու դաշտերս:*

*Ուրախ սրտով ելայ տաճարէն, մի քաջալերութիւն եկաւ վրաս․ ես այն վայրկենէն հաւատացի որ Տիրամայր իմ մուրատ պիտի տայ, եւ Քրիստոս իմ բան պիտի յաջողէ: Իսկոյն Պօլսէն բերածս դրամով երկու գոմէշ եւ վեց հատ եզ գնեցի, գութան ամբողջ գործիքներով սարքեցի, հանի չուխայ լաթեր, հագայ չալէ շալվար, վերցուցի գլխէս մեծ պուխով ալ ֆէս, դրի չինականի թախսէ քօլօզ, հանի ոտքիս ճլուվոուն կօնդօռան, հագայ չարուխ եւ կքեցի թելեր՝ մատանի մի եւս ունէի, էն էլ հանի մատնէս, լաթերուն հետ դրի սնդուկն․ ասի պահեմ Թոռնիկիս փեսայութեանն: Այս ամէն անելէն յետոյ երկու երեք մշակ եւս վարձեցի առի խարպղան, ձգեցի Եւրոպական պալտօն, գնացի դաշտ սկսեցի գութան եւ վարուցան, էն օրէն մինչեւ էսօր էլ ես պանդխտութեան երես չը տեսայ:*

*Այսպէս, Թոռնիկ հոգւով մարմնով հողագործութեան տուի գլխ վարեցի՝ ցանեցի, եւ Աստուած շատ հաց տուաւ, երբէք հացի կարօտ չի մնացի: Մեր տուն մի հին նահապետական տուն է․ դուռն միշտ հիւրերն անպակաս եւ ես այժմ մեր տան ծերունի նահապետն եմ, թէ մեռնիմ դու պիտի յաջորդես իմ տեղս:*

*Այժմ դու սիրելի Թոռնիկ, միակ ժառանգն ես մեր տան եւ օճախին, դեռ չի մեռած, քեզ շատ բարի եւ օգտակար դասեր եւ խրատներ պիտի տամ: Գիտե՞ս ես բաւական կարդալ գրել սորված եմ, հասակաւոր ժամանակս՝ ի Վարագայ վանքն, ուր երկար ժամանակ մաճկալութիւն արած եմ: Վերջի ժամանակ երբ այն տեղ երկրագործութեան դասեր կը խօսուէր, ես շատ ուշադրութեամբ մտիկ կ՚անէի ձմեռան պարապ ժամանակ եւ միշտ սորվելու կաշխատէի:*

*Իսկ ամրան բանի ժամանակ աւելի կը սորվէի գործնական փորձառութեան մէջ․ վասն զի Հայրիկ ոչ միայն վանահայր էր Վարագայ վանքին, եւ առանձին դպրոցի պարտէզ կը մշակէր․ այլ աւելի դաշտի մշակ էր, զի գիտէր վանական բազմաթիւ ընտանիք եւ դպրոցի աշակերտներ հա՛ց կուզեն հա՛ց: Սորա համար ինքն շատ կը սիրէր հողագործական աշխատութիւն, միշտ մտածմունքն այն էր, որ հին մշակութեան տաժանելի աշխատութիւններ դիւրացնէ, թէ մարդոց հանգիստ լինի թէ խեղճ անասնոց, եւ թէ հողն աւելի խնամով մշակելով արդիւնաբեր լինի: Ուստի մտածելով երբեմն հնարամիտ կերպեր եւ միջոցներ ի գործ կը դնէր․ իւր միակ նպատակն էր երկրագործութեան արուեստն գոնէ փոքր ի շատէ յառաջ տանել ու բարւոքել, որպէս զի հողագործութեան շահաբերութեամբ կառավարուի վանքն ու վարժարան: Վասն զի Վարագայ վանքն բաց իւր հողային կալուածներէն ուրիշ մշտական վարձք բերող կալուածներ չունի:*

Այստեղ պէտք է խոստովանիմ, Թոռնիկ, որ ես Վարագայ վանուց մշակութեան մաճկալ լինելով, Հայրիկի փորձառական կերպերէն շատ բան սորվեցայ, եւ այժմ այդ սորված բաներս իբրեւ վարժապետ պէտք է գլուխ գլուխ դաս տալով աւանդեմ քեզ, ուշադրութեամբ մտիկ արա դասերս, վասն զի մեզ համար շատ կարեւոր է. որովհետեւ մեք գիւղացի եմք, մեր ապրուստ եւ կեանք միայն հողագործութեան վաստակն է: Եւ ի՞նչ աւելի արդար, ազատ եւ անխարդախ վաստակ կայ աշխարհիս վերայ քան հողագործութիւն:

Խելացի եւ ուշիմ Թոռնիկ, այժմ պիտի սկսէ Պապիկ իւր դասերն. ոչ վարժատուն պէտք է, ոչ գրասեղան, ոչ թուղթ, ոչ գրիչ ոչ մելան, դու տես թէ ո՞ւր պիտի խօսեմ դասերս: Տան մէջ, ախոռին մէջ դաշտին մէջ, լեռներու վերայ, աղբիւրներու գլուխ, գութանին ժամանակ թէ մաճ կը բռնեմ թէ դասերս կը խօսիմ, դու լծան վրայէն ականջ անելով դասերուս լսէ, եւ ճէնովդ լծկաններ խրախուսէ: Բացուած ակօսներուն պէս, ես էլ քո միտք պիտի հերկեմ ու բանամ: Սերմանացանի ժամանակ վա՛չ. ի՞նչ սիրուն է. մի կողմէն ցորենի հատիկներ եւ միւս կողմէն դասերս մտքիդ մէջ պիտի ցանեմ: Հունձքի ժամանակ երբ սարակներ դէպի հովի տակ նստած մանգաղներ կը սրեն, ես էլ կը նստեմ քո դաս կը խօսեմ եւ կը սրեմ քո գուլ միտք: Կալատեղն էլ ի՞նչ յարմար դասարան է. երբ դու կամնասայլին վերայ կը կենաս, ես քառէշտ ձեռքս կը շրջեմ կալին բոլոր, մի կողմէն օրան կը դարձնեմ եւ օրանիս հետ դասերս կը խառնեմ եւ կասելով ցորեն յարդէն կը ջոկեմ, դու լից ու պահէ զայն մտքիդ շտեմարանին մէջ:

Ես այժմ պիտի սկսեմ հողագործութեան բնական եւ դիւրին դասերը տալ քեզ, որչափ լսած եմ եւ որչափ փորձառութեամբ սորված եմ: Խելացի Թոռնիկ, բոլոր ուշքդ ինձի դարձուր. լաւ ըմբռնէ դասերս եւ ամփոփէ մտքիդ մէջ: Ժամանակ հասած է, եթէ Պապիկդ մեռնի, գոնէ իմ դասերս եւ խրատներս քեզ ժառանգութիւն կը մնան. եւ գիտե՞ս դու թէ ամէն բանէն աւելի թանկագին է այս ժառանգութիւն: Ո՛վ գիտէ դու եւս օր մի ծերանաս, ինծի նման Պապիկ դառնաս ինչ որ այսօր ինձմէ կ՚ուսանիս, զայն քո Թոռնիկին աւանդես: Բայց նայէ որ Պապիկի սակաւամասն այս դասերը բաւական չը համարես, այլ պէտք է ճարտար եւ հնարամիտ լինիս, ինքնաշխատութեամբ նորանոր բաներ սորվես, ժամանակ միշտ յառաջ կը վարէ ըզմարդիկ, դու էլ պէտք է յառաջ երթաս, պէտք է գիտնաս որ ետ մնացող, հացի կարօտ կը լինի: Երկիրն է որ մեզ հաց եւ ուրիշ բարիքներ կուտայ, ո՛վ որ գործէ զերկիրն այսինքն վարուցան անելով աշխատի, իւր տուն հացով ու բարութեամբ կը լեցուի, իսկ այն որ գութանի մաճն ձեռքէն կը թողու ծուլութեան ու դատարկութեան մէջ կը շրջի, նորա տուն չքաւորութեամբ կը դատարկանայ, տաշտէն հաց կը պակսի եւ ամանէն իւղ, աղքատութիւն արագոտն սուրհանդակի պէս իւր վերայ կը հասնի, ինչպէս կը խօսի առակն: Եւ այս ամէն ընդարձակ

կերպով պիտի խօսիմ քեզ։ Լո՛ւր ուրեմն, Թոռնիկ, Պապիկի դասերուն եւ բարի խրատներուն, որ պիտի սորվիս թէ ի՞նչ է երկիր եւ իր բնակիչներ, քաղաքացին ու գիւղացին. քաղաքացին իր արուեստն ունի, գիւղացին իր հողագործութիւն։ Թէ ի՞նչպէս այս երկու դաս ժողովուրդն իրենց աշխատութեան արդիւնքն իրարու հետ կը փոխանակեն։ Ի՞նչ է մեր արդի հողագործութեան վիճակ, որ դեռ հնութեան մէջ մնացած է։ Ի՞նչպէս կարելի է հետզհետէ հնութեան կերպեր փոխել եւ նորագոյն կերպերով մշակել երկիր, որով մեր աշխատութիւն կը դիւրանայ երկիր աւելի կ՚արդիւնաւորէ՝ մեր շահն ու վաստակ կրկնապատիկ կը լինի։ Երկրին արդիւնաբերութեան շահ ո՛չ միայն մեզ օգուտ է, այլ եւ տէրութեան եւ բոլոր ժողովուրդին. վասն զի աշխարհիս վերայ հացի խնդիր մեծ է, զի մարդիկ հացով կապրին։

Ա.

# ԵՐԿԻՐ

Սիրելի Թոռնիկ, պէտք է Ադամայ մեր պատմէն սկսիմ, Տէր Աստուած երբ մեր յանցաւոր Նախահայր Ադամը դրախտէն դուրս հանեց, մի պատուէր տուաւ անոր, որ երկիր գործէ եւ պահէ, եւ թէ իւր երեսի քրտինքով իւր հաց ճարէ եւ ապրի:

Լաւ ի միտ առ, Թոռնիկ, որ այս մեր բնակած երկիրը կամ հողագունդը Տէր Աստուած մարդուն ժառանգութիւն եւ կամ իբրեւ դրամագլուխ տուած է. եւ գիտե՞ս թէ որչափ ընդարձակ, որչափ անսպառ եւ անհատնում է այս ամենառատ, ամենաճոխ երկրի բնական հարստութիւն: Մտիկ արա, որ թուեմ քեզ. անծայր, անսահման ծովեր՝ անչափ լայնատարած ցամաք երկիրներ, որոց վերայ կը բնակին միլիոնաւոր մարդիկ եւ զանազան ազգեր, դաշտեր, լեռներ, հովիտներ, ձորեր, աղբիւրներ, գետեր, բիւրազգի բոյսեր, ծառեր եւ ծաղիկներ, ծովու ձկներ, ցամաքի վայրի եւ ընտանի անասուններ, եւ թռչնոց երամներ եւ այլ շատ բաներ Տէր Աստուած մարդոյն համար ստեղծեր է. եւ մարդոց տուած է, որ մարդիկ ապրին երկրի վերայ, մարդիկ վայելեն այդ բարիքներ եւ օրհնեն ստեղծողին եւ տուողին անունը: Ուստի մարդիկ պէտք է գործեն զերկիր, զի երկիրն է իրենց կեանք պահող:

Բայց դու կը տեսնա՞ս Թոռնիկ, թէ մարդիկ ի՞նչպէս կաշխատեն երկրի վերայ, գիւղացին իւր հողագործութեան մէջ վարած արտին ակօսներ իւր քրտինքով կը թրջէ, քաղաքացին իւր արհեստով դարձեալ նոյն քրտինքը կը թափէ: Դու տեսե՞ր ես դարբնին թափած քրտինքը, որ բորբոքուած հնոցին դիմաց կեցած կիսամերկ, ահագին եռանդով երկաթ կը ծեծէ, եւ մեր գութանին համար խոփ կը պատրաստէ: Վաճառական՝ ծովու եւ ցամաքի վերայ ճամբորդելով, աշխարհէ աշխարհ կերթայ, կը տառապի եւ նոյն քրտինք կը թափէ: Նոյն իսկ աշխարհիս վարիչներ քրտինք թափելով կը վարեն զաշխարհ. Թագաւորէն սկսեալ սկսեալ մինչեւ յետին պաշտօնեայն նոյն քրտինքն ունին, զի վարիչ եւ կառավարող միտքն եւս իւր քրտինքն ունի, ամենայն հոգեմաշութեամբ նորա քունը վրդոված է, մինչ հնձող մշակը ցորենի խուրձ գլխուն դրած անուշ կը քնանայ բացօթեայ դաշտին մէջ եւ իւր անկողինը իւր մշակած կակուղ հողն է: Թէպէտ քրտանց եւ աշխատութեանց մէջ մեծ զանազանութիւններ կան, հողագործ մշակ արեւուն տակ դաշտին վերայ իւր քրտինք կը թափէ, ո՛վ քանի՞ դառն, քանի՞ դժուարին աշխատութիւն է այն գործաւորաց համար, որ հինգ հարիւր կանգուն երկրի խորութեան մէջ, անլոյս անարեւ տաժանելի աշխատութեամբ քարածուխ կը հանեն, որպէս զի չողե-

*նաւեր, շոգեկառքեր եւ բովանդակ մեքենական գործարանները բանին անդադար :*

*Մեր դաշտերու ազատ մշակներ հազար անգամ երջանիկ են անոնցմէն, որ մարգերու վերայ կը շրջին, հովտաց ծաղիկներու վերայ կը ճեմեն, եւ պաղ աղբիւրի գլուխ նստած՝ իւրեանց հաց կուտեն. փառք տուր Աստուծոյ Թոռնիկ, որ նոյն բախտն ունես եւ քո աշխատութիւն շատ քաղցր եւ անուշ է :*

*Այսպէս, աշխարհիս վերայ ամէն կարգի եւ աստիճանի մարդիկ թէ առաւել թէ նուազ քրտինք թափելու դատապարտուած են, որով Աստուածային սահմանած վճիռը անվրէպ կը տարածուի բոլոր մարդկութեան վերայ, այն է «քրտամբք երեսաց քոց կերիցես զհաց քո»: Այսպէս մարդիկ արեւուն տակ, երկրի խորութեան տակ, ցամաքի վերայ, ծովերուն վերայ տաժանելի աշխատութեամբ իւրաքանչիւր մարդ թէ՛ իւր եւ թէ ի՛ւր ընտանեաց օրապահիկ հաց պիտի հայթայթէ: Սորա համար կը խօսի իմաստուն Սողոմոն «Ամենայն ջանք մարդոյ ի բերան»: Արդար է այն մարդ, որ միայն իւր քրտանց հացով կապրի. անիրաւ է այն մարդ, որ առանց աշխատութեան ուրիշի քրտանց հաց կուտէ լի զրկանքներով, եւ ո՞վ կարող է չափել այն բազմադիմի զրկանքներ, որ կը լինին արեւուն տակ աշխարհիս վերայ եւ զրկեալներուն դասը ամենամեծ մասն կը կազմէ :*

*Եւ գիտես դու Թոռնի՛կ, այն որ գիր չգիտէ, կարդալ չը գիտէ, ուսումն չունի անկիրթ է, ռամիկ է. մէկ խօսքով տգէտ է. Նորա կեանք միշտ թշուառ է աշխարհիս վերայ եւ տգէտ մարդոյն ճակատագիրն է միշտ զրկանք կրել, եւ նոյն իսկ տգիտութիւն ամենամեծ զրկանք է տգէտ մարդոյն համար: Թէպէտ երբեմն եւս ուսեալ եւ կրթեալ մարդ, հարուստ եւ զօրաւոր տգէտին ձեռքէն զրկանքներ կը կրէ : Եւ դու մի զարմանար, զի մարդոյն ընկերական կեանքին մէջ շատ հակառակ եւ հակասական բաներ կան, զոր տեսնելով կը տարակուսիմք եւ մերթ եւս նախախնամութեան դէմ տրտունջ կը բառնամք, թէ ինչո՞ւ բարիները կը հալածուին, չարեր կը յաջողին :*

*Դաւիթն եւս կը տեսնար այս բան եւ Աստուծոյ առաջ կը հանէր: «Ահա մեղաւորք են եւ յաջողեալ է նոցա, կան ունին զմեծութիւն աշխարհի»: Թողունք Թոռնիկ այս խնդիրը, բանի կարգէն դուրս ենք, սկսենք մեր կարեւոր դասերը :*

———o———

Բ.

## ԵՐԿՐԻ ԲՆԱԿԻՉՆԵՐ

### ԳԻՒՂ ԵՒ ՔԱՂԱՔ

*Բովանդակ աշխարհիս բնակիչներ երկու դասի կը բաժանուին, քաղաքացի եւ գիւղացի: Քաղաքացիք մեծամեծ քաղաք-*

*ներ շինելով յարմարագոյն տեղեր՝ անոր մէջ կը բնակին: Իսկ գիւղացիք դաշտավայրեր ընտրած են եւ իրարմէ բացագոյն փոքրիկ փոքրիկ գիւղեր շինելով միայն երկրագործութեամբ կը պարապին: Քաղաքացւոց պարապումն արհեստ եւ վաճառականութիւն է, եւ փոքր մասն եւս երկրի վարչական կառավարութեան զանազան պաշտօններ կը վարեն: Հարցուր Թոռնիկ, թէ ի՞նչ զանազանութիւն կայ քաղաքացւոց եւ գիւղացւոց մէջ կամ նոցա վարած կեանքի առաւելութիւն կամ նուազութիւն, բարեկեցութիւն եւ թշուառութիւն ի՞նչ են:*

*Քաղաքացւոց եւ գիւղացւոց կեանքի նկարագիր շատ ընդարձակ է, ես միայն պիտի պատմեմ քեզ գլխաւոր զանազանութիւններ, որ կերեւին մեզ իրենց արտաքին երեւոյթով, մնացեալ մասեր կը թողում քեզ որ դու ինքնին խելամուտ լինիս: Սիրելի Թոռնիկ, դու գիւղին մէջ փակուած չես, շարունակ կերթաս քաղաք կուգաս, ամէն բան աչքովդ կարող ես նկատել, որովհետեւ փոքր ի շատէ ուսում ունիս մացի եւ չափահաս ես, կարող ես ինքնին դատել եւ կշռել թէ՛ մեր եւ թէ քաղաքացւոց կեանքը. որ իւրաքանչիւր իր քաղցրութիւն եւ դառնութիւն ունի, բարեկեցութիւն եւ թշուառութիւն ունի, առաքինութիւն եւ մոլութիւն ունի. շատ եւ բազմակերպ բարի եւ չար կողմեր ունին, վասն զի մեր կեանքը՝ մի խառնուրդ է, չար ու բարին ի միասին կապուին, ինչպէս ցորեն եւ որոմն ի միասին կը բուսնին եւ կաճին:*

*Մեզ այնպէս կերեւի, որ քաղաքացիք շատ երջանիկ եւ բարեկեցիկ կեանք ունին. զորօրինակ կը տեսնամք Վան քաղաք, որ մեզ շատ մօտ է. վայելուչ բարձրաշէն տուները, լայնածիր փողոցներ, ուռի ծառեր տնկուած շարան շարան ջուրերուն եզերքը, որք կարկաչելով կը վազեն շատ փողոցներէն, կը մտնանք տուներու մէջ՝ կը տեսնամք գեղեցիկ նախշուն նախշուն օդաներ, վայելուչ կահ կարասիքներով զարդարուած: Քաղաքացւոց սեղան շատ ճոխ է՝ անոյշ եւ համադամ կերակուրներով, զոր կը պատրաստեն նահապետական ընտանիք:*

*Հապա Թոռնիկ, որչա՞փ մեր աչքին սիրուն եւ նազելի կերեւան պէս պէս վայելչաձեւ հագուստներ, որ շատ թանկագին են՝ թէ արանց եւ թէ կանանց, չը մոռնանք այն շար ի շար ոսկի մանեակներ, զորս կիներ եւ աղջիկներ կը կախեն իրենց պարանոցէն: Թողլով այս մարմնական վայելք եւ հաճոյք, քաղաքացիք ունին նաեւ հոգեւորական եւ բարոյական վայելքներ. նոցա եկեղեցիք եւ եկեղեցւոյ հանդերձանքներ շատ շքեղ եւ փառաւոր են, տօնական հանդէսներ, քաղցրաձայն դպիրներ, հանդիսաւոր թափորներ եւ պատարագներ եւ քան զամէն առաւել՝ բարեկարգ քարոզիչ վարդապետք, որք եկեղեցւոյ փառք են եւ ժողովրդին մխիթարութիւն:*

*Քաղաքացիք կրօնական եւ հոգեւոր մխիթարութենէն ի զատ, ունին նաեւ մեծ մխիթարութիւն մի՝ այն է դպրոց եւ կրթարան. ուր կարդալ գրել կը սորվին իրենց մանուկներ եւ աղջիկներ, սորա համար քաղաքացիք շատ մեծ առաւելութիւն*

տունեն մեզմէ, վասն զի կրթութեամբ միայն մարդը՝ մարդ կը լինի. Թող կուտայ ռամկութիւն եւ բրտութիւն, պիտանի անգամ կը կազմէ մարդկային ընկերութեան, տէրութեան երկրին, իւր ժողովրդին եւ ընտանեաց: Իսկ ընդհակառակն՝ տգէտ եւ անկիրթ մարդ՝ անպիտան եւ վնասակար է իւր տէրութեան, ժողովուրդին եւ ընտանեայց:

Ախո՛ս, ազնիւ Թոռնիկ, որ պապիկդ կարող չէ երկար ճառերով նկարագրել քեզ եւ ցոյց տալ թէ՝ ի՞նչ է գիտութիւն եւ ի՞նչ է տգիտութիւն: Միթէ չը գիտե՞ս դու, վարժապետ քեզ չսորվեցո՞ւց թէ՝ գիտութիւն լոյս է, իսկ տգիտութիւն խաւար. դու չը կարդացի՞ր մեր սուրբ Եղիշէի խօսքը թէ՝ կոյր մարդ կը զրկուի արեւու ճառագայթներէն այսպէս նաեւ տգէտ մարդ կը զրկուի կատարեալ կեանքէն: Ինչպէս մեզ գիւղացիքս զրկուած ենք կատարեալ կեանքէն թէ բարոյապէս եւ թէ նիւթապէս: Բայց պէտք է լաւ նկատես Թոռնիկ, եւ այնպէս չի կարծես, որ քաղաքացւոց վիճակը հաւասարապէս բարեկեցիկ է, ո՛չ, էդպէս մի՛ դատեր: Քաղաքացւոց մեծ մասն շատ թըշուառ եւ չարաչար կեանք ունին. մեծ աշխատութեամբ իրենց օրական պարէն կը ճարեն, խիստ սակաւապետութեամբ կապրին. կարօտ են մի աման թանապուրի, մեծ բախտ է եթէ մի կով կամ մի այծ ունենան: Կը տեսնաս իրենց տները որ մեր խրճիթներէն շատ տարբերութիւն չունին, կը տեսնաս իրենց հագուստներ մաշուած ու պատռտած եւ իրենց դէմք՝ չունի զուարթութիւն եւ կայտառութիւն. զօրհանապազ ընտանեկան հոգածութենէ յոգնած, կը շրջին դատարկ եւ անգործ, որոնք մեծաւ մասամբ իրենց ծուլութենէն այդ վիճակին հասած են:

Կան նաեւ քաղաքացւոց դասէն այնպիսի մարդիկ, որ արտաքին ցուցամոլութեամբ իրենց ներքին յոռութիւն եւ թշուառութիւն ծածկելով՝ վարկ վաստկել կուզեն. նորանոր հագուստներ կը փոխեն, մեծ մեծ բաներ կը խօսեն, այնպէս որ կը կարծես դրամատէր վաստակաւոր եւ տուն չէն պահող մի մարդ է. բայց եթէ մտնես նորա տունը՝ կը տեսնաս դատարկ նոյն իսկ կարեւոր եւ կենսական բարիքներէ. ոչ տաշտին մէջ հաց կայ եւ ոչ ամանին մէջ մի դըգալ իւղ, հապա ի՞նչպէս կապրին, է՛ Թոռնիկ, այդ մի հարցներ, միայն երեք բառով հասկցնեմ քեզ «խաբէութեամբ եւ մասամբ նորին»: Քաղաքացիք թէեւ փոքր ի շատէ կրթուած են, ընկերական կեանքի մէջ քաղաքավարութեան շնորհ ունեն քիչ շատ, բայց օրըստօրէ անբարոյական կեանքի զեղծումներ կաւելնան իրենց մէջ: Սիրելի Թոռնիկ, ես կը յիշեմ, ատի յիսուն տարի առաջ քաղաքացի ընտանիք մէկ մէկ նահապետական տուներ էին, երկիւղած եւ Աստուածավախ, ժամասէր եւ աղօթասէր. հաւախօսին ժամհար ելած ժամանակ, տան միջի բոլոր ընտանիք կը զարթնէին, այր մարդիկ մանուկների հետ եկեղեցի կերթային. եւ այսպէս էն ժամանակի բարեպաշտ հայրերը իրենց զաւակներ տղայութեան հասակէն բարեպաշտութեան մէջ կը կրթէին՝ իրենց բարի օրինակներով: Իսկ ծնողաց կրթութիւն ուրիշ բան չէր,

խրատէն եւ խօսքէն աւելի, բարի օրինակն էր. եւ գիտե՞ս Թոռնիկ, մի բարի օրինակ կարժէ հազար խրատ: Անցաւ գնաց էն բարի ժամանակ, իւր հետ տարաւ այն առաջինի նահապետական մարդիկ: Արդի ժամանակ նոր նոր մարդիկներ բերաւ աշխարհը. վասն զի ամէն ժամանակ իւր մարդիկներ ունի, այժմ աշխարհ փոխուած է. մարդիկներ յառաջդիմութիւն կը սիրեն, միայն թէ ճշմարիտ յառաջդիմութեան պայման, միջոց եւ նպատակ ի՞նչ է, դայն դեռ չգիտեն: Մեր քաղաքացիք միայն յառաջդիմութեան մի մասն ըմբռնած են այսինքն դրամ շահել եւ հարստանալ, ի՞նչ միջոցով կը լինի թող լինի: Ագահութեան եւ շահամոլութեան ոգին այնչափ սաստկացած է, որ շահավաճառութեան մէջ իւրաքանչիւր մարդ միայն իւր շահ կը փնտռէ. նա հաշիւ չըներ եւ չգիտէ թէ ընկերին եւ իւր շահ համերաշխութիւն ունեն եւ մարդիկ միշտ շահակից են իրարու հետ: Բայց շահամոլութեան անյագ, անխիղճ ոգին, գիտես թէ միայն կապրի աշխարհիս վերայ՝ եւ կասէ, ես շահեմ, ես հարստանամ, ես մեծանամ եւ վայելեմ աշխարհիս ամէն վայելք, ինձ՝ ի՞նչ փոյթ թէ ընկեր կը կործանի կամ աղքատ Ղազարոսի նման ինկած իմ դրան առաջ, սեղանի փշրանաց կարօտ կը քաշէ:

Բայց Թոռնիկ թողնենք շահամոլ քաղաքացւոց նկարագիրը՝ դառնանք մեր գիւղ. վասն զի իմ նպատակս է միայն գիւղական կեանքի եւ աշխատութեան վերայ խօսել եւ ցոյց տալ քեզ, թէ ո՞րչափ քաղցր է գիւղական ժողովուրդի կեանք. և որչա՞փ մեծ է հողագործութեան արդիւնք, վասնզի աշխարհիս բոլոր արուեստներուն մայր երկրագործութիւն է. և իրմով միայն աշխարհս կապրի, զի մարդոյն սնունդ եւ կեանք հացն է, թողում այն բազմապատիկ այլ եւ այլ բուսական արդիւնքներ, զորս մարդ իւր ճարտարութեամբ կը պատրաստէ մեր կենաց պէտքերուն համար, եւ այնչափ որ թիւ եւ սահման չունին, որոյ վերայ առ հասարակ յետագայ դասերուն մէջ համառօտ կերպով պիտի աւանդեմ քեզ:

---

Գ.

## ՀՈՂԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ ԵՒ ԻՒՐ ԱՐԴԻՒՆՔ

Լաւ ուշադիր եղիր, Թոռնիկ, որ լաւ հասկնաս, թէ աշխարհիս բովանդակ մարդոց սնունդ եւ կեանք հողագործութեան արդիւնքն է: Մեր բնակած լայնածաւալ երկիր իբրեւ մայր կը սնուցանէ զմեզ իւ բազմատեսակ բուսական բերքերով: Թէպէտ երկիր ինքնին պտուղ կը բերէ, ինչպէս ասաց Յիսուս, բայց մարդ պէտք է աշխատակից լինի երկրին: Տէր Աստուած ամէն տեսակ սերմեր իւր բարերար արարչագործութեամբ նախապատրաստեր է, բայց մարդն եւս իւր աշխատու-

*թեան մեծ բաժին ունի․ պէտք է վարէ, ցանէ, ջրէ եւ պէտք եղած դարմաններ հոգայ․ որպէս զի կարենայ հնձել՝ կասել ու ժողովել ի շտեմարան․ եւ այնուհետեւ վայելել իւր աշխատութեան արդիւնքը։ Այսպէս Թոռնիկ, Մայր երկրին ինքնաբեր արդիւնաւորութեան հետ, անհրաժեշտ է որ մարդոյն աշխատութիւն եւս միանայ։ Բայց պէտք է գիտնաս նաեւ որ երկրին ինքնաբերութիւն եւ մեր աշխատութիւն դարձեալ ոչինչ կարող են արդիւնաւորել, եթէ երկնից Հօր բարերար կամքը չըծագէ արեւ աշխարհիս վերայ իւր համատարած լուսով, եւ հրաման չը տայ ամպերուն որ անձրեւ տեղան լեռներուն, դաշտերուն ու մեր ցանած արտերուն վերայ։ Դու կը տեսնաս երբեմն, երբ մեք որ սովոր ենք աւելի մեր նեղութեան մէջ յիշել զԱստուած, ժողովուրդ ջերմեռանդ սրտաբեկութեամբ աղաղակ կը բառնայ դէպ երկինք․ Աստուա՛ծ, անձրեւ տուր, անձրեւ։ Բարեգութ Աստուած լսելով ժողովրդի ձայնին կը թափէ երկնից ամպերէն իւր բարի կամաց անձրեւ։*

*Կը խելամտի՞ս, Թոռնիկ, երկնից արեւ եւ անձրեւ, երկրի ինքնաբերութիւն եւ մեր աշխատութիւն միանալով, բովանդակ աշխարհի մարդկանց կեանքի սնունդ կը պատրաստուի․ մարդիկ կը վայելեն եւ կը լիանան թէ առաւել եւ թէ նուազ։ Մեր մշակած ցորենէն հաց, մեր սնուցած անասնոց միսը, կարագ, իւղ եւ պանիր․ մեր դարմանած բանջարեղէնք, մեր փեթակներու մեղր, մեր տնկած այգիներուն խաղողն ու գինին, մեր ձեռատունկներէն հասուցած պտուական միրգեր, կերթան կելլեն մինչեւ թագաւորին սեղան եւ գայն կը զարդարեն թագաւորավայել ճոխութեամբ․ աշխարհիս պետական վարիչներ, եւ համայն քաղաքբնակ ժողովուրդներ կը վայելեն իրենց աստիճանին եւ կարողութեան չափով․ անշուշտ մենք էլ մեր չափով կը վայելեմք մեր քրտանց աշխատութեան արդիւնքը։*

*Թողունք հաց եւ այլ ամէն բան, զորս գիւղական ժողովուրդ կը պատրաստէ մարդոց կեանքին եւ սնունդին համար, այդ չէ միայն․ եւ տես դու, որ նոյն մշակ ժողովուրդ կը պատրաստէ մարդոց մերկութեան ծածկոյթ, զոր Տէր Աստուած միայն միանգամ թզենւոյ տերեւով ծածկեց։ Այժմ թուեմ քեզ, Թոռնիկ, այն ամէն սկզբնական նիւթերը, զոր մշակելով յառաջ կը բերէ երկրագործ եւ կը յանձնէ արուեստաւորին։ Մեք կը մշակեմք բամբակ՝ կուտամք կտաւագործին, նա ժողովուրդին համար շապիկ կը պատրաստէ, եւ արուեստաւոր տարազագործ քանի՞ բազմազան ծաղկէնկար չիթեր կը հնարէ, որով լեցուած է աշխարհի վաճառականաց տուներ եւ չուկաներու խանութներ։*

*Մեք կը տնկենք թթենին եւ կը հանենք չերամի այն զարմանալի խոզակ, որ վաճառականաց ձեռքով կը հասնի մետաքսագործ արուեստաւորին ձեռք եւ նա հիանալի կերպասներ կը պատրաստէ, որով կը պճնին սիրամարգի նման աշխարհիս թագուհիներ եւ պալատականներ։ Հին ժամանակ այդ պեր–*

ճանաց հանդերձներ միայն Թագաւորական տանց եւ իշխանուհեաց համար առանձնաշնորհեալ պատիւ էր· բայց արդ՝ հասարակ ժողովրդի ընտանիքներն եւս նոյն ծիրանափայլ զգեստներով կը զարդարին:

Թողլով չերամի մշակութիւն, հապա ո՞վ կը մշակէ այն պատուական կտաւատ, որոյ սերմերէն ձէթ հանելով մեր ճրագներ կը վառեմք, մերթ եւս ձէթով փիլաւ կը շինեմք, որ քան գձիթենիի իւղ շատ աւելի օգտակար է: Իսկ կտաւատի ցօղունէն արուեստաւոր ձեռք ընտրելագոյն քթան կտաւներ կը պատրաստէ, որ քան գձիւն սպիտակ կը լինի եւ մի չափիկցուն մինչեւ մէկ ոսկիի արժէք ունի: Բայց քթանէն եւ բամպակէն եւ մետաքսէն զատ կան տակաւին ուրիշ բուսական նիւթեր, որոնցմէ հնարամիտ արուեստաւորն ոչ միայն հանդերձի համար, այլ եւ բովանդակ աշխարհի գրողներուն համար, տպագրութեան համար անհուն քանակութեամբ թուղթ կը պտրաստէ· թող բուսական խոտ՝ նոյն իսկ փայտի տաշեղներէն անգամ թուղթ կը պատրաստուի, որ մեք զայն անպէտք համարելով կը վառեմք:

Թողունք, Թոնիկ, ուտեստի եւ հագուստի վերաբերեալ բաներ, որ գիւղական ժողովրդի աշխատութեան շնորհիւ կը պատրաստուին· հապա ո՞վ կը տնկէ անտառի ծառերը, եւ կը պատրաստէ աշխարհիս մարդոց բնակութեան անթիւ, անհամար շինութեան փայտեր, թող ցամաք երկրին, ծովու վերայ գնացող նաւերուն փայտերը: Թէպէտ ի սկզբան Տէր Աստուած այս մեր աշխարհի լեռներ, դաշտեր ինքնաբոյս անտառներով զարդարած էր· բայց երկրի բնակիչ մարդիկ կտրելով սպառած են այժմ այդ հին դարերու յաւիտենական անտառներ: Այնուհետեւ սկսեց անտառաբանութեան մշակութիւն, որ երկրագործութեան մի կարեւոր ճիւղն է: Եւ գիտե՞ս դու, թէ այժմ տնկելով, դարմանելով որչա՞փ նորանոր անտառներ կը հասցունեն: Երանի՜ թէ բախտ ունենայիր, Թոնիկ, Եւրոպա երթալ եւ տեսնալ այն գեղեցիկ մայրի ծառերու եւ այլ պէս պէս որոշ որոշ անտառներ թէ հնատունկ թէ նորատունկ, զորս կը խնամէ եւ կը պահպանէ անտառապահ մշակն, գիտէ ժամանակին հիները կտրել կարգով եւ նոր մատաղ տունկ տնկել, կամ անտառի սերմեր ցանել· եւ այնչափ ճարտարութեամբ դարմանել՝ որ մի քանի տարուան մէջ, այդ փոքրիկ սերմիկներ մեծ մեծ ծառեր կը լինին եւ կը ծածկեն գետնին երեսը, որոց հովանեաց տակ կը հանգչի աշխատաւոր մշակը· անոյշ անվրդով քուն կը քաշէ եւ անտառին քաղցրախօսիկ սոխակներ յոգնած մշակին օրօր կը կարդան:

Այսչափս միայն խօսելով, մտավարժ Թոնիկ, կարծեմ լաւ հասկցար թէ՝ քանի՜ մեծ է եւ պիտանի հողագործութեան արդիւնք, զորս մշակ ժողովուրդ կը մատակարարէ աշխարհիս քաղաքացի ժողովուրդին: Իսկ քաղաքացի ժողովուրդ, ընդունելով այդ ամեն վայելք, ինքը եւս գիւղացի ժողովրդոց խիստ կարեւոր պէտքեր կը հոգայ, որով համերաշխ մի փո-

*խանակութիւն կը լինի երկուստեք, որով բարուք կը կառավարեն աշխարհիս իրարմէ անջատեալ ժողովուրդներ, գիւղացին ի գիւղ, քաղաքացին ի քաղաք:*

———o———

Դ.

## ՓՈԽԱՆԱԿՈՒԹԻՒՆՔ

### ԳԻՒՂԱՑԻՈՑ ԵՒ ՔԱՂԱՔԱՑԻՈՑ

*Սիրելի Թոռնիկ, կը տեսնաս միշտ եւ դիւրապէս կարող ես ըմբռնել, թէ ի՞նչ է փոխանակութիւն մեր տուրեւառական կենաց մէջ: Առանձին մարդ, սոսկ իւր ինքնաշխատութեան արդիւնքով չի բաւականանար, զի մարդկային ընկերութիւն համաշխատութեամբ կապրի. այսինքն ինչ որ մեք ունիմք, զայն կուտամք եւ ինչ որ չունիմք, զայն կառնումք: Մեք ունիմք շատ բաներ, զոր քաղաքացին չունի. նմանապէս քաղաքացին ունի շատ բաներ, որ մեք չունիմք:*

*Զորօրինակ, մեք ցորեան ունիմք եւ ուրիշ շատ հնտեղէն եւ բանջարեղէն բաներ. ոչխար եւ տաւարներ ունիմք, կաթ, պանիր եւ իւղ ունիմք. կան նաեւ շատ երկրագործութեան այլ եւ այլ արդիւնքներ, որոց աւելորդը ծախելով կը գնեմք մեզի պէտք եղած բաները, որ շատ քիչ են. զի գեղացւոց կեանքի պէտքեր աւելի պարզ եւ անպաճոյճ են: Մեր հագուստի համար բաւական են շալեղէն եւ կտաւեղէն նիւթեր. ընտանեաց համար Վանայ չիթ, կարմիր կտաւ եւ տեղացի մանխան բաւական էր երբեմն, իսկ այժմ Եւրոպիոյ փտած պասմաներ եւ չուխաներ բաւական չեն համարեր:*

*Է՛, Թոռնիկ, ժամանակ փոխուած է, գիւղացի ընտանեաց ճաշակն եւս բացուած է քաղաքացւոց պէս: Քաղաքացի ընտանեաց փայլուն զարդարանք անշուշտ կը հրապուրեն մեր պարզասէր ընտանիք: Բայց պէտք է գիւղացի ժողովուրդ ամենայն կերպով աշխատի իւր պարզութիւն եւ իւր սակաւապէտ կեանքի սովորութիւններ պահել: Վասն զի գիւղացին իւր աստիճանին չափով պէտք է ապրի: Եւ առանձին դասով պիտի խօսիմ քեզ դարձեալ այս նիւթին վերայ:*

*Հագուստէն ի զատ, գիւղացւոց աշխատութեան ամենապիտանին երկաթէ գործիքներն են, զոր կը պատրաստէ քաղաքացի արհեստաւոր եւ մեք կառնեմք դրամով: Մեր գութանին խոփը, հնձելու գերանդին ու մանգաղ, եւ այլ կարեւոր երկաթէ բաները, որ մեզ համար անհրաժեշտ է, եւ զորս դարբինը կը պատրաստէ մեզ համար:*

*Հարցու՛ր, Թոռնիկ, միթէ կարելի չէ՞, որ գիւղացին իւր ամէն պէտքեր ինքն հոգայ. Ապրի՛ս Թոռնիկ, այդ շատ մի խելացի հարցումն է, կը բաղձաս որ գիւղացին երբէք կարօ-*

ութիւն չունենայ քաղաքացւոյն: Այո՛, այդ շատ դիւրին բան կերեւի, միայն թէ գիւղացին եւս գրել, կարդալ սովրի քաղաքացւոց պէս, միտք բացուի, մտածել գիտնայ եւ իւր չափով յառաջդիմէ. էն ժամանակ՝ նա կը մտածէ եւ քանի մի մտացի մանուկներ քաղաքացի դարբնին քով աշկերտ կը դնէ, քիչ ժամանակի մէջ լաւ կը սովրի, կը դառնայ գիւղ, մի դարբնի խանութ կը բանայ. ոչ միայն իւր գիւղին, այլ եւ շրջակայ գիւղերու համար կը շինէ, կը պատրաստէ պէտք եղած գործիքներ: Թող այս, մեք մեր պարզ հագուստներն եւս կրնամք պատրաստել, քանի որ գիւղացին բուրդ եւ բամբակ ունի: Թէպէտ մեր Վանայ երկիր բամբակի մշակութիւն չի յաջողիր, բայց Մուշ, Երզնկայ, Խարբերդ եւ այլ բազում գաւառներ բամբակի մշակութիւն բաւական յաջողած է: Վանայ գիւղացւոց համար էլ բամբակ չի պակսիր, Պարսկաստանի մօտ սահմանէն բազում քանակութեամբ բամբակ կուգայ, Վանեցին կարող է առնել, մանել եւ կտաւ գործել: Բայց աւելի լաւ է, որ գիւղացին իւր ոչխարի բուրդէն շալեղէն բաներ գործելով իւր հագուստներ պատրաստէ: Մանաւանդ ձմեռ ժամանակ, որ մշակութեան գործերէն կը դադարի, կարող է շալ գործել եւ ուրիշ արհեստներու պարապել, որ գիւղական ժողովուրդին համար կարեւոր եւ պիտանի են:

Շատ կը ցաւիմ Թոռնիկ, որ մեր Վանայ եւ Մշոյ գիւղացիներ շատ ծոյլ եւ անաշխատ կեանք կը վարեն, մանաւանդ քաղաքի շրջապատ գիւղերը, որ խումբ խումբ յաճախելով ի քաղաք, կը դեգերին գինետանց մէջ օրերով՝ արբեցող եւ մօլի կը լինին: Ես չեմ ասեր որ աշխատաւոր գիւղացին գրկուի այդ վայելքէն, այն ինչ քաղաքացին աւելի չափազանց կերպով կը վայելէ: Եւ գիտե՞ս դու բոլոր Վանայ եւ շրջակայ գիւղերու այգիներն գրեթէ երկու հարիւր հազար լիտր գինի կը լինի, եւ այդ ամէն Վանայ ղուարճասէր եւ գինեսէր ժողովուրդ խըմելով կ'սպառէ. եւ ի՞նչ անէ չըսպառէ, վասն զի հետեւեալ տարին քացախ կը դառնայ: Այգեպանք գինեգործութեան արուեստ չեն գիտեր, թէ գիտնային եւս դարձեալ անօգուտ էր. չեն կարող շահագործել, քանի որ փոխադրութեան միջոց չունին, ծովէն շատ հեռու, ճամբաներ դժուարին եւ անհարթացած են: Խնամատար տէրութեան շնորհիւ, Թուրքիոյ շատ գաւառներում քաղաքէ ի քաղաք ճամբաներ շինուելով հարթուեցան եւ այդ գաւառներուն շահագործութիւն օրըստօրէ յառաջ կերթայ. յոյս ունիմք որ մեր գաւառներն եւս նոյն բախտն ունենան ու յայնժամ ոչ միայն գինին, այլ եւ մշակութեանց արդիւնք պիտի կրնայ փոխադրուել մինչեւ Տրապիզոնի նաւահանգիստը:

Ահա, սիրելի Թոռնիկ, քո հարցման պատասխանելով, կարգն այնպէս բերաւ որ ուրիշ բաներ էլ խօսեցայ. բայց պէտք է դառնամ քո հարցման եւ բացատրեմ քեզ աշխարհի անտեսութեան մի անհրաժեշտ օրէնքը, որ մարդկային ընկերութիւն ի-

*բարու հետ կը կապէ չահագործութեան ու առեւտրական միջոցներով. դու կուզես, որ գիւղացին իւր աշխատութեամբ իր ամէն պէտքեր հոգայ, երբէք կարօտութիւն չունենայ քաղաքացիներէն բան գնել եւ իւր պէտքեր հոգալ։*

*Է՛հ, Թոռնիկ կը մոլորիս, այդ դատողութիւնը՝ սոսկ մանկական մի բաղձանք է, հակառակ ընդհանուր մարդկային ընկերութեան, բարոյական միութեան եւ համերաշխական շահուն։ Եւ դու պէտք է գիտնաս որ՝ մարդկային ընկերութիւն իրարմով կապրի, միոյն կարօտութիւն եւ պակասութիւնը՝ միւսն կը լրացնէ եւ աշխարհիս ամէն բան փոխարինութեամբ կը կառավարուի։ Դու ի՞նչպէս կուզես, ցորեան տանես քաղաք ծախես եւ չուկայէն բան մի չառնելով՝ ե՞տ դառնաս, այսինքն միայն ծախես եւ երբէք ծախու չառնես. այս կերպ առեւտուր՝ չատ անիրաւ եւ անարդար է, միանգամայն թէ վաճառականաց եւ թէ արհեստաւորաց մեծ զրկանք կը լինի ու կը փակուի նոցա ապրուստին դուռը։ Վասնզի դու ինչպէս ցորեան եւ այլ մշակութեան բերքեր ծախելով կապրիս, վաճառականն եւս իւր ապրանք ծախելով կապրի։ Մի գաւառի ժողովուրդք ամենամեծ մասն գիւղացի է. եթէ գիւղացին իւր առեւտուր կտրէ քաղաքէն, միթէ կարելի՞ է քաղաքի ժողովուրդն ապրի. նմանապէս գիւղացի ժողովուրդ կապրի՞, եթէ իւր մշակութեան բերքերը քաղաքացւոց չը ծախէ, կամ իւր նեղութեան մէջ չը դիմէ քաղաքացի բարեկամին եւ փոխառութիւն չանէ։ Ո՞վ չի գիտեր որ գիւղացւոց գանձարան քաղաքն է։ Խեղճ գիւղացին իւր մշակութեան բովանդակ բերքերով, կարող չէ տակաւին իւր պէտքեր եւ պարտքեր հոգալ եւ ժամանակին տէրութեան տուրքեր վճարել։ Սորա համար նա միշտ հարկադրեալ է դրամատէր քաղաքացւոյն դիմել եւ փոխ դրամ խնդրել։*

*Այս մասին դարձեալ պիտի խօսիմ Թոռնիկ, եւ դու պէտք է համոզուիս եւ ուսանիս թէ՝ քաղաք գեղով եւ գեղ քաղաքով կապրին. զի աշխարհի տնտեսութեան մի կարգադրեալ օրէնք է, որով կը կառավարուին բովանդակ ազգեր եւ ժողովուրդներ։*

———o———

*Ե.*

## ՎԻՃԱԿ

### ՄԵՐ ԱՐԴԻ ՀՈՂԱԳՈՐԾՈՒԹԵԱՆ

*Տեսնո՞ւմ ես, իմ սրատես Թոռնիկ, որ մեր գիւղական ժողովրդի հողագործութեան վիճակը նոյն հնութեան խանձարուրին մէջն է, դեռ հին հին դարերու մէջ կը թափառիմք. մեր հողագործութեան ամէն աշխատութիւններ դառնաքիրտն տանջանք է, մեր բանեցուցած գործիքներ անտաշ, անար-*

ուեստ, եւ կոպիտ շինուածներ են, որ չէ թէ միայն զմեզ կը տանջեն, այլ առաւել մեր խեղճ անխօսուն անասուններ:

Տե՛ս, ահա գիւղացի մշակը ցորենի որան բարձած սայլին՝ արտէն կուգայ. մի զոյգ ուժեղ գոմէշներ լծած է եւ մի զոյգ եզներ, որ սայլը դժուարաւ քաշելով կէս ժամու ճանապարհը մի ժամէն հազիւ կը բերեն ի կալատեղ: Անխիղճ սայլորդ խարազանով շըփըռ շըփըռ կը վարէ խեղճ գոմշուկներ, լեզունին դուրս հանած շնչասպառ փնչփնչալով կը քաշեն. մօտ երթանք տես, Թոռնիկ, այդ կոպիտ սոսկավլիթխար սայլը. չափէ սայլի երկայնութիւն եւ լայնութիւն. սայլին ոռնակներով ի միասին կը դառնայ, ոռնակի վերայ հեծած մառանը իւր ակներով հանդերձ եթէ կշռենք հարիւր լիտրէն աւելի է, վասն զի բոլոր թեղի ամուր փայտէ շինուած է. որ շատ ծանր է փայտերու տեսակին մէջ, ուստի սայլն ինքնին մի ահագին բեռ է եւ այս բեռան վերայ կը բառնան մինչեւ հարիւր լիտրն եւ աւելի ցորենի խուրձեր:

Շատ կը մխիթարուիմ, Թոռնիկ, զի կը տեսնամ այժմ Վանայ գիւղական ժողովուրդ սկսած է Կարնոյ թեթեւ սայլեր գործածել, որ մեծ դիւրութիւն կուտայ երկրագործին:

Երթա՛նք, ահա մօտ այն տեղ արտ կը վարեն. ցոյց տամ քեզ Ադամայ գութան. տես մի հաստ կորաքամակ հացի փայտ է, երեք կանգունէն աւելի երկայնութիւն ունի. եւ սորա անուն էշ կասեն Վանայ գիւղացիք, յիրաւի դանդաղ մի էշ է քաշելու համար. այս էշ փայտին յետսակողմ կցուած առատամն եւ անոր գլուխն անցուցած են երկաթէ խոփը: Վանայ գութան մի զոյգ ամոլաձիգ գոմէշներով եւ երեք զոյգ եզներով կը հերկեն գետին. որուն բացած ակօսներ հազիւ մի մեծ թըզաչափի խորութիւն ունի: Բայց խօսիմ քեզ, Թոռնիկ, եթէ դու Մշոյ դաշտի, Ալաշկերտի եւ Արարատեան երկրի գութաններ տեսնաս, պիտի սոսկաս, ինն զոյգ կոռուան գոմէշներով եւ եզներով հազիւ կը բանեցնեն այդ կոպիտ գութան. եւ իրեն բացած ակօսը շատ մեծ տարբերութիւն չունի մեր գութանի ակօսէն, գիւղի քանի մի տուներ միանալով հազիւ կարող են մի գութան լծել: Մեր Վանայ գիւղերու գութաններ, եթէ դոցա հետ բաղդատենք շատ աւելի կատարելագործուած են. վասն զի մեր գութանի հիւսներ շատ վարպետ են եւ լարաչափով այնպիսի ուղղութիւն կուտան գութանին, որ երբեմն առանց շեղելու գծի վերայ կը քալէ եւ ակօս կը բանայ: Բայց թէ Եւրոպիոյ գութանին հետ բաղդատենք, մեր գութան ետ կը մընայ: Վասն զի մի զոյգ գոմէշ կամ երկու զոյգ եզը, եթէ լծես Եւրոպիոյ գութանին ամենայն դիւրութեամբ գետին կը հերկէ՝ թէ եւ կորդ լինի, այն ինչ մեր գութան պէտք է չորս լծով բանեցնես: Եւ գիտե՞ս, Թոռնիկ, թէ որչա՞փ տնտեսութիւն է երկրագործութեան աշխատութեան համար, երբ չորս լուծի տեղ կարենամք երկու լծով հերկել: Մանաւանդ գիւղացի այն

*տուներու համար որչա՞փ ձեռնտու եւ շահաւոր է, որոնք շատ լծկան տաւարներ չունին։*

*Շատ ուրախ եմ, Թոռնիկ, ես լսեցի եւ գնացի տեսայ Վանայ մէջ մի ճարտար հնարամիտ հիւսն կայ ուսթայ Դաւիթ կասեն, որ ամենայն ճշտութեամբ Եւրոպիոյ գութաններուն նման կը շինէ· նմանապէս մի այլ արուեստաւոր դարբին կայ Ալէքսան անուն, նա եւս գութանի երկաթէ մասերը կը շինէ, բաւական է որ կաղապար ցոյց տաս։ Այժմ Վանայ շրջակայ գիւղացիք սկսած են այդ գութանը գործածել· գինն շատ աժան է· երեք ոսկիով մի գութան կրնայ շինուիլ։ Որչա՞փ դիւրութիւն է գիտե՞ս, Թոռնիկ, գիւղացւոց համար պատրաստի գութան գնել։ Ես գիտեմ խեղճ գիւղացին, թէ՛ գութանի համար թէ՛ սայլի համար եւ թէ մշակութեան պէտք եղած այլ եւ այլ փայտեր գնելու համար, թողլով իւր դաշտի աշխատութիւն, օրերով կերթայ կը դեգերի Վանայ ծառաստաններում· որպէս զի յարմար փայտեր գտնայ եւ այն որչա՞փ սուղ կը պարտաւորի գնել։*

*Երանի՛ թէ՝ Վանայ մէջ մի գործարան բացուէր, ճարտար հիւսներէն եւ երկաթագործներէն· մի չափաւոր ընկերութիւն կազմելով՝ երկրագործութեան պէտք եղած ամէն գործիքներ պատրաստէին այդ գործարանում, ոչ միայն գութան՝ այլ եւ փոքր արօրներ, թեթեւ սայլեր, որոյ սռնակներ անիւներու մէջ դառնային· կասելու վերաբերեալ բոլոր գործիքներ կամնասայլ, ջաղջառ եւ այլն· մանկեռ, տափան, լծներ, եւայլն։ Էն ժամանակ տեսնաս դու Թոռնիկ, թէ ո՞րչափ դիւրութիւն կը լինի երկրագործ ժողովուրդին համար։ Եւ ո՞րչափ պիտի շահի այդ փոքրիկ ընկերութիւն, ոչ միայն Վանայ գիւղացւոց, այլ եւ՝ դրացի գաւառներուն համար եւս՝ կարենայ պատրաստել· վասն զի Վանայ ծովակ մեծ դիւրութիւն կուտայ, մշակութեան գործիքներու փոխադրութեան համար։ Եթէ յաջողի այս ձեռնարկութիւն, հին գործիքներ փոխուին ի նոր· շատ պիտի յառաջանայ երկրին արդիւնաբերութիւն, որ ոչ միայն հպատակ ժողովուրդին, այլ եւ Տէրութեան հասոյթին կրկնապատիկ յաւելումն կը լինի· զի երկրին մշակութեան բարգաւաճանք Տէրութեան գանձարանին հարստութեան աղբիւրն է։*

*Այսպէս Թոռնիկ, հին գործիքներ եւ միանգամայն հին ունակցեալ նախապաշարմունք ի բաց թողլով, պէտք է ընդունիմք արուեստին հնարած նորանոր գործիքներ· թէպէտ անգիտակ ժողովուրդին համար բաւական դժուարին է, այլ երբ ժողովուրդ իւր աչքով տեսնայ գործնական օրինակ, աշխատութեան դիւրութիւն եւ միանգամայն շահն ու վաստակ, նա իսկոյն կը քաջալերուի եւ հետամուտ կը լինի փորձել եւ սովորել· միթէ դու այնքան ապուշ եւ տխմա՞ր կը կարծես մեր գիւղացի ժողովուրդ, որ իւր շահը աչքին առաջ տեսնայ եւ չաշխատի ձեռք բերել։*

Մտի՛կ արա, Թոռնիկ, քեզ մի փոքրիկ պատմութիւն անեմ, համոզուիս թէ մարդիկ՝ ի՛նչ բան որ չահաբեր է, զայն իրարու ձեռքէն յափշտակել կը ջանան:

Կը պատմեն թէ՝ մի Ֆրանսացի բաւական քանակութեամբ փաթաթէս, իբր սերմ Ամերիկայէն փոխադրեր է ի Ֆրանսա եւ մի արտ փաթաթէս տնկելով՝ յաջողած է մեծ արդիւնք առնել: Եւ որովհետեւ իւր նպատակն այն է եղեր, որ այդ օգտակար տունկին մշակութիւն տարածէ Ֆրանսայի մէջ. ուստի իւր մշակած փաթաթէս ձրի բաշխել կուզէ ժողովուրդին, ոչինչ կարեւորութիւն չի տար ժողովուրդ զուցէ կը ծաղրեն եւս: Դու տե՛ս ի՞նչ կանէ հնարամիտ ագարակատէր, կառավարութենէն ոստիկաններ կուզէ եւ պահապան կը դնէ փաթաթէսի արտին: Բայց գաղտնի հրահանգ կուտայ ոստիկաններուն եթէ մտնան փաթաթէսի արտ եւ գողութիւն անեն, պահապաններ այնպէս ձեւանան՝ որպէս թէ չեն տեսնար, թոյլտուութիւն անեն: Մարդիկ կը տեսնան որ, պահապաններ կան արտին վերայ, ուրեմն կասեն, արտին մէջ լաւ բաներ կան ուտելու: Կը սկսեն ճարպիկութեամբ գողնալ փաթաթէսներ. առաջ խումբ խումբ կուտեն եւ յետոյ կեփեն՝ կը տեսնան որ, մի պատուական բան է. հաւկիթի պէս համ ունի եւ բաւականին սնունդ կուտայ մարդոյն: Ահա այս կերպով ոչ միայն ի Ֆրանսա այլ եւ բոլոր յԵւրոպայ կը տարածուի փաթաթէսի մշակութիւն, սովու ժամանակ ժողովուրդին համար մի ազատարար սնունդ է:

Տեսա՞ր Թոռնիկ, ի՛նչ վարպետ եղանակ բանեցուց հանճարեղ Ֆրանսացին. իւր գիւտը գողերու ձեռքով բոլոր Ֆրանսայի երկիրը տարածեց. թող Ֆրանսա, այսօր համայն Եւրոպա փաթաթէսի մշակութեամբ կը պարապեն. ցորենէն յետոյ ամենակարեւոր մի պէտք համարուած է սնունդի համար:

Որչա՞փ ցանկալի կը լինէր, եթէ մեր մշակ ժողովուրդն եւս այս օրինակին հետեւելով՝ սովորէր մշակել այդ չահաւէտ բոյսն, որ միոյն տեղ մինչեւ երեսուն քառասուն կը պտղաբերէ. եւ երբ պատահէր որ ցորենի մշակութիւն չի յաջողէր, փաթաթէսի մշակութիւն կը լեցնէր նորա տեղ եւ այլ եւս մարդիկ սովու դառն աղէտէն ազատ կը մնային:

Մշակութեան գործիքներու վերայ խօսելէ յետոյ, գիտե՞ս Թոռնիկ, աւելի կարեւոր կենդանի գործիքներ եւս կան, այն է մեր լծկան աշխատաւոր անասուններ, որ քան զմեզ առաւել կը խոնջին մշակութեան ամենածանր աշխատութեան մէջ: Բայց գիտնալ պէտք է, թէ մշակութեան համար ո՞րն է աւելի յարմարագոյն, ե՞զ, գոմէ՞շ, թէ ձին: Մեք սովորաբար եզ եւ գոմէշ կը գործածենք, փորձառութիւն ցոյց կուտայ մեզ, որ հեզաբարոյ եզն աւելի յարմարագոյն է քան գոմէշ, գործածութեան համար մեծ դիւրութիւն կուտայ:

Վասն զի գոմէշ մեծ զբաղմունք եւ դժուարութիւն կը յաւելու մշակին, մանաւանդ գարնան սկիզբն, երբ ի ձմերան ա-

*խոտին մէջ գերացած՝ յօրացած դուրս կը հանուին, քանի մի շաբաթ պէտք է, որ այդ ամեհի եւ կատաղի կենդանիներն ընտելացնես եւ ապա կարենաս նոցա սէգ պարանոցը լուծին տակ դնել: Դու տեսե՞ր ես, թէ մշակներ ի՞նչ միջոց ի գործ կը դնեն այդ կռուան գոմէշներ իրարու հետ հաշտեցնել համար: Այնպիսի յիմար եւ կոպիտ միջոց մտածեր գտեր են, որ դոցա կռուոյ տեսարանին առաջ, մարդ չի կարող դիմանալ՝ եթէ փափուկ սիրտ ունի: Երկու կռուան գոմէշներ դաշտ հանելով թող կուտան, տես դու յայնժամ, թէ քանի՞ ուժգնութեամբ գլուխ գլխու կը զարնուին ահագին ճայթումով, կռուոյ վախճան այն կը լինի երբեմն, որ մին առաջին հարուած կրելով կը տեսնայ իւր տկարութիւն եւ խոյս կուտայ. մերթ եւս հաւասար ուժեր երկուստեք յամառելով չեն բաժնուեր, մինչեւ մէկին կամ միւսին ոտքը կը կոտրի կամ կոտոշն արմատէն կը թռչի: Մի զարմանալի օրէնք կայ այս կռուաններու միջում. երբ մին յաղթող հանդիսանայ եւ միւսն կը փախչի, այլ եւս հաշտ են իրարու հետ եւ խոնարհելով կերթան ի միասին լուծին ներքեւ:*

*Զարմանանք Թոռնիկ, որ անգէտ գիւղացին գոմէշներու հաշտութեան պայմանը այսպէս կը կնքէ. միթէ աշխարհի հաշտութեան օրէնքն եւս այսպէս չէ՞:*

*Թող այս, գոմէշին գործածութիւն ուրիշ կերպ աշխատութիւն եւ դժուարութիւն եւս ունի. վասն զի գոմէշներ որչափ որ պինդ եւ հաստակաշի են, բայց շատ փափուկ են եւ մեծ դարման կուզեն. ոչ ցուրտի կը դիմանան եւ ոչ տաքի, յամարան օր քանի մ'անգամ պէտք է լուանաս՝ ի ձմերան եւս գոնէ քանի մ'անգամ պէտք է լուանաս եւ օծես ձէթով: Եւ գիտե՞ս, թէ քանի՞ դժուարին է գտնել այնպիսի գոմէշներ, որ չեն ընտելանար միշտ կռիւ կը սիրեն եւ կը վրդովեն միւսներուն խաղաղութիւն: Մի մշակ պէտք է դորա հետ զբաղի առանձին եւ պահպանէ զայն, գիւղացին միայն հնարք մի ունի, այդ անզուսպ կռուանները գործածելու, եւ անմիջապէս կը հնազանդեն: Եւ մերթ եւս գիւղացիք մեծ պարծանք կը համարեն իրենց համար, եթէ կռուան գոմէշներ ունենան. վասն զի չինական ժողովուրդն եւս իւր չափով փառասիրութիւն ունի: Որչա՞փ կը հպարտանայ մեր Թորոս աղբար, երբ իւր գոմէշն՝ յաղթէ Կիրակոսի գոմէշին. տես դու էն ժամանակ Թորոսին եւ Կիրակոսին կռիւն. մանաւանդ երբ յաղթուած գոմէշին վտանգ պատահած է, կամ ոտք կոտրեր եւ կամ կոտոշ թռեր է. եւ սորա հետեւանք կը լինի ոխութիւն կամ վրէժխնդրութիւն իրարու դէմ:*

*Ինձ այնպէս կը թուի, Թոռնիկ, մշակութեան ծանր եւ անտանելի գործիքներ պատճառ տուած են գիւղացւոց գոմէշ գործածել: Բայց երբ գործիքներ թեթեւնան եւ դիւրանան, այլ եւս հարկ չի մնար գոմէշի գործածութեան: Այո՛, անասնաբուծութեան կարգին գոմէշն եւս իւր պիտանութիւն ունի իւր կաշւոյն եւ մսին համար, հապա կոտոշն, յորմէ Եւրոպա—*

ցին իւր ճարտարութեամբ շատ տեսակ բաներ կը շինէ, դանակի, չախուի՝ կոթեր եւ կոճակներ, իսկ մեր ձէթ ծախող՝ կոտոշով կը չափէ իւր ձէթ եւ միայն այսչափ է պիտանութիւն:

Ուստի լաւագոյն է Թոռնիկ, որ գիւղացիք համոզուին եւ սովորեն, աւելի եզն գործածել մշակական աշխատութեան մէջ, որոյ դարման թէ ամարան եւ թէ ձմերան շատ հեշտ է, ոչ լուանալ կուզէ եւ ոչ օծել. բաւական է միայն քերոցով իւր կռնակ քերել եւ մաքուր պահել: Բայց պէտք է եզներուն սերունդ ազնուացնել ինչպէս Ալաշկերտ գաւառի եզներ, որ շատ պատուական եւ հսկայ են. մեր Վանայ գաւառի եզներ շատ գաճաճ եւ անոյժ են, դորա պատճառներ կը բացատրեմ քեզ իւր տեղը:

Բայց թէ խօսիմ՝ Թոռնիկ, թէ քան գոմէշ եւ եզն շատ մեծ առաւելութիւն ունի ձին, եթէ գիտնայինք եւ կարենայինք գործածել զայն մեր հողագործական աշխատութեան մէջ: Գիւղացին կը խնդայ թերեւս, նա չէ տեսեր եւ չի կրնար հաւատալ, թէ բոլոր Եւրոպիոյ աշխարհ միայն ձի կը գործածէ երկրագործութեան համար, թէպէտ անհուն եզներ կը դարմանէ եւ այդ միայն՝ մսին եւ կաշւոյն համար է: Ձիոյն յատկութիւններ խօսիմ քեզ, նախ որ ձիոյն կուրծքը կրկնապատիկ ոյժ ունի քան եզան վիզը, երկրորդ ձին շատ արագութիւն ունի աշխատութեան մէջ այնպէս համարենք եթէ եզ եւ գոմէշ լծուած գութեան մի օր յիսուն ակօս կը բանայ, անշուշտ ձիոյ գութեան մինչեւ եօթանասուն եւ աւելի եւս ակօսներ կը բանայ: Մանաւանդ սայլ քաշելու եւ որան կասելու համար, ձիոյն գործածութիւն անհամեմատ է:

Այլ միթէ գիւղացին կը համոզուի՞ իւր հին աւանդական դրութիւն եւ սովորութիւն թողնել, այո՛ Թոռնիկ. գիւղացին եւս իւր իրաւունքն ունի, քանի որ կրթութիւն եւ ժամանակն ձեռնտու չեն իրեն. եւ աւելի քան զամէն իւր խոր արմատացած նախապաշարումն. այդ հնաւանդ գաղափարը իւր մտքէն խլելու համար կրթութիւն եւ հարուստ ժամանակ պէտք է:

Բայց միթէ սպասե՞նք, որ նա կրթուի եւ մտքով հաւանի նոր յառաջդիմութեան. ո՛չ, ինչպէս խօսեցայ յառաջ, պէտք է գործնական օրինակով ցոյց տանք գիւղական ժողովուրդին, թող տեսնայ իւր աչքով. վասն զի նա որ գրել կարդալ չի գիտեր կը դժուարի մտքով ըմբռնել. աչքի տեսութեամբ եւ յայտնի օրինակով շուտով կըմբռնէ. եւ գործին շահաւէտ արդիւնք կը մղէ զինքն հետեւիլ օրինակին: Հին աշխարհի դարերում երբ գիր չը կար, ոչ դպրոց եւ ոչ կրթութիւն. ամէն բան եւ արուեստ աչքի վարժութեամբ կը սորվէին իրարմէ. եւ նոյն իսկ արդի մեր արեւելեան աշխարհ նոյն վարժութեամբ կուսանին պարզ արհեստներ զորօրինակ, դարբնութիւն, դերձակութիւն, կօշկակարութիւն, հիւսնութիւն եւայլն, այն ինչ արեւմտեան յառաջադէմ աշխարհ այդ արհեստներ նախ տեսա-

*կան կերպով դպրոցի մէջ դաս կ՚ուսան եւ երբ դպրոցէն ելլէ աշակերտ, շատ դիւրութեամբ կուսանի գործնական վարժութիւն այհեստանոցին մէջ։*

———o———

Զ.

# ՎԱՐՈՒՑԱՆ

## ԵՒ ՄՇԱԿԱԿԱՆ ԱՅԼ ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆՔ

*Մշակական աշխատութեան գործիքներու վերայ բաւական խօսելէն յետոյ, այժմ պիտի սկսիմ Թոռնիկ, վարուցանի եւ այլ զանազան աշխատութեանց վերայ խօսել։ Մեր Վանայ գիւղական ժողովուրդ երկու կերպով գետին կը վարէ, եթէ գետին կորդ է, գութանով կը վարէ. իսկ եթէ գետին անցեալ տարի վարուած լինելով փխրած է հողը, էն ժամանակ հարօրով կը վարէ մի զոյգ գոմէշ կամ եզն լծելով։ Սովորաբար հարօր գարնան միջոցներ կը գործածուի գարի կամ այլ հնդեղէն բաներ ցանելու համար։ Երբեմն Ապրիլ ամսոյ վերջեր եւ երբ գարուն շուտ գայ, եւ երբեմն Մայիս ամսուան մէջէն կսկսին գութան, եւ առաջին նուագին կաթնավար կասեն, երբ հողը կակուղ եւ դիւրավար է. եւ յետոյ հետզհետէ կը պնդանայ՝ մեծ մեծ կոշկոռներ կը լինին վարած ժամանակ։ Սորա համար կաճապարեն մեր գիւղացիք որ գութեան շուտ լծեն. որ կաթնավարի ժամանակ չանցնի։ Բայց Վանայ ծովու եզերք Արճկու եւ Արճիշոյ գաւառները, որոց գետին վարելու եղանակ տարբեր է եւ աւելի արդիւնաւոր. եւ այդ կերպ մշակութեան՝* դիր *կասեն, նոքա երկու անգամ կը հերկեն գետինը, առաջին անգամ սկիզբն գարնան խորունկ կերպով հարօրավար կանեն եւ կը տափեն կը մնայ այնպէս մինչեւ աշնան սկիզբն, եւ ապա կսկսին կրկին վարել դարձեալ մի տեսակ հարօրով, որուն խոփի ետեւ կցուած կան երկու տախտակներ կանգուն ու կէս երկարութեամբ եւ թզաչափ լայնութեամբ, իսկ վարի մասն մի մատի չափ բաց է տախտակներու երկարութեամբ, այնպէս որ սերմնահան այդ հարօրին ետեւէն երթալով սերմը փոքրիկ բուռով կը ձգէ տախտակներու մէջ եւ անտի ակօսին մէջ կիյնան կարգաւ սերմի հատիկներ, ակօսի երկու կողմի հողեր թափելով կը ծածկեն սերմեր։ Դու տեսնաս բուսած ժամանակ որչա՞փ սիրուն ձեւ կունենան ուղիղ գծով ակօսէն կը բարձրանան. եւ յաջող տարին մինչեւ մէկին քսան եւ քսան հինգ կուտան։ Այդ կողմի երկրագործներ սերմէն եւս վաստակ ունեն. զի մեր ցանած մի չափի տեղ նոքա կէս չափ կը ցանեն, եւ ցանուած սերմի հատիկներ ամբողջապէս կը բուսնին այն ինչ մեր կերպով ցանուածներ մի երրորդ մասն կը կորսուին,*

զոր պիտի պատմեմ իր տեղը։ Այս երկու գաւառներու մշակութեան արդիւնքը այնքան բեղմնաւոր կը լինին որ ցորենով կը լնու Վասպուրական երկիրը· ինչ տարի որ անյաջող լինին այս գաւառներու հունձքեր, այդ նշան է որ այն տարին հացի թանգութիւն կը սկսի։ Արճիշոյ եւ Արճկու գաւառներու մշակութեան մասին միայն այս չափը գրելով կը դառնամ շարունակել Թոռնիկ մեր մշակութեան կարգը։

Կաթնավարի հերկագործութիւն շատ չի տեւեր քանի շաբաթէն յետոյ վարելիք արտեր կսկսեն պնդանալ եւ այն ժամանակ տես դու որչա՞փ դժուարութեամբ գութանը կը ճեղքէ ակօսներ, եւ որչա՞փ մեծամեծ կռէթի կոշտերը պալ պալ կը շարունակեն ակօսներու վերայ։ Մեր գիւղացիք սակաւին չեն գիտեր սորա դիւրին միջոցը· բայց Խարբերդցին քաջ գիտէ, վասն զի պնդացած եւ կարծրացած արտերը նախ կը ջրէ եւ ապա կը վարէ, որ բնաւ այլ եւս կոշկոններ չի լիներ, որովհետեւ գութանի ժամանակ դեռ ջուրեր առատ կը լինին։

Որչա՞փ լաւ կը լինէր Թոռնիկ եթէ մեք եւս հետեւելով այս օրինակին կարգ դնելով հետզհետէ ջրէինք պնդացած արտերը եւ այնպէս վարէինք, եւ գիտե՞ս դու երկու կերպով շահաւոր կը լինի այս միջոցը։ Ո՛չ միայն արտ դիւրին կը վարի եւ կռէթ չի տար, հապա ջուրն եւս զօրութիւն կուտայ հողին եւ կ՚աւելցնէ նորա բուսական ոյժը։ Թող այս՝ արտ ցանուած ժամանակ երբ հերկ մեծ մեծ կոշկոններ ունի, ցանուած սերմին մի մասն այդ խոշոր կռէթներուն տակն իյնալով կը կորսուին, մի մասն եւս հերկ ջրուած ատեն ջրատար կը լինին, եթէ հաշուենք նաեւ թէ ջրկալին ոտք որչա՞փ հատիկներ դէպ ի վար կը տանի, հապա երբ սերման ընտրութիւն չի լիներ, վրտիտ եւ անշահ հատիկներ եւս անբոյս կը մնան։ Այս հաշուելով մի չափ սերմի ցորենէն՝ հազիւ կէսը կը բուսնին եւ կէսն ՚ի կորուստ կերթայ։

Պէտք է հաշուենք նաեւ ջրկալներուն օրավարձք որ շատ աւելի կը լինի այդպիսի արտերուն համար մանաւանդ երբ ցանուած հերկերը առանց կորի քաշելու կը ջրեն, ինչպէս Վանայ շրջապատ քաղաքացւոց եւ ուրիշ գեղերու արտեր։ Այս մասին ես շատ ուրախ եմ Թոռնիկ որ մեր Արճակու գիւղացիք կորի քաշելու շատ վարժ են, եւ մեր արտերն եւս դուրան լինելով չորս ջրկալի տեղ՝ մի ջրկալ բաւական կը լինի, եւ մինչեւ մի ջրաղացի ջուր թող կուտայ մի արտի մէջ եւ կարող կը լինի կառավարել։

Հերկելու կռէթներն մի ուրիշ սոսկալի դժուարութիւն էլ կուտան, երբ ցանուելէն յետոյ կը մանկեռէ մշակը· դու տեսեր ես մանկեռ, որ չորս կանգուն երկայնութեամբ մի հաստ թեզի կարծր եւ ծանր փայտ է, որոյ վերայ շարուած են տասն կամ աւելի փայտէ մատներ, որոյ վերայ կը կենայ մշակ չուանի մի ծայր կը բռնէ, որոյ միւս ծայր կապուած է լուծին։ Ահա ցանուած արտ մի կը մանկեռեն երթանք աչքովդ տես Թոռ—

նիկ. որ հաւատաս թէ մշակական աշխատութեան մէջ ամենէն սոսկալի դժուարութիւն մանկեան է, տես ինչպէս մեծ մեծ բալերուն սաստիկ զարնուելով եւ չփուելով մանկեա մերթ ընդ մերթ կ'ոստնու յառաջ կը նետուի, մերթ եւս հուժկու կռէթներ դիմահարելով մանկեան կը կեցունեն. բայց անխիղճ մշակին խարազան դարձեալ կը վարէ յառաջ. վերջապէս անխօսուն զոմշուկներ անհնարին չարչարանքով կ'աւարտեն մանկեան գործողութիւն:

Հարցուր Թոռնիկ, թէ այս անտանելի աշխատութեան մասն ինչ կերպով կը դիւրանայ: Վերը խօսեցայ որ մի միջոցն այն է, որ կաթնավարէն յետոյ մնացած արտերը ջրեն, եւ ապա վարեն. կան տակաւին ուրիշ հնարքներ, զոր ճարտար եւրոպացին հնարած է յատուկ արտերու կոշկոռներ փշրելու համար, բայց ի՞նչ օգուտ զի մեր գիւղացի աղքատ ժողովուրդ միջոց չունի այդ գործիքներ ձեռք բերելու: Լաւ է որ մեր բընական խելքով հնարներ մտածենք:

Ես կասեմ Թոռնիկ, ինչ հարկ կայ որ մեր գութան երկար ժամանակ տեւէ որով վերջին վարելիք արտեր պնդանան. քանի որ նոր գութանի գործածութիւն երկու զոյգ լծով կը լինի. շատ դիւրին է ուրեմն երկու գութան կը լծենք եւ քսան աւուր միջոց քառասուն աւուր գործ կը տեսնամք. եւ այսպէս կաթնավարի ժամանակ մեր գարնան հերկերու գործը կը լրացնեմք:

Բայց այն հերկեր զոր կը վարեմք այս տարի եթէ թողումք որ ձմեռ անցնի վերայ. դու կը տեսնաս ի գարնան որ ձիւն եւ սառնամանիք այդ կոշկոռներ փշրելով ալուր են դարձուցեր, եւ աշնան սկիզբը երբ միանգամ եւս հարօրավար անելով ցանուեն շատ աւելի արդիւնաբեր կը լինեն:

Ես լսեր եմ, պատմեմ քեզ Թոռնիկ. կասեն ՎԵՐԳԻԼԻՈՍ իւր մշակական բանաստեղծութեամբ խրատ կուտար հռովմայեցւոց, որոյ տողեր միտքս պահած եմ:

«Այլ ըզ կամըս մշակին
Ագահութեան հերկ այն լցցէ
Որ կրկին համբեր տօթոյ
Եւ կրկնակի սառնամանեաց»

Բացատրեմ քեզ. այն հերկուած արտը մշակի ցանկութիւն կը լեցնէ, որ կրկին ամարան ջերմութեան եւ ձմերան սառնամանեաց դէմ կը կենայ: Վասն զի երկու ամարան ջերմութիւն դհողըն աւելի կեփէ եւ կրկին ձմեռն եւս հողակոշտեր կը լուծէ եւ կը փխրէ:

Զասե՞ս Թոռնիկ, դպրոցէն ես կուգամ, Վերգիլիոսէն դու կը խօսես: Է՛ Թոռնիկ, մի քանի տարի դպրոց մնալով կը կարծես որ Պապկի չափ բան գիտես, ես յիսուն տարի է որ լսելով տեսնելով եւ փորձառութեամբ կը սորվիմ: Ես քեզ պէս դպրոց չեմ մտեր, բայց աշխարհի բաներ, աշխարհի մարդիկներ ինձ համար դպրոց են եւ ես դեռ կը սորվիմ այս ծերութեան ժամանակ, այն ինչ դու նոր դպրոցէն ելար կը կարծես թէ ամէն

բան գիտես. դեռ քեզ շատ հաց պէտք է որ ուտես եւ Պապկի չափ բան գիտենաս: Պապիկդ բաւական յիշողութիւն ունի, ով գիտէ քանի տարի յառաջ երբ Հայրիկ Վերգիլիոսի այդ տողերը կը բացատրէր աշակերտներուն ես մտիկ անելով միտքս պահած եմ:

Երանի՜ թէ հին Հռովմայեցւոց պէս կարենայինք մեր արտեր մշակել: Վերգիլիոսի խրատէն այս կուսանիմք, թէ պէտք է հողն աւելի դարձնել, գի որչափ հողը տակն ի վերայ շրջուի. այնչափ աւելի պտղաբեր կը լինի, վասն զի էն ժամանակ հողն հաւասարապէս կեփի արեւուն առաջ, տակի հողեր խում չեն մնար, մանաւանդ ցուրտ կլիմաներու տակ այս դրութիւն շատ կարեւոր է: Վանայ գիւղացիք այս մասին շատ անգէտ են եւ անփորձ, մինչդեռ Խարբերդու, Կարնոյ եւ Բասենու գիւղական ժողովուրդ աւելի բանգէտ եւ փորձառու է. երբէք աշխատութիւն չի խնայեր իւր միանգամ վարած արտը երկու անգամ երեք անգամ եւ մինչեւ չորս անգամ հարօրավար անելով հողը չուռ տալ: Կարծես թէ ինչպէս կերակուր կրակի վերայ խառնելով հաւասար կեփի, այսպէս խելացի գիւղացին փորձառութեամբ հասկցած է թէ քանի անգամ որ հողը արեւուն առաջ դառնայ եւ շրջի, այնչափ աւելի բուսական զօրութիւն կառաւելու եւ այդ աճողական զօրութիւն ցանուած սերմին կուտայ. որով կրկնապատիկ եռապատիկ արդիւնաբեր կը լինի արտն:

Բայց դու հարցուր, Թոռնիկ, թէ ինչո՞ւ համար Վանայ գիւղացիք միանգամ միայն կը վարեն արտ եւ չեն հետեւեր միւս գաւառացւոց փորձառու օրինակին: Դորա պատճառներ շատ յայտնի է Թոռնիկ եւ ես կուզեմ մանրամասն պատմել քեզ վասն զի այս դասը՝ իմ դասերուս ամենակարեւոր մասն է:

Կը տեսնաս Թոռնիկ. որ մեր Վասպուրական երկիր յոյժ ընդարձակ է, շատ արօտական դաշտեր, լեռներ, հովիտներ, ձորեր եւ մշակելի հողեր ունի. ջուրն էլ նմանապէս շատ առատ է. սորա համար մեր գիւղական ժողովուրդ շատ հարուստ է հողով՝ եւ իւրաքանչիւր տուն մեծ հողաբաժիններ ունի, որ հին գիւղական օրէնքով եւ արքունի գրոց համեմատութեամբ բաժին եղած է իւրաքանչիւր ընտանեաց վերայ:

Բայց դու՝ եկ տես Թոռնիկ, որ շինական ժողովուրդ այնչափ ագահ է հողի մասին, որ չեմ կրնար պատմել, ինչպէս աշխարհիս հարուստ գանձատէրեր եթէ լեռան չափ ոսկիներ դիզեն՝ դարձեալ բաւ չեն ասեր, այսպէս հողագործ ժողովուրդ որչափ ընդարձակ հողեր ունենայ իւր ձեռք, հերիք չասեր միշտ անկուշտ է եւ հետամուտ է հող ունենալ: Եթէ մի տուն քսան կամ երեսուն արտ ունենայ՝ դու տես գիւղացւոյն հաշիւը, կասէ ինքնին ամեն տարի տասն արտ կը ցանեմ, մնացեալներ կորդ կը թողում. որ աւելի արդիւնք տան: Ահա քեզ առաջին պատճառ իւր ագահութեան, եւ ցաւալի է, որ մեր գիւղացիք արտ զօրացնելու համար, միայն մի միջոց գիտեն, այն է կորդ թողուլ: Բութ է միտքը, նա չէ կարող մտածել թէ հող

պարարտացնելու համար կան շատ ուրիշ զանազան միջոցներ․ Թողունք արուեստին սովեցուցածը, նա իւր ղրան առաջ եւ գիւղին մէջ դէզ դէզ եղած աղբերուն պիտանութիւն էլ չի գիտեր։ Թող այս, մեր մշակ ժողովուրդ հողի ագահութեան հետ ունի նաեւ սաստիկ տենչ, այն է շատ վարեմ շատ ցանեմ եւ շատ արդիւնք ստանամ, խեղճ տնտեսագէտ չէ, թուաբան չէ որ գիտնայ հաշուել, թէ շատ վարուցանի հետեւանքն այն է, որ աշխատութիւն բազմապատկելէն յետոյ՝ բազում ծախքեր եւս կը յաւելու։ Թուեմ քեզ, Թոռնիկ, վարելու աշխատութիւն, ցանելու աշխատութիւն, մանկեռի դժնդակ աշխատութիւն, աշնան եւ ամրան ջրելու աշխատութիւն, հնձելու աշխատութիւն, արտէն ի կալատեղ կրելու աշխատութիւն․ բարդէ այս բոլոր աշխատութեանց վերայ մշակներուն օրավարձք։ Զարմանալին այն է որ հողագործ տանուտէր իւր տան ընտանեաց եւ զաւակաց աշխատութիւն երբէք հաշուի չի դներ։

Եթէ գիւղացին այսպէս կը մտածէ եւ կը գործէ զարմանք չէ, Թոռնիկ․ հապա մեր Հայոց վանքերու վանական եղբայրներ որ գրել կարդալ գիտեն եւ ընդարձակ հողեր ունեն մշակելու, ոչինչ առաւելութիւն ունեն գիւղացի ժողովուրդէն․ նոյն խելքով եւ նոյն կերպով է իրենց երկրագործութեան եղանակ։ Որոց պարտիքն էր գոնէ փոքր ի շատէ յառաջ տանէին մշակութեան գործեր, որով կարող կը լինէին թեմական գիւղերուն օրինակ տալ։ Թէպէտ խոստովանել պէտք է, մինչեւ ցարդ չեղաւ վանօրէից համար մի վանական հաստատուն խորհուրդ որ կարենար կարգ դնել եւ ուղղութիւն տալ։

Թողունք այս բաներ իւր տեղը․ լաւ հասկացա՞ր Թոռնիկ, մեր գիւղացւոց սկզբունք․ որ միշտ իւր վարուցան տարածել կուզէ, շատ վնասակար է, եւ չգիտէ եւ չուզեր ամփոփել,, որ հետեւապէս ձեռնհաս լինի իւր հողերը լաւ մշակելու․ փոխանակ տաժանելի աշխատութեամբ տասն արտ մշակելու՝ լաւագոյն եւ օգտակար չէ՞ հինգ արտ միայն մշակել եւ բարւոք մշակել, այնպէս որ հինգ արտի արդիւնք հաւասարի տասն արտին, որով թէ աշխատութիւն եւ թէ ծախս մեծապէս կը չափաւորի։

Զասես դու, Թոռնիկ, թէ Պապիկ՝ հակասութիւն կանէ, վասն զի երբ տասն արտի աշխատութիւն պիտի բարդուի հինգ արտին վերայ, թէ կրկնավար անելով արտեր, թէ աղբ տալով եւ ուրիշ այլ եւ այլ աշխատութեամբ․ ուրեմն նոյն կը լինի աշխատութիւն։ Ո՛չ․ այդպէս չէ, այլ մեծ կանազանութիւն կայ, մշակութեան տարածման եւ ամփոփման աշխատութեան կերպերուն ժամանակի տեւողութեան մէջ եւ մանաւանդ դիւրութեան եղանակին մէջ, հարկ չէ որ մանրամասն բացատրեմ քեզ, գործնական փորձերու մէջ պիտի տեսնաս ու սորվիս։

Հարցո՛ւր, Թոռնիկ, երբ հինգ արտ միայն բարւոք մշա-

կելով բաւական համարինք, մնացեալ հինգ արտն անմշակ եւ ապարդի՛ւն մնայ։ Այդ մասին պիտի գրեմ իւր կարգին, այլ այժմ միայն այսչափ յիշեմ, մինչ գիւղացւոյն համար ցանելու բան կը պակսի՞, թող խոտ մշակէ, առւոյտ ցանէ, կոընկան ցանէ, վարսակ (իւլաֆ) ցանէ, փաթաթէս ցանէ, չողգամ ցանէ, ճակնդեղ ցանէ, բակլայ ցանէ, ոսպ ցանէ, սոխ ցանէ, սեխ, վարունգ, ձմերուկ եւ այլ շատ բաներ որ բոլորն եւս մեր կեանքին պիտոյքներ են։ Ափսո՛ս, որ Վանայ գիւղացիք միայն ցորեն, գարի. տարեկան (կորեկ) սովորած են ցանել, եւ ուրիշ խիստ պիտանի բաներուն կարեւորութիւն չեն տար։

Աւարտելով հերկագործութեան դասը, այժմ պիտի խօսիմ սերմերու ընտրութեան մասին, որ շատ կարեւոր է լաւ երկրագործին համար։

———o———

Է.

# ՍԵՐՄԻ ԸՆՏՐՈՒԹԻՒՆ

## ԵՒ ՍԵՐՄԱՆԱՑԱՆ

Լաւ ուշադրութիւն արա, Թոռնիկ, ես համառօտ կերպով նախ նկարագրեմ քեզ, թէ ի՛նչ են այդ փոքրահատիկ սերմեր, որոց մէջ թագուն մեծ զօրութիւններ կը պարունակուին. զոր Տէր Աստուած աշխարհիս ստեղծագործութեան ժամանակ հրաշապէս միանգամ պատրաստեր եւ դրեր է մայր երկրին արգանդին ծոցն, մարդ կը զարմանայ թէ ի՛նչպէս կը յղանան հատիկներ, կը ծլին հողէն դուրս կ'ելլեն. կաճին օրըստօրէ եւ կը մեծնան ծառի չափ. ինչպէս Յիսուս իւր առակով կը խօսի մանանեխի հատիկի համար որ այնչափ կը մեծնայ, մինչեւ թռչուններ կը հանգչին նորա ոստերուն վերայ։

Կը տեսնա՞ս մեր բնակած բովանդակ երկրագունդ, Աստուծոյ արարչագործ ձեռքով ցանուած սերմերով լի է։ Բոլոր անտառներ, բոլոր պտղատու ծառեր, ծաղիկներ խոտ եւ այլ զանազան բանջարեղէն բոյսեր, եւ ամէն բուսական բաներ, սերմի հատիկներէն յառաջացած են։ Այս տեղ դու փառք տուր Աստուծոյ, համբուրէ հոգւով Նորա նախախնամ ձեռք. որ այս երկիրն իբրեւ ժառանգութիւն եւ իբրեւ անսպառ պլամարլուխ տալով մարդոյն, ամենացեղ պտղի պտղի սերմերն եւս երկրին հետ պարգեւեց։ Եթէ առանց սերմի չոր եւ անբոյս երկիր տար միայն, ի՞նչ կը լինէր մարդոյն վիճակը, նա այլ եւս չէր կարող ապրել, վասն զի մեր սնունդ եւ մեր կեանքն երկրի սերմնաբոյսերն են։

Զգիտենք, Թոռնիկ, թէ հանճարեղ մարդ, ո՞ր ժամանակէն սկսեալ իւր սնունդին համար առաւել քան զամէն ցորենի սերմն

ընտրեց. զայն ցանեց քաղեց, բայց յետոյ իր ջուրի մէջ խաշելով իբրեւ հատիկ կերաւ, բայց յետոյ իր հնարամտութեամբ երկանով աղաց, ալիւր եղաւ, ալիւրէն խմոր շաղեց գնտիկ գնտիկ շինելով կրակին վերայ եփեց պատուական հաց եղաւ, եւ այսօր բովանդակ աշխարհի մեծ մասն հացով կապրի. եթէ պակասի հաց մարդ սովամահ կը լինի, թէպէտ կան այնպիսի երկիրներ եւ ժողովուրդ, որք հացով չեն ապրիր եւ զարմանալի է, եթէ հաց ուտեն կը վնասին. այլ հացին տեղ բրինձ կուտեն եւ այլ ուրիշ բաներով կապրին: Կը թուի թէ մարդ իր սովորած բաներով կրնայ ապրել, ինչպէս անտառաբնակ վայրենիներ պտուղներով եւ որսի միսերով կապրին: Այսչափ միայն ընդհանրապէս խօսելով նախապատրաստեալ սերմերու մասին. բաւ է. եւ դու տեսա՞ր, Թոռնիկ, որ մեր առօրեայ կեանք սերմերէն կախում ունի, մանաւանդ ցորենաբոյս (հացահատիկ) սերմէն: Այժմ պէտք է խօսիմ այդ պատուական սերմի ընտրութեան համար. վասն զի յայտնի է որ ցորենի սերման հետ ուրիշ օտարոտի սերմեր կը խառնուին, որք խորթ եւ ինքնաբոյս զաւակներ են մայր հողին եւ կը բուսնին առանց ցանելու եւ մշակելու. զորօրինակ որոմն ճլլեկ եւ այլն: Սերմանացան մշակ, ոչ միայն պէտք է. այդ օտար սերմերը ցորենահատէն զատէ, այլ եւ նոյն իսկ վտիտ եւ ցամքած հատիկներ եւս որոշէ կրկին եւ կրկին մաղելով յատակելով այնպէս որ մաքուր հատիկներ մնան, գէր եւ լեցուն:

Ցանելու համար թէպէտ արդի Եւրոպիոյ երկրագործներ այլ եւ այլ արուեստական մեքենաներ հնարած են որ շատ հաւասար կը ցանեն եւ արտին մէջ ինկած հատիկներ հաւասար չափով իրարմէ հեռու կը լինեն, որով հաւասար կերպով կը բուսնին հաւասար չափով մայրենի հողէն իրենց սնունդ կառնուն:

Զե՞ս զարմանար, Թոռնիկ, որ արուեստին փորձը ցոյց տուած է. թէ մի հատիկին աճման համար, որչա՞փ հող պէտք կը լինի, որ սնուցանէ եւ պահէ սերմի հատիկն մինչեւ հնձելու ժամանակ:

Բայց յայտնի է այն արտեր որ կորդ մնալով ուժովցած են. կամ աղբով պարարտացած են, շատ աւելի սերմ կարող են ընդունել եւ պահպանել, ինչպէս մի հարուստ մարդ կարող է շատ զաւակներ ճոխութեամբ պահել: Ուստի փորձառու երկրագործը քաջ գիտնալով իր արտին ոյժը եւ տկարութիւն ըստ այնմ կը ցանէ իր սերմ թանձր կամ նօսր, եւ իրաւունք ունի. միթէ կաթ չունեցող մայր կարո՞ղ է մէկին տեղ երկու զաւակ սնուցանել: Թողունք ցանելու մեքենան, Թոռնիկ, զի մեզ համար գոնէ այժմ շատ դժուարին է զայն գործածել. մեր սերմանահան մշակներու ձեռք բաւական քաջավարժ է սերմ ցանելու համար ձեռքի բուռը իր համեմատական չափն է. երբ ուզէ թանձր ցանել բուռը լի կանէ, եւ երբ նօսր՝ բուռը կծկելով կ'ամփոփէ:

Է՛. Թոռնիկ, այստեղ միտքս եկաւ յիշեցի եւ պատմեմ քեզ: Էր մի ժամանակ, որ գիւղական ժողովուրդ շատ երկիւղած էր, սերմանացանի ժամանակ, նախ կը տանէր սերմն գիւղի քահանային օրհնել կուտար եւ ապա կսկսէր ցանել: Օրհնեալ լինին մեր նախնի եկեղեցւոյ Հայրեր, չեն մոռացած, սերմն օրհնելու համար եւս աղօթք շարադրած են Մաշտոցի կարգին մէջ: Ես էլ շատ անգամ օրհնել տուած եմ մեր քահանային, որ աղօթք կարդալով կասէր: «Օրհնեա՛ Տէր Աստուած ըզսերմն եւ զսերմանողն. որ առատատուր ես ի պարգեւս եւ դու տաս սերմն սերմանողաց. թէպէտ առանց սերման կարող ես յերկրէ հաց հանել. եւ առանց կերակրոյ զքաղցեալս լցուցանել եւայլն: Այսպէս մեր նախնիք պարզամիտ էին ու հաւատով, սերմն, արտ, շտեմարան, այգին, հնձան եւ այլ ամէն արմտիք եւ պտղաբերութիւն օրհնել կուտային եւ տասնորդական բաժին կը հանէին քահանային նոյնպէս եւ վանքերուն:

Թող այս սերմի օրհնութիւն. թէ պատմեմ քեզ, Թոռնիկ, պիտի զարմանաս, սերմանացան տանուտիրոջ երկիւղած ջերմեռանդութեան վերայ: Այն օրէն երբ ցանք կսկսէր, նա այլ եւս տուն չէր դառնար դաշտէն. այլ բացօթեայ կ'մնար, իւր գիշերահանգիստ արտին ակօսն էր, մինչեւ լրանար սերմնացանի ժամանակ. դու տեսնայիր թէ ինչպէս կսկսէր ցանք. Նախ եւ առաջ գօտին պինդ կը կապէր բուռն մի սերմէն առնելով շապկի սրտաբացէն կը ցանէր ծոցին երկու կողմը մինչեւ անթատակեր. յետոյ երես խաչակնքելով կսկսէր ցանել արտը: Քսան եւ երեսուն օր կը տեւէր ցանքին աշխատութիւն մինչեւ կը ծըլէին ցանուորի ծոցի հատիկներ, զի արեւ նորա բաց կուրծքին վերայ զարնելով ջերմութիւն կուտար եւ ի ներքուստ մշակին քրտինք իբրեւ ցօղ հատիկներ թրջելով ծիլեր կը հանէր: Եւ այդ բան մի բարեգուշակ նշան կը համարուէր ցանուած արտերուն պտղաբերութեան. գիտե՛ս Թոռնիկ, ինչպէս արտավարութեան ժամանակն լծատար անասունները այսպէս եւս սերմանացան իւր խորհրդաւոր աղօթքի մրմունջներ ունի:

Ես կը ցանեմ ո՛վ իմ Աստուած
Դու անձրեւ տուր առատ առատ
Զոր հատիկներ ծըլին հողէն
Պճնին արտերս կանաչ կանաչ.
Եւ ուռճանան հասկեր կապեն
Աստք ցորեն կարմրահատ
Խընդրեմ, ով Տէր. տուր մէկին տեղ
Երսուն վաթսուն եւ հարիւր
Որ տամ նախ ես իմ տէրութեան
Տասանորդի տուրքն արդար
Եւ ապա տամ պարտատիրոջ
Տոկոսիքներ ծանր ու ծանր,
Ապա գիւղի Եկեղեցուն

Աղքատներուն էլ բաժին տանք
Եւ ինչ մընայ այն է միայն
Իմ ընտանեաց հաց եւ ճարակ
Եւ հիւրերուն որ գան ու գնան
Ուտեն տանեն ձրի հաց․
Այս է օրէնք մեր աշխարհին
Մեր նահապետ պապերէն,
Շինականին դուռն է բաց
Հացն ու սեղան միշտ պատրաստ»։

Կը տեսնա՞ս Թոռնիկ, թէ մեր աշխատութեան արդիւնքէն ո՞րչափ բաժիններ կը լինին․ բայց դու երբէք մի վհատիր որքան բաժիններ շատ լինին, այնքան առատ կուտայ Աստուած․ զի երկրագործին վաստակ լիութեամբ օրհնուած է, չի սպառեր, միայն թէ երկրագործ ժողովուրդ տէրութեան պաշտպանութիւն եւ խնամք վայելելով՝ կարենայ հանգիստ եւ ապահով կերպով երկիր մշակել եւ արդիւնաւորել իւր անխոնջ աշխատութեամբ։ Եւ քաջ գիտէ Տէրութիւն թէ իւր գանձարանին մեծ աղբիւրը մշակ ժողովուրդի դաշտէն կը բղխի․ որչափ Տէրութեան տարածեալ թեւոց տակ, բարւոք պաշտպանի այնչափ աւելի եւս կառատանայ գանձարանին աղբիւրը։

Զմոռնամ Թոռնիկ, քիչ մը եւս խօսիմ ցանելու ժամանակին եւ եղանակին վերայ։ Ցանքեր սովորաբար երկու եղանակին մէջ կը լինի, գարնան եւ աշնան այն է Ապրիլ եւ Սեպտեմբեր ամիսներ։ Մեր Վասպուրականի գաւառ, ինչպէս նաեւ Բարձր Հայք, Ալաշկերտ և Մշոյ քանի մը բարձրադիր գաւառներ ընդհանրապէս գարուն անագան կուգայ, եւ երբեմն մինչեւ Մայիս կը ձգի, որով գարնանացան չի յաջողիր վասն զի անձրեւային եղանակներ կանցնին․ երկրագործին համար մեծ բախտ է եթէ գարուն շուտ գայ, եւ ինքն կարենայ Մարտ ամսուն մէջ կամ Ապրիլի սկիզբը գարնանացանի գործը աւարտել, որպէս զի անձրեւներուն կարգ չանցած՝ սերմ հողին մէջ գտնուելով շուտով բուսնի եւ զօրանայ։

Մեր երկրագործներ շատ մեծ յոյս չունին գարնանացանի յաջողութեան մասին, սորա համար սակաւ կը ցանեն, միշտ ցանքին մեծագոյն մասն աշնանացանքն է, որ սովորաբար կսկսի Օգոստոս ամսոյ կիսէն, եւ այս ցանք կը տեւէ մինչեւ Հոկտեմբեր եւ մերթ եւս կանցնի։ Լաւագոյն է Սեպտեմբերէն սկսելով հերկուած արտեր ցանուին, փորձուած է որ առաջին ցանուած արտերն աւելի կը յաջողին, վասն զի շուտով կը ծլեն եւ կը բուսնին եւ արմատ ձգելով կը զօրանան, քանի որ արեւուն զօրութիւն ևս նուազած չէ բաւական կը կանաչին մինչեւ աշնան վերջ ձիւն կուգայ կը ծածկէ, եւ գարուն գալու պէս կաճին կը բարձրանան ցորենի ցօղուններ, հասկեր կը կապեն եւ գրեթէ երեք ամսէն յետոյ Յուլիսի սկիզբներ մանգաղ ի հունձ կը

մտնայ. վասն զի աշնանացան սերմ ամենէն շուտ կը հասնի, եւ գարնանացան ամենէն վերջի հունձքն է:

Գարնանացանէն եւ աշնանացանէն զատ մի ուրիշ ցանք եւս կայ, զոր աշնան վերջեր կը թողուն, էն ժամանակ կը ցանեն, որ ձմեռնամուտ կը մօտենայ գետին կը սառի եւ այլ եւս սերմին հատիկներ ոչ կը ծլին ե ոչ ւկը բուսնին, այլ այնպէս կը մնան հողին մէջ առանց աճման եւ գարուն գալուն պէս իսկոյն կը բուսնին գարնանացանէն առաջ, որովհետեւ արդէն ցանուած ու պատրաստ են եւ սերմեր կակղացած ու ծլած. մինչդեռ գարնանացան անձրեւներու եւ օդերու պատճառաւ ամէն տարի չի յաջողիր, որ շուտ բուսնի:

Կարծեմ բաւական է, այսչափ միայն գրելով սերմի ընտրութեան եւ սերմանացանի մասին, այժմ պիտի խօսիմ, ջրոյ եւ արտօրէից ոռոգման վերայ որ արմտեաց առատութեան մի կարեւոր միջոցն է:

———o———

Ը.

# ՋՈՒՐ

## ԵՒ ՈՌՈԳՈՒՄՆ ԱՐՏՕՐԷԻՑ ԵՒ ԴԱՇՏԱՑ

Լաւ խելամուտ եղիր, Թոռնիկ, թէ միայն հողը ոչինչ կարէ բուսցնել կամ աճումն տալ եթէ ջուր եւ անձրեւ չ'ոռոգեն զայն. ինքնին ամուլ եւ անբեր կը լինի հողն եթէ ջրոյ եւ անձրեւի զուարթարար զօրութիւն չը միանայ իւր հետ: Բովանդակ համատարած աշխարհ անձրեւով կ'ոռոգին, բայց կան շատ տեղեր. որ անձրեւով եւ ջրով միանգամայն կ'ոռոգին: Սակայն պէտք է գիտնաս, որ անձրեւ եւ ձիւն շատ առաւելութիւն ունին, նախ որ երկնից ամպերէն իջնալով ամենաբարձր լեռներ, եւ դաշտեր կարող են ի միասին հաւասարապէս ոռոգել, բայց գետնէն բղխած աղբիւրներ վազող վտակներ եւ գետեր՝ միայն հարթ եւ ցած դաշտավայրերը կ'ոռոգեն: Եւ պէտք է գիտնաս Թոռնիկ, որ գետնի երեսը վազած բովանդակ ջրերու ամենամեծ աւազանը անձրեւէն եւ ձիւնէն կը գոյանայ. իբրեւ շտեմարան կը ժողովի երկրին ծոցը եւ ապա երկրի ծոցէն դուրս կը բղխին աղբիւրներ, վտակներ եւ մեծ գետեր կը կազմեն: Մերթ եւս առանց երկրին ծոցն իջնալու, գետնի երեսէն սարերէն կը վազեն, ահագին ջրհեղեղ կը յարուցանեն տեղատարափ անձրեւներէն յորդելով:

Այսչափ միայն տեղեկութիւն տալով քեզ. մտացի Թոռնիկ, դու ինքնին մտածելով սովրիր, որ այս երկու տարերքն հողն ու ջուր միանալով բովանդակ բուսական բիւր տեսակ աննման զաւակներ կը ծնին ու կը սնուցանեն:

Եթէ համարինք, որ հողն իբրեւ մայրենի արգանդ սերմեր կընդունի, յարմար է եթէ ջուրն եւս համարինք իբրեւ հայր, որ կարբուցանէ եւ կը բեղմնաւորէ հողին արգանդ, որով կը ծնին այնչափ անհուն անհամար բուսականք։ Սկսիմ արդ ցանուած ջրարբի արտերուն վերայ խօսել, թէ որչա՞փ խնամով պէտք է պատրաստել արտը, որ դիւրին ջրուի եւ լիապէս ջուր խմէ։ Գարնան անձրեւակարգն անձնելէն յետոյ, բնական է կսկսին ջրարբի արտեր ծարաւել եւ սորա նշանն է, երբ մութ կանաչ գոյն կստանան. էն ժամանակ պէտք է գիտնաս որ սաստիկ ծարաւած են ջուր կուզեն։ Եթէ ջուրդ առատ է, պէտք է երկու աւելի ջրկալ բռնես եւ ջուրը բաշխես ուրիշ ծարաւած արտերուն վերայ, պէտք է լաւ հսկես ջրկալ բանւորներու վերայ, որ խնամով ջրեն արտ, հաւասարապէս ջուրն արտին ամէն մասերը պէտք է չօշափէ, չը թողուն որ տեղ մի չոր ու ցամաք մնայ, կամ տեղ մի աւելի ժողովելով ջուրը լճանայ, զի այդ եւս վնաս է բոյսերուն։ Վնաս է նաեւ որ թողվի ջուրեր արտի վարի կողմերէն ողողելով դուրս վազեն, այնպէս որ արտին երեսի հողերը դուրս քշեն եւ բոյսերու արմատներ բանան, ո՛հ, բոյսերն էն ժամանակ արմատահան լինելով կը խլուին մայրենի ծոցէն եւ հետեւապէս կը թօշնին եւ կը չորնան։

Մեր Արճակ գիւղի արտեր բնականապէս պատրաստուած են առանց աշխատութեան, այնչափ հաւասար եւ դուրան են որ մի ջրկալ մի ջաղացի ջուր կապելով արտին վերայ, կարող է կառավարել եւ մի աւուր մէջ մի քիլա տեղ կը ջրէ, եւ այնչափ դիւրութիւն ունի որ գիշերն եւս կարող է աշխատիլ։ Միայն արտին հաւասարութիւն բաւական չէ, կարեւոր է նաեւ արտին դիրքին, յարմար կորիներ քաշել ջրադարձի թումբեր կապել, որով ջրկալին աշխատութիւնն՝ առաւել եւս կը դիւրանայ։

Զգիտեմ, Թոռնիկ, տեսար եւ դիտեցի՞ր Վարագայ վանից արտեր թէ ջրելու ժամանակ ո՞րչափ դժուարութիւն ունին, եւ որչա՞փ օրավարձք կառնեն ջրկալներ, դորա պատճառ գիտե՞ս, նախ որ մեծ մասամբ արտերը անհաւասար եւ դարուվար են, երկրորդ առանց կորի քաշելու կը ջրեն, երրորդ կասեն հող տրորան է ջուր չի բռնիլ եւայլն։ Այս ամէն թէ պատճառանք են եւ թէ նախապաշարմունք, աւելի մեծ պատճառը չ'մտածել եւ աշխատութիւն չը սիրելն է, վասն զի դառիվար եւ ջրատար արտեր, տակաւ տակաւ պարզ աշխատութեամբ կարելի է այնպէս կարգադրել, որ երբէք այդ դժուարութիւններ չունենայ. որոց վերայ առանձին պիտի խօսիմ։

Երկրագործ երբ աւելի առատ ջուր ունի, նա պէտք է ոչ միայն ցանուած արտերուն ջուրը հոգայ, այլ շատ օգտակար է նաեւ եթէ խոտավայրեր եւ խոզան արտերն եւս ջրէ, որ կրկնակի օգուտ ունի. թէ առատ՝ ինքնաբոյս խոտերով անասնոց

*արօտ կը մատակարարէ, եւ թէ արտին զի իւր խոտաբոյսերով ինքն սնունդ կառնու, թէ խոտի թափուած տերեւներէն որ կը փտտի աղբ կը լինի, եւ թէ նոյն իսկ խոտի արմատներէն ույժ կըստանայ, սորա համար է, որ գիւղացիք արտը երկու տարի երեք տարի կորդ կը թողուն որ հողն ուժովնայ, այլ չգիտեն թէ ինչո՞վ է որ կուժովնայ: Այո՛ խոտաբոյսերն են, որ ույժ կուտան արտին: Դու չես զարմանար, Թոռնիկ, մեր ցանած հատաբոյսեր, յայտնի է որ հողին ույժը կառնուն իսկ հողին ինքնաբոյսերն փոխանակ առնելու՝ ուժ կուտան:*

*Այսպէս նաեւ այս ինքնաբոյս խոտերուն հետ՝ ջուրն եւս իւր առանձին յատկութիւններ ունի ույժ տալու, վասն զի իւր մէջ ով գիտէ ինչ պարարտացուցիչ, հիւթեր կը պարունակէ: Գիտե՛մ Թոռնիկ, դու հետաքրքիր կը լինիս հողին եւ ջրին բնական յատկութիւններ իմանալ, բայց մտածէ որ Պապիկդ չինական է, համալսարանէն չի գար, որ իբրեւ բնագէտ ամէն բան բացատրէ քեզ: Պէտք է, բաւական համարես պարզ դասերս:*

*Երկրագործութեան համար ջուրին պէտք շատ մեծ է եւ շատ բախտաւոր է այն գիւղ, որ առատաբուղխ աղբիւրներ եւ գետակներ ունի, յայտնի է որ այն գիւղի արդիւնագործութիւն կրկնապատիկ կը լինի: Բայց այն գիւղեր, որոց բնական աղբիւրներ նուազ են, կամ թէ ունեն գետեր եւ գետակներ, որք բարձրէն կուգան դաշտերու մէջէն անցնելով կերթան կը թափին ծովակներու մէջ, եւ կամ մեծ գետերուն կը խառնուին· ոչինչ օգուտ չեն ընծայեր խոտաբոյս դաշտերուն եւ մշակեալ արտերուն:*

*Ահա քեզ օրինակ մի տամ Թոռնիկ, որ աչքիդ առաջն է, մեր Արճակ եւ Խարակոնիս գիւղի միջավայրէն մի գետ կանցնի, գրեթէ գարնան սկիզբէն մինչեւ երկու ամիսէն աւելի այդ գետին ջուր ընդունայն կերթայ, կը թափի մօտ եղած ծովակ, ոչ մեք եւ ոչ յիշեալ գիւղի մարդիկ չենք մտածեր այդ գետի ջրէն օգուտ քաղել, վերի կողմերում արուեստական փոքր փոքր լճակներ կազմել, եւ դորա համար որչա՞փ բնական յարմարագոյն տեղեր ունիմք, որոց դիրք փոս եւ ծոցաւոր է, բաւական է որ շրջապատ հողէ թումբեր քաշուին, եւ միայն ջրանցի բերան քարուկիրէ մի ակն շինել եւ գարնան միջոցին գետի ջուրը մէջ թող տալով պահել մինչեւ արտօրէից ջրելու ժամանակ: Մեր նախնիք մեզմէ աւելի խելացի, աշխատասէր եւ հոգացող միտք ունեցեր են, ժամանակին այդպիսի լճակներ շինած են, որոց աւերակներու տեղեր այժմ կերեւին եւ մեք երբէք հոգատարութիւն չունիմք, գոնէ նորոգել աւերակ լճակներ: Վանայ արեւելեան լեռներու շրջափակին մէջ մի ընդարձակ հովիտ կայ, որոյ շուրջ բիւրաւոր աղբիւրներ կան որ կը վազեն հովտին ծոցը եւ կը լճանան: Էն ժամանակ Վանայ կողմեր մի բարի եւ ճարտար Քահանայ կը լինի որ իւր պաշտօնէն դուրս ժողովրդի արտերու ջուրն էլ կը մտածէ· ուստի*

հովտին վարի նեղ բերան մի քարուկիր թումբ շինելով, այդ լիճ պատրաստած է. սորա համար տեղացիք Քէշիշ Կէօլ կանուանեն: Այս լճին ջուր այնքան առատ է որ Վանայ շրջապատի արտօրայքը կ՚ոռոգէ որ շատ ընդարձակ են, նմանապէս Նորատունկ այգեստաններ, որոց արդիւնաշատ պտղաբերութիւն կը պարտին այդ քահանայի մեծագործութեան, որ իւր հոգեւորական տնտեսութեան հետ՝ հացի տնտեսութիւն եւս հոգացեր է, իւր անուն մեզ անյայտ է, բայց իւր արդիւնական յիշատակով կ՚օրհնուի այսօր ժողովուրդէն: Կան շատ ուրիշ գաւառներ որոց դաշտամէջէն կանցնին մեծ եւ փոքր գետեր առանց ափ մի ջուր տալու ինչպէս Մշոյ դաշտի Եփրատ եւ Մեղրագետ: Այժմ կը տեսնուի Եփրատ գետի վերակողմ մի մեծ ջրանցքի հետք, զոր ժամանակաւ բացած է կասեն մի հոգայող տիրապետ, որ Մշոյ դաշտի բաւական մի մեծ մասն ոռոգած է: Ափսոս որ ժողովուրդ չունի հոգածութիւն պեղել ու բանալ այդ մեծ առուն եւ ջրել այնչափ անջրդի մնացեալ արտեր: Դրախտի գետ կանցնի կերթայ միթէ ջուր կը խնայէ՞ իւր շուրջ բընակած բնիկ ժողովուրդին, ո՛չ, ժողովուրդ ծոյլ ու յոյլ է. ամէն բան ինքնապատրաստ կուզէ, ինչպէս երկնքէն անձրեւ կը տեղայ նոյնպէս պէտք է եւս գետերուն ջուր ինքնին վազէ եւ ջրէ իւր արտերը: Հոգացող Աստուած շատ բան նախապատրաստած է մարդոյն համար, բայց փոքրիկ աշխատութեան բաժին մի եւս մեզ համար թողած է, որպէս զի կատարուի իւր տիրական անյեղլի վճիռն եւ մարդ իւր ճակատի քրտանց վաստակով իւր հաց ճարէ:

Դու գիտես, Թոռնիկ, ջուր մեծ կարեւորութիւն ունի գիւղական ժողովուրդին համար, եւ կը տեսնաս արտերը ջրելու ժամանակ որքա՞ն կագ եւ կռիւ կը հանեն, եւ մինչեւ անգամ արիւն ջուրին հետ կը խառնուի, սորա համար ես ուզեցի որ ազատ լինիմ այդ սոսկալի կռիւներէն; ես առանձին ինքնաշխատ, իմ ձեռքովս երկու փոքրիկ լճեր պատրաստեցի մեր արտերուն համար որ բաւական կը լինի: Այժմէն պատուէր կուտամ քեզ Թոռնիկ, միշտ աշխատես այդ լճակներու թումբեր հաստատ պահել, եւ ջրատար տեղեր ամէն աշնան վերջերը նորոգել. որով թէ արտերուդ առատ ջուր կուտաս, առատ արդիւնք կը քաղես, եւ թէ գիւղացւոց կոպիտ կռիւներէն ազատ կը մնաս, եւ միանգամայն գեղացի դրացիներուն մի օգտակար օրինակ ցոյց կուտաս, որ նոքա եւս հետեւելով ձեր օրինակին իւրաքանչիւր տանուտէր իւր արտերու համար աշխատի նոյնպիսի լճակներ պատրաստել, որոյ շահեկան արդիւնք բազմապատիկ է, վասն զի արուեստական լճակներ ոչ միայն ջուր կը մատակարարեն արտօրէից, այլ եւ մարգագետին դառնալով լճատեղիները առատ խոտ կը բուսնին, եւ միանգամայն կանաչաբոյս արօտատեղի կը լինին անասնոց: Տակաւին շատ զա–

նաղան կերպեր կամ ջրամբարներ պատրաստելու համար, այսքանս միայն բաւ է, կ՚անցնիմ այժմ արտօրէից բաժանման եւ կարգադրութեան վերայ խօսել, որ խիստ կարեւոր է եւ կապակցութիւն ունի այս դասիս հետը:

———o———

Թ.

## ԱՐՏՕՐԷԻՑ ԲԱԺԱՆՈՒՄՆ

### ԵՒ ՀԱՒԱՍԱՐ ՏԱՐԱԾՈՒԹԻՒՆ

*Լաւ ուշադիր եղիր, Թոռնիկ, զի այս դասը երկրագործին համար շատ կարեւոր մի դաս է, որ նա գիտնայ իւր արտեր բարւոք կարգադրել եւ բաժնել: Նախ եւ առաջ պէտք է իւրաքանչիւր արտերու սահմանը իրարմէ որոշել, եւ արտամէջ տեղեր թողնել որ գոնէ երեք կանգունի չափ լայնութիւն ունենայ: Այս արտամէջ տեղեր որ առանց հերկելու միշտ պէտք է կորդ մնան, չէ թէ միայն ճանապարհի համար է որ սայլեր դիւրութեամբ քալեն պինդ գետնի վերայ, այլ առաւել խոտաբոյսերու համար շատ կարեւոր է. եթէ մեզ համար ցորենաբոյս մեծ պիտանութիւն ունի, հապա աշխատող անասնոց համար որչա՞փ պէտք են խոտաբոյսեր, երբ արտերուն եզերք գտնուելով իբրեւ պատրաստի արօտատեղ կը լինին տաւարներուն որ գութանէն արձակուելով՝ անմիջապէս արածելու տեղ կը գտնեն հարկ չի մնար հեռաւոր տեղեր տանելու: Հին ժամանակ որ ես տեսած եմ ընդարձակ արտամէջեր կային, զի մեր նախնիք շատ հոգացող եւ խղճմտանքով մարդիկ էին, անասնոց վերայ կարեկցութեամբ, գութ եւ խնամք ունէին: Բայց արդի ժամանակ այդ առաքինութիւն բարձուած է գիւղական ժողովուրդի սրէն, որ միայն իւր հաց մտածել գիտէ, իսկ խեղճ անասնոց համար ոչինչ փոյթ չունի:*

*Այժմ կը տեսնա՞ս, Թոռնիկ, թէ ինչպէս արտ արտի կցուած եւ ոչ քայլ մի անգամ միջոց մնացած է: Եթէ յաջողի մի արտի տէր իւր դրացւէն յառաջ լծել գութան, նա կը ջանայ արեւուն առաջ յայտնի կերպով քանի մի ակօս գողնալ դրացւի արտէն, եւ խառնել իւր արտին եւ այսպէս առանց խղճի գողնալով ընկերոջ բաժնի հողէն մեծ անիրաւութիւն կը գործէ, որուն հետեւանք կը լինի անվերջանալի կագ ու կռիւ երկու դրացիներու մէջ:*

*Սորա համար շատ եւ շատ կարեւոր է. որ ամէն արտատէր իւր արտին շրջապատ թումբ քաշելով որոշէ ճշտութեամբ իւր արտին սահմանն. որով ոչ միայն իւր սեպհականութիւն կապահովէ, այլ աւելի ուրիշ օգուտ եւս ունի արտին շրջափակ*

*թումբ, որ արտը ջրուած ժամանակ ջուրն արտէն դուրս չի վազեր ողողելով եւ հեղեղատներ բանալով յորդ անձրեւներու ժամանակ, մանաւանդ երբ արտը հաւասարութիւն չունի դար ու փոս է։*

*Արտերու բարեկարգութեան մասին մի պայման էլ այն է արտին փոս տեղեր հաւասարել, այնպէս որ արտին տարածութեան մակերեւոյթ մէկ ծայրէն միւս ծայր հաւասար եւ չիտակ լինի․ եւ այդ շատ դիւրութեամբ կը լինի, ոչ միայն ձեռքի աշխատութեամբ, այլ նա եւ թէ անձրեւ եւ թէ ջուրը բնականապէս դարերուն հողերը ողողելով փոս տեղեր կը լեցնեն եւ ինքնին կը հաւասարին։ Միայն թէ բաւական չէ արտին չորջափակ թումբ, պէտք է արտին մեծութեան եւ դիրքին համեմատ թումբեր քաշուին, պարզ օրինակով բացատրեմ քեզ, Թոռնիկ, որ լաւ ըմբռնես։*

*Եթէ մի արտ ունինք, որ երկու հարիւր կանգուն երկարութիւն ունենայ եւ հարիւր կանգուն լայնութիւն, եւ այդ արտ երկարութեան վերի ծայրէն սկսեալ մինչեւ վարի ծայր աստիճանաբար դարուվար լինի, ինչպէ՞ս պէտք է հաւասարել։ Շատ դիւրութեամբ կը հաւասարի եթէ արտին լայնութեան կողմէն մինչեւ միւս լայնութեան եզր թումբեր քաշուին երկու կամ երեք տեղ ի նկատի առնելով առապարին բարձրութեան եւ ցածութեան դիրք․ եթէ խիստ առապար է, պէտք է յիսունական կանգուն չափել եւ թումբ քաշել․ իսկ եթէ առապար այնքան զառիվար չէ, բաւական է եօթանասուն եւ հինգ կանգունին մի թումբ քաշել, որով արտը չորս կամ երեք մասի կը բաժնուի։ Թումբեր պէտք է քիչ քիչ քաշուին, ամէն տարի գարնան եւ աշնան աշխատելով, պիտի տեսնաս որ երկու եւ երեք տարուան մէջ արտը հաւասարութեան աստիճան գտած է։*

*Է՛ Թոռնիկ, գիտեմ պիտի ասես թէ արտը իւր ամբողջութենէն բաւական կը կորսնցնէ այդ թումբերուն համար։ Ո՛չ, այդ հաշիւը սխալ է Թոռնիկ, ոչ միայն չի կորսնցներ այլ մեծապէս կը շահի, վասն զի արտին պտղաբերութիւն կրկնապատիկ էվելնալով՝ կորսնցուցած տեղերուն հաշիւը կը լեցնէ։ Եւ միթէ այդ թումբեր իրենց շահն եւ օգուտ չունի՞ն, ցանէ անոնց վերայ առւոյտի սերմն, տես ինչպէս պտուական կը լինի, թէ իւր արմատներով թումբ կ՚ամրացնէ եւ թէ առատ եւ զօրաւոր խոտ կըստանաս ձմերան համար։*

*Այժմ խօսիմ, Թոռնիկ, արտերու մաքրութեան մասին, որ երկրագործին աշխատութեան մի գործ պէտք է լինի, միշտ ամենայն խնամով արտերէն դուրս հանել մաքրել, եթէ կան իւր մէջ այնպիսի քարեր, որ հերկագործութեան եւ հնձելու ժամանակ արգելք կը լինին։ Թո՛ղ արտին երեսը երեւցած քարեր, կը գտնուին նա եւ հողին տակ խոշոր քարեր, որք հերկուած ժամանակ գութանի խոփին զարնուելով կը կոտրեն զայն․ գութան կը դադրի մինչեւ խոփը քաղաք տարուելով շինուի, ո-*

րով բաւական ժամանակ պարապ կանցնի: Ուստի լաւ է որ այդ պատահած քարերը փորելով գետնի տակէն հանեն եւ արտէն դուրս վարեն: Փորձուած է, գութանի խոփերն ուրիշ պատճառներով էլ կը կոտրին. սորա համար կարող երկրագործ նախահոգ լինելով պէտք է ուրիշ պատրաստի խոփ մի եւս ունենայ, որ ի դիպել հարկին գործածէ, եւ չթողու որ աշխատութեան օրը պարապ անցնի:

Քարեր մաքրելէն յետոյ, կարեւոր է նա եւ բարձրաբոյս դաժան փշեր եւ ուրիշ մոլախոտեր արմատահան անելով մաքրել: Դու յիշէ այստեղ Թոռնիկ Աւետարանին առակը, թէ փուշեր կը խեղդեն սերմերը եւ անպտուղ կը լինին: Աւելի հոգտանելու է որոմնաբոյս խլել արտէն երբ ցորենին հետ կաճի եւ կը բարձրանայ, էն ժամանակ շատ դիւրին է որոմն ցորենաբոյսէն ժողովել: Կը ցաւիմ որ Վանայ երկրագործներ շատ անհոգ են այս մասին, կը թողուն որ որոմն ցորենին հետ հնձուելով խառնուի, եւ ի միասին կասելով կը ժողվեն շտեմարանը. եւ գիտե՞ս որչա՞փ դժուարին է յետոյ ցորեն մաղելով որոմներ ջոկել: Կան շատ գաւառներ որ ցորեան լուանալու մեծ հանդէս կանեն, բոլոր ընտանիք կերթան ջրաղաց, եւ այնտեղ օրերով մնալով մեծ խնամով կը լուանան ցորեն, ոչ միայն որոմն՝ այլ եւ մանր քարեր եւ ուրիշ օտար սերմնահատեր ամբողջովին կը մաքրեն եւ ապա կաղան, որով հացն անխառն եւ շատ մաքուր կը լինի:

Բայց որոմնաբոյսեր ցորենէն զատելու համար աւելի դիւրին միջոց այն է որ, կանխապէս դեռ արտ չը հնձուած արտի մէջէն քաղել, երբ որոմն փունջ փունջ կը բարձրանայ ցորենաբոյսին հաւասար եւ կսկսի հասկ կապել: Ինչպէս տեղեկացած եմ, սորա օրինակ կուտան մեզ Խարբերդու ժրաջան ընտանիք, որ ժամանակին կը թափին արտերու մէջ եւ որոմի փնջեր ամբողջ դուրս կը քաշեն, որով ցորենի աճումն աւելի եւս կը զօրանայ, վասն զի ամէն ինքնաբոյս խոտեր, որչափ շատ բուսնին մի արտի մէջ այնչափ աւելի մեր ցանած սերմի աճումն կը ճնշեն եւ կը ջլատեն: Զարմանալի է, Թոռնիկ, որ այդ ինքնաբոյս անմշակ խոտեր աւելի կը զօրանան, եւ կը յօրանան, Առակ է այս, որ կը խօսին իմաստուն մարդիկ թէ ինքնածին բոյսեր իբրեւ հարազատ զաւակ կը համարուին մայր հողին, զորոնք աւելի կը սնուցանէ իւր կաթով եւ հիւթով: Իսկ մեր ցանած սերմն իբրեւ խորթ զաւակներ կը համարուին: Բայց մայր հողին բնական զօրութիւն անխտիր եւ հաւասար է ամէն բոյսերուն համար, նա հնազանդ է Աստուածադիր բնական օրէնքին, աշխարհիս մարդկանց մայրերուն չի նմանիր որ հարազատ զաւակներ միայն կը սիրեն եւ խորթեր ատելով կատեն:

Հետաքրքիր կը լինի՞ս, Թոռնիկ, թէ ի՞նչ է բնական պատճառ եւ թէ ինչո՞ւ համար կուզեմք օտարաբոյս խոտերը քաղհանք անել մեր մշակած երկրէն:

*Երանի՜ թէ կարենայի գիտնականապէս բացատրել քեզ դորա պատճառ, բայց ժողովուրդ փորձով հասկցած է, որ ինքնաբոյս խոտերը մեր ցանած սերմնաբոյսերուն բնաւոր թըշնամի են, վասն զի իրենք աւելի աճելով ու զօրանալով կը նըւաճեն եւ կը խեղդեն մեր բոյսերը· չեն թողուր որ աճեն եւ զօրանան, ուստի քաղհանք անելով արմատով դուրս կուտան, էն ժամանակ կը տեսնաս որ ընտանի բոյսեր չուտով կսկսեն աճել:*

*Սորվիր, Թոռնիկ, թէ ի՞նչպէս է սորա ներքին եւ բնական պատճառ, ինձ կը թուի որ բոյսեր որչափ ցանցառ լինին, այնչափ աւելի ուժով եւ չուտով կը զօրանան, որովհետեւ աւելի հիւթ եւ սնունդ կընդունեն մայր հողէն, եւ քաղհանք եղած բոյսերուն բաժին հիւթը իրենք կը ծծեն եւ կուռճանան: Ժողովուրդին մի խօսած առածը պարզապէս կը հասկցունէ այս միտքը· թէ «առխիճ ճօըւ գլուխ կը ձգէ»: Մի՛թէ չունի՞մք աւելի բնական օրինակ, մեր մայր երբ երկուորեակ ծնի, նորա ըստինքներու կաթը բաժին կը լինի երկու զաւակաց, այլ երբ մի հատիկ զաւակ ծնի, երկու ստեանց կաթը միանգամայն բաժին կը մնայ նորածին մանկան, որով կաթնկեր մանուկն աւելի առատ ծծելով աւելի կը զօրանայ: Այս չափս հերիք է արտերու մաքրութեան մասին, կարգն է այժմ, որ խօսիմ հողին պարարտութեան վերայ· որ կառաւելու երկրագործին չահն ու վաստակ, եթէ գիտնայ ի գործ դնել ամէն այն միջոցներ որ հողին ուժը եւ պարարտութիւն կուտան:*

———o———

Ժ.

# ՄԱՅՐ ՀՈՂԻՆ

## ՏԿԱՐՈՒԹԻՒՆ ԵՒ ԶՕՐՈՒԹԻՒՆ

*Փորձ ինքնին իբրեւ վարժապետ կուսուցանէ մեզ, Թոռնիկ, երբ յաճախ առանց հանգիստ տալու մի արտ կը վարեմք եւ կը ցանեմք, կը տեսնամք որ առաջի տարին մեծ արդիւնք կուտայ, հետեւեալ տարին կսկսի նուազիլ երրորդ տարին բոլորովին տկարանալով ապարդիւն կը լինի: Գիւղական ժողովուրդ ի վաղուց անտի փորձելով գիտէ այս բան· ուստի երկու կերպ միջոցներ ի գործ կը դնէ, վերստին տկարացած հողին ուժ տալ, կամ թող կուտայ, մի քանի տարի որ արտը ինքնին հանգչի եւ ուժ ստանալով պարարտանայ· կամ աղբ տալով արտին պակասած ուժին տեղ լեցնելով կը մշակէ, եւ այսպէս արտը պարապ չի թողուր, ամէն տարի կը վարէ կը ցանէ եւ արդիւնք կ՚ստանայ, միայն թէ գիտենայ սերմն փոխել, այսինքն*

եթէ առաջի տարին ցորեն ցանած է, յաջորդ տարին պէտք է խոտ ցանէ եւ կամ արտն աղբելով բանջարեղէն մշակէ, եւ աշնան վերջ բանջարեղէնք կը վերնան կարող է արտը վարել եւ ցորեն ցանել, որով կրկնապատիկ արդիւնք կստանայ հետեւեալ տարին: Վանայ քաղաքացի երկրագործներ շատ լաւ գիտեն մշակութեան այս կերպ: Իսկ մեր գիւղական ժողովուրդ իւր արտերուն ուժ տալու համար մեծ միջոցներ ունի իւր ձեռք, չեմ ասեր որ այնչափ ոգէտ է, որ չգիտէ, զի քաղաքացի երկրագործաց օրինակ իւր աչքին առաջն է. այլ աւելի պէտք է ասել թէ ծոյլ է, եւ աւելի աշխատութիւն չի սիրեր, եւ ինչպէս նախորդ դասերուս մէջ խօսեցայ, մի մեծ պատճառն եւս այն է, որ չափէն աւելի հողեր ունի իւր ձեռք կը թողու անվար, որ միայն կորդ մնալով ուժովնան:

Կը տեսնա՞ս, Թոռնիկ, ահա մեր գիւղը աչքիդ առաջն է, որչա՞փ մոխրակոյտեր կան, որ ամէն մի տան առաջ մեծ մեծ բլուրներ կազմեր. թող մոխրակոյտներ շատ աւելորդ կոյտեր կան աստ անդ փողոցներու մէջ, ոտքի տակ հող կը դառնան, մեր ապուշ երկրագործներ չգիտեն գործածել այդ պիտանի եւ պարարտացուցիչ աղբերու կոյտեր: Միթէ դժուարի՞ն է ի գարնան եւ աշնան փոքրիկ սայլակներով աղբակոյտ փոխադրել արտերը, որով հողին սպառած ուժը վերստին իրեն տալով՝ հողն անդրէն կը նորոգի եւ կսկսի նոյն առաջին արդիւնք տալ: Գիտե՞ս, Թոռնիկ, այս մի բնական օրէնք է. հողն եւս մարդոյն պէս իւր կեանքն ունի, եթէ դայն շարունակ գործածելով վարես, ցանես, առանց երբէք ուժ տալու, գիտես թէ՝ կը ծերանայ ամուլ կը դառնայ, եւ կը դադրի իւր պտղաբերութենէն: Կասեն թէ, Եւրոպիոյ աշխարհին հողերը, վերջին աստիճան ծերացած են: Բայց ի՞նչ կանէ այդ ժրագործ արուեստագէտ ժողովուրդը. այնչափ միջոցներ գտեր է հողին ուժ տալու, որով այդ ծերացած հողը երիտասարդ կը դառնայ եւ բազմածին պտուղներ յառաջ կըբերէ: Մարդ կը զարմանայ, երբ կը լսեմք թէ Ամերիկայի հեռաւոր աշխարհէն նաւերով աղբ կը փոխադրուի յԵւրոպայ: Կը տեսնա՞ս դու, այդ մեր աչքին անարգեալ աղբն եւս վաճառականութեան կարգն անցած է, զի երկրագործին համար շատ պիտանի եւ թանկագին է աղբ, քան թէ աղամանդ, որ թէպէտ այդ պատուական քարն ազնուականաց համար մեծ վայելչութիւն է, սակայն երբ սովալլուկ լինի մարդ աղամանդ կը ծախէ եւ հաց կը ճարէ:

Աւա՛ղ կարդամ մեր ծուլութեան, եւ առաւել մեր ագչութեան, Թոռնի՛կ, մեր աղբ Ամերիկայէն չի գար, այլ մեր տան դռներու առաջ դիզուած է լեռնաչափ, եւ մեք անձմեռ լինելով կը դժուարիմք մինչեւ արտ փոխադրել: Ոչ միայն պէտք էր մտածէինք մեր արտերու պտղաբերութեան համար, այլ եւ պէտք է խորհէինք գիւղի հրապարակին եւ փողոցներու մաքրութեան համար:

*Է՛, Թոռնիկ, կարծեմ քիչ մի աւելի խօսեցայ եւ ղատեցի, մինչ չինական ժողովուրդ առանց կրթութեան կարո՞ղ է մաքրութեան գաղափար եւ ճաշակ ունենալ: Արդարութիւն չէ առանց կրթութեան մեղադրել գիւղական ժողովուրդ, որ թող տգիտութիւն, կեանքի բազմադիմի ցաւերով պաշարուած է, մի կողմէն եւս խոր նախապաշարմունք կաշկանդեր կապեր է նորա բնական միտք: Եթէ ասես, աղբէր Կիրակոս, ձեր դըրան առաջ այնչափ աղբեր դիզուած են, ինչո՞ւ չես կրեր թափեր արտերուդ մէջ: Է՛, կը պատասխանէ, էդ մի աւելի աշխատութիւն է, ինձ համար տարին քանի մի արտ պէտք է, կը վարեմ, կը ցանեմ, մնացեալները կը թողում կորդ թող երթան ինքնին ուժովնան, մեր նախնիք առանց աղբի կը մշակէին, միթէ հաց չէի՞ն վաստկեր, վկայ կը բերեմ բանիս բոլոր յաւիտենական մոխրակոյտեր, որ ի նախնեաց անտի դիզուած են, հօ մենք չը դիզեցինք: Ահա քեզ չինականի փաստաբանութիւն, այնպէս մտածելով ու խօսելով՝ նա կ՚մնայ անշարժ իւր մըտաց պաշարման մէջ, եւ մոխրակոյտն եւս իւր տեղ կը մնայ: Դեռ սպասել պէտք է ուրեմն ժամանակին եւ կրթութեան որ գան եւ շարժեն չինական ժողովուրդին միտքը դէպ յառաջդիմութիւն, նա յայնժամ ինքնին կը ճանչնայ աղբին պիտանութիւն, եւ այժմեան գիւղի աղբակոյտերը՝ բոլոր պիտի կրեն տանին թափեն իրենց արտերու մէջ, կռուելով եւ յափշտակելով իրարու ձեռքէն: Բաւ է, որ նորա արդիւնաբերութիւն մի անգամ փորձով տեսնան, եւ համոզուին թէ որչա՞փ շահեկան է աղբն արտին համար: Այժմ պէտք է խօսիմ աղբին պատրաստութեան մասին, թէ ինչպէս պէտք է ժողվել եւ պատրաստել զայն, որ առաւել օգտակար լինի:*

*Եթէ գիւղին մէջ իւրաքանչիւր տնէն գոյացած աղբեր հասած տեղ թափուելով մնան այնպէս, ինչպէս այժմ եւ լինին մէկ մէկ հողաբլուր, ոչինչ օգուտ չունին. Նախ՝ որ արեւուն ջերմութիւն աղբերուն հիւթական զօրութիւն կը քաշէ, երկրորդ, տեղատարափ անձրեւներ գալով կ՚ողողէ աղբանոցը եւ անոնց մէջ եղած հիւթն եւ զօրութիւն կ՚առնու կը տանէ, այլ եւս աղբակոյտն ցամքելով իւր հիւթական զօրութենէն, անպիտան եւ անշահեկան կը դառնայ: Ուստի գիւղացւոց իւրաքանչիւր տներ, պէտք է առանձին առանձին իրենց համար յատուկ աղբանոցներ պատրաստեն ուր որ յարմար, նախապէս գիտնալով թէ որչափ աղբ կը գոյանայ տարուան մէջ, նոյն քանակութեան համեմատ երկար քառակուսի փոսեր պէտք է բանան, զոնէ երկու կրկու կանգուն խորութեամբ, այնպէս որ եթէ անձրեւի, եւ թէ հալած ձիւներուն ջրերը երբէք աղբանոցի փոսերէն դուրս չը վազեն: Կարեւոր է գիտնալ նաեւ թէ աղբանոցի մէջ թափուելիք նիւթեր ի՛նչ են, եւ ո՞րչափ զանազան բաներէ կը բաղկանայ աղբ: Թոնրի մոխիր, կոյանոցներու աւելորդը, փտած յարդեր եւ խոտեր, տան աւելուցքներ, կա-*

լատեղէն վերցած խոշոր խզուգի յարդեր, որ անասուն չուտեր, մսուրներու մէջի կրճոն աւելուցք եւ այլն: Ահա այս ամէն բաներ աղբանոցին համար նիւթ կը լինին, մոռցած յիշելու աւրուած պուտկի ժաժիկներ, եւ նման բաներ, որք առհասարակ աղբանոցին նիւթ կը կազմեն, որք մէկ տեղ խառնուելով կը փտտին, կը խմորին եւ կը թթուին, մի զօրաւոր նիւթ կը դառնան երկրին պարարտութեան համար:

Խօսիմ արդ, թէ ինչ ժամանակ յարմար է արտերն աղբել: Թէ սկիզբն գարնան եւ թէ աշնան վերջ ճիշդ ժամանակն է. բանջարեղինաց պարտէզներ սովորաբար գարնան ցանելու ժամանակ կաղբեն, նմանապէս գարնանացան սերմերու արտեր թէ ցորեն լինի, թէ գարի եւ կամ ուրիշ հնդեղէն բաներ: Բայց աւելի լաւագոյն եւ օգտակար է աշնան ժամանակ աղբել այն արտերը, որոնք աշնան հերկուած են, եւ գարնան դարձեալ հարոբովար պիտի լինին ցանելու համար. գիտե՞ս, Թոռնիկ, եւ ես փորձած եմ որչա՞փ շահեկան եւ արդիւնաւոր կը լինի, եթէ աշնան աղբուին եւ հաւասար տարածուին արտին երեսը: Նախ անձրեւ եւ ապա ձիւնը գալով աղբին զօրութիւն ամբողջապէս կը թափանցի հողին, եւ մինչեւ ի գարնան հողն աղբին ուժով կը պարարտանայ, մինչդեռ գարնան աղբ նոյն ազդեցութիւն չունի հողի վերայ, վասնզի եթէ անձրեւ պակաս լինի, արեւու ջերմութիւն աղբին կազային զօրութիւն կը քաշէ ի վեր, որով այնչափ արդիւնաբեր չի լինիր աղբուած արտը: Թո՛ղ այս, երկրագործը աշնան աւելի ժամանակ կունենայ աղբ կրել արտը, քան թէ գարնան որ ցանքի եւ այլ աշխատութեան օրեր են: Նոյն իսկ ձմերան օրերը երբ տակաւին այնչափ ձիւն եւ ցուրտ արգելք չի տար, ժրագօտի երկրագործ կարող է աղբեր կրել արտը եւ անմիջապէս ցրուել:

Աղբին պիտանութեան վրայ, այսչափս միայն խօսելով, քեզ կը թողում: Թոռնիկ, որ գործնական փորձով դու ինքնին իմանաս նորա արդիւնաբեր շահեկանութիւն եւ չթողուս որ ամէն մի աղբանիւթ բաներ՝ ընդունայն տեղ վատնուին:

———o———

ԺԱ.

## ՂՈՒՆՋՔ

Երկրագործին համար որչա՞փ ուրախութիւն է այն օրը, երբ նա կերթայ տեսնել իւր արտօրայք թէ հասա՞ծ են, եւ երբ կը տեսնայ որ հասկաւորեալ ցորենաբոյսեր չիկակարմիր գոյներով կը ծածանին մեղմաշունչ հովերէն, վա՛շ, կասէ, հնձելու ժամանակ հասած է. լի ցնծութեամբ ի տուն կը դառնայ աւետիս կուտայ բոլոր ընտանեաց. իսկոյն կը պատրաստուին, տան աշխատաւոր կորիճ երիտասարդներ, եւ թէ բաւա-

կան չը լինին երբեմն օրավարձով մշակներ եւս կը բռնեն, եւ այսպէս արտերուն հունձք կսկսի:

Մի բարի սովորութիւն կար ի նախնեաց անտի գիւղական ժողովուրդին, որու արտ որ շուտ հասնէր, դրացիք եւ բարեկամք կերթային յօգն, նախ նրա արտ կը քաղէին եւ ապա փոխադարձաբար ինքն եւս կերթար անոնց արտը կը քաղէր, եւ այսպէս իրարու օգնելով համաշխատ կերպով, բովանդակ գիւղացւոց արտերը ամբողջապէս կը քաղուէին, թէպէտ այս գեղեցիկ սովորութիւն այժմ շատ նուազած է, աստի յայտնի է, որ ընկերական ոգւոյ եռանդն եւս պակսած է:

Աշխատիր, Թոռնիկ, որ դու քո արտ քո ձեռքով քաղես, ուրիշի օգնութեան չը կարօտիս: Սորա համար ես քեզ մի առակ խօսիմ, որ շատ տեղ գրուած է: Արտուտիկ թռչուն մի կայ որ բնականէն խելացի եւ տնտես է, իւր բոյն արտերուն մէջ կը դնէ, ուր որ կուտ ու հատիկներ պակաս չեն: Սա իւր ձագերուն ապագայ վտանգ գիտնալով առաջուց խրատ կուտայ, որ մտիկ անեն ձագեր եւ պատմեն իրեն, երբ արտին տէր հնձելու ժամանակ մօտենալով կուգայ տեսնել թէ արտ հասած է: Առաջին անգամ գալով կասէ, տղաս, արտ հասնելու մօտ է, գնա խօսիր մեր բարեկամաց թող մեզի յօգն գան արտը քաղենք: Մտադիր ձագեր այս բան կը պատմեն իրենց մօր· մայր կասէ, անհոգ եղիք ձագեր, քանի որ տանուտէր բարեկամաց պիտի սպասէ, արտ չի քաղուիր: Միւս անգամ կուգայ հնձոց տէր կ'տեսնայ որ արտ հասեր է բոլորովին, կասէ, տղաս բարեկամներ չեկան գոնէ մեր դրացիներուն լուր տուր թող գան օգնեն մեզ փոխադարձաբար, ի՞նչ կը լինի, մեք էլ կերթանք անոնց կօգնենք, ուշիմ ձագերն այս խօսքեր կը պատմեն իրենց մօրը: Մայր դարձեալ նոյն բան կասէ, ապահով եղիք ձագերս արտ չի քաղուեր քանի որ բարեկամներու օգնութեան մնացեր է բանը: Երրորդ անգամ կուգայ տանուտէր կը տեսնայ որ հնձելու ժամանակ անցե՜ր եւ ցորենաբոյսեր չորցեր ու կծղեր են՝ ո՜հ, կասէ տղաս, խաբուեցանք, այլ եւս ոչ բարեկամներէն յոյս կայ եւ ոչ դրացիներէն, գնա շուտով առբեր մանգաղներ մեք մեր արտ քաղենք: Այժմ կը հաւատամ ձագերս, որ արտ պիտի քաղուի, ելէք զձեզ փոխադրեմ ուրիշ տեղ:

Այս առակ թող քեզ խրատ լինի, Թոռնիկ, երբէք մտքէդ չը հանես եւ յուսախաբ չը լինես· ժիր երկրագործ իւր վարած ցանած արտը պէտք է իւր ձեռքով քաղէ, վասն զի գուցէ օգնող դրացւոյն արտը քո արտին հետ հասնի ի հունձ, միթէ կարելի՞ է, որ նա թողու իւր հունձքը եւ գայ քո արտը հնձէ: Աշխատիր որ հնձոց ժամանակ չանցնի, որով թէ դժուարաւ կը քաղուին եւ թէ հասկեր թափուելով մեծ վնաս կը լինի:

Եւ երբ հնձոց ժամանակ օրավարձ սարակներ կը բռնես, լաւ խնամ տար նոցա, թէ հացով թէ կերակուրով· կան ոմանք

որ չարաչար կը վարին աշխատող մշակներուն հետ, որք ուժէ լքուած վաստակաբեկ կը լինին: Երբ կէսաւուր հաց կուտեն հնձող մշակներ, որչա՜փ բարեխիրտ կը լինիս Թոռնիկ, եթէ թողուս այն կէսաւոր շոգին, խոնջած աշխատաւորներ դէզերուն հովանեաց տակ ցորենի խուրձեր բարձ անելով գոնէ մի ժամու չափ անուշ քուն քաշեն, յետոյ ելնեն մանգաղներ սրբեն եւ սկսեն քաղ: Շատ ուրիշ գաւառներ այս սովորութիւն ունին, միայն Վանայ գաւառն է, որ անխիղճ կը վարուի մշակներու հետ:

Եւ գիտե՞ս դու Թոռնիկ, որ մեր հնձողներ շատ ախորժակով կուշտ հաց կուտեն. որչա՜փ վնասակար է մարդոյ առողջութեան, երբ այնպէս առանց միջոց տալու ելնեն եւ լիք փորով ծռին եւ մանգաղ քաշեն, թող այս տնտեսապէս էլ վնաս է տանուտիրոջ, վասն զի հնձող մշակն արդէն խոնջած է, եւ հաց ուտելով աւելի եւս կը ծանրանայ: Բնական է որ նա անմիջապէս գործի սկսելով, նա չի կարող ջանքով աշխատել: Բայց երբ նա փոքր ինչ քնով կազդուրուելով կուժաւորի, ստամոքսի ծանրութիւն կը թեթեւնայ, տես դու այն ժամանակ որչա՜փ աշխուժով մանգաղ կը շարժէ, այնպէս որ նա մի ժամուայ քնոյ տեղ կրկնակի աշխատութեամբ կը լեցնէ:

Նախորդ դասերուս մէջ կը յիշե՞ս, Թոռնիկ, հարեւանցի կերպով խօսեցայ, որ գերանդին՝ շատ մեծ առաւելութիւն ունի մանգաղէն, միայն թէ կանխես եւ ցորենի եղած ժամանակ հնձես, որ այլ եւս հատիկներ չեն թափիր, եւ աւելի այն արտերը գերանդիով հնձելու է, որ խիտաբոյս, խոտախառն եւ բարձրահասակ են ցօղուններ: Իսկ այն արտերն, որոց բոյս ցանցառ է եւ կարճ, պէտք է մանգաղով քաղել: Երանի՛ թէ, Թոռնիկ, երթայիր տեսնայիր Մշոյ, մանաւանդ Հացեաց գաւառի քաջաբազուկ մշակներուն հնձելու հանդէս, նոքա չ՚գիտեն մանգաղ, ամենայն ինչ գետնի երեսէն բուսածները գերանդիով կը սրբեն, ոչինչ փոյթ չունին թէ հատիկներ գետին կը թափին. վասն զի այնպիսի չնաշխարհիկ հողեր ունի, որ ինկած հատիկներ մէջ թաղուելով, եւ աշնան անձրեւ վրան գալով կը տեսնաս որ հնձուած արտը նորէն կանաչեր է, որով առանց աշխատութեան կրկնակի արդիւնաբեր լինելով հետեւեալ տարին նորէն կը քաղուին: Հնձելու, եւ մեծ մեծ խուրձեր կապելու վարժութեան մէջ արդարեւ Մշեցի երկրագործ դերապանց է, թէեւ հողագործութեան ուրիշ մասերում շատ յաջողակ չէ:

Համառօտ կերպով աւարտելով արտօրէից հնձելու դասը, մխտքս նկատ այն բանը, զոր Տէր Աստուած Մովսէսին պատուիրած է, ճռաքաղ չառնել թէ այգին եւ թէ արտը, զի փոքր ճիւեր եւ թափուած հասկեր՝ որբերուն եւ աղքատներուն բաժինն են: Աստուծոյ այս գթութեան պատուէր ծերունի Պապիկ, Թոռնիկիդ կաւանդէ որ բարեխիտ եւ գթաճէր լինիս:

*Մեք այգի չունի՛մք, բայց արտեր ունիմք, հնձոց ժամանակ պէտք է թողումք որ գիւղի աղքատներ, այրիներ, որբեր գան ժողվեն թափուած հասկեր ու հայթայթեն իրենց կեանքի պարէն: Նոքա մեր գիւղի չքաւոր մասն են, վարուցան չունին, հապա ինչո՞վ պէտք է ապրին՝ պէտք է աշխատութեան բաժին տալ այնպիսիներուն, որ կարող են աշխատել եւ օրավարձք ստանալ· իսկ կան այնպիսիներ, որ ծեր ու պառաւ են կամ փոքրիկ տղէքներ են, ոչինչ աշխատութիւն չենք կարող պահանջել իրենցմէ իբրեւ փոխարինութիւն: Քրիստոս յատկապէս այսպիսեաց համար խօսած է· «Տուք փոխ այնմ, ուստի ոչ ակն ունիցիք առնել»:*

---

*ԺԲ.*

## ԿԱԼ

### ԵՒ ԿԱԼԱՏԵՂ

*Արտորայք հնձելու ժամանակ, երկրագործ մեծ փութաջանութիւն պէտք է ունենայ, մի կողմէն քաղուած ցորենի դէզերը սայլերով կրել ի կալատեղ: Այս աշխատութիւն շատ կը դիւրանայ, եթէ կանխապէս սայլի ճամբաներ հարթուած ու պատրաստուած լինին· յայտնի է ամէն գարնան ժամանակ յորդ անձրեւներէն եւ ջրավազ տեղերէն, ճամբաներու վերայ հեղեղատներ կը բացուին եւ մեծ արգելք կը լինին սայլերու ընթացքին, Նկատէ ու տես Թոռնիկ, թէ ո՞րչափ անհոգ է գիւղական ժողովուրդ, զի երբ այդ բնական ճամբաներ կը խանգարուին նա կը մտածէ յանժամ ուրիշ նոր ճամբու գիծ մի բանալ, որով հին բնական ճանապարհ կամայանայ: Իսկ նոր ճամբան թէ երկար լինի եւ պտոյտներ ունենայ, ոչինչ փոյթ է իրեն համար, զի գիւղացին չգիտէ հաշուել ժամանակի կորուստ թող դժուարութիւններ: Ուստի, երկրագործին աշխատութեան մեծ դժուարութիւն կը լինի, եթէ տարուէ տարի նորոգուին գոնէ խանգարուած գլխաւոր ճամբաներ: Դեռ հունձքեր ի կալատեղ չը բերուած շատ կարեւոր է կալատեղի պատրաստութիւն, եւ կասելու համար պէտք եղած գործիքներ, կամնասայլ, ջառջառ եւ այլն: Վանայ արեւելեան եւ հիւսիսակողմն եղած գաւառներ շատ գիւղեր կան, որ երբէք կալատեղի պատրաստութեան պէտք չունին, վասն զի գիւղերուն մօտ խիտ եւ մանրաբոյս մարգեր կան, որ գետնին երես ծածկած են իբր մի կանաչազարդ փռոց, ինչպէս մեր Արճակ գիւղին կալատեղեր, որք բնական են եւ պէտք չունին պատրաստութեան: Կը տեսնա՞ս Թոռնիկ, օրանն կասուելէն յետոյ մեր ցորենաշեղջեր որչա՞փ մաքուր եւ անխառն են, ոչ հող, եւ ոչ*

քար ունին իրենց մէջ, իսկ այն կալատեղեր, որ անբոյս լերկ հող են, երկրագործ կը պատրաստէ ամէն տարի կալի ժամանակ չինել ու պատրաստել: Կալի տեղ երեսէն փորելով ջուր կը թողու վերայ, եւ անհարթ տեղեր բահով հարթելով կուղղէ գետնին մակերեւոյթ, ջուրը ցամքելէն յետոյ յարդ կը ցանեն վերայ, եւ կսկսին բահի քամակով ծեծել եւ հարթել: Այս կերպ չինուած կալատեղեր դարձեալ խորդ ու բորդ կը լինին, եւ ազատ չի մնար ցորեանն աւազախառն հողերէ: Լաւագոյն կալատեղ այն է որ միանգամ սալայատակ լինի, եւ իւր չրջապատը գոնէ կէս կանգուն բարձրութեամբ թումբ ունենայ՝ որպէս զի օրան կրող սայլ նորա եզերք կենայ եւ չը մտնայ կալատեղ, զի սայլին անիւներն, կալատեղին յատակ կը խանգարեն:

Մեր Վանայ գիւղերուն օրան կասելու կերպ, եւ գործիքներ բաւական յաջող են, թէ կամնասայլ եւ թէ ջարջառ ի միասին բանեցնելով մեծ գործ կը տեսնան, աւելի կասող եւ մանրող է ջարջառ գործիք, որ փայտէ մի գլանակ է երկու կանգուն երկար, որոյ վերայ չարուած են ոլոր ձեւով երկաթէ սուր ուրագներ, որ անուաձեւ դառնալով կը կոտրտէ կալի օրանն: Մանաւանդ, երբ ձիեր լծուած լինին ջարջառին արագապէս դառնալով կամնասայլէն չատ աւելի գործ կը տեսնան:

Հարցուր, Թոռնիկ, թէ աղքատ գիւղացիք ինչպէ՞ս կալ կանեն, երբ այդ գործիքներ չունին: Է՛, Թոռնիկ, աւելորդ է այդ հարցումն, քանի որ աղքատն արդէն հողատէր չէ, միթէ կարող է վարուցան անել: Ահա տես մեր գիւղի աղքատ Ղազարի կալ, որ ժամանակաւ գեղին առաջին հարուստ համբան էր, այժմ հազիւ մի քանի սայլ ցորեն ունի կասելու: Մի եզ եւ մի կով ունի, լծած է մի մաչած անատամ կամնասայլի, իւր փոքրիկ կալիկ անով կը կասէ: Ես վաղուց կը ճանչնամ աղքատ Ղազար, որ երբեմն տանուտէր էր, դուռը բաց, եւ այժմ այդ վիճակին հասաւ, թէ արտեր թէ իւր ծառաստաններ պարտատէր գրաւեց, թէ իրաւ թէ անիրաւ, այդ չը գիտեմ, միայն այս գիտեմ, որ պարտատէր թէ աչխարհին օրինաց առաջ թէ իւր խղճին առաջ ինքն չը՛մեղս եղաւ եւ կարդաց բանաստեղծին այս տողերը·

«Հետեւելով միչտ օրինաց աչխարհի·
Ես կեանքումս մարդոց վնաս չի արի»:

Միջանկեալ բան պատմեցի քեզ, Թոռնիկ, որ պարապ անելէ զզուչանաս, ապա թէ ոչ դու եւս աղքատ Ղազար կը դառնաս:

Դու չես տեսեր, Թոռնիկ, բայց ես տեսած եմ ի Պօլիս, պատմեմ քեզ: Եւրոպիոյ արուեստագէտ մարդիկ այժմ կալ կասելու համար մի մեքենայ հնարած են, որ ահագին բան է· մեծ սայլի պէս չորս անիւներու վերայ հաստատուած, որու մէջ զանազան մանր ու խոչոր երկաթաթել մաղեր, եւ այլ կասող եւ մանրող սուրեր զետեղուած են, որ մեզ պէս չինականի

խելք չի հասնիր։ Այս մեքենայն կրակով կը դառնայ, երկու մարդ մեքենային տանիս կեցած չարունակ խուրձեր քակելով կը ձգեն ընդունարանի ծակէն ներս, որոնք փշրուելով, մեքենայի երկու ծակերէն դուրս կը վանուին թէ ցորեան եւ թէ յարդ։ Այս մեքենայն միշտ դէզերուն քով կը հաստատուի, որովհետեւ դիւրութիւն ունի սայլի պէս վարել տանել ուր որ լինի։

Կը տեսնա՞ս, Թոռնիկ, թէ գիտութիւն որչա՞փ դիւրացուցեր է մարդոց աշխատութիւն, այն ինչ մեք ամիսներով կալ կանենք, եւ շատ անգամ ձիւներու տակ կը մնան, նաեւ կ՚ապասենք մեղմաշունչ հովերուն, որպէս զի էրան անելով ցորեն յարդէն հանենք։ Երկու անգամ մաղերէ անցունեմք եւ այլն։ Առանց այս բոլոր աշխատութեան մեր մի ամսուան գործը, մեքենայն մի քանի աւուր մէջ կը լրացնէ։ Եւ այնչափ մաքուր կը զտէ ցորեան, որու վերայ մարդ կը զարմանայ թէ ինչպէս խապառ ի մի կողմ անջատուած են քարեր, հողեր, եւ օտար հատիկներ. որով այլ եւս հարկ չի մնար ցորեան կրկին մաղելով մաքրել, եւ ապա տանել ջրաղաց աղալ։

Գիտե՞ս, Թոռնիկ, թէ աշնան կալերու ժամանակ որչա՞փ կաճապարեն գիւղացիք, որ անձրեւակարգ չսկսած կալեր ժողվեն, զի երկրագործը կալի ժամանակ անձրեւ չուզեր, այլ միայն արեւ եւ յաջող քամի։ Բայց այս մեքենային մեծ օգտակարութիւն այն է որ ամէն ժամանակ կարող է բանել։

Սորա համար Եւրոպիոյ մեծ ագարակատէրեր, ցորեանն առանց կասելու շատ ժամանակ դէզերով կը պահեն եւ երբ պէտք լինի, մեքենայն դէզի առաջ տանելով, կը կասեն։ Վասն զի փորձուած է, թէ ցորեն աւելի լաւ կը պահուի երկար ժամանակ դէզերուն մէջ իրենց հասկերով ու պատեաններով, քան թէ շտեմարանին մէջ որ շատ անգամ կը տաքնայ, կ՚ոջլոտի եթէ երբեմն խառնելով չի դարձնես։ Մեր աղքատ կալեր մեքենայի պէտք չունին, մեր մեքենան ժրագործ աշխատութեան բազուկներ են։ Միթէ կարո՞ղ եմք այդ թանկագին մեքենայն բերել մեր աշխարհ, որ մի հատ հազար լիրայի արժէք ունի, ինչպէս շատ անգամ կրկնած եմ. Եւրոպիոյ երկրագործական աշխատութիւն գիւղական ժողովուրդին շատ դիւրացուցած են, նա պէտք չունի մեքենայ ստանալ, վասն զի կան այնպիսի ընկերութիւններ որ յատկապէս այդպիսի մեքենաներ կը գործածեն, գիւղացին վարձք տալով միայն իրենց ամբողջ ունեցած ցորենադէզեր կասել տալ։ Եւ գիտե՞ս, որչա՞փ դիւրութեամբ այդ դժուարաշարժ մեքենան գիւղէ ի գիւղ կը տարուի, միայն երկու ձի լծելով, հարթուած պատրաստուած ճամբաներուն շնորհիւ։ Ով գիտէ, անշուշտ կուգայ ժամանակ եւ մի օր, որ այդ մեքենայն քալելով կուգայ մեր աշխարհ, ես կը մեռնիմ, եւ դու կը տեսնաս ու կը յիշես Պապկէդ գուշակութիւն։

Կալի եւ կալատեղի դասն աւարտելով, այժմ պէտք է խօսիմ շտեմարանի պատրաստութեան վերայ որ կարեւոր է երկրագործին համար:

———o———

ԺԳ.

# ՇՏԵՄԱՐԱՆ

Յանկարծ միտքս եկաւ Թոռնիկ, ինչ զուգադէպ մի օր է այսօր, վաղը մեր Վարագայ Խաչի տօնն է: Ի նախնեաց անտի սովորութիւն եղած է, բոլոր Վասպուրական աշխարհ վաղը հարիսայ կը դնէ, գիւղական ժողովուրդին համար աւելի ցընծութեան օր է, մեք այս աւուր կալի կորկոտ կասենք, վասն զի կալեր կը վերջանան. կալի երախայրիքէն գիւղական տանտիկինները յատկապէս ճերմկահատ ցորեններէն կորկոտ կը պատրաստեն հարիսայի համար, բոլոր գիւղի տները ամէն մէկ իրենց չափով հարիսայ կը դնեն: Էր մի ժամանակ որ գեղի մեծ մեծ համբաներ մէկ մէկ եզ կը մորթէին հարիսայի համար, իրենց մեռելները յիշելով հոգւոյ հաց կը պատրաստէին, բոլոր գեղի ժողովուրդ, աղքատներ կուտէին կուշտ կուշտ եւ կօրհնէին տանուտէր: Գնա՛ց, Թոռնիկ, այն առատութեան ժամանակ, թող եզն, բաւ է թէ կարենան ուլ մի մորթել: Ի հնուց հարիսայի համար շատ երգեր կան բայց ես նորէն մի երգ խօսիմ քեզ:

Էս օր, գիտէ՞ք թէ ի՞նչ օր է
Մեր Վարագայ Խաչի տօնն է,
Եւ մենք կասենք կալի կորկոտ,
Հարիսայի մեծ տօնն է:
Բոլոր աշխարհ Վասպուրական
Հերիսայի տօն կատարէ,
Է՛, տան տիկին, Թոնիր վառէ
Դիր մեծ պղինձ եւ պտուկներ,
Մեք մորթեցինք մեր պարարտ եզն,
Միսն ու կորկոտ պատրաստ է, տե՛ս:
Բոլորեցէք շուրջ պղընձին
Բոլոր գեղի կրտրիճ լաճեր,
Հարէք ըղ սա ուժգին հարէք,
Կասէ մեր Հայր Լուսաւորիչն:
Էնպէս հարէք մինչեւ հալին
Ոսկորն ու միսն ի միասին,
Հալին խառնին հետ կորկոտին
Այն է նշան լաւ հարիսին:
Զօքէք, մանկտիք, թախտին վերայ
Սըփռոց չուգեր, շինական եմք,

Լից տան տիկին ըղ հարիսան
Լիճ լիճ արա եղն ի վերայ։
Տան հարսներ եւ աղջիկներ
Շուտ շուտ բերէք ըղ թափթափան
Թոնրէն ելած տաք տաք հացեր,
Ի՞նչ անուշ է հարիսի հետ։
Առէք այն կոպիտ անտաշ
Խոշոր խոշոր մեծ դըդալներ,
Կերէք կերէք անուշ ըլնի
Վաստակաւոր մշակներ։
Օրհնեալ ըլնի մեր տանտիկին
Լաւ է եփեր ըղ հարիսան,
Օրհնեալ ըլնի Լուսաւորի՛չն
Որ տուաւ մեզ լոյս հաւատ,
Հետ հաւատին մեզ աւանդեց
Հարիսային այս յիշատակ։
Օրհնեալ ըլնի իւր յիշատակ
Պահենք պահենք այս յիշատակ,
Մինչ յիշենք ու չը մոռնանք
Մեր փրկութեան մեծ օրն էր այն։»

Պատմեմ քեզ, Թոռնիկ, հարիսային աւանդութեան եւ յիշատակ, որ մեր Լուսաւորչի օրէն եկեր է մեզ հասեր է։

Ես էլ իմ Պապիէս լսած եմ որ այսպէս կը պատմէր, թէ երբ սուրբ Գրիգոր Լուսաւորիչ խոր վիրապէն ելաւ եկաւ Վաղարշապատ, վաթսուն օր ամբողջ քարոզ խօսեց հեթանոս Հայ ժողովուրդին. բիւրաւոր մարդիկ մտիկ կանէին։ Անշուշտ անոնց մէջ շատ աղքատներ կային, Լուսաւորիչն ուզեց աղքատներուն համար մի ճաշ պատրաստէ. բայց այս ճաշը Յիսուսի պէս հրաշքով չը պատրաստեց, հրաման արաց հազարաւոր գեղացիներուն որ շատ եզ ու ոչխար բերին, զանոնք մորթել տուաւ, մեծ մեծ կաթսաներ կրակի վերայ դրին. միսեր մէջ լեցուցին, կորկոտն եւս վրան. հրաման արաց հաստաբազուկ կորիճ երիտասարդներուն եւ սաաց հարէք բաս, որով այս կերակուրի անուն մնաց հարիսա։ Այս կերակուր հայկական մի պատուական կերակուր է, Հայրիկ շատ կը սիրէր հարիսան մինչ եփել կուտար Վարագայ վանքում։ Եւ երբ նա իւր պանդխտութեան մէջ կարօտ կը քաշէր հարիսային, միանգամ նամակ գրած էր Վարագայ միաբանութեան էդ նամակին խօսքեր միտքս պահած եմ։

Երջանի՛կ միաբանութիւն Վարագայ, որ կը բնակիք Աւագ Սուրբ Նշանի թեւին տակ, արդեօք կը յիշէ՞ք պանդուխտ Հայրիկ, ա՛խ, ես գձեզ կը յիշեմ. կը յիշեմ Վարագայ Խաչին տօն որ մօտ է. կը յիշեմ վանքին այն պատուական հարիսան, եւ դուք առանց Հայրիկին կ՚ուտէք հայրենաւանդ կերակուր։ Կերէ՛ք թող անուշ ըլնի, եւ կշտացինդ կերէք եւ խմեցէք Վա—

բաղդայ սարի ծոցէն բղխած պաղուկ պաղուկ աղբիւրներուն ջուրը: Իսկ Հայրիկ իւր պանդխտութեան մէջ ա՛խ կը քաշէ հարիսային դէմ: Ի՞նչ կը լինի, որ յիշէք Հայրիկը եւ մի ճօր հարիսայ Ամբակումայ հրեշտակին յանձնէք, որ բերի ի Բաբիլօն, ուտեմ եւ օրհնեմ զձեզ: Ողջ եղիք:

Է՛, Թոռնիկ, բա՛ւ է, թողունք այս աւանդական հարիսայի բան, դառնանք մեր դասին կարգ:

Գիւղական տնտեսութեան մէջ շտեմարանի պատրաստութիւն շատ պարզ ու նախնական է: Սովորաբար գիւղացիք իրենց ցորեն, գարի եւ այլ հատեղէն բաներ մի մարդաչափէն աւելի հոր փորելով կը հորեն ի գետին, թէեւ հորին կողերը խոտով կամ յարդով կը շրջապատեն, բայց շատ անգամ կը վնասին, խոնաւութիւն առնելով՝ հացը գէջահամ կը լինի: Եւ որովհետեւ այս ցորենի հորեր բացօթեայ տեղեր են, կը պատահի շատ անգամ անձրեւէն եւ ձիւներէն ջուր առնելով կը փտի ցորեն: Այնպէս կը թուի, Թոռնիկ, որ հին հին ժամանակներ գիւղացիք իրենց ցորեան ապահովութեամբ պահելու համար՝ գետնի տակ կը պահեն ինչպէս նաեւ ուրիշ շատ բաներ: Զարմանք է որ այս ապահով ժամանակի մէջ եւս նոյն սովորութիւն պահած են: Բայց այս բան անհոգութեան եւ ծուլութեան մի արդիւնք է: Երբ գիւղացին իրեն համար տուն կը շինէ, անասնոց համար ախոռ, ոչխարներուն համար գոմ, միթէ դժուարի՞ն է որ իւրաքանչիւր տուն իրենց արմտեաց չափով շտեմարաններ շինեն: Կան ոմանք որ գաղջին հողէ մեծ մեծ փեթակներ կը շինեն, որոց մէջ մեծ քանակութեամբ արմտիք կը պարունակեն, փեթակներ շատ լաւ կը պահպանեն հատեղէն բաներ, միայն թէ փեթակներու տանիք լաւ պատրաստելու է, որ կաթիլներ չիջնան փեթակին մէջ:

Բայց միշտ լաւագոյն պէտք է համարենք շտեմարան, որ որչափ ուզենք կարող ենք ընդարձակ շինել, որպէս զի ամէն տեսակ հնդեղինաց որոշ որոշ անջրպետներ ունենայ իւր մէջ: Ցորեն՝ ժամանակին խառնել դարձնել պէտք է որ օդ առնելով չի տաքնայ եւ ոջլոտի:

Ա՛հ, Թոռնիկ, հոգիս կը հառաչէ, միթէ պարտապան գիւղացի երկրագործին շտեմարան պէ՞տք է: Ահա մեր բարեկամ Կիրակոս աղբօր կալ, կը չափեն, տե՛ս քսան քիլանոց մի ցորենի չեղջ է. վաշխառու քաղքցիք եկեր պատրաստուեր են, չափեցին չեղջը քսան քիլա եղաւ: Նախ Տէրութեան տասանորդին տուրք տրուեցաւ, վաշխառուներ ամէն մէկ իրենց տոկոսներու հաշւով չափեցին առին, ի՞նչ մնաց, միայն կալատակն, նորա վերայ եւս աղքատներ թափեցան կալէմաան առին սրբեցին կալատեղ: Դու տես այժմ Կիրակոսին խեղճ վիճակը, նա տխուր երես կախած, առաւ կալին ցախաւել, թիակ, հեծանոց եւ այլն, գնաց տուն, տանտիկին հարցուց, ծօ մա՛րդ, այդ ահագին կալէն մեզ բաժին չը մնա՞ց, ի՞նչ պիտի

ուտեն մեր ճժեր ու պժեր: Տանուտէր պատասխանեց, տարեկա՛ն, տարեկա՛ն, (համար) դարին արդէն գնացող եկող հիւրերունհազիւ բաւէ: Տանտիկին ձեռքեր կցեց ու լացաւ, ա՜հ, Ա՛ստուած, դու տեսար, բարկ թոնրին դիմաց տարին բոլոր հաց թխեցի, կերակուր եփեցի, մշակներ հոգացի, ի՞նչ դատաստան է այս Տէ՛ր, ես ու իմ ճժերս կարօ՞տ պիտի մնամք ցորեն հացին: Է՛, տանտիկին դու չ'գիտե՞ս, ցորեն քաղքցոց, դէր դէր մսացուներ դարձեալ քաղքցոց, իսկ գեղացւոյն բաժինն է, տարեկան, կորեկ, եւ թանապուր: Այս եւս բաւական է դու փառք տուր Աստուծոյ, կնիկ, մեզմէ աւելի զրկեալներ կան, զի Մշոյ գիւղացին կլկլով միայն կապրի, որ տարեկանէն եւ կորեկէն շատ չնչին է:

Դու հարցո՛ւր, Թոռնիկ, այս անխիղճ եւ անիրաւ վաշխառուներու ձեռքէն մեր գիւղացի ժողովուրդն ե՞րբ պիտի ազատուի, որ թող կալի ցորեն, մեր արտերն եւս կը գրաւեն, որ մեր կեանքն ու ապաւէն է, եւ մեր Արճակ գիւղի գիւղացւոց սեպհական հողեր գրեթէ բաւական մասն գրաւած են: Այս բան երկրագործ ժողովուրդին մի սպանման խնդիր է: Եւ սորա միակ ճարն ու դարման հոգացող՝ տէրութեան արդար օրէնք, եւ իշխանական ձեռք միայն կարող են կարճել վաշխառուներու ձեռք, որ ծանրացած է երկրագործ պարտապան ժողովուրդին վերայ:

Արդէն քանի տարիներ յառաջ տէրութեան հոգածութիւն դարձաւ այս բանին վերայ: Ուստի գաւառագլուխ քաղաքներու մէջ փոխատուութեան սնտուկներ հաստատել տուաւ խիստ չափաւոր տոկոսով: Որպէս զի երկրագործ ժողովուրդ թողլով վաշխառուներ, փոխատուութեան կեդրոնին դիմէ: Միայն թէ այդ սնտուկներ բաւական պիտի լինի՞ն այն ահագին անհաշիւ բարդուած գումարներուն դէմ, որ այսօր բեռնաւորուած է Տէրութեան երկրին ընդհանուր ժողովուրդին թիկանց վերայ: Կալն ու շտեմարան աւիթ տուին ինձ, Թոռնիկ, այսքան միայն հարեւանցի կերպով խօսեցայ եւ բաւ է, թողունք այս խնդիրը մեծ տնտեսագէտներուն, թող մեծ մեծ հատոր գրքեր շարադրեն երկրին տնտեսութեան մասին, որ երկրին բարգաւաճման կեանքն է, զի հացով կապրի Տէրութիւն եւ տէրութեան հպատակ համայն ժողովուրդ:

---

ԺԴ.

## ՋՄԵՌՆ
### ԵՒ ԱՆԱՍՆՈՑ ԴԱՐՄԱՆ

Երբ կը վերջանան կալեր, աշուն կերթայ, ձմեռը կուգայ, ձիւներ կը պատեն մեր դաշտեր ու լեռներ· այնուհետեւ կը դադրին մշակութեան դաշտային գործեր, բոլոր անասուն-

*ներ ախոռներու մէջ կը կապուին մսուրներու առաջ՝ երբեմն երեք ամիս, եւ երբեմն մինչեւ չորս ամիս եւ աւելի եւս այնպէս կապուած կը մնան եւ պէտք է դարմանեմք զիրենք յարդով ու խոտով, որ իրենց աշխատութեան դուղնաքեայ բաժինն է, իսկ պատուական մասն մեզ կը մնայ, ցորեան, կաթ, մածուն, պանիր, իւղ եւ այլն:*

*Բայց գիտե՛ս, Թոռնիկ, ձմեռը նախապէս լեռներուն գլուխներէն կսկսի, մի առտուն երբ վեր կելլեմք կը տեսնամք, որ լեռներու գագաթներ ձիւնով ծածկուած են, եւ այդ մի նշան է, ցոյց կուտայ մեզ թէ ձմեռը մօտ է. լեռնէն պիտի իջնայ դաշտ, պէտք է էն ժամանակ գիւղական ժողովուրդ իւր ձմերան պատրաստութիւններ տեսնայ:*

*Դու գիտես, մեր գիւղացւոց տներ եւ ախոռներ, խախուտ եւ անհաստատ շէնքեր են, ամէն տարի աշնան պէտք է նորոգուին: Կը կարծե՞ս, Թոռնիկ, որ գիւղական ժողովուրդ լաւ հասկացած է աշխարհիս ունայնութեան կեանք, սորա համար երբէք չուզեր հաստատուն բան շինել: Ո՛չ, այդպէս մի դատեր, նախ որ իւր տնկած ու մշակած փայտ չունի. եթէ զոնէ՝ դրամ չունի, եթէ չինէ՝ շինելու կերպ չի գիտեր, եւ այս ամենուն դարձեալ պիտի խօսիմ իւր տեղը:*

*Մեր բնակած երկրի ձմերան սաստիկ կլիման է, որ պատճառ տուած է անասնոց համար ախոռներ շինել: Այս մասին անաշխատ եւ ազատ են հարաւային ջերմին գաւառներ, ուր ոչ ցուրտ կայ, եւ ոչ ձիւն. երկրագործ ժողովուրդին աշխատութիւն շատ պակաս է, ձմերան անասնոց դարմանին համար ոչ ինչ հոգ ու մտածութիւն չունին, տարին տասն երկու ամիս անոնց անասուններ կարածեն: Ուստի երբէք պէտք չունին, ոչ ախոռ շինելու եւ ոչ անասնոց համար դարման պատրաստելու, ոչ խոտ եւ ոչ յարդ. ուստի խոտ մշակելու, քաղելու եւ դիզելու երբէք պէտք չունին. ինքնաբոյս խոտ այնչափ առատ կը բուսնի, մանաւանդ Կիլիկիոյ լայնածաւալ խորադաշտ (*չուգուր օվայ*) որ աշնան ժամանակ կրակ տալով կը վառեն, որով աւելի կուժովնայ հողը, եւ հետեւեալ տարին խոտաբոյսն կրկնապատիկ կը զօրանայ:*

*Բայց մեր երկրի ձմերան ցուրտ եղանակն կստիպէ մեզ, անասնոց համար ախոռ եւ դարման պատրաստել: Դու կը տեսնաս, Թոռնիկ, ի՞նչ են մեր ախոռներ եւ ի՞նչ պիտի լինի անոնց պատրաստութիւն, եթէ առիքի մի քանի գերաններ փըտած են՝ պիտի փոխուին, եթէ մսուրներ քանդուած են՝ պէտք է շինուին, նոյնպէս եթէ ախոռին յատակներ դարուփոս եղած են, պէտք է սալարսով հարթել եւ այլն:*

*Շինական երկրագործ միայն այսքան կարող է պատրաստել իւր անասնոց ախոռ, նա որ իւր բնական խրճիթին համար հոգ չունի, միթէ անլեզու խեղճ անասնոց համա՞ր պիտի մտածէ. եւ իրաւունք ունի, զի մարդ իւր կեանքի չափով կը չափէ ամէն բան:*

*Թողունք ասոր, Թոռնիկ, խօսենք անասնոց դարմանին վերայ, եւ թէ գիտես, մեր խեղճ անասնոց դարման՝ չոր յարդն է, խոտ միայն ոչխարներուն կը պահեն, թերեւս երբեմն գարնան մօտ ղոմէշներուն եւ եզներուն առանձին՝ օրը միանգամ խոտ տան: Իսկ մատակ գոմէշներ, կաթնտու եւ յղի կովեր, հորթեր արժանի չեն խոտ ուտելու, ահա քեզ մի դրկանք. կովերն, որ կաթ եւ իւղ կուտան մարդոց սնունդին համար, հորթեր կուտան, որ եզ կը լինին երկրագործին համար, ոչինչ նրչանակութիւն ունին մեր Վանայ գիւղացւոց մօտ. դուցէ ուրիշ գաւառի գիւղացիք այսպէս չեն վարուեր: Դու տեսեր ես, Թոռնիկ, գարնան ժամանակ մեր դրկեալ կովեր այն վիճակին կը հասնին, որ չեն կարող նստած տեղերէն վեր կենալ այլ պոչերէն բռնելով վեր կը հանեն, յղի կովեր շատ անգամ ծնելու ժամանակ դժուարածին կը լինին: Դու տեսնաս այն ժամանակ տանտիկին խղճմտանքի կուգայ եւ մի ամանով լակ պատրաստելով կը բերէ ծննդաբեր կովուն: Ստոյգ է որ կինէր աւելի կուզեն չահել ու դարմանել կովերը. որպէս զի աւելի կաթ առնեն, մածուն չինեն, թանապուր եփեն, որ գիւղական կերակուրն է: Խեղճ կովեր ի՞նչ կուտեն որ կաթ տան. չոր յարդ ուտելով միայն կարո՞ղ են կաթ տալ: Մի սակառ յարդ մի քաչ կաթի հիւթը հազիւ ունի, եւ այս փորձած են վերլուծելով բընագէտ երկրագործք:*

*Կարգն եկաւ, պատմեմ քեզ, Թոռնիկ, ես լսած եմ որ Եւրոպիոյ երկրագործներ յարդ չեն կերցուներ տաւարներուն, այլ աւելի խոտ եւ ուրիշ բուսական բաներ: Հնարամիտ փորձերով այնպիսի գիւտեր գտած են անասուններ գիրցնելու համար, մարդ երբ լսէ կը զարմանայ եւ չի հաւատար, թէ մի եզ կամ կով մինչեւ եօթանասուն ութսուն լիտր կշռէ, այն ինչ մեր գերցած եզներ եւ կովեր շատ շատ հազիւ քսան կամ քսան հինգ քաչ կաթ կուտայ, դու մտածէ, թէ ինչ կուտեն, եւ օրը որչա՞փ քանակութեամբ բան կուտեն, ուրկից քան քաչ միայն կաթի հիւթ կը գոյանայ: Զարմանալին այն է, որ այդ կովեր թէ ամառ թէ ձմեռ ախոռին մէջ կապուած կը դարմանուին, կը թուի թէ այդ աշխարհ ամբողջ մշակուած երկիր է արօտավայրեր չիկան: Է՜, Թոռնիկ, ուրեմն մեր անասուններ գոնէ ամարան շատ երջանիկ են, որ հովասուն լեռներուն վերայ, ծաղկալից հովիտներու մէջ, կանաչազարդ մարգերուն վերայ ճեմելով կը կայտռին, հապա այն պաղուկ պաղուկ ջուրեր, որ կը խմեն, իրիկուն կը լինի գեղի նախիր դաշտէն տուն կը դառնայ, կովեր ծիծերնին լցած ծանր ծանր, հպարտ հպարտ շորորալով պռալով կը քալեն. ամէն մէկ իրեն տիրոջ տունը կերթայ. տանտիկին հարսներ կթոց կառնեն կը վազեն, կովը հանդարտ կը կենայ, եւ կսկսին կթել, խղճմտանքով տանտիկին գիտէ կթելուն չափը, բաւական բաժին կը թողու հորթկան համար. բայց կան անխղճմտանք կիներ, որ խիստ ճմլելով կը*

քամեն կովուն պտուկներ այնպէս, որ խեղճ որթկան շատ նըւազ բաժին կը թողուն:

Երբեմն, ծուռ կարմիր կովեր կան, որ շատ ուղիղ դատաստան կանեն երբ տանտիկին խստութեամբ կը ճմլէ պըտուկներ. կովը կը գայրանայ կը զարնէ կը թափէ կաթն, կըթոցն էլ հետ կը կոտրէ, եւ այսպէս կը տեսնայ իւր զրկուած հորթին դատաստան: Երանի՜ թէ մարդիկ օրինակ առնելով ծուռ կովու չափ դատաստան տեսնային: Դու կը տեսնաս եւ գիտես, Թոռնիկ, այնչափ առատ առատ արօտներու մէջ արածելուն, որչափ կաթ կուտան, հազիւ օրական մի քաշ, կամ շատ շատ երկու քաշ: Իսկ ձմերան երբ սոսկ յարդով կապրին, խիստ կը նուազի իրենց կաթը, ճորով հորթեր կը կշտացունեն:

Անշուշտ, Թոռնիկ, հետաքրքիր կը լինիս իմանալ, թէ երբ մեր կովեր դրախտի երկրին մէջ ամենազան ծաղիկներով եւ խոտերով կը պարարտին, ինչո՞ւ համար Եւրոպայի կովերուն պէս կաթնաբեր չեն, եւ կամ անոնց չափ միս չեն կապեր:

Խօսիմ քեզ, Թոռնիկ, նախ որ մեր կովեր ազնիւ ցեղերէ չեն, կը տեսնաս դու, փոքրիկ եւ գաճաճ բաներ են, մինչդեռ Եւրոպիոյ անասնապահ ամէն ջանք եւ հնարամիտ փորձեր ի գործ կը դնէ, ոչ միայն կովերուն, այլ եւ ամէն տեսակ անասնոց ցեղերը ազնուացնել. մեք ոչ այդ խելքն ունինք եւ ոչ այնչափ հոգ. մեք այնպէս կը հաւատամք թէ այդ մի բնական բան է որ մեր երկրի կովեր գաճաճ լինին: Երկրորդ՝ արուեստագէտէ լսած եմ թէ արօտական շրջող անասուններ ինչպէս են կաթնտու կովերը անդադար շրջելով, ծիծերուն աւելորդ կաթը ուրիշ որակութեան կը փոխուի կամ ջուր կը դառնայ: Արդեօք, եթէ սովորութիւն լինէր, ինչպէս ոչխարներ կէս աւուր պէրատեղ կուգան եւ կը կթուին, նոյնպէս կովերն էլ կըթուին, զուցէ ծիծերուն մէջ լցուած կաթ պարպելով մինչեւ իրիկուն կրկին անգամ լեցուէր եւ նորէն կթուէր: Սորա փորձ շատ դիւրին է, բայց մեր անդադար աշխատաւոր գիւղական ընտանեաց վերայ. այս նոր աշխատութիւն եւս կընա՞նք բարդել:

Թողունք այս, եթէ ասենք մեր գիւղացւոց, որ կթան կովերն ախոռին մէջ պահեն, զարնան կանաչ խոտ քաղելով կերցունեն եւ ամառն չոր խոտ: Լուռ կաց, Թոռնիկ, եթէ այսպիսի մի բան խօսենք բոլոր գիւղացիք կը խնդան մեր վրայ, քանի որ այնչափ ընդարձակ խոտաւէտ լեռներ, հովիտներ ունիմք, որ անմշակ մնալով միայն արօտական տեղեր են. յիմարութիւն չէ՞ այդ պատուական արօտները թողնել, զորս անասուն ինքնին իւր բերնով կարածայ առանց մեր աշխատութեան, ելնել զարնանէ խոտ կերցունել կթան կովերուն, քանզի խոտ միայն ձմերան պաշար է: Գիւղացւոց այս դատաստան շատ իրաւացի է, եթէ Եւրոպացի անասնապահ իւր կովեր այդ եղանակաւ կը պահէ նա պատճառներ ունի, նախ որ արօտատեղ չունի, երկրորդ՝ կովերու առատ կաթէն մեծ շահավաճառութիւն ունի,

ամէն օր ահագին քանակութեամբ կաթ կը վաճառէ, իսկ մեր գիւղացիք եթէ ունենան առատ կաթ ո՞ւմ պիտի վաճառեն, թէեւ կարող են իւղ շինելով քաղաքացւոց վաճառել, բայց այդ իրենց համար մի չնչին շահ է, եւ դու կը տեսնա՞ս, Թոռնիկ, շինականին խելքն ու հաշիւ, այն ինչ պտըտուր եւ փթիր, գեղէն բառնալով կը տանի քաղաք կը ծախէ եւ մեծ շահ կը համարի:

Դառնանք մեր առաջի նիւթին վերայ, Թոռնիկ, կաթնտու կովերու վերայ բաւական շատ խօսեցայ, եւ միտքս այն է որ ցոյց տամ քեզ, թէ մեր գիւղական ժողովուրդ անասնապահութեան մասին շատ ետ մնացած է. Նա չի գիտեր, որ անասնաբուծութիւն երկրագործութեան մի կարեւոր ճիւղն է. աւելի շահաւոր եւ արդիւնաւոր, որոց փտելոյն եւ դարմանին համար այնչափ տաժանելի աշխատութիւն պէտք չէ ինչպէս հոգածութեան, իւր շահն եւս թերեւս հողագործութենէն աւելի է: Ահաւասիկ քեզ մի կարճ հաշիւ տամ Թոռնիկ, որ աւելի լաւ համոզուիս:

Եթէ ունենամք հինգ կով, հինգ մատակ գոմէշ, հինգ ձի եւ հինգ էշ մատակ, ամբողջ կը լինին քսան հատ չորս տեսակէն, հաւանական է միշտ որ քսանէն տասն եւ հինգ հատ ծնին, եւ երեք տարիէն յետոյ՝ գործածելու կամ ծախելու վիճակին կը հասնին, եւ ամէն տարի ետեւէ ետեւ ծնելով որչա՞փ կը բազմանան նոյնչափ շահն եւս կը բազմապատկի: Ստոյգ է որ առջի տարիներ այնչափ մեծ շահ ցոյց չիտար այս փոքր դրամագլուխ, բայց այնպիսի ինքնաճուն դրամագլուխ մի է որ երթալով կաճի, եւ քանի աճի իւր շահ կը բազմապատկէ: Չկայ բնաւ աշխարհիս վերայ ուրիշ կերպ շահավաճառութեան այնպիսի շահ, որ հաւասարի տաւարաբուծութեան շահուն: Օրինակ եւ ապացոյց կուզե՞ս, Թոռնիկ, տես մեր դրացի քիւրդեր, որ քան զմեզ սրամիտ են այդմ մասին, եւ աւելի անասնապահութեան ոյժ կուտան քան սոսկ հողագործութեան, զի փորձով հասկցած են անոր արդիւնք: Տե՛ս հազարներով ոչխար կը պահեն, հարիւրներով սեւատաւար, բազմաթիւ ելխի ըսուած ձիեր եւ այլն: Մեք կը տեսնամք, ոչ կըզգամք եւ ոչ կը հաշուենք թէ կարգ մի ցեղապետ քիւրդերուն հարստութիւն՝ անասնապահութեան երեսէն է: Ասա, Թոռնիկ, նոքա հովասուն ընդարձակ արօտատեղեր ունին, պատեհութիւն ունին եւ ի ստիպել հարկին կարող են պաշտպանել իրենց անասուններ թշնամի հրոսակներէն, այո՛, Թոռնիկ, այդ եւս մի կարեւոր դիտողութիւն է, բայց ես կը խօսիմ սկզբունքի վերայ միայն, թէ անասնոց բուրդ աւելի շահաւոր է: Այդ ձեր ներկայի դիտողութիւն գուցէ այսօր կայ եւ վաղը կը վերջանայ. զի ժամանակ կերթայ եւ ժամանակ կուգայ, եւ կը բերէ իւր հետ խաղաղութիւն եւ ապահովութիւն շնորհիւ մեր աշխարհաշէն տէրութեան:

*է՛, Թոռնիկ, այս դասը շատ երկար եղաւ, եւ շատ տեղեր որոչ նիւթեր իրար խառնուեցան, այժմ պիտի խօսիմ քեզ ոչխարի շահաբերութեան եւ դարմանի վերայ:*

———o———

*ԺԵ.*

# ՈՉԽԱՐ

## ԵՒ ԻՒՐ ԱՄԵՆԱՇԱՀ ԱՐԴԻՒՆՔ

*Աշխարհի բոլոր ընտանի կենդանեաց տեսակին մէջ, ամենէն շահաւոր կենդանին ոչխարն է, որ մի տարուան շրջանին մէջ գրեթէ իւր գնոյն հաւասար արդիւնք կուտայ՝ մի մաքին մեր երկրի միջին գնով կարժէ յիսուն դահեկան: Մաքին կուտայ տարին մի գառն, որ կարժէ քսանէն մինչեւ քսան եւ հինգ դահեկան, երկու քաշ պանիր երկու քաշ իւղ կուտայ, այն եւս կարժէ տասն եւ վեցէն մինչ քսան դահեկան, մի քաշ եւս բուրդ կուտայ, էն էլ հինգ դահեկան հաշուելով ամբողջ ի միասին կը լինի քառասուն եւ մէկ դահեկան, թէ որ ժաժիկն էլ հաշուեմ կը հասնի մինչեւ քառասուն հինգ դահեկան:*

*Ոչխար, շատ օրհնեալ, հեզ, ընդասուն եւ անմեղ կենդանի է. անապատի ճգնաւոր Յովհաննէս Մկրտիչ երբ տեսաւ զՅիսուս Աստուծոյ գառն կոչեց զինքն: Հայր Աբրահամ երբ Իսահակ կապելով դրաւ սեղանին վերայ, որ պիտի մորթէր, հրեշտակ կանչեց զինքն, Աբրահամ դէպ ի վեր նայեցաւ տեսաւ որ պատուական մի խոյ կախուած է Սաբեկայ ծառէն, Աստուած ղրկեր էր այդ խոյ որ Իսահակի փոխան՝ զոհ լինի եւ Իսահակն ազատուի:*

*Ոչխար շատ զարմանալի աճուն կենդանի է, որովհետեւ փոքր եւ հանդարտ բնաւորութիւն ունի. հազարներով կարող ես պահել մէկ տեղ: Ոչխար թէ փափուկ եւ թէ դիմացկուն մի կենդանի է, ամառն շոգէն շատ կը նեղուի մանաւանդ երբ իւր արօտատեղ դաշտավայր լինի, իսկ հովասուն լեռներ եւ լեռնադաշտեր՝ ոչխարի համար արքայութիւն է: Այն գիւղեր որ դաշտավայրի մէջ շինուած են, եւ ընդարձակ մարգագետին ունին, ինչպէս մեր գիւղ շատ յարմարութիւն չունին ոչխար պահելու համար. մանաւանդ ջրոտ մարգագետիններ մի տեսակ հիւանդութիւն կը պատճառեն արածող ոչխարներուն եւ այս տեսակ հիւանդութեան* «քեափանակ» *կասեն, որ կարծեմ քիւրդերէն պէտք է լինի:*

*Իսկ լեռնային գիւղերն, որ ընդհանրապէս քիւրդերուն բնակավայրն է, ոչխար պահելու շահեկան շատ ընդարձակուած է. վասն զի քիւրդեր այս մասին մեզմէ աւելի խելացի*

են եւ շահադէտ: Հազարներով ոչխար կը պահեն եւ գիտեն քաջ դարմանել: Նախ որ իրենց արօտավայր տեղեր շատ լայնածաւալ են, խոտաւէտ լեռներ, ծաղկաբոյս հովիտներ, աղբիւրաշատ ձորեր՝ մեծ բաժին եղած է իրենց, ուր ամռան կարածեն ոչխարներ, եւ ձմերան համար, որչափ ուզեն կարող են խոտ քաղել պատրաստել մեծամեծ դէզերով, եւ միայն այն ժամանակ խոտ կուտան ոչխարին երբ ձիւն սաստիկ կուգայ, եւ կը ծածկէ բոլոր լեռներ եւ արեգդէմ պառեկներ, իսկ երբ ձիւն այնչափ շատ չի լիներ եւ քամին արեգդէմ լեռներու ձիւներ կը տանի, ոչխար կարող է արածել եւ կշտանալ, գիշերն եւս ոչխարներ լեռներուն ծոցաւոր տեղեր կը մնան ուր որ հով չի բաներ եւ արեգդէմ է: Այս բացօթեայ ջերմին տեղերուն քիւրդեր hաւշի կասեն: Ժամանակ կը լինի որ ոչխարի հօտեր, մինչեւ երեք օր կարող են անօթի մնալ հաւշիներուն մէջ մինչեւ որ ձիւնաբուք քամին անցնի: Սորա համար ասի քեզ թէ ոչխար ամրան շոգին չի դիմանար, բայց ձմրան ցուրտերուն դէմ կը մրցի: Տէր Աստուած հոգալով՝ այդ խեղճ կենդանին թանձր բուրդով նորա քամակ պատսպարեր է. միթէ այդ օրհնեալ կենդանւոյն բուրդով մեր թիկունք չի՞ տաքնար:

Իսկ մեք գիւղացիքս, որ մէն մի տան սակաւաթիւ ոչխարներ ունիմք, ձմերան գոմի մէջ կը պահեմք, եւ ցորեկներ դուրս հանելով ձեան վրայ խոտ կուտամք եւ նորէն կը գոմենք:

Ոչխարի գոմ իւր քանակութեան չափով պէտք է ընդարձակ լինի, այնպէս որ առանց նեղուելու նստեն, կանգնին. տանիքէն եւ պատերէն պէտք է երդիք ունենայ, վասն զի ոչխարին համար շատ պէտք է մաքուր օդ, նա սովորած է լեռներուն հովասուն օդ ծծել միշտ: Ոչխար մաքրութիւն եւ չորութիւն կը սիրէ, պէտք է միշտ գոմին յատակ չոր եւ մանր փայեն պարզել, զոր պէտք է ամրան հաւաքել ու պահել: Նմանապէս մեծ հոգատարութիւն պէտք է գոմի տանիքին համար, զի կաթիլք շատ վնասակար են ոչխարին:

Գարնան, Ապրիլ ամսոյ կիսուն կսկսին ոչխարներ հետըզհետէ ծնիլ, երբ դուրս եղած կարածան նորաբուսիկ եւ հին խոտերով: Նոր ծնած գառներ եւ ուլիկներ հովիւ իւր իշուկին բառնալով իրիկուան գիւղ կը բերէ: Մայիս ամսուան մէջ երբ արօտներ կը զօրանան կսկսեն ոչխարներ կթել: Կէսօրին հովիւ ոչխարներ կը բերէ պէրատեղ, կը տեսնաս որ գիւղի հարսներ եւ աղջիկներ կաթի կժեր եւ կթոցներ առնելով կուգան պէրատեղ, ամէն մէկ իւր ոչխարներ կը կթէ: Էդ երջանիկ կթուորներ գարնան գոյնզգոյն ծաղիկներով կը զարդարեն իրենց գլուխ եւ կաթի կժերուն բերան, կը շալկեն, ուրախ ուրախ երգերով գիւղ կը դառնան: Եւ երբ կիթն կը լմննայ, գառնարածն որ գառնուկներ եւ ուլեր առանձին տեղ պահած է թող կուտայ, դու տես էն ժամանակ մի զուարճալի տեսարան, ոչխարներ կը բառաչեն, գառներ կը մայեն, կը թուի թէ մայր ոչխար իւր գառնուկին հետ կը խօսի եւ գառնուկ մօր հետ. Հարիւ-

բուռ ոչխարներ գառներ կը խառնուին իրարու հետ, մինչեւ գտնեն գառներն իրենց բուն մայրեր, բուն մայրը երբէք օտար գառն չի ընդունէր իւր տակը: Այս զարմանալի է հովուին ճարտարութիւն, երբ գառն կը մոլորի չի կրնայ գտնել իւր մայրն, հովիւն իսկոյն կբռնէ գառնուկն եւ կը յանձնէ իւր մօր: Եւ ինչպէս կը ճանչնայ գիտե՞ս, բաւական է որ նա ծնած ժամանակ տեսնայ մի անգամ, գիտես թէ լուսանկարի պէս նորածին գառան եւ մօր պատկեր էնպէս կը տպաւորի նորա անմշակ մտքի մէջ, որ նա կարող կը լինի հարիւրաւոր ոչխարներու գառներն՝ առաջ եւ ետքը ծնած գոյնով իրարու նման սրատես աչքով որոշել իրարմէ: Այսպիսի հովիւներ շատ հազուագիւտ են, եւ պապօր կը կոչուեն, որ սրատես եւ ճարպիկ ասել է:

Զմոռնանք այս տեղ, Թոռնիկ, թէ հովուին համար շատ կարեւոր են գամբռ հուժկու գայլախեղդ շներ, շատ ճիշտ է թէ որ ասենք հովուին թիկնապահ եւ յառաջապահ զինուորներ են, որ հօտին առաջ երթալով կը դիտեն չորս կողմն: Եթէ մի գայլ տեսնեն հեռուստ, տես դու ինչպէ՞ս խմբովին կը յարձակին, մինչեւ հալածեն: Կը պատահի երբեմն եթէ հասնեն բռնեն գայլ եւ խեղդեն, այն օր հովիւն իւր քաջարի շներուն մեծ ճաշ կուտայ: Որ կը պատրաստուի հացով եւ իւղով, որուն ճմուռ կասեն: Իսկ շներու սովորական կերակուրն է կաթ, որ մի մեծ փայտէ կօտի մէջ կը լեցնէ հովիւն ազատօրէն, գարէ հացն էլ մէջ կը բրդէ, էդ քաղաքավար շներ չուրջ կը բոլորին եւ կուտեն առանց կռուի: Միթէ քաղաքի փողոցի անօթի շնե՞րն են, որ ոսկորի վերայ կռուեն: Հովուի շներ գիտես թէ մի վեհանձն բնաւորութիւն ունին, ոչինչ տեղ չեն հաջեր, բայց հօտին մօտ անծանօթ մարդ տեսնան իսկոյն կը յարձակին:

Վերջապէս, Թոռնիկ, գամբռ շներ շատ պիտանի են ոչխարի հօտին համար, եթէ չը լինին գայլերէն շատ վնաս կը հասնի ոչխարներուն եւ հովիւ միայն կարող չէ պաշտպանել հօտն: Մանաւանդ մշուշ եղած ժամանակն չգիտեմ, գրքեր հովուին անուն շատ կուտան. շներն ի՞նչու չեն յիշեր, որ հովուին օգնական զօրավիգն են: Մեր ոչխարի շներուն լաւ նայէ, Թոռնիկ, եթէ տկարանան ուժաթափ լինին այլ եւս կարող չեն գայլեր հալածել, նմանապէս հովուին եւս լիովին վճարէ եւ աւելի հոգայ ու երբեմն պարգեւներ տուր պապօր հովուին: Գիտե՞ս դու, ոչխարի հովիւ ժողովուրդի հովուին չի նմանիր, որ առանց վարձքի ժողովուրդ հովուէ ու համբերէ: Ինչպէս մեր գիւղերու քահանաներ:

Մոռցայ խօսել, Թոռնիկ, թէ ոչխարներուն ժամանակին աղ տալու է, ոչխարներ չափազանց աղ կը սիրեն, եթէ աղ չուտեն իրենց ոչ կաթին եւ ոչ միսին մէջ համ կը լինի: Թէպէտ այն գիւղեր որ Վանայ կամ Արճակու ծովուն մօտիկ են՝ աղի տեղ ծովու ջուր կը խմցունեն, որ վնասակար է, վասն զի այդ ծովերուն ջրեր աւելի բորակ ունին իրենց մէջ, եւ ոչ թէ զուտ աղ,

*Թող այս երբեմն եւս չափազանց խմելով կը վնասուին, ուստի աւելի լաւագոյն եւ օգտակար համարուած է աղն:*

*Հովուական կեանք շատ անմեղ եւ երջանիկ կեանք է, Թոռնիկ, թէ եւ մարդիկ կը կարծեն, թէ հովիւներ մի ապերջանիկ մարդեր են, մարդոց ընկերական կեանքէն զրկուած, անբան անասնոց հետ կապրին, միշտ ամայի լեռներուն վերայ կը շրջին, շատ տխմար ու բթամիտ կը լինին:*

*Այս կարծիք շատ սխալ է, հովիւներ իրենց արուեստին հմտութիւն քաջ գիտեն, ոչխարներու ամէն կերպ հիւանդութիւններ կը ճանչնան, գիտեն դեղն ու դարման, լեռներու մէջ դեռ անծանօթ մնացած ամէն ծաղիկներու, բոյսերու արմատներուն զօրութիւն փորձով գիտեն:*

*Հովուական կեանք հին նահապետաց կեանքի մի պատկերն է, ուր կը տեսնամք ոչ միայն այր մարդ, այլ եւ աղջիկներ ոչխար կարածէին՝ ինչպէս Ռեբեկայ, Ռաքէլ եւ այլն:*

*Այդ լեռնասուն հովիւներ, այո՛, միշտ երջանիկ են, երբէք հիւանդութիւն չը գիտեն. զի նոքա ամենամաքուր օդ կը ծծեն, եւ ի՞նչ է իրենց բնական ու սովորական կերակուր, գիտէ՞ս՝ մաքիներ կը կթեն. այն փրփրուն անխարդախ կաթին մէջ կը բրդեն հաց, պաղ աղբիւրի մէջ կը դնեն, դըգալով կուտեն. նոքա ուտելու ժամ ու ժամանակ չեն որոշեր. երբեմն գիշերապահուն կաթ կթելով կը դնեն պաղոց մինչեւ առաւօտ, կը նայես որ այդ կաթին երես մի մատ սեր կապած է, էդ էլ հովուին առաւուան նախաճաշիկն է: Հովուին խմած ջուրն, այն սառն–սատակ աղբիւրներու* զուլալ *ջրերն են. հովուին չունչ ամենազան ծաղիկներու բուրումն է եւ իւր ռնգունք նոցա հոտով կը զմայլի: Հովուին գիշերուան քուն շատ անդորր եւ անուշ է. նա չունի կակուղ անկողին, նա կը տառկի գետնախրշտի, մի քար գլխուն բարձ կը դնէ, եւ իւր թախսէ* կափանակ *վրան կը քաշէ, նա կը քնանայ եւ շներ պահապան կը լինին հօտին: Հովուին քուն շատ թեթեւ ու կարճ է. նա գրեթէ կիսարթուն կը ննջէ, զի միշտ իւր սրտին մէջ կասկած եւ երկիւղ ունի, թէ գայլեր գիշերուան պահուն յանկարծ կը յարձակին հօտին վերայ: Զարմանալի է երբեմն՝ հովիւ երազի մէջ գայլոց գիշերուան պահուն յանկարծ կը յարձակին հօտին վերայ: Զարմանալի է երբեմն՝ հովիւ երազի մէջ գայլոց վոհմակներ կը տեսնայ, նա կսկսի քունին մէջ ինքնախօս լինել եւ շներ քշքշել եւ մերթ եւս իսկոյն վեր կը ցատկէ շփոթուած:*

*Հովիւ գեղարուեստի դպրոցէն ելած չէ: Թոռնիկ, բայց ինքն բնական երաժիշտ է. նա իւր հովուական փողն առնելով կը նստի բարձր քարի վերայ՝ կսկսի փչել, եւ գիտէ՞ս որչա՞փ քաղցր եւ անուշ է այդ հովուական փող: Մերթ եւս հովիւն իւր փողով իբրեւ զօրավար մի հրամանատարութիւն կանէ իւր հօտին, ցրուածներ կը ժողվէ եւ իւր մօտ կը կանչէ. մանա-*

ւանդ աղ տալու ժամանակ· ի՞նչպէս հօտն միահամուռ կը դիմէ դէպի աղն, որոյ կարօտութեան դէմ հոգի կուտան ոչխարներ։

Ահա հովուին կեանքն ու գործն, շատ համառօտ նկարագրեցի քեզ, Թոռնիկ, բայց խնդիր մի կայ, մեք որ հովուին կեանք երջանիկ կը համարինք, բոլորովին ազատ աշխարհի աղմուկներէն, բայց տեսնանք, թէ հովիւն էլ ինքզինքը երջանիկ կը համարի՞ եւ իւր կեանքէն գո՛հ է։ Սորա համար խելացի մարդոց մի առակ միտքս կուգայ, խօսիմ քեզ, ուշադրութեամբ մտիկ արա։

Մի հարուստ հովիւ որ շատ ոչխարներու եւ տաւարներու տէր եղած է, մի օր ծովուն մօտիկ մարգագետնի վերայ, երբ իւր անասուններ կարածայ, աչքն դէպի ծով կը դարձունէ, կը տեսնայ ծով մեղմաշունչ զեփիւռէն ծածանելով կը ծիծաղի, վաճառականաց նաւեր առագաստներ պարզած ու լցուած դէպի նաւահանգիստ կուգան։

Մեր անփորձ հովիւն հրապուրուելով այս բաղդին տեսարանէն, մի ա՞խ կը քաշէ եւ կսկսի իւր բաղդէն դժգոհալ· երանի՜ ես էլ մի վաճառական լինէի, ծովով ու ցամաքով աշխարհէ —աշխարհ ճամբորդէի, լսէի, աշխարհի՞ բաներ հասկնայի, պատուաւոր վաճառական լինելով անուն հանէի։ Ի՞նչ է այս իմ կեանք· գիշեր ցորեկ անասնոց հետ կեանք կը վարեմ, աշխարհ բոլոր քաղաքակրթութեան ետեւ կը վազէ· ես դորա համ ու հոտ չ՚գիտեմ, իրաւ է որ տունս ամենայն բարութեամբ լի է, կը վայելեմ Աստուծոյ տուած բարիքներ, ոչինչ կարօտութիւն չունիմ։

Բայց միթէ մարդոյն համար միայն ուտել խմել բաւակա՞ն է— հարուստ եմ՝ այլ ինչ օգուտ, որ անծանօթ մնացեր եմ, իբրեւ մի սոսկական հովիւ, թէ մեռնիմ՝ յիշատակս էլ կը կորնչի· ո՛վ է տեսեր որ հովուի գերեզմանին վերայ կոթող մի կանգնեն· ես կուզեմ որ անունս արձանագրուի աշխարհի մեծագործ մարդոց հետ, ապագայ սերունդ կարդայ եւ յիշէ զիս։

Այս խաբուսիկ երեւակայութենէն խաբուեցաւ մեր հովիւ· գնաց վաճառեց իւր բոլոր անասուններ, մեծ գումար մի եղաւ· տուաւ գնեց բազում ապրանքներ, տարաւ նա, որ երթայ օտար աշխարհ վաճառէ։ Այս մեր անգիր, անհաշիւ հովիւն ուրախ–զուարթ նստելով նաւուն վերայ՝ ինքնին մտաւորական հաշիւ կանէր, այսպէս առի եւ այսպէս բարձր գնով պիտի ծախեմ, եւ այս առաջին անգամին այսքան պիտի շահիմ։

Մինչդեռ հովիւն իւր այս հաշուով կը զուարճանայր, ծովն էլ իւր բնութեան հաշիւն սկսեց· սոսկալի փոթորիկ հանեց, նաւուն տարաւ զարկաւ մի ցամաքի ապառաժներուն, խորտակեցաւ նաւ եւ բոլոր ապրանքներ թափեցան ի ծով, խեղճ հովիւն մի փրկութեան տախտակ գրկելով հազիւ ազատեցաւ, ելաւ ցամաք, եւ յետոյ մի ուրիշ նաւով դարձաւ եկաւ տուն՝ մերկ

կողոպուտ։ Առաջ տէր էր, յետոյ վարձկան ծառայ դարձաւ, եւ հետզհետէ անասնոց տէր եղաւ, հասաւ իւր առաջի վիճակին։ Մի օր գնաց դարձեալ այդ ծովեզրի արօտատեղն տեսաւ որ ծովն առաջուան պէս դարձեալ կը ծիծաղի իւր դէմը եւ նաւեր բարձուած կուգան։

Մեր հովիւ խելաբերելով կասէ, է՛, անիրաւ ծով, այլ եւս քո ծիծաղին չեմ հաւատար, տունս քանդեցիր։ Բայց ես էլ բան հասկցայ քո փորձանքէն, թէ հովիւ վաճառական չի կրնայ լինել, եւ պէտք է այսուհետեւ իմ վիճակովս գոհ լինիմ եւ փառք տամ Աստուծոյ։

Տեսա՞ր, Թոռնիկ, այս առակ թող քեզ խրատ լինի, չի լինի թէ դու էլ մի օր ունայն երեւակայութենէն խաբուելով ասես․ ոչխարներս ծախեմ, որ գութան տաւարներով ծախեմ, բոլոր արտերս ծախեմ, որ կը լինի մեծ գումար, երթամ ի Վան վաճառական լինիմ, թողնեմ գեղացիութիւն, եղնիմ քաղքցի․ գեղեցիկ տուներ շինեմ, երբեմն եւս երթամ Ըստանպոլ՝ գամ, մեծ վաճառականի վարկ ու համբաւ ստանամ եւ այլն։ Դու չ'գիտես, Թոռնիկ, դեռ անփորձ ես, թէ քաղաքային կեանքի փորձանք ծովու փորձանքէն էլ աւելի կործանիչ է, թէ նիւթապէս եւ թէ բարոյապէս։ Հեռո՜ւ, հեռո՜ւ քա՛ղաքէն եւ քաղաքացւոց կենցաղավարութենէն։ Ապահով կեանք գիւղն է, եւ արդար վաստակ մշակութիւն է, հողագործ՝ վաճառական չի լինիր, մաճակալն էլ ծովու նաւապետ կամ ղեկավար։ Խնամակալ Աստուած ամէն մարդ իւր տեղ դրած է, որ աշխատեն․ քաղքցին ի քաղաք, գիւղացին ի գիւղ, նաւապետն ի ծով, մաճակալն ի դաշտ։ Մարդիկ երջանիկ կը լինին, եթէ գոհ լինին իրենց գտնուած վաճակէն եւ չ'ձգտին այն բանին, որ իրենց ուժէն եւ չափէն վեր է, եւ չեն կրնար հասնել։ Այնպէս չի հասկնաս, Թոռնիկ, երբ դու յառաջադիմել կուզես, ես քար կը դնեմ ոտքիդ առաջ, որ անշարժ մնաս ուր որ ես։ Ո՛չ, իմ միտքս այն է, որ գիւղական կեանքի մէջ յառաջդիմես, տանուտէր լինիս, ագարակի տէր լինիս, հազար–հազար ոչխարներ ունենաս, բայց չը թողուս գիւղն ու դաշտ եւ միշտ յիշելով մեր առակ՝ ծովեզրին չը մօտենաս։

Աւարտելով այս երկար դաս, զոր խօսեցայ քեզի, ոչխարների խնամոց եւ դարմանի վերայ, այժմ պիտի խօսիմ անասնոց հետ գթութեամբ վարուելու մասին։

———o———

## ԺԶ․

## ԳԹԱՍԻՐՈՒԹԻՒՆ
### ԸՆՏԱՆԻ ԱՆԱՍՆՈՑ ՎԵՐԱՅ

Գիտենք, Թոռնիկ, եւ սուրբ Գիրք կը պատմէ մեզ, թէ Տէր Աստուած երբ ստեղծեց բոլոր անասուններ, մի հանդէս

*կազմեց, բոլոր կենդանիներն բերաւ Ադամ Թագաւորին առջեւէն կարգ – կարգ անցուց, ցոյց տալով թէ այս ամէն քո իշխանութեան ոտքի տակ դրած եմ: Ինչպէս Դաւիթն էլ կը խօսի. «Զամենայն ինչ հնազանդ արար ի ներքոյ ոտից նորա զխաշն՝ եւ զարջառ եւ զամենայն ինչ»:*

*Այս անասնոց մի մասն ընտանեցած են մեզ, եւ մեր բոլոր աշխատութեանց մէջ կը ծառայեն, կը հնազանդին ինչպէս որ ուզենք: Մի մասն էլ կայ, որ ազատ եւ ապստամբ են մարդոյն դէմ. զի մարդէն աւելի հզօր եւ պատառող գազան են, որ հեռաւոր անապատներ եւ աւելի անտառներու մէջ կը բնակին՝ եւ ստեղծող Աստուած չի մոռնար անոնց, կերակուր կուտայ, Աւիւծի կորիւններ կը մռնչեն, եւ Աստուծմէ իրենց կերակուր կը խնդրեն: Եւ ի՞նչ է իրենց կերակուր. տկար կենդանիները, զորս պէտք է աշխատութեամբ որսան, ուտեն եւ ապրեն: Այս աշխարհի մի բնական օրէնքն է, որ տկարներ ուժովներուն կերակուր լինեն: Թողունք ցամաքի աշխարհ, ծովու աշխարհին մէջն էլ այդ օրէնք կը տիրէ. կը տեսնաս որ փոքրիկ ձըկներ, մեծ ձկներուն միշտ կերակուր կը լինին:*

*Բայց չը կարծես, Թոռնիկ, թէ այդ անընդել եւ անզուսպ գազաններ բոլորվին ազատ են մարդոյն տիրապետութենէն. ո՛չ, մարդ իւր ճարտար հնարամտութեամբ կարող կը լինի որսալ այդ կատաղի գազաններ եւ վանդակներու մէջ փակել, եւ այն աստիճան կրթել զանոնք, որք իբրեւ մանուկ մի կը հնազանդին իրենց կրթող տիրոջ:*

*Իսկ մեր ընտանի անասուններ այնչափ ընտելացած են մեզ, որ մեզ հետ կապրին, գրեթէ ընտանեկից կը համարուին, եւ մեր բոլոր թէ մշտական աշխատութեան եւ թէ ուրիշ բաներու մէջ աշխատակից են:*

*Թէպէտ մեք մեր անասնոց տէր եւ իշխան ենք, կը ծեծենք կը չարչարենք եւ անպատիժ կը մնամք, թէեւ երկրին օրէնք անասնոց չարչարելու համար սահմանեալ պատիժ ունի: Թող օրէնք, Եւրոպային մէջ յատկապէս* անասնոց պաշտպան *ընկերութիւն կայ, որ կարգուած պաշտօնեաներ ունի, ոստիկանաց պէս կը հսկեն, եթէ տեսան մէկն որ անգթութեամբ կը վարուի ո՛ եւ իցէ անասնոց դէմ՝ իսկոյն կը բռնուի եւ իւր պատիժ կը կրէ: Եթէ տեսնան որ կառավար մի իւր ձիերուն դարման խնայելով վատուժ եւ տկար պահած է, այնպիսին իսկոյն պատիժ կը կրէ եւ կը տուժէ, իսկ այն որ իւր բեռնատար ձին այնչափ լաւ դարմանած է, որ ահագին պալեաներ բարձուած մի սայլ՝ միայն կը քաշէ, պաշտպան ընկերութիւն՝ այնպիսի կառապանաց պարգեւ եւ մրցանակ կուտայ:*

*Մեզ համար այդ բան չկայ՝ ոչ պատիժ եւ ոչ մրցանակ, բայց մեր մրցանակ կամ պարգեւ մեր շահն է, վասն զի մեք մեր աշխատաւոր անասուներ որչափ լաւ դարմանենք, առողջ եւ ուժեղ պահենք, այնչափ աւելի շահ կը լինի մեզ նոցա կրկնապատիկ աշխատութենէն: Իսկ երբ մեր անասուններ տկար*

*եւ անուժ լինին, մեր վարուցան եւ ամէն ինչ տկար կը լինի, այդ շատ յայտնի բան է, երբ գործիչներ տկար լինին, գործն ալ հետեւապէս տկար կը լինի։ Օրինակ աչքիդ առաջ է, Թոռնիկ․ այն գութաններ, որ ուժեղ գոմէշներով ու եզներով լծուած են, որչափ աւելի տեղ կը վարեն, քան այն գութան, որոյ անասուններ նիհար եւ ուժաթափ լինելով, մի օրավար տեղըն հազիւ երկու օր կը վարեն։*

*Եթէ միայն մեր շահ նկատելով դարմանենք անասուններ, այդ մի առաքինութիւն չէ, այլ արդարութիւն կը պահանջէ որ բնականապէս գութ ունենանք անասնոց վերայ, վասն զի անասուններն ալ աշխարհիս վերայ մեզի պէս ցաւակցութիւն ունին, կարօտ են մեր օգնութեան։ «Արդարն ողորմի անասնոյ իւրում, աղիք ամբարշտաց անողորմ են», կը խօսի սուրբ Գիրք։ Տէր Աստուած սուրբ անասուններ տուաւ մարդոց, որ մորթեն եփեն ուտեն, բայց օրէնքով կարգիլէ, որ չզենուն զգառն ի կաթն մօր։ Երբ նորա մայր իւր նորածին գառնուկին վերայ կը գորովի, որչա՞փ անգթութիւն է կաթնկեր գառնուկին արիւնն կաթին հետ խառնել, որով խեղճ մայր բնական գթով մորմոքելով կը բառաչէ եւ գառնուկ կը կանչէ։ Անասնոց բնական գութ ժամանակաւոր է․ այնչափ կը տեւէ՝ մինչեւ նորածին գառնուկներ եւ որթիկներ կաթէն կտրուին, իսկ մարդկային ծնողական գութ մինչեւ ի գերեզման կը տեւէ։ Եւրոպիոյ քաղաքակիրթ աշխարհ այդ հաշիւ չունի, կաթնկեր գառն ալ, հորթն ալ, ի միասին կուտէ․ ոչ Մովսէսին մտիկ կուտայ եւ ոչ բնական գթոյն։ Բայց զարմանալի է, երբ օրէնք կը դնէ որսորդներուն համար, որ թռչուններուն ձագ հանած ժամանակ որսորդութիւն չանեն։ Այդ ինձի էնպէս կը թուի․ այնչափ գթութեան համար չէ, որչափ այն հոգածութեան համար թէ վաղուան զինչ կերիցուք, մի գուցէ այդ համադամ թռչնոց կերակուր պակսի ազնուականաց սեղանէն։*

*Գթութիւն այնչափ մեծ առաքինութիւն է, Թոռնիկ, որ ոչ միայն զգալ կուտայ մեզ խնայել եւ գթալ մեր ընտանի անասնոց վերայ, այլեւ նոյն իսկ պատառող գազանաց վերայ անգամ կը շարժէ մարդոյն սիրտ։ Այդ մտքին յարմար մի սիրուն առակ խօսիմ քեզ, որ գթասիրութեան մի ճիշտ օրինակ է։*

*Մի մատաղ եզնիկ, իւր բնակած այրին մէջ ծնած ժամանակ, չգիտեմ ինչպէս կը լինի՝ իւր ձագեր կը մեռնին, խեղճ եզնիկ կը թողու իւր մեռած ձագերն, կելնէ կը շրջի լեռան անտառին մէջ, մի որջի պատահելով՝ կը տեսնայ որ երկու հատ գայլու նորածին լակոտներ անօթի նուաղած ինկած են։ Գուցէ իրենց մայր ոչխար ուտելու երթալով՝ շներէն խեղդուած էր, լակոտներ անմայր մնացեր էին։ Գթասիրտ եզնիկ մայրենի գորովով խղճալով գայլու լակոտներուն վերայ, ի՞նչ կը լինի ասաց, որ ես այս անտէր լակոտներ սնուցանեմ, քանի որ ծծերս կաթով լեցուած են, մինչեւ որ մեծնան։*

*Էդ անտառի մէջ մի դրացի ճգնաւոր կար, գիտես, Թոռ-*

նիկ, ճգնաւորներ աշխարհէ հեռացած աղօթասէր մարդիկ են, բայց ծնողական գթոյ քաղցրութեան շատ ճաշակ չունին: Է՛, անխելք եզնիկ, կասէ ճգնաւոր. կը զարմանամ, դու ի՞նչպէս այդ գայլոյ լակոտներ կը սնուցանես, չե՞ս գիտեր, որ դոքա մեծնան գայլ կը լինեն եւ գուցէ առաջին անգամ ձեր արիւն ծծեն: Էդ բան ես չեմ մտածեր, այլ կը մտածեմ միայն բարիք մի անել, կը պատասխանէ բարեսիրտ եզնիկ, ի՞նչ անեմ, ես կաթ ունիմ, ձագ չունիմ, այս խեղճեր մայր չունին կաթի կարօտ են, պէտք է մայր լինիմ, հոգամ զիրենք: Է՛, ճգնաւոր եղբայր, միթէ՞ մարդոյ ծնածներն ամէնք բարի կը լինին, եւ երբ մեծնան գայլէն աւելի չարագոյն չե՞ն: Այս մի առակ է, Թոռնիկ, ուրիշ մի եղած բան պատմեմ քեզ, զոր ես աչքովս տեսայ, եւ դու տես թէ ինչպէս գթասիրութիւն երբեմն զմարդ ծայրայեղութեան կը տանի, գիտենք, թէ մարդ մարդոյ վերայ կամ ընտանի անասնոց վերայ գթալ սովորած է, բայց չենք տեսեր թէ մարդ գայլոյն գթութիւն անէ, որ միշտ ոչխարներ կը գիշատէ:

Հայրիկ, երբ Հովիւ ընտրուեցաւ Մշոյ վիճակին, Վարագէն Ս. Կարապետ երթալու ժամանակ, ես էլ հետն էի, գնացինք հասանք Ջիարէթ գիւղ, որ քիչ հեռու է Գլակայ վանքէն: Էդ գիւղի մարդիկ շատ պատիւ արին Հայրիկին, մեղրով սեր, մեղրով կարագ, խորոված գառն կերանք ու կերանք, էրնէ՛կ էն աւուր:

Ճաշէն յետոյ տեսանք էդ գիւղի կտրիճ երիտասարդներ մի ողջ գայլ բռնած են, բերնին ու ոտքերուն մէջ փայտ դնելով պիրկ կապած՝ ինչպէս բերին ձգեցին Հայրիկին առաջ: Է՛, Հայրիկ, ասին մեր բախշիշ տուր, այս միջոցին էդ խեղճ գայլ աչքեր դարձուց դէպ ի Հայրիկն, էն ժամանակ ես տեսայ որ Հայրիկին շատ դժար եկաւ, եւ շատ զգացուեցաւ, հարցուց թէ ո՞ւր տեղ բռնեցիք այս գայլ, ասին թէ գեղին մօտեր. եկեր էր պահուըտեր էր գոմին պատի մի քունջ, որ գիշեր ելնէր ոչխար գողնար ուտէր: Հայրիկն ասաց. միթէ՞ ոչխար ձեզի համար հալալ է, գայլու համար հարա՞մ է. Աստուած գայլն էլ ոչխարին հետ ստեղծեր է եւ իւր գլամաթ տուեր է. դուք ազատ կերպով ոչխարներ կը մորթէք կուտէք, ի՞նչ կը լինի որ այդ խեղճ լեռան աղքատին էլ բաժին տաք, դուք զրպարտութիւն կանէք այս գայլուն վերայ, նա չէր եկեր ոչխար գողնալ, այլ լսեր էր թէ գեղ խաչ օգնեա մատաղ գայ, եկեր էր մատաղ ուտելու. ո՞վ գիտէ քանի՞ օր անօթի մնալով ուժէ ինկած, հազիւ ինքզինք ձգեր է գեղն, դուք վրան հանելով բռներ էք, եւ որպէս թէ մեծ քաջութիւն արած էք, բախշիշ կուզէք: Մեծ բախշիշ կուտամ ձեզ, տարէք գեղէն դուրս արձակեցէք խեղճ գայլ, թող երթայ իւր բանին: Այս որ լսեցին գեղացիք, սկսեցին մռմռալ իրարու հետ, ծօ մարդիկ, էդ Հայրիկ հովիւ եկած է մեր երկրին՝ մեր ոչխարներ գայլերո՞ւն պիտի տայ, մեք հազար ճորով գայլ մի բռնեցինք, նա կասէ

*արձկեցէք: Հայրիկն այս տրտունջն լսելով՝ սկսեց իր գայլու առակներ: Մտիկ արէք գիւղացիք, ձեզ մի առակ խօսիմ: Մի գայլ եօթն օր եօթ գիշեր սարեր ձորեր շրջելով բան մի չինկաւ ձեռք, տեսաւ որ անօթի պիտի մեռնի, ասաց ուշիկ ուշիկ երթամ մօտի գեղն, գուցէ Աստուած մի գըմալթ տայ ինձ: Խեղճ գայլ խելամաղ իրիկուան մութին կը հասնի մի գիւղ, մի գոմի պատի տակ կը կծկուի: Էդ գոմի պատի ճեղքէն գայլ դէպ ի ներս կը նայի, որ ճրագներ կը վառուին, ոչխարներ կը մորթուին, շներն էլ մի կողմ շնթռկած եւ աչքերնին տնկած իրենց բաժինին կսպասեն:*

*Այստեղ գայլուն սիրտ դառնացաւ եւ սկսեց ինքնին ասել, է՛, անիրաւներ, այդ բան եթէ գայլն անէր, ի՞նչ վայնասուն կը հանէիք. դուք, հովիւներ շներով բրերով գայն պիտի հալածէիք, ես արդ գրկուած ու նուաղած աչքով կը դիտեմ ձեր այդ արածներն, գայլու անուն ելած է, ոչխարներ դուք կուտէք, դուք յիրաւի կերպարանքով մարդ էք, այլ բարքով մարդագէլ էք, դուք չէք տեսնար այն մեր դրացի մարդագէլեր, որոնք խումբով կը յարձակին եւ ձեր ոչխարի հօտեր պըռանելով կը տանեն, ձեր եւ ձեր շներու քաջութիւն միայն խեղճ գայլերու վերայ կը փորձէք, որոնք շատ սակաւապէտ եւ ձեզմէ աւելի խղճմտանք ունին:*

*Գայլու այս գանգատն ու դատաստան շատ իրաւացի է, սիրելի գիւղացիք, գայլերն էլ պիտի ապրեն աշխարհիս վերայ, դուք կուզէք նոցա սերունդ հատցունել, պէտք է գիտնաք որ գայլեր ձեզ համար շատ օգտակար են, եթէ գայլերուն ահ չըլինի, դուք երբէք ձեր ոչխարներ չէք պաշտպաներ:*

*Հայրիկին առակ եւ այս խօսքեր բաւական դպաւ գեղացւոց սրտին: Երիտասարդներ ասին, Հայրիկ, ինչպէս կերեւայ՝ դուք շատ կը գթաք այս կապուած գայլուն վերայ. մեք քո խաթեր համար կարձակենք ազատ կը թողունք, մեր բախշիշ տուր: Առին զբախշիշ, խաբեցին զՀայրիկ, խեղճ կապուած գայլն տարին գեղէն դուրս, շներ թող տուին վերան խեղդեցին, գայլու փոստիկ հանին: Շատ լաւ արին գիւղացիք, Հայրիկ ելեր է ներողութեան ճառ կը կարդայ գեղի ոչխար ուտող գայլուն:*

*Այս պատմութիւն առի քեզ, Թոռնիկ, բայց դու զգոյշ կաց, ճիշդ խրատ առնելու օրինակ չէ. միայն պատմեցի քեզ, որ լաւ հասկընաս թէ գթասիրութիւն որչա՞փ կը տիրէ մարդոյն սրտին վերայ, որ պատառող գազան անգամ խնայել կուզէ:*

*Հապա մեր ընտանի աշխատաւոր անասուններ ո՞րչափ արժանի են մեր գթասիրութեան: Խստասիրտ եւ անողորմ են այն երկրագործներ, որ անասուններ չարչարելով տանջելով հաց կը վաստկին. սորա համար է որ այնպիսիներ կուշտ հաց չեն ուտեր, միթէ՞ անասնոց աղաղակն ու հեծեծանք չի՞ հասներ երկինք, դու մի կարծեր թէ անասուններ իբրեւ ոչինչ եւ չըքոտի գումարուած են Աստուծոյ առաջ: Դու չե՞ս կարդացեր*

Յովնան մարգարէի գիրք․ Տէր Աստուած ամբարիշտ Նինուէացւոց խնայած ժամանակ անասնոց էլ խնայեց հաւասար այնչափ տղայոց, որ չգիտէին աջն ու ձախն:

Խիստ կը գորովիմ Թոռնիկ, գութս կը շարժի, երբ կը տեսնամ, որ մեր գիւղական մշակ ժողովուրդ շատ անխիղճ եւ անխնայ կը վարուի իւր ընտանի լծկան անասնոց հետ, միշտ խարազանակոծ կը տանջէ, այնպէս որ անմռունչ անասնոց քամակներու վերայ հարուածոց գծեր շերտ–շերտ կերեւան: Եթէ Բաղամու խօսուն իշու պէս Աստուած հրաշքով բանար անասնոց լեզուն, ի՞նչ աղաղակ ու գանգատ պիտի բառնային մարդոց անգթութեան համար: Այլ միթէ նորա անմռունչ հեծութիւն ու բառաչն մի աղաղակ չէ՞: Հնձող մշակին զրկանաց բողոքն կը հասնի երկինք, մշակին աշխատակից զրկեալ հարուածեալ անասնոց բողոք երկինք չի՞ հասնէր:

Երբեմն կը տեսնամ, խեղճ անասուն ուժաթափ լինելով լուծն ի վզին այնպէս ակօսին մէջ կը թաւալի, տես դու էն ժամանակ որչա՞փ խարազան պիտի ուտէ, հարուածին չը տոկալով՝ ճարահատ կը կանգնի, քիչ մի տեղ կերթայ եւ դարձեալ կը թաւալի: Անգութ հերկագործ չի մտածեր՝ պահ մի թողում այդ խեղճ անասուն, թող երթայ արածայ հանգստանայ եւ ապա բերեմ լծեմ: Անգութ մարդիկ էլ կան, որ խարազանի կամ դալար ճիպոտի տեղ, չոր փայտ կը գործածեն․ էն ժամանակ ոչ միայն կաշին ու միս, այլ եւ ոսկորներ անգամ կը ջախջախուին անլեզու անասնոց:

Ջիապան կամ իշապան մարդիկ եւս շատ չարաչար կը վարուին այդ բեռնատար անասնոց հետ, երբեմն ծանր բեռներ կը բառնան իրենց ուժէն վեր: Եթէ պատահի որ խեղճ անասուն բեռան տակ ճարահատ լինելով նստի, կամ դիպուածով իյնայ, ի՞նչ կանեն, գիտե՞ս․ անգթաբար կը ծեծեն բեռան տակ, որ ծանրութեան տակ ճնշուած անասուն ինքնին կանգնի, այս պատճառաւ թշուառ անասուն կը փտանգուի կամ մէջքէն եւ կամ ոտքէն:

Կը տեսնա՞ս, Թոռնիկ, թէ մարդոց անգթութիւն որչա՞փ կը ծանրանայ խեղճ անասնոց վերայ, պաշտպան ու փաստաբան չունի, միայն խիղճ ու գթասիրութիւն է անասնոց պաշտպան, այդ եւս շատ հազուագիւտ է մարդոց սրտին մէջ:

Հայրս կը պատմէր ինձ, Թոռնիկ, թէ ժամանակաւ մի կառավարիչ եղեր է ի Վան․ էդ մարդ բնականապէս մեծ գթասիրութիւն ունէր անասնոց վերայ․ եթէ տեսնար մի մարդ որ չարաչար կը վարուէր անասնոց հետ՝ իսկոյն կը պատժէր զայն եւ յանցանքին համեմատ դուարճալի պատիժներ կուտար:

Մի օր քաղաքէն ելնելով դէպի Արտամետու աւան կերթայ, կը տեսնայ որ երկու ձիապաններ մի աղբիւրի գլուխ հանգիստ նստած հաց կուտեն, իրենց ձիեր էնպէս բեռան տակ կեցած են, իսկոյն հրաման կանէ որ ձիերուն բեռներ վար իջեցնեն, էդ բեռներն էլ գարի են եղեր, ձիերու տոպրակներ բաւակա-

նին լեցնելով, կախել կուտայ ձիերու գլխէն, էդ բեռներն էլ մէկ–մէկ թակ մարդոց կռնակ կը դնէ եւ կսէ մինչեւ ձիեր իրենց գարին ուտեն, դուք էլ պէտք է ոտքի վերայ կենաք էդպէս:

Մի օր եւս քաղաքի դռնէն դուրս ելած ժամանակ, կը տեսնայ որ երկու մարդիկ մէկ ձիու վերայ նստած դէպ Այգեստան կերթան, այս բան կառավարչի աչքին շատ արտառոց կերեւայ, հրաման կանէ որ երկուքէն մէկն ձիէն վար իջնայ եւ իսկոյն կը դրկէ բանտ. միւսին կսէ դու ծեր ես, քեզ խնայեցի, գնա լուր տուր ընկերիդ համար թէ բանտ տարին եւ տասն օր իր պատիժ պիտի կրէ:

Մի օր դարձեալ քաղաքէն դուրս շրջած ժամանակ կը տեսնայ մի մարդ մի տոպրակ թեւին վերայ ձգած՝ կերթայ, բայց շատ կը զարմանայ, երբ այդ տոպրակէն կատուներու ձայներ կը լսէ, մօտենալով կը հարցնէ ի՞նչ կայ այդ տոպրակին մէջ, մարդն կը չուարի ժխտել, որովհետեւ կատուներու ձայներ կը լսուին. Աղա, կսէ, գող կատուներ են, պիտի տանեմ ձգեմ քաղաք: Ա՛յ անպիտան մարդ, կսէ կառավարիչ, ես գողեր քաղաքէն դուրս կը հալածեմ, դու կատուներ քաղաք կը տանես: Հրաման կանէ խեղճ կատուներ տոպրակէն դուրս կը հանեն եւ այդ տոպրակ անցունել կուտայ մարդուն գլուխ, մի ոստիկան ձեռքէն բռնելով դէպ ի բանտ կառաջնորդէ. էս խայտառակութիւն կը տեսնան անցնող դարձող մարդիկներ. միայն թէ գլխուն տոպրակի շնորհիւ չեն կարող ճանչնալ: Իսկ ազատուած կատուներ ուղղակի դէպ ի տուն կը դառնան, լուր կը տանին տնեցւոց, թէ իրենց տէր բանտ տարին:

Բայց դու հարցո՛ւր, Թոռնիկ, թէ այդ գթասէր մարդ միայն չարչարուած անասնոց վերայ գութ ունէր եւ այդպէս անաչառ դատաստան կը տեսնար, չէ՞ նոյն գութ եւ անխտիր դատաստան զրկեալ մարդոց համար էլ ի գործ կը դնէր:

Այո՛, Թոռնիկ. երբ մարդ անասնոց վերայ գութ ունենայ, շատ բնական է, որ իւր համացեղ ընկերին վերայ աւելի եւս կզգայ եւ գթասիրութիւն կը շարժի: Այլ ով գիտէ, աշխարհ է, զուցէ կան այնպիսի մարդիկ էլ, որ արտաքուստ բարեսիրտ ձեւանալով, կատուի դատաստան կը տեսնան, որպէս զի ցոյց տան թէ արդարասէր են, իսկ բողոքող զրկեալ մարդու դատաստան ի բաց կը թողուն: Ինչպէս Քրիստոսի ժամանակ կեղծաւոր փարիսեցիներ ուղտն կուլ կուտային և մժղուկներ գինու երեսէն կը քամէին. այսինքն Աստուծոյ օրինաց արդարութիւն զանց կանէին եւ փոքրիկ աննշան բաներն արդարութիւն կը համարէին:

Մարդիկ կը կարծեն, Թոռնիկ, որ դատաւոր Աստուած միայն զրկեալ մարդոց համար վրէժխնդիր կը լինի: Ո՛չ. ես լսած եմ. եւ գրքերու մէջ եւս կարդացեր եմ, թէ անխօս անասնոց բողոքն եւս կը հասնի Աստուծոյ առաջ. եւ Աստուած դատաստան տեսնալով վրէժխնդիր կը լինի:

Ասորի սուրբ Եփրեմ խուրին ինքնին կը խոստովանի իւր տղայութեան յանցանք, որ գրուած է իւր վարուց պատմութեան մէջ:

Կասէ թէ ես պատանեկութեանս ժամանակ շատ ստահակ անհանդարտ եւ չարաճճի մի պատանեակ էի, մի օր դաշտի մէջ մի յղի կով տեսայ, որ նստած էր, պիտի ծնէր. ես քարաձգութեամբ հալածեցի խեղճ կով, չը թողի որ նա հանգիստ ծնէր իւր հորթիկ. այնչափ լարեցի ետեւէն, մինչեւ տարի անտառին մէջ: Կովն իւր հորթ նետեց եւ չնչասպառ անկաւ գետին. մնաց այնպէս, գազաններ գիշեր կովն էլ հորթն էլ կերան: Էդ կով մի աղքատի կով էր. բանը ծածուկ չը մնաց, իմացուեցաւ, [illegible] տարին բանտ դրին. էդ բանտին մէջ ուրիշ յանցաւորներ էլ կային, որ իրենց մեղքեր իրարու կը պատմէին. մէկն կասէր ես մի անմեղ մարդ սպանեցի. միւսն կասէր ես մեծ վաճառական մը կողոպտեցի եւ զինքն սպանեցի եւ այլն: Զիս էլ հարցուցին, տղա՛յ, քո մեղքն ի՛նչ է. ես պատմեցի կովու անցքը, օ՛, ասին, էդ էլ մե՞ղք է: Վերջապէս ոճրագործ մարդոց դատաստան տեսնուեցաւ տարին կախեցին: Իսկ իմ տղայութեանս խնայելով զիս մահապարտ չդատեցին, բայց լաւ մի ծեծելով արձակեցին բանտէն. յիրաւի քանի ամիսներ բանտին մէջ չարչարուեցայ: Երբէք քուն չունէի. միշտ հալածեալ կովու պատկեր աչքիս առաջ կուգար:

Մտածեցի որ աղքատի կովու համար պէտք է յաւիտեան ապաշխարիմ. ուստի թողի տուն, հայր, մայր եւ ամէն ինչ ասի երթամ սար ճգնաւոր լինիմ, անգթութեան ու գրկանաց մեղքերս քաւիմ: Եւ ես այս փորձանքով զգաստացայ եւ խելամուտ եղայ Աստուծոյ դատաստանին, որ անասնոց համար էլ վրէժխնդիր կը լինի, երբ մեք անգթութեամբ վարուինք անխօսուն կենդանեաց հետ:

Այս պատմութիւն թող խրատ լինի քեզ ,Թոռնիկ, երբէք մտքէդ մի հաներ. եւ միշտ յիշէ Սուրբ Եփրեմի պատմութիւն եւ հալածեալ կովու դատաստան. գիտնալով եւ հաւատալով թէ Արդար Աստուած հաւասարապէս դատաւոր է ինչպէս մարդոյն՝ նոյնպէս եւ գրկեալ անասնոց:

---

ԺԷ.

# ՄՇԱԿՈՒԹԻՒՆ ԾԱՌԱՏՆԿՈՑ

Սիրելի Թոռնիկ, եթէ աստի հազար – հազար տարիներ առաջ ծնած լինէինք, պիտի տեսնայինք այս մեր բնակած երկրագունդ բովանդակ անտառներով զարդարուած: Եւ ո՛վ էր տնկեր. Արարարիչ Աստուած, որ ասաց եւ եղեւ, ոչ միայն ծառեր, այլ եւ ամենազան բոյսեր ինքնին երկրի ծոցէն վեր

բուսան: Տես այն մթնագոյն լեռներ եւ այս ընդարձակ դաշտեր, հովիտներ, ձորեր, գուցէ ժամանակով խիտ անտառներով լցուած էին:

Կը թուի թէ հին նախադարու մարդիկ, որ միայն վայրենի որսորդութեամբ կապրէին, գուցէ մոռցած էին մեր Նախահօր մշակութեան արուեստ, որուն ասաց Տէր Աստուած գործել զերկիր ու պահել: Էն ժամանակուան վայրենի մարդիկ որ վաղուան համար հոգալ չգիտէին, սկսեցին անխնայ կերպով ջարդել, վառել անտառները: Բայց նախապէս հոգացող Աստուած այս մեր երկրագնդին շատ տեղեր երկրաշարժով վեր ի վար շրջեց, անթիւ անհամար անտառներ գետնի խորութեան տակ պահեց ինչպէս մի անսպառ գանձ՝ մարդոց ապագայ սերունդին համար: Ներկայ խելացի սերունդ երկրագունդ քրքրելով եւ երկրին խոր ծոցեր բանալով՝ գանձը գտաւ, եւ ի՞նչ է այդ գանձը. գիտե՞ս, Թոռնիկ, ոչ ոսկի է եւ ոչ արծաթ, այլ սեւացեալ քարածուխ, որ ոսկիէն աւելի պատուական եւ շահեկան է: Վասն զի աշխարհիս յառաջդիմութեան մեքենաներ շոգիի զօրութեամբ կը գործեն, եւ շոգին ջրէն կը գոյանայ վառուած քար ածուխի բորբոքող կրակէն:

Այսպէս երբ տեսան մարդիկ, որ Աստուծոյ տնկած հնադարեան անտառներ հետզհետէ կսպառին, այնուհետեւ սկսեցին ամենայն աշխատութեամբ ձեռատունկ անտառներ հասցունել եւ այսօր արեւմտեան Եւրոպիոյ աշխարհ մշակուած անտառներով լցուած է, որ լիովին փայտ կը մատակարարէ՝ թէ շինուածոց համար, թէ այնչափ անհամար փայտաշէն նաւերու համար, եւ թէ շոգեկառքերու հարթուած ճամբաներու պատրաստութեան համար:

Իսկ մեր արեւելեան աշխարհ անտառներու հարստութենէն շատ աղքատ է. եթէ կան այժմ սակաւ ինչ բնական անտառներ, այն եւս անկանոն եւ անխնայ կտրուելով սպառելու վրայ են: Ուստի պէտք է աշխատինք մեր հողագործութեան հետ նաեւ ծառատունկ անտառներ հասցունել: Եւ գիտե՞ս թէ որչա՞փ ընդարձակ սահմաններ ունի գիւղական ժողովուրդ անտառի մշակութեան համար թէ դաշտագետին եւ թէ փխրահող բլուրներ: Երկրագործին համար փայտին պիտանութիւն այնչափ կարեւոր է, որչափ հաց իւր կեանք պահելու համար: Եթէ անշուք խրճիթ մի շինէ, որպէս զի իւր ընտանիք ծուարին նորա մէջ՝ փայտ պէտք է. հապա այն մեծ նահապետական ընտանիք, որոց թիւ կը հասնի մինչեւ քառասուն եւ յիսուն, որչա՞փ ընդարձակ շէնքերու պէտք կունենայ: Թողունք մեր տուներու շինութիւն, որոց համար բարտի, կաղամախի եւ ուռի փայտեր պէտք են: Իսկ մեր մշակական աշխատութեան համար ուրիշ այլ եւ այլ տեսակ ամուր փայտեր պէտք են: Հացի փայտ պէտք է գութանի կոր էշին եւ առատամի համար. թեզի փայտ պէտք է սայլերու մածան կազմելու եւ սռնակի համար, թողունք այլ եւ այլ փոքր գործիքներ, որք առհասարակ պինդ

փայտերէ կը շինուին: Եւ ինչպէս գրեցի յառաջ, երկրագործ գիւղացին այս տեսակ փայտեր ձեռք բերելու համար որչա՞փ պարապ ժամանակ կանցունէ, մինչեւ հեռաւոր տեղեր երթալով գտնէ, բերէ, շինէ եւ գործի սկսի:

Թողունք այս ամէն, Թոռնիկ, դու կը տեսնաս թէ ծառատունկ ունեցող գիւղեր որչա՞փ գեղեցիկ եւ զուարճալի են, եւ միանգամայն գիւղին տեսարանին մեծ շուք կուտան: Դու գընացեր ե՞ս Արտամետու այն ճոխագոյն ծառաստան եւ մրգաստան, ուր թո՛ղ անտառային անպտուղ ծառեր, որչա՞փ զանազան պտղատու մրգաբեր ծառեր կան թէ խնձոր, թէ տանձ եւ թէ այլ բազմատեսակ անուշահամ պտուղներ, որոց մէջ ամենէն ազնուագոյն կը համարուի համով, հոտով եւ գունով չնաշխարհիկ կարմիր խնձոր, եւ այնչափ առատ, որ բովանդակ Վասպուրական երկրին բաւական կը լինի:

Գիւղի համար ծառատունկ ուրիշ օգտակարութիւն եւ հաճոյական քաղցրութիւններ ունի: Ցամարան արեւու տօթագին հովանին տարածելով, իսկ ի ձմերան հիւսիսի սաստկաշունչ քամիէն կը պատսպարէ: Հապա որչա՞փ քաղցր կը լինի գիւղական ընտանեաց համար, որք պարապոյ ժամեր՝ իրենց մանկիկներով ծառերու շուքերուն տակ նստելով՝ ձեռագործներով աշխատին եւ զբօսնուն: Սոխակն ու սարեակ ծառաստանէն երգեն, մանկիկներ վարէն խաղալով ճլվլան, եւ երբ զառնուկներն եւս կայտռին ու մային, վա՛չ, քանի՞ անուշակ ձայնակիցներ ներդաշնակութիւն կը կազմեն գիւղական պարզ կեանքում:

Ծառաստանք ոչ միայն՝ մարդոց համար իբրեւ վայելք եւ օգուտ են կեանքի պիտոյքներու մասին, այլ եւ շատ կարեւոր են անասնոց համար, վասն զի ծառերու տակ միշտ թարմ կանաչներ կը բուսնին, ուր միայն պէտք է արածեն, նորածին կովերու հորթեր եւ մատակի ձագեր եւ ամարան տօթաժամուն այդ մատաղածին անասնիկներ հովասուն ծառերուն տակ կը հանգչին կանաչներու վերայ:

Բայց, Թոռնիկ, բաւական չէ որ ծառաստանք միայն գիւղի շրջապատներ զարդարեն, երանի՜ թէ մեր դաշտեր անդաստաններն եւս ծառատունկերով զարդարուին, ուր որ ջրի գընացքներ կան եւ աղբիւրներ կը բղխին. օ՜չ, քանի դիւր եւ հանգըստաւէտ կը լինեն թէ աշխատաւոր մշակներուն եւ թէ լծատար խոնջած անասուններուն, որ այն ինչ կէսաւուր տօթաժամուն լծերէն կը քակուին, իսկոյն այդ հովանուտ ծառերուն տակ կսկսին արածել եւ յետոյ կը նստին եւ կ՚որոճան, իսկ ջըրասէր գոմշուկներ, որ անչափ տաքութեան չեն դիմանար, լծէն արձակուելուն պէս դէպ ի ջուր կը վանե, եւ թէ ջուրն առատ է՝ մէջ կը նստին, հօտաղ լաւ մի կը լուանայ եւ ապա կը բերէ արօտատեղ: Այդ պահուն խոնջած մշակներ կը նըստին աղբիւրի գլուխ ծառի հովի տակ, եւ կսկսին հարցնել իրարու, արդեօք էս օր տանտիկին ի՞նչ է եփեր մեզ համար. գու

գիտես մեր մշակներ շատ սիրահար են խղալի ճաշին եւ փի-լաւին, եւ տապակով քամած մածունին։

Կը տեսնան, որ հացեր կտրած աղջիկ չալկուրեր կուգայ չալակ վար կը դնէ, կը բանան կը տեսնան, որ ճիշտ իրենց ու-զածին պէս է կերակուրներ։ Մշակին սեղան կանաչազարդ գետինն է, ուր կը փռեն մէզար, կը շարեն վրան թազէ հացեր, կը բանան մածնի տապակ, հողէ կամ փայտէ կօտին մէջ կը հարին գմածուն աղբիւրի պաղուկ ջրով, յետոյ կառնեն դգալ-ներ, մի դգալ փիլաւ մի դգալ մածնէ թան. օ՜խ, Թոռնիկ, կերեր ես, դու գիտես թէ ո՜րչափ ախորժանօք կուտեն այդ ա-նօթի մշակներ, կուտեն եւ կօրհնեն ղտանտիկին։

Կէսաւուր ճաշէն յետոյ, գլուխնին կը դնեն հով ծառին տակ, անուշ քուն կը քաշեն, այնպէս որ իշխան իւր ապարան-քին մէջ փետրալից անկողնոյ վրայ կարող չէ այն հանգիստ եւ անդորր քուն ունենալ. դորա պատճառներ այժմ չ՚գիտես դու, Թոռնիկ, բայց յետոյ կիմանաս, երբ տակաւ զարգանա-լով աշխարհի բաներուն հետաքրքիր լինիս։

Այսպէս, մտացի Թոռնիկ, լաւ ուշադիր եղար թէ ծառա-տունկեր որչա՞փ պիտանի եւ շահաբեր են գիւղական ժողո-վուրդին համար։ Ուրեմն աշխատիր որ տարուէ տարի միշտ տնկելով եւ խնամելով՝ մեր տան սեփհական ծառատունկեր շատցունես։ Ես արդէն ի վաղուց մի դրան արտ ցանկապատե-լով գեղեցիկ ծառաստան մի հաստուցած եմ, դու պէտք է որ իմ տնկած ծառերով չը պարծենաս, այլ աւելի քաղցր է, որ դու եւս նոր ձեռատունկեր տնկելով՝ մշակելով անով պարծենաս։ Գիտե՛ս, ծառատունկն եւս իրենց առանձին – առանձին խը-նամքներ ունին տնկելու, էշտելու, կտրելու եւ այլն։ Ծառեր դարմանելու մասին շատ երկար դասեր պէտք չեն քեզ, դու կը տեսնաս թէ ինչպէս Պապիկդ մի սղոց եւ մի կօռ դանակ առ-նելով կը մնայ ծառաստան, միշտ չորցած եւ աւելորդ ճիւղեր կը կտրէ, որպէս զի մնացեալ ճիւղեր աւելի աճեն։ Պէտք է մրգաբեր ծառերուն տակն երկու կամ երեք տարին անգամ փորուին. այս աշխատութիւն եւս իւր շահն ունի, նախ որ գե-տինն խրխրուելով ծառերուն արմատներ աւելի կը զօրանան, երկրորդ՝ գարի կամ այլ հնտեղէն բաներ ցանելով՝ ծառէն եւ ծառատակէն միանգամայն արդիւնք կստանաս։

Կը յիշե՞ս, Թոռնիկ, քանի տարիներ առաջ Վանեցիք թը-թենիի մշակութիւն սկսեցին, սկզբան շատ յաջողութեամբ յա-ռաջ տարին։ Այսպէս վերահաս դիպուած մի եղաւ, որ Վանե-ցիք մի քանի տարի միայն շերամի հունտ ծախելով մեծ շա-հեր ունեցան, այնչափ բարձրացաւ Վանայ հունտի գին, որ ոս-կիին հետ հաւասար կշռելով կառնէին, վասն զի ուրիշ երկիր-ներու հունտեր բոլոր աւրուեցան շերամի որդերուն մի կերպ հիւանդութենէն։

Ցաւալի է, եթէ պատմեմ քեզ, Թոռնիկ, թէ ինչպէս Վա-նեցիք այդ շահաբեր ձեռնարկութիւն բոլորովին ի բաց թողին,

քանզի նոքա ի սկզբան այնպէս կարծեցին ու պաշարուեցան, թէ միայն չերամի հունտ ծախելով պիտի շահին, չի կրցան գուշակել թէ այդ մի բաղդի դիպուած էր եւ անցաւ, չի կրցան նաեւ ըմբռնել թէ չերամի մշակութիւն սոսկ սերմի վրայ չէ, այլ առաւել խոզակներու վրայ է, վասն զի թթենիի մշակութեան բուն արդիւնք խոզակն է, կամ պէտք է ժամանակին խոզակ ծախել եւ կամ խոզակներէն թել քաշելով ապրշում ծախել: Եւ որովհետեւ ապրշում ինքնին թեթեւ բան է, բայց գին ծանր, այս բան շատ ձեռնտու էր Վանեցւոց շահավաճառութեան համար, հեռի լինելով ծովեզրեայ նաւահանգիստներէն:

Կը թուի ինձ, Թոռնիկ, որ Վանեցիք բարակ ձանձրալի եւ խնամոտ աշխատութիւններ չեն սիրեր, մի կանգուն խորութեամբ հողը հրջելով թթենի տնկել, ամէն տարի ծառատունկեր փորել, չերամատուն շինել, որդերուն աշխատութեան պատշաճ սեղաններ պատրաստել, ամեն օր թթենի տերեւներ բերելով որդեր կերակրել, իբրեւ բժիշկ սուր աչքով որդերուն վիճակ քննելով՝ հիւանդներ առողջներէն զատել, եւ երբ կսկըսին որդեր խոզաններ հիւսել, դոցա փոքրիկ—փոքրիկ ծառի ճղիկներ պատրաստել եւ այլն եւ այլն. հապա խոզակներ կապելէն յետոյ՝ պէտք եղած սերմն առնել, մնացեալ խոզակներ կամ այնպէս վաճառականին ծախել եւ կամ թել քաշել եւ կաժկաժ անելով զուտ ապրշում հանել եւ կապել, օ՜խ, ի՞նչ ձանձրալի երկարատեւ աշխատութիւն, տրտնջալ կսկսի ծոյլ, անձմեռ Վանեցին:

Տես, Թոռնիկ, չերամատածութիւն ձանձրալի եւ երկար աշխատութիւն կը համարի Վանեցին, որ շատ—շատ երեք ամիս հազիւ տեւէ բոլոր աշխատութիւն եւ արդիւնք կստանայ, այն ինչ այգի տնկելով եօթը տարի ամբողջ կ'սպասէ եւ ապա տընկած այգւոյն երախայրիք կընդունի: Բայց միթէ Վանայ սոյն բազմաշատ ու հնատունկ այգիներ արդի սերո՞ւնդ տնկած է. ո՛չ, Նոյ Նահապետին հարազատ այգեսէր զաւակներ՝ մեր նախնի Պապիկներ տնկած են եւ մենք այսօր կը վայելեմք, ինչպէս ես մի այգի տնկած եմ, ես մեռնիմ դու պիտի ժառանգես ու վայելես՝ է՛, զուցէ յետոյ պարծենաս ու ասես թէ այս այգին ես տնկեցի:

Այժմէն պատուէր կուտամ քեզ, Թոռնիկ, որ ուրիշ ծառատունկներու մշակութեան հետ չմոռանաս նաեւ թթենիի մշակութիւն, որոյ համար շատ նպաստաւոր են մեր գիւղի չըրջապատի հողեր, զի թթենիի տունկ աւազախառն հողի մէջ շատ կը յաջողի: Բայց պէտք է գիտնաս, Թոռնիկ, որ մեր երկրագործութեան սովորական աշխատութիւն շատ բազմազբաղ է: Ուստի դու երբ ծառատնկոց մշակութիւն յառաջ տանիլ կուզես, լաւ է որ բուն հողագործական կամ սերմնացանութեան մշակութիւն, զորօրինակ ցորեն, գարի եւ այլն, չափաւորես,

որպէս զի կարենաս ծառատնկոց մշակութիւն աւելի արդիւնաւորել:

Բաւական ընդարձակ խօսեցայ, Թոռնիկ, ծառաստանի մըշակութեան մասին, դու գիտես Պապիկդ ծառն ու աղբիւր շատ կը սիրէ: Երբեմն աշխատութենէն յոգնած կերթամ կը նըստիմ մի ծառի հովանեաց տակ. կռնակս ծառի բնին կուտամ կը հանգչիմ, ծերացած եմ, Թոռնիկ, այլ եւս ինձ համար ծերութեան ցուպ եւ յենարան պէտք է: Յակովբ նահապետ իւր մէկ սիրած որդին ցուպ ծերութեան կը կոչէր, ես էլ կասեմ քեզ թէ իմ ծերութեան ցուպն ես, մինչեւ հասնիմ վերջին հանգըստարան:

---

### ԺԸ.

# ԳԻՒՂԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ

## ՏՈՒՆ ԵՒ ԿԵԱՆՔԸ

Սիրելի Թոռնիկ, դու կարդացեր ես Աստուածաշունչ, եւ գիտես որ հին–հին նահապետներ հաստատ տուն եւ բնակարան չունէին, այլ նոցա տուն շարժական մի վրան էր, այսօր այստեղ, վաղն ուրիշ տեղ: Եւ դեռ այսօր Արաբական ցեղեր նոյն կեանքով կապրին: Մեզմէ շատ հեռու չէ, հարաւային կողմըն կան շատ վրանաբնակ ցեղեր, որ ազգաւ քիւրդ են եւ կէօչար կըսուին, որոց ձմերան բնակութեան տեղեր Նինուէի եւ Բաբելոնի սահմանին ընդարձակ ջերմին դաշտերն են, ուր ոչ այնքան ձիւն կը տեղայ եւ ոչ սաստիկ ձմեռ կը լինի: Իրենք վրանին տակ կը բնակեն եւ իրենց անասուններ միշտ բացօթեայ կարածեն:

Իսկ ամառն երբ ջերմութիւն կը զայրանայ, այդ բոլոր վրանաբնակ ցեղեր, իրենց ոչխարներու բազմաթիւ հօտերով կը չուեն դէպ ի հիւսիսակողմ Կորդուաց եւ Տաւրոսի հովասուն լեռնաշղթաներ, ուր շատ աղբիւրներ եւ անբաւ արօտավայրեր կան: Երեք չորս ամիս այդ լեռնասուն եւ ազատ կեանքը վայելելով, յաշնան վերջ դարձեալ կը չուեն դէպ հարաւ ջերմագոյն խորադաշտեր: Սորա համար այդ վրանաբընակ աստանդական ցեղերն բազմաթիւ ոչխարաց հօտեր եւ այլ անասնոց ջոլիրներ ունին, որոց համար ոչինչ հոգածութեան պէտք չկայ, ոչ ախոռ, ոչ գոմ, եւ ոչ ձմերան դարմանի պատրաստութիւն, հետեւելով միայն տաւարաբուծութեան, այս մասին գիւղական ժողովուրդէն աւելի կը հարստանան: Եւ միանգամայն կը վայելեն բնական կեանքի ամենաքաղցր անդորրութիւն:

Հետքրքիր կը լինի՞ս, Թոռնիկ, թէ նախադարերու մար-

դիկ տուն բնակարան շինել եւ նորա մէջ բնակել, ձմեռը ցուրտէն եւ ամառ արեւու տաքութենէն պատսպարուել ուստի՞ ուսան կամ օրինակ առին:

Կասեն թէ մարդիկ թռչուններէն եւ անասուններէն սորվեցան տուն շինելու արուեստ եւ ճարտարապետութիւն, տեսան որ թռչուններ ծառերու վրայ բոյն կը դնեն, ծիծառն իւր կաւակերտ բոյն կը շինէ տան հեծանի կողի վերայ, արծիւ որ բարձր սարեր կը սիրէ, իւր որջն ունի· եւ կոյր խլուրդ, որ գետնի տակ իւր բոյն շինելով դուրս տուած հողը բլուրիկ մի կը ձեւացնէ, հապա մրջիւն, այն նախահօգ չքոտի կենդանին, որ ոչ միայն տուն, այլեւ համբարանոց կը շինէ իւր բունիկին կից, ուր կը ժողվէ ձմերան պաշար: Իսկ զարմանագործ մեղուն ինչպէս համաչափ բջիջներ կը տողէ մոմի հիւթով, չգիտենք իւր համար բոյն, թէ մեղրատուն կը շինէ, այնչափ խընամով, առ որ կը զարմանայ մարդկային իմաստութիւն:

Այո՛, Թոռնիկ, բանաւոր մարդիկ չքոտի անբաններէն կուսանին շատ բան· այդ ի բնութենէ արուեստաւորներ մեզ վարժապետ կը լինին, կը տեսնա՞ս այն չարաճճի սարդ, որ կռուան անելով պատին անկիւն՝ անդադար կը ճգնի, բարակաման թելեր կը հանէ իւր բերնէն եւ ուռկան կը հիւսէ, ճանճեր բռնելու համար, աստի մարդիկ սորվեցան ոստայնանկութեան կամ կտաւագործութեան արուեստ: Միթէ սոխակի դայլայլիկէն եւ այլ քաղցրախօս թռչուններուն ձայնէն, ծովու մռնչող ալիքներէն, ջրերու հոսանաց ձայնէն, անտառներու համաչունչ սօսափէն, բան մի աստի, բան մի անտի առնելով՝ երգահան մարդիկ չ՚իմբագրեցի՞ն երաժշտութեան այնչափ հիանալի եղանակներ եւ դասեր:

Է՛, Թոռնիկ, դարձեալ մոլորեցաւ Պապիկդ, թողլով մեր դասին բնական կարգ, քննել կուզէ թէ մարդիկ ուստի՞ սորվեցան տուն շինել երգել եւ այլն, դառնանք գիւղական տընակներ:

Գիտես, Թոռնիկ, ամէն մի կարգ ժողովուրդ իւր զարգացման համեմատ կապրի աշխարհիս վերայ: Քաղաքացի ժողովուրդ, որ մեզմէ աւելի զարգացած է եւ զարգանալով ճաշակ բացուած է, գիտէ թէ ինչպէս պէտք է բարեկեցիկ կեանք վայելել, ուստի իւր ճաշակին համեմատ չափով կը շինէ:

Իսկ գիւղական ժողովուրդ, որ զարգացումն չունի, ճաշակ փակուած է, նորա համար բաւ եւ շատ են իւր տնակներ: Բայց միթէ այնքան բթացա՞ծ է շինական ժողովուրդին ճաշակ, որ նա չէ կարող գոնէ մի փոքր ինչ իւր տնակներ կանոնաւորութեամբ շինել, բայց տես դու՝ թէ նա ինձ կը պատասխանէ, այո՛, ես էլ մարդ եմ, փոքր ի շատէ ճաշակ ունիմ, կը տեսնամ քաղաքացւոց գեղեցիկ տներ, հոգիս չուզե՞ր որ ես էլ գեղեցիկ տուն ունենամ· այլ երբ կը մտածեմ թէ աղքատ եմ, պարտապան եւ աղքատին համար խրճիթ շատ է եւ այլն: Իսկ հարուստ տանուտէր խելացի տնտեսութեամբ կը մտածէ, եթէ

ընդարձակեմ տունս, հիւրեր կը շատնան, ծախքերս կրկնապատիկ կը լինին եւ այլն: Շինական տանուտէրոջ այս առարկութիւն իրաւացի է. բայց կայ դարձեալ հիմնական պատճառ, ինչպէս որ վերը բացատրեցի, աղքատութեամբ հանդերձ գիւղական ժողովուրդ տգէտ եւ անճաշակ է, վասն զի կան այնպիսի թեթեւ կարգադրելի բաներ, որ երբէք ծախս չեն պահանջեր, այլ միայն փոքր աշխատութիւն: Որպէս զի ըզգալի եւ շօշափելի կերպով ցոյց տամ քեզ, Թոռնիկ, որ աչքով տեսնաս ու նկատես թէ մեր գիւղական ընտանիք ի՛նչ դառն ու չարաչար դժուարութեամբ կը տառապին առտնին աշխատութեան մէջ՝ մի օրինակ բերեմ: Դուն կը տեսնաս միշտ եւ չես զգար. աչքդ սովորած է. զուցէ կը կարծես, որ գիւղական ընտանեաց վիճակ պէտք է այդպէս լինի կամ նորա ճակատագիրն է այդ:

Ե՛լ ուրեմն, Թոռնիկ, երթանք ի միասին մեր բարեկամ Կիրակոս աղբօր տունը: Ճիշտ գեղի թոնիրներու վառուած ժամանակն է, տես ահա թոնրի տուն մխով ծուխով լեցուած է, թոնիր կը վառուի, խաչերկաթին վերայ դրուած են թանապուրի եւ ճաշի պուտուկներ, տան մի կողմ երկու օրօրոց դըրուած են, խեղճ երախաներ ծուխէն խեղդուած կուլան, մայրեր կը կարծեն թէ կաթ կուզեն, տան մի անկիւն եւս դող-տաքցոցէն բռնուած պառկած է մի պառաւ կին: Թոնիրն իջաւ, ծուխ քաշուեցաւ, տան տիկին ձգեց դընթեկ, նստաւ թոնրին շուրթ, տան մի հարսն եւս թոնրի սալի վերայ խմորի գնդեր բանալով՝ տան տիկնոջ կուտայ, նա էլ մաջրակայով թոնրին կողը կը փակցունէ: Այս միջոցին տան պահապան զամբռ շուն դրան մէջ թաթիկ պարզելով շնթռկեր է, աչքն դէպ ի տան տիկին կապած է, որ թոնրէն ելած կուտն իրեն տայ:

Կէս օր է, կասէ աղջիկ մօր. ժամանակ եկաւ մայրիկ, մշակներուն հաց պիտի տանեմ, հացն ու կերակուր կը պատրաստուի, ժիր աղջիկ շալակուորած կերթայ դաշտ: Ահա ներս կը մտնայ գեղի գզիր, տանտիկին հիւր եկաւ, նա մի օֆ քաշելով հրաման կանէ հարսին, որ մի քանի հաւկիթ կոտրէ ձուածեղ եփէ հիւրին համար:

Կտեսնաս, Թոռնիկ, գեղացիի տունը նահապետական մի վրան է, դուռը միշտ բաց է. կսկսեն ետեւէ ետեւ գիւղի աղքատներուն շարքը, եկաւ ցուպ ի ձեռին դողդոչուն մի պառաւ, տանտիկին, հոգւոյդ մեռնիմ, թազա հացի հոտն առի եկայ, որբիկ թոռնիկներս անօթի կուլան, մի հաց, քիչ մի ապուր տուր տանեմ ճժկներուս, պառաւն առաւ ինչ որ ուզեց, օրհնելով գնաց: Եկաւ ուրիշ մի էն էլ առաւ գնաց, այսպէս շատեր էկան առան ու գնացին: Վերջին անգամ էկաւ մի աներես աղքատ որ մի հացով գոհ չէր լինել. բարկացաւ տանտիկին, առաւ թօրվան սեւ անիթրոց տուաւ ասոր կռնակին, տնէն դուրս հանեց: Տեսա՞ր, Թոռնիկ, հացարար տանտիկին մինչեւ հաց լրացուց՝ հացին կէսն գնաց:

Այժմ դառնամ խօսիմ այս Թօրվան տան վերայ, զոր շատ դիւրին է բարեփոխել, կը տեսնա՞ս, Թօնիր տան մէջտեղ շինուած է. առիք միայն մէկ երդիք կայ մուխ ելնելու համար, Թէպէտ տան դուռը բաց լինելով մուխն անկից էլ դուրս կելնէ: Եթէ այս Թօրվան տեղը փոխենք եւ տան յարմար անկիւնի կողմն դնենք, էդ անկիւնի վերայ լայն պուհարիկ մի կապենք, եւ այս պուհարիկ շատ դիւրին կը լինի եթէ երկու սիւնեակներ տնկեն. կակուղ ուռենիով հիւսենք եւ միջոցներն յարդակաւով ծեփենք, նմանապէս տանիքի վերայ եւս նոյն ուղղութեամբ պուհարիկ մի լինելով գոնէ կանգուն կէս բարձրութեամբ, տես դու էն ժամանակ մուխն ինչպէս վեր կը քաշուի եւ տուն բոլորովին ազատ կը մնայ ծուխէն:

Է՛, Թոռնիկ, դու սաս դատաստանով խօսիր այս փոքր բարեփոխութեան համար ի՞նչ դժուարութիւն եւ ծախք կը լինի: Բայց ինչո՞ւ չի մտածեր գիւղացին, չ՚գիտե՞ս միթէ դու դորա պատճառ, ինչպէս շատ անգամ ասած եմ, դարձեալ նոյն կը կրկնեմ, գիր ու կարդալ չ՚գիտնալն է, գիրն ու գիրքն է, որ կը բանայ մարդոյն միտք եւ մտածել կը սորվեցնէ:

Սակայն դու մի զարմանար մի մեղադրեր անգիր գիւղացին, երթանք քաղաք, տես ահա բովանդակ վանեցւոց տանտուներ, որոց ամէնուն էլ Թօնիր տան մէջտեղ շինած են, միայն մի տարբերութիւն կայ, որ քաղաքացւոց տանտուներ բաւական բարձր են, ոչ միայն առիքէն, այլեւ պատերէն շատ երդիկներ ունի, տան մուխ դիւրութեամբ դուրս կը քաշուի: Բայց դարձեալ առիք սեւ ու մրջոտած է. եւ երբ անձրեւէն տան կաթիլ սկսի, կը տեսնաս որ սեւ կաթիլներով տան յատակ եւ փռուածքներ կապականէ: Երբեմն եւս աւելի հին-հին տուներ գարնան միջոցին առանց անձրեւի մունճ կաթ կանեն՝ որ աւելի գէշ է, զի գետնի փռոցներ, Թօրվան ծածկոց եւ ընտանեաց հագուստներ առ հասարակ կը մրջոտին եւ որչա՞փ դժուարին է այդ մածուցիկ այս մրաներկ լաթի վրայէն հանել ու ջնջել:

Ուրեմն չասես, Թոռնիկ, թէ քաղքցին, որ կարդալ - գրել գիտէ, զարգացած է Պօլսոյ մայրաքաղաք տեսնելով, մաքրութեան օրինակ առած է, ի՞նչպէս դարձեալ չ՚գիտէ բան մի մըտածել ու բարեփոխել իւր տունն: Եթէ այսպէս, ինը առաւելութիւն կայ գրին ու անգրին մէջ. երբ կեանքի ընթացքի եւ տնտեսութիւն նոյն կը մնայ: Պատասխանեմ քեզ: Թոռնիկ, նախ պէտք է գիտնաս, որ ամէն գրել-կարդալ գիտցող, տնտեսագէտ չի լինիր, երկրորդ քաղաքացւոց նոր սերունդ թէեւ արդի դպրոցներում անկատար ուսումն ընդունած է. այդ երբէք բաւական չէ մեր կեանքի բարւոք տնտեսութեան համար, վասն զի այդ կիսակատար հարեւանցի ուսումով մեք կարող չեմք մեր միտքը այնպէս մշակել, որ հին արմատացած նախապաշարումներ ի բաց խլուին: Տակաւին ինչպէս գիւղացին նոյնպէս եւ քաղաքացին պիտի բնակին մրջոտած տուներու մէջ եւ

*պիտի ասեն մեր հայրեր, մեր պապեր այս տուներու մէջ բնակած են, մեք էլ կը բնակիմք, նոցա համար փոյթ չէ թէ ընտանիք կը տառապին մուխին եւ ծուխին մէջ եւ մերթ եւս աչքերնին* ափախսաւար *կը լինի:*

*Ես երբ կասեմ թէ քաղքցիք զարգացած են, դու այնպէս մի հասկընար թէ իրօք եւ տիրապէս զարգացած եւ լուսաւորուած են, դոցա մտաւորական լոյս եթէ ամփոփես մի աղօտ ճրագի չափ լոյս չունի, միայն թէ գիւղական անգիր ժողովուրդին հետ համեմատելով փոքր ինչ առաւելութիւն ունին:*

*Թոռնիկ, թէ քաղաքացւոց եւ թէ գիւղացւոց մտաւորական աչք դեռ* բծժոտած եւ մթարքով *ծածկուած է, մեք աշխարհին բաներ ճիշդ եւ ուղիղ չենք տեսնար, Յիսուսի կուրին պէս մեք էլ շրջող մարդիկ ծառի պէս կը տեսնեմք: Ուստի ծառն ու մարդ որոշելու համար լոյս եւ պայծառ տեսութիւն պէտք է, որ միայն կրթութեամբ կստացուի, եւ քանի որ մեք կրթութեան ու գիտութեան լուսատու շնորհք չունիմք մեր ընտեսական կեանք այսպէս կը մնայ: Գիտութիւն մեզի համար արժան տեսեր է խաւարտչին ու մրջոտած տուներ, մինչեւ գայ ժամանակ ժողովուրդին մտաւորական աչքը բացուի, լոյս տեսնէ, կարենայ ճանչնալ ու որոշել մարդն ու ծառ: Էն ժամանակ ահա եթէ ողջ մնացինք այս մրջոտած տներէն դուրս կելնեմք դէպ ի լոյս եւ յառաջդիմութիւն, ու կազատուինք տգիտութեան ան խեղդիչ մուխէն ու ծուխէն:*

*Այսչափ միայն, Թոռնիկ, գիւղական անշուք շէնքերու վերա́յ խօսեցայ, բայց շինական ժողովուրդին առտնին կեանք շատ ընդարձակ է եւ ուրիշ բազմազան բաներ ունի: Արդէն Թոռնիկ, դու գիւղական կեանքի մէջ ծնած ես, քեզ կը թողում նորա կեանքի նկարագիր, դու իքննին փորձառութեամբ ուսումնասիրես, այժմ պիտի խօսիմ գիւղական եկեղեցւոյ, քահանային եւ ժողովուրդին վերայ, որ քեզ համար մի հոգեւորական դաս է:*

---

*ԺԹ.*

## ԳԻՒՂԱԿԱՆ

### ԵԿԵՂԵՑԻ ԵՒ ՔԱՀԱՆԱՅ

*Մեր գիւղական անշուք կեանքի համեմատ, մեր եկեղեցի ու տաճարն եւս նոյն անշուք անզարդ ու խրթնացած պատկերն ունի: Եթէ ի հին նախնիքներէն մնացած է մի գեղեցիկ տաճար քարաշէն եւ հաստատուն, այդ մի բաղդ է գիւղացւոց համար: Կան այնպիսի գիւղեր, որոց կից է վանքը, ինչպէս Ռըշտունեաց գաւառին մէջ Նարկայ վանք, Թիմարայ գիւղերուն*

մէջ Աստուածածնայ հռչակաւոր վանք եւ այլ ուրիշ տեղեր։ Այսպիսի վանքեր իբրեւ եկեղեցի եւ աղօթատեղի կը համարուին մերձակայ գիւղերուն, որ այդ եւս իրենց համար մեծ մխիթարութիւն է։

Իսկ ընդհանրապէս Վասպուրական երկրի գիւղական եկեղեցիներ հողակերտ ու փայտաշէն են. պատեր խուժ աղիւսով շինուած, առիք ու տանիք հողով ծածկուած, միայն խորան եւ սեղան մեծ բան է՝ եթէ քար ու կրով շինուած լինի։ Դու մի զարմանար, եթէ միայն գիւղացւոց եկեղեցիներ փայտաշէն են, այլ աւելի պէտք է զարմանաս, որ Վանայ նման հռչակ ունեցող մի քաղաքի եկեղեցիներ գրեթէ ամբողջ փայտաշէն են. միայն մի քանի եկեղեցիներ կան՝ որոց տաճարներ բաւական հնաշէն եւ հոյակապ են, ինչպէս քաղաքամիջի Սուրբ Պօղոս եկեղեցին։

Այգեստանեայց մէջ Այր – յարոյց եկեղեցին մի հնաշէն եւ պատուական տաճար ունէր. այդ եկեղեցւոյ փայտաշէն գաւիթ քանի տարի յառաջ նորոգելով, հնաշէն տաճար գաւթին հետ խառնեցին, ուզելով որ իրենց եկեղեցին Պօլսոյ եկեղեցիներու նմանցնեն, կարծելով թէ Պօլսոյ եկեղեցիք բուն հայկական տաճարներուն հնութեան ձեւն ու պատկերն ունին։ Ափսո՛ս, հազա՛ր ափսոս, որ այդ հնութեան տաճարներուն մնացորդներ հետզհետէ կը քանդուին եւ օտար ձեւերով եկեղեցիներ կը շինուին և սեղաններ կը կազմուին անվայելուչ ու անճաշակ խաչկալներով։

Թողունք այս, Թոռնիկ, դառնամք միայն մեր գիւղի եկեղեցւոյ նկարագիր հանեմք. բաւական է՝ դու այդ նկարագրով իբրեւ մի պատկեր աչքիդ առաջ տեսնաս։

Մեր գիւղի եկեղեցին դարձեալ հողակերտ ու փայտաշէն է, որ մի քանի տարի յառաջ հազիւ հազ նորոգուեցաւ. տե՛ս, սեղան պարզ, անպաճոյճ, փայտակերտ, կոպիտ շինուած մի խաչկալ ունի. վէմ – քար ու մոմակալ աստիճաններ անշուք մրջոտած կտաւով ծածկուած են. պատարագի ժամանակ հազիւ թէ երկու մոմ վառուին, ուրիշ ժամանակ բաւական է մի փայտէ եռոտանի ճրագակալ եւ վրան հողէ ճրագ բոլորովին ձիթոտած ու մրջոտած. սեղանի տէրունական պատկեր տես ի՞նչ անձեւ եւ անարուեստ է։ Եկեղեցւոյ յատակ եւ սեղանի վրայ միայն փսիաթներ փռուած են։ Գիւղական եկեղեցիներ մեծ մասամբ վերնատուն չունին, այր մարդիկ առաջ կը կանգնին՝ կիներ ետեւի կողմ։

Թողունք այս նիւթական անշքութիւն, որ Աստուծոյ տիեզերական փառաց առաջ նշանակութիւն չունի, որոյ աթոռ երկինք է եւ ոտքին պատուանդան երկիր։ Գանք բարոյական մասի նկարագիր հանել։ Մի ծերուկ քահանայ ունիմք ցուպ ի ձեռին դողդոջելով հազիւ եկեղեցի կուգայ, աչքեր Իսահակայ նահապետին պէս վատատես եղած է ի վաղուց. բայց ինքն եկեղեցւոյ ժամերգութեան շատ բաներ բերան եղած է եւ կը

կարդայ․ ինքն երկիւղած, բարի եւ ժողովրդասէր մի քահանայ է։ Մի քահանայ էլ ունէինք, բաւական կրթութիւն ունէր․ ժիր ու գործունեայ էր, բայց նա հարստացաւ, թողեց գեղ, ու քաղաք գնաց։ Կը թուի որ գիւղական երէցներուն հարստանալ շատ լաւ բան չէ․ վասն զի հարստութիւն զիրենք դէպ ի դիւրակեցութիւն կը մղէ․ թէպէտ ուխտադիր է գիւղի եկեղեցւոյն վերայ քահանայ ձեռնադրուելով․ բայց կը յաջողին այնպիսիներ իրենց ուխտին դէմ դրժել, ոչինչ եւ անհիմն առիթներ յառաջ բերելով։ Այլ ուղիղ խօսելով եւ դատելով՝ շատ անգամ եւս իրաւունք ունին գիւղական քահանաներ․ երբ ժողովուրդ կը գլանայ իւր հոգեւոր պաշտօնէին հոգեւոր մատակարարութեանց իրաւունքներ տալու՝ ինչ որ նախնի եկեղեցւոյ սուրբ հայրերէն սահմանուած է։

Սորա ապացոյց ահա մեր ժամանակի մէջ կը տեսնամք, որ ժողովրդին պէս քահանաներն եւս պանդխտութեան կը դիմեն, թողլով գիւղն ու եկեղեցին որբ՝ տարիներով կը դեգերին օտարութեան մէջ։ Ո՛, տեսնաս դու, Թոռնիկ, Պոլսոյ գերեզմաննոցներու մէջ թափառելով կսպասեն, որ մի մեռելաթաղ լինի, կամ պանդուխտ ժողովուրդէն մէկ գայ, եւ իւր ննջեցեալի գերեզման օրհնել տայ։

Այսպէս, քահանայն կը թողու գիւղի կենդանի ժողովուրդին հովուութիւն, յորոց չկրնալով իւր ապրուստ հայթայթել, կերթայ մեռելոց գերեզմանէն գտնել իւր ընտանեաց հացն ու ճարակ։ Օրհնեա՛լ լինին այդ ննջեցելոց յիշատակ, որք իւրեանց գերեզմանէն քահանային հաց կը հոգան։ Մեռելոց գերեզմանն եւս իւր պտղաբերութիւն ունի, ուր հաւատով ու Քրիստոսի անունով ննջեր են ի Տէր։

Այնպէս կը թուի ինձ, Թոռնիկ, որ գիւղական ժողովուրդըն չ՚ժողովուրդ համարուած է ազգի վարիչներու առաջ․ նա արժանի չէ, որ բարեզարդ եկեղեցի ունենայ, արժանի չէ, որ ուսեալ բարեզգեաց քահանայ լինի իւր հովիւ, նորա համար աւելորդ համարուած են դպրոց, ուսումն եւ կրթութիւն․ նա չունի բաղդը որ տարին գոնէ մի քանի անգամ վարդապետի քարոզ լսէ․ գիւղական եկեղեցւոյ չեմ այցելութեան ոտքն շատ հեռու է․ վերջապէս նա ամէն հոգեւոր մխիթարութենէն զրկուած է։ Մարդ կարող չէ նորա անգնահատելի վիճակին նկարագիր հանել։ Ամէն բան կեդրոնացած է քաղաքներու մէջ, ուր դրուած է աթոռը ընդհանուր վիճակի առաջնորդին։ Առաջնորդ քաղաքացւոց համար գիտես թէ մենավաճառ է կամ վարձեալ մի հովիւ, որ միայն քաղաքացւոց կը վերաբերի, միայն քաղաքացի ոչխարներ պէտք է արածայ, դաշտի գիւղական ոչխարներ թող գայլեր տանին։ Առաջնորդ էն ժամանակ կը տեսնայ գիւղացւոյն երես, երբ նա մի խնդրոյ համար աղերսադէմ կը ներկայանայ երեն։ Անձնիւր կեանքդ եւ փառասիրութիւն մեր հոգեւոր հովիւներու փոյթ ու եռանդ

շիջուցեր են, ես կը կարծեմ դորա պատճառ քաղաքացիք են եւ քաղաքային կեանք:

Գիւղական ժողովուրդին մի դուգնաքեայ մխիթարութիւն մնացած են վանքեր, մանաւանդ Վասպուրական գաւառին մէջ. վանական վարդապետներ մերթ ընդ մերթ կայցելեն թեմական գիւղերն, թէեւ վանքին իրաւունք եւ պտղին ժողովելու համար է այդ, բայց կան նորա մէջ այնպիսի ժրագործ վանականներ, որք ոչ միայն իրենց այցելութեան պարտք կատարելով հոգեւորապէս կը մխիթարեն ժողովուրդը, այլ եւ գիւղական շատ այլ եւ այլ պատահական գործեր կը կարգադրեն եւ մերթ եւս կռիւներու եւ վէճերու համար հաշտարար դատաւոր կը լինին: Ափսո՜ս, որ այսպիսի պարտաճանաչ վանականներու օրինակ շատ հազուագիւտ է:

Այս դաս շատ ընդարձակ նիւթ կուտար ինձի, բայց Պապիկ մի աշխարհական հողագործ մշակ լինելով՝ համարձակութիւն չունիմ իմ հողագործութեան դասերու շրջանէն դուրս ելնել, պէտք է հոգեւորական բան հոգեւորականին թողուլ, նոքա ժողովուրդի բժիշկներն են. միթէ կարող չե՞ն իրենց հիւանդութիւն բժշկել, հոգան, խօսին, գրեն եւ ցոյց տան դեղն ու դարման:

Այժմ կանցնիմ խօսել, Թոռնիկ, թէ ի՞նչ են այն միջոցներ, որով գիւղական ժողովուրդ գոնէ փոքր ի շատէ կարենայ յառաջդիմել, իւր ներկայ վիճակն բարւոքել ժամանակի ընթացքին համեմատ:



Ի.

# ԳԻՒՂԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ

## ՎԻՃԱԿԻՆ ԲԱՐԻՈՔՈՒՄՆ

Մարդ յուսահատ կը լինի, Թոռնիկ, երբ կը տեսնայ գիւղական ժողովրդի վիճակ, եւ նորա վարած դառնաշխատ կեանք. ինքնին մտածելով կասէ, միթէ կարելի՞ է, որ մեր դաշտաբնակ երկրագործ ժողովուրդին վիճակ փոխուի, կեանքըն բարւոքի եւ ինքն եւս սկսէ ոտն առ ոտն յառաջդիմել:

Պէտք է գիտնաս, Թոռնիկ, որ աշխարհիս ազգերու եւ ժողովրդոց վիճակը յանկարծ չի փոխուիր, այլ բնական կարգով ու աստիճանաւ կը լինի: Յառաջդիմութիւն արեւմուտքէն սկսեց, դեռ նոր մտած է արեւելեան դուռը. շատ ժամանակ պէտք է, որ այդ դռնէն ներս մտնելով գայ հասնի մեր աշխարհն: Յառաջդիմութիւն նախ քաղաքներէն կսկսի եւ ապա կը մտենայ գիւղերուն: Բայց քաղաքներ դեռ նոր սկսած են այբ ու բեն. բոլոր նախակրթարաններ բացուած են մատաղ

մանուկներու համար, որ դեռ կարդալ — գրել կը սորվին. քիչ մի եւս քրիստոնէական դասեր. քիչ մի հաշուել, եւ քիչ մի եւս աշխարհագրութեան խարթայի վրայ կը նային. մանուկ դեռ իւր շրջապատի տեղեր չը գիտցած, դէ՜, Ամերիկայ եւ Ճենաստանի մայրաքաղաք կը հասնի։

Վասպուրականի մէջ գտնուած գլխաւոր գեղերու մէջ արդէն ձեռնարկուած է նախակրթարաններ բանալ. փոքր ի շատէ սկսած են գեղացի մանուկներ կարդալ ու գրել սորվել։ Գիւղական դպրոցներ միայն ձմերան կրնան պարապիլ, իսկ ամրան գիւղացիի դաս տարեկան մանուկ իրեն համար շատ պիտանի է. որթիկներ ու գառներ ո՞վ պիտի արածայ, թող այդ՝ փոքրիկ տղերք հօտաղութիւն կանեն, մշակութեան ամէն բաներու մէջ գարունէն մինչեւ աշուն նորա ըրած ծառայութիւն չորս հարիւր դահեկանի վարձուց հաւասար է։ Մեր աշխարհի մէջ յառաջդիմութիւն, դեռ նոր ծնած մի երեխայ է, տակաւին շատ եւ շատ ժամանակ պէտք է, որ նա դպրոցի լուսաւորութեան աւազանին մէջ մկրտուի, օրըստօրէ զարգանայ եւ մարդ լինի։ Ջկարծես, Թոռնիկ, որ կրթութեան երեխան այնպէս շուտ կը մեծանայ, ինչպէս մայրերու ծնած զաւակ. բնական ծնունդի զարգացման համար եթէ միայն քսան տարի բաւական է, իսկ յառաջդիմութեան եւ կրթութեան զարգացումն երկար դարերու կը կարօտի։ Եւ գիտես դու թէ քանի՞ դարերէ յառաջ Եւրոպան սկսեց եւ այսօր հազիւ հասաւ այս աստիճանին։

Սակայն մեր ժամանակի սերունդին համար մեծ բախտ է. վասն զի Եւրոպան տաժանելի աշխատութեամբ մեծամեծ զոհողութեամբ այդ յառաջդիմութեան ճամբան հարթեց ու բացաւ բովանդակ ուսման եւ գիտութեան տարերք պատրաստեց, ինչպէս սեղան մի դրաւ մեր առաջ։ Աւետարանին խօսք շատ յարմար է այս բախտին. «Այլք վաստակեցին եւ դուք ի վաստակս նոցա մտիք»։

Ջասե՞ս ուրեմն, Թոռնիկ. այլ եւս ի՞նչ պէտք է մեզ աշխատութիւն, վաստակ, նստինք այդ պատրաստուած սեղանին վերայ եւ ճաշակեմք։

Այդ շատ սխալ դատողութիւն է. դու կարծեցիր որ մեր տակտիկնոջ եփած թանապուր եւ ճա՞շն է այդ սեղան, որ դըգալն առնելով նստինք ուտենք։ Ո՛չ, բազում ջանք, բազում վաստակ, բազում տքնութիւն եւ ճգնութիւն պէտք է, որ մենք կարենամք Եւրոպային պատրաստած սեղանին հացն ուտել. զի այդ հացը՝ դպրոցի անդաստանին մէջ կը մշակուին։ Դու ի՞նչ կասես, Թոռնիկ. չվարենք, չցանենք, չդարմանենք, չհընձենք, չկասենք, ցորեն չ՚աղանք ,ալիւր չշաղղենք, թոնիր չվառենք, հաց չթխենք, առանց այսչափ քրտնաթափ աշխատութեան՝ նստինք այնպէս դիւրութեամբ ու հանգիստ հա՞ց ուտինք։ Դու լսեր ես Աւետարանէն, որ ճնճղուկներ առանց վարելոյ, վաստակելոյ կը կերակրուին։ Է՜, ապո՛ւշ Թոռնիկ, դու երբէք չե՞ս նկատեր ճնճղկան աշխատութիւն, այդ նկուն թըռչ-

նիկ միթէ իր չափով ճգնութիւն չունի՞. չե՞ս տեսնար, որ նա իր սերունդ պահպանելու համար հազար անգամ կերթայ կը դառնայ շիւղիկներ բերելով իր բոյն կը շինէ, ձու կածէ, ձագեր կը հանէ, անդադար կերթայ կուգայ, փոքրիկ որդեր գտնելով՝ ձագերուն կը բերէ, մինչեւ թեւիկներ բուսնին, դու տես էն ժամանակ թէ ո՞րչափ կաշխատի կրթութիւն տալ իր ձագերուն, որ թռչտիլ սորվին:

Կը տեսնա՞ս, Թոռնիկ, բնութեան մէջ բան մի չիկայ, որ չաշխատիր, թռչուն, անասուն, սողուն, ինչ որ կենդանի եւ շարժուն է, կաշխատի իր կեանք պահպանել. թող ցամաքային կենդանիներ, ծովու ձկներ եւ բիւր տեսակ լողական կենդանիներ այդ ծովային աշխարհին մէջ կ'աշխատին ու կը տըքնին դարձեալ իրենց կեանք պահպանելու:

Տիեզերքի մէջ անխօսուն կենդանիներ ի բնութենէ մի անգամ սորված են, ստեղծող Աստուած իր արարչագործութեան դպրոցէն այնպէս դուրս հանեց, որ այդ անբան կենդանիներ առանց ուսնելու եւ կրթուելու կարենան իրենց կերակուր ճարել ու ապրել:

Բայց մարդ՝ որ բանաւոր կենդանի ստեղծուած, եւ կիշխէ բոլոր կենդանեաց վերայ, նա առանց դպրոցի, առանց կրթութեան կարող չէ իր հաց հայթայթել: Թէպէտ մեր աշխարհի ժողովուրդ, որ ամենամեծ մասով տգէտ եւ անուս է, դառն ու տաժանելի կերպով իր օրական պարէն կը հայթայթէ, սառապանօք եւ նեղութեամբ կուտէ իր հաց. բայց երբէք կարելի չէ, որ նա գոնէ փոքր ի շատէ բարեկեցիկ կեանք ունենայ, գիտնայ իր կեանքի տնտեսութիւն, տուն եւ ընտանիք կարգով կանոնով կառավարել. գիտնալ աշխարհի բաներ, մարդոց կենցաղավարութեան պայմաններ, գիտնալ տիրապէս լաւն ու վատ. բարին ու չար, առաքինութիւն եւ մոլութիւն: Գիտնալ ստուգապէս, որոշել ճշմարտութիւնն եւ ստութիւն, արդարութիւն եւ անիրաւութիւն, պատիւ և անարգանք: Եւ որ մեծն է գիտնալ նա եւ իր պաշտած քրիստոնէական կրօն, Ս. Գրոց եւ Աւետարանի գերագոյն պատուէրներ, թէ ի՞նչ են քըրիստոնէի պարտիքներ թէ՛ առ Աստուած, թէ առ ընկերս եւ թէ առ ընտանիս, առ եկեղեցին, առ ազգն, առ տէրութիւն:

Ահա այս ամէն ամենակարեւոր հմտութիւններ դպրոցի կրթարան կուսուցանէ մեզ: Ուստի գիւղական ժողովուրդի արդի վիճակ փոխելու համար՝ առաջին ու հիմնական պայմանն դպրոց եւ կրթութիւն է: Ասա դու, Թոռնիկ, կրթարան հաստատելու համար մարդ պէտք է, եւ մարդոյն հետ դրամ. ո՞ւր մարդ, ո՞ւր դրամ եւ ո՞ւր կրթիչ մանկավարժ, եւ կալո՞յ թէ ի հնձանէ: Արդէն գիւղական ժողովրդի վիճակ յայտնի է. նա միտք չունի, որ մտածէ եւ ոչ իսկ կրթութիւն բառ կարող է հասկանալ. եթէ ասես թող քաղաքացին օգնէ, զի գիւղական ժողովրդի շնորհիւ կը լինի իր ամէն առեւտուր եւ շահ: Այո, քաղաքացին ոչ թէ նիւթապէս կարող չէ ձմեռն տալ, օգնել մը-

չափ ժողովրդի կրթութեան, այլ բարոյապէս եւս նորա ոգին ցուրտ եւ անտարբեր է նոյն իսկ իւր զաւակներու կրթութեան համար։ Ահա օրինակ մեզ մօտ է անուանի Վան քաղաք, հարցուր թէ Վանեցին տարեկան ո՞րչափ գումար կը ծախսէ իւր դպրոցներու համար, այդ չեմ խօսիր, կը խնայեմ, միայն այսչափ կասեմ, որ Վանեցին մեծ մասամբ իւր մանուկներ եւ աղջիկներ եկեղեցւոյ նուիրուած դուզնաքեայ մոմազնով եւ խղազնով կը կրթէ. կրթութեան համար թոշակ տալու սովորած չէ, եւ թէ ուզես՝ կը խոժոռի, եթէ ստիպես՝ տղան դպրոցէն կը հանէ։

Բայց Թոռնիկ, մեզ չէ պիտոյ քաղքցոց օգնութիւն, չէն մընայ գիւղական ժողովուրդ, նա տէրութեան պարտքեր կուտայ, այնչափ երթեւեկող հիւրեր կը հոգայ, մի թէ կարող չէ՞ մի պարզ մանկավարժ պահել, որ շատ քիչ թոշակով կը բաւականանայ։

Մեք հաց ունիմք, իւղ ունիմք, պանիր ունիմք եւ այլ կաթնեղէն բաներ. մեր վարժապետներ շատ սակաւապետ են, ժաժկով անգամ գոհ կը լինին։ Միայն թէ հոգացող, կարգադրող հեղինակ պէտք է, որ յորդորէ, առաջնորդէ ռամիկ ժողովրդին դէպ ի կրթութեան ճանապարհ։ Ո՞ւր է այդ սեպուհ պարտիք, նախ վիճակաւոր Առաջնորդին եւ երկրորդ վանական վարդապետնորն։

Այլ աւա՛ղ, Թոռնիկ, մեր արդի Առաջնորդներ՝ գիտես թէ մի քաղաքական պաշտօնեայ դարձած են. բուն եկեղեցւոյ պաշտօնէութիւն, դպրոց, կրթութիւն, ուսումն եւ այլք բարձի թողի եղած են։ Այս բանիս համար, ո՞վ է մեղաւոր, ժողովո՞ւրդ թէ Առաջնորդ։ Մեք այնպէս կը դատենք, որ Առաջնորդըն է մեղաւոր, վասն զի՝ նա մի հովիւ է, Աւետարանի պաշտօնեայ է, եւ սոսկ մի հոգեւորական սպասաւոր է Քրիստոսի եկեղեցւոյն։

Բայց տես դու, ժողովուրդն իւր Առաջնորդին հոգեւորական պաշտօն մարմնացուցած է։ Նա չի պահանջեր Առաջնորդէն, որ իւր փակուած աչքեր հրաշքով բանայ եւ տեսնայ, թէ ի՞նչ բաներ կան աշխարհի վերայ, կամ իւր հոգեկան հիւանդութիւններ բժշկէ. այլ մի միայն մը հրաշք կը խնդրէ, որ Առաջնորդ Յիսուսի պէս՝ հինգ նկանակն օրհնէ եւ հինգ հազար մարդ կերակրէ։ Եւ այսպէս, քաղցած ժողովրդի հացի խնդիրն յաղթահարած է Աստուծոյ կենաց բանին, որոյ քարոզիչ մատակարար Առաջնորդն է, որչա՛փ ողբալի է, Թոռնիկ, ժողովրդին անգիտակցութեան վիճակ, որով այնպէս կը թուի, որ ինքն աւելի մեղաւոր է քան Առաջնորդ։ Այլ ո՞վ կարող է դատել զինքը, երբ ժողովուրդ իւր կեանքի խնդիրներով խեղդըւած եւ անձկութենա մէջ պաշարուած, ամէն ճար Առաջնորդէն կը յուսայ։ Այո՛, պիտի յուսայ, քանի որ ժողովուրդ տըգէտ է. ուսումն չունի, խօսել չ՚գիտէ, երկրիս օրէնք չ՚գիտէ,

անշուշտ նա իւր դատին միջնորդ, փաստաբան՝ Առաջնորդ կը ճանչնայ:

Ուրեմն, Թոռնիկ, բան կը մնայ դարձեալ վանական վարդապետներուն վերայ, որոնք ազատ վիճակ ունին: Մեծ պարտականութիւն ունին նոքա եւ երախտապարտ են գիւղական ժողովրդին համար ամենայն անձնուիրութեամբ աշխատել, այցելել գիւղէ ի գիւղ քարոզել, ուսուցանել, պարզ ու ընտանեկան ոճով խօսել այնպէս, որ հասկնայ ժողովուրդ եւ կարենայ ըմբռնել դպրոցի նշանակութիւն, մանուկներու կրթութիւն:

Այս կերպով այցելու վարդապետ ո՛չ միայն կը յաջողի գիւղական դպրոցներ հաստատել, այլ նա կը յաջողի նաեւ գիւղի երիտասարդներ, այրական հասակով մարդիկներ եւ նոյն իսկ հնացած ծերունիներ կրթել, որոց կրթարան եկեղեցին է: Եթէ վարդապետ յաճախէ իւր այցելութիւն, խօսի, կրկնէ իւր քարոզներ, կարդացած Աւետարանի միտքեր, բացատրէ, ցոյց տայ Աստուծոյ պատուէրներ, կենաց բանին ու հացին սեղան այնպէս պատրաստել ու դնել քաղցած ժողովրդին առաջ, որ նա ուտէ ու լիանայ:

Գիւղական ժողովուրդ թէպէտ քրիստոնէական կեանքի մէջ շատ ծեր է, բայց իւր արդի կեանքը նկատելով, նա մի նորածին կաթնկեր երախայ դարձած է, նորա կեանքի պատկեր տգիտութիւն եւ ռամկութիւն է: Նորա ատամներ դեռ բուսած չեն եւ պէտք չեն նորա համար հաստատուն կերակուրներ, այսինքն նուրբ դասեր եւ քարոզներ. նորա համար միայն կաթնեղէն սնունդ պէտք է, որ նա կարենայ քաղցրութեամբ ճաշակել ու մարսել: Իրաւ է, որ մանկութեան ուսումն շատ հիմնաւոր եւ հաստատուն է: Երանի՜ թէ ես էլ բախտ ունենայի՝ մանուկ հասակով դպրոց մտնայի ու կանոնաւոր կրթութիւն ստանայի, ինչ որ գիտեմ եւ ինչ որ կը խօսեմ քեզ այս դասերը, չափահաս հասակէս սկսեալ սորված եմ, որ շատ դուզնաքեայ բաներ են, զի միայն լսելով եւ գրքեր կարդալով փոքր ի շատէ հմտացած եմ աշխարհի բաներուն: Գիտե՛ս, Թոռնիկ, ամէն մի գիրք, մի–մի վարժապետ են կարդացողի համար. գրողներ մեռեր գնացեր են, գիրն կենդանի մնացեր է, կան այնպիսի դրքեր, որ անմահ են. թէ անցնին հազար–հազար տարիներ՝ դեռ պիտի խօսեն մեզ հետ:

Այս մի քանի տողեր գրելով՝ հասկցունել կուզեմ քեզ, Թոռնիկ, որ հասակ առած մարդիկ կարող են փոքր ի շատէ կարեւոր դասեր սորվել ու կրթուել, միայն թէ այդ դասախօս՝ պէտք է լինի մի անձնուէր մարդ, անձանձրոյթ, մշտախօս, անյուսահատ, յարատեւող ու երկայնամիտ: Սորա փորձն ու ապացոյց՝ ես աչքովս տեսայ, պատմեմ քեզ, Թոռնիկ:

Աստի գրեթէ քսան եւ հինգ տարի առաջ, Պօլսոյ Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ հովանեաց տակ կրթութեան մի նորօրինակ ձեռնարկութիւն եղաւ: Այդ բանին սկզբնաւո-

բող հեղինակ Ղազարոս Քրիստոստուր անուն մի պատուական անխոնջ աշխատասէր մարդ էր, ափսո՜ս. նա մեռաւ երկու տարի առաջ, բայց իւր ձեռնարկութիւն անընդհատ շարունակեց մինչեւ ի գերեզման: Եւ ի՞նչ էր իւր ձեռնարկութիւն.— Կիրակնօրեայ մի լսարան բանալ՝ պանդուխտ բեռնակիրներու կրթութեան համար: Այո՛, բացեց ու յաջողեցաւ, տեսնայիր դու կիրակի եւ տօն օրեր, թողլով սրճարան եւ ուրիշ զուարճութեան տեղերն՝ մեր պանդուխտ եղբայրներ լսարան կը թափէին. պարոն Քրիստոստուր անթօշակ վարժապետ այբէն սկսելով իւր պարզ դասեր կաւանդէր: Նա մանկավարժ չէր, բայց այնպիսի գիւրին ոճով ու եղանակաւ կուսուցանէր դասերը, որ այդ թանձրամիտ կարծուած բեռնակիրներ ամենայն դիւրութեամբ կըմբռնէին նորա սամծներն: Եւ ահա փոքր շրջանում՝ մեր բեռնակիրներ, գռեհիկ շինականներ բանգէտ դարձան: Սորվեցան բաւական հայերէն լեզուն, Քերականութիւն, Սուրբ գրոց պատմութիւն, Քրիստոնէական վարդապետութիւն եւ Աւետարանի դասեր, Թուաբանութիւն, տոմարական հաշիւներ եւ այլն:

Դու գիտես, Թոռնիկ, ի՞նչ եղաւ այս արդիւնաւոր ձեռնարկութեան վախճանը. երբ բեռնակիր մարդ ուսման ճաշակն առաւ, փոքր ինչ զարգացաւ նորա միտքն, նա զգաց ու ճանչցաւ իւր արժանիք, գիտցաւ թէ մարդն անասուն չէ, որ բեռ կրէ, Աստուած զմարդն իշխան ստեղծեր է, որ անասնոց վարիչ լինի: Ուստի բեռնակիր ձգեց համետ (սէմէր) իւր բրտացած քամակէն, գնաց իւր արժանիքին համեմատ գործերու պարապեց: Այդ բեռնակիրներ մինչեւ անգամ մասնաւոր գրագրութեան պաշտօններ ընդունեցին, ոմանք եւս իրենց հայրենիք դառնալով՝ գիւղական դպրոցներու մէջ մանկավարժ եղան:

Երախտապարտ եմ յիշել ու խոստովանել, որ Պոլիս եղած ժամանակ՝ շարունակ կերթայի այդ անձնուէր մարդոյ մօտիկ անելու, մանաւանդ իւր խրատական եւ բարոյական դասեր շատ կրթիչ ու օգտակար էին գաւառացի պանդուխտներուն համար: Հանգուցեալ հոգին մի անվեղար, անպաւաղան քարոզիչ վարդապետ էր. նա չգիտէր մեթոտ, կամ ճարտասան լեզու գործածել, կամ համառօտ ու հարեւանցի կերպով սսել, անցնել. այլ այնչափ կը խօսէր, այնչափ կը վարէր բեռնակիր աշկերտներուն կորդացած երկիր, մինչեւ խրխրէր նոցա միտքն, ցանէր ու տեղաւորէր իւր դասերու հատիկներ. իւր յիշատակն օրհնեա՛լ եղիցի, եւ Տէր Աստուած հատուցանէ այդ անխոնջ մշակին վարձք:

Այս ճշմարիտ իրողութիւն իբրեւ ապացոյց՝ պատմեցի քեզ, Թոռնիկ, որպէս զի դու եւ գիւղական ժողովուրդ համոզուիք թէ՝ չափահաս մարդիկ եւս կարող են կրթուել, կարող են սովորել, միայն թէ անձնանուէր ուսուցանող լինի, մանաւանդ երբ ուսուցանէ եւ միանգամայն գործէ եւ իւր անձն իբրեւ օրինակ՝ ընծայէ ժողովրդին:

Եւ ո՞ւր են այդ անձեր, եւ որչա՞փ հազուագիւտ են շինական ժողովրդին համար, եւ ո՞ր տեղէն պիտի լինին դուքս յանկարծ, անապատէ՞ն պիտի գան Յովհաննէս Մկրտչի նման, կամ Տէր Աստուած հոգալով իւր ժողովուրդ՝ հովիւներէն մարգարէ՞ պիտի հանէ իւր շնորհաց դպրոցէն, ինչպէս կը հանէր երբեմն Իսրայէլի ժողովրդին համար: Քանի որ հաստատեալ բարեկարգ կրթարաններ չունիմք, որ ուսեալ եւ կրթեալ ժառանգաւորներ հասնին, այսպէս կը մնայ ժողովրդին վիճակ:

Հունձք բազում եւ մշակք սակաւ, կասէ Յիսուս: Աղաչեցէք զտէր հնձոց, որ հանցէ մշակ ի հունձս իւր: Մեք ոչ կաղաչեմք եւ ոչ կը խնդրեմք, ինքնին Տէր Աստուած գթալով մեր խեղճութեան վերայ, երբեմն փոքրիկ մշակ, այցելու հովիւ կը հանէ մեր հունձերուն համար, ինչպէս Տէր Դանիէլ վարդապետ միաբան Վարագայ վանից, որ տասն տարիներէ ի վեր ամենայն անձնանուիրութեամբ կը հովուէր ոչ միայն մեր Արճակ գիւղն, այլև բոլոր մօտակայ և հեռաւոր շրջակայ գիւղեր նորա այցելութեան ոտք հանգիստ չէր գիտեր, այլ անդադար կը հրջէր· այդ անխոնջ մշակ ոչ միայն Աւետարանի սերմեր կը ցանէր, բարոյական խրատներ կը խօսէր, այլ եւ գիւղական տնտեսութեան դասեր եւս կաւանդէր· այնպէ՛ս պարզ, յստակ, ու հասկանալի ոճով, որ մեք թանձրամիտ շինականներս կարող էինք ըմբռնել նորա ամբողջ խօսքեր: Նա շինեց ու հաստատեց մեր Արճակու դպրոց, եւ միանգամայն նորա յարատեւութեան համար եկամուտներ կարգադրեց, նոյնպէս ուրիշ շատ գեղերու մէջ եկեղեցիներ շինեց, դպրոցներ հաստատեց: Դանիէլ վարդապետին կեանք բոլորովին պարզ եւ սակաւապետ էր, նա կը կերակրուէր շինականի սեղանէն, որ սովորաբար թանապուր եւ մածուն էր, անտրտունջ կուտէր եւ կասէր, Կրօնաւորին համար՝ այսչափս բաւական եւ շատ է: Իւր ոգին առընչասէր էր եւ ազատ ագահութեան ախտէն: Գութ ունէր, կը դորովէր խեղճերուն վերայ· կը սիրէր տալ՝ քան առնուլ· Նա ունէր մի հաստատուն կամք, ինչ որ սկսէր ձեռնարկել՝ անվհատ ոգւով կաշխատէր յառաջ տանել· Նախապաշարման կապէ արձակուած էր· նա թէեւ չունէր այնչափ ուսումն եւ ընդարձակ զարգացած միտք, բայց շատ ընդունակ էր ժամանակի յառաջդիմութեան: Վերջապէս Դանիէլ վարդապետ միակ այցելու հովիւ էր գիւղական ժողովրդին համար, սորա համար ժողովուրդ զինքը կը սիրէր եւ ինքն եւս աւելի կը սիրէր գիւղացի ժողովուրդ:

Երանի՛ թէ շատնային եկեղեցւոյ այսպիսի անձնուէր մշակներ մեր առատ հունձերուն համար· դու տեսնայիր, Թոռնիկ, էն ժամանակ թէ ինչպէս գիւղական ժողովրդին վիճակ կը փոխուէր ու կը բարւոքէր:

Վերջացնելով այս ընդհանուր դասեր, ժամանակ եկաւ պիտի խօսիմ եւ յայտնեմ քեզ ա՛յն բան, որ առանձին քո կեանքին եւ մեր գերդաստանին կը վերաբերի:

ԻԱ.

# ԹՈՌՆԻԿԻՆ

## ՀԱՐՍՆԻՔ

*Է՛, Թոռնիկ, ես ծերացայ, մայրիկդ էլ պառաւած է, ո՞վ պիտի լինի տանուտէր եւ տանտիկին, որ շահէ ու պահէ մեր տուն: Աւետիս տամ քեզ, քո ամուսնութեան ժամանակ հասած է. կարծեմ քսան տարին անցուցիր, դու գիտես գիւղացւոց հին նահապետական սովորութիւն, որ իրենց զաւակներ շուտով կը կարգեն, որպէս զի տան աշխատաւորներ հասնին:*

*Դու կը տեսնաս ես եւ դու միայն ենք, մեր հողագործութիւն բոլոր վարձկան մշակներով կը կառավարենք. լաւագոյն չէ՞, որ տնէն եւս աշխատաւորներ ունենամք:*

*Թո՛ղ այս, Թոռնիկ, թէ ես եւ թէ մայրիկդ կը ցանկամք չմեռած՝ տեսնալ քո թագն ու պսակ: Պապերու, Հայրերու եւ Մայրերու միակ ցանկութիւնն այս է, որ տեսնան իրենց զաւակներ եւ թոռներ, որոնք Աստուծոյ օրհնութեան պտուղներ են, զի Աստուած երբ օրհնեց մեր նախածնողներ Ադամ ու Եւայ, ասաց, աճեցէք ու բազմացէք եւ լցէք երկիր: Բայց մեր տուն դատարկ է, Թոռնիկ, երեխայ մի չկայ, որ գգուեմ ու սիրեմ, ընտանեկան ուրախութիւն ու բերկրանք՝ այն սիրուն եւ քնքուշ մատաղ տղայոց վերայ է. տղայք տան բնական երաժիշտներ են, կը խաղան, կը ճլվլան, կուլան, կը ծիծաղեն. այդ կենդանի փոքրիկ էակներ, անդադար կը շարժին, հանգիստ չը գիտեն: Որչա՞փ հրճուանք է որդեսէր ծնողաց համար, երբ նոքա սեղանին շուրջ կը բոլորին, ինչպէս կասէ Դաւիթ. «Որդիք քո որպէս նորատունկ ձիթենւոյ շուրջ զսեղանով քով»:*

*Գիտե՞ս, Թոռնիկ, ամուսնութիւն Աստուծոյ հաստատած մի օրէնքն է՝ մարդկային սեռ պահելու համար. Պապկի տան անուն եւ մեր ընտանիք կը ջնջուի, եթէ դուք չամուսնանաք, եւ պէտք է որ ընդունիք կազմելով մեր ընտանեկան կեանքն ու դերդաստան կենդանի պահէք:*

*Իրաւ է, որ ամուսնութեան համար քաղաքացին շատ կը մտածէ, բայց շինական ժողովուրդ սովորած չէ մտածել, թէ-եւ լինի յետին աղքատ: Մեր մէջ առած մի կայ, կը պատմեն թէ՝ մի աղքատ գիւղացի, որ միայն մի իշուկ ունէր, մի օր իւր կնոջ հետ խորհելով կասէ, կնիկ, կը տեսնաս մեր տղան հասաւ, ի՞նչպէս կարգեմք: Եւ որովհետեւ շատ բնական է, որ մայրեր աւելի հոգացող ու հակամէտ են իրենց զաւակ շուտով կարգելու, պատասխան կուտայ էրկան ու կասէ, էշը ծախենք ու տղան կարգենք: Ա՛հ, ի՞նչ կասես դու, կնիկ, չ'գիտե՞ս մեր ունուտ – ապաւէնն այդ իշուկն է, մեք վար ու ցան չունիմք,*

պտըտուր ու ցախ բառնալով կը տանեմ քաղաք կը ծախեմ եւ այդ իշով միայն մեր օրական պարէն կը ճարեմք։ Ծօ՛, մարդ, դու էլ շատ կը մտածես, Աստուած ողորմած է․ տղան կարգենք, նորա հացն Աստուած կուտայ, եւ գուցէ մեր տան բախտ բացուի, իշու տեղ՝ ձիու տէր լինիմք։

Օրհնեա՛լ է Աստուած, Թոռնիկ, մեր տուն բարիքներով լի է, էշ կամ գոմէշ ծախելու պէտք չունիմք, ամէն բան տնէ է․ մեր այն մեծ տահ եզը կը մորթեմք, հարիսայ կը դնեմք, թող գեղով ուտեն։ Կը յիշէ՞ս Թոռնիկ, թէ ո՞ր եզն է․ մի օր դու գութան արած ժամանակ ասիր, Պապիկ, ակօս ծուռ կերթայ, եւ ես ասի քեզ, գիտեմ, Թոռնիկ, ակօսին ծռութիւն մեզ եզնէն է․ դեռ դու չգիտես աշխարհի բաներ, միայն անբան եզներ չեն, որ ակօս կը կծռեն, որչա՞փ ակօս ծռող մարդիկ կան, որոց գործն ու կեանք երբէք ուղղութիւն չունի․ այդ ակօս ծռողներուն երեսէն է, որ աշխարհի բան ծուռ կերթայ։ չեմ խօսիր քեզ, միամիտ Թոռնիկ, նոյն իսկ մեր գիւղի մէջ որչա՞փ ակօս ծռողներ կան։ Հիմի մեր եզը մորթելով կազատուինք ծուռ ակօսի փորձանքէն, Աստուած աղաչենք, որ ազատէ զմեզ ծուռ մարդոց փորձանքէն։

Գիտեմ, Թոռնիկ, դու այժմ ինքնին կը խօսես մտքիդ մէջ թէ Պապիկ նստեր է իմ հարսնիքի ճառ կը խօսի․ կասէ թէ հարսանեաց ճաշ պատրաստ է եւայլն․ բայց չասիր թէ՝ ո՞ւր է իմ հարսանեաց հանդերձ, եւ ո՞վ է Թոռնիկին նշանած աղջիկ։

Ապուշ Թոռնիկ, չե՞ս յիշեր դու առջի գլուխ դասիս մէջ խօսեցայ քեզ թէ Ըստամպօլէն վերադառնալով մի ձեռք պատուական չուխայ լաթ ունէի, մինչեւ ցարդ սնտուկին մէջ պահած եմ, ահա այն պիտի լինի քո փեսայութեան հանդերձ․ միայն թէ երբ հարսնիք լրանայ, պէտք է հանես դնես սնտուկ եւ միայն տօնի օրեր հագնիս, դու հողագործ աշխատաւոր ես, չուլէ շալվար կը վայելէ քեզ։

Իսկ նշանածիդ համար խօսիմ քեզ, որ սիրտդ հանդարտ լինի․ մեր գիւղի տանուտէր Մուրատ համբան կը ճանչնաս, ահա այն պիտի լինի մեզ խնամի, որոյ տուն նահապետական է եւ ամբողջ ընտանիք բարի եւ անվնաս մարդիկ են։ Տանուտէր Մուրատին մի աղջիկ կայ չափահաս Շուշան անուն, որ շատ պարկեշտ, տնարար եւ ժրագործ մի աղջիկ է, եւ դու անշուշտ շատ անգամ կը տեսնաս զինքը, մեր գիւղական ընտանիք Փըռանգստանէն առաջ ալաֆրանկայ են, վասն զի գիւղական ժողովուրդի կեանք հին նահապետական կեանքի մնացորդ մի պատկերն է։

Ահա իմացուցի քեզ ամէն բան․ գուցէ քո մտքէն չէր անցներ, զի դու պարզամիտ եւ ուղղախոհ մի զաւակ ես․ Պապկի սուր աչք քո վրան միշտ կը հսկէր, դու այժմ ժրացիր Թոռնիկ, ինչ որ կասեմ՝ շուտով կատարէ, միայն վեց օր է մնացեր, յառաջիկայ երկուշաբթի առաւօտ մեր գիւղի եկեղեցւոյ մէջ

*սուրբ սեղանին առաջ պատարագին դիմաց՝ աւետարանով ու խաչով քո պսակի խորհուրդ պիտի կատարուի: Դու այժմէն լուր տուր* նաղարաչի *Մխօյին եւ* զուռնաճի *Մրդոյին. գիտես որ մեր գիւղական հարսնիք առանց այդ բաներուն համ չունի: Ա՛ռ դու այժմ Թոռնիկ, մեր մեծ էշ եւ երկու տիկ. գնա չուտ Շահպազի գիւղ մեր ծանօթ բարեկամէն տասներկու լիտր գինի առ եւ բեր, բայց նայէ որ ջուր չը խառնեն գինւոյն հետ. Շահպազեցիք մեզ պէս միամիտ չեն, քաղքցոց մօտ լինելով՝ խարդախել սովորած են. ի՞նչ անեն խեղճեր, երբ քաղքցին տոկոսն աւելի կը բարդէ, էնոնք էլ ջուր կը խառնեն՝ երբ տոկոսին տեղ գինի տան:*

*Կարգն եկաւ, մի բան պատմեմ քեզ, որ զարմանաս: Ես մի օր աշնան վերջ Վանայ Առաջնորդարան գնացի, տեսայ որ քաղաքացւոց եւ գիւղացւոց դատաստան կար: Ես էլ նստայ մտիկ արի. էդ քաղքցին մի* պօղիկ *գինի բերած էր, մի գաւաթ լեցուց տուաւ Առաջնորդին. Հայր սուրբ, ասաց, խմէ՛ տես, այս գինի՞ է թէ ջուր. համտես արաց Առաջնորդ՝ եղբա՛յր ասաց, կերեւի որ բաւական ջուր խառնուած է, պատմեց վաչխառու քաղքցին թէ ես այս ինչ գիւղացւոյն վերայ այսքան հազար դահեկան դրամ ունիմ, էդ պարտապան գիւղացին տոկոսին տեղ՝ երբեմն ալիւր եւ երբեմն չիրայ կը բերէ եւ ես կընդունեմ ի հաշիւ տոկոսին. այս տարի աշնան յիսուն լիտր չիրայ բերաւ, ես էլ միամտութեամբ լցի կարասներս: Գիտե՛ս, Հայր սուրբ, ես գինի սիրող մի մարդ եմ, անհամբեր կսպասեմ որ չիրան եռից իջնայ՝ նոր գինի խմեմ, յաճախ կերթամ կը նայեմ կարասներուն կը տեսնամ որ չեն եռար. ի՞նչ բան է կասեմ, նոր գինին անպատճառ պէտք է եռայ, յետոյ իմացայ թէ ի՞նչ պարզամիտ եղեր եմ, չինական գիս խաբած է եւ ջուր խառնած է չիրային հետ: Ես գրոց մարդ չեմ. բայց իմացայ որ ջրախառն չիրան չի եռար: Ահա այս է իմ բողոք, կաղաչեմ Հայր Առաջնորդ, իմ դատաստանս ուղիղ տես:*

*Կանչուեցաւ գիւղացին եւ նա առջի անգամ այսպէս խոստովանեցաւ, թէ ես ջուր չեմ խառնած, կարելի է որ ջուրն ինքնին խառնուած է, որովհետեւ մեր չիրախանայի պատի տակէն ջուր կանցնի էդ առուէն, ջրծակ ունիմք չիրախանէն լուանալու համար, պատահմամբ բացուած է եւ ջուր վազեր է չիրայի գուբին մէջ:— Լաւ կը պատմես տղաս, բայց չիտակ չես խօսիր, ասաց Առաջնորդ. եթէ ջուրը ինքնին վազած է, անպատճառ բոլոր չիրան ջուր կը դառնար, բայց սա գինոյն մէջ ջուրն չափով խառնուած է. թող այս. դու եթէ գիտէիր որ այդպիսի փորձանք եղած է, ինչո՞ւ համար ջրախառն գինի բերիր քո աղային:*

*Հայր սուրբ, հօգւոյդ մեռնիմ մտիկ արա, որ մեղքս չիտակ խոստովանիմ եւ կաղաչեմ, որ դու էլ չիտակ դատաստան տեսնաս:*

*Անցեալ տարի ես յիսուն լիտր ալիւր բերի աղային, ես*

արդէն ալիւր կշռած էր, գիտէք որ գիւղերու կշիռքի քարեր բաւական ծանր են քաղաքի քարերու վերայ․ մեք դիտմամբ այսպէս արած ենք, գիտնալով որ մեր բաներ քաղաք կերթայ՝ միշտ պակաս կը հանեն, ինչպէս մեր աղան, բակի մէջէն մի անորոշ եւ կոշտ քար մի բերաւ դրաւ կշիռքն, ինձ ասաց թէ այս մի լիտր է․ դու գիտես պարզամիտ շինականներ քաղքցւոց շուտ կը հաւատան․ աղան սկսեց կշռել ալիւր եւ ծանր ծանր կշռեց, եւ տես դու, անիրաւ կշիռք հինգ լիտր պակաս բերաւ․ Աստծու սիրուն ասի, աղա, իմ ալիւրս լման յիսուն լիտր է․— ո՛չ, միթէ ես քեզ անիրաւութի՞ւն կանեմ, այսպէս ասաց եւ քառասուն հինգ լիտր հաշուեց։ Այս անխիղճ զրկանք ինձի սրտի ցաւ եղաւ, չի կրցայ մոռնալ, միտքս դրի որ սորա փոխարէն աղայէն հանեմ, ուստի ջուր խառնեցի շիրայիս եւ լաւ արի, զի մեր աղան գինին ջրախառն կը խմէ, որ գլուխ չի բռնէ։

Ահա Հայր դատաւոր, մեղքս ուղիղ սրտով խոստովանեցայ, դու էլ ուղիղ մտքով դատաստան արա․ ո՞վ է մեղաւոր, ե՞ս թէ աղան․ միայն անոր համար մեղաւոր եմ, որ ալիւրի խնդիր Ձեր առեանը չը բերի, զի փորձով գիտեմ, քաղքցին ու շինական երբ դատաստանի գան, ո՛վ չի գիտեր որ քաղքցին կը շահի դատը, եւ սորա պատճառներ դու լաւ գիտես, Հայր սուրբ, էլ ի՞նչ ասեմ։

Կը տեսնա՞ս, Թոնիկ, որ գիւղացւոց աչքը սկսած է կամաց կամաց բացուիլ։ Բայց ես խրատ կուտամ քեզ, Թոնիկ, մի՛ գուցէ դու էլ այս պատմութենէն օրինակ առնելով՝ հետեւիս ճարպիկ գիւղացւոյն, խարդախութեան դէմ խարդախութիւն ի գործ դնես, զի այդ շատ հակառակ է Աստուծոյ պատուէրին։ Թող այս, եթէ միանգամ խարդախել սովորիս, այլ եւս կը լինի քեզ այն արհեստ եւ ունակութիւն․ էն ժամանակ դու ոչ միայն խարդախին դէմ նենգել կը ջանաս, այլ գուցէ նա եւ անխարդախ մարդոյն դէմն եւս այնպէս վարուիս։ Շատ է որ դու զրկանք կրես եւ վնասիս, քան թէ զրկես եւ վնաս տաս ուրիշին։ Բայց աւելի լաւագոյն է, որ արթուն եւ աչալուրջ լինիս, ոչ խաբես եւ ոչ խաբուիս։

Գիտեմ, Թոնիկ․ ես քեզ խրատ կը խօսիմ, այլ դու մըտքիդ մէջ ինքնախօս կը լինիս, թէ Պապիկ մեր հարսնիքի խնդիր մոռցաւ, գինու խնդիրէն ուրիշ խնդիր հանեց, երկար – երկար ճառ կը խօսի գլխուս։ Չէ՛, Թոնիկ, չէ՛, ամուսնացողին շատ խրատ պէտք է, կարծես որ ծեր Պապիկդ ծանծղեր է, գուցէ մոռցաւ հարսնիքի մեծ խնդիր։ Ո՛չ, այսօր շաբաթ է, դու էլ գինին բերիր հասուցիր, ուրեմն ամէն ինչ պատրաստ է։

Այս իրիկուն ադպաճստում է, գեղի բոլոր նորահաս կըտրիճներ պիտի ժողուին, նոր փեսան իրենց մէջ առնելով՝ պիտի խաղան խնդան, ուրախութիւն անեն մինչեւ լոյս։ Առաւօտ կիրակի է, գեղի բոլոր ժողովուրդ մեծն ու փոքր, այր մարդիկ, կիներ, հարսներ, աղջիկներ, պառաւներ, իրենց ճժերով մեր

հարսնիքի տուն պիտի լեցուին: Գեղացւոց հարսնիք էսպէս կը լինի, դուռ բաց է, քաղքցւոց հարսնիք չէ որ դուռ փակեն հարսնիք անեն՝ մկներ առիքը չիմանան:

Էսօր իրիկուան մօտ հարսի հետ պիտի երթամք, ես եւ գեղի բոլոր մեծ – մեծ համբաներ: Հարս պիտի բերենք իջուցենք տուն, քօղ գլխուն թախթին վերայ պիտի նստի, հարսնքոյր իր մօտ էնպէս, ինչպէս պահապան հրեշտակ:

Ժամհար կոչնակ զարնելուն պէս լուսումութին՝ եկեղեցի պիտի գնամք բոլոր հարեւաններով մէկ տեղ, դու այնպէս պէտք է հաւատաս, որ եկեղեցին քեզ համար մի Աղամայ դրախտ է, ուր իջած է Աստուած, ձեր պսակ պիտի դնէ եւ օրհնէ քահանային ձեռքով. դու էնպէս համարի թէ մինչեւ ցարդ կեանքիդ մէջ քնած էիր, յանկարծ կը զարթիս, քնաթաթախ աչքդ կը բանաս, որ մի նոր Եւայ Շուշան ծաղիկ բուսած է կշտիդ, ձեռք ձեռքի կուտայ քահանան ու կասէ. «Առեալ ըզձեռն Եւայի տուեալ ի յաջն Աղամայ» եւ այլն, դու եւս մտքիդ մէջ խօսիր մեր մեծ Պապկին պէս: «Այս այժմ ոսկր յոսկերաց իմոց եւ մարմին ի մարմնոյ իմոյ եւ այլն: Կսկսի քահանան ուրիշ խորհրդաւոր աղօթքներ կարդալ ձեր վրայ, ձեր ու հարսի բերնէն խոստումներ կանէ, բոլոր ժողովուրդ վկայ կը լինի. դուք Աստուածադիր օրէնքով էնպէս պինդ կը կապուիք իրարու հետ, որ միայն մահ կը քակէ. աշխարհի ձեռք կարող չէ քակել: Յիսուս իւր Աւետարանով աւելի ամրապնդեց Հօր Աստուծոյ կապն եւ ասաց, թէ «Զոր Աստուած զուգեաց, մարդ մի՛ մեկնեսցէ»:

Պսակն աւարտելէն յետոյ՝ կելնենք եկեղեցիէն, էն ժամանակ կարգ կուգայ ուրախութեան, կսկսին զուռնան–նաղարան մունետիկի պէս ձայն կուտան աշխարհին թէ Թոռնիկ եւ Շուշան ամուսնացան, էս օր նոցա հարսանեաց տօն է, մեր կտրիճ երիտասարդներ կսկսեն չոր փետ խաղ. է՛, Թոռնիկ, հին սրողպատէ վահանին տեղն՝ ամէն մէկ իւր ապան կամ կօռտիկ կը փաթթէ մի ձեռքին վերայ, երկու – երկու իրարու հետ կը խաղան մինչեւ ի տուն: Դրան առաջ ոչխար կը մորթեն. էտ մի մատաղ է փեսին ու հարսին արեւշատութեան համար:

Միտքս կուգայ այստեղ, Թոռնիկ, պատմեմ քեզ, քառասուն տարիէն յառաջ, երբ Հայրիկ կամուսնանար, ես էլ ինչպէս սովորութիւն է գիւղացւոց՝ իւղով բաղարջ, փոխինդ եւ մի գառնուկ առի գնացի հարսնիք. երբ փեսայ Հայրիկ եկեղեցիէն տուն կը դառնար, իսկոյն մտածեցի գառնուկս մատաղ անեմ իւր առաջ: Գառնուկ գետին դրի որ մորթեմ, Հայրիկ ձիու վրայէն կանչեց, մի՛ մորթէք, մի՛ մորթէք. այն օր Պապիկ խմեր գլուխ դարձեր, ծուռ չինական եղեր էր. քաշեցի

դանակ, արիւն ցայտեց, բայց փոշման եղայ, տեսայ որ Հայրիկի աչք լեցուեցաւ, նա սկսեց տղու պէս լալ. ձիէն իջուցին տարին սենեակ, ուր սաստիկ յուզուեցաւ ու լացաւ. հարսնիքի տուն իրեն համար սգոյ տուն դարձաւ. այն օրէն ես հասկցայ թէ Հայրիկ որչա՞փ գութ ունի անասնոց վերայ, եւ ո՞վ էր լեցուցեր նորա սիրտ այդչափ գորովով. ինքն կը խոստովանի այս բան իւր Խաչի ճառի մի ուղերձին մէջ, թէ իւր դաստիարակ հանգուցեալ հօրեղբայր Խրիմեան Խաչիկ աղան է, իսկ նորա սիրտն ո՞վ է լեցուցեր,— Աւետարան զոր միշտ կը կարդար եւ ուրիշ գիրք չ՚գիտեր:

Այժմ ճաշու ժամ է, հարսնիքին հարխային ժամանակ հահասաւ, հարսնեւորներ անօթի են, ձգեցէք թաղիներ՝ թող նստին. երեխան, մեծ ու պզտիկ, հարուստ ու աղքատ, վերի վարի կարգ չկայ, Պապկի տունն է այս. մեծ տանտիկին, հրաման արա հարխան լեցնեն մեծ-մեծ մաթրաթներով, բերէք դրէք սեղան: Իմ սիրելի դրացի բարեկամ գիւղի բոլոր ժողովուրդ, ծեր Պապիկ ձեզ ճառ կը կարդայ, տուէք ինձ մի բաժակ գինի, Պապիկ պարտական է խմել նախ այս բաժակ մեր երկրին տէր թագաւորին կենաց համար, որ հոգայ, կառավարէ ու պահպանէ իւր հաւատարիմ հպատակ ժողովուրդ: Խըմենք ապա մեր Թոռնիկ թագաւորին կենաց, որ այսօր թագաւոր է եղեր եւ վաղը՝ մաճկալ պիտի լինի: Չմոռնանք նա եւ մեր Շուշան հարսին կեանք, որ այժմ թագուհի է եղեր, վաղ պիտի լինի Պապկի տան տնաչէն եւ ժրագլուխ հարս:

Մնաց ձեր կենաց բաժակ, սիրելի հարսնեւոր գեղացիներըս, շնորհակալ եմ որ պատուեցիք Պապկի տուն ու փառաւորեցիք Թոռնիկիս հարսնիք: Կաղօթեմ որ ազպէն ձեր զաւակներուն ու թոռներուն վերայ լինի:

Այժմ հարխի ճաշ լըմնցաւ, հարսնիքն էլ կը լըմննայ. ելէք բակ, բռնեցէք ձեր ալաճակէօնտ. տղաք այդ մեր քարէ մեծ սանդ լի գինի լեցուցէք, հողէ մեծ կուռիկ վրան դրէք, թող սանդին շուրջ բոլորին, պար խաղան, երգեն մեր գեղի կտրիճներ:

Պապի՛կ պապի՛կ, աչքըդ լոյս,
Թոռնիկ թագւոր է եղեր.
Մամի՛կ մամի՛կ, աչքըդ լոյս,
Շուշան քեզ հարս է եղեր:
Ապրին Շուշան եւ Թոռնիկ,
Եւ ծերանան ի միասին.
Ծըլին ծաղկին ինչպէս շուշան,
Զաւակներով եւ թոռներով:
Պապկի տուն բարգաւաճի,
Թոռնիկ լինի մեծ տանուտէր.
Եւ ումրշատ լինի Պապիկ.
Տեսնայ թոռան իւր ճետեր:
Նահապետաց չափ թող ապրի,

Տաղկին ալիք իր ձիւնի պէս.
Հասնի մինչեւ խոր ծերութիւն,
Մեռնի երթայ արքայութիւն:
Ուտենք վերջին իր հոգեճաշն,
Ցիշենք, օրհնենք իր յիշատակ:

Շատ ապրիք եւ դուք՝ իմ գեղացի քաղաքավար աղբարները. հարսնիքի ճաշ կերաք, ի վերջոյ կուզեք իմ հոգեճաշն է՞լ ուտել: Շատ իրաւունք ունիք. մեր քաղքցի գիտնականներ կը կարծեն որ՝ չինականք իմաստաւորել չըգիտեն, որչա՞փ բնական է ձեր հոգեճաշի տենչանք, վասն զի միշտ բնական հետեւանք է հարսնիքի ճաշին: Հարսնիքի ճաշով մարդիկ կուգան յաշխարհ, հոգեճաշով կերթան: Աստուած թող էնպէս կամենայ, ինչպէս ձեր բարի ցանկութիւնն է:

Բայց Պապիկ ձեզ խրատ կուտայ, բարեկամներ, աշխատեցէք ձեր քրտինքով, որ ամէն օր ձեր ընտանեկան սեղանին վերայ լիապէս ճաշ ուտէք, հարսնիքի ճաշ, մահուան հոգեճաշ՝ փոր չեն կշտացներ: Թողէք հոգեճաշ խեղճ աղքատներուն եւ մանաւանդ քահանաներուն, որոց իրաւունք գլանալով եւ չը տալով՝ միշտ ձեր հոգեճաշին կսպասեն. չիտակ խօսելով՝ մեր քահանայք մեռելներու չնորհիւ աւելի կապրին, քան թէ կենդանեաց:

Է՜, սիրելի հարսնեւորներս, հարսնիք աւարտեցաւ, ուտելու խմելու բաներն էլ լմնցաւ. գինու տկեր դատարկուեցան, տանտիկին լուր կուտայ թէ՝ տաշտին մէջ հաց չը մնաց, եւ ամանին մէջ իւղ. միայն հարխի պղնձի մէջ տակուց մնացեր է, էն էլ աղքատներու բաժին է:

Այժմ ամենայն քաղաքավարութեամբ՝ եկէք ծերունի Պապկի ձեռք համբուրեցէք, Թոռնիկիս ու Շուշանին արեւշատութիւն մաղթեցէք եւ մնաս բարով ասելով՝ գնացէք ձեր տներ: Գիտեմ, անքուն մնացիք եւ չատ էլ խմեցիք, տեսէք ահագին սանդի գինին պարպեցիք. հարսնիքէն դացող՝ կասեն թէ մահմուռ կը լինի. այս գիշեր հանգիստ քուն եղիք, առաւօտ մութ լուսնալուն պէս դէպ ի դա՜շտ, դէպ ի դա՜շտ:

Մտածեցէք, եթէ չաշխատիք վարուցանով եւ դաշտի արդիւնք չ՚բերէք տուն, ձեր հասած զաւակներ կարող չէք պսակել, միթէ դատարկ տնով հարսնիք կը լինի՞: Կաղօթէ Պապիկ, որ Աստուած ձեր աշխատութիւն արդիւնաւորէ, եւ ձեր տներ բարութեամբ լեցնէ, որ դուք եւս հարսնիքներ անէք եւ ձեր որդիքներու եւ թոռներու թագն ու պսակ տեսնաք եւ մխիթարուիք:

Ահա՛ Թոռնիկ, հարսնեւորներ ցրուեցան, մնացինք ես դու, մամիկ, եւ նորեկ հարս Շուշան. մեր փոքրիկ ընտանեկան թըւոյն վերայ մի հատիկ աւելացաւ. Աստուած այդ մի հատիկն իբրեւ մի ցորենահատ ցանեց մեր ընտանեկան անդաստանին մէջ, դու պիտի տեսնաս, Թոռնիկ, թէ այդ մի հատիկ մայրենի սերմէն, որչա՞փ մանկահատիկներ պիտի բուսնին. մի օր կը

տեսնաս, որ տունն լցուած է լաձերով, աղջիկներ, որոնք թռչնոց ձագերուն պէս՝ ճիճիւ ձայն հանելով, բերան բացած՝ պիտի աղաղակեն, պապօ՛, հա՛ց կուզենք, հա՛ց։ Իրաւ է, որ մարդիկ կը հաւատան ու կասեն թէ՝ Արարիչ Տէր իւր ստեղծածին գսմաթ կուտայ։ Այո՛, կը հաւատանք այդպէս, բայց Տէր Աստուած գըսմաթ եւ հաց նախապէս պատրաստեց. եւ ապա մարդն ստեղծեց. եւ այդ գըսմաթ այս մեր բնակած երկիր եւ հողն է, որոց համար ասաց գործել ու պահել։ Ուստի առանց գործելու, առանց աշխատութեան, առանց վարուցանի մարդոյն համար ոչ հաց կայ եւ ոչ գըսմաթ։

Պատրաստուիր ուրեմն, Թոռնիկ, աշնան գութանի ժամանակ չանցնի, վաղն առաւօտ պիտի երթամք դաշտ սկսենք մեր աշխատութիւն։ Այժմ դու հան այդ փեսայութեան չուխայ լաթեր, հագիր մշակութեան շալէ շալվար. Շուշանն էլ թող իւր հարսանեկան զարդեր հանէ, մամկի հրամանով աւել ձեռք առնէ, տունն խորդէ, աւլէ, մաքրէ, ամէն բան իւր տեղ դնելով կարգադրէ։ Այսպէս, Թոռնիկ ի դաշտ՝ Շուշանն ի տան, եթէ աշխատին՝ Աստուած հաց կուտայ։



# ՊԱՊԿԷ՛ ՊՍԱԿ

## Ի ԴԱՇՏ

Սիրելի՛ Թոռնիկ, ես նորէն եւ կրկին զքեզ պիտի պսակեմ. դու մի՛ կարծեր, որ եկեղեցւոյ կամ քահանայի պսակ քեզ բաւական է։ Այո՛, հոգեւորապէս եւ Աստուծոյ օրէնքով բաւական եւ շատ է։ Բայց եթէ Պապիկ այդ պսակին վրայ իւր պսակ չդնէ, դու անօթի կը մեռնիս։ Ահա աղօթարան բացուեցաւ. հրաման արա մշակներուն, թող գութան սարքեն, տանին գեղի մօտի խօզան աւազարտ. պէտք է այժմէն վարենք, աղբենք այն արտն, եւ գարուն բանջարեղինաց պարտէզ անենք։

Լծեցէ՛ք գութան. դու տես հիմի, Թոռնիկ, թէ ի՛նչպէս պիտի պսակեմ զքեզ։ Գնա՛ նախ գոմշուկներուն եւ եզներուն ճակատներ համբուրէ, արի գութանին մաճին քով խոնարհիր գետին՝ մայրենի հող համբուրէ, ձեռքս մաճին վերայ դրած եմ, համբուրէ Պապկի ձեռք եւ մաճը. ահա քառասուն տարուան մաճկալ Պապիկ, այսօր քեզ կը յանձնէ մաճկալութեան վսեմագոյն պաշտօն, զոր Տէր Աստուած Ադամայ մեր մեծ Պապկէն տուաւ, որ գործէ երկիր եւ պահէ։

Յորենաբոյսէ հիւսուած մի սիրուն, գեղեցիկ, բոլորակ պսակ շինեմ իմ ձեռքովս քեզ համար. բեր գլուխդ Թոռնիկ, դնեմ այս իմ պսակ. եւ այս պսակն, Պապկէդ պսակն եւ յիշատակն է, երբէք չը վերցնես գլխէդ մինչեւ մահուանդ օր։ Եւ

երբ դու էլ կը ծերանաս Պապկի պէս, այդ պսակ քո անդրանիկ որդւոյդ գլուխ դիր, եւ այսպէս որդւոց որդի թող շարունակի· այդ պսակին խորհուրդ բացատրեմ քեզ, որ լաւ ըմբռնես եւ անեղծ պահես այս աւուր յիշատակ քո մտքին մէջ։

Ազն՛իւ Թոռնիկ, իմ խորհրդաւոր պսակիս նշանակութիւն այս է· քահանան զքեզ կը պսակէ հողին հետ, գութանին հետ, դաշտի մշակութեան հետ· եւ ինչպէս Շուշանին հետ, դաշտի մշակութեան հետ· եւ ինչպէս Շուշանին հետ կապեց զքեզ քահանան, եւ դու տէր ես մինչեւ ի մահ, կարող չես զինքն թողուլ, այնպէս եւս Պապիկն զքեզ պսակելով կը կապէ մայրենի երկրին հետ, որ յաւիտեան չը պիտի թողուս՝ որ մեր հայրենի Պապկենական սեպհականութիւն է։ Ադամն ասաց եւ մարդիկ կասեն, թէ՝ կին մարդոց կեանքն է· միթէ հողն էլ մարդոց կեանք չէ՞, մարդիկ աշխարհիս վերայ հացով կապրին։ Շուշան քեզ զաւակներ պիտի բերէ· հողն էլ ձեզ հաց պիտի տայ, դաշտի մէջ արածող կովն ու ոչխար՝ ձեզ առատ – առատ կաթ պիտի տան· կաթէն իւղ ու պանիր կը շինէք· այս ամէն բարիքներուն վայելք հողէն չէ՞։

Այժմ, Թոռնիկ, ասա մշակներուն՝ առնեն գութան եւ տաւարներ, դառնանք երթանք ի տուն, մայրիկդ եւ Շուշանին պէտք է յայտնեմ դաշտի պսակի խորհուրդ։

Մտիկ արէ՛ք որ խօսիմ ձեզ, բարի տանտիկին եւ Շուշան։ Ես այսօր, նոր փեսայ Թոռնիկ տարի դաշտ· գութան լծել տուի, մաճը Թոռնիկին ձեռք տուի, ձեռքս գլխուն վերայ դընելով՝ նահապետական օրհնութիւն կարդացի, եւ զինքն կըրկին անգամ հողագործութեան հետ պսակեցի, հողին եւ գութանին հետ կապեցի, եւ գիտէ՞ք դուք, որ Պապկի պսակն անքակտելի պէտք է լինի· Թոռնիկ այժմ երկու կին ունի, իմացէք, մի կինն Շուշանն է, որու հետ պսակուեցաւ սուրբ ամուսնութեամբ· մի կինն էլ հայրենատուր ժառանգութեան հողն է, որու հետ ես կապեցի Հայր Աբրահամու օրհնութեամբ։ Շուշանն զաւակներ պիտի բերէ Թոռնիկին համար, հողն էլ հաց պիտի տայ բոլոր ընտանեաց համար։ Կաղօթեմ, որ Աստուած պահէ Շուշանն եւ չա՛տ ապրի, բայց Շուշանն մահկանացու է, թէ մեռնի, Թոռնիկ մի ուրիշ շուշան էլ կը գտնէ։ Իսկ եթէ հողն մեռնի, էն ժամանակ բոլոր Պապկի տանն ընտանիք ի միասին կը մեռնին։ Եւ ի՞նչպէս կը մեռնի հողն, որ Ադամէն մինչեւ էս օր կայ ու կը մնայ անմահ։ Խօսեմ ձեզ թէ հողն ի՛նչպէս կը մեռնի· այն անբախտ օրն, երբ Թոռնիկ ձեռք մաճէն քաշելով՝ հողագործութիւն չի շարունակեր· կամ հարստանալով կը բարձրամտի՝ այլ եւս ամօթ կը համարի գիւղին մէջ, կամ գիւղական ընկերութեան հետ ապրել· կը թողու գիւղն ու հող՝ կերթայ քաղաքացի կը լինի։ Եւ կամ դժբախտ օրեր կը հասնին իւր վերայ, երբ յուսալով թէ շատ հողեր ունի, պարտք անելով իրարու վերայ կը բարդէ· պարտատէր հողեր կը գրաւէ, ո՜հ, Թոռնիկն անհող կը մնայ։

Ահա այն օր հողն Թոռնիկին համար կը մեռնի, գրաւողին համար կենդանի կը մնայ: Այն օր, այո՛, Պապկի տան ճրագ կը մարի, Թոռնիկ տանուտէր՝ վարձւոր մշակ կը լինի: Աւա՜ղ, Պապկի հարս, նազելի Շուշան՝ պիտի երթայ հացթուխ լինի գեղին մէջ, իրիկուան մի քանի հաց գոգնոցին մէջ դնելով՝ բերէ իւր ճժիկներուն: Թոռնիկին մայր, բարի տանտիկին, դու Պապկի ետեւէն մեռիր, որ չը տեսնաս այն օր:

Ջաւե՞ս, Թոռնիկ. ա՜հ, Պապիկ, ի՞նչ չար գուշակութիւն կանես Թոռնիկիդ վերայ, բերանդ բարի բաց: Ո՛չ, Թոռնիկ, Աստուած չընէ որ գուշակութիւնն ձեր վերայ կատարուի: Ես կաղօթեմ որ դուք այն սեւ օր չը տեսնաք. սորա համար այն սեւ աւուր տխուր կեանքի պատկեր նկարեցի ձեր աչքի առաջ: Որպէս զի տեսնաս ու յիշես Պապուդ հեռատես գուշակութիւնն, յամենայն զօրութենէ աշխատես հողն ձեռքէդ չհանել. ոչ միայն հողն քեզ պէտք է, որ հաց կուտայ քեզ, աշխարհիս վերայ կապրիս, այլ եւ նորա համար Աստուած շատ արեւ տայ քեզ. երբ մեռնիս՝ գերեզմանիդ համար էլ երկու կանգուն հող պէտք է, չգիտե՞ս դու, մարդիկ գերեզմանի հողին վերայ էլ կը կռուին. վա՜յ անոր, որ կը մեռնի եւ թաղուելու տեղ չունի, զի գերեզմանի հողն եւս մարդոյն համար մի սեպհական իրաւունք է: Ասել կուզեմ, Թոռնիկ, մարդ իւր ծնած օրէն հողով կապրի. եւ երբ մեռնի, դարձեալ հող պէտք է, որ նորա տակ թաղուի:

Այսպէս, Թոռնիկ. հողն պէտք է կենաց եւ մահու օր. սորա համար Պապիկն զքեզ հողին հետ կապեց ու պսակեց, որ պինդ գրկես զհողն. չթողուս որ ուրիշներ ձեռքէդ յափշտակեն, դու անհող մնաս, ստրուկ լինիս, երթաս ուրիշի դռներ վարձկան մշակ դառնաս, եւ էն ժամանակ ձեր վերայ կատարուի Պապկի կախարդ գուշակութիւն. եւ դու խելաբերելով յիշես, աւա՜ղ, ես տանուտէր էի, նահապետ Պապկէս խրատներուն մտիկ չարի, այժմ անառակ որդւոյն պէս՝ վարձկան մշակ եղայ, թողլով իմ ոչխարաց հօտ, ուրիշներու նախիր կարածեմ. եւ շաբաթ մի անգամ գոնէ դուռ շրջելով նախրահաց ժողվեմ:

Այո՛, Թոռնիկ, երբ գեղի տանուտիրոջ բախտին անիւ դառնայ, այնչափ նուաստանայ՝ որ նոյն գեղին նախրորդ լինի, դու մի կարծեր թէ այդ վիճակ կարի դառնագոյն մի վիճակ է. վասն զի գեղի նախրորդ վարձաւոր մի մշակ է, չալակներով հաց կը տանի իւր տուն. կթան կով ունի, գոնէ մի քանի հատ ոչխար, այծ ունի եւ իւր ընտանիք լիութեամբ կապրին:

Բայց երբ այդ անկեալ տանուտէրին ձեռք նախրորդութիւն չիյնայ, նա ինքնին իւր նախկին վիճակ յիշելով ասէ. Ես տանուտէր էի, ի՞նչպէս կարող եմ վարձկան մշակ լինել գիւղին մէջ, լաւ է որ թողում գեղ, երթամ քաղաքներ եւ իբրեւ անծանօթ մի չքաւոր մարդ, խառնուիմ փողոցի աղքատներուն

հետ՝ լինիմ մուրացկան։ Իսկ եթէ իբրեւ հարստութենէ ինկած «տէօվլէթտէն տիւշկիւն» յաջողիմ վիճակի Առաջնորդէն մի վկայական առնել, այդ ինձ համար մի մեծ բախտ կը լինի․ կերթամ աշխարհէ աշխարհ, եկեղեցիներուն, հարուստներուն կը դիմեմ, եւ այսպէս ժողովք անելով՝ դառնամ գամ պարտքս տամ եւ պահեմ իմ ընտանիք։

Ահա, Թոռնիկ, դժնդակ եւ դառնագոյն վիճակն այս է․ երբ տանուտէր մուրացկանութեան կը դիմէ, հաւատալով թէ այդ անարգ եւ անպատիւ մուրողութեամբ կարող կը լինի բաւական գումար հայթայթել ու վերստին կանգնել իւր կործանեալ տունն։ Դու կը հաւատա՞ս, որ հողագործին կործանեալ տուն մուրացկանութեամբ կանգնի։ Բովանդակ ծերութեանս կեանքի մէջ ես այդպիսի բան չը տեսայ։ Վասն զի տանուտէր գեղացւոյն տան հաստատուն հիմն հողագործութիւն է․ երբ տանուտէրն հողն ու հողին վաստակ թողու, նա արդէն կործանուած է եւ յաւիտեան կանգնել չունի․ նա չքաւորութեամբ պիտի ապրի մինչեւ մեռնի։

Է՛, սիրելի՛ Թոռնիկ, բաւական եղաւ, աւարտենք դաշտի պսակ եւ դաշտի դասերս։ Ես պէտք է պատմեմ նաեւ գեղի էրէցուն եւ գեղացւոց, թող աշխարհ իմանայ, թէ Առճակու Պապիկ էսպէս մի տարօրինակ բան արած է․ իւր Թոռնիկ նոր փեսան տարեր է դաշտ հողին ու գութանին վերայ պսակեր է․ մարդ չի գիտեր ի՞նչ պսակ է այդ, որ առանց քահանայի, առանց խաչի եւ Աւետարանի ու ժողովրդի վկայութեան՝ դաշտի մէջ կատարուեր է։

Թող մեր գիւղացիք այսպէս դատաստան անեն․ Թոռնիկ, Բաւական է, որ դու լաւ հասկցար այս պսակին խորհուրդն․ ես կը մեռնիմ, դու ողջ կը մնաս՝ կը տեսնաս, յետոյ գեղացին էլ կը հասկընայ եւ ողորմիս կուտայ Պապկի հոգւոյն։

———o———

ԻԴ․

# ՄԵՌԵԼՈՑ ԴԱՇՏ

## ԵՒ ԳԵՐԵԶՄԱՆԱՑ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐ

Պահ մի թողունք, Թոռնիկ, մեր կենդանի դաշտ, արի երթանք մեռելոց դաշտին այցելութիւն անենք․ գիտե՛ս, մահ տակաւ – տակաւ կը մօտենայ Պապկին, կուզեմ վերջին անգամ քանի կենդանի եմ, ոտքովս երթամ շրջիմ մեռելոց ննջարանն, մինչեւ այն օր, երբ գիս նաշին վերայ դրած ԲԱՆԴ ԱՍՏՈՒԱԾ ասելով կը բերեն կը դնեն գերեզման, ես էլ կը հանգչիմ մեր պապերուն ծոցը։

Գերեզմաններն էլ մեզ համար մի խօսուն դասարան են․

*խաչաքարեր եւ մեռելոց յիշատակներ դեռ կը խօսին մեզ հետ․ տեսնանք թէ հին եւ նոր ժամանակի մէջ ի՞նչ մարդիկ ծներ, եկեր են աշխարհ․․ ապրեր են, գործեր են, թէ բարի թէ չար, եւ դարձեալ թողեր են այս աշխարհ, արեւն ու կեանք, տուն եւ ընտանիք, մտեր ծածկուեր են մեռելոց այս մութ աշխարհին մէջ: Ամէն քրիստոնէի գերեզմանին վերայ մի-մի խաչաքար տնկուած է․ վրան գրած են մեռնողին անունն եւ կեանք, որ տեսնող կարդայ եւ ողորմիս տայ:*

*Կարդանք ուրեմն, Թոռնիկ, այդ հին ու նոր յիշատակարաններ, տեսնանք թէ ինչ հարուստ տանուտէրեր եւ այլ աշխատաւոր եւ նշանաւոր մարդիկ եղած են գիւղական ժողովրդի դասէն, որոց անցեալ կեանքն առաքինութեան դասեր են մեզ համար: Գիտե՞ս, կան այնպիսի մեռեալներ, որ մինչեւ ի կատարած աշխարհի կը խօսին մեզ հետ: Գրքերով կը խօսին, անմահ յիշատակներով կը խօսին, գերեզմանի քարերով կը խօսին:*

*Տեսիր, Թոռնիկ, կարդա՛ այս տապանագիրն․*

«Այս է տապան Առնակցի տանուտէր Օհանջանին, որ ութսուն տարի ապրեցաւ, ոչ գիւղէն, ոչ տնէն հեռացաւ, երբէք չթողուց ձեռքէն գութանի մաճն մինչեւ օրն մահուան: Նա նորոգեց մեր գիւղի փլած եկեղեցին եւ մի արտ յիշատակ տուաւ եկեղեցւոյն:»

«Ասացէք Աստուած ողորմի իւր հոգւոյն:»

*Կարդա սորա կշտի խաչաքարն:*

«Ես Միրզոյենց Մարխասն, որ առաջ աղքատ ու վարձկան մշակ էի, թիզ մի հողի կարօտ, աշխատեցայ եւ Աստուած յաջողեց իմ հալալ վաստակովն բաւական հողեր գնեցի, հարստացայ եւ տանուտէր եղայ, կտակ արի յետնամնաց զաւակներու, որ տարուան հինգ տաղաւարի մեռելոց օրեր մատաղ անելով աղքատաց կերակուր բաշխեն: Ասացէք Աստուած ողորմի Մարխասի հոգւոյն:»

*Երթանք, Թոռնիկ, այն մեծ խաչքարի գրեր կարդա՛:*

«Այս է հանգիստ մեծ տանուտէր Ադամին, որ շատ հողատէր էր, երեք փոխով գութան կը լծէր, քառսուն մշակ ունէր, մեր գիւղի մեծ նահապետական տունն էր, իւր ընտանեաց թիւ մինչեւ եօթանասուն կը հասնէր․ երբ հոգեճաշ տայր կամ մատաղ անէր, հազար հազար մարդ կը կերակրէր․ նա շատ առաքինի մարդ էր, մեռաւ հարիւր տարեկան․ բոլոր գիւղացիք լացին նորա մահուան վերայ․ նա կտակ թողուց, որ Վարագայ եւ Առնակու վանքերուն իւր կալուածներէն չորս արտ տան եւ իւր ձիթահանէն գիւղի եկեղեցւոյն շարունակ լուսավառութեան ձէթ տան: Ով հանդիպիք ասացէք Աստուած ողորմի մեծ տանուտէր Ադամի հոգւոյն:»

*Մի՛ անցնիր, այդ մօտի փոքրիկ խաչաքարի գրեր կարդա՛:*

«Ես եմ նաղարաչի Մարգօն: Այս խաչաքարի տակ հանգիստ պառկեր եմ․ բոլոր կեանքս ուրախութեամբ անցուցի․ ձմեռն հարսանիքներով եւ ամառ պահէզ դնելով: Ամեն գար-

նան կուզայի Առնակ գիւղ պահէզ կը դնէի, առատ սեխ ու ձըմերուկ կը հանէի, ցորնի, գարւոյ, եղի, պանրի, ժաժկի հետ կը փոխէի, տունս առատութեամբ կը լեցնէի, աշխատութեամբ շատ երջանիկ ապրեցայ. երբ տեսայ թէ պիտի մեռնիմ, կտակ արի որ զիս քաղաք չի թաղեն, այլ տանին Առնակ գիւղ թաղեն. Աստուած շէն պահի այն գիւղ, որ շէն պահեց իմ տուն:
Ասացէք Աստուած ողորմի նաղարաչի Մարգոյի հոգւոյն:»

*Կարդա, Թոռնիկ, դորա կշտի միւս տապանաքար, որու վրայ մի հաւու պատկեր կը տեսնուի:*

«Ես եմ հաւպան Մարկոս, գեղեցի էի, բայց հող չունէի. մտածեցի թէ ի՛նչ անեմ, որ ապրիմ. մի գիշեր երազի մէջ շատ հաւեր ու հաւկիթներ տեսայ, ասի սա իմ բախտն է. առաւօտ ելայ երազիս մեկնութիւն կատարեցի. առաջ մի փոքրիկ հաւնոց շինեցի, տասն հատ հաւ դնելով թուխս դրի, մի քանի տարուան մէջ հաւերուս թիւ հասաւ մինչեւ երեք հարիւր, միշտ հաւ ու հաւկիթ կը ծախէի գեղի հիւրերուն եւ քաղաքացւոց. ես եւ իմ ընտանիքս լաւ ապրեցանք հաւու մսով եւ ձուազեղով: Աղուէսներ եւ կուզեր որ շատ թշնամի են հաւերուն, ես անոնց համար ոլոզայթ շինեցի, ամէն տարի ձմերան քաւական աղուէս եւ կուզ բռնելով՝ նոցա մորթերէն քաւական շահ կանէի: Հաւքանութեան շնորհիւ որսորդութիւն էլ սորվեցայ. վերջ մեռնելուս ժամանակ կտակ արի զաւակներուս ,որ հասնոց ու հաւեր երբէք ձեռքէն չը թողուն, որ միակ իրենց հացն ու ապրուստն է:

«Ասացէք Աստուած ողորմի հաւպան Մարկոսի հոգւոյն:»

*Քիչ մի հեռու կերեւի մի գերեզմանաքար, որուն գրեր մաշուած են Թոռնիկ, եւ վրան մեղուի փեթակի նշան կայ. կարդա տեսնանք ով է:*

«Ես եմ մեղուապահ մշակ Պետօն, փոքրիկ տնակէս ի զատ ոչինչ բան չունէի. մտածեցի մտածեցի, գնացի պարտք արի, հինգ փեթակ առի, պզտիկ մեղուանոց մի շինելով մէջ դրի. Աստուած յաջողեց, մեղուներս բազմացան մինչեւ հարիւր փեթակ եղաւ, որք շատ առատ մեղր ու մոմ կուտային, թէ քաղաք տանելով դրամով կը վաճառէի, եւ թէ գեղի մէջ հացի ու եղի հետ կը փոխէի. ընտանիքս մեղրով ու կարագով կը պահէի. մեռնելուս օր խրատ տուի անդրանիկ որդւոյս, որ չը հեռանայ մեղուանոցի դռնէն եւ մեծ խնամով պահպանէ մեղուներ, որ մեր ժրաջան անվարձ մշակներն են. կտակ արի նաեւ որ ամէն կիրակի եւ պատարագի օրեր գեղի եկեղեցւոյ սեղանին վերայ մոմ վառեն եւ քահանայն յիշէ զիս իւր աղօթքով:

Ասացէք Աստուած ողորմի մեղուապան Պետօյի հոգւոյն»:

*Սորա քով մի անտաշ խաչաքար կայ կարդա տեսնանք թէ որո՞ւ գերեզման է:*

«Ես եմ նախրորդ Նազար, երեսուն տարի նախրորդութիւն արի, շէն մնայ Առնակ գիւղ, երկու հազար տաւար էր իմ նա–

խիր, ամէն շաբաթագլուխ շալակ շալակ նախրահաց կը ժողովէի, տանս մառան հացով կը լեցուէր, մեր տանտիկին խմոր շաղել, հաց եփել չը գիտէր, մեր գիւղացիք կը կարծեն որ նախրորդութիւն բան մը չէ· ոչ, նախրորդութիւն էլ գիւղական մի աշխատութիւն է· ես երբէք զանգատ չունիմ, մինչեւ մահուանս օր հացի կարօտութիւն չի քաշեցի:

Ասացէք Աստուած ողորմի նախրորդ Նազարի հոգւոյն:»

*Թոռնիկ, դու լսեր ես, գեղացիք միշտ զանգատ կանեն ու կասեն, թէ՝ գեղի գզիրներ շատ անիծած եւ հայհոյիչ մարդիկ կը լինին, բայց ես լսեր եմ, որ ժամանակաւ մեր գիւղն մի բարի գզիր եղած է· շատ բարեսէր ու խոհեմ, երբէք զրկանք չէր աներ, հիւր տալու կարգն ճշտութեամբ կը պահէր, եւ միշտ կը ջանար աղքատներ խնայել, մինչեւ ցայսօր գեղացին այդ բարի գզրի անունն կը յիշէ: Ահաւասիկ նորա գերեզման, զարմանք, Թոռնիկ, Առճակու գզիրն էլ իւր գերեզմանի խաչքարն եւ յիշատակն ունի, կարդա՛:*

«Առճակու շէն գեղի գզիր Կազօն եմ ես, օ՜խ, ի՞նչպէս հանգիստ պառկած եմ հողին տակ, ականջներս դնջացեր է գեղեցւոց հայհոյանքէն, զուր եւ անիրաւ անէծքէն, հապա այն խստաբարոյ անհամբեր պահանջող հիւրերու ձեռքէն ի՞նչ քաշեցի, ծեծ կերայ, չարչարուեցայ, գզուեցայ բամբակի պէս. սորա համար անունս գզիր դրած են, կարծելով թէ ես ուրիշներ կը գզեմ: Աստուած հոգիս առեց, մեռայ ազատուեցայ: Աղքատ ապրեցայ, աղքատ մեռայ, ոչինչ բան չունիմ կտակելու, միայն խրատ կուտամ ձեզ, գեղացի աղքատներ, գեղի գըզիր մի լինիք, գացէք հողագործութեան մշակ եղէք, հազար անգամ լաւ է հողի մշակ, քան գեղի գզիր, վասն զի, գեղի գզրութիւն չար մշակութիւն է:

Ասացէք Աստուած ողորմի գզիր Կազօյի հոգւոյն»:

*Թողունք այս փոքրիկ մարդոց փոքրիկ խաչաքարերն, թէ եւ փոքրիկ կարծուածներն էլ իրենց չափով նշանակութիւն ունին: Շրջենք, Թոռնիկ, գտնենք այն մեծ խաչաքարերն, որոց տակ կը հանգչին այնպիսի հոգիներն, որք մեր գիւղին փառք եւ պատիւ եղած են· ժողովուրդ չի մոռնար, կը յիշէ նոցա բարերարութիւն եւ յիշատակ:*

*Գեղէն բաւական հեռու մի բլրակ կերեւի, կը տեսնա՞ս Թոռնիկ, այդ բլրակին գագաթ մի մեծ խաչաքար կայ· այն տեղն է մեծ-մեծ կտիր ոչխարներու տէր հովիւ Յակոյի գերեզման· այդ բլրակից արդէն մի աղբիւր կը բղխի եւ այդ աղբիւրին* Յակոյի աղբիւր *կասեն, ուր Յակոյի կթան ոչխարներ կուգային պէր տալու:*

*Յակո հովիւ, թէպէտ իբրեւ հողագործ տանուտէր չէր մեր գիւղին մէջ, բայց իբրեւ հովիւ խաշնարած մեծ տանուտէր կը համարուէր, վասն զի չորս կտիր ոչխար ունէր, ամէն մի կտիր հազար հատ էր· կասէին քառասուն հոգի վարձկան հովիւ եւ գառնարած ունէր, բոլորն էլ ամուսնացուցեր էր: Աղջիկ–*

ներու թիւ չեմ գիտեր, իր տունն թոռներով լցուած էին, ինքն շատ գթասէր, առատաձեռն մարդ էր. իր օրհնեալ տունն աղքատներուն ապաւէն էր։ Ոչխարաց կտուրի ժամանակին՝ բուրդ կը բաշխէր աղքատներուն. Յակօ հովիւ Յովբայ պէս կարող էր ասել թէ աղքատներուն մերկացած թիկունք՝ իմ բուրդովս կը ջեռնուէին։ Նմանապէս կաթէն՝ կաթ, պանրէն՝ պանիր, իւղէն՝ իւղ բաժին կը հանէր կարօտեալ գեղացի ընտանեաց։ Յակօ հովիւ անխտրապէս կը մատակարարէր, նա չէր որոշեր իւրշրջապատ եղած անընտանի օտարացեղ ազգերու կարօտեալներն. ով որ դիմէր, ով որ խնդրէր՝ նա կուտար եւ չէր խտրեր։ Սորա համար իր անուն եւ համբաւ շատ մեծ էր նոյն իսկ դրացի պայազատ քիւրդ ցեղապետներուն առաջ։ Մի անգամ Պարսից կողմի թշնամի քիւրդեր զարկին Յակօյի ոչխարներու կէսն տարան. մեր Յակօն Աբրահամ նահապետին պէս՝ առաւ իւր կորիճ լաճեր եւ գիւղի քաջ տղամարդեր, գնաց կռուեցաւ եւ իւր թալան դարձուց։

Հովուական պարզ կեանք շատ երկար կեանք տուին մեր նահապետ Յակօյին, նա ապրեցաւ մինչեւ հարիւր քսան տարի, իւր բոլոր կեանքի մէջ նա վերջին անգամ հիւանդացաւ, ինքն զգաց եւ իմացաւ թէ պիտի մեռնի, կանչեց ժողվեց իւր մահճին չուրջ, բոլոր զաւակներ, թոռներ եւ տան ընտանիք. նահապետական բերնով օրհնեց զամէնքն, համբուրեց իւր հովուական ցուպն ու փող, զոր դրած էր կշտին, դողդոջուն ձեռքով առաւ ու տուաւ Ապրսամ անդրանիկ որդւոյն։ «Քեզ կը յանձնեմ, որդեակ, ասաց, իմ հովուական եւ տանուտէրական իրաւունքս, կառավարէ ինչպէս եւ կառավարեցի, պահպանէ մեր տուն եւ ոչխարի հօտեր. մի մոռնար գթութիւն եւ կարեկցութիւն, ոչխարաց արդիւնքէն միշտ բաժին հան գիւղի աղքատ եւ չքաւոր կարօտեալներուն, իբրեւ անջնջելի կտակ՝ կաւանդեմ քեզ որդեակ, որ տարուան հինգ տաղաւարաց մեռելոցի օր, քսան ոչխար պէտք է մատաղ անէք, աղքատներուն լիապէս հաց եւ կերակուր տաք, գիւղի քահանայն իւր պատարագին մէջ բոլոր մեռելոց հոգիներուն հետ յիշէ նաեւ հովիւ Յակօյի հոգին։ Որդեակ իմ Ապրսամ, օրհնելով կապսպրեմ քեզ եղբայրներ սիրէ, ընտանիք սիրէ, ոչխարաց հօտեր սիրէ, որ մեր հարստութեան զանձերն են. աշխատիր որ հովուական այդ մեծ նահապետական անուն չ'վերնայ հովիւ Յակօյի տնէն։ «Այլ եւս չկարեմ խօսիլ, հրեշտակն եկաւ, հոգիս պէտք է տամ» ասաց ու աւանդեց հոգին։ Բոլոր գեղացիք լացին ու ողացին նորա մահուան վերայ, եւ ինչպէս ինքն կտակած էր՝ հանգուցելոյն մարմին բերին թաղեցին այս բլուրին ծոց։

Կը պատմեն թէ Յակօյի թաղման օրը գեղի բոլոր ժողովուրդ թափեր էր այս բլուրին վերայ. հովիւներն Յակօյի երկու հազար կթան ոչխարներ բերեր էին պէրատեղ։ Ապրսամ անդրանիկ որդին հրաման կանէ, որ այն աւուր ոչխարի ամբողջ կաթ ժողովուրդին եւ աղքատներուն տան. Վանեցիք գի-

նի կը տանեն եւ գերեզմանին վերայ կը բաշխեն աղքատներուն իսկ Յակօյի գերեզմանի վերայ գինւոյն տեղ կաթն էր. բոլոր ժողովուրդ փայտէ կոտիկով նոր կթուած փրփրուն կաթ խմեցին, աղքատներն էլ իրենց ամաններ լցին եւ ողորմիս տալով՝ օրհնեցին հանգուցելոյն գերեզմանն: Իսկ հովիւներ գիտե՞ս ինչ արին, Թոռնիկ. կը խօսին թէ՝ հովիւներն էլ մէկ-մէկ մեծ ամանով կաթ բերին թափեցին Յակօյի գերեզմանին վերայ: Ի՞նչ քաղցր եւ խորհրդաւոր է այս բան. մեծ տանուտէր Յակօ հովիւ, կաթ կերաւ, եւ երբ մեռաւ՝ իւր գերեզմանն էլ կաթ ծծեց:

Ապրսամ որդին՝ մի մեծ խաչքար տնկեց իւր հօր գերեզմանին վերայ, որոյ վերայ գրուած է իւր բարի յիշատակ. կարդա, Թոռնիկ:

«Այս է տապան մեծ տանուտէր հովիւ Յակօյին, որ ինչպէս կտակ արած էր զինք՝ այս բլուրին վերայ թաղեցին, իւր յիշատակն օրհնեալ լինի:

Ասացէք Աստուած ողորմի մեծ տանուտէր հովիւ Յակօյի հոգւոյն»:

Դառնանք, Թոռնիկ, աստի, երթանք մեր աւերակ Աստուածածնայ վանք, որոյ տաճար միայն ողջ մնացած է. էդ Տաճարի դուրսի պատի տակ, ուր մի աղբիւր կը բղխի Տաճարի հիման տակէն, եւ աղբիւրին մօտ մի հաստաբուն ուռենի ծառ տնկուած է. աւանդաբար կասեն թէ այդ տեղ մի անյիշատակ գերեզման կայ առանց խաչաքարի, եւ այդ գերեզման աշուղ Մուչօյին է: Աշուղներ աշխարհիս վերայ աննչան համարուած աղքատ մարդիկ են, ո՞վ պիտի նոցա հոգին հոգայ, կամ յիշատակն պատուէ, մի խաչաքար տնկէ նոցա գերեզմանի վերայ, բայց երջանիկ է աշուղ Մուչօն, զի իւր գերեզմանաքար Աստուածածնայ փոքրիկ տաճարն է, որոյ հովանեաց տակ կը հանգչի արդար հոգի Մուչօն:

Ինչպէս լսած եմ, մեր գիւղի հին ծերունեաց պատմութենէն, պատմեմ քեզ, Թոռնիկ, Մուչօյի կեանքն ու վախճանն եւ դու լաւ ուշադիր եղիր, տե՛ս որչա՞փ խորհրդաւոր եւ հետաքրքրական է:

Աշըղ Մուչօն բնիկ մեր գիւղի զաւակն է, եւ աշուղ Ջիչակին աշկերտ եղեր է, որոյ գերեզման ցոյց կուտայ այսօր Խարակոնիս գիւղի սուրբ Թորոս եկեղեցւոյ դարի վրան:

Գիտէ՞ք, Թոռնիկ, աշուղներ ազատ կեանք սիրող մարդիկներ են, տնաչէն չեն. իրաւ է, որ չատ սիրահարական երգեր ունին, բայց իրենք ամուսնանալ չատ չեն սիրեր: Կան աշուղներ ալ, որ աւելի բարոյական խրատներ ունին եւ գեղեցիկ բանաստեղծական գովասանքներ կը չինեն սուրբերուն վերայ: Մեր աշուղ Մուչօն այս կարգէն էր: Յիսուս առաքելոց պատուիրեց որ ցուպ եւ մախաղ չառնեն ի ճանապարհին, աշուղներ ճիշդ կը պահեն այս պատուէրն, անտուն, անրնչասէր, թափառաշրջիկ մարդիկ են: Միայն մի սազ ունին, կը

ձգեն թեւերնին եւ կը շրջին գեղէ ի գեղ. ուր հարսնիք, հոգեճաշ լինի, անհրաւէր, ազատ կերպով կերթան. գիտեն պարագային յարմար՝ ուրախական եւ ողբական երգեր ու խաղեր կանչել: Ձմեռ ժամանակն իրենց համար շատ նպաստաւոր է. երբ գիւղացիք դաշտային աշխատութենէն կը դադրին, տաք ախոռներ կը քաշուին. մանաւանդ երբ լսեն թէ աշուղ եկեր է գիւղ, ամէն տեղերէ կուգան կը հաւաքին։ Երգահան աշուղ կսկսի իւր խաղն ու հէքիաթն: Տեսնաս դու, Թոռնիկ, որչա՞փ զմայլելով մտիկ կանեն մեր անգիր ու պարզամիտ ժողովուրդ, նոցա համար աշուղ՝ տիրացուէն շատ գերազանց է, վարդապետի քարոզէն աւելի՝ հէքիաթն անուշ է:

Մեր Մուշօյի համար մի զուարճալի բան կը պատմեն: Լըսելով թէ մօտակայ գիւղ հարսանիք կայ, գիշերանց այնտեղ կերթայ, եղանակ ձմեռն է, սատրիկ էլ ձիուն կուգայ, ճանապարհին քանի հատ անօթի գայլեր զինքն կը պաշարեն: Մուշօն ճարպիկ էր, գայլեր խաբելուն կերպ լաւ գիտէր. իսկոյն մէջկապ կը քակէ եւ ծայրը քաշ գետին կը ձգէ. գայլեր կսկսին ծայրին հետ խաղալ, մի կողմէն եւս իւր քէման կը զարնէ: Կը թուի թէ Մուշօն փորձով գիտէր, թէ գազաններն էլ ականջ եւ ճաշակ ունին երաժշտութեան գեղարուեստին: Այսպէս սիրտ դող աշուղ Մուշօն կերթայ կը հասնի մի մեծ ծառի մօտ, որ գեղէն քիչ հեռու էր, իսկոյն արագութեամբ Մուշօն ծառի վըրայ կելլէ եւ կը շարունակէ գայլերուն սիրած եղանակը նուագել, ծառին բոլորտիք շարուելով կը նստին՝ մտիկ կընեն: Գիւղի հարսնուորներ քէմանի ձայն առնելով կը հասկնան որ Մուշօն է կուգայ, դուրս կելնեն դիմաւորելու, խեղճ գայլերու քօնսէռն հարամ կը լինի: Մուշօն ազատուելով կը մտնայ հարսնետունն եւ կսկսի նոյն քաղցր եղանակ զարնել: Աշուղ Մուշօն գայլեր ողոքելով կըթեց, որ մարդ չուտեն, իրենց բաժին կերակուր միայն ոչխարն է: Կը թուի ինձ Մուշօյի միտքն այն էր, որ գայլեր կրթելէն յետոյ՝ կուզէր գեղացւոց բրտութիւնն էլ կրթել, որ իրարու միս չուտեն, ոչ թէ անոր համար՝ որ արենակից եղբայր են, այլ առաւել Յիսուսի պատուէրին համար, որ կուսուցանէ թէ դուք ամենեքեան եղբայր էք:

Մուշօն միայն գիւղական ժողովուրդին աշուղն էր. նա չէր սիրեր երբէք քաղաք երթալ, նա կը սիրէր աւելի գիւղեր, դաշտեր, լեռներ, ծաղիկներ, կարկաչահոս աղբիւրների ջուրե:ր Վերջապէս նա շատ սիրահար էր Արարչին ձեռքով նկարուած բնութեան պատկերին: Սորա համար նա երբեմն, գիւղէն աներեւոյթ կը լինէր: Իւր սիրական ընկեր սազն էր, կը ձգեր թեւ, կերթար ման կուգար դաշտային ու լեռնային վայրեր, նա ամէն տեղ իւր փոր կշտացնելու համար հաց կը գտնէր:

Մեր գիւղացի աշուղ Մուշօն, շատ մեծ անուն ունէր, իւր սազին ու քէմանին հետ՝ ձայնն էլ շատ քաղցր եւ ազդեցիկ էր, իւր բնաւորութիւն՝ ուրախ զուարթամիտ մի մարդ էր նա:

*Թող այս, Նա խիստ ջերմեռանդ հաւատք ունէր դէպ ի Սուրբեր, ամեն տարի Մշոյ սուրբ Կարապետ ուխտի կերթար. իւր սազ գերեզմանին վերայ դնելով կաղօթէր. «ո՛վ մուրատատուր Ս. Կարապետ, որ Քրիստոսին քաւոր եղար, քո ծառայ Մուշօյին երգելու շնորհք տուր»: Աշուղներ էնպէս կը հաւատան, որ այդ անապատին լուսկաց ճգնաւորն՝ իրենց փիրն է: Զարմանալի է, որ լարախաղացն էլ նոյն հաւատով իւր ճարպիկ արուեստին համար դարձեալ նոյն շնորհ կը խնդրէ:*

*Մուշօն Սուրբ Կարապետէն դառնալով՝ սովորութիւն արած էր, կուգար Աշտիշատ՝ կը մտնար Սուրբ Սահակայ մատուռն, գլուխ գերեզմանին վերայ դնելով՝ կուշտ կուլար: Չըգիտեմ, էտ մարդ ոչ գիր գիտէր, ոչ պատմութիւն, ո՞ւր տեղէն սովրած էր Սահակայ Պարթեւի մեծութիւն եւ նշանակութիւն: Կը թուի թէ այդ երգախօս աշուղներ մեր եկեղեցւոյ Շարականաց երգիչներն կը ճանչնան:*

*Աշտիշատէն կելնէր կերթար Առաքելոց վանք, իւր ուխտ կատարելէն յետոյ՝ կանգնէր տաճարին արեւելեան կողմ, ուր թաղուած են Սուրբ Թարգմանիչներն, կը համբուրէր նոցա գերեզմաններն, եւ վաստակած լինելով՝ պահ մի կը նստէր էն տեղ եւ սազն ձեռք առնելով՝ կը շարունակէր Խորնոյ ծերունոյն ողբերն: Ինքն կ՚երգէր, ինքն կուլար. իւր ողբոյն արձագանգն միայն իւր զգայուն սիրտն էր:*

*Մուշօն լացով մխիթարուելէն յետոյ, Ծովասարէն կիջնար, կը հասնէր մի ձորաբերան տեղ, ուր հնուց ի վեր մի ջրաղաց կար շինուած, եւ ջաղցպան Մուշօյին ծանօթ բարեկամն էր, վասն զի աշուղներ չատաշրջիկ լինելով՝ ամէն տեղ ծանօթ ունին: Մուշօն բարեւ տալէն յետոյ՝ հարցուց, աղբէր Մխօ, ջաղցի կլօճ ունի՞ս, չատ անօթի եմ: Ո՛ւ, ի՞նչ կը հարցընես, բարեկամ Մուշօ, չե՞ս տեսնար, ջուր էկաւ ջաղաց տարաւ, ալուր, թօնիրն էլ հետ տարաւ. ես ո՞ր տեղէն տամ քեզ ջաղցի կլօճ: Մուշօն տեսաւ, որ ջաղացպան ջաղցի աւերակին մէջ բան կը փնտռէ, կը հարցնէ թէ՝ ի՞նչ կը փնտռես այս ջրատար ջաղցին մէջ. ջաղացին ջախջա՛խ կը փնտռեմ, ջախջա՛խ, կը պատասխանէ ջաղացպան:*

*Մուշօն իսկոյն սազն թեւէն վար կառնէ, կը նստի մի աւերակ թումբին վերայ եւ կսկսի իւր ողբաձայն երգն.*

*Է՛, ջաղացպա՛ն, ջաղացպա՛ն,*
*Արի, նստիր, քեզ սազ անեմ.*
*Մխիթարուիր, ով բարեկամ.*
*Ջուրն եկեր ջաղաց տարեր,*
*Դու ելեր ես մուրիկ – մուրի՛կ,*
*Կը փընտռես քո ջախջախիկ.*
*Ի՞նչ տի անես անպէտ ջախջախ,*
*Երբ ջաղցի ցիցն ու կամրջակ,*
*Կեցնայ քարեր, դունդն ու փառեր.*
*Ցորնի ուղոմն եւ այլն ամէն,*

Գլորեր տարեր է հեղեղն․
Երբոր գոռան երկնուց երես
Մրրկալից սեւ սեւ ամպեր,
Եւ երբ բացուին գարնան դռներ,
Շնչէն ջերոտ անուշ հովեր․
Վերէն Թափին կուժ – կուժ անձրեւ,
Վարէն հալին ձիւնակոյտեր․
Տես դու էն ժամ մեծ ջրհեղեղ,
Որ գայ Փչայ վիշապի պէս․
Ուժգին Թափով ինչպէս հիւսի,
Գլորէ բալ – բալ գոմշաքարեր․
Ջինչ կայ առաջ քանդէ գլորէ,
Գեղն ու քաղաք վէրան կանէ․
Ո՞ւր կը մնայ քո խեղճ ջաղաց․
Որ դիմանայ հեղեղին դէմ:
Փորձ ու խրատ ա՛ռ, ջաղացպան,
Թող ջաղացի այդ աւերակ․
Այսուհետեւ դու քո ջաղաց՝
Էլ մի շինիր ձորի բերան:

Լաւ կ'երգես ու կը խօսիս, Մուշօ բարեկամ․ ջաղացպան չես, որ ջաղցի բան գիտնաս: Միթէ կը կարծե՞ս, որ ջաղացպաններ անուս մարդիկ են, գիր ու կարդալ չգիտեն: Երբ սուրբ Կարապետի վանքի դպրոց կարդացեր եմ, բայց բախտն զիս ջաղացպան արած է․ է՛, ինչ կը լինի, ես տեղ մի կարդացեր եմ, թէ Աթէնքէն դարձող Մովսէս Խորենացին՝ վերջ–վերջ ջաղացպան եղեր է․ երբ նա իւր վաստակած իմաստասիրութիւն մախաղին մէջ դրած՝ իբրեւ անծանօթ կը շրջէր մեր աշխարհին մէջ, ոչ ոք ծախու կառնէր նորա վաճառներ, ո՛վ գիտէ, գուցէ նա այս ջրատար ջաղցի մէջ ջաղացպանութիւն արած է:

Հիմի մտիկ արա՝ որ խօսեմ քեզ, Մուշօ, ջախջախի մեծ նշանակութիւն, զոր կը փնտռեմ ես: Օրհնեալ լինի այդ փայտի կտոր ջախջախ, որ զիս ազատեց, ապաթէ ոչ ես էլ ջաղացի հետ ջրատար կը լինէի: Գիտես դու, ջախջախ ջաղցի աքաղաղն է․ բայց զարմանալի է մեր աքաղաղ, երբ ձայն հանէ, խօսի, ես անհոգ, անուշ կը քնանամ, իսկ երբ ձայն կտրէ, իսկոյն կը զարթեմ, կը տեսնամ, որ ջաղաց դադրած է: Ո՛հ, այս անգամ հեղեղ զարկաւ, ջաղցի ջրտուն քակեց, ջախջախ ձայն կտրեց, դուրս ելայ ջաղցէն, Աստուած զիս ազատեց:

Էտ քո ջաղցի աքաղաղ ջախջախ՝ իրաւի հրաշալի բան է եղեր, ասաց Մուշօն․ աշխարհ ձէն տալէն կը զարթի, իսկ ջաղացպաններ միայն երբ ջախջախի ձայն կտրի, էն ժամանակ կը զարթին: Կը խոստովանիմ, որ էդ ջախջախի նշանակութիւն շատ մեծ է, շատ բան կարժէ այդ ջախջախ, փնտռէ որ գտնաս:

Մուշօ՛ սիրելի, Աստուածաշունչ գիրք կարդացե՞ր ես․ հին Իսրայէլի ազգին մէջ ձայն տուող ջախջախ մարգարէներ կա–

յին, Յակոմբայ տան ջաղաց կը բանէր, եւ երբ այդ Աստուածախօս ջախջախներ իրենց ձայն կտրեցին, ջուր տարաւ Յակոմբայ տան ջաղաց եւ մինչեւ այսօր էլ դեռ աւերակ մնացեր է: Մեք էլ ունէինք երբեմն մեր վարդապետ ջախջախներ· երբ լռեց նոցա ձայն, իմացանք թէ ջուրն եկաւ մեր ջաղացն էլ տարաւ: Է՛, Մուշօ բարեկամ, հասկցա՞ր այժմ ջախջախի նշանակութիւն· կաղաչեմ, որ խաղ մի չարադրես այս ջախջախին վերայ, միշտ շրջես ու կանչես այս խաղն, միթէ աշուղի խաղն ու սազ մեր ջախջախներ չե՞ն:

Թողնենք ջախջախ, դու մի ուրիշ խրատ էլ կուտաս ինձ, Մուշօ, որ թողնեմ ձորաբերնի ջաղցի աւերակն եւ ուրիշ տեղ շինեմ իմ ջաղաց, բայց ո՞ւրտեղ շինեմ, Մուշօ բարեկամ, դու չգիտե՞ս, որ ամէն տեղ իւր տէրն ունի· այդ ջաղաց իմ հօրենական ու պապկենական մի ժառանգութիւն մնացել է ինձ· ես չեմ թողուր, որ այդ ջաղաց անշէն աւերակ մնալով՝ կորնչի մեծ պապերուս յիշատակ· պէտք է դարձեալ պարտք անեմ, ճար անեմ, շինեմ իմ ջաղաց, որ միակ իմ ընտանեաց յոյս եւ ապաւէն է· արտ չունիմ, լծկան չունիմ, միայն ջաղացով կապրիմ:

Ուրեմն, ասաց Մուշօն, երբ Աստուած կը յաջողէ, ջաղացըդ կը շինես, այժմէն քեզ խրատ տամ, որ ձորաբերան հեղեղատին կողմն մի հաստ ամուր քարուկիր պատ քաշես, էն ժամանակ քո ջաղաց կապահովի:

Ո՛ւ, բարեկամ Մուշօ, ջաղացպանին հալ չը գիտես, մեծ մեծ կը բրդես: Ես այդչափ ծախս ո՞ւր տեղէն ճարեմ, հին պապիկներս այդ բան չը մտածեցին, ե՞ս պիտի մտածեմ, իմ ջաղաց ինչպէս տեսայ, էնպէս պիտի շինեմ ես· այդ քո ասած բան անօթի, աղքատ մարդու բան չէ: Գիտե՞ս, Մուշօ, էս ջաղաց չորս դիր եղաւ, որ ջրատար կը լինի· ո՛վ գիտէ, գուցէ Աստուած գթութիւն անէ խեղճուկ աղքատիս, հեղեղներու երեսէն պահպանէ այս անգամ իմ ջաղացն:

Այս որ լսեց Մուշօն, լուռ կեցաւ, պահ մի մտածեց եւ յետոյ ասաց· շատ իրաւունք ունիս բարեկամ, էս մեր աշխարհի գործերն պէտք է խոհեմութեամբ յառաջ տարուին, լաւ է որ ամէն մարդ իւր չափով գործէ, ջաղացպան իւր չափով, Մուշօն էլ իւր սազով:

Է՛, ջաղացպան, մնաս բարով, ես կերթամ, դու շինէ քո ջաղաց, ջաղցի ջախջախ մեծ նշանակութիւն ունի· այժմ հասկցայ, որ Մուշօն էլ իւր սազով ջաղացի ջախ ջախ է:

Մուշօն դարձաւ Մուշէն Արճակ գիւղ, շատ մալուլ էր· օր կիրակի էր, Մուշօն գնաց եկեղեցին, մտաւ Աւանդատուն, կանչեց քահանան, խոստովանեցաւ եւ նոյն օր Ս· հաղորդութիւն առաւ· իրիկուան դիմաց խունկ ու մոմ առեց գնաց Աստուածածնայ վանք, մտաւ Ս· Տաճար, իւր խունկ ծխեց ու մոմ վառեց, չոքեց սեղանին առջա, մի երկար աղօթք մրմնջաց· ապա համբուրեց խաչն ու Աւետարան: Տաճարէն դուրս ելաւ ե-

կաւ այս ծառին տակ աղբիւրին գլուխ, քիչ մի բաղարջ եւ փոխինդ ունէր հետ. գիտես թէ այդ իւր վերջին ընթրիքն էր, որ շատ ախորժանօք կերաւ, եւ գինւոյն տեղ խմեց պաղ աղբիւրին ջուր, յետոյ սազ ձեռք առաւ սկսեց երգել, իւր այս երգ շատ սրտառուչ ու ողբական էր, ուրիշ ժամանակ Մուչօն ուրախ եւ զուարթ կերգէր, իսկ այս վերջին անգամ՝ գիտես թէ կարապ թռչունի նման իւր մահուան ողբերգութիւն կը դաշնակէր, իւր ամպոտ աչքերէն կաթիլներ կը թափէին. չընկուռի թրթռուն թելերուն վերայ: Ինձ կը թուի թէ Մուչօն Խորենացւոյ ողբ բերան եղած կերգէր, զի ջրատար ջաղացն ու ջախջախ շատ աղդեցին իւր որդւոյն վերայ: Մուչօն իւր մահուան կարգն ու «դատեան» աւարտեց, սազն գլխուն դրաւ, պառկեցաւ հով ծառին տակ, այնպէս անուշ քնացաւ, որ էլ վեր չելաւ. հրեշտակ կսպասէր, Մուչօն հոգին աւանդեց:

Նոյն իրիկուն պառաւ ջերմեռանդ կին, որ սովորութիւն արած էր՝ ձէթ ու խունկ կը բերէր Աստուածածնայ տաճարին, տեսաւ, տեսաւ որ Մուչօն ծառին տակ պառկած է. ասաց երթամ ձայն տամ, գիշեր չը մնայ այս տեղ. կանչեց, Մուչօ՛, Մուչօ՛. Մուչօն ձայն չը տուաւ, մօտ գնաց ձեռքով էրէրցուց, տեսաւ որ Մուչօն փայտ դարձեր է. վա՜յ, ասաց, Մուչօն մեռեր է: Պառաւ գնաց գիւղ, քահանային իմաց տուաւ. իսկոյն Մուչօյի մահ տարածեցաւ գիւղին մէջ. տէրտէր, ժամկոչ եւ ողջ ժողովուրդ թափեցաւ Աստուածածնայ վանք: Քահանայն ծանուցումն արաց, յայտնեց Մուչօյի կտակն. ասաց թէ՝ լուսահոգի Մուչօն ինքն զգացած էր թէ պիտի մեռնէր, այս առաւօտ եկաւ եկեղեցի, խոստովանեցաւ, Սրբութիւն առեց: Այժմ յայտնեմ ձեզ Մուչօյին կտակ. նա երդումով խնդրեց՝ ասաց «Տէր Հայր, ես անտուն, անբնակ շրջող մի մարդ եմ, կաղաչեմ, ուր որ կը մեռնիմ, այնտեղ թաղէ զիս. չ'մոռնաս, իմ սիրական սազն էլ հետ ինձ թաղէ»: Ես էնպէս կը յուսամ ու կը հաւատամ, որ երբ դատաստանին օր Գաբրիէլ իւր փող փչէ, Մուչօն իւր սազով պիտի երթայ արքայութիւն եւ հրեշտակներու հետ փառաբանէ զԱստուած: Միթէ այդ ազատ աշխարհին մէջ, ազատ հոգիներու համար, երգիչ աշուղներ պէտք չե՞ն:

Ժողովուրդն լսեց այս ծանուցումն, սիրով ընդունեց Մուչօյի կտակն, իսկոյն Տաճարի պատին տակ փորեցին գերեզման, թաղեցին Մուչօն. ժողովուրդն Աստուած ողորմի ասելով Մուչօյի հոգւոյն՝ դարձան գիւղն:

Այսպէ՜ս մեռաւ, Թոռնիկ, ժողովուրդին սիրական աշուղ Մուչօն: Մեք էլ նոյն ողորմիս տալով դառնամք գիւղի եկեղեցւոյ Տաճարին մօտ՝ մի ուրիշ գերեզման կայ, ուր հանգչած է գրեթէ երեսուն տարի յառաջ՝ Մահտեսի Ագրիպպաս, Հայրիկին մտերիմ եւ անձնուէր բարեկամ:

Տե՛ս, Թոռնիկ, մի անտաշ քար ձգուած է գերեզմանին վերայ, անգիր՝ անյիշատակ: Այժմ պատմեմ քեզ, Թոռնիկ, թէ

*ո՛վ էր Տըպադեան Ագրիպպաս, ընիկ Վանեցի, ու Հայրիկի տան դրացի:*

*Այս հանգուցեալ բարի անձն, ես էն ժամանակէն կը ճանչնամ, երբ Հայրիկ առաջին անգամ պանդխտեցաւ ի Պոլիս, որ դեռ վարդապետ չէր, այլ Մկրտիչ Վարժապետ: Իբրեւ հայրենակից եւ մտերիմ բարեկամ, այդ բարեսիրտ եւ զուարթամիտ անձն, միշտ ասպընջական կը լինէր Հայրիկին. Նորա ամէն անձկութեան կը հասնէր եւ դիւրութիւն կուտար: Սորա կարգին՝ չեմ մոռնար յիշել Պարոն Գրիգոր Ջրբաշխեան, որ գիրք ու կարդալ սիրող մարդ էր. առանց դպրոցի ու քերականութեան, անսխալ կը հասկնար լեզուն, եւ յաճախ կարդալով՝ վարժուած էր գրոց բառերու ուղղութեան: Երբ առաջին անգամ* Հրաւիրակ Արարատեան *կը տպագրուէր, շատ անգամ սըխալ տեղեր Հայրիկին ցոյց կուտար: Դեռ կենդանի է ինքն, եւ այժմ իբրեւ անվեղար վարդապետ կապրի Վարագայ վանուց մէջ, պարապելով նոյն ընթերցասիրութեան: Սա եւս իբրեւ մանկութենէ ծանօթ, մտերիմ բարեկամ էր Հայրիկին, զոր միշտ կընդունէր իւր պանդխտավայր յօթեւանն:*

*Իսկ երբ Հայրիկ տպարանով վերադարձաւ ի Վան եւ հաստատեցաւ ի Վարագայ վանք եւ սկսեց իւր ձեռնարկութիւններ, յիշեալ Մ. Ագրիպպաս՝ անձնուէր հոգով օժանդակ եւ աջակից էր Հայրիկին. Նա միայն սոսկ խօսքով քաջալեր չէր կարդար, երբ տեսնար Վարագայ վանուց անձկութիւն, պէտք եղած դրամ փոխ կուտար առանց տոկոսի, եւ մերթ եւս պարտամուրհակներուն ամեն վստահութեամբ կերաշխաւորէր:*

*Հանգուցեալ հոգին մեր գիւղին էլ բարերար եղած է, Թոռնիկ, Նա թէպէտ արուեստով դապաղ էր, բայց կը սիրէր գիւղական կեանք եւ մշակական աշխատութիւն. սորա համար մեր գիւղացւոց հետ յարաբերութիւն ունէր, եւ միշտ կերթեւեկէր: Առաջին անգամ նա պատճառ եղաւ մեր գիւղի մէջ դպրոցի հաստատութեան: Նա ձեռնարկեց Էրմանց գիւղի սահմանին մէջ գտնուած Առճակու լճին քանդուած թումբն վերստին շինել, որոյ առատ ջուր մեր դաշտի արտերուն վերայ գալով, ցանքերու արդիւնաբերութիւն բազմապատիկ կը լինի:*

*Աստի իբր երեսուն տարի յառաջ, մի օր իրիկուան առջի գիշերապահուն՝ չարաշուք աւազակներ Աղտաղու կամ Արտաղու դաշտի մի ձորակի մէջ քաշելով՝ չարաչար հարուածներով ըսպանեցին այդ անմեղ անձն, Մահտեսի Ագրիպպաս: Էն ժամանակ Հայրիկն Մշոյ Ս. Կարապետի վանքն գնացած էր. Վարագայ դպրոցի ուսուցիչ Մանուէլ վարժապետ մի ողբերգութիւն գրեց այդ անգուգական բարեկամին մահուան վերայ, որ մինչեւ ցայսօր Վանայ երգեցիկ մանուկներ խիստ սրտառուչ եղանակով կերգեն: Հայրիկն էլ մի ողբերգութիւն գրած է վաղուց իւր մտերիմ բարեկամին վերայ, եւ ես բերան արած եմ այդ սրտառուչ ողբերգութիւն, խօսիմ քեզ:*

Անցել էր առաւօտ, կէս օր,
Մօտ էր վերջինք իրիկուն․
Ես ի՞նչ գիտէի թէ այն օր
Իմ վերջին օրն էր։
Պառաւներուն կախարդ ագռաւ
Տանիքէն կանչեց կա՛ռ, կա՛ռ,
Հասկցայ ես իր լեզուն,
Կասէր կա՛ց, կա՛ց, մի՛ գնար։
Ասի ես չեմ հաւատար
Խաբերայ այդ չար գուշակին,
Որ խաբեց մեր Նոյ նահապետ,
Գնաց էլ չի դարձաւ ետ։
Տանէն հեծայ ես իմ ձին,
Ձին էնպէ՛ս նայեց ինձ ողորմ,
Ասի քալէ՛, քալէ՛, իմ ճերմակ․
Ճակատագիր է մարդոյն։
Եկայ մտայ ես ի դաշտն Արտաշու,
Դաշտէն առի ո՛հ, արեան հոտ․
Փռնկտացի ցնցեցաւ գլուխս,
Զարզանդ եկաւ վերէս,
Ձիս առեց ահ ու դող։
Մեր արեւ ժողվեց իր լոյս,
Գնաց մտաւ անուշ քուն․
Սար ու ձոր մթնեց վերէս,
Ձիս պատեց գիշերն աղջամուղջ։
Դեռ նոր նորեր էր լուսնակ,
Կապեր էր ոսկեշար մանեակ․
Եղջերիկներէն կախուած էին
Ցոլ աստղունք հազար – հազար։
Ասի թէ կըճատ լուսնիկով
Ես կերթամ իմ ուղիղ ճանապարհ․
Ոհ, այն էլ ծածկեց աչքէս
Վիշապագլուխ մի սեւ ամպ։
Ուրուականք հասին ետեւէս,
Զարաշուք ոսոխ ոգիներ
Զարկին թիկանց կուսէ ուժգին,
Պայթեցաւ գլուխս եւ ուղեղս։
Տապալեցայ ես ձիէն գետին,
Այնպէս անշշունչ կիսամեռ․
Ոտքէս քաշէ քաշ տարին
Թալեցին մի ձորակի մէջ
Եւ այլ շատ վէրքեր դրին վերէս,
Ձիս արին անշարժ կոճղի պէս․
Ասին թէ՝ մեռա՛ւ, մեռա՛ւ․
Ձիս թողին էնպէս ու գնացին,
Միայն իմ սրտիս խորին մէջ,

Կը թըրթըռփար իմ հոգիս։
Երիքովի ճամբորդն էի ես,
Ինկած աւազակաց ձեռք.
Ո՛հ, չ՚կար ինձ համար մարդասէր,
Այն գթած Սամարացւոյն պէս։
Անցի՛ր սեւ ամպ, անցի՛ր,
Բաց լուսնակին աչք.
Թող տեսնէ վկայ լինի,
Իմ անպարտ արեանս։
Գիտեմ, ո՛վ լուսնակ,
Երկնակամարէս
Չես ուզեր տեսնալ,
Մարդոց բիրտ եղեռն։
Այո, չես կամիր,
Կապուտ երկնքէն,
Որ գայ սըփոփ լոյսդ,
Սեւ դաշտի վերէն։
Անցիր գնա՛ եւ դու լուսնակ,
Խաւարաւ աչերս
Էլ չեն պիտոյ ինձ ո՛հ,
Ոչ լուսին ոչ արեւ։
Սակաւ մի եւս մեռանիմ ա՛հ,
Մթնում է իմ կենաց լոյս արեւ.
Հով, դու որ շնչես
Վարագայ սարէն,
Գուժ տար ի Տարօն.
Լուր բեր ինձ Արծուէն.
Հասիր սէր իմ Արծուի,
Դեռ ոգորի հոգիս.
Տամ քեզ յետին ողջ — մնաս,
Ապա տամ հոգիս։
Թռաւ հոգի Արծւոյն,
Իջաւ մահու դաշտ
Տեսաւ իւր սիրելին,
Ինկած մեռունակ։
Թաւալած ի գետին,
Արեան մէջ լողար.
Գարուն էր եղանակ,
Ծաղիկներ բացուած։
Ո՛հ, անմեղ զոհին
Արիւնով ներկուած,
Դեռ տաք էր արիւն.
Հողըն ծծէր փըրփրէր։
Արեան պղպջակներ
Զայն տային Արծուոյն,
Հոգին հոգւոյն հետ

Խօսէր անլեզու։
Եկի՛ր, Հայրիկ, տես
Մահ քո սիրելւոյն․
Ձեռք անագորոյն,
Թափեց իմ արիւն։
Թափեց իմ արիւն։
Բա՛րձ աստի, մի՛ թողուր,
Դիակս իմ ապաժոյժ․
Մի տանիր քաղաք,
Տար գիս Առճակ գիւղ։
Փորել տուր գերեզմանս
Եկեղեցւոյն մօտ․
Մի հանէք անձնէս՝
Իմ արնոտ շապիկս։
Կարմիր պատանքով
Թաղէ գիս, Հայրիկ․
Երբ գայ Տէր դատաւոր,
Նստի դատաստան,
Ես բողոք տի հանեմ՝
Նորա մեծ ատեան․
Թող վկայ լինի ինձ,
Իմ արնոտ պատան։
Մի՛ լուանաք մարմինս,
Մի՛ սրբէք վէրքերս արիւնհոս․
Դրէք գիս էնպէս անլուայ,
Գերեզմանին փոս։
Կնքէ Հայրիկ, շիրիմս,
Քո ձեռաց խաչով․
Որ անշարժ մնամ ես՝
Մինչեւ վերջին օր։
Խաչ մի տնկէ վրաս,
Գրէ յիշատակս․
Թէ աստ կայ ի հանգիստ՝
Ագրիպպաս նահատակ։
Ողջամբ մընաս, Հայրիկ․
Թէ երթաս Վարագ,
Յիշէ գիս, մի՛ մոռնար․
Յորժամ առնես պատարագ։
Ասաց Թռաւ հոգին,
Գնաց առ ԱՍՏՈՒԱԾ։

Մենք էլ յիշենք, Թոռնիկ, լուսահոգի հանգուցեալն, ասենք Աստուած ողորմի իւր հոգւոյն․ այլ եւս հերիք է, աւարտենք այստեղ գերեզմանի մեռելոց յիշատակներն․ այժմէն կըզգամ, Թոռնիկ, թէ մահս մօտ է, իմ յիշատակս էլ պիտի խառնուի ասոնց հետ։

ԻԴ.

# ՊԱՊԿԷ ԿՏԱԿ ԵՒ ՄԱՀ

Սիրելի Թոռնիկ, ժամանակս հասած է, անցեր է կեանքիս գուարթ առաւօտ. անցեր է կէսօրն, վերջինք եւ իրիկուն մօտ է. պէտք է քնանամ, հանգչիմ էնպէս, որ էլ վեր չելնեմ: Կը տեսնաս ուժէ ընկած եմ, քայլերս կը դողդողին, ցուպն էլ օգուտ չունի. ձեռներս աշխատութենէ դադրած են. ո՛հ, աչքերըս էլ Իսահակ նահապետին պէս վատատես եղած է. բոլոր մարմնովս անպիտանացած եմ, էլ ոչինչ օգուտ չունիմ, ոչ քեզ՝ ոչ աշխարհին: էն մարդ, որ աշխատութենէն կը դադրի՝ նորա կենդանութիւն շատ աւելորդ է. թէ մեր ընտանիքին եւ թէ գեղացւոց համար ես մի բեռ եմ. ձեռքովս չ՛վարած, չի ցանած եւ չի հնձած հաց ուտել, որչա՞փ դառն է, եւ հակառակ Աստուծոյ այն պատուէրին, որ կասէ թէ՝ երեսիդ քրտինքով պէտք է ուտես քո հաց: Մարմինս չոր ոսկոր դարձած է. էլ իմ ճակատէս քրտինք չի ծնծնար, վասն զի քրտինքն աշխատութենէն կուգայ:

Թէպէտ գաւակներ ու թոռներ մեծ պարտականութիւն ունին, իրենց ծերացած հայրերն ու պապեր մեծ խնամով անտրտունջ դարմանել ու պահել մինչեւ մահուան օր: Ծերոց ներկայութիւնը տան ու ընտանիքին համար մի օրհնութիւն է: Սորա համար կասէ Սուրբ Գիրք. «Ծեր ի տանէ քումմէ մի՛ պակասեսցի»:

Բայց ես տեսեր ու լսեր եմ, Թոռնիկ. շատ անգամ ընտանիքներու մէջ, երբ ծերացած հայրեր, պապեր ու պառաւներ, երկար ժամանակ կը տառապին մահիճներու մէջ, էն ժամանակ նոյն իրենց սիրելի ընտանիքներն՝ կսկսին տրտունջ բառնալ. օ՛հ, չը մեռաւ որ ազատուէինք, ի՞նչ է այս մեր քաշած: Նոքա կը մոռնան, չեն յիշեր իրենց ծնողաց եւ պապերուն սէրն ու գորովանք, հայրական ու մայրական երախտիք, որոց խընամով իրենք մեծցած, մարդ եղեր են:

Թողունք այս, Թոռնիկ, դու դեռ չ՛գիտես մարդոց ընտանեկան կեանքի մէջ ի՛նչ բաներ կան. երբեմն մի ընտանեաց հայր, որ շատ հարուստ է, եւ իր սնտուկներ լիք են ոսկիներով, բայց երբ ինքն բնաւորութեամբ սաստիկ ագահ եւ կծծի է, ամենախիստ ժլատութեամբ կը տնտեսէ իւր տան ծախքեր, եւ կապրի չքաւոր աղքատի պէս, դու լսեր ես թէ այդ ագահ մարդու ընտանիք ինչ կաղօթեն, Աստուած առ սորա հոգին, մենք ազատուինք սորա խստասիրտ տնտեսութենէն:

Երբեմն Աստուած կը լսէ այդպիսի աղօթքն եւ կառնէ ագահ տանտիրոջ հոգին. հոգին. պահ մի կուլան ընտանիք, մինչեւ կատարուի թաղման մեծ հանդէսը, երբ կը փակեն ա-

*գահին մարմին գերեզմանին մէջ, այնուհետեւ կը բանան ոսկելից սնտուկներն, չռայլութիւն, մսխանք, պերճութիւն կուգայ կը տիրէ ագահին տան վերայ, շատ չի տեւեր, չռայլութեան ժամանակ կարճ է, շուտով կը դատարկուին ոսկւոյ սընտուկներն, կերթայ չռայլութիւն՝ կուգայ կը տիրէ մշտնջենաւոր աղքատութիւն:*

*Ուրախ եմ, Թոռնիկ, դու բարի զաւակ ես. չես սպասեր պապկիդ մահուան, պապիկդ ագահ մարդ չէ. չինական ագահ չի լինիր, քանի որ իր դուռ բաց է. դու որբ մի տղեկ էիր, վարդի պէս պահեցի զքեզ: Ոսկւոյ սնտուկներ չունիմ որ ասես, ի՛նչ լաւ կը լինէր, եթէ մեռնէր Պապիկս, ոսկիներուն տէր լինէի եւ ուզածիս պէս կեանքս վարէի:*

*Իմ ժառանգութիւնս, որ կը թողում քեզ, ոսկի չէ, այլ ոսկիէն շատ աւելի թանկագին ու շահաբեր է: Ի՞նչ է ոսկին որ տեղ մի չի կենար, այլ* ժիվայի *պէս կը ցրուի կերթայ ու կը չքանայ, շատ անգամ էլ ճարպիկ գողեր ական բանալով կը գողնան ագահին դիզած գանձերն:*

*Ես կը թողում քեզ մեր հայրենի ժառանգութիւն, դաշտերը ու հողեր, որ միշտ իր տեղն անփոփոխ, հաստատուն է, կը թողում քեզ գութան երկու փոխ տավարներով, կը թողում կթան կովեր ու հարիւրաւոր ոչխարներ: Խոնք են ահա պապկէ կարմիր ոսկիներ. միայն թէ աշխատիս հաշիւ պահել ու մշակել, անասուններ դարմանել էնպէս, ինչպէս որ դաս տըւեցի քեզ, երկար — երկար, պարզ եւ ընտանի կերպով բացատրեցի քեզ հողագործութեան արուեստին համար:*

*Խօսիմ քեզ, Թոռնիկ, դարձեալ ես ինքնին կզգամ թէ մահս մօտեցած է, մահու հրեշտակ եկեր է Պապկէ դուռն կը զարնէ. եթէ հազար նիգ ու սողնակ ձգեմ դրան ետեւէն, ոչինչ օգուտ չունի, պատուհանէն կանցնի, զի հրեշտակներ թափանցիկ զօրութիւն ունին, որ պողպատի պէս կարծր մարմիններէն կանցնին. թէ ասես երթամ Ովկիանոս ծովուն խոր անդունդի մէջ պահուիմ, մահու հրեշտակ էն տեղն էլ կը հասնի մարդու ետեւէն:*

*Վաղ կիրակի է, Թոռնիկ. մտիր թեւս, տար գիս եկեղեցին. ես էլ Մուչօյին պէս պէտք է խօսիմ, խոստովանիմ, աղօթեմ, վերջին պատարագ տեսնամ, սուրբ հաղորդութիւն առնեմ, այն է իմ վերջին թոշակս. կը հաւատամ, որ այդ Քրիստոսի աւանդած Կենաց հացի թոշակով արժանի կը լինիմ սուրբ արքայութեան: Ժամէն դառնալով, Թոռնիկ, թաղսէ մահիճս ձգել տուր, պառկեմ հանգստանամ, գլուխս շատ ծանրացած է, սիրտս սկսած է բաբախել, ոտներս էլ սառած են. գիտեմ այդ սառն կամաց կամաց դէպի սիրտս պիտի գայ, որ մարմնոյս կեդրոնն է, էն ժամուն բոլոր մարմնովս պիտի սառիմ եւ յանկարծ պիտի տեսնաք, որ Պապիկ մեռա՛ւ եւ իւր կեանքի ճրագ մարեցաւ: Ես կաղաչեմ Աստուծոյ, որ մի քանի օր ինձ կենդանութիւն տայ, մինչեւ կտակս աւարտեմ:*

*Առաջին ընտանեկան կտակս այս է, Թոռնիկ: Այրի քո ծընող մայրիկիդ, որ այսօր մեր տան տանտիկին ու տնտեսն է, պէտք է ամենայն ակնածութեամբ պատուես իբրեւ ծնող մայր, ինչպէս սուրբ Գիրք կը պատուիրէ. «Պատուեա՛ զհայր քո եւ զմայր, զի բարի լինիցի քեզ». հայրդ մեռած է, միայն մայրիկ մի ունիս՝ որուն դու մէկ հատիկ մխիթարութեան զաւակն ես. կը տեսնաս թէ ինչպէս կը գուրգուրայ ձեր վերայ: Իւր ծերութեան ժամանակ ամէն խնամք պէտք է տանես նորա վերայ, զգուշացիր որ երբէք չը տրտմեցնես զինքն որ եւ իցէ կերպով, այլ աշխատաւոր տանտիկին ու տնտեսն է. մեր տան ներքին բոլոր կառավարութիւն նորա ձեռքն է, նա միայն պիտի հրամայէ:*

*Իսկ դու Շուշան, հարսնութեանդ մեծ պարտիք հնազանդութիւն է, ամենայն սիրով հլու, հնազանդ, կամակատար հարս պէտք է լինիս սկեսրոջդ առաջ: Նա շատ բարի կին է. իբրեւ մայր մի գորովանօք կը սիրէ զձեզ: Գուցէ լսած էք թէ՝ կան այնպիսի կեսուրներ, որ կանարգեն եւ կը տանջեն իրենց հարսներն, ով գիտէ, թերեւս իւր հարսներն էլ շատ պակասութիւններ ունին: Բայց դու որ քանի տարուան հարս ես, մի օր լսեցիր ու տեսա՞ր, որ կեսուրդ մի դառն խօսք խօսեց, կամ անարգ կերպով վարուեցաւ քո հետ: Յիշէ Շուշան, որ դու էլ մի օր կեսուր կը լինիս, ինչ որ անես, այն կը գտնես. Պապկի այս խրատներ մի մոռնար:*

*Կաւանդեմ քեզ, մեր նահապետական տան պատկառանքն ու պարկեշտութիւն. պէտք է անեղծ պահես այդ տոհմական առաքինութիւն: Կարդա միշտ սուրբ Գրքի մէջ նահապետներու պատմութիւն, ուր նկարագրուած է նոցա կեանքի պատմութիւն եւ անմեղութիւն:*

*Տէր Աստուած սուրբ պսակով քեզ Շուշան ծաղիկ մի տըւաւ. Շուշանին համար էլ մի Թոռնիկ, չը կայ քեզ համար մի ուրիշ Թոռնիկ մինչեւ օրն մահուան: Կ՚օրհնեմ զձեզ, որ շատ ապրիք եւ սիրով ապրիք. ձեր սուրբ ամուսնութեան ծառն միշտ նորանոր զաւակներով պտղաբեր լինի, Յակոբ նահապետի տան պէս բազմազան որդիքներդ:*

*Բայց գիտցիր Թոռնիկ, որ բազմածին զաւակներն այնչափ պարծանք չեն իրենց ծնողաց, եթէ անկիրթ մնան, անառակ լինին: Գիտե՛ս այդպիսի զաւակներ որչա՞փ նախատինք կը լինին իրենց ծնողաց: Աշխատիր մանուկ հասակի մէջ լաւ կրթութիւն տալ զաւակներուդ, երբ նոքա դեռ դալար ճղիկ են, եւ մոմի պէս կակուղ. եթէ թողուս որ հաստանան ու պնդանան, այլ եւս կը դժուարի կրթութիւն. վասն զի ամէն բան իրեն համար ժամանակ ունի. նայէ, որ չը թողուս անցնի ժամանակի պատեհութիւն:*

*Կեանքդ ու վարքդ ուղիղ պահէ, Թոռնիկ, շիտակ քալէ, որ որդիքներդ էլ քեզ հետեւին. չը լինի որ խեչափառին պէս միակողմանի քալելով, խրատ տաս ձագերուդ թէ՝ ուղիղ քալե-*

ցէք։ Գիտցիր, որ նոքա պատասխան պիտի տան քեզ. «Հայրի՛կ, մեք կը տեսնամք թէ ինչպէս կը քալես»։

Ուստի կը պատուիրեմ քեզ, Թոռնիկ, կեանքիդ բոլոր գործերու մէջ ուղղութիւն պահէ. պէտք է գիտնաս, որ ուղղութիւն կը յաւելու քեզ ժողովուրդին վարկ եւ վստահութիւն, որով բարի համբաւ եւ պատիւ կստանաս ժողովուրդին առաջ։

Ամենամեծ բարոյական հարստութիւն է քեզ համար, Թոռնիկ, եթէ կարենաս ժողովուրդին սէրն ու համակրութիւն գրաւել դէպ ի քեզ. աշխարհի բովանդակ ոսկին՝ դորա հետ չի հաւասարիր։ Դու առանձին մի գիւղի մէջ կապրիս, մի՛ ասեր թէ առաքինութեանս շրջանակ շատ նեղ է։ Բաւ եւ շատ է քեզ, Թոռնիկ, եթէ նախ մի գիւղի ժողովուրդին սիրելի ու յարգելի լինիս. բարի համբաւ թեւ ունի՝ գիւղէ գիւղ կը թռչի, կը հասնի մինչեւ ի Վան եւ կը տարածի բոլոր Վասպուրական աշխարհին մէջ։ Ցիշէ հօրիւ Ցակօյին եւ մեր գիւղի մեծ տանուտէրներուն համբաւ, թէ ինչպէս բոլոր գիւղերու մէջ հռչակուած էր։

Հարցո՛ւր այժմ, Թոռնիկ, թէ ի՞նչ են բարոյական միջոցներ եւ բարի գործեր, որով մարդոյն արժանիք եւ անուն կը բարձրանայ ժողովուրդին առաջ։ Այդ միջոցներն են՝ սիրել, բարերարել, գթասիրտ լինել, քաղցեալին ոչ միայն հաց տալ, այլեւ թանապուրին մէջ ձեռքով հաց բրդել, անկեալ ու դժբախտ ընտանիքներուն ձեռքէն բռնել, գրկեալ անձինքներն պաշտպանել եւ այլն։ Աւետարան կարդալով, Թոռնիկ, կը յիշէք, որ Ցիսուս դատաստանին օր թողլով բարեգործ մարդոց ուրիշ այլ եւ այլ բազմադիմի առաքինութիւնները, աւելի կը յիշէ ողորմած մարդոց գթասիրութիւն, որ փողոցին մէջ մնացած՝ անտուն, անճարակ օտարներ ժողվեր են, որ աղքատ, անօգնական հիւանդներուն տես գնացեր են, որ բանտարկեալներուն այցելութիւն արած են, որ քաղցեալին հաց, եւ ծարաւին ջուր տուեր են։ Ողորմած մարդոց գթասիրութեան այս բարիքներ ո՛վ է ընդուներ ողորմածներէն. յայտնի է թէ ժողովուրդին նեղեալ, չարչարեալ դասն ընդունած է, որ չէ կարող փոխարէն վճարել իւր բարերարներին։ Սորա համար աղքատին պարտք Քրիստոս կը վճարէ. եւ ի՞նչ կը վճարն, գիտե՞ս, երկնից արքայութիւն՝ կտոր մի հացի եւ բաժակ մի ջրի տեղ։

Բայց պէտք է գիտնաս, Թոռնիկ, որ ժողովուրդ ձրի մարդ չի սիրեր, եւ բան չառած՝ շնորհակալութիւն չի տար։ Միթէ դուան աղքատն առանց հացն առնելու, օրհնութիւն կուտա՞յ, կամ բարերարեալ մի՝ առանց բարիքն ընդունելու, բերան կը բանա՞յ շնորհակալութիւն տալ։ Աշխարհիս վերայ ամէն բան փոխարինութիւն է։

Կան, այո՛, բերաններ, որ միշտ անշնորհակալու են, եւ շատ անգամ եւս բարերութեան դէմ ապերախտ կը գտնուին. թերեւս չար եւ անգգամ լինելով՝ չարիք էլ կը փոխարինեն, եւ

կը կապեն բարերարին ձեռք, որ ստրջանայ եւ չը բարերարէ :

Սակայն դու այս հաշիւներ թող, Թոռնիկ, Աւետարանին մտիկ արա՛, որ կը պատուիրէ ատելիներուն բարի առնել, որք թէպէտ անարժան լինին, բայց դու չե՞ս տեսեր, որ մեր երկնից Հայրը, իւր անձրեւ հաւասար կուտայ մեր դաշտերուն, չի խտրեր չարն ու բարին, նմանապէս իւր լուսատու արեւ հաւասար կը ծագէ բոլոր աշխարհիս վերայ: Բարերարութեան արդիւնք եւ ազդեցութիւն շատ զօրաւոր մի դեղ է, չարերու ոգին կամոքէ, եւ սրտի դառնութիւն կը փոխէ, երբ կը տեսնայ, որ իւր չարութեան դէմ բարիք կընդունի, եւ այդ բարիք կրակի պէս կը վառէ նորա ներքին խիղճն: Սորա համար Պօղոս կասէ, թէ «Այս անելով կրակի կայծեր կը թափես նորա գլխուն վերայ»· լաւագոյն միջոցն է այս, միշտ բարութեամբ չարին յաղթելը· բարութիւն ջուր է, որ կը շիջուցանէ բորբոքուած կրակ:

Բարերարութիւն ընկերսիրութեան եւ քրիստոնէական մարդասիրութեան մի կամաւոր պարտք է, որ մարդ իւր նիւթական կարողութենէն բաժին կը հանէ ժողովուրդի կարօտեալներուն, բայց սա չէ միայն, որով ժողովուրդ զինքն կը սիրէ եւ բարերար կը ճանչնայ, այլ բուն անձնական արժանիք եւ առաքինի կեանքն եւս բարերար մարդոյն փառք կը յաւելուն ժողովուրդին առաջ: Ահաւասիկ, Թոռնիկ, կը դնեմ ձեր առաջ, թէ ի՛նչ են այդ հոգեկան առաքինութիւնք:

Հայրենի եկեղեցւոյ հաւատք, երկիւղած եւ անկեղծ Աստուածապաշտութիւն, հեզ եւ բարեհամբոյր բնաւորութիւն· սէր, որ իւր ընկեր անձին պէս հաւասար կը սիրէ, արդարութիւն, որ իւր եւ ընկերին բաժին հաւասար կը բաշխէ, բարի խղճմտանք, որ երբէք ընկերին վնաս կամ զրկանք չաներ· աւելի կը սիրէ զրկանք կրել, քան զրկել· ժողովրդասիրութեան ոգին, որ միշտ ժողովրդին բարին ու շահ կը մտածէ, զուարթամիտ առատաձեռնութիւն, որ շատ սիրելի է ժողովուրդին, մեծագործ ձեռնարկութիւնք, որ հասարակաց համար կը լինի, այսինքն եկեղեցի, դպրոց, հիւանդանոց, աղքատանոց, որբանոց, զանազան նուիրատուութիւնք, կտակ եւ այլն՝ ինչ որ ժողովուրդի կեանքին եւ յառաջդիմութեան համար պէտք են:

Հապա այն անձնուէր մշակներն, թէ եկեղեցական լինին թէ աշխարհական դասէն, երբ անձնատուր են ժողովուրդին համար, ոչինչ չը խնայել, ամեն բան զոհել եւ նոյն իսկ անձն ի ստիպել հարկին· էն ժամանակ ժողովուրդ չի բաւականանար միայն սիրել, այլ եւ պաշտել կուգէ իւր անձնուէր մշակներն: Եթէ մեռնին եւս, չեն մոռցուիր, ժողովուրդ նոցա անունն տօնելով կը փառաւորէ եւ յիշատակին համար յաւէրժական արձան կը կանգնէ:

Ահա Թոռնիկ, այս է ժողովրդասիրութեան արդիւնք· աշխատիր այդ արդիւնք եւ փառք ձեռք բերել, որ մեռնելէն յե-

*տոյ անմահ մնաս, ժողովուրդն զքեզ յիշէ եւ քո յիշատակն օրհնէ :*

*Սիրելի՛ Թոռնիկ, դեռ քեզ հետ պիտի խօսիմ, բայց կը ցանկամ որ այսօր մեր գիւղի քահանաներ, տանուտէրներ եւ համբաներ կանչես· Պապիկ պարտական է իւր վերջին մնաս բարով տալ գիւղի ժողովուրդին, որոց հետ այսչափ ժամանակ ապրած եմ, եւ վայելած եմ շատ նոցա յարգանքն ու պատիւ· ինչպէս քեզ, գիւղացւոց համար էլ կտակի պատուէրներ ունիմ :*

*Բարի եկաք, իմ սիրելի եւ աչքի լոյս գիւղացիք, կը տեսնաք Պապիկ պառկեր է, էլ վեր ելնելու յոյս չկայ, զձեզ կանչեցի, որ իմ վերջին ողջ — մնայք ասեմ ձեզ եւ երթամ իմ ճանապարհ, որ չիտակ դէպ երկինք կը տանի· այնպէս կը հաւատայ Պապիկ ծառային, որ իւր Տիրոջ տեսոյն արժանի պիտի լինի :*

*Կը յիշէ՞ք Թոռնիկին հարսնիքին օրն, երբ կերաք հարսանեաց ճաշն, խմեցիք Շահպազու գինին, սկսեցիք ուրախական խաղեր կանչելով, թէ կերանք Թոռնիկին ճաշն, բարով ուտենք Պապկի ճաշն, եկաւ ահա հասաւ այն օրն, որ պիտի ուտէք իմ հոգեճաշն :*

*Սիրելի՛ գիւղացիք, անուշ ուտէք· բայց պէտք է Պապկի վերջին խրատներն էլ ճաշի պէս ուտէք : Անշուշտ դուք կիմանայիք, որ քանի տարիներէ ի վեր ես իմ Թոռնիկիս շատ դասեր ու խրատներ տուի, թէ գիւղական երջանիկ կեանքի համար եւ թէ հողին ու հողագործութեան արուեստին յառաջդիմութեան համար· վերջին անգամ Թոռնիկիս իբրեւ կտակ ապսպրեցի, որ ինքն էլ նոյն դասերը ձեր զաւակներուն աւանդէ :*

*Իսկ աժմ կենդանի բերանով իբրեւ կտակ կը թողում ձեզ, Պապիկ իւր մահուան մահճին մէջ պառկած դեռ խօսել կուզէ ձեզ հետ : Լսեցէք, ինչ որ կը խօսիմ, բարեմիտ գիւղացիք :*

*Տէր Աստուած աշխարհիս վայելչութեան լաւագոյն մասն գիւղական ժողովրդին բաժին հաներ է : Կը տեսնա՞ք, ձեզ տուած է հողագործութեան ընդարձակ դաշտերը, լեռները, հովիտներ, գետեր, աղբիւրներ, Աստուծոյ մշակած բիւրազան բոյսերով եւ ծաղիկներով զարդարուած : Դուք ճիշդ բնութեան դրախտի մէջ կը բնակիք եւ կը վայելէք նոյն բնութեան տուած առատ ու անսպառ բարիքներն այն ինչ քաղաքացիք այս դրախտէն դուրս կապրին· նոցա վայելչութիւն իրենց ձեռագործ մեծամեծ շէնքերն են· նոցա ամէն պերճանքներն, միշտ վաղանցուկ եւ փոփոխական են, այսօր կան եւ վաղին ոչ· իսկ ձեր պերճանք, զոր նախախնամութիւն վաղուց ի վեր պատրաստած է, կան ու կը մնան, միշտ անփոփոխ դաշտեր, լեռներ, բոյսեր, գետեր, աղբիւրներ, միշտ նոյն կը մնան· միայն թէ բնութեան պատրաստած այդ ճոխագոյն բարիքներն՝ մարդ պէտք է գիտնայ թէ ի՞նչպէս վայելելու է :*

*Ինչ որ Տէր Աստուած Ադամայ ասաց, նոյն մինչեւ ցայսօր*

կը խօսի Ադամայ զաւակներուն, այն է՝ գործել զերկիր եւ պահել: Դուք փորձով գիտէք թէ արտն՝ առանց ցորեն ցանելու, ցորեն չի բուսնիր, առանց տնկելու եւ ջրելու՝ ծառ չի աճեր. առանց հողագործական աշխատութեան՝ ոչ ոք կարող է երկրէն արդիւնք հանել ու ժողովել իր ամբարն: Հողագործ մարդու կեանք միայն աշխատութեամբ կարդիւնաւորի, հողագործ հողով կապրի եւ երջանիկ կապրի, ինքն ապրելէն յետոյ, քաղաքացի ժողովուրդին էլ հաց կուտայ:

Ուրեմն դուք ձեր հողերով, ձեր դաշտերով, ձեր լեռներով, ձեր կաթնտու կովերով ու ոչխարներով, եւ այլ պիտանի անասուններով՝ շատ ու շատ հարուստ էք քաղաքացիներէն: Իբրեւ գեղացի, փորձառու Պապիկ խրատ կուտամ ձեզ, չը լինի՛, չը լինի՛, որ գեղ թողուք, հող թողուք եւ երթաք քաղաք բնակիք, գիտցէք որ թշուառ կը լինիք. երբ հողն կորսնցնէք, ձեր կեանքն էլ հողին հետ կը կորսուի: Կարօտութիւն եւ թըշուառութիւն կը հասնի ձեր վերայ եւ էն ժամանակ դուք յուսահատ վիճակի մէջ կը պաշարուիք, էլ ուրիշ ոչինչ յոյս չի մնար ձեր առաջ, այլ միայն պանդխտութիւն, ձգելով ընտանիք, զաւակներն անտէր, երթալ յօտարութիւն, չարաչար աշխատութեան մէջ տառապիլ, թողլով հողագործութեան քաղցր ու ազատ աշխատութիւն, ո՜հ, երթալ բեռնակի՞ր լինել. թողլով գիւղի կանաչ դաշտավայրերն, մաճն ու լծկաններն, ծառն ու ծաղիկ, հովասուն լեռներն, անմահական աղբիւրներու ջըրերն, քաղցրաշունչ առողջարար օդն, կաթն ու մածուն, սերն ու կարագ եւ այլ շատ բնական ու նահապետական բարի վայելքներն, զորս մայրենի երկիր կը պարգեւէ իր զաւակներուն: Պապիկ շատ փորձառու է պանդխտութեան դառն կեանքին, ձեզմէ շատերն էլ նոյն փորձն առած են. աշխատեցէ՛ք, աշխատեցէ՛ք, որ այդ օտարութեան կեանքի դառնութիւններ չի ճաշակէք. ես էլ կաղօթեմ ձեզ համար, իմ հայրենակից գիւղացիք, որ պանդխտութեան երես չի տեսնաք, ձեր հացն մայրենի երկրին մէջ գտնէք:

Բայց գիտէ՛ք, բարեպաշտ գեղացիք, թէ մարդիկ միայն հացով չեն ապրեր. կերթաք ժամ, Աւետարանին մտիկ կանէք, լսեցէք ի՞նչ կասէ Յիսուս թէ «մարդ միայն հացով չի ապրիր, այլ եւ Աստուծոյ բանով պէտք է ապրի»: Վասն եթէ մեր մարմին հացով կապրի, հոգին էլ պէտք է ապրի, եւ հոգւոյ կեանքըն ու հաց Աստուծոյ պատուէրներն են, եւ պատուիրաններու գլուխ սէրն է. ուստի մարդիկ սիրով կապրին եւ իրարմով կապրին:

Ձեզ պարզ օրինակ տամ. մէկ լծով կութան չի լինիր, մէկ մարդով ջաղացի քար, կամ ձիթահանի գերան կարելի չէ տանել իր տեղն դնել. աշխարհիս ամէն դժուար բաներն մարդիկ սորված են ընկերական միացած ուժով գործել: Դուք փորձով գիտէք, երբ որ մեր գիւղի համար մի ծանր բան լինի, բոլորս կը միանանք եւ այնպէս կը գործենք: Կը յիշէ՞ք քանի տարի

յառաջ՝ քիւրդեր մեր գիւղի ոչխար զարկին տարան, էն ժամանակ գիւղի բոլոր կտրիճներ հաւաքուեցան, որն ձիով, որն ոտով, գերանդիներ սուրի տեղ առին՝ գնացին թալան դարձուցին: Հիմի դուք ասէք, մի մարդ գեղի ողջ թալան կարո՞ղ էր դարձունել:

Հասկցաք այժմ, որ մարդիկ իրարու օգնելով կապրին, հարցուցէք, թէ ինչո՞ւ համար իրարմով կապրին: Մտիկ արէք, պարզ կերպով խօսիմ ձեզ: Որովհետեւ աշխարհիս վերայ, ամէն տեղ գեղն ու քաղաք մարդոց կեանք անհաւասար է. որն հարուստ է, որն աղքատ է, որն իշխան է, որն հասարակ ժողովուրդ է, որն տէր է, որն ծառայ է, որն տանուտէր է, եւ որն միակ է: Ահա այս անհաւասարութիւն է, որ մարդիկ իրարու հետ կը կապէ եւ մի ընկերութիւն կը կազմէ. ժողովուրդ իշխանին հետ կը կապէ, ծառայն տիրոջ հետ, աղքատն հարուստին հետ, ինչպէս մեր գիւղի աղքատ մշակներն՝ հարուստ տանուտէրներուն հետ կապած է:

Ի՞նչ կասէք դուք, եթէ այդ մշակներն աղքատ չը լինէին, յանձն կառնէի՞ն մտնել ծառայութեան ծանր լծին տակ: «Աղքատութիւն զայր խոնարհեցուցանէ», կասէ սուրբ Գիրք. ապա թէ ոչ, մարդ եթէ զգայ իւր անձին արժանաւորութիւն, երբէք չի խոնարհիր ծառայութիւն անելու: Բայց միթէ լա՞ւ կը լինի, եթէ ամէն մարդ հաւասարապէս ազատ լինի, հարու լինի, աղա լինի: Ո՛չ, էն ժամանակ աշխարհիս կարգ կը խանգարուի. հայոց առած մի կայ՝ կասէ, «Ես աղա, դուն աղա, մեր աղուն ո՞վ կաղայ»: Այո՛, ծառան եւ ջաղացպան պէտք է ալուր պատրաստեն, որպէս զի աղան կարենայ առանց ջաղաց երթալու հաց ուտել:

Աշխարհիս ժողովուրդին ամենամեծ մասն՝ բանւոր, գործաւոր, մշակ եւ ծառայ են, որոց թափած քրտինքին արդիւնքըն է, որ աշխարհ կը կերակրէ. նախախնամութեան յաւիտենական օրէնք մարդկային ընկերութեան կեանքն այնպէս կարգադրած է, որպէս զի մարդիկ իրարմով ապրին: Դուք կը տեսնաք ձեր աչքով եւ փորձով գիտէք, որ մեր գիւղական կեանքն էլ անհաւասար է. զի մէկ մասն հողատէր ու տանուտէր է, մասն մի եւս վարձկան մշակ է, որ իւր դառն քրտանց աշխատութիւն՝ խիստ սակաւ վարձքի հետ կը փոխարինէ: Զը լինի որ ձեր մշակներու վարձ կտրէք, կամ ճզճզէք այսօր չէ վաղն. Տէր Աստուած կը պատուիրէ, որ վարձկան մշակին վարձն մինչեւ իրիկուն չի մնայ, այսինքն, օրն չանցնի վրան, վասն զի հնձող մշակներու բողոքն մինչեւ երկինք հասնելով, Աստուած Եսայի մարգարէին բերնով կը յանդիմանէր Իսրայէլի հողատէր տանուտէրեր: Զարաչար խստութեամբ մի վարուէք մշակներու հետ: Ես տեսայ որ ոմանք չափէն աւելի կը տանջէին, կը հայհոյէին եւ կը կոփէին զիրենք, գրկանք եւս հասցնելով, գիտէք, թէ մշակներուն տէր դուք չէք, Աստուած է, որ վրէժխնդիր կը լինի եւ գրկեալներուն դատաստան կը

տեսնայ: Որչափ քաղցրութեամբ ու արդարութեամբ վարուիք հողագործ մշակներուն հետ, այնչափ լաւ եւ շահաւոր է ձեզ համար. էն ժամանակ նոքա աւելի տիրասէր ու հաւատարիմ կը լինին, եւ սրտի մտօք կաշխատին, որով հողագործութեան արդիւնք՝ շատ շահաբեր կը լինի տիրոջ համար:

Տանուտէր եղբայրներ, չը լինի որ դուք աղատ աշխատաւոր մշակներն իբրեւ անարգ ստրուկ համարելով՝ արհամարհ կերպով վարուիք նոցա հետ. դուք եկեղեցի կերթաք, Աւետարանին մօտիկ կանէք, միթէ չ'դիտէ՛ք եւ չէ՞ք հասկցեր, որ Յիսուս իւր բոլոր հաւատացեալներ մեծ ու փոքր, հարուստ ու աղքատ, իշխան եւ ժողովուրդ, տէր եւ ծառայ, ամէնքը հաւասարապէս մի սիրոյ եղբայրութիւն կազմելով, ասաց այս բան. «Դուք ամենեքին եղբայր էք»:

Այս խօսքով չէ թէ Յիսուս մարդկային ընկերութեան իւրաքանչիւր դասակարգի կամ աստիճանի պատիւն ու յարգանք կեղծանէ. ո՛չ. Պօղոս Առաքեալ Քրիստոսի այս խօսքն բացատրելով կուսուցանէ մեզ, որ մեք իւրաքանչիւր մարդոց աստիճանին համեմատ՝ տանք մեր պատիւն ու յարգանք եւ բարոյապէս: Աւետարանի սիրոյ պարտք անխտիր է, պէտք է իւրաքանչիւր մարդ ինչ դիրքի եւ աստիճանի մէջ կը լինի՝ թող լինի ,պարտաւոր է հատուցանել իւր ընկերին: Բայց արտաքին պարտքերու համար էլ Յիսուս վճռաբար ասաց ու կատարեց, «Տուք զկայսերն կայսեր եւ զԱստուծոյն՝ Աստուծոյ»:

Կարգն եկաւ, խօսիմ ձեզ, գիւղացի եղբայրներ, պարտաճանաչ եղէք, եւ միշտ հաւատարիմ կացէք ձեր պարտքեր վըճարելու, ում որ կը լինի: Սակայն առաջին անհրաժեշտ մեծ եւ ամենակարեւոր պարտք հպատակ ժողովուրդին համար՝ տէրութեան պարտքերն են որուն պարտական է երկրին ժողովուրդ, քաղաքացին եւ գիւղացին վճարել ճշդութեամբ եւ հաւատարիմ երկիւղածութեամբ: Յանցաւոր է այն մարդ, ոչ միայն երկրին օրինաց առաջ, այլ նաեւ Աստուծոյ յայտնած պատուէրներուն առաջ, եթէ նենգէ ու խարդախէ այս պարտուց մէջ:

Աշխատեցէք միշտ տէրութեան տրոց պարտքերն ճշդութեամբ վճարել, եւ ժամանակին վճարել. մի թողնէք որ դիզանայ եւ ծանրանայ ձեր վերայ, եւ յետոյ պարտաւորիք ինչ որ ունիք ծախել ու վճարել տուրքն: Եւ ի՞նչ ունիք դուք, հող եւ լծկաններ. եթէ ծախէք՝ ձեր կեանք կը ծախէք, եւ կենդանւոյն կը մեռնիք թշուառութեան մէջ:

Մեր գիւղի աղքատներ ձեզ կը յանձնարարեմ, բարեսիրտ տանուտէրներ, տէրութեան տրոց բաշխումն ուղիղ եւ արդար արէք, թեթեւ դրէք չքաւոր տներուն բեռն, դուք որ կարող էք, ձեր վերայ առէք աղքատներուն բեռն. գիտցէք, ով որ ընկերին բեռն բառնայ, կը կատարէ նա սիրոյ պատուիրանին մեծ օրէնք:

Տէրութեան տրոց պարտքէն յետոյ, գիտեմ, քաղաքացւոց էլ շատ պարտք ունին մեր գիւղացիք. շատ անբախտ են նո–

քա, որք հողեր ծախելով իրենց պարտքեր վճարեցին, եւ ոմանք էլ արտեր գրաւ դնելով՝ պարտք պարտքի վերայ կը յաւելուն ծանր–ծանր տոկոսներով, որոց վախճան շատ ձախորդ ու դառն է, զի վերջ–վերջ չը պիտի կարողանան վճարել եւ էն ժամանակ պարտապահանջ իրաւունք պիտի ունենայ գրաւել ձեր արտերն:

Ուստի խրատ կուտայ ձեզ Պապիկ, աշխատեցէք նախ, որ պարտք չանէք. իսկ երբ նեղութիւն եւ անձկութիւն կը տիրէ վերայ, եւ դուք անճարակ կը լինիք եւ պարտք կանէք, աշխատեցէք շուտով վճարել քիչ պարտքն, քանի չէ էվելցեր: Պարտուց գործին մէջ միշտ հաւատարիմ եղէք, թէ առնելու եւ թէ տալու ժամանակ բնաւ նենգութիւն մի գործէք, ուղղութեամբ վարուեցէք եւ ուղիղ արէք ձեր հաշիւներ, գիտցէք որ, գիւղացի ժողովուրդին վարկ ու պատիւ իւր հաւատարմութեան վերայ է. ով որ նենգէ եւ ուրացութիւն անէ, էլ այնուհետեւ նորա վարկն ու պատիւ կը մեռնի քաղաքացւոյն առաջ. ում որ դիմէ եւ աղաչէ՝ կարող չէ փոխառութիւն անել: Ասացէք. Պապիկ, դու չէ՞ս ճանաչեր քո գեղացին, որ գիր ու հաշիւ չի գիտեր. ինչպէ՛ս կարելի է իւր հաշիւ գիտնալ ու պահել. նա միայն անգիր, անթուղթ մտահաշիւ ունի. սորա համար շատ անգամ կը մոռնայ եւ ուրացութեան կը դիմէ:

Շատ ըղորդ է այդ բան, կը խոստովանիք դուք ձեր բերնով. ես էլ կը վկայեմ ձեզ հետ, որ գիւղացւոց տուն քանդող եւ միակ մեծ պատճառն այն է, որ ինքն գիր ու հաշիւ չը գիտէ: Մեր կեանքի տնտեսութիւն՝ պէտք է գրով ու հաշւով լինի. որովհետեւ մարդոյս միտք մոռացկոտ է, այս աւուր բան վաղը կը մոռնայ. գիրն ու հաշիւ հնարուած էէ, որ մեր մտքի բան անմոռաց պահէ: Ով որ գիր ու հաշիւ չունի, նորա տնտեսութիւն խանգարուած է, եւ ինքն իւր բոլոր առեւտուրի մէջ միշտ կը վնասի: Շատ անգամ խօսած եմ ձեզ եւ այսօր վերջին անգամ՝ իբրեւ կտակ կաւանդեմ ձեզ իմ խրատներս:

Մեր գիւղի դպրոցին հոգ տարէք, որպէս զի ձեր տղաք կրթուին, գիր ու հաշիւ սորվին, դուք արդէն ժամանակն անցուցած էք, անհաշիւ ապրեցաք, անհաշիւ պիտի մեռնիք, գոնէ ձեր տղաքներն կրթուելով՝ բանգէտ լինին, գիտնան իրենց կեանքի տնտեսութեան գործերն: Երբ քաղքցին ամէն բան գրով ու հաշւով կը գործէ, ինչո՞ւ համար գիւղացին էլ քաղքցուն պէս հաշիւ չը գիտնայ: Որչա՞փ ամօթ է գեղացւոյն համար, երբ խաբուի, սկսի տրտնջալ ու ասել թէ՝ քաղքցին զիս խաբեց եւ այլն: Միթէ գիւղացին մարդ չէ՞, բանականութիւն չունի՞: Այո՛, մեք էլ մարդ ենք, այլ մեր բանականութեան աչք՝ տգիտութեամբ փակուած է: Մեք աչք ունիմք եւ իբրեւ կոյր կը շրջիմք աշխարհիս վերայ, սորա համար քաղքցին ըդմեզ անբան, անխելք կը համարի. ո՛հ, երբեմն աւելի նախատելով՝ յիմար էլ կանուանէ: Այս անտանելի նախատինք յաւիտեան չի բարձուիր մեր վրայէն, քանի որ մեք կրթութիւն

Եւ ուսում չունիմք․ Եւ քանի որ մեր մտաւորական աչք բացուած չէ, մեք մոլորուած պիտի լինիմք աշխարհիս մէջ, եւ գիտէք դուք թէ մոլորուած մարդու կեանքի ճանապարհ թշուառութեան փշերով լի է, եւ վախճան դէպ ի կորուստ կը տանի։

Ուրեմն, սիրելի՛ գիւղացիք, այս կորստեան ճանապարհէն ազատուելու համար, պէտք է մեզ համար անխոտոր ուղիղ ճանապարհ, եւ ի՞նչ է որ չիտակ ուղին կը բանայ մեր աչքին առաջ, այդ չէ թէ ցորեկուան արեւն է, գիշերուան լապտերն ու ճրագն է․ ոչ, այդ աշխարհի լոյսեր բաւական չեն մեր կեանքին համար, եթէ մեք մտաւորական լոյս չունենամք, որ է ուսումն եւ կրթութիւն, զոր կստանայ մարդ իւր մանկակէն հասակէն։ Ուստի կրթեցէք ձեր մատաղ մանուկներն, որ մեծնան մարդ լինին, թող բացուի նոքա մտքին աչքը՝ իբրեւ կոյր չը շրջին աշխարհիս վերայ․ կրթեցէք նաեւ ձեր աղջիկներ, որ խելացի տնտես եւ բարի մայրեր լինին, պէտք է գիտնաք որ տան շինութիւն, կարգաւորեալ տնտեսութիւն միայն կիներուն ձեռքով կը լինի։ Մի թէ կիներ մարդ չե՞ն, հոգի ու միտք չունի՞ն․ Տէր Աստուած կին՝ իբրեւ ամուսին տուաւ այր մարդուն, ոչ թէ միայն զաւակ ծնելու համար, հապա իբրեւ ընկեր եւ օգնական տուաւ, որ աշխատութեան մէջ գործակից լինի․ մարդ դաշտին մէջ աշխատի, կինն էլ տան մէջ։ Դուք տեսե՞ր էք որ մէկ եզով հարօր բանի, այր եւ կին զոյդ լծակիցներ են․ եթէ լաւ նկատենք, աշխատութեան մեծ բաժին կիներուն վերայ ծանրացած է․ խեղճ կիներ իրենց ծնած զաւակներ սնուցանելէն յետոյ, որչափ ծանր ու դժուարին է առտնին տնտեսութեան այնչափ բաներ հոգալ․ մտիկ արէք, որ մի առ մի շարեմ ձեզ գիւղացի կնիկներուն աշխատութեան գործերն։ Ամէն օր խմոր շաղղել, բարկ թոնիրին դիմաց հաց եփել, կերակուր պատրաստել, դաշտի մշակներուն հաց տանել, իրիկուն առաւօտ մատակներ, կովեր կթել, երթալ պէբատեղ ոչխարներ կթել, կաթնարարութեան գործեր տեսնալ, ծծում կամ տիկ զարնել, իւղ եւ պանիր շինել, հիւրեր հոգալ․ շատ անգամ ախոռներ մաքրել, փթիր թխել, ամրոց շինել՝ ձմրան համար վառելիք պատրաստել, բուրդ գզել, մանել, գուլպա, թաթպան հիւսել եւ ուրիշ շալէ բաներ գործել, լըւացք, կար ու կարկատ անել, երթալ դաշտեր, լեռներ ներկի ծաղիկներ ու արմատներ ժողվել, նախշուն կապերտներ գործել․ էլ ո՞ր մէկն ասեմ․ կան տակաւին ուրիշ շատ գործեր, որ գեղացի կիներուն բաժին ինկած է․ խեղճ կիներ անմռունչ հնազանդութեամբ այս ամէն աշխատութիւններն կը տանին։ Դուք գիտէք ու կը տեսնաք այս աշխատաւոր կիներէն ոմանք, իրենց խստաբարոյ եւ անխիղճ էրիկներէն չարաչար ծեծ կուտեն եւ հայհոյանքներ կը լսեն։

Գիտեմ, պիտի պատասխան տաք, է՜ Պապիկ, ի՛նչ բաներ, կը խօսիք մեզ մեր անզգամ լեզուանի կիներն եթէ չը ծեծենք եւ չփետտենք, կարո՞ղ ենք զսպել․ դուք խրատ կուտաք մեզ,

որ աղջիկներն էլ մանչերուն պէս կարդալ սորվին։ Դու գիտե՞ս, ի՞նչ կը լինի էն ժամանակ, միտքերնին կը բացուի, լեզուանի եւ անզգամ կը լինին, ամէն բանին համարձակ պատասխան կուտան, իրենց բնական ամօթխածութեան քօղ կը պատռեն, հնազանդութեան լուծն կը կոտրեն. դու տես էն ժամանակ էրիկ կնկան կռիւ. տան խաղաղութիւն կը վրդովի, մեր հին նահապետական կարգն ու կանոն կը խանգարուի։ Մեք մեր պապերէն այնպէս սորված եմք, որ կիներ լուռ ու մունջ կենան։ Սորա համար մեր հարսներ սորված են եօթն տարի լեզուակապ մնալ տան մէջ, ոչ ոքի հետ չը խօսին, միայն իրենց ամուսիններու հետ խօսին. էն էլ ոչ թէ մարդոց առաջ, այլ առանձին։ Երբ մեր աղջիկներ կարդալ սորվին, յետոյ ամուսնանան հարս լինին, էլ անոնց լեզուն կը բռնուի՞. մանաւանդ թէ բանգէտ լինին, գիրքեր կարդալով աշխարհի բաներ իմանան. թող այս, շինականի աղջիկներ միթէ ժամանակ ունի՞ն, որ դպրոց երթալ կարդալ — գրել սորվին. մեր տան ու դաշտի գործեր ո՞վ պիտի տեսնայ։

Մեք Պօլիս երթալով գալով տեսեր ենք ու գիտենք, էդ Պօլսոյ կիներ երբ կարդալ — գրել սորվեցան, ամէնք ճարտար փաստաբան դարձեր են, խեղճ ամուսիններ գերի դարձեր են իրենց ձեռք. մինչեւ անգամ կը համարձակին բողոք կուտան Հայոց Պատրիարքարանին եւ էրիկներ դատաստանի կը քաշեն։ Մեք այս բաներ տեսնելով, կը վախնամք. լաւ է որ կիներ տգէտ մնան ու հնազանդին մեզ։

Լաւ կը հասկանամ ձեր խօսքեր, սիրելի գիւղացիք, մտիկ արէք, որ պատասխան տամ։ Երսուն քառսուն տարի յառաջ՝ ճիշդ խոստովանիմ, որ Պապիկն էլ ձեզ պէս կը մտածէր ու կը խօսէր, բայց երբ որ կարդալ սորվեցայ, գրքերու համն առի, պանդխտութեան մէջ շրջելով՝ աշխարհի բաներ, փոփոխութիւններն աչքովս տեսայ, էլ այնուհետեւ սկսեցի մտածութիւններս փոխել, պէտք է գիտնաք, որ ժամանակ ամէն բան իւր հետ կը փոխէ։ Դուք ի՞նչ կը մտածէք, կուզէք որ հնութեան մէջ անփոփո՞խ մնայք։ Դուք եթէ այժմեան ձեր վիճակի մէջ մնաք, էնպէս անշարժ, ինչպէս լճացած ջուր՝ կենդանի գետերու վտակներու պէս յառաջ չերթաք, պիտի ցամքիք ու չորնաք տգիտութեան ու թշուառութեան մէջ. մարդ պէտք է ժամանակին հետ քալէ, ով որ ետ մնայ, հացի կարօտ կը լինի, պէտք է գիտնաք որ աշխարհիս վրայ աւելի տգէտներն են, որ խեղճ ու թշուառ կեանք ունին։

Կար ժամանակ, որ քաղաքցին ու գեղացին առ հասարակ տգէտ էին և տգիտութեան մէջ հաւասար կերպով կապրէին։Այժըմ քաղաքացին յառաջ կերթայ իւր դպրոցներով, մանչ ու աղջիկ հաւասարապէս կը կրթուին. մեք գիւղացիք, եթէ ոչ քաղաքացւոց չափ, գոնէ փոքր ի շատէ ուսմունք սորվելով չը

կրթուինք, էն ժամանակ մեք քաղքցւոց յառաջ սորուկ կը լինինք վասն զի տգիտութիւնն է, որ մարդ սորուկ, գերի կը դարձնէ. ահա սորա համար է, որ քաղաքացին յառաջ կերթայ, կը հարստանայ, իսկ գիւղացին ետ կը մնայ ու կը չքաւորի:

Դուք էնպէս կը կարծէք ու կը դատէք, որ երբ աղջիկներ գրել ու կարդալ սորվին, լեզուանի ու անզգամ կը դառնան, եւ այլ եւս իրենց բնական պատկառանք եւ համեստութիւն կը կորսնցնեն: Ձեր այս դատաստանն չատ սխալ է. օրինակ մեր աչքին առաջն՝ է, մեր բնակած գիւղ երկու հարիւր տունէն աւելի է. մեր գիւղին կիներն ամէնքն եւս հաւասարապէս տգէտ են, գրել կարդալ չ՚գիտեն, դուք ի՛նչ կասէք, այդ ձեր ասած անզգամ եւ լեզուանի կիներ պակա՞ս են միթէ: Դուք չգիտէք դեռ թէ ամէն չարաբարոյութեան աղբիւր տգիտութիւնն է. եւ կիներու տգիտութիւն աւելի վնասակար է մի ընտանեկան գերդաստանին, քան թէ այր մարդոց: Մտիկ արէք թէ ինչ կասէ Սողոմոն իմաստուն. «Իմաստուն կանայք չինեցին զտունս, իսկ անզգամք ձեռօք իւրեանց քակեցին»: Դուք էնպէս կը կարծէք, որ տուն չինել, չէնցունել, պահել, միայն այր մարդիկ են, կիներ չինութեան համար ոչինչ նշանակութիւն չունին: Բայց պէտք է գիտնաք, որ տան չինութիւն ու լիութիւն կիներուն ձեռքն է: Դուք դաշտի վաստակներ կը բերէք կը լեցնէք տուն, բայց եթէ կին տգէտ ու յիմար լինէի, չ՚գիտնայ տուն կառավարել, չգիտնայ թէ ինչպէս պէտք տան կարիքներն մատակարարել, չափով ու խնայութեամբ տնտեսել. էն ժամանակ կը տեսնաք դուք, որ տարուան պարէն, կէս տարուան մէջ կսպառի, ոչ ամբարին մէջ ալիւր կը մնայ եւ ոչ մառանին մէջ իւղ, պանիր եւ այլ նպարեղէններ. վասն զի տնտեսելու համար խելք, իմաստութիւն պէտք է, եւ երբ տանտիկին անխելք է, տան չինութիւն կսկսի ներքին կողմէն քակուիլ:

Թողունք տան նիւթական չէնք եւ հացի տնտեսութիւն, մի տուն, կամ ընտանեկան գերդաստան չէն ու հաստատ լինելու համար, աւելի եւս բարոյական չէնք պէտք է, եթէ այդ չէնք չի պահպանէ տունն, չուտով կը փլչի նիւթական չէնք: Եւ ի՞նչ է այն, որ տան բարոյական չէնք հիմէն սկսելով կը կառուցանէ, գիտէ՛ք, խօսիմ ձեզ, մայրենի կրթութիւն եւ խնամքն է. եւ ի՞նչպէս կարող է մի մայր կրթել իւր մատաղածին մանուկներն, երբ ինքն անկիրթ եւ տգէտ է: Սորա համար է, որ չաբաբարոյ կը լինին մեր մանուկներն. երբ մայրերն անմիտ են, այնչափ որ՝ իրենց ծնած զաւակներն անգամ կարող չեն սնուցանել: Այդ պատճառաւ է որ մեր զաւակներն մատաղ — մատաղ կը մեռնին: Զարմանալի է, չատեր կը կարծեն թէ գիւղական ժողովուրդ աւելի բազմածին է ու կը բազմանայ: Այս կարծիք չատ սխալ է. մեք կը տեսնամք որ ծնածներէն կէսն անգամ չի մնար. խեղճ տղայք իրենց մայրերու անկրթութեան զոհ կերթան: Մեք իրաւունք չունինք մեղադրել այդ մայրերն.

դուք կը կարծէք որ տղաքներն ծնիլ ու պահել դիւրի՞ն բան է. տղաքներ մեր դաշտերու ինքնաբոյս խոտեր չեն, որ ինքնին առանց դարմանի աճեն եւ զօրանան: Մի միայն կրթուած մօր խնամքն է, որ գիտէ լաւ տածել ու սնուցանել իւր պաւակներն:

Մի այնպէս կարծէք եւ ասէ՛ք թէ կաթն ու հաց բաւական են տղայոց սնունդին համար, մեք կը տեսնամք որ թռչունք, անասունք, այսչափ միայն կը հոգան, երբ ձագերուն թեւիկներ բուսնին՝ կը թռչին իրենք գիրենք կը հոգան. նմանապէս որթիկներ, երբ կաթէն կտրուին՝ կսկսին դաշտն երթալ արածալ եւ իրենց ճարակ գտնել:

Է՛ սիրելի գիւղացիք, չ'գիտէք ուրեմն, թէ դուք բանաւոր մարդ էք, ձեր կեանք թռչնոց եւ անասնոց կեանքին հետ նմանութիւն չունի: Տէր Աստուած Ադամայ անէծք տալով ասաց. քո հաց ճակատիդ քրտինքով ուտես, այսինքն՝ տաժանելի աշխատութեամբ ճարես հացդ, բայց թռչնոց եւ անասնոց համար ոչինչ բան չասաց, վասն զի երկնաւոր հայր կը կերակրէ զանոնք, ինչպէս կը վկայէ Յիսուս: Մեք եթէ միայն հացով ապրինք, էն ժամանակ անասուն կը դառնամք: Սորա համար Յիսուս ասաց. մարդ ոչ միայն հացով կապրի, այլ Աստուծոյ բանիւ:

Դուք ի՛նչ կասէք, Աստուծոյ բան, երկնից արքայութիւն միայն ա՞յր մարդոց համար է, կիներ մասն չունի՞ն, զրկուա՞ծ են. Աստուածաշունչ գիրք, օրէնք, պատուիրան, Աւետարան, միայն այր մարդոց համա՞ր տուաւ Աստուած: Ո՛չ, այդպէս չէ, Տէր Աստուած Ադամայ եւ Եւայի հաւասարապէս տուաւ իւր պատուէր. նոյնպէս նոցա սերունդին հաւասար կերպով աւանդած է իւր Աստուածային պատուէրներն Մովսէսին եւ Յիսուսին ձեռքով:

Ուրեմն կին – արմատն էլ պէտք է գիտնայ ու հասկնայ այդ Աստուածային պատուէրներն, որք բովանդակուած են հին ու նոր Կտակարանին մէջ, եւ ի՞նչպէս կարող է կարդալ ու հասկընալ Աստուծոյ բան, եթէ փոքրիկ հասակէն սկսեալ նա չը սորվի դպրոցին մէջ, որ յետոյ մեծնալով նա կրթուած մայր լինի եւ կարող լինի կրթել իւր ծնած մատաղ զաւակներն: Դուք չը գիտէք որ այդ փոքրիկներն միայն իրենց ծնող մօր կրթութեան ու խնամոց յանձնուած են, հայրեր ոչինչ փոյթ չունին, մանաւանդ գիւղացի հայրեր, որ բոլորովին զբաղած կը լինին իրենց մշակական աշխատութեան: Ո՛վ է որ տղուն առաջին անգամ երես խաչակնքել կը սորվեցնէ, քրիստոնեայ մայր. ո՛վ է, որ հետաքրքիր մանկան ամէն մէկ հարցմունքներուն քաղցր ու մայրենի գորովով պատասխան կուտայ անձանձիր, մայր. ո՛վ է որ երբ մանուկ աչերն դէպ երկինք դարձնելով՝ կը տեսնայ կապոյտ երկնքին երես լուսաւոր բաներ, կը հարցնէ թէ ի՞նչ են, մայրն է որ կը պատասխանէ թէ արեւ, լուսին, աստղեր են, Աստուած ստեղծեր է մեզի համար, որ ցորեկ ու գիշեր լոյս տան: Հապա երբ մանուկ իւր շրջապատ մօտ եղած բաներն կը

տեսնայ ու կը հարցնէ, այդ ամէն բաներուն պատասխան տըւող ո՛վ է, դարձեալ մայրն: Այո՛, մանուկ իւր լեզուն մօրմէն կը սորվի. Աստուած, եւ Աստուծոյ բաներն էլ մօրմէն կը սորվի: Մարդիկ ենպէս կը կարծեն, որ այդ բաներն միայն վարժապետէն կամ՝ վարդապետէն պէտք է սորվին մանուկներն: Այդպէս չէ, մտիկ արէք բացատրեմ ձեզ: Մեր նորածին երախաներն կը տանեն եկեղեցին, քահանան կը մկրտէ աւազանին մէջ, կնքահայր անլեզու երախայի կողմէն թարգման կը լինի, հաւատք, յոյս, սէր խնդրելով քրիստոնէութեան դաւանութիւն կուտայ. բայց ո՞վ է, որ կը մկրտէ երախան մայրենի տան աւազանին մէջ, այդ մկրտիչ բնական քահանայն նոյն իսկ ծնող մայրն է, որ երբ երախային լեզուն ու միտք կը բացուի, կսկսի սորվեցնել քրիստոնէութեան համառօտ՝ պարզ ու բնական դասերն նորա մատաղ սրտին մէջ կը ցանէ սուրբ կրօնի սերմիկներն, որք հետզհետէ կը բողբոջին իւր աճման հետ:

Հիմի տեսա՞ք, որ տան ընտանեկան դպրոցին առաջին բնական եւ մեծ ուսուցիչ ու կրթիչ ծնող մայրն է, չենք սխալիր թէ որ ասենք, քրիստոնէական ուսման եւ նախակրթութեան մէջ, առաջին վարժապետ, վարդապետ, աստուածաբան, դաստիարակ մայրն է, եւ մանաւանդ բարեպաշտ մայրն, որ միայն լեզուով չուսուցաներ, այլ եւ իւր մայրենի բարի օրինակով կը կրթէ զաւակներն: Մեր գիւղացի ժամասէր մայրեր, կը տեսնա՞ք, իրենց երախաներ գրկելով կերթան եկեղեցին, Աստուածածնայ եւ խաչի պատկերներուն առաջ մոմ կը վառեն, ծունր կը դնն, աղօթք կանեն, երախան իւր մօր այս օրինակներն տեսնելով կը տպաւորէ ինչպէս կնիք իւր մանկական մաքուր սրտին վերայ: Իսկ երբ տակաւ – տակաւ զարգանայ, սկսի հարցնել, մայրիկ, ո՛վ է Աստուածածին, ո՛վ է Քրիստոս, ինչո՞ւ համար խաչուած է Քրիստոս, ի՛նչպէս յարութիւն առած է, եւ համբարձեր է երկինք. ո՛հ, այստեղ անուս եւ տգէտ մայր կարող չէ պատմել Քրիստոսի ծնունդ եւ այլ գործքերն:

Հասկցա՞ք այժմ, գիւղացի եղբայրներ, թէ մայրերն են միակ առաջին վարժապետ ու կրթիչ իրենց զաւակներուն: Այս եւս բան է, վարդապետի չափ երկար քարոզ ու խրատ խօսեցայ ձեզ. պահեցէք իմ այս վերջին կտակ, հոգ տարէք այսուհետեւ ձեր զաւակներն, մանչն ու աղջիկ հաւասար կերպով կրթել: Ինչպէս խօսած եմ Թոնիկկիս դասերուն մէջ, մեր գիւղական դպրոցներ մեծ–մեծ ծախքեր չունին. եթէ իւրաքանչիւր տուն կալի ժամանակ մէկ–մէկ կոտ ցորեան տան, դպրոցի բոլոր ծախքեր կը հոգացուին: Գիտեմ, դուք շատ ցաւեր ու տուրքեր ունիք հոգալու, բայց դպրոցի համար եղած տուրքն այնպիսի մի կարեւոր եւ շահաւոր տուրք է, որ ձեր այդ շատ ցաւերուն դարման կը լինի. դուք այս խօսքեր չէք հասկնար, բայց պիտի հասկնաք այն օր, երբ տեսնաք կրթութեան արդիւնքն, պիտի յիշէք զիս եւ ողորմիս տաք Պապկի հոգւոյն:

Սիրելի գիւղացիք, կարծեմ այսչափս շատ բաւական եղաւ,

իմ խրատ ու կտակ պահեցէ՛ք եւ ձեր զաւակաց ժառանգ թողէք. դեռ շատ բան կար ձեզ խօսելու, բայց շունչս սպառեցաւ, էլ չեմ կարող շարունակել: Մնաք բարեաւ խաղաղութեամբ, աղօթեցէք ինձի համար, որ բարի հրեշտակ քաղցրութեամբ առնէ հոգիս. չեմ արժանի երկնից արքայութեան լուսեղէն դարպասին, շատ է ինձ համար, եթէ նորա դրան սպասաւոր ու դռնապան լինիմ, դուք երկրէն աղօթեցէք, ես էլ երկնից արքայութեան դրան առաջ ծունկ չոքած հոգւով կաղօթեմ, բարեբար Աստուած ողորմութիւն անէ բոլոր աշխարհին եւ մեր խեղճ հայ ազգին, ամէն:

Է՛, սիրելի Թոռնիկ, ժամանակ հասած է, որ հոգիս աւանդեմ, հրեշտակ կսպասէ, տակաւին մի վերջին կտակ ունիմ ձեզ, զոր պէտք է ամենայն հաւատարմութեամբ եւ ճշդութեամբ կատարէք եւ ժառանգէք Պապկի օրհնութիւն:

Ես կը մեռնիմ Թոռնիկ, զիս տարէք թաղեցէք մեր պատով արտի մէջ, որ գերեզմանոցի մօտ է: Գերեզմանս փորել տուր արտի մի քունջ, ուր բարտի, ուռենի ծառեր կան: Դու գիտես, որ շատ ժամանակ Պապիկ աշխատութենէն յոգնած, կերթար այդ ծառերուն տակ կը նստէր, կը հանգստանար: Երբեմն եւս գլուխ ծառի բունին վերայ դրած՝ անուշ կը քնանար, իսկ այժմ գերեզմանին մէջ պիտի ննջեմ, մինչեւ Գաբրիէլ իւր փող հնչէ:

Այդ իմ գերեզմանի արտ երբ կը վարես, ցորեն կը ցանես, պատուէր կուտամ քեզ, որ այդ արտի մաքուր ցորենէն, բաւականի չափ աղաս ալիւր անես, յանձնես գիւղի քահանային, որ նշխար գործէ, Պապկի հոգւոյն համար պատարագ անէ հինգ տաղաւարաց մեռելոցի օրերն: Նմամանապէս մեր այգին երբ կըթես, լաւ ու հասուն խաղողներ ձեռքովդ զատէ ու քամէ, բոլոր տարուան բաժակցուն պատրաստելով՝ քահանային յանձնէ, թող պահէ եկեղեցւոյն մէջ:

Իմ հոգեճաշն ամենայն առատութեամբ պատրաստէ, ձեր հարսնիքին սեւ ծուռ եզն մորթեցինք, նայէ դարձեալ, մեր զութանի տաւարներէն ծուռ եզներ պակաս չեն լինիր, որ լծընկերին հետ հաւասար չեն քաշեր եւ միշտ խոփն ակօսէն կը հանեն. եթէ կան մորթէ, Պապկէ հոգւոյն մատաղ արա, բոլոր գիւղի աղքատներ լիութեամբ կերակրէ: Դու այժմ շուտ մարդ ղրկէ Վարագայ վանք, թող կանչեն Դանիէլ վարդապետ, որ գիւղի յառաջդիմութեան աշխատող բարի մշակն է, թող գայ զիս թաղէ եւ սաէ հոգւոցն: Մի զոմէշի նորահաս ձագ հոգեբաժին տուր Վարագայ վանքին, վասն զի այդ վանքի շընորհիւ մեք կարդալ սորված եմք:

Թոռնիկ, գերեզմանիս վերայ մի խաչքար տնկէ, եւ այսպէս գրէ յիշատակս: «Այս է տապան Առջակեցի Պապկէն, որ հող ու մաճ սիրեց, իւր Թոռնիկին հողագործութեան դասեր խօսեց, իւր կտակն աւանդեց ու մեռաւ: Որք հանդիպիք, ասացէք Աստուած ողորմի Պապկէ հոգւոյն»:

Հոգեհանութեանս ժամ կը հասնի, Թոռնիկ. կանչէ մայ–

րիկդ, կանչէ Շուշան եւ իւր զաւակներն․ եկէք ի միասին Պապկի ձեռք համբուրեցէք, առէք իմ վերջի օրհնութիւն եւ դուրս գնացէք, զիս առանձին թողէք, որ պահիկ մի հանդիստ մնամ աւանդեմ հոգիս։

Իմ պահապան բարի հրեշտակ, ոստիկանի պէս գլխուս վերայ կեցեր ես, կը տեսնա՞ս անձս բոլոր մահուան քրտինքին մէջ կը լողայ․ այն քրտինք որ ես կը թափէի դաշտին մէջ, ո՛հ, այս վերջին քրտինքն է, որ մահուան համար կը թափեմ․ այլ եւս պէտք չեն ինձ աշխարհիս հաց․ միայն թէ երկնից արքայութեան հացին արժանի լինիմ։

Բարի հրեշտակ, շատ շնորհապարտ եմ քեզ, խանձարուրիս ծննդենէն մինչեւ մահուանս վիճակ զիս պահպանեցիր, շատ անգամ զքեզ վշտացուցի, բայց շատ անգամ էլ ուրախացուցի, թէ մեղանչէի, երես դարձուցած կը տրտմէիր, թէ զղջացած ապաշաւէի, կը ցնծայիր, բոլոր կեանքիս չը գիտեմ որչա՞փ լացիր, որչա՛փ խնդացիր․ օրհնեալ է Աստուած, այս վերջին հոգեհանութեանս պահուս, խիստ պայծառ կերեւիս․ ոգիս յուսով կը լեցուի, կը հաւատամ թէ հաւատով պիտի աւանդեմ հոգիս։ Միայն կը խնդրեմ որ ասես ինձ, մահու հրեշտակ, հոգիս առնելով ո՞ւր պիտի տանես։

Միթէ չը գիտե՞ս, Պապիկ, դու գրոց աշակերտ ես, թէ հաւատացելոց հոգիներն նախ պէտք է Քրիստոս դատաւորին առաջ ելնեն, միայն քննող դատաւոր կ՚որոշէ մարդկանց հոգիներու համար վիճակ եւ տեղերն․ դորա համար մի մտածեր, Քրիստոսի Հօր տուն շատ ընդարձակ է, եւ բազում որոշեալ օթեւաններ ունի։

Ուրեմն կաղաչեմ, բարի հրեշտակ, ինձ համար բարեխօս եղէք Քրիստոսի առաջ․ ես տուն, օթեւան չեմ ուզեր, ես դաշտի հողագործ մարդ եմ, աշխատութեան սորված,, երկնից արքայութեան դաշտէն միայն փոքրիկ արտիկ մի կուզեմ, վարուցան անեմ․ գիտեմ, արքայութեան արտեր շատ պարարտ ու բեղուն են աշխարհիս արտերէն, որ տատասկ, փուշ եւ որոմն խառն կը բուսցնեն։

Խեղճ Պապիկ, խելքդ հողին ու աշխատութեան ես տուեր, չես գիտեր ինչ կը խօսիս․ կը թուի ինձ, որ Յիսուսի Աւետարանի խօսքեր մոռցած ես․ դուցէ ծերութիւն զառամութիւն բերեր է վրադ․ դու չ՚գիտե՞ս, որ արքայութեան մէջ ամէն աշխատութիւն դադրած է ադամորդւոց համար․ օրհնեալ լինի Քրիստոս, որ ձեր Ադամայ պապուն վրայէն վերցուց այն անէծք, թէ քրտամբ երեսաց քո կերիցես զհաց քո։ Պէտք է գիտնաս, Պապիկ, որ արքայութեան մէջ աշխատութիւն, քրտինք, ցաւ, տառապանք ոչինչ բան չկայ, արքայութիւն միայն Աստուծոյ փառաց վայելքն է․ մարմնեղէն մարդիկ մեզ պէս հրեշտակ կը դառնան, ոչ հաց պէտք է, ոչ ջուր, ոչ հանդերձ, մարդն ու հրեշտակ Աստուծոյ փառքով կը յագենան եւ լուսոյ մէջ կողողին․ բայց այս խօսեմ քեզ, Պապիկ, ամէն ծնած

*մարդ, ինչ որ ցաներ է աշխարհիս վերայ, զայն պիտի հնձէ, այսինքն ինչ որ գործեր է, իւր գործոց չափով պիտի ընդունի. բարի գործոց համար Քրիստոսի արքայութիւն է բաժին, իսկ չարագործաց համար դժոխք:*

*Այդ գիտեմ, բարի հրեշտակ, եւ դեռ այս անձուկ մահաժամ վայրկենիս սորվել կուզեմ քեզմէ, եթէ իւրաքանչիւր մարդ, ինչ որ ցաներ է այս աշխարհիս մէջ՝ զայն պիտի հնձէ անդիի աշխարհ, ուրեմն երկնից արքայութեան մէջ ինձ համար գործ կայ, այստեղ ցանածս այնտեղ բուսած կը լինի եւ հասած է այժմ, իմ գերանդիս հետս առնեմ, որպէս զի ցանածներս քաղեմ:*

*Դու կասես արքայութեան մէջ ուտել խմել չը կայ, հապա ի՞նչ է այն բարեկից սեղան, զոր կը պատրաստէ Քրիստոս իւր սիրելեաց համար եւ ինքն էլ զոտի ածելով կը ծառայէ սեղանին: Ա՜հ, Պապիկ կը ցանկայ, որ աշխատի այդ երկնային սեղանին հաց պատրաստէ: Միթէ առանց հացի սեղան կը լինի, կամ առանց այգի տնկելու գինի. ես հացի մշակ եմ, Մասիսի Նոյ նահապետն էլ թող այգի տնկէ, գինի պատրաստէ:*

*Շատ պարզամիտ ես Պապիկ, ի՞նչ բաներ կը խօսես. Յիսուս եկաւ աշխարհ, ամէն բան Աւետարանով ձեզ պատմեց, երբ ձեզ նման մարդ եղաւ, եւ ինքն մարդիկ տեսաւ փորձեց ու վկայեց թէ՝ այս աշխարհիս որդիքներ աւելի իմաստուն են քան լուսոյ որդիքներ: Բայց ես կը զարմանամ ձեր վերայ Պապիկ, երբ դուք մահու հրեշտակին հետ կատակով խօսել կուզէք, դու չգիտե՞ս որ հրեշտակներ կատակ չեն սիրեր: Զաքարիան թերահաւատութեան կատակ մի արաց՝ իսկոյն պատժուեցաւ: Կասես թէ գերանդիս հետս առնեմ, կարծելով թէ մեք հրեշտակներս հնձող գերանդի չունիմք. չե՞ս կարդացեր Յայտնութեան գիրք եւ մարգարէից տեսիլքներու մէջ երեւցած գերանդիներ, մեք մէկ գիշերուան մէջ Երուսաղէմ պաշարող Սենեքերիմի զօրքերէն հարիւր ութսուն հազար հոգի հնձեցինք: Աւելի կը զարմանամ այն բանին, որ կը ցանկաս արքայութեան մէջ քեզ մի արտիկ տան եւ դու արքայութեան սեղանին հաց պատրաստես:*

*Է՛, Պապիկ, դու չես կարող ըմբռնել այժմ երկնային խրնջոյք, որոյ սեղաննն անմահական է, հացն անմահական, գինին անմահական, դու ո՛վ ես, մահկանացու ապիկար մարդ, որ կը մեծամտիս այն սեղանին հաց պատրաստել, զոր միայն Յիսուս իւր Խաչով եւ արիւնով պատրաստեց: Այլ եւս բան մի յաւելուր, Պապիկ, տարաժամ է, տուր հոգիդ, հաւատայ ու համդիստ եղիր: Գիտէ Աստուած թէ իւր հաւատարիմ ծառաներ ինչպէս պէտք է վարձատրել: Գիտեմ, Պապիկ, վարձքդ մեծ է երկնից մէջ, երբ ընկերսիրութեան պարտքդ կատարեր ես,*

*ումեք գրկանք չես արեր, ճակատիդ քրտինքով հացդ կերեր ես, մինչեւ ցայսօր եւ այժմ բարի մահով պիտի ննջես:*

*Պապիկ պինդ բռներ է իր հոգին, դեռ խօսել կուզեր, այլ երբ տեսաւ որ հրեշտակ համբերութիւն չունի, ձեռքեր խաչեց սրտին վերայ, փակեց իր նուղած աչքեր, եւ վերջին բարբառ մրմնջեց: Ասաց, ահա հոգիս առ, բարի հրեշտակ: Այնչափ զուարթ ու դիւրութեամբ տուաւ Պապիկ իր հոգին, ինչպէս խնձոր մի ծոցէն հանելով, ութսուն երկու տարի կեանքի ծառէն կախուելով՝ բոլորովին կարմրած հասունցած էր:*

*Խնձոր ծառէն կաթուկ արած՝ հրեշտակ հասաւ վերէն առեց թռաւ:*

*Այսպէս մեռաւ Պապիկ, աւանդեց իր հոգին եւ հոգւոյն հետ աւարտեց նաեւ իր ՊԱՊԻԿ ԹՈՌՆԻԿ:*

Աստուած ողորմի Պապիկ նահապետի հոգւոյն, ամէն:

---

(Վ Ե Ր Ջ)

# ԹԱԳԱՒՈՐԱՑ ԺՈՂՈՎ

## *«ՀԱՅՈՑ ՀԱՅՐԻԿ»Ի*

---

Չգիտեմ ինչպէս պատահում էր,
Թէ ձայն տուին եւ հրաւէր,
Մեր աշխարհի թագաւորներ
Ժողվան մի օր եկան մի տեղ,
Սկսեցին կարգով խօսել,
Եւ իրարու քէփ հարցնել.
Արդեօք, ասեն, ամենուս մէջ
Ո՞վ հանգիստ քուն ունի գիշեր.
Այնչափ անհուն հոգ, զբաղմունք
Մի՞թէ տան մեզ անխռով քուն:
Ասաց առաջ Բրիտանիոյ
Մեծ տիրապետն Ովկիանու.
«Իմ քունս խաղաղ է եւ անուշ,
Ունիմ ահեղ նաւատորմիղ,
Անպարտելի եմ ի ծովին,
Ովկիանոսն է իմ պարիսպ.
Կղզիս փակեր է շրջապատ,
Իմ բազուկներս պարզեր եմ ես
Մինչ Հնդիկս եւ Ճենաստան:
Թէ հալածեն զիս ցամաքէն,
Ես ի ծովուն լողալ գիտեմ.
Զերթ Լեւիաթան ջուր փչելով,
Ողողեմ ես աշխարհ բոլոր:
Մեծ Նապօլէօն, այն զոռ վիշապ
Փշաց մրցեց ընդ Լեւիաթան,
Որ իր զօրեղ պոչով ոլրեց
Տարաւ փակեց Հեղինէ կղզին:
Թո՛ղ այս բնական իմ զօրութիւն.
Ես հարուստ եմ այնչափ անհուն,
Գլուխս դնեմ ոսկի բարձին
Հանգիստ քնեմ ես ապահով:»
Կարգն էր ապա Գերմանիոյ
Խրոխտ ինքնապանծ Կայսերին,
Ասաց, «Չունիմ ես ոսկեբարձ,
Ունիմ կրթեալ զինուորութիւն,
Անպարտելի ահեղ բանակ.
Ես ցոյց տուի իմ զօրութիւն
Գերման–Ֆրանս պատերազմին:

Սոսկ ռազմական չէ զօրութիւնս,
Գերմանիոյ թագին պարծանք
Իր գիտութիւնն է հռչակուած:
Ես քուն չունիմ, շարժուն եմ միշտ.
Իմ քնարն ի՛նչ է, գիտէ՞ք,—
Կրուպի ահեղ թնդանօթ:
Քլուխս դնեմ վերէն քնեմ,
Վստահ լինիմ գիշերն ի քուն:
Մի ուխտ ունիմ եւ ցանկութիւն,
Կամիմ յայտնել ի ժողովիս.
Ո՞ւր է մնացել Արեւելեան
հարցն ի վաղուց ժամանակի:
Վեհաժողովքն Բերլինի
Խնդիր լուծե՞ց թէ կախ թողեց,
Վաթսուն եւ մի երրորդ յօդուած
Հայոց ազգին յոյսն ու հաւատ,
Կատարեցաւ բանն ի ներհակ.
Հարիւր հազար հայք զոհուեցան:
Ոմանք ասեն թէ Թիւրքիան
Հիւանդ է յոյժ առ ի վախճան,
Ես բժիշկ եմ, թողէք դուք ինձ
Դարման տանեմ խեղճ հիւանդին,
Եւ ես կարեմ զայն բժշկել,
Աշխարհ տեսնայ եւ զարմանայ:
Բժշկութիւն իմ փորձն այս է.
Փոքր–Ասիոյ երկաթուղին
Տանեմ մինչեւ ի Բաբելոն,
Իմ շահ փոքր է որոշ չափով,
Իսկ Թիւրքիոյ մեծ է, քան զիմ,
Երկիրն իւր հարստանայ,
Եւ ժողովուրդ բարգաւաճի.
Գուցէ այսպէս տակաւ, տակաւ
Արեւելեան հարցն լուծուի:»
Լսեցին այս վեհապետք,
Խոժոռեցան սաստի անդի:
Բանին կարգն է Գաղղիոյ
Նախագահի հանրապետին.
Ասաց. «Ես չեմ մեծ թագակիր,
Այլ պարզ մի մարդ առանց փորմի,
Թագ Նապօլէոն տարաւ իւր հետ.
Երթայ բարով, չդառնայ ետ:
Զունիմ մեծ հող ինչպէս դուք,
Իմ պաշտօն կարճ է, համառօտ:
Բայց նզովեալ արքայասպանք
Զգիտենք երբէք չարն ու բարին,
Թէ թագաւոր, թէ հանրապետ

Գլուխ է, ասեն, պէտք է կտրել.
Քաղաքակիրթ եղան ազգեր,
Էլ չեն պիտոյ գլուխ եւ թագեր:
Ես չունիմ քուն, փախեր է քունս,
Երբ յիշում եմ բարի կարնօն:
Մի բան էլ կայ, ո՛չ միայն ես,
Այլ եւ բոլոր ազգ Գաղղիոյ
Անքուն առնէ, տանջէ հոգին,
Աւա՜ղ, չկարեմ արտասանել...
Ալզաս–Լօրէնն է այդ բան:»
Օ՜, խոժոռեցաւ Գերման կայսր:
Խօսք առեց հին պետութեան
Աւստրիոյ Յովսէփ կայսր.
«Ես էլ ունիմ շատ պատճառներ,
Որ չտան ինձ քուն ու հանգիստ,
Միահատիկ որդիս մեռաւ
Ձեղեւ թագին, ո՞հ նա ժառանգ:
Թագուհիս իմ անմման
Սպանեցին վատ դաւաճանք,
Թողում այս ցաւ ընտանեկան,
Որ հատանէ քուն իմ աչացս:
Երկիր ունիմ ես բարեշէն,
Որ չէ կազմեալ մի ազգ մի ցեղ,
Այլ մի խառնուրդ այլայլեզու
Միշտ հակառակ կան իրարու,
Քաղաքակիրթ, բայց Բաբելոն:
Քանի՜ ՜անր է եւ դժուարին
Ղեկավարել հակառ ազգեր,
Միայն Աստուծոյ ձեռն է կարող,
Որ հակառակ տարերք վարէ:
Դուք գիտէք եւ վկայ էք,
Իշխանութիւնս է հայրական.
Ես չկամիմ բռնաւ երբէք,
Որ բռնութիւն դնեմ ի գործ.
Ծերազոյն եմ եւ փորձառու,
Գիտեմ ես քաջ թէ բռնութիւն
Ծնանի զայլ իմն ըզբռնութիւն,
Հաւատացէք, ո՜վ թագաւորք,
Ես պատմութիւն բերեմ վկայ:»
Հիւսիսային մեծ պետութեան
Գահակալին էր բանին կարգ.
Ասաց. «Ունիմ լայնածաւալ
Աշխարհ անեզր ու անսահման.
Ուր ես կամիմ, դընեմ գլուխս
Եւ քուն լինեմ իբրեւ առիւծ,
Որ կայ ի քուն եւ արթուն է:

Եւ ո՞ կարէ վրդովել քունս,
Բիւրաւոր քաջ կազակներ
Ինձ պահապան կան առ դրունս:
Մեծ Նապօլէօն մտաբերեց,
Մինչ Մոսկուա արշաւել,
վտանգեցաւ, սարկացաւ,
Միջակոտր դարձաւ յետս:
Էնվալիդի գերեզմանէն
Եթէ լսէ, թէ Գաղղիա
Դաշնակից է Ռուսիոյ,
Հին ոսոխին եւ թշնամոյն,
Խռովեն անշուշտ ոսկերոտիք,
Բողոք բառնան առ հայրենիք:
Է՛, ժամանակ, ժամանակ,
Որ փոփոխէ զամենայն ինչ.
Ոսոխն առնէ դաշնակից:
Բայց խօսեմ ձեզ, ո՛վ թագակալք,
Արեւմուտքէն, Եւրոպայէն
Զունիմ բնաւ երկիւղ կասկած,
Այլ իմ վախն է Արեւելք,
Ճենաստա՛ն է, Ճենաստան,
Որ հատանէ քուն յաչացս:
Ո՞վ գիտէ զայ ժամանակ,
Որ զօրանայ ազգ Ճենաց,
Քաղաքակիրթ լինի մեզ պէս,
Վարժեալ ի զէն եւ պատերազմ,
Կազմէ ահեղ զօրաբանակ
Եւ ջրհեղեղ լինի, յորդէ
Արեւելքէն մինչ Արեւմուտք,
Համայն աշխարհ իմ ողողէ
Մանջուրիայէն մինչ Նեւա գետ.
Մայրաքաղաքն իմ Պետերբուրգ,
Եւ ո՞վ կարէ թումբ քաշել դէմ,
Մանջուրան է իւր ճանապարհ:
Զթողո՞ւ արդեօք, որ ես գրաւեմ
Մի ահեղ թումբ քաշել իր դէմ:
Ապագային այս մեծ վտանգ
Մտաբերեմ, սոսկամ այժմէն,
Հոգածութիւն զիս խռովէ,
Քուն եւ հանգիստ բառնալ յինէն,
Զէ՞ք հաւատար դուք այս բանին,
Փոքրիկ Ճաբոնն է ապացոյց:»
    Սուլթան խալիֆ Թուրքիոյ թագ
Ասաց. «Ո՛վ դուք աշխարհակալք,
Ինձ կարգ տուէք ես էլ խօսեմ,
Մի՞թէ դուք զիս փոքր համարէք,

Ձաւակ եմ ես Իսմայէլի,
Աբրահամու ճիշտ սերունդէն․
Ո՞ւմ խոստացաւ Տէր Աստուած մեր
Ձաւակներուն տալ բաժին,
Պատգամ տուաւ հրեշտակին,
Հրեշտակ խօսեց խեղճ Հագարին,
Թէ Իսմայէլ մեծ ազգ լինի,
Տիրէ ազգաց եւ աշխարհի,
«Ձեռք նորա յամենեսին,
Ամենեցուն ձեռքն ի նա»։
Ո՛վ թագապանծ իշխանք երկրի
Գիտէ՞ք արդեօք պատգամին միտք․
Ձեռք ձեր քարշեն զիս չորս կողմէն,
Իմ ձեռք բռներ ձեր օձիքէն,
Քարշեցէք որչափ կամիք,
Եւ ես անշարժ մնամ ի կեդրոն
Ձնաշխարհիկ Բիւզանդիոն,
Վա՛յ աւուրն, որ միանաք
Զիս մի կողմէն քարշէք ի բաց,
Այդ յաւիտեան դուք չէք տեսնար․
Իմ այս բաժին Աստուած է տուեր,
Ընդէ՞ր հապա դուք նախանձիք,
Միթէ կարէ՞ք ջնջել պատգամ։
Ունիք եւ դուք մեծ-մեծ բաժին,
Գիտեմ ես քաջ ի՛նչ է ձեր միտք,
Գուցէ կարծէք Թուրքիոյ կեանք
Ծերացեր է, մօտ է ի մահ,
Մի՞թէ սպասէք դուք այն աւուր,
Դրախտի նման հարուստ երկիրս
Բաժին-բաժին անել ձեր մէջ։
Քանի՛ դժուար է, դուք գիտէ՞ք
Երբ խնդիր կայ բաժնել վերէն,
Որ առիւծն է եւ զօրաւոր,
Բաժին խնդրէ մեծ-մեծ կտոր։
Աստ է յայնժամ կռիւ, պայքար,
Արիւնահեղ զոռ պատերազմ,
Եւ ի՞ւ լինի վախճան կռւոյն,
Այս է միայն — ուրիշ ոչինչ․
Արաբիոյ մեծ խալիֆան
Թողուլ իւր գահ Բիւզանդիոն,
Խաղաղութիւն լինի աշխարհ։
Հարցէք դուք այժմ, հանգի՞ստ է իմ քուն։
Օրհնեա՛լ է Աստուած, խոր է իմ քուն,
Ես հաւատամ նակատագրին․
Ինչպէս Աստուած կամի յերկինս,
Այսպէս լինի երկրիս վերէն

Բանին սկիզբն եւ իւր վախճան:
Բայց դուք ընդէ՞ր վրդովէք քունս
Արեւելեան հարց հանելով,
Ես ուրախ եմ եւ բաղդաւոր,
Անցաւ յինէն դժպատեհ հարց,
Գնաց մտաւ ի ծենաստան,
Ո՞ տայր, որ անդ կենար մնայր,
Կրկին ի յետ չդառնար:
Բայց թէ դառնայ էլ, չէ ինձ փոյթ.
Փորձուելով, փորձուելով
Ես լաւ ուսայ զփոլիթիկ.
Գիտեմ ինչպէս պէտք է վարուել:
Իմ գանձարանս թափուր է միշտ,
Չունեմ գլխոյս ոսկէ բարձիկ,
Կամ թնդանօթ այն Կրուպի:
Բայց ես ունիմ պատրաստ բարձեր,
Ժամանակին հետեւելով
Ըզմինն ընտրեմ, դնեմ գլխոյս,
Եւ ապահով ննջեմ ի քուն:
Թէ ժամանակ, թէ փոլիթիկ
Երբ փոփոխեն աշխարհիս,
Յայնժամ փոխեմ բարձն իմ գլխոյս,
Ընտրեմ յաւէտ յարմարագոյն:
Բարձերուն վարձ ահագին է
Ժամանակէն բռնադատեալ.
Զոր չկամիմ, ո՛հ, զայն առնեմ,
Այս է միայն իմ փոլիթիկ
Ժամանակին հետեւելով:
Զարմացան ողջ թագակիրք.
Կեցցէ՛, ասեն, Սուլթան խալիֆ
Քաղաքագէտ է քան զմեզ:
Վերջնական կարգն էր Պեյնինոյ
Փոքրիկ երկրին, փոքրիկ թագին,
Այլ նա մեծ էր եւ իմաստուն,
Սողոմոնի պէս էր խօսում:
Լուարուք ինձ, թագաւորք.
Ո՞վ ետ ձեզ այդ իշխանութիւն.
Եթէ ասէք՝ յերկնուստ է այն.
Եւ հաւատք՝ թէ կայ մի տէր,
Նա Աստուած է ամենիշխան,
Եւ թագաղիր է ձեր գլխուն,
Ձեզ յանձներ է այս մեծ աշխարհ
Վարել, դատել արդարութեամբ,
Եւ դուք ունիք համար տալու
Դատաստանի օր պահանջման:
Ի՞նչ է ան որ մեծարանէք.

Մինն պարծի ոսկի բարձով,
Միւսն Կրուպի թնդանօթով,
Այլ ումն աշխարհ իւր ընդարձակ
Համարի իւր ապաստան,
Զամէ ոչինչ թէ Աստուծով:
Թագաւորէք երկրիս վըրայ:
Գանգատ բառնամք՝ թէ քուն չունիք,
Հէ՞ ապա դուք անքուն առնէք
Եւ չարչարէք խեղճ ժողովուրդ.
Ասացէք ինձ, ո՞վ վեհապետք,
Թէ ո՞ւմ վրայ է հաստատուն
Ձեր գահն, աթոռ եւ տէրութիւն.
Դուք կարծում էք թէ գահն աթոռ
Կարէ ինքնին կալ հաստատուն.
Թէ չունիցի նա պատուանդան
Հաւատարիմ իր ժողովուրդ,
Որ անձնուէր է թագաւորին.
Եթէ շարժի եւ կամ խախտի
Ձեր աթոռի ամուր խարիսխ,
Ո՜հ, կործանի գահն ու աթոռ
Եւ թագաւորն թագն ի գլուխ:
Աշխատեցէք, ո՜վ վեհապետք,
Ձեր պատուանդան հաստատ պահել
Հաւատարիմ ժողովրդով:
Քանի որ կայ մեր այս աշխարհ,
Պիտոյ է միշտ աշխարհավար,
Թագաւոր ժողովրդին
Եւ ժողովուրդ թագաւորին:
Երկու դասն ի միասին
Կազմեն մի կեանք համերաշխ,
Աստուածադիր է այս կարգ,
Մարդ չկարէ փոփոխել զայն:
Ներողութիւն, ո՜վ մեծ իշխանք,
Դուք խօսեցիք իւրաքանչիւր
Թէ ինչ բարձեր են ձեր գլխոյն,
Որով հանգիստ լինիք ի քուն:
Արդ ես ասեմ, ինչ է իմ բարձ,
Գուցէ խնդաք եւ զարմանաք,
Պեղնիոյ հեզ թագաւորին
Ժողովրդի սիրտն է իւր բարձ,
Ուր ես գլխիկս դնեմ խաղաղ,
Թագ հրեշտակին տամ առ ի պահ,
Եւ ես ննջեմ հանգիստ, անվախ,
Ժառանգութեան իմ այս երկիր
Ես հեզութեամբ ժառանգում եմ,
Կարծեմ արդար է իմ այս բան,

Ըստ Քրիստոսի երանութեան։
Մի բան ունեմ, վերջին է բանս,
Ձայն չկարեմ ես մոռանալ,
Բանս արդար է եւ ճշմարիտ
Եւ թագերուդ է մեծ պարտքի։
Թէ առնիցէք, երջանիկ էք
Դուք եւ ձեր ողջ հպատակներ։
Ցանկալի է, յոյժ ցանկալի,
Խաղաղութիւն մեր աշխարհին,
Խաղաղութիւն թագաւորաց,
Խաղաղութիւն ժողովրդին.
Խաղաղութիւն հրեշտակ երկնից
Խաղաղութիւն բերաւ աշխարհ,
Խաղաղութիւն թողուց աւանդ,
Ո՛հ, կորուսաք խաղաղութիւն.
Քա՛ւ, մի՞թէ մենք ամբարիշտ եմք։
Հերիք այսքան մեծութեան տենչ,
Բաւ եւ շատ է, սահման դրէք,
Հերիք անթիւ զէնք ու բանակ,
Զինուորական տուրք անքանակ
Ժողովրդի բառնալ քամակ,
Բարդելով բեռըն ծանրագոյն
Անտանելի եւ դժնդակ,
Ազգեր ողջոյն հեծեն ողորմ,
Բողոքում են մինչեւ յերկինս։
Մի՞թէ կարծէք արդար Աստուած
Անտես առնէ իւր դատաստան։
Բաւ է, դրէք սուրն ի պատեան,
Ողջունեցէք խաղաղութիւն։
Յոտին կացեալ աշխարհապետք,
Կեցցէ՛, ասին Պեյնիոյ թագ,
Նա բան խօսեց ճշմարտութեամբ,
Աւետարանն էր իւր բերան,
Բայց մենք դառնամք ի մեր բան...

ՀԱՅՈՑ ՀԱՅՐԻԿ

Ի Ս. Էջմիածին գրեց այս բան։

———o———

# ՎԵՐՋԱԼՈՅՍԻ ՁԱՅՆԵՐ

ՈՂԲԱԳՐԵՑ ԵՒ ՀՈԳԵԳՐԵՑ

*Խ Ր Ի Մ Ե Ա Ն   Հ Ա Յ Ր Ի Կ*



*Գ Ա Հ Ի Ր Է*

ՏՊԱԳՐ. Ե. ԹՈՐՈՍԵԱՆ

1901

## ՆՈՐԻՆ ՎԵՀԱՓԱՌՈՒԹԵԱՆ
## ԾԱՅՐԱԳՈՅՆ ՊԱՏՐԻԱՐՔ ԵՒ ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ
## ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ
## Տ. Տ. ՄԿՐՏԻՉ Ա.

*Վեհափառ Հայրիկ,*

*Մանուկ էի դեռ, երբ վարժարանական սեղաններուն վրայ, օր մը, Ձեր Բարձր Ներկայութեամբ անցուցած քննութիւններէս մէկուն մէջ, զիս կը քաջալերէիք նուիրելով Ձեր սրբատառ ձեռագիրը վեհօրէն ճակտին դրոշմած Ձեր «ՄԱՐԳԱՐԻՏ ԱՐՔԱՅՈՒԹԵԱՆ ԵՐԿՆԻՑ» մակագրեալ գրքոյկէն մէկ օրինակ:*

*Սակաւաթիւ զարդերու իբրեւ ամենէն թանկագինը, մինչեւ այսօր պահած եմ այդ անստգիւտ ՄԱՐԳԱՐԻՏԸ: Կեանքիս մէջ թերեւս ունեցայ ուրիշ իսկական գոհար ու մարգարիտներ. բայց, չգիտեմ ինչո՞ւ, չկարողացայ հաշտուիլ անոնց հետ, ու մինչեւ վերջը պահել. ա՞րդեօք ամեն ինչ ծախող ու սպառող ժամանակը եղծե՞ց ու աչքէս հանե՞ց մարգրիտներու ծովէն քաղուած, նոյն իսկ այդ ամենէն անեղծ կարծած գոհար ու մարգարիտներուս փայլն ու գեղը: Չգիտե՛մ:*

*Տարիներ անցան. բայց Ձեր ինծ նուէր ըրած մեծագին ՄԱՐԳԱՐԻՏԻՆ փայլը մնաց անե՛ղծ, անմե՛ռ. ու ես կը պահեմ զայն տակաւին ու պիտի պահեմ, ո՛վ գիտէ քանի՛ տարիներ եւս, մինչեւ գերեզմա՛ն...: Ձեր ՄԱՐԳԱՐԻՏԸ, Վեհափառ Տէր, մի գանձ է թանկագին. գիտե՛մ. անոր փայլն ու գեղը չեն մեռնիր, որովհետեւ Երկնքէն քաղուած է:*

*Ժամանակի արագընթաց հոսանքին մէջ ի՛նչ է կեանքը մարդուն. մանկութենէ մինչեւ երիտասարդութիւն քայլ մ'է միայն:*

*Ու երբ ես այդ քայլը կ'ընեմ, այսօր Հայ կանանց համար իմ նախաձեռնութեամբ «ԱՐՏԷՄԻՍ» անունով հանդէսիս հրատարակութեան առթի'ւ ալ՝ ինծ կը նուիրէք տպագրական նորաձոյլ տառերու հետ մի ուրիշ մեծագին Մարգարիտ եւս. Ձերդ Վեհափառութեան այս անտիպ երկասիրութիւնը՝ «ՎԵՐՋԱԼՈՅՍԻ ՁԱՅՆԵՐ»՝ Ձեր բարձր կարգադրութեան համեմատ ինծ կը շնորհէք, եւ անոր հասոյթը կը տրամադրէք սկսելիք հանրային ձեռնարկիս ի նպաստ:*

*Բարեբաղդ ու երջանիկ կը զգամ զինքս, Վեհափառ Տէր, երբ Ձեր այդ Բարձր շնորհին արժանանալէ վերջ այսօր կը յաջողիմ մամուլին յանձնելու Ձեր «ՎԵՐՋԱԼՈՅՍԻ ՁԱՅՆԵՐ» յորջորջուած ընտիր մարգարիտներն եւս: Բարեբաղդ եմ, այո', այնո'ւ, որ այդ Բարձր շնորհին կ'արժանանամ ուղղակի իմ սկսելիք գործովս. երջանիկ եմ այնու, որ ես կը դառնամ ուղղակի միջնորդը Ձեր սրբազան քնարին Այրարատեան վերջալոյսներով ներշնչուած ու գունագեղուած ողբ-երգերուն հրատարակութիւնը իմ սիրելի Ազգիս ներկայացնելով:*

*Վաղուց կարօտը կը քաշէր արդէն Հայը Ձեր սրբազան Քնարին հայ-րենաշունչ աղիներու ներդաշնակութիւնն ունկնդրելու, թուլացած չեն դեռ կորովի լարերը Մասեաց Գուսան Ծեր Մովսէսին. վեհափառ Արարատի ու սպիտակազգեստ Արագածի ոտքերուն վրայ անտես յածող մեր հին Գողթնի Մուսաները իրենց սուրբ տաւիղով իջեր ու մրմնջեր են երգերը Երիքովի ճամբուն վրայ վիրաւոր ընկած Հայ Սամարացւոյն: Հայոց հրեշտակի թե-ւերուն վրայ վերացուած այդ Ոգին, երբեմն մտքի աչքերով կը յածի, կը սաւառնի «Մեռելոց դաշտը», Արեան դաշտը, ուր լճացած արեան ճապաղիք, դիզացած սրբազան ոսկերոտիք, լալահառաչ մայրերու ու ծերերու ողբն ու մայրակորոյս որբերու աղեխորով ճիչը կը խռովեն ու կարեվէր կը խո-ցեն Իր մեծ սիրտը: Ու կ'առնէ Իր քնարը լալկան ուռիներէն կախուած, Ինքն ալ կուլայ դառնագին, կը պնդէ արցունքով անոր թուլացած լարերը, ու կորովի կը հնչեցնէ երգը «Արեան դաշտի խոնջեալ» ու յաւիտենական հանգստով նիրհող նահատակներուն:*

«Ո՛ տայր, Օծեալ Տէր, որ հանուրց հիւսիսականաց վեհագոյն Սարի ստորոտէն թռչող ու սլացող Ձեր այդ բողոքի արդար աղաղակները հասնէ-ին մինչեւ Ամենակալի աթոռին առջեւ, եւ Հայոց Հրեշտակը իր փրկարար բալասանը բերեր, կտաւատով եւ ձէթով շաղախէր, ու դնէր Երիքովի ճամ-բուն վրայ վիրաւոր ընկած Հայու սրտին, որու բոլոր վէրքերը Ձեր անձին վրայ մարմնաւորած, կըսպասէք «աւուր այցելութեան»:

*Տա՛յր Երկինք, որ որպէս Ծերունին Սիմէոն ի Տաճարին, Ձեր Ս. Օծու-թիւնն եւս «Իջման Քարին» վրայ ողջագուրէր Հայու արիւնէն վերածնած առողջ ու կայտառ մանուկն Ազատութիւն»:*

*Սրտագին երախտագիտութեամբ առլցեալ Ձերդ Վեհափառ Օծութեան Սրբազան Աջոյն մատչելով ի համբոյր,*

*Մնամ Ձերդ Վեհափառ Սրբութեան ամենաերախտագէտ աղախին*

Հրատարակիչ

*ՄԱՌԻ ՊԷՅԼԷՐԵԱՆ (ՍՕՆԷ)*

2)15 Յունիս 1901
Գահիրէ

# ՈՂԲԱՑԵԱԼ ԶԻՆՈՒՈՐԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Ինձ համար չէ՛ գերեզման,
Եւ խաչաքարին այն յիշատակ.
Ա՜հ, մեռանիմ ես ի մահու դաշտ,
Կորչի անունս անյիշատակ:
　　Ինձ համար չէ՛ շքեղ դագաղ,
　　Դիպազարդին ունայն պատրանք.
　　Ո՛չ բարեկամք յուղարկաւոր,
　　Ո՛չ ընտանիք իմ սրգաւոր:
Այլ ինձ համար կա՛յ մի խոր վիհ,
Զոր ես ձեռօքըս փորեցի.
Հազար հազար մեռեալներուն
Մի գերեզման է հողաբլուր:
　　Հանէ՛ք անձնէս իմ համազգեստ.
　　Առէ՛ք նըշանս եւ իմ զէնքերս.
　　Թողէ՛ք բաժին ինձի միայն
　　Իմ արիւնոտ շապիկ պատան:
Զինուորի գին չունի պատիւ,
Յոտից քարշեալ ձըգեն ի վիհ,
Որպէս խրձունք ի կալոցին
Դիլեալ կուտեն ի բարդոցին:
　　Մահու դաշտէն ուղեւորեալ
　　Հասինք ահա մեր հանգիստ.
　　Հանգչեցէ՛ք արդ քուն անխըռով
　　Արեան դաշտի՛ խոնջեալ զինուորք:
Այլ մինչ հնչէ Գաբրիէլի փող,
Շարժի՛ յայնժամ մեր հողաբլուր,
Եւ մեք յառնեմք ի կեանըս նոր,
Որպէս արծուի նորափետուր:
　　Գայ Քըրիստոս Տէր դատաւոր,
　　Գահերն ամեն կոչին յատեան,
　　Արդար Աստուած չառնէ՛ անտես
　　Արեան դաշտի մեծ դատաստան:
Ողջա՛մբ մնասջիք, դուք, ողջ զինուորք,
Կըտակ թողում ձեզ յետ մահուս.
Ես սուր առի սըրով անկայ
Յուշ առնեմ ձեզ Քրիստոսի բան:
　　Աստուած ըստեղծ զմարդ հողագործ,
　　Դաշտի մըշակ աշխատաւոր,
　　Անէ՛ծք ձեռին այն չարարուեստ,

Որ զմարդն արար արիւնազործ:
Ասեն մարդիկ աշխարհաբան.
— Գայ ժամանակ մեզ ոսկեդար,
Գահերն ամեն գան ի համբոյր,
Ուխտեն դնել սուրն ի պատեան:—
Առիւծ՝ դառնայ հեզ, անմռունչ,
Գայլ՝ ընդ գառին շրջին յարօտ,
Արեան դաշտեր ծաղկին շուշան,
Խաղաղութիւն տիրէ աշխարհ:—
Այդ երա՞զ է, չե՛մ հաւատար.
Ես միշտ բերեմ Քրիստոսի բան.
Յարիցեն ազգ ազգի վերայ,
Աշխարհ դառնայ մի ծով արեան:
Յիսո՛ւս, Փրկի՛չ խաղաղարար,
Եկար տեսար Դու մեր աշխարհ,
Մարդիկ խեռ են եւ խօլամիտ,
Դեռ եւս չուսան Աւետարանդ:
Ո՛վ մարմնացեալ սիրոյ հրեշտակ,
Դու կոչեցիր զմարդիկ եղբայր.
Տուր մեզ ըզքոյդ խաղաղութիւն,
Զոր չկարէ տալ մեզ աշխարհ:

---

## ՈՂԲԱՑԵԱԼ ՋԱՆՇԵՒԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

---

Հրեշտակ հոգիս իմ վերացոյց,
Տարաւ իջուց մեռելոց դաշտ.
Ո՞ւր է, գիտէ՞ք մեռելոց դաշտ.
Ի Բաբելո՞ն թէ Հայաստան,
Հայաստա՛ն է, Հայաստա՛ն,
Հայոց աշխարհ եւ հայրենիք,
Ուր զոհուեցան անմեղ անպարտ
Հայ զաւակներ բիւր բիւր հազար:
Ես շուրջ եկայ մեռելոց դաշտ,
Հոգիս պատեց զարհուրանք.
Դաշտին երես լեցուած էր ողջ
Մարդոց ցամքած ոսկերոտեօք:
Աւխ՛. աւա՛ղ, ոսկերք հայոց,
Դուք տի տեսնա՞ք խաչէն յետոյ
Այն հրաշալի յարութեան օր:
Կոյս մը նստած վէրէն կուլար,
Տեսայ մի տեղ քարակարկառ,
Կոյս մի նստած վէրէն կուլար,

Գերեզման էր քարակարկառ,
Ո՚չ գիր ունէր, ո՚չ խաչաքար։
    Ասի՛․ ա՛ղջիկ, ինչո՞ւ կուլաս,
Ի՞նչ է անունդ, ուստի՞ ես դու,
Քաղքցի՞ ես, թէ գիւղացի,
Ի՞նչ բան ունիս մեռելոց դաշտ։
    Ասաց․— «Սօնէ՛ է իմ անուն,
Ես չգիտեմ քաղաքն ինչ է․
Ես գիւղացի՛ եմ գիւղացի՛․
Մըշոյ դաշտի խորնոյ գիւղէն,
Ես այս դաշտին մէջ ծընած եմ,
Մեր Եփրատայ գետին եզերք,
Ինչպէս պատմեր է ինձ մայրիկս
Ձեմ մոռացել ես, կը յիշեմ․
Նա մինչ կերթար ոչխարին կիթ,
Ցաւն ու երկունք բռներ է զինք,
Եւ հասնելով Եփրատին ափ
Զիս ծներ է ողջամբ աղջիկ․
Սուրբ Եփրատին ջրով լուացեր,
Ո՛հ, չունելով խանձարուրիկ
Կակուղ կանաչ խոտով ծրարեր
Եւ տուրիկին(*) մէջն է դըրեր,
Կաթի սափորն հետ տուրիկին
Ուսին առած գեղն է դարձեր․
Ես գիւղացի՛ եմ, գիւղացի՛,
Չարքաշ աղջի՛կ եմ գիւղացի․
Դու ասում ես, ինչո՞ւ կուլաս․
Ես որբ մնացի ապա չի լա՛մ։»—
Ասի՛․ Սօ՛նէ, խօսի՛ր դու ինձ ցաւերուդ ճառ,
Գուցէ գտնեմ ես քեզ մի ճար։
— «Ցաւըս մե՛ծ է, լեռներո՛ւ չափ,
Դու չկարես գտնել մի ճար․
Հէրիկս այստեղ ըսպանեցին,
Այս քարերուս մէջ ծածկեցին․
Մէրիկս առան տարան գերի,
Ա՛հ, ի՛մ մէրիկ, անո՛ւշ մէրիկ,
Սօնէն թողիր որբ ու մենիկ։»—
    Ասի՛․ Սօ՛նէ, չունի՞ս քուրիկ,
Որ մենութեանդ ընկեր լինի,
Եւ վշտերուդ քո վշտակից։
    — «Ա՞հ իմ քուրիկ, Նազլո՛ւ քուրիկ,
Որ նշանուած էր Մուշեղին,
Էն էլ հետ մօր գընաց գերի,
Որ քրթի տան նա հարս լինի։

(*) Տուրիկ՝ կը նշանակէ մախաղ․ մշեցւոց բառ է։

Լըսեց Մուշեղ քաջ մըշեցին,
Հեծաւ արագ իւր նըժոյգ ձին.
Ասաց. կ'երթամ ես ի կըռիւ,
Կա՛մ կազատեմ գերի Նազլուն,
Կա՛մ կը մեռնիմ նորա սիրոյն:»—
Ախ՛, Սօ՛նէ, չունի՞ս ախպէր
Քո վերջի յոյս եւ ապաւէն:
Ասաց. «Ունիմ ես մի ախպէր.
Կտրին Ջիւան հայրենասէր.
Նա պաժ(*) ունէր սօսի նըման,
Ունէն կախէր թուրն ու վահան,
Ա՜հ նա թողեց հայրենի տուն,
Գընաց օտար երկիր պանդուխտ,
Ո՛չ թուղթ ունիմ, ո՛չ բարի լուր,
Չգիտե՛մ ո՞ւր է, մեռա՜ւ թէ ողջ:»—
Ախ. Սօ՛նէ, անբա՛ղդ Սօնէ,
Աշխարհիս վերէն էլ տէր չունի՞ս:
Ասաց. «Աստուա՜ծ է, եւ Ջանշեւ,
Որ որբերուս նա հայր լինի:»—
Ախ՛. Ջանշեւ դու ճանաչե՞ս:
Ասաց. «Միայն անուն լսեմ,
Ես որդեգիր եմ Ջանշեւին,
Աշկերտ նորա որբանոցին:»—
Ախ. Սօ՛նէ, ես լուր ունիմ,
Լուրըս վա՜տ է, չկարեմ խօսիլ,
Գուժկան լինել խեղճ որբիկիդ,
Եւ վրդովել մատաղ հոգիդ:
— «Խօսի՛ր. քա՛նբեր. դու մի՛ պահեր,
Ե՛ս էլ երազ վատ եմ տեսեր.
Աստուած բարին դարձընէ,
Չեմ վրդովիր ու խռովիր.
Ես վարժած եմ ցաւեր տանիլ.
Պատմեցի քեզ, միթէ մոռցա՞ր
Ինչե՞ր անցան իմ սեւ գլխէս,
Չկարեմ խոյս տալ ճակատագրէս:»—
Ախ. Սօ՛նէ, ո՜հ եւ աւա՜ղ...
Նոր գուժ հնչեց Մոսքուայէն.
— *Մեռա՜ւ* Ջանշեւ եւ քաղեցին:
Պարծող Սօնէն լսեց այս գուժ....
Շատ տատանուեց, կանացի՜ ոյժ.
Պահ մի մնաց նա լուռ ու մունջ,
Ինչպէս արձան որ չի խօսում.
Խաժ աչքերուն գոյգ ակներէն
Հոսեց թափեց աղի արտասունք,

(*) *Պաժ՝ կը նշանակէ Հասակ:*

Լեզուն բացուաւ, ձայն արձակեց.
— «Ա՜հ, ի՜մ Ջանշեւ, մի՜թէ մեռար,
Ո՛չ. անունդ է անմահ յաւէտ.
Հայր եւ մայր իմ թողին զիս որբ:»—
Ցոյսը հասաւ Սօնէին յօգն,
Սօնէն դարձաւ լուրջ եւ բզզօն.
Սրբեց աչեր դարձուց ի վեր
Դէպի երկնուց կապոյտ վրրան.
Կեցցէ՛, գոչեց, ՅՈՅՍ ու ՀԱՒԱՏ.
Մեռա՛ւ Ջանշեւ մահկանացուն.
Ողջ ես Դու, ո՛վ Երկնաւոր Հայր.
Աստուա՛ծ զըթած եւ բարեբար,
Որ կը հոգաս ննընդուկներ,
Դու չե՛ս մոռնար քո խեղն որբեր:
Ասի. Սօ՛նէ, ես տի դառնամ,
Հայոց դաշտի ծաղկըներէն
Քաղէ՛, կապէ՛ մի ծաղկեփունջ
Տո՛ւր որ տանիմ քո Ջանշեւի
Գերեզմանին պըսակ դընեմ:
Ասաց. «Գիտե՜ս դու շուրջ եկար.
Մեռելոց դաշտ ծաղիկ չունի՜.
Խորշակ փըչեց հարաւ կուսէն,
Խամրեց թափեց բոյն ու ծաղիկ.
Իմ վարսերէս փունջ մի հանեմ,
Ոլորելով պըսակ հիւսեմ,
Թաց աչքերուս ցօղով թըջեմ.
Տա՛ր Ջանշեւի անմահ շիրմին.
Ա՛յս է միայն սուրբ յիշատակ
Իւր ողբացեալ հէգ Սօնէին:»—
Հարցուց Սօնէն. «Ո՞վ էր Ջանշեւ,
Պատմէ դու ինձ նըկարագիր:»—
Ասի՛. Ջանշեւ փոքրիկ մարդ էր,
Հասակ՝ կարճիկ, ուսեր՝ կուզիկ,
Հոգին՝ բարի, սիրտն էր ազնիւ.
Իր ուսումն էր իրաւաբան,
Միշտ ջատագով նըմարտութեան.
Բարի խորհուրդ տալ պատրաստ էր,
Ով որ լինէր նա չէր խնայեր.
Գրրի մըշակ էր մեր Ջանշեւ,
Տիւ ու գիշեր անխոնջ տըքնէր,
Թափէր աչքէն լոյսն ի թղթին.
Թուղթըն լինէր փող ու ոսկի,
Ոսկին փոխէր հաց ու սընունդ,

Ճարակ լինէր իր որբերուն:
Ասաց Սօնէն. «Ափսո՜ս, ափսո՜ս,
Պէտք էր Զանշեւ, որ շա՜տ ապրէր.
Մեզ որբերուս խընամ տանէր,
Աստուծոյ կամք օրհնեա՜լ լինի:»
Ասի. Սօ՛նէ, ողջամբ մընաս,
Յոյսն ու Հաւատ ըզքեզ պահեն,
Հերի՛ք ողբաս, լաւ կոծես,
Թո՛ղ գերեզման քարակարկառ,
Թո՛ղ մեռելոց դաշտի ողբեր,
Կանգնի՛ ձըմեռ, կուզայ գարուն,
Մեռելոց դաշտ ծաղկազարդի,
Անջատ, անջատ ոսկերոտիք
Շարժին իրաշիւք, կըցին իրար,
Շունչ մի շնչէ կենդանարար,
Յառնի կանգնէ մեռելոց դաշտ.
Սօ՛նէ, չմեռնիս, ապրի՛ս անչափ
Մինչեւ հասնիս հարսնութեան օր:
Ո՜ տայր եւ ես ողջ մընայի,
Քո հարսնութեան երգ երգէի,
Մինչ վերածնին հայոց որդիք,
Եւ Հայաստան յառնէ փառօք,
Օրհնեա՜լ է օրն այն յարութեան.
Ասաց հրեշտակ իմ առաջնորդ,
Ե՛ս եմ զուարթուն աւետաւոր,
Ե՛ս տի հնչեմ յարութեան փող.
Ասաց այս բան եւ վերացաւ:
Ասի՛. հրե՛շտակ, զիս ո՞ւր թողուս,
Ա՛ռ տա՛ր դու զիս ուստի բերիր:
Ասաց. «Կա՛ց դու մեռելոց դաշտ,
Սպասէ՛ աւուր յայց ելութեան:»
Ասի՛. հրե՛շտակ, ո՛հ, մինչեւ ցե՞րբ
Նստիմ ու լամ ողբանուէր:
Ասաց. մինչեւ տեսնաս Աղեղն
Նոյեան նըշան եւ ծիածան
Կամար կապած երկնից երես
Մի ծայր Մասիս, միւսն Արագած.
Եւ Եսային հնչէ պատգամ.
Այսպէս ասէ Տէր զօրութեանց.
Այլեւս հաշտեալ եմ ես ընդ քեզ
Ո՛վ տառապեալըդ Հայաստան:
Որ զայս հիւսեց եւ ողբագրեց,
Ուժգին ելաց ՀԱՅՈՑ ՀԱՅՐԻԿ:

---

# ԻՍԱՀԱԿԱՅ ԶԵՆՈՒՄՆ

«Որ զփրկական քո օր
Անարատ պատարագիդ զենումն
Ցանկացաւ Աբրահամ տեսանել,
Ետես Սահակաւ եւ ցնծացաւ։»
ՇՆՈՐՀԱԼԻ

Հաւախօսի վերջին պահուն
Երբ Աբրահամ վրանայարկին
Ներքեւ հանգիստ ննջէր ի քուն.
Խիղճը մաքուր, սիրտն անխռով,
Չէր վրդովէր նորա քուն։
Ձայն մի կանչեց, ձայն հաւուն չէր.
Ձայն երկնային հրեշտակին էր.
Աբրահա՛մ, Ա՛բրահամ։
Զարթեաւ իսկոյն մեծ Նահապետ.
Ահաւասիկ պատրաստ եմ, Տէ՛ր։
Ա՛ռ սիրելի որդիդ Սահակ,
Տա՛ր Սաղիմայ բարձանց վերայ,
Հա՛ն ողջակէզ Տեառն Աստուծոյ,
Զոր դու պաշտես եւ հաւատաս։
Տէ՛ր. քո հրաման միշտ օրհնեա՛լ է.
Դու ինձ տուիր Սահակ որդիս,
Իսկ այժմ յինէն առնել կամիս.
Օրհնեա՛լ ես դու, օրհնեա՛լ քո կամք.
Թէ՛ Աբրահամ եւ թէ Սահակ
Քոյդ են, ո՛վ Տէր, ինչպէս կամիս.
Զի քո սուրբ կամք բարի է միշտ։
Տէ՛ր, Դու գիտես, ես չեմ մոռնար,
Ես յուշ բերեմ քո այն խոստումն,
Թէ աշխարհիս ազգ եւ ազինք,
Պիտի օրհնին իմ զաւակովս,
Այնքան անհին ու բազմանան,
Ինչպէս աւազ ծովափերուն,
Եւ կամ երկնից աստղերուն չափ։
Ասաց ինքնին Հայր Աբրահամ.
Բարի Աստուած զոր ես պաշտեմ
Զանէ չար ինչ իւր ծառային։
Խորհուրդ է այս զոր չգիտեմ.
Աստուծոյ բան է, ո՛վ գիտէ.
Ես ծառայ եմ հող ու մոխիր,
Տիրոջ հրաման պէտք է լսեմ։

Դրժար մի բան կայ իմ առաջ,
Ի՞նչպէս ծածկեմ բան Սառայէն.
Հապա եթէ լսէ՛ Սառան,
Միթէ թողո՞ւ մայրենի գութ
Ողջակիզել միակ որդին:
Նա խմայէլ տընէն հանեց,
Որ իմ Սահակ ժառանգ լինի.
Հազար անգամ աղաչեցի
Զրկանք չանել խեղճ Հաքարին:
Ես զարմացայ երբ Տէր Աստուած,
Հաւանեցաւ կընոջ խելքին,
Ինձ հրամայեց որ հետեւիմ.
Զէ՛. չե՛մ ասեր ես Սառային:
Ես տի պահեմ այս բան գաղտնի:
Այլ ինձ ի՞նչ փոյթ քննել այս բան,
Խախտել հաւատ իմ աներկբայ,
Կամ վարանիլ տարուբերիլ.
Մի՞թէ ես ծառ եմ հողմավար,
Եւ կամ մի մարդ թերահաւատ:
Թէ պակասի Սահակ որդիս,
Մնամ անժառանգ եւ անորդի,
Միթէ չկարէ՞ Տէրն իմ կարող
Ժէռ քարերէն հանել որդիս
Իւր ծառային Աբրահամու:
Ամուլ պառաւ էր Սառայ կինս.
Ինչպէս ծընաւ նա աւետեօք
Իմ անդրանիկ Սահակ որդիս,
Չկարէ՞ միթէ կրկին ծնանիլ
Մի այլ Սահակ նոր աւետեօք:
Ասաց այս բան հայր Աբրահամ,
Կապեց գօտին, պնդեց հաւատ,
Առաւօտու արշալոյսին
Փայտ կոտորեց բարձեց իշուն,
Ինքն եւ Սահակ երկու ծառայք
Կազմ եւ պատրաստ ելան ճամբայ:
Գնացին, գնացին մինչ երեք օր.
Հայր Աբրահամ դիտեց հեռուստ,
Նա նշմարեց լերան բարձունք,
Ուր յուսատիպ հրեշտակ մի կար.
Ողջակէզին սուրբ տեղն էր այն:
Կացէ՛ք, ասաց իւր ծառայից,
Սպասեցէ՛ք մինչեւ դառնամ:
Ես եւ որդեակն իմ Խահակ,
Երթամք տեղին այն սրբավայր,
Երկրպագեմք Տեառն Աստուծոյ:
Հայր Աբրահամ էշը թողուց,

Փայտեր բարձեց Սահակի ուսն.
Երջանիկ էշն Աբրահամու
Կրցորդ եղաւ խաչի գործին,
Ինչպէս Սիմոն Կիւրենացին:
Մինչ երթային հարցուց Սահակ.
Հա՛յր, ահա՛ հուր եւ ահա փայտ,
Ո՞ւր է ոչխար մեր ողջակէզ:
Պատասխանեց հայր Աբրահամ.
Դու մի՛ հոգար, որդեա՛կ իմ, այդ
Թողունք Աստուած թող պատրաստէ
Իւր ողջակէզ եւ պատարագ:
Ասաց Սահակ. ի՞նչ բան է այդ,
Ո՞վ է լսեր, ո՞վ է տեսեր,
Որ ինքն Աստուած իւր ողջակէզ
Ինքն հոգայ եւ պատրաստէ,
Հապա ի՞նչ է մարդոյն նուէր,
Կամ պատարագ ընծայաբեր:
Մեք աղքա՞տ եմք եւ չքաւո՞ր.
Աստուած օրհնել է մեր տուն,
Հազար հազար ոչխար ունիմք
Մեք ի դաշտին արօտական,
Միթէ խնայե՞լ մի պարարտ խոյ
Ողջակիզել Տեառն Աստուծոյ:
Այլ մինչ հասին այն սուրբ տեղին,
Հայր Աբրահամ չկարաց պահել,
Պատմեց որդւոյն իւր Սահակայ
Ծածկեալ խորհուրդ ողջակիզին:
Ասաց. որդեա՛կ իմ, Տէր Աստուած,
Զոր ես պաշտեմ լի հաւատով,
Նա հրամայեց իւր ծառային,
Որ սուրբ լերանց բարձանց վրայ
Զքեզ ողջակէզ հանեմ Նրմա:
Ասաց Սահակ. դու ի՞նչ ասիր.
—Ասի. պատրաստ եմ, աւասի՛կ:
—Ե՛ս էլ, ով հայր, նոյն ասեմ քեզ,
Թէ. աւասիկ պատրաստ եմ ես:
Որչա՛փ ուրախ լինիմ, ո՛վ հայր,
Թէ ընդունի զոհն իմ Աստուած:
Ապրի՛ս. որդեա՛կ իմ դու հնազանդ,
Զոհի փայտեր ուսէդ վա՛ր առ.
Շինեմք սեղան փայտեր վէրէն:
Ժա՛մ է ահա, թոյլ տուր, որդեա՛կ
Կապեմ ոտներդ եւ քո ձեռներդ,
Որ չը շարժիս ու խըլրտիս,
Արիւն ցայտէ իմ հանդերձիս:
Հայրիկ, ժըտեմ, զիս մի՛ կապեր,

Հոգւով սրտով խոնարհ եմ ես.
Միթէ՞ չունիմ ես քո հաւատ.
Զի քո որդին եմ հարազատ:
Թոյլ տուր ինքնին ես կամովին
Զիս տարածեմ սեղնի վէրէն,
Թեւերս պարզեմ խաչանըման
Այնպէս մնամ անշարժ հանդարտ,
Ինչպէս գառնուկ մի անմըռունչ,
Դու կատարէ զոհին սուրբ գործ:
Զէ՛, որդեա՛կ իմ, թո՛ղ տուր, կապե՛մ.
Կապանքն ալ իր խորհուրդն ունի:
Ասաց Սահակ. հնազանդ եմ, հա՛յր,
Արա՛, ինչպէս Աստուած եւ դու
Գիտէք ձեր բան եւ ձեր խորհուրդ:
Երկինք գետին, դուք լուռ կացէք,
Եւ դիտեցէք զոհիս հանդէս:
Հայր Աբրահամ մինչ պատրաստ էր
Զոհին սուրբ գործ փոյթ կատարել,
Վերէն երկնից բարձրութենէն
Դիտեց Աստուածն Աբրահամու,
Ասաց Որդւոյն իւր Միածնին.
Արի՛ իջնամք Երուսաղէմ,
Վեր ամպերուն նստեալ նայիմք,
Սիօնի լերան բարձանց վէրէն
Ես ցոյց տամ քեզ նախատօնակ
Քո հանդերձեալ խաչի տօնին:
Հանդիսատեսն է Աբրահամ,
Պատարագիչ եւ քահանայ.
Ո՞վ է օրհներ զինք քահանայ.
—Մելքիսէդեկն է օրհներ:
Տե՛ս դու, ո՛րդեակ, ուսի՛ր այժմէն,
Խաչիդ նըկարն է Իսահակ:
Որդին տեսաւ սիրտ զորովեց,
Սահակ կապած սեղնի վէրէն
Վիզըն պարզած եւ ույն ի ձիգ
Այնպէս պատրաստ էր խեղճ գառնիկ.
Աչկունք ողորմ հայէր ի վեր,
Որ իբր անխօս աղերս ածէր.
Ո՛վ միածնի Որդի քո Հօր,
Ես էլ իմ հօր միածինն եմ,
Դու բարեխօս եղիր առ Հայրդ:
Ահա հայրն իմ սուր վերուցեր,
Ասէ՛. Աստուա՛ծ է հրամայեր,
Զքեզ տի զենում ես ողջակէզ:
Սրտառուչ բան Իսահակին
Շարժեց ի գութ Սիրոյ որդին,

Մատեաւ իսկոյն աղերս մատոյց·
Հա՛յր իմ քո կամք միշտ արդար է·
Եւ քո վճիռն անդարձ է·
Խաչի վճարն իմ պարտիքն է,
Դու գիտես, Հա՚յր, եւ ես գիտեմ,
Իսահակայ ողջակիզումն
Չկարէ փրկել աշխարհ ողջոյն:
Խեղճ է միակ Սահակ որդին,
Զոր աւետեօք ծնաւ իւր մայր:
Հայր Աբրահամ խաղ չըգիտէ·
Մենք փորձ արինք նա կըստուգէ,
Եւ ցոյց տայ մեզ իւր մեծ հաւատ:
Հրաման տուր, Հա՛յր, իջնամ արագ,
Եւ ազատեմ զառնուկ Սահակ:
    Գիտե՛մ, որդեա՚կ, տէրդ անհուն է,
Արգահատիս դու առ մարդիկ,
Գընա՚, փրկել զենման սըրէն
Քո նախատիպ այն Իսահակ,
Զի քո անուն վաղ կնքած եմ,
Դու Փրկիչ ես ազգի մարդկան:
    Բայց գիտե՚ս դու մեր Աբրահամ
Առանց զոհի չկարէ մնալ,
Աստուածապաշտ հոգի նորա
Գուցէ խռովի եւ սիրտ մընայ,
Թէ Տէր Աստուած չընդունեց զոհս:
Ես հրեշտակին պատուէր տուի
Որ երկնային մեր հօտերէն
Մի պարարտ խոյ եւ անարատ
Առնու բերէ Սիօնի բարձունք,
Եւ Սաբեկայ ծառէն կախէ:
Դու ցոյց տուր այդ Աբրահամու,
Թող Սահակայ փոխան զենէ:
Գիտե՞ս, ո՚րդեակ, Սաբեկայ խոյն,
Որ կախուած է եղջիւրներէն,
Այդ ալ իւր մեծ խորհուրդն ունի:
Ժանտ որդիներ Իսրայէլի·
Որոց համար էր քո սուրբ կեանք,
Պիտի կախեն կեանքդ ի փայտէն
Ինչպէս խոյին այն եղջիւրէն·
Պիտի տեսնան իրենց աչքով
Որդիքըն չար եւ ապիրատ,
Զոր գուշակեց ծառայն Մովսէս:
Սաբեկայ ծառն եւ կախեալ խոյն
Մի այլ նըկար է քո խաչին:
Իջեր այժմիկ Փրկիչ որդեակ,
Քեզ ըսպասէ կապեալ Սահակ:

Է՛ջ ի Հօրէն Փրկիչ Որդին
Լոյս ծաւալեց Սիօնի սուրբ լեռ,
Լուսոյն մէջէն ձայն մի հնչեց․
Ձայն արարիչ Փրկիչն էր․
Տրտեցաւ յոյժ հայր Աբրահամ
Սուրն ի ձեռին դող առեց։
Է՛, Աբրահա՛մ, Աբրահամ,
Դարձո՛ւր քո սուր պատանեկէդ․
Բաւ է այդչափ, փորձ լըրացաւ․
Ես գիտէի եւ գիտացի
Թէ երկիւղած ես Աստուծոյ։
Դու վեր նայիր, ո՛վ Աբրահամ,
Տե՛ս Սաբեկայ ծառի ճըղէն
Խոյ մի կախուած եղջիւրներէն,
Ա՛ռ դու զենէ այդ ողջակէզ
Քոյդ Սահակայ փոխան է այն․
Տէր քեզ բաշխեց Սահակ որդիդ
Մեծ հաւատոյդ շնորհն է եւ գին։
Երբ Աբրահամ անակընկալ
Տեսաւ այս բան եւ զարմացաւ,
Հոգին ցնծաց, սիրտ՝ հրճուեցաւ․
Անպատում էր իւր ցնծութիւն
Եւ ո՛վ կարէ ճառել զայն։
Իսկոյն արձկեց կապեալ Սահակ,
Սահակն ելաւ կանգնեց ողջամբ
Ողջագուրեց զինքն Աբրահամ։
Ասաց․ ո՛րդեակ, չասի՛ ես քեզ,
Տեսա՞ր ինչպէս Տէր պատրաստեց
Իւր ողջակէզ եւ պատարագ։
Ուստի՞ էր խոյն ի Սաբեկայ․
Ո՞վ էր կախեր ծառէն ի վայր․
Արդեօք երկնի՞ց բերաւ հրեշտակ․
Չէ՛, նորաստեղծ մի խոյ է նա,
Մեր խոյերուն չէ նա նըման,
Եղջիւրիկներն են խաչաձեւ,
Եւ ծայրերէն արիւն կաթէ,
Գեղմըն կարմիր, բոսորագոյն,
Աչկունք ողորմ նայէր նուաղ։
Հեզ է այս խոյն, կապ չէ պիտոյ,
Տե՛ս ինչպէս կայ չհանէ մըռունչ։
Բռնէ ոտքէն եւ ես գլխէն,
Պարզենք այնպէս սեղնի վէրէն,
Ես կը զենեմ, դու փայտ վառէ․
Ողջակիզեմք երկնից պարգեւ,
Որ ազատեց քո կեանք մահէն։
Ասաց Սահակ․ օրհնեա՛լ Աստուած,

Օրհնեա՛լ իւր ձեռք, որ շուռ հասաւ․
Թէ չհասնէր այդ օրհնեալ ձեռք,
վաղուց քո սուր զիս զենում էր։
Եւ դու ի՞նչպէս դառնայիր տուն,
Հարցնէր Սառան ծընող մայրիկս
Ի՞նչ պատասխան պիտի տայիր։
Իրա՛ւ է այդ, որդեա՛կ Սահակ
Պատուէր տամ քեզ դու պահէ զայն․
Սառային՝ մօրդ մի՛ յայտներ բան․
Դու լաւ գիտես քո մօր բնութիւն,
Ցասկոտ, խոժոռ կին է Սառան․
Պատմե՛մ, որդեա՛կ, քեզ անցեալ բան,
Երեք հրեշտակք մեզ հիւր եկան․
Ինձ աւետիս տուին ուրախ․
Ասին, Սառայ կին քո պառաւ
Քեզ տի ծընի մի նոր զաւակ։
Սառան լըսեց վրանին ետեւ,
Ծիծաղեցաւ թերահաւատ։
Լըսի՛ր, ո՛րդեակ, ուսիր այս դաս,
Ինչ որ մարդոց անհընար է․
Աստուծոյ մօտ հնարաւոր է։
Այսպէս ահա հայր Աբրահամ,
Իւր Սահակայ ողջակիզով
խաչին խորհուրդ ճիշտ նըկարեց
Իսկապէս եւ գործնապէս։
Այլ մարգարէք միայն բանիւ
Գուշակեցին խաչին խորհուրդ
Իսկ Աբրահամ հանեց ի ցոյց
խաչին պատկեր եւ տեսարան․
Որչա՜փ նըման եւ իսկատիպ
Մարդ հիանայ հայելն ի նա։
Որ խանդակաթ եմ առ ի սէր
խաչի ճառին եւ խաչելոյն․
Ես հայեցայ ՀԱՅՈՑ ՀԱՅՐԻԿՍ,
Բան ըստեղծի 'նդարձակեցի․
Իսահակի զենման խորհուրդ
Սուրբ Շնորհալին Շարակնոցին
Ձորս տողերով բովանդակէ․
Զոր նուիրեմ այն հայրերուն
Բարի պըտուղ զաւակներուն,
Որ հաւատով որդիացած
Կոչին որդիք Աբրահամու։
Այլ ոչ նըման Հըրէից պէս,
Որք պարծէին եւ պանծային,
Մեք որդիք եմք Աբրահամու
Զոր կշտամբէր Փրկիչ Յիսուս։

Այլ ճշմարիտ որդիք լինիլ,
Գործել ըզգործն Աբրահամու.
Զի սոսկ հաւատ չունի արդիւնք,
Եւ համարի մեռել անշունչ.
Գործ միացած հաւատոյն հետ
Կենդանանայ հաւատն անշունչ.
Երանի՛ որ ունի զհաւատն,
Բարի գործով իւր պըսակեալ:
Ո՛վ դու Աստուած Աբրահամու,
Դու մի՛ հաներ յինէն զհաւատ.
Մինչեւ երթամ ի գերեզման.
Էլ չեն պիտոյ ինձ անդ հաւատ.
Այլ դէմ առ դէմ սուրբ տեսութեանդ,
Աբրահամու գոգն ընդարձակ,
Ղազարոսին մօտ բընակիմ:
Զի սիրեցի քո աղքատներ,
Եւ քո սիրած այն փոքրիկներ,
Մեր աշխարհի անարգուածներ,
Զորս դու փոխան քեզ համարիս,
Ո՛վ Յիսուսի դուք փոքրիկներ,
Միջնորդ կացէք առ Տէրըն մեր.
Ես ալ ձեզ հետ ի միասին
Մտնեմք ի դուռն ուրախութեան,
Որ պատրաստեալ է սիրելեաց:



# ԴԻՒՑԱԶՆ ԿԱՐԻՆԷԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ



Գուժը հնչեց Մըշու աշխարհ,
Թէ ահա գայ Լէնկթիմուր խան,
Աշխարհաւեր այն բռնաւոր,
Որ արեւէն մինչ արեւմուտք
Քայլեց չափեց իւր կաղ ոտքով:
Լըսեց Սասնոյ մեծ Ամիրէն,
Զարհուրեցաւ նա երկիւղէն,
Հընարամիտ այս բռնաւոր
Սատանայէն ուսաւ իւր դաս.
Վա՜շ, վա՜շ կարդաց, հըպարտացաւ,
Ասաց. գըտի հնար եւ ճար:
Մըշոյ երկրի ողջ ժողովուրդ
Հանեմ, վարեմ ես ի Սասուն,
Այդ շէն աշխարհ թողում թափուր
Ո՛չ մարդ մընայ, ո՛չ շուն, կատու.

Երբ Լէնկթիմուր գայ մեր աշխարհ,
Տեսնայ երկիրն ամայացած,
Գեղ ու քաղաք աւեր դարձած,
Եւ չունենլով հաց ու ճարակ,
Յետրս դառնայ ամօթահար։
Ասաց այս բան հրաման հանեց,
Սասնոյ լերան վայրագ ցեղեր
Սեւ ամպերու պէս կուտակուած,
Կամ մարախի նման ժողոված,
Ողջ թափեցան Մըշոյ աշխարհ։
Խուճապ, տագնապ տիրեց Տարօն
Մուշը պատեց թուխպ մըշուշով,
Մէրը մանուկ իւր ուրացաւ,
Փեսէն նոր հարսըն մոռացաւ,
Շէն շէն տըներ թողին անտէր.
Փախան, գնացին լեռներ ձորեր։
Ո՞վ էր դիւցազն կին առնացի.
Քաջ Կարինէն էր Մըշեցի.
Թուէր թէ մեռած էր ամուսին,
Ունէր մանկիկ մի ութամեայ,
Միակ որդի իւր սիրական։
Անտոհմիկ կին չէր Կարինէն.
Մամգունի տան շառաւիղ էր.
Հասակ հսկայ բարձր ու շքեղ,
Աչկունք՝ պայծառ ականց փայլէր,
Դէմք իւր ըզգաստ, պատկառելի,
Ունէր բազուկ նա կորովի,
Ինչպէս Թաթուլ Վանանդեցին։
Չէր հնարամիտ ինչպէս Յուդիթ.
Այլ անվեհեր յայտնի գործէր։
Նա մըտածեց խոյս տալ չարէն,
Կապեց մէջքէն հայրենի թուր,
Ժառանգ թողուած ծեր Մուշեղէն,
Կախեց ուսէն պողպատ վահան,
Ձիհնուր դարձաւ ասպետափառ։
Առեց որդին Մուշեղ մանուկ,
Կանչեց Աստուած, ելաւ ուղի.
Հրեշտակ Ռափէլ էր ուղեցոյց
Ազատ անվախ երբ նա կերթար,
Ո՛հ, ետեւէն չարեր հասան.
Նա մի անգամ դարձաւ ի յետս
Գետին փըռեց վատազգիներ։
Այլ երբ տեսաւ հեռուստ աչքով
Թէ զան բազում զազան Քրտեր,
Գոչեց. Աստուա՛ծ իմ, դու գիտե՛ս
Թէ մա՛յր եմ ես յոյժ որդեսէր,

Այլ իմ հաւատ եւ քո մեծ սէր
Յաղթահարէ մայրենի սէր։
Ես տի մոռնամ ծնողական գութ
Եւ մօր սրտի բնական զորով,
Զոհեմ որդիս իմ քեզ ձեռօքս։
Աբրահամու թեւ բռնեցիր,
Որ չի զոհի միակ որդին․
Դու մի՛ բռներ թեւս իմ, ո՛վ Տէր,
Ահա չարեր հասին ինձ մօտ,
Թող որ զոհեմ մատաղ գառնուկս։
Ասաց քաշեց սուր պատենէն․
Մորթեց Մուշեղ իր աղաւնիկ
Ինչպէս հաւիկ մի որ զենես
Նա թեւ շարժէ եւ թրթռփայ․
Այսպէս Մուշեղ մօր ոտքին տակ
Ո՛հ թրթռփաց եւ մեռաւ,
Թռաւ հոգին աղաւնիկին,
Գնաց խառնեցաւ լոյս երամին։
Օ՛հ, ասաց քաջ Կարինէն,
Ես փրկեցի հոգին հաւատ
Լըսեր եմ ես Աւետարան,
Հոգին է միակ կենդանարար,
Մարմին ոչինչ է եւ ունայն։
Քաջ Կարինէն կատարեց զոհ,
Տեսան այս բան այն բարբարոսք
Զահի հարան եւ սոսկացին
Մնացին ապուշ իրենց տեղեր։
Այլ Կարինէն նոր թեւ առեց,
Սլաւցաւ ի վերջ ինչպէս արծուի
Մի բարձրագոյն քարի գագաթ,
Որոյ մի կողն էր սարաւանդ,
Մարդ որ նայէր խելքըն մաղէր․
Զօքեց Կարինէն քարի վէրէն,
Աչքեր դարձուց կապոյտ երկինք,
Խորոց սրտէն հանեց մրմունչ․
Մի՛ համարիր․ Տէր իմ, այս մեղք,
Թէ որդեսպան է Կարինէն։
Դու զիս գիտես, Տէր սրտագէտ,
Հայրենատուր իմ սուրբ հաւատ
Ես պահեցի աւազանէն,
Եւ պահեցի պարկեշտութիւն,
Որ քո շընորհին էր եւ պարգեւ։
Ես յիշում եմ Շամունէ մայր,
Կին որբասէր, մեծահաւատ,
Եօթն որդիս տուաւ ի զոհ,
Հաստատ պահեց քո սուրբ օրէնք։

Տէ՛ր, դու գիտես փոքր է իմ զոհ,
Անհուն մեծ է քո խաչին Զոհ:
Տուր զօրութիւն ծառայի քո:
Որ նուիրեմ անձն իմ ի զոհ:
Զեմ յուսահատ ես անձնապան,
Այլ ինքնակամ զոհիմ սիրոյդ.
Ասաց այս բան քաջ Կարինէն,
Խաչակնքեց պայծառ երես,
Այն տխուր սարսուանդէն
Զինքըն ձըգեց վայր ի գետին,
Կըտոր կըտոր եղաւ մարմին,
Հոգին ողջամբ թըռաւ երկինք.
Հրեշտակ բացաւ դարպասին դուռ,
Եւ Կարինէն մըտաւ ի լոյս,
Գըտաւ այնտեղ իւր աղաւնեակ,
Հոգին հոգւոյն հետ միացաւ,
Մայրըն որդւով իւր բերկրեցաւ:
Օրինա՛կ առէ՛ք, Հայոց մայրեր,
Որչափ կարդաք իմ այս տողեր.
Զոր գրբեր է ծերած ՀԱՅՐԻԿ,
Դուք յիշեցէք զԿարինէն,
Որ ի պահել պարկեշտութիւն
Հաւատ եւ կրօն աստուածատուր,
Այսպէս տուաւ անձն ի կորուստ,
Գըտաւ Երկնից արքայութիւն
Իւր յիշատակն օրհնեա՛լ լինի:

---

## ԲԵԹԼԷՀԷՄԻ ԾԱՂԻԿ

---

«Եւ բղխեսցի գաւազան յարմատոյն Յեսսեայ,
եւ ելցէ ծաղիկ յարմատոյ անտի»:

ԵՍԱՅԻ ԺԱ. 1.

Մեծահանդէս տօնի ծննդեան
Խորեննացին է երգահան,
Որ զքնար հոգւոյն առեալ
Թռչի երթայ Երուսաղէմ,
Բեթղէհէմի սուրբ այրին դուռ
Նստի, երգէ զՓրկչին ծընունդ:
Եւ զիմ հոգիս, երգիչ սուրբ Հայր,
Տար ընդ հոգւոյդ ի Բեթղէհէմ.
Ես ձայն առնում եւ դու երգէ

Քաջահնչիւն քո շարական,
Զոր քու մատուռք բանահիւսէր․
«Խորհուրդ Մեծ եւ Սքանչելի,
Որ յայսմ աւուր յայտնեցաւ։»
Ո՞ւմ յայտնեցաւ, զարմանա՜ց բան,
Ո՛չ իմաստնոց աշխարհիս այս,
Այլ հոտարած հովիւներուն։
Թողուց Աստուած Երուսաղէմ,
Թողուց տաճար Սողոմոնին,
Անշուք այրին մէջ յայտնեցաւ․
Թողուց բանգէտ մեծ րաբունիք
Աստուածաշունչ գրոց նոտարք,
Հապա Դրպիրք Փարիսեցիք,
Որ պանծային յանձինս իւրեանց,
Սքանչելի եւ մեծ խորհուրդ
Անգէտ հովուացրն ծանուցաւ։
Վասն է՞ր այդպէս կամեցաւ Հայր․
Լո՛ւր, քեզ Պօղոս տայ պատասխան,
Թէ՝ զիմաստս բնտրեաց Աստուած,
Որ իմաստունս ամօթ առնէ,
Աթենական յ'Արիսպագին
Հովիւ Պօղոս բանախօսեց,
Զխաչի նառէն եւ զխաչելոյն,
Զնոյն մեռեալ եւ յարուցեալ․
Շնորհն Աստուծոյ երեւեցաւ,
Փրկիչ եղաւ Ազգի մարդկան։
Գիտնոց կաճառք Աթենացւոց
Ասեն բնդ ծաղր եւ զարմանան։
Զի՞նչ նորալուր բան խօսի մեզ
Սերմանաքաղ մբշակս այս։
Եթէ ասեն անհաւան միտք,
Հովիւ վըկայք մեզ չ'են յարգի,
Աստուած հանեց տար աշխարհէն
Իշխանաւոր այն մեծ մոգեր,
Որ տեսնեն աստղ մի յարեւելս.
Լուսապայծառ էր իւր ծագումն։
Մի տաղաւաց բան ստեղծէ․
Ի մէջ աստղին տեսայ մի կոյս,
Եւ կուսին գիրկ մանուկ Յիսուս։
Գուշակելով Փրկչին ծնունդ,
Մոգերն եկան լի հաւատով,
Երկրպագին Փրկչին մերոյ։
Լոյս ծագեցաւ Երուսաղէմ,
Ո՜հ, ծածկեցաւ նորա աչքէն․
Ազգ հեթանոս տեսաւ հեռուստ,
Երկրպագեց եւ հաւատաց,

Ազգ հեթանոս վկայ եղեւ,
Փառաւորի Փրկչին ծընունդ:
Եսայիաս կանխաձայնէր
Յուշ առնեմ քեզ, ծառայ Յակոբ,
Երբ տեսնաս դու Լուսոյն ծագումն,
Դու բուրըն հար, բրոնէ՛ ըզլոյսն,
Այդ քո փառքն է մի՛ տար այլում,
Որ օտար է եւ անծանօթ:
Ո՛հ, թուլացաւ Յակոբայ ձեռք,
Ազգ հեթանոս բռնեց զլոյսն,
Սոսկ փառք մընաց Յակոբայ տան.
Ծեր Սիմէօն ի տաճարին
Լոյսն ի գրկին ասաց այս բան:
Թողլով զկարգ նախաերգոյս,
Արդ ըսկըսիմ ըզծնունդըն սուրբ,
Ծաղիկ ծաղկեալ Դաւթի տընէն,
Նախասկզբէն պատմել ոնով:
Բեթլէհէմէն հեռու մի ժամ
Կայ մի տեղի աղօթավայր,
Կանաչաւէտ ու ծաղկազարդ:
Ա՞նդ է արդեօք ծաղիկ դաշտաց,
Եւ կամ չքնաղ շուշան հովտաց,
Զոր Սողոմոնն առնու ի յերգ,
Երգ փեսային եւ իւր հարսին:
Ուր ասեն թէ հովիւ Դաւիթ
Յեսսէի տան արածէր հօտն.
Եւ ա՛յն օրէն մինչեւ այսօր
Տեղն այն կոչի հովուաց անուն,
Ուր հօտերուն հովիւներուն
Մի հանգրուան է գիշերուն:
Անգէտ, տըգէտ մեր հովիւներ
Երբ ժողովին ի միասին,
Նստեն, ժղին սարէն ձորէն.
Զ՛ունին ոչինչ հետ քաղաքին:
Երբեմն պարծին իւրաքանչիւր
Գամբըռ հուժկու մեծ շըներէն,
Ոմանք առնուն փող ու սըրինգ,
Քաջ երաժիշտ են հովիւներ.
Հրաւէր կարդան եղանակաւ
Նստել, հանգչիլ ու որոճալ.
Եւ երբ հնչեն մեղմիկ անուշ,
Այդ նըշան է լինել ի քուն:
Հովիւն էլ իւր օրօրն ունի,
Ինչպէս մօր երգ օրօրոցին:
Հովիւներէն կան պսպորներ,
Որ սըրատես ճանաչող են,

Հազար հազար գառն ու ոչխար
Երբ խառնակին իրարու հետ,
Գառներ մայրեր յոյժ բառաչեն.
Մայրն զգառնուկ, գառնուկ զմայր
Մոլոր մոլոր որոնեն,
Պայոր հովիւ գիտէ զատել
Մէն մի գառնուկ տալ իւր մաւրուն,
Այս բան հովուին մեծ *Հունարն* էր,
Ասեն նաեւ թէ հովիւներ
Դեռ չի ծընած գառնուկներէն
Սեռ որոշել գիտեն փորձով,
Է՞գ է արդեօք, եթէ որձ:
Է՛ երջանիկ, դուք հովիւներ,
Թողէք սրբինք եւ ձեր փողեր,
Ձեզ աւետեաց փող տի հնչէ:
Յանկարծ երկնից լոյս փայլեցաւ,
Դաշտեր լեռներ լուսով լըցան,
Հօտերն ամեն վրդովեցան,
Եւ հովիւներ մնացին ապշած,
Ասին. ի՞նչ է այս հրաշալից բան,
Կէս գիշե՛ր է, չէ առաւօտ,
Արեւուն չէ այս պայծառ լոյս:
Տեսան հրեշտակ մի լուսաւոր,
Ձայն աւետեաց հնչէ վերուստ.
Աւետիս ձեզ, բարի հովիւք,
Փրկիչ ծընաւ ձեզ Բեթլէհէմ,
Այս նըշանակ տամ ձեզ ստոյգ,
Վազէք գընացէք Բեթլէհէմ,
Մըտէք այն այր, որ դուք գիտէք,
Ուր տի տեսնաք Փրկիչ Մանուկ
Խանձարուրին մէջ պատատած,
Այնպէս դրուած է ի մըսուր:
Հովիւք դարձան հայեցան վեր,
Տեսան երկնից դուռըն բացուեր,
Լուսեղինաց ամբողջ դասեր
Բռնեցին ողջ երկնից երես.
Սաւառնէին եւ խաղային
Եւ երգէին քաղցր ձայնով,
«Փառք ի բարձունս Աստուծոյ:»
Ասեն հովիւք. ի՞նչ է այս բան,
Զոր Տէրն մեր ցոյց տուաւ մեզ:
Ելէ՛ք երթամք ի Բեթլէհէմ,
Շնորհաւորեմք Փրկչին ծնունդ:
Առէք մեզ հետ մատաղ գառներ,
Տանիմք մեր ձօն Փրկչին ծնունդ:
Առէ՛ք սպիտակ փափուկ բուրդեր,

Տանինք փրոց չոր մըսուրին․
Մեր դաշտերու ծաղիկներէն
Շուշան ծաղիկ եւ անթառամ,
Քաղեցէ՛ք, փունջ փունջ կապէք,
Տանինք շարենք մսուրին բոլոր․
Մեր նոր ծաղիկ Մանուկ Փրկչին
Ծաղիկներով պըսակ ՚ընենք։
Մի հովիւ էլ այս բան յիշեց,
Ասաց․ անշուշտ Փրկչին ծընողք
Յոյժ աղքատ են եւ չքաւոր,
Որ իջեւան մի չեն գըտեր
Մեր Բեթլէհէմ քաղաքին մէջ,
Եկել գըտել են մեր այրիկ
Մութ ու մրնոտ եւ յոյժ փոքրիկ,
Ես էլ կուզեմ մաքին կըթեմ,
Մի պուտուկ կաթ առնեմ տանիմ,
Ուտէ աղքատ ծընող մայրիկ,
Շուտ շուտ ծիծ տայ մանուկ Փրկչին։
Հովիւք հասան մըտին սուրբ այր,
Տեսան իրենց մրնոտ մութ այր,
Համակ լուսով լցուած էր այն,
Եւ լուսոյն մէջ լուսածին մայր։
Տեսան Փրկիչ խանձարուրով
Պատած, դրուած ի մըսուրին,
Մի կողմ իշուկ մի էր կապուած
Միւս կողմ եզնիկն էր պարարակ,
Եւ ի միջի Փրկիչ մանուկ․
Ջոր Ամբակում տեսաւ հոգւով։
Մեր հովիւներ քաղաքավար,
Ողջո՛յն, ասին, ո՛վ Տիրամայր,
Մեք հովիւներս, դաշտի ծառայքս,
Պարզ, միամիտ շինական եմք,
Ո՛չ գիր գիտեմք եւ ոչ կարդալ,
Անբան հօտին եմք պահապան,
Չեմք ի համար մարդկան դասին,
Մարդիկ բզմեզ կոչեն անբան․
Մի՞թէ անպէտ մարդ է հովիւ․
Հովիւն էլ իւր շընորհն ունի,
Հայր Աբրահամն ալ մեծ հովիւ էր,
Բոլոր որդիքըն Յակոբայ
Հովիւ էին եւ հօտարած,
Օրհնեա՛լ լինի Փրկչին ծընունդ,
Հովիւներուս յարգ բարձրացոյց․
Զի Տէր Աստուած մեր հանեցաւ,
Թողուց քաղաք Երուսաղէմ,
Թողուց բանզէտ մեծ բարունիք,

Հովիւներուս յայտնեց իր փառք:
Մի լուսափայլ հրեշտակ երկնից
Մեզ աւետեց քո սուրբ ծընունդ.
Ասաց. գնացէք ի Բեթղէհէմ,
Տեսէք Փրկիչ ի մէջ մսրին:
Ահա եկանք տեսանք աչքով,
Երկրպագեմք մեք հաւատով
Մանուկ Փրկչին եւ ծընող Մօրդ:
Մեք ուրախ եմք եւ շատ ուրախ.
Հովիւներուս անշուք այս այր
Ասպնջական եղաւ քեզ, Մա՛յր:
Մենք ի՛նչ ընծայ տամք մեր Փրկչին,
Չունիմք ոսկի եւ թանգ քարեր,
Դաշտի վաստակն է մեր ընծան:
Ահա բերենք մեր գառնուկներ
Մատաղացու հայր Յովսէփին,
Բերենք փափուկ գառանց բուրդեր,
Փռող արա խեղճ Մանկիկիդ,
Որ դըրեր ես ի մէջ մսրին,
Վեր չոր գետնին եւ չոր յարդին:
Դու ձեռահիւս գիտես, Մայրիկ
Մեր բուրդերէն մանէ՛, հիւսէ՛,
Անկարանի մի պատմուճան,
Տաքուկ տաքուկ հագնի Մանկիկ,
Մեր ծաղկաբեր հովիտներէն,
Ծաղիկներու փունջեր բերենք,
Դիր ի մըսուր խանձարուրին,
Ծաղիկ ծաղկին քո զարդարանք:
Բերենք սափոր մի մաքու կաթ,
Անուշ արա՛ առատ առատ:
Քանի մընաս մեր այրին հիւր,
Մենք տի բերենք քեզ կաթ, մածուն,
Դու միշտ կաթ տուր երեխային,
Որ շուտ անի եւ զօրանայ,
Եւ մեր Փրկիչ զոր դու ծընար,
Ողջ աշխարհիս հովիւ լինի:
Մենք հովիւներս լեռնացի եմք,
Պարտաւոր եմք հօտեր պահել,
Գիշեր ցորեկ հսկել հօտին,
Գուցէ չկարեմք կրկին անգամ
Գալ համբուրել մեր Փրկչին ոտք:
Թոյլ տո՛ւր, ո՛վ Մայր, վերջին անգամ
Մօտիմք Մսրին եւ համբուրեմք
Սուրբ խանձարուր մեր Փրկչին:
Օ՜խ, ի՛նչ անուշ հոտ է բուրում,
Մի երկնաբոյս ծաղիկ է Սա.

Մեր դաշտերում ծաղիկ չէ այս,
Մեր ծաղիկներ ծաղկին գարուն,
Երբ գայ աշուն թոռմին թափին.
Իսկ այս ծաղիկ անթառամ է,
Հոտով, գունով անմահ է:
Մնաս բարո՛վ, Մա՛յր երջանիկ,
Աստուած պահէ որդւոյդ արեւ:
Հարցէ՛ք թէ ի՞նչ արաւ Յովսէփ.
Հովիւների բերած գառներ,
Բոլոր մորթեց, մատաղ արեց,
Բեթլէհէմի կարօտ մանկտին
Երբ լսեցին թէ մատաղ կայ,
Ողջ թափեցան սուրբ այրին դուռ,
Կերան կուշտ, կուշտ գառանց մատաղ:
Հարցին. ո՞ւր է Մանուկ Յիսուս.
Մենք համբուրեմք Նորա սուրբ ոտք,
Որ ի շընորհս իւր ծննդեան
Քաղցած մանկտին կերաւ մատաղ:
Շնորհակալ ենք, Հայր Յովսէփ,
Աստուած պահէ քո երեխէն.
Նա մեծանայ եւ զօրանայ
Իշխան լինի Բեթլէհէմէն:
Ես աստ յիշեմ Երուսաղէմ,
Չ՚կարեմ մոռնալ Երուսաղէմ.
Յիշեմ սուրբ Ծնունդ եւ Բեթլէհէմ:
Ո՛վ միաբանք սուրբ Սաղիմայ,
Զոյգ Յակոբեանց մեծ աթոռոյն,
Որ ի տօնի սուրբ ծընընդեան,
Երթայք խմբով ի Բեթլէհէմ,
Տօն կատարէք մեծահանդէս,
Եւ մեծամեծ կաթսաներով
Դուք պատրաստէք զհարիսէն.
Ողջ ժողովուրդ Բեթլէհէմի
Ուտեն կուշտ կուշտ զհարիսէն.
Դուք յիշեցէք, զիս մի մոռնաք.
Փոքրիկ պուտկիկ մի հարիսայ
Տուէք հրեշտակին Ամբակումայ.
Առնէ բերէ ի յԱրարատ,
Ուր քնում է ՀԱՅՈՑ ՀԱՅՐԻԿ.
Ես կարօտ եմ եւ յոյժ կարօտ
Բեթլէհէմի հարիսային:
Հայր Յովսէփայ մատաղի բան
Դուք փոխեցէք զհարիսայ,
Պինդ պահեցէք դուք այդ աւանդ
Ի յիշատակ Փրկչի ծննդեան:

———o———

# ԻՄ ՈՒԽՏ ԹԱԴԷԻ ՎԱՆՈՒՑ

Հրեշտակ Հայոց թեւերդ բաց,
Եւ թեւերուդ վէրէն զիս առ
Տա՛ր ի յԱրտազ Թադէին վանք,
Ուր վեհազոյն տաճարին մէջ
Հանգչին ոսկերք Թադէոսի.
Եւ մօտ վանուց մի ապարէզ
Կայ մի մատուռ փոքրիկ անշուք
Ուր կայ տապան հանգստարան
Սուրբ նահատակ կուսին Սանդուխտ:
Ես ուխտ ունիմ, ուխտս ի վաղուց
Ո՜հ, չ'կարեմ կատարել ուխտս,
Ես ծերացել եմ, ծերացե՜լ,
Եւ կաշկանդուած են իմ ոտքեր:
Որ խաչակիր է սուրբ ուխտիւ
Միթէ կարէ՞ նա կաշկանդիլ
Թէ կաշկանդի մարմին տըկար,
Հոգին ու միտք թռչին ազատ:
Թռի՛ր, հոգի իմ սիրավառ,
Սլացի՛ր, իջիր Թադէի վանք,
Մըտի՛ր ի մութ անլոյս տաճար,
Մի մոմ վառէ, որ դու տեսնաս
Ո՞ւր է տաճար սուրբ Թադէին,
Ջոքիր ի ծունկ եւ համբուրէ,
Ա՛ռ քո փափագըդ անձկալից:
Սուրբ տապանէն ձայն մի հնչեց,
Ձայն տրտունջ էր իրաւացի
Եւ սրտառուչ մի գանգատ:
Հարցուց Թադէն թէ ո՞վ ես դու.
Ասի. ՀԱՅՈՑ ՀԱՅՐԻԿՆԵՄ ես,
Եւ անարժան Կաթուղիկոս
Համայն ազգին մեր Արամեան,
Սուրբ աթոռիդ աթոռակալ:
Ասաց Թադէն թէ, Առաքեալ
Աշխարհիս վերայ աթոռ ունի՞,
Ունիմք միայն աթոռ յերկինս
Զոր խոստացեր է մեր Փրկիչ.
Ո՞վ է հնարեր այդ օտար բան,
Աթոռ, Աթոռ եւ մայր Աթոռ
Վեհափառ եւ վեհարան,
Էջմիածին, Էջմիածին,
Լուսաւորիչ, Լուսաւորիչ,

Իսկ Թադէին համար ոչի՛նչ:
Խաչի երկրէն ելայ եկայ,
Ե՛ս լոյս բերի Հայաստանին,
Ես վարեցի այս կորդ երկիր,
Քարոզեցի Աւետարան,
Եւ ցանեցի սերմըն բանին,
Ոռոգեցի իմ արիւնով:
Աստուած հանեց Գրիգոր մըշակ
Որ անեցոյց իմ ցանած սերմ,
Աւա՛ղ, ես արդ անուն չունիմ,
Զիս մոռացել է Հայոց ազգ:
Էջմիածին շէն ու պայծառ,
Թադէի վանք աւեր դարձել,
Ո՛չ շինարար, ո՛վ վանահայր,
Ո՛չ ժամ ասող, ոչ պատարագ,
Ո՛չ միաբան տօնակատար:
Էջմիածին ջահեր վառին,
Իսկ իմ տաճար ճըրագ չունի,
Գերեզմանիս կանթեղ շիջած,
Զկայ լուսարար, որ վառէ զայն:
Տես վեհ տաճար զոր կանգնել են
Այն մեծագործ նախնի սուրբ հարք,
Այս յիշատակ անտէր մնացել
Եւ աղաւնիք բոյն են դըրել·
Եթէ մընայ այսպէս անտէր,
Ո՛հ, տի կորչի՛ իմ յիշատակ:
Գրնա՛· ո՛վ դու ՀԱՅՈՑ ՀԱՅՐԻԿ,
Տար իմ տրտունջ Հայոց ազգին,
Պատմէ՛ ինչ որ աչքով տեսար
Իմ Թադէի վանուց վիճակ:
Համբուրեցի սուրբ գերեզման
Ելայ լալով ի տաճարէն,
Գնացի մըտայ փոքրիկ մատուռ
Սուրբ նահատակ կուսին Սանդուխտ
Որ ի միջի վըկայուհեաց
Նա առաջին կոյս վըկայն է,
Զոր Սանատրուկ այն ահաւոր
Շղթայակապ մատնեց ի բանտ:
Ասեն թէ մի պատեհ ժամու
Գնացել Թադէն Սանիկին այց,
Համբուրե՛լ է համբուրել
Կուսին շղթայն սուրբ շըթունքով,
Խըրախուսել իւր Սանդուխտ կոյս
Աւետել է հարսնութեան օր:
Ես հարսնուոր եմ փեսային
Քո փեսայն է խաչեալ Փրկիչ,

Առագաստն է լուսոյ երկինք,
Զօրացի՛ր դու հաւատով,
Թող քո մարմին շղթայն պնդէ,
Հոգիդ ազատ վերաթեւէ,
Երթայ խառնի լոյս երամին։
Թաղէն շղթայն համբուրեց
Եւ ինձ մրնաց կուսին տապան.
Ես գրկեցի այն սուրբ շիրիմ,
Գլուխս դրրի քարի վէրէն,
Համբուրեցի լի անձկանօք։
Ասի. Հրե՛շտակ, ուխտս իմ լըցաւ,
Ուխտեմ չմոռնալ մինչեւ ի մահ
Սուրբ Թաղէին այս յիշատակ։
Դարձո՛, տա՛ր զիս դու Արարատ,
Ուխտեմ չմոռնալ մինչեւ ի մահ,
Սուրբ Թաղէին այս յիշատակ

———o———

# ՄՐՄՈՒՆՋՔ ՀԱՅՐԵՆԱՍԻՐԻ

## *ԱՌ ՔԱՋՆ ՎԱՐԴԱՆ ԵՒ ՆԻԶԱԿԱԿԻՑՍ ԻՒՐ*

### *Ի ՅԻՇԱՏԱԿ ՏՕՆԻ ՍՈՒՐԲ ՆԱՀԱՏԱԿԱՑՆ*

---

Հոգի Աստուածավառ Քրիստոսազօր բանակին
Քաջապանծ զօրավար,
Նոր Մակաբէ, Յուդա, խրախուսիչ մարտադիր,
Յաղթող ի կեանս եւ ի մահ.
Ընդդէմ պարսկադենին դիմագրաւ շահատակ,
Առ ի սէր սուրբ Կրօնին եւ Հայրենի ազատութեան,
Ո՛վ մեծի սիրոյդ, չխնայեցեր զանձնդ.
Դու մեռար, յարեա՛ւ Հայաստան.
Ո՛ Մամիկոնեան Վարդան:
Խաչազէն զինուոր դու, աշտանակեալ ի ձի սպիտակ,
Ո՞ւր երթաս այդպէս ըշտապ.
Ես քաջին Վարդանայ համհարզ նիզակակիցն եմ,
Երթամ հասանեմ յԱրտազու դաշտ,
Խեթկիչ եղջերբ խաչին խորտակեմ ես անդ
Սեաւ այծից երամս.
Գնա՛, գնա՛, սուր քո առ թշնամիս...
Ո՛ Խոռխոռունիդ Խորէն:
Երկնաձիր իմաստութեամբ զգօնացեալ, հոգի՛ սիրավառ,
Դէմ հպապաշտ Պարսկին իմաստութեամբ մղեր դու մարտ.
Ետուր զքեզ ի զոհ, թողեր այս աշխարհ
Երկինք է քո վարձք.
Մեծ իմաստութեամբ էր այս քո տուր եւ առ
Ո՛ իմաստունդ Հրմայեակ:
Տիրակերտ մայր Սիօնին Այրարատայ վէմ ընտրելագոյն,
Հատեալ ի Մասեաց սարէն՝ գլորեցար մինչեւ ի յԱրտազ,
Հարեր, կործանեցեր զատրուշանս մոգակրօն դենին.
Բարձրացաւ խաչին փառք, կոր ի գլուխ եղեւ
Սատան թշնամին,
Ո՛վ զարմանալի՛դ Տաճատ:
Իսկ այն ո՞վ է որ հեծեալ ի սեաւ նժոյգ իւր օդապարիկ
Աչկունք իւր հուր ցայտեն, ոչ ձախ հայի եւ ոչ յաջ,
Գնայ ի մահ յօժարասիրտ.
Դա գիտէ սուրբ է Հայրենիք, մեռանիլ վասն նորա
է սեպուհ պարտիք.
Գնա՛ շուտ, գնա՛ շուտ, սիրեմ զհոգիդ
Այդ ուխտ սուրբ է.
Տո՛ւր արեւդ եւ կեանքդ՝ զոր ետ քեզ Հայրենիք,
Այդպէս մեռանիլ անմահութիւն է,
Զոր չգիտեն աշխարհիս անզգամ մարդիկ.
Ո՛վ Պալունիդ Արտակ:
Քաջբերունեան աշխարհի քաջասերունդ շառաւիղ
Վեհ քաջամարտիկ,
Մեռանիմ այդ սօսատիպ հասակիդ,
Որ ամբարձեր է զգլուխդ դէպ յերկինս.
Աստուած քեզ ուռճացոյց, տո՛ւր մի՛ խնայեր այդ հասակ եւ կեանք

Վասն Եկեղեցւոյ եւ Ազգին,
Յանի՛ր այդ պարարտ սերմ, ոռոգեա՛ կարմիր արեամբ,
Որ բուսանի շուշան գեղեցիկ,
Ո՜ հրաշակերտ Ներսեհ:
Մանուկ հրեշտակատիպ, գեղանի զուարթածաղիկ
ի Գնունի բուրաստանէն.
Աստուած զքեզ տնկեաց, կոյր Յազկերտ խլեաց.
Դու դեռ կանաչարեւ եւ կենդանի կաս.
Ո՜հ, ի՜նչ մատաղ զոհ ասն Հայրենեաց
Մատեար կամակար.
Սուրբ Գրիգորի հօր նոր Սահակ սիրասնունդ
Ձեռք զառնուկ զենար.
Ո՜հ, նազելիդ վահան:
Սիրտ ի սուրբ նախանձ զինավառեալ ի վրէժ
Վասն հաւատոյ եւ Հայրենի երկրին,
Մտեր յԱւարայրի դաշտ, աւար հարեր, սատակեցեր
Խաւարին Որմզդայ զորդիս,
Որ կամէր վառել զատրուշան, շիջուցանել սուրբ Գրիգորի
Լուսափայլ ճրագ,
Քո արիւն շիջոյց Ատրուշանս, լուսաւորեաց
Հայաստանին ջահ.
Ո՜վ ցանկալիդ Արսէն:
Անդ յատեան Յազկերտին, աստ յԱրտազու դաշտին,
Ի բան, ի պատասխան, ի զէն միշտ յառաջադէմ,
Բոցավառ սիրահար առ ամբիծ Կրօն, առ Յիսուս,
Եւ Հայրենեաց ազատութիւն,
Երկու սիրային հարազատօք, խաղապատեալ զիրեարս
Նշեցիք քաղցր ի քուն.
Անոյշ է այդ քուն, թող հանգչին պահ մի
Քո վաստակեալ բազուկք.
Շիրմիդ մահարձան են, գլխոյդ հովանի սփռեն
Շաւարշանայ ծաղկունք,
Ո՜վ յառաջադէ՜մ Գարեգին:
Յարքայական տանէն ազատ Ոստանիկք,
Երկու սիրաթեւ Արծուիք,
յՈստանայ սարէն սաւառնեալ արագապէս հասիք
Մինչեւ յԱւարայր.
Յի՞նչ արդեօք, որսիկ առնել անդ անսուրբ կենդանիս
Խաւարածնունդ Զրուանայ որդիս,
Կարթաձեւ մագլօք ձիւ ձիւ առնելով
Սեաւ ագռաւուց զերամս.
Քաջ քաջ կռուեցայք, հարիք եւ հարայք,
Հուսկ ուրեմն անկայք.
Ո՛չ, այլ կենդանի էք, եւ դեռ կանգուն կայք
Ի սէր Հայկազանց,
Ո՜ մեծ ասպետք Արծրունիք, Վահան եւ Սահակ:
Պարծի՛ր, ո՛վ Գրիգորէ, բարձրացի՛ր, ահա քո զառինք
Քաջապէս մարտուցեալ ընդ ուրացող գայլս,
Թաթաւեցան յարեան ճապաղիս.
Յերկնուստ այտի տե՛ս, աւասիկ թեւաքուսեալք,
Աղաւնեբամ թռուցեալ յերկրէ զան առ քեզ.
Ընդարձակեա՛ զգոգդ, տո՛ւր հանգիստ դոցա,
Վաստակեալ են քո որդիք.
Թուեա՛ դու մի մի, հազար երեսուն եւ վեց վկայք են,
Զորս ընծայէ Երկնից՝ քո ծնեալ Եկեղեցին:
Դու Աստուած Գրիգորի, Աստուած Ներսիսի, Աստուած Սահակայ
Աստուած մեր սուրբ Հարց,

Ահա քեզ զոհ բոլորանուէր, քեզ պատարագ հաճոյական,
Քեզ այսպիսի նախատակաց սուրբ արիւն ընծայ.
Ընկա՛լ Տէր, յիշեա՛ Տէր, գթա՛ Տէր եւ այց արա
Տառապեալ Հայրենեաց որբոյն Վարդանայ:

1869

———o———

# ՈՂԲԵՐԳՈՒԹԻՒՆ

## ԱՌ ՔԱՋՆ ՎԱՐԴԱՆ ԵՒ ՆԻԶԱԿԱԿԻՑՍ ԻՒՐ

### ՅԻՇԱՏԱԿ ՏՕՆԻ ՆԱՀԱՏԱԿՈՒԹԵԱՆ ՆՈՑԻՆ

———o———

Ի Տարօն Մամգունի քաջաց աշխարհին
յԱշտիշատու մայր Եկեղեցւոյ խորանին առաջ,
Ո՛վ է դիւցազն այն սպառազէն
Որ սահակայ պապուն խաչքարին հանդէպ
Պաղատի հոգեհառաչ.
«Ես սաէ թոռնիկն եմ քո կարմիր Վարդան,
Գոտեւորեալ երթամ յԱրտաշատ.
Երթամ զանձն տալ վասն Եկեղեցւոյ
վասն Հայրենեաց ազատութեան.
Ահա ձեռն դնեմ ուխտեմ ի խաչ եւ յԱւետարան.
Ո՛վ սուրբ Հայրապետ, յերկինս մօտ ես
Հոգւով աղերս ած
Առ պետականն Աստուած.
Եւ տո՛ւր ինձ զօրավիգ սատար
Քո օրհնազէն բարձր աջ:»
«Ես խռովեալ եմ սրտամնաց մեռայ.
Դառնացեալ եմ յոյժ առ Հայոց աշխարհ
Առ անընտրող եւ տիրադրուժ նախարարս.
Որ զթագն Արշակունի փառաց թողին
Ո՜հ, ստրկացան ընդ իշխանութեամբ Պարսիկ մարզպանաց:
Այլ հաշտ եմ ընդ քեզ, իմ ազատասէր նետ.
Զաջն իմ կարկառեալ ի տխրագին տապանէս
Զքեզ օրհնեմ, ո՛վ Հայրենասէր զօրավար,
Երկնից զօրութիւն հասցէ քեզ արագ.
Սուր քո հարցէ զթշնամիս չարաչար,
Յաղթական բարձրասցիս թէ ի կեանս թէ ի մահ.
Ե՛րթ ողջմամբ որդեակ իմ
Քաջապսա՜կ Վարդան:»
Զինակիրք իմ, ածէք զզէնս, զգեցուցէք զրահ,
Բերէք սաղաւարտ, կոչէ զիս Վարդան.
Ես նորա քաջ նիզակակիցն եմ
Ո՜հ, չմեկնիմ ի նմանէ, ոչ ի կեանս, ոչ ի մահ.
Երթամ ընդ նմա պահել սուրբ կրօն
*Պաշտպանել սուրբ Հաւատք, կանգնել Խաչին փառք.*
Երթամ պատուել զԱւետարան
Պատառել Յազկերտին մահաշունչ հրովարտակ,
Որ սպառնայ շիջուցանել Յիսուսի

Սիրոյն հուր եւ վառել Որմզդայ կրակ:
Գնա՛, գնա՛, այդ ուխտ նուիրական է·
Կրօնք, Հաւատք, խաչ, Աւետարան
Քեզ լիցին օգնական
        Ո՛վ խորխոռունի՛դ խորէն:
  Երեսքն զլոյս արտափայլեն
Գոգ քէ ի Թափորէն իջեալ,
Երթայ յԱւարայրի Գողգոթայն,
Յիսուսին հետեւելով չդնէ միտ Պետրոսին,
Խոյս տալ ի խաչէն, լռին կալ յանապատ·
Տեսէք որչա՞փ ինքնայօժար
Որչա՞փ հրճուանօք հոգեվառեալ
Վազէ երթայ ի պատերազմ·
Զայս ամէն մոռանայ, չհամարին ինչ յաչս·
Զափեցէք, Երկինք, զվարձ դորա
Եւ տուք զարժանին պսակ·
Պայծառացի՛ր,
        Ո՛ Պալունի՛դ Արտակ:
  Նոր Զարմայրն է այն, ի Տրովա՞յ երթայ
        Թէ ի յԱւարայր,
Հեծեալ ի նժոյգ իւր ճերմակ,
Այնպէս մրրկալից որոտայ, անցանէ
Զերթ յամպոց փայլակող կայծակ
Հուր հարեալ մաշէ զանտառ Մատեան գնդին
Ի մոխիր դառնայ կարծեցեալ բանակ·
Այլ ողբամ զքեզ, քաջ շահատակ,
Վատ Պարսկին սուր զքեզ տապաստ արկ
Եւ ոչ Աքիլէսին նիզակ:
Առէ՛ք զոգի դորա, լուսաթեւ հրեշտակք,
Տարէ՛ք, կանգնեցէ՛ք յԵրկնից վեհ տաճար·
Մեռաւ Յազկերտ, կորեաւ Մատեան գունդ
Այլ քո յիշատակ եւ հոգիդ անմահ կայ,
Ո՛ զարմանալի՛դ Տաճատ:
  Ելէ՛ք եւ տեսէ՛ք, սուրբ Գրիգորի որդիք,
Ո՞ւր երթայ, յառաջ մղի անձոյժ
        Ձիաւորն այն խաչադրօշ·
Այնպէս արբեալ է խաչելոյն սիրով,
Ոչ երբէք զգայ զօրահաս մահուն·
Դա հանճարեղ է, գիտէ կշռել քաջ
Թէ մեռանիլ վասն հաւատոյ
        Կեանք է եւ անմահութիւն:
Բա՛րէ, այսպէս հաւատաց, չարար երես մահուն,
Զաշխարհ եւ զանձն ետ, գնեաց զկեանս լաւագոյն,
        Ո՛ իմաստունն Հմայեակ:
  Հապա ո՞վ է այն գեղապատշաճ
        Հրացոլակ սպայն
Որ յարձակեալ յերկուս ճեղքէ
        ԶԱրեաց գնդին կուռ ճակատ·
Միւշկան Նիւսալաւուրտ մռնչէ,
Զայն տայ յառաջ ածել փղաց զերամակս
Ուր անդիմադարձ խիզախէ դիւցազնաբար·
Հուսկ ուրեմն անկանի հասակն այն սօսաբարձր,
Զաչկունս կափուցանէ, հոգին վերաթեւէ,
        ԶԱստուած տեսանէ,
Եւ ի մահուն կանգնի յաղթական,
        Վա՛շ իմ հրաշակերտ Ներսեհ:
  Յո՛ւշ, յո՛ւշ, Հայոց մանկունք,

Յառեցէք զաչս մեր յայն Գնունի մանուկն․
Դա զինենարեալ է, չգիտէ թէ ո՞ւր երթայ
Ի հարսանի՞ս թէ ի կոչ մահուն․
Աւէ ես երթամ յԱւարայր,
Երթամ յարիւնակոխ հնձան
Երթամ ճմլիլ անդ զերթ ողկոյզ Յիսուսի որթոյն։
Այդպէս յապայոյժ ճմլեցար,
Մանուկ դու մանկական գեղովդ
Սպիտակ եւ ամբիծ ձորձովդ․
Այլ զի՞ վայելուչ կարմրացար ողջամբ
Որպէս որդան բոսորազոյն․
Ո՛հ, ի մէջ շուշան ծաղկանց
Ի մէջ արիւնոտ դիականց
Թուի թէ ննջես ի քուն․
Զայն տամ քեզ մատռուակ Գնունի,
Թափեա զգինիդ ի քէն, Յիսուս կոչէ զքեզ,
Զարթի՛ր, զարթի՛ր,
Զքեզ հրեշտակք տանին յերկինս,
        Ո՞ փարելիդ վահան։
  Հաւատք, Հայրենիք, Երկինք
Զքեզ վառեցին սուրբ նախանձով,
        Հոգի արդար եւ զգօն,
Արդեօք Յիսուսի հո՞ւրն է ր այն
Զոր արկ նա ի քեզ, եւ դու ողջամբ կիզար ի զոհ
Յորդահոս թափեցեր զարիւնդ
Շիջուցեր զմոլենախանձ բոց
        Ամբարիշտ դենին մոգակրօն,
Որ խանձել լափել կամէր
        Զեկեղեցւոյ նոր դրախտ
Եւ սուրբ Գրիգորի հօր
        Մշակեալ ձեռատունկ․
Այլ քո արիւն շիջոյց ատրուշանին հուր,
Քանդեաց մոլրապաշտին տուն,
Պայծառացոյց սուրբ Հաւատոյ լոյս,
Եւ դու յաստեղս վերափայլեցար․
        Ո՞ ցանկալի՛դ Արսէն։
  Միթէ մոռանա՞մ զձեզ
        Ոստանիկ պայազատք,
Կապել զձեզ ի մի ընդ խմբին առաքինեաց․
Զձեզ սուրբն Եղիշէ թուեաց եւ գրեաց․
Չգիտեմ ո՞ր ոխերիմ ձեռն եղծելով ջնջեաց
Զանուան ձերոյ քաջափայլ յիշատակ․
Ցնծացէք, հոգիք, Երկինք զձեզ գիտէ
Եւ ես յերգ անմահ դրոշմեմ յայս արձան․
ՈրյԱրտօսայ սարի գագաթէն դէտակն կալեալ
Յարծուաթեւ հասիք ի յԱրտազ,
Խաչասուր մագլօք հարեալ խլեցիք
Կոյր Յազկերտի մի զակն․
Անդ երդուայք մահուամբ շիջանիլ
Զի վառ մնասցէ Հայոց տաճարին ջահ
Եւ Աւետարանին աշխարհալոյս ճրագ․
        Ո՛ Արծրունի ասպետք
        վահան եւ Սահակ։
 Օ՛հ, զարմացէք, ո՞վ է այն
Որ զմինն ի յաջ եւ զմիւսն ի ձախ թեւն առեալ
Ո՛հ, բաւ չէ ինքն միայն
Զերկո՛ւս եւս այլ զոհ ի միասին տանի

Անբաժան մեռանիլ երթայ ոգեյօժար:
Զայն տուք վարդան յետուստ է·
Ո՞ւր այդպէս նեպրնթաց լինի անվախ դիմագրաւ·
Միթէ կարծէ՞ ինքն թէ անդրէն երթայ
Ճառել զխաչէն ի Պարսից ատեան:
Ո՛չ, ո՛չ, մի՛ այնպէս կարծէք,
Ես անգիտակ չեմ եւ դեռ գիշեր չէ·
Գիտեմ ստոյգ թէ ի լոյս գնամ·
Ես յառաջադէմ Գարեգին եմ,
Վառ մեռանիլ կամիմ,
Եւ վասն եմ խաչելոյն կռուիմ ընդ աշխարհ·
Ես Երկնից սիրահար եմ, երթամ առ սէրն իմ·
Ողջ կացցես, Հայրենիք,
Ողջամբ կացջիք, սիրելիք·
Զիս եւ զեղբարս մի՛ ողբայք
Որբացեալ տուն Սրուանձտեան:
Բարապան հրեշտակք բացէք զդուռն Երկնից,
Պատրաստեցէք զերիս պսակս·
Ո՛հ, երկու հարազատօք
Անկաւ Գարեգին, մեռաւ Գարեգին
Թռա՛ւ ի վեր հոգեակն:
Ամենակալ մեծանուն Տէր Աստուած մեր սուրբ հարց
Աստուած ներող, գթած,
Ահա քեզ պատարագ
Վերընծայէ Հայոց աշխարհ,
Հազար երեսուն եւ վեց զոհ
Նուիրական սուրբ ողջակիզաց·
Քեզ հաճոյ լիցի, Տէր, որպէս երբեմն առ Նոյիւ
Ի գլուխ անդ Մասեաց·
Տե՛ս թէ քանի՞ հոտ անոյշ է
Ծուխ զոհից սուրբ Գրիգորի,
Որ բուրէ առ քեզ յԱրտազու բարձանց:
Տէր, հայր մեր, ո՞ւր է օրն այն
Ցոր ներէիր մեզ որպէս Ցակովբայ տան·
Ցո՛յց եւ այժմ սիրոյդ ծիածան,
Կամար ած ի վերայ Հայոց լերանց,
Ասա, Տէր գթած, թէ այլ եւս հաշտեալ եմ ընդ քեզ
Ո՛վ տառապեալդ Հայաստան:

1875

# ՈՂԲԵՐԳՈՒԹԻՒՆ

## Ի ՅԻՇԱՏԱԿ ՏՕՆԻ ՍՐԲՈՑ ՂԵՒՈՆԴԵԱՆՑ

Ո՞վ ես դու, նոր Եղիազար քաջափառ,
Հոգի նախանձաւոր եւ հանդիսադիր,
Ձխաչն ի յուսդ առեալ, զԱւետարան ի գիրկդ,
Վազես երթաս վկայել վասն Յիսուսի·
Քեզ ոչ ինչ փոյթ է թողուլ զպատարագն ի սեղան
Թողուլ զերախան աւազանին մկրտարան,
Թողուլ զհարսն ի քօղ եւ փեսայն ի պսակ·
Ո՛հ, միթէ զոյժ եհաս քեզ ի Վանանդ,
Թէ մոխրապաշտ Մոգք հասին մտին ի Հայաստան·
Յազկերտ հրամայէ, քակին Եկեղեցիք, շինին Ատրուշանք·
Ելցէ Յիսուս ի տաճարէն, մտցէ Որմիզդ ընդ սատան·
Օ՛ն, զինուոր դու զօրավարին Նազովրեցւոյ,
Կրօն, Հաւատ եւ Եկեղեցի կոչէ զքեզ ի մարտ·
Գնա՛ վկայէ եւ մեռիր,
Ո՞վ սուրբ Ղեւոնդէ:
Մեծին Գրիգորի տան եւ գահին ժառանգ
Սուրբ հայրապետդ Յովսէփ·
Լո՛ւր, ի վայոց ձորէն հնչէ վա՛յ ի Հայաստան·
Ե՛լ, հա՛ր զվանդակ սուրբ տաճարին Էջմիածնի,
Ա՛ռ զգրիչ քո շոյտ գրեա՛ զկոնդակ·
Տո՛ւր հրաւէր Հայոց հօտին եւ հովուաց,
Աշխարհախումբ լինել յԱրտաշատ·
Անդ կնքել նոր ուխտ միութեան·
Անարատ պահել զհայրենի հաւատ,
Կռուել վասն կրօնի եւ վասն եկեղեցւոյ ազատութեան·
Թող մեռցին հովիւք ընդ հօտին եւ հարք ընդ որդիս,
Թող ի զոհ երթան վասն Եկեղեցւոյ
Յովսէփ իւր ընկերօք, Վարդան իւր նիզակակցօք·
Թէ բառնի Կրօն եւ Հաւատ
Զի՞ այնուհետեւ մեզ կեանք եւ աշխարհ:
Ըռըշտունեաց աշխարհին հսկող հօտապետ Սահակ,
ՅԱրտօսայ բարձրասար դիտանոցէն
Հայի՞ս ընդ գագաթ Մասեաց միգապատ·
Տես զիա՛րդ ի Կասպիական ծովէն
Հողմավար զան սեաւ ամպոց երամք,
Գան խռնին բարդին յԱյրարատ եւ յԱրտազ·
Զրադաշտ զայրագին գոռայ թափել կարկուտ սաստկահար,
Փշրել զորթատունկս Գրիգորի, քանդել սուրբ օրինաց ցանկ·
Է՛ջ այտի, հասի՛ր յԱրտաշատ,
Ղեւոնդ Յովսէփ եւ համայն ուխտ Եկեղեցւոյ
Քեզ սպասեն անդ, զի լիցիս դու նոցա թարգման·
Տեսցուք զի՞նչ խօսի մոլեկրօն Պարսիկ·
Թէ սաէ՝ թողէք զՅիսուսի Աւետարան
Եւ մեր հարց սրբազան Հաւատ,
Հոգի՛ անվեհեր, տուր անդէն քաջ քաջ պատասխան·
Ասա՛ համարձակ թէ Հայք մեռանին

Եւ չթողուն հայրենի սուրբ աւանդ:
  Մուշէ, Արսէն, եւ Սամուէլ
Քաջազօտի երիցունք եւ պաշտօնեայք Աւետարանին,
Հաւասար մրցողք յասպարէզ նահատակութեան,
Ընդ Յովսեփայ, Սահակայ եւ Ղեւոնդի.
Ո՜վ, շինական հօտարած փոքրիկ հովիւք,
Եդին զանձինս իւրեանց ի վերայ փոքրիկ հօտին.
Դո՞ւք էք արդեօք այն փոքրիկն
Որ մեծ է յարքայութեան Երկնից.
Ո՞ ծառայք ազնիւք ի սակաւուն հաւատարիմ,
        Մտէ՛ք յուրախութիւն Տեառն:
  Աբրահամ եւ Քաջաջ սարկաւագունք,
Առէք զբուրվառս ձեր եւ լցէք զհուր,
Խաչանման արկէք զուրարս զկապանս մահուն.
Երթամք նախ ի բացօթեայ տաճար
Աւարայրի մեռելոց դաշտին,
Ուր կազմին սեղանք զոհից, զենանին սուրբ Գրիգորի զառինք,
Ուր ընդ սուր եւ ընդ հուր անցեալ
Ողջակիզին Եկեղեցւոյ որդիք.
Սարկաւագունք, խունկ ծխեցէք ի հոտ անոյշ
Ճաւարշանայ շիրմաց անմահ մեռելոց.
Օ՛ն թողէք արդ զորդւոց շիրիմս, երթամք յԱպար աշխարհ,
Օրհնեմք անդ զհարց գերեզմանն,
Եւ զյիշատակ կատարման նոցա:
  Ձեռս ի վեր կալէք, ձեռս ի վեր, Յովսէփ, Սահակ եւ Ղեւոնդ,
Երիցունք եւ սարկաւագունք,
Ո՜, ծերանալոյ ձեր ժամն եհաս.
Ահա կապեն զձեզ ի գօտի մահուն,
Ահա վարեն տանին զձեզ ի Պարսս հեռագոյն,
Յերկիր նժդեհ ի քաղաքն Նիւշապուհ:
Կամար ձեր չէ մարգարտահեռ, այլ շղթայ է ծանրակուռ.
Ո՞ տայր ինձ համբուրել զկապանս ձեր սուրբ.
Ձեօք արձակեցան ազատ որդիք Եկեղեցւոյ.
Յաղթանակ տարաւ խաչ, փառաւորեցաւ Յիսուս.
        Ո՜վ սուրբ Ղեւոնդեանք:
  Զարաշունքն այն Դենշապուհ
Յանձնէր զձեզ Մոգպետին մոլեռանդ,
Որ նովին շղթայիւք պրկեալ
Դընէր ի գէն եւ խաւարտչին բանտ.
Մարմին էր ձեր զէն, եւ կռուելով տոկացիք,
Վշտակրեալ ի դառն կտտանս,
Ոչ փշրէր անօթ հոգւոյն ձեր անվկանդ.
Դուք լոյս ի խաւարի լոյս ծագեցիք անդ
Մոգպետին խաւարապատ աչաց,
Որ ի մահ ննջէր Զրադաշտին ուսմամբ, հրաշիւք բացան աչք,
Ետես զլոյս Յիսուս, եւ հաւատաց յԱստուած.
        Ո՛վ սուրբ Ղեւոնդեանք:
  Անցանէր այս Ծաղկազարդ
Մեծ Պասեքին օր գայր հասանէր անդ,
Մերձենայր տակաւ տակաւ Գողգոթային խաչ.
Պիտոյ էր ձեզ Սիօնի վերնատուն մի զարդարեալ համակ,
Պիտոյ էր ձեզ սուրբ Ընթրեաց սեղան եւ կենաց բաժակ.
Զայդ պատրաստէր շոյտ Մոգպետն այն հաւատացեալ,
Ինքնին լինէր ձեզ անդ կոչնատէր եւ հրաւիրակ.
Զաքէի նման հայցէր, լոյս եւ փրկութիւն տանէր իւր տան.
Լուանայր զոտս ձեր, զջուրն արկանէր զանձամբ.
Մկրտէր եւ պաշտէր զձեզ իբրեւ զԱստուծոյ հրեշտակ.

Սեղան կազմէր նահապետական, սեղան բարեկից եւ առատ.
Ո՛հ, ճաղցեալ սովատանջ էին հիւրք զճառաւուն օր ի բանտ.
Յանկանալով կերէք, կշտապինտ կերէք, ո՛ խաչապատրաստ վկայք,
Այդ է ձեր վերջին ընթրիք, վերջին երեկուն ու զատկական զառն,
Ո՛վ սուրբ Ղեւոնդեանք:
Ելէք զոհացէք եւ օրհնեցէք զսեղան. հասին ձեզ դահիճք անգութ.
Ո՛հ, հանեալ ի զուարթ սեղանոյդ,
Կրկին կապեալ վարեն զձեզ ընդ առապար աւազուտ.
Ջոյգ զոյգ լծեալ անճազորոյն սպանչաց,
Քարշեն զձեզ անխնայ ընդ քար եւ ընդ թուփ.
Դուք իբրեւ այն մշակին հարօր զերկիր հերկելով
Ուղիղ վարէք տանիք զարքայութեան ակօսն.
Իբրեւ ցորենահատք դուք ցանեալ ցրուիք,
Որպէս առակէ յիւր բան՝ սերմանահան Յիսուս:
Անդ ի խուժաստան ծածկին փշրանք ոսկերաց
ձերոց ի հող,
Աստ ի Հայոց աշխարհ բուսանիք ցորեան առք եւ հասկաթուռ.
Այսպէս մեռելութիւն ձեր՝ կենդանի եւ բարգաւան արար զորդիս
Եկեղեցւոյ,
Ո՛վ սուրբ Ղեւոնդեանք:
Դեռնշապուհ յոտին կայ սուր ընդ մէջ թերաքամ,
Առ նմին կանգնին դահիճք դաժանադէմ մերկասուր պատրաստ.
Կանգնին նաեւ առ ձեօք երկրահրաւէր հոգէւանդ հրեշտակք.
Ժամ եհաս, ո՛հ, զոհին եւ զենման,
Կափուցէ՛ք, ո՛վ Սուրբք, առ աշխարհ պահ մի զաչս ձեր,
Տեսցուք զի՞նչ առնէ Յազկերտ եւ աշխարհ
Յետ բառնալոյ աստի զձեր մահկանացու կեանք:
Ո՛հ, զքեզ նախանուէր զենուն, Սահակ զօրաւորդ ի բան,
Որ լռէ քո ճարտար լեզուն ազատ եւ թարգման.
Յառաջ մատի՛ր ի սուր, Ղեւոնդ ձայն քեզ,
Ո՛վ հայրապետ Յովսէփ,
Ահա, պատուեմ զքեզ աստ, դու վեհ ես քան զիս.
Յառաջ մատի՛ր ի սուրբ, Ղեւոնդ ձայնէ քեզ.
Մի՛ վարանիք, տուք զձեր պարանոց, առէ զանմահութիւն.
Զմեռանիմ ես Ղեւոնդ, մնամ ձեզ յետին տրուպ,
Մինչեւ մի մի յուղարկեմ զձեզ առ Յիսուս,
Ո՛ իմ խաչակից վկայք, այդ է իմ սուրբ ուխտ:
Իսկ դու զի՞ առնես, հոգի՛ զօրավիգ,
Հոգի՛ հզօր եւ մինչ ի մահ անյաղթ.
Զընկերս քո ամէն ետուր ի սրոյ բերան.
Միթէ մնա՞ց այլ եւս քեզ նոր ինչ կասկած.
Մատիր եւ դու ի սուր, կան սպասեն քեզ մարտիրոս մշակք
Խմբովին երթալ առ վարձատուն Յիսուս եւ կալ յանդիման,
Ասել համարձակ. Տէ՛ր, վասն Հայոց աշխարհի մեռաք,
տո՛ւր զվարձ մեր արեան.
Առէք զձեր պսակն անեղծ անթառամ,
Ո՛վ իմ ազնիւ ծառայք:
Գրիգորէ, Ներսէս եւ Սահակ,
Առէք ընդ ձեզ զթոռնիկն ձեր զկարմիր Վարդան.
Պսակազգեստ շքով ելէք ելէք ընդ առաջ յաղթական առաքինեաց,
Ահա զան առ ձեզ Ղեւոնդեանց հարք, որ ընդ որդիս մեռան.
Առէք տարէք յանդիման կացուցէք Պետական աթոռին առաջ,
Տուք զաղերսագիր եւ յիշեցէք զտառապեալ Հայաստան:

1876

—o—

# ՈՂԲԱՑՈՂ
# ԽՈՐԵՆԱՑԻՆ

---

Գրեց

ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ

---

ՎԱՂԱՐՇԱՊԵՏ

ՏՊԱՐԱՆ Մ. ԱԹՈՌՈՅ Ս. ԷՋՄԻԱԾՆԻ

1902

# ՈՂԲԱՑՈՂ ԽՈՐԵՆԱՑԻՆ

*Ի ՑԱՃՏԻՃԱՏ ԵՒ ՑՕՃԱԿԱՆ*

---

Ո՞վ էր այն հարուստ փարթամ,
Որ յԱթենայ ծովափէն գայր,
Բեռնաւորեալ նաւ շահաբեր:
Թանգար էր նա նոխ գիտութեան,
Ամենարուեստ եւ թանկագին,
Մարգրիտ գոհար էր իւր վաճառ,
Ձրի բաշխէր, ո՛վ որ խնդրէր,
Եւ փոխարէն չառնոյր ոչինչ:
Հրաւէր կարդայր նա բարձրագոչ,
Առէք, ասէր, կղերք Հայոց,
Առէք մանկունք ուսման կարօտ,
Գանձ անկապուտ է իմ վաճառ,
Ոչ ոք կարէ հանել ձեզմէ:
Ո՜հ, ո՛վ լսեց նորա հրաւէր,
Եւ ո՞վ գնեց իւր մարգարիտ,
Աւա՜ղ, ոչ ոք եւ ոչ մի:
Որ փարթամ էր ամենանոխ,
Զքաւորեալ աղքատացաւ:
Մշոյ երկիրն էր հայրենիք,
Իւր խանձարուրն էր Խորնոյ գեղ,
Զունէր նա տուն եւ օթեւան,
Աստանդական շրջէր թափառ,
Ցուպն ի ձեռին, պարկն ի յուսին,
Դեգերում էր Հայոց աշխարհ,
Զունէր հանգիստ եւ կայան,
Քրիստոսին էր նմանակ,
Զկար տեղի գլխոյն դադար:
Ո՛վ էր այս մարդ, ո՜հ, մոռացեալ,
Ազգի զաւակ էր իւր Ազգէն,
Դեռ չմտած ի գերեզման:
Ասա դու ինձ, ո՛վ ազգ Հայոց,
Թէ ամաչես ասել զանուն,
Միթէ կարե՞ս թագուցանել.
Աշխարհ գիտէ նորա անուն,
Արեւելքէն մինչ արեւմուտք
Ոսկի տառով է քանդակուած,
Եւ պատմութիւն արձանագրած:
Աստ յայտնի խոստովանիր,

Գէթ քաւեսցես քո նախնեաց մեղք:
    Եւ ես ասեմ քեզ, դու ծանիր,
Քերթողահայր փիլիսոփայ,
Խորենացի Մովսէսն էր այն,
Անծանօթ եւ ծանուցեալ,
Այլ ո՞ ծանեաւ այդ անգին զանձ.
Յայտնի շրջէր եւ չէր ծածկեալ.
Զոր չտեսին կուրաց աչք:
    Ասեն երբեմն եւ շատ անգամ
Խորենացին լինէր անյայտ.
Եւ ո՞ւր էր նա, ի յԱշտիշա՛տ, ի յԱշտիշա՛տ,
Սուրբ Սահակայ գերեզման.
Ուր օրերով եւ ժամերով
Զայնարկեալ հինքնախօսէր,
Նա լայր ուժգին բան ստեղծէր,
Գերեզմանին հետ խօսում էր:
    Մինչ խայտայի յուսով ի դարձ,
Բիւզանդինեան Հայոց աշխարհ,
Հոգիս հրճուէր, զուարթ ուրախ,
Ո՛հ, չտեսի զքեզ ողջամբ,
Ողջագուրիլ ի քէն, սուրբ Հայր.
Գերեզմանիդ հասի, աւա՛ղ,
Գլուխդ վեր առ գերեզմանէդ,
Տես կարօտով քո որդեգիրդ,
Յառաջադէմն եմ քոյդ Մովսէս.
Ո՛հ, մնացի ես որբացեալ:
Ոչ պաշտպան, ոչ խնամակալ,
Ոչ տուն ունիմ, ոչ օթեւան,
Առ զիս ի քո գերեզման:
Ո՞ տայր ինձ որ ննջէի
Քո սուրբ շիրմիդ գրկարան,
Եւ հանգչէին խոնջեալ ոսկերքս
Ի քո ծոցիդ հայրական:
    Անտէրունչ, անհանգիստ եմ,
Վտարական եղայ սուրբ Հայր,
Եւ չգտի յարգող ուսման,
Եւ ոչ երէք ոք մեկենաս:
Ես հալածեա՛լ եմ հալածեա՛լ,
Միթէ օտա՞ր եղէ ես ո՛հ,
Իմ հարազատ եղբայրներէս,
Կամ որպէս խորթ օտարածին,
Հայաստանի Մօրն իմոյ:
    Եւ ո՞յք էին իմ հալածիչք,
Շմուէլի եւ Բրքիշոյ
Ապաշնորհ ժանտ որդիքներ,
Անարժանք յանարժանից

Կաշառատրօք ձեռնադրեալք,
Որք եղծին աղարտեցին
Աստուծոյ տան վայելչութիւն․
Եւ մեր սուրբ հարց կարգն ու կանոն,
Որ չարագոյն քան սատանայ
Հակառ էին եւ թշնամիք,
Սահակայ Պարթեւի հօր
Հոգեծնունդ որդիքներուն,
Եւ նա չէր ողջ հոգին հզօր
Որ պաշտպանէր իւր բարձր աջով։
Համբուրէ՛ր, համբուրէ՛ր
Սահակայ հօր սուրբ դամբարան,
Ելնէր ապա եւ ո՞ւր երթայր․
Ի յՕշակա՛ն ի յՕշակա՛ն
Սուրբ Մեսրովպայ գերեզման,
Մտնէր մատուռ գրկէր տապան,
Նոյնաձայն եղանակաւ,
Կրկնում էր նա մեծահառաչ
Ցաշտիշատի ողբերգական։
Ո՛վ հրաշալի դպրութեան Հայր,
Դու գիր տուիր եւ դպրութիւն,
Գիր չի սիրեր Հայոց ազգ,
Անսիրող է իմաստութեան,
Հոգին հպարտ եւ բարձրայօն։
Ես ձայն բառնամ առ գերեզմանդ,
Գերեզմանէդ խօսիր հետ ինձ,
Ես Մովսէսն եմ քո աշակերտ,
ՅԱթենական ճեմարանէն
Ողջամբ դարձայ ես Հայաստան,
Եղո՛ւկ ինձ չգտի ես ողջ
Սահակ Մեսրովպ զոյգ ամոլներ․
Որ հերկեցին Հայոց դաշտեր,
Հայ դպրութեան դարաստաններ․
Ցանեցին սերմն գրոց ուսման․
Հունձ բարձրացաւ հասունցաւ․
Եւ ո՞ւր է արդ հնձող մշակ,
Ժիր մշակ եմ գերանդաւոր,
Աշխատաւոր ձրի անվարձ,
Հաց բերան եւ այլ ոչինչ։
Լայնատարած Հայոց դաշտեր
Աւա՛ղ, մնացեր են կորդացած։
Միթէ ի զո՞ւր աշխատեցայ
Ես դպրութեան մշակ Մովսէս,
Տքնելով տիւ ու գիշեր
Քերթող եղէ եւ վերաբան․
Ո՛հ ընդունայն եղեւ վաստակս,

Եւ ես մնացի անզործ պարապ:
Թող այս, գանգատ բառնամ քեզ հայր,
Մեր հացալից Հայոց դաշտեր,
Եւ Շիրակայ լիք ամբարներ
Ձե՞ն բաւական կարօտներուն.
Խեղճուկ Մովսէս լիութեան մէջ
Մնացեր քաղցած եւ նօթի:
Մինչ շրջէի շուարած մոլոր,
Հասայ մի շէն գիւղի մօտ,
Թաժա հացի հոտ առի ես,
Եւ հոտին հետ գնացի այն տուն,
Շիտակ մտայ ես ի տանտուն*).
Տանտիկին մամիկ հաց էր թխում.
Ես կանգ առի թորվան մօտիկ,
Կօրիկ ցպոյս վէրէն յենած,
Ասի ողջոյն քեզ տանտիկին,
Ճամբորդ եմ ես յոգնած դադրած,
Երկու օր է հաց չեմ կերած:
Բարի տանտիկին ինձ գթացաւ,
Ասաց արի նստիր հանգիստ.
Թորվան կշտին եւ տաքացիր.
Վա՜հ, կը դողաս ցուրտ ձմեռ է:
Առ քեզ տաք տաք լօշ լօշ հացեր,
Թորվան կողէն նոր եմ հաներ.
Տանտիկին ասաց իւր հարսներուն,
Բերէք աման մի թանապուր,
Մի պնակ էլ եղով թանհուս(1).
Թող ուտէ խեղճ ծերունին,
Օրհնէ զձեզ որ շատ ապրիք:
Եւ տնաշէն տանտիկին լինիք:
Եւ ես կերայ քաղցած քաղցած,
Մշոյ կանգռով էր այն եփուած:
Օ՜խ, ի՜նչ անուշ էր թթու թան,
Անօթի մարդոյն համար
Թթուն քաղցր է մեղրի նման:
Հարցուց մամիկ սեւ ես հազեր
Անբախտի՞ ես թէ կրօնաւոր.
Եւ կամ սգւոր, մեռե՞լ ունիս:
Ասի մամիկ վարդապետ եմ,
Սուգ ունիմ ես մինչեւ ի մահ,

(*) Տան միջի այն որոշ տուն կամ սենեակ, ուր թոնիր կայ, Վանեցիք տանտուն կասեն:

(1) Թանհուս, ալրով եւ հարած թանով եփած ճաշ, որուն վերայ իւղ ածելով կուտեն. ծերոց համար փափուկ կերակուր է:

Երկու մեռել ունիմ մեծ մեծ.
Թագւոր մեռաւ, Պապըս մեռաւ,
Եւ Հայոց տուն անտէր մնաց:
Բայց միամիտ պարզ տանտկին
Թէ ի՞նչ էր բան, նա չիմացաւ
Ո՞վ էր թագւոր, ո՞վ էր պապիկ.
Եւ ի՞նչ փոյթ էր գեղջուկ կնկան
Մեր աշխարհի բան իմանալ,
Երբ անխորհուրդ իմացող միտք
Անմտացան եւ չիմացան:
Ախտացեալ Արտաշիրէն
Տիրական թագն Արշակունի
Ո՜հ, կապտեցին խելակորուք
Նախարարք ազգին Հայոց,
Եւ ո՞ւմ գլուխ դրին գիտէ՞ք,
Գազանին եւ վարազին,
Որ երկաթի ժանիքներով
Պատառեց եւ խորտակեց,
Ցետոյ յետոյ ստրջացան,
Երբ յանախեց հիւանդութիւն.
Վաղվաղեցին առ Մեծ բժիշկն
Կորիզլուխ խոնարհելով,
Պաղատէին մեծազոչ:
Ո՜վ, Հայրագութ դու մեր հովիւ,
Մեղա՜յ գոչեմք առաջի քո,
Մեք թիւրեցաք քո սուրբ խրատէն
Վանառեցինք ազատութիւն.
Ստրկացանք յիմարաբար,
Մեզ պաշարեր է յամեննուստ
Թէ ի ներքուստ թէ արտաքուստ
Մեզ աշարեր է յամեննուստ,
Մահաստուեր հիւանդութիւն
Հրապաշտ ազգին հուր ճարակեալ
Վառեց լափեց ողջ Հայոց տուն:
Ո՜հ, մեռանիմք, մեռանիմք,
Դեղ ու դարման ժտեմք, Սուրբ Հայր:
Մեծազորով Սահակ Պարթեւ,
Ցօգւոց հանեալ խորոց սրտէն,
Պատասխանեց իւր վերջաբան:
Հիւանդութիւն առ ի մահ է,
Եւ չէ նման Ղազարոսին,
Ո՜հ, ես չունիմ դեղ ու դարման,
Դուք բացիք դուռ ձեր կորստեան.
Եւ ո՛վ կարէ փակել զայն:
Դուք մահ բերիք Հայոց աշխարհ,
Դուք մեռուցիք ազատութիւն

Եւ տի մեռնիք սարկութեամբ.
Դուք մեղապարտ Արտաշիր,
Հանիք ատեան որ ես դատիմ,
Քրիստոսի բան յուշ առնեմ ձեզ,
Թէ ո՛վ ձեզմէ արդար, սուրբ է
Թող քար արկցէ Արտաշիրին:
 Հազար անգամ աղաչեցի,
Որ իմ հօտին հիւանդ ոչխար,
Դուք մի փոխէք գազանին հետ,
Որ կարծէք թէ առողջ է,
Հոգւով հիւանդ անհաւատ է,
Ջարիք ի միտ կնիք հաւատոյն
Աւազանին մկրտութեան:
 Հինաւուրց Արարատի,
Բարձր կողնի ծառի վէրէն,
Բոյն էր դրել մեծ Արագիլ,
Պարթեւական Արշակունիք:
Հայ ժողովուրդ զերթ ճնճղուկ,
Ապաւինէր բունին ի շուրջ:
Բոյն քանդեցիք մեծ արագլին,
Եւ նետահար արարիք զայն.
Թռաւ գնաց վիրաւոր,
Ո՜հ, արագի՛լ, արագի՛լ.
Էլ չը դարձաւ նա ի յետս:
Առիք տապար, հարիք ուժգին,
Ծառն արմատէն տապալեցիք,
Ցուք հովանին բարձիք երկրէն,
Արեւապաշտ ազգին կրակ,
Պիտի վառէ զձեզ չարաչար:
 Է՜, դուք անզօր ճնճղուկներ,
Ո՞ւր տի գտնէք ձեր ապաւէն.
Եւ ես գիտեմ դուք զինչ առնէք:
Անմիաբան բաժան հոգին,
Քանդել է զձեզ միութենէն,
Դուք իրարմէ անջատ, անկախ,
Անմատչելի բարձանց վէրէն,
Դնէք ձեր բոյն ինչպէս արծուի,
Շինէք ամուր ամուր բերդեր,
Եւ անձնապահ ապաստանիք:
 Իսկ Հայոց տուն եւ ժողովուրդ
Լքեալ թողուք բաց անտէրունչ,
Մեր հայրենեաց թշնամւոյն ոտք,
Կոխեն, ճմլեն ինչպէս խաղող:
Եւ ի՛նչ փոյթ ձեզ խեղճ ժողովուրդ.
Յո՜ւշ, յուշ առնեմ ձեզ չար հետեւանք,
Եւ չարադէպ մութ ապագայն.

Դուք մոլորեալ անհեռատեսք,
Ձառնուք ի միտ վախճանին ելք:
Այլ ես այժմէն զուշակեմ ձեզ,
Այն չարաբեր դժպատեհ օրն,
Երբ աւերի երկիր Հայոց,
Եւ չքանայ Հայ ժողովուրդ,
Ամայանայ մեր հայրենիք,
Դուք ո՞ւմ իշխան լինիք, ասէ՛ք,
Անշուշտ եւ դուք ի միասին
ժողովուրդին հետ կորնչիք:
Պատգամախօս մարգարէն,
Ձայն կուտար Յակոբայ տան,
Ո՛վ Իսրայէ՛լ Իսրայէլ,
Քո կորուստ քո տնէն է,
Եւ ոչ երբէք օտարէն:
Նոյն եւ ես կրկնեմ այսօր,
Ո՛վ, անլսող տուն Հայոց,
Կորուստ քո միշտ ի քէն է
Ո՛չ Պարսկէն եւ ոչ Յոյնէն:
Այլ դուք որդիք եղջերիկք
Խցիք ամուր ձեր ականջներ,
Որ չը լսէք Հօր խրատներ.
Այսուհետեւ կերիջիք դուք
Դառըն պտուղ ձեր արդեանց:
Գնացէ՛ք գնացէք, ով նախարարք
Ես վշտահար եմ վշտահար,
Ձիս մի առնէք անհանգիստ.
Ապաշաւանք ապաժամ է:
Թողէք ողբամ ես զկորուստ
Արշակունեան թագին հզօր.
Թողէք ողբամ ես զթաղումն,
Ստրկութեան գերեզմանին.
Երկնային արդարութեան,
Թաթն գրեց ինձ յանդիման,
Որէս անդ ի Բաբելօն,
Բաղդասարի պալատի յորմ,
Ես կարդացի, ողբացի յոյժ,
Դատավճիռն արձակուած է,
Ազատութեան թագ վերացաւ,
Եւ Հայաստան ստրկացաւ:
Անցելոյն այս յիշատակ
Երբ յուշ գան ինձ, լինիմ անյուշ,
Սիրտս եւ հոգիս իմ տոչորի,
Թողում անցնիմ բանիս կարգ:
Ասի տա՛նտկին, մնաս բարով,
Օրհնեալ լինիս դու եւ քո տուն,

Աշխատաւոր զաւակներով,
Հարսներով եւ թոռներով.
Աբրահամու տան օրհնութիւն
Աստուած թափէ քո տան վերէն
Գեղացու տուն թող չէն մնայ,
Դէմ հիւրերուն միշտ բաց լինի:
Մամիկ խնդրեմ քեզմէ մի բան,
Ճամբաս երկար է, շատ երկար,
Տուր ինձ քանի մի թաժա հաց,
Դնեմ ի պարկ ճամբուս պաշար:
Ասաց մամիկ իւր հարսներուն,
Կեօնդ մի փոխինդ պատրաստեն շուտ
Ցամաք հացին հետ թող ուտէ.
Շնորհակալ եմ, ասի մամիկ,
Ելայ տնէն ես ի դուրս:
Հպարտ հոգիս իմ յուզուեցաւ
Այնչափ կարե՞մ ես հեզանալ
Նման երկնաւոր վարդապետին:
Ատ ես լացի դառն իմ վիճակ,
Կրկնեցի նոյն ողբերգականս,
Ողբա՛մ զքեզ Հայոց աշխարհ,
Մովսէսն եղեր է մուրացկան:
Տմարդի ցուրտ իմ եղբարք,
Զիս դուրս հանին սեղանատնէն.
Որք ուտէին լի կշտապինդ
Ժողովուրդին սեղանէն.
Ասեն Մովսէս Հայ ժառանգ չէ,
Աթենացի Յոյն է նա,
Զունի բաժին մեր սեղանէն:
Ես համարիւն հայրենակից,
Մշոյ երկրի զաւակ Մովսէս,
Ժողովուրդի լի սեղանէն
Ո՛հ, զրկեցին ու մերժեցին,
Եւ ես մնացի կարօտագին:
Թէ վանականք փակեցին դուռ,
Բաց էր քո դէմ արձակ արձակ,
Մեր հիւրասէր գիւղացւոց դուռ,
Հէ՞ր դու տրտունջ հանես, Մովսէս,
Թէ կարօտ եմ, եւ յոյժ կարօ՛տ,
Ո՛ տայր ինձ հաց եւ կերակուր.
Ես մարդ եմ, հացով կապրիմ,
Զեմ ես հրեշտակ անկերակուր:
Ո՛վ սիրահար դու դպրութեան,
Ի՞նչ փոյթ էր քեզ թէ ջուր թէ հաց,
Թէ փակ էր քեզ վանքերու դուռ,
Թող երթայիր խորենոյ քո գեղ,

Հայրենի տուն հանգիստ էր քեզ:
Միթէ վաղուց մեռա՞ծ էին
Հայրենի տան ողջ ընտանիք,
Եւ տուն անշէն էր մնացեր:
Դու խաչակիր եւ ուխտադիր,
Վաղ իսկ թողիր եւ մոռացար
Հայրենի տուն, յոր դու ծնար,
Ուր կապեցին քո խանձարուր,
Եւ կնքեցին Մովսէս անունդ:
Հայ ժողովուրդ չէ մոռացել,
Աւանդաբար խօսի նա բան,
Քանի՞ դժար է հաւատալ,
Թէ մեր Մովսէս Խորենացին
Հոգեպահիկ հացին կարօտ՝
Թողեր գրիչ, թողեր գրքեր,
Գնացել ջաղցպան է եղեր:
Լուր տարէք եւ աւետիս
Առ վանական եղբարս ուխտին,
Թող գնծան, ուրախ լինին,
Քերթողն եղեր է ջաղացպան,
Թողեր գրիչ, առեր կռան,
Ջաղցի քարերն է սրում.
Որ ուսուցիչ էր եւ կրթիչ,
Քերթել զմիտս Հայոց մանկտւոյն,
Աւա՛ղ, իբրեւ անուս գեղջուկ,
Արդ ջաղացին է ծառայում:
Արագ արագ պտոյտ առէք
Իմ ապաւէն ջաղցի քարեր,
Մանր աղացէք, ալուր ածէք,
Հաց պատրաստէք Հայոց ազգին,
Դեռ նա միայն հացով կապրի,
Չէ պէտ աւէ բան եւ ուսումն:
Եւ վանական կրօնաւոր հարք
Նոյն կրկնելով քարոզէին,
Զի՞ փոյթ է մեզ խոր գիտութիւն,
Լինել բանգէտ Փիլիսոփոս,
Բաւ է եւ շատ Դաւթին սաղմոս,
Զոր ի բերան առեալ ասեմք,
(Այո՛ առանց միտ առնելու)
Թէ ի խցին եւ տաճարին,
Տիւ ու գիշեր պաշտեմք զՏէր:
Այլ ինձ այսպէս վիճակեցաւ,
Ի ջաղացին պաշտել զՏէր:
Նոյ արդար ի տապանին,
Որ տատանէր ջրոց վէրէն,
Ի տատանման պաշտէր զՏէր,

Մինչեւ տապան դադար առեց
Մասեաց գլուխ նաւահանգիստ։
Աբրահամ մեծ նահապետ,
Թէ ի վրանին թէ ի դաշտին,
Բացօթեայ երկնից առաջ,
Մեծ հաւատով պաշտէր զՏէր։
Յակոբ ծառայն Աստուծոյ,
Ի Բեթէլին պաշտէր զՏէր․
Ուր տեսանէր տեսիլ հրաշքին․
Աստուած իջեր էր ի Բեթէլ,
Իւր ծառային օգնական․
Սնարին քար կանգնէր արձան,
Եւ օծելով սրբագործէր․
Ի յիշատակ սուրբ տեղին։
Եւ գեղեցիկըն Յովսէփ,
Դաւաճանեալ եղբայրներէն,
Եգիպտոսի խաւար բանտին,
Պաշտէր Աստուածն Իսրայէլի։
Սինայի անապատում,
Ուր Մորենին բոցավառէր․
Հովիւ Մովսէս կօշիկ հանէր,
Եւ ափշելով պաշտէր զՏէր։
Վիրալից նահապետ Յոբ,
Լքեալ թողեալ ընտանիքէն,
Վէր աղբիւսին օթագայէր,
Անյուսահատ պաշտէր զՏէր․
Պայքար մտաւ ոսոխին դէմ,
Յաղթանակեց սատան չարին։
Դանիէլ ի Բաբիլօն,
Իւր պալատի պատուհանէն,
Որ հայէր դէպ Երուսաղէմ,
Աղօթէր առ սուրբ տաճար,
Ում արգելուած էր աղօթել։
Յօնան փախչող Մարգարէն,
Ըմբռնեցաւ ի մեծ կիտէն,
Ի խոր ծովուն ձկան փորէն,
Աղաղակէր պաշտէր զՏէր։
Իսկ Յիսուս խաչին աւուրս,
Սողոմոնին տաճար թողուց,
Իջաւ պարտէզ Գեթսեմանի,
Ձիթաստանեայց ծառերուն տակ,
Աղօթելով պաշտէր զՀայր։
Հապա մոռնա՞մ մեր լուսատուն,
Լուսաւորիչ Հայոց ազգին․
Որ անլոյս եւ անարեւ,
Արտաշատի խոր վիրապին․

Անօրինակ ճգունն կրէր·
Գետնի տակէն պաշտէր զՏէր:
Վա՜շ երջանի՜կ եմ երջանի՜կ,
Յորեկն արեւ գիշեր լուսին:
Երկնից անհուն ցոլցոլ աստղունք,
Հապա երկրիս վայելչութիւնք,
Դաշտեր լեռներ ծառն ու ծաղկունք,
Կարկաչահոս աղբերակունք,
Արաքս, Եփրատ դրախտի գետեր,
Ձմռնամ եւ իմ ջաղցի առուն,
Ուռինազարդ եւ զովաշունչ,
Եւ երաժիշտ երգող թռչունք,
Որ սփոփեն սիրտ իմ տխուր:
Եւ այս ամէն ես վայելեմ,
Եւ փառքս տամ ստեղծողին,
Գետնի երես ի ջաղացին,
Ուրախութեամբ պաշտե՛մ զՏէր:
Աղօթարան է տիեզերք,
Ուր որ լինի մարդ երկնից տակ,
Կարէ պաշտել իւր տէր Աստուած:
Է՜ ջախջախիկ, ջախջախիկ,
Հետ քեզ խօսիմ անխօս փայտիկ
Դու իմ ջաղցի խօսնակն ես,
Ձէնդ անդիւր է, բայց ազդարար·
Երբ լսեմ ձէնդ ապահով եմ,
Թէ իմ ջաղաց սազն է բանում,
Իսկ երբ կտրի ձէնդ ականջէս,
Ես խոր քնէն զարթնում ի վեր,
Ո՛հ ջաղացին ջուրն է կտրեր:
Այսօր տօն է Ծննդեան,
Արի հետ քեզ տօն կատարեմք·
Չունիմք տաճար մեք փառաւոր,
Ի ջաղացին կատարեմք տօն·
Ես վարդապետ, դու էլ դպիր,
Ես երգեմ զիմ Շարական,
Խորհուրդ մեծ եւ սքանչելի,
Աստուած իջեր է ի մսուր,
Դու էլ երգէ քո կուկլուկուն:
Երրորդ պահն է գիշերուան,
Խօսիր հաւիկ, կրկնէ երիցս,
Թէ իմ եղբարք ուրացան զիս·
Երանի՜ թէ· Պետրոսի պէս
Յետ ուրացման գային ի զեղջ,
Լայի՛ն լային դառնապէս:
Ոչ լացին, ոչ զղջացին,
Ոչ յիշեցին ոչ հարցուցին,

Ո՛ւր է Մոսկուա, չէ ի միջի:
Մի՛ որոնէք զիս ի տաճար,
Հանդիսադիր տօնակատար,
Դասակից ընդ իւր եղբարս,
Հրաշափառ սուրբ Յարութեան
Տօն կատարէ երգակցելով,
Աւետիս տայ ցնծութեան,
Քրիստոս յարեաւ ի մեռելոց:
Մի՛ որոնէք ի ճեմարան
Եւ կրթարան Հայոց մանկտույն
Հայկական եւ Յունական
Ձոխ դպրութեանց ղեկավարող·
Ուսուցանող եւ վերծանող
Նոր արուեստիւ Աթենական:
Այլ եկէք դուք ի Տարօն,
Յաշտիշատ, Եփրատին մօտ
Ի ջաղացին գտէք Մոսկէս·
Միթէ կարէ՛ք զիս ճանաչել,
Հնոտի ցնցոտ եմ սեւազգեստ
Ալրի փոշով է ծածկուեր,
Ես չեմ մոռնար գիրն ու գրիչ,
Դեռ եւս տքնիմ ես անպարապ,
Անդադար ջախջախի ձայն
Չի շփոթեր միտք իմ ազատ,
Ինչպէս մարդոց չար լեզուներ:
Պատմութիւն Հայոց ազգին,
Գրել խնդրէ Բագրատունին,
Եւ ո՞ւր գրեմ, ի ջաղացի՞ն,
Ուր չիք դարան եւ ոչ մատեան:
Ես ողբ գրեմ ի ջաղացի՞ն,
Եւ զի սրտիս իմ դառնացած
Ողբն է միայն դիւր սփոփանք:
Փոթորկեալ ծփող ալիք
Խռովեալ նաւակս իմ վարեցին·
Ջաղաց գտայ նաւահանգիստ,
Թէ ապրիմ եւ թէ՛ մեռնիմ,
Մօտ ի ջաղաց թող թաղեն զիս:
Լուր տանին, աւետիս տան
Հեռու եւ խեռ եղբայրներուս,
Մեռաւ Մոսկէս եւ թաղեցին,
Թող հանեն ոխ սրտերէն:
Ոխն ու վրէժ սահման ունին,
Մինչեւ ի մահ եւ գերեզման:
Ո՛հ, ես այժմէն կասկած ունիմ,
Միթէ կարէ՞ մարդ հաւատալ,
Թէ ապիրատ անհաշտ ոգիք

Աhեղ ռնիր մտաբերեն,
Գերեզմանիս հետ խաղալով,
Անօրինակ վրէժ լուծեն.
Տէր, մի թողուր, ցրուէ խորհուրդ:
Այլ ինձ ի՞նչ փոյթ մարմնոյն համար,
Որ շնչաւոր սերմն է ի հող,
Երբ զգենումք մեր հոգեւորն,
Պօղոսն էր մեր երաշխաւոր:
Տէ՛ր, աղաչեմ, դու ներելով,
Մի համարիր նոցա այն մեղք.
Չունիմ տրտունջ զՔէն, ով Տէր,
Թէթեւ խաչիկ տուիր ինձ բաժին,
Ոչ մահու փայտ եւ ոչ բեւեռ,
Ոչ արիւն ոչ կողին խոց,
Միթէ պարծի՞մ ես խաչակիր,
Միայն արքի քացախ լեղի
Դառն ու կծու լեզուներէն:
Մի բարեկամ ունէր Մովսէս,
Շատ ի վաղուց նախածանօթ,
Նորա անունն էր Մոսիկ,
Հարուստ էր նա եւ ջաղցի տէր.
Սա դրացի էր Մովսիսին
Եւ միշտ կուգար եւ կայցելէր,
Ջաղցի գործեր կարգադրէր,
Նա ճանաչում էր Մովսիսն,
Մեծ վարդապետ Հայոց ազգին.
Երբ տեսնում էր, սիրտ զորովէր.
Ո՜հ, Եկեղեցւոյ սուրբ վարդապետ
Ի՞նչ բան ունի ջաղացին հետ:
Մի օր տեսաւ Մովսէսին դէմք
Որ շատ տխուր էր եւ տրտում.
Հարցուց Մոսիկ իւր մտերիմ,
Ինչո՞ւ այդչափ, Պատուական Հայր,
Դու տրտում ես աչերդ ի լաց:
Ասաց Մովսէս մահս մօտ է,
Ես անցուցի քան հարիւր ամն,
Ըսպասեցի՜, ըսպասեցի՜,
Սիմէօնի ծերունւոյն պէս,
Հայաստանի փրկութեան օր,
Տեսնել մանուկն ի գրկիս,
Մխիթարեալ պաղատէի,
Տէր արձակեա զիմ հոգիս.
Ո՜հ, չտեսած մեռանիմ ես:
Կտակ ունիմ, ազնիւ Մոսիկ,
Նուիրական է իմ կտակս,
Քեզ կաւանդեմ եւ միայն քեզ,

Դու կատարէ յօժարակամ:
Երբ կը մեռնիմ, թաղէ դու զիս
Մօտ ջաղացի ուռենեաց տակ,
Կանչէ միայն մի քահանայ
Յաշտիշատի Տէր Սահակ:
Չեն պիտոյ ինձ հանդէս թաղման,
Ոչ մեռելի զանձ լալական,
Ոչ շարական որոտնաձայն,
Բաւ է եւ շատ, ես հաւատամ,
Մի հանգստի Աւետարան.
Թող թաղէ զիս քահանայն
Եւ կնքէ իմ գերեզման:
Մի խաչաքար պարզ եւ անզարդ
Կանգնէ գլխոյս ի յիշատակ,
Այսպէս դրոշմէ արձանագիր:
Աստ հանգչին մաշեալ ոսկերք
Մովսիսի խորենացւոյն
Որ ողբաց Հայոց աշխարհ,
Ի վերջն եղաւ Նա ջաղացպան,
Եւ թաղեցաւ ջաղացին մօտ.
Որ անցանէք, ո՛վ ազգ Հայոց,
Մի մոռանաք, դուք ողորմիս
Մովսիսի՛ ողբացողին:
Մի այլ կտակ էլ կաւանդեմ,
Զմոռանաս եղբայր Մոսիկ,
Իմ անուն եւ յիշատակ
Ամէն տարի մեռելոցին
Իմ գերեզմանս դու օրհնել տուր.
Յաշտիշատի քահանային.
Եւ մի մունիկ(1) մաքուր ալուր,
Նուէր արա Սուրբ սեղանին,
Նխշար գործէ պատարագէ,
Յիշէ հոգին խեղն Մովսիսին:
Իսկ իմ ջաղաց քեզ նուիրեմ,
Յետ իմ մահուս դու տէր լինիս.
Միայն ջաղցի եկամուտէն
Աղքատներուն բաժին հանես.
Կօրհնեմ զքեզ, բարի Մոսիկ,
Որ դու ապրիս երկար ամօք,
Քո ջաղացներդ յաջող բանին.
Եւ չկարի ջուրն յականէն:
Մի օր խռոված ջաղցպան Մովսէս

(1) Մունիկ, փոքրիկ մի չափ է մաղի նման, զոր վանեցի ջաղացպաններ կը գործածեն, ցորեն աղալու վարձք առնելու համար:

Ելեր Ճստեր ջաղցի գլուխ,
Ողջ փոշոտած շնորհալի դէմք
Գուց զուց ջրով կուշտ լուացեր,
Լուացեր եւ զուարթացեր.
Թուղթն ու գրիչ առեր է ձեռք,
Հետ լացեր է հետ գրել է.
Ողբամ զքեզ Հայոց աշխարհ,
Թափեր արցունք ջրի առուն,
Առուն տարեր մինչ Եփրատին,
Եփրատ տարեր մինչ Ովկիան
Խորենացուն յորդ արտասուս,
Հասեր մինչեւ Ովկիանոս:
Եփրա՛տ, Եփրա՛տ եւ զիմ կաթիլ
Խորենացու արտասուաց հետ
Տար եւ խառնէ քո ջրերուդ:

Անցել, գնացել քան հազար ամ,
Մովսէս ողբաց Հայոց աշխարհ,
Ողբով կնքեց իւր գերեզման.
Յետնոց կտակ թողուց ողբեր:

Ո՛վ դու հոգի ողբանուէր,
Հայոց ազգի Երեմիաս,
Նա ողբաց Երուսաղէմ,
Յիսուս ելաց Երուսաղէմ,
Իսկ դու լացիր եւ ողբացիր
Քո հայրենի Հայոց աշխարհ:

Ո՞ւր ես այժմիկ, թողեր ջաղաց,
Ելար, մտար լուսոյ կայան,
Ուր գտար դու Սահակ, Մեսրովպ,
Քո անձկալի հոգեւոր Հարք,
Դադար առին ողբերգ ու լաց:
Դու լռեցիր, այլ քո ողբերդ
Պիտի խօսին մինչ յաւիտեան.
Հէ՞ր չտարար հետ քեզ ողբերդ,
Եւ յետ մահուդ չմոռացար,
Կտակթողեր մնացորդաց.
Շարունակե՛լ, շարունակե՛լ:
Քո կտակ կատարի միշտ,
Դու մի հոգար, հանգիստ եղիր,
Ողբացեալ Մայր Հայաստան
Ծնանի նա միշտ իւր ողբերգակ:
Շատ են եւ շատ ձայնարկուք.
Եմ, եմ եւ ես մի ձայնարկու
Շարունակող ողբերգութեանդ,
Ցորչափ շնչէ շունչն ի հոգիս,
Մովսիսի ողբացողիդ
Կտակակատար ՀԱՅՈՑ ՀԱՅՐԻԿ:

ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ

# ԾՐԱԳԻՐ

# *ԲԱՐԵՆՈՐՈԳՄԱՆՑ*

Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱՐԱՆ Ց. Գ. ՓԱԼԱԳԱՇԵԱՆ
1909

# ԲԱՐՆՈՐՈԳՄԱՆՑ ԾՐԱԳԻՐ



*Այսպէս կը համարիմ եւ կը հաւատամ այժմէն որ գաւացի գիւղական ժողովրդոց այցելութեան ժամանակն հասած է, քանզի քիւրտերուն բարեկարգութեան խնդիրը Բ· Դրան ուշադրութիւնը գրաւած է այսօր· որոյ վասն Յանձնաժողովդ կարգուած է բարեկարգութեան ծրագիր մը պատրաստել· ուստի բաղդ եւ պարտք կը համարիմ ինձ՝ եթէ յաջողիմ սոյն տեղեկագրովս մասնակից գտնուիլ այդ վերանորոգ եւ աշխարհաշէն ջանից, որոց ձեռնարկութիւնն ու նպատակը Կայսերական երկրին նոր կեանք, նոր յառաջդիմութիւն եւ նոր փառք կը խոստանան:*

*Չը գիտեմ, գաւառապետ պաշտօնեայք մինչեւ ցարդ ընդհանրապէս Քիւրտերու ներկայ դրութեան համար ի՞նչ տեղեկութիւն հաղորդած են Բ· Դրան· եւ կամ թերեւս այնպէս կարծուի թէ Քիւրտերն նոյն են՝ ինչպէս էին երբեմն՝ աստի իբր երեսուն տարի յառաջ· մինչ յայտնի ապստամբք էին տէրութեան դէմ եւ իրենց այլ եւ այլ ցեղապետներով կը տիրապետէին ժողովրդոց վերայ, զոր օրինակ անուանի Պէտրխան պէյ, Խան Մահմուտ, Խան Աւտալ, եւ այլն, զորս առ հասարակ նուաճեց, նկուն դարձուց յիշատակաց արժանի Օսման փաշան· ուստի Քիւրտերուն բոլոր ցեղապետաց մէջ երբէք մի յայտնի եւ զօրաւոր ապստամբ չկայ· եւ իրենց այժմեան դիրքով բնաւ նշանաւոր զօրութիւն մը չեն կազմեր, որոց բնակութիւնը եւ սահմանը գրեթէ խիստ ցիր ու ցան վիճակի մէջ է, եւ ընդհանրապէս ամփոփուած են Տիգրանակերտի, Կարնոյ կուսակալութեանց եւ առաւել մեծ մասամբ Վանայ Միւթէսարըֆութեան ներքեւ, որոց ընդարձակ սահմանին մէջ տարածուած են մինչեւ Պարսից եւ Ռուսաց սահմանագլուխը: Իսկ հարաւոյ կուսէ Տօրոսի լերանց գօտիներէն սկսեալ մինչեւ Բաբելոնի սահմանները կը հասնին:*

*Քիւրտերու ցեղապետները թէեւ հազար կամ հինգ հարիւր տուն եւ վրան ունին իրենց առանձին առանձին տիրապետութեան ներքեւ, սակայն այդ ցեղերն ու ցեղապետները ի բնէ անտի միշտ թշնամի եւ անհաշտ հակառակորդ են միմեանց հետ, ինչպէս Հէյտէրանցի կոչուած ցեղը՝ Հասնացի եւ Ճիպրանցի ցեղերուն դէմ· Նմանապէս ուրիշ ցեղ մի՝ ուրիշ ցեղի դէմ ոխ եւ թշնամութիւն տանելով՝ միշտ իրենց սովորական գործն է իրարմէ յափշտակել, աւարել, սպանանել եւ մերթ եւս կատաղի վրէժխնդրութեամբ իրենց ցեղերով բանակ կը կազմեն եւ միմեանց վրայ կը յարձակին, որոց կռուոյ ասպարէզը՝ երկրագործ ժողովրդոց դաշտերն, անդաստաններն են, որք առհասարակ նոցա անկարգ հրոսակաց առաջ առաթուր*

կը կոխոտուին եւ իրենց ամէն վաստակ ու ստացուածք աւարառութեան կը մատնուին: Շատ զարմանք է այս, Տէրութեան երկրին մէջ գինուորական բանակին մօտ, տեղական կառավարութեան աչքին առաջ ի՞նչպէս կը համարձակին նոքա կռուոյ բանակներ կազմել. եթէ այնպէս կարծուի թէ տեղական կառավարութիւն իւր սահմանապահ զօրքերով կարող չէ Քիւրտերու արշաւանքները զսպել, սուտ կը խօսիմք. այլ ստոյգ խօսելով պէտք է խոստովանիմք թէ տեղական կառավարութիւնք այս մասին շատ պարտապանց գտնուած են իրենց պաշտօնին մէջ եւ պատասխանատու Բ. Դրան առաջ:

Վասն զի եթէ նոքա արթուն կառավարութեամբ հսկեն, եթէ Քիւրտերու ցեղապետները եւ Թօսուն կոչուած տոհմական Սեպուհները հաստատուն երաշխաւորութեամբ զսպուին, եւ մերթ եւս նոցա խիստ ոճրագործ հարստահարիչները անաչառ օրինօք պատուհասին, եւ երբ տեսնան ու հաւատան քիւրտերն թէ իրենց չարութեան պատիժ կայ, անհնարին է որ նոքա իրենց այժմեան տկար դրութեամբ կարենան խլրտիլ եւ Տէրութեան երկիրն ապականել:

Ուստի ճշմարտութեամբ պէտք է այս եզրակացութիւն հանեմք թէ Քիւրտերուն բազմադիմի հարստահարութիւնք՝ իրենց վայրենութենէն ու զօրութենէն չէ այնչափ, որչափ տեղական կառավարութեանց անփոյթ եւ ապիկար դրութենէն, եւ մերթ եւս նոցա նպատակաւոր թոյլտուութենէն, որպէս գի տուիթ ունենան մեծամեծ կաշառառութեամբ, այսինքն, ոչխարով, իւղով, պանրով, նժոյգ ձիերով, գեղեցիկ գորգերով եւ ոսկւով իսկ տուժել զՔիւրտն:

Ո՞վ չգիտեր եւ չվկայեր թէ երբ տեղական կառավարութիւնք կը զեղծանին եւ այս կերպով կը վարին իրենց քաղաքային պաշտօնին մէջ, որ խսպառ ընդդէմ է Տէրութեան կամաց եւ օրինաց, Քիւրտերն եւս իբրեւ իրաւունք կը համարին իրենց կաշառատուութեանը փոխարէն՝ երկրագործ ժողովուրդը հարստահարել, եւ առ այս՝ նոքա փաստ եւս ունին եւ յառաջ կը բերեն ասելով, թէ մենք եւս կառավարութենէն կը հարստահարուինք. շատ ճիշդ է թէ որ այնպէս դատենք թէ Քիւրտերը կերպով մը չարժական եւ չահատու կալուածներ եղած են տեղական կառավարութեան ձեռք:

Հանապազօրեայ փորձ եւ իրողութիւնք կը հաստատեն զայս. վասն զի երբեմն ինչո՞ւ համար արդեօք Քիւրտերուն հարստահարութիւնք փոքր ինչ կը դադրին եւ երկրագործ ժողովուրդը պահ մը չունչ կ՚առնու. այդ յայտնի է, զի երբ տեղական իշխանութիւնք արդար եւ սաստող իշխանական արժանաւորութեամբ կը կառավարեն, գիտեն թէ ամէնքը կրթեալ քաղաքացի դարձեր են: Քիւրտերը թէպէտ քաղաքներէ եւ քաղաքային կրթութենէ հեռի՝ լեռնական կիսավայրենի ժողովուրդ կը համարուին, սակայն շատ սրամիտ եւ շատ ճարտար են, եւ իրենց երկրին քաղաքականութեան խաղեր եւ հաշիւներ

քաջ գիտեն. նոքա՝ երբ նոր կուսակալ եւ կառավարիչ մ'երթայ, լեռան գլխէն աւագ աչքով կը դիտեն. մի քանի անգամ կը փորձեն եւ այնուհետեւ գիտեն որոշել իրենց ընթացքը, եւ թէ տգէտ եւս լինին, Քիւրտերը շատ ուսուցիչ վարժապետներ ունին, լրտեսներ ունին, նոյն իսկ կառավարութեանց տուները, որք ի հարկին պաշտպան եւ ներկայացուցիչ են, որով շատ անգամ նոցա շնորհիւ սիրով կը տուժեն. բանտէ եւ պատուհասէ կ'ազատին եւ դարձեալ ապահով լինելով՝ վերստին կ'սկսին իրենց հայրենի արուեստը:

Խօսինք այժմ Քիւրտերուն ուժին եւ զօրութեան վերայ, որոց համար թերեւս տեղական կառավարութիւնք անգիտութեամբ՝ սխալ տեղեկութիւն հաղորդած են Բ. Դրան, որպէս թէ Քիւրտերն ահաւոր զօրութիւն մի կը կազմեն եւ կամ թէ նոցա կարգադրութեան համար տէրութիւնը կը պարտաւորի զօրաց բանակներ հանել եւ մեծ գանձ մսխել:

Նոքա եթէ այսպէս կը խօսին, կը գրեն եւ կը համոզեն զԲ. Դուռն, անշուշտ նոցա նպատակն այն է, զոր վերագոյն բացատրեցի անպատրուակ կերպով թէ Քիւրտերու ազատ եւ անսանձ կեանքը տեղական կառավարութեանց համար շահաբերութեան մշտնջենաւոր կալուած մըն է եւ նոցա յոռի նպատակն այն է որ այդ կալուածը յարատեւէ, բնաւ չի խորհելով եւ չը հոգալով թէ Քիւրտերուն այդ ինքնագլուխ դիրք եւ վիճակ՝ Տէրութեան անսպառ գանձ կը վատնէ, երկրին շահ եւ բարգաւաճումը կը քանդէ, աշխատասէր երկրագործին վաստակը կ'աւարէ եւ շատ անգամ եւս ցորենի եւ խոտի դէզերը բարբարոս վրէժխնդրութեամբ կը հրկիզէ, գիւղացին առանց հացի եւ անասուններն առանց դարմանի կը թողու ձմրան սառնամանեաց օրերուն մէջ:

Քիւրտը հերկագործ խոփին երբեք կարեւորութիւն չըտար. նա մանգաղ եւ գերանդիէն իրեն համար զէնք կը ձուլէ: Քիւրտը զէնք ունի եւ կը կրէ, այլ զինուոր չէ. երկրի արքունական տուրքերուն բնաւ մասնակցութիւն չունի, բաց ի ոչխարի տուրքէն, եւ այն եւս ըստ մասին առանց հաշուելոյ. դաշտային եւ լեռնային հողերուն ամենապատուական եւ արդիւնաբեր մասն իրենք գրաւած են, առանց բնաւ կալուածագրի. սխալ չէ՝ թէ որ ըսենք թէ իրենց սահման եւ կալուածագիրը Տէրութեան օրինաց անգործածութիւնն է:

Ստոյգ է որ Քիւրտերը հին ժամանակուան պէս գիւղերը տուները չեն ձմերեր. նոքա այժմ շատ գիւղեր շիներ են. բայց մայն ձմրան համար, եւ երբ գարուն գայ՝ նոքա դարձեալ ըստ մեծի մասին լերանց հովասուն վայրերը վրանաբնակ կը շրջին, միշտ տեղէ տեղ փոփոխելով, եւ ասով մեծ դիւրութիւն ունին նոքա իրենց ամէն աւար յափշտակութիւն ամարան մէջ կատարել: Այդ թափառաշրջիկ Քիւրտերու համար ձի եւ զէնք շատ է եւ բաւական. նոքա կարող են այդ փոքրիկ դրամագըլխով տարին բոլոր ձրի հաց ուտել հաւով եւ հաւկիթով հան-

դերձ, միանգամայն եւս ձիերուն առատ առատ գարի կերցնել․ վա՛յ ա՛յն գիւղացւոյն որ քիւրտ մի գոհութեամբ իւր տունէն դուրս չը հանէ, զի քիւրտին վրէժխնդրութիւն արագ արագ կը հասնի իւր վրայ․ եզներն ակօսէն եւ ոչխարներն ի դաշտէն կը յափշտակուին եւ կը տարուին:

Հարստահարեալ անճարակ գիւղացին միթէ կը համարձակի՞ տեղական կառավարութեան առաջ բողոքել իւր զրկանաց համար, զօրհանապազ աչքին առաջ բերելով ապագայի վրէժխնդրութիւնը: Եւ մինգամայն քիւրտն իրեն դրացի ըլլալով՝ միշտ նորա վրէժխնդրութեան ենթակայ է․ թող այս, ստոյգ եւ փորձով գիտէ նա՝ որ քիւրտն իւր սովորական կաշառատուութեամբ կարող է դարձեալ ազատիլ կառավարութեան ատեանէն եւ այնուհետեւ լուծել իւր վրէժը:

Քիւրտին համար ոստիկանութիւն չըկայ, շատ զարմանալի է այս կէտը, վասն զի ոստիկանութեան կարեւորութիւն եւ հսկողութիւնը միայն տեղական կառավարութեանց եւ քաղաքներու մէջ ամփոփուած է: Նոյնպէս զօրանոցներն եւ զինուորներն․ որպէս թէ այդ պահպանութիւնը միայն քաղաքացւոց իրաւունք լինէր, եւ շինական ժողովրդոց համար՝ ո՛չ երբեք: Եթէ քաղաքի գողերն երբեմն գիշերապահուն մէջ խիստ գաղտագողի եւ երկիւղով միայն մի քաղաքացիի տունը կը կողոպտեն, Քիւրտերն ցերեկի արեւուն առաջ առանց բնաւ ակնածութեան կարող են դաշտի հօտն ու նախիրը կողոպտել: Ի՞նչ կարող են ընել գաւառագլուխ եղած փոքրիկ պաշտօնեաներն կամ Գըրուէրտարի բռուած պահակները՝ իրենց սակաւ եւ ապիկար դրութեամբ, որք շատ անգամ նոյն իսկ խորհրդակից եւ գողադարան են աւարառու Քրդաց:

Քիւրտերու խժաբարոյ կեանք եւ նոցա հարստահարութեան ձեւերը շատ բազմադիմի են․ մենք միայն հարեւանցի յիշատակութիւն այսքան բաւ կը համարիմք: Այժմ հարկ է եւս նկատողութեան առնուլ թէ ի՞նչ եւ որչա՞փ է Քիւրտերու կարեւորութիւն եւ շահ Տէրութեան երկրին մէջ:

Աշխարհ կը վկայէ եւ Տէրութեան Գանձուն հաշիւը առ այս մեծ ապացոյց է, որ Տէրութեան երկրի բնակչաց մեծ մասն երկրագործ եւ դաշտային ժողովուրդն է, եւ հետեւապէս նոցա վաստակ եւ արդիւնքն է երկրին հարստութեան աղբիւրն եւ շահ: Քիւրտերն եւս այս շահաբեր ժողովրդոց կարգին մէջ կ՚ապրին իբրեւ դաշտային ժողովուրդ․ բայց միայն ոչխար, պաճարեղէն եւ ձի զարմանելու կը պարապին: Իրաւ է որ այս պարապումն եւս երկրագործութեան մէկ շահաբեր ճիւղն է, եթէ արդարութեամբ, օրինօք եւ տիրապէս հպատակութեամբ պարապէին եւ մշակէին այդ օգտակար ճիւղը: Բայց քանի որ նոքա ուրիշի ցանածը կը հնձեն, ուրիշի վաստակը կը կողոպտեն, ուրիշի զարմանածը կը յափշտակեն, եւ այս վարմունքով երբ վաստակաւոր երկրագործին շահերը կը բռնաբարեն, նոյն իսկ Տէրութեան Գանձուն չէ՞ այս վնասը, եւ թէ այս

*վնասուն դէմը կը համապատասխանէ՞ իրենց տուած շահը, որուն համար վերը խօսեցայ թէ խիստ դուզնաքեայ եւ աննշան է: Սակայն չեմք ժխտեր թէ Քիւրտերն բոլորովին անպէտ եւ անպիտան են Տէրութեան երկրին: Այո՛, շատ արդիւնաւոր եւ շահաբեր կը լինին նոքա, եթէ տեղական կառավարութիւնք ամէն հոգ ու ջանք տանին նոցա ներկայ դրութիւնը փոխել եւ իսկապէս երկրագործ ժողովուրդ կազմել զիրենք, եւ դժուարին չէ այս:*

*Խօսինք նաեւ Քիւրտ ազգին այլ կարեւորութեանց վերայ, զորս տեղական կառավարութիւնք գուցէ իբրեւ քաղաքագիտութիւն իմն կը համարին եւ բարւոք կը դատեն որ Քիւրտերն իրենց հին դրութեամբ մնան:*

*Նախ այնպէս կը կարծեն թէ նոքա տէրութեան բանակին համար քաջազէն հեծելազօր մի են եւ 'ի հարկին շատ պիտանի: Այս անստոյգ կարծիքը հերքելու համար բաւական է արեւելան պատերազմի դէպք՝ յորում այդ կարծեցեալ քաջ շահատակներ տէրութեան բանակին առաւել խոչընդոտներ եղան. կռւոյ ասպարէզին մէջ նոքա իրենց աւարը կ'որոնէին եւ միանգամայն եւս 'ի փախուստ կը դառնային թնդանօթին ձայնէն: Նոքա փոխանակ թշնամւոյն բանակ կողոպտելու, նոյն իսկ տէրութեանց բանակ եւ ծառայող խեղճ ժողովուրդը կողոպտեցին: Քիւրտերու քաջութիւնը սոսկ հռչակ է, եւ նոքա քաջ են միայն սորուկ եւ անզէն ժողովրդին վրայ, քաջ են աւարելու եւ կողոպտելու մէջ: Երկրորդ՝ շատ վատ, յոռի եւ թիւր քաղաքականութիւն է, եթէ մտածեն ոմանք, եւ ցաւալի է՝ եթէ կան այնպիսի անհեռատես մտածողներ, որք հակառակ մեր բարեխնամ տէրութեան կամաց եւ օրինաց՝ այնպէս կը խորհին թէ Քիւրտերն իրենց աւերիչ դրութեամբ միշտ հաստատ մնալու են, որպէս զի նոցա հարստահարիչ ձեռք ծանրանայ ու ճնշէ երկրագործ ժողովրդոց կորացեալ պարանոց. սա նպատակաւ նոքա բարդաւաճին ու զօրանան: Առաջի Աստուծոյ առաջի աշխարհի եւ տէրութեան արդար օրինաց, քրէական յանցանք եւ սոսկալի ոճիր է այս՝ տիրասէր, երկիւղած, միամիտ, վաստակաւոր, համբերատար եւ միշտ հաւատարիմ Ազգին եւ ժողովրդին դէմ: Նոքա որ այնպէս կը մտածեն, միթէ բարեկամ ե՞ն տէրութեան. խորհիլ արժան է թէ ո՞վ կը տուժէ, եթէ Քիւրտերն իբրեւ փուշ երկրագործին արտը հեղձուցանեն, տէրութիւնը իւր տասանորդ չստանայ եւ քաղաքացին իւր հացը. ի՞նչ կը լինի յայնժամ խեղճ ժողովրդին խեղճ վիճակը: Երկրէն հաց կը պակսի եւ տէրութեան գանձարանէն դրամ: Արեւուն պէս պայծառ ճշմարտութիւն մի է այս:*

*Եթէ հողագործին խոփն ակօսին մէջ դադրի, անշուշտ զինուորին զէնք իւր պատեանին մէջ կը մնայ. եւ միթէ զինուորն ինքնին ուժ ունի՞ եւ նորա բազուկները կը շարժի՞ն առանց հացի եւ զօրութեան: Երկրագործին խրճիթը երբ փլչի, ձայն կը հասնի մինչեւ տէրութեան Պալատ. ո՞վ չը գիտէ թէ աչ-*

*խարհիս Պալատներուն հաստատութեան հիմն ու խարիսխ չինական ժողովրդոց խրճիթն է: Արդ՝ ի՞նչպէս կարելի է թոյլատրել որ Քիւրտին աւերածու ձեռք հողագործին տունը քանդէ եւ պալատի սիւները խախտին:*

*Ուրեմն ժամանակ հասած է. պէտք է կայսերական երկրէն կարճին այն ամէն հարստահարիչ ձեռք, որպէս զի ոչ միայն շինական ժողովուրդ, այլ եւ քաղաքային եւ ընդհանուր Օսմանեան տէրութիւնը վերանորոգ բարեկարգութեամբ, յառաջդիմէ ի լաւագոյն ապագայ:*

*Այլ եւս կը մնայ մեզ Քիւրտերու հիմնական եւ հաստատուն բարեկարգութեան համար մի քանի կարեւոր եւ հնարաւոր դարման յիշել, եւ առ այս հրաւիրել Ցանձնաժողովդ յուշադրութիւն, որոյ յանձնուած է ամենայն խելամտութեամբ եւ իմաստութեամբ նոր բարեկարգութեան բարւոք հիմնագիծը պատրաստել:*

*Առաջին բարեկարգութեան հիմնաքարն է այս. նախ եւ առաջ Քիւրտերը իրենց արդի անորոշ եւ անսահման դրութենէն հանելով՝ յատուկ եւ սեպհական հող եւ երկիր որոշել իրենց բնակութեան համար, նոյն իրաւամբ եւ օրինօք՝ ինչպէս գիւղացի ժողովրդոց համար արդէն սահմանադրած է տէրութեան օրէնք. եւ այս առթիւ նոցա ցիրուցան դրութիւնն ամփոփելով նոր կազմութիւն տալ՝ նախ դիւրութեամբ կառավարելու համար, եւ երկրորդ՝ թէ՛* թոսուն *եւ թէ՝* սոսկան *Քիւրտերը, որք առանձին առանձին Քիւրտերու եւ քրիստոնէից գիւղերու մէջ բնակութիւն հաստատեր են, յափշտակելով խեղճ գիւղացւոց հողերը, անիրաւութեամբ հողատէր եղած են, եւ կամ թէ հող եւս չունենալով՝ այնպէս բունացեր եւ նստեր են գիւղերու մէջ. մասնաւորապէս չեմ գրեր թէ նոքա ի՛նչեր կը գործեն, զի այդ ինքնին յայտնի է: Ուստի պէտք է այդ մասնաւոր տուները բառնալ այն ամէն գիւղերէն՝ ուր կը գտնուին եւ խառնել զիրենք իրենց ցեղերուն հետ, եւ այս միջոցաւ նախ այդ գիւղերը կ՚ազատին նոցա անմիջական եւ վերահաս բռնութենէն. եւ երկրորդ՝ այլ եւս պատճառ չը մնար իրենց տիրող ցեղապետներուն, որ շատ անգամ տեղական կառավարութեանց առաջ կը ճգնին արդարանալ կամ անպատասխանատու մնալ, առարկելով թէ այդ մասնաւոր տուները ինքնագլուխ մեր իշխանութենէն եւ հսկողութենէն հեռի մնալով կը համարձակին չարիքներ գործել եւ այլն: Սոյն բարեկարգութեան հետը չի մոռնալով նաեւ բոլոր Տաճկաստանի քիւրտ ցեղերուն ճիշտ եւ կատարեալ աշխարհագրութիւն մի առնել, որոյ համար շատ մեղադրելի են գաւառապետք, որ մինչեւ ցայսօր Տէրութեան, Երկրին եւ կառավարութեան այս կարեւոր մասին համար դանցառութիւն են բրած, եւ մի՞թէ կարելի՞ է խառնուրդ երկիր մը բարեկարգել առանց կանոնաւոր աշխարհագրութեան:*

*Երկրորդ՝ թերեւս կարծեն ոմանք եւ այնպէս դատեն թէ քիւրտերն առ առհասարակ բովանդակ իրենց ցեղերով ըմբոստ*

եւ հարստահարիչ են. ո՛չ. եթէ ամբողջ քիւրտերուն թիւը մինչեւ երկու հարիւր հազար հասնի, պէտք է գիտնալ որ այս մեծ թիւէն հազիւ հազ հարիւր տուն կան կամ թոսուն կոչուածները, եւ կամ մասնաւոր անձինք, որք իրօք եւ ափրապէս բռնաւոր եւ հարսհարիչ են քրիստոնէից եւ միանգամայն իրենց ցեղերուն:

Ուստի Կայսերական զօրութեան առաջ ոչինչ դժուարութիւն չկայ այս փոքրաթիւ մասին համար պէտք եղած կարգադրութիւն առնել, դաշտային եւ լեռնական կեանքէն հանել զիրենք եւ տեղափոխել քաղաքներու մէջ, Վանայ սահմանէն ի Կարին բերել, Կարնոյ եւ Մշոյ սահմանէն ի Վան տանիլ: Հարկ չէ մտածել թէ ի՞նչպէս կարելի է որ լեռ ու դաշտ սիրող, ոչխար եւ անասուն դարմանող քիւրտերը քաղաքներու մէջ բընակին. ինչպէս պէտք է ապրին նոքա՝ առանց մշակական միջոցներու:

Առ այս իմ պատասխան այս է. Քիւրտերն երբ քաղաքացի լինին, կարող են ապրել այնպէս՝ ինչպէս կ՚ապրին այնչափ տաճիկ ժողովուրդ Կարնոյ, Վանայ, Բաղիշոյ եւ Մշոյ մէջ, որոց թիւը քան հազարի կը հասնի եւ նոցա մեծ մասը դարձեալ երկրագործութեամբ կ՚ապրին: Եթէ այս միջոցը դըժուարանայ, կայ ուրիշ միջոց մի եւս: Կարնոյ եւ Վանայ մէջ Մանազկերտ հին աւերակ քաղաք, որ այժմ բաւական բնակիչնե՛ր ունի իւր դաշտերով, լեռներով, առատ ջրերով եւ յարմարագոյն դիրքով, խիստ վայելուչ տեղ մի է. ապագային թերեւս նշանաւոր քաղաք մի դառնայ, եթէ տէրութիւն այժմէն նորա վերանորոգութեան հիմը դնէ, այսինքն նոր Միւթէսարըֆութիւն եւ կամ Գայմագամութիւն մի հաստատէ եւ թոսուն կոչուած Քիւրտերն հոն ամփոփէ կառավարութեան աչքին տակ: Այլ եւս պատճառ չի մնար նոցա ըսելու թէ մշակութեան եւ անասուն դարմանելու տեղ չունիմք քաղաքներու մէջ:

Երրորդ կը մնայ հեռատեսել արդ՝ երբ այդ գլխաւոր թոսուններ թէ՛ քաղաքներուն մէջ եւ կամ տեղ մի ամփոփուին, միթէ մնացած այն բազմաթիւ Քիւրտերուն ձեռք հարստահարութենէ կը դադրի՞ն, եւ կամ թէ նոքա իրենց թոսուններուն արբանեակ չե՞ն:

Ինչպէս յայտնի է, գաւառաց կեդրոնական կառավարութիւնը Քիւրտերուն սահմանէն քանի մի աւուր ճանապարհ հեռի լինելով՝ շատ դժուարին է անմիջական իշխանութեամբ եւ արթնութեամբ հսկել նոցա վրայ, մանաւանդ ձմրան ժամանակ՝ երբ ցրտասառոյց եղանակը եւ ձիւներուն թանձրութիւնը ամեն երթեւեկութիւն կը դժուարացնեն: Նոյնպէս ամառն ուրիշ դժուարութիւններ ունի, երբ Քիւրտեր գեղական բնակութենէն ելնելով՝ վրանաբնակ կը լինին եւ մարախի պէս կը սփռեն, զանազան լեռներու գլուխ. եւ իրենց ընտանեկան կեանքէն յայտնի է մեզ, թէ կիները միայն կաթնարարութեան

կը հետեւին, իսկ այրերը խումբ խումբ ձիաւորելով՝ անդաստական կը շրջին, անշուշտ գողնալու՝ կողոպտելու՝ ասպատակելու համար: Մերթ եւս սահմանագլխէն անցնելով, Պարսից եւ այլ կողմերը ոչխար, ձի եւ ուրիշ անասուններ աւարելով, կը դառնան այս կողմը, եւ աստի կը հետեւի մեծ թշնամութիւն Պարսից եւ Տաճկաստանի Քիւրտերուն մէջ, որով միմեանց դէմ վրէժխնդրութեամբ վառուելով՝ այնուհետեւ կը սկսին արշաւանք եւ կռիւ, եւ այս պարագային մէջ բոլոր սահմանագլուխ եղած գիւղերը ոտնակոխ կը լինին եւ շատ անգամ Քիւրտերու կողոպուտներու տեղը խեղճ գիւղացի ժողովուրդ կը կողոպտուի:

Ուստի այս ամէն անտեղութեանց առաջքն առնելու համար, հարկ է Քիւրտերու բնակութեանց տեղերը յարմար դիրքերու վրայ մի քանի փոքր զօրանոցներ հաստատել, գէթ հարիւրական ձիաւոր զօրքեր զետեղել նոցա մէջ: Մի զօրանոց Ապաղու դաշտին յարմար կողմը՝ Հէյտէրանցի կոչուած Քիւրտերու համար: Կը մնայ երկու զօրանոց եւս Վանայ եւ Մշոյ հարաւային կողմերը հաստատել, որպէս զի թէ՛ հոն տեղի լեռնական Քիւրտերը եւ թէ Քօզար կոչուած ցեղերը հըսկողութեան տակ առնուին, որք Տիգրանակերտի դաշտէն ամեն ամրան ելնելով՝ կը տարածին Տօրոսի լերանց գօտիներուն վերայ:

Այս զօրանոցներն անհրաժեշտ հարկաւոր են, եւ բնաւ ծանր ծախուց կարօտ չեն տէրութեան համար· այլ աւելի ե՛ւս այդ հեծելազօրաց համար իրենց պէտքերը հայթայթելու մեծ դիւրութիւն կայ թէ՛ զօրքերու եւ թէ՛ ձիոց համար· դաշտային բարեբերութիւնը ամեն պիտոյքներն առատապէս կը մատակարարէ· փոխադրութեան եւս հարկ չը մնար, զի հաց եւ խոտ զօրանոցի շրջապատը լի պատրաստ են:

Չորրորդ՝ Քիւրտերու ոճրագործութեան համար մի ներքին, բուն ուրիշ մեծ սկզբնապատճառ կայ, որ աներեւոյթ կը կարծուի, եւ այն է քիւրտ շէյխերուն խիստ գաղտնագործ, ծայրայեղ եւ մոլեռանդ բարք, որք ծածուկ թելադրութեամբ ամեն հարստահարութեանց եւ գողութեանց մատնտու կը լինին, որոց համար չէ բնաւ տէրութեան հրովարտակ, կրօնի ազատութիւն· դոքա են, որ ամեն կերպով կը թունաւորեն եւ կը գրգռեն Քիւրտերը Քրիստոնէից դէմ, ամէն ոճիրներ անխղճօրէն գործել տալու համար: Ես չեմ կրնար թուել թէ քանի՞ եկեղեցիք, քանի՞ վանքեր եւ որչա՛փ անմեղ մարդիկ դոցա մոլեռանդութեան զոհուած են տէրութեան օրինաց հակառակ: Որոց համար մեծ ապացոյց են Հայոց Պատրիարքարանի կողմէն գրուած այնչափ բողոքներ, եւ թէ ի՞նչ է սորա դարմանը, ես կը դժուարիմ գրել· միայն Բ. Դրան ուշադրութեան կը յանձնեմ, որոյ ձեռն հզօր եւ կարող է, գիտէ քաջ զարժանն տնօրինել, այն որ Քրիստոնեայ ժողովրդոց կրօնի ազատութեան համար, արդէն իւր բարձրաշունչ հրովարտակը հը-

*բաստարակած է եւ միշտ նոյնը կրկնէ: Բոլոր պատասխանատուութիւնը գաւառապետաց վրայ կը ծանրանայ, որ մեր բարեխնամ Տէրութեան կամք եւ օրէնք ի գործ դնելու ձեռնարկութեան մէջ կը դեղեւին, եւ միշտ անստոյգ պատճառներ յառաջ բերելով՝ նոյն իսկ իրենք ամեն հրամայեալ բարեկարգութեանց դէմ խոչընդոտներ կը հանեն, եւ ահա՛ այս է պատճառ որ մինչեւ ցայսօր բարեկարգութեանց հիմը ըստ մասին դրըուեցաւ եւ չէնք չաւարտեցաւ. գուցէ այս անգամ եւս գաւառապետք միեւնոյն բան կրկնեն, թէ երբ իշխանական զօրութեամբ եւ ստիպանօք ձեռնարկեմք Քիւրտերու դրութիւնը բարեկարգել, անշուշտ քիւրտ ցեղերու պէյերը իրենց ժողովրդով հանդերձ Պարսից եւ Ռուսաց սահմանը պիտի գաղթեն Կայսերական երկրէն, եւ ասով Տէրութեան չահ վտանգի, եւ այլն: Այս պատճառանքը սոսկ ենթադրութիւն մի է, վասն զի Քիւրտերը այնչափ յիմարացած չեն որ ընդարձակ, ջրաւէտ եւ խոտաւէտ երկիր թողուն, մանաւանդ երբ ամենքն իրենց գիւղ եւ բնակութիւն հաստատած են: Այս գաղթականութեան փորձը սահմանագլուխ եղած Հէյտէրանցի ցեղը երբեմն ցոյց կուտայ ոչխարի տրոց համար, սակայն այդ ամէն՝ սուտ ձեւեր են, որպէս զի երկրի կառավարիչը ստիպուի ոչխարի տուրքը առանց համարատուութեան կարգադրել: Նկատել արժան է այս, միթէ երկրին չահ կը պակսի՞ եւ կամ Տէրութեան գանձուն վընասակա՞ր է՝ եթէ մի քանի հարիւր տուն քիւրտ գաղթեն: Միթէ նոցա դուզնաքեայ չահը իրենց բազմապատիկ վնասուց հետ՝ հաւասարութիւն ունի՞, եւ կամ թէ հաւատարիմ գիւղացի ժողովրդոց բիւրապատիկ չահը կարելի՞ է զոհել: Մեծ օրինակ եւ զգալի փորձ մի կայ մեր առաջ. գրեթէ չորս հարիւր հազարէն աւելի Չերքէզ ցեղ Ռուսիոյ Կովկասու լեռներէն յայսկոյս Տաճկաստանի գաղթեցին, միթէ Ռուսիան վնասե՞ց (եւ մենք չահեցա՞նք), որոց դէմը քառասուն տարի ամբողջ պատերազմ մղեց եւ զիրենք նուաճելէն յետոյ՝ ստիպեց կամ զէնքն ի բաց դնելով դաշտաբնակ եւ երկրագործ ժողովուրդ դառնալ եւ կա՛մ գաղթել ուր իրենց կամքն է: Մեծ չահ համարեց Կովկասեան երկիրը նոցա աւերիչ ձեռքէն ազատել:*

*Հինգերորդ՝ մեր ցոյց տուած այս բարեկարգութեան միջոցները եւ Յանձնաժողովոյդ բոլոր ջանք ընդունայն են. ընդունայն են ամեն խորհուրդ, ամեն բարձրագոյն հրաման եւ ամեն օրինական հրահանգներ, եթէ իմաստուն, բարեկարգիչ եւ հզօր գործադիր ձեռք չ՚լինին, զի այդ ձեռքն է միայն ամեն բարեկարգութեանց պսակ. եւ այդ ձեռք պէտք է լինի քաղաքակիրթ, արդարակորով, կարողաձեռն, անխաբ եւ հաւատարիմ պաշտօնեայ տէրութեան: Ուստի Բ. Դուռը նախ պէտք է ընտրէ եւ որոշէ այնպիսի ձեռք մի Վանայ Կուսակալութեան վերածել, վասն զի Վանայ գաւառը խիստ ընդարձակ է եւ գրեթէ քիւրտերու մեծ մասն այդ աշխարհին մէջ տարածուած*

*են: Թո՛ղ այս, միանգամայն սահմանագլուխ է Պարսից եւ Ռուսաց տէրութեան:*

*Այս նահանգը իր ամեն հանգամանքներով ուշադրութեան արժանի է. պէտք է հզօրաձեռն Կուսակալութեամբ նշանակութիւն եւ հաստատութիւն տալ եւ բարեկարգութեամբ սրբել իր ամեն ցեղծումներէն, որպէս զի երբէրը բարւոքելով գաղթականութիւնը դադրի:*

*Վանայ ընդարձակ Կուսակալութիւնը իւր շրջապատ հեռաւոր գաւառները տիրապէս եւ դիւրութեամբ կառավարելու համար կարեւոր միջոց մի կայ, որ տէրութեան երկրին եւ գանձուն մեծ շահ կ'ընձեռէ: Եթէ Վանայ ծովուն վերայ փոքրիկ շոգենաւ մի լինի, որով բոլոր ծովեզերեայ գաւառները կեդրոնին հետը կը կապուին, չորս եւ հինգ օրեայ հեռաւոր տեղերը միայն հինգ եւ վեց ժամու կը լինին եւ առով երկու քաղաքաց հետը իւր հաղորդակցութիւնը կը դիւրանայ: Կարին որ կարաւանի ընթացքով տասներկու աւուր ճանապարհ է, վեց կամ եօթը աւուր ճանապարհ կը մնայ: Արծկէ (Ատիլ քավազ) գիւղաքաղաքն, որ Վանայ ծովուն ճիշդ արեւմտեան կողմը Նաւահանգիստ է, նմանապէս Բաղէշը՝ որ հնգօրեայ ճանապարհաւ հեռու է Վանէն, վեց կամ շատ շատ ութ ժամու ճանապարհ կը մնայ, հինգ ժամ ծովէն եւ երեք ժամ ցամաքէն: Որով խիստ դիւրին եւ շահաւոր է Բաղէշոյ նահանգը Վանայ Կուսակալութեան հետ կապել:*

*Այս մասին համար միայն այսչափ յիշելով այժմ, ուրիշ պատեհ առթիւ ծառայութեան պարտք համարիմ ինձ՝ առանձին աշխարհագրութեան տախտակով մի՝ մանրամասն հանգամանքներով բացատրել թէ քանի՛ շահ ունի տէրութեան եւ երկրին ժողովրդոց, եթէ հաճի Բ. Դուռը Վանայ ծովուն հա[illegible] տնօրինել սոյն օգտակար ձեռնարկութիւնը:*

*Որչափ որ վերը յայտնեցինք թէ յիշեալ երեք գաւառաց բարեկարգութեան համար անհրաժեշտ պէտք են երեք բարեկարգիչ ձեռք, սակայն տակաւին բաւական չեն այդ ձեռքեր, եթէ Բ. Դուռը զօրավիգ չը լինի իւր ամենազդու հրամանն կատարելապէս հաստատուն կամօք բարեկարգութիւն պահանջելով գաւառապետ պաշտօնեաներէն:*

*Ներողութիւն խնդրելով կը համարձակիմ այս ամենակարեւոր պարագայն եւս յիշել աստ՝ գաւառական կուսակալաց այն փոփոխական եւ յողդողդ դրութիւնը, յորմէ վհատելով բարեկարգիչ գաւառապետներէն ոմանք իբրեւ իրաւունք յառաջ կը բերեն թէ այն ինչ ձեռնարկելով կը ջանանք յառաջ տանել երկրին կարգադրութիւնը՝ յանկարծ պաշտօնանկ լինելով անդէն կը լքանիմք եւ մեր սկսածն մեր յաջորդը կը քանդէ եւ յաջորդին քանդածը՝ ուրիշ յաջորդ մի կամ կը սկսի նոր անդրէն շինել եւ կամ աւելի եւս քանդել:*

*Ճշմարտութիւն կը ստիպէ զմեզ ուղղութեամբ խոստովանիլ: Նոքա որ ամենայն հաւատարմութեամբ կը վարեն տէրու—*

թեան պաշտօնը, մեծ իրաւունք ունին այս դառն տրտունջ յառաջ բերելու։ Մենք մեր օրով եւ մեր աչքով տեսանք Կարնոյ մի քանի կուսակալներն, որք սրտի մտօք աշխատեցան քիւրտերու հարստահարիչ ձեռք կարճել, մանաւանդ յիշատակաց արժանի Իսմայիլ փաշան։ Սորա օրով քիչ մնաց որ քիւրտերը զէն ի բաց դնելով՝ հողասէր երկրագործ դառնային, վասն զի յիշեալ պաշտօնեայն հաստատուն մտադրութիւն ունէր եւ փորձառապէս համոզուած էր թէ մինչեւ քիւրտերուն զէնքերն իրենց ձեռքէն չառնուին, անհնարին է որ նոքա զիջանին հերկագործութեան մաճը բռնել եւ սուրին տեղը երկաթէ խոփն ընդունին։ Առանց պատերազմի՝ խաղաղութեան ժամանակը՝ ի՞նչ շահ եւ օգուտ ունի զէնք քիւրտին ձեռք, եւ եթէ պէտք լինի՝ միայն այն ժամանակ տալ ձեռքը, երբ տէրութիւնը զիրենք ի պատերազմ կը կոչէ։ Բայց յիշեալ անձին այս խորհուրդներն՝ որ երկրին բարւոքում կը խոստանային, առանց լիովին գործադրութեան՝ ոչնչացան, երբ Բ. Դուռը զինքը իր պաշտօնէն կոչեց։

Ի վերջոյ կ'աւարտեմ Տեղեկագիրս՝ դարձեալ նոյն բանն միշտ չեշտելով, թէ Քիւրտերուն եւ այլ եւ այլ գաւառաց կարգադրութեան համար առաջին պէտք բարեկարգիչ ձեռքն է, աշխարհաշէն մարդն է, Բ. Դրան արդար եւ անխաբելի կամքն է, տէրութեան օրինաց անթերի գործադրութիւնն է, հպատակ ժողովրդոց հաւասար եւ անխտիր ազատութիւնն է հաւատարիմ ու կարող պաշտօնէից փորձառական ընտրութիւնն է, գաւառական պաշտօնէից անփոփոխ շարունակութիւնն է, եւ այս ամէնուն պսակը՝ Բ. Դրան անխաբ եւ անդրժելի պահանջումն է եւ այլ ուրիշ ոչինչ, եւ այս է միայն կայսերական երկրին բարեկարգութեան կատարումն եւ վախճան։

———o———

# ՅԱՒԵԼՈՒԱԾ



Տեղեկագրիս կարգին մէջ մոռնալով խիստ կարեւոր մի կէտ, աստ իբրեւ յաւելուած կը գրեմ: Երբ Քիւրտերը տէրութեան երկրին մէջ իբրեւ հպատակ ժողովուրդ ճանչցուած են, եւ միանգամայն դաւանութեամբ բուն Մահմետական ժողովրդին հետ հաւասար կրօնակից են, տէրութեան պարտքն է զիրենք տակաւ առ տակաւ քաղաքակրթութեան մէջ դնել բերել, եւ նոցա իրաւունքն է պահանջել զայս:

Գիտեմք, քիւրտը իւր ներկայ դրութենէն գոհ է յաւիտեան եւ ինքնին կրթութիւն չը պահանջեր: Սակայն ո՛չ միայն կրօնն, այլ եւ տէրութեան եւ մարդասիրութեան պարտիք կը պահենջեն որ քիւրտերն եւս արժանի համարուին տէրութեան շնորհաց եւ կրթութեան: Ուստի ձեռնարկուած բարեկարգութեան մէկ զօրաւոր եւ բնական միջոցն այս է՝ որ տեղական կառավարութիւնք քիւրտերու զաւակաց կրթութեան հոգ տանին, դէթ ազնուական կոչուած թոսունններուն զաւակները կուսակալութեանց մէջ հաստատուած Մէքթէպի Րիւշտիյէ անուն տէրութեան դպրոցներու մէջ ընդունել, պէտք եղած ուսմունքներ տալով, որով միայն հնար է Քիւրտերու վայրենի բարքը մեղմել ու բարուոքել եւ զանոնք հետզհետէ քաղաքակրթութեան մէջ դնելով՝ տէրութեան եւ երկրին հաւատարիմ ժողովուրդ կազմել:

(ՎԵՐՋ)

Ն Ա Խ Ն Ի

# ՇՐՋԱԲԵՐԱԿԱՆ ԹՈՒՂԹ

ԱՌ ԱՄԵՆԱՅՆ ԵԿԵՂԵՑԻՍ

## Հ Ա Յ Ո Ց

*ՈՐ ԸՆԴ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՄԲ*

*ՕՍՄԱՆԵԱՆ ՊԵՏՈՒԹԵԱՆ*

Կ. ՊՈԼԻՍ

1871

Ն Ա Խ Ն Ի

# ՇՐՋԱԲԵՐԱԿԱՆ ԹՈՒՂԹ

## ԱՌ ԱՄԵՆԱՅՆ ԵԿԵՂԵՑԻՍ

# ՀԱՅՈՑ

## *ՈՐ ԸՆԴ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՄԲ*

## *ՕՍՄԱՆԵԱՆ ՊԵՏՈՒԹԵԱՆ*

---

ՄԿՐՏԻՉ Ծառայ Յիսուսի, Քրիստոսի, եւ Շնորհալի Սուրբ Հոգւոյն վարդապետ վարագայ Ուխտին, Եպիսկոպոս Գլակայ վանից եւ Պատրիարք Կոստանդնուպօլսոյ.

*ԶՏիրաւանդ Անդրանիկ ողջոյն Աւետարանի խաղաղութեան նուիրեմք առ հասարակ Հայաստանեայց Եկեղեցւոյ համայն լրութեան. նախ պաշտօնակից եղբարց մերոց. Առաքելապատիւ Սրբազան Եպիսկոպոսաց, ընդհանուր վիճակաւոր Առաջնորդաց, Վանական Հարց եւ եղբարց, պաշտօնասէր Քահանայից, Հովուաց, եւ Հօտից միանգամայն ի Քրիստոս հաւատացելոց. ընդ ձեզ, որ լրումն էք Եկեղեցւոյ աղօթակից եմ եւ պաղատիմ առ Տէր կալ մնալ ձեզ ի շնորհս Աստուծոյ, ի ճշմարիտ կրօնս աստուածպաշտութեան յանստերիւր հաւատոյ ուղղափառութեան Հայաստանեայց Եկեղեցւոյ Սրբազան Հարց Գրիգորի, Ներսիսի եւ Սահակայ, անեղծ եւ անարատ պահելով զաւանդութիւնս Եկեղեցւոյ, զոր ուսուցին մեզ բազմադիմի ճգամբք նահատակութեան. որոց անխոտոր շաւղաց հետեւելով՝ անսայթաք գնալ ի ճանապարհս Տեառն եւ ակն ունել հանդերձեալ փառացն, զոր ընդ վաղ իսկ պատրաստեալ է Տէր Սիրելեաց իւրոց, ոյք սիրենն զնա, հաւատան ի նա եւ երկնչին ի նմանէ, եւ անկեղծութեամբ պաշտեն զԱստուած զամենայն աւուրս կենաց իւրեանց:*

*Յետ նուիրելոյ Տիրաձիր ողջունիս եւ Նախընծայ Թղթոյս, ո՛ սիրելի Հօտք եւ Հովիւք Հայոց, չեմ կարող անմեղադիր առնել զիս այլ կը խոստովանիմ հրապարակաւ անձինս հեղգութիւն առաջի համօրէն ազգիս, որ Օսմանեան բարեխնամ Պետութեան տակ կը բնակին որոց Հովիւ կոչեցայ ի Տեառնէ. Ես որ տրուպն եմ ի մէջ Եղբարց, դեռ տկար փողիս ազդարար ձայն չհասուցի սիրելի Հօտիս:*

*Առ այս անպատասխանի եմ, եթէ յառաջ բերեմ չարաչար զբաղմանցս վիճակ, քաղաքական խառն գործքեր, անհուն անհատական խնդիրներ, հայրենի գաւառաց բազմադիմի հեծեծանաց աղաղակները որ սիրտս եւ հոգիս կը պարաւանդեն. լռին հոգածութեան մէջ. այս պատճառներ երբէք չեն կարող զիս չքմեղս առնել, երբ երանելին Պօղոս բանտին մէջ, իւր կապանաց մէջ, ծովուն վրայ, ցամաքին վրայ, դատաւորաց առաջ, իւր ամէն վշտակրութեան մէջ, տակաւին իւր հոգեկիր Թղթով կը մխիթարէր հաւատացեալները: Ո՛հ, այս պարտազանցութեանս մէջ մեծ ամօթ մի զգալով հանդերձ՝ պիտի համարձակիմ ազգին սիրոյն եւ համակրութեան վրայ վստահանալով նոր տարւոյ բարեգուշակ շրջանին մէջ՝ ահա սկիզբն առնում անդրանիկ շրջաբերականովս խօսիլ ընդ ձեզ, Ժողո՛վուրդ Հայոց, եւ նախ տրտմախառն ուրախութեամբ շնորհաւորել քու հինաւուրց ծերութիւն, որ Հայկայ նահապետին չորս հազար տարուան հաստարմատ շառաւիղն ես այսօր աշխարհի վրայ, թէպէտ շատ փառաւոր ոստերդ քանդուեցան, դեռ շատ կանաչ ճիւղեր ունիս եւ պիտի ապրիս յաւիտեան արեւու տակ: Այլ եւս մի երկնչիր վերահաս չարիքներէն, դուն փրկուած ես, որ թէեւ անցելոյն*

*փառքով անմխիթար կը մորմոքիս, ներկային մէջ յամենուստեք պաշարուած ես, այլ ապագային յուսով զօրացիր եւ ներկայ կեանքիդ հաշիւը ուղղէ։ Նոր տարւոյ շրջանը խնդութիւն է, մարդիկ կը հրճուին, իսկ մտախոհ ոգին կը զարմանայ երբ մարդիկ տարեդարձի բլուրներու վրայ պարելով կը խաղան դէպի գերեզման, մէկ կողմէն երբ սեաւ շիրմին ահաւոր փախչին դարձեալ նոյն ճանապարհին վրայ կը դառնան. չկայ աշխարհիս կերպարանքէն սարսափելով խոյս կուտան դէպ ուրիշ ճանապարհ, կը փախչին դարձեալ նոյն ճանապարհին վրայ կը դառնան. չկայ աշխարհիս վրայ ճանապարհ, որուն ելք դէպ ի գերեզման չերթայ։ Անհաւատ մահկանացուին դառն է, այս ճանապարհ հաւատացելոյն համար Քրիստոս քաղցրացոյց։ Երանի՜ մարդոյն, որ յառաջ քան զգերեզման իւր պարտուց եւ կենաց հաշիւներ կ'ուղղէ։ Զի ով որ արեւուն տակ կ'ապրի, նորա լոյս կը վայելէ եւ նորա լուսով կը գործէ՝ հաշիւ ունի տալ։ Ո՞վ, ի՞նչ մեծ է այս շնորհ, որուն վրայ Դաւիթն ալ հիանալով կը նուագէ. «Ելանէ մարդ ի գործս իւր ի վաստակս ձեռաց իւրոց մինչեւ երեկոյ»։ Ինձ այնպէս կը թուի, Աստուած որ տիեզերաց տնտեսն է՝ երկնից կամարին վրայ երկու հաւատարիմ ու հսկող հաշուեկալներ հաստատեր է՝ արեւ եւ լուսին, մէկին տուեր է իշխանութիւն տուընջեան, միւսին իշխանութիւն գիշերոյ. խաւարագործ մարդիկ, որք ճշմարտութիւն չեն սիրեր եւ ցորեկուան լուսէն կը խուսափին՝ կ'սպասեն որ արեւ ննջէ եւ գիշերային մթութեան մէջ ապահով եւ անխռով գործեն, բայց լուսին արթուն է չի ներհեր, իւր աղոտանշոյլ աչքով կը դիտէ մարդոյն դաղտնածածուկ գործը եւ կ'արձանագրէ իւր ամսական տոմարին մէջ։ Թող այս՝ երկու հաշուեպահանջ ոստիկաններ եւս ունի Աստուած, մէկին անուն խիղճ է, որ իբրեւ դատաւոր սրտի աթոռին վրայ բազմած կը սայթահարէ միշտ — միւսին անուն հրեշտակ, որ Աստուծոյ հարամանակատար զինուորն է։ Ո՜հ, մարդոյն վիճակ յամենուստեք պաշարուած է, ո՞ւր կարող է փախչիլ այս անողոք ոստիկանաց ձեռքէն։ Մարդ իւր խղճին ձեռք կալանաւոր բանտարկեալ մի է, եթէ ապստամբի ոգին, խղճին շղթաներ ջախջախէ, եթէ նորա բողոքող ուժգնակի ձայն խսպառ խեղդէ, եթէ Եկեղեցւոյ պարտիզին մէջ իբրեւ սին անպտղատու ծառ երկիր խափանէ, եւ երբ բարերար դարմանողին պայմանաժամ կը լրանայ ահա նոյն վայրկենին տիրոջ հրեշտակ կը հատանէ ընդ մէջ եւ կը թաւալի ծառ ահեղ շառաչմամբ ցուրտ շիրմին մէջ։ Այսպէս մարդոյն հողազանգուած անօթ կ'իյնայ կը փշրի գերեզմանաքարին վրայ. մարդ մահուան պարտական եղած կէս հաշիւ մի կ'աւարտէ, կը մնայ դատաստանի հաշիւ։*

*Ո՜հ, հանդերձելոյն ատեան, դատաստանին հաշիւը դժուարին եւ անփախուստ է, զի ահ մեծ է անկանիլ ի ձեռս Աստուծոյ։ Աւետարանի այս հաւատոյ վարդապետութիւն, ցնորք եւ երեւակայութիւն կը թուի անհաւատ երկրասիրաց առաջ. ուստի կ''ըսեն «Եկայք վայելեսցուք ի բարութիւնս, որ կան, զի չիք այլեւս յոյս կամ հանդերձեալ ի վախճանիլ մարդոյ»։ Այս իմաստուն կարծուած յիմարներուն մի հաւատաք, կը զառանցեն, եթէ մարդոյն կեանք զրաւէր գերեզմանին մէջ, եթէ վեհ եւ Աստուածպատկեր մարդոյն վայելք միայն այս տաժանելի աշխարհ լինէր, եթէ մարդոյն յոյս մեռնէր եւ վարձուց ակնկալութեամբ նա չհայէր երկինք, աւա՜ղ մարդ ողորմելի ու խեղճ էր արարածոց կարգին մէջ եւ ոչ իսկ երկարակեաց ճնճղուկէն երջանիկ կը լինէր նա։ Եթէ այսպէս է եւ աներկբայ մտօք կը հաւատանք հանդերձելոյն ինչպէս կ'ուսուցանէ Եկեղեցին եւ կ'եբաշխաւորէ խորազգացն Պօղոս թէ՝ Գերեզմանի հողին մէջ մարդ կը սերմանի իբրեւ մարմին շնչաւոր եւ կը յառնէ մարմին հոգեւոր։ Ուրեմն մարդոյն վախճան երկինքն է, մարդն առ Աստուած պիտի դնայ, զի նորա նմանակից պատկերն է. Աստուած միացաւ մարդոյն հետ, պէտք է որ մարդն եւս իւր Աստուծոյն հետ միանայ, հոն կ'եզերի միայն վախճան հաւատացելոյն, եւ նորա փառքով միայն կը յագենայ անհուն տենչանք մարդոյն։ Երանի՜ էր մեզ, եթէ այժմէն ուշարբերելով մեր առօրեայ կեանք չափէինք այս գերագոյն վախճանին հետ, եւ այնպէս ընթանայինք ըստ Առաքելոյն, որ դիւրանար մեզ երկինք հասնելու անձուկ ճանապարհ։*

Հապա ո՛վ Քրիստոսի բարի հաւատացեալք, եթէ երկնից յուսով կ՚ապրիք աշխարհիս վրայ, գործեցէք մինչ օր կայ, վաստակեցէք մինչ ժամանակ ունիք, հատուցէք նախ տիրոջ պարտքեր, երկրորդ ընկերին պարտքեր, երրորդ նոյն իսկ անձին պարտքեր: Այս խուռն պարտականութեանց ցանկ Սուրբ գիրքն է, կարդա եւ կ՚ուսուցանէ քեզ ուրոյն ուրոյն, թէ ի՞նչ են քո որդիական պարտիք երկնից հօր, ահաւասիկ թուեմ քեզ: Սիրել զՏէր Աստուած յամենայն սրտէ, ոչ մի բան, զոր թանկ կը համարին մարդիկ աշխարհիս մէջ՝ փոխանակել նորա սիրոյն հետ, երկնչիլ ի նմանէ, քանզի տէր է եւ արդար, դիտէ պատժել վնասապարտ ծառայ. սոսկ արտաքին փարիսական երեւոյթով չպաշտել զինքն, այլ առաւել սրտին խոնարհ ծնրադրութեամբ նորա ոտից պատուանդան, համբուրել. երախտագէտ լինել օրհնել նորա ամենամեծ անուն որ կեանք կուտայ, որ արեւ կը ծագէ, որ անձրեւ կը ցօղէ, որ երկրէն հաց կը հանէ, որ բարւոյն եւ չարին իւր պարգեւ հաւասար կը բաշխէ: Չեմ դիտեր, այս անկշիռ երախտեաց փոխարէն պարգեւընկալ մուրացիկ մարդ ի՛նչ տրիտուր կարող է տալ, ուրիշ ոչինչ՝ եթէ ոչ առ Աստուած անվճար մնացած պարտիք գէթ ընկերին վճարելով կատարէ օրէնք:

Համառօտեմ քեզ նաեւ պարտուց հաշիւ, զոր ունիս առ ընկերդ: Գերագոյն ընկերսիրութեան հեղինակ եւ օրինակ Յիսուսն է, նա աշխարհ եկաւ այսպէս քարոզեց, որ մարդոց ականջին նորալուր կը հնչէր «Մեծ քան զայս սէր ոչ գոյ եթէ ոչ զանձն դիցէ ի վերայ բարեկամին» նորա Սուրբ կտակն այս է, վերջի իրիկուն խօսեց եւ առաւօտ մեռաւ: Ինքն գնաց, բայց իւր Աւետարան կը խօսի, սիրեցէք զմիմեանս: դուք եղբայր էք: Ո՞վ սքանչելի սիրոյ խորութիւն եւ բարձրութիւն: ո՞վ կարող է զքեզ չափել, երկնից հորիզոնին չափ անհուն ես, Ովկիանոսին չափ առատ ես, շատ էր եթէ մարդիկ այս սիրոյ հոսանքէն մի կաթիլի չափ սիրէին զիրար, ամէն զրկանք եւ բռնութիւն պիտի խեղդուէր նորա մէջ: Մարդիկ ազատ եւ երջանիկ պիտի ապրէին, գայլեր ու գառներ ի միասին ճարակէին: Յիսուս ընկերսիրութեան հանդէս այսպէս կատարեց, Քրիստոնեայ դու, եթէ կարող չես նորա սիրոյն հետ մրցիլ, գէթ վճարէ ընկերսիրութեան պարտիքները որչափ ձեռնհաս ես, քաղցելոյն նկանակ մի հաց, կարօտելոյն բաժակ մի ջուր, մերկին մի շապիկ, տուր այս փոքր գին եւ գնէ զարքայութեան մարգարիտ: Իսկ եթէ այլ եւս բարձրագոյն անձնանուիրութեամբ հանդիսանալ կ՚ուզես բուռն ընկերսիրութեան ասպարիզին մէջ. ահա քեզ օրինակ Հրէայ մեծն Մովսէս եւ Հայ քաջն Վարդան, թող Փարաւոնին տուն, թող անձնասիրութիւնդ եւ առանձին շահերու ագահ տենչանք, գնա՛ տառապեալ եղբօրդ այցելութիւն արա, նորա Սուրբ նախանձով վառուիր, զրկողին ձեռքէ փրկէ քու եղբայրդ, Եկեղեցւոյ սիրով, Հայրենեաց սիրով, Ազգին սիրով մեռիր Աւարայրի դաշտին մէջ, կ՚ուխտէ քեզ Հայաստանեայց Եկեղեցին, որ քո յիշատակն ալ խառնէ Սուրբ Վարդանին հետ: Այս մեծ անձնանուիրութեան արդիւնք Յիսուսի Խաչէն բղխեց, յորում ինքն ընկերսիրութեան այն փրկաւէտ զոհ կատարելով կարմիր դրօշակ մի բացաւ Գողգոթային գլուխ, բիւրաւոր Եկեղեցւոյ որդիք Երամովլին նոյն օրինակ տիրոջ Խաչով նահատակեցան. որոց մահ կեանք էր. բայց աշխարհիս անզգամները կարծեցին թէ յիմարաբար չարչարուելով մեռան: Ընկերսիրութեան պարտուց հաշիւն այս էր, կը մնայ արդ այն փոքր հաշիւ, զոր անձինդ պարտական ես, որ գրեթէ հիմն եւ սկիզբն է ընկերսիրական պարտուց, զի ազնիւ սիրոյ բողբոջ պէտք է, որ մարդոյն անձին արմատէն սկսի. նախ պէտք է մարդ իւր անձին դէմ հաւատարիմ մնայ, իւր պարտուց հաշիւները ուղղէ եւ ապա ընկերին: Ի՞նչ են այս ներքին եւ անձնուիրական պարտիքներ. շատ են, բայց բաւական կը համարիմ միայն քանի մի պարտք յիշել ասա, որ է զգաստութիւն կրից եւ վարուց, հոգւոյ եւ մարմնոյ կեանքին. զգաստութիւն՝ ողջախոհ վարուց մէջ, զգաստութիւն՝ բարեխառն ժուժկալութեան մէջ: Զգաստութիւն սակաւապէտ կենաց մէջ, զգաստութիւն՝ արդար տնտեսութեան մէջ, այսինքն տալ իւրաքանչիւրին բաժին, մարմնոյն՝ հաց եւ հոգւոյն՝ Աստուծոյ բան: Այս են մարդոյն երրակի պարտուց հաշիւները, զոր միայն դոյզն բանիւ բացատրեցի: Մեծն Պօղոս երեքն

*ի միասին բովանդակելով այսպէս կը խօսի «Զգաստութեամբ եւ արդարութեամբ եւ Աստուածպաշտութեամբ կեցցուք յաշխարհի»:*

*Այսոքիկ են ահա, ժողո՛վուրդ Հայոց, անհատական մարդոյն առ Աստուած, առ ընկերն եւ առ անձն ունեցած պարտիքները, բայց ազգ մի ամբողջ իւր միութեան մէջ մեծամեծ պարտիքներ ունի, ա՜հ, եթէ ազգ իւր անցելոյն մէջ՝ Քրիստոնէական ընկերսիրական պարտքերը ճանչնար ու անթերի կատարէր, այսօր ներկային մէջ երջանիկ էր: Անցեալն էանց, կը մնայ մեզ անցելոյն փառքով եւ յիշատակով միշտ մորմոքիլ, բայց այս հերիք չէ, այլ պէտք է հետազօտել, քննել, գտնել այն ամէն աղէտից պատճառները, որք եկին հասին յարգս մեր, եւ քանդեցին Հայկայ տուն եւ հայրենիք: Թողլով արտաքին բարբարոս ազգաց յաճախակի արշաւանքներուն աւերած, բուն իսկ ներքին ընտանի եւ բնածին չարիքները, այն է տգիտութիւն եւ երկպառակութիւն բազմապատիկ վնասներ հասուցին: Երկպառակութիւն՝ տգիտութեան չար ծնունդն է, որ իբրեւ դարանակալ օձ մտաւ Հայոց դրախտին մէջ, սիրոյ եւ միութեան բողբոջները կրծելով չորցուց: Թող չի կարծէ մէկ թէ այս օձ միայն Հայոց աշխարհին մէջ մտաւ. ոչ, այդ օձ երկրագունդին վրայ ամենուրեք սողաց, ուր որ խաւար էր:*

*Ուրեմն, ժողո՛վուրդ Հայոց, այդ հին վիշապ օձին գլուխ ջախջախելու համար, ուրիշ հնար մի փնտռէր, լոյս պէտք է, այո՛, պէտք է լուսով խաւար հալածենք եւ սիրոյ միութեամբ երկպառակութիւն վանենք: Այլ ինձ ցաւ է աստանօր, ո՛վ ազգ Հայոց, դու դեռ լուսոյ հրաշքին չես հաւատար, եւ այնպէս կը կարծես թէ քո ներկայ չարա՛ղէտից պատճառ տգիտութեան խաւար չէ, հապա չարիքներ դէպք են եւ համայն ազգաց ճակատագիր, որոց բաժանորդ գտնուած է Հայոց ազգ. եւ թերեւս ուրիշ կերպ ալ համարիս թէ քու թշուառութիւններդ Աստուածառաք են ինչպէս երբեմն կը կարծէր Իսրայէլ եւ Տէր Աստուած ցոյց կուտար մարգարէին բերնով թէ «Կորուստ քո իքէն է, Իսրա՛յէլ: Իսկ եթէ տարակուսաբար կը հարցնես թէ այս կորստեան սահման մինչեւ յե՞րբ է, մինչեւ եօթանասուն ա՞մ, այդ թիւը Բաբիլոնի գերեաց ազատութեան սահմանն է. մինչեւ չորս հարիւր ա՞մ, ո՜հ այդ եւս անստոյգ է, հապա մինչեւ յե՞րբ, լո՛ւր եւ մարգարէանամ քեզ:*

*Մինչեւ որ Աւետարանի պարզ դասեր սորվիս, մինչեւ որ Քրիստոնէական ընկերսիրութեան պարտիքներ ճանչնաս, մինչեւ որ մտաւորական տգիտութեան մութէն ի լոյս գաս, մինչեւ որ դաստիարակութիւն սիրես եւ բարոյական լուծին տակ պարանոցիդ խստութիւն խոնարհի, մինչեւ քո այն հին բարձրայօնութիւն փոխի ի լաւագոյն բարո-քաղաքակրթութեան, մինչեւ հառաչանաց ու աղաչանաց ձայնդ հասնի երկինք, եւ Տէր քո հասած հունձերուն մշակներ հանէ եւ հայրենի եկեղեցւոյ տաճարին՝ Զօրաբաբել:*

*Այսչափ եւ այսոքիկ են ահա քո վերանորոգութեան պայմաններ. փութա այլ եւս մի հեղգար. եթէ կ՚ուզես քո դարաւոր աղէտներէն ազատիլ, օրինակ առ քեզ ու հետեւող եղիր աշխարհիս ամէն յառաջադէմ ազգաց, որ դար մը առաջ քեզ պէս էին. իսկ այսօր հին աշխարհի մեռելութենէն կենդանացած յառաջ կ՚երթան: Շուրջդ նայէ. ազգերն ամէն առողջացած անդամալոյծ վիճակէն՝ դէպ ի նոր կեանք կը վազեն. դու միայն մնացեր ես Պրոպատիկէ աւազանին քով, անշարժ նստած կողկողագին ձայնիւ կը պաղատիս. «Տէր ոչ զոք ունիմ, որ արկանէ զիս յաւազան:» Այո՛, չկայ աշխարհիս վրայ ոչ ոք օգնական, ընդունայն յուսով մի՛ սպասեր, դու ինքն ես քո օգնական, ջանք արա, շարժիր դէպ ի աւազան, Տէր քո մօտ կեցած է, ձեռք կարկառէ. խօսք տուր թէ կամիս ողջ լինել. առանց այս երաշխաւորութեան չիք քեզ բժշկութիւն:*

*Այլ դուք լծակից՝ եղբարք իմ, հրեշտակք Հայաստանեայց եկեղեցւոյ, շարժեցէ՛ք Եփրատայ յորդ աւազան. թող կրկին մկրտուի ժողովուրդ ուսման եւ դաստիարակութեան ջրով. շարժեցէք ուսուցանելով, սփռեցէ՛ք, տարածեցէք Աւետարանի ազատարար լոյս եկեղեցւոյ որդւոց վրայ, որ զրկեալ են, որ հարստահարեալ են. ոգեւորեցէ՛ք այդ լքեալ ժողովրդոց սիրտ, որ լի է տրտմութեամբ. յոյս տուք քաջալերեցէ՛ք, թող երկայնամիտ լինին, թող հաւատան թէ Աստուած վրէժխնդիր է, Տէր Աստուած ի-*

բաւարար դատաւոր է, թէ նա զրկելոց աղաղակին ձայն կը լսէ: Բացէ՛ք Սաղմոս, տուէ՛ք ժողովրդոց ձեռք, թող աղօթեն Դաւթի բերնով· «Մինչեւ յե՞րբ մեղաւորք, Տէ՛ր, մինչեւ յե՞րբ մեղաւորք պարծեսցին: Զժողովուրդ քո Տէ՛ր, խոնարհ արարին եւ զժառանգութիւն քո չարչարեցին: Զայրին եւ զպանդուխտն սպանին, զորբս կոտորեցին եւ ասացին, ոչ տեսանէ զայս Տէր եւ ոչ ի միտ առնու, Աստուած Գրիգորի, Աստուած Ներսիսի, Աստուած Իսահակայ եւ Աստուած մեր սուրբ հարց»: Այս քո աղօթից մրմունջ, քո սրտառուչ հեծեծանք կը հասնին երկինք, ժո՛ղովուրդ Հայոց· Գրիգոր եւ Ներսէս քո նուիրական աղօթից բուրվառն են, կը մատուցանեն զայն Աստուածպետական Աթոռին առաջ: Արդարեւ քո տառապանաց օրեր երկարացան, դուն ալ այն գերեվարեալ Հրէից ազգին պէս մաշեցար օտարութեան Բաբելոնին մէջ եւ նոյն իսկ հայրենի Երուսաղէմին մէջ, կը տեսնաս դու եւ կը հանդուրժես, որ թշուառութեան հնոց զաւակներդ կը տապակէ: Ուստի նոյն երեք մանուկներու ձայն կը կրկնես Եկեղեցւոյդ մէջ· «Եւ արդ նուաղեցաք մեք քան զամենայն ազգս, եւ եմք տառապեալ յամենայն երկրի այսօր՝ վասն մեղաց մերոց:»

Տարէ՛ք, մի՛ վհատիք, Աւետարանի հեզ եւ համբերող որդիք, տոկացէք պահ մի եւս այդ հրակէզ վշտաց· յառեցէ՛ք ձեր աչք դէպ երկինք, օրհնեցէք զԱստուած, հրեշտակ ամենակալին պիտի հասնի ձեզ ի զօրավիգ, երկնից օրհնութեան ցօղով պիտի շիջուցանէ այդ բոց, որ բնաւ զձեզ չի ծախէ· Աստուած քո մէջն է, անկէզ եւ առանց այրման պիտի մնաս Քորեբ լեռան գլուխ վառուած մորենւոյն պէս: Ամէն ազգերէն նուազեալ ես, այո՛, որ երբեմն անթիւ անհամար բարգաւաճեալ էիր, եւ այսօրուան մնացեալ որդիքներդ սակաւաթիւ են: Բայց մի՛ վախնար թէ կ՚սպառիս, կամ չորս հազար տարուան քո հինօրեայ յիշատակ պիտի բարձուի Նոյի եւ Մասեաց աշխարհէն եւ ջնջուի Հայաստան անունն: Ո՛չ, դու Պարթեւական հօր, այն ժրաջան մշակին տնկած սիրելի այգին ես, թէպէտ մեծամեծ որթերդ, ընտիր ընտիր ողկոյզներդ քո դրացի թշնամիներ անխնայ քանդեցին ու ճըմլեցին· այլ մնացորդ զաւակներովդ· զքեզ իբրեւ ճիռ մի նախախնամող ձեռք դեռ անապական պահած է Արեւելեան Դրախտին մէջ, զի Աստուծոյ օրհնութիւն կայ քու վրադ· Թող աշխարհ զքեզ խոպանացած կարծէ: Նա, որ բարկացաւ քեզ եւ թոյլ տուաւ որ թշնամիք քո պարիսպներ քակեն, եւ անցաւորներ յափշտակեն· նա դարձեալ խնայելով պիտի պարսպէ զքեզ, անմատչելի մնաս եւ կրկին քաջարեր որթերովդ բարգաւաճիս: Ով չի գիտեր թէ դու Քրիստոնէական Սուրբ կրօնին հաւատացող ուռն ես, Աւետարանի ժրագործ մշակներ, Թադէոս եւ Գրիգոր արիւնով պատուաստեցին զքեզ այն ճշմարիտ որթին վրայ որ ձողաբարձ տնկեցաւ Գողգոթայի դարին գլուխ, ուր Խաչին հնձան ճմլեց մարմնացելոյն Աստուծոյ կուսաբեր ողկոյզ ցայտեց փրկաւէտ արիւն, կենդանացաւ հողագունդ: Յիսուսի որթն անմահ է, հաւատա՛ մի երկմտիր, այս անմահ որթին վրայ հաստատուած ուռերդ յաւիտեան անմահ պիտի մնան:

Բայց մի մոռնար, յիշէ՛ Աւետարանին սպառնացող առակ· «Տապար ծառին տակ պատրաստ է», եթէ պտուղ չըտաս, եթէ հրէական ցանկապատ այգւոյն պէս խաղողին տեղ փուշ բերես, աւա՜ղ քեզ զի սուր յօդիչ մի կայ զքեզ դարմանողին ձեռք, այն ամէն ուռ, որ անպտուղ է, պիտի կտրէ յորթէն, որ առժամայն ցամաքելով կենդանարար կեանքէն կը զրկուի, իսկ որ պտուղ բերէ՝ մեծ խնամով կը սրբէ զայն, որ առաւել պտղաբեր լինի: Ո՜վ քանի՞ մեծ է մեր երկնաւոր հօր մարդասիրական գորով, որ Տէր է, այլ իբրեւ ծառայող մշակ իւր սիրելի որդւոյն տնկած Եկեղեցւոյ որթատունկները կը խնամէ: Օ՛ն ուրեմն, ժողովուրդ Հայոց, պտղաբերենք, զի Տէր Աստուած անպտղատու ազգաց հաստարմատ որթերը հիմնովին կը քանդէ եւ կը բառնայ աշխարհէս: Ուստի խոնարհելով երկնից առաջ՝ Դաւթին ձայնով Երեմիային ողբով պաղատինք առ Տէր· «Աստուած զօրութեանց, դարձ հայեաց երկնից եւ տես այց արա այգւոյս այսմիկ եւ դարման տար սմա, զոր տնկեաց աջ քո, յիշեա՛ Տէր, որ ինչ անցք անցին ընդ մեզ, նայեաց եւ տես զնախատինս մեր, ժառանգութիւն մեր դարձաւ յօտարութիւն եւ հայրենի բնակութիւն մեր ի դառն նժդեհութիւն, աղքատացաք, կարօտացաք

Տէր, զՁուր մեր գնոյ արբաք եւ հաց մեր զառնութեամբ ճաշակեցինք, հալածական եղեաք եւ յամեն ուրեք Թափառեցաք եւ ոչ գտաք հանգիստ։ Լքան յուրախութենէ սիրտք մեր, եւ դարձան ի սուգ օրհնութիւնք պարուց մերոց, անկաւ պսակն ի գլխոյ մերոց, վա՛յ մեզ, վա՛յ մեզ, զի մեղաք։ Վասն այսորիկ տուաւ մեզ սիրտ ցաւագին, վասն այսորիկ խաւարեցան աչք մեր ի վերայ լերինն Սիօնի, զի դարձաւ յապականութիւն եւ աղուէսք մուտ եւ ել առնէին ի պահս նորա։ Եւ դու, Տէր, յաւիտեան կաս եւ Աթոռ քո յազգէ մինչեւ յազգ, ընդէ՞ր մինչեւ իսպառ մոռացար զմեզ, հարեր Թողեր եւ լքցե՞ս զմեզ մինչ յերկար ժամանակս։ Դարձո՛ զմեզ Տէր, եւ դարձցուք, նորոգեա զմեզ Տէր, իբրեւ զաւուրսն զառաջինս, միթէ մերժելով մերժեցեր զմեզ զի բարկացաւ սրտմտութիւն բարկութեան քո մինչեւ իսպառ։»

Այսպէ՜ս կ՚ողբար ու կը պաղատէր Երեմիաս հին Երուսաղէմի համար, այսպէ՜ս պէտք է նստինք ու ողբանք նոր Սիօնի որդիքս հայրենի Եկեղեցւոյն համար։ Բայց պահ մի եւս դուլ եւ դադար տուր քեզ, հերիք լաս, հերիք ողբաս իբրեւ յուսահատ, կանգնիր, Թօթափէ իքէն մոխրաց փոշիներ, կարդա զՏէր Աստուած քո, քաջալերեաց, զօրացիր որ տառապեցոյց զքեզ, նոյն պիտի ողորմէ, զի ողորմութիւնք Տեառն անսպառ են եւ ոչ նուազին գթութիւնք նորա։

Այլ արդ, դառնալով ի ձեզ՝ սիրովն Յիսուսի կ՚աղաչեմ եւ կը յորդորեմ զձեզ, ո՛ լծակից եղբարք իմ, որ Աւետարանին պաշտօնեայ էք, որ Քրիստոսի հօտին հովիւ էք, որ Եկեղեցւոյ գերդաստանին տնտես էք, որ կենաց բանին քարոզ էք, որ աշխարհի լոյս էք, Աստուծոյ տան ճրագն էք, ժողովրդոց աղն էք, նոր Սիօնի Մարգարէ էք, Դաւթի եւ Երեմիասի ոգւով սիրեցէք Եկեղեցին, վշտակից եղէք նորա խաչակրութեան մէջ, յոյս տուէք, զօրացուցէ՛ք լքեալ ձեռքեր, կթուցեալ ծունկեր, Թող համբերեն իսպառ, իսպառն մօտալուտ է, աղէտներ վախճան ունին, Հայք պիտի ապրին, եւ փրկուած են այսօր։

Քարոզեցէ՛ք մի միայն բան, այլ եւ հաց․ յուշ բերէք՝ գթած Յիսուս նօթի ժողովրդոց հաց ալ բաշխեց․ հոգւոյ կեանքին հետ, աշխատեցէք մարմնոյն կեանքն ալ բարւոքել։ Տնտեսութիւն քարոզեցէք, զգուշացուցէ՛ք ժողովուրդ զեխ եւ չռայլ կեանքէն, քարոզեցէ՛ք քաղաքացւոց որ արհեստ սորվին, ընկերութիւններ կազմեն, չահավաճառութեան հետեւին․ քարոզեցէ՛ք գեղացւոց, հայրենի հող սիրեն, ամոլ՝ եզներ սիրեն, մաճ սիրեն, քրտինք չահաբեր հողի վրայ Թափեն, չարաչար պանդխտութեան չդիմեն․ Քարոզեցէ՛ք առ հասարակ Եկեղեցին սիրեն, դպրոց սիրեն, լոյս սիրեն, դաստիարակութիւն սիրեն, Ազգ սիրեն, Հայրենիք սիրեն, Երկինք սիրեն, Հայր սիրեն, Նորա Արքայութիւն խնդրեն եւ բաւական է։

Այս է քո փրկութիւն եւ կեանք, Ժողովուրդ Հայոց․ յանձն առնեմ զքեզ Տեառն, Նա հովուեսցէ զքեզ, եւ քեզ ինչ ոչ պակասեսցի։

———o———

# ԽՕՍՔ

# ՀՐԱԺԱՐՄԱՆ
# ԽՐԻՄԵԱՆ
# Ս. ՊԱՏՐԻԱՐՔԻ ՀԱՅՈՑ
# ԱԶԳԱՅԻՆ ԵՐԵՍՓՈԽԱՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՅ
## 64–ՐԴ ՊԱՏՄԱԿԱՆ ՆԻՍՏԻՆ ՄԷՋ
## ՈՐ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՒ 1873 ՕԳՈՍՏՈՍ 3–ԻՆ



## ԵՐԵՍՓՈԽԱՆՔ ՀԱՅՈՑ

———o———

*Այսօր իմ արձակման օրն է, կ՚աղաչեմ, որ թոյլ տաք այս Տաճարին մէջ, Հայոց Երեսփոխանութեան առաջ, մի քանի խօսք խօսիմ. եւ արձակում խնդրեմ այս Ատենէն, որ 1869 թուոյն Սեպտեմբեր 4–ին իւր քուէի ազատ ընտրութեամբ գիս կապեց եւ Տարօնէն վարեց մինչեւ ցայս վայր: Նոյն տարւոյ Նոյեմբեր ամսոյ սկիզբը, Պօլսոյ Մայր Եկեղեցւոյ բեմին վըրայ մեր Գահակալութեան հանդէսն կատարուեցաւ: Զգիտեմ, կը յիշէ՞ք, այն իմ Ծաղկազարդի օրը, ես խօսք տուի Ձեզ եւ ուխտեցի այսպէս. «Երեսփոխա՛նք եւ Ժողովո՛ւրդ Հայոց, դուք գիս բազում դժուարութեամբ յայս գահ բարձրացուցիք, կ՚ուխտեմ ահա՛ յանդիման Ձեր, որ առանց աշխատութեան ես ինքնին կ՚իջնամ այս գահէն, խոնարհ յարգանօք համբուրելով համայն Ազգի կնիքը կրող Ձեր վճռագիրը. զի օրինօք կապեցայ. կը փափաքիմ դարձեալ օրինօք արձակիլ: Միայն սա կ՚աղաչեմ, վասն փառաց Եկեղեցւոյ եւ Հայոց Ազգին, Խաղաղութեամբ թողէ՛ք որ երթամ:*

*Այո՛, մեծ ակնկալութեամբ ընտրեցիք գիս ու բերիք. գիտե՛մ, դըժուարին է դիւրութեամբ թողուլ: Ի՞նչ էր արդեօք Ձեր եւ հանուր Թուրքիոյ Հայոց ակնկալութիւնը: Ահաւասիկ. կ՚ակնկալէիք որ Խրիմեան Հայաստանեայց Եկեղեցւոյ փառք կը յաւելուր. կը յուսայիք թէ նա Եկեղեցւոյ պաշտօնէից աղաւաղ դրութիւնը կը վերանորոգէր. կը հաւատայիք որ նա անդադար քարոզելով՝ դպրոց, դաստիարակութիւն, լոյս եւ այլն. ազգային յառաջդիմութեան կառք կը վարէր եւ դէպ ի իւր նպատակ կը տանէր: Թո՛ղ այս մեծ ակնկալութիւն, մի եւս այն էր, թէ Խրիմեան, իբրեւ Սահմանադրասէր Պատրիարք նա ինքն ձեռնհաս պիտի լինի չոյտ եւ արագապէս իւր Արծուի թեւերով Սահմանադրութիւնը բառնալ ու տանել սփռել Հայոց աշխարհին վերայ. քաղաքացին եւ շինական, գիտուն եւ ռամիկ առհասարակ միահամուռ մկրտել՝ լուսաւորել եւ նոր սահմանադրական ժողովուրդ կազմել: Առաւել քան զայսոսիկ, ամենամեծ ակնկալութիւն գաւառացի ժողովրդոց այն էր, թէ Խրիմեան Պատրիարք եղաւ, ուրեմն աւետի՛ս, պէտք էր որ ազատուինք հարստահարութեան ամէն ճնշումներէ: Զարմանքն այս է. որ ես էլ ճիշդ Ձեզ նման կը հաւատայի թէ կարող եմ այդ մեծամեծ հրաշքները գործել եւ արդիւնաւորութեամբ պսակել այդ*

նախաթուեալ մեծամեծ ակնկալութիւնք։ Սորա համար իմ սրտի զեղուն զգացմամբ եւ անկեղծ երեւակայութեամբ չափեցի թէ արդեօք Տարօն թողում, Վարագ թողում, իմ այն փոքրիկ ագարակնե՞րը, յորս կ'աշխատէի եւ կը մխիթարուէի գոնէ գուղնաքեայ վաստակօք, ու երթամ Մեծն Բիւզանդիոն Հայոց Պատրիարք լինիմ, պիտի կարենա՞մ ասկէ աւելի ազգին շահաբեր լինել։ Անկեղծաբար խոստովանելով՝ ես կը ճանաչէի զիս, թէ Պատրիարքութեան բարձր Աթոռին վայելուչ յատկութիւններ չունէի, ոչ իմաստութեամբ, ոչ ուսումնականութեան հանճարով, ոչ քաղաքագիտութեամբ եւ ոչ մի քանի լեզուաց հմտութեամբ։ Այսչափ տկարութեամբ հանդերձ, քա՛ւ թէ փառասիրութեան տենչանք մղեց զիս յայս պաշտօն. ոչ, այլ միայն Ազգի սէրն եւ Հայրենեաց օգնելու եռանդն։ Ինքնին այս միայն կը մտաբերէի, թէ պահ մի երթամ պատրիարքութեան Գահին վերայ կենամ, թերեւս այդ իշխանութեան կեդրոնէն ձեռնհաս լինիմ դարման մի գտնել ու հայթայթել բազմակարօտ Ազգին։ Իմ այս ապիկարութեանս չափը նոյն իսկ Երեսփոխանական Ժողովդ քաջ իսկ գիտէր. Խրիմեան իւր Ազգին անծանօթ չէր, բայց չգիտեմ թէ ի՞նչ նպատակաւ, գուցէ խաղաղութեան համար, պահ մի ապշեցաւ ու մոռացաւ Սահմանադրութեան օրինադրած անժխտելի յատկութիւնները, եւ ընտրեց մարդ մի, որուն կեանքը առաւել կը սիրէր լեռ, դաշտ եւ վանական զբաղմունք։ Բայց ասկէ աւելի ի՞նչ պիտի ընէիր, Երեսփոխանութիւն Հայոց, նախադոհակ հեռատեսութեամբ չյայտնեցիր, որպէս զի ժամանակին հնձէիր առանց շուարման։ Վանայ փոքրիկ ագարակի մի մէջ ինքնաբոյս Խրիմեան գտար. վա՜չ, առիր ու ընտրեցիր։ Այդ ինքնաբոյս ծառերուն պտուղ այսչափ է. Իրաւունք չունիս տրտունջ բառնալ։

Երեսփոխանութիւնն զիս Տնտես կարգեց. անշուշտ իր իրաւունքն է համար պահանջել. տակաւին պայմանաժամ կար, բայց ես կանխեցի իմ համարս տալ, մտածելով որ, եթէ թողում, այլ եւս ժամանակ անցնի, առաւել եւս պիտի ծանրանան յիմ վերայ համարատուութեան պարտիք։ Մինչեւ Նոյեմբեր ամսոյ սկիզբը մեր ընտրութեան չորրորդ տարին կը լրանայ. եւ ես կ'ամաչեմ թէ այս շրջանին մէջ ո՞ր գործեր յառաջ բերեմ ու թուեմ. որ ինձ եւ Սահմանադիր Վարչութեան գոնէ փոքր ի շատէ պարծանք լինին եւ Ազգը յոյսերով ոգեւորի։

Վաթսուն երեքերորդ անգամ Երեսփոխանական Ժողովոյդ նախագահեցի. ի սկզբան՝ երբ առաջին նիստն կազմեցաւ, ատեան բացուեցաւ, ի՞նչ էր նախադաս եւ կարեւոր խնդիրն — ՎԵՐԱՔՆՆՈՒԹԻՒՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԵԱՆ։ Չորս տարուան շրջանին մէջ, այս ամենակարեւոր խնդիրը խնդրոց կարգին մէջ անլուծելի մնաց. Ցանձնաժողովի նախապատրաստեալ ծրագիրը մերժուեցաւ, որպէս զի լաւագոյն եւս ծրագրուէր։ Քանի մի ամիս յառաջ նոր վերաքննիչ Ցանձնաժողով մը եւս ընտրեց Երեսփոխանութիւնն. այդ Ժողովն, ինչպէս որ կը լսեմ, դեռ եւ ոչ հատուած մի վերաքննեց։ Այս խնդիրն այսպէս տակաւին անկատար կայ ու կը մնայ։ Երեսփոխանութիւնն այլ եւս ի՞նչ խնդիր լուծեց. Սսոյ խնդի՞րը լուծեց. այո՛ այս խնդիրը լուծեց մեծ հեռատեսութեամբ։ Հարստահարութեան խնդի՞րն յուղեց. այո՛ այս խնդիրն մահու եւ կենաց խնդիր էր տառապեալ Ազգի մի համար. զոր երկիցս Բարձրագոյն Դրան յանձնելով շնորհ եւ գթութիւն հայցեցինք յանուն Ազգին, եւ դեռ կ'սպասեմք այցելութեան։ Կան ուրիշ քանի մի Ընդհանուր Ժողովոյ ատեան ելած խնդիրներ. զոր օրինակ,

Ատենական կանոնագրութեան խնդիր.

Կեդրոնացման եւ Ապակեդրոնացման խնդիր.

Կաթողիկոսական եւ Պատրիարքական յարաբերութեանց խնդիր.

Վեհափառ Կաթողիկոսի կոնդակի խնդիր.

Աղթամարայ Կաթողիկոսութեան խնդիր։

Սոյն խնդիրներէն թէ ո՞րն կարեւոր էր, եւ ո՞րն անկարեւոր. ո՞րն լուծուեցաւ եւ ո՞րն անլոյծ մնաց. Ձեզ կը թողում իմաստասիրել, թէ արդեօք շահեցա՞ւ՝ թէ ի զո՛ւր վաստակեցաւ Երեսփոխանական Ատեանն։

Քաղաքական Ժողովոյ, Տեսուչ Խորհրդոց, Կրօնական Ժողովոյ, Հոգաբարձութեանց, մէկ խօսքով համայն Ազգային Վարչութեան գործքերը

եւ որոշումները։ Դիւանական վիճակագրութենէն կրնաք տեղեկանալ թէ այդ խնդիրները եւ գործքերը ամենամեծ մասամբ անհատական եւ մասնաւոր են։ Ա՛յսպիսի անթիւ եւ անհատնում խնդիրներով միշտ զբաղեցաւ Ազգային Վարչութիւնն իւր ամէն ճիւղերով, բայց ի յԸնդհանուր Ժողովէն։ Այսչափով գոհ եղաւ եւ երբէք չխելամտեց՝ թէ սահմանադիր օրինաց առաջ իւր մեծ պարտիքն էր նկատել Ազգին կեանքը, Ազգին վիճակը, ընդհանուր խնդիրներ յառաջ բերել, այն խնդիրներու համար է խօսքս, որ Ազգին կեանքը վերանորոգել կ'երաշխաւորէին։ Ստոյգ խօսելով, ես ընդ աչս դատել չեմ ուզեր. եւ չեմ կրնար մեղադրել Կրօնական եւ Քաղաքական Ժողովները, թէ Ազգին ընդհանուր խնդրոց համար նոքա եւս ինծի պէս չեն խորհիր եւ չեն մտաբերեր։ Այո՛ թերեւս առաւել քան զիս կ'զգան ու կը խորհին Ազգին պէտքերը։ Բայց ե՞րբ, ո՞ր ժամանակին մէջ ձեռնհաս են խորհելու. այդ ժամանակն ինձ համար անծանօթ է. զի խուռն եւ բազմադիմի մասնական խնդիրներ յափշտակեր են զանի։ Դիւանին վերայ խռնած թուղթերը, Խորհրդարանի դրան վերայ կեցած ճնշող ժողովուրդը քեզ ե՞րբ ժամանակ կուտան որ գոնէ օր մի, պահ մի, Ազգին ընդհանուր եւ ներքին խնդրոց վերայ խորհիս։ Ինչպէս են,

Ա. Ազգային Վարչութիւնն իրապէս կեդրոնական եւ հանրային դրութեան վերածել. Կ. Պօլսոյ համար առանձին Տեղական Վարչութիւն կազմել։

Բ. Ազգային պաշտօնէութեան՝ Բարեխնամ Կառավարութեան հետ ունեցած յարաբերութիւնն աւելի օգտակար եւ օրինաւոր դրութեան վերածել։

Գ. Սահմանադրութեան ընտրողական օգտակար սկզբունքը չարաչար չգործածուելու համար՝ ապահով եւ կարեւոր եղանակ որոշել։

Դ. Ազգային տուրքը կանոնաւորել եւ ընդհանրացնել։

Ե. Ազգային պաշտօնէութեան համարատուութիւն պարտաւորիչ եղանակի մէջ դնել։

Զ. Եկեղեցականաց ներկայ անկերպարան վիճակը եւ ընթացքը կերպարանաւորել եւ կանոնաւորել, համաձայն Հայաստանեայց Առաքելական Եկեղեցւոյ նախնի ոգւոյն օրինաց եւ ուղղութեան։

Է. Առաջնորդական պաշտօնավարութեան եւ համարատուութեան օրինաւոր եւ անխուսափելի եղանակ սահմանել։

Ը. Ազգային վանօրէից եւ եկեղեցեաց կալուածներն ու եկամուտներն ապահովել եւ Ազգի բարոյական օգտին ծառայեցնել։

Թ. Հայաստանեայց Եկեղեցւոյ անկախութիւնն հաստատուն պահելու եւ քրիստոնէական ճշմարիտ գիտութեան լոյսը Ազգին մէջ ծաւալելու համար ամէն կարեւոր միջոցներ ձեռք առնուլ. եւ ջանալ Ազգին մէջ պատահած կրօնափոխութեան առաջքն առնուլ։

Ժ. Ազգին մէջ ուսումն եւ գիտութիւն ծաւալելու համար նոր եւ ազդու միջոցներ ձեռք առնուլ։

ԺԱ. Ազգային դաստիարակութեան համար դրամագլուխ հաստատել։

ԺԲ. Նախակրթական ուսումն ընդհանրացնելու դիւրութիւններ գտնել, եւ քանի մի կեդրոնական բարձրագոյն ուսումնարաններ բանալ։

ԺԳ. Հայոց ազգային ընտանեկան կեանքն, այն է՝ ամուսնական եւ բարոյական կապերը ամրապնդել. գեղծումներ բառնալ, պանդխտութեան առաջքն առնուլ եւ Ազգը մի հանրական ընտանիք կազմելու դրութեան վերածել։ Ներքին եւ արտաքին հարստահարութիւնները բառնալու համար բարեխնամ Տէրութենէն աւելի զօրաւոր միջոցներ խնդրել. Գաղթականութիւնն արգելուլ. Ազգային անհատական իրաւունքները պաշտպանել, որով եւ Ազգի ամբողջութիւնն ապահովել։

Վարչական ընթացից նկատմամբ սոյն համառօտ դիտողութիւններս յայտնելէն յետոյ՝ գիտեմ անհամբեր կը սպասէ Երեսփոխանական Ժողովդ, որպէս զի փութամ յայտնել այն կարեւոր պատճառներն, որք անհրաժեշտ կերպով ստիպեցին զիս ինքնակամ յօժարութեամբ հրաժարիլ։ Հեռատեսութեամբ նկատելով որ Ազգին շահ, Եկեղեցւոյ շահ, ժամանակի ծանր ծանր պարագաներ, այսպիսի զոհ մի կը պահանջէին յինէն։ Սահակ Նահապետին չափ պատրաստ եմ առ այս, միայն կ'աղաչեմ որ Երեսփոխանական Ժողովդ իւր սուր վճիռը պատրաստէ։

*Իմ հրաժարելուս առաջին պատճառն ձանձրութիւն եւ յուսահատութիւն է. գործելու համար եկայ, եւ բան մի չգործեցի. մէկ երկու տարի իբրեւ անփորձ, հազիւ թէ փոքր ի շատէ խելամուտ եղայ Ազգային գործոց եւ ընթացից: Ամօթ չեմ համարիր այսպէս խոստովանիլ. վասն զի Եւրոպայի ամենէն իմաստուն կարծուած անձն իսկ տակաւին կարօտ է փորձառութեան եւ գործակից աջակցութեան:*

*Սոյն փորձառութեանս մէջ ստուգապէս վերահասու եղայ եւ կը վկայեմ առաջի ազգին եւ Երեսփոխանութեան որ Սահմանադրութեան տրամադրած քանի մի ժողովներն երբեք անբաւական չեն Հայոց Ազգի պէտքերը հոգալ: Մի Կրօնական Ժողով ունիմք, որուն պարտքն էր ըստ Եկեղեցւոյ օրինաց եւ սահմանադրութեան՝ Եկեղեցին բարեզարդել, Բարեպաշտութիւնը եւ կրօնի զգացումն ժողովրդոց սրտի մէջ կենդանի պահել: Այս պարտքերը կատարելու յաջողեցա՞ւ արդեօք. եթէ հարցնէք՝ պիտի պատասխանէ՝ ո՛չ. վասն զի ժամանակ չունեցաւ, թո՛ղ թէ գաւառական եկեղեցեաց համար հոգալ եւ բարեկարգութեան օրէնքներ տալ՝ նոյն իսկ մայրաքաղաքիս երեսուն եւ երկու եկեղեցեաց եւ այսքան քահանայից պէտք եղած բարեկարգութիւններն հաստատելու անձեռնհաս եղած է միշտ, եւ այս դրութեամբ երթալով՝ ոչ մի ժամանակ ձեռնհաս պիտի լինի:*

*Սահմանադրութիւնն՝ մի անվարձ եւ անթոշակ Քաղաքական Ժողով տուած է Ազգին համար, որուն պարտքն է Թուրքիոյ երեք միլիոնի մօտ ժողովրդոց պէտքերն հոգալ, շաբաթն մի անգամ խորհուրդ կազմելով եւ այն հազիւ երեք ժամու տեւողութեամբ: Մեր Քաղաքական Ժողովոյ վիճակն անձամբ եւ ներկայութեամբ նկատեցի. տեսայ որ այս Ժողովն միշտ անձեռնհաս եղած է նոյն իսկ դատական եւ այլ մասնաւոր խնդիրներ լուծել, թո՛ղ թէ Ազգին ընդհանուր ներքին եւ կենսական խնդիրները յառաջ բերել եւ խորհիլ: Կ'աղաչեմ, ծանրաբեռնած է այդ Ժողովը. վերուցէ՛ք իւր թիկանց վրայէն բոլոր Գաւառական խնդիրները, տեսցուք թէ դա կարո՞ղ է նոյն իսկ Մայրաքաղաքիս Թաղային գործերը կարգադրել. եւ ահա՛ այդ գործերուն երեւէն է, որ երէկ Հայոց Պատրիարքարանը կռուոյ ասպարէզ դարձաւ ի ցաւ ամէն ողջամիտ ազգասիրաց: Այսպէս է նաեւ միւս Տեսուչ Խորհրդոց վիճակն, որոց գործելու ասպարէզն միայն մայրաքաղաքիս շրջանակն եղած է եւ միթէ ի Պրուսա եւ ի՛ Ռոտոսթո երթալու ժամանակ ունի՞ն:*

*Գիտէ Երեսփոխանութիւնդ, որ Սահմանադրութիւնն աշխատութեանց բաժանման սկզբունք ընդունած է. ուստի, վարչական ընթացից գոնէ ըստ մասին դիւրութիւն մի տալու համար, ասկէ իբր տարի մի յառաջ այս դժուարին իրաց պարագաները մի համոզական բանիւ ու արդարացի փաստերով Քաղաքական Ժողովոյ Ատենին ներկայացուցի, խնդրելով՝ որ երկու մասնաժողովներ յատկանան.* Ժողով մի Տեղական գործոց, Ժողով մի Գաւառական մասնաւոր գործոց: *Մեր այս պարզ եւ օրինաւոր խնդիրն այնքան թիւր կարծիքներու ենթակայ եղաւ Քաղաքական Ժողովին առաջ որ աւելորդ եւ անկարեւոր դատեց զայն ուշադրութեան առնուլ, եւ ես խոհականութիւն համարեցի չպնդել մինչեւ ժամանակ անցնի եւ փորձառութիւնն զիրենք համոզէ: Այն օրէն եւ այս խնդրէն ծնաւ անհամաձայնութիւն մեր եւ Քաղաքական Ժողովին մէջ, եւ երթալով մեծցաւ այլ եւ այլ առիթներով: Զարմանալ պէտք է. թէ այս ամենապարզ խնդրէն կարելի՞ է յուռի նպատակ մի հանել եւ մինչեւ իսկ ասել թէ՝ հակասահմանադրական է այս դրութիւն եւայլն: Երբ տեսայ, որ Քաղաքական Ժողովն, այս խնդրոյն շուքէն միշտ կը խրտչի, այլ եւս անկարելի է ընդունել տալ՝ խորհեցայ հիմնական կերպով այդ խնդրոյն լուծումն Ընդհանուր Ժողովին բերել Վերաքննիչ յանձնաժողովին ձեռօք:*

*Ուստի, երբ երկու ամիս առաջ, երբ ինքն պաշտօնական գրով մեր դիտողութիւնը խնդրած էր Սահմանադրութեան յօդուածոց մասին, յայնժամ պատեհ առիթ համարելով այս ամենակարեւոր խնդիրն, իբրեւ առաջին դիտողութիւն, գրեցի եւ անձամբ մատուցի Յանձնաժողովին, եւ շատ համոզիչ փաստերով խօսեցայ, բացատրեցի խնդրոյ բուն ոգին եւ օգուտն որ թէ մանուկ լսէր, կը համոզուէր: Բայց ցաւօք սրտի կը յայտնեմ յԱտենի Ազ-*

*գային ժողովոյս, թէ ինչպէս Քաղաքական Ժողովը՝ նոյնպէս եւ Վերաքննիչ Յանձնաժողովը նուազ կարեւորութիւն տալով մեր խնդրոյն. զայն մասնաւոր տեղեկագրով Ընդհանուր Ժողովոյս բերել հարկ չէ համարած, թողլով՝ որ Սահմանադրութիւնն ամբողջ վերաքննուելէն յետոյ Ընդհանուր Ժողով գայ։ Աստ ահա՛ իմ համբերութիւն հատաւ, զի ես չգիտեմ ու չեմ հաւատար թէ այդ վերաքննութեան աւարտում՝ ո՞ր թուականին է։ Այս խնդրոյն ոգին լաւ ըմբռնելու համար պէտք է կարդամ Յանձնաժողովին տուած առաջարկութեան ճիշտ պատճէնը եւ ապա դառնամ ու բացատրեմ երկրորդ պատճառը, որ մերհրաժարման փոքր առիթ չէ։*

Վսեմաշուք Ատենապետ

Ազգ. Սահմանադրութեան վերաքննիչ Յանձնաժողովոյն

Քանի մի օր յառաջ յայտագիր մը ընդունեցի Վերաքննիչ Յանձնաժողովոյդ Ատենէն որով մեր կարծիքն ու դիտողութիւնները կը խնդրէք Սահմանադրութեան մէջ պարունակեալ վերաքննելի յօդուածոց վերայ։

Առ այս, ինչպէս բերանացի Ձեր Ատենին խօսեցայ, առ այժմ միայն խիստ համառօտ քանիւք առաջին դիտողութիւնս կը յայտնեմ։

Ազգային վարչական կազմութիւնը (բաց յ՚ընդհանուր ժողովէն) միշտ անբաւական եւ անձեռնհաս է համայն Թուրքիոյ Հայոց Ազգին խնդիրներըն ըստ օրինի եւ ընթացիկ եղանակաւ լուծելու, թէ՛ օրուան պատահական խնդիրները, թէ ներքին եւ կենսական գործերը, որք անհատական մասնաւոր անձի մը կամ առանձին գաւառի մը չեն վերաբերիր, այլ բովանդակ ազգին, Զի Ազգին շահ եւ յառաջդիմութիւն այս խնդրոց մէջն է։ Այս խնդիրներն իսպառ բարձի թողի եղած են, միայն բերանով կը խօսուին. լրագիրք կը քարոզեն, բայց առանց արդեանց եւ առանց ձեռնարկութեան մնացած են մինչեւ ցայսօր, եւ սորա ներքին բուն պատճառն է վարչական ժողովոց սակաւութիւնը եւ ժամանակի անձկութեան պայմանը։

Ազգային Սահմանադրութիւնն Թուրքիոյ Հայոց իւր առտնին խնդիրները լուծելու համար միայն մի Քաղաքական Ժողով, մի Կրօնական Ժողով եւ իրենց քանի մի մասնաւոր ճիւղերը հաստատած է։ Այս ժողովները շաբաթը միայն երկու անգամ հազիւ կարող են ժողովիլ ժամ ութին եւ շատ անգամ անցած՝ ատեանը բանալ, խնդրոց կարգը յառաջ բերել եւ լուծել։ Եթէ կայ կէտ մի, որ Սահմանադրութեան խմբագիր ժողովոյ մտքէն վրիպած է, ահա այս կէտն է, ինձ այնպէս կը թուի որ այդ օրէնքը խմբագրող ժողովը թերեւս նկատելով որ Սահմանադրութենէն յառաջ միայն Գերագոյն եւ Հոգեւորական երկու ժողովները կարող եղեր են Ազգը կառավարել, եւ նորա խնդիրները լուծել։ Ուստի Գերագոյն ժողովին տեղ՝ Քաղաքական ժողով եւ Հոգեւորականին տեղ՝ Կրօնական ժողով բաւական եւ շատ համարեր է։ Արդեօք չե՛ն մտածեր եւ չեն կրցեր նախատեսել։ Եթէ Սահմանադրութենէն առաջ Հայոց համար տարեկան հազար խնդիր կար, Սահմանադրութենէն յետոյ երկու հազարի հասաւ, զի խիստ բնական է. երբ ժողովուրդը քուէի իրաւունք ստանայ, երբ Ազգին մէջ պարտուց եւ իրաւանց սկզբունքն օր ըստ օրէ յարգուի, անշուշտ բազմապատիկ խնդիրներ կը ծնանին, եւ այս խնդիրներն շատ անգամ վէճ եւ կռիւ, որոյ հետեւանքն եղած է միշտ չաբաչար զբաղմունք վարչական ժողովոց։ Թո՛ղ այս, ոչ միայն Սահմանադրութիւնը Հայոց խնդիրներուն թիւը տասներկու տարուան միջոց բազմապատիկ առաւելցուց. այլ եւ ժամանակ, յառաջդիմութիւնն, ամէն օր, ամէն ժամ եւ նոյն իսկ վայրկեաններուն մէջ խնդիրներ կը ծնանին։ Այս ոչ միայն մարդն՝ այլ եւ Աւետարանին վկայութիւնը կը ստուգէ թէ՝ վաղեան օր իրեն համար խնդիր ունի. «Ոչ գիտես թէ վաղիւն զի՞նչ ծնանելոց է»։ Սահմանադրութիւն գծողներն անկէց դուրս ուրիշ վրիպակ մի եւս ունին, մասնաւոր խնդիրներն՝ ընդհանուր խնդրոյ հետ շփոթեր են. զոր օրինակ՝ բուն Մայրաքաղաքիս տեղական գործերը Գաւառային եւ ընդհանուր խնդրոց հետ խառներ են։ Փորձառու ճշմարտութեամբ վերահասու լինելով կը վկայեմ թէ Սահմանադրութեան հաստատած քանի մը անձուկ ժողովները բաւական չեն իսկ ներկայ դրութեամբ Մայրաքաղաքիս մէջ գտնուած բնակչաց գործերը կարգադրել, թո՛ղ թէ հանուր Գաւառա-

կանաց: Ստուգապէս խօսելով որ Պոլսոյ համարեա թէ, հարիւր հազար Հայ բնակչաց խնդիրները, կը հաւասարին երկու միլիոն գաւառացի Հայոց խնդիրներուն, կը թողում, չեմ յիշեր թէ ինչպէս շատ անգամ Տեղական խնդիրները նախապատուութեամբ եւ զօրութեամբ կը նուաճեն Գաւառացւոց խնդիրները: Այս շփոթութիւնը եւ այս ընթացքը, մեծ եւ ահագին զրկանքներ պատճառած է երկու մասին եւ, թէ՛ Մայրաքաղաքիս Հայոց եւ թէ Գաւառականաց· եւ զարմանալին այն է որ այս զրկանաց վերայ երկու մասն եւս անտարբեր մնալով չեն խելամտիր եւ գոնէ իրաւացի բողոքներ բառնալ:

Ուստի այս խնդրոյն վերաբերեալ յարակից պատճառները որ շատ են, զայն յԱտենի ժողովոյդ բերանացի բացատրելով, ներկայ խնդրոյս համար այս եզրակացութիւնը հանեմք: Կա՛մ պէտք է Տեղական կամ Գաւառական խնդիրներն իսպառ իրարմէ անջատել եւ Պոլիս իբրեւ կեդրոնական գաւառ մի նկատելով Սահմանադրութեան տրամադրած ժողովներ հաստատել նախագահ պաշտօնէի մը տակ, բուն տեղական գործոց եւ խնդրոց համար, եւ կամ նոր մի պաշտօնէութիւն մի հաստատել, որ շաբաթ մինչեւ ցգլուխ շարունակ նիստեր ընելով· ամենօրեայ խնդիրները լիազօր իշխանութեամբ լուծէ, բայց դարձեալ Ազգին կենսական եւ ընդհանուր խնդրոց համար առանձին ժողով մի պէտք է, որ գոնէ շաբաթը մի անգամ իւր նիստերը շարունակելով՝ Ազգային յառաջդիմութեան ճանապարհները հորդէ ու բանայ, որ շատ եւ ահագին խոչնդոտներ ունի:

Ահա, այս է այժմ մեր ամենակարեւոր խնդիրը, զոր այսօր ժողովոյդ ուշադրութեան կը յանձնեմ, եւ այնչափ վերահաս ծանրացած եւ անհրաժեշտ խնդիր մի է Ազգին համար, զոր պէտք է ժամ մի յառաջ լուծել, զի՛ Ազգին շահն այս կը պահանջէ· եթէ տակաւին ազգային վարչական ժողովոց այս ընթացքը շարունակուի, ոչինչ յոյս չկայ Սահմանադրութենէն՝ եւ հետեւապէս մեր յուսացած յառաջդիմութիւնը ձեռք չբերուիր, եւ տակաւին հեռի կը մնայ Հայոց ժողովրդէն: Ոչ Գաւառացին իր մեծամեծ խնդրոց լուծումն պիտի տեսնայ եւ ոչ Մայրաքաղաքացին իւր անուան եւ տեղւոյն պահանջած յառաջդիմութեան նորանոր արգասիք պիտի կարենայ ցոյց տալ աշխարհի առաջ՝ թէ ինքն Եւրոպիոյ Ազգաց դրացի է եւ իր պարտիքն է քան զամեն գաւառացիս յառաջդիմութեան օրինակ հանդիսանալ· ո՛րչափ ցաւալի է թաղական կռիւներով զբաղիլ, այդ չնչին խնդիրներով միշտ Պատրիարքարանի ժողովները նեղել, ոչ ժամ, ոչ ժամանակ թողուլ գաւառական խնդրոց: Այս ապարդիւն ընթացքը զրկանք է եւ ոչ պարծանք Մայրաքաղաքացի ազգայնոց, զի ինքն է նախածնող մայր Ազգային Սահմանադրութեան, իւր պարտիքն է Գաւառացւոց համար անխնայ զոհել դրամ եւ ժամանակ, վասն զի համայն Թուրքիոյ գաւառացի հայերէն իրենք են միայն ուսմամբ եւ հարստութեամբ ձեռնհաս եւ ազատ այն ամէն հարստահարութեանց աղէտներէն, զորս կը կրեն անճարակ ու խեղճ Գաւառացիք՝ լոյս, բարեկարգութիւն, յառաջդիմութիւն եւ ազատութիւն միշտ Պոլսոյ կեդրոնէն սպասելով: Շատ սպասեցին, աչքերնին հալեցաւ, յուսահատութիւնը մօտալուտ է, պէտք է ուշադրութիւն տալ Գաւառական խնդրոց, եւ սորա միայնակ միջոցն է գործոց եւ խնդրոց բաշխումն եւ վարչական մեքենային ամենօրեայ շարժումն:

11 *Յուլիս* 1873 Ազգին յառաջդիմութեան ցանկացող
*ի Պատրիարքարանի Հայոց* *(Ստորագրութիւն)*
Կ. Պոլիս

*Յիշեցէ՛ք, մի՛ մոռնաք, Երեսփոխա՛նք Հայոց, այն օր երբ Սահմանադրութեան համար յինէն ուխտ պահանջեցիք, ես այն օր հեռատեսութեամբ նկատեցի, որ անհնար է մեծն Մովսէսի չափ այդ օրինաց տառն ամենաճշտութեամբ պահել, այնչափ, որ կիրակի օր ցրտահարութենէն ստիպեալ խուխ ժողվող պառաւը քարկոծել տալ· եւ քուէարկութեան մէջ շփոթութիւն հանող անձինք չորս տարի քուէի իրաւունքէն զրկեալ հրատարակել: Ուստի բաւ եւ շատ համարեցի ուխտել միմիայն Սահմանադրութեան* Ոգւոյն եւ անփոփոխելի Սկզբանց վերայ· *բայց ներկայ Քաղաքական ժողովոյ կազմութեան օր՝ Ատենադպիր էֆէնտին, չգիտեմ ինչ նկատումով,*

դիւանական սեղանին վրայ Սահմանադրութեան օրինագիրքն դնելով այսպէս յայտարարեց, «Պէ՛տք է Սահմանադրութեան տրամադրած յօդուածները մի առ մի ճշդութեամբ կատարել:» Այն օրէն մինչեւ ցայսօր այս յայտարարութեամբ վարուեցաւ Ժողովը, եւ ես հնազանդելով յարգեցի իւր ամէն որոշումները եւ ստորագրեցի. բայց մերթ ընդ մերթ միայն դիտողութեամբ յայտնեցի, խնամով եւ զգուշութեամբ ի գործ դնել այդ օրէնքը, մինչեւ ժողովուրդն ընտելանայ, մինչեւ քուէաթուղթ գրել սորվի, մինչեւ օրինաց ոգին ճանչնայ, ըմբռնէ, սիրէ ու գրկէ: Երանի՜ թէ Ատենադպիր էֆէնտին այդ յայտարարութեան արդիւնքը վայելէր Ազգն. այլ ընդհակառակն՝ օրինաց խստիւ եւ տառական գործածութենէն հետեւեցան այսքան աղմկայոյզ խռովութիւնք, Պօլսոյ թաղերուն եւ Գաւառներուն մէջ. թո՛ղ ապագային վկայ լինի հազար ութ հարիւր եօթանասուն եւ երեք Յուլիս 30 Հայոց Պատրիարքարանի դժպատեհ դէպք: Մի՞թէ կարելի՞ է ընդդէմ դիտակցութեան մեղանչելով այս խօսքերէն թիւր հետեւութիւն մի հանել եւ ասել՝ ուրեմն Պատրիարքն իբրեւ հսկող օրինաց, իւր պարտիքը չճանաչելով՝ Սահմանադրութեան դէմ կը խօսի եւ նորա տրամադրած օրէնքները ճշդիլ կատարելու փոյթ չունի: Այս դատաստանին դէմ Այսօր եւ Յաւիտեան կը Բողոքեմ. զի Խրիմեան յառաջ քան զվաթսուներորդ թուական 1820 Ապրիլ չորս՝ անդստին ի մօրէ Սահմանադրութենէն յառաջ սահմանադրական ծնած է եւ ցորեկ արեւուն լուսով աշխարհ եկեր է, խիստ Դժուարին է զանի իբրեւ Հակասահմանադրական ամբաստանել: Ես Սահմանադրութիւնը գրկել կ՚ուզեմ, բայց չեմ ուզեր զանի այնչափ ճշդել ու սեղմել, մինչեւ գրկիս մէջ մեռնի: Ես այնպէս կը համարիմ թէ նորա թերթերը վարդի թերթէն աւելի փափուկ են, խստութեամբ մի չօշափէք՝ պատառ պատառ կը լինի: Մանաւանդ, որչա՞փ սարսուռ կը զգամ երբ Ոստիկանութեան ձեռք կը դպի, այսինքն անխորհուրդ անհեռատես մարդիկ օրինաց դիմահարները զսպելու համար ոստիկանութեան զէնք յօդնութիւն կը կանչեն, որոյ վախճանը թէ մինչեւ ո՞ւր կ՚եզրերի՝ Ձեզ կը թողում խելամտել:

Ժամ է արդ որ խօսիմ ու բացատրեմ իմ հրաժարելուս երկրորդ պատճառը, այն Եկեղեցւոյ վիճակն, որ ամենամեծ եւ կարեւորագոյն է այնչափ որչափ Աստուած, իւր Աւետարան եւ Եկեղեցին բարձրախորհուրդ են: Ուշ դի՛ք, Երեսփոխանք Հայոց, ուշ դի՛ք, պաշտօնակից եղբարք իմ, Թուրքիոյ Հայոց Եկեղեցւոյն վերայ պիտի խօսիմ, որ խոնարհեր աղքատացեր եւ նուաղեր է յոյժ: Թո՛յլ տուէք որ հազար երեք հարիւր տարի յառաջ մեր Սուրբ Խորենացւոյ մրմունջն կրկնեմ աստանօր:

«Ողբամ զքեզ Եկեղեցիդ Հայաստանեայց խրթնացեալ ի բարեզարդութենէ բեմին, զրկեալ ի քաջ հովուաց եւ հովակցաց»: Գիտէ՛ք, Երեսփոխա՛նք Հայոց, ես յոտին տրուպ եւ անարժանս այդ Եկեղեցւոյն հսկող հովիւն էի, Ս. Էջմիածնայ Վեհափառ Հայրապետին կողմէն Փոխանորդ կարգեալ. Դուք ձեռքս Սահմանադրութիւն տուիք եւ պահանջեցիք, որ ուխտեմ եւ հաւատարիմ մնամ Սահմանադրութեան: Եթէ զեղծանիմ, զիս Ձեր քուէով կը դատապարտէք. յառաջ քան զՍահմանադրութիւն Յիսուս էլ իւր Աւետարանը ձեռքս տուաւ: Մի՞թէ այդ մեծ եւ ահաւոր Աստուածամարդն իրաւունք չունի՞ յինէն համար պահանջել. այո՛. առաւել քան զՁեզ: Ո՜հ, ես այդ Աւետարանը ձգեցի եւ այժմ բաժանարար պաշտօնեայ մի եմ Պատրիարքարանի դատարանին մէջ նստած, քանի մի գործակից եղբայրներովս:

Սահմանադրութիւնն՝ անշուշտ եկեղեցւոյ եւ Աւետարանի պաշտօնէութիւնը չը մոռնալով՝ իւր քսան եւ ութերորդ յօդուածով իմ գործակից Կրօնական Ժողովոյ պաշտօնը այսպէս կը սահմանէ. «Ազգային կրօնական գործոց ընդհանուր տեսչութիւն եւ իւր պարտաւորութիւնք են Ազգին մէջ կրօնական զգացումն զարգացունել, Հայաստանեայց Եկեղեցւոյ դաւանութիւնը եւ աւանդութիւնները անխախտ պահել. Եկեղեցեաց եւ եկեղեցականաց բարեկարգութեան հսկել. Եկեղեցականաց ներկայ վիճակը լաւացնել եւ ապագան անդորրելու եւ ապահովելու միջոցները ձեռք բերելու հոգ տանիլ: Ազգային վարժարանաց երբեմն երբեմն այցելութիւն ընելով Քրիստոնէա-

կան վարդապետութեան ուսուցման վերայ հսկողութիւն ընել· արժանաւոր եւ բանիբուն Վարդապետներ եւ Քահանաներ հասցունել եւ Ազգին մէջ ծագած կրօնական վէճերը քննելով Եկեղեցւոյ օրինաց համեմատ լուծել»։ Խիստ վայելուչ եւ պատշաճաւոր շարադրած ես այս պարտիքները, դո՛ւ, Օրէնսդի՛ր Ժողով Հայոց· եւ ծանր ծանր պարտուց բեռներ բարդեր դիզեր ես իմ եւ Կրօնական Ժողովոյ Թիկանց վերայ· չգիտեմ անգամ մի հարցուցիր համար պահանջեցի՞ր թէ այս պարտիքներէն ո՞ր կատարեցինք եւ ո՞ր թողուցինք· քեզ ցաւօք սրտի գուժ կուտամ այդ յօդուածին վերի ամբողջ պարբերութիւնները, Սահմանադրութեան Թուղթին վերայ մեռած մնացած են եւ միայն վարի պարբերութիւնը, այն է՝ «Ազգին մէջ ծագած կրօնական վէճերը» քննելով որոշում կուտամք· այլ չէ թէ Եկեղեցւոյ օրինաց համեմատ ըստ Սահմանադրութեան, այլ խղճի օրէնքով եւ երբեմն եւս յաւանդութենէ կամ ի սովորութենէ պահուած պայմաններով։ Ա՛հ, արդար եւ անաչառ դատաւոր մի լինէր աստ· ես քեզ հետ դատաստանի մտնէի, Օրէնսդի՛ր Ժողով, դու այսչափ մեծամեծ պարտիքներ բաժին հաներ ես ինձ եւ Կրօնական Ժողովոյն· երբէք չյիշեցի՞ր թէ այդ պարտիքներու հետ իրաւունքը անբաժանելի կերպով կապուած է· դու միայն պարտիքները կը սահմանես, իրաւունքները կը մոռնաս· մի գուցէ այդ պարտիքները կատարելու համար Եկեղեցւոյ պաշտօնէից մեծ շահերու արդիւնքը միտքդ եկած է· այսինքն։ Մկրտութեան դրամ, Մեռելի դրամ։ Այդ պտուղները մեր սակաւապետ կենաց պարէնն է· մեր կեանք պահող լոկ հացի գին է· կամ թէ յափշտակեալ երեւակայութեամբ, հազար ութ հարիւր տարի յառաջ երթալով, կարծեցիր որ Աւետարանի արդի պաշտօնեաներն, առանց ցպոյ, առանց մախաղի եւ առանց գօտիին մէջ պահուած պղնձին կարող են Պոլսէն մինչեւ Տրապիզոն երթալ եւ կամ Քրիստոսի դարուն եւ Առաքելոց նման ամէն բան առանց մամոնայի հրաշքով գործել։ Ուստի քանի որ այսչափ պարտեաց դէմ իրաւունք սահմանած չես այդ պարտիքներու կատարման արդիւնքը կարող չես տեսնել· որոյ իբրեւ ապացոյց յառաջ կը բերեմ այս իրողութիւնը, որով ես եւ իմ Կրօնական Ժողովոյ եղբայրներս շուարած կեցած եմք։ Երբ Հայաստանի այլ եւ այլ շատ գաւառներու վիճակներն հովիւ կ՚ուզեն· հովիւ չիկայ։ Խարբերդի ճոխ բազմահայ վիճակին հովիւ պէտք է, ուր բողոքականութիւնն յառաջ կ՚երթայ· այդ ժողովուրդը Սուրբ Գրիգորի գաւթին մէջ պահող հովիւ չիկայ։ Արապկիր հովիւ կ՚ուզէ, իւր իրաւանց ճշդութիւնն էր։ Ակնայ վիճակին հովիւ պէտք է, հովիւ չիկայ։ Զմշկածագի հովիւ ինքնին խոյս տուած է։ Եւդոկիոյ վիճակը անհովիւ է եւ խռովութեանց մէջ կը յուզի։ Ամասիա եւ Մարզուան դարձեալ անհովիւ մնացած կը յուզուին։ Երզնկա հովիւ կ՚ուզէ, անհովիւ մընաց։ Տէրճան վաղուց անտի հովիւ կ՚ուզէ, հովիւ չիկայ։ Մուշ հովիւ կ՚ուզէ, հովիւ չիկայ։ Բաղէշ հովիւ կ՚ուզէ, զի իւր հովիւ տարագիր եղած է։ Վան հովիւ մի ընտրելու համար ահագին կռիւ բացուած է։ Զեմ յիշեր Կիլիկիոյ վիճակի տարաբախտ ժողովրդոց անտէրունջ վիճակը, որոց համար Սսոյ խեղճ Կաթողիկոսն հանապազ գրելով, Թախանձելով վարդապետ կ՚ուզէ· հազիւ հազ Ուլնիցի Դաւիթ կաղ վարդապետ մի գտայ եւ իրեն ղրկեցի։

Ահաւասիկ Եկեղեցւոյ վիճակ, ահա՛ւասիկ իւր սրտառուչ նկարագիր, Երեսփոխա՛նք Հայոց· զոր հարիւրէն մին հազիւ գրեցի· զոր ինչպէս զիմ սիրտ, եւ Ձեր սիրտ դառնացուց ու ճմլեցուց, թէ դեռ անտարբեր էք,։ Եթէ այդպէս, ուրեմն վերցուցէ՛ք, մի՛ խղճիք, վերցուցէ՛ք միանգամ Եկեղեցւոյ պաշտօնէութիւնը ոչ Հայրապետ, ոչ Պատրիարք, ոչ Եպիսկոպոս, ոչ Վարդապետ, ոչ Քահանայ։ Թո՛ղ Տէր ինքնին հովուէ իւր Եկեղեցին եւ ժողովուրդը, դուն ալ Հրէական ժողովուրդին պէս երեսդ երկինքէն դարձուր եւ խօսի՛ր այս բանը։ «Անտէրունչ շրջեսցուք եւ առ Քեզ ոչ եկեսցուք· եւ այլն»։

Իսկ եթէ առ այս քա՛ւ կ՚ըսես եւ կը սրտմտիս այսպիսի քրէական հայհոյութիւնք քո սրտէն քո երիկամունքէն եւ քո բերնէն հեռու են· դուն սուրբ Գրիգորի ամբիծ հաւատքն ունիս եւ նորա տնկած որթատունկն ես, անշուշտ կ՚ըսես, ինձ համար Մշակ պէտք է· Հովիւ պէտք է· Քահանայ պէտք է, Պատարագ պէտք է, Խունկ պէտք է։ Մինչեւ յե՞րբ· մինչեւ այսօր

եւ վաղ եւ ի կատարած աշխարհի։ Քանի որ Քրիստոնեայ ես, Հաւատք ունիս եւ Աւետարան գիրկդ է։ Եթէ այսպէս Երեսփոխա՛նք Ժողովրդեան, ուրեմն արդարութեան կշռով օրէնք սահմանեցէք· Կրօնական Ժողովոյ պարտեաց հետը իր իրաւունք հաստատեցէք եւ այնուհետեւ եթէ տակաւին նա իր պարտիքը յանուն Եկեղեցւոյ չի գործադրէ, Խստութեամբ եւ դատաստանաւ հաշիւ պահանջէք։

Այս խնդիրը կտակ մի է· ես կը Թողում իմ յաջորդին եւ միայն կ'աղաչեմ զՁեզ· որ քան զամէն խնդիր՝ առաւել ուշադրութեան առնուք։ Մի՛ վարանիր, դարմանն դիւրին եւ Քու ձեռքդ է· վասն զի Եկեղեցւոյ մեծ մատակարար Դուն ես, Նորա Տաճարին բանալին եւ գանձը Քու ծոցդ եւ Քու հսկողութեան տակն է։ Մեք այժմ այդ տաճարին վարձաւոր եւ ստրուկ մշակներն ենք, թէ իմաստուն ես, Եկեղեցւոյ փառք կը սիրես եւ կը խորհիս ազնուացուցանել Քրիստոսի Եկեղեցւոյ պաշտօնեաները, այդ փառք եւ շահ դարձեալ Քեզ կը վերաբերին։

Ահաւասիկ իմ իրաւացի պատճառներ, Երեսփոխա՛նք Հայոց, զոր կ'աղաչեմ բարձր ուշադրութեան առնուք եւ նորա խորը Թափանցէք պիտի տեսնէք, թէ Խրիմեան՝ ոչ միայն անկեղծ գիտակցութեամբ այլ եւ փորձառական ճշմարտութեամբ գրած է, իբրեւ կտակ կ'աւանդեմ ձեզ, շուտ եւ արագ փութացուցէք ՎԵՐԱՔՆՆՈՒԹԻՒՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԵԱՆ, Սահմանադրութեան իրաւանց եւ պարտուց հիմնական օրինաց որչափ կարելի է անվրէպ գործադրութիւն· Վարչական կազմութեան մէջ՝ աշխատութեան բաժանումն· Գործադիր իշխանութեան անդամոց միութիւն եւ համաձայնութիւն· Գիտցէ՛ք, այդ վարչական մեքենան առանց այս համեմատութեան չի շարժիր։ Այսչափ եւ այսքան բաւ է։

Ներողութիւն կը խնդրեմ, այն ամէն Թերութեանց համար, զոր իբրեւ սխալական մարդ գործած եմ· Ներողութիւն կը խնդրեմ համայն Երեսփոխանական դասէն· Ներողութիւն կը խնդրեմ իմ վաստակակից Կրօնական Ժողովոյ Ս. Հարց դասէն· Ներողութիւն կը խնդրեմ Քաղաքական Ժողովոյ Մեծապատիւ անդամներէն· ես զձեզ չ'ամբաստանեցի, այլ դրութիւնն ամբաստանեցի, որոյ ուղղութիւնն եւ փոփոխութիւնն Օրէնսդիր Ժողովոյն կը պատկանի։

Այլ եւս կը մնայ ինձ օրհնել համայն Հայոց Ազգը եւ հրաժեշտ մատուցանելով առ Երեսփոխանութիւնդ Հայոց՝ Վահանայ Գողթնացւոյն պէս պաղատիլ·

«Արձակեցէ՛ք, որ տեսանեմ զորչափութիւն աւերածոց Երկրին իմոյ Հայրենեաց»։

Թո՛յլ տուէք այս Աթոռէն ելնեմ եւ հոն նստիմ· Թերեւս այսու խաղաղութեան օրինակ մի ընծայեմ իմ յաջորդիս։ Թո՛յլ տուէք, եթէ իբրեւ Պատրիարք՝ չի կարացայ՝ իբրեւ Խրիմեան Վարդապետ գործել, Թերեւս իբրեւ Խրիմեան՝ կարենամ իբրեւ Պատրիարք գործել։

Երթա՛ս բարեաւ, Արծո՛ւի, ասացէք, Գնա՛ գտիր Վարագ քու սիրած խուցն ու գրիչ եւ սակաւիկ մի Թանապուր։ Հո՛ն մնացիր, զի նաւ խռովեալ փութայ ի Նաւահանգիստ։

———o———

# ՑԱՆԿ ԵՐԿԵՐՈՒ

